Chrysostomus, Joannes, saint

John
Chrysostom, St.
The Golden-Mouthed.
Archbishop of Constantinople
Exposition of the Letters of St. Paul.
Volume I.
"Timothy", "Titus", "Colossians",
"Philippians", "Ephesians".
Venice
Convent of St. Lazarus

Memory of the Malakian
Family
(Probably the translation
made by Malakian)

Contents of Vol. I in cover at end of set.

Saint Joannes Chrysostomus.

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ

ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏԻՄ. ՏԻՏ. ԿՈՂՈՍ. ՓԻԼԻՊ. ԵՓԵՍ.*



*Ի ՎԵՆԵՏԻԿ*

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1862 ՌՅԺԱ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Զնկարագիր վարուց Յոհաննու ոսկեբերանն հայրա-պետին ընդարձակագոյն բանիւ եւ ճշգրիտ առ ընթեր-ցողաց ոչ առաջիկայ տպագրութեանս 'ի դէպ վարկու-ցեալ, կարեւորագունաւն եւեթ շատացաք աստ ծանօ-թութեամբ։

Մատենագրութիւնք նորա՝ ճոխագոյնն յարեւելեան Հարց եկեղեցւոյ՝ 'ի Հելլէն բնագրին յերկքտասան հատորս բովանդակեալն, եւ լոկ նմանէ յետ դարուց բազ-մաց լատին թարգմանութիւնն. երանի թէ կիսովչափ կային եւ առ մեզ, այլ պատառիկքն եւեթ մնացեալք առ վանականս պահէին անկորուստ, որպէս նախնականն նշ-խարք հնութեանց ազգիս։ Մի էր յայնցանէ եւ չորեք-տասան Թղթոցն Պօղոսի մեկնութիւնն, հրաշալւոյն 'ի գրուածս՝ մատթէոսեան մեկնութեանն համապատիւ. Այս աղագաւ աշխատութիւն յանձն առեալ տարագնաց ուղեւորութեամբ յաշխարհ հեռաւոր, եւ 'ի ձեռն հրա-մանց գրագրաց 'ի պատրիարքատանէ, եւ 'ի գրատանց Եւ-րոպայ ուր պատուական մի 'ի ցանկալի նշխարացդ գտա-նէր ընդ ժամանակս ժամանակս՝ եւ այժմ 'ի նորոյ՝ հա-ւաքեցաք խնամով առ այլ ածելոյ զչորեքտասանեցունց Թղթոցն անթերի։ Նաեւ զի անհնար ձեռն բարեբաղ-դութեանդ հանդիպելոյ ընտրին, նախախնամութեանն

այլում թերևս պահեալ գնոյն ժամանակի, զոր գտաքն յերկուս հատորս ամփոփեցաք. յառաջնումն զվեցեցուն թղթոցն զանթերի բովանդակութիւն, և յերկրորդումն զթերիսն հանդերձ հատուկտոր հատուածովք այլոց թղթոցն, յաւելեալ և հատածս ինչ մեկնութեանց այլոց գրոց՝ այն է Պրոկղոս, և հին թարգմանութեանն Յոհաննու աւետարանին, մերձ դնելով վերջնոյս մանրագիր 'ի ստորև՝ և զնոր թարգմանութիւն նորին որ առ կիլիկեցւովք, առ 'ի տալ պատճառս հայրենասէր խնամոց փոյթ ունելոյ 'ի գիւտ այլոցն ևս մնացորդաց թէ գուցեն՝ 'ի լրումն բովանդակութեան գործոյն: Ի կատարած մատենիս թողաք և զերկքայական ճառս, ըստ հմուտ քննաքանութեան մեծի առն Մոնֆոքոնի զատուցեալ յայլոցն. որոց թէպէտ անկարօտ կան յոյն բնագիրք, այլ ըստ օճոյն զանազանութեան ոչ հարազատ դատեալ 'ի նմանէ: Ահա նոցա յաջորդեն և սակաւք ոմանք 'ի ճառից որք 'ի յոյնն խոտոտ պակասեալ՝ առ մեզ միայն գտանին, զորոց գիտնոց թողումք զատտատան առնել: Ի բաց թողաք 'ի տպագրէս և զայլ ճառս յոյժ սակաւս, որ ոչ միայն անյիշատակ են 'ի յոյն բնագրին, այլ և ինքնին ակներև ցուցանի ամենեցուն անհարազատութիւն նոցա՝ անհմտից ումանց քննել զգործ և ոչ ոսկիբերան գրչին:

Իսկ զհարազատ ճառս զոր Ոսկեբերանն յայլ և այլ դէպս խօսեցեալ է յԱնտիոք և 'ի Բիւզանդիա 'ի սկզբանէ անտի քահանայութեան իւրոյ մինչև ցվախճան, ամփոփեցաք յառանձին հատորի. սակաւս գտեալ 'ի նոցանէ քան զոր 'ի յոյնն, որ ճոխ է յոյժ յոյժ քան զմերն. և չեք աւել թարգմանչին ըստ կամս հատընտիր արարեալ զայնոսիկ, եթէ այնքան միայն հասին 'ի մեր ձեռս. թէպէտ և կարծիք գիտնոց են զամենայն մատեան որոյ հօրն անթերի դարձուցեալ 'ի հայ մերոց թարգմանչաց. այս և եթ յայտնի տեսանի ոչ 'ի միոյ գրչէ թարգմանեալ և ոչ զամենայն ճառս անթերի առար-

տեսակ, այլ ուրեք ուրեք զեղչեալ 'ի հատուածոյ, մանաւանդ յԱնգղիականն, զոր ոչ 'ի բուն Թարգմանչէն կարծեմ, այլ 'ի յետին օրինակողացն . որոց և չնորհ եւս անխնիք զի զվաստակ գրչութեանն յանձնէպս խնայեալ ամենայն խոհեմութեամբ Թերեւս 'ի բաց Թողեալ է ըղհատուածն, զի մնացեալ մասունքն անայլայլակ կան ի մաստք կապակցութեանն, որպէս անկներև տեսանի 'ի բաղդատութենէ ընդ յունականին : Գիտասցէ հայրենասէրն զի 'ի Թերակատար մատենից նորին սրբոյ վարդապետին՝ կան և մեկնութիւնքն Եսայեայ և Եզեկիէլի Թերի յոյժ և երկոքեան, զորս անԹերի օրինակաց ակընկալեալ Թողումք առ ժամս :

Զայսոսիկ սակաւուք ծանուցեալ՝ չիցէ հարկ ասել զոր ընԹերցողն ինքնին տեսանէ զհրաշալի պերճախօսութիւն սորայ հօրն՝ զպատկառելին ամենայն ազգաց ճոխաբանութեամբն և հանճարիմաց բանիւքն : Զեկաց դը 'ի նախնի Հայոց առաւելեալ քան զսա 'ի գիտս ամենակըն-կալ իմաստից և ախորժալուր 'ի բեմբասացութիւն ժողովրդեան, և ոչ իբրև զսա պարզ և ընդելական 'ի բանս ; ոչ յողորքեն նուաստացեալ 'ի շողոմն, և ոչ 'ի ներքողեն կրԹեալ 'ի չափազանցութիւն քերԹողական Թըռուցիք : Ոսկեպէտ ըստ ատտիկեան յունաբանութեանն ստորին քան զնազիանզացին Գրիգոր և քան զԲարսեղ, այլ մեք երախտագէտ սրտիւ զաջ ամփարեալ մերոյ հայ Թարգմանչին համբուրեմք, որ զխոնարհ ոճ շարագրածոյ յունականին գեր 'ի վերոյ ամբարձ 'ի հայումն յոճ աքանչելի, պերճ, վսեմ և քաղցրալուր . որով սուրբ հայրապետն հայրաբար յորդորեալ և առաջնորդէ հովուապէս . և գԹածաբար դաստիարակէ զամենայն հասակ՝ յանձն իւր փայլեցուցանելով զանձավայելուչ ձիրս առն սրբոյ հովուապետի : Այսա և անողջելի Թուեցեալ 'ի բանս ընդդէմ ախտից աշխարհասիրաց, և զանգարձ սիրտ նոցա դառնացեալ ոգւով խոցեալ կարեվէր, դառնայ ապա և քան զբժիշկ ճար-

տալ աղաչելէն հայրապետութ բանիւ . և որ վերադարձեալն Թուէր՝ ՚ի զօրով բանից նորա պատկառեալ մնացոց զամենայն : Այլ երկոտասանամբ տարեօք Թուեալ , շատա- ռք ձանձրոյթ , նորանոր խնամովք ախորժելի զանան զործեալ՝ արթունս և ուշադիր պահել զանձնադիրս : Այլ- մեն իրի և անմեկնելի էր հօտն ՚ի նմանէ և կաթողիկէ յարեալ ՚ի լուր ամենայնին բանից որք բղխէին ՚ի շրթանց նորա , որ զանձն խոպառ ուրացեալ ՚ի փրկութիւն նո- ցա խորովէր : Մ՝ի օր ևեթ մեկնեցաւ ՚ի նոցանէ աքսո- րանօք , և ամենայն քաղաքն զիրարեալ ծփայր իբրև զծով և բարեխօսքն մեծարոք խուռներամ դիմէին յարքունիս , մինչև Թագաւորն ձեպէր զպատուիրակս դարձուցանել զնա յետս , որով հանգեան ՚ի տագնա- պէն ամենեքեան :

Ոսկեբերանի ծովածաւալ վարդապետութեան իւ- րոյ զնկարագիր տուեալ սակաւուք՝ բարեբաղդ համա- րիմք զհայկազեանս գրոց , եթէ ընդ սքանչելի Թարգմա- նութեանն և լիակատար մատենագրութեանն լցի ար- ժանի :

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

### ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ

### Ի ԹՈՒՂԹՍՆ ՊԱՒՂՈՍԻ



## ՊԱՏՃԱՌՔ ԱՌԱՋԻՆ ԹՂԹՈՅՆ ՏԻՄՈԹԵԱՅ

Յաշակերտաց առաքելոյն էր Տիմոթէոս, և վկայէ Ղուկաս՝ թէ զարմանալի էր մանուկն վկայեալ 'ի լիւստրացւոց և յիկոնացւոց եղբարցն. աշակերտն միանգամայն և վարդապետ եղեւ: Այլ այնպէս առաւել էր իմաստուն, որպէս լուեալ զՊաւղոսէ թէ առանց թըլփատութեան քարոզէ, և 'ի վերայ հասեալ թէ Պետրոսի և վասն նորին իրաց ընդդէմ դարձաւ, և յանձին ունէր ոչ միայն հակառակ թլփատութեան քարոզել, այլ և զանձն ես տալ 'ի թլփատութիւն: Վասնզի ասէ՝ եթէ թլփատեաց զնա յայնպիսումն հասակի, և ապա վաղվաղակի հաւատաց նմա զամենայն տնտեսութիւն: Բաւականն իսկ Պաւղոսի գութն է ցուցանել թէ որպիսի ոք այրն իցէ. քանզի և այլուր վկայեալ գրէ զնմանէ. “Զփորձն նորա, ասէ, գիտէք և դուք, զի իբրև որդի հօր ծառայեաց ընդ իս յաւետարանին”: Այլ 'ի կորնթացւոցն դարձեալ 'ի թղթին յայտ արարեալ ասէ՝ թէ “Առաքեցի առ ձեզ զՏիմոթէոս, որ է որդի իմ սիրելի և հաւատարիմ 'ի տէր”. և դարձեալ եթէ “Զգոյշ լերուք մի ոք իցէ որ զնա արհամարհիցէ.

զի զգործ տեառն գործէ, որպէս և ես»: Այլ եւ եբրայե-ցւոցն գրէ՝ թէ «Ճանաչէք զեղբայրն զՏիմոթէոս զոր արձակեցի առ ձեզ»: Այլ ամենայն ուստեք գտանէ ոք թէ որպիսի ինչ սէր ունէր ընդ նմա Պաւղոս: Բայց այժմու զարմանալի գործս յայտ առնեն զհամարձա-կութիւն նորա:

Այլ թէ ոք քննիցէ եթէ զիարդ իցէ զի առ Տիմոթէոս և առ Տիտոս միանգամայն գրէ թուղթ, զի ահաւասիկ Սիղուանոս և Ղուկաս յընտրելոց յաշակերտացն էին. քանզի իւր իսկ գրեալ ասէ՝ թէ «Ղուկաս միայն էր ընդ իս». և Կղեմէս յայնցանէ էր՝ որ հանապազ ընդ նմա շրջէին, քանզի և զնմանէ ասէ՝ եթէ «Կղեմաւ հանդերձ և ամենայն գործակցովք իմովք». զիարդ իցէ զի առ սոսա միայն գրիցէ: Զի սոցա այնուհետեւ եկեղեցիք յանձն արարեալ էր, և նոքա դեռ տակա-ւին ընդ նմա շրջէին. և զնոսա 'ի յայտնի տեղիս զա-տեալ մեկնեալ էր: Այնպիսի ինչ էր առաւելութիւն առաքինութեան նորա, որպէս զի և մի մանկութեան ինչ խափան լինելոյ: Վասն այնորիկ գրեալ ասէր՝ եթէ «Մի՛ ոք զքո մանկութիւնդ արհամարհիցէ». և դար-ձեալ ասէ՝ թէ «զմանկամարդս իբրև զեղբարս»: Յոր-ժամ առաքինութիւն առաջի աչացն կայցէ, ամենայն ինչ աւելորդ է, չիք ինչ որ խափան լիցի: Քանզի և յորժամ վասն եպիսկոպոսացն Ճառեաց, և բազում խօսս յաւելոյր, ոչ ինչ աւելք վասն տիոց այնպիսի ինչ հաւաստիս պահանջէր: Իսկ եթէ գրեաց՝ եթէ «Որ-դեակս ունիցի որ 'ի հնազանդութեան կայցեն», և «միոյ կնոջ այր», ոչ զայն ինչ ասէ, որպէս ոչ եթէ հարկ իցէ կին և որդիս ունել, այլ եթէ այնպիսի ինչ դէպ լիցի յաշխարհականաց 'ի քահանայութիւն մատ-չել, զի այնպիսիք ոք իցեն որք և տանց վերակացու գի-տիցեն լինել, և որդւոց և այլոց ամենեցունց: Զի թէ աշխարհական ոք իցէ, և յայնպիսի իրս ինչ ընտիր չի-ցէ գտեալ, զիարդ իցէ զի զհօտ եկեղեցւոյ ոք հաւա-տասցէ նմա:

Այլ ե՞ր վասն արդեօք գրէր առ աշակերտսն, որ այ-նուհետեւ 'ի վարդապետութիւն իսկ կարգեալ էր. և չէ՞ր պատրաստ նախ կատարել զնա, և ապա առաքել: Այլ պիտոյ եւս էր նմա վարդապետութիւն, ոչ այնպիսի ինչ

որպէս աշակերտացն, այլ որպէս վարդապետի վայել իցէ: Բանզի յամենայն իսկ 'ի Թղթիս որպէս ինչ վարդապետի վայել իցէ՝ գրէ առ նա վարդապետութիւն: Եւ աստէն 'ի սկզբանս վաղվաղակի ոչ ասաց եթէ մի ինչ հայեսցիս ընդ այնոսիկ որ օտարոտին ուսուցանեն, այլ թէ պատուէր տացիր մի օտարոտիս ինչ ուսուցանել:

## ՃԱՌ ԱՌԱՋԻՆ

“Պաւղոս առաքեալ ըստ հրամանին ա՟յ և փրկչին մերոյ տեառն Յիսուսի Քրիստոսի յուսոյն մերոյ, առ Տիմոթէոս որդւոյ սիրելւոյ հաւատովք„:

Մեծ պատիւ առաքելոյ, մեծ և կարի զարմանալի. և ա՟մ ուրեք տեսանեմք զՊաւղոս՝ յառաջագոյն 'ի մէջ բերեալ պատճառս պատուոյ, ոչ որպէս յափշտակեալ ինչ զպատիւն, այլ յանձն առեալ նմա, և հարկ 'ի վերայ եդեալ: Բանզի և յորժամ կոչեցեալ ասիցէ զանձն, և ըստ կամացն ա՟յ առաքեալ, և այլուր եթէ հարկ 'ի վերայ կայ, և 'ի նոյն զատեալ և մեկնեալ, ամենայն իսկ այն պարծանաց և հպարտութեան խափանիչ է: Զի որ օրինակ որ անձամբ զանձն մատուցանիցէ, յորժամ յա՟յ չիցէ առեալ զպատիւն՝ անհնարին դաւաճանութեան արժանի է, նոյնպէս և որ 'ի բաց մերժիցէ և խուսիցէ՝ այլոց մեղադրութեանցն պարտական է ստամբականելոյ և անհնազանդութեան: Եւ արդ նոյն իրի և այժմ 'ի սկզբան Թղթիս որ առ Տիմոթէոս գրեաց, ասէ այսպէս. “Պաւղոս առաքեալ Յիսուսի Քրիստոսի ըստ հրամանին ա՟յ„: Եւ չասաց աստ եթէ Պաւղոս կոչեցեալ, այլ եթէ՝ առաքեալ ըստ հրամանին ա՟յ: Զի մի մարդկօրէն ինչ ախտ ախտանայցէ Տիմոթէոս, համարեալ թէ հաւասարակից ինչ զանձն աշակերտացն համարեսցի Պաւղոս. վասն այնորիկ այնպիսի ինչ առնէ սկիզբն:

Եւ ո՞ւր եւս նմա հրաման ա՟ծ: Գտանի 'ի հոգւոյն առեալ նմա հրաման 'ի գործս առաքելոց, եթէ “Զատեք մեկնեցէք ինձ զՊաւղոս և զԲառնաբաս„: Եւ ամենայն ուրեք յորժամ գրիցէ, յառաջագոյն գրէ զա-

նուն առաքելոյ, զի խրատիցէ զլսողսն մի մարդկօրէն ինչ
զպաշտօն համարել։ Քանզի առաքեալն ոչ ինչ իշխէ
յանձնէ խօսել. կոչէ զանձն առաքեալ, զի վաղվաղակի
զմիտս լսողացն առ առաքիչն առաքիցէ։ Վասն այնորիկ
գլուխ ամենայն թղթոցն նախ զայս դնէ. զի զպաշտօն հա-
ւատարիմ առնիցէ. «Պաւղոս առաքեալ Յսի Քսի
ըստ հրամանին այ փրկչին մերոյ»։ Եւ նա աւանիկ ոչ
երբեք ուրեք եթէ հայր ինչ հրաման ետ նմա, այլ ա-
մենայն ուրեք Քրիստոս խօսէր ընդ նմա. «Երթ, ա-
սէ, զի ես 'ի հեթանոսս հեռաւորս առաքեցից զքեզ»․
և դարձեալ եթէ «Կայսեր պարտ է քեզ յանդիման
լինել»։ Այլ զի զոր ինչ որդին հրաման տայցէ՝ զայն
հօր հրաման ասէ լինել, որպէս զհոգւոյն հրաման որ-
դւոյ հաշուի։ Առաքեցաւ յորդւոյ, զատաւ մեկնեցաւ
'ի հոգւոյն, և ասէ թէ ըստ հրամանին այ։

Եւ արդ նուաղեցուցանիցէ՞ ինչ զորդւոյ զիշխանու-
թիւն յորժամ առաքեալ զինքն ըստ հրամանի հօրն
ասէ. և ոչ ուրեք։ Այլ տես զկարգ հասարակաց ըդ-
նոյն, «ըստ հրամանին», ասէ, այ փրկչին մերոյ, և
յարէ 'ի նոյն՝ թէ և «տեառն Յսի Քսի յուսոյն մե-
րոյ»։ Եւ տես զկարգ սերտիւ զյորջորջումն անուան
դնէ, զոր սաղմոսանուագն զհօրէ ասէ թէ «Յոյս ամե-
նայն ծագաց երկրի»։ Դարձեալ և երանելին Պաւղոս
գրէ յայլում վայրի, եթէ «Վասն այնորիկ աշխատիմք
և զնախատինս յանձն առնումք, զի յուսացաք յած
կենդանի»։ Եւ ճշմարիտ վարդապետի առն պարտ է
միշտ ձգանց համբերել և եւս առաւել բազմաց, քան
աշակերտացն. ըստ այնմ եթէ «Հարից զհովիւն, և
ցրուեսցին խաշինքն»։ Զի յորժամ այն լինիցի, յայն-
ժամ կարի իմն հնչէ 'ի նոսա սատանայ. զի յորժամ
վարդապետքն 'ի միջոյ բառնայցեն, հարկ է թէ և խա-
շինքն ցրուեսցին։ Յորժամ զմի ոչխար սպանանիցէ, 'ի
հօտէն հատանէ. և յորժամ զհովիւն 'ի միջոյ բառ-
նայցէ, զբնաւ իսկ ողջոյն զհօտն ապականէ։ Քանզի
սակաւ ջաւոքն մեծամեծ ջաւս գործէ, և մի օգուոքն
զամենեսեան սպանանէ։

Վասն այնորիկ անդէն 'ի սկզբանն զարթուցանէ ըդ-
նորա միտս. զած, ասէ, ունիմք փրկիչ, և յոյս զՔս։
Թէպէտ և բազում չարչարանս չարչարիցիմք, այլ մե-

ծապէս յոյս ունիմք. թէպէտ և ճգնիցիմք և մահա-
պարտ լինիցիմք, այլ ունիմք փրկիչ, ոչ զմարդ ոք, այլ
զԱ՟ծ: Չտկարանայ փրկիչն, քանզի Ա՟ծ է. որպիսի ինչ
և իցեն ճգունքն, չկարեն մեզ յաղթանակ լինել, և ոչ
յոյսն ամաչեցուցանէ, քանզի ինքն Ք՟ս է: Եւ երկուք
այսպիսի իրօք կարեմք համբերել վշտաց, կամ ակն ու-
նել վաղվաղակի իսկ զերծանելոյ և ապրելոյ, կամ հեշ-
տականացն յուսովք մխիթարել: Եւ զիա՞րդ ոչ երբէք
ասիցէ զանձն առաքեալ հօր, այլ Ք՟սի: Զամենայն
ինչ հասարակաց առնէ, քանզի և յաւետարանն ա՟յ և
Ք՟սի: Եւ որչափ չարչարիմք, ասէ, ասա, չէ ինչ այն
և վաղվաղակի անցանէ:

"Առ Տիմոթէոս սերտ որդի 'ի հաւատս": Եւ այս
ողոքանաց բանք են և աղաչելոյ: Զի եթէ այնչափ ե-
ցոյց հաւատս մինչև Պաւղոսի որդի լինել, և ոչ վայրա-
պար որդի, այլ սերտ, և վստահ է այնուհետև վասն
հանդերձելոցն: Զի հաւատքն յայնժամ են հաւատք,
յորժամ թէպէտ հակառակ ինչ աւետեացն գործքն
գործիցին՝ չկասել և չխռովել: Այլ ահաւասիկ որդի
և սերտ որդի ասէ, նա աւանիկ չէր 'ի նմանէ. միթէ
անասո՞ւն էր[1]. այլ ոչ էր, ասեն, 'ի Պաւղոսէ: Այլ այն
ոչ եթէ զայն ինչ յայտ առնիցէ՝ եթէ իցէ յումեքէ և
կամ թէ չիցէ և կամ զիարդ օտար ոք ինչ 'ի մարդկա-
նէ էր. այլ ոչ զայն ինչ ոք ասէ: Քանզի յորժամ ա-
սացն որդի, և զայն ևս յաւել՝ եթէ 'ի հաւատս, և այ-
նու իսկ սերտ որդի 'ի նմանէ էր: Քանզի չէր ինչ օտա-
րոտի և այլակերպ 'ի նմին հաւատոյն, զի զնոյն կրէր
յանձին. զի և ըստ մարդկեղէն բնութեան շատ երբէք
կարի իսկ նման է որդի հօր, այլ յա՟յ ոճ՟ն կարի իմն ա-
ռաւել է մերձաւորութիւն: Զի և ասա թէպէտ և
բնութեամբ նոյնպիսիք իցեն, այլ այլովք բազում ինչ
իրօք կարի իսկ զատիմք 'ի միմեանց, գունով, կերպա-
րանօք, իմաստութեամբ, ժամանակաւ, կամօք, ոգւոցն
բարուք, մարմնոյն արտաքին իրանամբք, և բազում և
այլ ևս իրօք զատեալք 'ի միմեանց, կամ մօտեալք առ
միմեանս: Իսկ անդ ոչ այնպիսի ինչ կրճիմն 'ի միջի:

1 Այսպէս յոյնն, ըստ որոյ և լատինն թարգմանիչն. իսկ մերն ունէր
միթէ անդրանիկ էր:

Զի և "ըստ հրամանին" քան "զկոչեցեալն" ևս զօրագոյն է, որպէս և այլուր ասէ, թէ "Ի Քսն Յսն ես ծնայ զձեզ". այսինքն հաւատովքն։ Այլ զսերմն ևս յաւելու, զի զհաւատարմաւ զնմանելն նորա նմա քան զայլս կամի ցուցանել, և զսէրն և զբազում զութն զոր ունէր ընդ նմա։ Ահաւասիկ դարձեալ և 'ի հաւատոյն զնոյն ցնէ. առ որդիդ սերտ, ասէ, 'ի հաւատս։ Այլ ահա զխարոդ յարգէ. զի ոչ միայն որդի, այլ և սերտ որդի կոչէ։

"Շնորհք, ասէ, և ողորմութիւն և խաղաղութիւն յԱյ 'ի Հօրէ մերմէ, և 'ի տեառնէ մերմէ Յսէ Քսէ"։ Ընդէր յայլ թուղթսն չդնէ զողորմութիւն, այլ աստ միայն։ Զի այսու ևս զբազում զութն յայտ առնիցէ, թէ կարևոր աղօթս առնէր վասն մանկանն. զի այնպէս իմն երկնչէր և դողայր վասն նորա, որպէս զի ոչ երբէք արար, աստ առնէ։ Քանզի և վասն մարմնաւոր ինչ իրաց գրէր առ նա, թէ "Այլ սակաւ մի գինի արբջիր վասն ստամոքսիդ և ստէպ ստէպ հիւանդութեանցդ"։ Զի առաւել ևս կարօտ էին վարդապետք ողորմութեան։ "Յայ, ասէ, 'ի Հօրէ մերմէ և 'ի տեառնէ մերմէ Յսէ Քսէ"։ Դարձեալ և աստ մեծ մխիթարութիւն, յորժամ ետ Հայր իբրև որդւոյ խնամակալ լինել. որպէս և Քն իսկ ասէր՝ թէ "Ո՞վ 'ի ձէնջ մարդ որ խնդրիցէ որդին իւր հաց, միթէ քար տայցէ նմա"։

"Որպէս աղաչեցի զքեզ մնալ յԵփեսոս յորժամ երթայի ես 'ի կողմանս Մակեդոնացւոց"։ Տես զեր, զխարդ մեղմագոյնս խօսի, ոչ զվարդապետական ինչ զթեկն ածել, այլ գրեթէ յաղօթս անկեալ աղերսէ։ Ոչ ասաց թէ պատուիրեցի և հրամանս ետու, և ոչ թէ խրատեցի կամ միտս եդի. այլ զինչ. աղաչեցի զքեզ։ Բայց ոչ այնպիսի միայն պարտ է ունել առ ամենայն աշակերտս, այլ առ հեզս և առաքինիս. իսկ առ եղծեալս ոք և ապականեալս՝ որ չիցեն սերտս աշակերտք, այլով[1] օրինակաւ. որպէս իւր իսկ գրեալ ասէր, թէ "Յանդիմանեա զնոսա ամենայն սաստիւք"։ Բայց տես զինչ ասէ. "Զի պատուէր տացես, ասէ, ոմանց". ոչ զի աղաչիցես, այլ զի պատուէր տացես "մի օտարոտի ինչ

1 Պակասէր յօրինակին այլով օրինակաւ. յաւելաւ 'ի յաւելին։

ուսուցանել,,: Այլ այն զինչ յայտ առնիցէ: Զեր որդեօք նոցա բաւական թուղթն զոր ինքն իսկ գրեաց. միթէ և զթուղթսն արհամարհէին, կամ թէ յառաջ քան զգրեալն նոյնպիսի ինչ գործ գործէին: Այլ ինքն իսկ բազում ժամանակս եղև 'ի քաղաքին. և մեհեան Արտեմեայ դիցն անդ կանգնեալ կայր, և բազում վիշտս ետես անդ: Քանզի յետ զրաւ լինելոյ թատերին՝ կոչեաց զաշակերտսն և մխիթարեաց, և ապա եմուտ 'ի նաւ և գնաց, և դարձեալ եկն անդրէն առ նոսա:

Բայց պարտ է խնդրել եթէ յայնժամ արդեօք հաստատեաց անդ զՏիմոթէոս, թէ յայլում ժամանակի: Քանզի ասէ թէ "Պատուէր տացես ոմանց, մի օտարոտի ինչ ուսուցանել,,: Այլ ոչ դնէ զնոսա յանուանէ, զի մի ևս յանդգնագոյնս առնիցէ զնոսա յանդիմանութեամբն: Քանզի բազումք 'ի նոցանէ և 'ի Հրէիցն էին սուտ առաքեալք, որք կամէին միւսանգամ զհաւատացեալսն յօրէնսն քարշել, որոց յամենայն իսկ թուղթսն մեղադիր լինիցի: Քանզի ոչ այնչափ 'ի մըտաց է յորդորել, որպէս 'ի մնապարծութենէն և 'ի կամելոյ աշակերտս առնել, և Պաւղոսի ընդ հակառակս ելանել, և նախանձու ընդդէմ լինել. և այն իսկ էր օտարոտի վարդապետութիւն:

"Մի հայել, ասէ, յառասպելս և 'ի տոհմաթիւս,,: Առասպելս, ոչ եթէ զօրէնսն ասէ, քաւ լիցի. այլ զեղծուածս և զորոշմունսն և զապանշան կրօնսն: Զի 'ի դէպ էր նոցա որ 'ի Հրէիցն էին՝ յանօգուտս ծախել զբանն, զհաւս և զհաւուց հաւս համարեալ, զի այն իմն հմուտք և գիտակք առաջնոց պետութեանցն համարիցին: "Զի պատուէր տայցես, ասէ, մի օտարոտի ինչ ուսուցանել, և մի հայել յառասպելս և կամ 'ի տոհմաթիւս անչափս,,. և կամ թէ անեղը իսկ և չէ ձեզ հասու լինել, կամ թէ բնաւ անօգուտք և անշահք են: Տեսանե՞ս զիարդ բամբասէ զխնդիրսն. զի ուր հաւատքն են, զի՞նչ պէտք խնդրոյն 'ի միջի կայցեն. և ուր չիցէ պարտք քննել, զի՞ պիտոյ իցէ անդ խնդիր: Քանզի խնդիրն հաւատոյն խափանիչ է. և որ խնդրէն՝ յայտ առնէ թէ չև ևս եգիտ, և ոչ հաւատալ կարէ որ տակաւին խնդրիցէ: Վասն այնորիկ ասէ՝ մի առ խնդրել. և եթէ պարապիցեմք և խնդրիցեմք, չիք ուրեք անդ հաւատք, քանզի հաւատքն են հանգուցիչ մտաց:

Իսկ Քս, ասեն, ընդէ՞ր ասաց թէ "Խնդրեցէք և գտանիցէք. բախեցէք և բացցի ձեզ". և "Քննեցէք զգիրս, զի դուք պանծացեալ էք՝ թէ անտի ունիցիք կեանս"։ Այլ անդ զխնդրելն վասն հայցելոյ ասէ և վասն յաճախ գութ ունելոյ ընդ ա̃յ, և ոչ թէ վասն քննելոյ ինչ. զի քննեցէք անդ ասել զգիրս՝ ոչ յաշխատութեան խնդրոյ գրգռելոյ է, այլ զխնդիրսն ՚ի միջոյ բառնալոյ։ Քննեցէք, ասէ, զգիրս. զի զհաւատսն ՚ի գրոցն ՚ի միտ առնուցումք. ոչ զի միշտ խնդրեսցուք, այլ ցածնուցումք ՚ի խնդրելոյ։

Այլ բարուոք ասաց՝ թէ պատուէր տայր ումանց մի ատարոտիս ինչ ուսուցանել և մի հայել յառասպելս և ՚ի տոհմաթիւս անչափս, "որք առաւել զխնդիրսն ընծայեցուցանեն, և ոչ զտնտեսութեան ա̃յ որ հաւատովքն"։ Այլ բարուոք ասաց զտնտեսութիւն ա̃յ։ Քանզի մեծամեծս կամեցաւ տալ մեզ ա̃ծ. այլ չկարես խնդրով միտս առնել զմեծամեծս տնտեսութեանց նորա։ Այլ վասն այնորիկ հաւատովքն պարտ է յարդարել զայն որ կարևոր դեղ է ոգւոյ. և խնդիրն հակառակ է տնտեսութեան ա̃յ։ Այլ զինչ մատակարարեսցէ ՚ի հաւատոցն։ Ընդունել մեզ զերախտիսն ա̃յ և լինել պիտանիս, և չլինել յիմեքէ երկմիտս և թերահաւատս, այլ հանգչել և հաստատուն լինել. զի զոր ինչ հաւատքն վճարեսցին և շինեսցին, զայն խնդիրն կործանէ. և զիարդ կործանէ, զի ՚ի խնդիր ածէ և զհաւատսն քակէ։ "Մի ինչ, ասէ, հայել յառասպելս և ՚ի տոհմաթիւս անչափս"։ Այլ տոհմաթիւքն, ասեն, զինչ վնասիցեն։ Քս ասէ՝ եթէ հաւատովք պարտ է կեալ. և նոքա ասեն՝ եթէ չէ այդպէս, այլ խնդրել պարտ է։ Այլ քանզի վճիռն առատուաւ, և ՚ի գործ ՚ի հանդերձեալ աշխարհին գալոց է, վասն այնորիկ հաւատոց պէտք են. բայց զի նոքա կանխեալ ըմբռնեալ էին յօրինաւոր խորութիւնսն, որ խափանիչ լինէին հաւատոցն։ Բայց թուի ինձ եթէ զհեթանոսաց ակնարկէ աստ ասելովն, եթէ մի հայել յառասպելս և ՚ի տոհմաթիւս. որպէս և նոքա զդիսն իւրեանց մի ըստ միոջէ համարէին։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այս արդ մի ինչ հայեցիմք 'ի խնդիր. քանզի վասն այնորիկ կոչիմք հաւատացեալք, զի առանց երկմտութեան հաւատացեալք բանիցն։ Զի թէ մարդկեղէն ինչ բանք էին, պարտ էր 'ի հարց և 'ի փորձ արկանել. իսկ եթէ այ են, պատուել միայն պարտ է և հաւատալ։ Ապա եթէ չհաւատամք, և ոչ եթէ այ իցեն՝ ճանաչեմք։ Զի խորհրդ ձանձրացեալք թէ ած է յորժամ համարս պահանջիցեմք 'ի նմանէ։ Զի առաջինն նշանակ ճանաչելոյ զած՝ հաւատալն է ամենայնի զինչ և ասիցէ առանց նշանաց և օրինակաց։ Զայս և հեթանոսքն ճարտար գիտեն. պարտ է, ասեն, հաւատալ դիցն, թէպէտ և առանց նշանաց ինչ խօսիցին, զի ծնունդք աստուածոց են։ Տեսանես զի և կռապաշտիցն գիտէին զայս։ Այլ զինչ ասիցեմ զաստուածոց. այր և զանէ մերձէ զկախարդէ և զմոգէ՝ զՊիթագորէ ասեմ, յոր մեհենին վերայ զգրութիւն դրոշմեալ էր, զմատուունս 'ի բերանն առեալ, և պնդեալ զշրթունս, ամենայն անցաւորացն զգրութիւն ուսուցանէր։ Իսկ նոցայն այնչափ պարկեշտագոյն, և մերքս և ոչ այնպէս ինչ, այլ ծաղր և կատականք։

Զհեթանոսացն յիրաւի պարտ է 'ի խոյզ և 'ի խնդիր արկանել, զի այնպէս իսկ կասկածոյ և հակառակութեան և երկմտութեան լիք են. իսկ մերքս զատեալք մեկնեալք յայնմ ամենայնէ։ Զնոցայն մարդկան իմաստութիւն եգիտ, և զմերս հոգւոյն շնորհք ուսուցին. նոցայն իմաստութիւն անմտութիւն է, և մերքս ճշմարիտ իմաստութեան կրօնք։ Զի անդ չիք աշակերտ և վարդապետ, այլ ամենեքեան 'ի խնդիրս ծնկեալ՝ եթէ վարդապետ իցէ և եթէ աշակերտ. իսկ աստ ընդունել պարտ է և ոչ խնդրել, հաւանել և ոչ երկմտել, հաւատալ և ոչ ընդ վայր զմիտս ածել։ Վասնզի հաւատովքն ընտրեցան ամենայն առաջինքն, և առանց հաւատոյ ամենայն ինչ եղծեալ ապականեալ է։ Այս զինչ ասիցեմք զերկնաւորացն. այլ թէ և զերկրաւորս քննիցեմք՝ սովին գտանիմք կատարեալս, զի ոչ վաճառաց տուրևառիկ փոփոխմունքն, և ոչ արուեստիցն ար-

պասկք, և ոչ այլ ինչ նոյնպիսի յաջողի առանց հաւատոյ։ Զի թէ ատեն յանցաւոր ինչ իրս հաւատոց պէտք են, որչափ ևս առաւել յանտեսսն։

Արդ զմտաւ եկեալ և նմին հաղորդ լիցուք, և այնպէս կարիցեմք զապականիչ կրօնսն պարզել 'ի մտացն, զծնունդսն ասեմ և զխմորմքնն զոր հայերէն ճակատագիր և բախտն ասեն։ Զի եթէ հաւատայցես եթէ գոյ յարութիւն և դատաստան, զամենայն ինչ զայն կարես պարզել 'ի մտացդ։ Հաւատաս եթէ գոյ ա՛ծ արդար, և չհաւատաս եթէ կարիցէ ինչ վնասակար լինել քեզ 'ի ծնունդն անուանել։ Հաւատաս եթէ գոյ ա՛ծ որ զամենայն վճարէ, և չհաւատաս եթէ գոյ ծնունդ որ զամենայն խառնակէ։ Հաւատաս եթէ գոյ տանջանք և արքայութիւն, և չհաւատաս եթէ գոյ բնաւ ծնունդ ինչ այնպիսի որ զմերն խափանել կարիցէ, և ընդ բռնութեամբ և ընդ հարկաւ արկանել զօրիցէ։ Այլ եթէ այսպէս ինչ իցէ, մի սերմանիցես և մի տնկիցես և մի զինուորիցիս և մի այլ ինչ բնաւ գործ գործիցես. քանզի կամաւ և ակամայ զայն ամենայն աջող ծնունդն բերիցէ։ Այլ զի՞ պիտոյ իցեն այնուհետև աղօթք, և ընդէ՞ր իսկ կամիցիս լինել քրիստոնեայ. եթէ ծնունդն այնպիսի ինչ բերիցէ, ապա և ընդ մեղադրութեամբ իսկ չիցես։ Այլ արուեստքն ուստի՞ իցեն. ոչ[1] ապաքէն 'ի գիտութենէ։ Այո ասեն, քանզի այնպէս հրամանք եղին նմա առանց ջանալոյ լինել իմաստուն։ Այլ արդ ասէ ցոյց առանց աշխատութեան ուսանել արուեստ ինչ. և յայտ է թէ ոչ ըստ հրամանաց ծննդեանն ինչ է, այլ ըստ աշխատութեան։

Այլ զիա՞րդ, ասեն, այս անուն մեծատուն իցէ, որ այնչափ աղտեղի իցէ, այլ[2] թերևս 'ի հօրէ ընկալեալ իցէ զժառանգութիւն. և միւսն թէպէտ և չիցէ այնպիսի, յանհնարին տառապանս աղքատութեան մաշի։ Զայսպիսի իմն բանս ստէպ կիրթ ունիցին, և միշտ վասն աղքատութեան և մեծութեան յուզեն զբոյցս, և ոչ երբէք վասն չարեաց և բարեաց գործոց։ Դու մի ինչ զայս ասիցես. բայց ցոյց եթէ ոք 'ի բարիս փու-

1 Յոյնն մինչ ըստ հրամանաց ծնըն-դեանն։ Այո, ասեն, ճակատագրա-ւորմնքեալ է աշխատութեամբ լինել իմաստուն։

2 Յոյնն որ ու 'ի հօրէ։

թայր և չար եղև, և կամ թէ ոք զծուլութեան զհետ էր և բարի եղև: Զի եթէ զօրութիւն ինչ ունիցի Ճակատագիրն՝ 'ի մեծամեծսն ցուցցէ զզօրութիւն, յառաքինութեան և 'ի չարիս, և ոչ 'ի մեծութե̃ և յաղքատութեան: Ընդէ՞ր, ասեն, ոմն 'ի ցաւս և ոմն յառողջութեան, ոմն ընտիր և ոմն անպիտան. ուստի՞ իցէ զի ումեմն ամենայն ինչ ըստ միտս յառաջ գայ, և միւսումն թէ բիւր հնարս հնարիցի չյաջողի ինչ: Ի բաց լեր 'ի ծննդենէ և 'ի Ճակատագրէ և 'ի հրամանաց [1], և ապա առնուցուս 'ի միտ հաւատեաւ զամենայն: Հաւատա եթէ գոյ ա̃ծ որ վճարէ զամենայն, և ապա ծանիցես զամենայն յայտնապէս:

Ոչ կարեմ, ասէ, հաւատալ, քանզի ոչ տայ շփոթութիւնն ամենայն իրաց համարել թէ գուցէ բնաւ տեսչութիւն ինչ, և կամ թէ ա̃յ գործք իցեն. զիա՞րդ կարիցեմ հաւատալ թէ ա̃ծ բարերար է, յորժամ պոռնկին և աղտեղւոյն և ագահին ինչս տայցէ, և բարեգործին ոչ ինչ այնպիսի: Զիա՞րդ կարիցեմ հաւատալ. իսկ յիրաց ինչ պարտ իցէ հաւատալ: Բարւոք է. թէ այդպէս ինչ իցէ՝ 'ի ծննդենէ այն ամենայն, յարդարի՞ն եթէ յանիրաւէն: Յանիրաւէն, ասեն: Եւ ո՞վ արդեօք արար զանիրաւն, միթէ ա̃ծ: Ոչ, ասեն, այլ անարար է: Եւ զիա՞րդ անարարն զայն ամենայն առնիցէ, զի այս ամենայն հակառակ են միմեանց: Եւ արդ չիցէ բնաւ ինչ ա̃յ:

Եթէ այսպէս իցէ, աղէ քննեսցուք, ո՞ արար զերկինս. ծնունդն, ասեն: Ո՞ արար զերկիր և զծով և զժամս. յանշունչս այնպիսի յօրինուածս գործեաց և այնպիսի պատշաճութիւնս, իսկ 'ի մեզ վասն որոյ ամենայն ինչ եղև՝ այսպիսի՞ անկարգութիւն. զոր օրինակ եթէ ոք տուն շինեսցէ, թէ որպիսի ինչ զարմանալի շինեսցէ՝ ընդ այնր փոյթ յանձին ունիցի, և ընդ բնակչացն ոչ ինչ նոյնպիսի: Ո՞վ իցէ որ սերելոյ և յառաջ գալոյ զգուշանայցէ. ո՞ իցէ որ զյօրինեալ օրէնս բնութեան հաստատեաց. ո՞վ իցէ որ զցայգութե̃ և զցերեկութեան ընթացսն կարգեաց: Եւ այսք քան զծնունդ իմն կարի վերագոյնք են: Ոչ, ասեն, այլ ինք-

1 Յօրինակին 'ի հմաւոց :

նոքին իւրովի եղեն։ Եւ զիա՞րդ այսպիսի յօրինուածք իւրովի ինքնին լինէին։ Եւ ուստի՞ իցէ, ասեն, զի կէսք մեծատունք և աղքատք, երանելիք և եղկելիք։ Նաև, եթէ կէսք յագահութենէ և կէսք 'ի հայրենի ժառանգութենէ և ոմանք 'ի բռնութենէ։ Եւ զիա՞րդ, ասեն, թոյլ տայցէ այնպէս Ած։ Քանզի չեն աստ ըստ իւրաքանչիւր գործոց հատուցմունք, այլ 'ի հանդերձելում յաշխարհին։ Յայնժամ ցուցանիցիր ինձ այսպիսի ինչ գործս գործեալ։ Որ այժմ, ասէ, ինձ աստ տայցես, և անդ ինչ ոչ խնդրեմ։ Եւ վասն այնորիկ չառնուս, զի ոչ զայն խնդրես, այլ զայս. զի թէ մինչդեռ արտաքոյ ցանկութեան ընչիցն ես և այնպէս զայս խնդրես, որպէս զի քան զայն զայս պատուական համարիցիս, որչափ ևս առաւել թէ 'ի ցանկութեան իսկ վայելեալ էիր։ Վասն այնորիկ ցուցանէ քեզ թէ ոչ իսկ է. զի թէ չէր ոչինչ, ապա և այլոցն ևս տայր։

Եւ արդ ասէ ասա, աջ մատն լինել և երկայն և փոքր ո՞չ ապաքէն անխտիրք իցեն. նոյնպէս և մեծութիւն։ Այլ զայն ցոյց որ կարի ինչ կարեւոր իցէ եմ՝ եթէ չէ հասարակաց տուեալ, որպէս զհնարագիտութիւն ինչ հոգևոր իրաց։ Զի եթէ գիտէիր զայս երախտիսն, ապա ոչ յորժամ յայնմ հասարակ վայելէիր, դժկամակ լինէիր՝ եթէ յայսմ ընդէ՞ր չվայելեցի. և ոչ երբէք խնդրէիր զազահութիւն, եթէ գիտէիր թէ յայնմ հասարակ վայելիցեմ։ Զոր օրինակ ծառայ ոք յորժամ զռոճիկն և զհանդերձ և զտուն հասարակ ընդ այլոց առնուցու, եթէ աւելի մազ 'ի գլուխ ունիցի կամ եղընգունս մեծամեծս՝ հպարտանալ ինչ այնու, զոր չպարտէր. նոյն օրինակ և ոչ այնպիսւոյ պարտ է մեծանալ։ Վասն այնորիկ արար զմեզ ընչից տեարս, զի զմոլորութիւն զայնպիսի չիջուցանիցէ, զի յիւր դուռն երկնաւոր յորդորիցէ զմեզ. և մեք և ոչ այնպէս զգաստանամք ինչ։ Զոր օրինակ մանուկ ոք խաղալիկ ինչ 'ի ձեռին ունիցի և քան զկարեւորս ինչ զայն պատուական համարի, և մատուցեալ հօր հանիցէ 'ի ձեռաց, զի ակամայ 'ի կատարեալն դարձուցանիցէ, նոյնպէս և Ած զամենայն հնարս հնարի, զի զմեզ յերկինս տանիցի։

Եւ զիա՞րդ, ասեն, տայ մեծութիւն չարաց։ Քանզի ոչ այնպէս փոյթ ինչ է նմա զմեծութենէն։ Եւ

զարդարուն այնպէս անտես առնէ յաղքատութեան. վասն զի կայ այլ մեծ և առաւել մխիթարութիւն։ Եւ զայս ծանծաղագոյն ասացաք առ այնոսիկ որ ոչ գիտիցեն ըղգիրս. բայց եթէ կամիցիք հաւատալ և ունկն դնել մեծեզէն բանից, չառնիցէք ինչ կարօտ մերոց բանիցս, այլ ձեզէն իսկ գիտէք զամենայն։ Բայց զի ուսանիցէք եթէ չէ ինչ մեծութիւն և ոչ առողջութիւն և փառք, ցուցանեմ զբազումս որոց մարթ էր շահել և չշահեցան, և առողջ լինել և մաշեցին զմարմինս, և 'ի փառս վայելել և անձամբ զանձինս արհամարհեցին։ Քանզի չիք ոք բարի, որ փութայցէ լինել չար։

Եւ մեք բարեաց գործոցն նախանձաւոր լիցուք, զի և անդ 'ի բարութիւնս վայելլիցեմք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

“Զի գլուխ պատուիրանին սէր է 'ի սուրբ սրտէ և 'ի մտաց բարեաց և յանկեղծաւոր հաւատոց. յորոց ոմանք վրիպեալ կործանեցան յունայնութեան բանից. կամեցան լինել օրէնսդիր վարդապետ, և չիմանան զինչ խօսին, և ոչ վասն որոց պնդեալն է”։

Ոչ այլ ինչ այնպէս ապականէ զազգս մարդկան, որպէս յորժամ սէրն արհամարհիցի, յորժամ ոչ բազում փութով ոք ցուցանիցէ զնորին ուղղութիւն. զոր օրինակ և ոչ ուղիղքն՝ եթէ ոչ ամենայն զօրութեամբ երթայցեն զհետ։ Եւ զայս Քրիստոս իսկ յայտ արարեալ ասէր. “Եթէ երկու 'ի ձէնջ միաբանիցին 'ի միասին վասն ամենայնի, զինչ և խնդրիցեն առնուցուն”. և դարձեալ եթէ “Յայնժամ յաճախիցեն անօրէնութիւնք, յորժամ սէրն ցամաքիցի”։ Եւ անտի իսկ ծնան հերձուածք ամենայն, քանզի 'ի չսիրելոյ զիւրեանց զեղբարս նախանձէին ընդ ընտիրս, և 'ի նախանձուէն յիշ-

խնամութիւն զայլն, և յիշխանութենէն հերձուածք ծնանէին: Սոյն այնորիկ և Պաւղոս ասէր. «Զի պատուէր տայցես ումանց մի օտարաբար ինչ ուսուցանել». և զհանգամանսն ևս ցուցանէ՝ որով մարթ իցէ զայն առնել: Զինչ իցէ. սէրն է, ասէ: Զոր օրինակ յորժամ ասիցէ՝ թէ կատարած օրինացն Քրիստոս է, զբովանդակ զաւարտ լրութեան ասէ. և այս զայնոր զհետ երթայ, զոր օրինակ և պատուիրանացն զհետ սէրն: Այլ զլուխ բժշկութեան առողջութիւն է. զի ուր առողջութիւն իցէ, չեն ինչ կարի պէտք բազում զեղոցն կազմածոյ. և ուր սէր է, ոչ այնչափ պէտք ինչ են պատուիրանաց:

Սէր զոր ասիցէ. զհաստատունն, որ ոչ բանիւք միայն իցէ, այլ 'ի սրտէն և 'ի մտացն, և վշտակից լինել: Ի սուրբ սրտէ, ասէ. կամ զուգիչ վարուց ասէ, կամ զսերտ սիրոյ: Քանզի և վարք ինչ աղտեղիք առնեն հերձուածս: «Ամենայն, ասէ, որ զչար գործէ, ատեայ զլոյս»: Կայ սէր և 'ի չարագործաց միջի. այնպիսի ինչ, զի աւազակք զաւազակս սիրեն, և սպանողք զսպանողս. և չէ այն սէր 'ի բարի մտաց, այլ 'ի չարաց. և ոչ 'ի սուրբ սրտէ, այլ 'ի պղծոց. և ոչ յանկեղծաւոր հաւատոց, զի հաւատքն զճշմարտութիւն ցուցանեն, և 'ի հաստատուն հաւատոցն սէրն ծնանի. զի որ սրտիւ ոք հաւատայ յանձ, չառնու երբէք յանձն 'ի սիրոյն թուլանալ:

«Յորոց վրիպեալք, ասէ, խոտորեցան յունայնութեանց բանից»: Բարւոք ասաց եթէ վրիպեալք. զի հնարից պէտք են զուգորդին երթալ, և մի արտաքոյ քան զնկէտն ելանել. որպէս զի 'ի հոգւոյն է ունել զուղղորդ ճանապարհն: Այլ բազում ինչ է որ սահեցուցանէ յուղղոյ ճանապարհէն, և վասն այնորիկ պարտ է միամիտ ևեթ ուշ ունել: «Կամեցան, ասէ, լինել օրէնսդիր վարդապետք»: Տեսանես միւս ևս պատճառ խղճմտութեան: Սոյն այնորիկ և Քրիստոս ասէր, եթէ «Դուք մի զոք կոչէք վարդապետ». և այլուր եթէ «Այլ ոչ նոքա զօրէնսն պահեն, այլ զի ձերով մարմնովդ պարծիցին»: Կամելոյ ևեթ, ասէ, ցանկացեալ են. վասն այնորիկ, ասէ, ոչ հային 'ի ճշմարտութիւն: «Ոչ իմանան, ասէ, զինչ խօսին, և ոչ վասն որոյ պնդեալ են»: Այս այսու բամբասէ զնոսա. որպէս զի թէ չգիտեն զօ

ընկացն միտս, և ոչ զժամանակն թէ յորչափ ինչ պարտ էր տիրել օրինացն ։

Եւ զհարց յանմտութենէ ասիցէ զմեղսն ։ Ոչ միայն վասն կամելոյ օրէնսդիր վարդապետս լինել, այլ և վասն զսէրն չունելոյ. քանզի և անգիտութիւն անտի իսկ ծնաւ ։ Յորժամ ոգիքն զմարմնաւոր ինչ իրօք գայցեն, կուրանան տեսանելիքն նոցա. և յորժամ 'ի սիրոյն վրիպիցեն, ապա և 'ի պատուասիրութիւն անկանին, և այնուհետև կուրանան աչք մտացն ։ Զի որ 'ի ժամանակաւոր ցանկութեանցն ինչ ըմբռնիցի, և կամ ախտիւ կարեաց արբենայցէ, չկարէ ճշմարտութեան ընտրող լինել ։ " Չգիտեն, ասէ, վասն որոց պնդեալն են " ։ Աստ զի 'ի դէպ էր նոցա վասն օրինացն ինչ խօսել և վասն բազում մարմնաւոր սրբութեանց ։ Թողեալ զայնպիսին յանդիմանել, քանզի չէին իսկ ինչ, և ստուերք և օրինակք էին հոգևորացս, և զախորժականն նոցա յարգարէ ։ Զօրէնսն գովէ. օրէնս ասա զտասն պատգամսն կոչէ ։ Քանզի այնու և զայն ևս մերժէ. զի եթէ այն տանջիցէ զյանցաւորսն և առ մեզ անպիտան գտանիցի, որչափ ևս առաւել աւելորդքն ։

" Գիտեմք, ասէ, զի բարւոք են օրէնքն, եթէ ոք զնոսա օրինօքն կրիցէ. զայս գիտասցէ, եթէ 'ի վերայ արդարոց օրէնք ինչ ոչ կան " ։ Եթէ ոք, ասէ, օրինօք կրիցէ. բարւոք է, ասէ, այլ ոչ այնպէս բարւոք, որպէս թէ բնաւ ոք չկարօտանայցէ օրինացն ։ Այլ զոր ասէն այսպիսի ինչ է. բարւոք են օրէնքն, եթէ ոք գործովք կատարիցէ. քանզի այն իսկ է օրինօք զօրէնս կրելն ։ Զի են ոմանք որ ոչ օրինօք կրեն, յորժամ բանիւք թուիցեն. այն իսկ է չկրել օրինօքն ։ Կրէք, ասէ, զօրէնսն. այլ ոչ, ասէ, յօգուտ ինչ անձանց ։ Եւ արդ զինչ ևս իցէ օրինօքն կրել, առաքէն զքեզ առ Քրիստոս ։ Յորժամ այն կամք իցեն օրինացն արդարացուցանել զմարդիկ, և չկարիցեն արդարացուցանել, առաքէն առ այն որ կարողն է արդարացուցանել ։

Եւ այլ ազգ է օրինօք կրել զօրէնսն, յորժամ կարի իսկ ոք պահիցէ զօրէնսն ։ Եւ զինչ իցէ կարի քաջն պահելն. յորժամ որպէս սանձք ինչ վարժի ձիոյ 'ի բերան դնիցին, և յամահոյ և 'ի խեռի, ոչ 'ի նհանջել ինչ, այլ զարդու և կերպարանաց վասն, այնպիսի ինչ է

զօրէնսն օրինօքն կրել, որ ոչ առ բռնութեան իրաց ինչ ցածնուցու։ Զիա՞րդ ոք օրինօք զօրէնսն կրիցէ. յորժամ գիտիցէ թէ չէ կարօտ օրինաց։ Զի որ յայնպիսի առաքինութիւնս հասանիցէ, որպէս զի մի վասն օրինացն երկիւղի գայցէ յուղղութիւն, այլ վասն առաքինութեանն, այնպիսին է որ օրինօքն կրէ զօրէնսն և զգուշութեամբ։ Եթէ այնպէս ոք կրիցէ, զի ոչ առ երկիւղի ինչ, և ոչ առ հարկի պատժոցն որ յօրէնսն կայցեն, այլ անձամբ ստգտանիցէ զանձին մեղս։ Եւ բարուոք իսկ կոչէ արդար զայն որ անձամբ յանձին ցուցանէ զանձին առաքինութիւն։ Այնպիսին է որ օրինօքն կրէ զօրէնսն, որ չառնիցէ արժանի առնուլ անտի խրատ։

Որպէս և ստիւք ստողբայիցն վասն մանկտւոյ գրեն. իսկ յորժամ զայն չափս կատարիցէ, այնուհետև ոչ նոքօք, այլ այլովքն ևս առաւել մնաց հմուտ լինիցի, և 'ի կատարեալ ընթերցուածն 'ի կիր արկանիցէ զգիրն։ Նոյնպէս և որ ոչ առ երկիւղի ինչ զօրէնսն, այլ առ ցանկութեանն առաւել առաքինութեան, նա է որ յաճախագոյն առնիցէ զնորին ուղղութիւն։ Քանզի ոչ նոյնպէս որ 'ի տանջանացն երկնչիցի և որ զառաքինութիւն պատուիցէ՝ մի ազգ կատարեն զօրէնսն, և ոչ որ ընդ օրինօքն իցէ և 'ի վեր քան զօրէնս։ Զի որ 'ի վերոյ քան զօրէնսն կեցցէ, նա է որ օրինօք կրէ զօրէնսն։ Եւ նոյն է որ բարուոք կրէ և պահէ՝ որ մեծ քան զօրինացն ուղղութիւնս ցուցանիցէ, որ չառնիցէ արժանի առնուլ խրատ յօրինաց. զի օրէնքն յաճախ մեղաց տարագրութիւն են, և ոչ եթէ արդարութիւն ինչ գործեն։ Որպէս զի ոքք 'ի չարեացն հեռանայցեն, իբրև զծառայս կատարեն զմիտս նորա։ Քանզի վասն այնորիկ կան 'ի վերայ օրէնքն, զի զյանցաւորութիւն պատժիցեն, զի նոքա կրիցեն զնոցա պատիժսն հատուցանելով, ըստ այնմ. "Ոչ կամիս չերկնչել յիշխանութենէ, զբարիս գործեսջիր"։ Զարեացն միայն պատժոց վճիռ տան օրէնքն. այլ որ պսակաց ինչ արժանի գործս գործիցէ, նմա զինչ օգուտ իցեն օրէնքն։ Որպէս և բժիշկ վիրաւորին և ոչ առողջին պիտոյ է, ցաւածի և ոչ ողջոյ։

"Այլ անօրինաց, ասէ, և անհնազանդից և ամբարշտաց և մեղաւորաց"։ Անօրէնս և անհնազանդս

զՀրեայն կոչէ ։ «Որէնքն, ասէ, զբարկութիւն գործեն»։ Եւ զի առ այն որ պատժի արժանի իցէ ։ «Յօրինաց անտի, ասէ, գիտութիւն մեղաց»։ Եւ նմա զի փոյթ է որ արդարն իցէ ։ Այլ արդ զիարդ չկայցեն օրէնք արդարոյն. քանզի 'ի տանջանաց մեկուսի է, և զի ոչ նմա անտի է ուսանել զգործոյսն, այլ ունի 'ի ներքս 'ի սրտին զշնորհսն հոգւոյն յորդորիչ ։ Որէնք յայն սակս տուան, զի ահիւ և սպառնալեօք տանջիցեն ։ Չեն ինչ այնուհետեւ պիտոյ սանձք վարժ երիվարի, և ոչ դաստիարակ այնմ որ չիցէ կարօտ դաստիարակի ։

«Անօրինաց, ասէ, և անհնազանդից, ամբարշտաց և մեղաւորաց, անօրէնաց և պղծոց, զհայր և զմայր անարգողաց»։ Այլ ոչ այսչափ միայն, այլ իւրաքանչիւր իսկ մի ըստ միոջէ թուէ զմեղսն, զի հաւանեցուցէ ամօթ համարել զօրինացն վերակացութիւն ։ Այսպիսի իմն մանր և անվրէպ թուէ. թէպէտ և բաւական է մեղացն միայն անուամբն մերժել զնոսա յայնպիսի ախտէն ։ Այլ արդ Հրեայքն իցեն մարդելոյզք, և զհայր և զմայր անարգուք. զայն ակնարկեաց, քանզի ամբարիշտս և պիղծս և անսուրբս կոչէ. այնպիսիք իսկ էին, և վասն այնորիկ տուան օրէնքն ։ Ո՞չ ապաքէն յաճախ իսկ կռոց երկիր պագանէին, և զՄովսէս քարկոծել կամէին. ո՞չ ապաքէն սպանութեամբ ազգականացն իւրեանց լի էին ձեռք նոցա, և ամենայն ուրեք այնմ մեղադիր լինէին նոցա մարգարէքն. իսկ նոցա որք զերկնից արքայութիւն կալան յանձին, աւելորդ էր այն ամենայն ։ «Զհարս և զմարս անարգողաց, ասէ, մարդասպանաց, պոռնկաց, արուագիտաց, մարդելուզաց, ստոց երդմնահարաց, և թէ այլ ինչ իցէ որ առողջ վարդապետութեան հակառակ կայցէ»։ Բարւոք ասաց թէ առողջ վարդապետութէ, զի այն ամենայն ախտ էր մտաց ապականելոց ։

«Ըստ աւետարանին, ասէ, փառաց երանելոյն այ, որում եղէ ես հաւատարիմ»։ Որպէս և այժմ իսկ 'ի հաստատութիւն աւետարանին պէտք են օրինաց, բայց հաճելոցն և հաւանելոց ոչ ինչ այնպիսի պէտք են ։ Աւետարան փառաց կոչէ ոչ վասն այլ իրիք, այլ վասն այնորիկ որ ամօթ զհալածանս համարեցան կամ զչարչարանսն Քրիստոսի. և առ նոսա և առ այլս ասէ՝ եթէ փառք են չարչարանքն Քրիստոսի ։ Բայց դարձեալ

փառս կոչելով՝ զհանդերձելոցն եւս ակնարկէ. զի թէ-պէտ և մօտաւորքս, ասէ, ամօթով և նախատանօք լի իցեն, այլ ոչ եթէ հանդերձեալքն այսպիսի ինչ: Վասն զի աւետիք՝ հանդերձելոց իրացն են աւետիք, և ոչ թէ մերձաւորացս: Այս զիարդ ասիցէ հրեշտակն թէ "Աւետիս տամ ձեզ, զի ծնաւ ձեզ փրկիչ". ծնաւ փրկիչ, այլ չև եւս յայտ էր թէ փրկիչ իցէ, և վասն այնորիկ ասէ՝ թէ եղիցի փրկիչ. քանզի ոչ իսկ և իսկ ընդ ծնանելն արար նշանս: "Ըստ աւետարանին, ասէ, փառաց երանելւոյն այ": Այս զպաշտօնն այ փառս կոչէ. զի թէ մօտաւորքս, ասէ, լի են փառօք նորա, որչափ եւս առաւել հանդերձեալքն: Յորժամ դնիցեն ամենայն թըշնամիք 'ի ներքոյ ոտից նորա. յորժամ հակառակորդքն ոչ ինչ լինիցին. յորժամ տեսանիցեն արդարքն զայնպիսի երանութիւնս, զոր ոչ ակն ետես և ոչ ունկն լըւաւ և ոչ 'ի սիրտ մարդոյ անկաւ: "Կամիմ, ասէ, զի ուր եսն եմ, և դոքա ընդ իցեն, զի տեսանիցեն զփառս իմ զոր ետուր ինձ":



## ՅՈՐԴՈՐԱԿ

Ո՞վ իցեն նոքա, երանեսցուք նոցա որք յայնպիսի բարութիւնս վայելիցեն, որք յայնչափ փառս և 'ի լուսաւորութիւն և յերանութեան զուարճանայցեն: Զի այսր աշխարհի փառք ոչ ինչ են և ոչ կան ուրեք. թէպէտ և թուին ինչ, սակայն մի յամիցէ և վաղվաղակի չքնանի. "Ոչ, ասէ, իջցեն փառք նորա ընդ նմա": Վասնզի բազմաց ոչ մինչև 'ի վախճան կացին մնացին փառքն աշխարհիս. իսկ զայնու փառաց չէ այսպիսի ինչ կարծել, այլ միշտ հանապազ կան մնան. չիք վախճան, չիք կատարած: Վասնզի այսպիսի իսկ են այքն, յաւէժ կենդանականք և 'ի վեր քան զամենայն փոփոխմունս և զվախճան[1]: Վասնզի չլինին փառքն արտաքոյ, այլ 'ի ներքոյ. որպիսի ինչ իցէ զոր ասէն. զի ոչ եթէ 'ի պէտպէս հանդերձից կամ 'ի բազում սպասաւորացն լինիցին փառքն, այլ առանց այնր ամենայնի՝ ինքն իսկ մարդն զգեցեալ լինի փառօք: Իսկ աստ եթէ առանց այնր լի-

1 Միւսն անվախճան:

նիցի, մերկ գտանի 'ի փառաց. որպէս 'ի բաղանիս զի տեսանեմք մերկ և խայտառակ զմեծատունս, և 'ի հրապարակս զչարագործս. և բազումք առ վշտի և յորդւոց իւրեանց լոկ մնացին: Բայց անդ համապատաղ ընդ իւր ամենայն ուրեք ունիցի զփառսն. որպէս և հրեշտակք՝ ուր երևեսցին՝ ընդ իւրեանս ունին զփառսն, նոյնպէս և սուրբք. մանաւանդ թէ իբրև զարեգակն իսկ՝ որ չէն կարօտ հանդերձից և ոչ այլ իմիք. այլ միանգամայն՝ իբրև երևի՝ և զփառսն ընդ իւր ծագէ. նոյնպէս և յայնժամ լինիցի:

Այլ արդ երթիցուք զհետ այնպիսի փառաց՝ քան զոր ոչ գտանիցի այլ ինչ հեշտական, և թողցուք զայս՝ քան զոր չիք ինչ վատթարագոյն: «Իզանենլեօք, ասէ, հանդերձից մի պարծեսջիք»: և այս պատուիրան անդուստ իսկ 'ի վերուստ պատուիրէր տղայոց: Քանզի կաքաւիչն և պոռնիկն և գազանամարտն ևս առաւել զեղեցիկ և պաճուճանաց քան զքոյդ՝ հանդերձ զգենուն. և առանց այնր իսկ՝ այնպիսի՞ ինչ իրօք պարծիցիս՝ զոր ցեցն հարկանէ, և զրկիցիս իսկ 'ի վայելելոյ: Տեսանե՞ս զի չեն համառատուն իրք և փառք աշխարհիս. այնպիսի՞ ինչ իրօք պարծիցիս զոր որդունքն ծնանին, և կորնչիցին և ապականիցին. քանզի ասեն՝ եթէ 'ի հնդիկս որդունք ծնանին զմետաքս կերպասուցն:

Եթէ կամիս հանդերձս ստանալ, զայն ստացի՛ր որ 'ի վեր 'ի բարձունս անկանի, զքանչելի և զլուսաւոր արկանելին, զոսկեհուռն պատմուճան: Այլ արդարև այն իսկ է ոսկի, որ ոչ 'ի հողոյ ելանիցէ՝ զոր անիրաւացն ձեռք փորեցին, այլ զոր առաքինութիւնն ծնանիցի: Զգեցցուք զայնպիսի պատմուճան, զոր ոչ մարդք աղքատք և ծառայք անկանեն, այլ ինքնին տէրն:

Այլ թերևս ասիցես, թէ ոսկեհուռ հանդերձս ագանիմք: Այլ այն զի՞նչ անիցէ. քանզի ընդ ոստայնանկն զարմանան ամենեքին, և ոչ ընդ այն որ զգենուցուն. ընդ նա իսկ է զարմանալ: Որպէս 'ի լոկ հանդերձն ոչ ընդ փայտն իցէ զարմանալ ուր պարզիցին, այլ ընդ թափիչն որ այնպէս յօրինեացէ, թէպէտ և փայտն զգեցեալ իցէ. զոր օրինակ և փայտն ոչ վասն պիտոյից ինչ զգենուցու, նոյնպէս և ոչ որ զոսկեհուռն զգենուցու՝ պիտոյից է վասն. այլ հանդերձքն 'ի պէտսն,

բայց այլն ամենայն պաճուճանք և աւելորդք են ։ Ո՞րդ զփա՞րդ չիցէ վերջին անմտութեան՝ վասն ուղղնչին այնպէս փոյթ յանձին ունել, և անձանց փրկութեան մասան թշնամեացն լինել. զգեհեանն արհամարհել, և զմծ թշնամանել. զՔ՜ս քաղցեալ տեսանել և զանց առնել ։

Նա ո՞վ ոք կարիցէ բաւական լինել համարել զխունկան խառնուածոյս, զհնդիկս, զարաբացիս, զպարսիկս, ըզցամաքն, զխոռնաւն, զիւղսն անուշունս, զխունկս աղացիկս, վասն որոյ ընդ վայր և անօգուտ ծախս ծախեցեն ։ Ո՜վ խնկիցես զմարմինդ, ով կին դու, որ 'ի ներքոյ լի է պղծութեամբ ։ Ընդէ՞ր վասն չար հոտոյն այդչափ ծախս ծախիցես. որպէս զգայախ ոք խուղս անոյշս ցանիցէ [1], և զթուրջ աղիւսով զպատուանդանն ազնուական ։ Եթէ կամիցիս՝ գոյ և այլ ինչ կարի անոյշ, որով կարես զոզխոտ անուշացուցանել. ոչ յարաբացւոց և յեթովպացւոց և 'ի հնդկաց և 'ի պարսից, այլ անդուստ 'ի վերուստ յերկնից եկեալ. որ ոչ ընդ ոսկւոյ վաճառի, այլ ընդ կամացն հաճոյից և ընդ անկեղծին հաւատոց ։ Զայնպիսի խուղ գնեսջիր, որոյ հոտն բաւական է լնուլ զտիեզերս, որ յառաքելոցն բուրէր ։ " Հոտ անոյշ եմք 'ի Քրիստոս, ասէ, իցեն որոց 'ի մահ՝ և իցեն որոց 'ի կեանս,, ։ Իսկ այն զի՞ ասէ, զի և զխոզէ ասեն՝ եթէ հեղձնու յանոյշ հոտոյ ։ Բայց յառաքելոցն ոչ միայն 'ի մարմնոցն, այլ և 'ի հանդերձիցն բուրէր հոգևոր անուշահոտութիւն. այնպէս գեղեցիկ բուրէր հոտ անուշութեան 'ի հանդերձիցն Պաւղոսի, մինչև զդևս հալածել ։ Ո՞ր տերև, ո՞ր կասի, ո՞ր ստաշխն, ո՞ր զմուռ. չէ ուրեք, չիք ուրեք այնպիսի հոտոյ անուշութիւն ազնիւ և օգտակար. զի եթէ զդևս հալածէր, և զինչ ևս այլ ոչ գործէր ։

Զայն խուղ կազմեսցուք՝ առաւել [2] յարգի քան զամենայն խնկազացաց՝ որ յողորմութենէն և 'ի հոգևոր շնորհացն կազմի. զի և յորժամ անդր երթիցեմք, բուրեսցէ 'ի մէնջ ։ Զոր օրինակ աստ է ինչ՝ որ փախչիցի յանոյշ հոտոյ, և բազումք ուրախ առնին՝ եթէ 'ի բաղանիս իցեն և եթէ յեկեղեցւոջ, և ուր բազմութիւն ուրեք մարդկան իցէ և բուրիցէ հոտ ինչ այնպիսի, ա-

1 Միւսն ծախիցէ ։ 2 Միւսն որ առաւել յարգի ։

մենեքին անուշանան, ամենեքին անդր դառնան, նոյնպէս և յայնմ աշխարհի՝ յոգւոց յորում բուրիցէ հոգևոր անուշութիւնն, կեսք փախչին և տեղի տայցեն, և այլք մերձենայցեն և ուրախ լինիցին: Եւ աստ դեք հալածին և ամենայն չարիք չիշխեն մերձենալ և չկարեն հանդարտել, քանզի հեղձնուն: Այնու իւղով անուշանայցեմք և զնոյն կրիցեմք յանձին. զի այս դատարկութեան կարծիս զգացուցանէ մեզ, և այն քաջութեան և զարմանալեաց, և բազում համարձակութիւն տայ: Զի զայնպիսի խունկս ոչ երկիր բուսուցանէ, այլ առաքինութիւնն ծնանի. չթարշամի չխամրի, այլ միշտ ծաղկի և պատուականս առնէ զայնոսիկ որք ունիցինն: Այնու օծանիցիմք. յորժամ մկրտեցաքն, գեղեցիկ իմն բուրէր հոտ հոգևոր անուշութեն, և ևս յառաջ բուրեցուցանել՝ մերոյ փութոյն գործ լինիցի:

Նման այնորիկ առաջինքն զայն որ 'ի քահանայութիւն մատչելոց էր՝ իւղով օծանէին, զի անուշութիւն բուրեսցէ 'ի քահանայէն 'ի նշանակ գործոց բարութե: Չիք ինչ չարահոտ քան զմեղս, զոր մարգարէն մանունս իմն դրօշմէ. «Նեխեցան, ասէ, և փտեցան վէրք իմ». և արդարև ևս չար քան զնեխութիւն և զփտութիւն չարահոտ են մեղք: Զինչ ինչ չարահոտութիւն քան զպոռնկութիւն կայցէ, ոչ 'ի պատահելն, այլ յետ մեղացն գործելոյ: Միտ դիր[1], բոզ հոմանիդ, և ապա 'ի միտ առնուցուս զչարահոտն՝ որ անտի ծխիցի, զշարաւն, զպղծութիւնն և զաղտեղութիւնն: Քանզի այնպիսի են մեղքն. մինչ չև գործեալ իցէ՝ ցանկալի իմն թուի, և յորժամ կատարիցին, ապա քաղցրութիւնն ցածնու և դադարէ, և տրտմութիւնն մտանէ և խռովեցուցանէ: Իսկ արդարութիւնն հակառակ իմն նմին, զառաջինն աշխատութիւն իմն թուի. և որչափ յամիցէ ոք, ևս քան զևս քաղցրանայ և հանգիստ ծնանի: Իսկ այն ցանկութիւն՝ թուել թուի ցանկութիւն, այլ ամօթոյ և պատժոց ակն ունի. և յայսմ՝ կալ կայ աշխատութիւն, այլ յոյս հատուցմանն առնէ թեթև զաշխատութիւնն:

Եւ արդ աղէ աստ, զինչ ցանկութիւն իցէ արբե-

1 Միւսն ձեռ. դիր բոզհոմանոյ:

ցութիւնն. ո՞չ ապաքէն ըմպելն. նա և այն չէ ինչ հեշտական ցանկութիւն: Յորժամ յանդգնայ ըմպոյցի, և զոք ՚ի մերձաւորացն ոչ ճանաչիցէ, այլ քան զմեղս ևս չարմոլիցի, ո՞ւր է զի ցանկութիւն իցէ: Նա և պոռնկութիւն չէ ինչ ախորժական ցանկութիւն, յորժամ յախտէն ըմբռնեալ ոգիքն զզաստատանան արհամարհիցեն, և յետոյ խիղճ մնացն զոսկերսն ուտիցէ, զի՞նչ ինչ այն ցանկութիւն իցէ. եթէ այն ցանկութիւն իցէ, ապա և քոս[1] ցանկութիւն իցէ:

Բայց ես ճշմարիտ ցանկութիւն զայն ասեմ, յորժամ ոգիքն ՚ի կարիս ինչ ոչ ըմբռնեսցին, և ոչ մարմնային հանդերձ ծիւրեսցին և ծնկեսցին: Զինչ ինչ այն ցանկութիւն իցէ՝ որ զատամունս կրճիցեն, և զաչսն գունակ գունակ յեղուցուն, և զարեան[2] իբրև ըղձիւնս տեսանիցեն, մոլիցին, կողկղիցին, և աւելի քան զդեւսն ջեռնուցուն: Չէ ինչ այն ցանկութիւն, յորմէ վաղվաղակի զերծանել փութայցեն, և յորժամ զերծանիցին՝ խիղճն զմիտսն ուտիցէ: Եթէ հեշտական ինչ ցանկութիւն իցէ, ընդէ՞ր վաղվաղակի զերծանել կամիցիս. տեսանե՞ս զի անունն միայն է ցանկութեան:

Իսկ մերս ոչ այնպիսի ինչ, այլ արդարեւ հեշտական է. ուր ոչ բաց ինչ յանդգնութեանն բարբառի, այլ ազատութեանն վառեալ իմն զմիտսն՝ յստակ և ուրախ առնէ: Այնպիսի էր Պաւղոսի ցանկութիւնն՝ որ ասէրն. “Ոչ ընդ այս ուրախ եմ, այլ և ուրախ ևս եղէց„. և “Ուրախ լերուք ՚ի տէր յամենայն ժամ„: Իսկ այն ամօթոյ և պարսաւանաց է, և գաղտ գործի, և լի բազում դժնդակութեամբք. իսկ սա ազատ և անարատ յամենայնէ է, և լի ամենայն քաղցրութեամբ: Զայս խնդրեսցուք, և զսորին զհետ երթիցուք, զի և ՚ի հանդերձեալ բարութիւնսն վայելեսցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն:

1 Միւսն գայլն:

2 Միւսն զարիւն իբրև ղջինջ փեռանիցեն, ճուլիցեն, կփռփիցեն. հատուածդ չէք ՚ի յոյնն:

# ՃԱՌ ԵՐՐՈՐԴ

«Շնորհ ունիմ զօրացուցչին իմոյ Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ, զի հաւատարիմ համարեցաւ կարգել զիս 'ի պաշտօնն: Որ յառաջ հայհոյիչ և թշնամանիչ էի, այժմ գտի ողորմութիւն, զի զայն 'ի տգիտութեան և յանհաւատութեան գործէի: Այլ առաւելեալ եմ 'ի շնորհս տեառն մերոյ հաւատովք և սիրով հանդերձ 'ի Քրիստոս Յիսուս»:

Տեսանեմք զխոնարհութիւն զի բազում շահս ունի, և չպատանի ուրեք վայրապար. քանզի կարի յաճախագոյն, այլ արդեամբք և ոչ ուրեք: Եւ երանելին Պաւղոս այնպէս զհետ երթայր խոնարհութեան, որպէս զի բազում ինչ պատճառս գտանիցէ առ 'ի զմիտսն խոնարհեցուցանելոյ: Եւ քանզի այնպիսւոյն որոյ զուղղութիւնսն գործեալ իցէ 'ի դէպ, դժուարաւ է առնուլ յանձն զխոնարհութիւն, և բազում հարկ և բռնութիւն 'ի միտսն որ ոչ գիտիցեն զխիղճ ինչ ունել, քանզի կարի իմն կածին 'ի հպարտութեան հոսանաց. և արդ դու տես զինչ գործէ և աստ իսկ: «Հաւատարիմ եղէ, ասէ, աւետարանի փառացն այ»: Աւետարանին այ հաղորդ լինել այնպիսեացն, ասէ, օրէն էր՝ որ ոչ ես տակաւին ընդ օրինօք վարիցին. քանզի այս այնմ հակառակ է: Տակաւին այնպիսի ինչ 'ի միջի կայ, որպէս զի որ ընդ նովաւն վարիցին՝ չև ես են արժանի նմա հաղորդ լինել. որպէս զի ասիցէ եթէ որք բանտի և պատժոց արժանի իցեն, չէ օրէն եթէ 'ի փիլիսոփայից գունդս խառնիցէ ոք զնոսա:

Արդ քանզի ձոխագոյնս բարբառեցաւ, միանգամայն և զանձն խոնարհեցուցանէր, և զայլս հաւանեցուցանէ այնպիսի ինչ միտս ունել. «Որոյ եմ, ասէ, հաւատարիմ եղէ». և վաղվաղակի պատսպարէ զանձն, զի մի համարիցին թէ առ հպարտութե ինչ ասիցէ: Տես որպիսի ինչ ուղղութիւն 'ի նմին յարդարէ, քանզի 'ի նոյն յարեալ ասէ. «Շնորհ ունիմ զօրացուցչին իմոյ

Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ, զի հաւատարիմ համարեցաւ կարգել զիս 'ի պաշտօնն,,: Տեսանես զի ամենայն ուրեք զիւր ուղղութիւնն թագուցանէ, և զամենայն ա̅յ համարի. բայց այնպէս զի մի զանձնիշխանութեան կարգ ապականիցէ:

Այլ թերևս զամենայն ինչ յա̅յ ասէր առաքեալ, և ոչ 'ի մէնջ ինչ նպաստ լեալ: Բայց զի մի այնպիսի ինչ կարծիս տայցէ, թէ իբրև զփայտ և զքարինս ածիցէ զմեզ ա̅ծ 'ի չարեաց յառաքինութիւն, և լինիցի ասել ոմանց եթէ ընդէ՞ր զՊաւղոս այնպիսի ինչ կատարեաց և զՅուդա և ոչ բնաւ ինչ ամենեւին, և արդ զայնպիսի զխմադարձութիւն 'ի միջոյ բառնայցէ, տես զիարդ իմաստութեամբ 'ի կիր արկանէ զբանն. «Որոյ եմ, ասէ, հաւատարիմ եղէ,,: Եւ այս նորա ուղղութիւն և պատիւ է, այլ ոչ ամենայն նորին: Մի՛տ դիր զինչ անդէն առ նմին ասէ. «Շնորհ ունիմ զօրացուցչին իմոյ Յիսուսի Քրիստոսի,,: այս ա̅յ է. դարձեալ և նորա ինչ. «Զի հաւատարիմ համարեցաւ զիս,, ասէ. ապա ուրեմն լինելոց էր յանձնէ պիտանի: «Հաւատարիմ, ասէ, համարեցաւ կարգել զիս 'ի պաշտօն, որ յառաջ հայհոյիչ և հալածիչ և թշնամանիչ էի, այլ գտի ողորմութիւն, զի 'ի տգիտութեան և յանհաւատութեան գործէի զայն,,: Տես զիարդ զիւրն դնէ, և զայն մեծ մասն ա̅յ տեսչութեան համարի. և զիւրն կարճէ և թագուցանէ, բայց այնչափ միայն՝ որպէս յառաջագոյն ասացի՝ զի մի կարծիցի թէ զանձնիշխանութիւն ինչ խափանել կամիցի:

Եւ զինչ իցէ՝ զօրացուցչին իմոյ: Քանզի ընդ ծանր բեռամբ եմուտ, և բազում վերին օգնականութեան կարօտ էր: Եւ դու միտ դիր, որպիսի ինչ հանապազորդ հոգք էին, թշնամանքն, բամբասանքն, նենգութիւնքն, վիշտքն, պատերազմունքն, մահ ցանկորդքն. որ պինդն պարտ էր կալ և ոչ լքանել, ոչ զեղծել և ոչ տատանել, ոչ խուսել և ոչ խուսափել. այլ թէ յամենայն կողմանց հանապազ բազում նետք տեղայցեն, բաց ունել զաչս և կալ հաստատուն և անշարժ և առանց խոցելոյ: Եւ այս չէր մարդկեղէն զօրութեանց, և ոչ միայն ա̅յ օգնականութեան, այլ և իւր կամացն: Եւ զի յառաջագոյն գիտէր թէ որպիսի ինչ ոք լինելոց է, և ապա

ընտրեաց զնա, լուր զինչ ասէ. մինչ չև բնաւ իսկ հուպ էր 'ի քարոզութիւն, անօթ ընտիր իսկ ասէր զնա՝ կրել զանուն իմ առաջի հեթանոսաց և թագաւորաց։ Զոր օրինակ որք զնշանս արքունի կրեն 'ի պատերազմի, մանաւանդ զոր լաբարոնն կոչեն Հռոմք, բազում ուժից պէտք են և կարի տեղեկութեան, զի մի 'ի ձեռս թշնամեաց անկանիցին, նոյնպէս և որք զանունն Քրիստոսի կրիցեն, ոչ միայն 'ի պատերազմի, այլ և 'ի խաղաղութեան բազում պէտք են, զի մի 'ի չարախօսացն բերանս հայհոյել տայցեն, այլ բարւոք կրել զանունն և օրինաւոր կարգաւ բառնալ զխաչն։ Եւ արդ և բազում ուժոյ պէտք են կրել զանունն Քրիստոսի։ Իսկ որ անարժանս ինչ կամ խօսիցի, կամ գործիցէ, կամ իմանայցէ, չկրէ զանունն Քրիստոսի, և ոչ ունի յանձին զՔրիստոս, այլ առակ և ծանակ առնէ և ոչ զանուն Քրիստոսի, այլ զանձն, ոչ միայն առաջի մարդկան, այլ և առաջի երկնաւորացն։ Քանզի ամենայն հրեշտակք ահիւ և դողութեամբ շուրջ կան 'ի սպասու ահագին անուանն Քրիստոսի։

Եւ "շնորհ ունիմ, ասէ, զօրացուցչին իմոյ Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ"։ Տես զկարգ և զկիրն նորա շնորհս համարի. զգիտելն թէ անօթ ընտիր է, նմա շնորհս ունի։ Թէպէտ և այն քոյ իցէ, ով երանելի Պաւղոս, քանզի ոչ եթէ ակնառու իցէ ա՟ծ։ Բյու իսկ արժանիս արար զիս պաշտամանս այսմիկ, և սոյն իսկ է նշանակ հաւատարիմ լինելոյ։ Զոր օրինակ 'ի տան ուրեք ոչ միայն ընդ հաւատարիմն լինելոյ ունի շնորհ հազարապետ ոք տեառն, այլ և վասն նշանակին ցուցանելոյ եթէ քան զայլսն ամենեսեան զնա հաւատարիմ համարեցաւ, նոյն օրինակ և աստ։

Եւ արդ միտ դիր զկարգ վասն ողորմութեան և մարդասիրութեան ա՟յ զառաջին զվարս իւր կարգաւ մի ըստ միոջէ պատմէ։ "Որ յառաջն, ասէ, հայհոյիչն և հալածիչ և թշնամանիչ էի"։ Եւ յորժամ զՀրէիցն անհաւատիցն ճառիցէ, կարի իմն խորշի 'ի բանէն. "Վկայեմ, ասէ, նոցա զի զնախանձ ա՟յ ունէին". և զանձն ասէ՝ եթէ հայհոյիչ և հալածիչ և թշնամանիչ էի։ Տեսանե՞ս զի ընդ այլսն մեղմագոյն էր, և առ անձն սաստիկ. քանզի չէր անձնասէր, և որպիսի ինչ ցածուն

միտս ունէր։ Այլ չէր արդեօք բաւական ասել հայհոյիչ, նա և այլ հալածիչ ևս. և կարի ևս անձնցուցանէր զհալածանայն անուն։ Ոչ, ասէ, ես ևեթ, ամենայն տան լինէին չարիքն, եթէ ես միայն հայհոյէի ; այլ [illegible] զայլսն որք կամէին բարեպաշտօն լինել՝ հալածէի։ Բանն զի այնպէս բազում է մոլորութիւն հայհոյութեանն։

"Բայց գտի, ասէ, ողորմութիւն, զի զայն ամենայն 'ի տգիտութեան և յանհաւատութեան գործէի"։ Այլ էր վասն այլ հրեայքն չգտին ողորմութիւն. քանզի ոչ առ տգիտութեան, այլ կարի իսկ քաջ գիտէին։ Այլ զի հաւատեաւ ուսանիցիս՝ լուր աւետարանին իսկ որ ասէ, եթէ "Բազումք 'ի փարիսեցւոցն և 'ի հրէիցն հաւատացին 'ի նա. բայց չյայտնէին, քանզի սիրեցին զփառս մարդկան առաւել քան զփառսն այ"։ Դարձեալ և Քրիստոս իսկ ասէ ցնոսա. "Որպէս կարիցէք հաւատալ, զի զփառս 'ի միմեանց առնուք"։ և դարձեալ եթէ "Զայս ասացին հայր և մայր կուրին վասն հրէիցն, զի մի 'ի ժողովրդեանէն ելանիցեն"։ և իշխանք իսկ հրեայքն ասէին. "Տեսանէք զի ոչ ինչ օգտիմք, զի ամենայն աշխարհ չոգան զհետ նորա"։ Ամենայն ուրեք իշխանասիրութեան աղտ տանջէր զնոսա. թէպէտ և ինքեանք իսկ ասացին, "Ոչ ոք կարէ թողուլ զմեղս, բայց միայն մի այ"։ և նա անդէն զայն վաղվաղակի արար, զոր այ միայն նշանակ համարէին։ Այլ չէ այն ամենայն տգիտութեան գործ։

Այլ թերևս ասիցէ ոք, թէ Պաւղոս յայնժամ ուր էր։ Նա սոսս Գամաղիէլի, և չխառնէր 'ի բազմամբոխ ամբոխին որ զկուրին հնչէին։ Այլ Գամաղիէլ ուր էր. այր մի էր որ ոչ ինչ սիրէր զգլխաւորութի, և ոչ փոյթ ինչ էր նմա զայնմ ամենայնէ։ Այլ զիարդ յետոյ գրտանիցի Պաւղոս ընդ բազմամբոխ ամբոխին։ Տեսանէր այնուհետև զի տակաւ աճէին և զօրանային կրօնքն և զբազումս հաւանեցուցանէին։ Բանզի առ Քրիստոսիւ մերթ առ նմա շրջէին, մերթ առ վարդապետսն գնային։ Իսկ յայնժամ բնաւին իսկ ձեռքեցան. ապա և Պաւղոս ոչ վասն իշխանութեան առնէր զոր ինչ առնէրն, այլ վասն նախանձու այ։ Այլ էր վասն երթայր 'ի Դամասկոս. քանզի չար ախտ իմն զիւրսն համարէր, և կասկածէր թէ գուցէ ամենայն ու-

րեք տարածամնիցն քարոզութիւն: Իսկ Հրէայքն ոչ այնպէս ինչ. ոչ վասն բազմաց վերակացութեան, այլ վասն իշխանասիրութեան գործելին զինչ գործելին: Արդ տես զինչ ասէին. «Եւ գայցեն, ասէ, Հռոմք և բառնայցեն զազգս մեր և զքաղաք»: Տես որպիսի ինչ երկիւղ մարդկեղէն խռովեցուցանէր զնոսա:

Բայց զայն իսկ պարտ է գրել թէ զիարդ այնչափ հաւատեօք քննէր զօրէնսն, և չիմանայր ինչ անտի զՔրիստոսէ: Ո՞չ ինքն իսկ էր որ ասէր՝ եթէ «Որ յառաջ խոստացաւ մարգարէիւք իւրովք». և զիա՞րդ էր զի չառնոյր 'ի միտ, քանզի նախանձաւոր էր հայրենի վարդապետութեան և առ ոտսն Գամաղիելի նստեալ և խրատեալ: Իսկ որք զծովակողմքն և զգետովքն ստէպ շրջէին և 'ի մաքսաւորութեան դեգերեալ նստէին, ընդ առաջ չոգան վաղվաղակի և ընկալան, և դու օրինացն հմուտ էիր հալածմա՞նս յարուցանէս: Նմին իրի ստգըտանէր զանձն և ասէր, թէ «Չեմ բաւական կոչիլ առաքեալ»: Վասն այնորիկ տգիտութիւն և անհաւատութիւն անձինն համարէր. նմին աղագաւ ասէր՝ եթէ գտի ողորմութիւն:

Եւ զինչ իցէ՝ հաւատարիմն համարեցաւ. զի ոչ ինչ իմիք տէրունականացն լինէր երբէք մատնիչ. զամենայն նորա համարէր և զիւրսն և զնորայսն, և չխորհէր ինչ յիւր փառացն: Լուր նմին իսկ և այլուր զինչ ասէր, թէ «Արք, զի՞ կայք պշուցեալք ընդ մեզ, և մեք իբրև ըզձեզ մարդիկ չարչարելի եմք». այս իսկ է հաւատարիմն համարեցաւն: Եւ այլուր ասէ, թէ «Առաւել քան զամենեսեան զնոսա վաստակեցի». և անդէն պատըսպարէ, եթէ «Ոչ ես, այլ շնորհքն այ որ ընդ իս են»: Եւ դարձեալ եթէ «Որ ազդէն 'ի մեզ զկամելն և զառնելն». յայտ առնէ զանձնէ թէ պատժոց արժանի էր, քանզի ողորմութիւն այնպիսեացն լինի. թէպէտ և այլուր ասէ. «Կուրութիւն փոքր 'ի շատէ եղև Իսրայէլի»:

«Այլ շնորհքն այ, ասէ, և առաւել եղեն հաւատովքն և սիրով հանդերձ 'ի Քրիստոս Յիսուս»: Եւ զինչ իցէ այն: Զի մի՛ յորժամ լուիցես՝ գտի ողորմութիւն՝ զայն միայն համարիցիս, հայհոյիչ էի, ասէ, և հալածիչ և թշնամանիչ. թէ այնպէս ինչ իցէ՝ և տան-

ջանաց արժանի. բայց չպատժեցայ, ասէ, այլ ողորմութեան գտի: Այլ ոչ այնչափ միայն է ողորմութիւն զի 'ի տանջանացն եւեթ փրկեցայ. և ոչ ուրեք, այլ և այլ ևս մեծամեծ շնորհս և բազում պարգևէ. զի ոչ միայն 'ի սպառնալեաց պատժոցն ազատեաց զմեզ ա՟ծ, այլ և արդարս արար և որդիս և եղբարս և բարեկամս և ժառանգս: Վասն այնորիկ ասէ՝ եթէ ևս առաւել եղեն շնորհքն, և ևս առաւել անցին զանցին զչափովք ողորմութեան. զի այն ոչ[1] ողորմելոյ ինչ է, այլ և սիրելոյ և գթալոյ և կարի յոյժ խնամս տանելոյ:

Արդ և ասաց բազում ինչ և մեծամեծս զա՟յ բարերարութենէն, եթէ հայհոյիչ և հալածիչ և թշնամանիչ էի և ողորմութիւն գտի, և ոչ թէ այնչափ միայն, այլ և մեծաց ևս արժանի արար, ապա և զգուշանայ առ անհաւատոն, զի մի կարծիցեն եթէ անձնիշխանութիւն ինչ խափանեալ իցէ, յարէ 'ի նոյն՝ եթէ "Հաւատովք և սիրովն հանդերձ 'ի Քրիստոս Յիսուս": Զայս միայն, ասէ, յանձանց նպաստ եղաք, զի հաւատացաք եթէ կարող է կեցուցանել զմեզ:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այլ արդ սիրեսցուք զա՟ծ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի. քանզի նա եղև մեզ առիթ այնմիկ, և ոչ օրէնք: Տեսանես որպիսի բարութեանց Քրիստոս եղև մեզ պատճառք, և որպիսի ինչ իրացն օրէնք: Այլ չասաց լոկ թէ առաւել եղեն շնորհքն, այլ թէ ևս առաւել եղեն: Այլ արդարև կարի իսկ առաւել եղեն. զի զորս անչափ տանջանացն արժանի էին, յանկարծակի ածին յորդեգրութիւն: Ահաւասիկ և այլ իմն կարօտութիւն է. զի ոչ միայն հաւատոյն պէտք են, այլ և սիրոյ: Ապա թէ ոչ՝ և այժմ իսկ բազումք են որ 'ի Քրիստոս իբրև յա՟ծ հաւատան, և ոչ առ սէր, քանզի ոչ եթէ սիրելեաց գործ ցուցանեն: Այլ զիա՞րդ. յորժամ զամենայն ինչ քան զնա նախամեծար առնիցեն, և զինչս և զծնունդսն իմն և զճակատագիրն զոր ասեն, և զխտիրս և զհմայս զկիւսս և զնաիհս: Յորժամ 'ի նորա թշնամանս լինի-

1 Պակասէր յօրինակին ոչ. յաւելաւ 'ի յունէն:

ցին կեանքս մեր, ո՞ւր իցէ զի սէր կայցէ 'ի միջի: Որպէս ոք զսերտ և զջերմ բարեկամ սիրիցէ, գէթ այնպէս սիրիցէ զՔրիստոս, գոնեա այնպէս սիրիցէ զայն՝ որ վասն թշնամեացն մատնեաց զորդին իւր: Զի նա այնպէս, որոց ոչ ուղղութիւնս գործեալ էր, և մեծամեծ չարիս արարեալ և յանդգնեալ յայնպիսի ինչ իրս, յոր չէր իշխանութիւն յանդգնել. փոխանակ այնչափ երախտեաց և խնամոց ոչ հատ ընկեց 'ի բաց, այլ և յայնժամ ևս զորդին մատնեաց վասն մեր յորժամ կարի իսկ վնասակար գտաք: Իսկ մեք յետ այնչափ վայելելոյ 'ի բարութիւնսն, և յետ այնպիսի բարեկամութիւն խառնելոյ, և այնպիսի երախտեաց արժանի լինելոյ նովաւ, և այնպէս և ոչ սիրեմք: Իսկ արդ զի՞նչ յոյս կայցէ մեր: Մի երբէս սարսիցեք 'ի բանէս. այլ երանի թէ յիրացն սարսէիք:

Իսկ զի՞արդ իցէ, ասէն, զի ոչ իբրև զբարեկամին սիրիցեմք զա̃ծ: Ես ցուցանեմ, և այնպէս աղօթս առնեմ զի իմ բանքս ոչ ինչ լինիցին, այլ իբրև ծերոց ինչ առանցելոց բարբանջ. բայց կասկածիմ գուցէ արդիւնք իսկ լինիցին բանքս: Վասն սերտ բարեկամաց բազումք բազում անգամ ծախս և մեծամեծ վնաս յանձին կալան. իսկ վասն Քրիստոսի չասեմ թէ ոչ կամին ծախել, այլ և զիւրեանցն և ոչ հաճին բաւական համարել: Վասն բարեկամաց բազում անգամ անարգիմք և թշնամութիւն յանձին ունիմք. իսկ վասն Քրիստոսի չկամի ոք թշնամի ընդ ումեք լինել: Բալ զուր, ասէ, լեր սիրելի, և մի՛ զուր ատելիս: Զբարեկամն սովամահ չկարեմք անտես առնել. և զՔրիստոս հանապազ 'ի մուրականաց կերպարանս տեսանեմք, ոչ վասն մեծի ինչ իրիք, այլ վասն պատառոյ միոյ հացի և չառնեմք երեսս. և այն զի մինչև ըզպայթիցեմք ևս, և պէսպէս ժանտահոտս արտաքս հանիցեմք, և ուռուցեալ պարպատիցին ընդերք. և յերեկի գինւոյն իբրև այսր աւուր գայցէ հոտ, և 'ի փափկութիւնս և յերանութիւնս զուարճանայցեմք. և ոմանք բոզից զեղուտան, և այլք երկրապաշտէից, ոմանք սուտակապասից, այլք ծանականաց նրբակառափանց, անօսպայից և թզկաց և մորոսաց. և զընութեանն զխեղութիւնն 'ի բարեկամացն զբօսանս յառաջ մատուցանեն:

Այլ ընդ այնպիսի բարեկամս չնախանձիմք երբէք, և ոչ հեռանամք յորժամ նոցա բարիս ինչ լինիցին։ Նաև որք ըստ Քրիստոսի բարեկամքն իցեն, առ նոսա ախտանամք այսպիսի ախտ, և այնպէս կարի ինն մարդկան բարեկամութիւնք գտանին առ մեզ զօրացեալք քան զայն երկիւղն։ Զի և խորամանկն և նախանձոտն քան զայն 'ի մարդկանէ առաւել ակնածէ. և ընդ այն զարմացեալ եմ՝ թէ զիարդ այն, որ զսիրոյն քննէ չդադարէ նենգաւորն 'ի նենգութենէն, և եթէ զմարդ տեսանիցէ կարճչի, և մեռանիցի յերկիւղէն։ Այլ ևս զինչ ևս ասիցեմ. բարեկամ ոք յորժամ խօթ կայցէ, ամէնք երթամք տեսանել. և թէ սակաւ ինչ յամիցեմք, կասկածեմք թէ գուցէ ստգտանիցիմք. և Քրիստոս բազում անգամ 'ի բանտի մեռանի, և չերթամք տեսանել. և առ բարեկամքն ոչ զի հաւատարիմք իցեն, այլ զի 'ի բարեկամքն երթամք։

Տեսանե՞ս, զի ոչ ինչ վասն երկիւղի և սիրոյ այն լինի, այլ կամ վասն բարեկամութեան և կամ վասն սովորութեան։ Զբարեկամն յորժամ տեսանեմք եթէ 'ի տար աշխարհ ուրեք երթիցէ, լամք մղձկիմք արտասուեմք, թէպէտ և չգիտիցեմք՝ թէ ամենևին միշտ զատանիցի 'ի մէնջ։ Այլ ընդ Քրիստոսի միշտ մեկնելոյն 'ի մէնջ, մանաւանդ զի և մեք իսկ հալածիցեմք զնա, չցաւէ ումեք, և չհամարիմք թէ ոճիր ինչ գործիցեմք. այլ անիրաւիմք, տրտմեցուցանեմք, զայրացուցանեմք, և զոր ինչ նմայն չկամիցի՝ զայն գործեմք։ Բայց չէ ևս այն սոսկումն է, զի չունիմք զնա առ բարեկամս. այլ ես ցուցանեմ զի թշնամութեամբ ևս գնամք ընդ նմա։ "Որպէս խորհուրդք, ասէ, մարմնոյ թշնամի են առ Ած". և մեք զայն եւեթ 'ի բուռն հարեալ շրջեցուցանեմք։ Այլ նա միշտ առ մեզ ընթանայ, և ցանգ հալածական լինի. յորժամ եկեալ 'ի դուրս կայցէ, ելեալ արտաքս հալածեմք։ Այլ այս 'ի չար գործոց լինի. համապազ և թշնամանեմք զնա ագահութեամբ և յափշտակութեամբ։

Փառաւորիցի ոք յորժամ ընտիր գտանիցի, զայն բանս խօսիցի և զեկեղեցի շինիցէ. և մեք առ այն նախանձ բերեմք, զի զայն գործ գործէ. և չկամիմք թէ այլովք, այլ թէ մեօք շինէր շինուածն։ Այլ այն ոչ վասն Քրիստոսի է, այլ վասն մեր. զի թէ վասն Քրիստոսի էր,

զի մեօք և այլովք նոյն գործ գործէր ։ Եւ արդ ասէ ա-
սա, թէ բժշկի ուրուք մանուկ մերձ էր 'ի կուրանալ և
ինքն չէր բաւական բժշկել, և այլ ոք գտանէր որ զնոյն
գործ վճարէր, միթէ հալածէր զնա. և ոչ ուրեք. այլ
զայն ևեթ խորհէր, թէ ինև և թէ այլով՝ միայն բժըշ-
կութի՞ւն լինիցի. քանզի ոչ եթէ յիւր ինչ պէտս նայէր,
այլ 'ի մանկան օգուտ ։ Նոյնպէս եթէ և մեք 'ի Քրիս-
տոս հայէաք, ասէաք՝ եթէ մեօք և եթէ այլովք՝ միայն
շահն գործիցի, ըստ այնմ. "Եթէ պատճառանօք և
եթէ ճշմարտութեամբ՝ միայն Քրիստոս քարոզեսցի,, ։
Լուր և մեծին Մովսէսի որ ասէր առ այնոսիկ որ զայ-
րացուցանէին կամէին զնա մինչդեռ Եղդադն և Մով-
դադն մարգարէանային. "Մի՛ արկաներ, ասէ, ինձ նա-
խանձուկս, ո՛ տայր թէ ամենայն ժողովուրդն տեառն
մարգարէք լինէին,, ։ Եւ այս ամենայն 'ի սնապարծիկ
փառասիրութենէն լինի. ո՞չ ապաքէն թշնամեաց և պա-
տերազմողաց է այն ։

Յորժամ չար ոք խօսեսցի զքէն, դու սիրեսջիր զայն-
պիսին ։ Եւ զիա՞րդ մարթի, ասէ, սիրել ։ Մարթ է թէ
կամիս. թէ զբարիխաստացն ևեթ սիրիցես՝ չէ ինչ քո
շնորհ, զի ոչ վասն Քրիստոսի, այլ վասն բարիխաստա-
ցութեան զայն առնես ։ Նման ինչ ոք արար քեզ, դու
երախտիս առնիջիր. իսկ եթէ երախտաւորին միայն
բարի առնիցես, ոչ ինչ մեծ գործ գործեցեր ։ Զրկի-
ցես ինչ և ծախիցես յումեքէ. դու մեծամեծս ընդ փո-
քունց ջանասջիր հատուցանել ։ Ր.յո, փոխանակ աղաչեմ,
այնպիսի ինչ դարման տանիցիմք անձանց. դադարես-
ցուք 'ի չարակարութենէ և յատելոյ զթշնամիս ։ Նա
և զթշնամիսն հրաման տայ սիրել. մեք զնա ևս որ սի-
րէն՝ հալածեմք ։ Մի՛ լիցի, ասէ, բանդ. ամենեքին զայդ
ատասցուք մի՛ բանիւք, այլ արդեամբք հանդարտեմք ։
Երբ հեռանայցեմք 'ի չարակարացն որ զմեր փրկու-
թիւն ապականիցեն. զի հասանիցեմք այնպիսի ինչ բա-
րութեանց, յորս բարեկամաց պարտ իցէ վայելել ։ Զի
ուր եմ իցեմ և աշակերտքն իմ անդ իցեն, զի տեսա-
նիցեն զփառսն, յորս լիցի ամենեցուն մեզ վայելել
շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին
Յիսուսի Քրիստոսի, որում վայել է փառք յաւի-
տեանս յաւիտենից. ամէն ։

# ՃԱՌ ՉՈՐՐՈՐԴ

"Հաւատարիմ է բանս և ամենայն ընդունելութեանց արժանի, զի Քրիստոս Յիսուս եկն յաշխարհ փրկել զմեղաւորս, որոց գլուխն ես իսկ եմ։ Այլ վասն այնորիկ գտի ողորմութիւն, զի նախ յիս ցուցցէ Յիսուս Քրիստոս զամենայն երկայնմտութիւն յօրինակ այնոցիկ որ հաւատալոցն են 'ի նա 'ի կեանս յաւիտենից„։

Որպէս մեծամեծ են երախտիքն այ, և ըստ ամենայն մարդկօրէն յոյս և ակնկալութիւն անցանեն, որպէս զի բազում անգամ և չհաւատալի իսկ թուին։ Զի զոր ինչ ոչ երբէք խնամային և ոչ կարծէին միտք մարդկեղէնք, շնորհեաց մեզ, մինչև կարի իսկ ջան ցուցանել առաքելոյն, թէ որպէս կարիցեն հաւատարիմ առնել զպարգևսն որ յԱյ շնորհեցաւ մեզ։ Զոր օրինակ մեծամեծ ինչ բարութեանց յորժամ լուիցեմք՝ չհաւատամք թէ արդարև լինիցի ինչ այնպիսի, թէ երազ ինչ իցէ. նոյնպէս և զԱյ սպարգևացն։ Այս զինչ իցէ չհաւատալին. եթէ թշնամիքն, եթէ մեղաւորքն, եթէ օրինաւորքն արդարանային, և ոչ 'ի գործոցն. հաւատովն միայն յանկարծակի հասանելոց էին 'ի վերին աստիճանն։ Բազում ինչ և 'ի հռովմայեցւոց թղթին ասէ վասն նորին ձևոյ, բազում ինչ և աստ։

"Հաւատարիմ է, ասէ, բանն և ամենայն ընդունելութեան արժանի է, զի Քրիստոս Յիսուս եկն յաշխարհս փրկել զմեղաւորս, որոց առաջինն ես իսկ եմ„։ Քանզի հրեայքն այնու իմն յաճախագոյն պարծէին, յորդորէ զնոսա օրինացն ուշ ունել, որպէս զի թէ չիցէ ինչ հնար առանց օրինաց ապրել. բայց և զհաւատոյն օրէնքն քարոզեն։ Արդ ընդ այնպիսի միտս մարտնչի։ Քանզի կարի անհաւատ իրքն թուէին եթէ մարդոյ որոյ զամենայն զկեանս 'ի մեղս մաշեալ իցէ և 'ի զուր և ընդ վայր 'ի չար գործոն ծախեալ. յանկարծակի յետոյ հաւատովքն միայն կեցցէ. վասն այնորիկ ասէ՝ թէ հաւատարիմ է բանս։

Բայց ոմանք ոչ միայն չհաւատային, այլ և քամահէին ևս, որպէս և այժմ իսկ բազումք ասեն՝ թէ "Արասցուք զչար, զի եկեսցէ բարի": Նա և կռապաշտիցն քամահանօքն զմեր ինչ իրս. յորժամ զգեհենէն ոք ճառիցէ առ նոսա, և այն ո՞չ ինչ արժան իցէ ասեն. մարդոյ յորժամ բազում յանցանս յանցանիցէ ծառայ՝ թողութիւն առնել և ներելոյ արժանի. իսկ ա՞ծ, ասեն, անմա՞հ տանջանօք տանջիցէ: Եւ յորժամ զաւազանէ ճառիցեմք առ նոսա և զբազում մեղացն միանգամայն թողութեան, և այն ևս զի՞նչ արժանի իցէ, ասեն, ա՞յ, չարագործին որ զբիւր չարիս գործեալ իցէ՝ 'ի միում ժամու թողութի՜ առնել: Տես զկամակոր միտսն, զիարդ ամենայն ուրեք զիւր ստահակութիւն ցուցանէ: Եթէ թողութիւն չար ինչ իցէ, ապա ուրեմն տանջանքն բարւոք են. եթէ տանջանքն չիցեն բարւոք, ապա և թողութի՜ բարւոք է: Ըստ նոցա մտացն ասեմ, այլ ըստ մերոց մտաց երկոքեան բարի են: Եւ թէ որպէս՝ 'ի միւսում ժամանակի ցուցցուք, զի ոչ այժմու ինչ գործ է. քանզի խորին և զարմանալի և բազում գործոց և կրկնակի յորդորելոյ պէտք են, 'ի դէպ ժամանակի պարտ է յարդարել և դնել առաջի ձերոյ սիրոյդ:

Եւ արդ ուստի՞ իցէ բանն՝ հաւատարիմ. 'ի վաղուց գործոցն և որ առ յապայ ինչ գործիցին: Եւ արդ տես զիարդ յառաջագոյն յարդարէ, և յետ յարդարելոյն անդրէն 'ի նմին յամէ: Զի ասելն՝ թէ հայհոյիչ և հալածիչ և թշնամանիչ էի և ողորմեցաւ, յառաջագոյն յարդարելոյ ինչ գործ է: Ոչ միայն ողորմեցաւ, ասէ, այլ և հաւատարիմ համարեցաւ: Եւ վասն այնորիկ ոչ է պարտ անհաւատ լինել վասն զի ողորմեցաւն: Քանզի ոչ ոք յորժամ տեսանիցէ զկալանաւոր ոք որ յարքունիսն ճեպեսցի ողորմութի՜ գտեալ, և թերահաւատ լինիցի. և զայն 'ի Պաւղոս է տեսանել: Նա դարձեալ և այլ իմն նշանս զանձնէ ցուցանէ, զի չամաչէ զանձն մեղաւոր կոչել, այլ և կարի իսկ զօրանայ նովիմ թէ այնչափ մարդասիրութեան արժանի եղև. այնու իսկ առաւել յարդարէ զմեծութիւն ա՜յ երախտեացն:

Եւ զիա՞րդ այլուր ասիցէ զանձնէ՝ եթէ "Ըստ օրինացն արդարութեան եղէ անարատ", և աստ մեղաւոր կոչէ զանձն, և գլուխ ևս առաջին մեղաւորաց: Քան-

զի առ այն արդարութիւն զոր ա̃ծն յարգարեաց և որ ներքին խնդրիցի, մեղաւոր գտանի որ օրինացն արդարութեամբ արդարացան. «Ամենեքեան, ասէ, մեղան, և նուազեալ են ՚ի փառաց անտի ա̃յ»։ Վանզի չասաց լոկ արդարութիւն, այլ թէ ըստ օրինաց արդարութի̃։ Զոր օրինակ յորժամ արծաթ ոք չար ունիցի՝ առ անձին մեծատուն երևի, և ըստ համեմատութեան արքունի գանձուցն կարի յոյժ աղքատ և առ անձինն ոչ աղքատ, նոյնպէս և աստ յորժամ ընդ հրեշտակսն համեմատեսցին մարդիկ՝ արդարքն մեղաւորք երևին։ Իսկ եթէ Պաւղոս որ զօրինացն արդարութիւն կատարեաց առաջին մեղաւորաց իցէ, ապա ո՞ այլ ոք արդար կոչեսցի։ Եւ եթէ պարսաւիցէ ինչ զվարս իւր իբրև զաղտեղի ուրուք կամ զպոռնկի կամ զագահի, քաւ լիցի. այլ զայն արդարութիւն և զայս ընդ միմեանս համեմատել ցուցանէ, թէ ոչ ինչ էր այն առ այսու, այլ մեղաւորք ևս էին որ զայն արդարութիւն ունէին առ այսու արդարովքս։

«Վասն այնորիկ, ասէ, գտի ողորմութիւն, զի նախ յիս ցուցց Յիսուս Քրիստոս զամենայն երկայնմտութիւն յօրինակ այնոցիկ որ հաւատալոց իցեն ՚ի նա ՚ի կեանսն յաւիտենականս»։ Տեսանես զիարդ միւսանգամ խոնարհեցուցանէ և ցածուցանէ զանձն, այլ իմն նուաստագոյն պատճառս ասէ։ Վասնզի վասն տգիտութեան ողորմութիւն գտանել՝ ոչ ինչ կարի մեղաւոր ցուցանէ զողորմելն, ոչ այնպիսի ինչ ստգտանել, որպէս զի որ գիտելով իսկ մեղանչիցէ։ Իսկ աստանօր թէ ողորմութիւն գտի, այլոցն խրախոյս տայ, զի մի ոք ՚ի յանյուսութեան զանձն անյոյս համարեսցի, այլ քաջալերեսցի թէ և նա այնպիսի մեծամեծ և առաւել պարգևաց արժանի լինելոց է։

Գլուխ մեղաւորաց կոչէ զանձն և հայհոյիչ և հալածիչ և թշնամանիչ. և չեմ, ասէ, բաւական կոչիլ առաքեալ. եթէ և այլ ևս ինչ հնար էր ասել՝ ասէր զանձնէ վասն այլոցն քաջալերութեան. և յայտ զնոյն այսպիսի ինչ օրինակաւ արարից։ Դի՛ր թէ քաղաք ուրեք մարդաշատ և ամենայն բնակիչք չարագործք, և կէսքն ոչինչ այնպիսիք, բայց սակայն ամենեքեան չա-սակարք. և գտանիցի ոք ՚ի մէջ բազմացն որ մեծամեծ

տանջանաց արժանի իցէ, ըստ ամենայն չարիս եկեալ և ամենայն պատժոց պատժապարտ: Այլ թէ ասիցէ ոք՝ ամենեցուն իսկ կամի թողուլ թագաւորն զմեղս, ոչ այնպէս բանիցն հաւատան, որպէս թէ տեսանիցեն զայն որ կարի մեծամեծն իցէ՝ թողութեան հասանել. և չկը-նիցի ոք այնուհետև երկմիտ 'ի թողութենէն: Այսպիսի ինչ ասէր և Պաւղոս. կամեցաւ, ասէ, ած հաճել զամենայն մարդիկ, թէ ամենեցուն իսկ թողու ըզմեղս, յայն սակս նախ զիս որ քան զամենեսին մեղաւոր էի՝ ընտրեաց: Այլ արդ ողորմեցաւ ես, ասէ, արժանի եղէ թողութեան, մի ոք այսուհետև երկմիտ լիցի. որպէս ասիցէ ոք 'ի բանից կարգի, եթէ նման թողացուած, ապա զայլ ոք ոչ տանջէ: Այլ այնու ցուցանէ թէ արժանի իսկ չէր թողութեան, այլ վասն այլոց փրկութեան վայելեաց յայնմ: Մի՛ ոք այսուհետև երկմտեսցի ուր ես ապրեցայ:

Այլ դու տես զխոնարհութիւն երանելւոյն. չասաց լոկ եթէ զի յիս եցոյց զերկայնմտութիւն, այլ թէ նախ յիս եցոյց զերկայնմտութիւն, որպէս զի ասիցէ թէ յիս միայն որ այնչափ մեղաւոր էի՝ եցոյց զամենայն երկայնմտութիւն. քանզի չգտանիւր քան զիս այլ ոք մեղաւոր՝ այնչափ կարօտ էի ողորմութեան նորա, երկայնմտութեան, ոչ մասն ինչ որպէս ոք 'ի միում ինչ կողմանէ մեղանչիցեն: "Յօրինակ, ասէ, այնոցիկ որ հաւատալոց իցեն 'ի նա 'ի կեանսն յաւիտենականս". այս իսկ է, զի 'ի մխիթարութիւն և 'ի սփոփութիւն ամենեցուն լինիցի իմ փրկութիւնս:

Այլ քանզի մեծամեծս խօսեցաւ զորդւոյ եթէ այնչափ սէր եցոյց, զի մի՛ համարիցի ոք եթէ զհայր զրկիցէ ինչ, տայ և նմա փառս, քանզի և 'ի նոյն յարէ՝ թէ "Թագաւորին յաւիտենից միայնոյ, անեղծ և անաբատ ած փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից": Վասն այսր ամենայնի, ասէ, ոչ միայն զորդի, այլ և զհայր փառաւորեմք: Այլ արդ հարցցուք զհերձուածողն. ահաւասիկ միայնոյ ած ասաց, միթէ որդի չիցէ՞ ած. և միայնոյ անեղծի, միթէ որդի չիցէ՞ անեղծ. և զողորմելն տայ, յետոյ ինքն ո՞չ ունիցի: Այո, ասեն, ած է և անեղծ, այլ ոչ այնպիսի ինչ որպէս և հայր է: Զինչ խօսիս թէ չիցէ այնպիսի: Նուազագունէ

յէութենէ է ասեն։ Ոչ է այնպէս իցէ, նուազագոյն ինչ աներգծութիւն ունի. և զինչ իցէ նուազագոյնն. եւս և նուազագոյնն աներգծութիւն է։ Զի աներգծութիւն ոչ այլ ինչ է, եթէ ոչ չերգծանելի։ Փառք ինչ մեծ և նուազագոյնք կան, այլ աներգծութիւն մեծ և նուազագոյն ամենևին իսկ ոչ. զոր օրինակ և ոչ առողջութիւն սակաւ և բազում։ Նա արդ կամ երգծանել պարտ է, և կամ բնաւ ամենևին չերգծանել։ Իսկ արդ զինչ, ասեն, մեք և Ած միապէս ինչ աներգծութիւն ունիցիմք. և ոչ ուրեք, քաւ լիցի. զի նա բնութեամբ ունի, և մեք եկամուտ։ Մի՛թէ և որդին այնպիսի ինչ. ո՛ն անդր, այլ և նա բնութեամբ։ Նա արդ յիմ իցէ այլակերպութի նորա։ Նա ոչ, ասեն, յումեքէ եղև այնպիսի. իսկ որդի 'ի հօրէ։ Այո և մեք խոստովանիմք զայն, քանզի ոչ ուրանամք եթէ ոչ ծնաւ որդի 'ի հօրէ աներգծ. և վասն այնորիկ փառաւորեմք զհայր զի այնպիսի ծնաւ որդի։ Տեսանե՞ս զի յայնժամ փառաւորի հայր, յորժամ որդին մեծամեծս ինչ կատարեսցէ, քանզի 'ի նա ելանէ մեծամեծացն փառաւորութիւն։ Նա եթէ այս այսպէս իցէ, և յորժամ հզօր իցէ ծնունդն՝ զօրութք փառաւորութիւն 'ի հայր ելանէ, յորժամ ամենայնի բաւական լինիցի և ինքն ոչ տկարանայցէ։

"Այլ թագաւորին յաւիտենից"։ Զայս զորդւոյ ասէ, թէ որպէս զյաւիտեանս արար։ Քանզի և առ մեզ բաժանեալ են գործք ինչ և ստացուածք, զի այլ այն է որ կազմէն, և այլ այն որում կազմէ, և եթէ հարուիցի և տառապիցի, այլ է որ զիշխանութիւն ունիցի։ Ընդէ՞ր. քանզի որ կազմէն տկարագոյն է։ Իսկ անդ ոչ այնպիսի ինն. քանզի ոչ է այլոյ տէրութիւն և ոչ այլոյ ուրուք արարչութիւն. զի ոչ եթէ յորժամ լսիցեմք եթէ "որով զյաւիտեանս արար", բառնայցեմ 'ի հօրէ զարարչութիւն. և ոչ յորժամ լսեմ թէ հայր թագաւոր է յաւիտենից, բառնայցեմ յորդւոյ զտէրութիւն. զի հասարակաց են նորա՝ և նորա երկոքեան։ Որպէս հայր, այնու զի զարարիչն ծնաւ. թագաւորէ և որդի, այնու զի տէր է իւրոց արարածոց։ Քանզի ոչ եթէ վարձիւք գործիցէ, որպէս և ասա առաւել. և ոչ այլ որ ունկնդիր լինի, որպէս և ասա միմեանց. այլ վասն իւրոյ բարերարութեան և մարդասի-

բութեանն: Իսկ արդ զխօրդ, որդի երբէք երևեցան մերկ խորով ոճութեամբ. չիք ասել, չկարէ ոք ցուցանել: Այս զխօրդ ասիցէ "Յնեզծին և աներևութին մխայնոյ": Այս արդ զխօրդ յորժամ ասիցի թէ "Ջիք խսկ անուն որով պարտ իցէ կեալ մեզ" և չիք այլ ումեքէ փրկութիւն", միթէ զհայր մերժիցէ ինչ 'ի փըրկութենէն:

"Պատիւ, ասէ, և փառք յաւիտեանս ամէն": Պատիւ և փառք ոչ եթէ բանիւք լինին, այլ արդեամբք: Քանզի նա ոչ եթէ բանիւք պատուեաց զմեզ, այլ արդեամբք և գործովք. նոյնպէս և մեք զնա արդեամբք և գործովք պատուեսցուք: Թէպէտ և մերս ինչ 'ի նա չհասպ լինիցի, այլ նորայն զմեզ փառաւորէ. քանզի ոչ ինչ կարօտ է մերոյքն, այլ մեք նորայոցն. որպէս զի յորժամ զնա պատուիցեմք, զանձինս պատուեմք: Ո որ օրինակ յորժամ զաչս ոք բանայցէ և յարեգակն նայիցի՝ անձին օգուտ առնէ յորժամ ընդ այնպիսի գեղեցիկ առարկն զարմանայցէ, և ոչ եթէ նմա ինչ շնորհիցէ, և կամ ևս պայծառագոյնս առնիցէ, այլ նա նոյնպէս կայ մնայ, նոյնպէս և առաւել քան զնոյն յորժամ ընդ ա̃ծ ոք զարմանայցէ և պատուիցէ, զանձն կեցուցանէ և իւր օգուտ գործիցէ. որպէս ինչ յորժամ զառաքինութեամբն գայցէ, 'ի նմանէ փառաւորի. "Զփառաւորիչս իմ, ասէ, փառաւորեցից": Այս զխօրդ, ասէ զնմանէ՝ թէ փառաւորի, ոչ վայելէ ինչ 'ի մերմէ փառաւորութենէ: Այլ զոր օրինակ և քաղցնուլ և ծարաւել ասէ, և զամենայն զմեր կարիսն իւր ընտանեցուցանէր, զի զոնեա այնպէս ձգեսցէ զմեզ առ ինքն, և զպատիւս մեր և զթշնամանս՝ իւր անուանէ. զի եթէ ոչ այնպէս երկնչիցիմք, սակայն և ոչ այնպէս ձգիմք առ նա:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Փառաւորեսցուք զա̃ծ, կրեսցուք զնա 'ի մարմինս և յոգիս մեր: Այս զխօրդ ոք փառաւորեսցէ հոգւով և մարմնով: Մարմնովն, որ ոչն պոռնկեսցի, որ ոչն արբենայցէ, որ ոչն որկորստանայցէ. հոգւով՝ որ մտօքն զչարիս չխորհիցի. մարմնով՝ որ ոչ այնչափ ինչ խնամ տանիցի մարմնոյն, այլ որչափ ինչ առողջութեան պէտք ի-

ցեն, յորժամ ոչ չնայցէ կնոջն, յորժամ ոչ իւղոյ և գինւոյ զհետ լինիցի, և ոչ 'ի մնգայր և 'ի ծարիր նկարիցէ զերեսս, որ բաւական համարի զնոյն ստեղծուած, և ոչ այլումք ինչ պաճուճանօք պաճուճեսցի։ Այլ արդ աղէ սաս, զինչ յաւելուածս 'ի քէն Ջանայցես յաւելուլ յայդ կատարեալ արարչութեան։ Զի քեզ բաւական այդ ստեղծուածն. լաւագոյն ինչ ճարտարութիւն 'ի ներքս խառնիցես ուղղել զգործն։ Զարդարիս պաճուճիս և թշնամանես զարարիչն, և այնու բազում հոմանեաց կամիս հաճոյ լինել։

Այլ զի՞ առնեմ, ասեն, ոչ եթէ ես ինչ զայն կամիմ, այլ վասն այն 'ի հարկէ այնպիսի ինչ գործ գործել է հնար. եթէ ոչ կամիցի, 'ի ցանկութիւն զրգռիցի։ Գեղեցիկ արար ած զքեզ՝ և այնու զարմանալի երևեսցիս, ոչ այլ զի թշնամանիցես. մի այնպէս փոխարէնս դարձուցանիցես, այլ զցածութիւն, զգաստութիւն։ Գեղեցիկ արար զքեզ ած, զի դու զպարկեշտութեան առաքինութիւն անձեցուցանիցես. քանզի ոչ այնպէս հաճոյ են զարդարանք իբրև զցածութիւն. և եթէ զցածութիւն սիրեսցես, ոչ երբէք յումեքէ լկեցիս։ Զինչ զրոց որ ասէ զՅովսեփայն՝ եթէ գեղեցիկ էր և ազնիւ երեսօք. զի մեք շահիցիմք ինչ անտի, եթէ զխարդ այնպիսի գեղեցիկն չանկաւ 'ի ձեռս որոգայթիցն։ Գեղեցիկ արար զքեզ ած, ընդէ՞ր Ջանայցես տգեղ լինել։ Զոսկի պատկերաւ եթէ ոք կաւ ծեփեսցէ, այնմ նմանն են որ զերեսօքն պէսպէս պաճուճանս ածիցեն. հող առեալ շփեսցես զերեսօք, մերթ կարմիր մերթ սպիտակ։

Այլ տգեղ են, ասէ, յիրաւի առնեն զայն։ Ի՞ր վասն. զի զտգեղութիւն, ասէ, ծածկիցեն։ Զուր ջանան, երբ բուն ինչ 'ի պիտանեաց ճարտարութեամբ հնարից յաղթիցի։ Այլ ընդէ՞ր բնաւ ընդ տգեղութիւն զչարիցես, որոյ բամբաս ինչ չիցէ զկնի։ Լուր իմաստնոյն որ ասէ, եթէ "Մի պարսաւիցես զայր տգեղ, և մի գովիցես զայր գեղեցիկ"։ Ընդ ած միայն զարմասջիր, ընդ ճարտարապետս արուեստականն. ընդ մարդ մի երբէք ամենևին, քանզի ոչ եթէ անձամբ ինչ եղև ձևող։ Այլ զի՞նչ բնաւ օգուտ 'ի գեղոյն իցէ. և ոչ ինչ. այլ վնաս, պատերազմք, վիշտք և կործանք. իսկ որ չիցէն

գեղեցիկ, զնմանէ և ոչ ոք վայրապար կարծէ։ Իսկ գեղեցիկն եթէ կարի 'ի զգաստութեան չիցէ, վաղվաղակի անկանի 'ի չար կարծիս, և իւր իսկ այրն կարծեօք կեցցէ ընդ նմա. և այլ զինչ չար քան զայն կայցէ։ Ո՛ ի գեղոյն ցանկութիւն օր քան զօր խարխի, և 'ի մտացն կարծիքն ոչ երբէք ելանիցեն. այլ 'ի նաղանաց պչրանաց զպղծութեան կարծիս առնուցուն յանձն, մանաւանդ յորժամ միտք հպարտանայցեն, և 'ի խորխատանս հատանիցէ 'ի պճողոյն պանծանաց։ Քանզի յամենայն իսկ 'ի չարիս ձգի գեղեցկութիւն, և տգեղոյն չզգանեմք թէ այնպիսի ինչ բազում խափան լինիցին։ Եւ ոչ եթէ իբրև զշուն ոք յարձակիցի 'ի վերայ, այլ իբրև զգաստինս 'ի բազում հանդարտութեան ճարակեն անըմբռնելուկ 'ի գայլոց։ Եւ այն չեն զրկանք, եթէ մին գեղեցիկ ինչ իցէ և միւսն տգեղ. այլ այն են զրկանք, եթէ մինն պսակիցի վասն զի գեղեցիկն իցէ, և միւսն չպսակի վասն տգեղութեան։

Եւ արդ աղէ տես, ո՛ր առաքինութիւն իցէ աչաց, յորժամ բոլորակք և լիք և ծաւիկք և ընդոստք իցեն, եթէ յորժամ սուրք և քաղցրեաք։ Ես զսուրն և ըզքաղցրեսն գովեմ, և յայտ 'ի տեսանելոյն իսկ է։ Եւ ո՛ր լաւ իցէ՝ յորժամ լոյս քաջ տայցէ գունոյն և զտունն լուսաւորեսցէ, եթէ արտաքին բարի և բոլորակ իցէ. յայտ է թէ որ զլոյսն քաջ տայ, և վասն յորոյն մեղադիր եւ լինիմք այնմ որոյ զպատրոյգն արարեալ իցէ։ Նոյնպէս և զականէն չէ փոյթ թէ այսպիսի ինչ և կամ այնպիսի իցէ, այլ թէ զպէտսն բարւոք վճարիցէ. որպէս զի յուռի կոչի յորժամ ա՛յլայլիցի և ոչ կայցէ հաստատուն 'ի կային. զի և որ բացօք աչօքն չտեսանիցեն քաջ, ասեմք թէ յուռի աչս ունին. և զամենայն ինչ զոր ոչ զիւր պէտսն վճարէ, յուռի կոչեմք։ Իսկ մինչացն ո՛ր ինչ ազնուութիւն իցէ, յորժամ պարզ և հասարա՛կ իցեն, եթէ որ զհոտն երագ առնուցուն և բաւական իցեն տանել հասուցանել յուղեղն։ Եւ 'ի ջրհորոց գործին որով զանկեալն ինչ 'ի ներքս վաղվաղակի յափըշտակիցեն, զգեղեցիկան ինչ պարտ իցէ գովել, եթէ որ վաղվաղակի զպէտսն վճարիցեն. յայտ է թէ որ ըզպէտսն վճարիցեն։ Եւ զատամունսն զո՞ր գովիցեմք, ըզհատո՛ւսն որ զկերակուրսն դիւրաւ մանրեսցեն, եթէ

զգեղեցիկսն որ ոչ ինչ վճարեսցեն. յայտ է թէ զհատուն: Այլ ամենեւին իսկ զամենայն մարմնոյն զառողջս եւ զպիտանիսն անդամոցն գովեսցէ. Նոյնպէս եւ զանօթոցն ինչ եւ զտնկոց եւ զանասնոց ոչ եթէ զարարն եւ զգոյնն գովեսցէ, այլ զվարսն եւ զպաշտօնն. եւ զծառայսն ոչ զգեղն ինչ, այլ զսպասն եւ զհպատակութիւնն:

Տեսանես ուստի է լինել գեղեցիկ. 'ի պիտանութէ եւ յարգասեաց: Այլ արդ յոյժ 'ի մեծամեծս եւ 'ի զարմանալիս հասարակ վայելիցեմք, եւ ոչ կարիցեմք զմիմեանս զրկել: Ոչ ի զաշխարհս առ հասարակ տեսանեմք եւ զարեգակն եւ զլուսին եւ զաստեղսն, եւ զօդն[1] առ հասարակ առնուցումք, եւ 'ի ջրոց 'ի վայելս առ հասարակ վայելիցեմք, եթէ գեղեցիկք իցեմք եւ եթէ տգեղք:

Այլ պարտ իցէ մեծ ինչ եւ զարմանալի ասել, քան զգեղեցիկսն տգեղքն առողջագոյնք են: Նոքա զի զեղոյն զզուշանայցեն, եւ յաշխատութիւն ինչ չտան զանձինս, այլ 'ի դատարկութիւն հատեալ, եւ հովասունք 'ի ստուերսն եւեթ նստին յարանց զրգուեալք, եւ անտի անդամոցն իրանունք ընդարմացեալք գտանին. իսկ սոքա վայրապար անխտիր չտան ինչ այնպիսի խնամք մարմնոյ, եւ առողջագոյնք գտանին:

Այլ արդ փառաւորեսցուք զԱծ, եւ կրեսցուք 'ի միտս եւ 'ի մարմինս. մի զարդարեսցուք եւ պաճուճեսցուք, զի այն աւելորդ պաճուճանք են եւ անօգուտ վնասակք: Մի՛ տայք խրատ արանց, ո՛ կանայք, զերեսս եւեթ սիրել. եթէ այնպէս զարդարեսցիս, 'ի քումմէ երեսացդ առնուցու սովորութիւն 'ի բոզիցն պաճուճելոց յերեսս պատրել: Ապա եթէ կարգս եւ ցածութիւնս ուսուցանիցես, ոչ մտաբերէ վազվաղակի 'ի պոռնկութի. քանզի առ պոռնիկն այնպիսի ինչ ոչ գտանի, այլ նորին հակառակն: Մի՛ ուսուցանիցես զնա 'ի ծաղու ըմբռնել եւ 'ի յարձակ եւ 'ի համարձակ կերպարանացն, զի մի՛ հակառակ քեզ խառնիցես զդեղն: Պատրաստեա զնա ընդ ցածուանս ուրախ լինել, որում ձեռնհաս իցես յորժամ զկերպարանս այնպիսիս ցուցանիցես. ապա թէ լկտիցիս եւ այրատիցիս, զիա՞րդ կարիցես բան ինչ պարկեշտ ընդ

1 Օրինակին զշարդն. եդաւ ըստ յունին:

բերան հանել։ Ո՞վ որ իցէ որ զքեզ չտանիցէ ծաղր և արհամարհելի։

Իսկ եթէ զխարդ իցէ զա̃ծ և յոգիսն կրել, յորժամ զմիտսն առաքինութեամբ որ վառեցէ և զզաստութք զարդարեցէ. քանզի և այնմ չիք ինչ արգել։ Իսկ այնպէս փառաւորեմք զա̃ծ, յորժամ յամենայն կողմանց հաճոյ գտանիցիմք, և փառաւորիցիմք և մեք յաւուրն յայնմիկ ոչ երկրաւոր ինչ փառօք, այլ երկնաւորօք, որ բիւրապատիկ առաւել են քան զամենայն փառաւորութիւնս աշխարհիս, ըստ այնմ. “Ինձ այսպէս թուի, եթէ չեն ինչ արժանի չարչարանք ժամանակիս հանդերձելոց փառացն որ յայտ ենն մեզ„։ Յորս լիցի ամենեցուն մեզ վայելել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն։

## ՃԱՌ ՀԻՆԳԵՐՈՐԴ

“Զայս պատուիրան աւանդեմ քեզ, որդեակ իմ Տիմոթէոս, ըստ կանխելոց ՚ի վերայ քո մարգարէութեանցն, զի զինուորիցիս նոքօք զբարւոք զինուորութիւնն. ունիցիս հաւատս և սուրբ միտս, զոր ոմանք մերժեցին և նաւաբեկ եղեն ՚ի հաւատոցն„։

Վարդապետութեան և քահանայութեան պատիւ կարի իմն մեծ և զարմանալի է, և ո̃յ խոկ ընտրութեան կարօտ՝ ածել յառաջ զարժանիսն։ Նոյնպէս իսկ և զառաջինսն լինէր. նոյնպէս և այժմ, յորժամ առանց մարդկօրէն կարեացն զհաճոյսն կատարիցեմք, յորժամ ոչ ինչ յերկրաւորս հայիցիմք, ոչ առ սէր, ոչ առ ատելութեան։

Զի թէպէտ և մեք չիցեմք այնպէս ինչ հաղորդ հոգւոյն, բաւական են կամքն բարիք զմեզ ձեռնադրութիւն ամփոփել։ Նաև ոչ առաքելքն ունէին զհոգին յորժամ զՄատաթիա ընտրեցին. այլ յաղօթսն միայն ապաստան արարին զիրսն, և կարգեցին կացուցին յա-

ռաքելոցն համարի. ոչ ՚ի մարդկօրէն ինչ ՚ի սէր հայէին, և ոչ ատելութեամբ ինչ զմիւսն մերժէին. Նոյնպէս և առ մեզ լինի։ Բայց եթէ զյայտնիսն անտես առնիցեմք, զիա՞րդ զանյայտսն յայտնիցէ մեզ ած. զի “Եթէ ՚ի փոքուդ, ասէ, չեղէք հաւատարիմ, զմեծն և զճշմարիտն ո՞ տացէ ձեզ„։

Յայնժամ քանզի ոչ մարդկօրէն ինչ գործ գործէր, ՚ի մարգարէութենէ լինէին քահանայք։ Զի՞նչ իցէ ՚ի մարգարէութենէն. ՚ի հոգւոյն սրբոյ. զի մարգարէութիւն ոչ միայն զհանդերձեալսն ասել է, այլ և զծածուկս։ Եւ և Սաւուղ ըստ մարգարէութեան ցուցաւ, յորժամ ընդ կարասիւն թագուցեալ կայր. քանզի ած յայտնէ արդարոց։ Մարգարէութիւն էր ասել “Մեկնեցէք ինձ զՊաւղոս և զԲառնաբաս„. Նոյնպէս և Տիմոթէոս ընտրեցաւ։ Իսկ մարգարէութիւն աստ թերեւս զբազում ինչ իրս կոչէ, որովք առ զնա յորժամ թլփատեացն, յորժամ զձեռնադրութիւն ետ, որպէս և իւր իսկ գրեալ ասէր. “Մի անփոյթ առնիցես ըզշնորհացդ որ ՚ի քեզ են„։

Եւ արդ իբրև զարթոյց զնա և յորդորեաց և արթուն արար, յիշեցուցանէ զայն որ ընտրեացն և զձեռնադրութիւն ետ. որպէս զի ասիցէ. ած ընտրեաց ըզքեզ, նա համարեցաւ քեզ հաւատարիմ, չեղեր ըստ մարդկեղէն ընտրութեան. մի թշնամանիցես և մի յամօթ առնիցես զնոյն համարն։

Եւ քանզի զպատուիրանէ ճառեաց որ կարի ծանրագոյն էր՝ զինչ ասիցէ։ “Զայս պատուէր աւանդեմ քեզ, որդեակ իմ Տիմոթէոս„։ Եւ իբրև որդւոյ և սիրելի որդւոյ պատուիրէ, ոչ ճոխութեամբ, ոչ տիրաբար, ոչ իշխանութեամբ. այլ որդեակ իմ, ասէ, Տիմոթէոս։ Իսկ աւանդելն զպահպանութեան աւետիսն յայտ առնէ. և այն ոչ եթէ մեր ինչ իցէ, և ոչ մեք մեզէն ստացաք, այլ ած, ասէ, մեզ շնորհեաց։ Եւ ոչ[1] զայս միայն, այլ և հաւատս, ասէ, և միտս բարիս։ Եւ արդ զոր ետուն՝ զայն պինդ պահեսցուք։ Զի եթէ իւր չէր եկեալ, ոչ հաւատք գտանէին և ոչ վարք պարկեշտք զոր ՚ի մանկութեանն առնումք յանձն։ Որպէս զի ա-

1 Պակասէր յօրինակին ոչ զայս միայն, այլ և. յաւելաւ ՚ի յունէն։

սիցէ. ոչ եթէ ես եմ որ աղաչիցեմն, այլ որ ընտրեացն զքեզ. զի այն իսկ է ասելն՝ թէ "ըստ կանխելոցն 'ի վերայ քո մարգարէութեանցն". Նոցա, ասէ, լուր, նոցին հաւանեաց:

Այլ զինչ պատուիրիցէ: "Զի զինուորիցիս նոքօք զբարւոք զինուորութիւնն": Նոքա ընտրեցին յոր ինչ ընտրեցինն զքեզ. զինուորեաց զբարւոք զինուորութիւն: Վասնզի և է յոռի ինչ զինուորութիւն. վասն որոյ և ասէ իսկ՝ թէ "Որպէս պատրաստեցէք զանձանց ձեր զէն մեղաց և պղծութեան": Նոքա, ասէ, 'ի հակառակորդաց և յապստամբաց զինուորին, և դու 'ի թագաւորէն: Այլ ընդէ՞ր կոչիցէ զիւրսն զինուորութի. յայտ առնէ՝ թէ պատերազմ սաստիկ յարուցեալ է յամենեցուն 'ի վերայ. բայց առաւել 'ի վարդապետին, և վասն այսորիկ սաստիկ զինուց պէտք են, արթնութեան և զուարթութեան և ցանկ հսկելոյ. զի ոչ ընդ արեան և ընդ մարմնոյ է մեզ մարտ պատերազմի, և վասն այնորիկ պարտիմք միշտ պնդակազմ գտանել, մի ծուլալ, մի հեղգալ, մի թուլանալ: Զի զինուորիցիս, ասէ, նոքօք: Զոր օրինակ 'ի զինուորացն զօրականս ոչ ամենեքեան 'ի մի կարգ զինուորին, այլ յայլեայլ դունդս և 'ի դասս, նոյնպէս և յեկեղեցւոջ ոմն 'ի վարդապետութեան կարգ և ոմն աշակերտի և ոմն յռամկաց. դու, ասէ, 'ի վարդապետաց կարգի զինուորեցար:

Այլ զի մի ոք կարծիցէ թէ այն բաւական իցէ, զինչ ասէ. "Զի ունիցիս, ասէ, հաւատս և միտս բարիս": Վասնզի վարդապետին նախ անձին պարտ է լինել վարդապետ: Զոր օրինակ զօրավարին եթէ ոչ նախ զօրական առաքինի եղեալ իցէ՝ չկարէ երբէք զօրավար լինել, նոյնպէս և վարդապետին: Զայն և այլուր ասէ՝ թէ "Գուցէ զոր այլոցն քարոզեցի, ես ինձէն խոտան գտանիցիմ": Ունիցիս, ասէ, հաւատս և միտս բարիս, զի այսպէս կարիցես և այլոց վերակացու լինել:

Այլ արդ զայս լուեալ՝ մի ինչ գարշեսցուք յաւագացն խրատուց, թէպէտ և վարդապետ իցեմք: Թէպէտ իբրև Տիմոթէոսն չիցեմք ամենեքին՝ որ ընդունէր զպատուէրսն և ուսանէր, և այն զի և 'ի վարդապետաց ես կարգի էր, ո՞րչափ ևս առաւել մեք: "Զոր ունիմք, ասէ, մերժեցին և նաւաբեկ եղեն 'ի հաւատոյն": Այլ

յիրաւի իսկ. յորժամ փառք ուրուք պարսաւ իցեն, և այլազգի կրօնս ծնանի. նա և այժմ իսկ դիտողումն է տեսանել, զի յայնպիսի մտաց ընկղմին 'ի խորս չարեաց, և 'ի հեթանոսութիւն կործանին: Ոչ ի մի ահիւ հանդերձեալ դատաստանին տանջիցին, փութացան սոսկ մխիթար մնաց, եթէ սուտ է ամենայն ինչ որ 'ի մեզնէ պատմիցի. և 'ի հաւատոց այնպիսի կործանին, որ զեր-տայն եւեթ խնդիրս յանձինս. քանզի այնպիսի խոր-հուրդք գործեն փառաւորելութիւնն:

Որպէս զնոս ինչ անձուր դժուարին են հաւատք. և որ անտի վրիպիցեն՝ հարկ է զի ընկղմիցին. և զայս յայտ յորինակէն իսկ տանէ. «Որոց ասեն, ասէ, Ճիմե-նոս և Աղեքսանդրոս». և նոքա զնեղ ցածուցանէ: Տեսանէ՞ք զի յայնմ ժամանակի իսկ էին՝ որք զաւետիսն ասացանէին, որք քննէին և 'ի հաւատոցն հեռանային, որք զիւրեանց մտաց զխորհուրդ հաստատել կամէին:

Որ նաւաբեկին լինի, մերկ և կողոպուտ մնայ. և որ 'ի հաւատոցն անկանիցի, չունի ինչ այնուհետև, չգը-տանիցէ ուրեք ինչ կայա, և ոչ զորէն բուռն հարկա-նիցէ: Եւ եթէ և վարս ունիցի, չգտանէ ինչ անտի օ-գուտ. զի յորժամ գլուխն ապականիցի, զինչ ինչ շահ յայլոց անդամոցն գործիցի: Ոչ եթէ հաւատքն առանց վարուց չիցեն սխալանացա, որչափ և առաւել նորին հակառակն: Եւ է զի բուռն արհամարհիցէ վասն մեր անձ, որչափ և առաւել մեզ պարտ իցէ զմերս վասն նորա արհամարհել. քանզի այնպէս է, յորժամ ոք 'ի հաւա-տոցն անկանիցի՝ չկարէ կալ յանկասկածի, այլ կոծի, ծփի, մինչև ընկղմեսցի:

«Զորս մատնեցի, ասէ, սատանայի, զի խրատես-ցին մի ինչ հայհոյել»: Տեսանես զի հայհոյութիւն է մտօք քննել զնոյն. և յիրաւի իսկ. քանզի զինչ հա-ղորդութիւն ունիցին միտք մարդկեղէնք ընդ այնպիսի անձառուն: Իսկ զիա՞րդ խրատեսցէ զնոսա սատանայ՝ զի մի հայհոյեսցեն. եթէ զայլս խրատիցէ չհայհոյել, որ-չափ ևս առաւել պարտ իցէ զանձն խրատել. իսկ եթէ զանձն մինչև ցայժմ չկարիցէ խրատել, զիա՞րդ զայլս խրատիցէ: Չասաց՝ եթէ խրատեսցէ զնոսա սատանայ չհայհոյել, այլ թէ զի խրատեսցին չհայհոյել: Ոչ եթէ սատանայ ինչ զայն գործիցէ, այլ 'ի նորա խրատելոյն

այնպիսի ինչ լինի. որպէս և այլուր վասն պոռնկացելոյն է ասացեալ, թէ "Մատնեցէք զայնպիսին սատանայի 'ի սատակումն մարմնոյ", ոչ զի ապրեցուսցէ զհոգին, այլ թէ ապրեսցի հոգին: Եւ այս անյայտ իմն է:

Եւ զիմարդ իցէ զի այս այսպէս լինիցի: Զոր օրինակ դահիճք թէպէտ և ինքեանք բիւր չարեօք լի են, սակայն զայլսն խրատեն. նոյնպէս և դևն չար: Եւ ընդէր, ասեն, դու քեզէն չտանջիցես՝ որպէս զԲարյեսուն, կամ որպէս Կեփաս զԱնանիա, այլ սատանայի մատնիցես: Ոչ զի տանջիցէն, ասէ, այլ զի խրատիցէն: Թէպէտ և ինքն իսկ կարող էր խրատել, որպէս յորժամ ասիցէ. "Զինչ կամիք, գաւազանաւ եկից առ ձեզ՝ թէ սիրով". և դարձեալ՝ "Ոչ զի մեք ընտիրք երևեսցուք, այլ զի դուք զբարիս գործիցէք". և դարձեալ՝ եթէ "Ոչ 'ի քակել, այլ 'ի շինել": Եւ արդ ընդէր զսատանայ կոչիցես 'ի պատժել: Զի հանդերձ սաստիւն և տանջանօքն՝ և թշնամանքն ևս սաստիկ լինիցին:

Եւ այլ ազգ ևս. զանհաւատսն ինքեանք խրատէին, և զթիւրեալսն սատանայի մատնէին: Եւ ընդէր արդեօք զանհաւատսն ինքեանք խրատէին. զի Անանիա անհաւատ էր, քանզի դեռ տակաւին փորձէր. և զի ուսանիցին անհաւատք, եթէ չվրիպէ ինչ յառաքելոցն, վասն այնորիկ ինքեանք պատժէին զնոսա: Իսկ զնոսա որք ուսեալք և տեղեկացեալք էին, և յետոյ խոտորէին, սատանայի մատնէին, զի յայտ առնիցեն՝ եթէ ոչ անձին ինչ զօրութեամբ, այլ նոցա պահպանութեամբ ժողովէին և յաղթէին, որք յետոյ 'ի հպարտութիւնն մատնեցան: Զոր օրինակ յարքունիսն՝ զթշնամիսն իրեանց ձեռօք իսկ կոտորեն. և որք ընդ իւրեամբքն իցեն և յանցաւորք գտանիցին, դահճաց մատնիցեն: Զի յայտ լինիցի եթէ յայնժամ առաքելոցն պահպանութեամբ պահէին: Եւ այլ ազգ ևս. նա և այն իսկ չէին սակաւ իրք, այնչափ զօրութիւն ունել՝ մինչև սատանայի ևս հրաման տալ. և այնու ևս յայտ լինէր եթէ 'ի ծառայութեան և 'ի հնազանդութեան կայ ակամայ առաքելոցն սատանայ:

Եւ եթէ զիմարդ մատնիցէ, լուր. "Ժողովել ձեզ, ասէ, 'ի մի վայր, և իմոյ հոգւոյս ընդ ձեզ՝ զօրութեամբ հանդերձ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, մատնե-

ցէք զայնպիսին սատանայի 'ի սատակումն ,,: Յայնժամ ելանէր 'ի հասարակաց ժողովրդենէն, քակէր 'ի հօտէն, լինէր Թափուր և մերկ 'ի չնորհացն, մատնէր 'ի ձեռս գայլոյն: Որ օրինակ ամպն զբանականն երբայեցւոց, նոյնպէս և հոգին զեկեղեցի ճանաչէր. և որ արտաքոյ գտանէր՝ 'ի հուր մատնէր, և տարագիր լինէր 'ի համօրոյ առաքելոցն: Այնպէս և տէրն մատնեաց ըզՅուդա սատանայի. "Վաղվաղակի, ասէ, ընդ պատառոյն եմուտ 'ի նա ,,:

Բայց է և այլ ինչ ասել. զորս յուղղութիւն կամէին ածել, ոչ ինքեանք տանջէին. և զորոց գիտէին թէ չեն գալոց յուղղութիւն, ինքեանք պատժէին. և եթէ ոչ յայսպիսի ինչ մեղս, ապա յայնժամ առաւել ահագինս երևէին, յորժամ այլոցն մատնէին: Այնպէս և Յովբ մատնեցաւ սատանայի, ոչ վասն մեղաց ինչ, այլ վասն առաւել ընտրութեան:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Բազում և այժմ լինի այնպիսի ինչ. քանզի չգիտեմն քահանայքն զմեղաւորս, որք չիցեն արժանի խորհրդոցն և հաղորդեցային, ուծ բազում անգամ առնէ այսպիսի ինչ, և մատնէ զնոսա սատանայի. իցէ յորժամ ցաւք ինչ 'ի վերայ հասանիցեն, և իցէ երբեք նեղութիւնք կամ սուգ կամ վիշտք և այլ ինչ զինչ և իցէ չարչարանք: Իսկ զայս Պաւղոսի իսկ յայտ արարեալ ասէ, եթէ "Վասն այնորիկ են 'ի ձեզ բազում հիւանդք և ախտաժէտք, և շատ ննջեցեալք իսկ ,,:

Իսկ զիա՞րդ, ասէ, թէ մի անգամ 'ի տարւոջ մերձենայցեմք, և այն մե՞ղք իցեն: Այն իսկ իցեն կարի աղէտք, զի ոչ սուրբ մտօք, այլ ժամանակին երկայնութեամբ սահմանես զարժանն մատչելոյ, և լաւութիւն իմն համարիս զոչ ստէպն մերձենալ: Որ եթէ մի անգամ անարժանութեամբ[1] մատչիս, վնաս անձին առնես. և արժանաւորութեամբ՝ թէպէտ և բազում անգամ, կեցուցանէ զոգիդ: Ոչ է ինչ յանդգնութիւն բազում անգամ մերձենալն, այլ անարժանութեամբն

1 Միւսն անարժան:

մատչել. թէպէտ մի անգամ յամենայն ժամանակս կենաց իւրոց մերձենայցէ։

Իսկ մեք այնչափ յանմտութիւնս և 'ի թշուառութիւնս հասեալ եմք, զի բազում չարիս գործեմք 'ի միում տարւոջ, և չունիմք փոյթ յանձին զմի ինչ անտի սրբել. և չմերձենալն սոսկ և թշնամանեն զխորհուրդն Քրիստոսի բաւական համարիմք 'ի մխիթարութիւն. և զայն չառնումք 'ի միտ, եթէ որ զՔրիստոս 'ի խաչ հանին՝ մի անգամ խաչեցին. և զի մի անգամ խաչեցին, միթէ սակաւ ինչ մեղք իցեն. նա և որ մատնեացն զՔրիստոս, մի անգամ մատնեաց, միթէ այնու ինչ կարէ՞ր ապրել։ Այլ մեք ընդէ՞ր օրինօք կատարեմք զիրսն, ո՞չ ապաքէն զի այնպէս վայել է. ժամանակ մերձենալոյ՝ զսուրբ միտսն համարեսցուք. չէ ինչ աւելի յաւուր չարչարանաց խորհուրդն, քան զայս որ այժմս կատարիցի. մի և նոյն խորհուրդ է, և նոյն հոգւոյն շնորհք. միշտ զատիկ է, հանապազ տօն։

Այլ որ հմուտ էք խորհրդոցն՝ գիտէք զինչ ասեմս, զի յուրբաթու և 'ի շաբաթու և 'ի կիւրակէի և 'ի մարտիրոսաց յիշատակս նոյն զենումն զենու, նոյն խորհուրդ կատարի. “Զանիցս անգամ, ասէ, ուտիցէք ըզհացս զայս և ըմպիցէք զբաժակս, զմահ տեառն պատմեսջիք„. և չտեսանեմք եթէ ընդ ժամանակօք ինչ փակեաց զպատարագն։ Այլ զիա՞րդ, ասեն, յայնժամ ասացան չարչարանքն. քանզի յայնժամ չարչարեցաւ վասն մեր Քրիստոս։ Այլ արդ մի՞ ոք յայնժամ այլ ազգ և այժմ այլ ազգ մատչիցի. մի զօրութիւն է, մի պատիւ, մի շնորհք, մի և նոյն մարմին։ Ոչ այն քան զայս սուրբ է, և ոչ այս քան զայն նուազագոյն. և զայն դուք իսկ ճարտար գիտէք, զի ոչ ինչ աւելի տեսանէք, բայց միայն զարտաքին զարդն և զբազում ժողովրդոց պայծառութիւն։ Բայց ունին ինչ աւելի աւուրքն. զի անտի եղև սկիզբն աւուրն փրկութեան մերոյ, և զի յայն աւուր զենաւ Քրիստոս. բայց յայլ խորհրդովն և ոչ մի ինչ առաւելութիւն ունին։

Այլ արդ յորժամ հաց կամիցիս ուտել, զձեռս լուանաս, զբերանդ սրբես. և յորժամ 'ի հոգևոր հացն կամիցիս մերձենալ, ընդէ՞ր չլուանայցես զոգիդ, ընդէ՞ր չսրբիցես զմիտսդ, այլ լի պղծութեամբ և յանդգնեալ

մատչիցիս ։ Այլ չիցէ՞ն, ասեն, բաւական քաղաքավարութեան պահքն զծանր ծանր բեռինս մեղաց փարատել ։ Այլ արդ ասէ ասա, զինչ շահ իցէ, յորժամ իւղ անոյշ ոք կամիցի թափել, և զտուփն տըքիցէ յաղբոյս, և վայր մի դատարկիցէ՝ և դարձեալ աղբովն լնուցու, ոչ ապաքէն վաղվաղակի ամփոփիցի հոտն անոյշ ։ Նոյնպիսի ինչ և առ մեզ դիպիցի. արժանի եղաք մերձենալ ընդ մերում կարի, և գործեալ աղտեղանայցեմք ։

Նոյն զայս և առ այնոսիկ ասեմք, որ կարող են սրբել զանձինս իւրեանց քաղաքավարութեան ժամանակաւն, զի և ս քան զևս հաստատուն լինիցին. մի ինչ հեղգացեալ զօգուք 'ի փրկութենէն մերմէ, աղաչեմ. զի մարդ որ դառնայցէ 'ի մեղաց, և միւսանգամ անդրէն շրջիցի, շան նման է որ անդրէն յիւր փսխածն դառնայցէ ։ Պինդ կացցուք, զի մի ընդ վայր ինչ լինիցի վաստակն մեր. զի այնպէս կարիցեմք պարգևացն արժանի լինել ։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## ՃԱՌ ՎԵՑԵՐՈՐԴ

“ Աղաչեմ նախ քան զամենայն առնել աղօթս, խնդրուածս, պաղատանս, գոհութիւնս վասն ամենայն մարդկան, վասն թագաւորաց և ամենայն իշխանաց, զի խաղաղութեամբ և շինութեամբ վարեսցուք զկեանս մեր ամենայն ա̃ծպաշտութեամբ և պարկեշտութեամբ. զի այն է բարի և ընդունելի առաջի փրկչին մերոյ ա̃յ, որ զամենայն մարդիկ կամի զի ապրեսցին, և 'ի գիտութիւն ճշմարտութեան հասցեն ”։

Որպէս հասարակաց իսկ ամենայն աշխարհաց է հայր քահանայն. և պարտ է նմա ամենեցուն խնամ ունել որպէս ա̃ծ, որում քահանայանայցեն ։ Այլ վասն այնորիկ ասէ՝ թէ “ Աղաչեմ նախ քան զամենայն ինչ առնել

խնդրուածս, աղօթս, պաղատանս, գոհութիւնս,,: Բանզի երկու իրք բարիք գործին անտի. մի՝ զի թըշնամութիւն արտաքնոյն քակի, քանզի չկարիցէ այնուհետև թշնամութիւն ցուցանել վասն որոյ աղօթս մատնիցէ. դարձեալ և նոքա ևս լաւագոյն լինիցին վասն որոյ աղօթքն մատուցանիցին, այնու զի ոչ ևս այնուհետև գրգռիցին ընդ մեզ. քանզի չիք ինչ այնպէս այլ ինչ պատշաճ 'ի վարդապետութիւն, որպէս սիրելն զմիմեանս: Մի՛տ դիր որպիսի ինչ է լսել թշնամեացն՝ որք տանջէին և հալածէին և սպանանէին, եթէ որք 'ի նոցանէ չարչարէին, վասն նոցա կարևոր աղօթս մատուցանէին այ: Տեսանե՞ս զի վերագոյն կամի առնել զքրիստոնեայն քան զամենեսեան: Զոր օրինակ մանկունք մատաղք յուս ծնողացն կրիցին, թէպէտ և ձեռօքն զերեսս հարցն կոծիցեն՝ չհատանին ինչ 'ի սիրոյն և 'ի գըթոյն, նոյնպէս և մեք թէպէտ և տանջիցիմք՝ ոչ կարիլ 'ի ցուցանելոյ առ նոսա զսէր և զերախտիս:

Զինչ իցէ ասելն՝ թէ յառաջ քան զամենայն ինչ. այն իսկ 'ի հանապազորդ պաշտամանն: Եւ զայն գիտեն իսկ կնքաւորքն զիարդ ցանգ աղօթք մատուցանեն և երեկոյի և ընդ առաւօտս վասն ամենայն աշխարհի և թագաւորաց և իշխանութեանց: Եւ թերևս ասիցէ ոք թէ չասաց վասն ամենեցուն, այլ վասն հաւատացելոց: Իսկ արդ զիա՞րդ յորժամ ասիցէ վասն թագաւորաց և իշխանութեանց. և յայնժամ չև ևս էին թագաւորքն աստուածապաշտք, այլ և բազում ժամանակս ևս ամբարիշտք յամբարշտաց առնուին: Եւ զի մի սրտկանք ինչ կարծիցին, նախ ասէ վասն ամենեցուն, և ապա վասն թագաւորաց:

Եւ զի 'ի դէպ էր քրիստոնէին մտաց ընդդարմանալ, յորժամ լսէր եթէ և վասն հեթանոսացն աղօթս հրամայիցէ առնել, տես որպիսի ինչ խելս խառնէ առ 'ի զշահն ընդունելի առնել. "Զի խաղաղութեամբ և շինութեամբ վարեսցուք զկեանս մեր,,. այս իսկ է՝ նոցա փրկութիւնն մեզ անհոգութիւն գործեն. որպէս և 'ի հռովմայեցւոց թղթին հրամայէ հնազանդ լինել իշխանաց, "Ոչ վասն հարկի, սակայն վասն խղճի մտաց,,. քանզի ած 'ի հասարակաց պէտս կարգեաց զիշխանութիւնս: Եւ զիա՞րդ չիցեն անպատեհ իրք,

քանզի նոքա յայն սակս զինուորին և ծառայութիւն զինուորն յանձինս կրեն՝ զի զմեզ ապահով առնիցեն, և մեք փոխանակ նոցա որ վասն մեր ձգնին՝ չմոռացանեմք զաղօթս։ Որպէս զի ոչ սականց ինչ իրք են, այլ իրաւանց գործ։ Զի եթէ նոքա չկային 'ի գլխի թշնամեացն և ապրեցուցանէին, հարկ լինէր այնուհետև մեզ 'ի խռովութեան և 'ի տատանի կալ։ Յորժամ նոքա կռուէին, կամ զանձինս պարտ էաք 'ի զինուորութիւն մատուցանել, կամ փախչել ցրուիլ ընդ ամենայն աշխարհս մաշել։ Իբրև զպարիսպ ինչ և զպատուար պատեալ շուրջանակի, և որ 'ի ներքս իցեն պահեն զգուշութեամբ։

“Խնդրուածս, ասէ, աղօթս, պաղատանս, գոհութիւնս„։ Քանզի պարտ է գոհանալ զԱ̃յ և յորժամ այլոց բարիս ինչ պարգևիցէ. այսպիսի ինչ, յորժամ զարեգակն ծագիցէ 'ի վերայ արդարոց և մեղաւորաց։ Տեսանես, զի ոչ միայն աղօթքն, այլ և գոհութիւնք կամի զմեզ միաբանել 'ի միմեանս յարել։ Զի որում հարկ լինիցի գոհանալ վասն ընկերին բարութեանց, հարկ է նմա այնուհետև սիրել զնա և ընտանութեան խնամ ածել։ Իսկ եթէ վասն այլոց բարեացն պարտ իցէ գոհանալ, որչափ ևս առաւել վասն մերոցն, և տրտմութեանց ինչ որ տրտմութիւնք կարծիցին։ Քանզի զամենայն ինչ մեզ Ա̃ծ յօգուտ մատակարարէ։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Իսկ արդ ամենայն իսկ աղօթքն մեր գոհութեամբ լինիցին։ Զի եթէ աղօթս առնել 'ի վերայ ընկերաց ոչ միայն վասն հաւատացելոց, այլ և վասն անհաւատից պատուէր ունիմք, 'ի միտ առնուցուս որչափ չարիք լուտալն իցեն զեղբարսն։ Զինչ խօսիս. նա վասն թշնամեացն հրամայեաց աղօթս առնել, և դու ևս եղբօրն լուտաս. ոչ նմա լուտաս, այլ անձին քո. զի զԱ̃ծ բարկացուցանես յորժամ այնպիսի անօգուտ բանս խօսիցիս։ Եթէ տէր ցոյց ինչ նմա, մի լուեր մի զազրաբեր, այլ կործանեա և դու, հատ օր ըստ օրէ։ Օտար է այն ամենայն 'ի Քրիստոսի աշակերտաց, և 'ի հեզոցն և 'ի խոնարհացն բերանոյ։ Ոչ այնպիսի խորհրդոյ արժանի

լեալ իցէ, չէ պարտ դառնութիւն բաղխել. մի՛ իշխեսցէ չար ինչ բարբառել լեզուն՝ որ ընդ այ խօսիցի: Սուրբ պարտիմք պահել զնա, մի՛ հանիցեմք ընդ նա անէծ. զի թէ բամբասողքն չժառանգեն զարքայութիւնն այ, տես որչափ ևս առաւել անիծողքն: Այլ այնու հետև հարկ է թշնամանս ևս զնել որ յաղօթս կայցէ. և թշնամանք և աղօթքս 'ի միմեանց ձեղքեն և քակեն, և բաղում ինչ 'ի միջի կայ ընդ երկոսեանն, որչափ ինչ ընդ աղօթսն և ընդ չարախօսութիւնն:

Մատուցեալ զած 'ի քաւութիւն կամիս առնել, և զայլս լուտայցես և ոչ թողուս. և եթէ չթողուցուս, և ոչ քեզ թողութիւն լինի. և ոչ դու միայն չթողուս, այլ և զած աղաչես չթողուլ: Տեսանե՞ս զյանձախութիւն չարեացն. զի եթէ որ չթողուն՝ չառնուցու թողութիւն, իսկ որ զաէրն աղաչիցէ չթողուլ՝ զիա՞րդ ունիցի թողութիւն: Մի՛ նմա ինչ միայն առնես, այլ անձին: Այլ զի՞նչ ինչ իցէ. զի եթէ և լսելի լինելոց էր վասն քոյոց խնդրուածոցն, յայն սակս չլինէին երբէք լսելի, զի վնասակար և պիղծ բերանով զաղօթսն մատուցանես: Այլ արդարև պիղծ է այնպիսի բերան և աղտեղի, և լի ամենայն չարահոտութեամբ: Պարտ է քեզ 'ի քոյոց մեղացն կասկածել, և ամենայն հնարիւք վասն նորա ձգնիլ, և դու մատուցեալ զրգռես զած ընդ ընկերին, և չերկնչիցիս յայ և հոգաս վասն քոյոց յանցանաց. չտեսանիցե՞ս զինչ գործեսդ:

Դէթ մանկտւոյն նմանիջիք որ 'ի դպրոցն երթիցեն, յորժամ զիւրեանց ընկերսն տեսանիցեն զի զհամարս ուսմանն պահանջիցին, և վասն ծուլութեան զանն ըմպիցեն, մի ըստ միոջէ ամենեցուն հանդէս առնիցի, և յորժամ զայլսն ամենայն այնպիսի զանիւք տանջեալ տեսանիցեն՝ մեռանին յերկիւղէն. և եթէ ոք կարի իսկ զան յընկերայն ըմպիցէ, չիշխէ ցասնուլ առ ահին և ոչ ամբաստան առ վարդապետին լինել. այլ 'ի միում ևեթ ուշ ունի՝ թէ զիարդ զհամարսն յօրինիցէ և առանց զանի զերծանիցի. և եթէ անտի դիւրաւ ելանիցէ, չածէ ինչ զմտաւ եթէ եհար ոք զնա զան և եթէ չեհար, զի առ խնդին չգտանիցի ուր կայ: Այլ դու անցեալ կաս, և վասն քո ինչ մեղաց չհոգաս և զայլոցն ևեթ ածես զմտաւ:

Նաեւ զիա՞րդ կարիցես զա՜ծ աղաչել յորժամ որ քո ինչ գործեալ իցէ՝ վասն այնպիսի իրաց զընկերն լուտայցես, և այնու զքո եւս պատիժ սաստկագոյնս գործիցես, և չտայցես Թոյլ ա՜յ առնել Թողութիւն քոյոց յանցանացն։ Ո՛չ ի թէ որ քեզ ոք ինչ յանցեաւ, ասէ, զայն հաւատեաւ պահանջիցես, զիա՞րդ իցէ զի վասն քոյոցն յանցանացն որ ինչ յանցեարն՝ Թողութի խնդրիցես։

Նո՞րբ ուսանիցիմք լինել քրիստոնեայք։ Նաթէ յաղօթս չգիտիցեմք կալ՝ որ կարի իսկ դիւրին գործ է, զի՞նչ այլ ինչ գիտել կարիցեմք։ Այսպէս կալ յաղօթս իբրև զքրիստոնեայ։ Ո՛չ ի այնպիսի աղօթք հրէից և հեթանոսաց են. և քրիստոնէից աղօթքն նոցին հակառակ՝ Թողութիւն խնդրել, չունել ոխս ընդ այլս որ առ մեզ յանցանիցեն. "Բամբասէին, ասէ, օրհնէաք, հալածէին յանձն առնուաք, հայհոյէին աղաչէաք"։ Լուր և Ստեփանոսի որ ասէ. "Տէր մի համարիր դոցա զայդ մեղս"։ Ոչ միայն չլուտայր, այլ և աղօթս եւս առնէր վասն նոցա. և դու ոչ միայն աղօթս չառնես, այլ և լուտաս եւս. զի որչափ նա զարմանալի լինէր, նոյնչափ և դու չարակամ։ Նաև արդ ընդ ո՞ զարմանայցեմք, աղէ ասա. ընդ այնոսիկ վասն որոյ աղօթսն չառնիցէ ոք, եթէ ընդ նա որ աղօթսն առնիցէ. յայտ է թէ ընդ նա։ Իսկ եթէ մեք, որչափ եւս առաւել ա՜ծ։ Կամիս չար առնել թշնամւոյն, աղօթս առնիջիր 'ի վերայ նորա. բայց մի ինչ այնպիսի մտօք։ Նաև այն ահա լինի իսկ. այլ դու մի այնպէս կացցես յաղօթս, թէ և աղօթս եւս առնելով չար ինչ լինիցի նմա։ Թէպէտ և երանելին բազում զուր չարչարանս չարչարէր, և 'ի վերայ չարարարացն աղօթս մատուցանէր. և մեք բազում անգամ յիրաւի իսկ չարչարիմք 'ի թշնամեաց, և չառնեմք աղօթս վասն նոցա։ Ո՛չ ի եթէ որ 'ի զուրն չարչարէր՝ չէր լինէր լուտալ, մանաւանդ թէ չէր լինէր իսկ չառնել աղօթս վասն նոցա, իսկ որ յիրաւին չարչարիցին, և ոչ միայն աղօթս չառնիցեն վասն լլկչացն, այլ և լուտայցեն եւս, որպիսի ինչ պատժոց լինիցին արժանի։ Քեզ թուի թէ զնա խոցիցես, և զայն չգիտիցես թէ դու իսկ ելանես ընդ սուրն, զի ոչ տաս դատաւորին ներել քոյոց մեղացն, որովք ընդ այլսն գրգռես։ "Որով

չափով չափէք, ասէ, չափեսցի ձեզ. և որով դատաստանաւ դատիցիք դատիք,,: Ողջիցուք ներողք, զի և մեք յայս թողութիւն գտանիցեմք:

Այլ զայս ոչ կամիմ թէ լինիցէք և եթ, այլ զի և պահիցէք: Բայց ահաւասիկ տեսանեմք զի բանիւք և եթ են պատուէրքս, և թերևս ոչ բանիւք. յորժամ աստի արձակլիցիմք, և հարցանիցէ ոք յայնցանէ որ աստ ոչ գիպեցաւ, եթէ զինչ խօսեցաւ. ոմանք և պատասխանի իսկ չտայցեն, և այլք առաւել ասիցեն զպատճառքն եթէ խօսեցաւ վասն չանել ոխս 'ի մտին, այլ և աղօթս ևս առնել 'ի վերայ թշնամեացն. և այնպէս ոչ եթէ զամենայն չիշխիցեն, այլ և ոչ փոքր 'ի շատէ ինչ: Վասն որոյ աղաչեմ, թէ չշահիք ինչ 'ի բանիցս, և մի ունկն դնէք. զինչ օգուտ իցէ, զի աւելի ևս դատաստանք են և մեծամեծ պատիժք, զի յետ այնչափ խրատուց անդէն 'ի նոյն գործս գտանիմք: Վասն այնորիկ սահմանեաց մեզ աղօթս Ած, զի մի մոռանաւոր ինչ և երկրաւոր իրս խնդրիցեմք: Գիտէք հաւատացեալքդ որպէս պարտ իցէ կալ յաղօթս, և զիարդ հասարակաց են աղօթքն:

Բայց չիք ասացեալ, ասեն, վասն անհաւատից աղօթս առնել: Քանզի ոչ գիտէք զզօրութիւն և զծածուկ գանձս աղօթիցն. եթէ բանայցէ ոք զաղօթսն, և զայն ևս գտանէ 'ի ներքս: Յորժամ ասիցէ որ յաղօթս կայցէ, "Եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի,,, ոչ զայլ ինչ եթէ ոչ զնոյն ակնարկէ: Որպէս: Քանզի յերկինս չիք ոք անհաւատ և ոչ յանցաւոր: Զի եթէ վասն հաւատացելոց միայն էին աղօթք, ապա չէր ինչ 'ի դէպ ասել՝ թէ որպէս յերկինս և յերկրի. նա աւանիկ ասէ, թէ որպէս յերկինս կամք քո կատարին, նոյնպէս և յերկրի կատարեսցին. որպէս յերկինս չիք ոք չար, նոյնպէս և մի յերկրի լինիցի: Բայց զամենեսեան ձգէ 'ի քո յերկիւղդ, և զամենայն մարդիկ հրեշտակս արա, թէպէտ և թշնամիք և պատերազմողք մեր իցեն: Տեսանե՞ս որչափ հանապազ հայհոյի Ած, քանի թշնամանի 'ի հաւատացելոց և յանհաւատից և բանիւ և արգեամբք: Միթէ վասն այնորիկ չիջո՞յց զարեգակն, խափո՞յց զլուսին, դղրդեա՞ց զերկինս, խռովեցո՞յց զերկիր, ցամաքեցո՞յց զծով և խցեաց զակնս աղբիւրաց, ար-

գմ՛լ զօդս. ոչ երբէք, ոչ ուրեք. այլ զնորին հակառակն. ծագէ զարեգակն, ածէ անձրեւ, եւ տայ զկարեւորն կերակուրս հայհոյչացն անմտաց ապերախտաց, պղծոց հալածչաց, ոչ մի օր միայն եւ ոչ զերկուս եւ ոչ զերիս, այլ հանապազ եւ զամենայն աւուրս կենաց:

Նմանող լինիջիր այ̅ որպէս հնար իցէ մարդկեղէն զօրութեան: Զկարե՞ս զարեգակն ծագել, մի՛ չարախօսիցես. չկարե՞ս անձրեւ ածել, մի՛ բամբասիցես. չկարե՞ս կերակրել, մի՛ թշնամանիցես. շատ են 'ի քէն այսպիսի պարգեւք: Այլ յա՛յն արդեամբք իսկ լինի 'ի թշնամիսն երախտիք. դու գէթ բանիւք արասջիր աղօթս 'ի վերայ թշնամեաց, եւ այսպէս լինիցիս նմանող հօրն երկնաւորի:

Բազում անգամ վասն սորին ասացաք, եւ չդադարեսցուք միւսանգամ զնոյն խօսել, միայն թէ չլինիցի ինչ առաւել: Մե՛ք ոչ դանդաղիմք եւ ոչ վատատակիմք եւ ոչ ձանձրանամք ասել. միայն թէ դուք յորժամ լուիցէք, չհամարիցիք թախանձանս: Յայնժամ թուին ումեք թախանձանք, յորժամ առնել չկամիցին. իսկ որ առնել կամիցի, ցանգ ախորժէ լսել, ոչ իբրեւ զձանձրացեալ, այլ իբրեւ զյարգեալ եւ զգովեալ. որպէս զի 'ի չառնելոյն է ձանձրանալն, եւ անտի իսկ ծանր թուի վարդապետն: Թէ ոք ողորմութիւնս առնիցէ, եւ այլ ոք վասն ողորմութեան խօսիցի, ոչ միայն չձանձրանայ, այլ եւ բերկրի եւս, զի լսէ թէ նորա ուղղութիւնքն յարգին: Նոյնպէս եւ մեք չկամիմք զոխակալութիւն մոռանալ, վասն այնորիկ բանքն դժուարաւ թուին. եթէ զիւրան առնէաք, ապա եւ ընդ բանս չլինէաք դժկամակ: Եթէ չկամիք զմեզ ձեզ ծանր համարել, արդեամբք իսկ ցուցէք զոր խնդրեմքն. ապա թէ ոչ՝ ոչ երբէք դադարեսցուք զնոյն ասել, մինչեւ զողորմութիւն ցուցանիցէք. մանաւանդ զի խնամոց եւ դարմանոց վասն ձերոյ ջանամք. ապա զի եւ հարկ եւս կայ 'ի վերայ: Քանզի եւ որ զփողն հարկանիցէ, թէպէտ եւ 'ի պատերազմ ոք չելանիցէ, նմա պարտ է հարկանել: Այլ մեք ոչ եթէ 'ի մեծամեծ ինչ ջանս կամիմք ածել զձեզ՝ վասն այնորիկ ստիպեմք, այլ զի դուք ձեզէն իսկ ուղղեցէք. եւ հանդերձ այնու զի եւ ձեր սէրն իսկ ստիպէ զմեզ: Քանզի աղիք գալարին եւ սիրտն կսկծէ՝ թէ զուցէ այնպիսի ինչ

անցք անցանիցեն ընդ ձեզ. այլ մի՛ լիցի և մի՛ ոմն զայն արասցէ։ Զիք ինչ պէտք Թոշակի վասն որոյ այժմս խօսիմք, և ոչ երկար ինչ ճանապարհի և ոչ մարմնոյ[1] ցանկութեանց. կամելն միայն և բանք և հաճութիւնք։

Պահեսցուք զաներանս, դուռն ամուր դիցուք, նգօք և աղխիւք փակեսցուք, զի մի՛ արտաքոյ ա̃յ կամացն ինչ խօսիցիմք. զի մեզ լինին աղօթքն, և ոչ նոցա վասն որոյ աղօթս առնիցեմք։ Զայս միշտ ածցուք զմտաւ՝ թէ որ օրհնէ զթշնամին, զանձն օրհնէ. և որ անիծանէ, զանձն անիծանէ. և որ աղօթս առնէ 'ի վերայ թշնամւոյն, անձին առնէ աղօթս։ Եւ այնպէս կարիցեմք զուղղութիւնս զայս ածել 'ի գործ, և հասանել խոստացելոց բարութեանցն, որոց լիցի մեզ ամենեցուն հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ԵՕԹՆԵՐՈՐԴ

“Զի խաղաղութեամբ և շինութեամբ վարեսցուք ըզկեանս մեր ամենայն աստուածպաշտութեամբ։ Զի այն է բարի և ընդունելի առաջի ա̃յ փրկչին մերոյ, որ զամենայն մարդիկ կամի զի ապրեսցին և 'ի գիտութիւն ճշմարտութեան հասցեն „։

Եթէ որ զհասարակաց պատերազմունսն ցածուցանել կամիցի և զկռիւս և զխռովութի̃ս՝ նմին իրի վասն թագաւորաց և իշխանութեանց աղաչէ զքահանայն աղօթս մատուցանել, որչափ ևս առաւել և ռամկին պարտ իցէ զնոյն առնել։ Վասնզի պատերազմացն երեք կերպարանք անհնարինք են. մի հասարակաց՝ յորժամ մեր զօրականքն ընդ այլ ազգացն պատերազմիցեն. երկրորդ յորժամ խաղաղութի̃ իցէ, և մեք ընդ միմեանս կռուիցեմք. երրորդ յորժամ իւրաքանչիւր ոք ընդ անձին

1 Յոյնն ծնլոյ ծախս։

կռուիցի ։ Եւ այն իսկ է որ քան զամենայն չար և անհնարին է. զի այլազգեացն կռուի ոչ այնչափ կարէ վնասել մեզ որչափ մերն ։ Եւ աղէ ասա զինչ իցէ, կամ սպան կամ մեռաւ. այլ ոչ եթէ այն ոգւոյն ինչ վնաս առնիցէ ։ Եւ ոչ երկրորդն ինչ վնասել կարիցէ եթէ կամիմք. զի թէպէտ և այլք ընդ մեզ կռուիցեն, մարթի մեզ ընդ նոսա խաղաղութիւն ունել ։ Եւ լուր մարգարէին որ ասէ. "Փոխանակ սիրոյ իմոյ չարախօսէին զինէն, բայց ես աղօթս առնէի"։ և դարձեալ թէ "Ընդ այնոսիկ որ ատեանն զխաղաղութիւն, ես խաղաղարար լինէի"։ և դարձեալ եթէ "Մարտնչէին ընդ իս ՚ի նանիր"։ Իսկ յերրորդէն չէ հնար առանց վտանգի զերծանել. յորժամ մարմինն ընդ ոգւոյն պատերազմ տայցէ և զանհնարին ցանկութիւնսն գրգռիցէ, և զոր ինչ ոչ ախորժիցէն՝ այնու իբրև զինու վառիցի, մերթ ցասմամբ և մերթ նախանձու բորբոքիցի, չէ հնար խաղաղացելոց բարութեանցն հասանել, եթէ ոչ այն պատերազմ նախ ՚ի միջոյ բառնայցէ. այլ հարկ լինի այնմ որ ոչ զայնպիսի խռովութիւն ցածուցանիցէ՝ անկանել և վերս առնուլ, և զգեհենին մահ երկնել և ծնանել ։

Եւ արդ պարտ է մեզ հանապազ գոհանալ և բազում փոյթ յանձին ունել, զի մի զարթուցանիցեմք ՚ի մեզ զայնպիսի պատերազմ. և եթէ զարթիցի, չառնիցեմք կալ, այլ ցածուցանիցեմք և փարատիցեմք ։ Ոչ ինչ օգուտ իցէ յորժամ աշխարհ ամենայն ՚ի խաղաղութե իցէ, և դու ընդ անձին կռուիցիս ։ Զայն խաղաղութիւն պարտ է ունել. և եթէ զայն ունիցիմք, ոչ ինչ յարտաքնոցն կարիցէ մեզ մեղանչել ։ Բայց նպաստ լինի յայն ոչ սակաւ ինչ և հասարակաց խաղաղութիւն, վասն այնորիկ իսկ ասէ. "Զի խաղաղութեամբ և շինութեամբ վարեսցուք զկեանս մեր"։ Եթէ ոք ՚ի խաղաղութեան խռովիցի, չիք ոք քան զնա հեք և թշուառական ։

Տեսանե՞ս զերրորդ խաղաղութենէն զոր ասացի, ասէ ։ Զի յորժամ ասաց՝ խաղաղութեամբ և շինութեամբ վարեսցուք զկեանս մեր, ոչ ՚ի նմին միայն եկաց, այլ յաւել, թէ "Ամենայն աստուածպաշտութեամբ և պարկեշտութեամբ"։ Զի յաստուածպաշտութեան և ՚ի պարկեշտութեան չմարթի լինել, եթէ ոչ խաղաղու-

թիւն 'ի սիրտս անկիցի : Յորժամ խորհուրդքն խընդրակք զհաւատոյն խառնիցեն, որ ինչ խաղաղութիւն 'ի միջի կայցէ . յորժամ այսք աղտեղութեանցն հնչիցեն, ուր իցէ զի անդ խաղաղութիւն կայցէ : Զի մի կարծիցես թէ զայնմ ինչ խաղաղութենէ ասիցէ՝ յորում հեթանոսք, անառակքն և մոլորեցուցիչքն և անձնադիւրքն, յարէ 'ի նոյն՝ եթէ ամենայն աստուածպաշտութեամբ և պարկեշտութեամբ : Զի այն է կեանքն և գովութեամբ[1] լի են ոգւոյն մարտիւք և ցանկութեան ոգւովք, որ միշտ զմիտսն ուտիցեն : Եւ արդ չասէ զայնմ կենաց, այլ որ ա̄ծպաշտութեամբ լի իցէ, ոչ միայն հաւատոցն կրօնիւք, այլ և վարուցն պարկեշտութեամբ : Քանզի և անդ զաստուածպաշտութիւն պարտ է խընդրել : Զի ինչ օգուտ իցէ հաւատովքն աստուածապաշտ լինել, և գործովքն ամբարիշտ : Ուր սմին իսկ երանելոյն զինչ ասէ 'ի միում վայրի . “Խոստանան, ասէ, ճանաչել զա̄ծ, և գործովքն ուրացեալ են„ . և դարձեալ եթէ “Զհաւատսն ուրացեալ է, և չար ևս է քան զանհաւատն„ . և դարձեալ “Եթէ ոք եղբայր անուանեալ իցէ կամ պոռնիկ իցէ կամ ագահ, այսինքն է կռապաշտ, այնպիսին չպատուէ զա̄ծ„ . և “Որ զեղբայրն ատէ, զա̄ծ չգիտէ„ : Տեսանես որչափ ինչ օրինակք են ա̄ծպաշտութեան[2] . վասն այսորիկ ասէ՝ ամենայն ա̄ծպաշտութեամբ և պարկեշտութեամբ :

Պարկեշտ ոչ միայն չէ պոռնիկն, այլ և ագահ և անառակ : Զի և այն ցանկութիւն ոչ սակաւ ինչ քան զմարմնոյ ցանկութիւն է : Որ չճնշիցէ զանձն, այնպիսին անառակ կոչի . քանզի և վասն զցանկութիւն չճընշելոյ անառակ և անխրատ կոչի : Եւ բարկացօղն և նախանձօտն և արծաթասէրն և մեղմեղն և ամենայն որ յինչ մեղանս և իցէ՝ անառակ և անխրատ կոչի և աղտեղի և պիղծ :

“Զի այն է բարի և ընդունելի առաջի ա̄յ փրկչին մերոյ„ : Աղօթս առնել վասն ամենեցուն՝ զայն ընդունի ա̄ծ, զնոյն կամի : “Որ զամենայն մարդիկ, ասէ, կամի զի ապրեսցին„ : Եւ յիրաւի իսկ պարտ է վասն ամենեցուն աղօթս առնել : Եթէ նա զամենեցունց կեա-

1 Խանդաղմունք կան յայսմ վայրք յօրինակին որպէս երևի 'ի յունականէն :

2 Յոյնն ամբարշտութեան :

նըս կամի, ապա և դու կամեաց. և եթէ դու կամիցիս՝ աղօթս արա, քանզի որ կամիցին՝ նոցա է աղօթս առնել: Տեսանես զիարդ ամենայն ուստեք հաւանեցուցանէ զմիտս և վասն հեթանոսաց աղօթս առնել, և զայն ցուցանէ եթէ ոչ ինչ շահք անտի ծնանին. զի "Խաղաղութեամբ, ասէ, և շինութեամբ վարեսցուք զկեանս մեր": Նաև որ մեծն ինչ է քան զայն, զի և ա̃յ նոյն կամք են, և նովին նմանն լինիմք նմա, զի և նա իսկ զնոյն կամի: Նաև այս ամենայն բաւական է և զչար գազան ինչ ՚ի հաւանութիւն ածել: Մի՛ ինչ երկնչիցիս վասն հեթանոսացն աղօթս առնել, քանզի և նա զնոյն կամի. և ՚ի լուտալոյն միայն երկիր, քանզի և նա ընդ այն չհաճի: Նաև եթէ վասն հեթանոսաց պարտ իցէ աղօթս առնել, յայտ է և վասն հերձուածողաց և վասն ամենայն իսկ մարդկան, և չէ մարթ զոք հալածել, այլ խրատել. նա և ՚ի հասարակաց բնութեանն նոյն բարի է, քանզի և ՚ի նմին բնութեան եմք առ հասարակ: Նաև ա̃ծ իսկ զովէ և ընդունելի առնէ զխնամս և զգութ զոր ընդ միմեանս ունիցիմք:

Նաև եթէ ինքն, ասեն, կամիցի տալ, տէր է տացէ, մերոց աղօթիցն զինչ պէտք իցեն: Այլ և աղօթս առնել օգուտ է, զի ՚ի սէր ձգէ զնոսա, և չտայ թոյլ գըրգռել զմեզ, այլ բաւական է և ՚ի հաւատն ևս յորդարեցուցանել զնոսա. քանզի բազումք ՚ի մարդկանէ վասն հակառակութեան ինչ որ ընդ միմեանս ունիցին՝ հեռանան յա̃յ: Փրկութիւն աստ զայն կոչէ, որ զամենայն մարդիկ, ասէ, կամի զի փրկեսցին. քանզի այն իսկ է արդարև փրկութիւն, և առանց այսր այլ չիք փրկութիւն. և եթէ իցէ ինչ անուն և եթէ ոչ է, ընդ վայր յորջորջանք են: "Նաև ՚ի գիտութիւն ճշմարտութեան գալ", ՚ի հաւատն որ յա̃ծ իցէ: Քանզի յառաջագոյն ասաց՝ պատուէր տալիր մի՛ օտարոտի ինչ ուսուցանել, զի մի՛ իբրև ընդ թշնամիս նայիցի ընդ նոսա, և մի՛ ՚ի կախ ինչ կրգռիցի վասն բանին՝ որ զամենայն մարդկան ասէ՝ կամի զփրկելն և ՚ի գիտութիւն ճշմարտութեան գալ, և ՚ի նոյն յարէ՝ եթէ "Մի է ա̃ծ և մի միջնորդն ա̃յ և մարդկան":

Ասաց՝ և ՚ի գիտութիւն ճշմարտութե̃ գալ, և յայտ արար թէ չէր աշխարհս ՚ի ճշմարտութեան: Նաև դար-

ձեալ ասէ՝ եթէ մի է ած, և ոչ բազում որպէս հեքայն կարծէին: Եթէ զամենեցուն փրկութիւն կամի, վասն այսորիկ և զորդին առաքեաց միջնորդ: Իսկ արդ զիա՞րդ միթէ որդին չիցէ ած. այս և կարի իսկ քաջ: Այլ զիա՞րդ ասիցէ թէ մի ած. անջրպետ 'ի մէջ կացոյց արկանելոյ զայն՝ ասէ զմի ածն, և ոչ եթէ զորդի ինչ մերժիցէ յածութենէն, քաւ լիցի. վասն զի ճշմարտութեան և մոլորութեան բանք էին: Բայց միջնորդն պարտի երկոցունց կողմանցն հաղորդ լինել, որոց միջնորդիցէն. զի միջնորդին գործ այն է՝ երկոցունց կողմանցն ունել հաղորդութիւն. ապա եթէ 'ի միոջէ կողմանէ ունիցի և 'ի միւսմէն չունիցի, չէ այնուհետև միջնորդ: Զի եթէ ոչ 'ի հօր էութենէն ունիցի և 'ի մարդկան բնութենէն՝ ապա չէ միջնորդ: Այլ քանզի առ հօր էր և առ մարդիկ գալոց էր, վասն այնորիկ երկոցունց բնութեանցն եղև միջնորդ: Զոր օրինակ տեղի ինչ որ 'ի մէջ երկուց տեղեաց սահման իցէ՝ յերկոցունց տեղեացն մասն ունի, նոյնպէս և որ երկոցունց բնութեցն միջնորդ եղև, յերկոցունց պարտ է ունել հաղորդութիւն. ոչ միայն հաղորդութիւն, այլ և հաւաստեաւ իսկ զերկոսին բնութիւնս: Զի որպէս մարդ ստոյգ եղև, նոյնպէս և ած ճշմարտութեամբ է: Զի թէ չէր ած և մարդ, չկարէր միջնորդ լինել. եթէ մարդ միայն էր՝ չկարէր ընդ այ խօսել, և եթէ ած՝ չմարթէր միջնորդ լինել, քանզի չկարէին հանդուրժել նմա միջնորդեալքն: Այլ քանզի ունէր զայ բնութիւն, կալաւ և զմարդկան բնութիւն, և ապա կարաց լինել միջնորդ: Այլ զոր օրինակ անդ ասաց, թէ "մի է ած հայր, և մի է տէր Յիսուս Քրիստոս", նոյնպէս և աստ՝ մի և մի ասէ, և չդնէ երկուս: Այլ քանզի զբազում աստուածոց խօսէր, զի մի զերկոցունց յորջորջումն յափշտակիցէ որ 'ի թիւ բազում աստուածոցն, վասն այսորիկ մի և մի դնէ: Տեսանե՞ս զիարդ գիրք բազում զգուշութեամբ խօսին: Զի մին և մի երկուս են: Այլ չասեմք այնպէս, թէպէտ և միտքն այնպիսի ինչ կարծիցեն: Այլ չկարես անդ ասել՝ զմին և զմին երկուս. ոչ միտքն յայն դրդեն, և զայն իշխեսցես ասել՝ թէ ծնաւ, ապա և չարչարեցաւ. այլ չէ իշխանութիւն ասել, քանզի անչարչարական է աստուածութիւն:

“Մի է, ասէ, Ա՟ծ, և մի միջնորդն Ա՟յ և մարդկան մարդն Յիսուս Քրիստոս”։ Որ ինչ եղեն, չխորշի զանձն անուն կոչել իւր։ “Որ ետ զանձն փրկանս փոխանակ ամենեցուն”։ Ապա ուրեմն և հեթանոսաց. քանզի Քրիստոս և վասն հեթանոսաց մեռաւ, և դու աղօթս չկամիս առնել վասն նոցա։ Եւ զիա՞րդ, ասեն, չհաւատացին։ Վասն զի ոչ կամեցան. ՚ի նմանէ կողմանէ զինչ պարտ էր լինել՝ եղև։ Վկայութիւն ասէ. զչարչարանս կոչէ վկայութիւն, քանզի եկն լինել վկայ ճշմարտութեան հօր և սպանաւ։ Որպէս զի ոչ հայրն միայն վկայէ նմա, այլ և նա հօր։ “Ես եկի, ասէ, յանուն հօր իմոյ”. և դարձեալ. “Զի ծանիցեն զքեզ ճշմարիտ Ա՟ծ”. և դարձեալ եթէ “Հոգի է Ա՟ծ”։ Մահու չափ վկայեաց։ “Վկայութիւն, ասէ, ժամանակաց իւրոց”. այսինքն ՚ի դէպ և ՚ի պատշաճ ժամանակի։

“Յորում եղայ ես, ասէ, քարոզիչ և առաքեալ։ Ճշմարիտ ասեմ և ոչ ստեմ, եղէ վարդապետ հեթանոսաց հաւատովք և ճշմարտութեամբք”։ Եւ քանզի նա, ասէ, վասն հեթանոսաց չարչարեցաւ, և ես վարդապետ հեթանոսաց կարգեցայ, և արդ ընդէ՞ր չառնեմք աղօթս վասն նոցա։ Եւ բարւոք իսկ, քանզի հաւատարիմ պէտք էին անդ, վարդապետ հեթանոսաց ընտրեցայ։ Եւ առ այն կարի իմն զանգաղէին առաքեալքն։ Իբրև ասաց՝ վարդապետ հեթանոսաց, յարէ ՚ի նոյն եթէ “Հաւատովք և ճշմարտութեամբ”։ Զի մի յորժամ զհաւատոյն լուիցես՝ խաբէութիւն ինչ համարիցիս, յարէ ՚ի նոյն՝ զճշմարտութիւն. Ճշմարտութիւն է, ասէ, և չէ ստութի՟։ Տեսանե՞ս զիարդ զեղեալ սփռեալ են շնորհքն։ Զի հրէիցն աղօթքն ոչ վասն այնպիսեացն ուրուք լինէին. իսկ ահաւասիկ տարածեալ են շնորհքն, քանզի վարդապետ հեթանոսաց ասէ հաւատովք և ճշմարտութեամբ։

“Որ ետ, ասէ, զանձն փրկանս փոխանակ բազմաց”։ Եւ արդ զիա՞րդ ասիցէ՝ եթէ ՚ի հօրէ մատնեցաւ, զի սա ահաւասիկ յայտ առնէր թէ առ իւրում բարերարութեանն եղև փրկանք բազմաց։ Մերձ էր ածել զպատիժն ՚ի վերայ, զի մօտ էին առ հասարակ կորնչել ամենեքեան. այնր փոխանակ ամենեցուն մատնեաց զիւր որդին. որպէս զի բաւական է քարոզութի՟ խօսքին ձգել

յինքն զամենեսեան և ցուցանել զսէրն Քրիստոսի ։ Արդարև մեծամեծ և անպատում պարգևք են, զի զանձն մատնեաց 'ի մահ փոխանակ թշնամեաց և ատելեաց և ապստամբաց 'ի նմանէ. զոր ոչ վասն բարեկամաց և ոչ վասն որդւոց որ ասէ և ոչ վասն եղբարց, զոր տէրն արար վասն ծառայից. և տէր ոչ այնպիսի որ որպէս ծառայքն էին, այլ ած փոխանակ մարդկան. ոչ վասն հաճոյից և առաքինեաց ուրուք, այլ որ ինչ 'ի մարդկանէ 'ի մարդիկ յերբեանց ծառայակիցս և նմանակիցս լինելոյ՝ այն եղև ։

Իսկ յայնչափ սէր վայելեցաք, ծուլանք և չարիմք զՔս ։ Նա եւս զանձն 'ի զենումն վասն մեր, և մեք յարժամ 'ի կարեւոր կերակրոյն չքաւոր զաւանիցի՝ անտես առնեմք, և 'ի հիւանդութեան և 'ի մերկութեան՝ և չլինիմք այցելու ։ Որպիսի բարկութեան չիցէ այն արժանի, որպիսի տանջանաց, որպիսի գեհենի ։ Իսկ թէ չէր այն իսկ լեալ, այն միայն ոչ փոքր էր. զի արժանի արար զկարիս մարդկան իւր ընտանեցուցանել, զքաղց և զծարաւ և զցաւս. և այն իսկ չէր բաւական յորդորել զամենեսեան ։

ՅՈՐԴՈՐԱԿ

Այլ վայ ընչիցն բանաւորութեան, մանաւանդ թէ այնոցիկ որ կամօք ընչիցն ծառայիցեն. ոչ եթէ կարասին սատանի ինչ զօրութիւն ունիցի, այլ մեք թոյլ և մեղկք, տաղտկալեալք և երկրասէրք, մարմնասէրք և անմիտք. չիք ինչ անդ զօրութիւն, քանզի համր և անհանճար են ինքեանք ։ Զի եթէ սատանայ ոչ ինչ է, և աղտեղի և դև չար, և թէպէտ զամենայն կամի խաղբակել՝ յառաքինութեան չկարէ զամպարտ լինել. իսկ յինչսն զօրութիւն ինչ կայցէ ։ Իսկ եթէ տեսանիցես զարծաթ, համարեսջիր թէ անագ իցէ ։ Այլ չկարիցես այնպէս համարել, համարեսջիր որպէս են իսկ, քանզի հող է և 'ի հողոյ ։

Իսկ եթէ այնպիսի միտս ոչ կարիցես ունել, զմտաւ ածջիր թէ և մեք կորնչելոց եմք, և բազումք 'ի ստացողացն զրեթէ բնաւին չօգտեցան, և որ կարի կարծէին 'ի նոսա՝ յանկարծակի հող և մոխիր եղեն, և

յայնչափ վատթարութիւն հասեն զի յոսկեղէն և յարծաթեղէն յանօթոցն 'ի խեցեղէն և 'ի փայտեղէնս իջին, և քան զկնաւ աղքատս աղքատագոյնք գտան, և քակեան նաւան յաղբոյն վերայ որ 'ի փղոսկրեայ գահոյս փերևեալէին ։

Այլ թերևս աչացն զիւր թուիցի ոսկին և արծաթն. և այլ ինչ բազում կայ որ քան զայն ևս բարի թուի աչաց. օդք սուրբք, երկինք և արեգակն և լուսին և աստեղք ։ Ոչ ոսկին և արծաթն ժանգ ևս ունին, և բազում անգամ և թխանան, և յայտ 'ի ջնջոցացն որով ջնջիցեն՝ է. իսկ յարեգակն և յերկինս և յաստեղս ոչ այնպիսի ինչ թխութիւն. և կարի իսկ քան զայն 'ի ծաղիկս է վայելել աչաց ։ Այլ արդ ոչ եթէ ընդ ոսկւոյն և ընդ արծաթոյ վայելչութիւն խօսողին աչքն, այլ ագահութիւն և անխրատութիւն զուարճացուցանէ զնոսա ։ Հան զագահութիւն 'ի մտաց, և քան զցիխ պատուական ևս անարգագոյն թուի. հան զախտն 'ի մտաց, և այն ամենայն յոչինչ համարի ։ Բաղնիք և ջերմնոցն թէպէտ և զմօր ինչ տեսանիցեն, իբրև յաղբիւր փախիցեն. իսկ առողջքն որ սոոյգ առողջքն իցեն, և ոչ ջրոյ վայրապար ցանկան. հան զցաւն 'ի մտաց, և տեսանես որպէս զխառդ իցեն իրքն՝ երևին ։ Այլ զի ուսանիցիս թէ ոչ ստեմ, զբազումս իսկ ցուցանեմ՝ որք զայն այնպէս արարին ։ Շիջո զհուրն, և տեսանիցես զի քան զծաղիկս ևս վատթարագոյն են ։

Բարւոք է ոսկի, այլ յողորմութեան տանել, 'ի տուրս տալ, ձեռնկալու տնանկին լինել, և ոչ յանօգուտ պէտս ծախել՝ եթէ 'ի տան կայցէ և կամ յերկրի թաղեսցի, և 'ի ձեռս և յոտս և 'ի գլուխս ։ Վասն այսորիկ գտաւ ոսկին, ոչ զի զպատկերսն նովաւ կապիցեմք, այլ զի զկապեալսն նովաւ արձակիցեմք ։ Զայնպիսի ինչ գործ արկ 'ի կիր զոսկին, զի զկապեալսն արձակիցես ։ Այլ արդ աղէ ասա, ընդէ՞ր զպխտանի հողն քան զամենայն պատուական համարիցիս. միթէ զի ոսկին է՝ չիցե՞ն կապանք. միթէ քրէականն գործիցէ զկապանսն ։ Ո՞չ ապաքէն եթէ ոսկի իցէ և եթէ արծաթ, նոյն կապանս կապիցէ. ո՞չ ապաքէն ոսկին ևս ծանր քան զերկաթն իցէ. այլ նոյն գործէ, քանզի այնպէս իմն ևեթ է մնապարծութիւնն ։ Այս զի և տեսանելովն միայն կապի, ընդ որ կարի իսկ

պարտ է ամաչել: Զի և այս ճշմարիտ է, կապեա զա-գահն ոսկւով և ընկեա յանապատի ուրեք՝ ուր ոչ ոք տեսանիցէ, և տես զիարդ տաղտկայ ընդ կապանսն և ծանր համարի: Երկիցուք, սիրելիք, գուցէ և մեք լսի-ցեմք զահագին բանն, թէ «Կապեցէք զդորա զձեռս և զոտս»:

Զի՞ որչափ ճեպիցես անձամբ զանձն կապել. չիք կալանաւոր որ կամիցի զոտս և զձեռս կապել: Ընդէ՞ր զգլուխս ևս կապիցես. չիցե՞ն շատ ոտից և ձեռաց կա-պանք, ընդէ՞ր և ընդ պարանոց աղցի աղցի խեղդ ար-կանիցես: Նայլ զհոգսն բնաւ 'ի բաց թող Թողլոց, զկապ-կածն, զկախուն որ ընդ ոտս և ընդ կին լինիցի. եթէ վըճ-ռիցի ինչ 'ի զարդուէն, որպիսի՞ մահ ոչ մեռանիցին. և արդ այն ցանկութիւն ինչ իցէ: Աստն զայրդ աչս խաղալեցո այնչափ կապանս ընդ անձն արկանել, և 'ի հոգս և 'ի տառապանս զմիտս մաշիցեն, և չիցէ՞ այն բա-զում պարսաւանաց և ստգտանաց արժանի: Մի՛, ա-ղաչեմ, մի՛ զայն առնիցէ ոք. այլ լուծցուք զկապանս ա-նիրաւութեան, և բրդեսցուք հաց կարօտելոց, և զա-մենայն ինչ զայն արասցուք՝ որ համարձակութեան առ Ած կարիցէ լինել մեզ աւուր, զի հասանիցեմք խոստա-ցեալ պարգևացն շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգա-մայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՈՒԹՆԵՐՈՐԴ

"Կամիմ եթէ արք կայցեն յաղօթս ընդ ամենայն տեղիս, բառնայցեն զսուրբ ձեռսն 'ի վեր առանց բարկութեան և երկմտութեան: Նոյնպէս և կանայք 'ի զարդ խոնարհութեան ցածութեամբ և պարկեշտութեամբ զարդարել զանձինս, մի 'ի հիւսս ոսկեմանս ընդելուզեալս մարգարտով, կամ 'ի հանդերձս պաճուճեալս, այլ որպէս վայել է կանանց՝ որոց զաստուածպաշտութիւն յանձն առեալ իցէ 'ի գործս բարութեան":

Տէրն ասէ. "Յորժամ յաղօթս կայցէք, մի՛ լինիք իբրև զկեղծաւորսն, զի սիրեն 'ի ժողովուրդս և յանկիւնս հրապարակաց կալ յաղօթս, զի երևեսցին մարդկան. ամէն ասեմ ձեզ այն իսկ են վարձք նոցա: Այլ դու յորժամ յաղօթս կայցես, մուտ յշտեմարանս քո և փակեա զդուրսն և կաց յաղօթս առ հայրն քո 'ի ծածուկ, և նա հատուսցէ յայտնապէս": Իսկ Պաւղոս զիա՛րդ ասիցէ "կամիմ թէ կայցեն արք յաղօթս ընդ ամենայն տեղիս, բառնայցեն զսուրբ ձեռս առանց բարկութեան և երկմտութեան": Չէ այս այնմ հակառակ, քաւ լիցի. այլ կարի իսկ միաբան: Ի՞ւ և որո՛վ օրինակաւ:

Բայց նախ պարտ է ասել զինչ իցէ՝ մուտ յշտեմարանս քո. և թէ զինչ իցէ այլոց հրաման տալ յամենայն տեղիս կալ յաղօթս, և կամ թէ յեկեղեցւոջ չիցէ պարտ կալ յաղօթս և կամ թէ յայլում ուրեք կողման տան, այլ միայն յշտեմարանին: Զի՞նչ իցէ զոր ասէն: Զսնապարծութի՛ կամի ցածուցանել Քրիստոս. մի՛ վայրապար, ասէ, գաղտ կալ յաղօթս, այլ և կարի իսկ 'ի ծածուկ տեղիս մտանիջիր և կատարիջիր զաղօթսն: Զոր օրինակ յորժամ ասիցէ. "Մի՛ գիտասցէ ձախ քո զինչ գործէ աջ քո", ոչ զվայրապար ինչ զձեռաց ասէ, այլ զյաճախ սնապարծութէ՛ն. Նոյնպէս և աստ զնոյն ակնարկէ: Եւ թէ 'ի տեղիս ուրեք սահմանեաց զաղօթսն, այլ զմին եւեթ հրամայեաց թէ

առանց պարծանաց լինիցի։ Բայց Պաւղոս զայս առ անձրպետ 'ի մէջ արկանելոյ հրեական աղօթիցն ասէ․ Տես զինչ ասէն․ «Ընդ ամենայն տեղիս ամբառնայցեն զսուրբ ձեռս 'ի վեր»․ որ հրէիցն չէր օրէն։ Քանզի ոչ իշխէին այլ ուրեք աղօթս մատուցանել ա̃յ, և ոչ զոհս և պաշտօնս կատարել, այլ 'ի միում տեղւոջ ամենեցուն որ յամենայն աշխարհաց 'ի մի վայր գումարէին 'ի նուիրից տեղւոջ 'ի տաճարին կատարէին։ Արդ այժմ իմն հակառակ խրատ յառաջ բերէ ազատել յայնպիսի հարկէ։ Չեն, ասէ, մերքս այնպիսիք, որպէս հրէականքն էին։

Որպէս Քրիստոս, ասէ, վասն ամենեցուն մեռաւ, նոյնպէս և ես քարոզեմ առնել աղօթս ընդ ամենեցուն յամենայն տեղիս․ և այսուհետև խտիրք մի վասն տեղեաց ինչ լինիցի․ այլ և վասն օրինակի աղօթիցն՝ ամենայն ուրեք, ասէ, աղօթս առնիջիր, և ամենայն ուրեք զսուրբ ձեռս 'ի վեր ամբառնայցես։ Սուրբ ձեռք ոչ այն են որ ջրովն լուանայցեն, այլ որ յագահութենէն և յափշտակութենէ և 'ի զուր հարկանելոյ մաքուր իցեն։ «Առանց բարկութե̃ և երկմտութե̃»։ Իսկ այս զինչ իցէ, իցէ՞ ոք՝ յաղօթս կայցէ և բարկանայցէ․ յորժամ յոխակալութենէ և յամենայն ախտից յստակ ոչ իցեն միտքն։ Իսկ արդ մի՞ ոք թշնամութեամբ մատչիցի պաղատել առ ա̃ծ, և մի՞ դժկամակութեամբ։ Իսկ երկմտութիւն զինչ իցէ․ զի բնաւ իսկ ամենևին չլինիցին յերկբայս խորհել թէ լինիցի՞ն աղօթքն լսելի, թէ ոչ լինիցին։ «Զոր ինչ խնդրիցէք, ասէ, հաւատովք, առնուցուք»․ և դարձեալ թէ «Յորժամ յաղօթս կայցէք, թողջիք և թողցի ձեզ»․ այն իսկ է առանց բարկութեան և երկմտութեան։

Իսկ զիարդ, ասէ, կարիցեմ հաւատալ եթէ հասանիցեմ հայցուածոցն։ Յորժամ ոչ հակառակս ինչ այնմ զոր պատրաստ իցէ տալ՝ խնդրիցես․ եթէ ոչ անարժանս ինչ թագաւորին խնդրիցես․ եթէ ոչ մարմնաւորս ինչ, այլ հոգևորս․ եթէ առանց բարկութեան և սուրբ ձեռօք մատչիցիս։ Սուրբ ձեռք այն են որ զողորմութիւն գործիցեն։ Թէ այնպէս մատչիցիս, արդարև հասանիցես խնդրուածոցն։ Իսկ «եթէ դուք, ասէ, որ չարքդ էք՝ գիտէք զպարգևս բարիս տալ որդւոց ձերոց,

որչափ եւս առաւել հայրն ձեր որ յերկինս է"։ Զերկմտութիւն զո՞ր ասիցէ. զերկբայութիւնն։ Այնպէս և ընդ կանոնաց, ասէ, կամիմ զի առանց բարկութեան ամբառնայցեն զսուրբ ձեռս 'ի վեր, մի՛ ցանկութեան անձանց զհետ երթալ, մի՛ յափշտակել, մի՛ ագահել։ Այլ կի՛ն մարդ յափշտակիցէ՞. արտամբն և նա զնոյն գործ գործէ։

## ՑՈՐԴՈՐԱԿ

Այլ վասն այնորիկ 'ի կանոնաց աւելի ցածութիւն պահանջէ Պաւղոս։ Այլ որ ինչ այն իցէ։ "Ի զարդ, ասէ, խոնարհութեան ցածութեամբ և պարկեշտութեամբ զարդարել զանձինս. մի՛ 'ի հիւսս ոսկեհուռս ընդելուզեալ մարգարտով, և մի՛ 'ի հանդերձս պաճուճեալս"։ Զարդ խոնարհութեն զո՞ր կոչիցէ։ Յորժամ 'ի քարշելոյն և յօժարելոյն հանգուցն է, զիւրև ամփոփիցէ համեստութեամբ զգաստութեամբ, և մի՛ ընդոստնելով. զի այն զարդ է, և միւսն չզարդ։

Զինչ գործես. մատուցեալ ես աղօթս մատուցանես, և շուրջանակի կուռ յոսկի համակիս 'ի հիւսս ոսկեմանս ընդելուզեալս մարգարտով. միթէ 'ի կաքաւ իջանիցես, 'ի պար անցանիցես, միթէ 'ի հարսանիս խնճղայցես, միթէ 'ի գեղօ՞ն[1] յառնիցես և 'ի ցոյցս պարծցիս[2]։ Ընդ պիտոյ է ոսկին և մարգարիտն ընդելուզեալ, անդ հանդերձքն պաճուճեալք, անդէն զարդուցն առիք և ժամանակ մեծութեանց, անդ սեթևեթեալ և անդէն պերճևեթեալ. աստ չէ այնմ ժամանակ, և ոչ պէտք ինչ այնպիսիք։

Պաղատել եկիր, խնդրուածս մատուցանել, աղերս վասն մեղաց արկանել, ընդ յանցանացն եղծանել[3], 'ի հաշտութիւն ածել զտէրն. զի՞ զարդարիցես զանձինդ. չեն այդպիսի կերպարանք խնդրուածոց։ Զիա՞րդ կարիցես հեծել. կամ ո՞րպէս յօգւոց հանել և արտասուս արկանել. զիա՞րդ հաչելով հառաչելով զաղօթսն մատուցանիցես։ Յորժամ այդպիսի կերպարանս ունիցիս

1 Յօրինակսն գեղօ— կամ գեղ—։
2 Միւսն 'ի ցոյց շքեղօ։
3 Միւսն ճեղքանել։

և արտասուիցես, ծաղր կայցես բազմաց և կատականս ուրախաց։ Զմարթի յոսկի համակեալ և արտասուս արկանել. խաբէութիւն գործես, կեղծաւորութի՛ ցուցանես։ Յորժամ 'ի նոյն մեռոց՝ ուստի այնչափ պաճուճանք և զարդարանք ծնանին, և արտասուք ևս մխիցեն, չէ 'ի դէպ, չէ հաւատալի։ Ի բաց առ զայն ամենայն կեղծաւորութիւն, քանզի չկարես զա̃ծ խաբել. վարձակացն և կաքաւչացն են այնպիսի կերպարանք, որք 'ի թատրոնսն և 'ի գուսանաց վայնան ձեռանիցեն։ Ազնիւ ցածնոյ չվայելէ ինչ այնպիսի լկտութիւն. ցածութի՛, ասէ, և պարկեշտութեամբ, և ոչ յաջողութեամբ և լկտութեամբ։

Մ՚ի լինիցիս նմանող բոզիցն, որ այնպիսի կերպարանօք հնարին կուտել բազում հոմանիս, և անտի ծնանին աղջի աղջի կարծիք։ Բազումք բազում անգամ և չօգտեցան ինչ յայնպիսի զարդուց. և այլք վնասեցան ևս յայնպիսի կարծեաց։ Ո՞ր օրինակ և պոռնիկն թէպէտ և կամիցի ցածնոյն նմանել, չօգտի ինչ 'ի սուտ կարծիսն ցուցանելոյ, յորժամ գաղտնիքն զաստախալք մեռացն լինիցին և զամենայն 'ի մէջ բերիցեն, նոյնպէս և ցածունն թէպէտ և անկանիցի 'ի կարծիս շնութեան, չվնասի ինչ 'ի կարծեացն։

Այլ ինձ զի՞ փոյթ իցէ, ասէ, թէ այլք զինչ զինչ կամիցին՝ կարծիցեն։ Դու քեզէն տուր զկարծիսն կերպարանօք և աչօք յեղյեղելովք, նայելովք և ձեմելով. և վասն այնորիկ յաճախագոյն իմն լինի մեղադիր Պաւղոս պաճուճանացն, և կարի յարգէ զցածութիւնն. զի ոչ մեծութեան ինչ նշանակ է այնչափ զարդ յանձին կալել, այլ ընդոստնելոյ և պչրանաց։ Այլ ոչ միայն զարդն, այլ և մազոյրն և ծարիրն, և տուրցն ձեմելիք, և կնչիւնք բարբառոյն, աչացն մեղմեղանք, արտեւանացն ստէպ ստէպ քթթելիք, ամենայն ինչ հանգոյնք պոռնկաց։ Պաճուճանքն արձակեալք, պարեգօտքն լայնեալք, գօտիքն սեթևեթեալք, կօշիկքն պճնեալք. զայս ամենայն միանգամայն և միով բանիւ ակնարկեաց։ "Ի զարդ խոնարհութեան, ասէ, ցածութեամբ և պարկեշտութեամբ,,. զի այն ամենայն անհամութիւն է և անհեդեդ կերպարանք։

Անսացէք, աղաչեմ, զի՞ մերկացիր բանիւք զյանդի-

մանկութիւնն . ոչ զի ուրանեցուցանիցեմ և ոչ զի 'ի խոտ խոցիցեմ, այլ զի զօտարոտին հանից վարեցից 'ի հօտէս . եթէ արամբիք իցեն և թէ բարեկեցիկք, եթէ մեծատունք, ամենեցուն խակ վճիռ տամ հրաժարել յայնպիսի պաճուճանաց, և առաւել որ զկուսութի յանձն առեալ իցէ :

Մ'իթէ և կոյսն, ասեն, ասկեօք զարդարեսցի, կամ հիւսածոյս և ընդելուզեալս մարգարտով զգենուցու : Ո՛յնչափ ինչ են լոկ պաճուճանքն, որպէս զի ասկեհուռքն ոչ ինչ են այնմ համեմատ : Վ՛անզի մարթի և լոկ հանդերձիւքն ընդոռնել, յորժամ զնափորտն կարի սեաւցուցանիցէ, և զօտևածն[1] հանգուշն իմն խորշաքաղ զպարեգօտսն 'ի կուրծսն ժողովելով ըստ նմանութեան վարձկանացն' որ 'ի կաքաւսն կազմիցին, զի մի կարի յոյր թուիցի, և մի կարի նուրբ, այլ կչիռ հաւասարակ . և առ գօգովքն[2] այլ ազգ իմն խորշս քաղիցէ . քան որպիսին կերպասուք չիցէ բաւական ևս աւելի այնպիսի պաճուճանօք պատրել : Յորժամ զկօշիկսն 'ի թյուս սևութե քաղաթյոյս[3] ներկանիցէ, սրակառուցս, նեղագարշապարս, և 'ի կրկունս սևացեալս զսպիտակ առաջին խառնիցէ . յորժամ առ թաթիւքն խորշք քաղիցին, և գարշապարք 'ի գետին չհասանիցեն : Այլ մանաւանդ և զերեսսն ևս պէսպէս աճառօք լուանայցէ, և պճնիցի զարդարիցի մեծամեծ զգուշութեամբ . զճակատն 'ի վեր պարզիցէ, և զկլափն 'ի խոնարհ ձգիցէ . և ևս աւելի քան զերեսացն սպիտակութիւնն 'ի գլուխն կապիցէ . և 'ի վերայ սպիտակ սաւղարին զթուխ նափորտն յօրինեսցէ, առ 'ի բարւոք իմն վայելել և գեղեցիկ երևել :

Այլ անդ զխո՛րդ ոք կարիցէ զչափ աչացն առնուլ, յորժամ այսր անդր ստէպ իբրև զշռնչանն շրջիցին, և ընդծոխս զօտւոյն մերթ բանայցէ և մերթ ծածկիցէ, մերթ 'ի կուրծսն ածիցէ, և մերթ զգաւակաւն ածիցէ, և այսր անդր շօշօկիցէ[4] . բացխփիկ նափորտամբն խաղայցէ, զի զհաւաստիս զօտւոյն կարիցէ բազմաց ցուցանել : Այլ հանգոյն արուեստականացն զթեզանիսն ընդ ձեռամբ կարեալ պնդիցէ . զի այնպէս պնդով ագանիցի, որպէս թէ

1 Միւսն գօփէւան :

2 Այդպէս յոյնն . յօրինակացն միոյն առ աստուլյն և միւսն առուոլոյն :

3 Միւսն քաղաթոյս :

4 Միւսն շօշափիցէ . . շօփիցն փոհարանելոյ :

հանդերձն ընդ մարմինն կարեւոր իցէ։ Իսկ զոտիցն սո-հոսակելոյ ո՞վ իցէ որ զչափ առնուլ կարիցէ. և զայլ ազգի ազգի պաճուճանքն, որ քան զամենայն զարդս սո-կեհուած՝ բաւական են պատրել զտեսողսն։

Երկիցուք սիրելիք, գուցէ և մեք լսիցեմք այնպիսի ինչ, որպէս մարգարէն զհեբրայեցւոց կանանց վասն արտաքին զարդուցն պատուհասէր՝ թէ “Փոխանակ կա-մարին՝ չուան գօտի, և փոխանակ զարդուցն գլխոյ կըն-դութիւն„։ Ո՛ ի քան զոսկեհուսն եւս չար պաճու-ճանք լոկ հանդերձիցն կարեն պատրել զտեսողսն, և գե-րել զմիտս անմեղաց։ Չեն սակաւ մեղք, այլ յոյժ անհնարինք. բաւական են բարկացուցանել զԱծ և կո-րուսանել զվաստակս կուսութեանն։

Ո՛ Քրիստոս ունիս փեսայ, զի՞ ջանաս առնել զմար-դիկ հաճոյս. ընդ շնութիւն համարի զայն քեզ։ Ըն-դէ՞ր չզարդարիցիս այնպիսի զարդուք որ նմայն հաճոյ իցէ, զոր նայն սիրիցէ. զցածութիւն, զպարկեշտութիւն և զգաստութիւն, զանփոփ հանդերձիկն։ Այդպիսի կերպարանք պոռնկաց են և ոչ կուսանաց. և չճանա-չեմք այսուհետև զբոզսն և զկուսանսն։ Տեսանե՞ս որպի-սի ծանակութիւնս առին յանձինս. առանց պաճուճա-նաց պարտի լինել կուսանն, ընդ աղբ և ընդ խաղբ[1] գաղ։ Ո՛ ի արտաքին զարդն չտայ 'ներքին զարդուն պայ-ծառանալ. որ զվերնոցն գայցէ՝ զներքինն արհամարհի-ցէ. զոր օրինակ որ զվերինն արհամարհիցէ՝ զներքնոյն փոյթ յանձին ունիցի։

Այլ մի՛ ասիցես, թէ չե՞մ եղուկ՝ զի այնպիսի հան-դերձս լեշկս ագանիցիմ, կօշիկս յոռիս, գլխոյ հանդերձ անպիտան. և այս զի՞նչ զարդ իցէ։ Մի՛ խաբեր զանձն. մարթի և այսպիսի հանդերձիւք ընդդամնել եւս չար քան ազնուօքն. քանզի մաշկք հանդերձքն քաջիկ ինձ մած-նուն 'ի մարմինն և բարւոք յագչին, մանաւանդ թէ թափչաց եւս ողորկեալ՝ փայլիցեն։ Ինձ զայդ ասես, ո՞չ զի՞նչ պատասխանի տայցես, որ զմիտսդ գիտիցէ՝ թէ վասն էր այնպէս հնարիցիս։ Այլ թերեւս ասիցես, ոչ ինչ վասն պոռնկութեան պաճուճիմ։ Իսկ վասն զար-մանալի ինչ երեւելոյ չամաչիցե՞ս, չակնածիցե՞ս, զի ա-

1 Միւսն խաղբ։

նու զարմանալի կամիս երեւել։ Եւ ընդ վայր, աւաղ, վայրապար ագանիմ, ոչ յայնպիսի ինչ միտս։ Այլ ա̃ծ գիտէ զոր ինչ ընդ մեզ խօսիս. միթէ ի՞նձ ինչ համարս տալոց իցես, այլ նմա որ այժմ մօտ է 'ի գործս, եւ ապա պահանջէ իսկ. որում ամենայն մերկապարանոց է առաջի։ Վասն այնորիկ այժմ այսպէս խօսիմք, զի յայնպիսի պատժոց զքեզ ազատել կարասցուք։ “Եւ ոտիւք իւրեանց, աւաղ, կաքաւէին”. մի այնպիսի ինչ, այլ պատերազմ կալայք յանձինս՝ ուր նահատակութիւնք են եւ ոչ զարդարանք, առաքինութիւնք եւ ոչ անձնդիւրութիւնք։ Զտեսանիցես զայնոսիկ որ 'ի կռիւսըն եւ յըմբշամարտսն մրցիցին. միթէ զճեմելո՞յ ինչ փոյթ առնիցեն, եւ զկերպարանաց եւ զպաճուճանաց. եւ ոչ երբէք. այլ զամենայն ինչ թողեալ, հանդերձ ընդ իւղ եւ ընդ փոշի եկեալ զգենուն. եւ միումն եւեթ ուշ ունին, կամ յաղթելոյ կամ 'ի պարտութիւն մատնելոյ։ Ի գլխի հարեալ կայ սատանայ. զատամունսն կըրճէ, առս 'ի վերայ տրոփէ, պէսպէս հնարս հնարի՝ զի զքեզ զլորել կարիցէ. եւ դու յապահով կաս, եւ զհանդերձս պճնես՝ զսատանայական գործս։

Զձայնիցն ինչ ոչ ասացից, զի կէսք եւ այնու իմն կարի պատրեն. կամ զիւղոցն եւ զխնկոցն եւ զայլոցն եւս խապատանաց։ Վասն այնորիկ ծաղր առնեն զմեզ աշխարհականք. կորեաւ պարկեշտութիւն կուսութեանն. չիք ոք որ պատուէ զկուսանսն՝ որպէս եւ պարտ է պատուել. անձամբ զանձինս ածաք յանարգանս։ Զե՛ր պարտ՝ որպէս թէ յերկնից իցեն իջեալ՝ երեւել յեկեղեցւոջ ա̃յ. եւ այժմ վասն նոցա իսկ արհամարհեալ է եկեղեցի, ոչ վասն իմաստնոցն։ Յորժամ տեսանիցէ զքեզ, որում պարտ էր իբրեւ զխաչեալ երեւել, արամբին՝ որ տան եւ որդեկաց հոգայցէ եւ զաշխարհաւ զբաղեալ իցէ, զիա՞րդ չարհամարհիցէ, զիա՞րդ չառնիցէ ծաղր։

Տես քանի ինչ փոյթ յանձին ունիս. ճեպիս ջանաս հնարիս լոկ հանդերձիւքն յաղթել այնմ՝ որ զպէսպէս հանդերձս ագանիցի, մանաւանդ թէ կարի իսկ զարդարելոցն որ զոսկեհուռն ագանիցին։ Որ վայելեն քեզ՝ զայն չխնդրես, եւ որ չվայելէ՝ զայնու յաճախ գաս. պարտ էր քեզ 'ի գործս բարիս փոյթ գտանել։ Վասն

այնորիկ քան զաշխարհականս անարգ են կուսանքն, զի ոչ արժանի գործս խոստմանն զոր խոստացան՝ ցուցանեն ։

Զայս ասացաք ոչ առ ամենեսեան, մանաւանդ թէ առ ամենեսին իսկ. զի որ այնպիսիքն իցեն՝ ցածնուցուն, և որ չիցեն այնպիսիք, զկտրին ցածուցանիցեն ։ Բայց տեսէք՝ զիարդ ՚ի գործ ածիցէք զխրատս[1] ։ Ոչ զի արտմեցուցանիցեմք զձեզ ասացաք զայս, այլ զի յուղղութիւն ածիցեմք, և պարծիմք ձեօք ։ Եղիցի մեզ ամենեցուն զկամս այ առնել, և ՚ի փառս նորա կեալ, և աւետեաց նորա հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն ։

## ՃԱՌ ԻՆՆԵՐՈՐԴ

"Կին մարդ ցածութեամբ ուսցի ամենայն հնազանդութեամբ ։ Բայց ուսուցանել կնոջ մարդոյ ոչ հրամայեմ, և ոչ ճոխաբան լինել քան զայրն, այլ ՚ի հանդարտութեան կալ. զի Ադամ նախ ստեղծաւ և ապա Եւա. և Ադամ ոչ պատրեցաւ, այլ կինն պատրեցաւ և յանցեաւ. այլ ապրեսցի վասն որդեծնութեան, եթէ կացցեն ՚ի հաւատս և ՚ի սէր և ՚ի սրբութիւն պարկեշտութեամբ հանդերձ" ։

Բազում ցածութիւն պահանջէ ՚ի կանանց երանելին Պաւղոս, բազում զգաստութիւն. ոչ միայն բանիւք և խոնարհութեան զարդուքն, այլ և լռութիւն և հանդարտութիւն. բնաւ, ասէ, և խօսեսցին մի յեկեղեցւոջ. որպէս և առ կորնթացիսն գրեալ ասէր՝ թէ "Տգեղ են կանանց յեկեղեցւոջ խօսել". և այլուր յայտ առնէ թէ օրէնքն հնազանդութիւն դնեն ՚ի վերայ. "Եթէ ուսանել կամիցին, ասէ, ՚ի տան զարս իւրեանց հարցանիցեն" ։

Իսկ աստ ահաւասիկ բազում ամբոխ, բազում ժխոր

1 Յորինական պշտօն ։

և աղաղակ, բազում խօսք. և ոչ այլ ուրեք տեսանեմ ք եթէ այսչափ ամենեքեան միանգամայն խօսիցին, ոչ 'ի հրապարակս, ոչ 'ի բաղանիս: Որպէս թէ 'ի զբօսանս ինչ այսր գայցեն՝ այնպէս զամենայն անօգուտ խօսս աստ յուզեն: Աստ այնուհետև ամենայն ինչ եղծաւ, ամենայն կարգք փծկեցան. և չաւանութիւն 'ի միտ եթէ չէ մարթ զօգուտ ինչ ևս շահաւոր ուսանել եթէ ոչ լուռ լինիցին: Յորժամ ձայնիցէ ոք խօսել ինչ, և չիցէ ոք որ բանիցն անսայցէ, զի՞նչ օգուտ իցէ: Այնչափ, ասէ, պարտ է կնոջ մարդոյ 'ի լռութեան լինել, որպէս ոչ միայն վասն երկրաւոր ինչ իրաց խօսիցի յեկեղեցւոջ, այլ և մի վասն հոգևորաց ինչ ձայնիցէ: Այն է զարդ, այն է պարկեշտութիւն, այն է որ առաւել քան զհանդերձս զարդարել կարէ: Եթէ այնպէս զանձն ցածուցանիցէ, և բազում իսկ զարդուքն հանդերձ կարող իցէ զաղօթսն վճարել:

"Կնոջ մարդոյ չհրամայեմ ուսուցանել,,: Այս այն զի՞նչ 'ի դէպ իցէ. կարի իսկ քաջ, քանզի վասն ցածութեան և հանգարտութեան և զգաստութեան խօսէր: Չկամիմ, ասէ, թէ բնաւ և խօսիցին իսկ ամենևին: Ամի զպատճառս խօսից 'ի բաց պարուրել. մի, ասէ, ուսուցանիցեն, այլ յաշակերտաց աստիճանի կայցեն և այնպէս լռութեամբ զհնազանդութիւն ցուցանիցեն: Քանզի շատախօս դդշուտ[1] է ազգն, վասն այնորիկ ամենայն իւիք ցածուցանէ:

"Ադամ նախ ստեղծաւ, ասէ, և ապա Եւա. և Ադամ ոչ պատրեցաւ, այլ կինն պատրեցաւ և յանցեաւ,,: Այս այն զի՞նչ իցէ առ այժմու կանանց[2]: Այս, ասէ. քանզի 'ի բազում պատիւ վայելեաց ազգ արանց. նախ զի յառաջագոյն իսկ ստեղծաւ: Նաև այլուր ևս մեծ իմն ցուցանէ. "Ոչ ստեղծաւ այր վասն կնոջ, այլ կին վասն առն,,. և նախ այրն իսկ պարտի ունել զպատիւն և զգլխաւորութիւն: Երկրորդ անգամ յիրացն իսկ որ անդուստ 'ի բնէ գործեցան. զի և զայրն և զամենայն ինչ կործանեաց. քանզի ստունգանելցն Ադամայ նա եղև պատճառք, վասն այնորիկ հնազան-

1 Զանորոշ գրութիւն յօրինակին մարթ էր ընթեռնուլ և դդշուտ:
2 Յոյնն կանանցս:

ղեաց առն ա̃ծ. քանզի անդէն 'ի սկզբանն, և մանաւանդ 'ի հասարակաց պատուէրն արկ չարիս 'ի միտ, զի ճոխանալ կամեցաւ քան զայրն, վասն որոյ և լուաւ իսկ՝ եթէ “Առ այրն քո դարձ քո, և նա տիրեսցէ քեզ„. զի յառաջ քան զայս չասացաւ այնպիսի ինչ։

Այլ զիա՞րդ իցէ զի չպատրեցաւ Ադամ. եթէ այնպէս իցէ, և ստուգաբանեաց ոչ։ Բայց կինն ասէ. “Օձն խաբեաց զիս„. և Ադամ չասէ թէ կինս խաբեաց զիս, այլ թէ կինն ետ ինձ և կերայ։ Բայց չեն հասարակ՝ յորժամ յազգականէ ոք և 'ի նորին նմանւոյ պատրիցի, և 'ի գազանէ ինչ որ նմին հնազանդ իցէ. որպէս զի այն իսկ են պատրանք։ Ըստ կնոջն պատրանաց ասէ զնմանէ զչպատրելն՝ թէ այնպիսի ինչ պատրանս չպատրեցաւ. զի նա 'ի ծառայէն հնազանդէ պատրեցաւ, և սա 'ի կնոջէն ազատէ։ Դարձեալ և ոչ զԱդամայ իսկ ասէ, եթէ ետես զծառն զի բարի էր 'ի կերակուր. այլ զկնոջէն՝ թէ եկեր և ետ առնն իւրում։ Որպէս զի նա ոչ թէ 'ի ցանկութիւն ինչ մեղկեալ՝ այլ զհրամանաւն, այլ կնոջն հաւանեալ վայրապար։ Մի անգամ միայն ուսոյց կին մարդն, և զամենայն կործանեաց։ Վասն այսորիկ ասէ՝ թէ այլ մի՛ ևս ուսուցանիցէ։

Թէ ընդ նա այն անցք անցին, զի՞նչ ևս ոչ ընդ այլոյն անցանիցեն։ Կարի իսկ քաջ. քանզի տկար և թեթև է ազգ կանանց։ Այնուհետև և զբնաւ զբնութենէն ճառէ. քանզի չասաց թէ և Եւա պատրեցաւ, այլ թէ կինն, որ հասարակաց իսկ ազգին անուն է. և ոչ նա միայն, այլ և ամենայն իսկ բնութիւն կանանց 'ի յանցանս գտան նովաւ։ Որպէս զԱդամայ ասէ՝ թէ “Ըստ նմանութեան յանցուածոյն Ադամայ, որ է օրինակ հանդերձելոյն„, սոյնպէս և աստ. այսինքն առ հասարակ իսկ ամենայն ազգ կանանց գտաւ 'ի յանցաւորութեան, և ոչ արանց։

Այլ արդ զիա՞րդ, չկայցէ՞ փրկութիւն։ Այո, վասն որդեծնութեան. և չասաց թէ վասն ա̃ծպաշտութեան. բայց սակայն չեթող փորձիւ, զի ոչ զԵւայէ միայն ասաց թէ կայցեն 'ի հաւատս և 'ի սէր և 'ի սրբութիւն հանդերձ պարկեշտութեամբ։ Յորո՞ւմ հաւատս, յորո՞ւմ սէր, յորո՞ւմ սրբութիւն հանդերձ պարկեշտութեամբ։ Որպէս զի ասիցէ, մի՛ տրտմիք, ո՛վ կանայք, թէ

բամբասեալ ինչ իցէ ազգդ ձեր. ետ ձեզ ա̃ծ այլ պատ_ճառ փրկութեան՝ զորդեծնութիւնն. ոչ միայն անձամբ, այլ եւ այլովք կեալ: Եւ տես զիարդ ստէպ խնդիրս ծնա_նի. կինն, ասէ, պատրեցաւ եւ յանցեաւ: Ո՞վ. Եւա: Եւ արդ նա՞ կեցցէ վասն որդեծնութեանն: Ոչ նա միայն, այլ եւ ամենայն իսկ բնութիւն կանանց կեցցէ: Եւ ընդէ՞ր ոչ վասն առաքինութեան կեցցէ:

Եւ եթէ վասն որդեծնութեանն իցէ փրկութիւն, կուսանք եւ ամուլք եւ այրիքն որ մինչեւ որդիք լեալ իցեն՝ յարանց մեռայցեն, զի՞ գործիցեն, կորնչիցե՞ն, եւ չկայցէ՞ ինչ ակն ունել յուսոյ. նա աւանիկ կուսանք եւս առաւել հաճոյ լինին: Եւ արդ զի՞նչ կամիցիս ասել: Զի որ օրինակ զամենայն իսկ ազգն հնազանդեաց վասն յան_ցանաց առաջին ստեղծուածոյ կնոջն, քանզի Եւա երկ_րորդ ստեղծուած է, նոյնպէս եւ վասն որդեծնութեանն ասէ կալ ամենայն ազգին կանանց: Բայց աստ յետ շնորհացն պարգեւեցաւ, եւ անդ վասն կնոջն յանցանաց: Եւ վասն այսորիկ ամենեքեան մեռան, վասն զի մինն յանցեաւ: Եւ արդ խրախոյս լեր, մի ինչ, ասէ, տրտմեսցի ազգ կանանց. զի ետ նմա ա̃ծ ոչ սակաւ մխիթա_րութիւն զորդիս ծնանել: Ոչ այն, ասեն, բնութեան էր եւ միւսն եւս բնութեան: Եւ ոչ միայն բնութեան, այլ եւ որդեծնութիւն շնորհեցաւ:

“Եթէ կայցեն մնասցեն, ասէ, ի հաւատս եւ ի սէր եւ ի սրբութեան հանդերձ պարկեշտութեամբ„. այս ինքն է թէ սիրովք եւ հաւատովք զծնունդսն սնուցա_նիցեն, առնուն վարձս, քանզի նահատակս սնուցին Քրիստոսի: “Եթէ կայցեն, ասէ, ի հաւատս եւ ի սէր„. Նախ զվարս ուղիղս ասէ, եւ ապա զհեզութիւն եւ զհանդարտութիւն: “Հաւատարիմ է, ասէ, բանս„: Զայսմանէ ասէ, եւ ոչ զեպիսկոպոսութեան ինչ ցան_կութենէ. քանզի այս երկմտութիւն իմն թուէր: Վասն այսորիկ ասէ՝ հաւատարիմ է բանս, եթէ կարող են հարք եւ մարք օգտել յորդւոց առաքինութենէ՝ յոր_ժամ բարւոք սնուցանիցեն զնոսա: Եւ արդ, ասեն, թէ մայրն յոռի իցէ՝ կարիցէ՞ յորդեսնութենէ անտի օգ_տել ինչ: Այսպիսին եւ զորդիսն չկարէ առաքինիս սնու_ցանել: Այլ զայս զպրտանւոյ ումեքէ ասէ. եւ որ բա_րւոք սնուցանիցեն, առնուն վարձս եւ հատուցումն:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Լուարուք զայս, հարք և մարք. զի չեն ընդունայն վաստակք ձեր յորժամ զորդիս բարիոք սնուցանիցէք, այլ ստանիցուք մեծաց վարձուց հատուցումն։ Նա և զայս ևս յառաջագոյն մատուցեալ ասէ, եթէ 'ի գործս բարիս վկայեալ իցէ և որդիս սնուցեալ իցէ. և զայս ընդ այլ ևս բարութիւնս համարի։ Քանզի և չէ սակաւ ուղղութիւն՝ զա̃յ պարգևեալ որդիսն միւսանգամ ա̃յ նուիրել. զի եթէ զհիմն հաստատուն և բարիոք ոք դնիցէ, մեծաց վարձուց հատուցման արժանի լինիցի. զոր օրինակ և որ անփոյթն առնիցեն՝ տանջանաց։ Նա և Հեղի վասն որդւոցն կորեաւ. պարտ էր նմա խրատել զնոսա։ Բայց և խրատէր իսկ, այլ ոչ որպէս պարտ էր. և զի ոչ կամէր տրտմեցուցանել զնոսա, և զնոսա և զանձն առ հասարակ կորոյս։

Լուարուք զայս, հարք, և խրատեցէք զորդիս ձեր 'ի խրատ և 'ի վարդապետութիւն տեառն. քանզի խակ և անհնարին է մանկութիւն, և բազում վարդապետաց կարօտ, դաստիարակաց, սպասկաց, դայեկաց. քանզի այ-տոյ է, այնպիսի վարժիւք վարել։ Որպէս ձի անհնարին միշտ 'ի վարժոցս կայցէ, և դազան վայրենի 'ի հրահանգս, մինչև 'ի համբայր գայցէ, այնպիսի է մանկութիւնն։ Նորատին իսկ յառաջին տիոցն պարտիմք սահմանս և կարգս բարիս հաստատել նմա. և ոչ ևս առ յապա մեծամեծ աշխատութեանց կարօտանայցեմք. այլ սովորութիւն իսկ օրէնք լինիցին։

Մի տացուք նոցա թոյլ ըստ մտաց դիւրութեան գնալ, յորժամ զմխասակարծն ախորժականս համարիցին. և մի իբրև մանկութեան ներրիցեմք նոցա, այլ 'ի ցածութեան պահեսցուք. զի այն՝ քան զամենայն ինչ խստասակիր է մանկութեանն։ Նա և մեք նախին կարի պատկառ կայցեմք, վաղ և արագ կանայս ածիցեմք, զի սուրբ և անարատ պահեսցին 'ի պղծութենէ 'ի հասանել առ ամուսնութիւնն։ Ոի այն սէր սերտ է՝ յորժամ ցածութեամբ յամուսնութիւնն հասանիցեն. և որ յառաջ քան ըզհարսանիսն ցածուցանէր, ևս առաւել յետ հարսանեացն։ Նա և որ յառաջ քան զամուսնութիւնն 'ի պոռ-

նկութիւն խանձիցի[1], նա և յետ ամուսնութեանն չդադարէ անտի: «Մարդոյ, ասէ, պոռնկի ամենայն հաց քաղցր է»: Վասն այնորիկ դնին պսակք 'ի գլուխ, զի յաղթութեան նշանակք են, թէ չմատնեցան 'ի պարտութիւն, և ապա հասին 'ի սուրբ անկողինսն, չվատթարեցան 'ի ցանկութենէն. և եթէ ըմբռնեցի 'ի ցանկութենէ և 'ի բոզաց ձեռս մատնի, ապա ընդէ՞ր իսկ առնուցու զպսակն 'ի գլուխ յաղթեալն և 'ի պարտութիւն մատնեալ: Նոյնպիսի խրատս տայցեմք և ուսուցանիցեմք, երկեյուցանիցեմք և սպառնայցեմք. մերթ այսպէս՝ մերթ այնպէս հնարիցիմք. քանզի մեծ աւանդ զայս ունիմք զմանկտին. հոգասցուք և ազգի ազգի հնարս հնարեսցուք, զի մի չարն յափշտակեսցէ զաւանդն 'ի մէնջ:

Նա արդ ամենայն ինչ անուղղայ գործք առ մեզ գործին: Զի յորժամ գեօղ ինչ բարի ստանայցեմք, ազգի ազգի հնարս հնարիմք, զի զհաւատարիմ ոք և զիմաստուն՝ գաւառապետ կացուցանեմք. իսկ որ քան զամենայն պատուական է, յորժամ որդեակ լինիցի, չունիմք փոյթ յանձին՝ եթէ առն իմաստնոյ որ կարող իցէ զնա 'ի ցածութեան պահել՝ յանձն արասցուք, թէպէտ և քան զամենայն ստացուածս նա պատուական իցէ. և ամենայն ինչ վասն նորա ստացուածոցն խնամ ունիմք, և զնա ոչ ինչ տածեմք. տես զանհանճարութիւն:

Նախ զմիտս մանկանն յարդարեա, և այնուհետև ամենայն ինչ նորա է: Եթէ միտքն չյարդարիցին, զինչ օգուտ նմա յընչիցն լինիցի. և եթէ միտքն վարժիցին, ոչ ինչ նմա վնաս յաղքատութենէն լինիցի: Կամիցես զնա մեծատուն թողուլ, ուսուցանիջիր նմա պիտանութիւն, զի այնպէս և զարարսն ունել կարիցէ. և եթէ չունիցի ինչ, ոչ ինչ քան զգոյաւորսն 'ի վայր գտանիցի: Ապա եթէ չարաբար լինիցի, թէպէտ և բազում ինչս թողուցուս, յորժամ պահապանն չիցէ ուղիղ, և քան զկարի վատթար աղքատսն ապաժամսն գտանիցի: Զի ստահակ և ստամբակ որդւոցն լաւ իցէ աղքատութիւն քան զմեծութիւն. զի աղքատութիւնն և ակամայ իսկ ածէ յառաքինութիւն. իսկ մեծութիւնն և ա-

1 Միւսն խածանիցի:

րոց զգաստանալն կամին՝ խափան լինի և յուլացուցանէ և կորուսանէ, և 'ի պէսպէս չարիս տայ մտաբերել։

Արդ, խրատեցէք զդստերս՝ զցածութիւն և զգաստութիւն սիրել. և զայն պահպանն համարիջիք՝ տնարարս լինել, երկիւղածս։ Մի՛ յայլս ինչս աչս արձակել, և մի՛ պճնողս, մի՛ զարդարկոտս. և այնպէս հաստուցանիցէք անարատս յամուսնութիւնն. ապա ոչ զնոսա միայն, այլ և զարմն ոյոց տացէք՝ ապրեցուցանիցէք. և ոչ միայն զարմն, այլ և զորդիսն. և ոչ միայն զորդիսն, այլ և զթոռունսն։ Յորժամ արմատն բարիոք իցէ, և շառաւիղքն ևս լաւագոյնք արձակիցին։ Այլ ընդ ամենայնի ընդ այնորիկ առնուցուք վարձս. զի ոչ զմի ոգին ևեթ շահիցիք, այլ զբազումս միովն. այսպիսի ինչ գործ գործիցեն։

Որպէս բարգաւաճ ելեալ 'ի հայրենի տանէն հասանիցէ 'ի հարսանիսն, իբրև զնահատակ մի 'ի մարտէ բարի մարտիկ դրուատեալ. զի զամենայն հաւատեաց հնարս գիտիցէ, իբրև զկամօք զամենայն զանգուածն հաստուցանել ածել յիւր ազնուականութեանն պայման։ Այլ մանկունքն նոյնպէս ցածք և ակնածողք լինիցին 'ի նորա համեստութենէն և 'ի զգաստութենէն. զի և 'ի մարդկանէ և յԱյ բազում դրուատիս և գովութիւնս առնուցուն։ Ուսանիցին յաղթել որկորստութեան, խորշել յանչափ խորտկաց. խնամողք և դարմանիչք լինիցին, զի վարել զիշխանութիւն՝ որչափ 'ի ձեռին իցէ՝ բաւական լինիցին. զի այնպէս կարիցեն լինել առիթ ծնողացն վարձուց, և ամենայն ինչ 'ի փառս Այ լինիցի, և 'ի մեր փրկութիւն. զի արժանի լինիցիմք խոստացելոց բարութեանցն. յորս լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՏԱՍՆԵՐՈՐԴ

“Եթէ ոք եպիսկոպոսութեան ցանկայ, բարեաց գործոյ ցանկայ: Պարտ է եպիսկոպոսին անարատ լինել. միոյ կնոջ այր, արթուն, հեզ, պարկեշտ, հիւրասէր, ուսուցիչ. մի թշնամանող, այլ հանդարտ. մի կռուող, մի արծաթասէր. զի յիւրում տանն բարւոք կարգս կարգեալ իցէ, որդեակս ունիցի որ 'ի հնազանդութեան կայցեն, համբերձ ամենայն պարկեշտութեամբ„:

Վասնզի յեպիսկոպոսութե՛ն. Ճառս մտելոց էր, ցուցանէ միանգամայն թէ զինչ ինչ եպիսկոպոսին վայել է. և ոչ առ Տիմոթէոս կարգէ ինչ զխրատն, այլ ընդ ամենեսեան խօսի, և նովաւ զամենեսեան ուղղէ: Եւ զինչ ասիցէ. “Եթէ ոք եպիսկոպոսութեան ցանկայ„: Ոչ պարսաւեմ ինչ, ասէ. քանզի վերակացութեան գործ է: Եթէ այնպիսի ինչ փափագ ունիցի, որպէս զի ոչ իշխանութեան կամ ճոխութեան ցանկանայցէ, այլ առաջնորդութեան և վերակացութեան, չաղարտեմ ինչ, բարւոյ գործոյ ցանկայ: Եւ Մովսէս ցանկացաւ գործոյն, այլ ոչ եթէ իշխանութեան. և այնպէս ցանկացաւ, մինչև լսել իսկ թէ “Ո՞ կացոյց զքեզ մեզ իշխան և դատաւոր„: Եթէ այնպիսի ինչ ոք ցանկանայցէ ցանկասցի: Եպիսկոպոսութիւն կոչի, որ թարգմանի տեսչութիւն, վասն ամենեցուն տեսուչ լինելոյ:

“Պարտ է եպիսկոպոսին անարատ լինել, միոյ կնոջ այր„: Եւ ոչ թէ օրէնս ինչ դնելոյ վասն ասիցէ զայս, որպէս զի թէ առանց այնր չիցէ հնար եպիսկոպոս լինելոյ. այլ զմեղան կապճէ: Եւ Հրէիցն համարձակ իսկ էր և երկրորդ ամուսնութիւն ամուսնանալ, և երկուս կանայս միանգամայն ունել. քանզի սուրբ են հարսանիք և ամուսնութիւն: Իսկ ոմանք ասեն, թէ որոց մին կին արարեալ իցէ և 'ի բաց կացեալ՝ զայնպիսւոյն ասէ: Անարատն ասելով զամենայն առաքինութիւն ակնարկեաց: Անարատ լինել, ասէ, որպէս զի որ զխիղճ ինչ մեղաց գիտիցէ՝ չառնէ բարւոք. որ գործովքն ինչ պար-

սաւիցէ , չպարտի այնպիսւոյն իշխան լինել , այլ ընդ իշխանութեամբ : Զի իշխանին քան զամենայն պայծառութիւն պայծառագոյն պարտ է լինել և փառս պարկեշտս ունել , որպէս զի ամենեքեան ընդ նա նայիցին և ընդ նորա կարգն : Եւ ոչ վայրապար ինչ զայսպիսի խըրբատս 'ի մէջ բերէ . այլ քանզի և նա եպիսկոպոս կարգելոց էր , որպէս և Տիտոսի գրեալ պատուիրէ . քանզի 'ի դէպ էր բազմաց գործոյն ցանկանալ , վասն այնորիկ զգուշացուցանէ :

"Արթուն„ ասէ . այսինքն ուշակալ լինիցի , բիւրաւորակ աչս ունիցի արագատես քաջանայեաց : Քանզի բազում զբօսանք են որ զաչս մտացն շլացուցանեն , տրտմութիւնք , հոգք և իրաց ինչ թախանձութիւնք , և բազում պէտք յամենայն կողմանց յորդորեալ պահանջին , Վասն այնորիկ արթուն և զուարթուն պարտ է լինել . ոչ զիւր զանձին եթէ հոգս հոգայցէ , այլ զբազմաց : Եւ յորդորել պարտ է և եռալ հոգւովն , և գրեթէ հուր իսկ շնչել իբրև զօրավար մի՝ որ զգայգ և զգերեկ զզօրացն շրջիցի և զհանդէսն տեսանիցէ , այնպէս պարտի աշակերտել և զբազմաց պէտս վճարել , և զամենեցուն հոգս յանձին ունել :

"Հեզ , ասէ , պարկեշտ , հիւրասէր , ուսուցիչ„ : Զայս և բազումք 'ի ժողովրդոցն իսկ ունին յանձինս . և քանզի պարտ է նմա աստ զիշխանացն ձառիւ գալ , վասն այնորիկ և զուսուցիչն 'ի նոյն յարէ , զոր ոչ ոք 'ի ժողովրդականացն պահանջիցէ , մանաւանդ թէ ամենեցուն իսկ որ զիշխանութիւն յանձն առեալ իցէ՝ վայել իցէ ինչ այնպիսի լինել :

"Մի թշնամանող , մի յանդուգն , մի , ասէ , հարկանող„ : Ոչ զայնմանէ որ ձեռօքն հարկանիցէ՝ ասէ , քանզի բազումք են որք ընդ խաղ և ընդ վայր զայրացուցանեն զմիտս եղբարց . թող թէ զայնպիսեացն ակնարկիցէ : "Մի յանդուգն , այլ հանդարտ , ասէ , և մի կռուող , մի արծաթասէր . զի զիւր տունն իսկ բարւօք կարգեալ իցէ . որդեակս ունիցի 'ի հնազանդութեան հանդերձ ամենայն պարկեշտութեամբ„ :

Իսկ արդ եթէ որ ամուսնացեալ զաշխարհիս հոգայցէ , ապա ուրեմն եպիսկոպոսն չպարտի զաշխարհիս հոգալ , և զիարդ ասիցէ՝ միոյ կնոջ այր : Ամենք ասեն

թէ որոյ մի կին տարեալ իցէ և 'ի բաց կացեալ, զայնպիսւոյն ակնարկէ. և եթէ չիցէ այնպիսի՝ մարթի ունել մի կին որպէս թէ չունիցի։ Բայց յայնժամ բարուք իսկ թողացուցանէր այնպէս, քանզի ժամանակն և իրքն այնպէս պահանջէին, և մարթի այնպէս բարւոք առաջնորդել եթէ կամիցի ոք։ Զոր օրինակ ասէ եթէ մեծատանն դժուարին է մտանել յարքայութիւնն երկնից, և բազում մեծատունք մտին, նոյնպէս թէպէտ և բազում զբօսանք իցեն յամուսնութեան, այլ բազում ամուսնացեալք մտանեն յարքայութիւն։

Զինչ խօսիս. զեպիսկոպոսէ ձառեալ ասես, թէ չէ պարտ նմա լինել կռուող, մի արծաթասէր, մի հարկանող, մեծամեծ աստիճանս սպարտ էիր 'ի մէջ բերել. ընդէ՞ր չասիցես՝ եթէ պարտ է եպիսկոպոսին լինել հրեշտակ, և մի ինչ ըմբռնեալ ընդ մարդկեղէն կարեօք։ Զմեծամեծսն Քրիստոս ասաց՝ զոր և ժողովրդականք պարտէին կրել յանձինս, 'ի խաչ ելանել, ցանգ զհոգին 'ի բուռն ունել։ Որպէս և տէրն իսկ ասէր, թէ "Հովիւ քաջ դնէ զանձն իւր 'ի վերայ խաշին իւրոյ". և դարձեալ, եթէ "Որ ոչ առնու զխաչ իւր և գայցէ զկնի իմ, չէ ինձ արժանի"։ "Մի՛, ասէ, թշնամանող"։ Արընեակ մեզ, ահա կեցաք, եթէ եպիսկոպոսին այնպիսի ինչ խրատ պիտոյ իցէ։ Ընդէ՞ր չասիցես, եթէ պարտ է նմա այնուհետև փոխել իսկ յերկրէ։ Բայց որպէս աշխարհականաց պատուիրես, եպիսկոպոսին չտաս այնպիսի ինչ հրաման։ Եւ նոցա զի՞նչ ասիցէ. "Սպանէք, ասէ, զանդամս ձեր յերկրի". և դարձեալ "Եթէ որ մեռանին, արդարացեալ են 'ի մեղաց". և դարձեալ եթէ "Որ քրիստոսեանքն են, զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին". և դարձեալ Քրիստոս ասէ. "Եթէ ոք ոչ հրաժարիցէ յամենայն ընչից իւրոց, չէ ինձ արժանի"։ Եւ ընդէ՞ր զայսպիսի ինչ չասիցէ։ Քանզի այնպիսեացն սակաւ պէտք էին, և եպիսկոպոսացն բազմաց պէտք ըստ իւրաքանչիւր քաղաքաց։ Եւ արդ զի՞արդ, դատարկանալ ինչ պարտ էր եկեղեցեաց։ Վասն այսորիկ չափաւոր ինչ առաքինութիւն պահանջէ՝, և ոչ զվերին ինչ և զբարձրագոյնն. զի արթուն և հեզ և պարկեշտ լինել՝ բազմացն մարթ էր։

"Եւ որդեակս, ասէ, ունիցի 'ի հնազանդութեան

հանդերձ ամենայն պարկեշտութեամբ,,: Քանզի պատ-
շաճ էր նախ 'ի ներքուստ իսկ ցուցանել բարի օրինակս:
Ո՞ հաւատայր եթէ զայլոն հնազանդել կարիցէ որ զիւր
որդիս չունէր 'ի հնազանդութեան: “Իւրում տանն,
ասէ, բարւոք կարգս կարգեալ իցէ,,: Զայս և արտա-
քինքն ասեն, եթէ տնարարն վաղվաղակի կարէ հրա-
մանատար քաղաքաց լինել: Իբրև զտունն մի փոքր է ե-
կեղեցի. և որպէս 'ի տանն կնոջ և որդւոյ և ծառայից
և ամենայնի իշխիցէ այրն, նոյնպէս և յեկեղեցւոջն.
քանզի ոչ այլ ինչ է, այլ որդիք և կանայք և ծառայք:
Իսկ եթէ հաղորդս զոք ունիցի իշխանութեան եկեղե-
ցւոյն վերակացու, ունի և տանուտէրն զկինն: Իսկ եթէ
զաղձկաց այրեացն հոգայցէ, և զհոգս կուսանացն յան-
ձին ունիցի, ունի և տանուտէրն զհոգ ծառայից և դըս-
տերաց. և տան իշխանութիւն դիւրագոյն է քան զե-
կեղեցւոյ: Իսկ արդ որոյ զտունն չիցէ բարւոք կարգեալ,
զիա՞րդ կարիցէ եկեղեցւոյ ա̄յ հրամանատար լինել. “Որ
իւրում տան չգիտիցէ առաջնորդել, և զիա՞րդ եկեղե-
ցւոյն ա̄յ խնամ տանիցի,,:

“Մ՚ի մատաղատունկ,,: Ոչ զմանկանէ ումեքէ ասէ
աստ, այլ զնորահաւատէ. ըստ այնմ, եթէ “Ես տըն-
կեցի, Ապողոս ջուր ետ, այլ ա̄ծ աճեցոյց,,: Զինչ ար-
գելէր ասել, եթէ մի մանուկ ոք. և կամ ինքն իսկ ըզ-
Տիմոթէոս ընդէ՞ր զի մանուկ էր՝ առաջնորդ այլոց կա-
ցուցանէր. “Զի մի ոք, ասէ, զքո մանկութիւնդ ար-
համարհիցէ,,: Քանզի 'ի հեթանոսաց բազումք մատ-
չէին և մկրտէին. մի, ասէ, վաղվաղակի զնորահաւատն
յաւագ ինչ իշխանութիւն ածիցէք: Զի մինչ չև քաջ
յաշակերտութիւն յամեալ՝ և վաղվաղակի վարդապետ
լինիցի, և 'ի հպարտութիւն մտաբերէ. թէ մինչ չև
ուսեալ ընդ իշխանութեամբ լինել՝ և յիշխանաց աստի-
ճան ելանիցէ, յամբարհաւաճութիւն հատանի: Վասն
այնորիկ զնովիմբ ածէ. “Զի մի հպարտացեալ, ասէ,
անկանիցի 'ի դատաստան սատանայի,,. այն իսկ է՝ թէ
'ի նոյն պատիժս զոր նա յամբարտաւանութենէն կրեաց՝
կրիցէ:

“Պարտ է նմա և բարւոք վկայութիւն յարտաք-
նոցն ընդունել, զի մի 'ի նախատինս և յորոգայթս սա-
տանայի անկանիցի,,: Գուցէ, ասէ, նախատ ինչ կաց-

ցէ թշնամեացն . նմին իրի իսկ ասէ՝ թէ մեզ կեալ այդր . թեպէտ և այլուր ասիցէ « Կամիմ զի ամենայն մարդիկ իբրև զիս լինել » 'ի ժուժկալութե ։ Ոչ է մի յանձուկ ինչ արկանիցէ զիւրսն՝ եթէ կարի ինչ տառապելի պահանջիցէ զառաքինութիւնն, յայն սակս չափաւոր ինչ խնդրէ զառաջինն ։ Այլ զի պարտ էր յամենայն քաղաքս առաջնորդ կացուցանել, լուր զինչ գրէն առ Տիտոս . « Զի կացուսցես ըստ քաղաքաց երիցունս, որպէս ես քեզ պատուիրեցի » ։ Եթէ վկայութիւն բարի ունիցի և կարծիս անպարսաւս, եթէ չիցէ այնպիսի ինչ . մանաւանդ թէ դժուարին իսկ իցէ այն ։ Վասնզի այնպէս մարթ է ուղղոցն ուղիղ կարծիս և թշնամեացն ունել ։ Իսկ աստ ահաւասիկ և զայն ևս չթողու 'ի մէջ . քանզի չասաց թէ պարտ է նմա վկայութիւն ունել, այլ թէ պարտ է նմա և վկայութիւն ունել . հանդերձ այլովք կարգօքն և զայն ևս ունիցի ։

Իսկ արդ զիա՞րդ եթէ 'ի զուր ինչ բամբասիցեն զնա առ նախանձու, և մանաւանդ եթէ և հեթանոսք ևս իցեն ։ Ոչ է հնար . քանզի որ անարատ վարս ունիցի, յայնպիսւոյն և նոքա ակնածէին ։ Որպէս, ասեն ։ Լուր նմին իսկ որ այլուր ասէ . « Եթէ պարսաւանօք և եթէ գովութեամբ » ։ Ոչ եթէ վարուց նոցա բիծ ինչ գտէին, այլ քարոզութեանն . վասն այնորիկ ասէ՝ պարսաւանօք ։ Վասնզի իբրև զխաբեբայից և զկախարդաց զքարոզութիւն ապարտէին, և ոչ թէ վարուցն նոցա բիծ գտէին ։ Ընդէր ոք չասաց թէ պոռնիկք էին կամ աղտեղիք ինչ կամ ագահք, այլ խաբեբայք՝ որ քարոզութեանն միայն էր ։ Զի որ վարս պարկեշտս ունիցի, նոցա մեծարոյ թուի . քանզի և ճշմարտութիւն և զթշնամիսն ըմբերանէ ։ Զորոգայթ յոր անկանիցին՝ յիւրոց մեղացն, բազում անգամ թերևս և 'ի նոցա . զի որ այնպիսի ոք իցէ՝ նմա և այլ որոգայթ դնէ սատանայ, և նոքա ևս վաղվաղակի սպանանեն ։ Եթէ և 'ի թշնամեացն պարտ իցէ վկայութիւն ունել, որչափ ևս առաւել 'ի բարեկամացն ։

Այլ զի չէք հնար բամբասիլ այնմ որ բարւոք կարգ ունիցի, լուր Քրիստոսի իսկ . « Ծագեսցէ, ասէ, լոյս ձեր առաջի մարդկան, զի տեսանիցեն զգործս ձեր բարիս, և փառաւորեսցեն զհայր ձեր որ յերկինս է » ։

Այլ եթէ զպարապոտիցի ոք, ասէն, 'ի չարախօսութեան, և կործիցէ ինչ 'ի վերայ դնիցեն, քանզի դիպի բազում անգամ այնպիսի ինչ. չէ պարտ զայնպիսին յառաջ ածել, զի բազում կասկած կայ 'ի միջի: Վասն այսորիկ ասէ՝ թէ պարտ է նմա վկայութիւն բարւոք ունել. և ծագեսցէ լոյս ձեր: Զոր օրինակ չկարէ ոք զարեգական խաւարին ասել, և ոչ կայրն անգամ, քանզի յայլոյն ամենեցուն ըմբերանի, նոյնպէս և զայն որ կարի բարւոքն իցէ՝ չկարէ ոք պարսաւել. բայց վասն կրօնից ինչ թերևս բամբասիցեն հեթանոսք, այլ ուղիղ վարուցն չկարեն բիծ ինչ դնել, բայց թէ առաւել ևս զարմանայցեն:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այլ արդ այնպէս կեցցուք, որպէս զի մի անուն այ հայհոյեսցի, և մի 'ի մարդկօրէն ինչ փառս հայիցիմք, և մի չար ինչ կարծիս առնուցումք յանձինս, և երկոքումբքն զչափն և զկշիռն պատուեսցուք. «Որովք երևեսցին, ասէ, իբրև լուսաւորք յաշխարհի»: Վասն այսորիկ եթող զմեզ աստ, զի իբրև լուսաւորս երևիցիմք, զի իբրև զխմոր լինիցիմք, զի վարդապետս այլոց կացցեմք, զի իբրև հրեշտակս ընդ մարդկան շրջիցիմք, զի իբրև արք կատարեալք 'ի մէջ մանկտւոյ գտանիցիմք, իբրև հոգևորք 'ի մէջ շնչաւորաց, զի շահեսցին ինչ նոքա 'ի մէնջ, զի սերմն լինիցիմք, զի բազում պտուղս տայցեմք տոհմականօք: Չեն ինչ բանից պէտք՝ եթէ այնպէս ինչ վարք պայծառանայցեն, և ոչ վարդապետութեանց՝ եթէ այնպիսի ինչ գործս ցուցանիցեմք: Չգտանէր հեթանոս, եթէ մեք քրիստոնեայքս որպէս պարտ էր զՔրիստոսի պատուիրանսն պահէաք, եթէ յայլոց զրկեալք՝ և զուրուք չարգահէաք, և յորժամ չար առնէին՝ բարի հատուցանէաք, եթէ յորժամ բամբասէին զմեզ՝ օրհնէաք. չէր ոք այնպէս անհնարին գազան, եթէ չընթանայր յածպաշտութիւն յորժամ յամենեցունց այնպիսի ինչ կրօնք ցուցանէաք:

Այլ զի և սերտիւ ուսանիցիս՝ միտ դիր. մի էր Պաւղոս և այնչափ զբազումս ձգեաց առ ինքն. եթէ մեք ամենեքեան այնպիսիք էաք, որչափ ինչ աշխարհս չկա-

րէալք ձգել 'ի մեզ։ Այլ արդ առհաւատիկ եւ աշակերտքս քրիստոնեայք շատ եմք քան զհեթանոսսն, եւ ոչ կարեմք ածել զոք յա̃ծպաշտութիւն, բայց եթէ զսակաւս. եւ յայլ ճարտարութիւնսն մի ոք հարիւր մանուկ միանգամայն կարէ ուսուցանել։ Իսկ աստ քան զաշակերտսն վարդապետքս շատ են, եւ պարտ էր բազում աշակերտս առնել, այլ չհալի ոք, չգայ մօտ. քանզի որ աշակերտեալքն կամիցին, 'ի վարդապետաց առաքինութիւն հայցեն։

Յորժամ զմեզ տեսանիցեն եթէ իշխանութեան եւ պատուոյ ցանկանայցեմք, զիարդ կարիցեն զարմանալ ընդ քրիստոնեայս. յորժամ վարս արատաւորս տեսանիցեն, 'ի հողս երկրաւորս, յինչս եւս յաճախագոյն. եւ բազումք 'ի մահուանէ եւս չար քան զնոսա երկնչին, եւ յաղքատութենէ նոյնպէս, եւ ընդ ցաւսն նոյնգունակ դժկամակ լինիցին, եւ փառաց եւ հարստութեան աւելի եւս ցանկանան, եւ 'ի կարասւոյ վերայ աւելի եւս հաշուեն, եւ ըստ ժամանակացն այսր անդր շրջշրջեն։ Զիարդ կարիցեն հեթանոսքն հաւատալ[1] առանց նշանաց ինչ. այլ չլինի այս։ Ի կարգաց ինչ ամենայն իրք սիրոյ. եւ ոչ հետք ուրեք երեւին։ Վասն այսորիկ ոչ միայն վասն մերոց մեղաց, այլ եւ վասն այլոց վնասուց մեք եմք տալոց համարս։ Սթափեսցուք այսուհետեւ եւ արթուն լիցուք. ցուցցուք յերկրի զերկնաւոր առաքինութիւնն. ասասցուք եթէ մեր առաքինութիւնն յերկինս է, եւ յերկրի ցուցցուք զճշմարտութիւն։

Բայց եղեն, ասէ, եւ առ մեօք արք առաքինիք։ Այլ ես զիարդ հաւատացից, ասէ հեթանոսն. զի չտեսանեմ ինչ առ ձեզ այնպիսի գործ։ Այլ եթէ պարտ է այնպիսի ինչ պատմել, ունիմք եւ մեք աստ փիլիսոփայս արս մեծամեծս եւ զարմանալի 'ի վարս։ Բայց ցոյց ինձ այլ Պաւղոս, միւս եւս Յովհաննէս. այլ[2] չկարես։ Զիարդ ապա չառնիցէ զմեզ ծաղր հեթանոսն որք զայսպիսիս խօսիմք. զիարդ չմնասցէ 'ի տգիտութեան իւրում, յորժամ տեսանիցէ զմեզ բանիւք եւ ոչ գործովք իմաստասիրել։ Զի այժմ վասն դանգի միոջ կամ մեռանի

1 Յոյնն հաւատալ։ Ի նշանաց. այլ ոչ եւս լինի։ Ի վարուց. այլ վարփեա-րեալ է։ Ի սիրոյ. այլ ոչ հետք ինչ նորա երեւին։

2 Հատուածդ. այլ... գործովք իմաստասիրել անկեալ յօրինակէն՝ լրացաւ 'ի յունէն։

կամ սպանանէ իւրաքանչիւր ոք. վասն ափոյ միոջ գետնոյ բազում դատափետութիւնք, և վասն մահու մանկան ազգի ազգի ոճիրք գործին։ Այլ զայլսն ամենայն 'ի բաց թողից որ բազում սգոյ արժանի են, հմայքն, կռիւքն, խտիրքն, ծնունդքն, պատահարքն, սնիկոնքն, դիւթութիւնք, թովչութիւնքն։ Այլ արդարեւ այս ամենայն բաւական են կոչել զմեզ բարկութիւն. զի եւս զորդին իւր վասն մեր ըստ առաքելոյ, յայնպիսի ինչ իրս մատաբերել իշխեմք։ Այլ արդ զինչ այլ ինչ գործիցեմք, բայց միայն սգալ պարտ է, զի փոքր մասն աշխարհիս հազիւ թէ ապրիցի։

Այլ հեթանոսքն յորժամ լսեն, ուրախ լինին՝ եթէ ոչ ինքեանք միայն կորնչին, այլ ընդ բազումսն մատնին 'ի տանջանս։ Այլ արդ զինչ ուրախութիւն իցէ, զի ընդ ուրախութեանն և զպատիժսն կրիցեն. մինթէ որպէս ասէ՝ այնպէս ինչ կարծիցես և անդ, յորժամ վրշտացն վշտակից ոք իցէ՝ մխիթարութիւն ինձ թուի։ Այլ ուստի յայտ իցէ. ես ցուցից։ Ազէ ասա, եթէ հրամայիցի ոք հրով այրել, և զորդի իւր ընդ իւր 'ի կրակին տեսանիցէ՝ զի ձեռնձերն 'ի մարմնոյն 'ի բաց բուրիցէ, չմեռանիցի՞ անդրէն իբրև տեսանիցէ զայն. եթէ ողջք յորժամ տեսանիցեն այնպիսի ինչ գործս՝ պակսուն և պարտասին, որչափ եւս առաւել որ 'ի նմին աղէտս կայցեն։ Այլ մի ինչ զարմանայցես, այլ լուր զբանս ինչ ուրեք. "Այլ դու, ասէ, իբրև զմեզ ըմբռնեցար և ընդ մեզ համարեցար"։ Այլ տեսանեմք զի աստէն իսկ յորժամ վիշտք ումեք հասանիցեն, բազումք մաօք վշտացն վշտակից լինին։ Այլ արդ դու իսկ ասա, հայր զորդի յորժամ 'ի նոյն վիշտս տեսանիցէ, մինթէ աւելի՞ ինչ մխիթարութիւն առնուցու, կամ զկին, կամ եղբարք զեղբարս. ո՛չ ապաքէն աւելի եւս բեկանիցին։

Այլ անդ չեն այնպիսի տանջանք, այլ այլ ինչ լուծմն[1], որում չգուցէ մխիթարութիւն յորժամ ամենեքեան զանձանց վտանգս կոծիցեն։ Որք աստէն սովամահ լինիցին, մինթէ յայլոցն հաղորդութենէ մխիթարութիւն ինչ իւրոց աղետիցն առնուցուն։ Յորժամ մանուկն և հայրն և կինն և թոռունքն 'ի նմին վտանգի կայցեն, և

1 Այդպէս յօրինակին. թերևս ըրամն. յայնն կարի ծանրագոյն քան զայս։

կամ յորժամ բարեկամք զբարեկամս 'ի նմին վտանգ տեսանիցեն, միթէ մխիթարութիւն ինչ առնուն։ Ընդ չիք մխիթարութիւն և չէ իսկ, այլ և ս առաւել յաճախ աղէտքն. և բնաւ ամենեքին 'ի վտանգին ինչ չիք գտանել մխիթարութիւն յայլոցն հաղորդութենէ, որ ոչ 'ի հուրն այրիցին, և ոչ որ սաստիկ ջերմանք տանջիցին. զի յորժամ վտանգն 'ի վերայ հասանիցէ՝ չանկանի բնաւ ամենեքին 'ի միտսն մխիթարութիւն։ Տեսանիցես զբազում կանայս որ հանիցեն դիս զարս ամուսինս, և գիտեն թէ բազումք ընդ նոյն վիշտս անցին, միթէ մխիթարութիւն ինչ առնուցուն յայլոց վշտաց։ Այլ ինչ յայնպիսի յոյս ապաստան լինիցիմք. այլ մի միայն մխիթարութիւն գտանել, եթէ զմեղսն ապաշխարիցեմք, և զուղիղ ճանապարհէն բուռն հարկանիցեմք որ յերկինս տանիցի, զի արքայութեանն արժանի լինիցիմք շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

“Այնպէս և սարկաւագունս պարկեշտս. մի երկբանս, մի գինեսէրս, մի զօշաքաղս. այլ ունիցին զխորհուրդս մտաց սուրբ 'ի խղճէ. և նոքա նախ փորձեսցին, և ապա 'ի պաշտօն մատիցեն զի անարատ իցեն”։

Յորժամ ճառեաց վասն եպիսկոպոսաց և կարգաց նոցա, և եցոյց եթէ զինչ ինչ պարտ իցէ յանձին ունել և յորպիսի իրաց հեռանալ, թողեալ զերիցանց կարգ՝ 'ի սարկաւագունս զանց արար։ Իսկ ընդէ՞ր արդեօք. քանզի չիք ինչ շատ 'ի միջի ընդ երիցունս և ընդ եպիսկոպոսս։ Զի և նոքա 'ի վարդապետութիւն կարգեալ են և 'ի վերակացութիւն եկեղեցւոյ. և զոր ինչ զեպիսկոպոսացն ասաց, նոյն և երիցանցն պատշաճ է։ Ձեռնադրութիւն տալով միայն 'ի վեր են, այսու միայն աւելի կարծին քան զերիցունսն։

"Սարկաւագունս, ասէ, նոյնպէս զնոյն առնել"։ Ո՞րն իցէ զնոյն առնել. անարատ լինել, հեզս, հիւրասէրս, համբերողս, մի կռուող, մի արծաթասէր, պարկեշտս, մի երկբանս, այսինքն մի մեղմերս, մի նենգաւորս. քանզի չիք ինչ որ այնպէս անարգանս առնիցէ որպէս զնենգաւորութիւն. չիք այնպէս անպատեհ ինչ յեկեղեցւոջ իբրև զմեղմերս։ "Մ՚ի գինեսէրս, մի զօշաքաղս. այլ զի ունիցին զխորհուրդն հաւատոցն սուրբ մտօք"։ Յայտնի նշանակ եթէ որպիսի ինչ իցէ անարատն լինել։ Տես զիարդ զի մի նորատունկն և աստ ակնարկէ ասելովն՝ թէ "Նախ նոքա փորձեսցին". որպէս զեպիսկոպոսէն, նոյնպէս և զնոցանէ ձայնէ. 'ի նոյնմին շարի և զնոսա հարկանէ, և չիք ինչ 'ի միջի որ 'ի միմեանց քակիցէ։ Վասն այսորիկ անդէն ասէ՝ թէ մի նորատունկ, և աստ՝ թէ նախ փորձեսցին։ Իսկ աստ զիա՞րդ լիցի անկարգութեան իրք, զի տան ուրեք զծառայ նորագլին եթէ ոչ նախ փորձեսցեն, չառնեն իմիք հաւատարիմ, եթէ ոչ կարի քաջ զբարոյսն առնուցուն. և յեկեղեցւոջ ա̃յ, որ այն ինչ յարտաքնոցն մտեալ իցէ, առնել վաղվաղակի ընդ առաջինս կարգել։

"Իսկ կանայքն, ասէ, նոյնպէս". զպաշտօնէից կանանցն ասէ զորս 'ի սարկաւագաց աստիճանին կացուցանիցեն. "պարկեշտս, ասէ, մի երկբանս, արթունս, հաւատացեալս յամենայնի"։ Ոմանք զլոկ կանանց ասեն զայս ասացեալ, այլ չէ այնպէս. և զի՞նչ հարկ էր 'ի մէջ քահանայիցն զկանանց ձայնս 'ի մէջ բերել, եթէ ոչ զայնցանէ ասէ՝ որք զպատիւ սարկաւագութեան ունիցին։ "Սարկաւագունք լիցին, ասէ, միոյ կնոջ արք"։ Իսկ եթէ այն ևս զսարկաւագացն կանանց պատշաճ զըտանիցէ ասացեալ, յոյժ իսկ և կարևոր, պիտանի և ցածութեան գործ է եկեղեցւոյ։ "Սարկաւագունք, ասէ, լիցին միոյ կնոջ արք"։ Տեսանե՞ս, զի զնոյն առաքինութիւն պահանջէ և 'ի սարկաւագաց. թէպէտ և զնոյն պատիւ զեպիսկոպոսին ոչ ունիցին, սակայն նոյնպէս անարատք և սուրբք պարտին լինել։ "Որոց զորդիս իւրեանց 'ի բարւոք խրատու կալեալ իցէ և զտունս. զի որ բարւոքն պաշտիցեն, աստիճան բարւոք շահին անձանց, և բազում համարձակութիւն 'ի հաւատսն որ 'ի Քրիստոս Յիսուս"։ Յամենայն ուրեք զորդւոցն համարձակու-

թիւն կարի իմն պատուիրէ, զի մի յայնմանէ այլք գայթագղեսցին: «Որք բարւոքն, ասէ, պաշտիցեն, աստիճան բարի շահին անձանց»: այն իսկ է, զի և յառաջ մատչիցին և բուռն համարձակութիւն ունիցին 'ի հաւատան: Որք 'ի խոնարհագոյն աստիճանին զանձինս առթուիս ցուցանեն, վաղվաղակի և յայն ևս ելանիցեն:

«Զայս գրեմ, զի ակն ունիմ մերձ ընդ մերձ գալ առ քեզ. ապա եթէ յամեցից, գիտասցես որպէս պարտ իցէ 'ի տան այ շրջել քեզ, զի այս ինքն է տուն այ կենդանւոյ, սիւն և հաստատութիւն ճշմարտութեան»: Զի մի յորժամ վասն այնպիսի իրաց պատուիրիցէ՝ 'ի տրտմութի անկիցէ զաշակերտն, ոչ վասն այնորիկ գրեմ, ասէ, որպէս զի թէ չիցեմ բնաւ գալոց, այլ եկից. և եթէ յամել լինիցի, մի ինչ, ասէ, վհատիցիս: Այլ զայն վասն ցածուցանելոյ զտրտմութիւնն գրէ, և զայս վասն զարթուցանելոյ զնոսա և 'ի փոյթ անելոյ. զի գալուստ նորա և մեծամեծս ինչ քան զոր խոստացաւն՝ կարէր վճարել: Նայց ընդ այն մի ինչ զարմանայցես՝ եթէ զամենայն ինչ հոգւովն յառաջագոյն տեսանէր, և այնմ չէր ինչ տեղեակ. «Ակն ունիմ, ասէ, գալ. ապա թէ յամեցից»: Զի այս չգիտելոյ բանք են: Քանզի հոգւովն վարէր, և ոչ իւրովք ինչ կամօք գործէր զոր գործէրն, նմանագոյնս իսկ չգիտէր զայն: «Զի գիտասցես, ասէ, որպէս պարտ իցէ քեզ շրջել 'ի տան այ, որ է եկեղեցի այ կենդանւոյ, սիւն և հաստատութի ճըշմարտութեան»: Այլ որպէս հրեշտակնքն. զի ճշմարտութիւն իսկ ունի զհաւատոն և զքարոզութիւն, և նոյն է սիւն և հաստատութիւն եկեղեցւոյ:

«Այլ յայտնի իսկ, ասէ, մեծ է խորհուրդն ածպաշտութեան, որ երևեցաւ մարմնով և արդարացաւ հոգւով». այսինքն տեսչութիւն նորա որ վասն մեր: Մի՛ ինչ յառաջ բերիցես զգանգական[1] 'ի սրբութիւն սըրբութեանց, մի զքահանայապետն. քանզի սիւն և հաստատութիւն է աշխարհաց եկեղեցի, 'ի միտ առ զխորհուրդն և հարկանիցիս զահի: Զի խորհուրդ է մեծ, և ածպաշտութեան խորհուրդ և յայտնի. և չանկանիմք 'ի խնդիրս, քանզի չեն ինչ երկմտութեան իրք:

1 Ցօրինակին գրեալ էր զանկարգն. եդաք ըստ յունին:

Յորժամ վասն ղեւտացւոց քահանայութեան տայր պատուէր, չասաց ինչ այնպիսի. նա աւանիկ յայլ իմն կերպարանս հանէ զիրսն, եթէ "Երեւեցաւ մարմնով", արարիչն. յայտնեցաւ, ասէ, մարմնով. "արդարացաւ հոգւով". կամ զայն իսկ ասէ՝ եթէ "Արդարացաւ իմաստութիւն յորդւոց իւրոց", եւ կամ թէ որպէս մարգարէն ասէ՝ եթէ "Մեղս ոչ արար, եւ ոչ նենգութիւն գտաւ 'ի բերան նորա": "Եւ երեւեցաւ հրեշտակաց": Ապա ուրեմն հրեշտակք ընդ մեզ տեսին զՈրդին Այ, զոր յառաջագոյն չտեսանէին: Եւ արդարեւ մեծ խորհուրդ է, զի ընդ ամենայն տիեզերս լսելի եղեւ եւ հաւատացաւ. եւ մի՛ դոյզն բանս ինչ համարիցիս: "Վերացաւ, ասէ, փառօք". որպէս եւ հրեշտակքն ասէին, եթէ "Ոսա զոր տեսանէքդ զի համբարձաւ". եւ այլուր՝ եթէ "Մատեան եւ պաշտէին զնա հրեշտակք". "Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա": "Վերացաւ, ասէ, փառօք". զի ամպովն համբարձաւ:

Եւ դու միտ դիր իմաստութեան երանելւոյն Պաւղոսի. խրատելոց էր զայնոսիկ որ պաշտաման սարկաւագութեան արժանի լինիցին՝ չյանդգնել 'ի գինի, չասաց մի՛ արբենալ, այլ թէ մի՛ 'ի բազում գինի հայիցին: Ոչ եթէ ոք 'ի խորանն եւ 'ի տաճարն մտանէին՝ բնաւ չճաշակէին գինի, որչափ եւս առաւել նոցա պարտ իցէ պահել 'ի գինւոյ: Քանզի զեխութիւն գործէ 'ի միտսն. թէպէտ եւ ոչ արբեցութիւն գործիցէ, քայքայի ոյժ ոգւոյն, մեղկի պնդութիւն: Եւ միտ դիր՝ զիարդ ամենայն ուրեք խորհուրդ կոչէ զտնտեսութիւն Այ որ վասն մեր եղեւ: Եւ նմանագոյնս իսկ. քանզի ոչ ամենեցուն յայտնի է, մանաւանդ թէ եւ ոչ հրեշտակաց իսկ յայտնի է: Եւ զիա՞րդ իսկ, որ եկեղեցեաւն երեւեցաւ նոցա: Վասն այսորիկ ասէ՝ թէ յայտնի իսկ մեծ է. զի Ած մարդ եղեւ, եւ մարդիկ որդիք Այ. արդարեւ մեծ իսկ է, զի երեւեցաւ մարմնով առանց մեղաց, եւ վերացաւ յերկինս. քարոզեցաւ, ասէ, յաշխարհի. ընդ մեզ տեսին զնա հրեշտակք:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այս որակհեալ խորհուրդ է, մի վայրապար յածի-ցեմք զխորհուրդս, եւ մի վայրապար պատմիցեմք, այլ ըստ արժանեաց խորհրդոյն կեցցուք։ Թագաւորք մե-ծամեծաց հաւատան զխորհուրդս. եթէ թագաւոր ոք հաւատայր մեզ խորհուրդ ինչ, ո՞չ ապաքէն մեծ սիրոյ նշանակ համարէաք, թող թէ ած իսկ արժանի արար հաւատալ մեզ խորհուրդ։ Այս զխորհուրդ իցէ, ասեն, խոր-հուրդ՝ զոր ամենեքեան գիտեն. մանաւանդ թէ ոչ իսկ ամենեքեան գիտեն, եւ յառաջագոյն գիտէր իսկ ոչ ոք, այլ այժմ եղեւ յայտնի։ Այս արդ արժանաւորք լիցուք պահ-պանութեան խորհրդոյն։ Նա մեզ այնպիսի խորհուրդ յայտնեաց, եւ մեք նմա եւ ոչ կարասի չհաւատամք. Նա պատուիրէ թէ ինձ տուք յաւանդ զինչսդ, եւ չիցէ ոք որ յինէն յափշտակիցէ, ոչ ցեց հարկանիցէ եւ ոչ գող ականս հատանիցէ. եւ հարիւրապատիկ խոստանայ տալ, եւ չհաւանիմք յանձինս. Թէպէտ եւ որոց տայցեմք յա-ւանդի, ոչ ինչ աւելի առնումք. եւ եթէ զգլուխն իսկ առնուցումք, շնորհս համարիմք. եւ եթէ գող տանիցի, ասէ, զայն ինչ ինձ համարիցիս։ Այլ ես չասեմ, ասէ, եթէ գող տարաւ եւ կամ ցեց ապականեաց. այլ ասա հարիւրապատիկ տամ, եւ անդ զկեանս յաւիտենից. եւ չիք ոք որ նմա յաւանդ տայցէ։ Ողորմածն, ասեն, տայ այսօրէն։ Այս այն մեծաց իսկ պարգեւացն նորա նշանակ է, զի ոչ յանցաւոր ժամանակիս տայ. մանաւանդ թէ եւ աստ իսկ հարիւրապատիկ տայցէ, եւ անդ զկեանս յաւիտեանս։

Այս արդ ասէ առա, ո՞չ ապաքէն զձեւիչն եթող Պաւ-ղոս, եւ զեղէգն եւ զկարթն Պետրոս, եւ Մատթէոս ըղ-մաքսաւորութիւն։ Այս արդ չիցե՞ն սոցա ամենայն տնե-զերըք բազմապատիւ առաւել քան զթագաւորաց. ո՞չ ա-պաքէն առ ոտսն նոցա տանէին դնէին զինչսն. ո՞չ զնո-սա իսկ առնէին մատակարարս եւ տեարս. ո՞չ զոգիս իսկ եւ զմարմինս 'ի նոցա ձեռս հաւատային, եւ ամենեքին իսկ զանձինս ըստ նոցա կամացն կատարէին եւ 'ի ծա-ռայութիւն եւս գրէին։ Այս այժմ իսկ ո՞չ ինչ տեսանի-ցեմք այնպիսի գործս գործեալ։ Բազումք յանարգաց

և յանդիմանեաց և Թերևս 'ի մնավաճառաց իսկ 'ի վաճառականաց կարգ ելանեն. և Թերևս զկարևոր կերակուրն չկարէին անձանց գալակել, և զանուն վաճառականաց ևեթ ունին, և քան զամենեսեան լաւագոյնք երևեցան և 'ի Թագաւորաց պատուեցան: Իսկ արդ սակաւ իցէ այն: Ածջիր զմտաւ՝ Թէ այն աւելի է. զի բուն գլուխ և ողջ բովանդակ այն է՝ որ յայնմ աշխարհին համարեալ կայցէ:

Արհամարհեա զինչս, եԹէ կամիս ինչս ստանալ. եԹէ կամիցիս մեծանալ, աղքատ լինիցիս, քանզի այնպիսի է մեր նոր սքանչելիքն, և չկամի եԹէ 'ի քո անձին ինչ փուԹայ, այլ յիւրոց շնորհացն մեծանալ քեզ: Զայդ յիս Թող, ասէ, և դու զհոգևորացն հոգա, զի ունիցիս զզօրուԹիւն իմ, և ոչ զքուծ և զծառայուԹի: Ի բաց կաց յինչիցն. քանզի մինչ ունիցիս՝ աղքատ կաս, և յորժամ Թողուցուս՝ նոկին մեծատուն լինիցիս. ապա և յամենայն կողմանց յորդիցեն քեզ ինչք, և չառնիցիս կարօտ՝ որոց բազումք կարօտ են. զի ոչ եԹէ որ բազում ունիցի մեծատուն իցէ, այլ որ բազմացն չիցէ կարօտ՝ նա է մեծատուն: Մինչ կարօտ իցէ, չէ ինչ լաւ Թագաւորն քան զաղքատն. զի աղքատուԹիւն այն է՝ յորժամ այլոց ոք կարօտ լինիցի. ապա ուրեմն և Թագաւորն աղքատ է, վասն զի իշխանօքն կարօտ է:

Այլ ոչ այնպէս ինչ Պաւղոս, որ 'ի խաչն ելեալ՝ չէր ումեք կարօտ. չէին պէտք յումեքէ, զի բաւական էին նմա կերակրել ձեռքն. "Զիս, ասէ, և որ ընդ իսն էին՝ պաշտեցին ձեռքս այս": Եւ զայս առ այնոսիկ ասաց, որք չունիցին ինչ և զամենայն ինչ ունին իբրև զՊաւղոս: Եւ ած կարծէր 'ի լիւստրացւոց քաղաքին: Եւ դու եԹէ կամիցիս աշխարհիս հասանել, զերկինս խնդրեա. եԹէ կարասուով վայելել կամիցիս, արհամարհեսջիր զկարասին: "Խնդրեցէք, ասէ, զարքայուԹիւն այ, և այս ամենայն տացի և յաւելցի ձեզ":

Զի՞ զարմանայցես ընդ փոքունս, զի՞ այդչափ հարեալ ես յաշխինդ. մինչև ցե՞րբ կայցես աղքատ, ցո՞րքան 'ի տնանկուԹիւն հաշիցիս: Նայեաց յերկինս, 'ի միտ առ զանտի մեծուԹիւն, ծաղր արա զոսկի, 'ի վերայ կացիր նորա պիտոյիցն ցե՞րբ իցեն վայելք: Աստէն յանցաւոր աշխարհիս են իբրև զխիճ մի աւազոյ և իբրև զկաԹ

մի յանպատար ծովուց. այնպէս են կեանք աշխարհիս առ հանդերձելովքն. չեն սերտ ստացուածք, այլ մուրացածոյ՝ որպէս թէ յանօթ ինչ առեալ: Այլ արդարեւ իսկ յորժամ ոգիքն ելանիցեն կամաւ և ակամայ՝ զայն այլք տանին, և նոքա այլոց տան, և այլքն այլոց:

Վասնզի ամենեքեան պանդուխտք եմք, և տանուտէր տանն իբրև զվարձուոր է տանն. և 'ի վախճանել տանուտեառն, թերևս որ անպատիւ ոք իցէ 'ի տանն՝ 'ի նա հասանեն ինչքն: Այլ եթէ նա վարձկան իցէ, այլ և տանուտէրն. քանզի ջանացաւ տառապեցաւ և շինեաց զտունն. և բանիւք ևեթ է տէրութիւն, զի արդեամբքն ամենեքին իսկ այլոց ընչից տեարք են: Այն միայն է մեր, զոր յառաջագոյնն անդր առաքիցեմք. որ աստէն մնայցէ՝ այն չէ մեր, այլ կենդանեացն. և մանաւանդ բազում անգամ մինչև կենդանի իսկ եմք՝ թողու զմեզ, և այն ևեթ մեր է՝ որ ինչ հոգւոցն ուղղութիւնք իցեն՝ ողորմութիւն և մարդասիրութիւն: Այլ այս արտաքին կոչի և յարտաքնոցն իսկ, քանզի արտաքին իսկ է 'ի մէնջ: Այլ արդ ջանասցուք առնել զարտաքինս ներքինս. քանզի չէ հնար ինչս առնուլ և երթալ անդր, այլ ողորմութեամբն համբարել և երթալ. և առաւել զի յառաջագոյն եւս յուղարկիցեմք պատրաստել մեզ օթեվանս 'ի յաւիտենից յարկսն:

Ինչք վասն այսորիկ ասին, զի վայելիցէ ոք, ոչ զի զինչսն տէր առնիցէ. և ստացուածքն 'ի պէտս են, և ոչ է տէրութիւն: Այլ արդ աղէ ասա որչափ տերանց էին իւրաքանչիւր ագարակքն, և որչափ եւս այլոց լինիցին: Վասնզի և յիմաստունն յառասպելի կայ, և չէ պարտ զառասպելն արհամարհել, եթէ իմաստուն ինչ բանս ասիցէ: Ո էն չէն, ասէ, որչափ տերանց էիր և որչափ այլոց լինիցիս: Այսպիսի ինչ և զտանց և զընչից պարտ է ասել: Առաքինութիւն միայն գիտէ անդ մեզ ուղեկից լինել, և նոյն յայնմ կեանս հասանել: Ոիջուսցուք և խափանեսցուք զգութ ընչից, զի վառեսցուք 'ի մեզ զանոտի ցանկութիւն. չմարթի երկուց ցանկութեանց 'ի միում անձին գտանել, կամ զմինն սիրիցէ և զմիւսն ատիցէ, կամ զմինն մեծարիցէ և զմիւսն արհամարհիցէ:

Յորժամ տեսանիցես զայր ոք որ բազում ստացուա-

րօք ընդ հրապարակն անցանիցէ, յորժամ այսր անդր զմարդիկն 'ի փողոցացն խուլիցեն, կերպասս զգեցեալ, անդրուարօք և նժուգօք կազմ, զվիզն բարձրացուցեալ, զպարանոցն ընդոստեալ, մի ինչ զարմանայցես, այլ և ծաղր ես առնիցես: Զոր օրինակ յորժամ զմանկտի տեսանես զի ընդ խաղ իշխանս առնիցեն և սպասաւորս կարգիցեն և ծաղր առնիցեն, նոյնպէս և զնա համարեսջիր, զի չէ ինչ աւելի քան զնոսա. մանաւանդ զի մանկտւոյն խաղ 'ի մատաղ հասակին դիւրախորժելի իմն թուին, այլ ծաղր իսկ է և ցանկութիւն, և միւսն կատականք և արհամարհանք: Փառաւոր արա զա̃ծ, զի յայնպիսի պատրանաց և 'ի հպարտութեանց ազատեաց զքեզ: Եթէ կամիցիս դու որ հետիդ շրջիս, բարձրագոյն ես քան զհեծեալն գտանիս: Զի նա սակաւ ինչ վերամբարձ է մարմնով 'ի գետնոյ, և մօտքն ընդ երկիր բեւեռեալ, ըստ այնմ եթէ "Կցեցաւ 'ի հող մարմինս իմ„. դու մօտք յերկինս շրջիցիս: Այլ բազում սպասաւորս և պատանիս ունիցի որ այսր անդր զռամիկն մերժիցեն: Եւ այն զինչ մեծ իցէ. ձիոյն պատիւ առնեն. և այլ ինչ քան զայն անմտութիւն կայցէ, զմարդիկ հալածեն զի անասնոյն ընդարձակ լինիցի գնալ: Իսկ 'ի ձին ինչ հեծանել պարծանք իցեն. զայն և ծառայքն առնեն, որ այնչափ ինչ հպարտացեալքդ՝ զի և սպասաւորաց չկարօտանայցեն:

Եւ արդ զինչ կայցէ քան զայն անմտութիւն, յորժամ յերկրաւորացն և 'ի պէսպէս հանդերձիցն կամիցին պատուականք երևել. չիք ինչ վատթար յորժամ 'ի ծառայիցն և 'ի յերիվարացն կամիցին փառս ցուցանել: Քեզէն իսկ փառաւոր ես, զի ջանաս արտաքուստ փառս ստանալ. քոյով ընտանի պայծառութեամբդ զարդարեաց, և մի արտաքուստ ինչ խնդրիցես: Զի զայն չարք և պիղծք և շինականք և ամենայն որ իբրև զքեզ մեծատունք իցեն՝ կարեն ունել: Եւ դուսանք և կաքաւիչք 'ի ձիս հեծանեն, և պատանիք առաջի ընթանան. այլ սակայն դուսանք և կաքաւիչք են, և չեն ինչ պարկեշտք ձիւլքն և պատանեկօքն: Յորժամ յոգւոցն գեղց̃ իցէ ինչ կարօտ, առ այնպիսիսն ամենայն արտաքինք զուր և 'ի նանիր են. զոր օրինակ խարխուր ինչ որմոյ և կամ ապականեալ մարմնոյ որչափ պաճուճանս ոք առ֊

նիցէ՝ նոյն չարատես երևի, այնպէս և ոգւոյն չիք ինչ օգուտ յարտաքին պաճուճանացն . այլ որպէս և էրն այնպէս կայ և մնայ, թէպէտ և զաշխարհաց ոք զոսկի յանձին կապիցէ :

Եւ արդ մի յայնպիսի ինչ հարեալք պակշոտիցիմք և 'ի մեծամեծացն անկանիցիմք, այլ բուռն հարցուք զհոգևորացն որք արդարև սերտիւ պայծառացուցանեն զմեզ, զի և հանդերձելոց բարութեանցն հասանիցեմք : Որոց լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր և միանգամայն հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն :

## ՃԱՌ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

"Բանզի հոգին սուրբ յայտնապէս իսկ ասէ, եթէ 'ի ժամանակս յետինս քակեսցին ոմանք 'ի հաւատոց, և հայեսցին յայսս մոլորութեան և 'ի վարդապետութիւն սատանայութեանց, 'ի կեղծաւորութիւն ստախօսութեան, հարեալք իւրաքանչիւր 'ի խղճէ, արգելուցուն զհարսանիս, կարճիցեն զկերակուրս՝ զոր ա̃ծ արար 'ի մխիթարութիւն գոհութեամբ հաւատացելոց որք հաստատեալ իցեն՝ 'ի ճշմարտութեան վերայ, եթէ ամենայն արարածք ա̃յ բարի են, և չիք ինչ խոտան այնմ՝ որ գոհութ̃ե ընդունիցին, զի սրբի բանիւն ա̃յ և աղօթիւք" :

Զոր օրինակ որք 'ի հաւատան յեցեալ իցեն՝ իբրև 'ի խարիսխ ինչ ետեղակալ հաստատեալ կան, նոյնպէս և որ անտի վրիպիցին՝ չկարեն հանդարտանալ, այլ անդր կոծեալ վրիպին, և աստ 'ի խորխորատ իսկ կորըստեան կործանիցին : Եւ զայս վերագոյնն յայտ արարեալ ասէր, եթէ "Նաւաբեկ եղեալ 'ի հաւատոն ընկղմեցան" . և աստ՝ հոգին յայտնապէս ասէ՝ թէ "Ի ժամանակս յետինս քակեսցին ոմանք 'ի հաւատոցն, հայեսցին յայսս մոլորութեան" : Զմանիքեցւոցն ասէ և զենկրատացւոցն որ թարգմանի ժուժկալք, և զմար-

կիռնացուցն և զամենայն իսկ զայնպիսի արուեստաւո-
ցէն ասէ՝ եթէ 'ի ժամանակս յետինս քակեսցին 'ի հաւ-
ատոյն : Տեսանե՞ս, զի սպառնալիք ամենայն չարեաց
քակելն 'ի հաւատոց է :

« Հոգին, ասէ, յայտնի ասէ ». որպէս զի չէք իսկ
երկմտութիւն : Այլ ընդ այն զի՞ զարմանայցես, ասէ, թէ
այժմ քակեսցին 'ի հաւատոց, դեռ առաւելին Հրէայքն
կինիցին. եկեսցէ ժամանակ՝ յորում և հաւատոյն իսկ
հաղորդք իցեն, և զկարապարծանս գործիցեն. որ ոչ մի-
այն զկերակուրս կարճիցեն, այլ և առ զամուսնութիւն
ախոյծ ասելոյ արգելանիչ կրօնս մուծանիցեն : Այլ զայս
ոչ եթէ զՀրէիցն ինչ ասիցէ. քանզի և ժամանակս
իսկ յետինս ասէ, և քակելն 'ի հաւատոյն առայ ձեռն
եթէ զինչ յասելն իցէ. այլ զմանիքեցւոց և զնոցաւնց
նախնեացն : Անուանագոյնս իսկ և այսս մոլորութե կոչէ
զնոսա. քանզի 'ի նոցանէ ազդեալ և դրդեալ խօսեցան :
Այլ զինչ իցէ՝ կեղծաւորութիւն ստախօսութեն : Ո՛չ ի
խոր սուտն, ոչ եթէ առ տգիտութեան և անգիտութե,
այլ կեղծաւորելով խօսին սուտ. գիտեն զճշմարտու-
թիւն, այլ խղճիւ մտացն խարեալք. քանզի չար վէրս
ունին յանձինս, ոչ ասեն զճշմարիտն : Այլ զիա՞րդ իցէ
զի զայնց հերձուածողաց միայն ասիցէ սա. քանզի զայ-
լոցն Քրիստոս ասաց յառաջագոյն՝ եթէ « Հարկ է
գալ գայթակղութեան ». դարձեալ և յորոմնն առա-
կի յառաջագոյն գուշակեաց : Այլ դու զարմացիր ընդ
Պաւղոսի մարգարէութիւնն, զի յառաջ քան զբազում
ժամանակս և զժամանակ յորում լինելոց էին՝ նշանա-
կեաց : Մ՛ի ինչ զարմանայցես, ասէ, եթէ այժմ մինչ-
դեռ սկիզբնս էր հաւատոյս՝ արգելանիչ ինչ կրօնս մը-
տաբերեցին խառնել, այլ յետ բազում ժամանակաց՝
յորժամ և հաստատեսցի իսկ՝ յայնժամ քակեսցին ո-
մանք 'ի հաւատոց :

« Որ արգելուցուն զհարսանիսն, և կարճեսցեն զկե-
րակուրս ». Այլ զիա՞րդ, ասեն, և զայլոց հերձուածո-
ղաց չասաց : Նոյնս մոլորութեան և վարդապետութիս
ստահակութեան կոչելով՝ և զնոցանէ ակնարկեաց :
Քանզի չկամէր անդ 'ի սկզբանն խարխալել զմիտս
մարդկան. այլ որոց սկիզբն դեռ լեալ էր զկերակուրն
արգելելոյ՝ զայնմանէ ձառեաց : « Զոր ած, ասէ, ա-

րար 'ի մխիթարութիւն հաւատացելոց„ ։ Մի՞թէ յան-
հաւատոյն արգել, յայն սակս չասէ անհաւատիցն . քանզի յինքեանք անձամբ անձին օրէնս եղին և արգելին ։ Եւ արդ, ասէ, չիցէ՞ արգելեալ փափկութիւն. այս կարի իսկ քաջ ։ Եւ զինչ իցէ մխիթարութիւն. արար զհացն, և զանչափն կարծեաց . արար զգինի, և զանչափն արգել ։ Եւ արդ ոչ եթէ որպէս 'ի պղծոյ ումեքէ հրամայիցէ հրաժարել 'ի կերակրոցն, այլ որպէս զի մի՛ փափկութեամբն մեղկիցեն զհոգիսն ։

“ Զի ամենայն արարածք ա̃յ բարի են, և չիք ինչ խոտան այնմ որ գոհութեամբ ընդունիցի „ ։ Բարի են արարածք ա̃յ, մանաւանդ զի ասէ իսկ՝ եթէ “ Զա̃մ զոր արար ա̃ծ, բարի է յոյժ „ ։ Բայց աստ արարածս ա̃յ զկերակուրս կոչէ . և ընդ ամենայն հերձուածողս գոռայ, որ զհիւղս անծին համբաւեն, և եթէ 'ի նմանէ [1] իցեն կերակուրքն ։ Եւ եթէ բարւոք ասեն զկերակուրքն, զինչ բանիւ ա̃յ և աղօթիւք սրբիցին, յայտ է թէ պիղծ են կերակուրքն ։ Եւ ոչ եթէ յայնժամ միայն սրբին, այլ դեռ ընդ նոսա գոռայ որ պղծութիւն ինչ 'ի կերակրոցն համարիցին ։ Եւ արդ երկուս գլուխս դնէ, մի՝ թէ չիք ինչ արարած որ պղծիցի, և միւս ևս՝ եթէ պղծիցի ինչ, այլ ունիս դեղ, կնքեա գոհացիր փառաւորեա զա̃ծ, և ամենայն պղծութիւն 'ի բաց մերժի ։ Եւ եթէ այդպէս իցէ, ասեն, և զզոհեալն կարե՞մք սրբել ։ Եթէ չգիտես եթէ զոհեալ է, սուրբ . ապա թէ գիտիցես և խառնակիցիս՝ պղծիս . ոչ առ որ զոհեալն իցէ, այլ զի հրաման առեր չհաղորդել դիւաց՝ հաղորդեցար կերակուրն դիւաց . և ոչ թէ 'ի բնէ այնպիսի ինչ, այլ 'ի քոյոց կամաց և 'ի ստունգանելոյ ։ Եւ չիցէ՞ պիղծ խոզենի ։ Ոչ է, ասէ, յորժամ գոհութեամբ ոք ընդունիցի, յորժամ կնքիցէ՝ սրբիցի, և ոչ այլ ինչ պիղծ գոյ . պիղծ կամքն են՝ որ ոչ գոհանայցեն զա̃յ ։

“ Զայս խրատ եթէ տայցես, ասէ, եղբարց, բարւոք պաշտօնեայ լինիցիս Յիսուսի Քրիստոսի, և սնանիցիս ընդ պատգամս հաւատոցն և բարւոք վարդապետութեանն՝ որոյ զհետն իսկ եղեր „ ։ Նայս զոր ասացին,

1 Այդպէս յոյնն . իսկ 'ի մերում օրինակին յաւելուածով՝ 'ի նմանէ և ոչ իցէն ։

ասէ, եթէ մեծ է խորհուրդն, և թէ յայնպիսեացն մերժել պարտ է զի մոլորութեան է և սատանայութե̄, և բանիւ ա̄յ և աղօթիւք սրբին կերակուրք: "Այլ մնանիցիս ընդ պատգամս հաւատոցն և բարւոք վարդապետութեան՝ որոյ զհետ իսկ եղեր: Այլ 'ի պղծոցն և յառասպելեաց պառաւանց հրաժարեսջիր: Բայց կրթեա զանձն քո յա̄ծպաշտութիւն": Զայս, ասէ, եւեթ խրատ տայցես: Տեսանես զի չիք ուրեք ճոխութիւն, այլ ըստ զիջանելոյ ասէ թէ խրատ տայցես: Այլ չասաց թէ հրամայիցես և կամ սաստիցես, այլ եթէ ողոքանօք խրատ տայցես և կամ սաստիցես, և զհաւատոցն ճառն յուզէ: Այլ մնանիցիս, ասէ, ընդ պատգամս հաւատոյ. զի ընդ այնու եւեթ գայցես, և զնոյն ցանգ զմըտաւ ածիցես: Զոր օրինակ զկերակուրսն միշտ խընդրեմք, նոյնպէս և զհաւատոցն պատգամս հանապազ ընդունիցիս, հանապազ զնոյն ուտիցես, ցանգ զնոյն որոճիցես, զնոյն յեղյեղիցես և զմտաւ ածիցես. քանզի չէ սակաւ ինչ կերակուր:

"Այլ 'ի պղծոց և յառասպելաց պառաւանց հրաժարեսջիր": Զինչ իսկ իցէ այն, զհրէիցն խտրութիւն առասպելս կոչէ. և յիրաւի իսկ, քանզի առասպելք էին. կամ զյաւելուածն ասէ, կամ զանժամս. զի ամենայն ինչ յիւրում ժամուն պիտանի է, և անժամն ոչ թէ միայն անպիտան է՝ այլ և վնասակար: Այնպիսի ինչ ած զմտաւ՝ եթէ այր ոք յետ քսան ամի անդրէն 'ի ստին դայեկին դառնայցէ, զիա՞րդ չկայցէ ծաղր վասն անժամ և անդէպ ժամանակին: Տեսանես զի պիղծս և պառաւանց առասպելս կոչէ, զկէսն վասն զի հին էր, և զկէսն վասն զի հաւատոցն խափան լինէր: Զի ընդ երկիւղիւ ածել զմիտս 'ի վերոյ քան զպղծութիւնսն լինիցի, պատուէր սրբութեան առնէ:

"Բայց դու, ասէ, կրթեա զանձն քո յա̄ծպաշտութիւն" և 'ի հաւատս սուրբս և 'ի վարս պարկեշտս. քանզի այն է աստուածպաշտութիւն: Ապա ուրեմն կրթութեան պէտք են: "Զի մարմնոյ կրթութիւն առ սակաւ ինչ օգուտ է": Ոմանք ասեն եթէ վասն պահոց ասացեալ է. ոչ անդր, քանզի չէ այն մարմնոյ կրթութիւն, այլ հոգւոյ. եթէ մարմնաւոր էր, պարարէր զմարմինն. իսկ եթէ մաշէ և անօսրացուցանէ և

նրբէ, յայտ է եթէ չէ մարմնաւոր: Այլ զմարմնոյն իսկ կրթութենէն ասէ՝ թէ մեզ օգտոյն կրթութեան պէտք են. անտի չիք ինչ շահ, այլ որչափ ինչ օգուտ է մարմնոյն. իսկ աստուածպաշտութեան կրթութիւն և աստ և անդ տայ պտուղ, զի աստ նորոգէ և անդ պսակէ:

«Հաւատարիմ է բանս». այս ինքն ճշմարիտ, զի և աստ և անդ շահ գործէ: Տեսանես զի ամենայն ուրեք 'ի նոյն ստիպէ, և չառնէ կարօտ յարգարելոյ, այլ վճիռ տայ իսկ. զի ընդ Տիմոթեայ բնակէին: Ապա ուրեմն և աստ գոյ յոյս ինչ բարի. զի որ զխիղճ ինչ մըտաց չգիտիցէ, և բազում ուղղութիւնս արարեալ իցէ, և աստէն իսկ 'ի խնդութեան է. զոր օրինակ և չարագործն ոչ անդ միայն, այլ և աստ տանջի երկիւղիւն, զի միշտ խեթիւ կայ, և չկարէ ընդ ոք համարձակ հայել, կասկածէ, դեղնէ, դողայ: Միթէ չիցե՞ն այնպիսիք ագահքն և գողքն. չե՞ն վստահ թէ զոր ունինն՝ իւրեանց իցէ: Իսկ շունքն և մարդասպանքն չկեցցե՞ն 'ի դառնութեան կեանս. կասկածանօք կրեն զարիս: Իսկ այն կեա՞նք ինչ իցեն. և ոչ ուրեք, այլ մահ անհնարին:

«Վասն այսորիկ, ասէ, և վաստակիմք և զնախատինս յանձն առնումք, զի յուսացեալ եմք յԱստուած կենդանի որ փրկիչն է ամենայն մարդկան, մանաւանդ հաւատացելոց»: Վասն է՞ր, ասէ, հարկանիցեմք զանձինս, եթէ չունիցիմք ինչ ակն հանդերձելոցն. ընդէ՞ր ամենեցուն նախատ լինիցիմք, ո՞չ ապաքէն զի զայնչափ չարչարանս յանձինս կրեցաք. միթէ 'ի զո՞ւր ինչ համբերեցաք թշնամանաց և բամբասանացն և պէսպէս կտտանացն. եթէ ոչ յԱստուած կենդանի յուսացեալ էաք, իսկ արդ վասն է՞ր կրեցաք զայն ամենայն: Եթէ աստ փըրկիցէ զանհաւատս, որչափ ևս զհաւատացեալս: «Որ փրկիչն է, ասէ, ամենայն մարդկան, մանաւանդ հաւատացելոցն»: Զո՞ր փրկութիւն ասիցէ. զանդէն: Առաւել փրկութիւն, ասէ, առ հաւատացեալսն ցուցանէ: Իսկ եթէ զայսմ փրկութենէ ասիցէ, սակայն և այն 'ի դէպ է. զի թէ չհասանէր 'ի թիկունս փրկութեամբն, չկայր ինչ արգել 'ի վաղուց իսկ հեռէ եղծանել կորընչել նոցա որ միշտ 'ի պատերազմին կային. աստ և խրախոյս տայ, և չտայ թուլանալ 'ի ճգունսն:

Այնպիսի Աստուած փրկիչ ունիս՝ մի ինչ այլոց օգնակա-

նութեան կարօտանայցես, այլ կամօք լինիջիր ժուժկալ առաքինաբար: Քանզի և որ յերկրաւորս համբերեալ իցեն, 'ի շահիցն յայս հայէին. սկիզբն ամենայն իրաց ինչ, և ակն ունին եթէ 'ի գլուխ հանեն. ապա ուրեմն վախճանի ժամանակք են: Քանզի ասէ եթէ "Ի ժամանակս յետինս քակեսցին ոմանք 'ի հաւատոցն, և հայեսցին յայս մոլարս և 'ի վարդապետութիւնս սատանայութեանց և 'ի կեղծաւորութիւնս ստախօսութեանց, խարեալք 'ի խղճէ մտաց իւրեանց, արգելուցուն զհարսանիս":

Իսկ արդ մեք, ասէ, չարգելուցումք զամուսնութիւն: Զարգելումք զայնոսիկ որ կամիցին, քաւ լիցի. այլ զոր ոչ կամիցինն ամուսնանալ, յորդորեմք 'ի կուսութիւն. այլ է արգելուլն, և այլ է թոյլ տալն իւրումն ազատ լինել կամացն. զի որ արգելուցու, մի ակամայ իսկ զայն առնել. իսկ որ 'ի մեծ աշխատան կուսութեանն յորդորիցէ, ոչ որպէս թէ արգելուցու զամուսնութիւնն՝ զայն առնէ, այլ պահել զկուսութիւնն յորդորէ:

"Արգելուն, ասէ, զհարսանիս, կարճիցեն զկերակուրս զոր Աստուած արար 'ի մխիթարութի հանդերձ գոհութ̃ե հաւատացելոցն և որք հասեալ են 'ի ճշմարտութ̃ե վերայ": Արդ ուրեմն առաջինքն օրինակ էին. քանզի չէր ինչ բնութ̃բ պիղծ, այլ ըստ խղճի մտաց ընդունելեացն լինիցի պիղծ: Իսկ ընդէր արդեօք 'ի բազում կերակրոցն պատուիրեցէ. այլ զի 'ի բազում փափկութենէն կարճիցէ: Իսկ եթէ ասասցեալ էր թէ վասն փափկութեան մի ուտէք, թերևս չանսայցին իսկ. նա ասանիկ 'ի հարկ իմն օրինացն փակեաց, զի մեծաւ երկիւղիւն առաւել կարճիցեն. ապա թէ ոչ՝ քան զխոզս ևս չար պիղծ ձուկն է, և ամենեցուն իսկ յայտ է, բայց սակայն անտի չկարճեաց: Իսկ զի մտապահ էր նոցա փափկութիւն, լսել Մովսէսի զինչ ասէր. "Եկեր, ասէ, գիրացաւ և անկաշնեաց 'ի սիրելին": Բայց են և այլ ինչ պատճառք. քանզի յԵգիպտոս զարջառն և զոչխարսն պաշտէին, յորժամ 'ի նեղ և յանձուկ անկանիցին և չգտանիցեն ինչ ուտել, հարկ լինիցի նոցա զարջառս և զոչխարս կոտորել և ուտել. զի անսուրբք և անպիտանք և աղտեղի և պիղծ դժգոհ կամքն են:

"Զայդ պատուիրեսջիր, ասէ, և 'ի դոյն հոգասցես,

նայիցիս ընդ պատգամս հաւատոյն „ ։ Այն իսկ է, եթէ մի այլոց ևեթ տայցես խրատ, այլ դու զնոյն ածիցես զմտաւ ։ Նմանիցիս ընդ պարգևս հաւատոյ, և բարւոք վարդապետութեանդ՝ որոյ զհետ իսկ եղեր. բայց 'ի պղծոցն և 'ի պառաւանց առասպելեաց հրաժարեսջիր ։ Այլ ընդէ՞ր ասաց եթէ յայնպիսեացն 'ի բաց կացջիր, այլ թէ հրաժարեսջիր ։ Բնաւ, ասէ, և հուպ իսկ մի լինիցիս, և մի զմտաւ ածիցես. և ոչ դու միայն, այլ քոյոցն զնոյն խրատ տայցես ։ Քանզի և չկարեմք իսկ յորժամ ընդ խոտորեալսն մարտնչիցիմք՝ իմանալ հը- նարս ինչ, բայց այնչափ միայն՝ զի զճառսն զմտաւ ածի- ցեմք, և վասն այնորիկ հրաժարիցիմք 'ի խօսից նոցա ։

"Բայց կրթեա զանձն քո յաստուածպաշտութիւն „. 'ի վարս պարկեշտս, 'ի բարւոք առաքինութեան ։ Զի որ կրթիցին, թէպէտ և պատերազմունք չլինին, նա միշտ 'ի կրթութիւն մրցի, յամենայն ճգնասակարաց հեռա- նայ, 'ի կասկածանս կայ, 'ի բազում քրտունս ։ "Կր- թեա, ասէ, զքեզ յաստուածպաշտութիւն. զի մարմնոյ կր- թութիւն առ սակաւ ինչ օգուտ է, իսկ աստուածպաշտու- թիւն առ ամենայն ինչ օգտակար է, և զաւետիս կե- նաց ունի, զայժմուս և զհանդերձելոցն „ ։ Այլ ընդէ՞ր, ասէ, յիշեցէ զմարմնաւոր կրթութիւն. համեմատու- թեամբ յայտ առնէ զառաքինութիւն, եթէ յայնմ աշխատութենէ և շահ ինչ չիք և չէ իմիք արժանի, և այս մշտնջենաւոր է և անմահ. որպէս յորժամ ասիցէ՝ "զարդարել զանձինս մի 'ի հիւսս ոսկեհուռս ընդելու- զեալս մարգարտով, այլ որպէս և վայել է կանանց զաս- տուածպաշտութիւնն խոստացելոց գործովք բարուե „ ։

"Հաւատարիմ է բանս, և ամենայն ընդունելու- թեան արժանի է, զի և 'ի սոյն վաստակիմք և զնախա- տինս յանձն առնումք „ ։ Պաւղոս նախատինս յանձին կրէր, և դու դանդաղիս. Պաւղոս վաստակէր, և դու փափկանա՛լ կամիս ։ Այլ թէ 'ի փափկութիւն հատեալ էր, թերևս չհասանէր այնպիսի բարութեանց ։ Զի ե- թէ երկրաւոր ինչ իրք անշունչք և եղծանելիք առանց աշխատութեանց և քրտանց ոչ երբէք գայցեն մարդ- կան, որչափ ևս առաւել հոգևորքն ։

## ՑՈՐԴՈՐԱԿ

Այո, ասէ, այլ 'ի ժառանգութենէ հարց բազում անգամ հասանեն բազմաց։ Թէպէտ և այն հասանիցէ, այլ պահելն և ապրեցուցանել չլինի առանց աշխատութեան։ Այլ զայն չև ևս ասեմ, թէ բազումք աշխատեցան և տառապեցան և ածին հասուցին 'ի նաւահանգիստ, և յանկարծակի ընկղմեցան։ Իսկ առ մեզ չէ ինչ այնպիսի, զի ած է որ խոստացաւ մեզ, և նոցա յոյսն է որ ոչ ամաչեցուցանէ։ Այլ դուք ձեզէն իսկ գիտէք, որ յաշխարհիս իւս աշխատեցան այնչափ, և յետ բազում վաստակոցն ոչ ինչ օգտեցան 'ի պտղոցն, կամ թէ մահ վաղվաղակի ժամանեաց, կամ թէ իրացն վաղվաղակի շրջանակք ինչ եղեն, կամ ցաւք ինչ հասին 'ի վերայ, կամ թէ 'ի զուր ինչ ոք նենգեաց, կամ այլ զինչ և իցեն պատճառք, և գնացին ունայն ձեռօք։

Այլ զնոսա, ասեն, որ վայելեցինն չտեսանիցեմ, որք սակաւ աշխատութեամբքն մեծամեծ բարութեանցն հասին։ Զո՞ր ասիցես բարութիւնս. զինչս, զտունս, զարտավարս բազումս, զգերդաստանաց դասակս, զկշիռս արծաթոյ և ոսկւոյ. զայն բարութիւնս կոչիցես, չամաչես, չկորանայցես. ընդ քեզ զերկնից խօսիմ, և դու յերկրաւորս հարեալ և բարութիւնս կոչես։ Եթէ այն բարութիւնք իցեն, ապա և որ ունին՝ պարտին բարի անուանել, զի որ զբարի ինչ ունիցի, զիա՞րդ չիցէ և ինքն բարի։ Յորժամ գոյաւորք ագահիցեն յափշտակիցեն, բարիս պարտ իցեմ կոչել զնոսա։ Որ թէ մեծութիւն որ յագահութենէն ժողովիցի՝ բարւոք իցէ, և որչափ և աճիցէ՝ ևս քան զևս զառաջոյն 'ի բարութիւն աճիցէ, ապա ուրեմն բարի է ագահն, և որչափ աճէ ագահութիւնն՝ ևս քան զևս զագահն 'ի բարութիւն աճիցէ։ Տեսանե՞ս զընդդէմն հակառակութիւն։

Այլ թէ չիցեն, ասեն, ագահ, և զիա՞րդ մարթ իցէ այնմ լինել։ Քանզի ապականիչ է ախտն, չմարթի, ասեն, չէ հնար, չէ մարթ։ Այլ Քրիստոսի իսկ է վճիռ, թէ «Արարէք ձեզ բարեկամս 'ի մամոնայէ անիրաւութեան»։ Այլ եթէ 'ի հօրէ ընկալեալ իցէ ըղ-

ժառանգութիւն։ Եւ ինչ անիրաւութեամբ ժողովեալ էր՝ զայն ընկալաւ. քանզի ոչ եթէ յԱդամայ նախնի նորա այնպէս մեծատուն էր, այլ 'ի դէպ էր բազմաց յառաջ քան զնա լինել, և գտանել 'ի բազումս ումեք որոյ անիրաւութեամբ յայլոց առեալ իցէ։

Իսկ արդ զիա՞րդ, ասեն, Աբրահամ յանիրաւութենէ՞ ունէր զմեծութիւն, կամ Յովբ անարատն և ածասէրն, ճշմարիտն և արդարն, մեկնեալն յամենայն գործոց չարեաց։ Նոցա մեծութիւնն ոչ եթէ ոսկւով և արծաթով էր և շինուածովք, այլ խաշամբք. և յայտ էր եթէ 'ի յարգարութենէ էր մեծութիւն։ Այլ որ զգիրսն իսկ զերանելւոյն գրեաց, մեռան ուղտք նորա, ասէ, և ձիք և էշք, և չասաց թէ զոսկւոյն և զարծաթոյն զանձս եկին յափշտակեցին։ Այլ Աբրահամ մեծատուն էր ծառայիւք, այլ ասէ գիր՝ եթէ զընդոծինս ունէր երեքհարիւր և ութուտասն այր, և արջառք և ոչխարք։ Այլ յորժամ զՀաբերեկայն յղեաց, ասեն, ուստի եւս զոսկին. յեգիպտացւոցն առ պարգեւս, ոչ բռնաբարեալ զոք, և ոչ զրկեաց։

Արդ աղէ ասա, դու ուստի առեր զմեծութիւնն։ Նա ասէ 'ի հաւոյ, և նա 'ի հօրէ. և կարիցես զբազում ազգքն հասանել անցանել, և ցուցանել եթէ չէ զանձն այն յանիրաւութենէ։ Գիտեմ թէ չկարես. այլ ըսկիզբն և արմատն ուստի և է՝ յանիրաւութենէ է։ Ընդէ զի Ած 'ի սկզբանէ չարար զոմն մեծատուն և զոմն աղքատ, և ոչ միումն տարաւ ցոյց զանձս բազումս և ըղձիւսն զրկեաց, այլ ամենեցուն զմի երկիր եցոյց։ Այլ զիա՞րդ զի հասարակաց մի երկիր է, և դու այնչափ անդաս ունիցիս, և ընկերքն և ոչ ափոյ միոջ տէրեն։ Հայր իմ, ասէ, ետ ինձ։ Այլ նորա յումմէ՞ առեալ իցէ. 'ի նախնեաց, ասէ։ Այլ հարկ է այսուհետև մի ըստ միոջէ 'ի վեր մատչել և գտանել զի յանիրաւութենէ է։ Իսկ եղև Յակոբ մեծատուն. այլ յիւրոց վաստակոցն վարձուց։

Սակայն ոչ ինչ կարի ճշգիւ խնդրեսցուք. դնեսցուք թէ արդարութեամբ իցէ մեծութիւն, և յամենայն յափշտակութենէ ազատ. քանզի դու չես պարտապան ընդ հօրն յափշտակութեանց, և կամ թէ ըղնաւ յերկրէ իսկ բղխեաց զանձն։ Արդ այսու ինչ բա-

րն իցէ մեծութիւնն. և ոչ ուրեք։ Այլ և ոչ չար է,
ասեն. և որ ագահն իցէ՝ չէ չար եթէ աղքատաց բաշ֊
խիցէ. ապա եթէ չբաշխիցէ, կարի իսկ չար և վնա֊
սակար է։ Որ ոչ առնիցէ, ասեն, չար, չէ չար. նաև ըզ֊
բարին թէ ոք չառնիցէ՝ չէ բարի։ Այլ այն իսկ չիցէ՞ չար՝
միայն ունել զտէրունին և միայն վայելել 'ի հասարա֊
կացն. եթէ չիցէ՞ ա̃յ ամենայն երկիր լրիւ իւրով. և ե֊
թէ տէրունի իցէ ամենայն առ հասարակ, ապա ամե֊
նեցուն իսկ ծառայակցացն հասարակ է. քանզի տէրու֊
նին ամենեցուն հասարակաց է։ Այլ թէ չտեսանիցեմք և
աստէն իսկ 'ի տունս մեծամեծաց այսպիսի կարգս. ա֊
մենեքեան առ հասարակ առնուն զռոճիկն, և 'ի հա֊
սարակաց գանձուցն տէրունի, նաև ապարանքն ամենե֊
ցուն հասարակաց են. և արքունիքն ամենայն, քաղաքք
և հրապարակք, և ել և մուտք ամենեցուն հասարա֊
կաց են։

Այլ տես զա̃յ ինչ տեսչութիւն, զկարգ ամենեցուն
հասարակաց ետ, զի գոնէ այնու պատկառեցուցանիցէ
զազգս մարդկան. զօդս, զարեգակն, զհուր, զերկիր,
զերկինս, զծով, զլոյս, զաստեղս, իբրև եղբարց հարա֊
զատաց առ հասարակ բաշխեաց. աչս ամենեցուն զնոյն
արար, մարմին զնոյն, շունչ զնոյն, կազմած մի ամենե֊
ցուն. ամենեքեան յերկրէ, ամենեքեան 'ի միոջէ առ֊
նէ, ամենեքեան 'ի միում տանն մեծի. սակայն և այնու
ինչ չպատկառիմք։ Այս և սոյն իսկ բազում ինչ հա֊
սարակաց է, բաղանիք, քաղաքք, հրապարակք, փո֊
ղոցք. և 'ի հասարակացն չիք ինչ կռիւ 'ի միջի, այլ յա֊
մենայնի խաղաղութիւն։ Այլ յորժամ խորհիցէ ոք և
սեփհական առնիցէ, յայնժամ մտանիցէ գրգռութիւն,
ապա և բռնութիւն իսկ զայրանայ. զի ա̃ծ ամենևին
ժողովեաց զմեզ, և մեք ոգորիմք քակել 'ի միմեանց և
սեփականս 'ի միմեանց առնել։ Յորժամ սա իմ, սա
քո իցէ, յայնժամ յուզի կագ. և ուր այն չիցէ, և ոչ
կագ 'ի միջի և ոչ հակառակութիւն ծնանի. որպէս զի
այս միայն 'ի միասին հասեալ մեզ 'ի բաժին բնութե̃։
Ընդէ՞ր ոք վասն հրապարակացն չխօսիցի դատ. վասն
զի հասարակ ամենեցուն է։ Յաղագս տանց և կարասւոյ
և զամենեսեան տեսանեմք դատափետեալս, և կա֊
րևորքն հասարակաց կան 'ի միջի, և մեք և ոչ 'ի փո֊

քունս պահեմք զկշիռ հաւասարակայն . Թէպէտ և զայն վասն այսորիկ եդ 'ի միջի, զի նոքօք խրատիցիմք և զայս հաւասարակ ունել, սակայն և այնպէս չխրատիցիմք :

Դու արդ ոչ եթէ որ զմեծութիւն ունի՝ նա բարի ինչ իցէ, այլ որ բաշխիցէն . և յորժամ չունիցին ինչ, յայնժամ բարի լինի . մինչ ունին, չէ բարի : Բարի ինչ՝ որ զունելիսն չառնիցէ, չէ բարի . զի ոչ եթէ ունել զինչսն, այլ չունելն առնէ : Այլ ուրեմն չէ բարի մեծութիւն, այլ այլոցն բաշխել բարութիւն : Դու արդ մի կոչիցես զմեծութիւն բարի . վասն այնորիկ չունիս, զի բարին համարիս և անչափ հարեալ ես : Սրբէ զմիտս և արդար դատաստան դիր առաջի, և ապա լինիցիս բարի : Ի միտ առ զճշմարիտ բարութիւնսն, զառաքինութիւն և զողորմածութիւն և զմարդասիրութիւն . նոքա են բարութիւն և մեծութիւն : Ըստ այնմ կանոնի լինիցիս ողորմած . որչափ առաւել լինիցիս, եւս քան զեւս բարի լինիցիս և կարծիս բարի . ապա թէ մեծատուն իցես, ոչ ինչ նոյնպիսի : Այնպէս լիցուք բարիք՝ զի սերտիւ իցեմք բարիք, և 'ի հանդերձեալ բարութիւնսն վայելիցեմք . որոց լիցուք արժանի շնորհօք և մարդասիրութե̃ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն :

# ՃԱՌ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ.

"Պատուէր տաջիր զայս և ուսուցանիջիր, մի՛ ոք իցէ որ զքո մանկութիւնդ արհամարհիցէ. այլ օրինակ լե՛ր հաւատացելոցն բանիւք, գնացիւք, սիրով, հաւատովք, սրբութեամբ: Մինչև գամ ես, միտ դիր ընթերցուածոց մխիթարութեան վարդապետութեան. մի՛ հեղգար ինչ ՚ի շնորհն որ տուաւ քեզ մարգարէութեամբ ձեռնադրութեամբ երիցութեանն":

Յամենայն իրս մերթ վարդապետութեան պէտք են և մերթ հրամանն տալոյ. եթէ որ ուսուցանել պարտ իցէ՝ հրաման տայցես, ծաղր կայցես. Նոյնպէս եթէ ուր հրաման պարտ իցէ տալ՝ ուսուցանիցես, զնոյն ամօթ կրես: Այսպիսի է զոր ասեմ. վասն զչարիս ինչ կարճելոյ չէ պարտ ուսուցանել, այլ հրաման տալ և սաստ ՚ի վերայ դնել բազում ճոխութեամբ. չլինել հրէարէն, անդ սաստի պէտք են: Իսկ եթէ ասիցես, պարտ է յընչից թօթափել, զկուսութիւն պահել, զհաւատոցն հաստատութիւն խնդրել, անդ վարդապետութե՛ պէտք են: Վասն այնորիկ և Պաւղոս զերկոսեան դնէ, "հրաման տաջիր, ասէ, և ուսուցանիջիր": Եթէ ոք ՚ի ջնջոցս ինչ՛ մտաբերիցէ, և կամ ՚ի սնիկոնս հաստանիցի, կամ այլ ինչ նոյնպիսի, գիտելով չափ եթէ այնպիսի ինչ չարիք գործիցին, անդ սաստի ևեթ գործ է. ապա թէ չիցեմք ինչ ՚ի վերայ հասեալ, անդ վարդապետութեան:

"Մի՛ ոք իցէ, ասէ, որ զքո մանկութիւնդ արհամարհիցէ": Տեսանե՞ս զի հրաման տալ և սաստ ՚ի վերայ դնել՝ պարտ է քահանային և ճոխութեամբ խօսել, և մի միայն ուսուցանել. զի այն քամահանաց գործ է. Նաև մանկութիւն իսկ ՚ի հասարակաց կանխեալ սովորութենէն արհամարհիցի, վասն այսորիկ ասէ. "Մի՛ ոք իցէ որ զքո մանկութիւնդ արհամարհիցէ": Պարտ է և առանց քամահանաց լինել վարդապետին: Այս ո՞ւր իցէ, ասեն, զի անդ հեզութիւն կայցէ կամ հանդար-

տութիւն, եթէ չարհամարհիցի։ Վասն խրոց ինչ պիտոյից եթէ արհամարհիցի՝ յանձին կալցէ, զի այնպէս երկայնմտութեամբն կատարի վարդապետութի̃. բայց վասն այլոցն մի ինչ այնպէս զգօնագոյն գտանել, զի այն չէ զգօնութիւն, այլ պղծութիւն։ Եթէ զանձին թըշնամանաց վրէժ խնդրիցէ, եթէ զքամբասանաց, եթէ զնենգութեանց, յիրաւի մեղադիր լինի. ապա եթէ վասն այլոց փրկութեան առնիցէ և Ճոխութեամբ հրամայիցէ, անդ զի՞նչ պիտոյ իցէ զգօնութիւն, այլ Ճոխութիւն, զի մի հասարակաց ինչ իրքն ապականիցին։ Կամ զայս ասէ, կամ զայն. «Մի ոք իցէ որ զքո մանկութիւնդ արհամարհիցէ». մինչ կշիռ զվարսն ցուցանիցէ, չէ մարթ թէ վասն սնոտւոյն արհամարհիցի, բայց ևս զարմանալի լինի։

«Այլ օրինակ, ասէ, լինիջիր ամենայն հաւատացելոց բանիւք, գնացիւք, սիրով, հաւատովք, սրբութե̃». ամենեցուն զքո զանձն ցուցանիցես օրինակ գործոց բարեաց։ Այն իսկ է եթէ նախանկար օրինակ բարի վարուցն դու լինիցիս, որպէս զպատկեր ինչ որ առաջի կայցէ, որպէս օրէնք ինչ կենդանի, որպէս կանոնք և սահմանք բարւոք կենաց։ Այնպիսի ինչ պարտ է լինել վարդապետին։ Բանիւք, ասէ. զի միշտ պատրաստական բանիւքն գտանիցի գնացիւք, յեկեղեցւոյն կարգս պիտանի, սիրով, հաւատովք, սրբութեամբ, ուղղութեամբ, ցածութեամբ։

«Մինչև գամ ես, միտ դիր ընթերցուածոց գրոց մխիթարութեան վարդապետութեան»։ Տիմոթեայ պատուիրէ ընթերցուածոց գրոց միտ դնել։ Լուիցուք ամենեքեան և խրատեսցուք զանձինս մի հեղգալ յաստուածեղէն գրոցն ընթերցուածոց։ Ահաւասիկ դարձեալ, ասէ, մինչև գամ ես։ Տես զվարդ մխիթարէ. քանզի 'ի դէպ էր որբ մնացելոյն խնդրել զնա։ Մինչև գամ ես, ասէ, միտ դիր ընթերցուածոց ա̃ծեղէն գրոց մխիթարութեան, զոր միմեանց տայցէք։ Վարդապետութեամբ, այն իսկ է՝ թէ մի ինչ հեղգար 'ի շնորհսն որ տուան քեզ մարգարէութեամբ. զվարդապետութի̃ այսպէս կոչէ։ Ձեռնադրութեամբ, ասէ, երիցութե̃. չասէ ինչ աստ զերիցանց, այլ զեպիսկոպոսաց. քանզի ոչ եթէ երիցունք եպիսկոպոսաց ձեռնադրութի̃ տային։

“Յայս լեր, ասէ, և 'ի սոյն կանխեա„: Տես զկարգ բազում անգամ վասն նորին պատուիրէ, թէ քան ամենայն ինչ պատկառ կալ վարդապետին: “Զգոյշ լինիջիր անձինդ և վարդապետութեանդ„: Զանձին, ասէ, պատկառ կայցես և զայլս ուսուցանիցես: “Զայս եթէ առնիցես, զանձն քո ապրեցուցանիցես և զայնոսիկ՝ որ քեզն լսիցեն„: Զի որ վարդապետութեան բանիւք մնանիցին՝ նախ անձին յաճախ օգուտ է, զի զայլսն խրատելով զիւր միտսն քըքրէ: Եւ ոչ առ Տիմոթէոս միայն ասէ, այլ առ ամենեսեան. զի եթէ նմա որ զմեռեալս յարուցանէր այսպիսի ինչ պատուէր տայ, մեք զի՞նչ գործեսցուք եթէ հեղգայցեմք: Եւ Քրիստոս ասէ. “Որ հանէ 'ի գանձուց իւրոց զնոր և զհին, նման է առն տանուտեառն„. և դարձեալ երանելին Պաւղոս ասէ, եթէ “Համբերութեամբ և մխիթարութեամբ գրոց զյոյսն ընկալցուք„: Եւ առաւել քան զամենեսեան նա զնոյն արար, զի առ ոտս Գամաղիէլի խրատեցաւ և ուսաւ զհայրենի օրէնսն, որպէս զի և յետոյ 'ի դէպ էր նմա պատկառ կալ ընթերցուածոյն: Որ այլոց զայն պատուիրէր, յայտ է եթէ նախ անձին ըզնոյն պատուիրեաց: Եւ արդ դնիցես միտ զկարգ զմարգարէիցն վկայութիւն յաճախ արկանէ 'ի կիր, և այնմ եւեթ միտ եդեալ հայի: Իսկ եթէ Պաւղոս ընթերցուածոց միտ դնիցէ, քանզի չէ սակաւ ինչ օգուտ յաստուածեղէն գրոյն շահել, մեք զիա՞րդ է զի հեղգայցեմք: “Զի քո յառաջադիմութիւն, ասէ, յայտնի լինիցի յամենայնի„. ոչ միայն 'ի վարսն, այլ և 'ի վարդապետական բանին:

“Զծերս մի՛ պատուհասակոծ առնիցես„: Միթէ զերիցա՞նց պատուոյ ասիցէ: Թուի ինձ թէ ոչ, այլ զալևորայ: Եւ եթէ պարտ ինչ իցէ յուղղութիւն ածե՞լ. զի գործիցէ իբրև զհայր յանցաւոր, յորժամ մատուցեալ ոք ողոքիցէ, նոյնպէս և ընդ նոցա, ասէ, ողոքանօք խօսիցի: “Զպառաւունս իբրև զմարս, զերիտասարդս իբրև զեղբարս, զօրիորդս իբրև զքորս ամենայն սրբութեամբ„: Նաև իրքն այնպէս պահանջեն, զի պատուհասն կարի իմն ծանրագոյն թուի, մանաւանդ յորժամ զծեր ոք պատուհասիցէ. նաև զմանուկն ևս յանդըգնութիւն ածէ 'ի պատուհասն. և այնմ մխիթարու-

թեան հնարս զողոքանման և զհեզութիւն առնելով, ա-
սէ ։ Մարթի չլինել ծանր և յանդիմանել՝ եթէ կամի-
ցի ոք այնմ միտ դնել, և բազում իմաստութեան գործ
է ․ մարթի և գոյ հնար ։ Զերիտասարդս, ասէ, իբրև
զեղբարս ։ Այլ ընդէ՞ր և զստահակութեան զնոյն հրա-
մայիցէ ։ Զգուշանայ ՚ի մանկութեան տիոց ․ և զի մի
եւ առաւել ՚ի յանզգնութիւն ածիցէ, պարտ է եւ անզ-
խելօք զհեզութիւնն ՚ի գործ արկանել ։ Զօրիորդս,
ասէ, իբրև զքորս ․ և յաւել՝ եթէ ամենայն սրբութեամբ ։
Մի՛ միայն զխառնակութեան մեղացն զրոյցսն ՚ի մէջ
բերիցես, այլ և պատճառս անգամ ամենեւին մի տայ-
ցես ․ զի յորժամ ընտելութիւն ընդ աղջկունս լինիցի,
հազիւ ոք կարէ ՚ի կարծեաց ապրել ․ և եպիսկոպոսին
հարկ է և ընդ մատաղսն խօսել ․ նմին իրի իսկ ասէ՝ թէ
ամենայն սրբութեամբ ։ Զինչ խօսիս ։ Տիմոթեայ
այդպիսի՞ պատուէրս տաս ։ Այո, ասէ, քանզի նմա
ընդ ամենայն աշխարհս խօսիմ ։ Եթէ Տիմոթեայ այն-
պիսի պատուէր տայցէ, ՚ի մեր առնուցու իւրաքանչիւր
ոք զվարդ և որպիսի ինչ պարտ իցէ լինել, մի կարծիս
տալ, մի բնաւ ստուեր կարծեաց այնոցիկ որ բամբա-
սելն կամիցին ։

“ Զայրիս պատուեա որ ստոյգ այրիքն իցեն ” ։ Այլ
զկուսանայն ընդէ՞ր չպատուիրեաց՝ եթէ պատուեա ։
Թուի ինձ եթէ էին իսկ ոչ յայնժամ, և կամ թէ ան-
կեալք էին ՚ի կուսութենէ ․ քանզի ասէ ․ “ Նոքէն իսկ
խոտորեցան ումանք զկնի սատանայի ” ։ Զայրիս, ասէ,
պատուեա որ ստոյգ այրիքն իցեն ։ Այլ գուցէ ոք որ այր
չունիցի և չիցէ այրի ։ Զոր օրինակ զկոյսն ոչ եթէ չա-
մուսնանալն առնէ կոյս, այլ և այլ ինչ բազում պէտք
են զի անարատ լինիցի և չտայցէ կարծիս ՚ի բուռն ան-
կանելոյ, նոյնպէս և այրութեանն բազում զգուշութեան
պէտք են, և յիրաւի իսկ ․ ընդէ՞ր չառնիցեն արանց, և
եթէ չունիցին արս՝ պարտին զգուշանալ ։ Այլ քանզի նա-
խատանաց և թշուառանաց իրք թուին բազմաց այրու-
թիւնն, վասն այնորիկ պատուիրէ զի ՚ի քահանայից պա-
տուեսցին ․ և ոչ յայն սակս միայն, այլ զի և արժանի
իսկ է ։

“ Ապա եթէ ոք, ասէ, այրի իցէ, և որդիս և թո-
ռունս ունիցի, ուսանիցին նախ իւրեանց տանն բարե-

պաշտօն լինել, և փոխարէնս երախտեաց հօր և մօր հատուցանել,,: Տեսանես զխնամատութիւնն Պաւղոսի, զխարդ բազում անգամ 'ի մարդկօրէն խորհրդոցն յորդորէ. չհրամայեաց մեծ ինչ և բարձրագոյն, այլ զխնամականն. և փոխարէն, ասէ, երախտիս հօր և մօր հատուցանել: Որպէս դու, ասէ, սնուցեալն անձամբ վայելեցեր, նոյնպէս և դու նոցա հատուցանիջիր մինչդեռ կենդանի իցեն և մարթիցես փոխարէնս երախտեացն հատուցանել, զոր թէպէտ և կամիցիս՝ չկարես զնոյն կշիռ հատուցանել: Քանզի ոչ եթէ դու ծնանիցիս և սնուցանիցես զնոսա, այլ որպէս և մարթ իցէ՝ և անձամբ և ողջունովք ջանասջիր զերախտիսն հատուցանել. զուցէ հրաժարիցեն և չիցէ ինչ հնար զփոխարէնսն դարձուցանել: "Ուսանիցեն, ասէ, նախ իւրեանց տանն բարեպաշտօն լինել,,. այսինքն բարիս ինչ դարձուցանել, խնամ տանել: "Զի այն է, ասէ, ընդունելի առաջի այ,,:

Եւ քանզի ասաց թէ որ ստոյգ այրիքն իցեն, ցուցանէ թէ ով իցէ ստոյգ այրին. "Որ ստոյգ այրին իցէ, և լոկ միայն յԱծ յուսացեալ է, և կանխէ յաղօթս և 'ի խնդրուածս զցայգ և զցերեկ. իսկ որ գիրգ այրին է, նա կենդանւոյն մեռեալ է,,: Եթէ ոք, ասէ, յաշխարհի ինչ պէտս զբօսեալ և այրի իցէ, այնպիսին չէ ճշմարիտ այրի, այլ յուսացեալն յԱծ որպէս և պարտ է յուսալ, որ յաղօթսն և 'ի խնդրուածս կանխիցէ զցայգ և ցերեկ՝ այնպիսին այրի է: Եւ ոչ եթէ որ զորդիսն ունիցի չիցէ այրի, քանզի այնպիսին զարմանալի է վասն զորդիսն սնուցանելոյն որպէս պարտ իցէ սնուցանել. այլ ասէ՝ թէ իցէ ոք այրի և որդիս չունիցի, այն իսկ է լոկն միայն: Եւ արդ մխիթարէ զայնպիսին թէ չունիցի, ասէ, որդիս և դստերս. քանզի այնպիսին է ստոյգ այրի, յորժամ ոչ յառնէ ինչ մխիթարութիւն ունիցի և ոչ յորդւոց, և ընդ ամենայնի զԱծ ունիցի: Զի ոչ եթէ որ որդիս ոչ ունիցի, լաւագոյն ինչ իցէ. և արդ որդւոցն չքաւորութեան հրամայէ մխիթարութիւն մատուցանել: Մի ինչ, ասէ, դժկամակ լինիցիս յորժամ լսիցես՝ թէ պարտ է որդիս սնուցանել, և զի չունիցիս որդիս՝ համարիցիս թէ այնու նուազագոյն ինչ պատիւ ունիցիս. մի ինչ ընդունայն զչարիս, այլ այնու մխիթարեաց՝ զի ստոյգ այրի ես:

“Իսկ որ գիրգ այրին իցէ, նա կենդանւոյն մեռեալ է”։ Քանզի բազումք զայրութիւն յանձն առնուն, ոչ զի զպատճառս յոռի վարուցն համառիցեն, այլ զի առաւել բորբոքիցեն, զի բազում համարձակութեամբ զամենայն զոր կամիցին գործիցեն, և աշխարհական ցանկութեանց տայցեն զանձինս. և առ այն զինչ ասիցեմք. “Որ գիրգն է, ասէ, նա կենդանւոյն մեռեալ է”։ Ո՛ր ինչ խօսիդ. կնոջ այրւոյ չէ՞ պարտ ըստ անձին դիւրի շրջել։ Ոչ, ասէ։ Թէ տիօքն և բնութեամբն տկար իցէ՝ չէ պարտ փափկանալ, և մահու առիթ զգրգութիւն լինիցի և յաւիտենից մահուն, զի՞ գործիցեն որք ըստ անձին դիւրի շրջիցին։ Ապա ուրեմն յիրաւի ասաց՝ թէ որ գիրգն է, նա կենդանւոյն մեռեալ է։

Տեսցուք զինչ գործ կենդանեաց իցէ, և զինչ մեռելոց, և ընդ ում համարիցիմք զայնպիսի կեանս։ Կենդանիքն զկենացն եւեթ զհանդերձելոցն գործ գործեն, որ արդարև կեանքն են։ Իսկ զինչ իցեն հանդերձեալ կենացն գործն՝ որում մեզ ցանգ պարտ է կալ պատկառ, լուր Քրիստոսի խօսի. “Եկայք, ասէ, ժառանգեցէք զարքայութիւն որ պատրաստեալ է ձեզ ՚ի սկզբանէ աշխարհի. զի քաղցեալ էի և ետուք ինձ ուտել, ծարաւ էի և արբուցէք զիս”։ Ո՛ կենդանիքն ոչ միայն զարև տեսանելովն ընդհատ են ՚ի մեռելոց, և զօդս և զերկինս, այլ գործս ինչ բարիս գործելով. և եթէ այն չիցէ, ևս չար են քան զմեռեալս։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Իսկ զի սերտիւ ուսանիցիս եթէ զիարդ յորժամ մեռեալ ոք է՝ կենդանի իցէ, լուր. “Աստուած, ասէ, չէ մեռելոց, այլ կենդանեաց”։ Այլ այն, ասեն, առակ է։ Իսկ եթէ այնպէս իցէ, զերկոսեանն պարտիմք լուծանել։ Կենդանւոյն մեռեալ է որ ըստ անձին դիւրի շրջիցի. զիա՞րդ. որկորստութեամբ, մանաւանդ թէ և այլովք իսկ զգայարանօք։ Քանզի չտեսանէ որպէս պարտ է տեսանել, և ոչ լսէ որպէս պարտ է լսել, և չխօսի որպէս պարտ է խօսել, և չէ ՚ի կենդանեաց համարի. այլ զոր օրինակ որ ՚ի մահիճս պրկեալ կայցէ և զաչս խցեալ և զկոպս կափուցեալ, և չզգայցէ ամենևին ինչ զանձա-

մոյն, նոյնպէս և այնպիսին. մանաւանդ թէ ոչ այնպէս ինչ, այլ ևս չար: Զի նա բարեացն և չարեացն առ հասարակ չզգայ, և սա չարեացն եւեթ զգայ, և բարեացն ամենևին իսկ ոչ, և իբրև զմեռեալ անշարժ կայցէ: Եւ չշարժեն երբէք զայնպիսին փափագմունք հանդերձելոցն կենաց. այնպէս մեռեալ կայ իբրև յանդունդս ինչ խաւարինս գիջեալ շիջեալ, լի ամենայն պղծութե՟ բարձեալ կրիցեն ոգիքն զմարմինն, միշտ 'ի խորինս խաւարինս, ցանգ մեռեալ և թաղեալ է այնպիսին: Յորժամ զամենայն ժամանակս 'ի Ճաշս և յարբեցութեան անցուցանիցէ՝ չիցէ՞ 'ի խաւարի, չիցէ՞ մեռեալ: Եւ այգուցն յորժամ թուի թէ արթուն իցէ՝ չէ ստոյգ արթուն, զի երեկոյին գինին չև ևս թափեալ է 'ի խելացն, և անդրէն 'ի նոյն ցանկութիւն փափագիցէ և 'ի նոյն խոկայցէ, զի և ընդ առաւօտս և 'ի հասարակ աւուր և ընդ երեկս 'ի նոյն անառակութիւն փութայցէ, և զամենայն գիշերն 'ի խոր քուն անկեալ խորդայցէ, և ընդ առաւօտն ևս աւելի, զայնպիսին ընդ կենդանիս համարիցիմք:

Եւ ո՞ կարիցէ պատմել զանհնարին ձմերանւոյն որ յոգիսն և 'ի մարմինսն 'ի փափկութենէն հնչիցէ: Զոր օրինակ ամպայոյզքն ինչ որ զաւուրսն լինին՝ զՃառագայթս արեգականն ծածկիցեն, նոյնպէս բարեկեցութեան և գինւոյ մէգք ծխեալ յուղեղն ազդիցեն, և յաՃախեալ 'ի մառախուղն չտայցէ խօսնոյն թերաբանել, և խելացն զգալ զանդ[1] բնակեալ խօսունն և ասունն, և այնպէս բազում 'ի մթի և 'ի խաւարի ունիցի զանձնադիւրն փափկութիւն: Որչափ ինչ ձմերունքն 'ի ներքս հնչիցեն: Զոր օրինակ ողողութիք և հեղեղատք ջուրց սաստկութեան 'ի դուրս տանց և խանութից յորդիցեն, տեսանիցես զընակիչսն աղմկեալս և խռովեալս, սկտեղս, սափորս, սպունգս և այլ ևս ազգի ազգի ինչ հնարս իմիք բերեալ՝ զջուրն և զտիղն 'ի բաց պեղիցեն, զի մի և զհիմունսն ևս հասեալ խախտիցէ, և ամենայն գործիքն և պէսպէս հնարքն չկարասցեն ինչ պաՃարել, նոյնպէս և ոգիքն յորժամ ջրալիցք և հեղեղատեալ 'ի փափկութենէն լինիցին խռովեալք և ան-

1 Յօրինակին զի՛ անդ :

կեալ 'ի ներքս՝ բազում 'ի վաղուց մթերացն չկարիցեն զերծանիլ, մանաւանդ և այլ ևս յաճախագոյն 'ի ներքս մտանիցէ, և այնպէս ևս քան զևս սաստկացեալ շնչիցէ ձմեռն ։

Այլ ընդ այն ինչ մի հայիս եթէ երեսքն կարմիր են, այլ 'ի ներքս զմիտսն քննեսջիր, և տեսանես լի ամենայն տրտմութեամբ. և եթէ մարթ էր հանել զոգիսն 'ի մարմնոյն և աչաց ցուցանել, ապա տեսանէիր տրտում և տխուր և անաւագ և վտիտ զոգիսն ։ Զի որչափ մարմինն գիրանայ և յօրանայ, ևս քան զևս ոգին անաւագի և տկարանայ, մանաւանդ զի իբրև 'ի գերեզմանի իսկ թաղիցի ։ Այլ զոր օրինակ աչացն բբացն յորժամ արտաքին արկանելեօքն թանձրանայցեն՝ չտան տեսանելեացն համարձակ զլոյսն տեսանել, զի ծառագայթք լուսաւորութեանն գայցեն 'ի թանձրութիւն իբրև յորմն հարկանիցին, նոյնպէս և յորժամ մարմին գիրանայցէ, ծածկէ թանձրութեամբն զլուսաւորութիւն մտացն ։ Այլ որ մեռանիցին և փտիցին՝ բազում աւիշկ 'ի մարմնոցն ելանիցէ, նոյնպիսի ինչ և զգարեկեցիկսն է տեսանել. անդ խօղ, անդ աւր, անդ շմալ, անդ հեծել, անդ փսխել և զգայռել. և զայլն ևս որ աղտեղի իցէ ասել, 'ի բաց թողից ։ Այնպիսի իսկ է փափկութեան բռնաւորութիւն, զոր և ասել իսկ քաւքնեմք, յայնպիսի կարիս մաշէն զանձնդիւրսն ։

Զխորդ ցանգ ամենեքին տամկանան մարմինքն. այլ ուտէ և ըմպէ, ասեն, քաջ ։ Չէ այն մարդկօրէն կենաց նշանակ, և անասունքն ուտեն և ըմպեն ։ Յորժամ ոգիքն մեռեալ դնիցին՝ զինչ օգուտ յուտելոյն և յըմպելոյն գործիցին ։ Այլ յորժամ մարմին մեռեալ կայցէ, չէ ինչ շահ թէ գունակ գունակ հանդերձս ոք 'ի վերայ արկանիցէ. նոյնպէս և յորժամ մարմինն կենդանի զգենուցու պէսպէս հանդերձիւք, չէ ինչ օգուտ ոգւոց մեռելոց. յորժամ միշտ խոհակերացն և սեղանոց ճաշոցն և ընթրեացն համարք լինիցին, և ամբարշտութեան ինչ ճառք չգտանիցին 'ի միջի, չիցէ կենդանւոյն մեռեալ ։

Տեսցուք զինչ իցէ մարդ ։ Արտաքինքն ասեն. երր է խօսուն, մահկանացու, մտաց և հանճարոյ ընդունիչ ։ Այլ մեք մի 'ի նոցանէ դնիցեմք սահման ։ Իսկ ուստի.

յանձնեղէն գրոց։ Եթէ ուր եդ սահման մարդոյ գիր, լուր. «Այր, ասէ, այրն արդար, ճշմարիտ և ա͞ծապաշտ, մեկնեալ յամենայն չարեաց». այնպիսին է մարդ։ Եւ դարձեալ այլուր ասէ. «Մեծ է մարդ և պատուական այր ողորմած»։ Եւ որ չիցեն այնպիսիք, թէպէտ իմաստունք իցեն և բազում ինչ հանճար ընդունիցին, չգիտեն գիրք զայնպիսիսն մարդիկ կոչել. այլ շունս և ձիս և իժս և օձս և աղուէսս և գայլս, և եթէ այլ ևս չար քան զնոսա այլ ինչ գազան անագորոյն կայցէ։ Եւ եթէ այնպիսի իցէ մարդ, յայտ է եթէ և անձնդիւրն չէ մարդ. և արդարև իսկ չէ, և ոչ ինչ զհաճոյիցն փոյթ յանձին ունիցի։ Քանզի չմարթի փափկութեան և ըդդաստութեան 'ի միասին բնակել, զի մեծանից խափանիչք են։

Նոյն և առաքելքն ասեն, եթէ թանձր որովայն միտս անօսրունս ոչ ծնանի։ Գիտէ գիրք և անշունչ կոչել զմարդիկ վասն լինելոյ նոցա մարմինս. թէպէտ և շունչք իսկ ունիցին, մեռեալ շնչով։ Զոր օրինակ առաքինեացն, թէպէտ և մարմին ունին, ասեմք ամենեւին շունչ, ամենեւին ոգի, նոյնպէս և զնոցին հակառակացն։ Որպիսի ինչ և Պաւղոս ասէր, եթէ «Դուք չէք 'ի մարմնի». քանզի ոչ ինչ զմարմնոյ կատարէին։ Նոյնպէս և բարեկեցիկքն չունին շունչ, չունին ոգի. քանզի ոչ ըստ հոգւոյն կամաց գործս գործեն։ «Եւ որ գիրգն և անձնդիւր այրն իցէ, ասէ, կենդանւոյն մեռեալ է»։

Լուարուք կանայք, որ զամենայն ժամանակս 'ի զեխութեան և յարբեցութեան ծախէք, որ զաղքատան սովամահ տեսանէք և զակն 'ի վայր հարկանէք. նոքա ցանգ 'ի սովոյ մեռանին, և դուք միշտ յարբեցութե՛։ Երկուս մահս միանգամայն գործէք՝ զնեղելոցն և զձեր, և զերկոսեան կարի անչափ. զի եթէ բաշխէիք զձեր լիութիւն ընդ նոցա կարօտութեան, երկուս կեանս ունէիք։ Ընդէ՞ր պարարտեցուցանիցես զքո որովայնդ լիութեամբ, և զաղքատին ցամաքեցուցանես կարօտութ՜. զքոյդ կարի փտես խոնաւով, և զնորայն կարի ցամաքեցուցանես չորիւ։

Տես զինչ լինի 'ի կերակրոց, յո երթայ, ուր կործանի։ Զսոսկայցե՞ս գէթ 'ի բանիցս զոր լսիցես. զի այնչափ

Ճեպեալ համբարս համբարես 'ի ներքս. չլինի այլ ինչ՝ բայց միայն աղբ։ Զայն յայտ է բնութեան մարմնոյն, և աւելի կերակուրքն ոչ ինչ աւելի գործեն, այլ կարի իսկ վնաս։ Կերակրեա զմարմինդ, մի սպանանիցես. վասն այնորիկ կերակուր կոչի, զի կերակրիցիմք և ոչ սպականիցիմք. և թուի ինձ եթէ կերակուրն յայն սակս թրիք լինի, զի մի ցանգ 'ի բարեկեցութիւն հատանիցիմք։ Զի եթէ վասն այնպիսի ինչ իրաց էր, ոչ այնպէս ինչ անպիտան լինէր, և ոչ այնպէս վաղվաղակի թրքանայր 'ի մարմնոյն. և եթէ այն այնպէս չլինէր, չդադարէաք երբէք զմիմեանս ուտելոյ. զի եթէ որչափ կամիքն ուտել և որովայնն տանէր, մեծամեծ չարիք գործէին. և անդ լինէր տեսանել բիւրապատիկ պատերազմունս և ազգի ազգի ճակատամարտս։ Զի եթէ յաղբն դառնայ և յարիւն և 'ի խօղ և 'ի թուք և յաղտեղութիւն՝ այսչափ հարեալ եմք 'ի բարեկեցութիւն, և բազում անգամ զմեծամեծ ինչ մթերս 'ի մի սեղան ծախեմք. զի եթէ այնպիսի վախճան չէր կերակրոցն, զինչ ևս այլ ինչ ոչ գործէաք։ Աւելի ժանտիքն և չարաչար հոտովքն լնումք զանձինս. յորժամ կարի զխորտկօքն գայցեմք, իբրև տիկ ուռուցեալ նխտայցէ որովայնն, զգայռիցի թառանչիցէ տագնապիցէ. և բազում շոգոյ որ իբրև զծուխ ցոլացեալ 'ի մարմնոյն ելանիցէ և զուղեղ գլխոյն ապականիցէ։ Զի եթէ յարտաքին հոտոցն այնչափ վնասի ուղեղն, որչափ ինչ անտի որ անդէն 'ի ներքուստ 'ի ներքոյ յորովայնէն 'ի գլուխն տայցէ, որպիսի ինչ վտանգ զարիւնաբուղխ առուովք կայցէ, որ եռանն յեղանել և անդրէն նհանջին. որպիսի ինչ գայթ և շշուկ զերդիւն և զփայծաղամբն և կամ զաղբոյն գայռանոցօքն։

Եւ այն իսկ անհնարին աղէտք են, զի 'ի սպասու տանց զխողովակսն փոյթ յանձին ունիմք ցանգ սրբել, զի մի խնուցուն և զաղբն արտաքս չտայցեն, ազգի ազգի հայթայթանս հայթայթեմք՝ ձողիւք և երկայնակոթ ինչ մարկեղօք մաքրել, և զորովայնին գայռանոցսն և ոչ երբէք մաքրեմք, այլ խնումք և սերեկեմք, և աղբն միշտ անտի 'ի վեր բուրէ՝ ուր և թագաւորն իսկ նստիցի, զուղղոյն ասեմ, և չունիմք ինչ փոյթ յանձին։ Եւ արդ ընդէ՞ր չունիցիմք առ թագաւորս և առնիցեմք սպաս իւ-

րև Թագաւորի ուղղոյն՝ ուր խօսութիւն բնակեալ է , այլ իբրև զշուն մի վատթար եւ չար ծառայեցուցանեմք[1] ։ Վասն այսորիկ ած մեկուսի յաղբոյն անդամոյն բնակեցոյց զուղեղն , զի մի երբեք ճխանիցի ինչ անտի . և մեք չտամք թոյլ կալ 'ի հանդարտութեան , այլ զամենայն եղծանեմք ապականեմք անչափութբ ։

Եւ զայլ եւ չարեացն որպիսի՞ ոք բաւական է ասել . խից զխողովակս աղբանոցացն , և տեսանիցես զկարգ բուրէ ժանտութիւն , ուստի ախտն չար ծնանիցի , որչափ եւ առաւել որ անդրէն 'ի ներքս մղձկեալ ընդ յարկաւ մարմնոյն ելանիցէ և տարածիցի և ապականիցէ , յորժամ չիցէ ուրէք մարթ երևել , այլ անդէն մթերեալ յաճախիցէ ցաւս 'ի մարմինս և յօգիսն ։

Եւ այն եւ աղէտք են , զի ընդ ոյ բազում անգամ դժկամակ լինին . ընդէ՞ր , ասեն , այսպիսի ինչ արար ած զմեզ , զի հանապազ բարձեալ աղբ կրիցեմք . և ինքեանք եւ քան զևս յաճախեն զաղբն ։ Նմին իրի իսկ այնպէս կարգեաց ած , զի գէթ այնու փոքր մի 'ի բարեկեցութենէն ցածնուցուն , զի գոնէ այնու հաւանեցուցանէ չբեւեռել ընդ կեանս աշխարհիս ։ Սակայն և այնպէս ինչ չանսան ցածնուլ 'ի փափկութենէն , թէպէտ և հաց ցանկութեան մինչև 'ի կոկորդն զի միայն է մինչդեռ սեղանն առաջի կայցէ . և թէպէտ և այնպէս իսկ է , սակայն չդադարեն 'ի բարեկեցութենէն ։ Եւ եթէ չիցէ այնպէս , յորժամ ընդ լեզուն անցանիցէ և ընդ քիմսն պարզիցի և ընդ կոկորդն անցանիցէ՝ չերևի այնուհետև թէ զինչ համ կերակրոյն իցէ , քանզի 'ի ճաշակելն միայն ազդի , և այլ ոչ եւ ինչ թուի ախորժելի . այլ և ծանր և տաղտուկ և բեռն ստամոքսին , զի տաղտկայ և պաղատի ։ Ապա ուրեմն յիրաւի ասէ՝ եթէ զիրգն և անձնադիւրն կենդանւոյն մեռեալ է ։ Եւ չիք ինչ ասել և ոչ լսել զանձնդիւր մոլացն , քանզի մեղկն լուծանին յուժոյ , յարութենէ անապատք[2] , անպարկեշտք , չունին համարձակութիւն , 'ի ստկանս անկանին , 'ի ցախանս հատանին , յանդգնութիւն կարծանին , 'ի ցասումն բարկ բարկ շրջին , և ամենայն չարեօք լի լի-

1 Օրինակին գրեալ ցուցայցանէմք ։

2 Խանդարեալ էր բառդ յօրինակին ։

նին, և յամենայն բարեաց թափուր գտանին: Այր գիրգն և անձնդիւրն իցէ, կենդանւոյն մեռեալ է:

« Զայս պատուիրեա, ասէ, զի անարատք լինիցին »: Տեսանե՞ս զի օրէնս իսկ դնէ, և ոչ 'ի կամս ապաստան առնէ: Պատուէր տուր, ասէ, մի երթալ զհետ փափկութեան. իբրև յայտնի ինչ կարեաց 'ի վերայ սաստ դնէ, որպէս զի չէ իսկ հնար և ոչ մարթի անձնադիւրին սուրբ խորհրդոյն հաղորդ լինել: Զայս պատուիրեա, ասէ, զի անարատք լինիցին: Տեսանե՞ս զի ընդ մեղս համարեալ են իրքն: Այր ինչ ցկամս ապաստան իցէ, թէպէտ և չգործիցէ, չէ ինչ արգել անարատ լինել:

Այլ եթէ այս այսպէս իցէ, անսասցուք և մեք Պաւղոսի, պատուէր տացուք գիրգ այրեացն մեկուսի կալ 'ի համարոյ այրեացն: Զի եթէ զինուոր ոք որ զդաղանեօք և զթատերբ գայցէ, 'ի վաճառականութիւնս համանիցի, իբրև զասալիք պառաւի, որչափ ևս առաւել այրիքն: Մ՞ի խնդրեսցուք աստէն հանգիստ, զի անդէն գտանիցեմք հանգիստ. մի զղջեսցուք աստէն, զի անդ զղջիցիմք, որ արդարեւ գրգութի̅ է և ճշմարիտ փափկութիւն է, որ չծնանի միշտ, այլ լի է ամենայն բարութեամբք. որոց լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

« Զի եթէ ոք իւրոց՝ մանաւանդ ընտանեաց խնամ ոչ տանիցի, ուրացեալ է 'ի հաւատոցն, և չար ևս քան զանհաւատն »:

Բազումք այսպէս համարին թէ բաւական ինչ իցէ անձանց փրկութեան անձանց առաքինութիւն. թէ իւրեանց միայն ուղղութիւն վարուցն առնիցեն, չէ ինչ նոցա պակաս 'ի փրկութենէ: Բայց չկարծեն ուղիղ: Այլ զայս յայտ առնէ որ զմի տաղանդն առ և թաքոյց.

քանզի ոչ եթէ ծախեաց ինչ անտի, այլ եբեր մատոյց առաջի բովանդակ, և զնոյն իսկ զոր առ յաւանդ՝ ետ: Ցուցանէ և աստ երանելին Պաւղոս, "Եթէ ոք, ասէ, խնամ ընտանեաց ոչ տանիցի": Խնամ, զամենայն իսկ զարմանան ասէ, զոգւոյ և զմարմնոյ, քանզի այն իսկ է խնամն: Որ ոք իւրոց և մանաւանդ ընտանեացն խնամ ոչ տանիցի. այսինքն, թէ ոք ազգականաց և ընտանեաց խնամ ոչ տանիցի, եւս չար է քան զանհաւատն: Զոր և Եսայի գլուխ մարգարէիցն ասէ՝ եթէ "Յարենէ քումմէ ակն մի արկանիցես": Եթէ ոք յազգականաց և յընտանեաց ակն 'ի վայր արկանիցէ, զիա՞րդ առ այլս գութս ցուցանիցէ: Իսկ եթէ առնէ, ասիցեն ամենեքին՝ եթէ սնապարծութեան գործ է, յորժամ այլոց բարիս առնէ և զիւրս 'ի մուրացութիւն տանիցէ և անփոյթ առնիցէ, թէպէտ և բազում գիրութիւն ունիցի և մեծ իսկ պատճառս խնամոյ: Քանզի և չկոչեն իսկ գթած քրիստոնեայքն զայնպիսիսն որք զիւրեանցն զոք անտես առնիցեն:

"Եւս չար է, ասէ, քան զանհաւատն": Զի նա թէպէտ և ոչ զայլս՝ սակայն զիւրսն չառնէ անտես. այն իսկ գրեթէ այ օրինացն և հասարակաց բնութեանն մեղանչէ որ ընտանեացն չտանիցի խնամ: Իսկ եթէ որ խնամն չտանիցի ընտանեաց, 'ի հաւատոց ուրացեալ իցէ՝ եւս չար քան զանհաւատն, որ մեղանչիցէ եւս ընտանեացն՝ յո՞ր խաւար երթայցէ, ո՞ւր հասանիցէ: Իսկ զիա՞րդ ոք ուրանայցէ 'ի հաւատոցն: "Զած, ասէ, խոստանան ճանաչել, և գործովք ուրացեալ են": Զինչ պատուիրիցէ հաւատարիմն ած յոր հաւատալն պարտ է. ո՞չ ապաքէն թէ յարենէ քումմէ զակն մի արկանիցես: Իսկ զիա՞րդ կարիցէ հաւատալ յած՝ որ այնպիսի ինչ արար անձամբ զանձն: Իսկ արդ 'ի միտ առնուցումք որ յինչսն խնայիցեմք, և զընտանեացն և զմտերմաց անփոյթ առնիցեմք. զի ած և ազգականութեամբ կարգեաց զմիաբանութիւն, զի բազում պատճառք լինիցին առնելոյ միմեանց բարիս: Իսկ որովհետեւ զոր ինչ անհաւատն առնէ՝ չառնիցես, չիցես ուրացեալ 'ի հաւատոցն: Ապա ուրեմն ոչ հաւատալն միայն է դաւանութիւն հաւատոցն, այլ և գործս արժանաւորս ցուցանել. և ըստ իւրաքանչիւրոցն է հաւատալ և չհաւատալ:

Այլ քանզի զփափկութենէ և զզրգանաց խօսեցաւ, ոչ միայն, ասէ, փափկութեամբն և գրգութեամբ մի-այն կորնչիցի, այլ զի անտի պատճառս առնու առնելոյ անտես զընտանիսն: Այլ արդարեւ իսկ որկորեայն և որ-կրամոլութեամբն իսկ ուրանայ զհաւատսն և կորնչի, ե-թէ այր իցէ և եթէ կին: “Այս չար է, ասէ, քան զանհաւատսն”: Քանզի չէ ընդ մի համար զիւրսն ան-տես առնել և զօտարսն. այլ անդ մեծ մեղադրութիւն է յորժամ զընտանիսն և զջերմ զծանօթսն և զազգա-կանս անտես առնիցէ:

“Այրին ընդ այրիս համարեսցի, որ չէ պակաս ՚ի վաթսունամենից, միոյ առն կին, և ՚ի գործս բարիս վկայեալ”: Ապաց՝ եթէ ուսանիցին նախ իւրեանց տանն բարեպաշտել, և փոխարէնս երախտիս հօր և մօրն զար-ձուցանել. և եթէ որ գիրգն է, կենդանւոյն մեռեալ է, և եթէ որ ընտանեացն իւրոյ ոչ տանիցի, չար է քան զանհաւատսն. և այրին որ գործս բարիս չունիցի, մեկուսի կայցէ յայրեացն համարոյ. ասէ և ասա թէ զինչ ինչ պարտ իցէ ունել յանձին այրեացն: Այլ արդ ՚ի ժամանակացն ինչ պարտ իցէ համարել զարժանա-ւորութիւն. և ո՞ւր է զի անդ ուղղութիւն կայցէ, մի-թէ նորա՞ ինչ ուղղութիւն գործիցէ վաթսունամեայն լինել: Ոչ ասեմ, ասէ, զտիոյն միայն. որպէս թէ և ան-ցեալ իցէ քան զտիոյն տիս և գործս բարիս չունիցի, մի՛ համարեսցի ընդ այրիս: Եթէ յոր տարիս զտիոյն հա-ւատոյս ճշգիւ խնդրիցէ, յետոյ ասէ, ոչ եթէ յանձ-նէ, այլ ՚ի նոցանէ իսկ յայրեացն երեւել: Բայց առ այժմ յաջորդացն լուիցուք:

“Ի գործս բարիս, ասէ, վկայեալ”: Յորպիսի՞ ինչ գործս. “Եթէ մանկունս, ասէ, սնուցեալ իցէ”: Այլ արդարեւ իսկ չէ փոքր գործ, ասէ, զորդիս սնուցանել. զի որդիս սնուցանել՝ ոչ միայն սնուցանելն, այլ թէ և որպէս պարտ իցէ սնուցանել. որպէս և վերագոյն ա-սաց, “եթէ կայցեն ՚ի հաւատս և ՚ի սէր և ՚ի սրբու-թիւն”: Տեսանե՞ս զիարդ ամենայն ուրեք զընտանեաց երախտիս քան զօտարացն նախամեծար համարի: Քան-զի նախ ասէ, եթէ մանկունս սնուցեալ իցէ, և ապա՝ թէ “Ո հիւրս ընկալեալ և զոտս սրբոց լուացեալ և նեղելոց բաւական լեալ և զամենայն գործոց բարեաց զհետ երթեալ”:

Այլ եթէ աղքատ իցէ, ասեն, զի՞ գործիցէ։ Նա և ոչ այնպէս 'ի մանկութեան սնուցանելոյ և զհիւրս ընդունելոյ և նեղելոց բաւական լինելոյ զրկեալ գտանի եթէ կամիցի։ Քանզի չիք այլ չքաւորութիւն սաստիկ քան զերկուց բնիմանց։ Թէպէտ և աղքատ է, սակայն տուն ունիցի, զի ոչ եթէ ցանց բացօթեայ ազգականքն իցեն։ "Եթէ սրբոց զոտս լուացեալ"։ Զիք ինչ և անդ ծախք մեծամեծք, այլ ջուր լոկ։ "Եթէ բազում գործոց բարեաց զհետ երթեալ իցէ"։ Որպիսի՞ ինչ պատուէրս տայ. զմնորինոյ սպասաւորութիւն հրամայէ նպաստ լինել, զի սպասաւորութեանն կարի յանկ են կանայք, ընկողինս արկանել, զոտս լուանալ, սպաս առնել։

Նաքէ որպիսի՞ ինչ հաւատարիս պահանջէ յայրւոյն, գրեթէ իբրև յեպիսկոպոսէն։ "Եթէ զամենայն գործոց բարեաց զհետ երթեալ իցէ", ասէ։ Եթէ ինքն չիցէ ինչ բաւական այնպիսի ինչ գործս գործել, սակայն հաղորդ լինիցի սպասաւորութեանցն, զգրգութիւն և զփափկութիւնս խափանել. և սպասել և խնամակալ հրամայէ լինել, մարթուչ, հպատակ, աղօթից ստէպ կալ. այնպիսի իսկ էր և Աննա։ Տես որպիսի ինչ հաւատարիս պահանջէ յայրւոյն, որպէս և ոչ 'ի կուսանացն իսկ։ Բայց սակայն և 'ի նոցանէ բազում ինչ հաւատարիս և սերտ առաքինութիւն, ասելովն՝ եթէ պարկեշտութեամբ և բարուք հպատակութեամբ տեառն առանց զբաղմանց։ Տեսանե՞ս զկարգ ընդ միով բանիւ բովանդակեալ փակէ զամենայն առաքինութիւն։ Հայնս զի ոչ զերկրորդ ամուսնութիւնն չամուսնանալ բաւական է սերտիւ ցուցանել զայրին այրի, այլ և այլոց բազում իրաց պէտք են։

Այլ արդ ասէ ոմն, ընդէ՞ր չամուսնանայցէ զերկրորդ ամուսնութիւն, միթէ վասն զգործն ինչ խոտելոյ. և ոչ ուրեք, զի այն հերձուածողաց միտք են. այլ պարապել կամի այնու հետև հոգևորացն, և առաքինութեան պատկառ կալ. զի ոչ եթէ պղծութեան, այլ անպարապութեան պատճառք են ամուսնութիւն. և յայն սակս իսկ չամուսնանաս, զի ա̃յ երկիւղին պարապիցես. ապա եթէ չպարապիցես՝ չէ ինչ քեզ օգուտ յամուսնութենէն հեռանալ, զի զամենայն սպասաւորութիւն առ օտարսն ցուցանիցես, 'ի տուրսն ծախել զվաստակսն. յորժամ

զայն չառնիցես, յայտ է թէ խոտելոյ վասն 'ի բաց կացեր յամուսնութենէն: Նոյնպէս և կուսանն եթէ ոչ սերտիւ խաչեալ իցէ, յայտ է թէ զամուսնութիւն խոտելոյ վասն իբրև 'ի պղծոյ ինչ և յաղտեղւոյ հրաժարեալ 'ի գործոյն:

Տեսանես զի հիւրամեծարութիւն ոչ զվայրապար խորախճանութիւնս ասէ, այլ և զփութոյն և զհամոյն որ 'ի լուրջ մտացն լինիցի և ցանկութք կամացն և պարկեշտութք, յորժամ ոչ իբրև զմարդ, այլ իբրև զՔրիստոս պաշտեսցէ զհիւրսն: Այրիքն չմարթի թէ ազախնացն հրամայիցեն, այլ զի ինքեանք իւրեանց ձեռօքն պաշտիցեն: Քրիստոս ասէ. զի եթէ ես լուացի զոտս աշակերտացդ, որչափ ևս առաւել դուք զդոյն առնել միմեանց: Զի թէ կարի իսկ մեծատուն իցէ այրին և յերևելեաց և յազնուականաց և յաւագաց նախնեաց, չպարտի յօրանալ և ոչ դանդաղել և անարգութիւն համարել. զի չէ ինչ այնչափ ընդ նա և ընդ հիւրն 'ի միջի, որչափ ընդ Քրիստոս և ընդ աշակերտսն: Եթէ իբրև զՔրիստոս ընդունիս՝ մի ինչ ամօթ համարիցիս, այլ եթէ պարծիցիս և յօրանայցես: Իսկ եթէ չընդունիցիս իբրև զՔրիստոս, բնաւ մի իսկ ընդունիցիս. «Որ ընդունի, ասէ, զձեզ, զիս ընդունի»: Իսկ եթէ այնպէս չընդունիս, ապա և ոչ վարձս չառնուցուս:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Արս անցաւորս իբրև ճանապարհորդս որք ընկալաւ Աբրահամ. չհրամայեաց ծառայիցն սպաս առնել, այլ ինքնին ընթացաւ յանդեայն, և կնոջն հրամայեաց հացս թխել. Թէպէտ և երեքհարիւր և ութևտասն ընդածինս ունէր, և թերևս նոյնպէս և աղախնեայս ևս, այլ ինքն կամեցաւ առնուլ զվարձս ամուսնաւն հանդերձ, ոչ ընդ ծախիցն միայն, այլ և ընդ սպասաւորութեանն:

Այնպիսի օտարասիրութիւն պարտ է և մեզ ցուցանել. անձամբ կալ 'ի սպասու, զի մեք իսկ սրբեցիցեք, զի մերոյն իսկ ձեռօքս օրհնեսցին. Թէպէտ և ուրկի տայցես, քոյով իսկ ձեռօքդ տացիր, և մի գարշեսջիր քեզէն պաշտել. քանզի ոչ եթէ աղքատին տայցես, այլ Քրիստոսի: Ո՞ ոք այնչափ թշուառական կայցէ, որ և

'ի Քրիստոս անգամ ձեռն ձգել զարշի : Նոյն է օտարասիրութիւն, և այն է արդարեւ որ վասն այ գործ գործի · ապա եթէ ամբարտաւանութեամբ հրամայիցես, թէպէտ և բազում ինչ առաջի կուտիցես, չէ օտարասիրութեան նշանակ : Բազում դարմանք պիտոյ են հիւրոյն, և կարի այն իսկ՝ զի ոչ ինչ յամօթ լինիցի · քանզի այնպիսի բարք են իւրացն · որ յերախտիս ուրուք վայելիցէ, հարկ է պատկառել : Եւ պարտ է հիւրասիրին և զամօթն 'ի բաց քերել, և բանիւք և արդեամբք զբօսուցանել, զի ոչ եթէ առնիցէ երախտիս, այլ առնու · և ինքն զառնէ բարի՝ յորժամ զբարիսն առնիցէ · և ևս յառաւելութիւն գայ 'ի բարիսն կամացն : Զոր օրինակ որ փոխան համարիցի՝ զամենայն կորուսանիցէ, և որ երախտիս համարիցի՝ զնոյն վաստկէ, նոյնպէս և որ համարիցի թէ իւր լինիցին երախտիքն, բազմապատիկ առնու : "Զտուրս, ասէ, զուարթառատս սիրէ ած" :

Զնորհս պարտ է համարել աղքատին՝ յորժամ առնուցու · զի թէ աղքատք չէին, ապա ոչ ևս կարէիր կտրել զառատին վէրս մեղացն · բժիշկ վիրաց են աղքատք իմաստնոց, դեղս մատուցանեն քեզ ձեռօքն՝ յորժամ ձգիցեն · ոչ այնպէս բժիշկ ձգէ զձեռն և մատուցանէ դեղս տալ բժշկութեան, որպէս աղքատն ձգէ ձեռն և առնու 'ի քէն · դաստառակ մեղաց քոց են աղքատք · ետուր արծաթ, հաներ ընդ նմին և զմեղսն :

Զնոյն գործ գործեն և քահանայք : "Զմեղս ժողովրդեան իմոյ, ասէ, կերիցեն" · որպէս զի մեծ են զոր առնուն քան զոր տայցեն · երախտիս առնու քան թէ երախտիս առնիցես : Աստուծոյ փոխ տաս և ոչ մարդկան · աճեցուցանիցես զմեծութիւն, և ոչ կասեցուցանես · կասեցուցանես թէ խնայես, թէ չտայցես : "Եթէ զհիւրս, ասէ, ընկալեալ իցէ և զսրբոց ոտս լուացեալ" · զորպիսի՞ սրբոց · զնեղելոցն, և ոչ եթէ զվայրապար սրբոց : Քանզի են սուրբք որ բազում պատիւս առնուն յամենեցունց · մի զայնպիսի սրբոց եւեթ զհետ երթալ՝ որ 'ի լիութեանն իցեն · այլ նեղելոցն պատկառ կալ, որոց չգուցեն ծանօթք և չիցեն առ ամենեսեան երևելիք : "Որ արար, ասէ, միում 'ի փոքրկանցս հաւատացելոց, ինձ արար" :

Մի՛ տայցես առաջնորդաց եկեղեցւոյն բաշխել, այլ դու քեզէն պաշտեսջիր. զի մի միայն ընդ ծախուցն, այլ և ընդ պաշտելոյն առնուցուս վարձս. քոյին ձեռօքդ տուր, դու քեզէն սերմանեա յակօսս. չիք անդ արօր, չիք մաճ ունել, և ոչ եզինս հարկաց լծել, և ոչ ժամանակի մնալ, և ոչ զկորդ ձլել[1], և ընդ ցուրտ կռուել. յամենայնէ յայնպիսի դանդաղանաց ազատ է սերմն. քանզի յերկինս սերմանես, ուր ոչ ցուրտն է և ոչ ձմեռն և ոչ այլ ինչ վնասակար. յոգիս սերմանես, ուստի ոչ ոք ինչ կարիցէ առնուլ, այլ պինդ ունին, և զեմեղ[2] պահեն բազում հաւատեօք և մեծամեծ փութով:

Սերմանես, ընդէ՞ր զրկիցիս յայնպիսի վարձուց, որ բաւական են և զայլս կերակրել. զի ոչ տուրքն միայն վարձք են, այլ և բարիօքն մատակարարել զտուրսն. ընդէ՞ր իսկ դու քեզէն չառնուցուս զվարձսն: Զի անձամբն ես պաշտելոյ վարձք են՝ լուր. կացուցին, ասէ, առաքեալքն զստեփանոսեանսն յայրեացն մատակարարութեան: Քեզէն լեր քոյոցդ մատակարար: Եւ ո՞վ իցէ որ քեզ զձեռնադրութիւնն տայցէ: Սրբասիրութիւնն և ա̃յ երկիւղն, որ հեռի է 'ի սնապարծութենէ, որ զոգիսն հանգուցանէ, որ զձեռսն սրբէ, որ զհպարտութիւնն ցածուցանէ, որ զգաստութիւն ուսուցանէ, որ յօժարագոյնն առնէ, որ զօրհնութիւնն տայ քեզ առնուլ, յորժամ երթեալ խոնարհիցիս և յայրեացն առնուցուս զօրհնութիւն:

Յորդորեա՛ց յաղօթս, շուրջանակի 'ի խոյզ արկեալ խնդրեսջիր զայս սուրբս որ արդարև սուրբքն իցեն, որ յանապատն նստիցին, որք չկարիցենն մուրանալ, որք ընդ ա̃յ ևեթ նայիցին. երթիցես հեռի ճանապարհ, և քեզէն իսկ տարջիր. քանզի բազում շահ է՝ յորժամ անձամբ իսկ բաշխիցես: Անդ տեսանիցես տաղաւարս և գետնափորս փոխանակ տաճարաց և ապարանից. զանապատն տեսանիցես, զմենութիւնն[3] նշմարիցես: Եւ թերևս մինչ դեռ զտուրսն տայցես, և զանձն ես գրաւիցես՝ անկանիցիս 'ի բարիօք կափուլն, և լինիցիս նոցին գերեկից, և ընդ նոսին օտարանայցես յաշխարհէ:

1 Մխւան ցելուլ:
2 Մխւան զէփեղ:
3 Մխւան զմենաւորութիւն : . . Խոյ 'ի լուսին :

Մեծ գործ է և զաղքատսն տեսանել։ «Լաւ է, ասէ, երթալ 'ի տուն սգոյ քան 'ի տուն ծաղու»։ Անդ ըմբռնիցին միտքդ, և եթէ դու ևս նոյնպէս ծաղկու իցես՝ ևս աւելի դրդիցիս 'ի լկտութիւն. և եթէ չիցես այնպիսի որ՝ տրտմութեամբ զգածնուցուս։ Իսկ 'ի լալիւնս ոչ այնպիսի ինչ. այլ թէ չհասանիցէ զբօսնուլ, չտրտմիս. և եթէ լկտութի ինչ ունիցիս՝ ցածուցանես։

Արդարեւ տուն սգոյ է վանորայն, ուր խորգն և մոխիրն է, ուր մենութիւնն է, ուր չիք ծաղր և ոչ մարմնաւոր ինչ իրաց թախանձութիւն. ուր պահքն են և գետնատարած խշտիք. ամենեւին սուրբ 'ի ճենճերոյ, սուրբ յարենէ, յատակ 'ի խռովութենէ և յաղմկէ, 'ի բազմաթախանձ զբօսանաց, անքոյթ նաւահանգիստ, խաղաղ 'ի հողմոց և 'ի մրրկաց։ Լապտերք հաստատեալք 'ի բարձունս, ամենեցուն որ անդր դիմեսցեն՝ բացէ 'ի բաց երեւին. յապահով՝ և զայլոց յուրեանց խաղաղութիւնն ձգեսցեն. չտան հողմակոծել նաւաց որ 'ի նոսա դիմեսցեն. չտան 'ի խաւարի շրջել այնոցիկ որ անդր հայիցին։ Անդր երթիջիր, զնոսա յանկուցանիջիր[1], անդր ցուցանիջիր զօտարասիրութիւն. մատուցեալ բուռն հարկանիցես զորբոցն ոտից, զի 'ի նոցա ոտն լաւ իցէ մերձենալ քան զայլոց գլուխս համբուրել։ Եթէ զպատկերաց ոտից յորժամ բուռն հարկանիցեն յանցաւորք՝ որք յանուն թագաւորացն հաստատեալ կայցեն, հասանեն օճանի. իսկ դու զայն որ ըզՔրիստոս նկարեալ ունիցի յանձին՝ հարկանես բուռն զոտիցն, ո՞չ ապաքէն առաւել գտանիցես զփրկութիւն։ Իսկ պղծոցն և ոչ գլուխն պատուական է. բայց սրբոցն ոտք բազում զօրութիւնս ցուցանեն. քանզի և տանջել կարող են՝ յորժամ զփոշի ոտիցն 'ի վերայ թօթափիցեն։ Յորժամ սուրբքն մօտ են առ մեզ, մի ինչ ամօթ զնոցա տկարութիւնն համարեսցիք։ Սուրբ են ամենեքեան որք զուղիղ հաւատոն հանդերձ վարուքն ունիցին. զի թէպէտ և նշանս չառնիցեն և դևս չհանիցեն, այլ սուրբք են. «Եթէ զորբոց, ասէ, զոտս լուացեալ իցէ»։

Որպէս յերկրէ յերկինս՝ այնպէս համարիջիր 'ի սըր-

1 Ճառընտ. հանգուցանիջիր։

բոց վասն փախստական լինել. չտեսանիցես ինչ անդ այնպիսի զոր 'ի տունս ամենեցուն տեսանես. զի այն բնակութիւն պարկեշտութիւն և լռութիւն է և բազում հանդարտութիւն. չիք անդ սա իմ, սա քո: Եթէ մի օր լինիցիս կամ երկուս, և ս քան զևս կարի իմն ըղձաս ցանկութեանն: Յորժամ հաւ զառաջինն խօսիցի, ոչ որպէս աստ՝ 'ի տունս խորդան ծառայք, դուռք փակեալ, և ամենեքին նման մեռելոց կան ծանրաթունք[1]. և պահայոյզն[2] միայն զգանգական գանգաչեցուցանէ. չիք անդ այսպիսի ինչ, այլ վաղվաղակի ամենեքին միանգամայն երկիւղիւ զքունն թօթափեալ յառնեն կան առ հասարակ: Յորժամ գլխաւորն ազդ կամ ոտամբ կամ ձայնիւ ածիցէ, 'ի զգաստական պարսն յօրինեալք, գունդ առ գունդ կացուցեալք, ամենեցուն առ հասարակ զձեռս յերկինս համբարձեալ՝ զնուիրական օրհնութիւնսն երգեն միահամուռ: Ոչ մեզ նմանեալք բազում ժամուց կարօտանան, մինչ զքունն յաչաց թափիցեն և զգլխագար թմբրութիւնն:

Իսկ մեք յորժամ զարթնուցումք, բազում ժամս ընդ քորելն և ընդ քաշքռտելս և ընդ թանչելն և ընդ թաւանչելն հանեմք. ապա ուրեմն ըղձացեալք զկարեւոր պէտսն վճարեմք. ապա զձեռս լուանամք, օդ և ձորձս խնդրեմք, և բազում ժամս ծախեմք: Իսկ անդ չիք ոք այնպիսի. չիք ոք որ զպատանիս կոչիցէ, և ոչ որ ծառայի հրաման տայցէ. իւրաքանչիւր անձանց բաւական են կալ 'ի սպասսու: Ոչ բազում հանդերձից կարօտանան, և ոչ մինչ քունն յաչաց թօթափիցի. այլ անդէն մինչ զաչսն բանայցեն՝ քան զվաղուց արթունս ևս արթունք գտանին: Յորժամ սիրտն չիցէ ծանրացեալ 'ի պէսպէս կերակրոցն, ոչ 'ի վայր հակիցէ, և ոչ 'ի խմարոց մթիցէ, և ոչ բազում ժամուց կարօտանայցէ՝ մինչ ուշաբերեալ զուարթանայցէ: Ձեռք սուրբք յաղտեղութենց. քուն անոյշ և հեշտական. չկայ ոք անդ զձայն խորդալոյ և ոչ շշնջելոյ և ոչ զմռնչելոյ, և ոչ զձգտելոյ և զյօրանջելոյ: Նա և ընդ քուն չմերկանան. այլ ևս զգաստացեալ քան 'ի լրջէ՝ 'ի քունն գտանին. և այն ամե-

1 Ճառընտ. ծանրաթափանք.. գան- ընթացուցանէ:

2 Օրինակ մի պահապանողն:

նայն յօրինուածք 'ի լուսաւորութենէ ոգւոյն յար-դարին:

Արդարեւ սուրբք և պարկեշտք, և 'ի մէջ մարդկան հրեշտակք. քանզի բազում երկիւղին այ չտայ 'ի խոր քուն ընկղմել մտացն. այլ ծանծաղագոյնս յաղուեստա-քունս միայն զքաղցր ցանկութիւն քնոյն ևեթ կատա-րեն: Այնպիսի ինչ նոցա և երազքն, ոչ սահանք և ոչ ծփանք, և ոչ ցնորք առ աչօք. այլ որպէս վերագոյնն ասացի՝ իբրև զառաջինն հաւ խօսիցի, և կամ թէ ևս վաղագոյն յարուցեալ վարդապետն, և եթէ միանգամ միայն դոփիցէ ոտամբ՝ ընդոստուցանէ վաղվաղակի զա-մենեսեան և յարուցանէ. քանզի և ոչ մերկ ննջել ու-մեք անդ իշխանութիւն է: Ապա յարուցեալ կան միան-գամայն, և միահաղաղ երգեն զմարգարէական օրհնու-թիւնս գեղգեղեալ ձայնիւք և յօրինեալ բարբառովք և ազգի ազգի կցորդիւք. որում ոչ ձայն քնարի, և ոչ գոչիւն սրնգի նման է, և ոչ բազմախառն[1] փողք տաւ-ղաց այնպիսի ինչ ձայնս յօրինեն. զի այնպէս հեշտա-կանս և քաղցունս բարբառին: Յամուրս անապատին, 'ի խոր խաղաղութեան երգեն զերգս սրբոցն, որ կարի իմն վայելուչք և պատշաճք են մերձեցուցանել 'ի սէրն այ. "Ի գիշերի, ասէ, համբարձէք զձեռս ձեր 'ի սըր-բութիւն և օրհնեցէք զտր". և "Ի գիշերաց կանխէ հոգի իմ առ քեզ այ, զի լոյս են հրամանք քո 'ի վե-րայ երկրի". և զաւաղմանն գաւթականս, որ բազում աղբիւրս արտասուաց յորդեն, յորժամ նուագեալ եր-գիցէ, եթէ "Աշխատեցայ ես 'ի հեծութեան իմում. լուացի զամենայն գիշեր զմահիճս իմ, և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի". և դարձեալ՝ եթէ "Զի մո-խիր որպէս զհաց կերայ, և զըմպելիս իմ արտասուօք խառնեցի". և դարձեալ՝ եթէ "Զինչ է մարդ զի յի-շես դու զնա". և "Մարդ նանրութեան նմանեաց, և ա-ւուրք մեր իբրև զստուեր անցանեն". և դարձեալ՝ եթէ "Մի երկնչիր, յորժամ մեծանայ մարդ, և յորժամ բազում լինին փառք տան նորա". և դարձեալ՝ եթէ "Որ բնակեցուցանէ զմիակրօնս 'ի տան". և թէ "Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ". և դարձեալ՝ "Ի

1 Օրինակ մի բազմախառն. Ձեռ. բազմախօս:

մէջ գիշերի յառնէի խոստովան լինել առ քեզ„. և
թէ "Ստուած փրկեսցէ զանձն իմ 'ի ձեռաց դժո-
խոց„. և դարձեալ՝ "Թէպէտ և գնացից ես 'ի մէջ
ստուերաց մահու, ոչ երկեայց ես 'ի չարէ, զի դու Տէր
ընդ իս ես„. և դարձեալ՝ թէ "Ոչ երկիցես դու յեր-
կիւղէ գիշերի և ոչ 'ի նետէ որ թռչի 'ի տուէ. յիրէ որ
գնայ 'ի խաւարի, 'ի գայթակղութենէ դիւին 'ի հասա-
րակ աւուր„. և "Համարեցայք իբրև զոչխար 'ի սպա-
նումն„. և յորժամ ընդ հրեշտակս եւ օրհնիցեն, քան-
զի և հրեշտակք երգեն յայնժամ ընդ նոսա. եթէ
"Օրհնեցէք զտէր յերկնից, օրհնեցէք զնա 'ի բար-
ձանց„. և մեք յօրանջիցեմք, ձգձգիցիմք, քաշքշիցիմք,
քաշքշտիցեմք, հնչիցեմք, խորդայցեմք, այսր անդր յեղ-
յեղիցիմք, և յորսայս խաղայցեմք, և ազգի ազգի հրա-
պուրանս զմտաւ ածիցեմք, մինչ նոքա զգիշերն ամենայն
ընդ օրհնութիւնս հանիցեն:

Արդ յորժամ այդ լինիցի, հանգչին փոքր մի. և յոր-
ժամ մեք ընդ գործ խառնիցիմք, նոքա խումն քնոյն
յագեալք և հանգուցեալք, դարձեալ միւսանգամ յօրհ-
նութիւնս կազմիցին: Իսկ մեք չև այդ եղեալ, իւրա-
քանչիւր զընկեր կոչեմք համարս պահանջել. և կեամք
ընդ հրապարակս ձեռն առեալ շողայցեմք. այլք առ իշ-
խանս կանխեալք յահի և 'ի դադմանս կայցեն՝ եթէ
զիարդ 'ի պատուհասից ապրեսցին. այլք 'ի բաղանիս,
և այլք յիւրաքանչիւր պէտս: Իսկ նոքա՝ դարձեալ իբ-
րև զառաւօտին զաղօթսն և զօրհնութիւնս կատարի-
ցեն, ապա յընթերցուածս գրոց շրջին. ունին իսկ ըն-
ճարտարութիւն գրչութեանց ուսեալ, իւրաքանչիւր ա-
ռանձինն սենեկիկ առեալ, կամ բնաւ միայն կամ միով
ընկերաւ, միշտ սկէ ցածութեամբ՝ ոչ շատախօսել, ոչ
շաղակրատել, և ոչ զանօգուտս բարբառել: Երեք
ժամն, զհասարակ աւուր, զինն ժամն և զերեկորին ա-
ղօթսն ցանկ անխափան կատարեն. 'ի չորս բաժինս բա-
ժանեալ զօրն՝ ըստ իւրաքանչիւր մասանցն տագնապիւք
և օրհնութեամբ պատուեն զնա:

Իսկ մեք ամենեքին ճաշիցեմք, խաղայցեմք, ծի-
ծաղիցեմք, ուռուցանիցեմք զորովայնս, որկորստութ-
շուայտիցիմք, մզուիցեմք, նոքա օրհնութեամբքն զմայլ-
լիցին: Զիք ժամ սեզանոյ և ոչ խորտկաց յառաջ բե-

րելոց․ և դարձեալ յետ ճաշոյ 'ի նոյն ոճ մատուցեալք՝
կամ պատկառ օրհնութեանցն ։ Աշխարհականք և ցե-
րեկն նմջեն, նոքա ցանկ արթունք և պատրաստք 'ի պաշ-
տաման․ արդարեւ որդիք լուսոյ են և որդիք տուըն-
ջեան ։ Իսկ քանզի աշխարհականք բազում ժամս յա-
մեն 'ի քունն, յարուցեալ դանդաղեն իբրև զխելա-
գարս․ իսկ նոքա տակաւին սկեն, անսուաղք տանոց հա-
ցի, և միայն օրհնութեանցն ուշ ունին ։
Այս իբրև երեկոյ լինիցի, կէսք 'ի բաղանիս և 'ի
հանգիստ ձեպլին․ իսկ նոքա վայելեալք ցերեկութեանն
վաստակօք, 'ի չորաքեկ սեղանն մատչին ։ Ոչ ղեազմու-
թիւն ծառայից յարուցանեն և ոչ զտունս դղորդեն, ոչ
խռովլին և ոչ աղմկլին, և ոչ խորտիկք յօրինեալք առա-
ջի մտանեն, ոչ հոտ ձենձերոյ, և ոչ համադամք կե-
րակրոց․ այլ ոմն հացիկ և աղիկ, և ոմանք իւղիկ ևս
յաւելուն․ և որ ևս տկարագոյնք իցեն՝ բանջարիկ ևս
խառնեն, և դեղահունդս և ոսպնեայս ։ Եւ նստեալ՝ և
անդրէն յօրհնութիւնս յորդորին ։ Իսկ յորժամ հանգ-
չել կամիցին, 'ի խոտեղէն խշտեկին հանգչիցին․ ոչ փափ-
կութիւն, ոչ գրգութիւն․ ոչ ահ իշխանաց և ոչ սաստ
տերանց, ոչ երկիւղ ծառայից և ոչ աղմուկ կանանց, և
ոչ մանկանց խռովութիւն, ոչ սպասք բազմամբոխք և
ոչ փոխանակ հանդերձից, ոչ ոսկի և ոչ արծաթ, և ոչ
պահպանութիւնք ներքնոց և արտաքնոց, ոչ շտեմա-
րանք և մառանք, և ոչ այլ ինչ նոյնպիսի․ այլ ամենևին
ամենայն լի աղօթիւք և օրհնութեամբք, ամենևին ա-
մենայն հոգևոր անուշութիւնք․ չիք անդ ինչ մարմնա-
ւոր ։ Ոչ կասկած 'ի գողոց և ոչ երկիւղ յաւազակաց,
չիք ինչ որում զգասիցին, քանզի չիք ինչք և կարասի․
մարմին միայն իցէ և ոգի․ և եթէ զայն ոք հանիցէ,
չվնասին ինչ, այլ օգտին․ ըստ այնմ՝ թէ “Ինձ կեանք
Քրիստոս է, և մեռանել շահ„․ 'ի կապոյ արձակին,
'ի բանդէ ելանեն ։
Արդարեւ անդ է տեսանել “Զայն ցնծութեան և
ուրախութեան յարկս արդարոց„․ չիք անդ լսել ձայն
ողբոց և ոչ զճչիւն և զգուժիւն․ քանզի սուրբ են յարկք
նոցա յայնպիսի յաղմկոյ, և յստակ և պարզ յայնպիսի
աղաղակէ ։ Իսկ զի մեռանին և նոքա, քանզի չունին ան-
մահ մարմին, այլ չգիտեն զմահ մահ․ քանզի օրհնու-

թեամբ յուղարկեն զգնացեալսն։ Յուղարկաւորութիւն կոչեն, և ոչ դիահանութիւն. և յորժամ ասիցեն թէ այս անուն վախճանեցաւ, բազում ուրախութիւն լինի, տաւել ցնծութիւն. մանաւանդ զի չիշխէ ոք ասել թէ այս անուն վախճանեցաւ, այլ թէ կատարեցաւ։ Ընդ առնին գոհութիւնք և փառք և բազում բերկրութիւնք. իւրաքանչիւր աղօթս մատուցանեն՝ այնպիսի վախճանի արժանի լինել, նոյնպէս ելանել 'ի պատերազմէ, հանգ-չել 'ի վաստակոց և 'ի ձգանց, տեսանել զՔրիստոս։ Այլ յորժամ խօթանայցէ ոք, ոչ արտասուք, ոչ ողբք, այլ դարձեալ աղօթք. ոչ բժշկաց ձեռք, այլ հաւատք միայն բազում անգամ յախտէն զերծուցանեն։ Այլ ե-թէ բժշկաց պէտք լինիցին, սակայն և անդ բազում զգաստութիւն է, բազում ժուժկալութիւն. ոչ կին հերարձակ առ մնարսն, և ոչ որդիք՝ որ չև ևս գիտիցեն զչափ որբութեան՝ լալ, տաատանալ և ողողանել, և ոչ ծառայք որ աղաչիցեն զայն որ յոգիսն իցէ, եթէ ում յանձն առնիցէ զնոսա զգուշութեամբ. այլ յամենայ-նէ յայնմանէ, ազատ են ոգիք սրբոցն, և միայն վախ-ճանի շնչոյն ակն ունիցին, եթէ ե՞րբ երթայցեն առ Ած։

Թէպէտ և լինիցին ցաւք՝ ոչ 'ի շատակերութենէ և ոչ 'ի գլխապարտ արբեցութենէ, այլ և պատճառք ցաւոցն լի են դրուատեօք. չիք պարսաւանաց պատճառք 'ի մի-ջի, այլ թէ 'ի հսկմանէ, և կամ թէ 'ի ստէպ պահոց, կամ յայլ ինչ այնպիսեաց մտին ցաւքն. ուստի և դիւ-րաբուժք արագազերծք լինիցին։ Ո՛չ ի շատ է վաստա-կաւորին 'ի մխիթարութիւն, որ չիցէ այնուհետեւ ձեռն-հաս 'ի վաստակել՝ զերծանել յամենայն չարեաց։

Եթէ զորբոց ոտս լուացեալ իցէ, ասէ. գոյ և յեկե-ղեցւոջ այնպիսի գտանել. մի՛, վասն զի զնոցա վարձն պատմեցաք, զնոսա որ յեկեղեցւոջս իցեն՝ արհամար-հիցեմք։ Բազումք բազում անգամ այսպիսիք և յեկե-ղեցւոջ գտանին, այլ 'ի ծածուկ. մի՛, վասն զի 'ի տունս մտանեն և ընդ հրապարակս շրջիցին. մի՛, վասն զի գըլ-խաւորք կայցեն, արհամարհիցեմք զնոսա. քանզի և զայն Ած հրամայեաց. "Դատ, ասէ, արարէք որբոյն, և տուք իրաւունս այրւոյն"։

Բազում ճանապարհք են առաքինութեան, որպէս և մարգարէին բազում այլ և այլ կերպարանք են, թէ-

ողէտ և ամենայն իսկ մարգարիտ ասիցի. այլ՝ զի սուրբ և յամենայն կողմանց բոլորակ է, և այլ է՝ որ ոչ ունիցի զնոյն գեղեցկութիւն, այլ այլաձև կոգ. երկայն ինչ գործուածոյ, անկիւն անկիւնս ընտրեալ իբրև ձախարակաւ. և քան զսպիտակն և այլ ինչ վայելուչ կայ. և կանաչն քան զամենայն դալարիս ևս գեղեցկագոյն. և է ինչ որ քան զարիւնն ևս կարմրագոյն. և այլ ինչ քան զծով ևս կապուտակ. և է ինչ որ քան զծիրանի ևս վայելուչ. և բազում ծաղիկք արևու իսկ նման են: Նոյնպէս և սուրբք՝ կէսք զանձինս եւեթ զարդարեն, կէսք զեկեղեցիս:

«Եթէ զորբոց, ասէ, զոտս լուացեալ իցէ, և նեղելոց բաւական լեալ իցէ»: Փութասցուք և մեք 'ի նոյն գործ. զի և մեք պարծիցիմք անդ, թէ և մեք զորբոց ոտս լուացաք: Եւ եթէ զորբոց ոտս պարտ իցէ լուանալ, որչափ ևս առաւել ձեռնտու լինել պախրէի: «Ո՛վ, ասէ, գիտասցէ ձախ քո՝ զինչ գործեսցէ աջ քո»: Նողէր առնուցուս ընդ քեզ բազում վկայս. մի՛ և ծառայիդ իմանալ՝ եթէ հնար ինչ իցէ. մի՛ կին, մի՛ որդիք. քանզի բազում գայթակղութիւնք են նենգաւորին: Եւ թերևս որ ոչն երբէք խափանեաց, յայնժամ խափանիցէ կամ 'ի մնապարծութենէ կամ յայլոց պատճառանաց:

Նա և Աբրահամու թէպէտ և զարմանալի էր կինն, յորժամ զորդին կամէր պատարագ մատուցանել՝ թաքոյց 'ի նմանէ, թէպէտ և չգիտէր զինչ ինչ պատահելոց իցէ. այլ այնպէս հաստատեալ էր՝ թէ արդարև իսկ սպանանել հասանիցէ: Եթէ իմացեալ էր, զինչ ինչ չասէր արդեօք կամ նա կամ այլ ոք 'ի բազմացն: Զասէ՞ր թէ զինչ ոք է սա, զի զայսպիսի գործս գործէ. ո՞չ ապաքէն անագորոյն միտս համարէր և վայրենութի՛, թէ և տեսանել զխո չարաչար արժանի, և ոչ զյետին բարբառն լսել, և ոչ զձեռսն և զոտսն ածել տեսանել, այլ իբրև զգերի մի և զամայի յանկարծակի վարատեաց: Այլ չածէր այսպիսի ինչ զմտաւ արդարն, քանզի արբեալ էր սիրով արարչին. և չտեսանէր այլ ինչ, բայց միայն զմիոյն հրաման՝ թէ զիարդ վաղվաղակի կատարիցէ. չէր մօտ ծառայ և ոչ կին. մանաւանդ թէ և ոչ ինքն իսկ գիտէր թէ զինչ գործք գործիցեն. այնպէս

ամենեւին ջանայր սուրբ զպատարագն մատուցանել, զի մի արտասուս ոք արկանիցէ՝ և մի գժկամակութեամբ[1] պղծիցէ։ Այլ ասէր ցնա Իսահակ. «Ահա հուր և փայտ, ո՞ւր է գառն պատարագի»։ Իսկ հայրն զինչ արդեօք. «Աստուած, ասէ, տեսցէ իւր գառն պատարագի, որդեակ»։ Ոչ վայրապար ինչ, այլ մարգարէութեամբ ասէր, եթէ զորդին իւր տեսցէ գառն պատարագի. միանգամայն իսկ անդէն իրքն կատարէին։

Այլ 'ի դիմանէ զի թագուցանիցես, ասա եթէ պատարագելոց ես։ Այո, ասէ. այլ երկնչիմ գուցէ զանգիտիցէ, կասկածեմ թէ չլինիցի արժանի։ Տեսե՞ր զի բազում հաւաստեօք գործէր զամենայն, որպէս և գիրք իսկ ասեն, թէ «Մի գիտասցէ ձախ քո, զինչ գործէ աջ քո». այս ինքն եթէ իբրև զանդամ մի յանդամոց համարիցիմք զընտանիս, մի վազվաղեսցուք յայտնել. բայց եթէ կարի ինչ հարկ 'ի վերայ կայցէ։ Վասնզի բազում դժնդակութիւնք և անտի իսկ գործին, եթէ սնապարծութիւն ինչ ոք ախտանայցէ, և խափան լինիցի։ Վասն այնորիկ եթէ հնար ինչ է՝ և յանձանց թաքուսցուք. զի հասանիցեմք խոստացելոց բարութեանցն շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Երկաթագիրն դժկամութեամբ։

# ՃԱՌ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

«Յաղջկամարդաց այրեացդ հրաժարեա. զի յորժամ խայտայցեն զՔրիստոսիւ, ամուսնանալ կամին. աւելի դատաստանս ընդունին, զի զառաջին հաւատսն արհամարհեցին: Միանգամայն և դատարկ ուսանին տանէ 'ի տուն շրջել. ոչ միայն դատարկք, այլ շողմոգս և քննողք, և խօսին որ չէ պիտոյ: Կամիմ թէ որ մանկամարդք իցեն՝ արանց լինիցին, որդիս ածնիցեն, զտունս տեսանիցեն, և մի ինչ պատճառս տայցեն սատանայի 'ի հայհոյութեանց աղագս. զի և արդէն բազումք իսկ խոտորեցան զկնի սատանայի»:

Բազում ինչ ճառեաց զայրեացն Պաւղոս, և ժամանակ սահմանեաց թէ «Մի չիցէ պակաս 'ի վաթսունամենից». և թէ որպիսի ինչ պարտ իցէ այրւոյն, ասոյց, «եթէ մանկանս սնուցեալ իցէ, ասէ, և զհիւրս ընկալեալ, և զսրբոց զոտս լուացեալ»: Դարձեալ և առ ասէ՝ թէ «յաղջկամարդաց այրեացն հրաժարեա»: Իսկ զկուսանացն թէպէտ և կարի ծանրագոյն իրք են, ոչ ինչ այնպէս ակնարկէ, և յիրաւի իսկ. ընդէ՞ր. քանզի 'ի մեծամեծան գրեցան, և յառաւել մտաց եղեն յառաջադիմութի. զի հիւրասէրն լինել և սրբոց զոտս լուանալ և զամենայն զնոյնպիսին յայն բան փակեաց՝ եթէ վասն պարկեշտութեան և գեղեցիկ հպատակութեան. և 'ի միւսն՝ եթէ «Մի ոչ ամուսնանայ, հոգայ զտեառն»: Իսկ եթէ վասն ժամանակաց ինչ չխօսի հաւատոյս, ընդ այն մի ինչ զարմանայցես, զի այս այնու իսկ յայտ է. որպէս ասաց իսկ՝ եթէ Նոքա առաւել միտօքն ընտրեցին զկուսութիւնն: Վասն զի յայրեացն 'ի միջի գայթակղութիւն իմն գործեցաւ, և ինքեանք ետուն պատճառս այնպիսի օրէնսդրութե. իսկ առ կուսանսն չև ևս այնպիսի ինչ գործս գործեալ: Եւ զի անկան իսկ և իսկ ոմանք յայրեացն՝ յայտ այնու առնէ, զի «Յորժամ խայտայցեն զՔրիստոսիւ, ամուսնա-

նալ կամին»։ Եւ դարձեալ. «Ո՛չ անդէն իսկ, ասէ, թիւրեցան զկնի սատանայի»։

«Յաղջկամարդացն այրեաց, ասէ, հրաժարեա»։ ընդէ՞ր. «Յորժամ խայտայցեն, ամուսնանալ կամին»։ Ո՛չինչ իցէ յորժամ խայտայցենն. յորժամ հպարտիցին, յորժամ պչրիցինն, զաչս զվայրօք ածիցեն. որպէս յորժամ զանէ ումեքէ զհեզդ ասիցեն՝ եթէ եթող զնա և այլում եղև։ Իսկ արդ յայտ առնէ՝ թէ և զայրութիւնն վայրապար առին յանձն, կամ թէ չհամբերիցին՝ զի այրին այրութեանցն 'ի խօսման կայ ա̃յ, ըստ այնմ եթէ վերակացու եմ այրեաց և հայր որբոց։ Յայտ առնէ թէ և զայրութիւնսն ոչ ուղիղ մտօք ընտրեցին. այլ խայտան, բայց սակայն համբերէ նա։ Իսկ այլուր իսկ ասէ, թէ «Խօսեսցին առն միոյ իբրև զկոյս մի սուրբ յանդիման առնել Քրիստոսի»։ Յորժամ 'ի նորա անուանս անուանիցին, ասէ, «ապա ամուսնանալ կամին. ընդունելին զդատապարտանս, զի զառաջին հաւատն արհամարհեցին»։ Հաւատս զուխտն ճշմարիտ կոչէ. ստեցին, ասէ, նմա, ջրեցին զդաշինս, անցին զուխտիւն։

«Միանգամայն և դատարկ ուսանին»։ Ապա ոչ ուրեմն արանց միայն հրամայէ գործ գործել, այլ և կանանց. քանզի զամենայն չարիս դատարկութիւն ուսոյց։ Ոչ այնու միայն, ասէ, դատապարտք են, այլ և այլովք ևս մեղօք։ Ապա ուրեմն չէ պարտ կնոջ մարդոյ տանէ 'ի տուն շրջել, և առնուլ ևս կուսանաց։ «Ոչ միայն, ասէ, դատարկ ուսանին, այլ և շաղփաղք և քննողք, և խօսին զոր ոչ է պարտ։ Կամիմ զի աղջկամարդքն ամուսնանայցեն և որդեակս առնիցեն, զտունս տեսանիցեն»։ Քանզի և յորժամ ոչ առն հոգք 'ի վերայ կայցեն և ոչ ա̃յ երկիւղն 'ի միտ, յիրաւի իսկ դատարկք և փառաքուսք և շաղփաղք և քննողք լինին. և որ զիւր ինչ ինչ չհոգայ, հարկ է զի զայլոց հոգայցէ. զոր օրինակ որ զիւրովքն զբաղեալ իցէ, զայլոցն չածէ զմտաւ։ «Խօսին, ասէ, որ ինչ չէ պիտոյ»։ Զի՞նչ ինչ քան զայն տգեղ կնոջ մարդոյ յորժամ զայլս իրս քննիցէ. մանաւանդ եթէ ոչ միայն կնոջ մարդոյ, այլ և առն. զի սաստահակութեան և մեծի յանդգնութեան նշանակ է։ Փութար կամիմ, ասէ, քանզի նոքա կամին, և ես կամիմ,

աղջկամարդքն արանց լինիցին, որդիս առնիցեն, զտունս տեսանիցեն, այսինքն տանտիկնեացեն՝ տնարարք լինիցին։ Քան զայն ամենայն այս լաւագոյն է։ Պարտ էր ընդ նմին հոգալ, պարտ էր զհաւատոն պահել. բայց զի այնպէս ինչ իրք գործելոց էին, լաւ է զի այնպէս լինիցի։ Քանզի թէ այնպէս ինչ, ապա ոչ նոյ ուխտն արհամարհի, և ոչ նոքա զայն ուսանին։ Քանզի յայնպիսի այրութենէ պիտանութիւն ինչ ոչ գործի, իսկ յամուսնութենէն բազում բարութիւնք. զի քաղքայութիւն և ծուլութիւն մնացն դառնայցէ 'ի հաստատութիւն։

Այլ ընդէ՞ր չասիցէն՝ որովհետև այրիքն գայթակղեցան, 'ի բազում դարձմանս պարտ է վայելել, զի մի այնպիսի ինչ անցք ընդ բազումս անցանիցեն, այլ արանց հրամայես լինել։ Զէ ինչ, ասէ, արգել, "զի ոչ մի ինչ, ասէ, պատճառ տայցեն սատանայի 'ի հայհոյութեան աղագս. զի արդէն իսկ ոմանք թիւրեցան զկնի սատանայի"։ Այլ արդ արգելու զայնպիսի այրութիւնն. ոչ եթէ չկամիցի ինչ ընդ աղջկամարդացն յայրութեան կալ, այլ չկամի թէ 'ի չնութիւնս անկանիցին, չկամի եթէ դատարկ լինիցին, չկամի եթէ փաքսուք և շոգմոգք և քննողք լինիցին, չկամի եթէ պատճառս գտանիցէ բանսարկուն. զի եթէ այնպիսի ինչ չէր լեալ, և արգելոյր իսկ ոչ։

"Եթէ ոք հաւատացեալ այր կամ կին այրիս տեսանիցէ, ինքն բաւական լինիցի նոցա, և մի բեռն առնիցէ եկեղեցւոյն. զի եկեղեցին ճշմարիտ այրեացն միայն բաւական լինիցի"։ Դարձեալ ճշմարիտ այրիս կոչէ զմնացեալսն, որք չունին ուստեք մխիթարութիւն. և այն իսկ լաւ էր։ Այլ երկու ինչ իրք մեծամեծք գործէին. զի և նոցա բարութք լինէին բարիս գործելոյ, և այրիքն բարւոք կերակրէին, և եկեղեցւոյն բեռն չլինէր։ Այլ բարւոք եդ առընթեր՝ եթէ ոք, ասէ, հաւատացեալ. զի չէ պարտ յանհաւատից կերակրել, զի մի կարծեսցեն եթէ կարօտ ինչ նոքօք իցեն։ Այլ զիա՞րդ մխիթարութեան միայն պատճառս եդոյց. չասէ բազմապատիկ ինչ խորատիկս, այլ թէ բաւական լինիցի նոցա. զի եկեղեցին ճշմարիտ այրեացն բաւական լինիցի։ Ապա ուրեմն և ընդ օգնականութեան եկեղեցւոյն, ոչ

միայն եկեղեցւոյն օգնական է, այլ և այրեացն, զի ըն-
դարձակութեամբ կերակրիցին։

«Կամիմ, ասէ, զի աղջկամարդքն»։ Ո՞ւնչ կամի-
ցիս, միթէ փափկանայցե՞ն կամ զի գրգիցի՞ն. ոչ ինչ
այնպիսի, ասէ, այլ զի արանց լինիցին, որդիս ածիցեն,
տանց իշխիցեն՝ որպիսի ինչ իցէ իշխել տանցն։ Ո՛ի մի
կարծիցես եթէ փափկանալ ինչ հրամայիցէ նոցա, յա-
րէ 'ի նոյն՝ զի և ոչ մի ինչ պատճառս տայցեն սատա-
նայի 'ի հայհոյութեան աղագս։ Պարտ էր նոցա, ասէ,
վերագոյն քան զմարմնաւորս գտանիլ, որովհետև ընդ
գետինն չոգան՝ գէթ յայնմ կայցեն։

«Որ բարւոքն առաջնորդիցեն երիցունք, կրկին պա-
տուոյ արժանի լինիցին, մանաւանդ որ վաստակիցենն
բանիւ և վարդապետութեամբ։ Քանզի ասէ գիրն.
մի կապեր զցռուկ եզին կալոտւոյ. և արժանի է մշակն
վարձու իւրոյ»։ Պատիւ աստ զդարման կարևոր պիտոյ-
իցն կոչէ. զի զոր 'ի նոյնն յարէ՝ եթէ մի կապիցես զցռ-
ռուկ եզին կալոտւոյ, և արժանի է մշակն վարձու իւ-
րոյ, զայս յայտ առնէ։ Բայց ուրեմն և յորժամ ասի-
ցէ՝ թէ զայրիս մեծարեա, զնոյնն ասէ զկարևոր կե-
րակրոյն։ Ո՛ի ճշմարիտ այրեացն, ասէ, բաւական լի-
նիցի. և դարձեալ թէ մեծարեա զստոյգ այրիսն՝ այն
իսկ է, թէ որ յաղքատութեանն իցեն. զի որչափ յաղ-
քատութեան ոք իցէ, ևս քան զևս յայրութեան է։
Դնէ զօրինացն, դնէ զՔրիստոսին, զերկոտեան միմեանց
միաբան։ Ո՛ի օրէնքն ասեն. «Մ՛ի կապեր զցռուկ եզին
կալոտւոյ»։ Տեսանե՞ս զիարդ կամի զվաստակել վար-
դապետին։ Ո՛ի չիք, քանզի և չիք այլ վաստակ այնպի-
սի, որպէս զվարդապետին աշխատութիւն։ Տես զիարդ
և զՔրիստոսին դնէ. «Արժանի է, ասէ, մշակն վար-
ձուն իւրոյ»։

Ոչ արդ մի վարձուցն ևեթ ուշ ունիցիք, այլ թէ
և որպէս հրամայեաց. «Արժանի է, ասէ, մշակն կե-
րակրոյն իւրոյ»։ որպէս զի փափուկն և անձնդիւրքն չէ
արժանի։ Այլ թէ ոչ իցէ եզն կալոց և հաստատեալ ընդ
լուծ սամետնիւք, և ընդ ոտս մտեալ ձգիցէ և խլիցէ
զփուշն, չէ արժանի։ Այլ եթէ ոչ նախ յամենայն ի-
րաց երկրաւորաց հեռանայցէ, չէ արժանի։ Բայց ու-
րեմն առատութեամբ պարտ է շնորհել զպէտսն վար-

դապետացն, զի մի անտես լինիցին և հեղգայցեն. զի մի և 'ի սակաւ ինչ իւրս զբօսնուցուն, և 'ի մեծամեծացն զրկիցեն զանձինս և զայլս. զի զհոգևորսն ևեթ կատարիցեն, և զմարմնաւորացն չունիցին ինչ փոյթ յանձինս: Այսպիսիք էին ղևտացիքն. չէր ինչ նոցա փոյթ զմարմնաւորայ, քանզի յաշխարհականացն վճարէին նոցա ամենայն պէտք, և օրինօքն իսկ կարգեալ էր յարմտեաց տասանորդքն, և յոսկւոյ պտուղ և ուխտք և այլ ինչ բազում: Այլ նոցա նմանագոյն իսկ այնպիսի օրէնք եդան, քանզի զերկրաւորս ևեթ խնդրէին: Բայց ինձ թուի, թէ չէ պարտ այլ ինչ աւելի ունել եկեղեցւոյ առաջնորդաց, այլ զհացիկն միայն, և զվանկունսն ուր ագանիցին, զի մի յերկրաւոր ինչ իւրս զբօսնուցուն:

Իսկ զի՞նչ իցէ՝ կրկին պատուոյն արժանի լինել. քան զայրեացն, կամ քան զսարկաւագացն. և կամ թէ կրկինն՝ բնաւ զբազում ինչ պատիւս ասիցէ: Նա արդ մի այնմ ևեթ ուշ ունիցիմք, թէ կրկին պատուոյ արար զնոսա արժանի. այլ և զմիւսն զոր յաւել՝ 'ի միտ առնուցումք, եթէ որ բարւոքն առաջնորդիցեն: Լուիցուք և Քրիստոսի. "Հովիւ, ասէ, քաջ՝ դնէ զանձն 'ի վերայ խաշանց": Այս ուրեմն այն է բարւոքն առաջնորդելն, զի չխնայիցէ ոչ յինչս և ոչ յանձինն վասն նոցա տեսչութեանն:

"Մանաւանդ, ասէ, որ վաստակիցեն բանիւ և վարդապետութեամբ": Արդ ո՞ւր են որ ասիցեն եթէ չիք ինչ պէտք բանից և ոչ վարդապետութեան, ուր և Տիմոթեայ այնպիսի պատուէր տայր՝ եթէ "Յայս լեր և 'ի սոյն կանխեա". և դարձեալ թէ "Միտ դիր ընթերցուածոց մխիթարութեան": "Զայս, ասէ, թէ առնիցես, և զանձն ապրեցուցանիցես և զայնոսիկ որ քեզն լսիցեն": Նա զնոսա կամի զի առաւել քան զամենեսեան պատուիցին, և զպատճառսն ևս 'ի միջի դնէ. բազում, ասէ, աշխատութիւն կրեն յանձինս. և յիրաւի իսկ: Յորժամ միւսն ոչ սկիցէ, և ոչ հոգ ինչ յանձն առնուցու, այլ 'ի դատարկութիւն հատանիցի և յանհոգութիւն, և նա կոշկոճիցի հոգայցէ և կրթիցի, և մանաւանդ թէ չիցէ ևս տեղեակ արտաքնոցն բանից, յորպիսի ինչ պատիւ պարտ իցէ վայելել, և նախ քան զայլսն ամենեսին յայնպիսի աշխատութիւն տալ զանձն:

Բազում լեզուաց 'ի ձեռս անկանել, յորժամ ոմն պար-
սաւիցէ, և ոմն գովիցէ, և միւսն խոտիցէ, և միւսն ա-
ղարտիցէ զուշն և զբանիցն խառնուածս. բազում զօ-
րութեան պէտք են, զի այնմ ամենայնի համբերել
կարիցէ ։

Մեծ գործ է և մեծ շինուած եկեղեցւոյ և կարի իսկ
նպաստաւոր առաջնորդացն՝ ուսուցիչ լինել։ Եւ եթէ
այն չիցէ, բազում կարգք եկեղեցւոյ ապախտ լինին ։
Վասն այնորիկ ընդ այլոյն ամենեսեան, ընդ օտարոտի-
րութեանն և ընդ հեզութեան և ընդ անարատ լինելոյ
և զուսուցիչն համարի. ապա թէ ո՞չ ընդէ՞ր իսկ բնաւ
վարդապետ կոչիցի ։ Նոյն ասէ, զի վարուքն ուսուցա-
նիցէ. աւելի ճարտարութիւնք են այսպիսի բանք ։ Քան-
զի և բանից վարդապետութեան պէտք են, վասն որոյ
և Պաւղոս ասէ. «Մանաւանդ որ վաստակիցեն բանիւ
և վարդապետութեամբ»։ Յորժամ վասն հաւատոցն
կրօնից բանք իցեն, որպիսի՞ ինչ վարք առ այն զօրաւոր
կարիցեն լինել։ Իսկ զորպիսի՞[1] բանից ասիցէ. ոչ բա-
նիբաւն սեթևեթանս, այլ որ ինչ բազում զօրութիւն
ունիցի, բազում իմաստութեամբ և հանճարովլ լի. ոչ
յօրինեալսն և ճախարակեալ, այլ որ միտքն լի իցէ. ոչ
որոց գիրն և խառնուածք պատշաճագոյն իցեն, այլ որ
զմիտս և զխորհուրդս շինել կարիցէ ։

«Երիցուէ ումեք, ասէ, չարախօսութիւն յանձն
մի առնուցուս, բայց եթէ երկուք և երիւք վկայիւք»։
Իսկ զմանկանէն պա՞րտ իցէ առնուլ չարախօսութիւն
յանձն, կամ բնաւ ամենեւին զումեքէ, և չիցէ՞ պարտ
ստուգութեամբ ընտրել զգատաստանսն ։ Եւ արդ զի՞նչ
կամիցի ասել։ Եւ մի զայլ ումեքէ, ասէ, թող թէ ըզ-
ծերոյ ումեք։ Քանզի երէց աստ ոչ զպատուոյ ինչ ա-
սէ, այլ զտիոցն. զի մանկունքն քան զծերսն դիւրաւ
իմն և մէտ են 'ի մեղանչել։ Եւ յայտ է այնուհետև
եկեղեցի յանձն առեալ էր Տիմոթեայ, և կամ թէ
զամենայն իսկ ազգն ասիացւոց, քանզի և վասն ծերոց
խօսի ընդ նմա՝ թէ «Որ յանցանեն առաջի ամենե-
ցուն յանդիմանեա, զի այլքն զահի հարկանիցեն»։ Մի,
ասէ, վաղվաղակի հաստանիցես ընկենուցուս 'ի բաց, այլ

1 Պակասէր զորպիսի՞ բանից ասիցէ. ու. յաւելաւ 'ի յաւելն ։

բազում հաւատեօք քննեսջիր զամենայն. և յորժամ ստոյգ 'ի վերայ հասանիցես, սաստկագոյն տաջիր զվը-ճիռն, զի այլքն ցածնուցուն: Զոր օրինակ զուրն զա-տել չհասէ, նոյնպէս և զյայտնի մեղսն չխնդրել՝ ճա-նապարհ գործէ և այլոցն ևս 'ի նոյն յանդգնել: Յանդի-մանեսջիր, ասէ, մի վայրապար ինչ, այլ մեծաւ սաստիւ:

Եւ զիա՞րդ Քրիստոս ասիցէ "Երթ յանդիմանեա զնա մինչ դու և նա միայն իցէք", եթէ քեզ մեղանչիցէ, ասէ: Սակայն և զնա թէ չլսիցէ՝ յեկե-ղեցւոյն հրամայէ յանդիմանել: Եւ ևս առաւել չգայ-թակղեցուցանիցէ՞, ասեն, առաջի ամենեցուն յանդի-մանել: Զիա՞րդ. յորժամ զմեղսն ամենեքեան գիտի-ցեն, և զպատուհասն և ոչ ոք, յայնժամ առաւել գայ-թակղին: Զոր օրինակ առանց պատիժս կրելոյ յան-ցաւորացն բազում յանցաւորք գտանին, նոյնպէս և 'ի պատժելոյն բազումք գան յուղղութիւն: Նոյնպէս և ա՜ծ ած 'ի մէջ և պատժեաց զՓարաւոն և զՆաբու-քոդոնոսոր, և ըստ քաղաքաց քաղաքաց և ըստ իւրա-քանչիւր 'ի մարդկանէ տեսանեմք զի ետուն վրէժս զա-տաստանաց: Այլ ուրեմն կամի շուք դնել եպիսկոպո-սին, զի ամենեքեան երկնչիցեն, և ամենեցուն վերա-կացու լինիցի: Եւ քանզի բազում ինչ 'ի կարծեաց լի-նիցի, պարտ է, ասէ, և վկայիցն 'ի մէջ գալ որք յան-դիմանել կարիցեն ըստ հնոյ օրինացն՝ եթէ "Ի բերա-նոյ երկուց և երից վկայից հաստատեսցի ա՜մ բան":

"Եւ զծերոյ, ասէ, չարախօսութիւն մի առնուցուս յանձն": Չասաց թէ մի դատապարտիցես. այլ թէ մի և ընդունիցիս զչարախօսութիւնն, և մի ընաւ 'ի դա-տաստան ածիցես: Եւ արդ զիա՞րդ եթէ և երկուն ևս սուտ խօսիցեն: Այլ այն դուն ուրեք և անօսր լինի, և մարթի 'ի դատաստանին զիրսն քննել և ածել յայտ. քանզի մեղացն երկու վկայք 'ի դէպ են, զի գաղտուկ և 'ի ծածուկ գործին. որպէս զի բազում քննութեան նշանակ է այն: Իսկ արդ զիա՞րդ եթէ մեղքն յայտնի իցեն, և վկայքն չիցեն 'ի միջի, այլ չար ինչ կարծիք: Ասացի, ասէ, վերագոյնն, եթէ պարտ է նմա և յար-տաքնոցն ունել վկայութիւն:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Եւ արդ երկիւղիւ սիրեսցուք զնա. զի արդարոյն օրէնք ինչ ոչ կան։ Քանզի բազումք թէպէտ և 'ի հարկէ և ոչ կամօք առնուն յանձն զաղքատութիւնն, մեծամեծ շահս յերկիւղէ շահիցեն, բազում անգամ և զցանկութիւնս անձանց հատանեն ընկենուն 'ի բաց։ Վասն այնորիկ ախորժելով լուիցուք զձայնս գեհենին, զի բազում պտուղ 'ի սպառնալեացն և յերկիւղէն շահիցեմք։ Զի թէ տանելոց էր 'ի գեհենն զմեղաւորս, և յառաջագոյն չէր սպառնացեալ, բազումք իսկ երթային 'ի գեհենն։ Զի թէ այժմ զի երկիւղիւն ևս բեկանէ զմիտս, բազումք են որ այնպէս դիւրաւ մեղանչեն՝ որպէս թէ բնաւ չիցէ իսկ գեհեն, եթէ չէր յառաջագոյն սպառնացեալ՝ որպիսի ինչ և այլ ևս չարիս ոչ գործէաք։ Որպէս ցանկն ասէի՝ և այժմ ասեմ, զի ոչ սակաւ քան զարքայութիւնն ցուցանէ գեհենն զնոյն տեսչութիւնն. քանզի գեհենն արքայութեանն գործակից է, զի ահիւն ստիպիցէ զմարդիկ երթալ յարքայութիւնն։

Եւ արդ մի անագորոյն ինչ մտաց և մի խստութեան զիրսն համարիցեմք, այլ ողորմութեան և բազում մարդասիրութեան և խնամոց և սիրոյն զոր ունի առ մեզ։ Եթէ չէր կործանումն սպառնացեալ առ Յովնանու, թերևս և չարգելուր իսկ կործանումն. թէ չէր սպառնացեալ կործանեսցի Նինուէ, թերևս և չհաստատէր իսկ. եթէ չէր գեհենն սպառնացեալ, թերևս ամենեքին իսկ 'ի գեհենն երթայաք. եթէ չէր սպառնացեալ հուր, թերևս չապրէր ոք 'ի հրոյն։ Հակառակ ինչ այնմ զորս կամի առնել՝ ասէ, զի արասցէ զինչ կամեսցի։ Չկամի զմահ մեղաւորի, և ասէ զմահ մեղաւորին, զի ապրեցուսցէ զնա 'ի մահուանէն. չասէ բանիւք միայն, այլ և զգործսն ցուցանէ, զի փախիցուք, զի մի սպառնալիս ևեթ ոք լոկ համարեսցի, այլ թէ և ճշմարիտ իսկ է յորոց աստէն ինչ գործիցին՝ յայտ լինի։ Թէ չթուիցի քեզ նշանակ գեհենն 'ի համաջունջ ամենասպառ ջրհեղեղէն, կամ շանթանկեաց հրացան անձրև կայծականց։ Զոր օրինակ, ասէ, յաւուրսն Նոյի արք կանայս առնէին և կանայք արանց լինէին, նոյնպէս և յայն-

ժամ. յառաջագոյն քան զբազում ժամանակս առաջ, և այժմ կանխաւ ասէ նախ քան զչորեքարիւր ամ, կամ թէ ևս աւելի ։

Այս չիք ոք որ 'ի միտ ունիցի, այլ ամենեքին իբրև առասպելս համարին, ամենեքեան ծաղր առնեն. և չիք ոք յում երկիւղ կայցէ, չիք ոք որ արտասուէ, չիք որ զկուրծս բախիցէ ։ Գետ հրեղէն բղխելոց է և բոց բորբոքեալ, և մեք ծաղր առնեմք, գրգիմք և փափկանամք և մեղանչեմք աներկիւղ ։ Չիք ոք որ զօրն երբէք զմըտաւ ածիցէ, և ոչ որ խորհիցի թէ ամենայն ինչ անցաւոր է և ժամանակաւոր, թէպէտ և արդիւնքն իսկ ցանկ աղաղակեն և ձայնատուր լինին. մահքն տարաժամ, իւրացն փոփոխմունք' որ աստէն իսկ 'ի կենդանութեան մերում լինին, չխրատեն զմեզ ցաւք և պէսպէս հիւանդութիւնք ։ Այս թող զայլ փոփոխմունս որ 'ի մեր 'ի մարմինս լինին, և զարարածոց ևս փոփոխմունս է տեսանել և 'ի մեր յանձինս, և յամենայնի ցանգ մահ նկարի, և թէ չիք ինչ որ կալոց իցէ, ամենայն ուրեք արդեամբք իսկ դրոշմի ։ Քանզի ոչ երբէք ցանգ ձմեռն կայ և ոչ միշտ ամառն, ոչ հանապազ գարուն և ոչ բընաւ աշունն. այլ ամենայն ինչ ընթացեալ սրանայ, և իբրև զջուր սահէ անցանէ ։

Այլ զծաղկանցն զինչ ասացից, կամ զպատուոց և զիշխանութեանց և զթագաւորացն իսկ գլխովին, որք այսօր են և վաղիւն կորնչին. կամ զմեծատանց, կամ զտանց գեղեցկաց, զցայգութենէ և զցերեկութենէ, կամ զարեգակնէ և զլուսնոյ. չխաւարիցի՞ լուսին, չնուազիցէ՞ արեգակն, բազում անգամ չխաւարիցի, չծածկիցի՞ ամպովք ։ Միթէ յերևելեացս իցէ՞ ինչ նոր որ միշտ նոյնպէս մնասցէ. չիք ինչ, չէ ինչ ուրեք. բայց միայն ոգիքն որ 'ի մեզ են' և այսչափ անփոյթ առնեմք. զփոփոխականացն իբրև զմնայականաց հոգ յանձն առնումք, և զմնացականէն իբրև զանցաւորէ անփոյթ առնեմք ։

Այս անուն, ասեն, կարի հարուստ է. այլ մինչև ցվաղիւն, և յետ այնորիկ կորնչելոց է. և յայտ յայտնանէ է' որ երբեմն հարուստք էին և այժմ չերևին ուրեք. հողմանի իմն են կեանք աշխարհիս և երազ ։ Որ օրինակ տաղաւար ինչ յորժամ 'ի մէջոյ բառնայցէ, մըտեալ ճառագայթից արեգականն զամենայն հայթայ-

թանան 'ի բաց մերժիցէ, նոյնպէս և յորժամ վախճանն
հասարակաց հասանիցէ և կամ իւրաքանչիւր՝ ամենայն
ինչ լուծանի և ապականի։ Իսկ եթէ ծառ ոք տնկեաց՝
այն աստէն մնայ, և եթէ շինուած շինեաց՝ աստէն
թողու, և ճարտարապետն և գործաւորն երթան և ա-
պականին։ Ուստի և այս ամենայն լինի, սակայն և
այնպէս չամաչեմք. այլ իբրև զանմահս յորդորեալք՝
զամենայն ինչ կազմեմք, բարի կեամք, գրգիմք փափ-
կանամք։

Իսկ Սողոմոնի զինչ ասէ, որոյ արդեամբք իսկ ըզ-
փորձ ամենայն իրաց աշխարհիս առեալ էր. «Շինե-
ցի, ասէ, տունս և տնկեցի, ասէ, բուրաստանս և դը-
րախտս և այգիս, աւազանս ջուրց. արծաթ և ոսկի յա-
ճախեցի. արարի ինձ երգեցիկս արս և կանայս, խաշինս
և անդեայս»։ Քանզի չեղև ոք այնպէս բարեկեցիկ, ոչ
բնաւ այնպէս ոք փառաւոր, ոչ իմաստուն ոք նոյնպէս,
և ոչ որ զիշխանութիւն ճոխութեամբ ունիցի, և ոչ որ
զամենայն հնարս զմտաւ ածիցէ։ Այգա զինչ. չօգտեաց
ինչ նմա յայնմ ամենայնէ, քանզի ասէր յետոյ. եթէ
«Սնոտի է ամենայն, և սնոտիք սնոտեաց, ամենայն
ինչ սնոտի է». ոչ դոյզն ինչ սնոտի, այլ կարի առաւե-
լութեամբ։ Հաւանեսցուք գէթ նմա, աղաչեմ, որ և
զփորձ իսկ զամենայն իրաց գիտէր. հաւանեսցուք նմա
և բուռն հարցուք զայնպիսի ինչ իրաց՝ ուր չիցեն սնո-
տիք, ուր ճշմարտութիւնն և հաստատութիւնն և սեր-
տութիւնն է, ուր ամենայն ինչ 'ի վերայ վիմի շինիցի,
ուր չիք ծերութիւն և ոչ անցաւորութիւն, ուր ամե-
նայն ինչ ծաղկի և ամենայն ինչ նոր կայ, ուր չիք հին
ինչ և ծերացեալ և մերձ յապականութիւն։

Յանկասցուք աղաչեմ սերտիւ ա̃յ, մի վասն գեհենին
երկիւղի, այլ վասն արքայութեանն ցանկութե̃։ Ո ինչ
այնմ կշիռ կայցէ, ասէ ասա, յորժամ զՔրիստոս ոք
տեսանիցէ և ընդ նմին ուրախ լինիցի. չիք ինչ։ Յոր-
ժամ յամենայն բարութիւնսն վայելիցէ, զինչ կայցէ
այնմ զուգական. չիք, չէ ինչ ուրեք։ «Ո որ ակն ոչ ե-
տես և ունկն ոչ լուաւ և ոչ 'ի սիրտ մարդոյ անկաւ զոր
պատրաստեաց ա̃ծ սիրելեաց իւրոց»։ Այնմ փութա-
ցուք հասանել. արհամարհեսցուք զաստիս։ Ո՞չ բա-
զում անգամ մեզէն իսկ բամբասեմք եթէ չեն ինչ

կեանք աշխարհիս ։ Իսկ ընդէ՞ր ձեպիցիս վասն ոչնչից․ ընդէ՞ր այդչափ աշխատիցիս յաղագս ոչնչից ։ Այլ շինուածս գեղեցիկս տեսանիցես և այնքա՛ն զբօսնուցուս ։ Հայեաց յերկինս քան 'ի քարինսդ և 'ի սիւնս մարմարեայս, յայն գեղ յայն վայելչութիւն, և տեսանիցես զիարդ ամենայն մրջեան և մժխի գործ է ։ Իմաստուն մտօք հայիջիր, առ նա իսկ ելանիջիր որ 'ի յերկինսն բնակեալ է․ և անտի հայեսջիր 'ի գեղեցիկ շինուածսդ, և ապա տեսանիցես թէ ոչինչ են, այլ մանր մանկտւոյ խաղ ։ Տես զիարդ անօսր և թեթև, պարզ և յստակ են օդք․ ևս քան զևս վերանաս ելանես 'ի բարձունս ։ Անդ են ողորմածացն բնակութիւնք և տունք և հանգիստք և յարկք ։

Եւ այս ամենայն 'ի յարութեան քակելոց է, մանաւանդ զի յառաջ քան զյարութիւն, յորժամ ժամանակք ինչ 'ի վերայ անցանեն՝ եղծանին ապականին և քակտին, և թերևս նախ քան զժամանակն․ մինչդեռ յաստիսն և 'ի ժամանակին իցեն, կամ շարժումն կործանէ, կամ հրդեհ զամենայն ապականէ ։ Վասնզի ոչ եթէ մարդկան ևեթ տիոց, այլ և շինուածոցն լինին մահք տարաժամք․ և թերևս որ բազում ժամանակս ունիցի և մերձ 'ի փտել իցէ, յորժամ երկիր շարժիցի անշարժ կայցէ և գեղեցիկքն և հաստատունքն և նորաշէնքն, թերևս 'ի միջոցէ իսկ որոտմանէ կործանիցին․ Եւ այն ո՛չ տեսչութեանն գործ է, զի մի մեծամտիցիմք շինուածովքն ։

Եւ թէ կամիս և այլ ազգ ևս չտրտմել, եկեսցուք 'ի հասարակաց շինուածսն, յորս և դու հանգոյն այլոցն վայելես․ զի չիք, քանզի չիք այլ ինչ շինուած, թէպէտ և կարի գեղեցիկ իցէ, ազնուագոյն քան զարքունիսն․ և որչափ պէտ ժամանակս՝ յամիջիր անդ, քանզի քո են ընդ այլոյն ամենեսին առ հասարակ, և մի առանձինն ինչ ։ Այլ չհանգչին միտքդ, նախ վասն սովորութեանն, երկրորդ անգամ վասն ագահութեանն ։ Ապա ուրեմն ագահութիւնն ուրախ առնէ և ոչ գեղեցկութիւնն․ ապա ուրեմն ագահութիւնն՝ ուրախութիւն և զամենեցուն խորել՝ առնել իւր սեփական ։ Մինչե՞րբ այնպիսեօքն բևեռիցիմք ընդ երկիր․ ցե՞րբ կայցեմք թաղեալ իբրև զորդունս 'ի տղմի ։ Ըստ մեզ, ասէ, մարմինս յերկրէ, զի

զնա յերկինս հանցուք, ոչ զի նովաւ զոգին յերկիր ձգեսցուք. երկրական է, այլ թէ կամիս՝ երկնաւոր լինի։

Տես որպիսի պատուով պատուեաց զմեզ Ած, որպիսի գործ հրամայեաց ունել։ Նա, ասէ, զերկինս և զերկիր արարի, տամ և քեզ իշխանութիւն լինել արարիչ. արա զերկիրդ երկինս, քանզի կարող ես։ Որ առնէ զամենայն և կազմէ՝ զԱյ ասի, և զայն ես իշխանութիւն ետ մարդկան. որպէս հայր ոք խնամոտ նկարիչ՝ ոչ զանձն միայն, այլ և զորդին կամիցի յորդորել ՚ի նոյն ճարտարութիւն։ Նա, ասէ, արարի զմարմինդ բարի, տամ և քեզ ես լաւագոյն արարչութիւն. արա զոգիդ ազնուական։ Նա ասացի, ասէ, եթէ “Հանցէ երկիր զբանջար խոտոյ և զամենայն ծառ պտղաբեր„. ասա և դու ցնոյն երկիր, թէ հանցէ երկիր պտուղ ինչ բարի, և հանցէ թէ կամիցիս գործակից լինել։ Նա եմ որ առնեմ զամառն և զմառախուղ, հաստատեմ զորոտումն և հաստատեմ զհողմ, ստեղծի զվիշապն խաղալ նավաւ, այսինքն է զսատանայ. այլ և ընդ քեզ չնախանձեցայ ունել այնպիսի իշխանութիւն. խաղա և դու նովաւ թէ կամիցիս, քանզի կարող ես իբրև զմանուկ ձագու և իբրև զճնճղուկ կապով։ Ծագեմ զարեգակն ՚ի վերայ չարեաց և բարեաց. լեր նմանող և դու, բաշխեա ՚ի քոց ընչիցն բարեաց և չարեաց։ Ողորմանիմ և համբերեմ և բարի ես առնեմ թշնամանողացն. լեր նմանող և դու, քանզի կարող ես։ Առնեմ երախտիս և չունիմ ակն փոխարէնս ինչ առնուլ. նմանեաց և դու առնել երախտիս և չունել ակն փոխարինաց։ Լուցի զլուսաւորս յերկինս. լոյց և դու ես լուսաւորագոյնս, քանզի կարող ես. լուսաւորեա զայնոսիկ ոյք ՚ի մոլորութեանն իցեն. զի այն մեծ երախտիք են, քան զարեգակն տեսանել։ Յորժամ զիս ումեք տայցես ճանաչել, մարդ չկարիցես առնել, այլ արդարեւ հաճոյ Այ կարող ես առնել։ Նա զբնութիւնն արարի, զարդարեա և դու զկամսն. տես որչափ սիրեմ զքեզ, զի և ՚ի մեծամեծսն ետու քեզ ունել զօրութիւն։

Տեսանէք, սիրելիք, որպիսի պատուով պատուեցաք. և ոմանք յանհանճարից և յաներախտաւորաց ասեն՝ թէ ընդէ՞ր եմք տէառք կամաց այնմ ամենայնի զոր համարեցաքն, որովք կարող եմք նմանող լինել Այ։ Եթէ

կամքն չէին 'ի մեզ հաստատեալ, չկարէաք նման լինել: Այս, ասէ, իշխեմ հրեշտակաց, և դու պաղօտիս: Որ[1] նստի յաթոռ թագաւորութեանն, ընդ նմին և վասն նորին յերկնաւորսն: «Ընդ նմին յարոյց, ասէ, և ընդ նմին նստոյց զմեզ ընդ աջմէ իւր»: Երկիր պագանեն քերովբէք և սերովբէք և ամենայն հրեշտակական զօրութիւնք, պետութիւնք, իշխանութիւնք, աթոռք, տէրութիւնք վասն պատուոյն: Այլ արդ մի՛ քամահասեր զմարմինն որ այնչափ վայելէ պատուով, յորմէ դողան ամենայն անմարմնական զօրութիւնքն:

Բայլ զինչ ասիցեմ. ոչ այնու ամենայնիւ միայն, ասէ, ցուցի զսէր, այլ և չարչարանօքն: Նման քո թուք ընկալայ յերեսս. ապտակեցայ, զփառս մերկացայ, ըզհայր թողի և առ քեզ եկի՝ առ ատելիդ առ ապստամբդ, որ և զանունն անգամ իմ լսել չկարէիր. հետամուտ եղեայ, զկնի կրթեցայ, զի զքեզ ըմբռնեցից. միաւորեցի զքեզ ընդ իս, և ընդ իս հարստեցի: Կեր, ասեմ, զիս և արբ. և 'ի վեր իսկ առ իս ունիմ զքեզ, և 'ի խոնարհ գրկախառն լանջակից եմ ընդ քեզ: Չիցէ՞ քեզ շատ, զի զքո պտուղն աստ 'ի վեր ունիմ. չյորդորիցէ՞ զքեզ աստ 'ի գութ: Դարձեալ 'ի խոնարհ եկս իջի, ոչ վայրապար խառնել ընդ քեզ, այլ գրկախառն լինել. ուտիմ միշտ և անաւագիմ[2] առ սակաւ սակաւ, զի և ես յաճախագոյն միախառնութիւնն լինիցի և 'ի խառնութիւնն[3] և 'ի միաւորութիւնն. քանզի խառնեալ ինչ ընդ միմեանս, 'ի միմեանս յարին: Բայց ես անկայ[4] և կորեցայ ընդ քեզ. ոչ կամիմ այսուհետև եթէ կճրիմ ինչ 'ի միջի կայցէ, զերկոսեանն մի կամիմ լինել:

Այս ամենայն ծանուցեալք զամքաւ և զգաղում խնամն նորա, զամենայն ինչ զայն արասցուք որ կարող իցեն զմեզ արժանիս առնել մեծամեծաց պարգևացն: Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն:

1 Ցոյնն Ցանաս Թագաւորութեան դատաւորութիւն: նստիմ, նստցիս և դու պտղովն:

2 Երկաթագիրն անաւագիմ:

3 Միւսն և խառնաւորութիւն և

4 Երկաթագիրն ցանկայի իսկ և կէրայ ընդ քեզ:

## ՃԱՌ ՎԵՑՏԱՍԱՆԵՐՈՐԴ

"Վկայութիւն դնեմ առաջի այ եւ տեառն Յիսուսի Քրիստոսի եւ ընտրելոց հրեշտակաց, զի զայս պահեսցես առանց ակնառութեան, մի ինչ առնել աչառանօք: Ձեռս վաղվաղակի յուրուք վերայ մի դնիցես, եւ մի կցորդ լինիցիս մեղաց օտարաց. զանձն քո սուրբ պահեսջիր. այսուհետեւ մի ջուր ըմպիցես, այլ սակաւիկ ինչ եւ գինով վարեսջիր վասն ստամոքսին եւ ստէպ ըստէպ հիւանդութեանցն":

Բազում խօսեցաւ վասն եպիսկոպոսաց, սարկաւագաց, երիցանց եւ կանանց, վասն այրեաց, վասն ծերոց եւ վասն այլոցն ամենեցունց, եւ եցոյց թէ որչափ կարգաց տէր է, ապա եւ զզաստատասանէն ճառէ: "Վկայութիւն դնեմ, ասէ, առաջի այ եւ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ ընտրելոց հրեշտակաց, զի՝ զայս պահեսցես առանց ակնառութեան, մի ինչ առնել աչառանօք": Այս ահագին իմն պատուիրէ. ոչ զի Տիմոթէոս էր, ոչ զի որդին եւ սիրելի էր՝ աչառիցէ ինչ. որ զանձնէ չհամարեցաւ ամօթ՝ ասել, թէ "Աղաչեմ, գուցէ որ այլոցս քարոզեցի, եւ ես գլխովին խոտան գտանիցիմ", որչափ եւս առաւել եւ վասն Տիմոթեայ չպատկառէր:

Զհայր եւ զորդի բարւոք ասէ 'ի վկայութիւն. իսկ զհրեշտակսն ընտրեալս վասն էր խառնիցէ: Վասն բազում այ հեզութեան. որպէս եւ Մովսէս ասէ, թէ "Զերկինս եւ զերկիր կոչեմ 'ի վկայութիւն". եւ դարձեալ ասէ. "Լուարուք ձորք եւ հիմունք երկրի": Այս զայս զայ հեզութիւնն յայտ առնէ: Կոչէ 'ի վկայութի զհայր եւ զորդի 'ի բանիցն ասացելոց աւուրն հանդերձելոյ՝ յորում պատասխանի տալոց իցէ ընդ նոցա, եթէ իցէ աւելի ինչ քան զդէպն գործ ցուցանիցեն, ես, ասէ, զամենայն ինչ յինէն 'ի բաց թօթափեցի:

"Զի զայս պահեսցես առանց ակնառութեան, մի ինչ առնիցես աչառանօք": Այսինքն զի զհասարակաց

իցես զայդ երկոցունց կողմանց դատախազ այնց[1] որ քո առաջի յատեան մտանիցեն, մի որ յառաջագոյն ինքն մտցէ ։ Եւ իցեն ընտրեալ հրեշտակքն, միթէ այլքն չիցեն այնպիսիք ։ Ամենեքեան իսկ ընտրեալք են. նա և Յակովբ զա̃ծ կոչէ վկայութիւն և զբլուրն ։ Այնպէս և մեք բազում անգամ զաւագ և փոքր երեսս առնումք 'ի վկայութիւն. այնպէս մեծ է վկայութիւն՝ որպէս զի ասիցես. վկայ կոչեմ զա̃ծ և զորդի և զծառայսն նորա, թէ նոցա առաջի պատուիրեցի քեզ և պատուիրեմ ։ Երկեցուցանէ զՏիմոթէոս ։ Եւ եթէ զայս ասաց, ապա և 'ի միւսն որ քան զամենայն ինչ սաստկագոյն է, և ունիցի այնչափ զկարգս եկեղեցւոյ, զձեռնադրութեանցն ասեմ ։

«Զձեռն վաղվաղակի յուրուք վերայ մի դնիցես, և մի կցորդ լինիցիս մեղաց օտարաց» ։ Զինչ իցէ վաղվաղակին. մի յառաջին փորձն ևեթ կամ յերկրորդն կամ յերրորդն ապաստան լինել, այլ բազում անգամ 'ի քննին արկանել և հաւաստեաւ ընտրել ։ Քանզի չէր առանց պատժոց գործն. զի ընդ նոցա մեղացն դու դատաստան տալոց ես՝ որ զիշխանութիւն տայցես, նա և զանցանելոցն և մեղացն ։ Զի որ զառաջնոյն անփոյթ առնիցէ և վայրապար թողուցու, և յետնոցն ևս մեղաց պատժապարտ գտանի. զի զառաջինն չետ ապաշխարել, և յետնոցն պատճառք գտանի. զոր օրինակ և բարի գործոց հաղորդ գտանիցի, նոյնպէս և մեղացն կցորդ ։ «Զանձն քո, ասէ, սուրբ պահեսջիր». զզգածութենէ պատուիրէ ։

«Այսուհետև մի միայն ջուր ըմպիցես, այլ սակաւիկ մի և գինի խառնեսջիր վասն ստամոքսի և ստէպ ստէպ հիւանդութեանցդ» ։ Եթէ առն միում որ այնչափ 'ի պահս մաշեալ է, և ջրով ևեթ զպէտսն վճարեալ, մինչև 'ի հիւանդութիւն անկանել և 'ի ստէպ հիւանդութիւն ցածնուլ, և նա չլինէր դժկամակ, որչափ ևս առաւել մեք՝ յորժամ լինիցիմք զխրատուք չպարտիմք դժուարել ։ Եւ էր վասն արդեօք չողջացոյց զստամոքսն, որոյ և հանդերձքն զմեռեալս յարուցանէին. յայտ իսկ է զի և զայն կարող էր առնել, և էր վասն

1 Յօրինակին այն յոր գր. . . մտանիցեն ։

չարար։ Զի և այժմ տեսանիցեմք արս մեծամեծս և առաքինիս 'ի հիւանդութեան՝ մի գայթակղեսջուք, քանզի և այն յօգուտ գործէր. զի եթէ նմա տուաւ հրեշտակ կափիչ սատան զի մի հպարտասցի, որչափ ևս առաւել Տիմոթեայ, զի բաւական էին նշանքն ա-ծել 'ի հպարտութիւն։ Ամին իբր իսկ օրինաց բժշկու-թեան թոյլ ետ նմա ծառայել, զի և նա խոնարհեսցի, և այլք մի գայթակղեսցին, և ուսանիցեն թէ սորին մե-րոյ բնութեանս էին և կատարեցեն այնպիսի ազգու-թիւնս։ Աս և յայլ ևս ցաւս անկեալ էր. և զայս ա-նաքիւք յայտ առնէ, թէ վասն ստէպ ստէպ հիւանդու-թեանցդ։ Այլ թէպէտ 'ի ստամոքսէն և յայլոց անդա-մոցն ցաւոց ստէպ խօթանայցէ, սակայն չհրամայեաց նմա համարձակել 'ի գինի, այլ որչափ առողջութեան պէտք իցեն և ոչ փափկութեան։

“Այն մարդք որոց մեղքն յայտնի են, և յառաջա-գոյն երթան 'ի դատաստան, և են որք զկնի երթան”։ Քանզի վասն ձեռնադրութեանցն ասաց՝ թէ մի լինի-ցիս կցորդ մեղաց օտարաց։ Այլ արդ զիա՞րդ, ասէ, եթէ չգիտիցեմ զինչ պատիժ իցէ։ “Այն, ասէ, մարդք որոց մեղքն իւրեանց յայտնի են, և յառաջագոյն երթան 'ի դատաստանն, և են որոց զկնի երթան”։ Այնոցն, ասէ, յայտնի իսկ են, և յառաջագոյն կանխեն, և կի-սոցն ոչ նոյնպէս։ Այլ բարւոք գործքն յայտնի են, և որ այլ ազգք ինչ են՝ չկարեն թաքչել։

“Որ միանգամ ընդ լծով ծառայութեան իցեն, զիւ-րաքանչիւր տեարս ամենայն պատուի արժանի համա-րեսցին, զի մի անուն ա̅յ և վարդապետութիւն հայհոյ-եսցի”։ Այլ ամենայն պատուի, ասէ, արժանի համա-րեսցին. մի, ասէ, զի հաւատացեալք իցեն՝ համարես-ցիս թէ ազատ իցես. զի ազատութեան գործ այն է յոր-ժամ բարւոք ծառայիցես։ Զի անհաւատն յորժամ տեսանիցէ թէ 'ի հաւատոյն ապաստան յանդգնագոյն ինչ գնայցեն, ևս յաճախագոյն հայհոյէ, որպէս թէ կրօնքն 'ի կռիւ ինչ գրգռիցեն. իսկ յորժամ հնազանդ և հպատակ տեսանիցէ, առաւել հաւանի, ևս քան զևս բանիցն անսայցէ. և այնպէս ա̅ծ փառաւորի, և քարո-զութիւն ոչ հայհոյիցի։ Այլ արդ զինչ, ասէ, թէ հա-ւատացեալ ևս իցեն տեարքն. ևս առաւել պարտ է

հնազանդ լինել վասն այ անուանն: «Որ հաւատացեալ տեարս ունիցին, ասէ, մի արհամարհեսցեն զնոսա, վասն զի եղբարք են. այլ առաւել ևս ծառայեսցեն, զի հաւատացեալք են և սիրելիք, և զբարերարութե՟ յանձին ունին»: Զի եթէ այնչափ, ասէ, արժանի եղեն պատուոյ մինչև եղբարք տերանց լինել վասն հաւատոցն, յայն սակս առաւել պարտին հնազանդ լինել:

«Ախտոց մեղքն, ասէ, յառաջագոյն երթան 'ի դատաստանն». այսինքն թէ աստ կէսք չարագործքն թաքչին, և կէսքն ոչ. իսկ անդ ոչ բարիք և ոչ չարքն կարեն թաքչել: Իսկ զինչ իցէ՝ յառաջագոյն երթան: Այսպիսի ինչ. յորժամ մեղանչիցէ այնպիսի ինչ մեղս՝ որ արդէն կարող իցեն դատապարտել, և չանսայցէ ամե՟ գալ յուղղութիւն, ունել ունիցի ակն ուղղութեան, և գործս ինչ այնպիսի ոչ ցուցանիցէ: Իսկ արդ առ ո՞ր ինչ իրս ասացեալ իցէ զայս. թէպէտ և աստ, ասէ, թագուցանեն, սակայն անդ չկարեն թագուցանել, քանզի անդ ամենայն ինչ մերկապարանոց և յայտնի կայցէ: Իսկ այս մեծ մխիթարութիւն է այնոցիկ՝ որք զուղղութիւն առնիցեն:

Քանզի ասաց՝ թէ մի ինչ ըստ ակնառութեան, բարւոք[1] յաւելու և զմեկնութիւն նորա. «Որ միանգամ, ասէ, ընդ լծով ծառայութեանն իցեն, զիւրաքանչիւր տեարս ամենայն պատուոյ արժանի համարեսցին»: Իսկ այսպիսի բարք եպիսկոպոսի առն վայել իցեն. այս, ասէ, և կարի իսկ քաջ: Իսկ տեսանեմք ամենայն ուրեք, զի ծառայիցն առաւել քան տերանցն տայր հրաման, և ընդ նոսա մեղմով հեզութեամբ խօսի, և բազում ճառս յուզէ. ներելով, ասէ, առնիջիք զպատուհասն: Իսկ ընդէ՞ր արդեօք. առ անհաւատսն յիրաւի իսկ յաճախէ զասասն, քանզի և անսայրն ոչ. իսկ առ հաւատացեալս հեմ ոչ, զի մեծամեծ դարմանքն 'ի տերանց ծառայիցն լինին՝ քան թէ 'ի ծառայիցն տերանց: Զի նոքա և ոսկի ծախեն վասն նոցա յառաջ գալոյ և մարդանալոյ, և վասն հանդերձից և վասն այլոց պիտոյից հոգան. որպէս զի աւելի ծառայութիւն տեարքն ծառայիցն հարկանեն, զոր և աստ իսկ ակնարկեաց՝ եթէ վասն զի հա-

1 Ցօրէն. պակասէր բարւոք. . զմեկնութիւն նորա. յաւելու 'ի յունէն:

ւատացեալքն են և սիրելիք, և զբարերարութիւն յան-
ձին ունին, ջանան և տառապին վասն նոցա հանգստեան.
և չպարտիցին պատուել 'ի ծառայից:
Իսկ թէ ծառայիցն այսպէս պատուիրեաց հնազանդ
լինել իւրաքանչիւր տերանց, 'ի մտի առէք որպիսի
ինչ պարտ իցէ մեզ մերում տեառնն պաշտօն մատու-
ցանել, որ յոչնչէն ած զմեզ 'ի գոյ, որ կերակրէ և զգե-
ցուցանէ. թէ և այլ ազգ ոչ՝ գոնեայ իբրև զծառայս որ
մեզ ծառայիցեն՝ ծառայեսցուք նմա: Ո՞չ ամենայն
կեանք նոցա յայն հաստատեալ կան՝ զի զտեարսն հան-
գուցանիցեն. և այն իսկ է գործք նոցա և նոյն կեանք,
զի զտէրունիսն ևեթ հոգայցեն, և զիւրեանցն յանկարծ
ուրեք ընդ երեկս: Իսկ մեք զնորին հակառակն, զմեր
հոգս համապազ հոգամք, և զտէրունիսն ոչ սակաւ ինչ.
և այն զի չէ իսկ մեզ կարօտ, որպէս տեարքն ծառայ-
իցն. այլ և այն ևս շահք 'ի մեզ կրթին: Ոի անդ
սպասաւորութիւն ծառային տեառնն օգուտ[1] գործէ.
իսկ աստ սպասաւորութիւն ծառային՝ տեառնն և ոչ
ինչ, և ծառային զամենայն օգուտ գործէ, ըստ այնմ
թէ "Բարիքն իմ քեզ չեն պիտոյ":
Նղէ ասա, զի՞նչ շահ գործէ այ եթէ ես արդարա-
նայցեմ, և կամ զի՞նչ վնաս եթէ անիրաւ լինիցիմ. ո՞չ
ապաքէն անմահական բնութիւն է, անչարչարական էու-
թիւն, ո՞չ ապաքէն 'ի վեր քան զամենայն նախս է.
ծառայք ոչ ինչ սեփական ունին, այլ զամենայն ինչ
զտէրունի, թէպէտ և կարի իսկ քաջ մեծամեծացեն. իսկ
մեք բազում ինչ սեփական ունիմք, քանզի ոչ վայ-
րապար առաք զայսպիսի պատիւ յամենեցունց Թագա-
ւորէն: Ո՞ր ոք տէր վասն իւրոց ծառայից ետ զորդին իւր
'ի մահ. չիք ոք, չիք ուրեք. այլ ամենեքեան կամին զծա-
ռայս փոխանակ որդւոց[2] տալ: Իսկ աստ է նմին հակա-
ռակ. յիւր որդին ոչ խնայեաց, այլ վասն մեր ամենե-
ցուն մատնեաց, վասն թշնամեաց և ատելեաց: Ծա-
ռայք եթէ ծանր ինչ հրաման առնուցուն, սակայն և
այնպէս չկարեն խեռել, և մանաւանդ յորժամ բարե-
բարք իցեն. և մեք բազում անգամ ստահակիմք: Ծա-

1 Պակասէր դարձեալ. օգուտ գործէ ... ծառային՝ տեառնն. Լրա-ցաւ 'ի յունէն:

2 Յօրինակին գրեալ որդւոց առ-նել. եդաւ ըստ յունին:

ռայից ոչ երբէք այնպիսի ինչ խոստանան տեարք՝ որպէս մեզն ա͞ծ . այլ ազատութիւն ինչ ասեն՝ որ թերեւս չար քան զծառայութիւն իցէ ։ Բազում անգամ յորժամ․ սով որ լինիցի, եւ չար քան զծառայութիւն լինի այսպիսի ազատութիւն, և պարգեւ մեծ իմն թուի ։ Իսկ առ ՚ի յա͞յն չիք ինչ ժամանակաւոր, չիք ինչ ապականացու . այլ զի՞նչ . «Ոչ կոչեցից զձեզ, ասէ, ծառայս . բարեկամք իմ էք դուք» ։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Ընտանեցուք, սիրելիք, երկիցուք ակնածեսցուք ։ Փարթար որպէս ծառայքն մեզ ծառայիցեն՝ ծառայեսցուք մեք տեառնն, մանաւանդ թէ և ոչ սակաւ ինչ մասն զայնպիսի ծառայութեան ցուցանեմք ։ Նոքա վասն հարկին որ ՚ի վերայ կայ՝ իմաստնանան ցածնուլ ընդ յարկօքն միայն ծածկել և զկարեւոր կերակուրսն բաւական համարել, և մեք փափկութեամբն թշնամանեմք . եթէ ոչ այլ ուստեք, գոնէ անտի ցուցանիցեմք զիմաստութեան կանոնս ։ Գիտեն գիրք ոչ միայն առ ծառայսն, այլ և առ անասունս առաքել զմարդիկ, որպէս յորժամ մեղուի և մրջեան հրամայիցէ նմանել . այլ ես աղաչեմ ծառայից նմանել ։

Որչափ ինչ նոքա վասն մեր երկիւղի առնեն, գոնէ այնչափ և մեք վասն ա͞յ երկիւղին առնիցեմք ։ Բայց չգիտեմք թէ այնպիսի ինչ երբէք գործ գործեցաք ։ Նոքա թշնամանին, և առ մերում ահի քան զամենայն փիլիսոփայս զգօնացեալք՝ չիշխեն ձիկ հանել . յիրաւի և անիրաւ թշնամանին, և ոչ կարեն ընդդէմ դառնալ, այլ աղաչեն մազթեն, թերեւս զրկիցին . և չիշխեն աւելի ինչ քան զպէտսն առնուլ, բազում անգամ թերեւս և սակաւք քան զպէտսն . և ժուժկալք լինին, և ՚ի խոտեայ խշտիսն ննջեն, և հացիւ շյագին, և այլով բազում իրօք անտես լինին և չտրտնջեն նոքա առ մերում ահի . յորժամ յանձն առնուցուն պահել ինչ, ողջ բովանդակ հատուցանեն և չիշխեն հատանել ։ Բայց մի՛ ինչ զչարագործաց ծառայիցն ասիցես, այլ զայնցանէ որք չիցեն կարի ղժնդակք ։ Իսկ թէ սպառնայցեմք, խոր-

չին վաղվաղակի։ Եւ արդ չիցե՞ն այս ամենայն խնամատութեանք արք։

Եւ զայն մի՛ ինչ առիցես եթէ նոցա հարկ 'ի վերայ կայ. և 'ի քո վերայ հարկ գեհենին, և ոչ այսպէս ընդ-դատաստանս. և չառնես ինչ պատիւ ա՛յ, որչափ դու 'ի ծառայիցն վայելես։ Մի տուն զոր հրամայեցեր ունի, և չերթայ 'ի վերայ ընկերին, և չեղծանի ինչ ակն գնելով զընկերին։ Եւ զայս եթէ կամիցի ոք՝ 'ի տունս աւագացն գտանէ կարգեալ, և յանկարծ ուրեք տեսանես եթէ ծառայ զծառայն յափշտակիցէ, և կամ թէ զիր ինչ ապականիցէ։ Իսկ 'ի մէջ ազատորերոյ ամէն հակառակ անուղղայք գործին. զմիմեանս խածանեմք, զմիմեանս ուտեմք. չերկնչիմք 'ի տեառնէ, յափշտակեմք զծառայակցացն, գողանամք, հարկանեմք նոցին իսկ առաջի։ Եւ զայս չէ հնար եթէ ծառայն առաջի տեառնն կարիցէ առնել. այլ թէպէտ և հարկանիցէ՝ գաղտ 'ի տեառնէն, և եթէ թշնամանիցէ՝ զանխուլ ուրեք։ Իսկ մեք առաջի ա՛յ գործեմք զամենայն չարիս յաժամ տեսանիցէ և լսիցէ, և յանդգնիմք։ Երկիւղ տեարանց առաջի աչաց ծառայիցն կայ հանապազ. և մեր առաջի և ոչ երբէք։ Վասն այսորիկ ամենայն ինչ մեր 'ի վայր կործանեցաւ, և ամենայն ինչ եղծաւ փչկեցաւ, և ընաւ զմտաւ չածեմք զմեղսն 'ի ծառայիցն որ յանցանիցեն մեզ, զամենայն յանցանանս ճշգրիւ պահանջեմք զմեծամեծս և զմանունս։

Զայս ասեմ ոչ թէ զծառայսն 'ի ծուլութիւն ինչ կամիցիմ յորդորել, այլ զի զմեր ծուլութիւնն 'ի փոյթ դարձուցից. զի փարթար այնպէս ծառայեսցուք ա՛յ, որպէս մեզ ծառայքն կան 'ի հարկի. այնպէս պաշտիցեմք զարարիչն, որպէս զմեզ մեր բնակիցքն պաշտիցեն, որք ոչ այնպէս ինչ ունին առ 'ի մէնջ՝ որպէս մեք յարարչէն։ Ազատք են և նոքա իբրև զմեզ բնութբ. " Իշխեսցեն, ասէ, ձկանց ծովու և թռչնոց երկնից,, և զմէնջ և զնոցանէ առ հասարակ է ասացեալ։ Ոչ էր բնութեամբ ծառայութիւն, այլ յիշխանութենէ և 'ի բռնութենէ. սակայն բազում պատիւս առնումք 'ի նոցանէն։ Մեք բազում սպասաւորութբ հաւաստեաւ պահանջեմք 'ի նոցանէ, և ա՛յ ոչ սակաւ ինչ մասն հատուցանեմք առ 'ի մէնջ, որ և այս իսկ մեծաւ շահիւ դառ-

նալոց է առ մեզ. որչափ մեք փութով ծառայիցեմք նմա, ևս քան զևս առաւել շահիմք զանձինս ։ Եւ արդ մի յայնպիսի շահէ զրկեալ գտանիցիմք. զի մեծ բաւական է և անկարօտական, և հատուցումն և շահ այսրէն 'ի մեզ դառնայ ։ Եւ արդ ոչ եթէ նմա ինչ վաստակիմք, այլ անձանց, այնպէս խնամով և ահիւ և երկիւղիւ ծառայեսցուք նմա, զի հասանիցեմք պարգևացն խոստացելոց շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն ։

## ՃԱՌ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

“Զայս ուսուցանիջիր և մխիթարիջիր ։ Եթէ ոք օտարուսոյ ինչ ուսուցանիցէ, և ոչ անսայցէ ողջմտութեան բանից տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և աստուածպաշտութեան վարդապետութեանս, այնպիսին հպարտացեալ է և ոչ ինչ գիտէ, այլ ախտացեալ է 'ի խնդիրս և 'ի բանից գրգռութիւնս, ուստի ծնանի հեռ, նախանձ, հայհոյութիւնք, կարծիք չարք, խառնակութիւն ապականեալ մտաց մարդկան և զրկելոց 'ի ճշմարտութենէ, որք շահավաճառս համարին զաստուածպաշտութիւն. 'ի բաց մերժեսջիր յայնպիսեաց ։ Քանզի մեծ շահավաճառ աստուածպաշտութիւն է, որ չափով մարթիցէ ընդունել, զի ոչ ինչ բերաք յաշխարհս յայս, յայտ է եթէ ոչ ինչ տանել կարիցեմք աստի”։

Ոչ ճոխութեան միայն պէտք են վարդապետի, այլ և բազում հեզութեան, զոր օրինակ և ոչ հանդարտութեան միայն, այլ և սաստի. զամենայն ուսուցանէ երանելին Պաւղոս. երբեմն ասէ՝ պատուիրէ՛ զայս և ուսո, և երբեմն թէ ուսո զայս և պատուիրէ՛ ։ Զի եթէ բժիշկք զխօթն աղաչեն ոչ զի ինքեանք յառողջութեան վայելեն, այլ զի զնոսա յախտէն բուժիցեն և զջերեալն կանգնիցեն, որչափ ևս առաւել և մեզ զայնանի որ ուսանելն պարտ իցէ՝ այնպիսի ինչ բարս ցու-

ցանել և աղաչել։ Եւ ոչ ծառայս ևս զանձն զի լինել նոցա երանելին Պաւղոս. "Ոչ եթէ զանձինս ինչ քարոզեմք, ասէ, այլ զՅիսուս Քրիստոս տէր, և զմեզ ծառայս ձեզ վասն Քրիստոսի". և դարձեալ եթէ "Ամենայն ինչ ձեր է, եթէ Պաւղոս և եթէ Ապողոս". և ծառայէ զայսպիսի ծառայութիւն յօժարութեամբ, որ չէ ծառայութիւն, այլ առաւել լաւ քան զազատութիւն. զի նա է, ասէ, ծառայ որ զմեզ առնիցէ։

"Եթէ ոք օտարոտիս ուսուցանիցէ և չանսայցէ ողջմտութեան բանից տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և ըստ ածպաշտութեան վարդապետութեան, այնպիսին հպարտացեալ է և ոչ ինչ գիտէ"։ Ապա ոչ ուրեմն 'ի գիտելոյն է ախորժել զհպարտութիւն, այլ 'ի չգիտելոյն. զի որ ճանաչէ զածպաշտութեան բանսն, այնպիսին առաւել գիտէ խոնարհել. որ զառողջ բանսն հաւաստեաւ գիտէ, այնպիսին և ոչ երբեք ախտանայ։ Որ ինչ 'ի մարմինս այտուցմն գործէ, զնոյն և 'ի հոգւոյն հպարտութիւն. զոր օրինակ անդ զայտուցեալն հասեմք թէ ողջ իցէ, նոյնպէս և ոչ աստ զպարարտամն ողջամիտս։ Ապա ուրեմն յանուղղութէն է չգիտելն, և 'ի չգիտելոյն հպարտանալ. զի որ ոչ գիտիցէ որպէս արժանն է գիտել, այնպիսին է որ բնաւ չգիտէ։ Իսկ զի 'ի չգիտելոյն հպարտութիւն ծնանի, յայտնի է. Քրիստոս ունայնացոյց զանձն, և արդ որ զայն գիտիցէ՝ չմեծամտէ երբէք, քանզի չունի ինչ մարդ յանձնէ, եթէ ոչ յայ. և եթէ այնպէս իցէ, չպարտիս մեծամտել. "Որ ինչ ունիս զոր ոչ առեր"։ Եւ ինքն զոտս լուաց աշակերտացն. և որ զայս գիտիցէ, զիարդ իցէ զի ամպարհաւանճ իցէ. նմին իրի իսկ և ասէ՝ եթէ "Յորժամ զամենայն ինչ առնիցէք, ասասջիք եթէ մեք ծառայք անպիտան եմք"։ Մաքսաւորն 'ի խոնարհելն միայն եղև հաճոյ, և փարիսեցին 'ի հպարտութենէ ևեթ կորեաւ. և որ հպարտացեալն իցէ, յայնպիսեաց ինչ ոչ ճանաչէ։ Դարձեալ և ինքն իսկ Քրիստոս ասէ. "Եթէ չար ինչ խօսեցայ՝ վկայեա վասն չարին, և եթէ բարի՝ ընդէ՞ր հարկանես զիս"։

"Այլ ախտացեալ է, ասէ, 'ի խնդիրս". ապա ուրեմն ախտանալ է խնդրելն. "և բանիցն կռիւք"։ Իսկ յիրաւի իսկ, յորժամ 'ի բազում խորհրդոց միտքն ջեր-

մնայցեն, յորժամ 'ի շատալ տագնապի անկանիցի, յայնժամ խնդրէ. իսկ[1] յորժամ յառողջութեան իցէ, յայնժամ ոչ խնդրէ, այլ զհաւատան եւեթ ընդունի: Ի խնդրելոյն և 'ի բանիցն մրցմանց չկարէ ինչ գըտանել. զի զոր հաւատքն միայն խոստանան, յորժամ խնդիրքն յափշտակիցեն, չերևի ուրեք 'ի միջի և չկարէ իմանալ, ասէ: Վասնզի և ոչ յորժամ կամիցի որ խնդրել և զաչս խնուցու՝ կարէ գտանել. և կամ դարձեալ թէ և բաց իսկ իցեն աչք, և զանձն զանխուլ ուրեք թագուցանիցէ և զերեսս 'ի ճառագայթիցն դարձուցանիցէ և խնդրիցէ ինչ, չկարէ գտանել. նոյնպէս և առանց հաւատոցն չգտանէ ինչ, բայց եթէ կուրք 'ի հարկէ ծնանիցին:

“Ուստի ծնանիցին հայհոյութիւնք, կարծիք չարք„. այսինքն այնպիսի իմն թուել, և կրօնք չարք 'ի խնդրելոյն: Յորժամ զոյն որ չիցէ պարտ՝ կարծեմք, յորժամ 'ի խնդիր անկանիցիմք: “Խնդրութիւնք[2]„ ասէ. այսինքն պարապել յամել 'ի նմին, զի յորժամ պարապիցի ոք ումեք, և կամ թէ ընդ ոք շփիցի. որպէս և քոսոտք ոչխարք յորժամ յողջոյն հպիցին, և զնոսա ևս ախտիւ լնուն, նոյնպէս և մարդիկ չարք յայլոց տան զչարութիւն: “Զրկեալք, ասէ, 'ի ճշմարտութենէ, շահավաճառք համարին զաստուածպաշտութիւնն„: Տեսանե՞ս որչափ ինչ ծնանին բանիցն մրցութիւնք. զօշաքաղութիւն, անգիտութիւն, հպարտութիւն. քանզի զհըպարտութիւն անգիտութիւն ծնանի:

“Յայնպիսեացն, ասէ, 'ի բաց մերժեա„. և չասաց թէ հպեաց: “Յանէ հերետիկոսէ յետ միանգամ և երկիցս խրատելոյ հրաժարեսջիր„: Ցուցանէ զնոցանէ թէ ոչ այնչափ յանգիտութենէ՝ որչափ 'ի ծուլութենէ և զանգիտութիւնն իսկ ունին: Եւ զմարդս որ հանապազ վասն կարասւոյ կռուիցեն, Երբ կարիցես ածել 'ի հաւան. այլ ազգ ոչ կարիցես ածել զայնպիսին 'ի հաւան, եթէ ոչ դարձեալ և դու ևս տայցես, սակայն և ոչ այնպէս լցուցանես զցանկութիւն նոցա: “Մին ագահի ոչ յագի մասամբ„: Եւ պարտ է այնուհետև յայն-

1 Պակասէր յօրինակին իսկ... ոչ խնդրէ. յաւելեալ 'ի յունէն:

2 Այդպէս յօրինակին, որ 'ի բնաբանին է խնդրախնդրութիւնք:

պխտեացն որ չգայցեն յուղղութիւն, 'ի բաց մերժիլ։ Իսկ եթէ զայն որում հարկն իցէ կամել՝ խրատէ չհր-պել և ոչ մնա լինել, որչափ ևս առաւել զաշակերտեալսն որ տակաւին յաշակերտութեան կայցեն։

“Շահավաճառ համարին, ասէ, զա̃ծպաշտութի̃”։ և զնորին հետ ասէ՝ եթէ “Շահավաճառ մեծ ա̃ծ-պաշտութիւն է բաւականութեամբ հանդերձ”. ոչ յորժամ կարասի ունիցի, այլ յորժամ չունիցի։ Զի մի ոք 'ի տրտմութիւն վասն աղքատութեանն կործանիցի՝ կանխէ և յարուցանէ. շահավաճառ համարին, ասէ. և է իսկ շահավաճառ, ոչ այնպէս ինչ, այլ կարի իսկ մեծ։ Նախ զայն աղարտէ, և ապա զայս յարգէ։ Եւ զի չէ ինչ առաւ շահավաճառս՝ յայտ յայտնամանէ է, զի աստէն մնայ, և ոչ երթայ ընդ մեզ և չլինի ուղեկից. Եւ ուստի յայտ իցէ. զի ոչ յորժամ եկաք՝ բերաք ինչ յաշխարհ, և յորժամ երթամք՝ տանիցեմք ինչ։ “Այլ ունիմք հանդերձս անձանց և կերակուրս, և այնու շատասցուք”։ Այնչափ պարտ է ունել և այնպիսի ինչ՝ որ կարող իցէ բաւական իցէ, և այնպիսի ինչ զգենուլ՝ որ ծածկել և եթ պարտ իցէ ապուցանել զմերկութիւն, մի ինչ աւելի. զի զայն և դոյզն հանդերձք կարեն վճարել, և զմեւսն ոչ կարէ իսկ բազումք։ Ապա այսու յորդորէ։

“Որք կամիցին, ասէ, մեծանալ”։ Ոչ լոկ մեծանալ, այլ թէ որ կամիցինն։ Քանզի եթէ մարթ իցէ ումեք ինչս ունել և բարւոք մատակարարել, յորժամ ոչ ինչ զայցէ զկարասեաւն, և յաղքատս ծախիցէ։ Ապա ոչ ուրեմն զայնպիսի ոմն, այլ զցանկացողսն բամբասէ։ “Որ կամիցին, ասէ, մեծանալ, անկանին յորոգայթ և 'ի փորձութիւնս սատանայի և 'ի պէսպէս ցանկութիւնս և 'ի վնասակարս՝ որք ընկղմեն զմարդիկ”։ Բարւոք ասաց թէ ընկղմեն, զի չիցէ այսուհետև միանգամ 'ի վեր հանել։ “Ի սատակումն, ասէ, և 'ի կորուստ”, աստ և 'ի հանդերձեալ աշխարհին։

“Զի արմատ ամենայն չարեաց արծաթսիրութիւն է, որում ցանկացան ոմանք և մոլորեցան 'ի հաւատոցն, և զանձինս արկին 'ի ցաւս բազումս”։ Հաւասիկ երկուս ինչ իրս դնէ. այլ որ կարէին սաստիկ թուէր նոցա՝ որ աստէն հատուցանիցէ, զայն յետոյ. “և զանձ-

ձինս, ասէ, արկլին 'ի ցաւս բազումս ,,. և զայս չմարթի այլ ուստեք ուսանել, այլ 'ի նոցանէ որ մօտ 'ի մեծատունսն բնակիցեն, որչափ լան, որչափ կոծին, որչափ 'ի յողբս հարկանին ։

«Բայց դու, ով մարդ, յայնպիսեացն փախիր ,,։ Ով մարդ այ̃ ։ Մեծ է պատիւն. ամենայն մարդիկ այ̃ են, այլ առաւել ևս սերտիւ սուրբք և արդարք, ոչ միայն ըստ արարչութեան համարոյ, այլ և ըստ տեսան տեսչութեանն և ըստ սեփական լինելոյ ։ Այսէ այ̃ մարդ իցես, ասէ, զաւելորդսն մի՛ խնդրիցես որ չտանիցին առ ած̃ ։ «Բայց փախիր յայնպիսեացն, և երթ զկնի արդարութեան ,,։ Ոչ զերկրաւորան ասատիկս բարբառի ։ Ոչ չասաց թէ 'ի բաց կաց և մերժեաց, այլ թէ փախիր և սուէպ զհետ երթ արդարութեան, որպէս զի մի՛ լինիցի[1] 'ի մնել ուրեք ։ Ածպաշտութեան՝ կրօնից ասէ. զհաւատոց՝ որ անօգուտ խնդրոցն հակառակ է. զսիրոյ, զհամբերութեան, զհեզութեան ։ «Բայց մարտիր զբարւոք մարտն հաւատոց, և բուռն հար զկենացն յաւիտենից ,,. ահաւասիկ վարձս ևս ցուցանէ ։ «Զոր կոչեցարն, ասէ, և դաւանեցար զբարւոք դաւանութիւն 'ի յոյս կենացն յաւիտենից առաջի բազում վկայից ,,. այն ինչ է թէ մի՛ յամօթ առնիցես զայնպիսի համարձակութիւն ։ Ո՞ր 'ի զուր վաստակիս ։

Զո՞ր փորձութիւն և յորոգայթ ասիցէ անկանել որք կամիցին մեծանալ. որ 'ի հաւատոյն վրիպեցուցանիցէ և 'ի վիշտս արկանիցէ և ևս յանդգնագոյնս գործիցէ ։ «Բայց 'ի ցանկութիւնս, ասէ, անմիտս ,,։ Բայց զի՞արդ չիցէ անմիտ ցանկութիւն, որ զմորոսօքն գայցեն, և զթըզուկս պարարիցեն, ոչ 'ի մարդասիրութեան աղագս, այլ վասն խրախ լինելոյ. յորժամ ձկունս 'ի սրահս առնիցեն, յորժամ զգազանս սնուցանիցեն, յորժամ ըղշամբք գայցեն և զձիս զարդարիցեն և քան որդւոց՝ ևս քան դարմանս տանիցեն ։ Ամենայն անօգուտ և աւելորդ է, և չէ ինչ կարևոր և շահաւոր ։ «Ի ցանկութիւնս, ասէ, անմիտս և վնասակարս ,,։ Ո՞ր ասիցէ վնասակար. յորժամ զանպատեհ ցանկութիւնսն ցանկանայ-

1 Փոխանակ մի՛ լինիցի 'ի մէջ ուրէք, յայնն ասէ մի՛ ապականութեան յանձնաւորութեամբն հոգւոյն ։

ցեն, յորժամ զընկերին ընչից ակն դնիցեն, յորժամ առ փափկութեան ողորկիցին, յորժամ արբեցութեան փափագիցեն, և մահ և սպանութիւն գործել ընկերացն ցանկանայցեն: Բազումք և այլ իմն բանաւոր ցանկութիւնս կուտեցին յանձինս և կորեան: Օ՜ի աշխատիցիս յանօգուտ, մանաւանդ թէ 'ի վնաս իսկ: Եւ բարուոք ասաց, թէ մոլորեցան 'ի հաւատոց. քանզի չտայ նոցա արծաթսիրութիւն զՃանապարհն տեսանել, անդրէն նահանջէ առ իւր զաչս նոցա, և առակաւ մեղմով գողանայ: Օ՜որ օրինակ զՃանապարհ ոք զուղղորդ գընայցէ, և զմիտս այլուր զբօսուցանիցէ, գնալ գնայ, և չգիտիցէ թէ անցանիցէ ընդ քաղաքն կամ ընդ գիւղն յոր դիմեալ երթայր 'ի քարշել տանել ոտիցն յախուռն ընդ վայր, այնպիսի ինչ է արծաթսիրութիւն:

"Եւ արկին, ասէ, զանձինս 'ի ցաւս բազումս,,: Տեսանես, զինչ արկնին ակնարկէ: Օ՜որ օրինակ[1] ոք 'ի մէջ փշոց անկանիցի՝ յոր վայր հասանիցեն, յարեան առնիցեն, վէրս գործիցեն. և արդ որչափ հոգս հոգայցեն, որչափ ցաւս ցաւիցին: Վասն այնորիկ ասէ՝ փախիր յայնմանէ, և երթ զկնի արդարութեան, զա̃ծպաշտութեան, զհաւատոց, զսիրոյ, զհամբերութեան, զհեզութեան: Քանզի 'ի սիրոյ անտի գործի հեզութիւն: Եւ այսու զհամարձակութիւն և զքաջալերութիւն նորա գովէ, թէ յանդիման ամենեցուն առաջի իսկ դաւանեցեր: Յիշեցուցանէ զժամանակն, յորում 'ի գիր անկեալ խրատէր՝ թէ բուռն հար զկենացն յաւիտենից: Ապա ուրեմն ոչ դաւանութեան միայն պէտք են, այլ և համբերութեան, որպէս զի հանապազ իսկ պարտ է ժուժկալ լինել 'ի դաւանութեանն և 'ի սաստիկ պատերազմին և 'ի պէսպէս քրտունս. և յիրաւի իսկ, որպէս զի ցանկ չխուսափել. զի բազում դայթակղութիւնք են, բազում խափանութիւնք. վասն այնորիկ իսկ նուրբ և նեղ Ճանապարհ կոչի:

1 Զհատուածդ զեղչեալ յօրինակի մերում, անթերի ունի յունականն այսպէս. Զոր օրինակ եթէ ոք փուշս ընկեսցի, արեանք [illegible] լցեալ և վէրս գործէ, զնոյն իրս և անկեալք 'ի ցանկութիւն, և զգեթին ցաւոցն վարանի. չէ մարթ ասել թէ քանի հոգս՝ որչափ ցաւս առնիցեն զնա: Վասն այնորիկ ասէ:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Յամենայն կողմանց պարտ է զգուշանալ, ամենեւին ամփոփել, ամենեւին պնդակազմ լինել: Յամենայն կողմանց պէսպէս ցանկութիւնք պատեն զաչս մտաց եւ մարմնոյ, ընչից, փափկութէ, գրգութեան, փառաց, հարըստութեան, ցասման, բարկութեան, նախանձու. իսկ մարդասիրութեանն ոչ ասատէն ինչ առ բազումս յուցանելն ցանկալի երեւք: Նու ընդէր արդեօք. քանզի 'ի հանդերձեալ աշխարհին պարգեւելոց են: Իսկ աստի ցանկութիւնքն անդրէն իսկ առաջի դնեն պատիւս, հեշտութիւնս, հանգիստս, ոչ իսկ ճշմարիտս, այլ վեր 'ի վերոյ յածեալս: Եթէ ոք թոյլ եւ մեղկ իցէ արանց արութեան՝ զայնմանէ բուռն հարկանէ. քանզի յորժամ յաշխատութենէ ճշմարտիցն զանգիտիցէ, ապա յայնմ ըմբռնի: Այնպէս եւ յարտաքին մարտիկսն որ չիցէ ոք քաջ ցանկացեալ պսակաց, համարձակութիւն իսկ է նմա զառաջինն 'ի հանդամանս եւ յարբեցութիւնս պարապել, եւ այնպէս. վատասիրտք՝ որ չիցեն պնդակազմ յարութեան, չեն ինչ պիտանացու 'ի մարտսն յոր կոչեցան. իսկ որ պսակացն ակն ունիցին, թէպէտ եւ բազում վէրս յանձին առնուցուն՝ յուսով հանդերձելոցն մխիթարին եւ յորդորին:

Փախիցուք այսուհետեւ յարմատոյն ամենայն չարեաց, եւ բնաւ իսկ 'ի մնասակարացն փախիցուք: Արծաթսիրութիւն, ասէ Պաւղոս, արմատ ամենայն չարեաց է. մանաւանդ եթէ Քրիստոս իսկ ասիցէ: Նու արդ տեսցուք թէ որպէս ինչ իցէ: Փորձ արդեանցն վըկայէ ընդէր իցէ. վասն բազում ընչիցն. մանաւանդ թէ ոչ վասն բազում ընչից, այլ վասն կամացն այնոցիկ որ չգիտիցեն յօգուտ ծախել. մարթ էր նոքօք զարքայութիւն ժառանգել: Նա աւանիկ ոչ յօգնականութիւն աղքատացն տուաւ եւ 'ի քաւութիւն մեղացն մերոց եւ 'ի հաճոյ լինել նմա, այսու ընդ հակառակս թշուառացն աղքատացն ելանեմք, մանաւանդ թէ ընդ մերոց իսկ ոգւոց, եւ 'ի դիմադարձութիւն նմա: Որ ոմն զայլոյ կարասի յափշտակէ եւ զնա յաղքատութիւն կործանէ, մանաւանդ թէ զիւր իսկ անձն 'ի մահ մատնիցէ. եւ զաղ-

քատոյն սատէն աղքատութեամբն ծնկէ, և զինքն 'ի մշտնջենաւոր տանջանս. միթէ հատուցանէ ինչ իցէ այս և այն։

Իսկ արդ զիարդ չիցէ չար. ոչ ապաքէն անտի են ագահութիւնք և յափշտակութիւնք և թշուառութիւնք և կռիւք և հակառակութիւնք. ոչ մինչև ցմեռեալսն իսկ ձգեցին ձեռս. ոչ մինչև ցհարս և ցեղբարս, և զբընութեան օրէնսն և զԱյ հրամանսն անցին, և զամենայն առ հասարակ կործանեցին՝ յայնպիսի ցանկութենէ ըմբռնեալ։ Իսկ դատախազութիւնքն ոչ ապաքէն անտի լինին. 'ի բաց առ զընչասիրութիւնն, և դադարէ պատերազմ, դադարէ կռիւն, դադարէ թշնամութիւն, դադարէ հերձուածքն և հայհոյութիւնն։ Իբրև զապականիչս և զգայլս պարտ էր զայնպիսին հալածել. որպէս հողմք սաստիկք և ընդդիմակացք յորժամ 'ի խաղաղ համատարած ծովուն շնչիցեն և յատակացն շարժեն և զաւազ անդնդոցն ընդ վերին ալիսն խառնակեն, նոյնպէս և ընչասէրքն զամենայն 'ի վեր 'ի վայր տապալեն։ Չճանաչէ զբարեկամն ընչասէրն։ Ո՛չ ինչ ասացի թէ զբարեկամն, նա և զԱծ եւս չճանաչէ՝ զբաղեալ պատեալ յայնպիսի ցանկութենէ, յիմարեալ յափշեալ։ Չտեսանիցէք զՏիտանոսն[1] որ զսուրն առեալ եղանիցեն. այն մոլորութեան կեղծաւորութիւն է. իսկ ընչասէրքն արդարև իսկ մոլիք և յիմարեալք են։ Դու թէ մերկանայցես զոգիսն նոցա, այնպէս գտանես կազմեալ, ոչ մի սուր և ոչ երկու, այլ բազում սուսերս ունի 'ի ձեռին. չճանաչեն զոք, այլ ամենեցուն իսկ կատարեալ յարձակին, յամենեսեան առ հասարակ հալածեն, ոչ ըղձանս կոտորեն՝ այլ զմարդիկ, նա 'ի վեր իսկ յերկինս ձգեն զհայհոյութիւն. և վասն այսորիկ ամենայն ինչ կործանեցաւ, ամենայն կորեաւ յընչիցն մոլորութենէ։

Դու արդ ում և ում մեղադիր լինիցիս չգիտեմ, զի առ հասարակ զամենեսին իսկ ունի ծանր ախտն, զոմանս յաճախ և զոմանս սակաւ ինչ մասամբ, բայց սակայն զամենեսեան։ Ո՛ր օրինակ հրդեհ յորժամ յանտառ մտանիցէ՝ զամենայն ծախէ և ապականէ, նոյնպէս և ընչասիրութիւն կործանեաց զտիեզերս. Թա-

1 Այդպէս յոյնն. յօրինակին գրեալ էր ղչէմն։

զինուորք, իշխանք, ռամիկք, ծերք, կանայք, արք, մանկունք, առ հասարակ ամենեքեան կապեալ են չարաւն, և կան 'ի մէջ և 'ի խաւարի, և ընդ ամենայն աշխարհ տարածեալ իցէ. չիք որ ընդդիմանայ և տեսանէ, չիք որ զարթնու և զուարթանայ. այլ բազում ամբարտաւանութիւնք վասն ագահութեան առանձինն և 'ի հրապարակս գործին. ուղղութի և ոչ ուրեք գտանի:

Ո՛ քո՞րդ ուղղլիցի, ո՞րպէս կարիցեմք զայնպիսի բոց շիջուցանել. մարթի և գոյ հնար, թէպէտ մինչև յերկինս տաշորեալ ելանիցէ. կամելն միայն լինիցի, և շիջանի հրդեհն. որպէս 'ի կամելոյն բորբոքեցաւ, նոյնպէս և 'ի կամելոյն խափանի. ո՞չ մեր իսկ կամք վառեցին, և մերոյն կամք կարող են ցածուցանել միւանգամ, միայն եթէ կամիցիմք ևեթ: Աւ ուստի՞ ծնանիցի կամելն. եթէ տեսանիցեմք զի մնոտի և աւերօղ է, և անդր չկարէ յուղարկել ընդ մեզ, նա և աստ իսկ բազում անգամ թողու զմեզ. և ինքն աստէն մնայ, և զմեղսն զոր առաք 'ի նմանէ՝ այն ընդ մեզ երթան: Եթէ իմանայցեմք եթէ անդ բազում մեծութիւն է. և եթէ ընդ այնմ զայս կշռիցեմք, քան զցիխ ևս գարշելի: Եթէ իմանայցեմք զի բազում վշտօք լի է, և ժամանակաւոր է հեշտութիւնք աշխարհիս, և ընդ հեշտութեան տրտմութիւն խառն. եթէ զյաւիտենից կենաց զմեծութիւն բարւոք գիտիցեմք, ապա կարեմք զայս արհամարհել: Եթէ իմանայցեմք զի ոչ կարէ մեզ օգուտ գործել, ոչ 'ի փառս, ոչ յառողջութեան և ոչ յայլ ինչ, այլ զնորին հակառակն, զի ընկղմէ 'ի սատակումն և 'ի կորուստ. սաստ մեծանաս, ևս զբազումս ունիս ընդ քեզ, և յորժամ անդ հասանէ երթալ՝ լոկ և մերկ երթայցես: Եթէ զայս ածիցեմք ստէպ ընդ բերան, և յայլոց լսիցեմք, թերևս ունի հնար առողջութեան, թերևս զերծանիցիմք յայնպիսի չարաչար տանջանաց:

Բարւո՞ք է մարգարիտ, այլ 'ի միտ առ զջուր ծովականի, և 'ի խոր ծովու ընկեցեալ կայր վայրապար. բարւո՞ք է ոսկի, բարւո՞ք է արծաթ, այլ 'ի միտ առ զի հող և մոխիր էին, և են. բարւո՞ք է հանդերձք կերպասեայք, այլ որդանց գործ է մետաքսն, կարծիք և կանխակալ մարդկեղէն սովորութիւն, ոչ եթէ բնութեամբ

ինչ ունի զգեղեցկութիւն. զի որ բնութեամբն գեղեցիկ իցէ, չէ կարօտ վարդապետաց։ Այլ դու յորժամ տեսանիցես զպատկերագիրն 'ի պղնձի բնիանի որ դրուագ ինչ վեր 'ի վերոյ օծեալ իցէ ոսկւով, նախ խնդրաս՝ քանզի ոսկի համարիս. իսկ յորժամ քննութիւն զխաբեայ կերպարանսն յանդիմանիցէ, ընդ խաբէութեանն և խնդութիւն եղանէ վաղվաղակի 'ի մտաց։ Տեսանես զի չիք ինչ որ բնութեամբ ունիցի զգեղեցկութիւնս, այլ և ոչ արծաթ ինչ է։ Բանզի յորժամ տեսանիցես զանագ, նախ իբրև ընդ արծաթ զարմանաս, և ընդ պղղինձ իբրև ընդ ոսկի, և այնուհետև և վարդապետացն պէտք են եթէ պա՛րտ իցէ ընդ բանն զարմանալ։ Այլ այսպէս չեն մեզ աչք բաւական առ 'ի հաւաստիս իրացն ճանաչել, այլ թէ պէտք են տեղեկութեան և վարդապետաց։ Ոչ[1] այսպիսի ինչ են ծաղկունք, այլ քեզէն իսկ գիտես զվարդն 'ի պտղոյն և 'ի հակահութէ[2] ընտրել, և զմանուշակն և զշուշանն ճանաչես, և զիւրաքանչիւր ինչ 'ի ծաղկանցն։

Այլ արդ չեն ինչ վայելչութիւն զարդուցն պաճուճանք, այլ կանխակալ սովորութիւն. և զի 'ի կանխակալ սովորութենէն այնպիսի ախտ ապականիչ։ Ա՛ղէ ասա, եթէ յանկարծ այնպիսի ինչ կամ լինէր թագաւորին հրաման տալ քան զոսկի զարծաթ պատուական համարել, հարկաւ չփոխէիք զգութ և զզարմանս ոսկւոյ յարծաթ։ Այլ այնպէս ամենեքին զագահութեան զհետ եմք և զկարծեաց. և զի այս այսպէս է, և որ անօսր գտանի պատուական է, և ոչ եթէ բնութեամբ ինչ։ Այն ինչ պտուղք որ առ մեզ չեն յորդոյ, և 'ի Դամրայ աշխարհին կարի պատուականք. և իցէ ինչ որ առ մեզ պատուական է, և անդ չէ ինչ յորդոյ։ Դարձեալ և 'ի կերպասաբեր աշխարհին այլ ինչ պատուական քան զկերպասն է՝ ուստի մետաքսն գայցէ. և 'ի խնկաբեր աշխարհին արաբացւոց և հնդկաց ուստի ականք պատուականք գան, անդ չեն ինչ այնպէս յորդոյ. և բաղում ինչ է այսպիսի գտանել։ Այլ՝ այնպէս կարծիք և կանխակալ սովորութիւն է մարդկան, և ոչ

1 Յօրինակին պակասէր Ոչ.. ծաղկունք. յաւելաւ 'ի յունէն։

2 Չիք բառդ 'ի յոյնն. Թերևս յաճախութէ այսինքն հմտութեամբ վարժութեամբ։

հաւատեաւ ինչ գործ քննել, այլ վայրապար և ընդ վայր :

Մթափեսցուք գէթ երբէք յայնպիսի արբեցութե- նէ, և հայեսցուք 'ի ճշմարիտ գեղն որ բնութեամբ իսկ գեղեցկութիւն է՝ ա̃ծպաշտութեան և արդարութեան, զի վայելեսցուք 'ի խոստացեալ բարութիւնսն. որոց լի- ցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդա- սիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխա- նութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յա- ւիտենից. ամէն :

## ՃԱՌ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

«Պատուիրեմ քեզ առաջի ա̃յ որ կենդանի առնէ զա- մենայն, և Յիսուսի Քրիստոսի որ վկայեցաւ առաջի պոնտացւոյ Պիղատոսի զբարւոք դաւանութիւնն, զի պա- հեսցես զպատուիրանն անեղծ և անարատ մինչև յայտ- նութիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. զոր իւ- րովք ժամանակօք ցուցանէ երանելին և միայն հզօր, Թագաւորն թագաւորաց և տէրն տերանց, որ միայն ու- նի զանմահութիւն բնակեալ 'ի լոյսն անմատոյց, զոր ոչ ոք ետես 'ի մարդկանէ և ոչ տեսանել կարող է, ո- րում պատիւ և զօրութիւն յաւիտեանս. ամէն»:

Դարձեալ զա̃ծ 'ի վկայութիւն կոչէ, որպէս և յա- ռաջագոյնն քան սակաւ ինչ, միանգամայն զի և զահն ածեցուցանիցէ, և աշակերտին բազում զգուշութիւն տայցէ, և ցուցանիցէ թէ չէ մարդկօրէն պատուէրքն, այլ անդուստ իսկ 'ի տեառնէն առեալ պատուէրս, զի ցանգ ունիցի զվկայութիւն 'ի մտի, ուստի զվկայութիւն լուաւ, և արծարծեսցէ 'ի միտս զյիշատակն :

«Պատուիրեմ քեզ առաջի ա̃յ որ կենդանի առնէ զամենայն»: Այս և վշտացն մխիթարութիւն դնէ, և յարութեան յիշատակ: «Եւ Յիսուսի Քրիստոսի, ա- սէ, որ վկայեցաւն առ Պոնտոս Պիղատոսիւ»: Դար- ձեալ 'ի վարդապետէն տայ խրախոյս. որպէս նայն վը-

կայեաց, ասէ, ընդ նոյն հետս պարտիմք և մեք երթալ զբարուոք դաւանութիւնն. որպէս և առ Եբրայեցիսն գրէ. «Հայեցեալք, ասէ, 'ի հաւատոցն առաջնորդ և կատարիչն Յիսուս. որ փոխանակ ուրախութեանն որ կայր նմա առաջի՝ համբերեր խաչին, արհամարհեաց զամօթ, նստաւ ընդ աջմէ աթոռոյն այ։ Զմտաւ ածէք, ասէ, որ այնչափ համբերեր 'ի մեղաց զհակառակութիւն, զի մի ծուլանայցէք և լքանիցիք յանձինս ձեր»։ Նոյնպէս և աստ դնէ առաջի աշակերտին. որպէս զի ասիցէ՝ թէ մի զանգիտեր 'ի մահուանէ, զի այ ծառայ ես որ զամենայն կարող է կենդանի առնել[1]։ Վկայեաց, ասէ. ըստ այնմ թէ «Ես եկի վկայել ճշմարտութեան»։ Բարուոք դաւանութիւն ո՞ր իցէ. յորժամ ասաց ցնա Պիղատոս՝ եթէ թագաւո՞ր իցես, ասէ՝ ես յայն իսկ ծնեալ եմ, եթէ դոցա ինձ անսացեալ էր. և նոքա ասէին՝ եթէ զանձն որդի առնէ այ։ Եւ բազում այլ և այլ վկայեաց և դաւանեաց։

«Զի պահեսցես, ասէ, զպատուիրանն անբիծ և անարատ մինչև յայտնութիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»․ այն իսկ է թէ քո վախճանն և ելանել յաշխարհէս։ Բայց չասաց այսպէս, այլ մինչև յայտնութիւն ասէ, զի եւս առաւել զարթուցանիցէ զնա։ Զի՞նչ իցէ՝ պահեսցես զպատուիրանն անբիծ, անարատ։ Մի՛ 'ի հաւատոցն կրօնս և 'ի վարս խառնեսցես ինչ երկևանս։ «Զոր իւրովք ժամանակօք ցուցցէ, ասէ, երանելին և միայն հզօրն, թագաւորն թագաւորաց և տէրն տերանց, որ միայն ունի զանմահութիւն բնակեալ 'ի լոյս անմատոյց»։ Եւ արդ զորմէ՞ ասիցէ զայս, զհօրէ՞ թէ զորդւոյ. ո՛չ ապաքէն զորդւոյ։

«Զոր իւրովք ժամանակօք ցուցցէ երանելին և միայն հզօրն»։ Այսու դարձեալ մխիթարութիւն տայ, զի մի ինչ կարի զարհուրիցի և երկնչիցի 'ի թագաւո-

1 Դասակարգութիւն առաջիկայ վկայութեանցդ և թերութիւն չփոթեալ յօրինակի մերում 'ի պատճառս զեղչման, որպէս թուի, 'ի յունականէն լուացեալ պարզի այսպէս. [illegible] դաւանութիւն ո՞ր իցէ։ Զոր 'ի հարցանել Պիղատոսի «Դու թագաւոր ես դու», էր նա առնել. «Ես յայն իսկ ծնեալ եմ». և դարձեալ. «Ես եկի վկայել ճշմարտութեան»։ Առաջ[illegible] [illegible]։ Վասն այնորիկ այսպէս խօսի, իսկ զի ասաց՝ հարցեալ եթէ որդի իցէ այ, «Դու ասացեր եթէ որդի այ իցեմ ես»։ Եւ բազում այլ և այլ։

բաց ։ Որ խորհիք ժամանակօք, ասէ․ այն իսկ է զի 'ի դէպ և 'ի պատշաճ ժամանակս․ մի ինչ երկմտեր՝ թէ ընդդէմ անդէն իսկ չլինիցի․ յայտնելոց է, ասէ, և ցուցանէ․ և քանզի միայն հզօր է և երանելի ։ Երանելի, ասէ, զի չիք անդ տրտմութիւն, այլ համակ երանութիւն․ և ոչ տխրութիւն, այլ ամենևին իսկ ուրախութիւն ։ Բայց դարձեալ երանելի և հզօր ասա 'ի խրաբոց 'ի մէջ արկանելոյ վասն ընդ մարդիկ և ընդ Աստուծոյ՝ ասէ․ և կամ վասն զի անծին է, զոր և մեք իսկ ասեմք ։ Որ միայն իսկ, ասէ, ունի զանմահութիւն ։ Իսկ որդին չունիցի՞ զանմահութիւն, որ ինքն իսկ անմահութիւն է ։ "Բնակեալ, ասէ, 'ի լոյսն անմատոյց"։ Այլ ինչ լոյսն իցէ և այլ ոք բնակեալն ։ Եթէ այնպէս իցէ, ապա ուրեմն տեղեաւն փակեալ է[1] ։ Տեսանես զի յուժամ մեծ ինչ կամիցի բարբառել լեզու, յայնժամ տկարանայ ։

"Զոր ոչ ոք տեսանէ 'ի մարդկանէ, և ոչ տեսանել կարող է"։ Զոր օրինակ զորդւոյ Աստուածութիւնն ոչ ետես ոք, և ոչ տեսանել ոք կարող է ։ "Որում պատիւ և զօրութիւն յաւիտենական ամէն"։ Բարւոք աստուածախօսեաց, ասէ, ասա և կարի իսկ կարևորս․ քանզի 'ի վրկայութիւն ած զԱստուած՝ բազում ինչ ձայնէ վասն վկային, զի և ս առնել խրատիցէ զաշակերտն ։ Այսինքն թէ փառս և եթ կարեմք նմա մատուցանել, և չքննեմք թէ ո ոք իցէ, կամ որպիսի ինչ ։ Եւ արդ եթէ նորա իցէ զօրութիւն յաւիտենից, մի ինչ զանգիտիցես․ Թէպէտ և այժմ չերևիցի, միշտ նորա է պատիւ, ցանկ նորա է զօրութիւն ։

"Մեծատանց, ասէ, որ յայսմ աշխարհի են՝ պատուէր տալիր մի ինչ հպարտանալ"։ Բարւոք ասաց՝ յայսմ աշխարհիս, քանզի են և այլ մեծատունք յայնմ աշխարհի ։ Մի՞ք ինչ որ ծնանիցի զհպարտութիւն և զամբարտաւանութիւն և զամբարհաւաճութիւն իբրև զկարասի ։ Եւ վաղվաղակի ցածուցանէ․ "Մի, ասէ, յուսալ յայնչափ մեծութիւն"։ Նոսա իսկ է ապարասա-

1 Զարմանալիանեան տառերկութեամբ, որ 'ի մեր օրինակին խաղարապարկանէր․ յոյնն ասէ․ Քանզի և մի ւոյն․ ոչ եւ զոյգ ամբիծեան պէտս, այլ եւ ի զանձնարայ Աստուծոյն բնակութեան յայտ առնիցէ՝ ասաց վէս 'ի լոյս անմատոյց բնակեալ, այնպէս զԱստուծոյնացն բաղձանեալ սրբոց ինչ խօսող էր ։

նութիւն, որպէս որ յանձն յուսայ՝ չհպարտանայ։ Զի յուսայցես որ ինչ վաղվաղակի անցանէ. քանզի այնպիսի իմն է մեծութիւն։ Եւ զիմըդ յոր չիցեսն վստահ՝ յուսանայցես։ Եթէ զիարդ մարթ իցէ չմեծամտել, յորժամ ՚ի միտ առնուցուն թէ քան զմեծութիւն՝ այ յոյսն մեծ է, յորժամ գիտիցեն թէ և այս մեծութեան ած պատճառ է։ "Այլ յած կենդանի, ասէ, որ տայ մեզ զամենայն ինչ առատութեամբ", զտարևոր կերակուրն, զօդ, զլոյս, զջուր, զայլն ամենայն։ Տեսանես զի զամենայն ինչ առատութեամբ պարգևէ հանդերձ ամենայն առատութեամբ։ Թէ մեծութիւնս խնդրես, զայն խնդրեա որ միշտն կայ և մնայ, զհաստատունն՝ որ բարւոք գործովքն լինիցի։ Յորոց գործոց առատանալ ասէ և մեծանալ. ՚ի գործս բարիս, և կեալքն ՚ի սիրոյ. հաղորդս՝ ընդելս ասէ և զգօնս լինել։ "Գանձել անձանց զհիմն բարւոք յայն աշխարհ". զի անդ չիք ինչ անյայտ. ուր հաստատուն հիմն է, և չիք ինչ փորձիւ, այլ ամենայն սերտիւ և անշարժ, տևական և բաւական։ "Զի բուռն հարկանիցեն, ասէ, զյաւիտենից կենացն". բարեաց գործոյ կատարումն յայն կեանս վայելելոց կարող է լինել մեզ առիթ։

"Ո՛ Տիմոթեա, պահեա զաւանդն". մի ինչ աղաւաղիցես. չէ քո, այլ զայլոյ առեր յաւանդ, մի ինչ օձտիցիս։ "Եւ խոտորեսջիր, ասէ, ՚ի պիղծ և ՚ի նորաձայն բանից"։ Ապա իցեն և առանց պղծութեան նորաձայն ինչ բանք։ "Եւ ՚ի հակառակութենէ և ՚ի սուտանուն գիտութենէ"։ Բարւոք իսկ ասաց. զի յորժամ հաւատքն չիցեն, չիք գիտութիւն. յորժամ յիւրոց միտացն ինչ ոք ծնանիցի, չիք անդ գիտութիւն։ Սոյնպէս և թերևս ոմանք զանձինս կոչէին յայնժամ գիտունս[1], որպէս թէ աւելի ինչ քան զայլսն գիտիցեն։ "Զոր ոմանք, ասէ, յանձին կալան, և ՚ի հաւատոյն վրիպեցին"։ Տեսանես զիարդ դարձեալ հրամայէ չհպել յայնպիսիսն։ Եւ խոտորեսջիր, ասէ, ՚ի հակառակութենէ։ Ապա ուրեմն գոն հակառակութիւնք, որոց և չէ պարտ իսկ տալ պատասխանի։ Ընդէր. զի ՚ի հաւատոցն հանեն, և չտան կալ հաստատուն և սերտիւ. մի

1 Այն ինքն են գնոստիկեան աղանդաւորքն։

զայնր զՀետ երթեալ, այլ զՀաւատոյն զՀաստատուն վիմին բռնեալ Հարկանել, որում ոչ գետք, ոչ Հողմք կարիցեն զաւամագիտ լինել. Հաստատեալ կացցուք 'ի վերայ վիմին անշարժք : Որպէս և 'ի վարսն եթէ զնոյն ախորժիցեմք զՀաստատուն Հիմն, անշարժք կայցեմք և ոչ վնասիցիմք ինչ յումեքէ :

## ՅՈՐԴՈՐԱԿ

Որ այնմ մեծութեան ցանկացեալ իցէ, չվնասի ինչ ասուի. որ այնմ Հաճութեան և փառաց և պատուոյ և ցանկութեան, ուր ամենայն ինչ Հաստատութիւն և չիք ինչ փոփոխումն. առտ ամենայն ինչ փոփոխի և շրջի : Ոչ ի ցանկանայցես փառաց : "Ոչ, ասէ, իջցեն փառք նորա ընդ նմա" : Բազում անգամ մինչև կենդանի իցէ, չլինին յամենայնի. այլ ոչ այնպիսի ինչ առաքինութեան, ամենայն յարմարի[1], ամենայն բնակաւոր : Աստ որ փառաւոր իցէ յայլոց իշխանութեան, առեալ զիշխանութիւնն՝ և ևս վատթար քան զայն որոց իշխեսցէ՝ բազում անգամ լինի, կամ 'ի դողոյ դարմանակալութենէ այնպիսի մեծութ̃ն, կամ 'ի զուր դատաստանաց, կամ 'ի նենգութենէ նենգաւորաց, և յանկարծակի Հասանէ յաղքատութիւն : Այլ ոչ այնպիսի ինչ առ մեզ. մինչ ցածունն անձին պատկառ կայցէ, չիք ոք որ զցածութ̃ն 'ի նմանէ Հանել կարիցէ. և զի այս իշխանութ̃ն մեծ է քան զայն՝ քեզէն իսկ քննեա և ուսիր :

Ոչ ինչ օգուտ իցէ, ասէ ասա, եթէ բազում ազգաց ոք իշխեսցէ, և ինքն կարեաց ծառայ իցէ. և զինչ վնաս իցէ յորժամ բնաւ և ոչ միում մարդոյ իշխիցէ, և 'ի վեր քան զբռնութիւն չարեաց իցէ : Այն իսկ է ազատութիւն, այն իսկ է իշխանութիւն, այն իսկ է թագաւորութ̃ն և Հարստութիւն. և միւսն ծառայութ̃ն, թէպէտ բազում թագս 'ի գլուխ դնիցէ : Յորժամ 'ի ներքս բազում տէրութիւնք տիրիցեն նմա, զարծաթսիրութենէ ասեմ և զցանկութենէ և զբարկութենէ և զբազում կարեացն՝ զինչ օգուտ 'ի թագէն իցէ, յորժամ կարեացն բռնաւորութիւն սաստիկ կայցէ 'ի վերայ, յոր-

1 Անորոշ էր բառդ յօրինակին :

ժամ չկարիցէ պսակն զերծուցանել զնա յայնպիսի հնա-
զանդութենէ։ Որ օրինակ թէ յայլազգեաց ձեռս անկանիցի, և նոքա զի ևս առաւել զիշխանութիւն ցու-ցանիցեն՝ ոչ զծիրանիս հանիցեն և զթագն 'ի գլխոյն առնուցուն, այլ նովին հանդերձ ջրբեր և խոհակեր առ-նիցեն, և բազում այլ ինչ սպասս պահանջիցեն, զի ի-րեանց բազում մեծարանք լինիցին, և նմա կարի ամօթ, նոյնպէս և այժմ քան զամենայն վայրենիս ևս վայրե-նագոյնս առնիցեն զմեզ ախտք ցանկութեանցն։ Իսկ որ զայն արհամարհիցէ, և զվայրենի ազգն ծաղր կացուցա-նէ. և որ զայնիւ գայցէ, բազում չարչարանս կրիցէ՝ ևս չար քան 'ի հինիցն. զի հէնն յորժամ կարի սաստ-կանայցէ, զմարմինն ևեթ տանջէ, իսկ ցանկութիւնքն և զհոգին կոտեն և գերեն յամենայն կողմանց։ Հէնն յորժամ սաստկանայցէ՝ սաստէն սպանանէ. ցանկու-թիւնքն յորժամ յուզիցին, անդ սպանանեն։ Որպէս զի ազատ այն միայն է որ ընդաբոյս ազատութիւն ու-նիցի. որպէս և ծառայ այն իսկ է որ զանհանձար կա-րեօքն գայցէ։ Զիք ծառայ որ այնպէս հրամանս տայցէ տեառն իւրում, թէպէտ և կարի իսկ ստահակ իցէ, և ոչ զաննման խրատս, թէ յամօթ արա զոգիդ, 'ի զուր և 'ի նանիր ընդդէմ դարձիր ա̃յ, և 'ի քումմէ իսկ բնու-թենէդ անծանօթ լինիջիր, և 'ի հօրէ և 'ի մօրէ մի ակնածիցես։

Այսպիսի ինչ հրամանս տայ արծաթսիրութիւն. զա-հել ինձ, ասէ, մի զուարակս, այլ մարդիկ։ Իսկ որպէս մարգարէն ասէ, եթէ "Զոհեցէք մարդիկ՝ զի որթք պակասեցին"։ Իսկ ագահութեան չիք ասել եթէ պա-կասեցին որթք, այլ թէպէտ և իցեն որթք, և բազում և այլ զենլիք, զենէք, ասէ, մարդիկ, զենէք զանմեղս. թէպէտ և երախտիք ինչ կայցեն քո առ նմա՝ չհայի յայն, այլ զենէք, ասէ, զդա վաղվաղակի։ Նոյն ամե-նեսին պատերազմ տայ, ամենեցուն թշնամի լինի և մարդկան և ա̃յ։ Խողովէ զոսկի ոչ զի վայելիցէ, այլ զի պահիցէ, զի ևս մեծամեծ անձին տանջանս կուտի-ցէ. քանզի չէ հնար արծաթսիրին վայելել յարարն։ Կասկածիցէ թէ գուցէ պակասիցէ ոսկին. երկնչի թէ գուցէ նուազիցեն գանձքն. հսկէ չմտանէ 'ի քուն. ա-մենայն ուստեք կասկածէ, 'ի ծառայից և 'ի բարեկա-

մաց. այլոյ կարասւոյ պահապան նստի: Յորժամ տեսանիցէ զաղքատն սովամահ՝ և զձեռն ոչ ձգիցէ, նա թէ հնար ինչ էր՝ և զմորթն ևս մերկանայր. ժխտէ, սուտ երդնու, դատախազէ, զրպարտէ. և եթէ 'ի կրակ ևս անկանել իցէ՝ չզանգազի, և եթէ 'ի պէսպէս մահս մտանել, և սովամահ լինել, և ընդ ախտի ոգորել: Միթէ չուսուցանիցէ՞ զայս ամենայն արծաթսիրութիւն: Լիրբ լեր, ասէ, և անամօթ և ժիր և յանդուգն և աղտեղի և չարակամ և չարաբար և անգութ և անսէր և անխնամ և անագորոյն, և զհայր և զմայր անարգիչ, գազան իսկ ինչ չար մանաւանդ և ոչ մարդ. անցիր զանցիր զամենեքումբք, զօձիւ դառնութեամբ, զգայլով յափշտակութեամբ, անցիր զանցիր զայնպիսի ընդաբոյս բնական գազանութեամբ. և եթէ զդիւացն ևս չարութեամբ անցանել հասանիցէ, մի՛ զանգիտիցես. անծանօթ լինիջիր բարերարին: Ո՞չ զայս ա̃մ ասէ, և լսէք:

Իսկ ա̃ծ սոցին հակառակ. ամենեցուն բարեկամ լեր, ասէ, բնաւից սիրելի, հեզ, հանդարտ, մի՛ վայրապար ուրուք ընդդէմ դառնայցես. պատուեա զհայր և զմայր, 'ի փառս և 'ի շահաւորս վայելեսջիր, լինիցիս ոչ մարդ՝ այլ հրեշտակ, մի՛ ինչ լկտիս խօսել. մի՛ սուտ, մի՛ զուր ոչ միայն չխօսել, այլ և բնաւ զմտաւ չածել. ձեռնկալու լինիջիր կարօտելոց, մի՛ ջանայցես զայլոյ արարս յափշտակել, մի՛ լինիցիս թշնամանող և մի՛ յանդուգն. և չիք որ լսէ: Եւ արդ չիցէ՞ յիրաւի սպառնացեալ զգեհենն, զհուրն անշէջ, զորդն անվախճան: Մինչև ցե՞րբ դարահօս և քարալեզ առնիցեմք զանձինս, մինչև ցե՞րբ 'ի վերայ փշոց գնայցեմք, մինչև ցե՞րբ ընդ բևեռս բևեռիցիմք: Շնորհակալ եմք զի ընդ բռնութեամբ ապիրատութեամբ հնազանդեալ եմք, և 'ի քաղցր և 'ի հեզ տէրութենէն հրաժարեմք, որ ոչ ծանր ինչ և տաղտուկ և վնասակար և անօգուտ հրամայէ, այլ զամենայն ինչ օգտակար պիտանի և շահաւոր պարգևէ մեզ: Զարթիցուք գոնէ երբէք, և ժողովեսցուք և հաւաքեսցուք զանձինս, սիրեսցուք զա̃ծ որպէս պարտ է սիրել՝ զի արժանի լինիցիմք խոստացելոց բարութեանցն որ պատրաստեալ են սիրելեաց նորա, շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԵՐԿՐՈՐԴ ԹՂԹՈՅՆ ՏԻՄՈԹԵԱՅ



## ՃԱՌ ԱՌԱՋԻՆ

«Պաւղոս առաքեալ Յիսուսի Քրիստոսի կամօքն Այ ըստ աւետեաց կենացն որ ՚ի Քրիստոս Յիսուս. Տիմոթեայ սիրելւոյ որդւոյ շնորհք ողորմութիւն խաղաղութիւն յԱյ Հօրէ և ՚ի Քրիստոսէ Յիսուսէ տեառնէ մերմէ»։

Ոչխարդ իցէ զի երկրորդ թուղթ գրեաց առ Տիմոթէոս։ Քանզի ասաց՝ թէ «Ակն ունիմ վաղվաղակի գալ առ քեզ», և չեղև գալ, մխիթարէ գրով փոխանակ գալստեանն. Թերևս զի և տրտում իսկ էր ընդ այն, և զի կարի վաղ զիշխանութիւնն առ։ Մեծապէս և որք առաքինիքն իցեն, յորժամ զասմեաց բաւան հարկանիցեն և ուղղիչք նաւին եկեղեցւոյ լինիցին, դանդաղին տաղտկալին, քանզի յամենայն կողմանց բազում իրօք կոչկոճին. և մանաւանդ յայնժամ, մինչդեռ սկիզբն էր քարոզութեանն, մինչդեռ նոր ինչ եղծ զեղծ էր, մինչդեռ կարի թշնամութիւնն էր, մինչդեռ յամ կողմանց ընդդանք[1] էին։ Եւ ոչ զայս միայն, այլ և հերձուածք ևս էին՝ ՚ի հրէական վարդապետութեանցն առեալ սկիզբնն, զոր յառաջնումն թղթին իսկ յայտ արար։ Եւ ոչ գրով միայն մխիթարէ, այլ և առ ինքն կոչէ. «Փութասջիր, ասէ, գալ առ իս. և յորժամ գայցես, բերջիր զգիրսն, մանաւանդ զմատեանսն»։ Եւ

1 Միւսն ընդդիմանք ։

թուի ինձ թէ մօտ 'ի վախճան գրեաց զթուղթս, քանզի ասէ. “Ես այսուհետև նուիրեալ եմ,,. և դարձեալ՝ թէ “Յառաջնում նուագին պատասխանւոյն ոչ ոք էր ընդ իս,,: Եւ արդ զայս ամենայն կամի յարդարել և մխիթար յիւրոց փորձութեանցն տալ:

“Պաւղոս, ասէ, առաքեալ Յիսուսի Քրիստոսի կամօքն այ̃ ըստ աւետեաց կենացն որ 'ի Քրիստոս Յիսուս են,,: Անդէն վաղվաղակի 'ի սկզբանն քրքեաց զուարթացոյց զմիտս նորա: Մի, ասէ, զայսմ ձգանց որ աստ են՝ ասիցես. զի 'ի սոցանէ ծնանին մեզ կեանք յաւիտենից, ուր չիցէ ինչ այնպիսի, ուստի հալածիցին ցաւք և հոգք և տրտմութիւնք և՝ հեծութիւնք: Վասն այնորիկ արար զմեզ առաքեալս, զի միշտ ձգնիցիմք և մեռանիցիմք և այսպիսի չարչարանս կրիցեմք: Եւ քանզի զանձին չարչարանս մի ըստ միոջէ համարել ոչ միայն մխիթարութիւն չէր՝ այլ և յաւելուած տրտմութեան, անդէն վաղվաղակի 'ի սկզբանն տայ մխիթարութիւն. “Ըստ աւետեաց կենացն, ասէ, որ 'ի Քրիստոս Յիսուս,,: Եթէ ըստ աւետեացն է, ապա մի աստէն խնդրիցես. զի յոյս որ երևի՝ չէ յոյս:

“Տիմոթեայ, ասէ, սիրելւոյ որդւոյ,,. ոչ լոկ որդւոյ, այլ սիրելւոյ որդւոյ: Են որդիք որք չեն սիրելիք, այլ դու ոչ այնպիսի ինչ ոք ես. ոչ զի որդիդ կոչեմ, վայրապար ինչ կոչիցեմ. ապա թէ ոչ՝ և զգաղատացիսն որդիս կոչէ, սակայն հեծէ վասն նոցա. “Որդեակք իմ, ասէ, զորս դարձեալ երկնեմ,,: Մանաւանդ զի բազում ինչ վկայէ զառաքինութենէ նորա: Յորժամ ոչ 'ի բնութենէ իցէ սէրն, յայտ է թէ յառաքինութենէն է: Զի որք 'ի մէնջ ծնանիցին, ոչ միայն վասն առաքինութեանն են մեզ սիրելիք, այլ և վասն բնութեանն հարկի. իսկ որք ըստ հաւատոցն լինիցին սիրելիք, ոչ վասն այլ իրիք, այլ վասն առաքինութեանն. ապա ոչ ուստի իսկ այլ ուստեք, և մանաւանդ առ Պաւղոսի՝ որ չառնէրն ինչ առ աչօք: Եւ արդ ցուցանէ եթէ ոչ ցասոյց ինչ էր ընդ նմա, և ոչ առ քամահել կամ առ ստգտանել ինչ զնա չեկն: Եւ զայս այնիւ յայտ առնէ՝ որդւոյդ սիրելւոյ, ասէ:

“Շնորհք ողորմութիւն խաղաղութիւն յայ̃ հօրէ և 'ի Քրիստոսէ Յիսուսէ տեառնէ մերմէ,,. որպէս և

յառաջագոյն իսկ՝ և այժմ զնոյն առնէ նմա աղօթս ։ Այլ տես զիարդ անդէն նմա 'ի սկզբանն ընդ այնր յայտ առնէ աղերսիւ զպատասխանեն, զի չեկն և չետես զնա ։ «Վասնզի ասելն՝ եթէ մինչև գամ ես, և թէ փութամ վաղվաղակի գալ առ քեզ, տայր նմա 'ի մօտոյ ակն ունել զգալստեանն ։ Այլ արդ անդէն առ այն իմն աղերսէ և զպատճառսն չասէ վաղվաղակի վասն էր չեկն, զի մի յոյժ տրտմեցուցանիցէ ։ Այլ էր այն իսկ՝ զի կալեալ էր զնա կայսեր ։ Յորժամ առ ինքն կոչեաց զնա մօտ 'ի վախճանն, յայնժամ յայտնեաց ։ Յառաջնումն չարկանէր ինչ զնա յայնպիսի հոգս, այլ մխիթար տայր ակն ունելոյ տեսանել զնա ։ Յանկացեալ եմ, ասէ, տեսանել զքեզ. և փութա վաղվաղակի գալ առ իս ։ Անդէն 'ի սկզբանն կանգնէ զնա, և զայլսն մի ըստ միոջէ ասէ յարգարելով ։

«Շնորհ ունիմ այ զոր պաշտեմն 'ի նախնեաց սուրբ մտօք, զի հանապազ յիշատակ ունիմ վասն քո յաղօթս իմ զցայգ և զցերեկ. զի անձկացեալ եմ տեսանել զքեզ և յիշեմ զարտասուսն քո, զի լցայց ուրախութեամբ»։ Գոհանամ, ասէ, զայ, զի յիշեմ զքեզ. քանզի այնպէս սիրեմ զքեզ ։ Այն իսկ է առաւել սիրոյ յորժամ խորովիցի ոք առ գութ 'ի սաստիկ սիրոյ ։ «Շնորհ ունիմ, ասէ, զայ զոր պաշտեմն». զիարդ. «սուրբ մտօք 'ի նախնեաց». զի միտքն նորա չէին վնասեալ երբէք ։ Որպէս աստ անխիղճ միտս զվարսն բարիս ասէ, և կամ թէ զի ոչ որոց բարեացն ցանկանայիր՝ վասն մարդկեղէն պատճառանաց՝ եղէ այնմ մատնիչ, և ոչ յայնժամ մինչդեռ զայլսն հալածէի ։ Վասն որոյ և ասէ իսկ. «Այլ ողորմութիւն գտի, զի զայն 'ի տգիտութեան և յանհաւատութեան գործէի»։ Գրեթէ այնպէս իսկ ասէ. մի կարծիցես եթէ ստգտանաց ինչ իրք իցեն ։ Բարիոք ընծայեցուցանէ զբարսն, զի հաւատարիմ ցուցանիցէ զխնամս սիրոյն՝ թէ չատեմ, և ոչ այլ ինչ ունիմ 'ի մտի և այլ ազգ խօսիցիմ ։ Որպէս զի և յայնժամ 'ի հարկէ եղև նմա գովել զանձն, որպէս և առաքելոցն գործոց գիրք յայտ առնեն ։ Վասնզի իբրև զաղմկիչ զոք համբաւէին զնա, և եթէ խակութիւնս ինչ ստահակիցէ, վասն այնորիկ ասէ՝ թէ «Ասաց ցիս Անանիա. ած հարցն մերոց ընտրեաց զքեզ գիտել

զկամս նորա, և ճանաչել զարդարն, և լսել բարբառ 'ի բերանոյ նորա, զի լինիցիս նմա վկայ առ ամենայն մարդիկ որոց տեսերն և լուար,,։

Այնուհետև և ասա զի մի կարծիցի անգութ և անխնամ, թէ բնաւ մոռացեալ իսկ իցէ նորա զնա, նմանագոյնս յարդէ զանձն՝ իբրև զի անպարտաւ ունիմ զյիշատակ քո. և ոչ վայրապար, այլ թէ 'ի խնդրուածս իմ. այսինքն թէ աղօթից գործ այդ իսկ է իմ։ Ամենայն ժամանակս. հանապազ զցայգ և զցերեկ ըղձին իւր աղաչեմ զա̃ծ, զի անձկացեալ եմ, ասէ, տեսանել զքեզ։ Տեսանե՞ս զջերմ զգութն. տեսանե՞ս զմոլի և զանյագ սէրն. տեսանե՞ս զխոնարհութիւնն, զիարդ աղերսէ աշակերտին։ Յայտ առնէ՝ թէ ոչ զուր ինչ և վայրապար եցոյց. և վաղ իսկ, բայց և այժմ ցուցանէ. "Յիշեմ, ասէ, զարտասուսն քո,,։ Քանզի 'ի դէպ իսկ էր յորժամ ձեղքեցաւն՝ լալ և ընդդերձանել[1] եւ չար քան զմանուկ մի որ 'ի ստենէ մօր քեցիցի[2]։ "Զի լցայց ուրախութեամբ,, ասէ։ Ու այնչափ արդեօք յիմէ ցանկութենէ զրկէր, թէ և կարի իսկ անգութ և անխնամ և գազանամիտ էր, բաւական էին արտասուքն զոր ետես՝ ածել 'ի յիշատակ և 'ի գորով. թող թէ զի չեմ այնպիսի ոք, այլ յայնպիսեաց որ սուրբ միոք պաշտիցեն զա̃ծ, որպէս զի բազում իսկ պէտք էին որ 'ի հարկէ ածէին զիս առ քեզ։ Ապա ուրեմն ողբայ։

Եւ այլ իմն պատճառս դնէ, միանգամայն և զմխիթարութիւն յիշատակին առեալ՝ ասէ. "Յորժամ զմտաւ ածեմ զանկեղծաւոր հաւատսն քո,,։ Պարծեալ և այլ եւս զուհութիւն, եթէ ոչ 'ի հեթանոսաց և ոչ յանհաւատից ես, այլ յայնմանէ որ 'ի բնէ Քրիստոսի աշակերտ էր։ "Որ բնակեաց, ասէ, 'ի հանւոյն քում Լոյիդեայ և 'ի մօր քում Եւնիկեայ,,։ Քանզի ասէ՝ եթէ որդի էր կնոջ հրէի և հաւատացելոյ։ Զիարդ հրէի կամ զիարդ հաւատացելոյ. 'ի Հրէից հաւատացեալ էր և ոչ թէ 'ի հեթանոսաց։ Իսկ զհօրէն ասէ՝ եթէ հեթանոս էր, և վասն Հրէիցն ասէ որ էին 'ի կողմանսն յայնոսիկ, առ թլփատեաց զնա։ Տեսանե՞ս զիարդ տակաւ սկիզբն լինէր օրինացն լուծանելոյ այնպիսի անխտիր ա-

1 Միւսն ընդդեղձանել։ 2 Երկաթագիրն քեցիցի։

մուանութեամբք: Տեսանե՞ս որչափ ինչ զնէ: Նա, ասէ, պաշտեմ զա̃ծ անխիղճ մտօք, և դու ունիս զարտասուսդ: Ոչ միայն վասն արտասուացդ, այլ և վասն հաւատոցդ, քանզի ճշմարտութեանն ցանկացող ես, և չիք ինչ 'ի քեն կուսէ նենգութիւն. յորժամ և զանձն առնիցես արժանի օրհնելոյ, քանզի այնպէս իսկ ես խնամոտ, և զի դու այդպէս սերտիւ աշակերտ Քրիստոսի ես, և ես չեմ ոք անագորոյն, զի՞նչ իցէ խափան չգալոյ, եթէ ոչ կալանքս:

“Հաստատեալ եմ, ասէ, զի և 'ի քեզ”: Քանզի անդուստ իսկ 'ի բնէ ունիս զբարին, 'ի նախնեաց ընկալեալ զանկեղծաւոր հաւատոյն: Նախնեացն իսկ պարծանք են յորժամ մեք նոցին հաղորդք գտանիցիմք. նա և մեզ իսկ բարգաւաճանք են, յորժամ չկարիցէ ոք ինչ մեզ գամագիտ լինել: Վասն որոյ և յարէ 'ի նոյն՝ թէ “Հաստատեալ եմ զի և 'ի քեզ”: Չկարծեմ, ասէ, այլ հաստատեալ իսկ եմ. որովհետև ոչ մարդկօրէն ինչ միտք եկիր յայդ, չիցէ ինչ որ զքեզ շարժել կարիցէ:

“Վասն այնորիկ, ասէ, յիշեցուցանեմ քեզ արծարծել զշնորհսն ա̃յ, որ են 'ի քեզ 'ի ձեռնադրութենէ իմմէ”: Տեսանե՞ս զիարդ յայտ առնէ զնմանէ՝ թէ 'ի բազում տրտմութեան էր: Ո՞չ համարիցիս, ասէ, թէ արհամարհեցի ինչ զքեզ. այլ գիտասցես եթէ ոչ ինչ սոգոտանեմ, և ոչ մոռացայ: Նա եթէ ոչ այլ ինչ, գէթ զհանն և զմայր ած զմտաւ: Զի գիտեմ թէ առանց կեղծաւորութեան ես 'ի հաւատոց, վասն այնորիկ իսկ յօժարութեամբ պարտիս արծարծել զշնորհսն ա̃յ: Զոր օրինակ հրոյն պէտքն փայտն է, նոյնպէս և շնորհացն մեր յօժարութիւնն զի հանապազ արծարծիցէ: “Յիշեցուցանեմ քեզ, ասէ, արծարծել զշնորհսն ա̃յ, որ են 'ի քեզ 'ի ձեռնադրութենէ իմմէ”. այս իսկ է եթէ զշնորհսն հոգւոյն զոր առեր 'ի վերակացութիւն եկեղեցւոյ, 'ի նշանս և յամենայն սպասաւորութիւն պաշտմանն: Քանզի 'ի մեր ձեռս է շիջուցանել և արծարծել. որպէս և այլուր ասէ՝ եթէ “Զհոգին մի շիջուցանէք”. քանզի 'ի հեղգութենէ և 'ի ծուլութենէ շիջանին շնորհքն, և 'ի զուարթութենէ և 'ի հպատակութենէ արծարծին: Նա են 'ի քեզ, ասէ, բայց և այլ ես սաստկագոյնս յորդորեսջիր. այսինքն համարձակու-

թեամբ ընուցուս զանձն, խնդութեամբ և խոնարհու-
թեամբ: Պինդ կաց, հաստատուն լեր իբրև զաշաքեմի:
«Զի ոչ ետ մեզ ա̃ծ ոգի երկիւղի, այլ զօրութեան
և սիրոյ և զգաստութեան»: Այս իսկ է՝ թէ չառաք
զհոգին զի զանգիտիցեմք. այլ զի ևս քան զևս զօրա-
նայցեմք և համարձակութիւն ունիցիմք: Քանզի բազ-
մաց տայ ա̃ծ ոգի երկիւղի, որպէս 'ի Թագաւորութեանն
ասէ յորժամ պատերազմունքն լինէին՝ եթէ «Անկաւ
'ի վերայ նոցա ոգի երկիւղի». այն իսկ է զի ահն ար-
կանէր 'ի նոսա: Այլ քեզ, ասէ, զնորին հակառակն
ետ զսիրոյն որ զնա սիրեսցես: Ապա ուրեմն և այն 'ի
շնորհացն է. բայց ոչ 'ի շնորհացն և եթ, այլ յորժամ
նախ մեք զյօժարութիւնն ցուցանիցեմք: Զի աղա-
ղակեն մեր՝ աբբա հայր, և զսէր նորա 'ի սիրտս տըն-
կել և զընկերին՝ զի զմիմեանս սիրիցեմք. և չերկնչել
և չզանգիտել 'ի զօրութենէ հոգւոյն լինի: Չիք ինչ
որ այնպէս զսէր ջրել սովոր իցէ որպէս երկիւղն և մասն
լինելոյ համբաւն: «Զի ոչ ետ մեզ ա̃ծ ոգի երկիւղի,
այլ զօրութեան և սիրոյ և զգաստութեան»: Զգաս-
տութեան՝ կամ զմտացն և զոգւոյն առողջութիւնն ա-
սէ, և կամ թէպէտ և վիշտք ինչ հասանիցեն՝ զգաս-
տանալ պարտ է և զաւելորդսն 'ի բաց կտրել:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Եւ արդ մի ինչ տրտմեսցուք ընդ վիշտս որ 'ի վերայ
հասանիցեն. քանզի զգաստութ̃ի գործեն 'ի մեզ: «Մի
տագնապիցիս, ասէ, 'ի ժամանակի 'ի վերայ վշտաց ե-
կելոց»: Իսկ բազումք և առ տնին յաճախ ունին տըրտ-
մութիւս. տրտմութե̃ն հաղորդ եմք միմեանց, բայց պատ-
ճառանօք տրտմութեան ոչ ինչ այնպիսի. այլ ոմն 'ի կնոջէ
տրտմի, և ոմն յորդւոյ, և ոմն 'ի ծառայէ, ոմն 'ի բա-
րեկամէ, ոմն 'ի թշնամւոյ, ոմն 'ի դրացւոյ, ոմն 'ի վնա-
սուէ. և բազում ինչ են պատճառք տրտմութեանն:
Եւ չիք ոք ամենևին սուրբ 'ի տրտմութենէ գտանել.
այլ ոմն սակաւ և ոմն բազում ունի իրս տրտմութեան:
Եւ այսուհետև մի ինչ զչարիցուք և համբերիցիմք եթէ
մեք միայն իցեմք 'ի տրտմութե̃. քանզի չէ հնար՝ թէ
մարդ է և զանցաւոր կեանս կեայ՝ եթէ առանց տըրտ-

մութեան իցէ՝ այլ թէ այսօր ոչ՝ սակայն վաղիւ. և եթէ վաղիւ ոչ՝ սակայն երբ և էն անկանելոց է 'ի տրտմութիւն։ Ո՛ր օրինակ չէ հնար նաւավարին 'ի համատարած ծովուն թէ ոչ վշտանայցէ, նոյնպէս և որ կեայ զկեանս աշխարհիս՝ չէ հնար եթէ ոչ տրտմիցի, եթէ զմեծատանց ասիցես և եթէ զաղքատաց։

Այլ մեծատանն իսկ բազում պատճառք են տրտմութեանց. թէպէտ և զթագաւորէն իսկ ասիցես, քանզի և նմա բազում խափանիչք են, և չկարէ զամենայն ինչ ըստ կամաց կատարել, այլ բազում ինչ ակամայ կամօք պարգևէ. և առաւել իսկ նա քան զամենեսին, որ ոչ ըստ կամացն որպէս և կամիցի՝ գործիցէ։ Այլ ընդէ՞ր. քանզի բազումք են որ յարքունուստ կամին առնուլ։ Այլ արդ ած զմտաւ որչափ ինչ տրտմութիւն է յորժամ կամիցի ինչ առնել, և չկարիցէ առնել, կամ առ երկիւղի, կամ վասն յոյժ ինչ կարծեաց, կամ վասն թըշնամեաց, կամ վասն բարեկամաց։ Այլ բազում անգամ յորժամ հակառակիցի ինչ առնել ըստ իւրոց կամացն և չկարիցէ առնել, ամենայն իսկ ցանկութիւն կամացն ապականի այնպիսի գործով, յորժամ բազումք դժկամակ ընդ այն լինիցին։

Իսկ զնոսա զի՞նչ համարիցիս, որ ոչ ինչ կարի զգօսանաց կեանս կեցին, մի թէ ազատ իցեն 'ի տրտմութենէն. չէ մարթ, չէ հնար։ Ո՛ր օրինակ չէ հնար մարդոյ անմահ լինել, նոյնպէս և ոչ առանց տրտմութեան։ Այլ որչափ ինչ 'ի դէպ իցէ նոցա վշտամբերութեան տանել՝ չէ մարթ բանիւք յայտ առնել. բայց որդեամբք նոցին իսկ մարթի ճանաչել։ Քանզի իցեն որք բազում անգամ մահ ըղձանան՝ որ 'ի մեծութեան իսկ և 'ի փափկութեան իցեն. քանզի փափկանալն ոչ եթէ ազատ 'ի ծառայութենէ[1] առնէ. մանաւանդ զի փափկութիւն իսկ ազգի ազգի ծնանի տրտմութիւնս, ցաւս և դժկամակութիւնս, և առանց այսր ամենայնի և յորժամ չիցեն ինչ պատճառք 'ի միջի։ Ո՛ի յորժամ միտքն յայնպիսի ինչ բարս սովորիցին, և վայրապար իսկ գիտեն տրտմել։ Բայց զի և բժիշկք ասեն՝ թէ առ 'ի ստամոքսն 'ի կայի կացուցանելոյ կարի ճոստասակար են

1 Յայնն 'ի տրտմութենէ։

տրտմութիւնք։ Այլ կամ թէ մեզ ինչ այնպիսի չգիտակցէ յորժամ 'ի ցաւս ինչ անկանիցիմք, և չգիտիցեմք զպատճառս տրտմութեան։ Այլ բնաւ իսկ չիք ինչ գտանել առանց տրտմութեան։

Այլ եթէ այնպիսի ինչ ունիցիս պատճառս տրտմութեան որպէս և մեք, սակայն այնպէս կարծէ իւրաքանչիւր ոք թէ իւրն աւելի ինչ իցէ քան զընկերին։ Յորժամ մի ինչ անդամ ուրուք ցաւիցէ մարմնոյն, համարի թէ իւր ցաւն սաստիկ ինչ իցէ քան զայլոց. և յորժամ աչք ցաւիցեն, չհամարի թէ այնպէս բնաւ այլ ումեք ցաւիցէ. և յորժամ ստամոքք ցաւիցեն, զայն ևս չար գժնդակ համարիցի. և յորում և իցէ 'ի ցաւս, քան զամենայն զայն աղէտ համարի։ Այնպէս և որ 'ի տրտմութեանն յորժամ իցէն, քան զամենայն տրտմութիւնս գժնդակս համարի, և իւրով փորձիւն եւեթ ըզգայ վշտին։

Այսպիսի ինչ. որ որդի չունիցի, քան զայն ինչ չար չհամարի. և որոյ որդիք շատ իցեն և աղքատ իցէ, քան այնմ այլ իմիք մեղադիր չլինի. և որոյ մի որդի իցէ, քան զայն ինչ չար աղէտս չկարծէ, զի քնքուշ սնանի և զհայրն տրտմեցուցանէ, զի միշտ գիրգ լինի, և չառնու երբէք խրատ յանձն։ Այր կինն գեղեցիկ իցէ, չար ինչ, ասէ, քան զայն չիք, զի հանապազ կարծիք զհետ են, և ցանգ որոգայթք կազմին։ Այլ որոյ կին տգեղ իցէ, ասեն, քան զայն ինչ յոռի չկայ, զի հանապազ մտաց չար է։ Աղքատին չթուի ինչ թեթև քան զկեանս աշխարհիս. և զինաւորին կարի աշխատութիւն և ծանր զինուորութիւնն. լաւ համարի լոկ զհացիկն և զջրիկն, և ոչ զայնչափ տառապանս։ Որ յիշխանութեանն է, չհամարի այլ ինչ աշխատութիւն քան զայն՝ զի զայլոց պէտս վճարէ. և որ ընդ իշխանութեամբն իցէ, չհամարի այլ ինչ բեռն ծանր քան զայն՝ զի ընդ իշխանութեամբ է։ Կանամբին չհամարի այլ հոգս չար քան զկնոջն. և ամուրին չհամարի այլ ինչ կարի անազատութիւն՝ քան զկինն չունել, և տուն և կեանս չառնել։ Վաճառականին մշակին երանի տայ զի անհոգ է, և մշակին վաճառականին զի մեծատուն է։ Այլ ամենեքին իսկ տհաճ է ազգ մարդկան և տրտնջող և քրթմնջող։ Այլ յորժամ զամենայն մարդիկ պարսաւիցէ ոք, զբնաւ

իսկ զմենութիւնն ասեմ, հէք և վշտատես երբ կոչէ ։ Բանզի իցեն որ զծերութիւնն ցանկանան, և քանզի այնք որ մանկութեանն երանի տան. մինչդեռ 'ի մանկութեն իցեմք, ասեմք՝ տայր ոք ծերացեալ. և յորժամ գլուխն սպիտակալիս սկսանիցի, ասեմք՝ աւաղ քեզ, մանկութիւն, ուր իցես ։ Եւ կարի իսկ շատ պատճառս ունիմք տրտմութեան ։ Մի՛ միայն ճանապարհ է ազատ յանպիտի անհարթութենէ առաքինութեանն, բայց կայ և անդ ինչ տրտմութիւն, ոչ եթէ անօգուտ ինչ տրտմութիւն, այլ լի շահիւ և օգտիւ. կամ թէ մեղուցեալ ուրուք իցէ, և տրտմութեամբն զղջացեալ լուանայցէ զմեղսն, և կամ վասն եղբօրն գլորելոյ զչարիցի. և ընդ այսր են վարձք ոչ սակաւ, զի վշտակից վշտացելոյն լինել բազում համարձակութիւն տայ մեզ առ Ած ։

Լուր որչափ ինչ զՅովբայ ճարտարախօսեն ածեղէն գիրք. լուր և Պաւղոսի. “Լալ, ասէ, ընդ լացողս և սգալ ընդ սգացողս, և ընդ խոնարհս ըստ նոցին զիջանել„ ։ Ոք հաղորդութիւն տրտմութեանցն զսաստկութիւն տրտմութեան փոփոխել սովոր է ։ Որ օրինակ յորժամ բեռին ոք օգնիցէ, զծանրութիւն յայնմանէ որ միայնն տանի՝ թեթևացուցանէ, նոյնպէս և յայլ իրս ամենայն. նա աւանիկ յորժամ ոք յընտանեաց վախճանիցի, բազումք առընթեր նստին, բազումք մխիթարեն, և զգրաստ ինչ անկեալ յարուցանեն. և զոգիս բարեկամացն տեսանեն անկեալս և քան զիշս գիշալ ևս չար զանց առնեն ։ Եւ թէ յաշխարհաւանդ կապելանոցմն և 'ի կրպակս անխտիր մտանիցեն, չձառագղեմք[1], չածեմք 'ի խորաստ. և թէ արբեալ զոք տեսանիցեմք և կամ այլ ինչ գործս յառութեան, ոչ միայն չսաստեմք, այլ և գործակիցք ևս լինիմք ։ Սմին իրի ասէր Պաւղոս՝ եթէ “Ոչ միայն որ առնենն, այլ և որ կամակիցն լինին գործելեացն„ ։ Նա և հանգամանակակիցս արտաքիր քեզ, ով մարդ, որք 'ի մոլորութեան արբեցութեանն սթափել մարթիցեն ։ Նա կալանաւորս և նեղեալս բարւոք են այդպիսի հաշիւք, որ և Պաւղոս պատուիրէ կորընթացւոցն՝ թէ “Մի՛ յորժամ գայցեմք, յայնժամ հաշիւք լինիցին„ ։

1 Տես և ձեռագրին. մեկն. եփես. ե ։

Իսկ այժմ յարբեցութենէ և 'ի փափկութենէ և 'ի զեղխութենէ զամենայն ինչ անսառակս գործեմք, և մահիճս հասարակաց և սեղան և գինի և ծախս 'ի միջոյ իւրաքանչիւր արկանեմք. և վասն ողորմածութեան չառնեմք ինչ փոյթ՝ եթէ 'ի մի 'ի վայր բերիցեմք և հասարակ բաշխիցեմք: Նոյնպէս հաշիւք էին առ առաքելովքն. ամենեքեան զիւրաքանչիւր 'ի մէջ բերէին: Բայց ես ոչ եթէ զամենայնն հրամայեմ, այլ սակաւ ինչ մասն. որչափ ինչ և յօժարեսցէ, ասէ, զանձեսցէ իւրաքանչիւր ոք 'ի միում շաբաթուցն, իբրև զհարկ ինչ 'ի մէջ բերիցէ փոխանակ եօթն աւուրն. և այնպէս բաշխիցին տուրքն, եթէ շատ ոք ձեռնհաս իցէ և եթէ սակաւու: “Ոչ երևեսցիս, ասէ, դատարկաձեռն առաջի տեառն”: Հրէիցն ասացաւ այս, որչափ ևս առաւել մեզ: Վասն այնորիկ կան աղքատքն առ դուրս, զի մի ոք դատարկաձեռն մտանիցէ, այլ ողորմութեամբ հանդերձ: Մտանես ողորմութիւն առնուլ, պարտիս նախ դու ողորմել: Որ յետոյն գայցէ, ևս աւելի պարտի բերել. յորժամ մեք սկսանիցիմք[1], որ յետոյն գայցէ՝ ևս աւելի արկանէ: Զրանախ քեզ պարտական զած, և ապա մատուցեալ խնդրեսցես. նախ փոխ տուր, և ապա պահանջեսցես տոկոսեօք: Կամի զայն ած և ոչ ինչ խորշի. եթէ հանդերձ ողորմածութեամբն խնդրիցես, շնորհ ևս ունի և տայ զփոխն տոկոսեօք: Այո, աղաչեմ, ոչ 'ի ձեռան տարածելոյ է լսելի լինել, այլ յողորմածութենէ ողորմածութիւն գտանել: Պարզեա զձեռս մի ընդ երկինս, այլ յաղքատացն ձեռս. եթէ յաղքատսն ձգիցես, այնպէս համարեսջիր թէ յերկնիցն կատարս հասուցեր. քանզի որ անդն նստի, նա առնու զտուրսն. եթէ անպտուղ ձգիցես, ոչ ինչ օգտիս:

Աղէ ասա, եթէ թագաւոր որ զծիրանիսն ունիցի՝ մատուցեալ հայցէր ինչ 'ի քէն, ո՞չ ապաքէն զամենայն ինչ զոր ունէիր տայիր յօժարութեամբ: Ոչ 'ի ձեռացն ինչ տարածանելոյ և ոչ 'ի բազում բանիցն, այլ 'ի բարիոք գործոց է լսելի լինել: Լուր մարգարէին որ ասէ. “Եթէ տարածեսջիք զձեռս ձեր, դարձուցից զերեսս իմ 'ի ձէնջ. և եթէ յաճախիցէք զաղօթս, ոչ լուայց ձեզ”: Լաւ իցէ լուռ լինել և բնաւ ընդ երկինս չհայել,

1 Պակասէր «կսանիցիմք». յաւելաւ 'ի յունէն:

յորժամ ողորմածութիւն ոք չառնիցէ. իսկ որ տայցեն տուրս, նմա համարձակ է ընդ երկինս նայել և բազում բանս խօսել: «Դատ արարէք, ասէ, որբոյն և տուք իրաւունս այրւոյն. ուսարուք զբարիս գործել»: Այնպէս լինիցիմք լսելիք, թէպէտ և զձեռս խոնարհ ունիցիմք և չխօսիցիմք ինչ և չխնդրեսցեմք: Այնմ նախանձաւոր լիցուք զի[1] հասանիցեմք հանդերձելոց բարութեանցն շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 Երկաթագիրն յայսմ վայրի նախ քան զԱրքայութեանն ունի այսչափ հաւաստեան ընդարձակ. որ թէպէտ չէր 'ի մեր օրինակն և ոչ 'ի յառաջնումն, այլ վասն զգուշութեան ձեռագրին օրինակին, և թերևս կայր և առ նախնեօք առ յայս օրինակ այնպիսի, արժան համարեցաք անփոփել զայն առ 'ի պարզն:

Այնմ նախանձաւոր լիցուք, և մի անարժանս արասցուք զմեզ: Եւ արդ յորժամ մատչիցիս առ քահանայն, և նա ասէ՝ ողորմեսցի քեզ ած, որդեակ, մի 'ի բանսն եւեթ վստահ լինիցիս, այլ և որդիսն յաւելուցուս, և արասջիր որ ինչ ողորմութեանն արժանի իցէ: Օրհնեսցէ, ասէ, զքեզ ած, որդեակ. արա և դու ինչ արժանի բանս օրհնութեանն. օրհնեա զած, ողորմեաց ընկերին: Զոր ինչ յԱյ կամիցեմք առնուլ, զնոյնն և մեք պարտիմք ընկերացն առնել. եթէ մեք ընկերացն ինչ չառնիցեմք, զիա՞րդ յԱյ խնդրիցեմք: «Երանի, ասէ, ողորմածաց, զի նոքա ողորմութիւն գտցեն»: Զի թէ մարդիկ այնպիսեացն ողորմին, որչափ ևս առաւել ած: Անողորմիցն ոչ ինչ այնպիսի. «Անողորմ է, ասէ, դատաստանն այնմ որ ոչ առնիցէ զողորմութիւն»: Բարիոք են ինչքն, ընդէ՞ր չտայցես այլում: Կամիս թողութիւն առնուլ յանցանաց, զմէ՞ դու քում յանցաւորին չթողուցուս: Մատուցեալ առ ած զարքայութիւնն երկնից խնդրես, և 'ի քէն պղինձ խնդրեն և չկամիս տալ: Վասն այնորիկ չգտանեմք ողորմութիւն, վասն զի չառնեմք ողորմութիւն: Այն չէ, ասեն, ողորմութիւն՝ անողորմեացն ողորմել. ընդէ՞ր անզգամին և ամբարշտին և անխնայաձին ողորմեսցի. զիա՞րդ չիցէ ողորմած:

Այլ ասեն. աւազանն զբազում չարեաց պարտականս կեցոյց: Այս զերծոյց յայնպիսեացն, ոչ զի զնոյն գործիցեմք, այլ զի զնոյնս չառնիցեմք: Եթէ մեռաք, ասէ, մեղացն, զիա՞րդ 'ի նմին, ասէ, կեցցեմք. իսկ արդ մեղիցո՞ւք զի չեմք ընդ օրինօքն. քաւ լիցի: Վասն այնորիկ անտի զերծոյց, զի մի միւսանգամ 'ի նոյն անարգութիւն թաւալեցիս: Քանզի և բժիշկք յորժամ զերծուցանեն զջերմնականս 'ի բորբոքեալ բոցոյն, ոչ զի առողջութեամբն անդրէն յախտն թաւալեցին և անառակութեամբ զցաւսն զայրացուցանիցեն: Ոչ վասն այնր ոք ողջանայ, զի միւսանգամ ընդ մահիճսն բեկեալցի, այլ զի ուսեալք յախտէն զգուշութիւն՝ մի ևս անդրէն թաւալել, այլ զգուշանալ առողջութեան. զի զայն ինչ գործիցեն՝ որ նովաւն կատարի: Եւ ո՞ւր իցէն, ասէ, այս մարդասիրութիւնն թէ չիցէ ապրեցուցանելոց բազում անգամ զախտացեալս.

քանզի զայս բազում անգամ լսեմ. թէ մարդասէր է, ասեն, զամե-
նեսեան կեցուսցէ:

Եւ արդ փութասցուք միտ դնել. չէր ինչ կարօտ մեզ և առաւել զմեզ. և չէր կարօտ մեզ՝ յայտ յայտնապէս է զի յնոսա ստ. յաւուր առաջ. Ե-
թէ կարօտ ինչ էր, ապա վաղուց իսկ արարեալ էր: Իսկ եթէ նա ա-
ռանց մեր էր իսկ, և մեք յետոյ ժամանակս եղաք, յայտ է եթէ ոչ կա-
րօտ ինչ էր մեզ և առաւել զմեզ: Արար զերկիր, արար զերկինս, զծով
և զամենայն ինչ որ 'ի նոսա վասն մեր, և չեղե՞ այն ամենայն բարերա-
րութեանն նորա նշանակ: Եւ այլ ինչ բազում այսպիսի գտանէ ոք ա-
սել: Այլ զի համառօտ համեմ, ծագէ զարեգակն 'ի վերայ չարաց և
բարեաց, ածէ անձրև 'ի վերայ արդարոց և մեղաւորաց. չեղե՞ այս բա-
րերարութեան գործ: Ոչ, ասեն: Եւ երբեմն ընդ մարմնաւորացս միոյ
խօսէր եթէ չեղե՞ն այսպիսի գործք բարերարութեան արժանի, ասէ.
Թէ զմեզոյ համարս չպահանջէր 'ի մէնջ, բարերարութեան գործք
էին. իսկ եթէ պահանջէ, չէ բարերարութեան: Նա չէ ուրեք այժմ
մեր. ով ասելով զնոյն բանս ասասցուք, և ևս աւելի քան զնոյնս, և ևս
իսկ յանձնարարոյն ցուցից:

Զի եթէ չպահանջէր համարս, յայնժամ չէր բարերար. և քանզի
պահանջէ, վասն այնորիկ բարերար է: Եւ արդ ասէ սա. եթէ ոչ պա-
հանջէր համարս, կայր ինչ արգելք 'ի կայր կեանք մարդկեղէնք, և ոչ փո-
խեալք 'ի բարս գազանաց: Զի թէ ահ 'ի վերայ կայ և պատիժք դա-
տաստանաց՝ եւրև ձգեանք զմիմեանս հալածեալք և զմիմեանս ուտեմք, և
քան զաւազակս և զգայլս ևս չար զմիմեանց յափշտակեմք, եթէ առաջ-
զիտեսցուք եթէ չիցեն ինչ բանք՝ ո՞չ ամենեքին իսկ աղմուկ և խառնակութ
լնուաք, զմիմեանս կոտորէաք և 'ի միմեանց աստակեաք. և ո՞վ ոք
ակնածէր 'ի հօրէ, կամ խնայէր 'ի մայր. որպիսի՞ չարիք կամ զի՞նչ
ցանկութիւնք վերալէին 'ի մէնջ: Եւ զի այս այսպէս է, 'ի միոջէ իսկ տա-
նէ կարես հաւանեցուցանել զքեզ 'ի ձէնջ որ զայդ իսկ հարցանէք. ե-
թէ էին ծառայք որ զամենայն կարգս տերանց պատուհանեսցեն և յերեսս
ևս թշնամանեսցեն և զամենայն անառակութիւնս ցուցանէին, ընդ բա-
րեկամս թշնամիք, և ընդ թշնամիս բարեկամք, և չատոէիք չպատ-
ժէիք, ո՞չ առաջքէն բարերարութեան կարծէր: Այլ ես ցուցանեմ թէ
կարի իսկ առաւելութիւն է և անհնարին անմարդութիւն. զի ոչ միայն
կանանց և որդւոց լինէիք մատնիչ այնպիսի անօգուտ քաղցրութեամբ,
այլ և զանձինս ևս նախ քան զնոսա կորուսանէիք: Եւ զի նոքա չարք
և անզգամք և աղտեղիք և անառակք և թշնամանողք և քան զամենայն
գազանս ևս վայրենագոյն գտանէին: Իսկ արդ զայն բարերարութիւն
պարտ իցէ կոչել, ուր ոչ ուստն ամենայն ... կորնչի, և անձինք
և այլք ընդ նոսին: Տեսանե՞ս զի պատիժն ասնել բարերարութեան գործ
է, և ոչ թէ չասնել: Եւ զի՞նչ ասիցեմ զծառայից, որ թեթևք իսկ և
յօժարք են 'ի մեղս. այլ թէ և որդւոց ոք հրամայեսցէ յայնպիսի գործս
յանդգնել, և սաստեսցէ ոչ, քան զի՞նչ ինչ չար ոչ լինիցի: Իսկ եթէ 'ի
մարդկան միջի պատժելն բարերարութեան գործ է և չպատժելն չբա-
րերարութեան, որչափ ևս առաւել յԱյ. որպէս զի քանզի բարերար
է, վասն այնորիկ սպառնացաւ գեհենն:

Կամիք և այլ ինչ տացից զձեզ մարդասիրութենէն. ոչ այսչափ մի-
այն, այլ զի և բարեացն չարացն լինել չարս. զի թէ ամենեքին 'ի մի ինչ
վայելէին, ամենեքին իսկ չարք լինէին. նա աւանիկ ոչ ինչ այնպէս, և
այսու ևս մխիթարէ զբարիսն: Լուր զինչ ասէ մարգարէն. «Ուրախ
լիցի, ասէ, արդարն յորժամ տեսցէ զհատուցումն ամբարշտաց և զձեռս
իւր լուասցէ յարեան մեղաւորի». ոչ զի ոսնհար ինչ լինիցի, քա-

լիցի . զի մի՛ ինքն այսպիսի ինչ կրեսցէ , այլ սուրբ կացուսցէ զձեռս վերայն : Եւ այս բազում խնամոյ նշանակ է :

Այո , ասեն , այլ սպասանալ միայն պարտ է , և ոչ պատժել : Իսկ եթէ պատժէ , և դու ասես սպառնալիք են . և վասն այնորիկ ծառայս . եթէ արդարև սպառնալիք միայն էին , ո՞չ ապաքէն ամենևին իսկ յուլանայիր : Նինուէացւոցն եթէ իմացեալ էր թէ սպառնալիք միայն են , և սպաշխարհելին իսկ ոչ . քանզի ապաշխարհեցին բանիւք միայն , առ որս զպատուհասն : Կամիս թէ սպառնալիք միայն լինիցին . իշխան ես իրայն . լեր ակնածու , և սպառնալիք միայն լինին : Այլ եթէ , որ քաւ և մի լիցի , արհամարհեսցես զպատուհասն , 'ի փորձ իսկ իրացն եղեալ հասանիցես : Առ ջրհեղեղաւն եթէ երկուցեալ էին 'ի սպառնալեացն , չհասանէին իսկ 'ի փորձ պատժոյն . և մեք եթէ երկիցուք 'ի սպառնալեացն , չհասանիցեմք 'ի փորձ պատժոյն , որ մի իսկ լիցի : Այլ արասցէ մարդասէրն Ած ամենեցուն աստէն իսկ զզգաստանալ , և զչարիս անձանց մերոց թօթափել և ծածուկ բարութեանցն արժանի լինել : Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի , ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք , իշխանութիւն և պատիւ յաւիտեանս . ամէն :

## ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

“ Ո՛չ ինչ այսուհետև ամօթ համարիցիս զվկայութիւն տեառն մերոյ և մի՛ զիս կապեալ նորա . այլ վշտակից լեր աւետարանին ըստ զօրութեանն Այ որ փրկեաց զմեզ , և կոչեաց 'ի կոչումն սուրբ ոչ ըստ գործոց մերոց , այլ ըստ իւրում կամացն և շնորհացն որ տուան մեզ 'ի Քրիստոս Յիսուս յառաջ քան զժամանակս յաւիտենից . բայց երևեցաւ այժմ յայտնութեամբ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ” :

Զի՞նչ ինչ քան զայն չար յորժամ մարդկեղէն խորհրդովք զԱծական իրս որք ինչ քննիցէ և չափիցէ , և այնպէս անչափ դրդուիցի 'ի հաստատուն վիմէն և վրիպեսցի 'ի լուսոյն : Զի եթէ 'ի ճառագայթս արեգականն որք մարմնաւոր աչօք կամիցի պշնուլ , ոչ միայն չհասանիցէ և չկարիցէ ընդդէմ հայել հաւաստեաւ , այլ և վրիպէ և կարի իսկ վնասի , որչափ ևս առաւել որ ընդ անմատոյց լոյսն կամիցի պշնուլ մտաց աչօք՝ ևս չար քայքայի և թշնամանէ զպարգևսն Այ :

Եւ արդ միտ դիր Մարկիոնի և Մանեայ և Վաղենտիանոսի և այլոցն ամենեցուն հերձուածողացն , որք

զապականիչ կրօնան հակառակ մուծին եկեղեցւոյ ա̃յ, որպէս և զկարգ մարդկեղէն խորհրդովքն զա̃յսն չափել յանդգնեցան և զտեսչութիւնն ամօթ համարեցան, որ չէ ամօթոյ, այլ առաւել պարծանաց արժանի, զխաչէն Քրիստոսի ասեմ։ Զի չիք այնպիսի ինչ մեծ նշանակ մարդասիրութեանն, ոչ երկինք, ոչ ծով, ոչ երկիր, ոչ 'ի չգոյէն 'ի գոյ ածել զամենայն, և ոչ այլն ամենայն իբրև զխաչն։ Վասն որոյ և Պաւղոս նովաւ պարծի. “Ինձ, ասէ, մի լիցի պարծել, բայց միայն 'ի խաչն տ̃ն մերոյ Յիսուսի Քրիստոսի„։ Նաև անշունչքն և սառոյցք ոչ ինչ աւելի ա̃յ համարին քան մարդկան, և վասն այնորիկ կործանին և ամօթ համարին։ Նմին իրի իսկ անդուստ 'ի բնէ զայն պատուիրէ աշակերտին և նովաւ ամենեցուն. “Մի ինչ այսուհետև ամօթ համարիցիս, ասէ, զի զխաչելեալն քարոզես„. այն իսկ է վկայութիւնն, մահն Քրիստոսի ասէ. քանզի և կապանք և բանտ ամօթոյ իսկ արժանի են և նախատանաց։ Նաև եթէ զպատճառսն ոք յաւելուցու և 'ի խորհուրդն բարիոք նայիցի, առաւել պարծանաց և բազում պարկեշտութեան պատճառս գտանէ զերկոսեանն։ Զի այն մահ զտիեզերս կորուսեալս կեցոյց. այն մահ զերկիր ընդ երկնից խաղաղեաց. այն մահ զբռնութիւն թշնամոյն քակեաց, զմարդիկ հրեշտակս արար և որդիս ա̃յ. այն մահ զբնութիւնս մեր եհան յաթոռն յարքունական. այն կապանք զբազումս դարձուցին։

“Մի ինչ, ասէ, ամօթ համարիցիս այսուհետև ըզվկայութիւնն տեառն մերոյ և մի զիս կապեալ նորա. այլ վշտակից լեր աւետարանին„. այն իսկ է, թէ և դու զնոյն չարչարանս չարչարիցիս՝ մի ինչ ամօթ համարիցիս։ Նա զի զայս ակնարկեաց, յառաջին բանիցն յայտ է. “Ոչ ետ մեզ, ասէ, ա̃ծ ոգի երկիւղի, այլ զօրութեան և սիրոյ և զգաստութեան„ և այլովքն հանդերձ. և աստ ասէ՝ եթէ վշտակից լեր. այսինքն ոչ վայրապար ինչ չհամարել ամօթ, այլ և փորձիւ ևս մի ամօթ համարիցիս։ Նա չասաց թէ մի երկնչիցիս մի զանգիտիցես, այլ կարի իսկ խրախոյս տայ՝ մի, ասէ, ամօթ համարիցիս, որպէս թէ չիցեն ինչ բնաւ ճգունք. եթէ ամօթոյն ոք յաղթիցէ, ամենայնի յաղթէ, քանզի ամօթն է ծանրագոյն։ Մի ինչ այսուհետև, ասէ, ամօթ հա-

մարիցես. զի թէ ես, ասէ, որ զմեռեալս յարուցանեմ և բազում նշանս առնեմ, և ընդ բազում աշխարհս շրջեցայ՝ կապեալ կամ այժմ, ոչ որպէս չարագործ ոք եմ 'ի կապանս, այլ վասն նորա որ 'ի խաչն ել. զի թէ իմ տէրն զխաչն չհամարեցաւ ամօթ, և ոչ ես զկապանսն ամօթ համարիմ։ Նոյն բարիոք իսկ աղաչեաց զնա չհամարել ամօթ, նախ զխաչէն յիշեցուցանէ. զի թէ զխաչն չհամարիցի ամօթ, ապա և ոչ զկապանսն։ Եթէ տէրն մեր և վարդապետն խաչի համբեր, ապա և մեք կապանաց պարտիմք տանել։ Նոյն արդ զօր նոյն համբեր, եթէ ոք ամօթ համարիցի՝ ապա և զխաչելեալն իսկ ամօթ համարի։ Ոչ վասն իմ ինչ, ասէ, կրեմ զկապանսն, այլ վասն նորա. մի ինչ պատուհասու մարդկօրէն ինչ ախտանայցես, այլ նոցին լինիցիս հաղորդ. "Կցորդ լեր, ասէ, աւետարանին"։ Ոչ որպէս թէ աւետարանին ինչ չարչարէր, այլ նոքա վասն աւետարանին։

"Ըստ զօրութեանն, ասէ, այ՝ որ փրկեացն զմեզ և կոչեաց 'ի կոչումն սուրբ. ոչ ըստ գործոցն մերոց, այլ ըստ իւրում կամացն և շնորհացն որ տուան մեզ 'ի Քն Յն յառաջ քան զժամանակս յաւիտենից"։ Նոյն այլ ազգ ևս, քանզի ծանր թուէր ասելն թէ կցորդ լեր, դարձեալ մխիթարէ. ոչ, ասէ, քոյ ինչ զօրութբ, այլ նորա զօրութբն ժուժկալ լինիցիս. քո կամելն և եթ է և յօժարելն։ Ապա և զզօրութեանն նորա նշանակ ցուցանէ։ Զիարդ փրկեցարն, ասէ, որպէս կոչեցարն. որպէս և այլուր ասէ՝ եթէ "Ըստ զօրութեանն որ զօրացաւ 'ի մեզ"։ Նոյնպէս զի քան զերկինս առնել՝ այնու մեծ երևեցաւ զօրութիւն նորա զի զաշխարհս հաւանեցոյց։ Զիարդ կոչեցար 'ի կոչումն սուրբ. ո՞չ ապաքէն, ասէ, զմեղաւորս սուրբս արար և զթշնամիս բարեկամս. և այս ոչ, ասէ, 'ի մէնջ ինչ՝ այլ յայ պարգևք են։ Իսկ արդ եթէ հզօր է 'ի կոչել, և բարերար շնորհօք և ոչ ըստ պարտեաց, և արդ մի ինչ, ասէ, զանգիտել։ Զի եթէ մինչ չէաքն արժանի՝ փրկեաց զմեզ, և մինչդեռ թշնամիքն էաք՝ կեցոյց, յորժամ ուղղութիւն ինչ տեսանիցէ ո՞չ ապաքէն ևս գործակից լինիցի։ Ոչ, ասէ, ըստ գործոցն մերոց, այլ ըստ իւրում կամացն. ոչ եթէ բռնի ոք ած զնա յայն և ոչ խորհրդակից ոք եղև,

այլ յիւրոց կամաց և յիւրմէ բարերարութենէ ծագեալ կեցոյց զմեզ ։

“Ըստ իւրում կամացն, ասէ, և շնորհացն որ տուան մեզ 'ի Քրիստոս Յիսուս յառաջ քան զժամանակս յաւիտենից„. այն իսկ է զի անսկզբնութեամբ յառաջագոյն նկարեալ էր այս 'ի Քրիստոս կատարել ։ Եւ չէ փոքր անդուստ 'ի բնէ զնոյն կամելն ։ Ապա ուրեմն չեղև ինչ յետոյ ըստ զղջմանալոյ ։ Եւ զիա՞րդ չիցէ մշտընջենաւոր որդի. զի և նա զայն կամէր 'ի սկզբանէ ։ “Բայց երևեցաւ այժմ, ասէ, յայտնութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ խափանեաց զմահ, և լուսաւոր արար զկեանս և զանապականութիւն աւետարանաւն„։ Տեսե՞ր զզօրութիւնն, տեսե՞ր զպարգևն, ոչ ըստ գործոց, այլ աւետարանաւն. և այն յոյժ իսկ գործ է, քանզի 'ի նորա մարմինն կատարեցան երկոքեան, և 'ի մերումն կատարեսցի ։ Ո՞ քարոզ. “Աւետարանաւն յոր եդայ ես քարոզ և առաքեալ և վարդապետ հեթանոսաց„։ Եւ զի՞ իցէ զի յաճախ կոչիցէ զանձն վարդապետ հեթանոսաց ։ Հաւանեցուցանել կամի, որպէս յառաջագոյնն ասացի, եթէ պարտ է և հեթանոսաց հաղորդել ։ Մի՛ ինչ զանգիտիցես, ասէ, յիմոց չարչարանաց. հարեալ են ջիլք մահու ։ Ոչ իբրև չարագործ ոք տանիմ այսմ, այլ վասն վարդապետութեանն հեթանոսաց համբերեմ. միանգամայն և հաւատարիմ առնէ զբանն ։

“Վասն որոյ պատճառանաց, ասէ, զայս չարչարիմ, այլ ոչ ՝ինչ ամօթ համարիմ. քանզի գիտեմ և հաւատացի, և հաստատեալ եմ թէ կարող է զաւանդն իմ պահել ինձ յօրն յայն„։ Այլ ոչ ինչ ամօթ համարիմ. ամօթանա՞ց ինչ իցեն այսպիսի կապանքս. ամօթանա՞ց ինչ իցեն չարչարանքս. մի՛ ինչ, ասէ, ամօթ համարիցիս ։ Տեսանե՞ս զիարդ արդեամբք իսկ ցուցանէ զվարդապետութիւնն ։ Չարչարիմ, ասէ, 'ի բանտ մատնիմ, հալածական լինիմ. քանզի գիտեմ յոր հաւատացի, և հաստատեալ եմ զի կարող է զաւանդն իմ պահել ինձ յօրն յայն ։ Ո՞ ինչ էր աւանդն. հաւատքն, քարոզութիւնն. զի այն, ասէ, որ ետն յաւանդ, նոյն և անարատ պահեսցէ ։ Յամենայնի չարչարիմ, ասէ, զի մի զանձն աւար հարկանիցի. չհամարիմ ինչ, ասէ, ամօթ

մինչև աւանդն ողջ պահեսցի։ Կամ զհաւատացելոց որ Ած ետ նմա յաւանդ՝ ասէ, կամ զայնցանէ զորս նա յԱծոյ յանձն առար, ըստ այնմ, թէ «Այժմ աւանդ առնեմ զձեզ յանձն տեառն»։ այն իսկ է՝ թէ չէ ինձ այն անօգուտ։ Պօղոսի և Տիմոթէոս ցուցանէ ինչ փղը-տուղ աւանդին։ Տեսանե՞ս զի չզգայ չարչարանացն վասն յուսալի պտղոյ աշակերտացն։

Այնպիսի պարտ է լինել վարդապետաց, այնպէս խնամ տանել աշակերտացն, այնպէս զամենայն համբերել։ «Այժմ կենդանի եմք, ասէ, եթէ դուք հաստատուն կայցէք 'ի տէր»։ դարձեալ եթէ «Ո՞վ է մեր յոյս և ուրախութիւն և պսակ պարծանաց եթէ ոչ դուք առաջի տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»։ Եւ տեսանե՞ս զի այնպէս հոգայ և այնպէս խնամարկէ ոչ ինչ աւելի իւրոյն քան աշակերտացն։ Պարտ է բուն իսկ հարցն առաւել սէր առնել, պարտ է ջերմագոյնս լինել. այլ և որդւոյն արժան է գութ և խնամ ունել առ հարսն որպէս և վայել իցէ։ «Անսացէք, ասէ, առաջնորդաց ձերոց և հնազանդ լերուք. զի նոքա հսկեն փոխանակ ոգւոց ձերոց, քանզի պատասխանի տալոց են ընդ ձեր»։

## ՑՈՐԴՈՐԱԿ

Եւ արդ ազէ ասա, նա այնչափ պատժոց պատժապարտ է վասն քո, և դու և անսա՞լ չկամիցիս նմա, և այն զի քո ևս յօգուտ։ Պէթ քոյումն բարիոք խնամ տանիցես. զի մինչ քոյն բարիոք ոչ կարգիցի, 'ի կասկածի կաս. կրկին կրելոց ես պատիժս։

Ի միտ առ, որչափ զիւրաքանչիւր ոք 'ի ժողովրդոցն կամի զի քննիցի և կասկածագոյն լինիցի։ Որպիսի՞ ինչ պատիւ և ողոքանս վարդապետին հրամայէ մատուցանել։ Ըստ համեմատութեան ձգանցն զոր յանձին կրիցէ։ Այլ չէ ևս ասեմ զկշիռն. քանզի և զանձն ևս դնէ վասն քո. թէպէտ և ոչ աստ, յորժամ ժամանակն կոչիցէ՝ անդ կորուսանէ վասն քո։ Եւ դու բանիւք անգամ չկամիցիս հնազանդ լինել. և ո՞ւմ չարեաց պատճառք անտի են, զի իշխանացն սաստ կորեաւ. չիք մեծարանք, չիք պատիւ և ոչ երկիւղ։ «Անսացէք, ասէ, առաջնորդաց

ձերոց և հնազանդ լերուք ,, · և սոսա աւասիկ ամենայն կարգք եղծեալք և շփոթեալք են ։ Այլ չասեմ ինչ զայս վասն առաջնորդայն ։ Զի՞նչ ինչ օգտիցին 'ի ձերմէ պատուէն, եթէ ոչ՝ միայն զի. զձեզ տեսանիցեն հպատակս բանին ։ Այլ վասն ձերոյ օգտի պատուիրեմ. նոքա թէպէտ և պատուիցին, չօգտին ինչ յայնմ աշխարհի · այլ և դատաստանք ևս մեծ են ընդ այնր անդ · և եթէ թշնամանիցին, չվնասին ինչ յայնմ աշխարհի, այլ բազում պատճառք լինիցին պատասխանի տալոյ ։

Զամենայն ինչ վասն ձեր կամիմ · յորժամ իշխանքըն՝ յայնցանէ որոց իշխիցենն՝ պատուիցին, և այն ևս նոցա ծանր լինի · որպէս ցՀեղին ասէր, թէ «Զի ըզքեզ 'ի տանէ հօր քո ,, · և յորժամ թշնամանեցին, որպէս և ցՍամուէլն ասէր, եթէ «Ոչ զքեզ անարգեցին, այլ զիս ,, · որպէս զի թշնամանքն շահ են նոցա, և պատիւն ծանրութիւն ։ Ոչ այսուհետև վասն նոցա ինչ ասեմ, այլ վասն ձեր · որ պատուէ զքահանայն՝ զա̃ծ պատուէ · և որ սովորի արհամարհել զքահանայն, սոն սոն յառաջ մատուցեալ զա̃ծ թշնամանէ ։ «Որ զձեզ ընդունի, ասէ, զիս ընդունի ,, · և «Զքահանայս նորա, ասէ, մեծարեսջիք ,, ։ Անտի իսկ ուսան զա̃ծ արհամարհել Հրեայքն, զի զՄովսէսն արհամարհեցին, զի զնա քարկոծն առնէին ։

Յորժամ 'ի քահանայէն ոք ակնածիցէ, և յա̃յ երկընչի · թէպէտ և յոռի ոք իցէ քահանայն, այլ ա̃ծ տեսանէ՝ զի վասն նորա պատուոյն և զանարժանն պատուես, և նա հատուցանէ քեզ զփոխարէնն ։ Զի եթէ «Որ ընդունի զմարգարէն յանուն մարգարէի, զվարձս մարգարէին առնուցու ,,, յայտ է եթէ որ քահանային հըպատակ լինիցի, ա̃յ հնազանդ լինի ։ Դու յորժամ վասն օտարսիրութեան բանք իցեն՝ և զոր ոչն ճանաչես 'ի տուն տանիցիս, այնչափ վարձս առնուցուս · իսկ եթէ որում հրամայէն հնազանդ լինել՝ հնազանդիցիս, որչափ ևս առաւել պարգևս առնուցուս ։ «Յաթոռն Մովսէսի նստան դպիրքն և փարիսեցիք, զամենայն ինչ զոր և ասիցեն ձեզ՝ արասջիք, բայց ըստ գործոց նոցա մի գործիցէք ,, ։

Չգիտիցե՞ս զի հրեշտակ տեառն է քահանայն · մի թէ 'ի զուր ինչ խօսիցի · եթէ արհամարհիցես, ոչ զնա

արհամարհես, այլ զա՟ծ՝ որ նմա զձեռնադրութիւնն ետ։ Այլ ուստի՞ յայտ իցէ, ասեն, եթէ ա՟ծ ետ նմա ըզձեռնադրութիւնն։ Եթէ այնպիսի ինչ կարծիս ունիցիս, ապա յոյժ քո մնոտի է. եթէ չգործիցէ ինչ նովաւ ա՟ծ, ոչ կնիքն քո կնիք է, և ոչ խորհրդոցն հաղորդ լինիս, և ոչ յօրհնութիւնս վայելես, նա և քրիստոնեայ իսկ չես։ Իսկ արդ զի՞նչ, ասեն, զամենեսեան ա՟ծ օծանիցէ և զարժանիս և զանարժանս։ Զամենեսեան ա՟ծ չօծանէ, բայց ամենեքումբք ինքն գործէ. թէպէտ և նոքա չիցեն արժանի, վասն փրկութեան ժողովրդեանն չարգելու զշնորհսն։ Զի թէ իշոյն և Բաղաամու արամբ միով պղծով խօսեցաւ վասն ժողովրդեանն, որչափ ևս առաւել քահանայիւն։ Զինչ ինչ ոչ առնիցէ ա՟ծ վասն մերոյ փրկութեան. զինչ ինչ չխօսիցի, որպիսի՞ ինչ մարդովք չազդիցէ զշնորհսն. զի թէ Յուդայիւ ազդեաց, և մարգարէիւքն գործ գործեաց, զորոց ասէ, «Ոչ գիտեմ զձեզ, 'ի բաց կացէք յինէն որք գործէիք զանօրէնութիւն», և այլք դևս հանէին, որչափ ևս առաւել քահանայիւքն ազդիցէ և գործ կատարիցէ։

Զի թէ զվարս առաջնորդացն պարտէաք ինչ քննել, ապա և զձեռնադրութիւնն մեք պարտէաք տալ վարդապետացն, և ամենայն ինչ վեր 'ի վայր կործանէր. ոտք 'ի վեր՝ և գլուխ 'ի վայր։ Լուր Պաւղոսի որ ասէր. «Ինձ և այս անարգանք են՝ եթէ 'ի ձէնջ դատեցայց, և կամ բնաւ ամենևին 'ի մարդկանէ»․ և դարձեալ. «Դու զի՞ դատիս զեղբայր քո»․ եթէ զեղբայրն չիցէ պարտ դատել, որչափ ևս առաւել զվարդապետսն. եթէ ա՟յ այնպէս չէր հրամայեալ, բարիոք առնէիր, նա և մեղանչէիր ևս՝ թէ չառնէիր. իսկ եթէ զնորին հակառակն հրամայեաց ա՟ծ, մի՛ իշխէր յանդգնել, և մի՛ զգործեալն կրկին գործէր։

ՅԱհարոնի վերայ յարեան յետ զորթն ձուլելոյ Կորխ և Դաթան և Աբիրոն. չատտակեցա՞ն որդեօք։ Ապաքանզիւր ոք զիւր հոգս հոգասցի. բայց եթէ կրօնս ինչ թիւրս ուսուցանէ, թէ և հրեշտակ իցէ՝ մի՛ անսայցես. ապա եթէ ուղիղ ուսուցանիցէ, մի՛ ընդ վարսն ինչ նայիցիս, այլ ընդ բանսն։ Ունիս զՊաւղոս՝ որ կարող է բանիւք և արդեամբք կարգել զքեզ 'ի լաւ անդր։

Չորրորդ, ասեն, չտայ ինչ աղքատաց, չմատակարարէ բարիոք: Այլ այն ուստի իցէ քեզ յայտ. մինչ չև 'ի վերայ հասեալ իցես՝ մի բամբասեր. երկիր 'ի պատժոց. Թերևս կարծիք իցեն. Նմանեաց քում տեառնն, լուր զինչ ասէրն. "Իջեալ տեսից ասէր, եթէ ըստ աղաղակին իւրեանց կատարեսցեն ինչ. ապա թէ ոչ. զի և ես ինչ գիտացից,,: Իսկ եթէ 'ի վերայ ես հասեր և քննեցեր և տեսեր, դատաւորին մնա, մի յառաջագոյն յափշտակիցես զՔրիստոսի աթոռն. Նորա է քննել զայն ամենայն, և ոչ քո. դու ծառայ յետին ես, և ոչ տէր. ոչխար ես, մի քններ զհովիւն. մի որով զնոյն բամբասիցես՝ պատժապարտ գտանիցիս: Այլ ինձ զիա՞րդ ասիցէ, ասեն, զի ինքն չառնէ: Ոչ եթէ նա ինչ ասէ. թէ նմա հաւանիցիս, ապա չառնուս իսկ վարձս. Քրիստոս է որ խրատէ. և զի՞նչ ասիցեմ; նա և Պաւղոսի իսկ չէ պարտ հաւանել՝ եթէ զիւր ինչ խօսիցի, եթէ մարդկօրէն ինչ ուսուցանիցէ, եթէ ոչ զառաքելոյ՝ յորում Քրիստոսն խօսէր: Մի՛ քննեսցուք զմիմեանս, այլ իւրաքանչիւր ոք զանձինն. զքո վարսն քննեսջիր, զքո կարգսն խուզեսջիր:

Այլ նմա, ասէ, պարտ է քան զիս լաւ լինել: Ընդէ՞ր: Վասն զի քահանայ է: Այլ զի՞նչ աւելի ունիցի քան զքեզ. ո՞չ ապաքէն զաշխատութիւն, ո՞չ ապաքէն զձգունսն, ո՞չ ապաքէն զկասկածն և զտառապանսն. չպարտի ինչ լաւագոյն[1] լինել քան զքեզ: Այլ արդ զի չիցէ քան զքեզ լաւ, յայն սակս ինչ պարտիցես զքո անձնդ կորուսանել. ամբարտաւանս խօսիս. ուստի՞ գիտիցես, ով մարդ, թէ չիցէ քան զքեզ լաւ: Եթէ գողանայցէ, ասէ, և տաճարակողոպուտ իցէ: Ուստի՞ գիտիցես դու. ընդէ՞ր քարավէժ դարահոս անձամբ զանձն առնիցես: Եթէ ասիցէ ոք՝ առ այսմ անուան ծիրանիք և թագ արքունի կայ, թէպէտ և գիտիցես՝ չիշխես զբանսն 'ի վեր հանել. և եթէ յանդիմանել ես կարող իցես, փախչիս. փոխելապատճառ լինիս թէ բնաւ չգիտիցես իսկ, և չկամիցիս աւելի վտանգս յանձն առնուլ. իսկ անդ զիա՞րդ իցէ զի աւելի վտանգս ախորժելով յանձն առնուցուս. չվճարին առանց պատժոց այնպիսի բանք: Յուր

1 Երկաթագիրն փոքրագոյն:

և Քրիստոսի իսկ. «Ասեմ ձեզ, ասէ, թէ ընդ ամենայն դատարկ բանից զոր խօսիցին մարդիկ՝ դատ տայցեն յաւուրն դատաստանի»:

Բնաւ ամենևին իշխես զմտաւ ածել եթէ քան զոք լաւ իցես. և չհեծիցես և չհանիցես յօգւոց, չկոծիցես զկուրծս, չհայիցես 'ի վայր և նմանիցես մաքսաւորին. ապա ուրեմն կորուսեր զանձն: Եթէ այնչափ առ լաւս իշխեսցես ունել զքեզ, լուռ լեր, համբերող կաց, զի կայցես մնայցես լաւագոյն. ապա եթէ շաղփաղփիցես, զբնաւ իսկ 'ի բաց թօթափեցեր. եթէ պանծանայցես յանձն, ոչ ինչ ունիցիս. և եթէ չպանծանայցես, բազում ինչ յաւելլուս: Զի թէ որ էրն իսկ մեղաւոր և յանձին կալաւ զմեղսն՝ էջ արդարացեալ 'ի տաճարէն, և որ չէրն կարի մեղաւոր՝ էջ դատապարտեալ, դու զինչ շահելոց իցես յապիրատն քննելոյ: Զանձն քո քննեա, զքոյին վարսն որոնեա:

Չգողանայցես, այլ յափշտակես. չգողանայցես, այլ բռնաբարես. և բազում ինչ և այլ նոյնպիսի ապիրատութիւնս ցուցանիցես: Զայս ասեմ, ոչ եթէ զգողութիւնն ինչ գովիցեմ, ծն անդր, այլ կարի իսկ պարսաւեմ և արտասուս արկանեմ, և չհաւատամ թէ բնաւ և իցէ ոք իսկ այնպիսի: Որչափ ինչ չարիք տաճարակողոպուտն լինել իցէ, զայն և ասել իսկ ոք չէ բաւական. այլ 'ի ձեզ խնայեմ. չկամիմ թէ ձեր վաստակքն ընդունայն լինիցին այնու, զի զընկերացն ամբաստան[1] լինիցիմք:

Իսկ արդ աղէ ասա, ո՞վ ոք քան զմաքսաւորն վնասակար կայր. արդարև իսկ մաքսաւոր և մեղաւոր էր, և բազում չարեաց պարտական. և միայն զի ասաց փարիսեցին՝ թէ չեմ իբրև զմաքսաւորս զայս, զամենայն և զբնաւ կորոյս: Իսկ դու զքահանայէն իսկ ասես՝ թէ չեմ իբրև զսա տաճարակողոպուտ, և չեղանիցես սին 'ի բընաւէ:

Զայս ամենայն ասեմ 'ի հարկէ, և գամ ստէպ ըզբանիւքս, ոչ եթէ նոցա ինչ ջատագով լինիցիմ, այլ վասն ձեր կասկածեմ, թէ գուցէ ընդունայն առնիցէք զձեր վաստակսն և զառաքինութիւն այդպիսի ինչ պարծանօք և դատապարտութեամբ: Յոր սմին իսկ Պաւ-

1 Երկքին օրինակքն ապատան. եդաւ ըստ յունին:

ղաւի "։ Զգործ անձին իւրոյ, ասէ, քննեսցէ իւրաքանչիւր ոք, և յանձին միայն կալցի զպարծանս, և մի առ ընկերաւն "։

Եւ արդ ասէ ասա, եթէ 'ի բժշկանոց երթայիր, և վէրս ինչ կամ ցաւս ունէիր, թողուիր զեղ խնդրել և 'ի վերայ վիրին դնել, և մատուցեալ զբժիշկն որոնէիր, եթէ սա ունիցի՞ վէրս՝ եթէ չունիցի. եթէ ունէր վէրս, կարէի՞ր արդեօք դարման տանել ինչ. և կամ զի՞նչ ըզվէրան ունէր, դու զքո անձնդ ո՞չ բժշկէիր. և ասէի՞ր, պարտ էր սմա նախ զանձն բժշկել. որովհետև բժիշկս չէ ողջ, թողից և ես զիմ վէրսս և չբժշկեցայց. մի՞թէ քահանային մեղքն քոյոց մեղացն մխիթարութիւն ինչ իցեն. և ոչ երբէք։ Ա՛յլ և նա կրեսցէ պատիժս՝ որպէս ինչ նմա պարտ իցէ, և դու տայցես վրէժս՝ որպէս և քեզ վայել իցէ. քանզի վարդապետն զկարգ վարդապետութեանն միայն ունի, և չպարտի ինչ քան զքեզ աւելի արդարութիւն, բայց եթէ անձամբ փոյթ լինիցի վասն իւրոյ օգտի։ "Եղիցին, ասէ, ամենեքեան ուսեալք յԱ՟յ. և մի ոք ասիցէ ցընկերն՝ եթէ ծանիր զտէր, զի ամենեքեան ծանիցեն զիս 'ի փոքրկանց մինչև ցմեծամեծս, ասէ տէր "։ Եւ ոչ եթէ 'ի քահանայսն վերայ միայն հարկ ինչ կայցէ։ Եւ ընդէ՞ր, ասեն, կայցէ գլխաւոր՝ և նստիցի 'ի վեր։ Զի զկարգն կատարիցէ, և ընդ քեզ և ընդ ա՟ծ միջնորդ լինիցի։

Մի՛ խօսեսցուք չար զվարդապետաց. զի մի զանձանց իսկ չար խօսիցիմք. եթէ զանձինս քննիցեմք, չխօսիցիմք երբէք զումեքէ չար. ակնածեսցուք յերեկորոյն յորում լուսաւորեաց զմեզ քահանայն։ Հայր ուրուք իցէ, եթէ կարի ինչ անօրէն գործս գործիցէ, Ջանայ որդին զընաւ-ծածկել. "Մի՛ փառաւորիր, ասէ, ընդ անարգանս հօր քո, զի չեն քեզ փառք նախատինք նորա "։ Թէպէտ և ամենեւին իսկ անկեալ իցէ 'ի հանճարոյ, ներեա նմա. և մանաւանդ զհոգևոր հարցն ես առաւել պատշաճագոյն է ասել այսպիսի ինչ։ Ակնածեա պատկառեա, զի հանապազ 'ի քում սպասաւորութեան կայ. վասն քո ցանկ զտաճարն զարդարէ, գիրս հրամայէ ընթեռնուլ, վասն քո հսկէ, վասն քո խնդրուածս մատուցանէ, վասն քո մատուցեալ զա՟ծ աղաչէ, վասն քո է ամենայն ջան և վաստակք նորա. ակնածեա պատկառեա զանէ յայնմ

ամենայնէ ։ Զայս ամենայն ածիցես զմտաւ, և մատուցեալ երկիւղիւ մեծարիցես և առնուցուս օրհնութիւն ։

Եւ արդ ասէ սա, ընդէ՞ր խորշիցիս. յոռի ինչ իցէ և վասն ա՞յնորիկ խորշիցիս. քեզ զի՞ փոյթ է. որ չէ՛ն յոռի՝ քեզ նա սպարգևէ զամենայն բարութիւնս. չէ ինչ քեզ վնաս 'ի նորա յոռութենէն. զի ըստ քո հաւատոցն վճարի քեզ ամենայնն յայ՛. նա և ոչ յարդարոյն օգուտ ինչ է քեզ առանց քոյ հաւատոցդ ։ Երբեմն երնջովքն գործեաց գործ մեծ յորժամ զտապանակն բարձեալ բերէին յայլազգեացն. քանզի այնպէս կամեցաւ փրկել զժողովուրդն ։

Մի՛թէ վարք ինչ կամ առաքինութիւն քահանային այնպիսի ինչ մեծամեծս կատարիցէ. մեծ է որ շնորհէ զայն, ոչ այնչափ ինչ քահանայութիւն, որչափ վասն առաքինութեան վճարէ զամենայն. հոգւոյն շնորհաց գործ է. քահանային զբերանն եթէ բանալ է, և զամենայն ինչ մեծ գործէ. նա նշանակ եթէ կայ 'ի միջի, և զկարգն կատարէ ։ Զմտաւ ած որչափ ինչ էր ընդ մէջ Յովհաննու և Քրիստոսի. և լուաւ ես 'ի Յովհաննէ, եթէ "Ես կարօտ եմ 'ի քէն մկրտել"։ և "Չեմ արժանի լուծանել զխրաց մի կօշկացդ"։ Բայց սակայն, թէպէտ և այնչափ ինչ 'ի միջի էր, և հոգին էջ և հանգեաւ՝ զոր ոչ ունէր Յովհաննէս. քանզի ասէ թէ "Ի լրութենէ անտի նորա մեք ամենեքին ընկալաք"։ սակայն մինչ չև մկրտեալ էր՝ չէջ հոգին իբրև 'ի մկրտութիւն ։ Բայց և ոչ Յովհաննու ինչ բանիւ էջ, այլ օրինակ ինչ կատարէր, զի ուսանիցիս եթէ այնր նշանակ է քահանայն, և զնոյն խորհուրդ կատարէ. չիք ոք 'ի մարդկանէ որ այնչափ ընդհատ իցէ 'ի մարդոյ, որչափ Յովհաննէս 'ի Քրիստոսէ. քանզի նա տէր էր և նա ծառայ. բայց սակայն էջ հոգին, զի ուսանիցիս թէ զամենայնն մեծ գործէ և զբնաւ նոյն կատարէ ։

Կամիմ և նոր ինչ ասել, այլ մի՛ ինչ կարի զարմանայցէք կամ խռովիցիք ։ Եւ զի՞նչ իցէ ։ Պատարագն նոյն է, եթէ չափ և դոյզն ոք մատուցանիցէ, եթէ Պաւղոս և Պետրոս 'ի գլխովին՝ սակայն նոյն է. զոր Քրիստոս ետ աշակերտացն, զնոյն քահանայքս այժմ կատարեն, և չէ ինչ ընդհատ այս յայնմանէ ։ Եւ է՞ր վասն արդեօք ։ Քանզի ոչ եթէ մարդիկ սրբեն, այլ նոյն որ

զայն սրբեաց․ զոր օրինակ և բանքն նոյն են զոր յայնժամ Քրիստոս խօսեցաւ և այժմ քահանայն խօսի․ նոյնպէս և պատարագն նոյն է և մկրտութիւն նոյն զոր ետն․ նոյնպէս և ամենայն ինչ հաւատովք կատարի։ Դիմեաց վաղվաղակի 'ի վերայ Կոռնէլի հոգին, քանզի յառաջագոյն զիւր փոյթն եցոյց և զհաւատոն մատոյց ընծայ։ Արդ այս մարմին է և այն․ որ համարիցի զայս փոքր քան զայն, չգիտէ թէ այժմ Քրիստոս մօտ է, և այժմ ազդէ և կատարէ։

Եւ արդ զայս ամենայն 'ի միտ առեալ․ քանզի ոչ եթէ վայրապար ինչ ասացաւ, այլ զի ուղղիցեմք զձեր միտս, և զգուշագոյն ևս յառաջ անիցեմք, բայց զի և զբանից պահպանութիւն ցուցանիցեմք։ Ապա եթէ ցանգ լսիցեմք և ոչ երբէք առնիցեմք, ոչ ինչ օգուտ մեզ 'ի բանիցն գործիցի։ Մ՛իտ դիցուք հաւատաեաւ, փոյթ յանձին ունիցիմք զրել 'ի միտս և 'ի սիրտս[1]․ մարտիցուք ընդ խիղճ մտացն, զի քերեսցուք 'ի բաց․ և այնպէս համապազ փառաւորեսցուք զհայր և զորդի և զհոգին սուրբ յաւիտեանս յաւիտենից․ ամէն։

1 Միւսն 'ի սրտի [illegible] ընդ խիղճ։

# ՃԱՌ ԵՐՐՈՐԴ

«Ունիցիս օրինակ առողջ բանիցն զոր յինէն լուար հաւատովք և սիրով որ ՚ի Քրիստոս Յիսուս։ Զաւանդն պահեսջիր հոգւովն սրբով որ բնակեալ է ՚ի քեզ։ Զայս գիտասջիր զի ապստամբ եղեն յինէն որք յԱսիացւոցն էին, որոց սակի են Փիգելոս և Հերմոգինէս։ Տացէ ողորմութիւն տէր Ոնեսիփորայ տանն, զի բազում անգամ հանգոյց զիս, և զկապանս իմ ոչ ինչ ամօթ համարեցաւ. այլ իբրև եկն ՚ի Հռովմ, անդադագոյնս խնդրեաց զիս և եգիտ. տացէ նմա տէր ողորմութիւն ՚ի տեառնէ գտանել յաւուր յայնմիկ։ Եւ որչափ ինչ յԵփեսոս սպաս կալաւ ինձ, զայն դու ինքնին իսկ քաջ գիտես»։

Ոչ միայն գրով զոր ինչ պատշաճ էր առնել՝ պատուիրէր աշակերտին, այլ և ՚ի բանից. և զայս բազում անգամ և առ այլս յայտ արարեալ էր. «Եթէ բանիւք և եթէ թղթով որպէս թէ ՚ի մէնջ». ես առաւել աստ։ Արդ մի ինչ նուազագոյն համարեսցուք զասացեալ վարդապետութիւնն. քանզի բազում ինչ նմա և առանց գրոյ աւանդեցաւ, զոր և ասէր իսկ յիշեցուցանելով եթէ «Օրինակ ունիջիր զառողջ բանիցն զոր յինէն լուար»։ Զինչ իցէ զոր ասիցէն։ Բաց օրինակի նկարչաց միանգամայն դրոշմիցէ քեզ, ասէ, զպատկեր առաքինութեան և զամենայն ա̃յ հաճոյիցն, իբրև զկանոնս և զնախանկար օրինակս և սահմանս արկ ՚ի միտս քո։ Եւ արդ զնոյն ունիցիս և ՚ի հաւատսն և ՚ի սէրն և ՚ի զգաստութեան, և զինչ լինիցի անտի՝ առնուցուս ամենայն պիտոյիցն օրինակ, և չկարօտանայցես այլուստ ուստեք խնդրել օրինակ, քանզի ամենայն ինչ ՚ի նմին կայ։

«Զաւանդն, ասէ, բարւոք պահեսջիր հոգւովն սրբով որ բնակեալ է ՚ի քեզ»։ Քանզի չէ մարդկեղէն մտաց զօրութեան այնմ ամենայնի որ հաւատացաւ մեզ՝ բաւական լինել ՚ի պահպանութիւն։ Ընդէր. քանզի բազում գողք սկեն, խաւարամածեալ թշնամին դարա-

նակալ չգիտեմ յորում ժամու կամ յորում ժամանակի 'ի վերայ դիմիցէ ։ Արդ զիա՞րդ կարիցեմք բաւական լինել պահելոյ ։ "Հոգւով սրբով,, ասէ. այն իսկ է եթէ զհոգին ունիցիմք 'ի մեզ բնակեալ, եթէ զշնորհսն չհալածիցեմք՝ մօտ է առ մեզ ։ "Եթէ ոչ տէր, ասէ, շինէ զտունն, ընդունայն վաստակին շինողքն նորա. եթէ ոչ տէր պահէ զքաղաք, ընդունայն տքնին պահապանք նորա,, ։ Նա լիցի մեզ պարիսպ, նոյն պահպանութիւն, նոյն ամուր ապաստանի. եթէ բնակիցէ 'ի մեզ և պահեսցէ, զի՞նչ պէտք պատուիրելոյ իցեն. զի զնա, ասէ, պինդ ունիցիմք, և առ մեզ պահիցեմք և չհալածիցեմք գործովք չարեօք ։

Պատմէ և զփորձութիւնսն. ոչ զանգիտեցուցանել կամի զաշակերտսն, այլ յորդորել. զի թէ և նա երբեք անկանիցի յայնպիսի վիշտս, մի՛ տաղտկասցէ իբրև զխամ ոք, հայեցեալ 'ի վարդապետն՝ յիշեսցէ զամենայն անցս որ անցին ընդ նմա ։ Արդ զի՞նչ ասիցէ. քանզի 'ի դէպ էր յորժամ կալանն զնա՝ ամենեցուն 'ի ձեռաց թողուլ, և չգտանել ուստեք մարդասիրութիւն, ոչ պատսպարութիւն և ոչ օգնականութիւն, այլ 'ի հաւատացելոց և 'ի բարեկամաց մատնել, լուր զի՞նչ ասէն. "Զայս գիտասջիր, ասէ, զի ապստամբ եղեն յինէն ամենեքին որ յասիացւոցն էին,, ։ Ըմբռն էր թէ և բազումք իսկ 'ի Հռոմ էին յայնժամ 'ի կողմանց ասիացւոց. այլ չեղև ոք ինձ պաշտպան, ասէ, չկամեցաւ ոք ճանաչել, ամենեքին օտարացան ։ Արդ տես զխմաստուն միտս նորա. զգործն միայն ասաց որ գործեցան, չանիծանէ զոք. այլ զայն որ ոչն գործեաց այնպիսի ինչ գործս, գովէ և օրհնէ և աղօթս առնէ, զի հասանիցէ բիւրապատիկ բարութեան, և զնոսա չանիծանէ, այլ զի՞նչ ասէ. "Որոց սակի են, ասէ, Փիգեղոս և Հերմոգինէս ։ Տացէ, ասէ, ողորմութիւն Ոնեսիփորայ տանն, զի բազում անգամ հանգոյց զիս և զկապանս իմ ոչ ինչ ամօթ համարեցաւ. այլ իբրև եկն 'ի Հռովմ, պնդագոյնս խնդրեաց զիս և եգիտ,, ։ Տես զիարդ ամենայն ուրեք զամօթոյն ճառէ և ոչ զվշտայն, որպէս զի մի՛ ինչ զարհուրիցի Տիմոթէոս, թէպէտ և բազում իսկ վըտանգք 'ի վերայ կային ։ Զի դիմադարձ եղև Ներոնին կայսեր, քանզի զոմն 'ի բարեկամացն նորա աշակերտեաց ։

«Այլ իբրև եկն, ասէ, 'ի Հռովմ, ոչ միայն չխուսեաց զիս տեսանելոյ, այլ և խնդրեաց և եգիտ. տացէ նմա տէր գտանել ողորմութիւն 'ի տեառնէ յաւուրն յայնմիկ. և որ ինչ յԵփեսոս սպաս կալաւ ինձ, զայն դու ինքնին իսկ քաջ գիտես»: Այնպիսիք պարտին լինել հաւատացեալք, մի յերկիւղէ, մի 'ի սպառնալեաց, մի յամօթոյ կասել, այլ միմեանց գործակից լինել, իբրև 'ի պատերազմի կալ հաստատուն, և միմեանց օգնել: Ոչ վշտացելոցն այնչափ, որչափ անձանցն շնորհեն՝ յորժամ հաղորդ զանձինս առնիցեն վշտացն, և պսակացն բաժանորդք լինիցին: Եթէ 'ի նեղութեան ոք 'ի պաշտօնէից ա̃յ կայցէ, բազում ճգանց տանիցի, և առնուել ժուժկալութեամբ նահատակիցի, և դու չիցես ինչ մօտ յայնպիսի պատերազմ, մարթի և քեզ թէ կամիցիս՝ լինել բաժանորդ պարգևացն որ նմա պատրաստեալ են, յորժամ մօտ երթայցես, խրախոյս տայցես, յորդորիցես զարթուցանիցես: Եւ զի այսպէս է՝ լուր 'ի միւսում վայրի զիարդ ասէ. «Բայց բարւոք արարէք, զի կցորդ եղերուք նեղութեան իմում». և դարձեալ թէ «Եւ 'ի Թեսաղոնիկէ մի անգամ և երկիցս ետուք բերել 'ի պէտս իմ»:

Եւ եթէ զիարդ հեռաւորքն այնմ որ չէր մօտ՝ կցորդ եղեն նեղութեանցն, և զի «Առաքեցէք, ասէ, 'ի պէտս իմ և մի անգամ և երկիցս». և դարձեալ զԵպափրոդիտեայ ասէ՝ եթէ «Մահուչափ գործեաց վասն ձեր, զի լցցէ զձեր պակասութիւն առ իմոյ պաշտամանն», զոր օրինակ առ Թագաւորօքն ոչ միայն որ զպատերազմ հարկանիցեն, այլ և որ զկարասին պահիցեն՝ հասարակորդք են և աւարին և պատուոյ, ոչ վայրապար ինչ՝ այլ բազում անգամ և պարգևս իսկ առ հասարակ առնուն, թէպէտ և ոչ ձեռն երբէք ածին ընդ արիւն, ոչ զէն զանձամբ առին, ոչ ասպազէն զերիվարաւ, թերևս բը-նաւ և զճակատն չտեսանիցեն իսկ, որչափ ևս առաւել յայնպիսի նեղութիւնս որ վասն ոգւոց պատերազմունք են: Որ օգնիցէ նահատակին յորժամ 'ի բանտին սովամահ մեռանիցի, երթայցէ և բանս մխիթարութեան խօսիցի և այլ դարմանս մատուցանիցէ՝ հասարակորդ է այնոցիկ որ զճգանս ճգնիցին: Եւ արդ մի ինչ զՊաւղոսէ ասիցես զքաջէն նահատակէն, զանպարտ պատե-

բազմօղէն, այլ զայլ ումեքէ ածջիր զմնաւ՝ որում կարի պէտք մխիթարութեան իցեն և խրախուսանք սփոփանաց՝ զիարդ կարիցէ կալ պնդակազմ և զպատերազմ հարկանել։ Որպէս զի որք արտաքոյ մարտիցն իցեն, այնմ որ 'ի մարտին կայցէ՝ լինիցին պատճառք յաղթութեան. և որք յաղթութեան պատճառք լինիցին, և պսակացն որ ընդ յաղթութեանն պարգևիցին՝ հասարակորդք լինին։

Նա ընդ այն զինչ զարմանք իցեն, եթէ նոցա որ դեռ ևս 'ի պատերազմունսն կան՝ յորդորիչքն հասարակորդք լինիցին. ուր զի և վաղուցն հանգուցելոցն 'ի պսակելոյ՝ որոց չէն ինչ պէտք դարմանոց, մարթի կցորդ և հաղորդ լինել։ Լուր Պաւղոսի. "Ի յիշատակս սրբոց, ասէ, հաղորդեալք". Թէպէտ և 'ի կէս օրինակս "և 'ի պէտս սրբոց" ասիցէ։ Նա զիարդ իցէ, ասեն, լինել հաղորդ յիշատակաց սրբոցն։ Յորժամ զարմանայցես, յորժամ ցանկանայցես այնպիսի առաքինութեան, և տաճարս 'ի պատիւ սրբոց շինիցես, յորժամ և դու այնպիսի ինչ գործս գործիցես՝ վասն որոյ այնմ մահուչափ նահատակեցաւ, յայտ է եթէ նոցին պսակաց և դու արժանի լինիցիս։

"Տացէ, ասէ, տէր գտանել ողորմութիւն 'ի տեառնէ յաւուր յայնմիկ"։ Ողորմեցաւ ինձ, ասէ. եթէ այնպէս իցէ, ընդունելոց է զհատուցումն 'ի սաստիկ և յահագին աւուրն, ուր բազում ողորմութեան պէտք լինիցին մեզ։ Տացէ, ասէ, նմա տէր գտանել ողորմութիւն 'ի տեառնէ։ Մինթէ երկու տեարք իցեն. և ոչ ուրեք. "Այլ մեզ մի է, ասէ, տէր Յիսուս Քրիստոս, և մի ած"։ Ասա որք զՄարկիոնի աղտն աղտանայցեն, յարձակին 'ի վերայ բանիս. այլ ուսանիցիս եթէ սովորութիւն է գրոց այսպիսի բանս 'ի գործ արկանել, և բազում ուրեք գտանէ ոք զի զայն սովորութիւն 'ի կիր արկանեն գիրք, որպէս յորժամ ասիցէ՝ թէ "Տեղեաց տէր յերկնից հուր և ծծումբ 'ի տեառնէ". և դարձեալ թէ "Ասաց տէր ցտէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ[1]"։ Տացէ, ասէ, նմա տէր, ոչ այլ ինչ, այլ ողորմութիւն գտանել։

1 Կայ 'ի յոյնն և այս բան որ 'ի մերումս պակասէր. Եւ այս ընդ- [illegible]

Իսկ եթէ Ոնեսիփոր արկ զանձն 'ի վիշտս՝ ողորմութեամբ կեցցէ, որչափ ևս առաւել մեք։ Ահագինք են պատիժքն, ահագինք և բազում մարդասիրութեամբն, զի մի՛ հասանիցէ զահագին բանն լսել եթէ "Երթայք յինէն, ոչ գիտեմ զձեզ ով գործէք զանօրէնութիւն". զի մի՛ հասանիցէ և զմիւս սոսկալի բանն լսել եթէ "Երթայք անիծեալք 'ի հուրն յաւիտենից, որ պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա". զի մի՛ հասանիցէ լսել եթէ "Վիհ մեծ է ընդ մեզ և ընդ ձեզ". զի մի՛ հասանիցէ լսել զսաստիկ պատուհասն եթէ "Առէք զնա և հանէք 'ի խաւարն արտաքին". զի մի՛ հասանիցէ լսել զմիւս բանն դողութեան եթէ "Ծառայ չար և վատ"։ Քանզի ահագին և կարի սաստիկ է դատաստանն, թէպէտ և ա̃ծ քաղցր է և հեզ։ Տէր գթութեանց ասի և ա̃ծ ամենայն մխիթարութեանց, և բարերար՝ որում չիք ով այլ հանգոյն բարերար և հանդարտ և զգօն և բազումողորմ, և չկամի զմահ մեղաւորին, որպէս զդառնալն նորա և զկեալն։

Իսկ արդ ուստի՞ այնչափ ահագին իցէ օրն։ Գետ հրեղէն յորդեալ եղանէ առաջի երեսաց նորա, դպրութի̃ք բանին, գիրք գործոցն մերոց ընթեռնուն, և օրն իբրև զհնոց բորբոքի, հրեշտակք այսր անդր ընթացեալ հասանեն, հնոցք բազումք վառեալք։ Իսկ արդ զիա՞րդ իցէ ասեն, մարդասէր, զիա՞րդ իցէ ողորմած, զիա՞րդ իցէ բարերար։ Մարդասէր իսկ է, և յայնժամ ամենայնէ երևի առաւել մարդասիրութիւն. վասն այնորիկ այնչափ երկիւղիւ դղրդէ զմեզ, զի յայնժամ ամենայնէ երկուցեալք՝ արքայութեան ցանկանայցեմք։ Իսկ արդ ե՞րբ զարթնուցումք, ե՞րբ սթափիցիմք։

Իսկ դու մի՛տ դիր զիարդ ոչ վայրապար վկայէ զՈնեսիփորայ, այլ ասէ՝ բազում անգամ հանգոյց զիս. որպէս զնահատակ ոք երկիթացեալ 'ի տապոյ և 'ի ծարաւոյ նեղութեանցն, արծարծէր նորոգէր ողջացուցանէր։ Իսկ որչափ ինչ, ասէ, յԵփեսոս սպաս կալաւ ինձ, զայն դու ինքնին իսկ քաջ գիտես։ Ոչ միայն, ասէ, յԵփեսոս։ Արդարև աստ այնպիսի ինչ պարտ է լինել արթուն և զուարթուն, ոչ մի անգամ և երկիցս և երիցս պարտի առնել, այլ զամենայն աւուրս կենաց։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Զոր օրինակ մարմինս մեր ոչ մի անգամ միայն կերակրելով կարէ ունել զամենայն ժամանակացն զկեանս, այլ ցանկութեան[1] կերակրոյ պէտք են. նոյնպէս և աստուածպաշտութեանն համապազորդ գործոցն բարեաց օգնականութեան պէտք բազում ողորմութեան: Քանզի վասն մեղաց մերոց մարդասէրն մեծ առնէ զամենայն, և չեն ինչ նորա այն կամք, այլ զամենայն ինչ վասն մեր առնէ: Վասն այսորիկ յառաջագոյն գուշակեաց և պատմեաց. և ոչ միայն պատմեաց, այլ և արդեամբք իսկ հաւատարիմ ցուցանէ. հաւատարիմ և արժանի հաւատալոյ, և բանիցն իսկ միայն մեր: Այլ զի մի ոք աւելիս ինչ քան զչափն, և բանիցն ևեթ սպառնալիս համարիցի, նախ ինքն և զարդեանցն հաստատութիւն 'ի մէջ բերէ, և առանձինն ումեք և հասարակաց պատիժս ածէ: Եւ զի յիրացն իսկ ուսանիցիս, պատժեաց երբեմն զՓարաւոն, և ած զջրհեղեղն համանջուրցն, և երբեմն անձրևս հրեղէնս. նա և այժմ իսկ զբազում մեղաւորս տեսանեմք զի տանջին և հատուցանեն վրէժս, որ օրինակ է գեհենին:

Զի մի 'ի բանից անտի 'ի քուն դառնայցեմք, յայնժամկս արդեամբք յիշեցուցանէ և զարթուցանէ, աստէն իսկ ցուցանէ ատեանս և դատաստանս և պատիժս: Եւ առ մարդկան այսչափ օրէնք և իրաւունքս դատաստանի գտանին, և առ Այ որ զայս ես նա իսկ կարգեաց՝ չիցե՞ն ինչ բանք դատաստանի: Եւ զիարդ գուցէ այն մօտ[2]: Զի աստ աւասիկ 'ի տունս և 'ի հրապարակս և ամենայն ուրեք ատեանս հաստանէ տեսանել. 'ի տունս տեարքն զծառայսն միշտ խոշտանգեն, ցանգ յատին կացուցանեն, և ըստ իւրաքանչիւր յանցանաց պահանջեն պատուհաս. է ինչ ընդ որոյ պատիժ առնեն, է ինչ ընդ որոյ զան հարկանեն, և է ինչ որում թողութիւն առնեն: Եւ 'ի հրապարակի նոյնպէս, և 'ի գեօղս գեղջերիցունք, և 'ի նաւս նաւապետքն, և 'ի զօրս զօրավարքն,

1 Իմա համապազորդութեան: փոխել այնմ առաջ կամ հանապ. յոյնն
2 Այսպէս յօրինակին. Թերևս Եւ զիարդ մարթիցի համարել: Զի:

և թագուոմ ուրեք հասանէ տեսանել ատեանս դատաստանի, և յարուեստս վարդապետքն զաշակերտսն. և այսպէս տեսանեմք զի զառանձինն և զհրապարակաւ ատեանս լինին. և չիք ուրեք տեսանել եթէ զոյինաց դատաստանին անփոյթ առնիցեն, այլ ամենայն ուրեք վնասակարք պատժին: Իսկ եթէ աստ այնչափ սերմանեալ են և 'ի քաղաքս և 'ի տունս և յիւրաքանչիւր տեղիս դատաստանացն խնդիրք, իսկ անդ ուր արդարութեամբն լի է ամ՟ն տ՟ղ, և արդարութիւն նորա իբրև զլերինս այ՟, չիցէ՞ ինչ իրաւանց խնդիր: Իսկ զիա՞րդ ն՟մ դատաւոր արդար, հզօր և երկայնամիտ անսայցէ և չպահանջիցէ պատիժս:

Երեք են ինչ պատճառք երկայնմտութեան: Երկայնամիտ լինի, զի զմեզ յապաշխարութիւն ածիցէ. ապա եթէ անզգլէն 'ի մեղս յամիցես, "Ըստ խստութե՟ քում և ըստ անզեղջ սրտի գանձես քեզ բարկութի՟„: Իսկ արդ եթէ արդար է, ապա ըստ իւրաքանչիւր արժանեացն հատուցանէ, և ոչ թողու առանց պատժոյ զչարագործս, և չառնէ անտես զզրկեալն յիրաւանց: Իսկ եթէ հզօր է, և յետ մահու հատուցանիցէ. քանզի և այն է զօրութեանն գործ՝ և յարութեանն պահանջել: Իսկ երկայնամիտ է, սակէ. եթէ երկայնամիտ է, ապա չպարտիմք խռովել և ասել, թէ ընդէ՞ր ապերօք սատէն չհանիցէ. զի թէ անդէն առ ոտն և առժամայն հանէր, վաղուց իսկ կորուսեալ էր ազգ մարդկան, եթէ ցանգ վրէժս պահանջէր 'ի մէնջ՝ որ միշտ ընդ նմա կռուիմք: Վասնզի չիք որ սուրբ 'ի մեղաց՝ յորում ոչ մեծաւ կամ փոքու յանցանիցեմք. և չժամանէաք իսկ և ոչ 'ի քսաներորդ ամ հասանել, եթէ չէր բազում երկայնմտութեան նորա գործ ներելն և բազում բարերարութեան նորա, որ շնորհէ մեզ զկեանս ապաշխարութեան՝ թօթափել 'ի մէնջ զյանցանսն:

Իսկ արդ իւրաքանչիւր ոք 'ի մէնջ մտցէ ուղիղ կամօք յիւրաքանչիւր միտս, և քննեսցէ զգործս իւր, և զամենայն զվարս իւր 'ի մէջ բերեալ՝ հանդէս առնիցէ, եթէ ոչ բիւրապատիկ տանջանաց և պատժոց արժանի իցէ: Իսկ յորժամ մեղաւոր լինիցի, եթէ այս ամենայն այսչափ չարիս գործէ, և պատիժս չկրէ, խնայեցի զինքն, և դարձուսցէ 'ի մեղաւորութենէ: Ով է յա-

ժամ զիւրն քննեսցէ, թերեւս եւ մեծամեծ չարիս գըտանէ. մեծամեծացն մեծամեծ մեղք երեւին, քանզի յայտնի գործեն: Այլ յափշտակելն եւ ագահել նոյն է. եթէ ոսկի եւ արծաթ ագահիցէ եւ եթէ այլ ինչ, 'ի միջէ մտաց ծնանին երկրքին փափաքն. եւ որ սակաւն զրկիցէ, եւ 'ի մեծամեծ զրկելոյ չակնածիցէ. եւ եթէ չգայցէ 'ի բուռն, ոչ եթէ 'ի նմանէ ինչ կայր, այլ յիրացն որ չէկին 'ի բուռն: Աղքատն յորժամ զմիւսն՝ որ եւս չար աղքատ քան զնա է՝ զրկիցէ, թէ եւ մեծատուն 'ի բուռն գայր, չածէր ակն 'ի զրկելոյ. եւ այնուհետեւ 'ի տկարութենէն եւ ոչ 'ի նորա ինչ կամացն գործին իրքն:

Այս անուն, ասեն, իշխան է, եւ 'ի նոցանէ որոց իշխեն՝ յափշտակէ. եւ դու չյափշտակիցես: Այլ զայն մի ինչ ասիցես՝ թէ նա բազում լտերս ոսկւոյ յափշտակեաց՝ եւ դու տասն լումայ. քանզի եւ յողորմածութենէն ոմանք ոսկի արկանէին 'ի գանձանակն, եւ այրին երկուս խերեւէշս պղնձոյ՝ եւ ոչ ինչ սակաւ քան զնոսա արկ 'ի գանձանակն: Ընդէ՞ր. քանզի կամքն քննին եւ ոչ տուրքն:

Այլ արդ յողորմածութեանն աղաչեմ զձեզ զի այնպէս համարիցի, եւ մի ինչ նուազագոյն զտուրս աղքատութեանն հաշուիցի. եթէ զերկուս խերեւէշն արկանիցես, կամիս եթէ ընդ այնս որ զբազում ոսկին արկանիցեն՝ գրեսցէ. եւ յագահութեանն ոչ ինչ այնպէս. եւ զիա՞րդ 'ի դէպ իցէ: Զոր օրինակ որ զերկուս խերեւէշսն արկ 'ի բարւոք կամացն, ոչ ինչ սակաւ քան զայլոցն եղեւ նպաստ, նոյնպէս եւ դու յորժամ երկուս դանկս զայլոց յափշտակիցես՝ ոչ ինչ լաւագոյն քան զայնոսիկ ես՝ որ զբազում արարս զայլոց յափշտակիցեն:

Այլ եթէ պարտ իցէ զկարի իսկ զարմանալին ասել, եւս չար քան զնոսա ագահագոյն գտանիս: Զոր օրինակ որ ընդ թագաւորի ոք կնոջ շնայցէ եւ որ ընդ աղքատին եւ ընդ ծառայի, ընդ մի շնութիւն համարի. քանզի ոչ եթէ ըստ երեսաց մեղքն համարին, այլ ըստ չար կամացն յանդգնելոյն. նոյնպէս եւ յագահութենէն: Բայց ես կարի շուն զայն համարիմ, որ ընդ դոյզն ոք կնոջ շնայցէ, քան եթէ ընդ տիկնոջ ումեք. զի անդ մեծութիւնն եւ գեղն եւ բազում ինչ է որ պատրէ. իսկ 'ի միւսումն եւ ոչ ինչ. որպէս զի այն իսկ կարի շուն է, որ ընդ դոյզն կնոջ ոք շնայցէ: Դարձեալ եւ կարի արբեցող

զայն ասեմ, որ ոք յաւէ զինուորն զջնջիցէ[1] ։ Նոյնպէս և կարի ագահ նոյն է՝ որ զմանունսն չարհամարհիցէ. զի որ զմեծամեծսն յափշտակիցէ, թերևս և զմանունսն արհամարհիցէ իսկ. բայց որ զմանունսն հատանիցէ, զմեծամեծսն և ոչ երբէք արհամարհիցէ. որպէս զի կարի գող մանրակծծին[2] իսկ է. որ զարծաթ չարհամարհիցէ, նա և յոսկւոյ չածէ ակն։ Եւ այնպէս յորժամ զիշխանն թամբասիցեմք, և զմեր զյանցանս զմըտաւ ածիցեմք, և գտանեմք զանձինս գողս և ագահս ևս չար քան զնոսա. և թէպէտ և ոչ արգեամբք, այլ կամօք. այսպէս համարեսցուք, քանզի և յիրաւի իսկ է այսպէս հաշուել։

Եւ արդ աղէ ասա, եթէ ոք յօժարիցէ զտնանկին հատանել, և միւսն զմեծատանն, ո՞չ ապաքէն զնոյն պատիժս պատժիցին երկոքեան։ Եւ սպանողն չիցէ՞ նոյնպէս սպանող որ զհաշմ և զաղքատ սպանանիցէ, և որ զմեծատունն և զողջանդամ։ Եւ արդ յորժամ ասիցեմք՝ թէ այս անուն զայսր անուան գեօղ յափշտակեաց, զմտաւ ածցուք և զանձանց վնասս, և այնպէս ոչ զայլս դատապարտիցեմք, և ըստ այ երկայնմտութիւնն զարմանայցեմք, և չլինիցիմք մեղադիր՝ թէ ընդէ՞ր չգայցէն 'ի վերայ մեղաւորաց պատիժք. և մեք ցածնուցումք 'ի չարիս գործելոյ։ Յորժամ տեսանիցեմք և զանձինս նոցա պատժապարտս, և այնուհետև ոչ ինչ լինիմք դըժկամակք. այլ հեռանայցեմք 'ի մեղաց, և հասանիցեմք խոստացելոց բարութեանցն. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Միւսն գլխագրիցէ ։ 2 Միւսն մանր կծծին ։

# ՃԱՌ ՉՈՐՐՈՐԴ

"Այլ դու որդեակ իմ, զօրացիր 'ի շնորհսն որ 'ի Քրիստոս Յիսուս են. և զոր լուար յինէն բազում վկայիւք, աւանդեսջիր հաւատարիմ մարդոց՝ որ բաւական իցեն և զայլս ուսուցանել։ Դու արդ ճգնեսջիր իբրև զպատուազէն Յիսուսի Քրիստոսի. զի ոչ ոք է որ զինուորի և աստէն պատաղի ընդ կեանս աշխարհիս, և մարթ իցէ զօրավարին հաճոյ լինել. և եթէ նահատակիցէ ոք՝ ոչ պըսակի, եթէ ոչ ըստ օրինացն նահատակիցի. և հողագործին ըստ վաստակոցն պարտ է 'ի պտղոյն վայելել։ Իմա զինչ խօսիմս. տացէ քեզ տէր իմաստութիւն յամենայնի"։

Բերէ խորախոյս 'ի ծովու աշակերտին՝ վարդապետին նաւակոծ ծովածուփ լինել և ապրել. քանզի ոչ այնուհետև յիւրմէ ինչ աղտեղութենէ համարիցի զմըրրկացն 'ի վերայ հասանել, այլ յիւրաց իսկ հանգամանաց. և չէ այն սակաւ ինչ մխիթարութիւն։ Տայ և պատերազմի զօրավարին քաջալերութիւն՝ զզօրականն խոցտեսանել և միւսանգամ պատսպարել։ Նոյնպէս և հաւատացելոցն տայ մխիթարութիւն՝ առաքելոյն բազում անգամ չարչարելն և ոչ ինչ զանգիտել։ Դու[1] եթէ չէր վասն այնպիսի իրաց, նա և չպատմէր զչարչարանսն։ Ոչ է յորժամ լուաւ Տիմոթէոս զնմանէ եթէ այնչափ բաւական եղև և կալաւ զամենայն տիեզերսն՝ 'ի կապանս և 'ի նեղութիւնս է և ոչ ինչ զանգիտէր և լինէր դըժկամակ, թէպէտ և յիւրոյն իսկ թողաւ. թէ և նմա ևս այսպիսի չարչարանս հասանիցէ չարչարել՝ չհամարիցի 'ի մարդկեղէն ինչ տկարութենէն, և ոչ զի աշակերտն էր և խոնարհագոյն քան զՊաւղոս, ուր և վարդապետն այնչափ չարչարանօք չարչարեցաւ. այլ ըստ իրաց պատահեալ զայն ամենայն։ Քանզի և նա նմին

1 Ի հատուածիդ ԾՈ ԷԷԷ ... ոչ գտեալ էին յօրինակին, զոր 'ի ինչ պակասիցէ սմանք 'ի բազմաց խան- յաճախականէն լրացուցաք։

իւրի զնոյն պատմէր, զի զաշակերտն արծարծիցէ և նորոգիցէ ։

Եւ զի յայնպիսի ինչ միտս առնէր Պաւղոս, իբրև պատմեաց զնեղութիւնս և զփորձութիւնս՝ յարէ 'ի նոյն թէ “Դու այսուհետև, որդեակ իմ, զօրացիր 'ի շնորհսն որ 'ի Քրիստոս Յիսուս են”։ Զինչ խօսիս, թեկանես զմեզ երկիւղիւ. ասես թէ 'ի կապանս և 'ի նեղութիւնս եմ, և թէ ամենեքեան ապստամբ եղեն յինէն. և որպէս թէ չիցէ ինչ քո այնպիսի բանս խօսեցեալ, և ոչ զնեղութեանց ինչ և զվշտաց պատմեալ, և կամ թէ չիցես յումեքէ լուկ մնացեալ, այնպէս իմն 'ի նոյն յարես՝ եթէ դու այսուհետև, որդեակ իմ, զօրասջիր ։ Եւ յիրաւի իսկ, զի և զքեզ այդ քաջ զօրացոյց քան զայն ։ Եթէ ես, ասէ, Պաւղոս այնպիսի ինչ չարչարանօք չարչարէի, որչափ առաւել քեզ պարտ իցէ զնոյն յանձին կրել. եթէ վարդապետս, որչափ ևս առաւել աշակերտդ ։ Եւ բազում իմն գթով զխրատն յօրինէ. որդեակ կոչէ զնա, և ոչ վայրապար, այլ թէ որդեակ իմ ։ Եթէ որդեակ իմ ես, ասէ, հօրս նմանեա. եթէ որդեակ իմ ես, յայդ զօրացիր զոր պատուիրեցից, մանաւանդ եթէ ոչ միայն 'ի պատմութեանցն, այլ և 'ի շնորհացն Քրիստոսի ։ Զօրացիր, ասէ, շնորհօքն Յիսուսի Քրիստոսի. այսինքն հաստատուն կաց, առաքինի լեր, քանզի հմուտ ես պատերազմիդ, որպէս և այլուր ասէ՝ թէ “Չէ մեզ մարտ պատերազմի ընդ արեան և ընդ մարմնոյ”։ Ոչ զանգիտեցուցանէ, այլ առաւել յորդորէ. արթուն լեր, ասէ, զուարթ կաց զշնորհսն ա̃յ յօգնականութիւն կոչել, լինել զօրավիգն 'ի պատերազմիդ. բազում յօժարութեամբ կամակար կամօքն լինիջիր զքոյան 'ի քէն նպաստ ։

“Եւ զոր լուարն, ասէ, յինէն բազում վկայիւք, աւանդեսջիր զայն հաւատարիմ մարդոց”։ Հաւատացելոց, ասէ, և ոչ խնդրողաց և քննողաց. հաւատացելոց որք չլինիցին մատնիչս քարոզութեան ։ Զոր լուարն, ասէ, և ոչ թէ զոր խնդրեցերն և քննեցեր. որպէս այլուր ասէ՝ եթէ “Հաւատք 'ի լսելոյն են, և լուրն 'ի պատգամաց ա̃յ”։ Եւ զինչ իցէ՝ բազում վկայիւք. որպէս զի ասիցէ՝ եթէ ոչ գաղտ ինչ լուար և ոչ ծածուկ ուրեք, այլ առաջի բազում վկայից մեծաւ համարձա-

կութեամբ։ Եւ չասաց թէ ասա կամ պատուիրեա, այլ թէ աւանդեա, որպէս զգանձ ինչ արքունի որ տայցէ յաւանդ մեծաւ զգուշութեամբ։ Դարձեալ երկեցուցանէ զաշակերտն և վերնոյքն և ներքնոյքս. և ցուցէ թէ միայն հաւատացելոց աւանդեա։ Քանզի զինչ օգուտ իցէ յորժամ հաւատացեալ իցէ, և յայլս չկարիցէ տարածանել զվարդապետութիւն. յորժամ ինքն չմատնիցէ զհաւատոն, և զայլս այնպիսիս չկարիցէ յարդարել։ Երկուս ինչ իրս պարտի ունել յանձին վարդապետն, զի և հաւատարիմ իցէ և ուսուցիչ։ Ամենիրի իսկ ասէ՝ եթէ որք բաւական իցեն և զայլս ուսուցանել։

“Դու, ասէ, ճգնեա իբրև բարւոք սպառազէն Յիսուսի Քրիստոսի”։ Տեսէք որչափ ինչ պատիւ Քրիստոսի զինուորացն։ Նայեաց ընդ թագաւորս երկրիս և տես, զի մեծ պատիւ համարին զինուորքն զզինուորութիւնն։ Իսկ արդ եթէ ճգնելն արքունի զինուորի իցէ, յայտ է եթէ չճգնել չէ զինուորի գործ. ուր զի չէ պարտ զանգիտել, քանզի չէ այն գործ զինուորի, այլ չզանգիտելն և յօժարութեամբ ճգնել։

“Ոչ ոք, ասէ, զինուորի, և աստէն յիրս աշխարհիս պատաղի. և եթէ նահատակիցէ ոք՝ ոչ պսակի, եթէ ոչ ըստ օրինացն նահատակիցի”։ Այս ասացաւ առ Տիմոթէոս, բայց նոյնաւ առ ամենեսեան իսկ ասէ, առ վարդապետս և առ աշակերտս։ Մի ոք այսուհետև յեպիսկոպոսաց տաղտկայցէ զայսպիսի բանս լսել. այլ յայնժամ տաղտկասցի եթէ ոչ ըստ պատուիրանացն ինչ գործ գործեսցէ։ Եւ եթէ նահատակեսցի ոք, ասէ, չպըսակի, եթէ ոչ ըստ օրինացն նահատակեսցի։ Եւ զինչ իցէ եթէ ըստ օրինացն։ Եւ եթէ անցանիցէ ոք, ասէ, 'ի կռփին և օծանիցի և գիրկ ընդ խառն լինիցի, չէ այն միայն բաւական. եթէ ոչ ամենևին զգուշանայցէ կերակրոյն և զգաստութեան և պարկեշտութեան և կըռուոյն ևս տեղւոյ, և ամենևին ընդ ամենայն չափս որպէս նահատակաց վայել իցէ անցանիցէ՝ ոչ երբէք պըսակի։ Եւ դու տես զխստութիւն Պաւղոսի. զզօրականաց և զնահատակաց յիշեաց, մինչ 'ի սպանութիւս և 'ի կոտորածս և յարիւնս պատրաստականս լինել, և մինչև ամենևին ժուժկալ լինել և համբերել ամե-

նոյն ձգանաց առաքինութեանն, զի համառօտ կոխ և կիրթ կացցէ։

«Եւ հողագործին, ասէ, և ըստ վաստակոցն պարտ է և 'ի պտղոյն վայելել»։ Ասաց նախ և յիւրոց օրինակացն, ասաց և 'ի վարդապետէն, ասաց և 'ի համարակաց անցիցն որ ինչ ընդ նահատակսն և ընդ զօրականսն անցանիցեն, դնէ և զպարգևսն 'ի միջի, զզօրականսն ասէ եթէ զօրավարին հաճոյ լինի, և զնահատակէն թէ պսակի, ասէ և զերրորդ օրինակն՝ որ կարի իսկ նմա պատշաճ էր. զի զինուորին՝ կարի իմն յանգ է հնազանդելոյ[1]. իսկ հողագործին օրինակ՝ վարդապետին, թէ մի իբրև զզինուորն և մի իբրև զնահատակն միայն, այլ և իբրև զհողագործն։ Վասնզի հողագործն ոչ եթէ անձին զարման ունի, այլ սերմանց և երկրին, և ոչ սակաւ ինչ պտուղս շահի։ Եւ աստէն իսկ փոխանակ վաստակոյն և զքոյ անկարօտութիւնն ցուցանէ, և զընդ վարդապետութեան հատուցումն, և իրս մի ինչ զհամարակաց ասաց՝ թէ հողագործն ոչ յանօգուտս ինչ վաստակի, այլ ինքն նախ քան զայլս վայելէ 'ի պտղոյ իւրոյ աշխատութեան. նոյնպէս և զվարդապետէն։ Կամ զայս ասէ, կամ թէ պատուել իսկ պարտ է։ Այլ չէ ինչ դէպ, և արդարև իսկ չէ 'ի դէպ. քանզի չասաց լոկ հողագործ, այլ թէ որ վաստակիցէն. և ոչ եթէ որ դոյզն ինչ ոք վաստակիցէ, այլ որ կարին խոնջիցի և փոյթ յանձին ունիցի. զի մի ոք զանգիտիցէ, աստէն իսկ, ասէ, վայելես և կամ թէ անդէն յաշխատութեան հատուցումն։

Եւ քանզի օրինակս եբեր 'ի մէջ 'ի զինուորաց և 'ի նահատակաց և 'ի հողագործաց, և զամենայն առակօք օրինակաց՝ եթէ «զինուորն չկարէ հաճոյ լինել զօրավարին եթէ յիրս աշխարհիս պատաղիցի», և նահատակն «եթէ ոչ ըստ օրինացն նահատակիցի չպսակի», թէ «հողագործին, ասէ, որ վաստակիցի՝ պարտ է և 'ի պտղոյն վայելել», և անդէն առ նմին ասէ. «Իմա զինչ ասեմս. տացէ քեզ տէր իմաստութիւն յամենայնի»։ Եւ էր վասն ասիցէ զայս առակաւ օրինակաւ, ո՞չ ապաքէն

1 Պակասէր յօրինակին հնազանդելոյ . . . վարդապետին. յաւելաք 'ի յունէն։

զի զնա յառաւելութիւն կրթիցէ: Պարծեալ և զգութն ցուցանէ, և ոչ դադարէ աղօթս առնել վասն նորա, քանզի դողայ իբրև յորդւոյ սիրելւոյ վերայ:

«Յուշ լիցի քեզ, ասէ, Քրիստոս Յիսուս յարուցեալ 'ի մեռելոց 'ի զաւակէ Դաւթի ըստ աւետարանին իմում, յորում Ճգնիմ կապանօք չափ իբրև զչարագործ»: Ի՞ր վասն զայս աստ այսպէս յիշիցէ: Քանզի և ընդ հերձուածողսն գոռայ, և զնա առաւել իմն յորդորէ, և յայտ առնէ թէ 'ի չարչարանաց է շահ. զի և ինքն իսկ վարդապետն մեր Քրիստոս չարչարանօքն պարտեաց զմահ: Զայն յիշեա, ասէ, և ունիցիս բաւական մխիթարութիւն: «Յուշ լիցի քեզ, ասէ, Յիսուս Քրիստոս յարուցեալ 'ի մեռելոց 'ի զաւակէ Դաւթի»: Ընդէն իսկ յայնմ ժամանակէ հետէ սկըսանէին ոմանք զտնտեսութիւն խափանել, և յամօթ լինէին մեծաւ այ մարդասիրութեամբն: Քանզի այնպիսի ինչ երախտիս արար մեզ ած, մինչ զի մարդիկ ամօթ համարէին յայնպիսի ինչ հաշուել այ, և չհաւատալ թէ արդարեւ այնչափ էջ զիջաւ ընդ մեզ:

«Ըստ աւետարանին իմում», ասէ: Յամ թուղթսն զայս դնէ, թէ ըստ աւետարանին իմում. զի նմա պարտ է անսալ, քանզի էին և այլք որ այլ իմն աւետարանէին: «Յորում Ճգնիմ, ասէ, կապանօք չափ իբրև զչարագործ»: Պարծեալ իւրովքն չարչարանօք ընծայեցուցանէ մխիթարութիւն, և միւսանգամ յորդորէ այսու: Եւ զի՞նչ ինչ օգուտ իցէ թէ ցուցանիցես զվարդապետն Ճգնեալ, եթէ ոչ ինչ վասն շահաւոր իրաց: Իսկ արդ ո՞ր իցէ շահաւորն և սքանչելի: «Այլ բանն այ ոչ եթէ կապեալ կացցէ»: Եթէ աշխարհական զինուորք էաք, ասէ, և զերևելի պատերազմ պատերազմէաք, կարէին կապանքս խափան լինել ձեռաց մերոց. իսկ սա ահաւասիկ այնպիսիս արար զմեզ ած՝ զի և ոչ իւիք մատնիցիմք 'ի պարտութիւն: Կապեալ են ձեռքս, այլ ոչ եթէ լեզու. քանզի զլեզու ոչ կարէ այլ ինչ կապել, բայց եթէ երկիւղ միայն և անհաւատութիւն. մինչև այն չիցէ 'ի մեզ հուպ, որչափ և առնուցուն յանձն կապանս՝ չկապի քարոզութիւն: Այսպիսի ինչ, զհողագործն եթէ կապիցէ ոք, խափանէ զսերմն, քանզի ձեռօքն սերմանէ. զվարդապետն եթէ կապիցէ, ըզ-

բանն չկարէ խափանել, քանզի լեզուաւն սերմանէ և ոչ թէ ձեռամբ. չանկանի ընդ կապանօք բանն. Թէպէտ և մեք կապիցեմք, այլ նա արձակ է և ընթանայ: Եւ զիա՞րդ իցէ, քանզի և մեք, ասէ, 'ի կապանս եմք և քարոզեմք: Եւ այսու զարձակսն յորդորէ. եթէ մեք, ասէ, որ 'ի կապանս եմք և քարոզեմք, որչափ ևս առաւել ձեզ որ արձակդ իցէք պարտ է զսոյն առնել: Լուա՞ր եթէ իբրև զչարագործ ճգնիմ, մի՛ ինչ տրտմիցիս. բազում զալմանք են յորժամ կապեալն զարձակաց գործ գործիցէ, կապեալն զկապիչսն դաւէ: Աստուծոյ է բանն և ոչ մեր. և մարդկեղէն կապանօքս զնոյ բանն չկարեն արգելուլ:

"Եւ այսմ համբերեմ, ասէ, վասն ընտրելոցն, զի և նոքին փրկութեան հասանիցեն 'ի Քրիստոսէ Յիսուսէ յաւիտենից փառօքն հանդերձ,,: Ահաւասիկ և այլ քաջալերութիւն. ոչ, ասէ, վասն անձին, այլ վասն այլոց փրկութեան համբերեմք զայս. մարթ էր առանց ճգանց կեալ, մարթ էր չարչարել և այսպիսի ինչ չարչարանս՝ եթէ զիմն դիտէի: Իսկ արդ ընդ ո՞ր չարչարիցիս. վասն այլոյ բարեաց, ասէ, զի և այլք հասանիցեն յաւիտենից կենացն: Իսկ արդ զի՞ պատմիցես[1]: Ոչ ասեմ թէ վասն ոմանց, այլ թէ վասն ընտրելոց: Եթէ ած, ասէ, ընտրեաց զնոսա, պարտ է և մեզ ամենևին չարչարել վասն նոցա, զի և նոքա փրկութեան հասանիցեն: Ասելովն զի և նոքա, որպէս թէ զանձանց իսկ ասիցէ. քանզի և զմեզ, ասէ, ընտրեաց ած. որպէս վասն մեր չարչարեցաւ ած, նոյնպէս և մեք վասն նոցա, զի մերն փոխարէնքն իսկ են և ոչ շնորհք: Յայն կողմանէ շնորհք էին, քանզի ոչ գիտէր զմեր բարի և արար երախտաւոր. իսկ 'ի մէնջ կողմանէ փոխարէնք, զի նախ ընկալաք երախտաւոր յայ, և ապա չարչարիմք վասն որոց չարչարիմք, զի և նոքա փրկութե հասանիցեն: Ո՛ ինչ խօսիսդ. որո՞ւմ փրկութեան. որպէս զի թէ քեզ չիցես պատճառք փրկութեան՝ այլ կորստեան, և այլոց պատճառք փրկութեա՞ն լինիցիս: Վասն այսորիկ յաւել՝ ոչ այնպիսւոյ ինչ, այլ որ 'ի Քրիստոս Յիսուս է ճշմարիտ փրկութիւնն, և ամենեցուն փրկութեան յաւիտենից փառօքն հանդերձ:

1 Զանոլոր գրչութիւնն յօրինակին մարթ էր ընթեռնուլ և զբաղցիս. յոյժն ու՛նչ խափանեալ:

Ոգամբք են աստէքս, այլ մինչդեռ յերկիրս եմք. տրտմութեամբ են մտաւորքս, այլ ժամանակաւորք են. վշտօք և ցաւօք լի, այլ մինչև ցայսօր և ցվաղիւ միայն: Իսկ հեշտականք ոչ այնպիսի ինչ, այլ յաւիտենականք են և յերկինս. և արդարև այն իսկ են փառք, և այս անարգանք: Եւ դու մտ դիր, սիրելի. չիք փառք յերկրի, այլ ճշմարիտ փառք յերկինս են. եթէ ոք փառաւորել կամիցի, անարգեսցի. եթէ հանգստեան հասանել, նեղեսցի. եթէ ոք զյարգեալն և զգրգուեալն ժամանակաւոր արհամարհիցէ, յաւիտենից գրգեսցի: Եւ զի անարգութիւն փառք են և փառքն անարգութիւն, ծն առեալ ըստ մերում կարի յանդիման կացուսցուք, զի զճշմարիտ փառսն տեսանիցեմք: Չիք փառաւորեալ յերկրի. և եթէ փառաւորել կամիցիս, գիտասջիր զի յանարգութեանն են փառք:

Եւ արդ բեր 'ի մէջ յերկուս երեսս քննեսցուք 'ի Ներոնի և 'ի Պաւղոսի: Նա զփառս աշխարհիս ունէր, և սա զանարգութիւն: Որպիսի՞ ինչ: Նա իշխան էր և բուռն, և բազում պատերազմունս հարեալ և բազում յաղթութիւնս արարեալ, մեծութիւն յամենայն կողմանց եռայր, զօրք անչափ, զմեծ մասն աշխարհի հնազանդեալ ունէր ընդ իւրեաւ, զարքունական քաղաքն ընդ իշխանութեամբ, զսինկղիտոսն զամենայն նուաճեալ՝ որք խորհրդականքն կոչին, զամենայն օրէնս թագաւորութեան մեծաւ փառօք: Եւ բազում սպասօք ելանէր և մտանէր, յոսկի և յականս պատուականս համակէր. և եթէ 'ի խաղաղութեան՝ ծիրանեօք և թագաւ պայծառանայր, բազում սպասաւորս բազում օժանդակս և սպասեկս[1], նժուգաւորս և նժոյգս զկնի և առաջի յորինէր. ծովու և ցամաքի տէր անուանէր, ինքնակալ, աւգոստոս, կայսր և թագաւոր կոչէր, և այլ ևս բազում անուամբք անուանէր, որչափ ինչ 'ի սուտակապատութեան ողոքանաց հնարիցեն անուանս գտանել. և չէր ինչ ամենևին պակաս 'ի փառաց: Այլ և իմաստունք, զօրաւորք և թագաւորք դողային և սարսէին 'ի նմանէ: Եւ այնպէս ասեն՝ թէ կարի իմն անօրէն և բուռն անագորոյն էր, մինչ զի և ա͞ծ ևս կամէր անուանել, և

1 Ճառընտիրն սպասէկս նուագաւորս:

զամենայն զդիս և զկուռս արհամարհեր, նա և զամե-նեցուն իսկ ա՛ծ, և իբրև զա՛ծ ոք պաշտօն խնդրեր: Ո՜րինչ քան զայն կայցէ փառս, մանաւանդ թէ զի՞նչ քան զայն անարգութիւն վատթարագոյն: Բայց ոչ գի-տեմ զիարդ 'ի Ճշմարտութենէն յառաջագոյն դրդեալ բերան, նախ քան զդատաստանն համարձակեցաւ տալ վճիռ: Բայց սակայն ըստ բազմացն կարծեաց քննես-ցուք զիրս ըստ անհաւատիցն և ըստ սուտակապաշտու-թեան: Ո՜րինչ մեծ կայցէ քան զնա 'ի փառացն հա-մարի բնաւ՝ համարել զանձն ա՛ծ, և կարի իսկ մեծ անար-գութիւն էր, զի մարդ էր և այնպիսի յանդգնութիւնս յանդգնեցաւ: Բայց սակայն ըստ բազմացն կարծեաց քննեսցուք. ոչ ինչ էր նմա պակաս 'ի մարդկեղէն փա-ռաց, այլ յամենեցունց իբրև ա՛յ պաշտօն մատուցանէր:

Ածեալ կացուսցուք հանդէպ նմա, թէ կամիք, զՊաւ-ղոս, զայր մի կիւլիկեցի 'ի կիւլիկեցւոց աշխարհէն. և որչափ ինչ ընդ Կիւլիկիա և ընդ Հռովմ 'ի միջի է, զայն ամենեքեան գիտեն: Այր մի կարուակ, խորուանդիչ, կարկատիչ, աղքատ տնանկ, տխմար տգէտ յարտաք-նոյնի մաստութենէ. զհեբրայեցի զխաղտալուր լեզուն միայն գիտէր՝ որ յամենեցունց պարսաւի, և բոլորե-ցունց գարշելի և խուլուրտիւն թուի, և մանաւանդ ի-տալիացւոց՝ որք ոչ այնչափ զբարբարոսաց և զելլադա-ցւոց և զայլոցն ամենեցունց լեզուս աղարտեն որպէս զա-տորւոց կոկորդակիր[1] խուլուրտիւնն. քանզի յայն ի՛մն կա-րի յանդ է եբրայեցին. զի թէ զելլադացւոյն զպերճա-բանն սեթևեթեալ այնչափ պարսաւեն, որչափ ևս առա-ւել զհեբրայեցւոցն և զԱսորւոցն: Այր մի որ բազում անգամ սովամահ լինէր, և նօթի և անսուաղ ագա-նէր. այր մի մերկ և բոկ, և ոչ կապերտ անգամ զու-տովքն գտանէր արկանել, 'ի քաղց և 'ի ծարաւ և 'ի մեր-կութեան մաշեալ. և ոչ այնչափ միայն, այլ և բանտար-կեալ ընդ աւազակս և ընդ կախարդս և ընդ գերեզմա-նակրկիտս և ընդ մարդասպանս, նորին իսկ հրամանաւ իբրև զչարագործ մի տանջէր՝ որպէս և ինքն իսկ ասէր:

1 Ճառընտ. կոկորդակէր խուլրդին:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այս արդ ո՞ փառաւորագոյն և պայծառ իցէ: Ի ըղ-
նորա և ոչ զանուն անգամ գիտեն բազումք • զսա Յոյնք
և բարբարոսք և սկիւթացիք և ամենայն իսկ ծագք տիե-
զերաց ցանգ և հանապազ չթափեն 'ի բերանոյ: Այս ոչ
ինչ զայժմուս, այլ զայն ժամուն իսկ քննեսցուք՝ ո՞ր
պայծառագոյն և փառաւոր էր • կապեա՞լն որ շղթայիւքն
իբրև խառանաւ ձգէր 'ի բանտէն, եթէ որ զծիրանիսն
զգենոյր, և թագաւն և սպասաւորօք յարքունեացն խա-
ղայր ելանէր: Ո՞չ ապաքէն կապեալն և կալանաւոր: Ո՞վ
և որպիսի կերպարանօք • զի նա զօրօք հանդերձ և պէս-
պէս վայելչութեամբ նստէր յատենի յաթոռ թագա-
ւորութեան, և զոր ինչ կամէր՝ չկարէր վճարել • և կա-
պեալն կալանաւոր՝ որ իբրև զչարագործ մի կայր առաջի
տգեղծն կերպարանօք՝ ձոխութեամբ և իշխանութեամբ
գործէր զինչ կամէր: Որպէս և որո՞վ օրինակաւ: Ի
նմա ասէր՝ մի՛ սերմաներ զբանն ա͞ծպաշտութեան • և
նա ասէր՝ չանսամ, չառնում յանձն, զի ոչ եթէ բանն
ա͞յ կապեալ կայցէ: Այս անգոսնէր արհամարհէր կիւ-
լիկեցին խորամանկար, կալանաւոր կապեալ և սովամահ
և աղքատ զհռովմայեցին զմեծատունն զթագաւորն՝ որ
ամենեցուն իշխէր, որ բիւրոցն բիւրապատիկ պարգևս
բաշխէր, որ այնչափ զօրաց իշխէր և չկարէր ինչ վճա-
րել: Այս արդ ո՞ պայծառագոյն և փառաւոր էր • որ կա-
պանօ՞քն յաղթէր, եթէ որ ծիրանեօքն 'ի պարտութիւն
մատնէր • որ 'ի խանա՞րհ կայր և ընկենոյր և չգրէր ինչ
զհրամանն, որ միայն էր և գլէր, եթէ որ բազում զօ-
րօքն և ընկրկէր: Ամաչեցեալ գնայր թագաւորն 'ի կա-
լանաւորէն՝ որ նշան յաղթութեան հակառակ նմա
կանգնէր:

Այս արդ աղէ ասա, յորմէ՞ կողմանէ կամէիր լինել.
մի՛ թէ[1] զայժմուս ինչ ասիցես, այլ դեռ անդէն իսկ
քննեա • յո՞յր կողմանէ դու կամիս լինել, 'ի Պաւղոսի, թէ
'ի Ներոնի: Չասեմ վասն հաւատոց ինչ, զի այն յայտ
իսկ է, այլ ըստ փառացն և պայծառութեան: Այլ թէ

1 Իմա մի ինչ, որպէս ասէ յոյնն:

հարթ որ իմանայցէ, 'ի Պաւղոսի կողմանէ. եթէ յաղթելն քան զպարտելն լաւագոյն իցէ, ապա նա իսկ փառաւոր է: Այլ չև ևս է մեծ զի յաղթեաց, այլ որպիսում ումեք:

Պարծեալ ասեմ զնոյն և չդադարեմ 'ի նոյն ասելոյ: Շղթայքն արքունական պատկեն յաղթեցին, և գձուձ կերպարանքն պայծառագոյն քան զպայծառան զըտանէին. 'ի գլրգլիս պատեալ, երիթացեալ, գգուածեալ բրդգզեալ. քանզի միշտ 'ի բանտի մնայնէր, և առաւել քան զայն որ զծիրանեաւն զգենոյր դարձուցանէր յանկուցանէր զամենեսին յիւր կապանսն: Զոր ընդ գետինն ունէին կացուցեալ, զի զհողն և զյատակն հայելիս առնիցէ, այնպէս համարձակ բարբառէր, զի զնա որ 'ի կառսն ոսկի նստէր՝ թողեալ ամենեցուն՝ ընդ նա պշնուին: Այլ կարի իսկ նմանագոյն. զի որ ինչ համապաղորդ իցէ, չէ ինչ կարի զարմանալի՝ զթագաւորն 'ի կառս տեսանել ջորեօք սպիտակօք լծեալք յակն լուծ. այլ զայն էր նորանշան տեսիլ տեսանել, զայր մի որ այնչափ համարձակութեամբ ընդ թագաւորին խօսէր, որպէս և թագաւորն ընդ իւրում յետնոյն ծառայի: Շուրջ անցեալ բակ առեալ կային բազմամբոխ խառնիճաղանճ զօրքն ամենայն ամենեքումբք հանդերձ, որ էին ծառայք թագաւորին. զարմացեալ հիացեալ կային, զի զտէրն յորմէ ինքեանք այնչափ զարհուրեալ դողային, մատուցեալ այր մի կալանաւոր՝ լքեալ լքեալ յանդիմանեալ կշտամբէր: Տեսանե՞ս որպիսի ինչ փառաւորութիւն անդէն իսկ 'ի կապանսն ունէր:

Իսկ զարգիս ո՞ որ պատմել կարիցէ. զի նորա և ոչ շիրիմ ուրեք յայտ է, և սա քան զամենայն թագաւորս պայծառագոյն պատուի անդէն 'ի նմին իսկ քաղաքի թագաւորութեան՝ ուր զյաղթութիւննն եցոյց և զնշան նահատակութեան կանգնեաց: Զնա թէ յիշեսցէ ոք՝ պարսաւանօք յիշէ, քանզի աւեն թէ և մարմնոյ իսկ աղտեղութեամբ կարի վատթար էր. իսկ սորա գովութեամբ յիշատակ ընդհանուր լինի, ոչ միայն 'ի մէնջ, այլ և 'ի թշնամեաց: Զի յորժամ ճշմարտութիւն ծագիցէ, և թշնամիքն չկարեն անսաստել. զի թէ վասն հաւատոցն չհամարիցին զարմանալի, այլ վասն համարձակութեան և արթնութեան կարի զարմանան:

Մա այսչափ յամենայն բերանոյ ցանգ ընդ ամենայն տեղիս պսակեալ քարոզի, և նա պարսաւեալ աղարտեալ և բամբասեալ եկակոչ լինի[1]: Եւ արդ ո՞ր ինչ պայծառութիւն և փառաւորութիւն իցէ: Այլ յապուշ կրթեալ զմագիլս առիւծուն միայն գոլեցի, և որ արդարեւ առիւծ իսկ էր և առիւծոյ կորիւն:

Եւ այս ամենայն զինչ իցէ առ այնու որ յերկինս կայցէ նմա պատրաստեալ: Յորժամ ընդ Թագաւորին երկնից գայցէ բազմապատիկ փառօք, յորպիսի ինչ կերպարանս կորացեալ կրկնեալ՝ Ներոնի գտանիցի, տըրտում տխուր չարաշշուկ չարատես: Թէ չհաւատալի ինչ քեզ բանքս թուիցին և ծաղր առնիցես, գիտասջիր զի դու ինքնին ծաղր կայցես: Եթէ հանդերձելոցն չհաւատայցես, փորձ առ յեղելոցն հաւատա: Զև ես պակաց և պարգևաց ժամանակ՝ և յայսպիսի պատիւս վայելեաց նահատակն. յորժամ յօրինիչն մարտիցն իսկ եկեալ հասանիցէ, յորպիսի ինչ պատիւ վայելիցէ: Մինչդեռ յօտարոյ միջի էր հիւր, պանդուխտ և նժդեհ, և այնչափ զարմանալի եղև և հանապազ պատուի, յորժամ յիւր սեփական հասանիցէ՝ յորպիսի ինչ բարութիւնս վայելիցէ, որպէս և ինքն իսկ ասէր՝ եթէ "Այժմ կեանքս մեր ծածկեալ կան ընդ Քրիստոսիւ առ ա͞ծ". սակայն և այժմ քան զկենդանիս մեռեալն քաջ ցուցանէ զզօրութիւնս և պատուի: Իսկ յորժամ կեանքն իսկ մեր Քրիստոս գայցէ հասանիցէ՝ յորպիսի ինչ վայելիցէ, որում իմիք երանութեանց չհասանիցէ:

Վասն այսորիկ նախ աստէն պատուեաց զնա ա͞ծ, ոչ եթէ՝ նա ինչ կարօտ էր. զի թէ մինչ 'ի մարմնի էր արհամարհէր զառ 'ի բազմացն փառաւորութիւն, որչափ ևս առաւել յորժամ զերծաւ իսկ 'ի մարմնոյն. Ոչ վասն այնորիկ միայն ետ նմա ա͞ծ վայելել յայնպիսի պատիւ, այլ զի որ թերահաւատելոցն իցեն՝ գոնեա 'ի մտաւորացն յորդորիցին: Ասեմ թէ գալոց է Պաւղոս ընդ Թագաւորին երկնից, և եթէ լինելոց է յարութիւն, և թէ 'ի բազում բարութիւնս վայելէ. այլ չհաւատայ անհաւատն, և արդ 'ի մտաւորացս հաւատասցէ: Պայծառագոյն քան զԹագաւորն է խորանակարն[2], պատուա-

1 Օր. զրկեալ էր եկակոչ լինել: 2 Օր. սա և յիշխեան խորանանկարն:

կան քան զարքայն․ քանզի չիք ոք 'ի թագաւորս հռով-մայեցւոց որ այնչափ պատիւս վայելեաց։ Եւ մանաւանդ թագաւոր արտաքոյ ուրեմն մեկուսի ընկեցեալ կայ, և սա զհասարակ իսկ զմէջ քաղաքին ունի, որպէս զի թէ կենդանի իցէ և թագաւորեալ․ հայեաց յայն, և հաւատա հանդերձելոցն։ Զի եթէ աստէն որ խուժապէրս և հալածական լինէր՝ յայնպիսի պատիւ վայելեաց, յորժամ գայցէ զի՞նչ լինելոց իցէ․ թէ ուր խորանակալն էր՝ այնչափ փառաւորեցաւ, յորժամ ըստ արեգական ճառագայթից լուսաւորեալ գայցէ, զի՞նչ ինչ լինելոց իցէ․ զի թէ յայնչափ նուաղութենէ յայնպիսի մեծարանս եհաս, և յորժամ գայցէ զի՞նչ ինչ լինելոց իցէ․ միթէ մարթիցի՞ իրացն փախստական լինել։ Ո՞ ոք ոչ պատկառեցուցանիցէ խորանակարին պատուական քան զամենեցուն թագաւորին լինել և առաւել սքանչելի․ եթէ աստ առաւել քան զբնութիւն եղև, որչափ ևս առաւել անդ։ Հաւատա, ով մարդ, մօտաւորացս, եթէ չկամիցիս հանդերձելոցն հաւատալ․ հաւատա երևելեացս, եթէ չանսայցես աներևութիցն հաւատալ․ հաւատա երևելեացս, զի այսու աներևութիցն ևս հաւատասցես։ Եւ եթէ չախորժիցես, 'ի դէպ ժամանակի է ասել մեզ զառաքելոյն՝ եթէ "Քանզի եմք յարենէ ձերմէ․ զամենայն իրիք եղաք առաջի ձեր վկայութիւն, և չէ ինչ պակաս զոր ինչ պարտ է ասել եթէ չասացաք„․ անձանց իսկ մեղադիր լինիջիք, և ձեզ համարեսջիք զգեհենին պատիժս։

Եւ դուք որդիք սիրելիք, Պաւղոսի նմանեցէք, մի միայն հաւատովք, այլ և վարուք նոյնպիսի լինել։ Զի հասանիցեմք երկնաւոր փառացն, արհամարհեսցուք զաստի փառս․ և մի ինչ իցէ որ զմեզ այսրէն ձգիցէ․ այլ արհամարհեսցուք զամենայն երևելիս, զի երկնաւորացն արժանի լինիցիմք, մանաւանդ զի յայսմ իսկ հասանիցեմք և այնմ, բայց առաւել ջանա այնմ հասանել․ որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն։

# ՃԱՌ ՀԻՆԳԵՐՈՐԴ

"Հաւատարիմ է բանս. զի եթէ մեռաք ընդ նմա, ընդ նմին և կեցցուք. և եթէ համբերեմք, ընդ նմին և թագաւորեսցուք. և եթէ ուրանայցեմք, և նա յուրաստ լինի 'ի մէնջ. և եթէ չհաւատամք, նա հաւատարիմ մնայ, ուրանալ զանձն ոչ կարէ: Զայս յուշ արասջիր առաջի տեառն՝ մի 'ի բանս հակառակութեան յոչինչ պէտս 'ի կործանումն լսողաց":

Բազումք 'ի տկարաց որք զգլխոյ հաւատոցն զօրութեան չունիցին, և ընդ երկարութիւն յուսոյն չժուժայցեն, զմօտաւորս խնդրեն, և յայսցանէ զհանդերձեալսն զրաշմեն: Քանզի աստ մահ էր և տանջանք և կապանք, և նա ասէր՝ կեանս յաւիտենից ընդունիցին. և թերևս չհաւատայր ոք և ասէր՝ թէ մինչդեռ կենդանիս եմ մեռանիմ, և յորժամ մեռանիցիմ կեցցեմ. յերկրիս ինչ չտաս, և յերկինս տայցես. զմանունս չշնորհես, և զմեծամեծսն պարգևեցես: Զի մի այնպիսի ոք ինչ երկմտութիւն կարծիցէ, սկսանի յորդորել, յառաջագոյն ցուցանէ և տայ նոցա նշմարանս և ծանօթս: Զի յասելն՝ թէ յուշ լիցի քեզ Յիսուս Քրիստոս յարուցեալ 'ի մեռելոց, զայն յայտ առնէ՝ թէ յետ մահուն յարեաւ: Եւ աստ ասէ, թէ հաւատարիմ է բանս, այսինքն թէ որ կենացն հասանիցէ: Աւասիկ իցէ հաւատարիմ. "Զի եթէ մեռաք, ասէ, ընդ նմա՝ ընդ նմին և կեցցուք": Տրտմականացն և չարչարանացն կցորդ լինիցիմք, և հեշտականացն և բարութեանցն լինիցիմք հաղորդք: Այլ և մարդ ոք զոր կամիցի ընդ նմա մեռանել և վշտաց վշտակից լինել, եթէ լինիցի 'ի հանգիստ ինչ հասանել՝ չմերժէ 'ի հանգստենէն, թող թէ ա̅ծ: Եւ ո՞ւր մեռաք ընդ նմա: Մահ զաւազանին ասէ և զչարչարանաց ինչ յորժամ վասն նորա ոք յանձին կրիցէ, ըստ այնմ, թէ "Յամենայն ժամ զմահ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի մարմինս մեր կրեսցուք". և դարձեալ թէ "Խաղե-

ցաք ընդ նմա մկրտութեամբն»: և դարձեալ թէ «Հին մարդն մեր խաչակից եղև նմա»: և եթէ «Տնկակից եղեաք նմանութեամբ մահու նորա»: Բայց աստ զփորձութեանցն ասէ. եթէ առաւել փորձութեամբն մեռաք վասն նորա, և ընդ նմին չլինիցիմք կենդանիք: Չեն երկմտութեան իրք:

«Եթէ համբերեմք, ասէ, ընդ նմին և թագաւորեսցուք»: Չէ բաւական միանգամ միայն մեռանել. հանապազ մեռանէր երանելին. այլ բազում համբերութեան պէտք են, որում մանաւանդ առաւել պէտք Տիմոթեայ էին: Ո՛չ միայն զառաջինսն ասիցես, այլ թէ հանապազ որ մեռանիցի: Նոյն և ՚ի միւսմէ կողմանէ յորդորէ, ոչ ՚ի բարութեանցն, այլ ՚ի չարեաց. զի եթէ նմին պարգևաց հաղորդ լինէին և չարքն՝ չգոյր մխիթարութիւն: Իսկ եթէ որք համբերեալքն էին՝ ընդ նմին և թագաւորէին, և որք չհամբերէինն՝ զայն և եթ պատիժս կրէին զչթագաւորելն, անհնարին աղէտք էին և այն. բայց սակայն չէին բաւական և զբազումս ուսուցանել: Նա և սաստիկ ևս իմն ահագինս ասէ. «Եթէ ուրանամք, նա չլինի ՚ի մէնջ յուրասա»: Ոչ միայն ընդ հեշտականացն, այլ և նոցին հակառակաց գոն հատուցմունք: Զի զոր յարքայութեան իւրում ուրանայցէ՝ ՚ի միտ առէք որպիսի ինչ իցեն պատիժք այնպիսւոյն. «Որում ասացի, ասէ, ուրասցի զիս, ուրացայց զնա և ես»: և չէ զոյգ տրիտուրն: Իսկ այլ ազգ ևս. նա և ոչ վնաս ինչ կարեմք առնել նմա:

«Եթէ չհաւատայցեմք, նա, ասէ, հաւատարիմ մնայ, և ուրանալ զանձն ոչ կարէ»: Այն իսկ է զի չհաւատամք եթէ յարեաւ, նա ինչ ոչ վնասի անտի. քանզի ճշմարիտ է և հաստատուն, եթէ ասիցեմք եթէ չասիցեմք: Իսկ եթէ չվնասիցի ինչ յուրանալոյն մերոյ, ոչ վասն այլ իրիք պահանջէ ՚ի մէնջ զդաւանութիւն, եթէ ոչ զի շահ ինչ մեծ կամի գործել. քանզի նա նոյն ինքն կայ և մնայ եթէ ուրանայցեմք և եթէ չուրանայցեմք. ուրանալ, ասէ, զանձն ոչ կարէ: Աստուծոյ չէ հնար թէ չիցէ, թէպէտ և մեք ասեմք թէ չիցէ. քանզի և իրքն իսկ այնպէս են, զի չէ հնար թէ չիցէ. չէանալ, ասէ, չէ հնար. այս իսկ է՝ չէանալն հասանել. այլ միշտ նոյն կայ մնայ, միշտ է և ցանգ է և կայ

էութիւն նորա։ Այլ արդ իբրև շնորհ ինչ վարկանելով նմա հաշուիցիմք զմիանձնաւորութիւնն, և կամ թէ միայն ինչ կարիցեմք առնել ՚ի չդաւանելոյն զնա այնպէս։ Նա և զի մի ոք կարծիցէ՝ թէ և Տիմոթէոս այնպիսի ինչ բանիւք կարօտ իցէ, յաւել ՚ի նոյն եթէ «Զայս յուշ արասջիր և վկայեսջիր առաջի տեառն մերոյ. մի ՚ի բանս հակառակութեան յոչինչ պէտս ՚ի կործանումն լսողաց»։ Բայց ահագին իրք են յորժամ ոմն վկայութեամբ որք ումեք յաւանդ ինչ տայցէ։ Այլ թէ զմարդկան վկայութիւն չիշխիցէ ոք անվաւեր առնել, որչափ ևս առաւել զԱյ։ Որպիսի ինչ ասացից. եթէ ոք դաշինս կալիցէ և կամ կտակ գրիցէ, և կամիցի արս հաւատարիմս կոչել իւրոյն վկայ, մի թէ իշխիցէ՞ ոք զայն արտաքոյ վայրապար ումեք հանել ՚ի վեր. և ոչ ուրեք, թէպէտ և կամիցի. երկնչի զի զհաւատ վկայիցն պահիցէ։ Զայն կոչէ վկայ և բանիցն և արդեանց, չհակառակել ընդ ումեք բանիւք յոչինչ պէտս։ Այլ ոչ այսչափ միայն շահ ինչ է, այլ և բազում վնաս. զի թէ արհամարհիցեն զԱծ, դատի զնոսա։ Դառն են իրքն, և հանապազ կամին միտք մարդկան զբանիցն հակառակութիւն։

«Փութասջիր, ասէ, զանձն քո ընտիր կացուցանել առաջի Այ, և մշակ առանց ամօթոյ՝ ուղիղ հատանոտել զբանն ճշմարտութեան»։ Այլ զի՞ իցէ զի ամենայն ուրեք պատուիրէ առանց ամօթոյ լինել, և բազում փոյթ տայ յանձին ունել, զի մի ամօթ համարիցի զքարոզութիւնն։ Քանզի ըմբռն էր բազմաց ամօթ համարել, և զՊաւղոսէ ասել թէ այր մի խորամանկար էր, և զքարոզութիւն արհամարհէր, զվարդապետաց ասեն թէ կորեան, և Քրիստոս խաչեցաւ, և նա մերձ ՚ի կառափել է, և Պետրոս գլխիվայր պրկեալ և գլխատեալ յաբանց անպիտանեաց և յանդգնելոց։ Քանզի դեռ ինքեանք ունէին, վասն այնորիկ պատուիրէ՝ թէ մի ամօթ համարիցիս, և բնաւ մի ամօթոյ գործ հաշուիցիս որ ինչ մեծապաշտութեան պատշաճ իցէ, թէպէտ և ծառայել հասանիցէ, և կամ զինչ և իցէ չարչարանս չարչարել։

Զխորդ լինիցի մշակ ընտիր առանց ամօթոյ։ Զոր օրինակ մշակն չհամարի ամօթ զգործն, նոյնպէս և ոչ

աւետարանին մշակ պարտի զիւր գործ անթեր հաշուել. այլ ամենայնի տանել, ամենեւին համբերել: «Ուղիղ հատանել զբանն ճշմարտութեան»: Քանզի բազումք այսր անդր ձգձգեն, յամենայն կողմանս քարշեն, բազումք[1] 'ի վերայ յարուցեալ: Չասաց թէ ուղղեալ, այլ թէ ուղիղ հատանել. այն իսկ է՝ թէ հատանիցիր զփուշն, եւ յայլոցն եւս նոյնպիսեաց կարի իսկ 'ի բաց մերժեսջիր. հատանիցես եւ 'ի բաց ընկենուցուս իբրեւ զչուան ինչ. սրով հոգւոյն յամենայն կողմանց զաւելորդն եւ զօտարոտին 'ի քարոզութենէն կորիցես եւ 'ի բաց ընկենուցուս:

«Ի պղծոց եւ յունայնաձայն բանից 'ի բաց մերժեսջիր»: Ոչ յայնժամ միայն կայցեն. այլ յորժամ նոր ինչ մտանիցէ, եւս քան զեւս նորընծայս ծնանին, եւ այնչափ խաբէութիւն գործի, յորժամ ելանիցէ լառ անքոյթ նաւահանգիստն, եւ ուրեք չդադարէ: «Քանզի եւս առաւել, ասէ, յառաջ գայցեն յամպարշտութիւն. եւ բանք նոցա իբր քաղցկեղ ճարակ գտանեն»: Ընդհարաւոր չարիք, զի ոչ բժշկութեամբքն ոք դամադիւս կարիցէ լինել. այլ զամենայն առ հասարակ ապականիցէ: Ցուցանէ թէ ախտ իմն չար է. այսու զչգալն նոցա յուղղութիւն յայտ առնէ, եւ եթէ ոչ վայրապար ինչ՝ այլ կամօք մոլորեցան, եւ այնպիսիքն իսկ կարի յանհնազանդութիւնս հատանին:

«Որոց սակի են եւ Հիմենոս եւ Փիլետոս, որք 'ի ճշմարտութենէ անտի վրիպեցան, եւ ասեն զյարութիւն արդէն իսկ եղեալ, եւ կործանեն զհաւատս բազմաց»: Եւ բարւոք ասաց՝ թէ եւս յառաջ եկեսցեն: Թուի թէ այս միայն իցեն չարիք. այլ տես որչափ ինչ անտի ծնանին: Եթէ արդէն իսկ է յարութիւն, ոչ այնու միայն վնասիմք զի 'ի մեծ փառաց անկանիցիմք, այլ եւ դատաստանին եւս ճառք 'ի միջոյ բառնայցեն: Եւ եթէ վաղուց լեալ իցէ յարութիւն, ապա եւ պարգեւքն բաշխեցան եւ հատուցումն: Եթէ այդպէս իցէ, արդարքն 'ի նեղութիւնս եւ 'ի վիշտս միայն չարչարեցան, եւ մեղաւորքն թէպէտ եւ չարիս գործեցին՝ չիցեն պատժելոց: Լաւ էր ասել թէ չիք իսկ յարութիւն, քան ասել թէ

1 Ցոյնն բազում ինչ անտի ծագին:

արդէն իսկ է: «Նա կործանեն զհաւատս ոմանց»․ ոչ եթէ զամենեցուն, այլ զոմանց: Զի թէ յարութիւն չիցէ, հաւատոյն ճառք դատարկ են․ և եթէ յարութիւն չիցէ, ապա ընդունայն է քարոզութիւն մեր, և Քրիստոս չիցէ յարուցեալ․ եթէ չիցէ յարուցեալ, ապա և ոչ 'ի Մարիամայ ծնեալ, և ոչ յերկինս վերացեալ: Տեսանես, թուի թէ յարութեան միայն հակառակ իցեն այնպիսի բանք, այլ ևս բազում չարիք տողին զկնի: Իսկ արդ զիա՞րդ, ասէ, չիցէ՞ ինչ խելս առ կործանեալսն խառնեալ:

«Այլ հաստատուն, ասէ, հիմն այ կայ ունի զկնիքս զայս․ ծանեաւ տէր զիւրսն, և 'ի բաց լիցի յանիրաւութենէ՝ ամենայն որ անուանիցէ զանուն տեառն»: Յայտ առնէ՝ թէ և մինչ չև կործանեալ իսկ էին, չէին հաստատուն․ զի թէ հաստատունք էին, ապա ոչ յառաջին նուազին իսկ կործանէին․ զոր օրինակ և ոչ Ադամ հաստատուն ինչ էր 'ի պահպանութեան պատուիրանին: Զի որք հաստատունք իցեն, ոչ միայն չմեղկին 'ի խաբեբայիցն, այլ և զարմանալիք ևս գտանէին: Եթէ հաստատուն, ասէ, հիմն․ այսպէս պարտ է սերտիւ լինել 'ի հաւատսն, և ունել զկնիքս սեղմիւ:

«Ծանեաւ տէր զիւրսն»: Նա զայս յերկրորդ օրինացն առնու, այն իսկ է, թէ սերտ և ամեթ [1] ոդիքն կացին հաստատուն և անշարժք: Նա ուստի՞ յայտ իցէ․ 'ի գրոյն հաստատեալ ունին յանձինս, յիրացն 'ի ծանօթ լինելոյ յայ, և 'ի չկործանելոյն ընդ կործանեալսն: «Նա 'ի բացն կալ յանիրաւութենէն՝ ամենայն, ասէ, որ անուանեսցէ զանուն տեառն»: Այս են ծանօթք հիմանն․ զոր օրինակ հիմն հաստատուն երևի, նոյնպէս և որ 'ի վերայ քարանցն ոք գրիցէ, զգիրսն իսկ ինքնին նշանակիցէ․ այլ այս գիր 'ի գործոյն երևի: «Ունի, ասէ, զկնիքս զայս հաստատուն՝ ամենայն որ անուանեսցէ զանուն տեառն»․ որպէս զի թէ անիրաւ ոք իցէ՝ չէ 'ի հիմանէն յայնմանէ․ քանզի և չառնելն զանիրաւութիւն՝ կնքոյ նշանակ է:

1 Յօրինակին ամէփ:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Այլ արդ մի՛ զնշանան և զճանօթան արքունականս յանձանց 'ի բաց մերժիցեմք, և գտանիցեմք առանց կնքոյ. մի՛ արասցուք խարխուր զանձինս, այլ զի լինիցիմք հիմունք և հաստատուն հիմունք, և մի՛ այսր անդր շարժիցիմք. քանզի անու յայտ լինի եթէ Այ իցեմք՝ 'ի բաց կացեալք յանիրաւութենէն: Ո՞ մարդ որ կարիցէ Այ լինել յոյժ արդար, և իրաւացի գտանիցի՝ որ անիրաւն գնայցէ և կռուիցի ընդ նմա գործովքն և թշնամանիցէ զնա գնացիւքն. այնպիսի՛ ինչ իցէ հեռացեալն յանիրաւութենէ: Դարձեալ բամբասեմք զանիրաւութիւնն, դարձեալ բազում թշնամիս ստանամք. քանզի իբրև զբռնաւոր ոք կալաւ զմիտս ամենեցուն ախտն: Այլ այն չար է, զի ոչ 'ի հարկէ և ոչ բռնութեամբ, այլ հաւանութեամբ և յօժարութեամբ, և շնորհ ունին բազումք այնպիսի ծառայութեան: Այլ այն իսկ են անհնարին աղէտք, զի եթէ բռնութեամբ ըմբռնեալ լինէին, և ոչ սիրով՝ թերևս հեռանալ կարէին: Այլ ուստի՞ երևեսցի քաղցր իրքն, զի այնչափ դառն են. և ուստի՞ թուիցի արդարութիւն դառն, որ այնչափ քաղցր է: Յիւրաքանչիւր ճաշակելեաց: Քանզի և մեղր բազումք չախորժեն ճաշակել, և զայլ ինչ փոստակար հեշտեաւ ընդունին. և պատճառք այնր ոչ եթէ իրք ինչ գլխովին են, այլ հիւանդաց ճաշակելիք. քանզի խօթ են ճաշակելիք մտացն: Այս և կշիռք եթէ զմէտս հաւասարակ չունիցին, չկարեն կշռել որ ինչ նոքօքն կշռիցի, յորժամ այսր անդր հարկանիցին և զկշիռն չբերիցեն. նոյնպէս և որդիք մարդկան եթէ զմիտս խորհրդոց չունին կշիռ և հաստատուն, և եթէ չեն բևեռեալ զգուշութեամբ ընդ սէրն Այ, չկարեն ընտրել բարւոք զիրսն. քանզի այսր անդր հարկանին, և յամենայն կողմանս ձգձգին:

Այլ եթէ ոք հաւաստեաւ քննեսցէ՝ բազում դառնութիւն տեսանէ զանիրաւութեան, ոչ առ այնոսիկ որք զրկիցինն, այլ առ նոսա որ զրկիցենն: Այլ չև ևս զհանդերձելոցն, այլ աստէն զաստի իրացս խօսեսցուք: Որչափ կռիւք, որչափ դատափետութիւնք, որչափ դղրո-

վանք և նախանձ և բամբասանք ։ Զի՞նչ ինչ քան զայն դառն կայցէ ուր թշնամութիւնք են և պատերազմունք և բայբանեք. ոչ խիղճ մտացն իսկ տանջէ զմեզ և ուտէ ։ Ո՞ւ կամ թէ հնար ինչ էր ձգել զոգի անիրաւին 'ի մարմնոյն, և տեսանէիր տժգունեալ, դեղնեալ, սարսռայեալ, ամաչեցեալ ձորձ զգլխոյն ։ Եթէ անենելին իսկ 'ի խորս խաւարին իջանիցեմք, սակայն ամենընտիր ատեան մտացն չապականի, այլ կայ մնայ անշարժ առանց ակնառութեան ։

Թէպէտ և չիք ոք որ բարւոք համարիցի զանիրաւութիւն և գործիցէ, այլ պատճառս ստեղծանէ, ազգի ազգի հնարս հնարի, զի գտեալ բանիւք թօթափեսցէ 'ի բաց զամբաստանութիւն. այլ ոչ եթէ 'ի խղճէ մտացն կարիցէ 'ի բաց քերել ։ Զի 'ի վերին երեսս և 'ի բանից ճարտարութիւնքն և իշխանաց ակնածութիւնք և 'ի բազմաց սուտակապաշտութիւնք կարեն ծածկել զիրաւունս. իսկ 'ի ներքս 'ի խիղճ մտացն չգտանի ինչ այնպիսի, ուր ոչ սուտակապաշտքն մօտ իցեն, և ոչ ինչք որ զդատաւորան զեղծիցեն ։ Վասնզի բնութեամբ ընդդաբոյս անկեալ է 'ի մեզ ատեանս ընտրութեան առ 'ի յայ. և որ ինչ առ 'ի յայ իցէ, ոչ ինչ ախտանայ այնպիսի ։ Այլ այնպիսւոյն և քունն չէ հեշտական, և բազում ցնորք ցանգ զմիտսն պղտորեն, և ստէպ ստէպ յիշատակ չարեացն չտան մտացն հանգչել ։ Այսպիսի ինչ. եթէ զտուն ուրուք հատեալ իցէ 'ի զուր, ոչ որ զրկեցաւն միայն՝ հեծէ, այլ և որ զրկեացն, մանաւանդ եւս թէ հատուցեալ գիտիցէ զհանդերձեալ դատաստանէն. և եթէ գիտիցէ, յաճախ իսկ զղջայցէ և ողբայցէ ։ Եթէ չհաւատայցէ հանդերձելոցն, սակայն և այնպէս ամօթոյն կորացեալ կրկնեալ. մանաւանդ թէ չիք իսկ մարդ, եթէ հեթանոս իցէ և եթէ հրեայ և եթէ հերետիկոս, որ չերկնչիցի 'ի փոխադարձ լինելոյ ։

Թէպէտ և ոչ ինչ զհանդերձելոցն զմտաւ ածիցէ, սակայն յաստէն 'ի փոխարինացն կասկածէ և երկնչի, թէ գուցէ կամ յինչս լինիցի կրկին փոխադարձ, և կամ յորդիս կամ 'ի տուն կամ 'ի մարմին կամ յոգի ։ Զի այսպիսի ինչ յաճախ առնէ ած ։ Վասնզի յարութեան ճառք չօգտեն զբազումս, վասն այսորիկ զարդար դատաստանին նշանակ բազում անգամ աստէն իսկ ցու-

ցանէ. զի է ոք որ ագահեաց զայլոց ստացս, և որդիք չեղեն. և ոմն 'ի ճակատու մեռանի, և ուրուքն մարմինն իսկ հաշմի, և ոմն յորդիս վնասի. և ընդ այն հայքն բազումք, և հանապազ ահիւ և երկիւղիւ կեան: Այլ կամ թէ չգիտիցէ՞ք ընդ որպիսի պատժովք կան անիրաւք, և կամ թէ չիցէ՞ դառն գործն:

Այլ եթէ չգայցէ այնպիսի ինչ վնաս 'ի վերայ, սակայն յամենեցունց դարտալ լինի, ամենեցուն ատելի, ամենեքին զերեսս դարձուցանեն, ամենեքին իբրև զչար գազան համարին: Այլ անիրաւքն իսկ նոքին ընկերք եթէ զանձինս դատապարտեն, որչափ ևս առաւել զընկերսն յափշտակող և ագահ և ապականիչ անուանեն: Յորպիսի՞ ինչ հեշտութեան իցէ. և ոչ յիմիք, բայց միայն աւելի հոգով պատեալ պահպանութեան ընչից, աւելի զգօսանս 'ի ծփի կայցէ: Որչափ բազում ինչս կուտիցէ ոք, ևս քան զևս զանձին քունն հատանէ: Որչափ ամբաստանութիւնք զրկելոցն զականջս փետցեն, որչափ դատախազութիւնք զկնի գայցեն, և մանաւանդ թէ 'ի ցաւս ևս անկանիցին. քանզի չիք հնար 'ի ցաւսն՝ թէպէտ և քան զամենեսին իսկ կարի չճանաչիցէ զայն՝ եթէ ոչ խղճիցէ և կասկածիցէ, և յորժամ չկարիցէ ինչ այնուհետև վճարել:

Մինչդեռ յառողջութեան և յապահով և 'ի գիւրուղ իցէ, ոգին չզգայ ինչ զտրտմութիւն, չածէ զմտաւ զվիշտսն ընկերին. յորժամ մօտ 'ի մեռանել լինիցի 'ի մարմնոյն, յայնժամ նեղի սաստիկ երկիւղիւ յորժամ 'ի դուրս իսկ ատեանն մտիցի: Քանզի և չարագործք մինչ 'ի բանտին իցեն՝ աներկիւղս կեան, և յորժամ յատեանս առաջի սրահանգայն տանիցին՝ ապա կարի ահաբեկ սրտառուչ լինին: Յորժամ երկիւղ մահու 'ի վերայ անկեալ հասանիցէ՝ իբրև զհուր զամենայն աւելորդ զխորհուրդսն այրէ, յայնժամ հարկ լինի ցածնուլ և զհանդերձելոցն[1] հոգալ. և ոչ ևս այնուհետև ընչից ցանկանայցէ, և ոչ զագահութեամբն գայցէ, և ոչ մարմնոյ և գեղոյ բաղձանայցէ: Ի այն ամենայն իբրև զմէգ 'ի բաց փարատիցէ. յորժամ ընտրիչ ատեան մտաց յստակիցի, մտեալ տրտմութիւնն զխստութիւնն

1 Օրինակին գրեալ ն ուղղ. եղաւ ըստ յուշին:

կակղեցէ։ Չիք այնպէս ինչ հակառակ ցածութեանն՝ որպէս փափկութիւն. նեղութիւնք ցածութեան հընարքեն։ Մ՝իտ դիր զինչ ինչ լինիցի յայնժամ ագահն. «Ժամանակ ախտի, ասէ, յագուրդ գործէ բազում փափկութեան»։ Զի գործիցէ, յորժամ զորոց յափըշտակեացն՝ զնոսա զմտաւ ածիցէ, և զգօւքսն[1] զրկելոցն. յորժամ տեսանիցէ զի զագահութիւն այլք տանիցին, և քուքքն ընդ նմա երթայցեն։ Չէ հնար, քանզի և չէ իսկ, յորժամ յոգիսն ապաստան լինիցի՝ եթէ այսպիսի ինչ զմտաւ ածիցէ. և թերևս ոգիքն վեր 'ի վայր ծփիցին, զահի հարեալ տագնապիցեն, և քան ընդ մահուն տագնապն ևս չար չհասանիցէ ձեռն դիւրել ինչ ումեք, որչափ դառնութիւն անդ կայցէ։ Իւզայս ամենայն ախտս է տեսանել, եթէ յիշխանաց պատժիցին և եթէ 'ի մահիճս մեռանիցին՝ զնոյն կոււտս կտտիցին։ Իսկ այն ասա, և զանտէն և ոչ ասել հնար է՝ եթէ որչափ տանջանք իցեն, և որպիսի ինչ պատիժք։ Մ՝եք ասեմք զայս, և որ ունիցի ականջս լսելոյ լուիցէ։

Զնոյն յաճախ ասեմք, և չկամիմք եթէ միշտ զնոյն ասիցեմք, այլ հարկն ստիպէ։ Կամէաք և 'ի բնէ իսկ չէր խօսելոյ ընդ ձեզ. ապա թէ ոչ՝ գոնեա սակաւ բժշկութեամբս զերծուցեալս 'ի ցաւոց ածիցեմք զձեզ յառողջութիւն. իսկ եթէ տակաւին անդէն 'ի խօթութեան կայցէք, լոյծ և ծոյլ ոգւոց է հեռանալ 'ի հնարից բժշկութեան, և անգութ և անագորոյն մնաց։ Իւթէ վասն մարմնոց որ անյոյս 'ի կենաց իցեն՝ աղաչեմք զբժիշկս չառնել անփոյթ մինչև յոգւոյն ելանելոյ ժամ, այլ զիւրեանց դարմանս ցբուն մատուցանել, որչափ ևս առաւել անձամբ զանձինս պարտիցիմք խրատել։ Զի թերևս յետ հասանելոյ մերձ 'ի դրունս դժոխոց, լինիցի միւսանգամ թօթափել զայնպիսի չարիս յանձանց, և կազդուրել և առողջանալ և բուռն հարկանել զկենացն յաւիտենից։

Քանզի իցեն ոմք 'ի տասն անգամ կարդալոյ չզգայցեն, և յետոյ և միով կարդալովն իսկ սթափին. զի թէպէտ և յանզգայ կային մինչև ցտասն անգամ, սակայն յետոյ շահեցան, և յանկարծակի ցուցին զպտուղ։

1 Յօրինակին պգոգսն և զկնի գոգգն։

Զոր օրինակ ծառ որ 'ի տասնիցս կրկնելոյ տապարին չանկանիցի, և յետոյ միով միայն բախելով առ հասարակ ամենևին խաղայցէ, թէպէտ և ոչ միոյ անգամուն միայն գործիցէ, այլ տասն անգամուն, սակայն օձան յետոյն գտանի: Այլ որ յարմատն հայեցի, գիտէ զայն իսկ որ յոստոն ոչ ինչ այնպէս տեղեկագոյն, նոյնպէս և որ 'ի մերում ոճս: Նա և բժիշկք բազում անգամ յաճախ դեղս մատուցանեն և չօգնեն ինչ, և յետոյ մի ոք մատուցի, և զամենայն վճարէ. և ոչ նորա միայն է գործն, այլ և այլոցն որ 'ի վաղուց հետէ նմին ցաւոց դարմանս տանէին: Նոյնպէս և մեք թէպէտ և այժմ չտայցեմք պտուղ լսելոյն, գոնէ յետոյ տացուք. և զի տալոց եմք՝ զայն ինձէն իսկ ճարտար գիտեմ: Քանզի չէ և չէ իսկ հնար՝ ուր այդչափ սիրեցէք լսել զբան վարդապետութեան, եթէ 'ի դերև ելանիցէք 'ի պտուղ տալոյ. քաւ և մի իսկ լիցի: Այլ ամենեքեան որ արժանի եղէք խրատուն Քրիստոսի, հասանիցեմք խոստացելոց բարութեանցն. որոց լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ՎԵՑԵՐՈՐԴ

“Ի մեծի տան ոչ միայն են անօթք ոսկեղէնք և արծաթեղէնք, այլ և փայտեղէնք և խեցեղէնք. և է ինչ որ 'ի պատուի է, և է ինչ որ յանարգութեան: Այլ եթէ ոք սրբեսցէ զանձն յայսպիսեացն, եղիցի անօթ պատուական, սրբեալ պիտանացու տեառն յամենայն գործս բարիս պատրաստեալ”:

Զբազումս 'ի մարդկանէ տակաւին խռովեցուցանեն և այժմ այնպիսի միտք՝ թէ ընդէր կան չարք և ոչ սատակին: Այլ զայն ոչ գիտեն թէ բազում պատճառք կան 'ի միջի, մի զի թերևս դառնայցեն, և միւս ևս թէ չդառնայցեն՝ պատժովքն լինիցին բազմաց օրինակ:

Եւ աստ Պաւղոս զդիպող իմն և զպատշաճ իրացն ճառէ. «Ի մեծի տան, ասէ, ոչ միայն են անօթք ոսկեղէնք և արծաթեղէնք, այլ և փայտեղէնք և խեցեղէնք»: Զոր օրինակ 'ի տան մեծի ըմբռն է պէսպէս սպասուց գտանել, նոյնպէս և 'ի բնաւ աշխարհն. քանզի ոչ եթէ զեկեղեցւոյ ասէ, այլ զբնաւ աշխարհէ: Եւ դու մի ինչ զեկեղեցւոյ կարծիցես. քանզի աստ չիք խեցեղէն և փայտեղէն անօթք, այլ ամենայն ոսկեղէնք, ուր մարմինն Քրիստոսի է, և կուսութիւն սուրբ և անարատ յաղտեղութենէ: Մի ինչ, ասէ, խռովեցուսցէ զքեզ զի գոն մարդք չարք և աղտեղիք. քանզի և 'ի մեծի տան են անօթք ինչ այնպիսիք. և ոչ թէ 'ի նոյն պատիւ վայելիցեն, այլ է ինչ որ 'ի պատիւ, և է ինչ որ յանարգութիւն: Այլ աստ զպէտս ինչ վճարել. քանզի յաշխարհիս ի՞ւ իցէ որով ած այլ ինչ պէտս ոչ վճարիցէ: Այնպիսի ինչ. մնապարծն բազում շինուածս շինէ, և ագահն և վաճառականն և կրպակաւորն և իշխանն բազում ինչ յաճախեն, և է ինչ անտի գործ որ կարի պատշաճ է 'ի պէտս աշխարհիս. իսկ ոսկեղէն անօթն ոչ ինչ այնպէս, այլ յարքունական սեղանն եւեթ մտանէ 'ի սպաս: Եւ արդ ոչ եթէ զայն ինչ ասիցէ՝ եթէ կարևոր պէտք են չարութեան, և ոչ ուրեք. այլ թէ և նոցա գործ ինչ ունին: Զի թէ ամենեքեան ոսկեղէնք և արծաթեղէնք էին, ապա բնաւ իսկ ոք չլինէր կարօտ այնպիսեացն: Այսպիսի ինչ. եթէ ամենեքեան ժուժկալք էին, բնաւ զի՞ ևս պիտոյ էին շինուածք. և եթէ ամենեքեան ազատք 'ի փափկութենէ, չէին ինչ պէտք խորտկաց և ոչ գեղեցիկ շինուածոց:

«Եթէ ոք, ասէ, սրբեսցէ զանձնն յայնպիսեաց անտի, եղիցի անօթ պատուական սրբեալ»: Տեսանե՞ս զի ոչ ըստ բնութեանն և ոչ ըստ հիւղական ինչ նիւթոյ է լինել ոսկեղէն կամ խեցեղէն, այլ 'ի մերոց կամացն: Իսկ անդ չէ հնար խեցեղինին ոսկեղէն լինել, և ոչ ոսկւոյն 'ի խեցւոյն անարգութիւն իջանել. բայց աստ բազում փոփոխմունք և շրջանակք են: Անօթ խեցեղէն էր Պաւղոս, այլ եղև անօթ ոսկեղէն. ոսկեղէն էր և Յուդաս, այլ եղև խեցեղէն: Ապա ուրեմն յանսրբութենէն լինին խեցեղէնք. պոռնիկն և ագահն անօթ խեցեղէնք լինին: Եւ զիա՞րդ այլուր ասէ. «Ունիմք մեք

զգանձս զայս յամանս խեցեղէնս „ . և չխոստէ ինչ զամանն խեցեղէն, քանզի անդ զընութենէն իսկ ասէ ։

Եւ զոր ասէն՝ այսպիսի ինչ է . աման խեցեղէն զմարմինն կոչէ . զոր օրինակ խեցեղէնն ոչ այլ ինչ է եթէ ոչ կաւ թրծեալ, նոյնպէս և մարմինն ոչ այլ ինչ է եթէ ոչ կաւ ջերմութեամբ ոգւոյն հաստատեալ . և զի խեցեղէն է՝ յայտ անտի իսկ է, յորժամ գլորիցի և կամ ուստեք անկանիցի, բեկտի և մանրի ։ Զինչ ինչ աւելի քան զխեցին իցեն ոսկերք [1], այնպէս կարծր են, նոյնպէս ցամաք ։ Զինչ ընդհատ 'ի կաւոյ իցեն մարմինքն . զի նոյնպէս 'ի ջրոյ են ։ Զիարդ անդ չխոստեցէ զիրսն . քանզի զընութենէն ասէ, և աստ զկամացն ։ "Եթէ ոք, ասէ, քաջ սրբիցէ զանձն „ ։ Եւ ոչ ասաց՝ թէ սրբեսցէ, այլ թէ քաջ սրբեսցէ . այն իսկ է՝ զի ամենևին համօրէն սրբեսցի, "եղիցի անօթ պատուական սրբեալ և պիտանացու տեառնն „ ։ Ապա ուրեմն այլքն անպիտանք են . թէպէտ և պէտս ինչ վճարիցեն, այլ չեն 'ի գործս բարիս պատրաստեալ . և թէ չգործիցեն ինչ գործս բարիս, այլ պիտանացու և ընդունիչ էին 'ի գործոյն բարեաց ։ Եւ արդ պարտ է առ ամենայն ինչ ամենայն իւիք պատրաստական գտանել, եթէ մահու չափ և եթէ մարտիրոսութեամբ և եթէ զկուսութեան աւանդն յանձն առնուլ իցէ ։

"Այլ յերիտասարդական ցանկութեանցն, ասէ, փախիր „ ։ Երիտասարդական ցանկութիւնք ոչ միայն պոռնկութիւնն է, այլ և բնաւ իսկ անպատեհ ցանկութիւնքն երիտասարդականք են ։ Լուիցեն զայս ծերք, զի չէ պարտ զերիտասարդութեանցն ինչ գործ գործել ։ Եթէ թշնամանող իցէ, և եթէ ձոխութեան և ընչից և մարմնոյ ցանկացող, թէ զինչ և իցէ, սակայն երիտասարդական ցանկութիւն է անմիտ և անհանճար, զի չև ևս իցէ 'ի սրտէն ելեալ ցանկութիւն և ոչ 'ի մտացն շտեմարանաց, այլ տակաւին անդէն յածիցի, հարկ է թէ ամենայն այնպիսիցն որք երիտասարդականք են՝ փախիր, ասէ, անտի ։

"Եւ երթ զկնի արդարութեան, զհաւատոյ, զսիրոյ, զխաղաղութեան նոքօք հանդերձ որք կարդայցեն

1 Երկաթագիրն վրիպակաւ ասէ ոսկեղէնքն . Թերևս ոսկրեղէնքն ։

զանուն տեառն սուրբ սրտիւք „ ։ Արդարութիւն զբնաւ իսկ զառաքինութիւնն և զվարս ասէ, զա̃ծպաշտութիւն և զհաւատս և զսէր և զհեզութիւն ։ “Նոքօք հանդերձ որք կարդայցեն զանուն տեառն սուրբ սրտիւ „ ։ Այսինքն է եթէ 'ի նոսա ևեթ վստահ լինիջիր. և մի յայնպիսիսն որ լոկ ևեթ կարդայցեն, այլ որ առանց խարդախութեան և կեղծաւորութեան, և չունիցին նենգութիւն 'ի մտի, այլ խաղաղութեամբ մատչիցին. որք չգրգռիցեն երբէք 'ի կագ, ընդ այնպիսիսն ևեթ խառնիջիր, և մի ընդ այլսն որ չունիցին զխաղաղութիւն ։

“Այլ յիմարացն և յանխրատն խնդրոց հրաժարեա „ ։ Տեսանե՞ս զկարգ ամենայն ուրեք մերժէ զնա յանխրատ ինչ խնդրոց ։ Ոչ զի չէր բաւական խափանել զայնպիսի անխրատ խնդիրս Տիմոթէոս. կարող էր ։ Եւ եթէ չէր կարող, սակայն ուսուցանէր թէ զկարգ մարթիցի խափանել զայնպիսի անօգուտ խնդիրս. որպէս յորժամ ասիցէ, “Մի՛տ դիր ընթերցուածոց. զայն եթէ առնիցես, և զքո զանձնդ ապրեցուցանիցես, և զայնոսիկ որք քեզն լսիցեն „ ։ Այլ գիտէր թէ յանօգուտ է բնաւ և գրգռելն իսկ յայնպիսի մարտս, և եթէ չվճարի ինչ՝ բայց միայն կռիւ և ատելութիւն և թշնամանք և բամբասանք. յայնպիսի, ասէ, խնդրոց հրաժարեա ։ Ապա ուրեմն են և այլ ինչ խնդիրք գրոց սրբոց և այլոց ինչ շահաւորաց ։ Եւ արդ չէ պարտ կռուել՝ եթէ այնպէս իցէ. 'ի խնդիրսն չէ հնար եթէ առանց կռուոյ ոք լինիցի ։

“Օ ի ա̃յ խաղաղութեանն ծառայի չէ պարտ կռուել, այլ հեզ լինել առ ամենեսին „ ։ Եւ զկա՞րգ ասէիր “Յանդիմանեա զնոսա ամենայն սաստիւ „. և դարձեալ “Մի՛ ոք իցէ որ զքո մանկութիւնդ արհամարհիցէ „. և թէ “Յանդիմանեա զնոսա խստագոյնս „ ։ Քանզի և այն իմն հեզութեան գործ է. զի և սաստիկ ինչ յանդիմանութիւն յորժամ մեղմով լինիցի, յայնժամ առաւել կսկծեցուցանէ. քանզի մարթի, և մարթի իսկ ես առաւել հեզութեամբ մրմռեցուցանել, քան խստութեամբ ցածուցանել ։ “Ուսուցիչ, ասէ, առ ամենեսեան „, որք կամին ուսանել ։ “Յառնէ, ասէ, հերետիկոսէ յետ մի անգամ և երկիցս խրատելոյ հրաժարեա „ ։

“Մ՛ի, ասէ, ոխակալ„։ Քան զամենայն ինչ զայս պարտ է պահել. ապա թէ ոչ՝ ամենայն ինչ որ լինին, զուր գործի։ Զի թէ ձկնորսք բազում անգամ զօրն իսկ ցերեկ արկանեն զգործիս և չըմբռնեն՝ չառնին անյոյս, որչափ ևս առաւել մեք։ Տեսջիր զինչ լինիցի. քանզի դէպ լինի յորժամ սակաւ սակաւ յաճախիցէ վարդապետութիւնն, մտեալ ազդումն բանին՝ կորէ զախտն որ զոգիսն նեղէր։ Զի որ բազում անգամ լսիցէ, հարկ է թէ ազդի ինչ 'ի նմա. քանզի չէ հնար եթէ սակաւ լսիցէ և չազդիցէ ինչ 'ի նմա. և իցէ յորժամ ինքն իսկ պատրաստ իցէ 'ի հաւանել և մեք անյոյս առնեմք, ամենևին իսկ կորնչի։ Իսկ այնպիսի ինչ գործ գործի, որպէս թէ հողագործ ոք անտեղեակ որթ տնկիցէ, բրիցէ զառաջին ամն և զերկրորդն, և խնդրիցէ առնուլ պըտուղ, և դարձեալ յերեամն. և իբրև երեամն անցանիցէ և 'ի քառեամն ելանիցէ, ապա անյոյս լինիցի, և թողուցու յորժամ եկեալ հասեալ իցէ ժամանակ պըտղոյն վայելելոյ։

“Հանդարտութեամբ խրատեա, ասէ, զհակառակողսն„։ Մանաւանդ վարդապետին կարի պիտոյ է միշտ հանդարտութ̅ք ջանալ։ Քանզի չէ հնար մտաց որ ուսման կարօտ իցեն, 'ի խստութենէ և 'ի սաստից օգուտ ինչ գտանել. թէպէտ և յօժար իցեն յուսանել, վհատին և ոչ ինչ չուսանին հեղձեալք և մղձկեալք 'ի տրտմութենէն։ Քանզի պարտ է այնմ ուսանել ինչ օգտակար որ կամիցի խնամով լինել ընդ վարդապետին. և եթէ այս այսպէս չկամիցի, ոչ ինչ շահ օգուտ գործիցի. քանզի առ խիստն և թշնամանողն ոչ յօժարէ վարդապետն ախորժելով զուսումն կարգել։ Իսկ զիա՞րդ ասիցէ, ասեն, եթէ “Յառնէ հերետիկոսէ յետ միանգամ և երկիցս խրատելոյ հրաժարեա„։ Զայնպիսւոյն ասէ որ չիցէ դարձ յուղղութիւն, զոր գիտիցես թէ չիցէ առնլոց յանձն զբժշկութիւնն։

“Զի թերևս, ասէ, տացէ նոցա Ա̅ծ սթափել յորոգայթից սատանայի„։ Այսպիսի ինչ ասէ. թերևս լինիցի ինչ ուղղութիւն, քանզի թերևսն 'ի վերայ անյայտ ինչ իրաց կայ։ Որպէս զի յայնցանէ ևեթ պարտ է մերժել, որոց հաւաստեաւ կարիցեմք տալ վճիռ, զորոց հաստատեալ գիտիցեմք թէ չիք հնար դառնալոյ։

«Հանդարտութեամբ, ասէ, խրատեա»: Տեսանե՞ս զի զայնոսիկ որ կամիցին ուսանել, այնպէս պարտ է ընդունել. և մի՛ երբէք յառաջ քան զհանդէս ինչ այնպիսի՛ մերժել 'ի խրատուէ: «Զըմբռնեալսն 'ի նմանէ, ասէ, 'ի նորա կամսն»: Բարւոք ասաց զըմբռնեալսն, քանզի դեռ տակաւին 'ի մոլորութեան զուղին: Տեսանե՞ս զիարդ պարտ է խոնարհութեամբ ուսուցանել վարդապետին: Չասաց՝ զի թերևս կարասցեն, այլ զի թերևս տացէ նոցա Ած սթափել. եթէ վճարիցի ինչ, զամենայն իսկ տեառնն համարիջիր. դու տնկես և ոռոգանես, և նա աճեցուցանէ և պտղաբեր առնէ. մի՛ երբէք հաշուիցիմք եթէ մեք զոք հաւանեցուցանեմք, թէպէտ և մեք իսկ հաւանեցուցանիցեմք:

«Պարշարեալք 'ի նմանէ, ասէ, 'ի նորա կամսն»: Այլ զայս ոչ զկրօնիցն հաւատոցն միայն պարտ է իմանալ, այլ և վասն վարուցն. քանզի նորա այն կամք են եթէ բարի ինչ վարս ցուցանիցեմք: Բայց են ոմանք յորոգայթս սատանայի և վարուցն աղագաւ. և արդ չէ պարտ և վասն նոցա դանդաղել ինչ և չածել 'ի խրատ: «Զի թերևս սթափեսցին, ասէ, պարշարեալք 'ի նմանէ 'ի նորա կամսն»: Թերևս՝ բազում երկայնմտութեան նորա նշանակ է: Չառնել զկամսն այ, է որոգայթ սատանայական:

Զոր օրինակ հաւ ինչ թէպէտ և ոչ ամենևին ըմբռնիցի յորոգայթն, այլ միով եւեթ ոտամբն 'ի բռան այնորիկ է որ զորոգայթն կազմեաց, նոյնպէս և մեք թէպէտ և ոչ ամենևին ըմբռնիցիմք՝ և հաւատովքն իսկ և վարուք, այլ թէ 'ի վարսն միայն ինչ զեղծիցիմք, ընդ իշխանութեամբ սատանայի եմք: «Զի ոչ որ ասէ ցիս, ասէ, տէր տէր՝ մտցէ յարքայութիւն երկնից». և դարձեալ եթէ «Ոչ գիտեմ զձեզ, երթայք յինէն որ գործէիքն զանօրէնութիւն»: Տեսանե՞ս զի չիք շահ 'ի հաւատոցն միայն, յորժամ յանծանօթս լինիցի 'ի մէնջ տէրն: Նա և զկուսանացն զսոյն ասէ, եթէ «Ոչ գիտեմ զձեզ»: Այլ արդ զի՞նչ շահ 'ի կուսութենէն իցէ և 'ի բազում քրտանցն յորժամ անծանօթ լինիցի 'ի նոցանէ տէրն: Այլ բազում 'ի տեղիս գտանեմք վասն հաւատոցն ոչ ինչ պատուհասեալս, և վասն վարուցն միայն պատժեալս. որպէս և այլուր վասն վարուցն ոչ

ինչ պատժելոյ, և վասն կամակոր կրօնիցն և 'ի կո-րուստ ևս մատնելոյ. քանզի երկոքեան ընդ միմեանս խառն են։ Տեսանե՞ս զի յորժամ չառնիցեմք զկամս ա̃յ, ընդ որոգայթիւք սատանայի եմք։ Ոչ միայն վասն բովանդակ վարուցն, այլ և վասն միոյ ինչ թերութեան թերևս երթայցեմք 'ի գեհեն։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Քանզի և կուսանքն ոչ վասն պոռնկութեան պատուհասեցան կամ շնութեան և սպանութեան, կամ չարակնութեան և արբեցութեան, և ոչ վասն յաւի ինչ հաւատոց, այլ վասն իւղոյն նուաղութեանն, զի ողորմութիւնս չարարին. քանզի իւղն զայն յայտ առնէ։ Եւ նոքա և որք անիծանն, «Երթայք, ասէ, անիծեալք 'ի հուրն յաւիտենից», ոչ վասն այլ իրիք անիծան, այլ զի ոչ կերակրեցին զՔրիստոս։ Տեսանե՞ս զի բաւական է՝ յորժամ ողորմութիւնն նուաղիցէ, տանել 'ի գեհենն հրոյ։ Եւ ո՞ւր պիտանացու իցէ որ զողորմութիւնն չառնիցէ։ Ասիցես եթէ հանապազ պահեմ. և կուսանքն պահէին, այլ չօգտեցան ինչ։ Ո՛չ յաղօթս ինչ ապաստան լինիցիս. սակայն և աղօթքն առանց ողորմութեանն անպտուղ են. ամենայն ինչ առանց նորա պիղծ է, ամենայն ինչ անօգուտ. զմեծ մասն առաքինութեն հատանես և 'ի բաց ընկենուս։ «Որ չսիրէ, ասէ, զեղբայր իւր, զա̃ծ չգիտէ»։ Իսկ դու զիա՞րդ գիտիցես զա̃ծ յորժամ զեղբայրն չսիրիցես, յորժամ կարի փոքրկանց և անարգաց չկամիցիս տալ։

Եւ արդ աղէ ասա, էր վասն զգաստանայցես. ո՞չ ապաքէն ասես՝ վասն զի 'ի տանջանացն երկնչիմ։ Եւ ոչ ուրեք, այլ յախուռն ինձ ամփոփես զքեզ 'ի ցածութիւն։ Եթէ վասն տանջանացն երկիւղի զգաստանայիր, և այնչափ բռնութեան ցանկութեացն համբերէիր, ապա ևս քաջ 'ի տուրսն տալ յօժար լինէիր։ Քանզի ոչ եթէ հասարակ ինչ իցէ մարմնոյն ցանկութէ յաղթել և ընչիցն, այլ անդ մեծ ձգունք են. հիմ. վասն զի ցանկութիւ բնակաւորս և ընդաբոյս անկեալ է 'ի մարմնին, իսկ ընչիցն ոչ այնպիսի ինչ։ Եւ այնիւ կարեմք նմանող լինել ա̃յ եթէ ողորմիցիմք և գթայցեմք. և եթէ զայն չառ-

նիցիմք, յո՜րմէ վրիպեալ եմք։ Զասաց՝ եթէ պահիցէք, նմանող լինիցիք հօրն ձերում. և չասաց եթէ յաղօթս կայցէք, նմանող լինիցիք հօրն ձերում. և չասաց՝ թէ կուսանայցէք, նմանող լինիք հօրն ձերում։ Վասնզի չիք այսպիսի ինչ զաստուծոյ, և ոչ գործէ ինչ այսպիսիս ա̃ծ. այլ զինչ. «Եղերուք, ասէ, գթածք, որպէս և հայրն ձեր որ յերկինսն է»․ այս է գործ ա̃յ։ Եւ եթէ զայս չունիցիս, զինչ ունիցիս։ «Ողորմութիւն կամիմ, ասէ, և ոչ զպատարագ»։ Արար զերկինս ա̃ծ, արար զերկիր և զծով, մեծամեծ արարածս՝ որպէս և իմաստութեանն նորա վայել է։ Այլ ոչ իւիք 'ի նոցանէ ձգէ առ ինքն զբնութիւն մարդկան, որպէս ողորմութեամբն և մարդասիրութեամբ. այն, ասեն, իմաստութեանն և զօրութեանն և բարերարութեանն գործ է. ես առաւել այն՝ զի ծառայն եղև։ Ո՛չ ընդ այն իսկ առաւել զարմանամք և վասն նորին մօտիմք։ Եւ ոչ ինչ այնպէս յորդորէ զմեզ մերձենալ առ ա̃ծ իբրև զողորմութիւն. և վասն նորին իսկ յաճախ խօսին ամենայն մարգարէքն։

Ողորմութիւն զայն ասեմ որ չիցէ յագահութենէ. ապա թէ ոչ՝ չէ իսկ ողորմութիւն։ Վասնզի ոչ եթէ արմատ փշոց երբէք իւղ ծնանի, այլ ձիթենի. զոր օրինակ և ոչ ագահութեանն և անիրաւութեան և յափշտակութեան արմատ ողորմութիւն ծնանի։ Մի՛ բամբասիցես զողորմութիւնն, և մի՛ արկանիցես ընդ բերան բազմաց։ Եթէ վասն այնորիկ յափշտակես զի ողորմիցիս, չիք ինչ չար քան զայն ողորմութիւն. որ յափշտակութենէն ծնանիցի, չէ ողորմութիւն, այլ անգթութիւն և ապիրատութիւն, և թշնամանես այնիւ զա̃ծ։ Եթէ որ յաւելորդաց իւրոց մատոյց՝ այնչափ յանցաւոր գտաւ առ ա̃ծ, Կայէն որ մատոյցն և չմատոյց, որ զայլոց մատուցանէ ո՜րչափ առաւել յանցանիցէ։ Զի մատուցանելն ոչ այլ ինչ է, եթէ ոչ պատարագ առանց պղծութեան։ Աղտեղի ձեռօք չիշխես յաղօթս կալ․ աղտեղութիւն, անիրաւութիւն, անսրբութիւն մատուցանես։ Զձեռսդ յաղտեղի ինչ և յանսուրբ չմատուցանես. այլ նախ սրբես և ապա մատչիս 'ի սրբութիւն, թէպէտ և այսմ աղտոյ մեղ ինչ ոչ գնիցի, և այն չարախօսութեան և բամբասանաց արժանի։

Արդ մի զայն ևեթ գիտիցեմք եթէ զիարդ սուրբ ձեռօք մատուցանիցեմք զպատարագն և զաղօթս, այլ թէ որպէս ինչ սուրբ պատարագն իցէ զոր մատուցանեմք. ապա թէ ո՛չ՝ կարի իսկ ծաղու գործ է։ Զոր օրինակ եթէ ոք զպնակ լուանայցէ և շարաւով զոհիցն լնուցու, ո՞չ ապաքէն ծաղու և կատականաց գործ է։ Եղիցին սուրբ ձեռք մի միայն ջրով, այլ նախ արդարութեամբն. քանզի այն իսկ է լուանալ 'ի ձեռացն։ Ապա եթէ անիրաւութեամբ լնուցումք, թէպէտ և բազում անգամ լուանայցեմք, չէ ինչ շահ։

“Լուացարուք, ասէ, և սուրբ եղերուք„։ Մի՛թէ ասիցէ՞ յաղբիւրսն երթայք և 'ի բաղանիս և 'ի ծովակս և 'ի գետս. ոչ ինչ այնպիսի, այլ թէ “Բարձէք զչարիս յանձանց ձերոց„. այն իսկ է սուրբն լինել և պարկեշտ յաղտոյ, այն իսկ ճշմարիտ սրբութիւն. այն ամենայն չօգնէ ինչ, և այս համարձակութիւն շնորհէ մեզ առ ած։ Զայն շունք և գողք և մահապարտք և՛ ծոյլք և մեղկք և պոռնիկք կարեն ունել. և մանաւանդ զի նոցա իսկ է գործն որ մարմնոյն սրբութեան պատկառ կայցեն, որ իւղովքն օծանիցին, և ստէպ մաքրիցեն զշիրիմն։ Քանզի շիրիմ հոգւոցն է մարմինն, և ամփոփեալ ունի 'ի ներքս զմեռեալ հոգիսն. որպէս զի արտաքին սրբութեանն և նոքա հաղորդ են, բայց ներքնոյն և ոչ ուրեք։ Չէ ինչ մեծ եթէ զմարմինդ լուանայցես, զի հրէական սրբութիւն է և անօգուտ և անշահ յորժամ ներքինն չլուանայցէ։ Պրեսջիր թէ փուտ ինչ իցէ 'ի ներքս և ճարակիցի գնայցէ ընդ յօդս, և լուանայցէ ոք 'ի վերայ զմարմինն՝ զի՞նչ օգուտ իցէ։ Եթէ մարմնոյ վերաց վեր 'ի վերոյն լուանալն չէ ինչ շահ, յորժամ յոգիսն կսկծիցէ փուտն՝ մարմնոյն սրբութիւնն զի՞նչ շահ գործիցէ։

Սուրբ աղօթից պէտք են. և չլինին աղօթքն սուրբ, եթէ ոգիքն 'ի ներքս պիղծ իցեն. չիք ինչ որ պղծէ զոգին իբրև զագահութիւն և զյափշտակութիւն։ Այլ բազումք ցերեկ բիւր չարիս գործեն և երեկոյի լուանան, և ապա գան յեկեղեցին և համարձակ իմն տարածանեն զձեռս, որպէս թէ ջուրք աւազանացն սրբել կարիցեն։ Եթէ այնիւ ինչ վճարէր, և ես իսկ միշտ 'ի բաղանիսն դեգերէի, եթէ այն մեղացն ինչ սրբութիւն

լինէր։ Ողորմ է այն և կատականք և մանկտւոյ խաղ և զբօսանք։ Զգուշի 'ի մարմնոյ աղտոյ ա̃ծ, այլ յոգւոյն պղծութենէ։ Սմին իսկ լուր. “Երանի, ասէ, որ սուրբ իցեն սրտիւք, զի նոքա զա̃ծ տեսցեն„. և մարգարէն ասէ եթէ “Սիրտ սուրբ հաստեա յիս ա̃ծ„. և դարձեալ թէ “Լուա 'ի չարեաց զսիրտ քո„։

Մեծ բարիք են 'ի բարիսն սովորել. և տես զկարգ 'ի փոքրն և յանօգուտ. յորժամ կանխիցի անկանիցի ուգին, չթափի անտի և չառնու յանձն եթէ ոչ նախ զայն կատարիցէ։ Նոյնպէս ինչ. սովորութիւն առաք նախ զձեռս լուանալ և ապա յաղօթս կալ, և դանդաղիմք առանց այնր յաղօթսն մատչել. և լաւ համարիմք չկալ իսկ յաղօթս, քան թէ այնպէս կայցեմք, և խղճեմք եթէ առ ա̃ծ ինչ յանցանիցեմք։ Եւ եթէ 'ի փոքուն այնչափ սաստիկ կալաւ սովորութիւնն, եթէ յողորմածութիւնն ևս այնպէս սովորէաք և դատարկաձեռն չախորժէաք մտանել յեկեղեցի, ո՞չ ապաքէն ամենայն միանգամայն կատարէր, և չլինէաք աշխատութեան կարօտ, զի ինքնին իսկ սովորութիւնն ձգէր զմեզ յայն. քանզի 'ի բարիսն և 'ի չարիս սաստիկ է սովորութեան բնութիւն։ Բազումք սովորութիւն առին ստէպ կնքել զանձինս, և չեն կարօտ եթէ ոք յուշ առնիցէ. այլ թէ միտքն ուրեք զբօսեալ իցեն, ձեռն իբրև 'ի շնչական վարդապետէ՝ 'ի սովորութենէն շարժեալ ինքնակամ դրոշմէ զնշանն։ Սովորութիւն առին ոմանք չերդնուլ, և կամօքն և ակամայ իսկ չերդնուն. արասցուք և մեք սովորութիւն մեզ զողորմածութիւնն։ Քանի՞ ինչ աշխատութեան պէտք իցեն. և եթէ չդանդաղիցիմք, գտանեմք զդեղն օգտակար։ Եւ յորժամ ցաւք 'ի վերայ ինչ հասանիցեն, առ վտանգին ապրեալս [1] բերեմք՝ եթէ հնար ինչ էր ընչիւք փարատել զայս 'ի մէնջ. նոյնպէս և եթէ այլ ինչ բարկութիւն ա̃յ 'ի վերայ հասանիցէ։ Եւ զմահուանէ բազում անգամ ասեմք, եթէ կարասւոյ գոլ էր, այս անուն ո՛րչափ ինչ տայր և ապրէր։

Եւ արդ տես զմարդասիրութիւնն ա̃յ որպիսի ինչ էր. ոչ տայ քեզ զժամանակաւոր մահս գնոյ, այլ զյաւիտենականն. մի՛ զսակաւ զկեանսս գնէր, ասէ, այլ զյա-

1 Միւսն ապրելոյ ընդէմ․․ կարասւոյ գնեալ էր։

ւիտենից. զայն վաճառեմ քեզ և ոչ զայս. չխաբեմ. Թէպէտ և անուանեցաս զայս, չարանուս ինչ. ես գիտեմ զի այն մեծ է։ Այլ ոչ այնպիսի ինչ են կրօնաւորութիւնք և վաճառականք, որ զառաւի ևեթ զշահս կամին շահել և ոչ զմնասն. Նոցա թէ 'ի բուռն գայցէ, սակաւ ինչ տան և մեծամեծս պահանջեն. իսկ ա՟ծ ոչ այնպէս ինչ, այլ ընդ փոքուն մեծամեծս կամի տալ։ Այլ արդ ասէ ասա, եթէ առ վաճառականս որ երթայիր, և երկու ա-կունք 'ի միոջ վայրի կային, մին խաբեբայ, և միւսն պա-տուական և մեծագնի՝ յորմէ և մեծանայր իսկ որ, և գինս փոքունս հատանել և տայր զմեծն, միթէ տրտն-ջէիր զնմանէ. և ոչ երբէք, այլ առաւել ևս զարմա-նայիր և գոհանայիր։ Նոյնպէս և այժմ երկու կեանք կան առաջի՝ ժամանակաւորս և յաւիտենից, և վա-ճառէ զերկոսին ա՟ծ, ոչ զայս, այլ զայն, և մեք զայս կամիմք քան զայն։

Այլ ի՞նչ, ասեն, հնար զկեանս ընչից գնել։ Այո, յորժամ զմեր զինսն տայցեմք և ոչ զայլոց, յորժամ ոչ զխաբէութիւն գործիցեմք։ Այլ իմ է, ասէ, այ-սահետև։ Ոչ են քո յափշտակութեան ինչքն, այլ նոցա զոր յափշտակեցերն. այլոց է, թէպէտ և բիւր անգամ առեր լինիցիս։ Եւ ոչ եթէ յաւանդին աւանդեալս զա-րուք. չեն քո ինչքն. թէպէտ և առ քեզ պահես, օտարանն են և ոչ քո. և յորժամ գայցէ, շնորհ միայն ունի քեզ զի պահեցերն, և զիւրն յինքն առնու նա. մինչ առ քեզն կայր՝ չէիր տէր այլոց ընչիցն, որչափ ևս առաւել յափշտակութեան զոր ակամայ և բռնի յա-փշտակեցերն. նա է տէր և ոչ դու, թէպէտ և ունի-ցիս որչափ ունիցիս բռնաբար։ Մեր սեփական առա-քինութիւնն է։ Այլ ինչք՝ և մերն իսկ չեն մեր, թող թէ օտարին. այլ թէպէտ և այսօր մեր, սակայն վա-ղիւ այլոց լինի։ Իսկ առաքինութեան գանձք միայն մեր են, և ոչ նուազին իբրև զայլ ինչսն, այլ ամենեցուն բաւական են առ հասարակ։ Արդ արհամարհեսցուք զինչս, և զայն ինչ ստացուք որով կարասցուք ճշմա-րիտ բարութեանցն հասանել. որոց լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգա-մայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն։

# ՃԱՌ ԵՕԹՆԵՐՈՐԴ

«Զայս գիտասջիր, զի յաւուրս յետինս յարիցեն ժամանակք չարք. զի լինիցին մարդիկ անձնասէրք, արծաթասէրք, հայհոյիչք, զհարս և զմարս անարգունք, անշնորհք, անսուրբք, անգութք, անհրաւէրք, բանսարկուք, անժոյժք, անհամբոյրք, անբարիք, մատնիչք, յանդգունք, ամբարտաւանք, ցանկասէրք առաւել քան ա̃ծասէրս. որք ունիցին զկերպարանս ա̃ծպաշտութեան, և 'ի զօրութենէ ուրացեալ իցեն. և յայնցանէ խորշեսջիր: Ի յայնպիսեաց անտի են որ մտանեն տանէ 'ի տուն, և գերեն զկանայս շեղջակուտեալս մեղօք՝ վարեալք յազգ յազգ ցանկութիւնս, որ յամենայն ժամ ուսանիցին, և երբէք 'ի գիտութիւն ճշմարտութեան ոչ հասանեն»:

Յառաջնումն թղթին ասէր՝ եթէ «Հոգին յայտնապէս ասէ, զի 'ի ժամանակս յետինս քակեսցին ոմանք 'ի հաւատոյ»: Այլ դարձեալ 'ի միւսում վայրի 'ի սմին թղթի նոյնպիսի իմն յետոյ լինել մարգարէանայ: Այլ աստ ասէ. «Զայս գիտասջիր, զի յաւուրս յետինս յարիցեն ժամանակք չարք»: Այլ ոչ միայն յետին ժամանակացն, այլ և յանցելոցն զնոյն ցուցանէ. զոր օրինակ «Յանէսն և Յամբրէս հակառակ եղեն Մովսէսի». դարձեալ և 'ի միուս. «Ի մեծի տան, ասէ, ոչ միայն են անօթք ոսկեղէնք և արծաթեղէնք»: Այլ վասն էր արդեօք. զի մի խռովեսցի Տիմոթէոս և կամ ոք 'ի մէնջ, յորժամ լինիցին մարդք չարք: Եթէ առ Մովսէսիւ եղեն, ասէ, և յետոյ լինելոց են, չեն ինչ զարմանք թէ և առ մեօք լինիցի: Զի յաւուրս յետինս յարիցեն ժամանակք դժնդակք, այսինքն կարի չարք:

Զիա՞րդ լինիցին ժամանակք դժնդակք. ոչ եթէ զաւուրս նեղ ժամանակս չար ինչ կոչիցէ, այլ զմարդիկն որ յայնժամ լինիցին: Քանզի և մեք սովոր եմք կոչել զժամանակս չարս և անչարս՝ ըստ իրաց ինչ որ 'ի նոսա

գայցեն 'ի մեր վերայ 'ի մարդկանէ ։ Ընդէն վաղվաղակի զամենայն չարեացն զպատճառս դնէ՝ զարմատն և զաղբիւր, ուստի այն ամենայն չարիք ծնանիցին ։ Յորժամ ոչ զընկերին՝ այլ զանձին եւեթ խորհիցի, մանաւանդ թէ զերկոցունց իսկ անտես առնիցէ, զի այնպիսին և ոչ անձին նպաստ լինի ․ զոր օրինակ որ զընկերին բարւոք տածիցէ՝ իւրումն խնամակալ լինի, նոյնպէս և որ զընկերին արհամարհիցէ՝ զիւրն անտես առնէ ։ Զի եթէ անդամք միմեանց իցեմք, ապա զընկերին փրկութիւն ոչ նորա միայն է, այլ հասարակաց մարմնոյն ․ և ընկերին վնաս ոչ 'ի նա միայն հասանէ, այլ յամենեսեան համօրէն ։ Եթէ 'ի շինուած իցեմք, եթէ 'ի մի կողմն երկեանն մտանէ՝ և 'ի միւս կողմն ազդէ վնասն ․ և եթէ հաստատուն կայցէ, զամենայն միանգամայն բառնալ հանդուրժէ ։ Նոյնպէս և յեկեղեցւոջ ․ անտեսն արարեր զեղբայրն, անձին վնաս արարեր ։ Զի՞րդ ․ զի քո իսկ անդամն կրեաց ոչ սակաւ ինչ վնաս ։ Զի եթէ որ յընչիցն չտայ՝ 'ի գեհեն երթայցէ, որ 'ի կարեւոր ինչ վիշտս տեսանիցէ և չձգիցէ զձեռն՝ ո՞չ ապաքէն եւս չարսա ընդ պատժովք իցէ, որչափ և վնասն քան զվնասն մեծ է ։

“ Զի եղիցին, ասէ, մարդիկ անձնասէրք „ ։ Անձնասէրն է որ մանաւանդ չսիրիցէ զանձն, և ընկերասէրն է որ առաւել սիրէ զանձն ։ Եւ անտի իսկ է արծաթսիրութիւն ։ Ընդարձակասէր է և յամենայն կողմանս տարածեալ, ամփոփէ, 'ի մի վայր կծկէ անձնասիրութեան սատակումն ։ Եւ վասն անմիտ է արծաթասէրն ․ և անտի հպարտութիւն ծնանի, և 'ի հպարտութենէն ամբարտաւանութիւն, և յամբարտաւանութենէն հայհոյութիւն, և 'ի հայհոյութենէն ստահակութիւն և անհնազանդութիւն ։ Զի որ առ մարդիկ հպարտանայցէ, նա դիւրաւ իսկ և յԱ̃ծակողմն այնպիսի գտանի ։ Եւ անտի ծնանին մեղք ․ բազում անգամ 'ի ներքուստ 'ի վեր ելանէ ։ Եւ որ առ մարդիկ ոք երկիղած իցէ, եւս առաւել առ Ա̃ծ ․ որ առ ծառայակիցսն զգօն իցէ, որչափ եւս առաւել առ տէրն ․ որ զհամածառայսն արհամարհիցէ, մեղմով յառաջ մատուցեալ և զտէրն արհամարհէ ։ Մի՛ այսուհետև արհամարհեսցուք զմիմեանս ․ վարդապետութիւն չար է այն ․ զԱ̃ծ

ուսուցանէ արհամարհել: Նա և այժմ իսկ զած արհամարհեմք յորժամ զմիմեանս արհամարհեմք, զի Նա հրամայեաց բազում փոյթ առ միմեանս ցուցանել: Բայց և այլով օրինակաւ թէ կամիցիք արասցուք զնոյն յայտնի:

Արհամարհեաց զեղբայրն Կային: Զիա՞րդ արհամարհեաց. տես որպէս զթշնամանացն պատասխանի տայր Այ. «Միթէ պահապա՞ն ինչ իցեմ եղբօրն իմում» ասէ: Արհամարհեաց դարձեալ և Եսաւ զեղբայրն, արհամարհեաց և զած. Նմին իրի իսկ ասէր Ած՝ եթէ «ԶՅակոբ սիրեցի և զԵսաւ ատեցի»: Զոր և Պաւղոս ասէ. «Մի՛ ոք պոռնիկ և կամ պիղծ իբրև զԵսաւ»: Արհամարհեցին զՅովսէփ եղբարքն, արհամարհեցին և զած: Արհամարհեցին իսրայէլացիք ըզՄովսէս, արհամարհեցին և զած: Նոյնպէս և որդիքն Հեղեայ արհամարհեցին զժողովուրդն, արհամարհեցին և զած: Եւ եթէ կամիս և 'ի սոցուն հակառակացն տեսանել, խնայեաց Աբրահամ յեղբայրն, հնազանդ եղև Այ. և յայտ յայնմանէ է՝ զի Սահակաւն ունկնդիր եղև Այ, և յամենայն իսկ առաքինութենէն: Դարձեալ և Աբէլ զգօն էր առ եղբօրն, և առ Ած երկիւղած: Մի՛ արհամարհեսցուք զմիմեանս, զի մի՛ ուսանիցիմք արհամարհել զած. պատուեսցուք զմիմեանս, զի ուսանիցիմք պատուել զած: Որ առ մարդիկ ստահակ իցէ, և առ Ած ստահակ գտանի:

Յորժամ արծաթսիրութիւն և անհնազանդութիւն և հպարտութիւն 'ի մի վայր ժողովիցին, զի՞նչ ինչ պակասիցէ առ կատարեալ կորուստն. առ 'ի բնաւին եղծանել, և բազում իսկ տեղիք յաձախեն մեղաց: «Անշնորհք» ասէ: Զիա՞րդ լինիցի շնորհակալ արծաթասէրն, ու՞մ ունի շնորհ. զամենեսեան թշնամիս համարի, զամենեցուն առնուլ կամի. եթէ զամենայն իսկ զարարսն թօթափիցես 'ի նա, և ոչ միով բանիւ գիտէ ունել քեզ շնորհ. այլ ցասնու ևս թէ ընդէ՞ր շատ չունէիր, և բազում ընչից առնէիր զնա տէր: Թէպէտ աշխարհի տէր առնիցես զնա, չգիտէ ունել շնորհ, չհամարի թէ ունի ինչ. քանզի անյագ է ցանկութիւն ախտին, որչափ առնու՝ ևս կարօտի: Որպէս ջերմոտն որչափ և ըմպէ՝ ևս ծարաւէ, և արբեցողն ոչ երբէք յագի, այլ միշտ պապաքի, նոյնպէս և ընչասէրն չգիտէ եր-

բէք զկապուրդ. որչափ տայցես, չունի ինչ քեզ շնորհ. այնմ ևեթ շնորհ ունի, զի որչափ կամին՝ և այնչափ տայցես. և այնմ չէ հնար լինել, քանզի չիք չափ կամելոյն. ապա և չունի իսկ ումեք շնորհ։

Այլ չիք ոք այնպէս անշնորհակալ իբրև զարծաթասէրն. չիք ոք անհամձար և ապախտաւոր իբրև զընչասէրն. ամենայն աշխարհաց թշնամի է. չկամի թէ բնակիցեն մարդիկ. զամենայն վայրս աւերակ կամի, զի զամենեցուն ինքն ունիցի։ Այլ բազում ինչ ըղձանայ, թէ յանկարծ շարժումն լինէր 'ի քաղաքի. և յորժամ ամենեքեան ծածկէին՝ ես, ասէ, միայն մնայի և զամենեցուն ինչս ես առնուի. և կամ սով լինէր և զամենեսեան սատակէր, և ոսկին միայն մնայր. եթէ երկիր բանայր և կլանէր զամենեսեան, և կամ ծովն ծաւալէր և ծածկէր զամենեսեան՝ ամենայն ինչ ինձ մնայր։ Նազում ինչ այսպիսի չարիս ըղձանայ, բարի ինչ երբէք ոչ. շարժումն, և զհուր տեղալն և [1] պատերազմունս և սրածութի՛ն, և բազում և այլ ինչ քան զայս չարիս ըղձանայ։ Այլ արդ աղէ ասա հեքդ և թշուառական և քան զամենայն սորուկս սորկափոյն, եթէ ամենայն ինչ ոսկի լինէր՝ ո՞չ ապաքէն թողուիր զոսկին. և եթէ սով լինէր, դու չլինէիր սովամահ. և եթէ շարժումն զամենայն աշխարհս տապալէր, ո՞չ ապաքէն և դու թողուիր զապականիչ ցանկութիւն. եթէ մարդ չգտանէր յերկրի, դու ընդ ո՞ւմ կէիր։

Այլ գրեսցիր թէ ամենեքեան առհասարակ սատակէին, և ամենեցուն ոսկին և արծաթ և հանդերձքն պէսպէսք և ականք պատուականք որպէս ըղձանաս՝ իւրովի առ քեզ գային, զի՞ առնէիր, յո՞ տանէիր, ո՞ւր մաշէիր, զի այնպէս իսկ և քեզ վաղվաղակի հասանէր մահ 'ի վերայ։ Յորժամ ոչ հողագործք և ոչ հացաբարք գտանէին, երկիր աւերակ, գազանք հանդիպացեալք, գեղք յարձակեալք՝ չարալլուկ զմարմինդ, չարագան զոգիդ, տարաժամ անժամ 'ի միմեանց քակէին։ Արդ և այժմ իսկ դևք մտեալ պղտորեն խառովեցուցանեն զոգիդ, թող թէ յայնժամ անկարծամահ առ-

1 Պակասէր յօրինակին և պատերազմունս և սրածութիւնս. յաւելաւ 'ի յունէն։

նէին: Չկամէի այսպէս, ասէ, այլ կամէի եթէ մշակք էին և հացարարք. սակայն և նոքա ծախէին: Այլ ոչ կամէի, ասէ, թէ ծախէին: Եւ այնպէս անյագ է ցանկութիւն կարասւոյ. զի՞նչ ինչ քան զնա կայցէ ծաղր:

Տեսանե՞ս զանհնարին իրսն. և կամի զի իցեն սպասաւորք, և չկամի թէ զնոքա ինչ ծախիցեն, և ոչ եթէ զհացն իսկ ուտիցեն: Միթէ քարեղէ՞նս կամիցիս առնել զմարդիկ. խաբէութիւն է այս ամենայն, այլք և մրրիկք և ձմերունք, խռովութիւն ծովուց և աղմուկ ոգւոց. միշտ քաղցնու, ցանգ ծարաւէ: Չողորմիցի՞մք այնպիսւոյն, չարկանիցե՞մք արտասուս: Եւ 'ի մարմինս է ինչ այնպիսի դժնդակ ախտ՝ զոր սուրն կոչեն բժիշկք, յորժամ 'ի բազում կարօտութեան սովիցի և սրայցէ գասրիցէ և չյագիցէ: Իսկ զոգւոյն զայսպիսի ինչ ախտ չլայցե՞մք և չարկանիցե՞մք արտասուս: Սուր և սով ոգւոյն արծաթսիրութիւն է՝ որ ոչ երբէք յագի և չասէ երբէք շատ, այլ միշտ առ ցանկութեան հաշի: Եթէ զեբօրանն պարտ էր ըմպել, թմբիր ինչ է որ սատակամահ իսկ առնէ, և կամ այլ ինչ հնարս հնարել՝ զի ապրեսցի յայնպիսի ախտէ, ո՞չ ապաքէն յօժարութեամբ պարտ էր ընդունել: Չի՞ք ինչ բազմութիւն որ զանյագ տենչացող կարիցէ լցուցանել:

Եւ արդ մեք ո՞չ ակնածիցեմք, եթէ վասն ընչից ոմանք այնչափ մոլին, և մեք առ ա՟ծ և ոչ սակաւ ինչ մասն սիրոյ ցուցանիցեմք, այլ քան զարծաթ ևս անարգ համարիմք զա՟ծ: Վասն արծաթոյ հսկեն, տառապին, ջանան, տարաշխարհիկ լինին, բազում ձգանց համբերեն, ատելիք և թշնամիք բազմաց առնեն մարդիկ. իսկ մեք վասն ա՟յ և ոչ դոյզն ինչ բան կամիմք ընդ բերան հանել, և ոչ թշնամութիւն յանձն առնուլ. այլ թէ պարտ իցէ զրկելոյն 'ի հարստաց օգնական լինել, խորշիմք մերժիմք և չկարեմք անաւագին ձեռնտու լինել, և զզօրութիւն զոր առաք յա՟յ օգնել տնանկաց՝ կորուսանեմք չկամելովն նմանել նմա, զի մի ատելի ումեք լինիցիմք և յաչաց ելանիցեմք:

Եւ ցանգ զանօգուտ բանն յառաջ բերեն բազումք. զուր, ասեն, սիրեաց. զուր մի ատիցես: Իսկ այն զո՞ւր ինչ ատելի լինել իցէ. չի՞ք ինչ քան զայն ատելութիւն լաւ. քան զսէրն որ վասն ա՟յ լինիցի, ատելութիւն որ

վասն նորա՝ կարի շահաւոր է։ Վասնզի յորժամ վասն ա̃յ սիրիցիմք մեք, պարտապան գտանիցիմք նորա պատուոյն. և յորժամ ատիցեմք, նա պարտական լինի մերոց վարձուցն։ Որչափ սիրեսցեն ընչասէրքն զոսկին, և չգիտեն զչափ սիրոյն. մեք թէ սակաւ ինչ բարիս գործիցեմք, համարիմք թէ զրնաւ իսկ վճարեցաք։ Որպէս նոքա զոսկին սիրեն, մեք զա̃ծ այնպէս ոչ սիրեմք, նա և ոչ սակաւ մասն ինչ քան զայն։ Բազում ամբաստանութիւն է զնոցանէ՝ զի այնչափ հարեալ են յոսկին. բազում պարսաւանք են մեզ՝ զի չսիրեմք այնպէս զա̃ծ որչափ և նոքա զհողն, զի հող է ոսկին և քրէական գիւտք. որչափ նոքա հողոյս առնեն պատիւ, չառնեմք այնչափ պատիւ Տեառն։

Տեսցուք զիարդ մոլին, և ակնածեսցուք։ Զի զինչ օգուտ իցէ թէ մեք այնչափ չգայցեմք զոսկւով, այլ և ոչ զմեզ ինչ գամք ջերմաջերմ։ Արդ ահաւասիկ զկին և զորդիս ուրանան մարդիկ վասն կարասւոյ, և զկեանս իսկ անձանց. և զայն չգիտեն թէ որչափ զմեծութիւն աճեցուցանեն։ Բազում անգամ մինչդեռ յաստիսն և 'ի վայելչն իցեն, քակին ոգիքն 'ի մարմնոյն, և երթան ունայնաձեռն 'ի զուր վաստակեալք։ Զի մեք զի հաստատեալ գիտեմք՝ եթէ հասանելոց եմք այնմ տրում ցանկացաքն՝ եթէ սիրիցեմք զնա որպէս պարտ է սիրել. սակայն և այնպէս չարկանեմք գութ, այլ ամենևին ցամաքեցուցաք զսէրն ընկերացն և նովին զա̃յն։

Վասնզի չիք և չիք իսկ հնար եթէ գտանիցէ ոք զսիրելի բարեկամն՝ որ կարի սիրելի և անձկալի իցէ, իմաստուն և խնամոտ, եթէ ոչ սիրիցէ զնա. քանզի հիմն ամենայն բարութեանց ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ սէր։ “Ի նա, ասէ, կախեալ կան օրէնք և մարգարէք„։ Զի զոր օրինակ յանտառին մտեալ հուր կամ 'ի խոտաւէտ տեղիս՝ զամենայն միանգամայն սրբիցէ, նոյնպէս և սիրոյն ջերմութիւն ուր և մտանիցէ՝ զամենայն թշնամութիւ ծախիցէ, և ջրէ ա̃ծեղէն սերմանսն, և զանդն մաքրէ ընդունել զսուրբ սերմն։ Ուր սէր իցէ, ամենայն չարիք հալածականք։ Չիք անդ արծաթասիրութիւն արմատ ամենայն չարեաց, չիք անդ անձնասիրութիւն և ոչ հպարտութիւն։ Մի՛թէ և առ բարեկամսն ոք հպարտութիւն ցուցանիցէ։ Չիք ինչ որ իբրև զսէր խնամար-

հագոյն գործիցէ : Նա և զծառայելոյն պէտս բարեկամօքն վճարեմք, և չակնածեմք և չզանգաղիմք, զի յուսացեալ եմք 'ի սէրն որ կայր 'ի մէջ բարեկամութեան, և շնորհ ունիմք այնպիսի ծառայութեան : Յորժամ սէրն 'ի միջի իցէ, ոչ յինչս խնայեմք և ոչ յանձինս · բազում ձգունս իսկ յանձն առնուն վասն բարեկամին : Ուր սէրս սէր իցէ, չիք նախանձ և ոչ չարախօսութիւնք · ոչ միայն չբամբասեմք զընկերսն, այլ և զբամբասիչսն ըմբերանեմք : Ընդ խաղաղութիւն, և անդէն անհոգութիւն ձայնի և բերանոյ, կռուոց[1] և հակառակութեան և ոչ հետք ուրեք 'ի միջի, բանք խաղաղութեան և ամենայն դիւրութիւն, քանզի "Կատարումն օրինաց սէր է"· չիք տրտմութիւն, և հալածական է խռովութի :

Իսկ մեղքն զինչ և զինչ իցեն · ագահութիւն, յափշտակութիւն, նախանձ, չարախօսութիւն, անբարտաւանութիւն, երդմնահարութիւն, ստութիւն · այս ամենայն քակիչք են սիրոյ : Երդնուն սուտս երդմնահարքն, քանզի յափշտակել կամին · իսկ զսիրելոյն չիք ոք որ յափշտակիցէ, այլ զիւրն ևս տայ, և զտալն շնորհս վարկանի՝ քան թէ առնուցու ինչ 'ի նմանէն : Եւ ձեզէն իսկ ճարտարագիտէք որոց բարեկամք լեալ իցեն սիրտք, և ոչ անուամբ միայն և ոչ բանիւք, այլ թէ սիրելի է որպէս պարտ է սիրել՝ եթէ ոք ընդ ումեք կապեցաւ : Եւ եթէ ոմանք չգիտիցեն, յայնցանէ որ գիտիցենն ուսանիցին · ապա թէ ընաւ իսկ ոք չգիտիցէ, ես պատմեցից 'ի գրոց զարմանալի ինչ սէր :

Սաւուղայ որդին Յովնաթան սիրէր զԴաւիթ · "Եւ կապեցաւ, ասէ, անձն նորա ընդ նմա"· և զողբս առեալ ասէր՝ եթէ "Անկաւ 'ի վերայ իմ սէր քո իբրև զսէր կանանց, և 'ի մահ վիրաւորեցար ինձ" : Եւ արդ տեսցուք, միթէ նախանձէր ընդ նմա · և ոչ երբէք, թէպէտ և հարկ 'ի վերայ կայր նախանձել, քանզի և արդեամբք իսկ տեսանէր թէ 'ի նա երթալոց էր թագաւորութիւն · այլ ոչ ինչ ախտացաւ այնպիսի ախտ, չասաց թէ սա է որ զրկելոց է զիս 'ի հայրենի թագաւորութենէն · այլ և գործակից ևս լինէր նմա յիշխանութեան, և 'ի հայրն չխնայէր վասն բարեկամին, զի

1 Պակասէր յօրինակին կռուոց և հակառակութեան · յաւելաւ 'ի յունէն :

մի ոք առ հայրանենգութեան ունիցի զնա։ Քանզի ոչ եթէ հօրն ինչ վնաս առնէր, այլ զնենգութիւնն և զանիրաւութիւնն արգելոյր. մանաւանդ թէ խնայէր իսկ ՚ի նա, և ոչ վնաս առնէր, զի չտայր ՚ի զուր սպանութի ձեռնամուխ լինել։ Բազում անգամ և մահ իսկ յանձին կալաւ մեռանել վասն նորա. և չար ինչ ոչ խօսեցաւ զնմանէ, ո՛չ և զհայրն ևս ըմբերանէր. չնախանձէր, այլ և գործակից լինէր. ոչ միայն ընչիւք դարմանէր զնա, այլ և կենաց ևս պատճառք լինէր։ Քանզի բազում անգամ փրկեաց զնա ՚ի մահուանէ, և ոչ ակնածէր ՚ի հօրէն վասն բարեկամին։ Քանզի մին յանիրաւ ինչ իրս մտաբերէր, և միւսն չունէր այնպիսի ինչ խիղճ ՚ի միտ, և անդ արդարութեամբ էր սէրն։

Յովնաթան այսպէս էր. տեսցուք զԴաւիթ զինչ գործիցէ։ Չեղև նմա ժամանակ հատուցանելոյ զերախտիսն. յառաջագոյն յափշտակեցաւ քան զիշխանութիւնն Դաւթի, և նախ քան զգալն ՚ի թագաւորութիւն՝ ում զերախտիսն արար՝ երախտաւորն կորեաւ։ Տեսցուք՝ որով իւիք մարթ էր՝ եցոյց զինչ արդեօք առնէ սէր արդարն։ “Գեղեցիկդ իմ, ասէ, Յովնաթան, ՚ի մահ վիրաւորեցար ինձ”։ Եւ ա՞յս միայն իցէ։ Չէր փոքր և այս, այլ և զորդին նորա բազում անգամ ապրեցոյց ՚ի վշտաց. քանզի յիշէ զհօրն երախտիս և բարի առնէր, իբրև զիւրոյ որդւոյ որդեակս պահէր և յանձանձէր։

Այնպիսի սէր կամիմ թէ ունիցիք ամենեքեան առ միմեանս և ընդ կենդանիս և ընդ մեռեալս։ Մանաւանդ կանանց պարտ է ասել զայս։ Քանզի վասն այնորիկ ասացի ընդ մեռեալս, որք յերկրորդ ամուսնութիւն մտաբերիցեն, և զանկողինս վախճանելոց ապականիցեն, ունիցին զառաջինն գութն ՚ի միտ։ Ոչ եթէ խոտիցեմ զերկրորդ ամուսնութիւն, և ոչ պոռնկութի զգործն համարիմ. քանզի ոչ տայր ինձ թոյլ Պաւղոս; այլ և սանձս ՚ի բերան դնէ, որ խօսին վասն կանանց՝ “Եթէ ամուսնանայցէ, ասէ, ոչ մեղանչէ”։ Եւ այլ զինչ. “Բայց ևս երանելի է, ասէ, եթէ նոյնպէս կայցէ մնայցէ”. կարի լաւ այս քան զայն։ Եւ որո՞վ լաւ իցէ սա քան զնա. բազում իրօք. զի եթէ քան զամուսնացեալն չամուսնացեալն լաւ իցէ, որչափ ևս առաւել սա քան զնա լաւ է։

Չարեաց, ասէ, բազումք այրութեան տանել, քանզի 'ի բազում վիշտս անկանին։ Այլ չգիտեն իսկ զինչ այրութիւն իցէ։ Ոչ համարանանալ զերկրորդ ամուսնութիւն' իցէ այրութիւն, որպէս և ոչ կուսութիւն' անփորձն ամուսնութեան լինել։ Այլ զինչ. որպէս և անզպարկեշտութիւնն և բարւոք հանապազորդութիւն խնդրի, նոյնպէս և առ մենանալն և աղօթիցն հպատակութիւն, և 'ի գրգութենէն և 'ի փափկութենէն զածնել. "Որ զիրգն այրին իցէ, ասէ, կենդանւոյն մեռեալ է"։ Արդ եթէ 'ի նմին պերճանս կամիցիս կեալ, և նորին զարդուք զարդարել որպէս առ առաջին, լաւ իցէ ամուսնանալ քան յայրութեան կալ. զի ոչ եթէ ամուսնութիւն չար ինչ իցէ, այլ հապիտ պաճուճանքն։ Իսկ դու որ չես չար' զայն չառնես, այլ որ ինչ չես առանց պատժոց' զայն ունիս յանձին։ Վասն այնորիկ ասէ' թէ խոտորեցան զկնի սատանայի, քանզի չգիտացին կալ բարւոք յայրութեան։

Կամիս ուսանել թէ զինչ իցէ այրութիւն, և որպիսի ինչ պատիւ, լուր Պաւղոսի. "Եթէ մանկունս սնուցեալ իցէ, ասէ, եթէ զհիւրս ընկալեալ, եթէ զսրբոց զոտս լուացեալ, եթէ նեղելոց բաւական լեալ, եթէ զամենայն գործոց բարեաց զհետ երթեալ իցէ"։ Յորժամ յետ վախճանելոյն առն 'ի բազում ինչս հեղձեալ իցես' յիրաւի իսկ չկարես հանդարտել այրութեան. փոխեա զգանձսն յերկինս, և լինիցի քեզ փոքրոգի բեռն այրութեան։ Եթէ մանկունս ունիցիս, ասէ, պայազատս հայրենի ժառանգութեան ժառանգաւորս։ Խրատեա և զնոսա արհամարհել զինչս. զքո մասն անզփոխեա, և զնոցա մասնն նոցա թող' որչափ նոցա բաւական իցէ. խրատեա և զնոսա 'ի վերոյ լինել քան զախտ ընչասիրութեանն։ Եւ եթէ գերդաստան բազում իցէ, ասէ, և իրաց յաջողութիւնք, ոսկի և արծաթ, և զիա՞րդ կարիցեմ զայն ամենայն պահել, և հարկ է զի առն պէտք իցեն' որ այնմ ամենայնի վերակացու լինիցի։ Պատճառք և բարուրք են այնք, և յայտ բազում սնոտեաք է։ Եթէ չիցես զանկացող ընչից, և չկամիս եւս աւելի 'ի նոյն յաւելուլ, թեթևացո զբեռն զի ծանրագոյն քան զպահելն ախտաղեալն է։ Եւ արդ եթէ զախաղեալն կարծիցես, և 'ի զգուշութենէն աղ-

քառացն բաշխիցես, ա՟ծ ձգեսցէ պաշտպանութեամբ զձեռն իւր, և բովանդակ զժառանգութիւն որդւոյդ պահեսցէ։ Այլ արդ այդպէս մեզմէ խես, չգիտես թէ այդպիսի բանք պատճառք արծաթսիրութեան են. գիտէ ա՟ծ որ զսիրտն քննէ՝ պահել յամբի զգուշութեամբ զարարումն ըստ բաւականութեան որդւոյն։

Չէ հնար, քանզի և չէ իսկ, տան որոյ ողորմութեամբ հաստատեալ իցեն հիմունք՝ վնաս ինչ 'ի վերայ հասանել. և եթէ առ ժամանակ մի լինիցի ինչ, դարձեալ միւսանգամ վախճանն 'ի բարութիւնս կատարի. զի այն իսկ զէն և վահան լինի ամենայն տանց։ Լուր զինչ ասէր սատանայ զՅովբայ. "Ոչ ապաքէն առ հասարակ ամրացուցեր զներքին և զարտաքին տան նորա"։ Սան էր. լուր և Յովբայ. "Աչք էի ես, ասէ, կուրաց և ոտք կաղաց և հայր որբոց"։ Զոր օրինակ որ ոչ մեկնիցէ զանձն յայլոց վշտաց՝ ոչ երբեք և յիւր ինչ չարութիւնս վշտանայցէ՝ յորժամ 'ի վշտակից լինելոյ ուսանիցի, նոյնպէս և որ չկամիցի վշտակից վշտաց ուրուք լինել՝ յիւրումն առնուցու զչափ ա՟մի։ Զոր օրինակ և 'ի մարմնի եթէ ձեռնն ոտնին փտելոյ չլինիցի վշտակից մերձեալ զվէրն, լուանալ զթարախն և դեղ 'ի վերայ դնել, յիւր վիշտան առնու զչափ ցաւոց. և որ չկամեցաւն սպասաւոր լինել ընկերին մինչ արտաքոյ քան զվիշտսն էր, ինքն գտանիցի 'ի նոյն վիշտս չարչարեալ։ Քանզի անտի ընդհարատեալ ցաւն գայցէ հասանիցէ և 'ի նա. և այնուհետև ոչ ինչ սպասաւորութեան փոյթ առնիցէ, այլ վասն բժշկութեան և յախտէն բուժելոյ։ Այնպէս և աստ, որ ոչ կամի ընկերին վշտակից լինել՝ ինքն անկանիցի 'ի տրտմութիւնս։ Ամրացուցեր փակեցեր, ասէ, զներքին և զարտաքին նորա, չիշխեմ մերձենալ։ Չարագոյն չարալլուկ եղև. այլ չարադանութիւն բազում բարութեանց եղև պատճառք, կրկին արարք, մեծ վարձք, առաւել արդարութիւն, մեծապայծառ պսակք, վայելուչ յաղթութիւնք. քանզի հոգևորք և մարմնաւորք յաճախումն յարդարեցին։ Կորոյս որդիս, և առ փոխանակ նոցա այլս. ոչ զնոյնս, այլ այլ որդիս. սա և զնոսա եւս ապրեցոյց 'ի յարութեանն։ Եթէ զնոսա էր յարուցեալ, նուազէր թիւն. և աւասիկ այլս եւս փոխանակ այնց, և զնոսա ես ածեալ շուրջ պահիցէ նա-

վաւ 'ի յարութեան ։ Այս ամենայն նմա յայնմանէ եղև՝ զի առատն էր 'ի տուրս, զոր և մեք արասցուք, և նոցա պարգևացն հասանիցեմք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## ՃԱՌ ՈՒԹԵՐՈՐԴ

“ Զայս գիտասջիր, զի յաւուրս յետինս յարիցեն ժամանակք դժնդակք. զի լինիցին մարդիկ անձնասէրք, արծաթասէրք, հպարտք, ամբարտաւանք, հայհոյիչք, ըղհարս և զմարս անարգանք, անշնորհք, ապիրատանք, անսուրբք, անգութք, անհրաւէրք, բանսարկուք, անժուժք, անհամբոյրք, անբարիք, մատնիչք, յանդգունք, ամբարտաւանք, ցանկասէրք առաւել քան ա̃ծասէրք ”։

Եթէ ոք այժմ ընդ հերետիկոսաց դժկամակ ինչ լինիցի, գիտասցէ թէ անդէն 'ի սկզբանն այսպիսի ինչ եղև, մինչ սատանայի առընթեր կացեալ ճշմարտութեանն ատելութիւն։ Խոստացաւ ա̃ծ 'ի սկզբանէ բարութիւնս, եկն սատանայ և խոստացաւ փոխանակ այսր սուտ բարութիւնս։ Տնկեաց ա̃ծ զդրախտն 'ի հանգիստ և 'ի փափկութիւն մարդոյն, պատրեաց բանսարկուն և ասէ. “ Եթէ ուտիցէք 'ի ծառոյն, լինիցիք իբրև զա̃ծս ”։ Քանզի արդեամբք ոչ ինչ կարէ ցուցանել, բանիւք մեծամեծս խոստանայ։ Նախանձք և խարդաւանք։ Յետ այսորիկ գործեաց չարիս 'ի մէջ Կայենի և Աբելի, ապա 'ի մէջ որդւոցն Նոյ և զաւակացն մարդկան, յետ այնորիկ 'ի մէջ Քամայ և Աբեթի, Աբրահամու և Փարաւոնի, Յակոբայ և Եսաւայ, և մինչև ցմախճան այնոցիկ. առ Մովսիսիւ կախարդքն էին հակառակք, առ մարգարէիւքն սուտ մարգարէքն, առ առաքելովքն սուտ առաքեալքն, Քրիստոսի հակառակ՝ Նեռն։ Այլ յառաջին ժամանակս և առ յայս, և յայնժամ Թևդաս և Սիմոնն, և առաքելովքն և այլք ևս, որպէս Հերմոգենէս

և փխլեալ. և չիք ժամանակ յորում ոչ եկաց առըն-
թեր ճշմարտութեան ստութիւն:

Այլ արդ մի ինչ վհատեսցուք. զի անդուստ իսկ 'ի բնէ էին, և յառաջագոյն գուշակեցաւ. և վասն այնորիկ ասէ. "Օ այս գիտասջիր, զի յաւուրս յետինս յարիցեն ժամանակք դժնդակք. զի եղիցին մարդիկ անձնասէրք, արծաթասէրք, հպարտք, ամբարտաւանք, հայհոյիչք, զհարս և զմարս անարգուք, անշնորհք, անսուրբք": Այլ նմանագոյնս իսկ ասէ. որ առ երախտաւորն անշնորհս գտանիցի, զիա՞րդ իցէ զի առ այլս շնորհակալս լինի: Անշնորհն՝ անգութ և անագորոյն: Անհասարկուք, ասէ. զքսուաց և զչոգմոգաց ասէ և զբամբասողաց. որք զանձանց բարի ինչ չգիտիցեն, իբրև 'ի մեծթարութիւն ինչ անձանց զայլոց զանստգիւս կարծիս և զվարս հայհոյեն, և ինքեանք բիւր չարիս և անօրէնութիւնս գործեն: Անժոյժք նոքա են՝ որ ոչ լեզուի և ոչ որովայնի համ դնիցեն և ոչ այլ իմիք: Անհամբոյրք. անտի անագորոյնութիւն, և անդուստ անգթութիւն՝ յորժամ բարեացն չարիս հատուցանեն, և չունիցին գութ և խնամ ընդ ումեք: Արծաթասէրն անձնասէր է, և նոյն անշնորհ, և ապալասանք: Այս այնուհետև անբարիք և յանդգունք և մատնիչք բարեկամութեան լինին, յորժամ չկայցեն 'ի հաստատութեան. անտի այնուհետև յամբարհաւաճութիւն և յամբարտաւանութիւն յօժարին:

"Ցանկասէրք առաւել և ոչ ա͞ծասէրք. ունին զկերպարանս ա͞ծպաշտութեան, և 'ի զօրութենէն նորա ուրացեալ են": Այլ 'ի հռովմայեցւոց թղթին այսպէս ինքն գրէ. "Ունել, ասէ, զկերպարանս գիտութեան և ճշմարտութեանն յօրինաց": Անդ 'ի գովութեան կարգի դնէ, և աստ քան զամենայն թերութիւնս զայս ինքն մեզս դժնդակս ցուցանէ: Այլ ընդէ՞ր արդեօք. քանզի ոչ եթէ որպէս անդ նշանակէ, 'ի նոյն միտս առնուցու և աստ. զո՞ր օրինակ զպատկեր բազում անգամ 'ի նմանութիւն ինչ իրիք առնու, և մերթ յանշունչ և 'ի դոյզն ինչ իրս. որպէս և ինքն իսկ այլուր գրէ՝ եթէ "Այր մարդ ոչ պարտի ծածկել զգլուխ, զի պատկեր և փառք ա͞յ է", և մարգարէն ասէր. "Բայց միայն իբրև զպատկեր շրջի ամենայն մարդ", և զառաւնն մարթի 'ի թա-

զաւազակաց օրինակին առնուլ. “Ննջեաց, ասէ, իբրև զառիւծ, իբրև զկորիւն առիւծոյ, և ով իցէ որ զարթուցանիցէ զնա,,. և երբեմն “Յափշտակիցեն իբրև զառիւծ,, ասէ, զի մռնչէ և յափշտակէ: Այնպէս և մեք առնեմք. քանզի իրքն յօդուածոյք իցեն, և ազգի ազգի կերպարանս ունին, նմանագոյնս իսկ բազում պատկերս և յօրինակս առնուն: Այսպիսի ինչ՝ յորժամ ընդ կին գեղեցիկ զարմանալ կամիցիմք՝ 'ի պատկերի հանեմք, և ընդ հանճարյն 'ի պատկերի յորժամ զարմանալ կամիցիմք՝ ասեմք թէ խօսի, և յորժամ խօսի իսկ՝ ոչ ընդ այն ինչ զարմանամք թէ խօսի անդ. քանզի մօտ եկն 'ի նմանութիւն՝ այնպէս զարմանամք թէ խօսիցի. և աստ զի գեղեցիկն իսկ է:

Այնպէս և 'ի կերպարանսն. քանզի աստ օրինակ և պատկեր և վարդապետութիւն է և նախանկար տիպք ա̃ծպաշտութեան. և յառաջնումն անշունչ և մեռեալ և շաչիւն և շառաչիւն և 'ի կեղծաւորութի: Այս արդարեւ կերպարանք իսկ են առանց զօրութ̃, հաւատք առանց գործոց: “Ունին, ասէ, զկերպարանս ա̃ծպաշտութ̃,,: Այս յիրաւի իսկ. զոր օրինակ մարմին գեղեցիկ, զուարթ և վայելուչ, զօրութ̃ չունիցի՝ պատկերացն նկարելոց նման է, նոյնպէս և հաւատք առանց գործոց: Դիցուք գրեացուք եթէ զամենայն իսկ զախտս ոք ունիցի, արծաթասէր և յանդուգն և ապիրատ իցէ, և ճշմարիտ հաւատս ունիցի. զինչ օգուտ է եթէ չունիցի այնպիսի ինչ կարգս որք քրիստոնէութեան վայել իցեն, յորժամ չունիցի ինչ զայնպիսեացն որ զա̃ծպաշտութիւնն նկարեալ յանձինս ցուցանիցեն, այլ անցեալ զանցանիցէ զհեթանոսօք ամբարշտութեամբ, յորժամ այլոց ևս որ ընդ նմա կեան՝ իբրև զախտ ինչ ապականիչ լինիցի, յորժամ 'ի հայհոյութիւն ա̃յ գործս գործիցէ, յորժամ բամբասիցէ զկրօնսն գործովք:

“Յայնպիսեացն, ասէ, 'ի բաց մերժեաց,,: Եթէ յետին ժամանակս լինիցին այնպիսիքն, զիա̂րդ անդէն իսկ ասէր թէ 'ի բաց մերժեաց: Ամբան է թէ և յայնժամ էին ոմանք այնպիսիք, թէպէտ և ոչ յաճախագոյնք, այլ սակայն էին, և զգուշութիւն տայ նմա և ամենեցուն մերժել յայնպիսեացն: “Ի յայնպիսեացն են, ասէ, որ մտանեն տանէ 'ի տուն, և գերեն զկանայս

ծեղջակուտեալս մեղօք, վարեալ յազգ ազգ ցանկութիւնս, որք հանապազ ուսանին և ՚ի գիտութիւն ճշմարտութեան չկարեն հասանել,,: Տեսանես, զի զառաջին զէնն ՚ի գործ արկանէին զոր բանսարկուն եբեր ընդդէմ Ադամայ: Մարդիկն մտանեն, ասէ, տանէ ՚ի տուն. զլրբութիւն և զպատրանս և զմեղս ևս ցանց յայտ առնէ սպրդելով մտանելովն: "Եւ գերեն, ասէ, զկանայս,,: Որպէս զի կանանցն իսկ և առանց արութեան էր, վաղվաղակի անկանէին ՚ի հրապոյրս այնպիսեացն. քանզի կանանց է վաղապատիրն լինել. մանաւանդ թէ ոչ կանանց, այլ կանանց վատթարաց: "Ծեղջակուտեալս, ասէ, մեղօք,,: Տեսանես ուստի լինէին վաղվաղակի պատրեալ. ՚ի մեղացն և ՚ի չգիտելոյ բարի ինչ գանձանց: Եւ կարի իսկ սերտիւ ասաց՝ ծեղջակուտեալս. զյաճախութիւն մեղացն յայտ առնէր, զկրութիւն և զմեղկութիւն:

"Վարեալ յազգի յազգի ցանկութիւնս,,: Ոչ եթէ զընութիւն բամբասէ, քանզի ոչ եթէ զամենայն կանանց ասաց, այլ զխոլխաղխի կանանց: Ո՞ր ինչ է յազգի յազգի ցանկութիւնսն: Նաղում ինչ անհնարին անու, զանձնադիւրութիւն, զփափկութիւն, զանհաւատութիւն և զյայրատութիւն. յազգ յազգ ցանկութիւնս, յընչից, ՚ի փառաց, ՚ի փափկութենէ, ՚ի յանդգնութենէ, ՚ի յանպարտան ինչ պատուոյ: Ստերես և յայլ ինչ աղտեղութիւն ցանկութեանցն անկանէիցէ: "Հանապազ ուսանին,,. զայնպիսի զկանանց ասէ. "և երբէք ՚ի գիտութիւն ճշմարտութեան չկարեն հասանել,,: Ընդէր. ոչ եթէ ներելով ինչ ասէ զայս զհրացանէն, այլ կարի իսկ քաջ ամբաստան լինի. քանզի զանձինս ընկղմեցին յազգի ազգի ցանկութիւնս և ՚ի մեղս, անտի իսկ կուրացան միտք նոցա:

"Որ օրինակ Յաննէս, ասէ, և Յամբրէս հակառակ եղեն Մովսէսի, նոյնպէս և նոքա, ասէ, հակառակ կայցեն ճշմարտութեանն,,: Ո՞վ որ իցեն նոքա. կախարդքն որ առ Մովսէսիւ էին: Եւ ընդէ՞ր այլ ուրեք չասացէ զանուանս նոցա. կամ առանց գրոյ իսկ կարգեր զայլ ՚ի մէջ ժողովրդեանն, և կամ ՚ի հոգւոյն իմացեալ Պաւղոսի ասէր: "Նոյնպէս և սոքա, ասէ, հակառակ կայցեն ճշմարտութեան, մարդք ապականեալք

մտօք, անփորձք 'ի հաւատս. այլ ոչ երբէք եկեսցեն յառաջ 'ի լաւ անդր,,: Վասնզի անմտութիւն նոցա յայտնի լինիցի ամենայնի, որպէս և նոցայն իսկ եղև: Այլ ոչ, ասէ, եկեսցեն յառաջ 'ի լաւ ինչ: Իսկ զիա՞րդ այլուր ասէ. "Եկեսցեն յառաջ յամբարշտութիւնս,,. և աստ թէ չգայցեն յառաջ: Այդ զայն ասէ՝ եթէ սկիզըն արասցեն նորոգելոյ և մոլորեցուցանելոյ, և չկայ-ցեն յայնմ ևեթ մոլորութեան, այլ ցանգ գտանիցեն զնոր խաբէութիւնս և զկրօնս ապականիչս. քանզի չդա-դարէ ուրեք մոլորութիւն: Իսկ աստ զայս ասէ՝ թէ չխա-բիցեն, չյափշտակիցեն. թէպէտ և զառաջինն կարծեն թէ զեղծել զոք կարիցեն, այլ վաղվաղակի նշաւակի-ցին: Իսկ զի զայսմանէ ասէ, լուր զինչ ասէն. "Զի անմտութիւննոցա յայտնի լինիցի, ասէ, յամենայնի,,: Իսկ ուստի՞ յայտ իցէ: "Որպէս նոցայն իսկ եղև,, ասէ: Վասնզի յամենայն կողմանց թէպէտ և առ ժամանակ մի փայլածէ կողմն մոլորութեան, չկայցէ մնասցէ մինչև իսպառ: Վասնզի այնպիսի իսկ է որ ինչ բնութեան չէ բարի, այլ թուիցի ևեթ բարի. առ ժամանակ մի ծաղ-կէ և փայլածէ, և յանկարծօրէն խամրի: Այլ ոչ ե-թէ մերքս այնպիսի ինչ իցեն. և այսմ դու իսկ ինքնին քեզէն վկայես, զի չեն խաբէութեան մերքս. քանզի ո՞վ ոք վասն խաբէութե՟ և մեռանել ես յանձին ունէր:

"Այլ դու, ասէ, զհետ եկիր վարդապետութեան իմոյ,,. որպէս զի հաստատուն իսկ եղեր. ոչ եթէ ընդ վայր ինչ յուզի անկար, այլ ստէպ իսկ զհետ եկիր: Իսկ յասելոյն թէ զհետ եկիր վարդապետութեան իմոյ՝ յայտ առնէ թէ բազում ժամանակք են նորա յաշա-կերտութեան. զայս զբանէն ասէ: "Առաջնորդութե՟ իմոյ,,, զվարուցն. "զյօժարութեան իմոյ,,, զախոր-ժական կամացս և զոգւոցն պատրաստութեան: Ոչ մի-այն ասէի զայս, այլ և առնէի. ոչ միայն բանիւք կա-տարէի, այլ և արդեամբք գործ ցուցանէի: "Զհա-ւատոցն իմոց, զերկայնմտութեան,,: Իսկ զիա՞րդ զայլոն չընդոստուցանէր մի ինչ զայսպիսի իրաց: "Զսիրոյն, ասէ, զհամբերութեան,,, զոր նոքա չունէին: "Զեր-կայնմտութեան,,, զոր առ հերձուածողսն բազում ան-գամ ցուցանէր: "Զհամբերութեան,,, զոր 'ի հալա-ծանսն և 'ի չարչարանսն: Վասնզի այս երկու իրք կարի

խառնեցուցանենն զկարգադրութիւն այր, յորժամ՝ հերձուածողք բազում իցեն ։ Բայց սակայն զայնմանէ բազում ինչ ճառեաց՝ թէ և յառաջ էին և յետոյ լինիցի, և չիք ժամանակ որ յայնմանէ սուրբ զտանիցին, և մեզ չկարիցեն ինչ վնասել՝ եթէ յաշխարհի ոչ միայն անօթք ոսկեղէնք և արծաթեղէնք են, այլ և խեցեղէնք և փայտեղէնք ։

Եւ արդ միտ դիր զիարդ տակաւին զնեղութեանց ճառէ ։ "Որպիսի ինչ իրք, ասէ, անցին ընդ իս յԱնտիոք, յիկոնիացւոց և 'ի Լիւստրացւոց քաղաքին"։ Եւ զիա՞րդ զ'ի բազմացն զայս ևեթ առիցէ ։ Քանզի այլոցն և նա իսկ տեղեակ էր ․ և թերևս իբրև զնոր ինչ իրաց յիշեցէ, և ոչ իբրև զվաղուց գործելոց ։ Եւ չհամարի զամենայն մի ըստ միոջէ, քանզի չէր սնապարծ ոք և փառասէր ․ յաշակերտին մխիթարութիւն, և ոչ յանձին ինչ 'ի ցոյց ասէ զոր ինչ ասէն ։ Անտիոք սա զՊիսիդեայն ասէ և ոչ զԱսորւոց, և Լիւստրա ուստի Տիմոթէոսն էր ։ "Որպիսի հալածանաց համբերեցի", ասէ։ Եւ երկոքեան իսկ մխիթարութիւն էին ․ զի և ես առաւել յօժարութիւն ցուցանէի, և յա̄ծակոյս կողմանէն չլինէի 'ի ձեռաց թողեալ ։ Քանզի չէք ասել թէ ա̄ծ ինչ մատնեաց զիս, այլ զպսակն իմ պայծառագոյն գործէր ։ "Որպիսի հալածանաց, ասէ, համբերեցի, և յամենայնի փրկեաց զիս Տէր"։

"Եւ ամենեքին որ կամիցին ա̄ծպաշտութեամբ կեալ 'ի Քրիստոս Յիսուս, 'ի հալածանս կայցեն"։ Ընդդէ՞ր իսկ ասիցեմ զանձնէ ինչ ․ այլ իւրաքանչիւր ոք որ կամիցի ա̄ծպաշտութեամբ կեալ, 'ի հալածանս կայցէ ։ Հալածանս աստ զնեղութիւնսն և զվիշտսն կոչէ ։ Քանզի չիք հնար մարդոյ որ ընդ առաքինութեան ճանապարհ գնայցէ՝ առանց տրտմութեանց և նեղութեանց և վշտաց և փորձութեանց լինել ։ Եւ արդարեւ իսկ ոչ, զի որ ընդ նեղ և ընդ նուրբ ճանապարհն գնայցէ՝ որ լուաւ թէ յաշխարհի նեղութիւն կրիցէք ։ Եթէ յայնմ ժամանակի ասէր Յոբ, "Փորձութիւք են կեանք մարդոյ 'ի վերայ երկրի", որչափ ևս առաւել այժմ և առայապայ ։

"Մարդք չարք, ասէ, և կախարդք յառաջ եկեսցեն 'ի չարն, զի մոլորեցուցանիցեն և մոլորեսցին"։ Մի՛ ինչ

խռովեցուսցէ զքեզ այն եթէ նոքա 'ի դիւրութեան իցեն, և դու 'ի փորձութիւնս. քանզի այնպիսի իսկ են պատճառք իրացն: Եւ յիմոցս կարող ես ուսանել՝ եթէ չիք հնար մարդոյ որ ընդ չարեան կռուիցի, եթէ ոչ 'ի նեղութիւնս մտանիցէ. և նոցայն չէ յառաջ գալ, այլ կարի իսկ յետս երթալ. քանզի 'ի չարն երթան յառաջ: Եւ մի ոք յայնցանէ որք 'ի պատերազմի կայցեն, հանգիստ խնդրեսցէ և մի 'ի դիւրութեան լինել. քանզի չիք ոք որ 'ի կռիւ կրթիցի՝ թէ փափկանայցէ, և ոչ որ 'ի մարտ պատրաստիցի՝ թէ 'ի խրախուճս կայցէ: Մարտ է յաշխարհիս կռիւ և պատերազմ, նեղութիւնք և անձկութիւնք և փորձութիւնք, ասպարէզք նահատակաց, հրահանգ առաքինեաց: Այլ ժամանակք են հանգստեան, այժմ քրտանց և աշխատութեանց ժամանակ: Չիք ոք որ մերկանայցէ և օծանիցի եթէ հանգիստ խնդրիցէ. քանզի յըմբշամարտ 'ի կռիւսն մերկանան օծանին, ապա 'ի մրցել և յոգորել մտանին: Եթէ հանգիստ խնդրիցես, ընդէ՞ր մերկացար, հի՞մ զբաղուկս մարձիցես, ե՞ր ուժ 'ի մարտ կազմիցիս: Աղէ աստ, վասն է՞ր և ցանկութեանցն ժուժկալիցես, և ընդէ՞ր բռնութեան բնութեան տայցես պատերազմ:

“Այլ դու հաստատուն կաց յայդմ զոր ուսարդ և հաւատարիմ եղեր, գիտես յումմէ ուսար, զի գիտես որ կարողն են խրատել զքեզ”: Որպէս մարգարէն Դաւիթ խրատէ, թէ “Մի՛ նախանձիր ընդ չարս”, զոյն և աստ սա տայ խրատ: Դու, ասէ, հաստատուն կաց յայդմ զոր ուսարդ և հաւատարիմ եղեր, այսինքն հաւատացեր եթէ արդարեւ այն իսկ են կեանք: Եւ եթէ հակառակս ինչ այնմ որում հաւատացերն տեսանիցես, մի՛ խռովիցիս. նա և Աբրահամ հակառակս տեսանէր, այլ ոչ ինչ ախտացաւ. լուաւ թէ Սահակաւ կոչեսցի նմա զաւակ, և զՍահակ սպանանել հրամայեցաւ, և չխռովեցաւ ինչ և զանգիտեաց:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Ո՜հ որ գայթակղեցայ չարեօքն. քանզի զայն զինչ յառաջագոյն իսկ գուշակեցի։ Եւ արդ զինչ, յորժամ բարիքն են ուրախ լինիցին, և չարքն պատժիցին։ Մ՝խոհեմն 'ի դէպ է լինել և միաստանն ոչ ինչ ընթանա։ Զարացն ասանձել կարի իսկ 'ի դէպ է, և բարեացն 'ի խրախուսն լինել ոչ ինչ կարի ընթանն է։ Զէ որ համագայն Պաւղոսի, սակայն և նա 'ի նեղուն անցոյց զնոս ժամանակս, յարատասու և 'ի հեծութիւ զգայգ և զցերեկ. արտասուօք զգայգ և զցերեկ զերեամ մի խրատէր և ոչ դադարէր. և այլուր՝ ասէ "Տայ նեղութիւնս, ասէ, որ 'ի վերայ իմ կուտեին"։ Ոչ եթէ երբեմն ուրախ լինէր և վաղվն անդր տրտմէր, այլ համապազ 'ի ցաւս տրտմութեն վշտանայր։ Եւ զինչ ասէ՝ եթէ մարդք չարք յառաջ եկեացեն։ Ոչ 'ի բարիս ինչ, այլ 'ի չարիս. չասաց եթէ հանդարտեան համանիցեն, այլ թէ 'ի չարիս յառաջ գայցեն. չար է և ոչ բարի առնալոյ յառաջադիմութիւն։ Զասաց թէ 'ի դիւրութեան լինիցին յորժամ առանձիցին։ Պիտանձիր թէ վասն այնր առանձին, զի մի համարիցիս եթէ առանց պատժոց են մեղքն։ Ո՛չ իհամբաւդեհենին չէ բաւական կարձել զմեզ 'ի չարեաց, զի զածուցանիցէ զմեզ 'ի բարուն չարեաց՝ ընդոստուցանէ փոքր մի և զարթուցանէ։ Ոչ թէ մեղաւորն չտանջէր, չհամարէր որք թէ ոմն վարիցէ զմարդիկ. և եթէ ամենեքեան ամէն առանձէին, չհաւատայր որք բնաւ թէ յարութիւն գուցէ, այլ ամէն իսկ առնուցուն զհատուցմունս. վասն այնորիկ տանջէ և չտանջէ։ Եւ մին իրի իսկ արդարքն ամէն նեղին, քանզի պատուղ իւրաք և նշդեհք և յօտար աշխարհի են, և ընտրութեան միայն ազազաւ համբերեն պէսպէս նեղութեանց։ Յոր և տայ զխարդ ասէր զՅովբայ. "Կարծիցեն թէ յայլ սակս ինչ խօսեցայ ընդ քեզ, ոչ, զի արդար երևեսցիս"։ Իսկ մեղաւորքն թէ յանկարծ այսպիսի ինչ ուրեք վշտանայցեն, գիտասցեն եթէ ընդ մեղացն վրէժս պահանջեն։

Եւ արդ յամենայնի գոհացարուք զնոյ, եթէ այսպէս և եթէ այնպէս ինչ լինիցի. քանզի և երկոքին յօգուտ

գործին ։ Ոչ ասել զոք և ոչ ամենևին ընդ վայր հարկանել առնէր զոր ինչ առնիցէն, այլ զերկուսին վասն զարման և խնամ տանելոյ ։ " Դու քեզէն, ասէ, գիտես իսկ զի 'ի մանկութենէ զգիրս սուրբս գիտես „ . յառաջին իսկ տիոց ուսար զգիրս սուրբս . զծնեղէն օրինացն ասէ, թէ ըստ այնմ իսկ մնար 'ի մանկութենէ . զի և անտի իսկ հաստատուն լինիցին հաւատք քո, և չկարիցէ ինչ վնասակար լինել . քանզի 'ի խոր խառնեցաւ արմատն, և 'ի բազում ժամանակաց հետէ պարարեցաւ, և չկարիցէ ոք եղծանել ։ " Որ կարողն են իմաստուն առնել զքեզ „ . այն իսկ է՝ եթէ չտայցեն քեզ թոյլ զանմտաց ախտ ախտանալ ։ Զի որ զգիրսն գիտիցէ որպէս արժան է գիտելն, չգայթակղի յիրաց ինչ որ լինիցին, այլ ամենայնի ժուժկալութեամբ համբերէ, և զամենայն ինչ 'ի հաւատոն ապաստան առնէ և յանհասական ա̃յ տեսչութիւն . քանզի բանս և օրինակս զտանէր գիրս ։ Իսկ և զամենայն ինչ չքննել և զննուչառնուլ յանձն գիտել՝ քան զամենայն ինչ գիտելոյ կարի մեծ նշանակ է ։ Իսկ եթէ կամիք, օրինակ ինչ 'ի մէջ բերից ։

Դրեսջիր թէ գետ իսկ իցէ, և մանաւանդ թէ գետք իսկ . և չիցեն հասարակ խորքն, այլ իցեն տեղիք որ խոր իցեն, և իցեն որ ծանծաղ, և խորք այնպիսի ինչ՝ որք և հեղձուցանել կարիցեն շրջանօքն ։ Իսկ անդ ոչ եթէ կամիլն ամենեցուն օգուտ իցէ, այլ չկամելն զխորս քննել ։ Նա է որ ամենևին չգիտէ զչափ գետոյն, և թերևս կորնչիցի իսկ յանդգնութեամբ՝ որով զխորս գետոցն արհամարհէր . և որ ընդ ծանծաղն անցանիցէ, ոչ երբէք վնասի ։ Նոյնպէս և զա̃յ, որ զամենայն ինչ ոք կամիցի գիտել և առ բնաւն ժպրհել, նա է որ ոչ գիտէ ամենևին զա̃ծ ։ Ոչ որպէս և 'ի գետսն բազում տեղիք ծանծաղք են, և սակաւք խորք և շրջանք[1] ։ Ոչ այնպէս ինչ և ա̃յքն, այլ[2] բազում են որ անհասական և ծածուկքն են . չիք հնար քննել զգործս ա̃յ . և եթէ ըզգործսն ոչ՝ որչափ ևս առաւել զնա ։

Իսկ արդ զի ստիպիցես ընկղմել զանձն . զայն եւեթ

1 Յօրինակին շրջանք . եղաւ ըստ նախընթացին ։ 2 Յօրինակին գրեալ այլոց ։

խմս, եթէ զամենայն ա՟ծ դարմանէ, և բնաւին 'ի նոյն է խնամակալ, և զի կամակարք և անձնիշխանք եմք, և զի է ինչ որ ինքն ազդէ 'ի մարդն, և է ինչ զոր նորին կամացն թողլ տայ. և զի չկամի թէ չար ինչ լինիցի, և զի ոչ ըստ նորա կամացն լինի ամենայն, այլ և ըստ մերոց. ամենայն ինչ ըստ նորա կամաց, ըստ մերոց չարիքն միայն, բարիքն միայն և մերոց կամաց և 'ի նորա օգնականութենէն. և չիք ինչ որ 'ի նմանէ վրիպէ: Եւ մի վասն զի չիք ինչ որ 'ի նմանէ վրիպիցէ՝ համարիցիս թէ զամենայն ինչ նա ազդիցէ: Եւ քանզի դու գիտես, քեզէն իսկ համարեաց, զի՞նչ բարի, զի՞նչ չար, զի՞նչ ինչ որ ոչ բարի և ոչ չար իցէ. այսպիսի ինչ՝ բարի առաքինութիւն է, և չար յոռութիւն, ոչ չար և ոչ բարի՝ մեծութիւն և աղքատութիւն, կեանք, մահ: Թէ զայս գիտիցես, գիտասջիր ընդ սմին և զմիւսն, թէ արդարք յայն սակս նեղին զի պակասցին, և մեղաւորք զի ըստ մեղացն վրէժս պահանջեսցեն: Ոչ ամենայն մեղաւորք աստէն հատուցանեն վրէժս, զի մի 'ի յարութենէն բազումք անհաւատ գտանիցին. և ոչ ամենայն արդարք աստէն նեղին, զի մի չարիքն դրուատիք կարծիցին, և առաքինութիւն ատելի ինչ և անպիտան:

Եւ այսպէս կանոնք և սահմանք են. և զամենայն զոր և կամիցիս արկանիջիր ընդ նոքօք, և ապա չմտանիցես 'ի տարակոյս, չանկանիցիս 'ի վարանս թէ ընդէ՞ր այսպէս ինչ կամ այնպէս: Զոր օրինակ առ գրագէտսն վեց հազարին համար գլուխ է և կատարումն, ամենայն թիւն ընդ նովաւ մտանէ, և զընաւ բաժանելն և 'ի բազում մասունս քակել 'ի միմեանց՝ մարթ է վեց հազար կանոնին համարով կարգել, և զնովին թուով գան շուրջ բնաւ իսկ համարքն. և գիտեն որոց 'ի դպրոցի հրահանգս վարժեալ իցեն թէ այսպէս է. զոր դարձեալ համառօտիւք ասացից, և եթէ գիտէ ոք չգայթագղի: Զի՞նչ եթէ բարի է առաքինութիւն, և յոռի են չարիքն. և ոչ բարի և ոչ չար՝ ցաւք, աղքատութիւնք, վնասակարացն նենգութիւն, զրպարտութիւն և որ սոցին նման ինչ իցեն. և զի արդարքն աստէն նեղին՝ այն յայտ իսկ է թէ վասն էր նեղին. և եթէ իցեն ոմանք որ 'ի բարիս վայելիցեն, զի մի վասն ստէպ նեղութե՛ցն առաքինութիւն ատելի ինչ հաշուիցի. և չարքն յուրա-

խութեան են, զի անդ տանջիցին. և եթէ իցեն ոմանք որ աստէն տանջին, զի մի չարութիւն բարի ինչ կարծիցի, և զի մի անպատժական իրքն թուիցին. և զի ոչ ամենեքեան տանջին և ոչ բնաւք յուրախութեան են, զի մի ժամանակ յարութեան անհաւատ ինչ լինիցի. զի և 'ի բարեացն են ոմանք որ յոռութեան ինչ գործս ունին և աստէն թօթափեն, և են ոմանք 'ի չարացն որ ունին գործս բարիս և աստէն առնուն հատուցումն բարեաց, զի անդ պատժեսցին: Եւ այսու ամենայնիւ յայտ է՝ եթէ բազում ինչ գործք ա̃յ այն են որ անբաւ և անհասական են, և զի բազում ինչ 'ի մէջ է ընդ մեզ և ընդ նա, որպէս և չէ իսկ հնար ասել:

Եւ եթէ զայս ա̃մ ընդ մտաւ ածեմք, չիցէ ինչ որ զմեզ խռովել կարիցէ: Ոչ է յաճախ դրոց լուիցեմք, գտանեմք բազում ինչ այսպիսի օրինակս, որ կարող են, ասէ, իմաստուն առնել զքեզ 'ի փրկութի̃. և զգործոյն և զչգործոյն պատմեն գիրք: Եւ սմին իսկ երանելոյ լուր որ ասէր՝ եթէ "Յուսացեալ ես յանձն առաջնորդ լինել կուրաց, լոյս խաւարելոց, խրատիչ անզգամաց, վարդապետ տղայոց,,: Տեսանես, զի լոյս խաւարելոց են օրէնքն: Եւ եթէ որ զգիրն սպանող ցուցանել լոյս իցէ, որչափ ևս առաւել հոգին կենդանարար. և եթէ հինն լոյս, քանիօն ևս նորս ուր այսչափ ծագեալ ծաւալեցաւ, որպէս ոչ ինչ առաւել տեսանել զերկինս և զերկիր՝ որով զգեհենին ճառս ուսաք, և զարքայութեան աւետիս ընկալաք, որով զդատաստանէն ազդ եղև, և պարգևացն առհաւատչեայ տուաւ: Մի՛ ինչ մի հաւատասցուք անհանճար ինչ իրաց, քանզի խաբէութիւն է այն ամենայն:

Եւ արդ զիա՞րդ, ասեն. եթէ յորժամ ասեն և իրքն լինիցին՝ չիցէ՞ պարտ հաւատալ: Վասն այնորիկ լինի, զի դու այնպէս հաւատաս, թէ և չլինիցի ինչ: Գերի[1] եղև առ քեզ, և տէր եղև կենացն քոց, որպէս և կամիս՝ այնպէս մատակարարեա: Ըզէ ասա, եթէ առ աւազակապետ ոք թագաւորի որդի հատուած գնայցէ յանապատս և 'ի լերինս, ո՞չ ապաքէն ընդ նորա ձե-

1 Յոյնն Գերի արար զքեզ, և տէր եղև կենաց քոց, որպէս և կամի՝ այնպէս մատակարարէ:

ռամբ և ընդ իշխանութեամբ լինիցի. և չէ այնուհետև տէր ոչ կենաց և ոչ մահու իւրոյ, և ոչ զի յառաջագոյն զհանդերձեալսն ինչ գիտիցէ, այլ զի երկոցուն եղև տէր սպանանել և կեցուցանել զմանուկն. քանզի նա արար զնա իւր տէր, և իշխան է այնուհետև սպանանել և ապրեցուցանել, զի ընդ նորա ձեռամբ եմուտ, և նա է իշխան ամենայնի զինչ և կամիցի առնել: Մեծ մասն աշխարհի ընդ սատանայի ձեռամբ մտին անձամբ:

Եւ այլ ազգ ևս. յորժամ սովորեսցի ոք հաւատալ այնպիսի իրաց, բազում անգամ ըստ խաբեբայից մըտաց պատահէ, և բազում անգամ չպատահէ ինչ. և չպատահելն ոք չնայի, այլ թէ յանկարծ դուն ուրեք դիպեսցի: Այնպիսի ինչ կանխագէտ զօրութիւն առ ի որ հաւատացեալք եմ՝ ած զայնպիսիսն, ոչ առ մեծամտել ինչ ասեմ, զի յայնպիսեացն ազատանալ ոչ մեծամտութեան ինչ գործ է, այլ լաւութե: Բայց թէպէտ և մեղօք լի իցեմ, չզանգիտեմ ինչ յայնպիսի խաբէութենէ, և ոչ այնու իսկ զխոնարհութի ցուցանեմ, այլ հաւատամ շնորհօքն այ զամենեսեան ծաղր կացուցանել: Առ իս ած զկախարդն խաբեբայ. և եթէ ունիցի ինչ կանխածան գիտութիւն, ասասցէ զինչ պատահելոց իցէ ինձ վաղիւ: Այլ գիտեմ զի ոչ ասէ. քանզի ընդ թագաւորին իշխանութեամբ եմ, և չունի ինչ ինձ իշխանութիւն, և ոչ հնազանդել կարէ. քանզի հեռի եմ 'ի դարանիցն և 'ի ծածուկ այրիցն նորա, ընդ թագաւորին զինուորութեամբ զինուորեալ:

Այլ որ ասէն, այս անուն գողացաւ, և այս անուն զգողօնն յայտնեաց, չէ ճշմարիտ, այլ սուտ և ծաղու զրոյցք, քանզի չգիտեն ինչ: Եթէ գիտէին, նախ զիւրեանցն պարտ էին գուշակել. զի բազում անգամ կռոցն ձօնիք 'ի գողութեան չոգան. որչափ ոսկի ձուլեցաւ՝ ընդէ՞ր չգուշակեցին յառաջագոյն քրմացն իւրեանց. և յայտ է թէ չգիտեն ինչ, այլ վասն կարասւոյ հայթայթեն ընդ վայր, և չկարեն ինչ ստոյգ ասել: Յորժամ մեհեանք իսկ կռոցն այրեցին, և բազումք անդէն 'ի ներքս սատակեցին, ընդէ՞ր չխնայիցեն և զգուշանայցեն փրկութեան նոցա. այլ յանկարծադէպ ինչ երբեք իրք պատահեցին, եթէ յանկարծ ուրեք զոր ինչ ասիցեն լինիցի. որպէս կուրաց զի յանկարծ ինչ առ խար-

խափ ընդ ոտն հարկանիցէ։ Այն առ մեզ մարգարէք, որոց ոչ երբէք վրիպեցան բանք. ոչ եթէ զայս ասեն՝ և զմիւսն ստեն, այլ ամենայն ինչ ճշմարիտ ասեն. այն է հաւաստեաւ կանխասաց գիտութիւն։

Դադարեցէք յայնպիսի մոլորութենէ, աղաչեմ, եթէ Քրիստոսի հաւատայք. ապա եթէ չհաւատայցէք, զի՞ զանձինս խաբէք, մինչև ցե՞րբ յերկուս ոտս կաղայցէք։ Վասն է՞ր մատուցեալ հարցանես. ո՞չ գիտես թէ յորժամ մատչիցիս հարցանել, զանձն ընդ ծառայութեամբ արկանես։ Հաւատայցե՞ս իրացն զի հարցանես։ Ոչ, ասէ. չհաւատամ եթէ արդար խօսիցի, այլ փորձեմ։ Նա և փորձելն իսկ՝ եթէ արդար խօսիցի՝ չէ հաւատացեալ մտաց. չհաւատայ թէ արդարեւ սուտ խօսիցի, այլ տակաւին յերկմիտ խորհուրդս կայ։ Ընդէ՞ր հարցանես թէ զինչ լինիցի. զի թէ ասիցէ՝ թէ այս ինչ լինելոց իցէ, բայց դու զայս ինչ արա և ապրիս, նա և այնպէս իսկ չէ պարտ քեզ 'ի կռապաշտութիւն դառնալ. քանզի անմտութիւն է այն, և չլինիցի զինչ ասենն։

Իսկ եթէ ասիցէ ևս, և հնարս ինչ ոչ ցուցանիցէ, զի՞նչ շահ լինիցի այնմ որ իմանայցէ զիրսն. բայց միայն տրտմութիւն աւելորդ, որք 'ի գլուխ չելանիցեն, այլ տրտմութիւնն միայն զմիտսն հաշիցէ։ Եթէ յօգուտ ինչ էր այն, չնախանձէր ա͞ծ յայտնել մեզ. զերկնաւորսն ասաց և չնախանձեցաւ։ "Զամենայն ինչ, ասէ, զոր լուայ 'ի հօրէ իմմէ, պատմեցի ձեզ". և "Ոչ կոչեմ զձեզ ծառայս, այլ բարեկամս. բարեկամք իմ էք" ասէ։ Արդ ընդէ՞ր չյայտնեաց մեզ զայն։ Քանզի այնպէս կամի եթէ չունիցիմք մեք հոգս զանձանց, այլ զամենայն ինչ 'ի նա ապաստան արասցուք։ Արդ զի ոչ նախանձի, այնու յայտ է, զի առաջնոցն զամենայն ինչ ասէր. և վասն իշոց անգամ կորստեան, և այլ ինչ նոյնպիսի իրաց, քանզի ողջք էին. իսկ զմեզ ոչ կամի եթէ յայնպիսի ինչ 'ի խորխիրս անկանիցիմք, և մեզէն զանձանց վնասն[1] ծածկելոյ ինչ հոգայցեմք։

Այլ զի՞նչ հոգայցեմք։ Զի ուսանիցիմք զոր ինչ նոքա չուսանն։ Նոցայն ամենևին իսկ կարի մանունք էին, և մերս ընաւին մեծամեծք։ Զոր մեքն ուսաք, այս ինչ

1 Միւսն վասն ծածկելոցն ինչ։

է. զի յառնելոց եմք և անմահկանացու լինելոց, անեղծք և առանց ապականութեան. և թէ չիք վախճան կենաց մերոց, և թէ ամենայն ինչ անցանելոց իցէ, և թէ ընդ ամպս յափշտակելոց իցեմք, և թէ չարագործք պատիժս կրելոց են. և այլ ես բազում ինչ նման սոցին. և չիք ինչ որ սուտ իցէ: Եւ արդ չիցէ՞ լաւ զայս ամենայն գիտել, քան զի՞նչ մինչ կորուսելոյ զգիւտ ճանաչել: Գտեր զէշն, զի՞նչ աւելի շահս շահեցար. ո՞չ ապաքէն դարձեալ կորուսանելոց ես զնա այլով օրինակաւ. թէպէտ և նա զքեզ չթողուցու, սակայն դու թողուս զնա 'ի քում վախճանին: Իսկ զորոց իրաց ես ճառեցի՝ եթէ ունել կամիցիմք՝ հանապազ իսկ ունիմք:

Եւ արդ զայնր զհետ ընթացուք, զայնմանէ զբուռն հարցուք որ մշտն կայ հաստատուն. մի՛ նայեսցուք ընդ դիւթսն և մի՛ ընդ իղձս, որք չգիտիցեն ինչ և խոստանայցեն, և մի՛ ընդ հատահարցսն մտախաբս[1]. այլ ընդ ա̃ծ՝ որ զամենայն ինչ ճարտար գիտէ, և զամենեցուն գիտութիւն ունի 'ի բուռն. և այնպէս զամենայն ինչ ճանաչիցեմք՝ զոր պարտ է ճանաչել. և ամենայն բարութեանց հասանիցեմք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութի̃ և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ԻՆՆԵՐՈՐԴ

«Ամենայն գիրք ա̃ծաշունչք և օգտակարք 'ի վարդապետութիւն և 'ի յանդիմանութիւն և յուղղութիւն և 'ի խրատ արդարութե̃ են, զի կատարեալ իցէ մարդն յամենայն գործս բարութեան աւարտեալ»:

Բազում մխիթարութիւն և կատարեալ սփոփութիւն մատոյց 'ի գրոց. և յիրաւի իսկ տայ այնչափ մխիթարութիւն, զի մեծ իմն և տրտմական առնելոց էր: Ծէ Եղիշա մինչև ցյետին շունչն չթափեաց 'ի վարդապետ-

1 Մկրան ըմբռ խաբս:

տէն որ զնորակերտ նշանակ վախճանին տեսանէր, մանաւանդ թէ ոչ զվախճանելոյ, այլ զվերանալոյ, պատառեաց զձորձս, որպէս՞ ինչ զնմանէ կարծիցես՝ որ այնչափ սիրեցեալ և սիրէր, յորժամ լուաւ զվարդապետէն թէ մերձ 'ի մահ է, և չհասանէր 'ի մահու ժամ տեսանել. քանզի այն ժամանակ է որ քան զամենայն ժամանակս տրտմեցուցանէ: Ոչ այնչափ շնորհ ունիմք անցելոց ժամանակացն՝ եթէ զմերձ 'ի մահ ժամանակ վախճանելոցն չհասանէ տեսանել: Վասն այնորիկ նախ բազում մխիթարութի̃ւ ետ, և ապա զվախճանէն ճառէ. և ոչ վայրապար ինչ, այլ և այնպիսի բանս 'ի կիր արկանէ, որ բաւական էին զնա մխիթարել և ուրախ առնել. զի պատարագ կարգիցին իւրքն և ոչ վախճան, և ճանապարհորդութիւն, քանզի և էր իսկ յարութիւն փոխել: "Ես, ասէ, արդէն իսկ նուիրեալ եմ,,: Վասն այնորիկ գրեաց թէ "Ամենայն գիրք ա̃ծաշունչք և օգտակարք 'ի վարդապետութիւն և 'ի յանդիմանութիւն և 'ի յուղղութիւն են,,: Ամենայն իսկ գիրք. ամենայն, ասէ, զորոց ասացին թէ "Ի մանկութենէ քումմէ ըզգիրս սուրբս գիտես,,: Ամենայն իսկ այնպիսիքն ա̃ծաշունչք են, և մի ինչ երկմտեր:

"Եւ օգտակարք 'ի վարդապետութիւն և 'ի յանդիմանութիւն և յուղղութիւն, զի կատարեալ իցէ մարդն ա̃յ յամենայն գործս բարութեան աւարտեալ,,: Ի վարդապետութիւն, ասէ. եթէ զոր ինչ ուսանել պարտ իցէ և եթէ զոր չիցէ պատշաճ գիտել, անտի իմանամք. եթէ զստութիւն յանդիմանել, եթէ յուղղութիւն գալ և զգաստանալ: Ի մխիթարութիւն, ասէ, և 'ի սփոփութիւն. եթէ յաւելուլ ինչ պարտ իցէ 'ի փոյթն: "Զի կատարեալ իցէ մարդն ա̃յ,,: Վասն այնորիկ տուաւ 'ի գրոց մխիթարութիւն, զի մարդն ա̃յ կատարեալ լիցի: Ապա առանց այնր չէ մարթ կատարեալ լինել: Ընդ իմ, ասէ, զգիրս ունիս. եթէ կամիս ինչ ուսանել, կարող ես ուսանել անտի: Եթէ առ Տիմոթէոս որ հոգւոյն լի էր՝ այնպիսի ինչ գրեաց, որչափ ևս առաւել առ մեզ: "Յամենայն գործս բարութեան աւարտեալ,,: Ոչ վայրապար ինչ հաղորդ լինել, այլ սերտիւ և սեղմիւ կատարել:

"Զայս, ասէ, վկայութի̃ւ դնեմ առաջի ա̃յ և տեառն

Յիսուսի Քրիստոսի, որ դատելոց է զկենդանիս և զմե-ռեալս„. կամ զմեղաւորաց և զարդարոց ասէ, կամ զերթալոցն և որ տակաւին աստէն իցեն, կամ թէ բա-զումք իսկ մնայցեն կենդանիք 'ի վախճանի։ Երկեցուց զնա յառաջնումն թղթին. «Պատուէր տամ քեզ, ա-սէ, առաջի ա̅յ, որ կենդանի առնէ զամենայն„. և աստ ևս աՀագինս բարբառի՝ թէ որ «դատելոցն է զկենդա-նիս և զմեռեալս„։ Զհանդերձեալ դատաստանացն ասէ. քանզի և յարէ իսկ 'ի նոյն՝ թէ «յերևել ար-քայութեան նորա„. յորժամ փառօք արքայութեան յայտնիցի և դատիցի։ Ոչ որպէս այժմ եկն՝ նոյնպէս ինչ գալոց իցէ. և կամ զայն իսկ յայտ առնէ, վկայեմ. եթէ զյայտնութիւն նորա և զարքայութիւն վկայ կո-չեմ, և զայնմանէ ևս յուշ արարի քեզ։

«Քարոզեա, ասէ, զբանն. Հաս 'ի վերայ ժամու և տարաժամու. յանդիմանեա, սաստեա, մխիթարեա ա̅մ երկայնմտութբ„։ Զինչ իցէ 'ի ժամուն և 'ի տա-րաժամու. թէ մի ժամանակս ընտրիցես, այլ ա̅մ ժա-մանակ լիցի քեզ. մի յորժամ 'ի խաղաղութե և յան-Հոգութե միայն իցես, և մի յորժամ յեկեղեցւոջ ևեթ նստիցիս, և մի յորժամ 'ի վիշտս ինչ իցես. այլ թէ-պէտ և 'ի բանտի իցես, և շղթայք ընդ անձն իցեն, և կամ թէ 'ի մահ իսկ տանիցին, և եթէ սուր 'ի վերայ պարանոցի կայցէ՝ մի ինչ խորշիցիս 'ի սաստելոյ։ Քան-զի այն իսկ է ժամանակ դէպ սաստելոյ, յորժամ յան-դիմանութիւնն անդ մտանիցէ, յորժամ արդիւնքն իսկ երևեսցին։ Եւ մխիթարեա, ասէ։ Զոր օրինակ բժիշկ յորժամ զվէրն Հատանիցէ՝ վաղվաղակի դեղ 'ի վերայ դնիցէ. եթէ մի պակաս իցէ, և միւսն անպիտան գտա-նի։ Զի թէ առանց յանդիմանութեան սաստիցես՝ յանդգուգն երևիս, և չլիցէ ոք որ յանձն առնիցի։ Քան-զի յորժամ զվնասն 'ի մէջ բերիցես, ապա անսայ սաս-տին. եթէ զառաջինն սաստ 'ի գործ արկանիցես, ևս յանդգնագոյն լինի։

Եթէ յանդիմանեսցես և սաստիցես և մխիթարու-թիւն ինչ չմատուցանիցես, ամենայն իսկ եղծեալ ա-պականի։ Կարի ծանր է յանդիմանութիւն առանձինն, յորժամ չունիցի խառն զմխիթարութիւն։ Որպէս և կարի իսկ բուժիչ իցէ Հատանելն, թէ այլ ինչ մխի-

թար չիցէ 'ի ներքս՝ չարագան չարալլուկ առնէ զհիւանդն, և թերևս ոչ առնուցու իսկ յանձն գալ 'ի հատանելն. նոյնպէս և ասէ. "Ամենայն երկայնմտութ՟ և վարդապետութեամբ": Վասնզի յանդիմանողին երկայնմտութեան պէտք են, մի՛ վայրապար հաւատալ, մի՛ յանդուգն սաստ 'ի գործ արկանել. այլ ընդ սաստն և մխիթարութիւն խառնել: "Վարդապետութեամբ", ասէ. մի՛ ցասմամբ, մի՛ առ թշնամութեան, մի՛ իբրև զոտնհար 'ի վերայ հասանել, մի՛ իբրև թշնամի գտանել. զայն ամենայն 'ի բաց թողուլ: Եւ այլ զի՞նչ. իբրև զբարեկամ ընդ նմին վշտանալ, նմին չարչարակից լինել, սուգ առնուլ, այրել և խորովել վասն ընկերին յանցանաց. ամենայն, ասէ, երկայնմտութեամբ. ոչ դոյզն ինչ երկայնմտութեամբ:

"Զի եկեսցէ, ասէ, ժամանակ յորում ողջմտութե՟ վարդապետութեան ոչ անսայցեն": Մի՛նչ չև, ասէ, ընդվզեալ ամբարտաւանեալ իցեն, վաղվաղակի, ասէ, 'ի վերայ հաս ամենեցուն: Նմին իրի իսկ, ասէ, 'ի ժամու և 'ի տարաժամու. որպէս թէ հնազանդ իսկ ունիցիս զաշակերտս՝ այնպէս զամենայն ինչ վճարեսջիր ճոխութեամբ: "Ըստ իւրաքանչիւր ցանկութեանց, ասէ, կուտեսցեն իւրեանց վարդապետս": Զիք ինչ քան զայս օրինակ յայտնի. զանխտիր վարդապետացն բազմութիւն կուտելովն յայտ արար և յայնմանէ՝ զի յաշակերտացն առնուն զձեռնադրութիւն: "Կուտեսցեն անձանց վարդապետս ըստ մարմաջելոյ լսելեացն". յորժամ ընդ այն ուրախ լինիցին, խոտորիցեն լսելիքն: "Եւ 'ի ճշմարտութենէ անտի զլսելիսն թիւրիցեն, և յառասպելս կործանիցեն": Զայս ասէ՝ ոչ զի վայրապար 'ի տրտմութիւն ինչ արկանել կամի, այլ զի յորժամ լինիցի՝ առաքինութեամբ տանիցին. որպէս և Քրիստոս իսկ ասէր՝ եթէ "Մատնեսցեն զձեզ և տանջեսցեն և 'ի ժողովուրդս իւրեանց տանիցեն վասն անուան իմոյ". և այլուր սոյն իսկ երանելի, եթէ "Ես գիտեմ զի յետ իմոյ վախճանելոյ յարիցեն 'ի միջի ձերում գայլք յափշտակողք, որ ոչ խնայեսցեն 'ի խաշինս": Զայս ասէր զի արթունք լինիցին և զուարթունք կայցեն և զանցաւոր ժամանակս 'ի բարիս ծախիցեն:

"Այլ դու, ասէ, զուարթ կաց յամենայնի": Տե-

սանեաս, զի սմին իրի իսկ յառաջագոյն գուշակէ զայն. քանզի և Քրիստոս ասէր՝ մօտ 'ի վախճան յարիցեն սուտ քրիստոսք և սուտ մարգարէք: Նոյնպէս և սա յորժամ մերձ էր 'ի գնալ՝ ասէ. "Այլ դու զուարթ կաց յամենայնի, ճգնեաց". այսինքն թէ վաստակեա, հաս 'ի վերայ՝ մինչ չև ապականութեան տարածեալ իցէ, յամուր արկ զխաշինս՝ մինչ չև մտեալ իցեն գայլք. ամենայն ուրեք ասէ թէ ճգնեաց: "Զգործ, ասէ, աւետարանչի գործեա, զպաշտօնդ կատարեա": Ապա ուրեմն ճգնելն է գործ աւետարանչի, և անձամբ յանձնէ և յարտաքնոցն: "Զպաշտօնդ քո, ասէ, կատարեա". լից, 'ի գլուխ հան: Ահաւասիկ այլ ևս մեծ հարկ քան զճգնելն: "Զի ես, ասէ, արդ այսուհետև նուիրեալ եմ, և ժամանակ անձին իմոյ հասեալ կայ": Եւ չասաց թէ իմոյ զոհին, այլ որ ևս առաւելն. զի զոհիցն ոչ ա̃մ ինչ առ ա̃ծ եղանէ, իսկ նուէրն ամենևին իսկ:

"Զպատերազմ, ասէ, բարւոք պատերազմեցայ, զընթացսն կատարեցի": Բազում անգամ առեալ 'ի ձեռն զառաքեալ, և տեղւոյս այսմիկ հանդէս արարեալ՝ կարի իսկ 'ի վարանս մտանէի, թէ ընդէ՞ր այնչափ մեծամտէր Պաւղոս: Պատերազմ, ասէ, բարւոք պատերազմեցայ, զընթացս կատարեցի: Բայց արդ թուի ինձ թէ գտի ա̃յ շնորհօքն՝ թէ վասն էր զայս ասացէ. զտրտմութիւն աշակերտին կամի փարատել և քաջալերս տալ, թէ ես ահաւասիկ 'ի պսակն երթալոց եմ, որպէս թէ զամենայն ինչ կատարեալ իցէ, և բարւոք վախճանի հասեալ. խնդալ պարտ է և ոչ տրտմել: Վասն այնորիկ իսկ ասէ, թէ զբարւոք պատերազմ պատերազմեցայ: Որպէս և հայր ոք նստեալ առ որդւոյ տացէ մխիթարութիւն, յորժամ մօտ իցէ յորբութիւն հասանել, թէ որդեակ, մի՛ լար, մի՛ գեր գործեր, բարւոք կեցաք, և անուանի 'ի ծերութիւն հասաք, և զքեզ յաշխարհի թողումք, չէաք պարսաւ, չկեցաք նկուն, փառօք երթամք, պատուով ժողովիմք, և քեզ ևս պարծանք են մեր գործն և անունն. բազում վաստակ և առ թագաւորսն կան, երախտիք առ բարեկամս, որպէս զի ասիցէ՝ քաջ եղեաք, առաքինիք գտաք, զթշնամիս վանեցաք, անուն առաք, նշան յաղթութեան կանգնեցաք: Ոչ առ մեծամտել ինչ, այլ զի որդւոյն խրախոյս տայ-

ցէ անձինն յարգանօք, և զտրտմութիւն 'ի մտացն փարատիցէ, և բազում յոյս 'ի սրտին տնկիցէ առ յապայ ժամանակս, զի մի կարի ծանր իւրքն թուիցին: Քանզի չար և անհնարին աղէտք են անջատելն, որպէս և ինքն իսկ ասէր. "Մեք թէպէտ որբ մնացաք 'ի ձէնջ առ ժամանակ մի երեսօք և ոչ սրտիւք": Եթէ ինքն յորժամ մեկնեցաւ յաշակերտացն՝ այնպիսի ինչ վիշտս վշտանայր, որպիսի ինչ համարիցիս Տիմոթեայ վշտանալ. զի թէ մինչ կենդանւոյն մեկնէր 'ի նոցանէ՝ յարտասուս հարկանէր, որպէս և ինքն իսկ ասէր, "Յիշեմ զարտասուսն քո և լի առնեմ ուրախութեամբ", որչափ ևս առաւել 'ի վախճանելն: Զայս ամ վասն մխիթարութե գրեաց, և ամ իսկ թուղթս մխիթարութք լի է, և իբրև զկտակ ինչ գրեալ 'ի ժառանգութիւն:

"Զպատերազմ բարւոք պատերազմեցայ, զընթացս կատարեցի, զհաւատսն պահեցի": Իսկ եթէ բարւոք պատերազմ իցէ, ապա և քեզ պարտ է զնոյն յանձին ունել: Ուր շղթայք և կապանք են, և քերանք և մահ, բարւո՞ք պատերազմ իցէ: Այո, ասէ, քանզի վասն Քրիստոսի լինի, ամենայն պսակաց և պարգևաց է առիթ: Զպատերազմ, ասէ, բարւոք պատերազմեցայ: Չիք ինչ ազնուական քան զայն պատերազմ, չիք վախճան պսակացն, չէ մարդ պսակիչն և տեսողք մարդիկ, հրեշտակք են տեսողք, հրեշտակապետք հանդիսատեսք: Այտ զբազում աւուրս ջանան տառապին, և մի ժամ առնուն զպսակն և առժամայն անցանէ ցանկութիւն. իսկ անդ ոչ այնպիսի ինչ, այլ հանապազ 'ի պայծառութեան, միշտ 'ի փառս, ցանդ 'ի պատիւ: Իսկ արդ պարտ է, ասէ, ուրախ լինել, զի 'ի կաւոյ ապրիմ և 'ի հանդիստ երթամ:

Լուար թէ լաւ է անդրէն դառնալ և ընդ Քրիստոսի լինել, և թէ զընթացս իմ կատարեցի: Քանզի կռուել պարտ է և ընթանալ, կռուել և ժուժկալ լինել 'ի նեղութիւնսն. ընթանալ ոչ յախուռն ինչ, այլ յօգուտ: Իսկ արդարեւ գեղեցիկ իսկ է կռիւն, ոչ վայրապար ինչ առ 'ի զբօսուցանել զտեսողն, այլ շահս յաճախել և մեծ օգուտ գործել. և ընթացք որ ոչ[1] յօգուտ ինչ ծախիցի, և ոչ զուժոյ փորձ ցուցանել և սնոտի ինչ

[1] Իմն յոչ օգտակար, յանօգտակարս:

պարծանս, այլ զամենեսին յերկինս ձգէ, զմտաւս անդր հրաւիրէ․ քան զարեգական գնացս որ յերկնային ընթանայ՝ եւս պայծառագոյն էին ընթացքն Պաւղոսի զոր յերկրի ընթանայր։

Զիա՛րդ եւ որո՛վ օրինակաւ կատարեաց զընթացսն։ Ընդ ամենայն տիեզերս շրջեցաւ, ընդ հանուր եւ ընդ բնաւ քարոզեաց, եկեալ 'ի Գալիլէէ եւ 'ի կողմն արաբացւոց մինչեւ ցծագս եւ յեզերս երկրի հասեալ անցեալ տարածեաց զքարոզութիւն։ "Զի ինձ, ասէ, յԵրուսաղէմէ մինչեւ 'ի կողմանս Իւրիկեցւոց լնուլ զաւետարանն Քրիստոսի"։ Զամենայն աշխարհս ընթացաւ իբրեւ զթռչուն ինչ սլացեալ, մանաւանդ թէ եւս երագագոյն․ քանզի թռչունն վայրապար սլանայ, իսկ նա ոչ վայրապար ինչ, այլ թեւովք հոգւոյն սլացեալ՝ զամենայն զխափանս եւ զարգելս կտրէր անցանէր, ըզմահս, զնեղութիւնս, զվիշտս․ եւս երագագոյն էր քան զթռչուն։ Եթէ [1] լինէր միայն իբրեւ զթռչուն, թերեւս վաստակէր ուրեք եւ ագանէր․ այլ քանզի թեւովք հոգւոյն թեթեւանայր, զամենայն վարմիւք ցանկաքաթեւանցանէր, թռչուն թեւաւոր 'ի հրեղէն թեւոց․ "Զհաւատսն, ասէ, պահեցի"։ Բազում ինչ եւ նոր կամէին զնա կողոպտել, ոչ միայն խնամք մարդկան, այլ եւ սատանայք եւ մահք եւ բազում եւ այլ ինչ նոյնպիսիք․ եւ ամենայնի յաղթեաց արթնութեամբ եւ զուարթութեամբ։ Բաւական ամենայն իսկ էր 'ի մխիթարութիւն աշակերտին, բայց ինքն եւ զպարգեւսն եւս յաւելու․ Զո՞ր։

"Այսուհետեւ կայ մնայ ինձ, ասէ, արդարութեան պսակն"․ արդարութիւն զամենայն առաքինութիւն կոչէ։ Չէ, ասէ, պարտ տրտմել ընդ երթալս, քանզի պսակ երթամ առնուլ 'ի գլուխ 'ի ձեռաց տեառնն։ Մինչ աստ էի, պարտ էր տրտմել թէ զուցէ անկանիցիմ, զուցէ կորնչիցիմ։ "Զոր հատուսցէ ինձ, ասէ, արդար դատաւորն"։ Եւ չասաց թէ ինձ միայն, այլ թէ ամենեցուն որ սիրիցեն զյայտնութիւն նորա։ Այսու եւ զնա յորդորեաց․ թէ ամենեցուն, որչափ եւս առաւել Տիմոթեայ։ Չասաց թէ եւ քեզ, այլ ամենեցուն․ որպէս զի ասիցէ թէ առաւել եւս քեզ։

1 Գաղատեր Եթէ լինէր միայն իբրեւ զթռչուն․ յաւելուա 'ի յաւելեն։

Որպէս ինչ ոք սիրիցէ զյայտնութիւնն Քրիստոսի: Եթէ ուրախ լինիցի ընդ գալուստն, գործս ինչ արժանի ուրախութեան գործէ, զի զինչս անդր առաքիցէ. և բազումք և զանձինս ևս 'ի վերայ դնեն, զի հանդերձելոց բարութեանցն հասանիցեն, արժանի լինել երկրորդ գալստեանն, պատշաճ կերպարանօք տեսանել համարձակութեամբ և փառօք և լուսաւորութեամբ: Այն իսկ է սիրել զյայտնութիւն նորա: Որ սիրէ զյայտնութիւն նորա, այնպէս ջանասցի՝ զի յառաջ քան զհամաշխարհական յայտնութիւնն և մասնաւոր ինչ յայտնութեց արժանի լինիցի. քանզի ոչ եթէ ամենայն աշխարհի միանգամայն անդէն իսկ յայտնեսցի: Իսկ որպէս. լուր Քրիստոսի. “Որ սիրէ, ասէ, զիս, զպատուիրանս իմ պահեսցէ. ես և հայր իմ եկեսցուք և օթևանս առ նմա կալցուք„: Մի՛տ դիր, որպէս ամենեցուն իսկ առ հասարակ յայտնելոց է, նոյնպէս և առանձինն իւրաքանչիւր ումեք խոստանայ յայտնիլ: Եկեսցուք, ասէ, և օթևանս առ նմա արասցուք: Եթէ ոք սիրէ զյայտնութիւն նորա, զամենայն հնարս հնարեսցի, զի զնա առ յինքն կոչեսցէ, և ունիցի ցանգ յանձին վանաւոր, զի լուսաւորեսցի լուսովն. և մի ինչ անարժան գործս գալստեան ցուցանել, զի վաղվաղակի իսկ եկեալ ընակիցէ 'ի մեզ: Յայտնութիւն յայն սակս իսկ ասի, զի եկեալ հասեալ 'ի վերայ յայտնիցի և 'ի վերուստ ծագիցէ:

## ՅՈՐԴՈՐԱԿ

**Արդ եթէ այնպէս իցէ՝ զվերինն խնդրեսցուք, և վաղվաղակի ըմբռնեմք զճառագայթսն: Չիք ոք որ 'ի վայր հայիցի և ընդ քողով ծածկիցի՝ եթէ կարէ զարեգականն լոյս տեսանել. և չիք ոք որ աղտեղացուցանիցէ զանձն երկրաւոր իրօք, եթէ կարիցէ զարդարութեան արեգակն տեսանել. ոչ ումեք 'ի նոցանէ յայտնի՝ որ յայնպիսի իրս շաղեալ իցեն: Հայեաց փոքր մի 'ի վեր, ձգեա զանձն 'ի խորոց, փարատեա 'ի քէն զերկրաւոր մրրիկսն՝ եթէ կամիցիս զարեգակն տեսանել, եթէ կամիցիս յայտնութեն հասանել. եթէ հասանիցես յայտնութեան, արժանի լինիցիս համարձակ 'ի փառսն վայե-**

լելոյ։ Սթափեաց զգաստացիր, ասէ, մի՛ չնչեսցի 'ի քեզ այն չարութեան, զի մի՛ ուժգին բախիցի և զարկանիցէ զքեզ 'ի գետնի։ Մի՛ ապշիցի խաւարաւ և քարանայցէ սիրտդ, զի մի՛ բախիցի նաւն քո և բեկանիցի։ Մի՛ ոք լինիցի մեղմեղ և նենգաւոր, քանզի են 'ի ծովածածուկ քարանց որ գործեն անհնարին նաւաբեկութիւնք։ Մի՛ մնուցանէր գազանս անդրէն 'ի քեզ՝ զցանկութիւն ախտից ասեմ, զի ևս չար քան զգազանսն վնասակարք են այնպիսի ախտք։ Մի՛ 'ի խաղացս և 'ի սահաւոր ինչ իրս ապաստան լինել, զի կարիցես կալ հաստատուն։ Քանզի չէ հնար 'ի ջուրց հաստատուն կալ, 'ի վերայ վիմին ամենեքին իսկ հաստատուն անշարժ կայցեն. քանզի իբրև ջուրք են իրք աշխարհիս, ըստ այնմ թէ "Հասին ջուրք մինչև յանձն իմ". իբրև զուղխս սահին անցանեն։ Այլ են հոգևորքն. "Ի վիմէ, ասէ, բարձրացուցեր զոտս իմ"։ Մոմ և կաւ են երկրաւորքս. կորզեսցուք զանձինս յայնպիսեացն, և այնպէս կարիցեմք արժանի լինել յայտնութեանն Քրիստոսի։ Զամենայնի որ ինչ գայցէ 'ի վերայ մեր, լինիցիմք ժուժկալք համբերութեամբ. բաւական ընդ ամենայնի այն իսկ է 'ի մխիթարութիւն՝ զի վասն Քրիստոսի չարչարիմք։ Օծեղէն յուռութն յութեսցուք, և նովաւ ցածնուն ամենայն վիրացն զայրացեալ ցաւք։

Եւ զիա՞րդ իցէ, ասեն, վասն Քրիստոսի. եթէ 'ի զուր ոք յանկարծ պարտ առնիցէ այնպիսի ինչ իրաց համբերել, վասն Քրիստոսի՞ իցէ։ Եթէ առաքինութեամբ տանիցիս, եթէ գոհանալով համբերիցես և աղօթս մատուցանիցես վասն նորա, ամենայն վասն Քրիստոսի լինի։ Ապա թէ անիծանիցես և հայհոյիցես և վրէժ 'ի մտի դնիցես խնդրել, թէ և չկարիցես ևս ըղքէնն հանել, չէ այնուհետև վասն Քրիստոսի, այլ և վնասակար իցես, և զշահն ևս կորուսանիցես վասն քո զկամսն կատարելոյ։ Քանզի 'ի մեր ձեռս է օգուտ գտանել 'ի վշտացն և վնաս. ոչ եթէ ըստ իրացն ինչ բնութեան լինիցի, այլ ըստ մերոց կամաց։ Այնպիսի ինչ է զոր ասեմս, չարչարեցաւ Յովբ զայնպիսի չարչարանս. և քանզի գոհութեամբ համբեր՝ արդարացաւ, ոչ զի չարչարեցաւն, այլ զի ժուժկալութեամբ տարաւ չարչարանացն։ Իսկ այլ ոք յորժամ այնպիսի չարչարանս

կրիցէ, մանաւանդ թէ ոչ իսկ այնպիսի ինչ, քանզի չիք հնար թէ ոք այնպիսի միանգամայն չարչարանս կրիցէ, այլ յոյժ սակաւ քան զայն, հայհոյէ անխծանէ, դժմիտ լինի, բամբասէ զա̃ծ. այնպիսին 'ի դատապարտութիւն մատնի, 'ի պատիժս մտանէ. ոչ զի չարչարեցաւ, այլ զի հայհոյեաց։ Հայհոյեաց ոչ վասն իրաց ինչ բնութեան. զի եթէ այնչափ բնութիւն ինչ էր իրացն, ապա և Յովբայ պարտ էր հայհոյել։ Իսկ եթէ նա կարի դժնդակ կրեաց համբեր, և չեցոյց այնպիսի մեղկութիւն, յայտ է թէ ոչ կարիք բերեն զհայհոյութիւնն, այլ կամաց տկարութիւն։

Օրագոյն մտաց պէտք են մեզ, և ապա չիք ինչ որ դժուարին թուիցի. և եթէ թոյլ միտք իցեն, չիք ինչ որ ոչ դժնդակ թուիցի։ Նմանայն ինչ ըստ իւրոց կամացն երևի թեթև կամ ծանր. զնա ամրացուսցուք, և տանիցիմք դիւրաւ ամենայնի։ Քանզի և ծառոյ յորժամ արմատն 'ի խոր իցեն, և ոչ սաստիկ ինչ մրրիկ կարիցեն շարժել զնա. ապա եթէ ծանծաղ վեր 'ի վերոյ ինչ կայցէ, և եթէ սակաւ ինչ հողմն ընդդէմ շընչիցէ, արմատաքի իսկ 'ի բաց խլիցէ։ Այնպէս և 'ի մեզ, եթէ բևեռիցեմք զմարմինս մեր ընդ երկիւղն այ̃, չիցէ ինչ որ զմեզ շարժել կարիցէ. և եթէ ոչ դոյզն ինչ մերձենայցեմք, և սակաւ ինչ սողոխ կարէ թեթևացուցանել և գլորել։ Վասն որոյ և աղաչեմ բազում յօժարութեամբ ամենայնի համբերել, և նմանել մարգարէին որ ասէր, թէ “Կռուեցաւ անձն իմ զկնի քո”. ոչ վայրապար ինչ մերձեցաւ, այլ կռուեցաւ, ասէ, և մածաւ։ Եւ դարձեալ թէ “Օտարացի է քև անձն իմ”. և ոչ վայրապար ցանկացաւ, այլ[1] զպաստկութիւն տենչանացն յայտ արար այսու։ Եւ դարձեալ. “Բևեռեա զմարմին իմ ընդ երկիւղ քո”։ Քանզի կամի ըզմեզ զի հանապազ բևեռիցիմք ընդ նմա, և այնպէս կապիցիմք զի մի բնաւ քակիցիմք։

Եթէ այնպէս բուռն հարկանիցեմք զա̃յ, և բևեռիցեմք ընդ նմա զմիտս մեր, և ծարաւիցեմք զթո̃ւն, ամենայն ինչ զոր կամիցիմք լիցի մեզ, և հասանիցեմք

1 Յօրինակէն անկեալ էին այլ.. Եւ դարձեալ. և փոքր մի զկնի Քանզի կամի . . . քակիցիմք. լրացան 'ի յաւելեն։

պարգեւացն խոստացելոց։ Որոց լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՏԱՍՆԵՐՈՐԴ

"Փութասջիր վաղվաղակի գալ առ իս. զի Դեմաս եթող զիս և սիրեաց զայժմու աշխարհս և գնաց 'ի Թեսաղոնիկէ, Կրեսկէս 'ի Գաղատիա, Տիտոս 'ի Դաղմատիա, Ղուկաս միայն է ընդ իս. զՄարկոս ընդ քեզ առջիր և եկեսջիր, զի նա ինձ պիտանի է 'ի պաշտօնս. զՏիւքիկոս առաքեցի յԵփեսոս. զփիլոնն զոր թողի 'ի Տրովադա առ Կարպոսի՝ յորժամ գայցես բերջիր, և զգիրսն մանաւանդ զմատեանսն"։

Արժան է խնդրել զիարդ կոչիցէ առ ինքն զՏիմոթէոս, եթէ եկեղեցի էր նմա հաւատացեալ և զազգ մի ողջոյն։ Ոչ ապաքէն դանդաղանաց ինչ էին. և զի ինքն կազմէր անդր երթալ։ Լուր զինչ ասէր. "Եթէ յամեցից, գիտասցես որպէս պարտ և պատշաճ է քեզ 'ի տան ա՛յ շրջել"։ Այլ եթէ ընդէր չեկն, քանզի բազում հարկ 'ի վերայ կայր, և չէր ձեռնհաս ուրեք շրջել. 'ի բանտի կայր արգելեալ հրամանաւ Ներոնի կայսեր։ Վասն այնորիկ զնա առ ինքն կոչէ, զի ցանկացեալ էր տեսանել զնա նախ քան զվախճանն, զի Թերևս բազում իսկ ինչ յանձն առնել։ Վասն որոյ ասէ իսկ, եթէ "Փութասջիր նախ քան զձմեռն գալ առ իս, զի Դեմաս եթող զիս և սիրեաց զայժմու աշխարհս"։ Այլ չասէ զի տեսից զքեզ նախ քան զգնալն յաշխարհէս, և մանաւանդ զի տրտմեցուցանէրն. այլ թէ զի միայն եմ, և չիք ոք ձեռնտու աւետարանիս։

"Դեմաս, ասէ, եթող զիս և սիրեաց զայժմու աշխարհս և գնաց 'ի Թեսաղոնիկէ"։ Այս իսկ է եթէ անկլուկ հանգստեան ցանկացաւ, և յանհոգութեն յապահով կեալ, 'ի տան նստել ըստ անձին դիւրի, և ոչ

տառապել և վշտակից լինել չարչարանացն: Զնա մի-
այն բամբասեաց, այլ զմեզ կամեցաւ հաստատել, զի մի՛
մեղկիցիմք 'ի վիշտս և 'ի նեղութիւնս. այն իսկ է զաշ-
խարհս սիրել. միանգամայն զի և զաշակերտն իսկ կա-
մեցաւ յորդորել տանել առ իւր: "Կրեսկէս 'ի Գա-
ղատիա, Տիտոս 'ի Դաղմատիա,,: Նա զնոսա իսկ ոչ բամ-
բասել. քանզի և Տիտոս 'ի զարմանալեացն էր, այնպի-
սի ոք էր զի կղզի մի ողջ յանձն արար նմա, և ոչ փոքր
ինչ, այլ զմեծ իսկ կղզին՝ զԿրետա ասեմ: "Ղուկաս
միայն է ընդ իս,,. որ առաւել անքակ կայր առ նմա, որ
և զաւետարանն իսկ գրեաց և բովանդակ իսկ զամենե-
ցունց գործս առաքելոյն, քանզի վաստակասէր և ու-
սումնասէր և ժուժկալ և համբերող էր, զորմէ և գրէ
իսկ՝ եթէ "Որոյ գովութիւնն անդ պատմի յամենայն
եկեղեցիս,,:

"ԶՄարկոս, ասէ, առջիր և ընդ քեզ բերջիր, քան-
զի պիտոյ է նա ինձ 'ի պաշտաման,,: Ոչ յիւրոյ ինչ
հանգստեան պէտս, այլ յաւետարանին պաշտաման.
թէպէտ և 'ի կապանս էր, չդադարէր 'ի քարոզութե-
նէն: Ըստ ուրեմն և զՏիմոթէոս նմին իրի ինձ կոչէր,
ոչ վասն իւր, այլ վասն աւետարանին, զի մի և մի ինչ
խռովութիւն լինիցի վասն նորա վախճանելոյն 'ի մէջ
հաւատացելոյն աշակերտացն նորա, յորժամ բազումք
իցեն և արգելուցուն զխռովութիւն, և մխիթար լինի-
ցին այնոցիկ որք կարի դժկամք լինիցին ընդ վախճա-
նելն: Քանզի և արս իսկ հաւատարիմս պարտ էր կար-
գել 'ի Հռոմ քաղաքի:

"Նա զփիլոնն, ասէ, զոր թողի 'ի Տրովադա առ Կար-
պոսի, յորժամ գայցես, ասէ, բերջիր, և զգիրսն մանա-
ւանդ զմատեանսն,,: Վիռոն է փիլոնն. զհանդերձիցն
ասէ. ոմանք ասեն թէ զարկղն ասաց ուր գիրքն կային:
Զինչ փոյթ էր նմա զգրոց, զի առ ա̃ծ երթալոց էր:
Մանաւանդ թէ կարի իսկ պէտք էին, զի հաւատարիմ
մարդոց աւանդեսցէ, և փոխանակ նորա լինիցին նոցա
վարդապետք: Քանզի 'ի դէպ էր յայնժամ ամենայն
հաւատացելոց վերս 'ի սիրտ առնուլ, մանաւանդ մօտա-
ւորացն որ զվախճանն իսկ տեսանէին՝ վայելէին 'ի նր-
մա: Յայնժամ զփիլոնն խնդրէր, զի մի՛ յումեքէ կա-
րօտ լինիցի առնուլ: Տեսանես որպիսի ինչ փոյթ յան-

ձին ունէր չկարօտանալ ումեք. քանզի այլուր ասէ մինչ-դեռ ընդ եփեսացիսն խօսէր, եթէ "Գիտէք զի յիմ պէտս և որ ընդ իս էին՝ բաւական եղեն ձեռքս իմ պաշ-տել". դարձեալ թէ "Երանի իցէ այնմ որ տայցէ քան որ առնուցուն":

"Աղեքսանդրոս դարբին որ բազում ինչ չարիս ան-ցոյց ընդ իս, հատուսցէ նմա տէր ըստ գործոց նորա": Դարձեալ և աստ յոյժ առնէ զփորձութիւնս, ոչ բամ բասելոյ ինչ վասն կամ բանսրոյ, այլ զի զաշակերտսն կրթիցէ 'ի ճգունս համբերել ամենայնի ժուժկալու-թեամբ. թէպէտ և ախամախ ինչ մարդիկ իցեն որ ըզ-փորձութիւնս 'ի վերայ ածիցեն, և անպիտանք և ա-պաժամանք և անարգք և անզգամեալք, ամենայնի տա-նել առաքինութեամբ: "Բազում ինչ չարիս, ասէ, ե-ցոյց ինձ". որպէս զի ասիցէ, թէ բազում կտտանօք կտտեաց զիս: Որ 'ի մեծէ ումեքէ չարչարանս կրիցէ, և պարծանս ինչ ոչ սակաւագոյնս ունի՝ զմեծարանս չարչարելեացն. իսկ որ յանարգէ միոջէ և 'ի խշտրելոյ, ևս չար քան զչարչարանս տրտմութեամբն հաշի: Այլ չվճարիցի նմա այն առանց պատժոց: "Հատուսցէ նմա տէր ըստ գործոց նորա": Որպէս վերագոյնն ասաց, թէ "Որպիսի հալածանաց համբերէի, և յամենայնէ փրը-կեաց զիս տէր". նոյնպէս և աստ կրկին մխիթարու-թիւն տայ աշակերտին իւրովք չարչարանօքն, և զի նմա առանց հատուցման չվճարիցի: Ոչ զի սուրբքն ինքեանք իսկ երթայցեն ընդ առաջ չարչարանացն, այլ թէ քա-րոզութեան այն պէտք լինիցին, և զի փոքրոգեացն ևս տայցէ մխիթարութիւն:

"Զորմէ և դու, ասէ, անձնապահ լինիջիր. զի շատ հակառակ եկաց նա բանիցն մերոց": Ի կռիւ կայ, ա-սէ. մարտ եղեալ պատերազմի ընդ մեզ: Եւ չասաց թէ պատժեա, տանջեա, հալածական արա, թէպէտ և ձեռն-հաս էր զայն շնորհօքն առնել. չասաց ինչ այնպիսի՝ թէ վառեաց ընդդէմ, ճակատս տուր. այլ տեղի տալ հրա-մայէ, յԱծ ապաստան առնել զպատիժսն: Եւ մխիթա-րութիւն փոքրոգեացն ասաց զայս, և մարգարէութիւն իսկ է և ոչ անէծք: "Հատուսցէ նմա ըստ գործս իւր". զի կրթելոյ վասն միայն զաշակերտսն ասաց զայս, 'ի յա-ջորդացն յայտ է: Տես զկարգ դարձեալ և այլ ևս զիւր պատերազմունսն պատմէ:

“Յառաջնում ատենին, ասէ, ամենեքեան թողին զիս, մի ինչ համարեսցի այն նոցա”: Տեսանե՞ս զիարդ խնայեաց յիւրմն, թէպէտ և ոճիրս ինչ գործեցին. զի չէ զոյգ յարտաքնոցն արհամարհել և յընտանեացն: Տեսանե՞ս զզօրացեալ տրտմութիւնն: Որդւոյ ասել՝ թէպէտ և արտաքինքն կռուէին, սակայն յընտանեացն ունիմ փոքր մի մխիթարութիւն և օգնականութիւն, և սոքա ևս մատնեցին զիս: Ամենեքին, ասէ, թողին զիս: Ապա ուրեմն չէին սակաւ այսպիսի մեղք: Զի թէ ՚ի պատերազմի զընկերն թողուցու ոք, և ՚ի թշնամիսն ձեռն տայցէ, յայնժամ կարի տագնապ լինի, քանզի ամենևին իսկ զյաղթութիւնն թշնամեացն մատնեաց, որչափ ևս առաւել ՚ի քարոզութեանն: Առաջին ատեան զո՞ր ասիցէ: Եմուտ միանգամ առաջի՝ Ներոնի յատեան և ապրեցաւ, և յորժամ զտակառապետն աշակերտեաց՝ յայնժամ գլխատեաց զնա:

Ահաւասիկ դարձեալ տայ յօժարութիւն աշակերտին և ՚ի վշտաց ինչ՝ որ ՚ի վերայ եկեալ հասեալ էին: “Այլ տէր, ասէ, եկաց առ իս և զօրացոյց զիս”: Որ ՚ի մարդկանէ ոք ընդվայր հարկանիցի, չթողու զնա ՚ի ձեռաց ա՟ծ եթէ ՚ի վիշտս ինչ անկանիցի: “Եւ զօրացոյց զիս”. համարձակութիւն, ասէ, շնորհեաց ինձ, և չետ թոյլ զանգիտել: “Զի ինև քարոզութիւն հաստատեսցի”: Եւ դու տես զպազում խոնարհութիւն նորա. ոչ որպէս արժանի ոք ինչ էյէ պարգևացն՝ ասէ զօրացոյց զիս, այլ զի զքարոզութիւնն հաստատեսցէ, որոյ եղէ ես հաւատարիմ: Զոր օրինակ եթէ զծիրանիս ոք զթագաւորի կրէ, վասն այնորիկ ապրիցի: “Եւ լուիցեն, ասէ, ամենայն հեթանոսք”: Զի ամենեցուն յայտնի լինի և քարոզութեան լուսաւորութիւն, և որ ինչ յիմ տեսչութիւն և խնամակալութիւն եղև:

“Եւ փրկեաց զիս ՚ի բերանոյ առիւծուն. և փրկեսցէ զիս տէր յամենայն գործոց չարեաց”: Տես զիարդ սակաւ մի պիտէր հասանել ՚ի մահ, քանզի եկն մերձեցաւ ՚ի ժանիս առիւծուն: Առիւծ աստ զՆերոնի կոչէ վասն գազանամարտութեան և սաստիկ թագաւորութեան, որ ոչ երբէք յումեքէ յաղթահարւէր: Եւ փրկեաց, ասէ, զիս տէր, և փրկեսցէ զիս: Եւ զիա՞րդ յառաջագոյն ասէր՝ եթէ ես այսուհետև նուիրեալ եմ:

Այլ միտ դիր բարբառոյն։ Փրկեաց զիս, ասէ, 'ի բերանոյ առիւծուն, և դարձեալ փրկեսցէ։ Ոչ եւս 'ի բերանոյ առիւծուն, այլ "յամենայն գործոց չարեաց"։ Յամենայն ժամ 'ի վշտացն զերծոյց զիս. իսկ արդ քանզի պատճառք աւետարանին կատարեցան, փրկեսցէ զիս յամենայն մեղաց. այսինքն զի մի տացէ ինձ առիթ ինչ երթալ աստի, զի արեամբ չափ կարացից հակառակ կալ մեղացն, և ոչ թողացոյց 'ի միւսմէ առիւծուէն։ Փրկեսցէ զիս 'ի սատանայէն. որպէս զի այս իսկ փրկութիւն մեծ է քան զառաջինն, յորժամ թուիցի եթէ 'ի ձեռաց թողեալ իցէ։

"Եւ ապրեցուսցէ զիս յարքայութիւն իւր երկնաւոր, որում փառք յաւիտեանս յաւիտենից ամէն"։ Ապա ուրեմն այն է փրկութիւն՝ յորժամ անդ լուսաւորիցիմք։ Զերծուսցէ, ասէ, զիս յամենայն չարաց, և անդ պահեսցէ զիս։ Քանզի այն է ապրել յարքայութիւն, յորժամ ասա որ վասն նորին մեռանիցի։ "Որ ատեայ, ասէ, զանձն իւր յաշխարհիս յայսմիկ, 'ի կեանս յաւիտենից պահեսցէ զնա"։ "Որում փառք"։ Ահաւասիկ փառաւորութիւն տայ և որդւոյ։ Ամաչեսցեն հերձուածողք, որ չտան երբէք փառաւորութիւն որդւոյ, այլ հօր 'ի ձեռն որդւոյ։

"Ողջոյն տուր Պրիսկեայ և Ակիւղեայ"։ Պրիսկեա կին է, և Ակիւղաս այր նորին։ "Եւ Օնեսիփորայ տանն" ասէ, քանզի 'ի Հռովմ էր, որպէս և ասէ իսկ, թէ "տացէ նմա տէր ողորմութիւն գտանել 'ի տեառնէ յաւուր յայնմիկ"։ Ողջունիւն և զընտանիսն յորդորագոյնս արար յայնպիսի ինչ յուղղութիւնս։ "Ողջոյն տուր, ասէ, Պրիսկեայ և Ակիւղայ"։ Նոքա են զորս ասէր յիշէ. քանզի մինչ անդ էր՝ առ նոսա վանս ունէր, որք և զՊօղոս յիւրեանս յարեցին։ Յառաջագոյն դնէր զկինն, թուի թէ զի կինն կարի փոյթ և հաւատացեալ էր. և նա իսկ յարեաց յիւրեանս յայնժամ զՊօղոս։ Եւ ստէպ հարցանէ զողջունէ. և չէր նոցա առկա մխիթարութիւն նորա ողջոյնն, այլ և պատիւ և սիրոյ փափագանք և բազում հաղորդութիւն շնորհացն, քանզի բաւական էր և ողջոյնն միայն երանելւոյն և սրբոյ լցուցանել բազում շնորհօք զայն որ զողջոյնն ընդունիցին։ "Երաստոս, ասէ, մնաց 'ի Կորնթոս. զՏրոփիմոս

Թողի 'ի Մելիտոս հիւանդագին,,: Տեսցուք 'ի գործս առաքելոց ո՛ և ո՛ գնացին ընդ նմա 'ի Հրէաստանէ, թերևս գործ ինչ գործել ընդ նմա: "Զ Տրոփիմոս թողի 'ի Մելիտոս, ասէ, հիւանդագին,,: Եւ ընդէ՞ր ոչ բժշկեցեր զնա, այլ հիւանդագին թողեր: Զէին ամենայն իմիք ձեռնհաս առաքեալքն, այլ որչափ ինչ շնորհքն մատակարարէին, զի մի՛ ոք աւելի ինչ համարեսցի զնոսա քան որչափ ինչ իցէ:

Այսպիսի ինչ և յառաջին երանելի արդարսն տեսանեմք պատահեալ. որպէս և 'ի Մովսէս իսկ, զի նրբաձայն էր՝ և չփոխեաց զնրբաձայնութիւնն, և բազում անգամ տրտում էր՝ թէ ընդէր չմտանիցէ յերկիրն պարգևաց, և չեմուտ: Յաճախ իսկ թոյլ տայ ա͞ծ ելանել տկարութեան մարդկեղէն բնութեանս: Եթէ զայնպիսի գործս տեսանէին Հրեայքն անհանճարք և ասէին՝ ո՞վ է Մովսէս որ եհան զմեզ յերկրէն Եգիպտացւոց, եթէ տարեալ ևս էր զնոսա յերկիրն պարգևաց, որպիսի՞ ինչ ախտի չախտանային: Եւ եթէ չէր արկեալ 'ի վերայ նոցա զահն Փարաւոնի՝ բնաւ և ա͞ծ իսկ չհամարէի՞ն զնա: Այնպէս և զՊաւղոս և զԲառնաբաս բնակիչք Լիւստրացւոց քաղաքին տեսեալ ախտանային, և դիս նմանեալ մարդկան համարէին, յորժամ զհանդերձս պատառեցին ելին արտաքս քան զամբոխն, աղաղակէին և ասէին՝ "Զեզ ասեմ, մարդիկ, զի՞նչ գործս գործեցէք. քանզի և մեք իբրև զձեզ մարդիկ եմք, ձերոյ կարեացդ կարեկիցք,,: Եւ Պետրոս յորժամ զկաղն 'ի ծնէ բժշկեաց, մինչդեռ ամենեքեան ընդ գործսն զարմացեալ էին՝ պատասխանի ետ և ասէ. "Արք Իսրայէլացիք, զի՞ կայք զարմացեալ ընդ այդ, կամ 'ի մեզ զի՞ բնաւ պշուցեալ հայիք, որպէս թէ անձին ինչ զօրութեամբ կամ ա͞ծպաշտութեամբ արարաք դմա գնալ,,: Լուր և երանելւոյս Պաւղոսի. "Տուաւ ինձ, ասէ, խայթ մարմնոյ, զի մի՛ հպարտացայց,,: Զէ այս և չէ իսկ, քանզի ոչ վասն այնորիկ տուաւ նմա խայթն. առ խոնարհութեան ասէ զայն այսպէս: Այլ զի վասն բազում պատճառանաց մատնեցաւ 'ի փորձութիւնս, տես իսկ զի ա͞ծ ոչ վասն այնորիկ ինչ ասէ զնմանէն՝ թէ զի մի՛ հպարտանայցէ, այլ զի՞նչ. "զի զօրութիւն իմ, ասէ, 'ի տկարութեան կա-

տարի„: Երկու ինչ իրք գործէին, և գործքն յայտնի լինէին, և ամենևին ամենայն ինչ այ համարէր: Վասն այնորիկ և այլուր ասէր, եթէ "Ունիմք զգանձս զայս յամանս խեցեղէնս„. այսինքն 'ի չարչարելի և 'ի հիւանդ մարմինս: Ընդէ՞ր. զի առաւելութիւն զօրութե իցէ յայ և ոչ 'ի մէնջ: Որպէս զի թէ չէին չարչարելի մարմինքն, մեծամտութեան պատճառք լինէին: Եւ այլուր տեսանեմք զնա չարչարեալ ընդ հիւանդութեամբ, վասն Եպափրոդիտեայ գրեալ ասէր. "Խօթացաւ մերձ 'ի մահ, այլ ողորմեցաւ նմա ած„. և բազում և այլ ինչ լինէր զորս չգիտէր՝ յօգուտ նորին իսկ աշակերտելոց:

"ԶՏրոփիմոս, ասէ, թողի հիւանդագին 'ի Միլիտոս„: Միլիտոս յԵփեսոս 'ի մօտ կայ. յորժամ 'ի հրէաստան արդեօք երթայր նաւու, յայնժամ եթող զնա անդ, թէ յետ երթալոյն 'ի Հռովմ և միւսանգամ գալոյ 'ի Սպանիա, և թէ անդ դարձեալ 'ի սոյն կողմանս եկն, զայն ինչ ոչ քաջ գիտեմք: Տեսանես, զի ամենայն ուրեք միայն և յատուկ մնացեալ էր: "Դեմաս, ասէ, եթող զիս. Կրեսկէս 'ի Գաղատիա, Տիտոս 'ի Դաղմատիա, Երաստոս մնաց 'ի Կորնթոս, ըզՏրոփիմոս թողի 'ի Միլիտոս հիւանդագին: Փութացիր յառաջ քան զձմեռն գալ առ իս: Ողջոյն տան քեզ Եւբուղոս և Պուդէս և Լինոս և Կղաւդիա„: Զայս Լինոսէ ասեն ոմանք եթէ յետ Պետրոսի երրորդ եպիսկոպոս եկաց յեկեղեցւոջ հռովմայեցւոց: "Լինոս, ասէ, և Կղաւդիա„:

Տեսանես զկարգ և կանայք պինդք և ջերմք էին 'ի հաւատս, որպէս Պրիսկիղա և սոյն իսկ Կղաւդիա, խաչեալք և պատրաստականք 'ի մարտ պատերազմի: Եւ զիա՞րդ զի այնչափ հաւատացեալք էին՝ զնոսա միայն յիշիցէ. յայտ է եթէ սոքա այնուհետև անցեալ իսկ էին զամենայն աշխարհական ինչ իրօք, առաւել լուսաւորեալք քան զայլսն ամենեսեան. զի չիք ինչ խափան և ոչ կնոջ մարդոյ: Զի և այն այ շնորհացն գործ է՝ յերկբաւոր իրս ևեթ լինել նոցա խափան. մանաւանդ իսկ ոչ խափան ինչ, զի ոչ սակաւ խնամածութեան ունի մասն յանձին կին մարդ, տնարար լինել, 'ի սպասու կալ: Զի առանց նորա և ոչ քաղաքացն իսկ իրք հաստատուն կարեն կալ երբէք. զի եթէ խռովութեամբ ինչ

յանկարծակի մերձ լինիցի նուաղ քաղաքք․ և այնմ կարեն ձեռնտու լինել կամայք։ Որպէս զի անդ ոչ սակաւ ինչ մասն ունին օգնականութեան, նոյնպէս և 'ի հոգևորսն։ Կարող են բազում մահս մեռանել, թէ կամիցին․ նա բազում իսկ մարտիրոսք եղեն։ Ի զգաստութիւն կրթել և աւելի իսկ քան զարս ունին ժուժկալութիւն, զի ոչ այնչափ լկէ զնոսա ցանկութեան կրակն․ և առաւել ևս զպարկեշտութիւն և զգաստութիւն կարող են ցուցանել և զսրբութիւն, առանց որոյ ոչ ոք կարէ տեսանել զտէր․ և զինչս արհամարհել թէ կամիցին, և զայլ ինչ զամենայն նոյնպիսի իրս։

“Փութասջիր, ասէ, յառաջ քան զձմեռն գալ առ իս„։ Տես զիարդ ստիպէ և չգնէ զտրտմեցուցիչն։ Չասէ թէ յառաջ քան զվախճանելն իմ․ այլ թէ յառաջ քան զձմեռն, զի մի արգելուցուս և ոչ կարիցես գալ։ “Ողջոյն տամ քեզ Եւբուղոս և Պուդէս և Լինոս և Կղաւդիա և եղբարք ամենեքեան„․ չասէ զանուանս ամենեցուն։ Տեսանե՞ս զի նոքա ջերմագոյնք էին քան զայլսն։ “Տէր մեր Յիսուս Քրիստոս ընդ ոգւոյդ քում„։ Չիք ինչ մեծ քան զայս աղօթս։ Մի ինչ զչարիր, ասէ, զի մեկնիմ․ տէր ընդ քեզ է։ Ապա թէ ընդ ոգւոյդ քում՝ կրկին օգնականութիւն է, և 'ի հոգւոյն շնորհաց և յա̃յ օգնականութենէ։ Եւ այլ ազգ ևս, չէ մարթ ա̃յ ընդ մեզ լինել, եթէ ոչ զշնորհսն ինչ հոգևորս ունիցիմք․ զի եթէ 'ի ձեռաց թողեալ իցեմք, զիա՞րդ լինիցիմք ընդ ա̃յ։ “Շնորհքն ընդ մեզ, ասէ, ամէն„։ Եւ անձինն ևս աղօթս առնէ․ այսինքն զի միշտ, ասէ, հաճոյ լինիցիմք ընդ նմա, զի ցանգ շնորհս ունիցիմք հանդերձ առաջին շնորհօքն․ զի յորժամ այս լինի, չիցէ ինչ որ տրտմեցուցանիցէ։ Զոր օրինակ յորժամ զթագաւոր ոք տեսանիցէ և պարգևս առնուցու, չզգայ ինչ այնուհետև տրտմութիւն իմիք որ 'ի վերայ հասանիցէ, նոյնպէս և մեք թէ 'ի բարեկամաց անկանիցիմք և 'ի փորձութիւն մատնիցիմք՝ չզգամք չգրեմք ինչ, յորժամ շնորհքն մխիթարիչք եկեալ հասեալ զայն ամենայն 'ի բաց փարատիցեն։

Եւ զիա՞րդ մարթ իցէ ըմբռնել զշնորհսն։ Եթէ որ ինչ ա̃յ հաճոյ թուիցի, զայն ևեթ առնիցեմք, և ամենեցուն հնազանդ գտանիցիմք։ Նա և 'ի տանս իսկ մե-

ծամեծս զնոսա իսկ տեսանեմք չնորհակալ ծառայիցն, որք համակ զտէրունեացն եւեթ հոգայցեն եւ ոչ զանձանց, եւ ամենայն մտօք եւ յօժարութեամբ, ոչ առ հարկի ինչ տէրութեանն, այլ առ յօժարութեան եւ առ գութ ամենայնի խնամ տանիցեն: Յորժամ միշտ առաջի ընթանայցեն եւ ցանգ առ ական կայցեն, 'ի տանէն կերակրիցին եւ չառնիցեն ինչ անձանց սեփական, այնու եւ իւրեանց եւս խնամ տանիցեն, մանաւանդ թէ զտէրունի սեփական ունիցին: Զի որ զիւրն տէրունի առնիցէ, ոչ զիւրն տէրունի արար, այլ զտէրունին իւր, հրամայէ 'ի տէրունին իբրեւ զտէր. նոյնպէս իբրեւ ըզտէրն ունի զամենայն. եւ բազումք 'ի ծառայիցն 'ի նմանէ քաջ երկնչին քան 'ի տեառնէն. զի զոր ինչ նա հրաման տայցէ, զնոյն եւ տէրն. ամենայն թշնամիք ընդ երկիւղիւ կայցեն: Զի յերկրիս որ զիւրն արհամարհիցէ եւ զտէրունին ընտրիցէ՝ չարհամարհէ զիւրսն, այլ եւս առաւել 'ի մեծամեծսն հասանէ, որչափ եւս առաւել 'ի հոգեւորսն:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Արհամարհեա զքոյսն եւ առնուցուս զնոյն, եւ նա զնոյն կամի: Արհամարհեա զերկիր եւ յափշտակեա զարքայութիւն երկնից. անդ տայցես հրաման, մի աստ. անդ լինիցիս ահաւոր եւ մի աստէն: Անդ լինիցիս ահաւոր, ոչ եթէ մարդկան միայն ահաւոր երեւեսցիս, այլ եւ դիւաց եւ նմին իսկ բանսարկուին. ապա թէ ընչիւք կամիցիս ահաւոր երեւել աստէն, անարգեալ արհամարհեալ լինիցիս 'ի նոցանէն, բազում անգամ թերեւս 'ի մարդկանէ: Որչափ եւ մեծանայցես, ծառայականօքն մեծանաս. ապա եթէ զայսու արհամարհիցես, յարքունի տանն երթիցես պայծառագոյն: Այնպիսիք էին եւ առաքեալքն, արհամարհեցին զծառայական տունս եւ զամենայն ինչս եւ զաշխարհս, եւ տես զիարդ հրամայէին 'ի տէրունիսն: Այս անուն, ասէն, բուժիցի 'ի ցաւոց, եւ միւսն զերծցի 'ի դիւաց. կապեա զնա, արձակեա ըզմիւսն: Ոչ այն յերկրի գործէր, այլ որպէս թէ յերկինս իսկ կատարիցի. «Զոր կապիցէք, ասէ, յերկրի, եղիցի կապեալ յերկինս»: Ոչ եւս առաւել ետ նոցա

զխշխանութիւն. և զի ոչ ստեմ, լուր նմին իսկ. "Որ հաւատայ յիս, ասէ, նա մեծամեծ գործս քան զոր ես գործեմ գործեսցէ": Ընդէ՞ր. զի և այնպէս պատիւ առ տէրն երթայ: Նա և՛ ՚ի մեր իսկ իրս, յորժամ ծառայն մեծամեծս ինչ բաւական է վճարել, տէրն փառաւորի: Զի թէ ծառայն, ասեն, այնչափ զօրաւոր է, որչափ ևս առաւել որ զնայն ունիցի: Նա եթէ թողուցու զապան տէրունի, և կնոջն և որդւոյ դարման տանիցի, և ՚ի տէրունուստ գողանայցէ և յիւր տունն խորիցէ, զտէրունիսն վատնիցէ և իւր սեփական առնիցէ, վաղվաղակի զանձն հանդերձ ընչիւքն կորուսանէ:

Վասն որոյ քանզի ունիմք այսպիսի օրինակս, աղաչեմ, մի՛ հոգասցուք ընդ նոցա. արհամարհեսցուք, զի ստանայցեմք: Եթէ մեք արհամարհեսցուք զմերն, նա տանի խնամ և դարման նմին. ապա թէ մեք խնամ ածիցեմք, ա՛ծ այնուհետև չածէ ինչ ակն ՚ի վերայ. յայսմ խորհեսցուք, մի՛ ինչ ՚ի մերումն. մանաւանդ թէ ՚ի մերում իսկ, քանզի նորայն մեր է: Չասեմ զերկնից, չասեմ զերկրէ, չասեմ զաշխարհէս, զի այն կարի իսկ անարժան է նմա. նա և ոչ մեր միայն են, այլ և անհաւատից: Իսկ զի՞նչ. զփառաց ասեմ և զարքայութենէ, զի այն նորա է, և մեր վասն նորա: Որպէս զի "Եթէ մեռաք, ասէ, ընդ նմա, և կեցուք ընդ նմին. եթէ համբերեմք, և թագաւորակիցք կոչիցիմք": և եղբարք ևս եղեաք: Ընդէ՞ր զանձինս ՚ի գետնի ընկենուցումք, զի նա զմեզ ՚ի վեր եհան և առ ինքն ձգեաց:

Մինչև ցե՞րբ աղքատ կայցեմք և ՚ի տնանկութեան մաշիցիմք. երկինք առաջի կան, և մեք յերկրի թափառական շրջիցիմք. երկնից արքայութիւնն, և մեք զաստէն աղքատութեամբս հարեալ եմք. կեանք, և մեք զմահ սիրեմք, ՚ի փայտ և ՚ի քարինս և յագարակս ծախեմք զինչս: Տէր մեծատուն, ասէ, և ես զդոյն կամիմ. ագահեա յափշտակեա, և չիք որ այնմ բիծ դնիցէ և ոչ որ պարսաւիցէ զայնպիսի ագահութիւն. անդ յափշտակելն չէ ամբաստանութիւն: Զինչ իցէ: "Արքայութիւն ա՛յ բռնադատի, ասէ, և բռունք յափշտակեն զնա": Անդ լեր բուռն, անդ լեր յափշտակող, ուր որչափ և յափշտակիցես՝ չպակասէ ինչ, և ոչ յաւարի բաշխի և ոչ նուազէ. զի եթէ առաքինութի և ա՛ծպաշ-

տութիւն չնուաղեն, այս և ոչ արքայութիւն երկնից։ Յայնժամ առնէ առաքինութիւն, յորժամ յափշտակիցես. յայնժամ պակասին մարմնաւորքն, յորժամ աւար հարկանիցես։ Այս յայտ անտի իսկ է. եթէ իցեն 'ի քաղաքի ուրեք բիւրք բիւրոց մարդիկ և ամենեքեան զառաքինութիւն յափշտակիցեն, ևս քան զևս զարդարութիւն յաճախեն, բիւրոցն իսկ բիւրք արդարք լինին. և եթէ չյափշտակիցեն, նուաղեցուցանեն, քանզի չերևիցի ուրեք անդ արդարութիւնն։

Այս միտ դիր զիարդ 'ի յափշտակելոյն ևս քան զևս յաճախեն բարութիւնք, իսկ աստ 'ի յափշտակելոյն կարի նուաղեն ինչքն։ Այս արդ մի առ աղքատութեան դեգերեալ նստիցիմք, այլ փափագեսցուք մեծութեան. քանզի այն է մեծութիւն Այ, յորժամ բազումք վայելեսցեն յարքայութեանն. «Որ մեծանայ, ասէ, ամենեքումբք որ կարդան զանուն նորա»։ Աճեցո զգանձս նորա. աճեցուցանես, եթէ յափշտակես, եթէ ապահիցես, եթէ բռնաբարիցես, և արդարեւ իսկ բռնաբարութեան պէտք են։ Բայց զինչ ոք առնիցէ. զի բազում խափանիչք են, կանայք, որդիք, հոգք, իրք ինչ աշխարհականք, հանդերձ նոքօք և դևք և նոցուն դիւապետն սատանայ. և այսուհետև բռնաբարութեան պէտք են և ժուժկալութեան։ Որ բռնաբարիցէն՝ 'ի ճգունս և յաշխատութիւնս կայ, զի ամենայնի համբերիցէ և ամենայն վշտաց տանիցի, գրեթէ և տկարօքն զօրագոյն գտանիցի. իսկ մեք եթէ զօրաւորօքն տկար գտանիցիմք, երբ հասանիցեմք, երբ վայելեսցուք յորս փութայցեմք։ «Բռունք, ասէ, յափշտակեն զարքայութիւն երկնից»։ Բռնութեան պէտք են և յափշտակութեան. ոչ եթէ ընդ վայր պատրաստ կայցէ։

Որ յափշտակէն՝ հանապազ արթուն կայ, սկէ, հոգայ, կասկած լինի թէ զիարդ 'ի դէպ ժամանակի դիմեսցէ յափշտակել։ Զտեսանիցէք 'ի պատերազմունս, զի որ յափշտակել կամի, զամենայն իսկ գիշերն արթուն կայ վառեալ։ Զի եթէ որ զերկրաւորս ինչ յափշտակեն՝ վառին և արթուն կան, զիարդ մեք որ զհոգևորսն կամիցիմք յափշտակել՝ զցայգ և զցերեկ ննջեմք և խորդամք, անզէնք և մերկք կամք յապահովս։ Որ 'ի մէջն շաղեալ իցէ, անզէն և մերկանդամ է. զոր օրի-

նակ որ յարդարութեան իցէ, վառեալ սպառազէն։ Եւ ողորմածութեամբ վառեմք զանձինս, և ոչ լապտերացն լուցելոց պատրաստեմք իւղ, և ոչ զանձինս պատսպարեմք զգուշութեամբ, նա և ոչ ճանապարհին իսկ տեղեկանամք որ անդր տանիցի․ չսկեմք, չլինիմք արթունք, վասն այնորիկ չկարեմք յափշտակել։ Եթէ 'ի թագաւորութեն վերայ կամիցի ոք գուն և մահ գործել, ո՞չ ապաքէն նախ բազում մահս դնէ առաջի․ ո՞չ ապաքէն կազմի և զամենայն արուեստս պատերազմացն յարդարէ․ ո՞չ ապաքէն ամենեքին ուշ և ուրու[1] այնմ առնէ և ապա դիմէ 'ի վերայ։ Իսկ մեք ոչ ինչ այնպէս, այլ 'ի քուն կամք և յափշտակել կամիմք, և յայն սակս իսկ և նմին իրի երթամք ունայն ձեռօք։

Չտեսանիցե՞մք զյափշտակողս զիարդ փախչին, որպէս ընթանան, եթէ հասանեն անցանեն։ Ամենևին ընթացից պէտք են․ երագագոյն ևս քան զքեզ ընթանայ սատանայ, նա և զառաջին ևս հրամայէ փակել։ Այլ թէ զօրագոյն և արթուն իցես, զոմանս առաւթուր կոտորես և զոմանս յապուրակի դառնալով, և յամենեցունց իբրև զթռչուն մի սլացեալ զերծանիցիս․ եթէ անցանիցես ընդ ամբոխն, ելանիցես ըստ կարաւանն, թողուցուս զբազմամբոխ խռովութիւնն՝ զկենաց աշխարհիս ասեմ, և 'ի բարձանցն բարձուանդակ վերանայցես՝ զհանդերձեալ աշխարհն ասեմ․ իբրև յապահով ուրեք տեղւոջ դադարիցես, ուր ոչ աղմուկ ինչ և ոչ խռովութիւն կայցէ, չիցէ որ լլկիցէ, չիցէ որ թախանձիցէ, և ոչ որ բուռն հարկանիցէ և ունիցի, հանգչիցես հանդարտիցես, հեշտի և անհոգ կայցես։ Վասն զի յետ յափշտակութեան ուժոյ և արթնութեն պէտք են, զի մի զառն զոր առեր՝ թափիցէ ոք․ եթէ ստէպ ընթանայցեմք, և ոչ տեսանիցեմք զխութ և զխոչ ինչ առաջին աչաց, թէ չածիցեմք այլ զինչ զմտաւ՝ բայց միայն զի 'ի հետամտացն ապրել կարիցեմք, և զաւար զոր առաք՝ անցուցանել յամուր զգուշութեամբ։

Յափշտակեսցե՞ր զցածութիւն․ մի կայցես անդէն 'ի տեղւոջ, փախիր հեռի լեր 'ի սատանայէ։ Յորժամ գիտիցէ թէ չէ ձեռնհաս հասանել, անդէն դառնայ չքւոյ

1 Այսպէս յօրինակին։

զկնի ։ Այս մեք իսկ յորժամ տեսանեմք եթէ աւար ինչ ոք առնուցու և ըստ ակն անկանիցի, գիտեմք եթէ չեմք ձեռնհաս հանելոյ, չարկանեմք ձի զհետ, և ոչ այլոց հրաման տամք երթալ զկնի, այլ թոյլ տամք և զտեղի ունիմք · Նոյնպէս և դու ստէպ փախչիցիս զառաջինն · յորժամ հեռանայցես 'ի սատանայէ, ժտիցի՛ ինչ այնուհետև գալ զկնի · այլ լինիցիս յանհոգս, յապահով վայելել 'ի ծածուկ բարութիւնս ։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք և պատիւ և զօրութիւն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից · ամէն ։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԹՂԹՈՅՆ ՈՐ ԱՌ ՏԻՏՈՍ



## ՃԱՌ ԱՌԱՋԻՆ

«Պաւղոս ծառայ ա̃յ, բայց առաքեալ Յիսուսի Քրիստոսի, ըստ հաւատոց ընտրելեացն ա̃յ, և գիտութեան ճշմարտութեան ըստ ա̃ծպաշտութեանն յուսով կենացն յաւիտենից, զոր խոստացաւ անսուտն ա̃ծ յառաջ քան զժամանակն յաւիտենից. բայց յայտնեաց յիւրում իսկ ժամանակս զբանն իւր քարոզութեամբս, որոյ եղէ ես հաւատարիմ ըստ հրամանի փրկչին մերոյ ա̃յ, Տիտոսի սիրելի որդւոյ ըստ հասարակաց հաւատոցն, շնորհք և խաղաղութիւն յա̃յ հօրէ և տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ փրկչէ մերմէ»։

Քան զամենեսին որ ընդ Պաւղոսի էին, զսա առաւել ընտրէր. և եթէ ոչ այնպիսի ինչ ոք էր, նա և ոչ յանձն իսկ առնէր նմա զայնպիսի կղզի մի ողջոյն, և ոչ որ ինչ մնացեալն էր յիւրմէ՝ հրամայէր նմա ուղղել. «Զի որ ինչ պակասն իցէ, ասէ, ուղղեսցես». և ոչ այնչափ եպիսկոպոս[1] հրամայէր կարգել, եթէ ոչ կարի իսկ քաջ վստահ էր յայրն։ Ասեն զնմանէ ոմանք եթէ մանուկ էր վասն որդին կոչելոյ. բայց սակայն չև ևս ինչ յայտ է յայնմանէ։ Թուի ինձ թէ և 'ի գործս առաքելոցն յիշէ զնմանէ. թերևս 'ի կորնթացւոցն իսկ էր, եթէ չիցէ այլ ոք Տիտոս նորին անուանակից։ Այլ զԶենաս կոչէ առ ինքն, և զԱպողոսէ կամի թէ անդր

1 Ցոյնն եպիսկոպոսաց յանձն առնէր նմա զդատաւորութիւն, եւեթ ոչ։

առաքեսցի, բայց զնա ոչ. քանզի առաջի ինքնակալ կայսեր առաւել իմն նոքօք վկայէր զառաքինութիւն և զօրութիւն ։

Թուի ինձ թէ և ժամանակք ինչ իցեն ՚ի միջի, և յընդարձակի էր Պաւղոս մինչ զԹուղթս զայս գրեաց։ Քանզի չասէր ինչ զփորձութեանց, այլ ստէպ փարի զա͞յ շնորհօքն, և ՚ի վեր ՚ի վայր բազում մխիթարութիւն տայ հաւատացելոցն յառաքինութիւն։ Քանզի և ուսանելն իսկ թէ իմ իմիք արժանի էին, և յոր ինչ փոխեցան, և այն շնորհօքն եւեթ, ուր էին և իմ իմիք արժանի եղեն՝ ոչ սակաւ քաջալերութիւն էր։ Բայց գոռայ և ընդ Հրեայս. և եթէ զողջոյն իսկ բնաւ ազգն թշնամանէ, ընդ այն մի ինչ զարմանայցես, քանզի և առ Գաղատացիսն նոյն ազգ գրէ. "Ով, ասէ, անմիտ Գաղատացիք"։ Ոչ թշնամանաւ ինչ բարուք, այլ սիրով. եթէ վասն իւր ինչ առնէր զայն, յիրաւի մեղադիր լինէր. իսկ եթէ ջերմեռանդն սիրով վասն քարոզութեան ջանայր, յայտ է եթէ ոչ ՚ի թշնամանս ինչ գրէր, այլ ՚ի զգուշութիւն։ Նա Քրիստոս բազում ինչ իսկ բամբասէր զդպիրսն և զփարիսեցիս, ոչ վասն իւր ինչ, այլ զի զայլսն կորուսանէին։

Սակաւ ինչ գրէ զԹուղթս, և յիրաւի իսկ. զի այսու զառաքինութիւն Տիտոսի նշանակէ՝ թէ չէ ինչ կարօտ բազում բանից, այլ միայն վասն յիշատակի։ Թուի ինձ թէ այս Թուղթ երէց իցէ քան զայն որ առ Տիմոթէոս գրէ. քանզի զայն մօտ ՚ի վախճան գրեաց, և զայս մինչդեռ յարձակի և ՚ի դիւրոջ էր։ Նա զի ասելն՝ եթէ "եղի ՚ի մտի ՚ի Նիկոպօլիս ձմեռել", յայտ առնէ եթէ չև ևս էր մտեալ ՚ի բանտ. քանզի անդ յաճախ զանձն կապեալ կոչէ։ Նա արդ զինչ ասիցէ։

"Պաւղոս, ասէ, ծառայ Ա͞յ, բայց առաքեալ Յիսուսի Քրիստոսի ըստ հաւատոց ընտրելոցն Ա͞յ"։ Տեսանե՞ս զիարդ անխտիր դնէ զայս. երբեմն ծառայ Ա͞յ կոչէ և առաքեալ Քրիստոսի, և երբեմն ծառայ Քրիստոսի և առաքեալ Ա͞յ։ Նա այսպէս և ոչ մի ինչ զատէ և խտրութիւն ՚ի միջի ընդ Հայր և ընդ Որդի դնել։ "Ըստ հաւատոց ընտրելոցն Ա͞յ"։ Զինչ իցէ ըստ հաւատոց ընտրելոցն Ա͞յ։ Զի հաւատացեր, ասէ, կամ թէ զի հաւատարիմ գտար։ Թուի ինձ թէ և զանձնէ ասիցէ՝

եթէ հաւատարիմ եղէ ես ընտրելոցն այ. այսինքն է՝ թէ ոչ ըստ ուղղութեանց ինչ, և ոչ ըստ վաստակոց և քրտանց առ զպատիւն, այլ ամենայն ինչ ըստ երախտեաց այնր յոր հաւատացն՝ եղև ։

Այլ զի մի շնորհքն ընդ վայր ինչ համարիցին, քանզի ոչ ամենայն ինչ նորա էր, ապա թէ ոչ՝ ընդէ՞ր իսկ և այլոցն չհաւատաց, վասն այնորիկ յարէ 'ի նոյն. "Այլ գիտութեան ճշմարտութեան ըստ ածպաշտութեան,,։ Նոսա իսկ, ասէ, եղէ հաւատարիմ. մանաւանդ թէ հաւատարիմն իսկ լինել 'ի նորա շնորհացն. քանզի նոցա իսկ ինքն պատճառք ։ Վասն այնորիկ և Քրիստոս ասէ եթէ "Ոչ դուք զիս ընտրեցէք, այլ ես զձեզ,,։ Այլ երանելիս դարձեալ 'ի միւսում վայրի, եթէ "Ծանեայց որպէս և ծանեաւն զիս,,. և դարձեալ եթէ "Հասանել կարացից այնմ որով ըմբռնեցայն 'ի Յիսուսէ Քրիստոսէ,,։ Նախ, ասէ, ըմբռնեցայ, և ապա ծանեայ. նախ կոչեցայ, և ապա ունկնդիր եղէ ։ Իսկ ասելովն եթէ ըստ հաւատոյն ընտրելոց՝ ամ ինչ նոցա համարի, եթէ վասն նոցա եմ առաքեալ, ոչ եթէ արժանի ինչ էի, այլ վասն ընտրելոցն արժանի եղէ. որպէս և այլուր ասէ. "Ամենայն ինչ ձեր է եթէ Պաւղոս եթէ Ապողոս,,։ "Այլ գիտութե ճշմարտութե ըստ ածպաշտութեան,,։ Ճշմարտութիւն է և այլոց ինչ իրաց, այլ ոչ ըստ ածպաշտութեան ճշմարտութի. ճանաչել զհողագործութեան հանգամանս և գիտել զարուեստն հաւաստեաւ՝ ճշմարտութիւն է. այլ ըստ ածպաշտութե ճշմարտութիւն այն է՝ որ ըստ հաւատոց իցէ, զի հաւատայցին որպէս և առաքեալքն ընտրեալք, և ծանեան զճշմարտութիւն ։ Ապա ուրեմն 'ի հաւատոցն է գիտութիւն, և ոչ 'ի մտացն քննութենէ ։

"Յուսով, ասէ, կենացն յաւիտենից,,։ Ասաց զաստէն յուսոյն որ շնորհօք տուաւ մեզ յայ, ասէ և զհանդերձելոյ յուսոյն, և պարգևս 'ի միջի դնէ փոխանակ երախտեացն զոր արար մեզ։ Տես զիարդ լի է սկիզբն մեր երախտեօքն այ. և ամենեւին իսկ բնաւ թուղթս այսպիսի իմն է, և զսուրբն իսկ զՏիտոս առաւել յորդորէ 'ի վաստակս և զաշակերտեալսն ։ Զիք ինչ որ այնպէս օգտակար իցէ մեզ որպէս զայ երախտիսն յաճախ յիշել և զհասարակացն և զառանձինն ։ Զի թէ յոր-

ժամ զբարեկամացն ինչ երախտիս զմտաւ ածիցեմք կամ լուիցեմք յումեքէ, կարի իմն քըքըրիմք և ուրախ լինիմք և յորդորիմք, ասէ, 'ի բարեկամացն, որչափ ևս առաւել յորժամ զմտաւ ածիցեմք թէ յորպիսի վտանգս կայաք և յամենայնէ ապրեցոյց զմեզ Ա̃ծ, ևս քան զևս յօժարագոյնք լինիցիմք 'ի հնազանդութիւն: "Այս գիտութեան, ասէ, ճշմարտութեան,,: Ճշմարտութիւն ասաց՝ զի 'ի մէջ օրինակին և ճշմարտութեան ասէ. զի այն գիտութիւն էր և ա̃ծպաշտութիւն, այլ ոչ եթէ ճշմարտութեան գիտութիւն. բայց և ոչ ստութեան, այլ օրինակաց և պատկերի: "Յուսով, ասէ, կենացն յաւիտենից,,. և այն յուսով կենաց էր այսր աշխարհի: "Որ արասցէ զնոսա, կեցցէ նոքօք,,: Տեսանե՞ս որչափ ինչ եցոյց ընդ շնորհս և ընդ օրէնսն աստէն 'ի սկզբանս: Նոքա չեն ընտրեալք, այլ մեք. թէպէտ և կոչէին և նոքա ընտրեալք, այլ այսուհետև ոչ ևս:

"Զոր խոստացաւ, ասէ, անստուտն Ա̃ծ յառաջ քան զժամանակս յաւիտենից,,: Յառաջ իսկ, ասէ, և ոչ այժմ որպէս թէ ըստ զղջանալոյ ինչ, անդուստ իսկ 'ի բնէ յառաջագոյն նկարեալ էր: Բազում անգամ զայն դնէ, որպէս յորժամ ասիցէ. "Զատեալ յաւետարանն Ա̃յ,,. և դարձեալ թէ "Զորս յառաջագոյն ծանեաւ, յառաջագոյն նկարեաց,,, ցուցանէ զմեր ազնուականութիւնսն՝ եթէ ոչ այժմ ինչ, այլ անդուստ 'ի վերուստ սիրեաց. և չէ սակաւ անդուստ 'ի վերուստ և 'ի սկզբանէ սիրելն: "Զոր խոստացաւ, ասէ, անստուտն Ա̃ծ,,: Եթէ անստուտ իցէ, որպէս զի և է իսկ անստուտ, ապա ճշմարիտ լինելոց է զոր ինչ խոստացաւն. Եթէ անստուտ է, չէ պարտ երկմտել, թէպէտ և յետ մահու իցեն պարգևքն: "Զոր խոստացաւ, ասէ, անստուտն Ա̃ծ յառաջ քան զժամանակս յաւիտենից,,: Այլ ասելովն՝ եթէ յառաջ քան զժամանակս յաւիտենից, զհաւատարմութիւն յայտ առնէ: Այլ ոչ զի Հրեայք չմերձեցան՝ վասն այնորիկ չիցէ յառաջագոյն դրոշմեալ, լուր զինչ ասէն. "Բայց յայտնեցաւ, ասէ, յիւրում ժամանակս,,: Այլ ընդէ՞ր յերկարեաց. վասն առաւել տեսչութեան և խնամոց և 'ի դէպ ժամանակի առնել. որպէս և մարգարէս ասէ՝ եթէ "Ժամանակ է առնել տեառն,,: Իսկ յիւր ժամանակին ասելով զայն յայտ

առնէ՝ եթէ ՚ի պատշաճն ՚ի դէպսն ճահող ժամանակի։

“Բայց յայտնեաց յիւրում ժամանակս զբանն իւր քարոզութեամբս որոյ եղէ ես հաւատարիմ„։ Զքարոզութի՟ ասէ՝ եթէ զա՟մ իսկ ունէր, աւետարանն, և զաստիսն և զանտիսն, զայժմուս և զհանդերձեալ, ըղկեանսն, զա՟ծպաշտութի՟, զարքայութիս, զպսակս, զպարգևսն, զա՟մ ինչ, ասէ, ազդեմ քարոզութե՟ն։ Զոր օրինակ քարոզ մի ամենեցուն՝ որ երթեալ գումարեալ իցեն եթէ տեառն քարոզ է, նոյնպէս և մեք քարոզեմք մի ինչ յաւելուլ, այլ որ լուաքն՝ զայն և եթ ասել, զի քարոզութեան առաքինութիւն այսու յայտնի առնի զի ամենեցուն ազդիցեմք զգործն զոր գործեցան, ոչ եթէ յաւելլու՟ն և պակասեցուցանելով։ Նա եթէ քարոզել պարտ իցէ, համարձակ պարտ է քարոզել, ապա թէ ոչ՝ չէ իսկ քարոզել։ Վասն այնորիկ ոչ ասաց Քրիստոս՝ թէ ասացէք ՚ի վերայ տանեաց, այլ թէ “Քարոզեցէք ՚ի վերայ տանեաց„. և ՚ի տեղւոյն և յօրինակացն հաստատեա զգործն որ գործեցան։

“Որոյ եղէ ես հաւատարիմ ըստ հրամանի փրկչին մերոյ ա՟յ„։ Նա հաւատարիմն ասելով և ըստ հրամանի՝ զհաւատարմութիւն յայտ առնէ, զի մի՛ ոք անհաւատ և երկմիտ և երկբայս լինիցի։ Իսկ եթէ հրամայիցէ, ասէ, ապա չեմ անձին ինչ տէր, քանզի զհրամանն կատարեմ։ Զի ՚ի գործոյիցն կէս ինչ ՚ի մէնջ է, և կէս ինչ չէ ՚ի մէնջ. զոր ինչ հրամանն տայ՝ զայնիւ չէ ՚ի մեր ձեռս անցանել. իսկ յոր ինչ յորդորէն, այն ըստ մերոց կամաց։ Ո՞յսպիսի ինչ է հրամանն. “Եթէ ասիցէ, ասէ, ոք զեղբայր իւր մորոս, պարտաւոր է գեհենին հրոյ„. այս է հրամանն. և դարձեալ եթէ “Յորժամ մատուցանիցես զպատարագն քո ՚ի սեղան, և յիշեսցես եթէ եղբայրն քո ունի ինչ զքէն խէթ ՚ի մտի, թող զպատարագն քո առաջի սեղանոյն, և երթ հաճեաց ընդ եղբօրն քում, և ապա եկեալ մատուսջիր զպատարագն քո„. և այս հրաման է, և որ ոչ առնիցէն՝ հարկ է եթէ ընդ պատժովք է։ “Եթէ կամիցիս կատարեալ լինել, վաճառեա զինչս քո„. և դարձեալ եթէ “Որ կարողն է տանել տարցի„. այս չէ հրաման, այլ զլսողն առնէ տէր բանիւն և նորա կամացն տայ ըղգործոյսն, և զայն առնել կամ չառնել ՚ի մեր ձեռս է.

իսկ հրամանին չեմք բնաւ [1] տեարք, այլ հարկ է կամ առնել, և կամ չառնել և 'ի տանջանս մտանել: Եւ զայս իսկ ասէ՝ թէ "Ինձ հարկ 'ի վերայ կայ. և վայ է ինձ եթէ ոչ աւետարանեցից,,: Զի ամենեցուն յայտնի լինիցի, որում զիշխանութիւն եկեղեցւոյն հաւատացեալ իցէ և եպիսկոպոսութեան կարգօք պատուեալ՝ եթէ ոչ հանապազ բողոքիցէ ժողովրդեանն զգործոյն և չգործոյս, չլինի ազատ 'ի պատժոց. իսկ ժողովրդեանն և ոչ մի ինչ հարկ այնպիսի կայ: Եւ արդ զինչ ասիցէ Պաւղոս, եթէ "ըստ հրամանի փրկչին մերոյ ա͞յ,, առնեմ զայս: Տեսանե՞ս զվերադիրն. վերադոյն ասէ՝ թէ անսուտն ա͞ծ, և աստ՝ թէ ըստ հրամանի փրկչին մերոյ ա͞յ: Եթէ փրկիչ իցէ և ինքն հրամայեաց, ապա 'ի կամելոյ է փրկելն. չեն այսուհետև իշխանասիրութեան իրքն, քանզի հաւատք են և հրաման ա͞յ փրկչի:

"Տիտոսի, ասէ, սերտի որդւոյ,,: Ապա ուրեմն են որդիք որ չեն սերտք որդիք, որպէս և այն զորմէ ասէն. "Եթէ ոք եղբայր անուանեալ իցէ, կամ պոռնիկ իցէ կամ ագահ կամ կռապաշտ կամ բամբասող կամ արբեցող, ընդ այնպիսիսն և հաց մի ուտել,,: Եւ ահաւասիկ եղբայր է, և չհրամայի ընդ նմա հաց ուտել. ահաւասիկ որդի է, և չէ սերտիւ որդի. որդի է, քանզի միանգամայն ընկալաւ զշնորհսն և ծնաւ վերստին. և չէ սերտ որդի, քանզի չէ արժանի հօրն, զի առ այլ անձամբ հատուած գնաց: Ի բուն որդւոցն սերտն և չսերտն 'ի սերմանելեացն և 'ի ծնանելեացն զատանին. իսկ աստ ոչ ինչ այնպէս, այլ 'ի կամաց է լինել սերտ. զի ոչ եթէ հարկաւ բնութեանն փակեալ կայցէ, այլ ընդ կամացն իշխանութեամբ, ուստի և զփոփոխմանն վաղվաղակի ընդունի: Ո՞չ որդի սերտ էր Ոնեսիմոս, և յետոյ չեղև սերտ, քանզի անպիտան եղև. այլ դարձեալ եղև սերտ որդի, զի և աղիք ևս առաքելականք կոչեցաւ:

"Տիտոսի, ասէ, սերտ որդւոյ ըստ հասարակաց հաւատոց,,: Զինչ իցէ՝ ըստ հասարակաց հաւատոցն: Քանզի իբրև առ որդի գրեաց, և զհօր զաստիճանն առ: Տես զիարդ և զնոյն իսկ զպատիւն նուաղեցուցանէ

1 Ցօրինակին գրեալ էր մնոյ:

և ցածուցանէ։ Ուր. ըստ հասարակաց հաւատոց, ասէ. և այն իսկ է՝ թէ ըստ իմոցն և ըստ քոյոցն չունիմ ինչ քան զքեզ աւելի, հասարակաց է և ոչ առանձինն ինչ ուրուք, նովին որով ես ծնայ՝ ծնար և դու։ Եւ զիարդ իցէ զի որդի կոչիցէն. կամ զգութն և զխնամ կամի ցուցանել, կամ թէ նա նախ կոչեցաւ 'ի քարոզութիւն, կամ թէ նովաւ լուսաւորեցաւ յաւազանէն. վասն այնորիկ որդիս և եղբարս կոչէ։ Քանզի նովին հաւատովք ծնեան որդիք, զհասարակաց հաւատոյն աւելով՝ բնաւ իսկ եղբայրութիւն ակնարկէ։ "Շնորհք և խաղաղութիւն յայ հօրէ և 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ փրկչէ մերմէ"։ Քանզի կոչեաց որդի, յարէ և 'ի նոյն՝ եթէ 'ի յայ հօրէ, զի զարթուցանիցէ զմիտս նորա ուսանել թէ ոյր որդի է. և ոչ միայն ասելովն՝ թէ ըստ հասարակ հաւատոց, այլ և 'ի նոյն յարելովն թէ յայ 'ի հօրէ՝ զզոյգ պատիւն յայտ առնէ։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Եւ դու տես, վասն որոյ աշակերտացն և այլոց բազմաց աղօթս առնէ, զնոյն և վարդապետին ըղձանայ։ Նոյնպէս և նա, ասէ, կարօտ է աղօթիւք. նա ևս առաւել քան զնոսա, որչափ զի բազում թշնամութիւնս և ձգունս ունի քան զնոսա, որք և այժմ իսկ հակառակ կայցեն։ Որչափ և պատիւն մեծ է, նոյնպէս և ձգունքն մեծամեծք, որ 'ի քահանայութեան աստիճանին իցէ։

Բաւական է և մի ինչ ուղղութիւն եպիսկոպոսութեան հանել զնա յերկինս, և մի ինչ մեղք արկանել 'ի գեհենն։ Եւ զայլն ամենայն 'ի բաց թողից, բայց որ ինչ հանապազն լինի, եթէ դէպ լինիցի ումեք կամ վասն բարեկամութեան կամ վասն այլ իրիք պատճառանաց զանարժան ոք յեպիսկոպոսութիւն ածել, և քաղաքի միոյ մեծի զիշխանութիւն հաւատալ, տես որպիսի հրոյ առնէ զանձն պատժապարտ. ոչ միայն ոգւոցն կորուսելոց, քանզի կորուսանէ զբազմաց ոգիս՝ որ անարժան և աներկիւղ իցէ, այլ ընդ ամենայն իսկ մեղաց զոր նորա գործեալ իցէ, որ արարն զնա՝ նա տացէ պատիժս։ Որ մինչ դեռ 'ի հասարակաց աստիճանին էր՝ չեցոյց ինչ

ուղղութիւն՝, որչափ ևս առաւել յորժամ յիշխանութիւն հասանիցէ։

Նա և երկիւղածին այնպէս լաւ իցէ, եթէ յորում կարգի էր՝ ՚ի նմին կայցէ, թող թէ աներկիւղն. զի յորժամ յիշխանութիւն հասանիցէ այնպիսին՝ ՚ի հպարտութիւն հատանի, սնապարծ և փառասէր լինի, ընչից ցանկացող, խիստ և ամբարտաւան, բռնութեամբ վարէ զիշխանութիւնն. և անդ կացցեն այնուհետև կռիւք և թշնամութիւնք և բամբասանք և ազգի ազգի չարիք մեծամեծք։ Եթէ մինչ յաստիճանն չէր հասեալ՝ աներկիւղ էր, որչափ ևս առաւել յորժամ զիշխանութիւնն առնուցու ևս քան զևս աներկիւղ լինիցի։

Իսկ արդ որ զայնպիսին իշխան կացուցանէ, ամենայնի նորա մեղացն և բնաւ իսկ ժողովրդոցն՝ որ ետ այնպիսւոյն զիշխանութիւնն, պատժապարտ գտանիցի։ Եթէ որ զմի ոգի գայթակղեցուցանիցէ՝ լաւ էր նմա եթէ արկեալ էր երկան իշոյ ընդ պարանոցն, և ընկղմէր ՚ի խորս ծովու, որ այնչափ ոգիս գայթակղեցուցանիցէ՝ զողջոյն իսկ զքաղաքն և զժողովուրդն, զբիւրս բիւրուց ոգիս, զարս և զկանայս և զմանկունս, զքաղաքացիս և զշինականս, որ անդէն ՚ի քաղաքին իցեն և որ յայլ քաղաքս ընդ այնու քաղաքաւն, որպիսի՞ ինչ պատժոց չլինիցի արժանի։ Իսկ որչափ ինչ ասիցես՝ չկարես բովանդակել. զի այնչափ կարի ընդ տանջանօք և ընդ պատժովք է. և է առաւել կարօտ շնորհացն այ և խաղաղութեան։ Իսկ եթէ ոչ այնիւ ուղղեսցի նա ՚ի ժողովրդեանն, ամենայն ընկղմեալ կորնչիցի՝ յորժամ զի ոտքն ուղղիչ նաւին չիցեն ՚ի միջի. Թէպէտ և հմուտ ևս իցէ նաւավարութեանն, եթէ ոչ զսամիսն ուղղիչն որ շրջշրջիցէ՝ ունի ՚ի ձեռինն, չէ հնար եթէ կարիցէ զնաւն ՚ի նաւահանգիստն հասուցանել, այսինքն է ըզշնորհսն և զխաղաղութիւնն այ. և եթէ այն չիցէ, ընկղմեալ կորնչիցի նաւն համդերձ ամենեքումբք որ ՚ի նաւին իցեն։

Իսկ կարի իսկ զարմանամ ընդ այնոսիկ՝ որ այնպիսի ծանրութեան ցանկանայցեն։ Դուքդ և թշուառականդ, որպիսո՞ւմ կրակի ցանկանայցես. եթէ միայն և անծանօթ և աննշանաւոր իցես, և բիւր մեղս գործիցես, ընդ մի ոգւոյ տայցես համարս և ընդ անձինդ ևեթ պատժի

ցիս․ յորժամ յայնպիսի իշխանութիւն հասանիցես, 'ի միտ առ ընդ որչափ ոգւոց հասանիցէ համարս տալ։ Այլ լուր Պաւղոսի իսկ՝ որ ասէ․ «Անսացէք իշխանաց ձերոց և հնազանդ լերուք, քանզի նոքա սկեն ընդ ոգւոց ձերոց, որպէս զի և համարս ևս տալոց են ընդ ձեր»։ Այլ պատուո՞յ ինչ և իշխանութեան ցանկանայցես․ և զի՞նչ տանջանք իցեն այնպիսի պատուոյ․ քանզի և զայն չհամարիմ պատիւ․ քանզի չէ հնար իշխանին՝ որ աստոյգ իշխանն է՝ թէ չիցէ ընդ իշխանութեամբ այնոցիկ, որոց իշխիցէն։

Այլ եթէ աստոյգ ոք քննեսցէ, ոչ յիշխանութիւն գայ այնպիսին, այլ 'ի ծառայութիւն բազում տերանց․ զի կէսքն ցանկանան տեսանել, և կէսքն հակառակ կան․ և յորժամ խօսիցի, զոր մին գովէ՝ և միւսն պարսաւէ․ և զոր այլն ազարտէ, ընդ այն ընկերն զարմանայ։ Այլ արդ ո՞ւմ լսիցէ, զո՞ր միտս հաճիցէ․ չէ մարթ չէ հնար եթէ զամենեցուն միտս հաճել կարիցէ։ Այլ որ արծաթագին իցէ, յորժամ խօսիցի՝ և զբանսն տէրն ընդ բերան վարիցէ, չիշխէ ընդդէմ դառնալ․ և եթէ խիստ ինչ հրամանս տայցէ, հարկաւ յանձն առնու․ իսկ դու եթէ հրամանաց այնչափ տերանց ընդդէմ դառնայցես, չկայցես յար յամրի, նա և ընդ այնր իսկ զի այնչափ բերան բանաս՝ դատ տայցես։ Այլ արդ այն պատիւ ինչ իցէ կամ իշխանութիւն կամ ճոխութիւն։

Հրաման տայցէ եպիսկոպոսն թէ բերէք ինչ յեկեղեցի․ և եթէ չկամիցի ոք, ոչ միայն չբերէ, այլ զի մի կարծիցի՝ թէ առ վատութեան չբերիցէ, 'ի բամբասանս հատանի․ գողանայ, ասէ, և յափշտակէ, զորբոց և զայրեաց մասն կլանէ։ Դադարեա 'ի բամբասանաց․ մինչև ցե՞րբ զայդ ևեթ խօսիցիս․ չկամիս ինչ բերել, չկայ հարկ 'ի վերայ․ չիք ոք որ պատժէ, ընդէ՞ր բամբասիցես զխրատիչն։ Այլ եթէ պէտք ինչ ումեք իցեն, և չլինիցի ձեռնտու՝ քանզի չիցէ բաւական, և կամ թէ յայլ ինչ պէտս զբօսեալ՝ չպարապիցէ, չէ այնուհետև բնաւ ներել, և ոչ անսալ և հանդարտել․ այլ դարձեալ բամբասանք, տրտունջք և քրթմնջիւն, հեծեծել[1] և շշնջել։ Այլ արդ այն իշխանութիւն ինչ իցէ։ Այլ ըզ-

1 Միւսն հեծծել։

վրէժ թշնամանացն չկարէ խնդրել, քանզի իւր աղէտք են ամենեքին։ Եւ որպէս աղեացն՝ թէպէտ և գիտեմք եթէ ցաւս բաշխեն 'ի գլուխն և յամենայն մարմինն, չիշխեմք մինաս ինչ առնել, և ոչ վրէժ խնդրել, և ոչ սուր առնուլ և կոտորել, նոյնպէս և որոց իշխեցեմք. թէպէտ և աշխատութիւն 'ի վերայ հասուցանիցեն և տրտմութիւնս 'ի բամբասանացն, չիշխեմք ընդ անարգանացն վրէժս պահանջել. քանզի հեռի է այն 'ի հայրենի գթոյն. այլ հարկ է համբերել ցաւոցն, մինչև ողջանայցէ այնպիսին։

Արծաթագին ծառայն ունիցի ինչ գործ՝ որ հրամայեցաւ նմա. և եթէ զայն վճարիցէ, այնուհետև անհոգ է. իսկ սա ամենայն ուրեք զառաւելն աւելի քան զկարն պահանջի։ Եթէ խօսել չգիտիցէ, բազում և այնչափ տրտունջ կայցէ. և եթէ խօսել գիտիցէ, դարձեալ այլ բամբասանք. հպարտ է, ասէ, և ամբարտաւան։ Եթէ ոչ զմեռեալս յարուցանիցէ, չէ, ասեն, արժանի. այս անուն երկիւղած է, ասեն, և դա չէ երկիւղած։ Եթէ չափով ինչ կերակրիկ ուտիցէ, դարձեալ բամբասանք. պարտ էր նմա, ասեն, միշտ սպառեալ կալ։ Եւ եթէ 'ի բաղանիս ոք տեսանիցէ, դարձեալ անհնարին չարախօսութիւնք. բնաւ, ասեն, և զարև արժա՞ն էր դմա տեսանել։

Եթէ զոր եսն գործեցի, զնոյն և դա գործիցէ, լուանայցէ և ուտիցէ և ըմպիցէ և հանդերձս զգենուցու և զտան և զծառայից հոգայցէ, և ընդէ՞ր կայ ինձ առաջնորդ, վասն է՞ր անուանի գլխաւոր։ Այլ և ծառայս ես ունիցի, ասեն; և սպասաւորս, և յեշ նստի. ընդէ՞ր բառնայցէ զիմ հոգս, վասն է՞ր կոչիցի իմ առաջնորդ։ Եւ արդ աղէ ասա, ընդէ՞ր չպարտիցի առնուլ սպասաւոր, այլ ինքն անձամբ կրակ դնիցէ, ջուր բերիցէ և փայտ կոտորիցէ, և 'ի վաճառէ զպէտսն վճարիցէ. և չէ՞ քեզ իսկ այն ամօթ։ Իսկ անդ աւանիկ տեսանեմք զարս սուրբս զառաքեալս, զի որ բանին պատկառ կայր՝ չկամին զայնպիսին այրեացն սպասաւորութեան արժանի համարել. դու աւադիկ 'ի ծառայիցն քոց 'ի սպասաւորութիւն ձգես զառաջնորդն։ Եւ քանզի այնչափ ճարտար հրամատար ես, ընդէ՞ր իսկ չերթայցես քեզէն և վճարիցես զնորա պէտսն. ո՞չ առաքեալն մեծամեծ սպա-

սաստութիւն հարկանել քեզ՝ քան թէ դու նմա զմարմ-նաւորսն. և կամ զծառայն քո ընդէ՞ր ոչ յղիցես և հրամայիցես սպասաւորել: Քրիստոս ինքնին լուաց զոտս աշակերտացն. դու թէ սակաւ ինչ դարմանս տանիցիս վարդապետին, մե՞ծ ինչ գործիցես. այլ ոչ դու կամիս ունել խնամ, և զնա ես արգելուս: Նա արդ զխորդ, յերկնից ինչ պարտ իցէ նմա կեալ. այլ ոչ կամիցի այնպէս ած:

Առաքեալքն, ասէ, ծառայս ունէի՞ն. ծառայս չունէին, այլ զազատն իբրև զծառայս վարէին: Կամիս և զայն ես լսել, թէ զիա՞րդ առաքեալքն գնային՝ յորժամ յօտար տեղիս ուրեք երթային. արք ազատ և կանայք ազնուականք փոխանակ նոցա հանգստեան՝ զանձինս և զգլուխս դնէին. վասն որոյ և սոյն իսկ երանելիս պատուիրէր, թէ "Զայնպիսին 'ի պատուի ունիցիք. զի վասն գործոյն տեառն մինչև 'ի մահ մերձեցաւ, յանդգնեալ եւ զանձն 'ի մէջ, զի զձեր թերութիւնս լցցէ առ իմոյ պաշտաման": Տեսանեմս զինչ ասէն. դու և բանս անգամ չծախես վասն հօր քո, թող թէ ձգունս ինչ յանձն առնուլ:

Այլ 'ի բաղանիս մտանել և լուանալ չէ պարտ ասեն: Ընդէ՞ր. չէ ինչ արգել և այնմ, քանզի ոչ եթէ աղտն բարւոք ինչ իցէ. նա և ոչ գտանեմք ուրեք՝ եթէ այնմ արգել ինչ իցէ, և ոչ զարմանալի ինչ գործ չմրտանելն. այլ պատուէրս պատուիրեաց եպիսկոպոսին՝ անարատ լինել, ցածուն, պարկեշտ, հիւրասէր, ուսուցիչ. զայս պահանջէ առաքեալ, և դու զսոյն խնդրես յիշխանէն. մի՛ աւելի ինչ, չես քան զՊաւղոս ճշմարտագոյն:

Թէ հարկանող իցէ կամ թշնամանող, անօրէն ինչ և անողորմ, յայնպիսի իրս արժանի է բամբասանաց եպիսկոպոսն. եթէ կարի ինչ փափկանայցէ, և այն բամբասանաց արժանի է. ապա եթէ զմարմինն չափով դարմանէ՝ զի քեզ սպասաւոր լինիցի, և համով խնամ ունիցի՝ զի քեզ պիտանացու լինիցի, վասն այնր չէ պարտ բամբասել: Թէ չգիտիցե՞ս զի մարմնոյ տկարութիւն չէ ինչ ընդհատ յօգւոց տկարութենէ, և մեզ վնասէ և եկեղեցւոյն: Իսկ Պաւղոս ընդէ՞ր յարդարիցէ զայսպիսի ինչ իրս, յորժամ գրեաց առ Տիմոթէոս, թէ "Այ-

սուհետև մի միայն ջուր ըմպիցես, այլ սակաւիկ մի և գինեակ խառնեսջիր վասն ստամոքսի և ստէպ ստէպ հիւանդութեանցդ »:

Եթէ ոգւովքն միայն զառաքինութիւնն կարէաք վճարել, ապա չէր պարտ մարմնոյ խնամ ունել. և եթէ այնպէս ինչ էր, բնաւ և լինելոյ մարմնոյ զինչ պէտք էին: Իսկ եթէ բազում ինչ լաւութիւնս կատարէ ընդ ոգւոյն, զիա՞րդ չիցէ անհնարին անմտութիւն անփոյթ առնել և չունել խնամ: Այլ համարեսջիր եթէ իցէ ոք եպիսկոպոս պատուական, և զհամարակաց եկեղեցւոյն հաւատացեալ զվերակացութիւն, և այլով ամենայնիւ առաքինի իցէ, որպէս և քահանայի իսկ պատշաճ իցէ զամենայն ինչ յանձին ցուցանել, և ցանկ 'ի մահիճս կայցէ 'ի բազում հիւանդութենէն, կարիցէ՞ այնպիսին օգուտ ինչ գործել. զո՞ր ճանապարհ հարկանիցէ, զիա՞րդ 'ի հիւանդաց տես երթայցէ, ո՞ւմ սաստիցէ, զո՞ խրատել կարիցէ, զորպիսի՞ ինչ պէտս վճարել:

Զայս ասացի զի ուսանիցիք չքամահանել վայրապար, այլ խնամ տանել առաջնորդաց, և հնազանդ և հպատակ լինել. և զի մի ոք ցանկայցէ իշխանութեան, յորժամ հայիցի յայնպիսի բուքս բամբասանաց. 'ի բաց մերժիցէ զցանկութիւնն զայնպիսի գործոյ. և արդարեւ իսկ կարի վտանգք են, ո՜յ շնորհացն և խաղաղութեան պէտք: Վասն որոյ աղօթս առնիցէք 'ի վերայ մեր, և մեք ևս յաճախագոյն վասն ձեր, զի երկոքին կողմանք ցուցցուք զուղղութիւնս առաքինութեանն, և այնպէս կարիցեմք խոստացելոց բարութեանցն հասանել. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

"Վասն այսորիկ թողի զքեզ ՚ի Կրետէ, զի զոր ինչ միանգամ պակաս ինչ իցէ՝ ուղղեսցես, և կացուսցես ըստ քաղաքաց երիցունս, որպէս և քեզ հրամայեցի. եթէ իցէ ոք անարատ՝ միոյ կնոջ այր, որդեակս ունիցի հաւատացեալս, ոչ ՚ի բամբասանս գիջութեան կամ անհնազանդս":

Պաշտօնէիցն ամենայն աւուրք կենաց ՚ի գործ և ՚ի պատերազմի ծախէին, մեր ոչ ինչ այնպիսի, այլ ծուլութեանց և հեղգութեանց եմք: Նոքա գիտէին թէ վասն այսորիկ եկին յաշխարհս, զի ըստ կամաց այնորիկ որ ած զնոսա այսր՝ գործ գործիցեն. մեք որպէս թէ յայն սակս ինչ եկեալ իցեմք, զի կերիցուք արբցուք և ուրախ լիցուք, այնպէս իմն անփոյթ առնեմք զհոգևորացն: Եւ զայս չասեմ միայն վասն առաքելոցն, այլ և զայլոց որ յետ նոցա եկեն: Տեսանես զիարդ ընդ ամենայն տեղիս շրջէին, և զայն իմն կարևոր գործ համարէին, զի ամենևին յօժարութեամբ անցուցանէին զժամանակս. շրջէին քաղաքս յերկրի, զի ունիցին բնակութիւն յերկինս: Լուր երանելւոյս զինչ ասէ. "Վասն այսորիկ թողի զքեզ ՚ի Կրետէ": Իբրև զտուն մի զամենայն աշխարհ բաժանեցին, և այնպէս զամենայն մատակարարէին և ամենեցուն պաշտպանիչ լինէին, ոմն զայս և ոմն զայն կողմն կալաւ:

"Վասն այսորիկ, ասէ, թողի զքեզ ՚ի Կրետէ, զի որ միանգամ պակաս ինչ իցէ՝ ուղղեսցես": Նա չև ևս հրամանաւ տալով պատուիրէ: Այլ զի ուղղեսցես, ասէ: Տեսանես զմիտս սուրբս յամենայն նախանձուէ. ամենայն ուրեք զաշակերտելոցն զօգուտ խնդրէ, ոչ ինչ հաւաստի բանից պահանջէ, այլ թէ անձամբ և թէ այլովք, միայն զի ուղղութիւն ինչ կարգեսցի: Ուր վիշտք և աշխատութիւնք էին՝ զայն անձամբ վճարէր, և ուր պատիւ մեծաւանդ և ոչ աշխատութիւն՝ զայն աշակերտին հրամայէր, եպիսկոպոս առնել, ձեռնադրութիւնս

կարգել և զայլ ինչ զամենայն զգիւրինսն՝ ուր ուղղութեան և առաւել հաստատութեան պէտք էին ։ Զինչ խօսիմ , զքո՞ կարգեալն ուղղիցէ , չհամարիս յոռութէ իւրս , չիցե՞ն քեզ անարգանք ։ Ոչ , ասէ , քանզի 'ի հասարակաց օգտուտն միայն նայէին . եթէ ինև և եթէ այլով , միայն զի լինիցի ինչ , չէ ինձ ինչ փոյթ , չհամարիմ անարգանս , այլ մանաւանդ և պարծանս իսկ ։ Այնպիսի միտս պարտ է ունել առաջնորդն . մի՛ զանձին ինչ պատիւ խնդրել , այլ զհասարակաց օգուտ ։

" Եւ կացուսցես , ասէ , ըստ քաղաքաց երիցունս „ ։ Զեպիսկոպոսաց ասէ , որպէս և 'ի բազում տեղիս իսկ ասացեալ եմ զայս ։ " Որպէս և ես քեզ հրամայեցի , ասէ . եթէ իցէ ոք անարատ „ ։ Ըստ քաղաքաց , ասէ ։ Չկամէր եթէ ամենայն իսկ կղզւոյն նա միայն լինիցի հրամանատար , այլ զիւրաքանչիւր անձանցն զիւր հոգս բառնայցեն . զի այնպէս և նմա թեթև լինիցի յաշխատութենէ , և ժողովրդոցն 'ի բազում խնամս վայելել , յորժամ ոչ մին զբազում եկեղեցեաց զվերակացութիւնն յանձն կորզիցէ , այլ միում եկեղեցւոյն միայն պարապիցէ և զնոյն յարդարիցէ , նմին խնամ ունիցի ։

" Եթէ իցէ ոք , ասէ , անարատ , միոյ կնոջ այր , որդեակս ունիցի հաւատացեալս , մի՛ 'ի բամբասանս գիջութեան կամ անհնազանդս „ ։ Ը՞ր վասն զայնպիսին 'ի մէջ բերէ . զի կարկիցէ զբերանս հերձուածողաց որ զամուսնութիւն խոտիցեն . ցուցանէ թէ ոչ է ինչ պիղծ գործն , այլ այնպէս պատուական՝ զի հանդերձ այնիւ իսկ մարթի ելանել նստել 'ի սուրբ յաթոռն . միանգամայն և զաղտեղիսն պատժէ , և չտայ թոյլ երկրորդ ամուսնութեամբ իշխանութեան լինել հաւատարիմ ։ Որ ընդ կնոջն վախճանելոյ զգութ և զխնամ չպահիցէ , զիա՞րդ կարիցէ լինել այլոց բարւոք վերակացու . և յորպիսի՞ ինչ բամբասանս չանկանիցին ։ Գիտէք ամենեքին , գիտէք իսկ , թէպէտ և չիցէ յօրինաց արգել երկրորդ ամուսնութեանն , սակայն բազում ինչ բամբասանք կան 'ի գործն . և վասն այնորիկ ոչ կամի և ոչ մի ինչ պատճառս տանել յիշխանէն ժողովրդոցն ։ Նմին իրի իսկ նախ քան զամենայն ինչ դնէ , " եթէ իցէ ոք անարատ „ . այսինքն եթէ 'ի բամբասանաց ոք ազատ իցէ , եթէ չիցէ ոք որ զնորա վարսն պար-

սաստել կարիցէ։ Լուր և Քրիստոսի․ "Եթէ լոյսդ որ 'ի քեզ է խաւար իցէ, խաւարն քանի՜ոն":

"Որդեակս ունիցի հաւատարիմս, մի՛ 'ի բամբասանս դիջութե կամ անհնազանդս": Միտ դիցուք զիարդ և վասն որդւոց բազում հոգաբարձութի պահանջէ։ Եթէ ոք իւրոց որդւոցն չկարէ լինել վարդապետ, զիա՞րդ կարիցէ այլոց ուսուցիչ լինել․ եթէ զոր 'ի բնէն ընդ իւր ունէր և ինքն իսկ անոյց, և ըստ օրինացն և ըստ բնութե իշխանութիւն իսկ ունէր՝ զնոսա ոչ կարաց կարգել, զիա՞րդ արտաքնոցն օգուտ ինչ կարիցէ գործել։ Եթէ ոչ կարի իսկ ծուլութիւն իցէ 'ի հօրէն, ապա ոչ որոց 'ի սկզբանէն իսկ առ իշխանութիւն՝ տայր լինել ստահակս․ քանզի չէ հնար և չէ իսկ որոց 'ի բնէ ընդ խնամովք անեալ իցէ և 'ի բազում դարմանս վայելեալ՝ լինել ստահակս․ ոչ եթէ բնութեամբ ինչ են մեղքն, զի այնչափ դարմանոյ յաղթիցեն։ Ապա եթէ զորդւոցն անփոյթ առնիցէ և զընչիւքն ևեթ դայցէ, սակայն և այնպիսին չէ արժանի։ Եթէ ուր բնութիւն 'ի հարկէ պահանջէր, այնպէս անգութ և անմիտ գտաւ՝ ընչիցն խնամակալ լինել առաւել քան որդւոցն, զիա՞րդ այնպիսին աթոռոյն արժանի լինիցի և յայնպիսի իշխանութիւն գալոյ։ Եթէ չկարաց խրատել ծուլութեամբ, ամբարտանութիւն է․ եթէ չկալաւ փոյթ յանձին, անգութ և անխնամ մնաց մեղադրութիւն։ Եւ արդ որ զիւրոց որդւոցն անփոյթ արար, զիա՞րդ իցէ զի այլոց խնամակալ լինիցի։ Եւ չասաց լոկ թէ մի՛ ինքեանք ինչ գիճանայցեն, այլ թէ բնաւ և բամբասանս իսկ և կարծիս չարս չունիցին։

"Զի պարտ է եպիսկոպոսին անարատ լինել իբրև այ̃ հազարապետի, մի՛ յանդուգն, մի՛ արբեցող, մի՛ գինեսէր, մի՛ հարկանող, մի՛ զօշաքաղ": Զի արտաքինն իշխանն քանզի ըստ օրինաց ունի, և 'ի հարկէ հրամայէ, յիրաւի իսկ ոչ ա̃մ ուրեք ըստ կամաց այնոցիկ որոց իշխիցէն՝ գործիցէ զոր ինչ գործիցէն․ իսկ որ կամօքն իշխիցէ, նա և այլոցն պարտի ունել զկամս, զի և շնորհակալ եւս լինիցի նմա յորժամ և նոցա ինչ կամօք վճարիցէ․ ապա եթէ ըստ իւրոց կամացն ևեթ առնիցէ զամենայն, զայլս ոք չառնիցէ իմիք արժանի՝ ոչ հարցանելոյ և ոչ գործակից լինելոյ, բռնութիւն առաւել և

ոչ հասարակաց հաւասարութիւն զվերակացութին ցու-
ցանէ ։ “Պարտ է նմա, ասէ, անարատ լինել իբրև այ հազարապետի, մի յանդուգն, մի բարկացող„ ։ Զիա՞րդ կարիցէ խրատ տալ այլոց այնպիսի ախտիցն յաղթել, եթէ նախ զանձն ոչ խրատիցէ ։ Քանզի բազում ինչ յանդգնեցուցանէ իշխանութիւնն, և յանհնարին դըժընդակութիւնս և յապիրատութիւնս գրգռէ, և զհեզ ոք և զզօն, թող թէ զխիստ ոք և զստամբակ. քանզի բազում ինչ յանդգնեցուցանէ ցասումն, եթէ ոչ նախ զայն 'ի մտի դնիցէ ցածուցանել, ևս քան զևս յանդըգնութիւն ածիցէ, և զբազում ինչ իւր իշխանութիւն եղծանէ և կորուսանէ ։

“Մի գինեսէր, մի հարկանող„ ։ Զգինեսէրս հռոմայեցն թշնամանող թարգմանեն, քանզի յերկոսեան լսի, և աստ զթշնամանողէն ասէ և ոչ զգինեսիրէ, եթէ խրատել պարտ է, սաստել յանդիմանել, մեղմով ածել 'ի հաւան և ոչ թշնամանս դնել, զի ոչ հարկ իցէ թշնամանս դնել. երկեցուցանել պարտ է գեհենին ըսպառնալեօք, զարհուրեցուցանել, կսկծեցուցանել, թըշնամանել ոչ. զի որ թշնամանիցին, և յանդուգն լինի, ևս քան զևս արհամարհիցէ զթշնամանիչսն ։ Չիք ինչ այնպէս որ առնիցէ արհամարհելի քան զթշնամանսն, և յամօթ իսկ առնեն թշնամանքն զթշնամանիչսն, և չտան մեծարոյ երևել որպէս պարտ իցէ, և ոչ զյանցաւորսն յակնածութիւն ածել ։ Բազում երկիւղածութեան պէտք են բանին յորժամ վասն մեղաց ինչ յուզիցի, զհանդերձեալ դատաստանն առաջի աչաց դնիցէ, յամենայն թշնամանաց սուրբ և յստակ լինիցի ։ Ապա թէ ոմանք կամիցին խափանել զլաւն ինչ, զձոխութիւն 'ի գործ արկանիցեն, և չլինիցի ինչ անդ լաւութիւն ։ “Մի հարկանող„ ասէ ։ Բժիշկ ոգւոց է վարդապետն. բժիշկ չպարտի հարկանել, այլ և զհարեալն և զվիրաւորեալն պարտի բժշկել ։

“Մի զօշաքաղ, այլ հիւրասէր, առատամիտ, ցածուն, արդար, պարկեշտ, պինդ, վերակացու լինել հաւատարիմ բանին վարդապետութեան„ ։ Տես որչափ առաւելութիւն առաքինութեան պահանջէ ։ Մի զօշաքաղ, զի բնաւին իսկ արհամարհիցէ զինչս ։ Հիւրասէր, առատամիտ, ցածուն, արդար, պարկեշտ. զամենայն

ինչ զոր ունիցի, ասէ, կարօտելոց բաշխիցէ։ Պինդ. ոչ զպահօղէ ինչ ասէ աստ, այլ որ ամենայն իսկ չարեաց յաղթիցէ, և լեզուի և ձեռաց և աչաց յարատոց. այսու ամենիւ երևի պնդութիւն, յորժամ ոչ միով իւիք 'ի չարեացն խախտիցէ ինչ։ Ներակացու լինել հաւատարիմ բանին վարդապետութեան. հաւատարիմ աստ բան' զճշմարիտն խօսել ասէ, և կամ որ 'ի հաւատոցն աւանդիցի' չիցէ կարօտ խնդրոց և քննութեանց։ Ներակացու լինել. զայն և եթ զմտաւ ածիցէ, զայն միայն գործ առնիցէ։ Ոչ եթէ անտեղեակ իցէ արտաքնոց բանից. վասն այնորիկ ասացի' եթէ վարդապետութեան հաւատարիմ բանին։

« Զի կարող իցէ մխիթարել և զհակառակորդսն յանդիմանել »։ Որպէս զի չեն ինչ պէտք բանիբուն ճոռոմութեան, այլ մտաց և գրոց տեղեկութեան և հանգամանաց զօրութեան։ Տեսանես զՊաւղոս զիարդ եղև գեր 'ի վերոյ ամենայն տիեզերաց, և յաղթեաց մեծամեծ ճշմարտութեանցն Պղատոնի և այլոցն ամենեցունց։ Նշանօք, ասեն, յաղթեաց։ Ոչ միայն նշանօքն, այլ թէ անցանես ընդ գործս առաքելոց, բազում ուրեք գտանես զի և վարդապետութեամբն յաղթեաց, և յառաջ քան զնշանսն և առանց ստէպ զվարդապետութիւնն 'ի գործ արկանել։ Արդար, ասէ. որպէս զի այն իսկ մարդ է որ արդարն իցէ։ « Զի կարող իցէ մխիթարել ողջմտութեամբ վարդապետութեան ». այսինքն 'ի պահպանութիւն ընտանեաց և 'ի կործանումն թշնամեացն։ « Եւ զհակառակորդսն կշտամբել »։ Զի եթէ ուսուցիչ չիցէ, ամենայն ինչ ապական լինի. որ չկամիցի կռուել ընդ թշնամիսն և գերել զամենայն միտս 'ի հնազանդութիւն Քրիստոսի և զխորհուրդս քակել, որ չգիտիցէ ուղիղ ուսուցանել զվարդապետութիւն, 'ի բաց կացցէ յաթոռոյն։ Քանզի զայլսն և 'ի ժողովուրդսն ոք գտանէ' զանարատն լինել, զորդեակս 'ի հնազանդութեան ունել, զօտարասէրն լինել, արդար, պարկեշտ։ Իսկ կարի իսկ նկարէ զպատկեր վարդապետին' զբան վարդապետութեան ունել, զորմէ բնաւ ամենևին չառնէաք փոյթ այժմ։

« Քանզի են, ասէ, բազումք[1] անհնազանդք, զրա-

1 Ցօրինակին բազում և անհնազանդ բանք ։

բանք և զմիտս խաբեք, մանաւանդ որ 'ի Թլփատութենէ անտի են, զորս պարտ է ըմբերանել,,: Տեսանես զիարդ ցուցանէ ուստի են այնպիսիքն. չկամէին ընդ իշխանութեամբ մտանել, այլ իշխանք լինել. քանզի զայս ակնարկեաց: Եթէ զորս հաւանեցն չկարես, նոցա հրաման մի տայցես, այլ ըմբերանեսջիր յայլոց օգուտ: Օ ինչ իցէ շահն եթէ անհնազանդք իցեն. Եր վասն պարտ է ըմբերանել: "Որք զողջոյն տունս կործանեն, և ուսուցանեն որ ինչ չէ արժան վասն զօշաքաղութեան,,: Եթէ զվարդապետութիւն ընկալար, և չիցէ բաւական կռուել և ըմբերանել զյանդգնեալսն, այնպիսին ամենեցուն կորստեան և վնասու պատճառք լինիցի: Եթէ խրատէ ոմն իմաստուն, "Մի՛ խնդրիցես, ասէ, լինել դատաւոր, գուցէ ոչ կարիցես 'ի միջոյ բառնալ զանօրէնութիւնն,,, որչափ ևս առաւել աստ յիրաւի ոք ասիցէ՝ մի խնդրեր լինել վարդապետ, եթէ հեռի իցես 'ի պիտոյից առաքինութեան. Թէպէտ և ձգիցէ ոք, 'ի բաց փախիր: Տեսանես, ամենայն ուրեք զիշխանութիւն և զօշաքաղութիւն՝ պատճառ յօժարելոյ յայնպիսի գործ որում չիցէ բաւական: Ուսուցանեն, ասէ, որ ինչ չէ արժան վասն զօշաքաղութեան:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Զիք ինչ զոր ոչ ապականէ ախտն այն: Այլ որպէս հողմն ինչ մրրկեալ 'ի ծովու շնչիցէ և զամենայն ներքոյ 'ի վեր շրջիցէ մինչև զաւազն յատակացն ընդ մեալ[1] ալիսն խառնիցէ, նոյնպէս և այս ախտ յորժամ 'ի միտս մտանիցէ՝ զամենայն վեր 'ի վայր տապալէ, կուրացուցանէ զտեսանելիս մտացն, մանաւանդ փառաւորութե̃ մոլութիւն: Արծաթսիրութիւն վաղվաղակի արհամարհի եթէ կամեսցի ոք. իսկ 'ի բազմաց՛ բարգաւաճ լինել և պատուել՝ հազիւ և մեծաւ աշխատութեամբ: Եթէ արհամարհիլ ոք կարիցէ, մեծի զգաստութեան գործ է, հրեշտակական ոգւոյ՝ որ անդր իսկ 'ի վերին կամարս երկնից երթալ հասանիցեն: Քանզի չէ և չէ իսկ ինչ քան զայն ախտ բռնաւոր որ զամենայն ըմբռ-

1 Զիք 'ի յոյնն:

նեալ ունի, իցէ որ բազում իցէ և իցէ որ սակաւ, բայց
սակայն ամենայն ուրեք: Եւ զիա՞րդ կարիցէ ոք նմա գեր
'ի վերոյ լինել, Թէպէտ և ոչ ամենայն իսկ, գէթ սա-
կաւ ինչ մասին: Եթէ յերկինս նայիցիմք և զա̃ծ ու-
նիցիմք առաջի աչաց, եթէ մեծամեծս ինչ քան զերկ-
րաւորս զմտաւ ածիցեմք: Իմա՛ց յորժամ ցանկանայցես
փառաց և հասանիցես ևս, վախճանին միտ դիջիր, և
գտանես զի ոչ ինչ է իսկ: Տես որպիսի ինչ վնասք կան
անդ, յորպիսի բարութեանց վրիպեցուցանէ. զաշխա-
տութիւնսն և զձգունսն յանձին կրիցես, և 'ի պտղոցն
և 'ի պարգևացն զրկեալ գտանիցիս: Ի միտ առ զի բա-
զումք են և չարք, և արհամարհեսջիր զփառս նոցա. մի
ըստ միոջէ ած զմտաւ թէ զինչ են, և տեսանիցես զի
ծաղու և կատականօք լի են, և ամօթով մանաւանդ և
ոչ փառօք. և ապա յետ այսր և բարձ զմիտս, և հա-
սանիցես 'ի վերին Թատերսն 'ի հանդէս:

Յորժամ բարի ինչ գործիցես, զմտաւ ածես թէ և
մարդկան պարտ է ցուցանել, և խնդրես տեսողս իրացն,
և տառապիս երկնես թէ յանկարծակի ոք տեսանէր.
ած զմտաւ թէ ա̃ծ տեսանէ, զամենայն զցանկութիւն
շիջուցանես. մերժեաց յերկրէ, և անդ ևեթ հայեաց
'ի վերին Թատերսն յերկնից հանդէսն: Մարդիկ թէ-
պէտ և գովիցեն, սակայն յետոյ պարսաւեն և նախան-
ձին և բիծս կարկատեն. և եթէ զայն չառնիցեն, այլ
ընաւ և օգուտ ինչ չառնեն այնմ զոր գովիցենն: Իսկ
առաջի ա̃յ ոչ այնպէս, այլ ուրախ առնէ և գովէ զուղ-
ղութիւնսն մեր: Ասացեր ինչ բարւոք և ձայթիս հա-
նեն զգովել. զի՞նչ շահ իցէ. եթէ օգտէին ինչ որք ըզ-
ձայթիսն հանէին, դառնային և պիտանիք լինէին, և
յառաջին չարեացն հեռանային. և արդարև պարտ էիր
իսկ ուրախ լինել ոչ ընդ գովութիւն և ընդ ձայթիսն,
այլ ընդ բարւոք և զարմանալի դարձն: Իսկ եթէ հա-
նապազ գովեն և ձայթիս հանեն և շահ ինչ ոչ 'ի ձայ-
թեացն, տրտմել իսկ մանաւանդ պարտ է, զի 'ի դա-
տաստանս և 'ի դատապարտութիւն նոցա լինի այն:

Այլ թերևս յերկիւղածութիւնն ինչ ապաստան ի-
ցես: Եթէ արդարև երկիւղած իցես և չգիտիցես ինչ
արատ զանձին, խնդալ պարտ է, ոչ զի այնպէսն թուի-
ցի, այլ զի իցես իսկ. ապա եթէ չիցես, գիտասջիր զի

տա 'ի բազմաց փառացն ցանկացեալ ես. զմտաւ ածջիր եթէ ոչ նոքա զատիցեն զքեզ յաւուրն յայնմիկ, այլ որ զծածուկն հաւաստեաւ գիտէ։ Եւ եթէ գիտիցես մեղս ինչ զանձին և ամենեցուն սուրբ կարծիցիս, ոչ միայն խնդալ չէ պարտ, այլ և տրտմել և յոգւոյ հանել զառնապէս, յորժամ ստէպ զմտաւ ածիցես զօրն յորժամ ծածուկք խաւարին լուսաւորիցին։

Դու այժմ 'ի պատիւ վայելես և չարկանես ընդվայր արտասուս. զի՞ գիտես եթէ պարտական կացուցանէ ըզքեզ այն. քանզի ոչ եթէ պատիւ ոք տայցէ քեզ, այլ պատիժս պահանջիցեն։ Եւ արդ խնդա՞լ ինչ պարտ իցէ ընդ այն. թէ չգիտիցե՞ս՝ ընդ այլոյն ամենեսին և զայն ես յառաջ բերէ ած զի 'ի պատիւսն վայելեցեր. չտեսանե՞ս զի ընդ[1] այն ես համարի ած մարգարէիւն. «Եդի յորդւոցն ձերոց 'ի մարգարէս և յերիտասարդացն ձերոց 'ի սրբութիւն». և այժմ յանհոգս վայելես, չգիտիցես թէ մեծամեծ կրելոց ես ընդ այնր։ Որ չպատուեսցի ստոկն յաշխարհի, այլ արհամարհեալ և անարգ շրջիցի, թէպէտ և այլ ինչ չշահի, գէթ ընդ պատուելոյն 'ի ծառայակցացն պատիժս չտայցէ. նա և այլ ինչ բազում շահս շահի, ամփոփի, խոնարհի, և եթէ կամիցի ևս՝ չկարիցէ երբէք մեծամտել, այլ կարի իսկ զգոյշ կայ անձին։ Իսկ որ վայելիցէ 'ի պատիւսն, մեծամեծ պատժոց պարտական գտանի. ապա և 'ի հպարտութիւն հատանի և 'ի սնապարծութիւն գայ, և լինի ծառայ մարդկան։ Եւ իբրև տէրութիւնն այն աճիցէ, ապա բազում ինչ հարկ լինի նմա առնել զոր և ոչ իսկ կամիցի։

Եւ արդ 'ի միտ առեալ թէ այս լաւ է քան զայն՝ մի խնդրեսցուք պատիւ, և որք զպատիւն պարգևիցեն՝ զնոսա 'ի բաց մերժեսցուք, թօթափեսցուք յանձանց, շիջուսցուք զցանկութիւնն զայն։ Զայս առ իշխանս և որ ընդ իշխանութեամբ իցեն ասեմք։ Զի ոգիք որ պատուոյ և փառաց ցանկանայցեն, չտեսանիցեն զարքայութիւն երկնից։ Ասեմ ինչ զիմ և չեն իմ բանքս, այլ այ. թէպէտ և արդարութիւնս ինչ գործէ, չտեսանիցէ զարքայութիւն. «Ընկալան, ասէ, զվարձս իւրեանց»։

1 Ցայնն ընդ այլ բարերարութիւնս համարի։

Որ և վարձս չառնուցու, զիա՞րդ տեսանէ զարքայութի երկնից։ Զարգելում ցանկանալ փառաց, այլ կամիմ զի ճշմարիտ փառացն ցանկանայցես որ յայն պարգևին, որոց գովութիւն ոչ 'ի մարդկանէ է, այլ յայ։ Ի ծածուկ ունիցիմք զերկիւղածութիւն, մի 'ի վերայ զգեցեալ հպարտութիւն, բազում խաբէութիւն և կեղծաւորութիւն. 'ի բաց մերկասցուք զմորթն գառնէի, և եղիցուք գառինք հաւաստեաւ։ Չիք ինչ անպիտան քան զմարդկան փառաւորութիւն։

Եւ արդ ասէ սա, եթէ տեսանէիր զբազմութիւն մանկանց ստնդիեցաց, փառաւորութիւն ինչ համարէիր և այնպիսի փառա՞ց ցանկայիր. գիտեմ թէ ոչ։ Նոյնպէս համարեաց ամենեքին զամենայն փառս մարդկան. վասն այնորիկ իսկ սնոտի փառք կոչին։ Զտեսանիցե՞ս զազգի ազգի դիմակսն զոր դնեն երեսաց գուսանքն, զիա՞րդ գեղեցիկ թուին և պայծառք և երևելիք։ Եւ ո՞ւր ցուցանիցես այնպիսի գեղեցիկ ինչ երեսս հաւատեաւ. գիտեմ թէ չկարիցես ցուցանել։ Իսկ արդ ցանկա՞լ ինչ պարտ իցէ այնպիսի մուրացածու պաճուճանաց. և ոչ երբէք։ Ընդէ՞ր. քանզի սնոտի և ընդունայն են և նմանութիւն դեղոց, և ոչ դեղ ճշմարիտ։ Նոյնպէս և փառս աշխարհի սնոտի են և նմանութիւն փառաց, և ոչ փառք. մին միայն մնայ որ 'ի ներքոյ լուսաւորութիւն իցէ։ Այլ արտաքին ինչ պաճուճանք առ ժամանակ մի ծածկեն զտգեղութիւն առ մարդկան ականէ և մինչև ցերեկոյ. և յորժամ թատերն զրաւ լինիցի և պաճուճանք 'ի բաց մերկանայցեն, և ապա իւրաքանչիւր ոք որպէս և էրն՝ նոյնպէս և գտանի։ Եւ արդ մի խաբէութեամբ և կեղծաւորութեամբ ունիցիմք զճշմարտութիւն։

Եւ արդ ասէ սա, զի՞նչ օգուտ իցէ յորժամ բազումք աստի անտի 'ի մեզ նայիցեն. սնապարծութիւն միայն է և ընդունայն փառք, և այլ ինչ ոչ աւելի։ Եւ եթէ ոչ՝ երթ 'ի տուն, և յորժամ միայն առանձին լինիցիս, ո՞ւր քքուանքն իւրովի իսկ 'ի բաց մերժիցին։ Յորժամ արտաքս ելանիցես և այսր անդր շուրջ շուրջ նայիցիս, զի՞նչ օգուտ իցէ. վայրիկ մի՝ և փախեաւ գնաց իբրև զծուխ մաղեալ։ Զանձնէ[1] ասէ որ ինչ իւրաց այս-

1 Փոփոխակ հատուածիդ Զանձնէ․․ խոյ մաղոյ, յորմէ ասէ Արդ որ ինչ չէ ճշմարիտ, այսպէս ուրէմն։

պէս խօսիմք, այլ և է իսկ մնացս. և զխորդ իցէ ան-հանճարութիւն և անմտութիւն: Ի մեծն միայն հայեա-ցուք եթէ զիարդ ած գովիցէ: Եթէ զայն գիտիցեմք, ոչ երբէք խնդրեմք զմարդկան. այլ թէ և հասանիցէ ուստեք, արհամարհեմք և ծաղր առնեմք, որպէս թէ տղայոյ ցանկացեալ և կաւ առնուցումք, և այնպէս հա-մարեսցուք:

Մի՛ ոք գովեսցէ զքեզ, քանզի ոչ օգուտ գործեաց. թէպէտ և պարսաւիցէ, չառնէ ինչ վնաս: Յոյ կողմանէ երկոքին 'ի շահ են և 'ի վնաս. 'ի մարդկանէ կուսէ զուր և 'ի նանիր: Եւ այսու լինիմք նմանողք այ, քանզի չէ կարօտ փառօք մարդկան. "Փառս, ասէ, 'ի մարդկանէ ես ոչ առնում": Եւ արդ աղէ սաս, փոքր ինչ իցէ այս: Յորժամ դու ոչ կամիս արհամարհել զփառս, և ես արհամարհեմ և այ նմանող լինիմ, և զայն ուսանիցես և չարհամարհիցես: Քանզի չէ հնար մարդոյ որ փառաց ծառայ է, եթէ ոչ ամենայն իրիք ծառայ լինի-ցի, նա և քան զծառայսն ևս ստորագոյն: Քանզի ոչ այնպէս կարեմք հրաման տալ ծառայից, որպէս և փառքն իւրեանց հնազանդելոյն. զանարժանս և զամօթալիս և խօսել և առնել և յանձն ընդունել, մանաւանդ յոր-ժամ զտանիցէ զիւր հպատակն՝ ևս քան զևս յանձա-խէ զհրամանսն:

Փախիցուք այսուհետև փախիցուք, աղաչեմ, յայն-պիսի ծառայութենէ: Զիա՞րդ կարիցեմք փախչել. ե-թէ զգաստանայցեմք, մերժիցիմք յաւելորդացն. եթէ ուսանիցեմք զաշխարհիս իրս իբրև զերազս և զստուերս և ոչ այլ ինչ աւելի, վաղվաղակի զեր 'ի վերոյ լինիմք փառացն. այնուհետև ոչ մեծամեծօք և ոչ փոքունք ըմբռնիցիմք 'ի նոցանէ. և եթէ 'ի փոքունսն չարհա-մարհիցեմք, ապա և 'ի մեծամեծսն վաղվաղակի ըմբռ-նիմք: Ի բաց կորեսցուք զակունս աղբերցն, այն իսկ է հպարտութիւնքն, և խոնարհագոյն յարդարեսցուք զմիտս. զի մինչդեռ հանդարտութիւն 'ի միտսն չկայցէ, չկարեմք զառ 'ի բազմացն պատիւ արհամարհել: Հան-ցուք զհպարտութիւն 'ի մտաց, ունկնեսցուք ընդ այնր զխոնարհութիւն, զի համարձակ լիցի ամբառնալ զմիտս յերկինս, ուր ունել խոստացելոց բարութեանց: Արդ լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասի-

և այնմ զանձինս նուիրիցեն՝ բագին կանգնեցին, որպէս զի ասիցեն եթէ իցէ ինչ անգիտ ա͞ծ զոր մեք չգիտիցեմք. և գրեալ էր 'ի բագնին՝ եթէ "Այս բագին անգիտին ա͞յ": Իսկ արդ ասէ՝ եթէ զոր դուք յառաջագոյն յանգիտութեան պաշտէիք, զնոյն և ես եկեալ պատմեմ ձեզ, որոյ և ազգ իսկ եմք: Իսկ զԴիայ ասէր պիտակէսն. "լի ես երկիւղիւղ[1], լի ես ծովուք". և յետ սակաւ միոյ ասէ, "որոյ և ազգ իսկ եմք":

Իսկ զիա՞րդ Պաւղոս որ ինչ զԴիայն էր ասացեալ, զայն յամենեցունցն ա͞ծ ձգէ: Ոչ եթէ որ ինչ զԴիայն էր ասացեալ զայն յա͞ծ ձգէ, այլ որ ինչ ա͞յ վայել էր և ոչ Դիայ. որ ինչ ոչ հաստատութեամբ և ճշմարտութեամբ կայր 'ի վերայ Դիայ, զայն հատուցանէ ա͞յ: Քանզի և ա͞ծն անուն՝ նորա միայն է, և անօրէնութ͞ի և կարի իսկ ամբարշտութեամբ կայր 'ի վերայ կռոցն: Իսկ արդ ուստի՞ պարտ էր խօսել ընդ նոսա, 'ի մարգարէի՞ց. այլ չհաւատային: Նա և ընդ Հրէայսն ոչ եթէ յաւետարանէն ինչ խօսէր, այլ 'ի մարգարէիցն. վասն այնորիկ ասէ՝ եթէ "Եղէ ընդ Հրէայսն իբրև զՀրէայ, և առ անօրէնսն իբրև անօրէն, և առ օրինաւորսն իբրև ընդ օրինօք": Իսկ ա͞ծ զմոգսն ոչ հրեշտակօք ած և ոչ մարգարէիւք և ոչ առաքելովք և ոչ աւետարանչօք, այլ աստեղբ. քանզի այնք արուեստի արուեստականք էին, և այնու ձգեաց ած զնոսա: Երինջովք զտապանակն. եթէ երթայցեն, ասէ, ուղիղ ընդ այս նիշ ճանապարհ, արդարեւ ա͞յ ցասումն է, իբրև զիղձս:

Մի՛թէ ա՞յն ինչ կամք էին ա͞յ: Ոչ անդր. այլ յիւրեանց բերանոց կամի յանդիմանել և կշտամբել զնոսա: Դարձեալ առ վհկօքն. զի յայն հաւատոց, անտի ետ լսել Սաւուղի զվախճան: Իսկ է՞ր վասն զդեն ըմբերանեաց Պաւղոս, որ ասէր եթէ "Այս արք ծառայք ա͞յ բարձրելոյ են, որ պատմեն ձեզ զճանապարհս փրկութեան": Ընդէ՞ր Քրիստոս արգելոյր զդևսն խօսել ինչ զնմանէ: Ընդ յիրաւի իսկ, քանզի նշանքն գործ վճարէին. և ոչ եթէ աստղ էր, այլ ինքն զինքն քարոզէր, և չկարէին պատճառել դևքն: Իսկ ոչ կուռքն

1 Այսպէս յօրինակին. իսկ ըստ բանից Արատոսի քերթողին այսպէս ունի յոյնն Դիոսի լի են ճանապարհք, լի է ծովն:

ինչ էին որ խօսէին՝ եթէ արգելու․ նա և Բաղաամու ոչ թոյլ ետ օրհնել զժողովուրդն, և չարգել 'ի գալոյն․ և այսպէս ամենայն ուրեք զիշխանի և ըստ մեզ խոնարհէր։ Այլ ընդ այն զի զարմանայցես․ քանզի ինքն իսկ իւր կարծիս ինչ որ չեն նմա արժանի, ցուցանէ յորժամ իբրև զմարմնաւոր և զերևելի յայտնիցի։ Այլ արդ առ այն ասէ՝ եթէ “Հոգի է ա՟ծ„։ Այլ երբեմն կարծեցուցանէր թէ ընդ զօհս ինչ ուրախ լինիցի, որ կարի իսկ օտար էին 'ի նմանէ․ և բանս այնպիսի խօսի, որ բնաւ իսկ չեն պատշաճ նորա դաւանութեանն, և այլ ինչ նոյնպիսիս։ Եւ ինչ յիւր պատիւ հայի, այլ ամենայն ուրեք՝ 'ի մեր օգուտն։ Եթէ հայր ոք չհայի յիւր պատիւ, այլ ընդ մանկանն շրջէ զբարբառն և խօսի ախորժելով, զկերակրոյն և զըմպելւոյ անուն ոչ կատարեալ անուամբ կոչէ, այլ մանկտւոյն բարբառովք, որչափ ևս առաւել ա՟ծ․ որ նախատէն ևս ըստ զիջանելոյ մարգարէիւն․ “Այլ թէ փոխիցեն հեթանոսք զգիսն իւրեանց„։ Այլ ամենայն ուրեք բանս զիջանելիս և արդիւնս խոնարհագոյնս ցուցանէ։

“Վասն այնորիկ, ասէ, կշտամբէ զնոսա խստագոյնս, զի առողջասցին 'ի հաւատս„։ Քանզի ստորութիւն էնոցա, ասէ, զյանդգնութիւն, զնենգութիւն, զկոտութիւն և զբազում և այլ ևս չարիս նոյնպիսիս յանձին ունել և 'ի ստութիւնս յօժարագոյնս լինել, մեղմեխք, որկորեայք, դատարկք, սաստիկ յանդիմանութեան կըշտամբութեան պէտք են․ քանզի հեզութեամբ և մեղմութեամբ ոչ գան այնպիսիքն յուղղութիւն։ Յանդիմանեա, ասէ, կշտամբեա զնոսա։ Ոչ զօտարաց ինչ ասէ աստ, այլ զընտանեաց։ Այլ կշտամբեա խստագոյնս․ 'ի խորոց հատ, ասէ, զվէրն։ Զի ոչ առ ամենեսին միով կերպարանօք իցէ մատչել, այլ այլ ազգի ազգի և պէսպէս կերպարանօք, և ըստ նոցա յորս մատուցեալն իցէ բժըշկել․ և չհրամայէ աստ մխիթարել։ Զոր օրինակ զհեզն և զազնուականն եթէ կշտամբիցէ ոք՝ սպանանէ կորուսանէ, նոյնպէս և որում սաստին պէտք իցեն՝ եթէ ողոքիցէ ոք՝ ապականէ և չտայ զարթնուլ։

“Զի առողջ լինիցին, ասէ, 'ի հաւատս„։ Ապա ուրեմն այս է առողջութիւն յորժամ ոչ զտգեղ ինչ և զօտարոտի 'ի ներքս խառնիցէ։ Եթէ որ զկերակուրսն

խօսքն չիցեն առողջ, այլ խօթք և հիւանդք, «զհի-
ւանդացեալս, ասէ, 'ի հաւատոցն ընկալարուք, մի 'ի
խտրանս երկմտութեանց», զնոցա զինչ ասիցեմ որք ըղ-
նոյն իսկ զպահս հրէից պահիցեն և նոյնպէս 'ի շա-
բաթուն պատուարկանայցեն, որք 'ի ձօնեաց տեղիսն եր-
թայցեն, զայն որ 'ի Պաղեստինէ է ասեմ և որ Սատրո-
նայքն կոչին, և որ 'ի Կիլիկիա տեղլին իմն է, և 'ի Կոա-
նայ անուն անուանեն: Իսկ արդ զիա՞րդ իցեն այսպիսեացն
առողջք. վասն որոյ և բազում իսկ առաւելից պէտք են
առ այնպիսիսն: Յորժամ ոք ոչ 'ի հաւատոց առնէ այնպի-
սի ինչ. զի չեն նոցա այնպիսի բարք, այլ աղանդք և աղ-
նուականք:

«Իսկ մի ինչ հայել, ասէ, յառասպելս հրէականս»:
Այնպիսին իսկ առասպելք են հրէականքն, մի զի այլ ընդ
այլոյ իսկ բազում ինչ իրք են, և միւս ևս զի յանժամ
ժամանակի գործին. և այսուհետև առասպելք են: Յոր-
ժամ չիցէ պարտ կատարել և կատարիցեն, առասպելք
են և միտասակութք իսկ, առասպելք անօգուտ և կարի
անշահք: Ո՛չ որպէս նոցա չէ պարտ առնել, նոյնպէս
և զայն յանձն առնուլ որ 'ի նոցանէն ինչ կատարիցի,
քանզի և ոչ առնի զալ յառողջութիւն: Իսկ եթէ հաւա-
տարիմ են քեզ հաւատք, զի՞ այլ ինչ 'ի վերայ դնես,
որպէս զի եթէ չիցեն բաւական հաւատքն արդարացու-
ցանել ազատս: Յորժամ առնես տարուկ զանձն և արկա-
նես ընդ օրինացն ծառայութեամբ: Զիցես վտանգ[1]
յիրան, ախտացելոյ և անհաւատի նշանակ է այն: Հա-
ւատք են, և չէ պարտ երկմտել. եթէ երկմտիցես, չես
հաստատուն 'ի հաւատսն:

«Ամենայն ինչ, ասէ, սուրբ է սրբոց»: Տեսանես
զի առ իրս ինչ են բանքն: «Իսկ պղծոցն և աղտեղեաց
և անհաւատից և ոչ ինչ է սուրբ». ապա ուրեմն ոչ ըստ
իւրում բնութեանն է սուրբն կամ անսուրբն, այլ ըստ
ընդունողաց և ճաշակողաց կամաց: «Պղծեալ են,
ասէ, նոցա միտք և խորհուրդք. խոստանան ճանաչել
զԱծ, և գործովք իւրեանց ուրանան. պիղծ են և ան-
հաւանք, և յամենայն գործս բարիս խոտանք»: Ապա
ուրեմն խոզ սուրբ է, և ընդէ՞ր իբրև զպիղծ խոտեալ

1 Յօրինակին տպաւոր. երկու ըստ յունին:

իցէ ։ Ոչ եթէ բնութեամբ պիղծ ինչ էր, քանզի ամե-
նայն ինչ սուրբ է ։ Նա թէ ոչ՝ քան զճուկն ինչ այլ
պիղծ չիք, զի և զմարդոյ մարմին ուտէ . այլ հրամայեալ
էր և սուրբ թուէր ։ Կարծեալ և քան զհաւ չիք ինչ
պիղծ, քանզի որդն ուտէ . նոյնպէս և քան զեղջերու չիք
ինչ պիղծ, և վասն այնորիկ ասեն կոչի եղափին [1], զի զօձ
ուտէ . քանզի եղջերուի անուն հոռոմերէն օձահալած
կոչի ։ Նայլ զայս ամենայն ուտէին ։ Այլ ընդէ՞ր զխոզն և
զայլ ևս ինչ խոտեցին օրէնքն . ոչ իբրև զպիղծ ինչ,
այլ զյաճախութիւն փափկութեան պարուրէն ։ Այլ ե-
թէ այնպէս չէր ասացեալ, թերևս չառնուին իսկ յանձն .
նա աւանիկ պղծութեան երկիւղիւ կալաւ, և ապա ա-
ռին յանձն ։ Այլ արդ ապէ ասա, զի՞նչ քան զգինի ան-
մաքուր [2] կայցէ, եթէ զայսպիսի ինչ իրս պարտ է քըն-
նել . զի՞նչ քան զջուր անմաքուր, որով սրբէին իսկ [3] ։
Այլ այսպէս մանկտւոյ վարդապետութիւն էր ։ Այլ միտ
դիր, զինին ո՞չ ապաքէն և յաղբոյն ունիցի մասն ինչ .
զոր օրինակ 'ի հողոյն ձգէ որթն զխոնաւութիւն, նոյն-
պէս յաղբոյն որ առընթեր կայցէ ։ Եթէ այնպէս կա-
միք ճշդիւ զամենայն խնդրել, ամենայն ինչ պիղծ է .
այլ չիք ինչ պիղծ, քանզի ամենայն ինչ սուրբ է . չա-
րար ինչ ա̃ծ պիղծ, և չիք ինչ իսկ պիղծ, բայց միայն
մեղքն որ յոգիսն մերձենան և աղտեղացուցանեն ։ Այլ
այն ամենայն կանխակալ սովորութիւն է մարդկեղէն ։

“Պղծոց, ասէ, և անհաւատից չիք ինչ սուրբ, այլ
պղծեալ են նոցա միտք և խորհուրդք”։ Ո խա՞րդ սուրբն
պիղծ ինչ լինիցի ։ Որոյ միտք խօթ են, նմա ամենայն
ինչ աղտեղի է . եթէ մի ինչ խնդրիցէ՝ եթէ այն սուրբ
է և այս պիղծ, և ոչ 'ի մի ինչ չէ պարտ մատչել . քան-
զի և այն զոր սուրբն կարծէ՝ պիղծ է, զձկանէ ասեմ
և զայլոց նոյնպիսեացն ըստ նոցա մտացն ։ “Պղծեալ
են, ասէ, նոցա միտքն և խորհուրդք”։ Զասաց թէ ա-
մենայն ինչ պիղծ է, այլ 'ի նոսա փչեաց զամենայն ։ Չիք
ինչ, ասէ, պիղծ, այլ նոցա միտքն և խորհուրդք պիղծ

1 Յունականն է ἔλαφος· հայց. ἔλαφον ։

2 Յօրինակին մաքուր, և զկնի քան զջուր մաքուր · երգան ըստ յու-
նին ։

3 Յաւելու յոյնն ի մեռեալ ոչ մեղջենայքն, և մեռելոյ ոչինչն · զի որ զունեալն լինէր մեռեալ էր, և նախա մարգէին ։

են. չիք ինչ պիղծ 'ի գործս այ, այլ կամքն չարք են,
պիղծ և աղտեղիք:

“ԶԱստուած խոստանան գիտել, և գործովք ուրա-
նան. պիղծ են և անհաւանք, և յամենայն գործս բա-
րիս խոտանք: Այլ դու խօսեաց, ասէ, որ ինչ վայել է
ողջմտութեան վարդապետութեանդ,,: Որպէս զի ա-
սիցէ՝ թէ պղծութիւն պիղծքն իսկ են. այլ դու մի ինչ
վասն այնր լռիցես. թէպէտ և չընդունիցին, դու զքոյն
առնիցիր. թէպէտ և չանսայցեն, դու պատուիրեա և
խրատեա: Եւ այսու ոչ սակաւ ինչ բամբասէ զնոսա.
քանզի և թէ մերկելոց չթուի ինչ թէ հաստատուն կայ-
ցէ: Եւ այն ոչ եթէ յայնցանէ զոր ուսանելենն լինիցի,
այլ 'ի նոցա աչացն զի այնպէս ուսանեն: Քանզի դան-
դաղեալք են և ցնորեալք, թուի թէ երկիրն շուրջ գայ-
ցէ փնդօք. ոչ եթէ արդարեւ շուրջ գայցէ, այլ հաս-
տատուն անշարժ կայ, և նոցա ախտին են այն կարծիքը,
և ոչ եթէ ըստ ինքեանց ինչ ախտին: Քանզի զմի ինչ
'ի մեծամեծաց արարածոց Յոյնք աստեղի կոչեն, զեր-
կինս, զերկիր, զծով, զարեգակն, զլուսին: Այնպէս և
սոքա յորժամ միտք պղծիցին, զամենայն ինչ պիղծ հա-
մարին: Եւ արդ ոչ եթէ խորհելն ինչ է սրբութիւն, այլ
յամենայն ինչ համարձակ մատչել, զկերակրոյն ասեմ,
որ սուրբ է՝ յամենայն ինչ համարձակի, աղտեղիքն՝ և
յոչինչ ոչ: Զայս և առ մարկիոնացիսն է ասել:

Տեսանես զի սրբութեան նշանակ՝ յամենայն 'ի մե-
ղաց աղտոյ ազատելն է. յորժամ մերձենայցէ ոք ամե-
նևին 'ի պղծութիւն, ոչ որ զոգիսն պղծիցէ: Իսկ և ած
յայն սակս առ զմարմինն, զի սուրբ է. եթէ յայլոց[1]
կասկած ինչ էր, ապա և առնոյր իսկ ոչ: Որ համարի
թէ պիղծ ինչ իցէ և վասն այնր չուտիցէ, այնպիսին է
պիղծ և հիւանդ միտօք. և որ ուտիցեն՝ ոչ ինչ նոյնպի-
սի: Եւ արդ մի սուրբս կոչեսցուք զայնպիսիսն, քանզի
նոքա իսկ են անսուրբք. և որ[2] յամենայն կերակուրս
անխտիր մերձենայցէ՝ սուրբ: Զայն երկիւղածութիւն
առ այնպիսի ինչ իրս պարտի ցուցանել որ զոգիսն պղ-
ծիցեն, այն է պղծութիւն, այն է անսրբութիւն, այն է
աղտ. և միւսն ոչ ինչ այնպիսի: Քանզի և ոյք բերան

1 Խանգարեալ էր բառդ յօրին: 2 Յօր. ու. եդաւ ըստ յունին:

ապականեալ ունիցին, թուի թէ յամենայն ինչ որ մեր-
ձենայցէ՝ չիցէ բարւոք, և այն անխտիր վնաս է։ Այլ
արդ զի պիտոյ իցէ գիտել զընութիւն սրբոց ինչ իրաց։

Ոմն ինչ իցէ պղծութիւն. մեղքն, չարիքն, ագահու-
թիւն, անզգամութիւն։ "Լուացարուք, ասէ, սուրբ
եղերուք, բարձջիք զչարիս ձեր յանձանց ձերոց"։ "Սիրտ
սուրբ հաստատեա յիս Ած"։ "Ելէք 'ի միջոյ նոցա և
մեկնեցարուք, և 'ի պիղծս մի մերձենայք"։ Եւ և խը-
տիրքն իսկ օրինակ էին սրբութեանց. "Ի մեռեալս,
ասէ, մի մերձենայցեն"։ Մեռեալ են իսկ մեղքն և
հոտեալ։ "Բորոտն, ասէ, պիղծ է". և մեղքն խայ-
ծոտք և պիսակք[1]։ Այլ զի զայս ակնարկէ, 'ի յաջոր-
դացն յայտ է. եթէ համակ իսկ մարմինն բորոտ իցէ՝
անպիսպին սուրբ է, և եթէ 'ի միում վայրի՝ չիցէ սուրբ։
Տեսանես զի խայծոտքն և մեղօքն խայծու[2] պիղծ է։
Դարձեալ մշտակաթն, ասէ, պիղծ է։ Յօգխող խան-
նայջիր զմշտակաթն, զիարդ ցանգ վատնէ զսերմն բա-
նին։ Որ ոչ թլփատիցին, ասէ, պիղծ է։ Տեսանես չէ
այս այլաբանութիւն, այլ օրինակ։ Որ չպարուրիցէ յա-
գուոցն զչարիսն՝ պիղծ է. որ գործիցէ 'ի շաբաթու, ա-
սէ, քարկոծեսցի. այս իսկ է, եթէ որ համապազ չպա-
րապիցէ այ՝ կորիցէ։

Տեսցուք որչափ ինչ օրինակ պղծութեանցն իցեն։
"Որ 'ի դեղսն[3] է, ասէ, պիղծ է"։ Ընդէ՞ր. ո՞չ զսերմն
և զծնունդն նա արար. է՞ր վասն պիղծ իցէ կինն, եթէ
ոչ այլ ինչ ակնարկիցէ։ Ոմն ինչ իցէ այն. երկիւղածու-
թիւն տնկեալն 'ի սրտին, զի 'ի պոռնկութենէ հեռա-
ցուցանէ։ Եթէ որ ծնանիցի պիղծ իցէ, որչափ ևս ա-
ռաւել որ պոռնկիցին. եթէ որ յիւր կինն մերձենայ՝ ոչ
կարի սուրբ իցէ, որ ընդ այլոցն խառնակի՝ որչափ ևս
առաւել պիղծ. եթէ որ 'ի դիահանացն գայցէ պիղծ է,
որչափ ևս առաւել որ 'ի պատերազմէն։ Որ բազում և
այլ կերպարանս գտանէ ոք պղծութեանց, և պարտ է
զամենայն համարել։ Բայց ոչ այժմ զայն ինչ պահան-
ջիցեմք, քանզի փոխեցան այն ամենայն սրբութիւնք
յոգւոյն սրբութիւնս. զի մարմնաւոր սրբութիւնքն մեռ

1 Խանգարեալ յօրինակին՝ Թուէր երեւալ. յոյնն բաղմոտէմ կամ բաղ-մոփեալ։

2 Ճառընտիրն խայծխոտն։

3 Այդպէս յերկոսին օրինակսն. յոյնն յանկողնի. լաւագոյն 'ի դուռն։

են առ մեզ, վասն այնորիկ յայնժամ նորօք յորդորէր, այլ այժմ ոչ։ Քանզի չէ պարտ անդէն առ օրինակօքն գեգերել նստել, և ոչ անդէն առ ստուերօքն մակաղել, այլ 'ի ճշմարտութիւն հասանել և զնմանէն բուռն հար-կանել։ Պիղծ մեղքն են, 'ի նմանէ փախիցուք, անտի մերժեսցուք. "Եթէ մերձենայցես, ասէ, 'ի նա, խայ-թէ զքեզ"։

## ՑՈՐԴՈՐԱԿ

Զիք ինչ պիղծ քան զագահութիւնս։ Ուսուցն յայտ իցէ. անդստին իսկ յիրացն։ Զպղծ իցէ զոգին և զտունն իսկ ուր յափշտակութիւն կայցէ։ Նախնին Հրէիցն չկարծէր թէ իցէ այնպիսի ինչ պղծութիւն. քանզի և զոսկերսն Յովսեփու բարձեալ կրէր Մովսէս, և Սամփ-սոն 'ի ծնօտէ արբ ջուր և յառիւծէ եկեր մեղր, և Եղ-իա յագռաւուց կերակրէր և յայրւոյն այլազգւոյ. որ և եթէ զայնպիսի ինչ ճշգիւ պարտ իցէ քննել, մագա-ղաթ գրոց նոցա որ քան զամենայն ինչ սուրբ էին, ո՞չ ապաքէն 'ի մեռելոտի անասնոցն էր. և այլն ամենայն նոյնպիսիք։ Եւ արդ ոչ եթէ մարմին պոռնիկն է պիղծ, այլ եւս չար այլքն քան զպոռնիկն. և շունն ո՞չ ապաքէն պիղծ է։ Երկոքեանն իսկ պիղծ են, ոչ վասն խառնա-կութեան, այլ վասն չարակամացն. ապա թէ ոչ՝ ըստ այնպիսի մտաց և որ յիւր կինն մերձենայցէ պիղծ է, այլ վասն անօրէնութեանն և զրկելոյ, զի զեղբայրն 'ի կարևորան զրկեաց։ Տեսանե՞ս զի չարութիւն է պիղծ։ Դաւիթ մինչդեռ զերկուս կանայսն ունէր չէր պիղծ. յորժամ զմինն արար անիրաւութեամբ՝ ապա եղև պիղծ. ընդէ՞ր, զի զրկեաց և զլացաւ։ Եւ պոռնիկն ոչ վասն խառ-նակութեան է պիղծ, այլ վասն չարակամացն, և զի մե-ղանչէ կնոջն. մանաւանդ զի միմեանց իսկ մեղանչեն, զի հասարակաց համարին զկանայս և զօրէնս բնութեան 'ի միջոյ բառնան. միում առն պարտ է լինել կնոջ. "Ա-րու և էգ արար զնոսա. եղիցին, ասէ, երկոքեան 'ի մի մարմին". և ուր անիրաւութիւն է, վասն այնորիկ են իրքն չարք։ Եւ ցասումն յորժամ անչափ[1] թշնամա-

1 Օրինակքն յայնչափ։

նօք ինչ լինիցի, պիղծ առնէ զմարդն, ոչ վասն բարկութեան, այլ վասն կերպարանաց բարկութեան. քանզի և անդ առընթերակայն կայ, "Որ բարկանայ, ասէ, եղբօր իւրում,, ոչ լոկ, այլ 'ի զուր: Յամենայն իմիք որ ինչ աւելի քան զպիտոյն է՝ պիղծ է, քանզի յանդըգնութենէ է, և 'ի լրբութենէ ծնանին մեղք:

Զարթիցուք այսուհետև աղաչեմ և սուրբ եղիցուք ճշմարտութեամբ, զի զմեծ արժանի լիցուք տեսանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՋՈՐՐՈՐԴ

"Ծերոց արթունս լինել, պարկեշտս, ցածունս, ողջամիտս, 'ի սէր և 'ի համբերութիւն: Պառաւունս նոյնպէս 'ի զգաստութիւն և 'ի վայելչութիւն. մի բանսարկուս, մի գինեմոլս, բարեխրատս, զի և զմանկամարդսն ցածուցանիցեն այրասէրս լինել, որդեսէրս, զգաստս, պարկեշտս, տնարարս, բարեգործս, հնազանդս իւրեանց արանց, զի մի բանն Այ և վարդապետութիւն հայհոյեսցի,,:

Այն ինչ թերութիւնք և ծերութեան, և ոչ միայն մանկութեան, թէպէտ և նուազագոյն իցեն քան զմանկութեան, սակայն վատութիւն, ծուլութիւն, ափշութիւն, կասելն և վատելն, յանկարծացաւուածն լինել: Վասն այնորիկ պատուիրէ ծերոցն յայնպիսի հասակի արթունս լինել:

Քանզի բազում ինչ են, որպէս ասացի իսկ, խափանիչք արթնութեան այնպիսի տիոց. նախ կասելն իսկ և վատել, և դանդաղելն առ արթուն լինել և դժուարելն առ յորդորել: Վասն այնորիկ ասէ "պարկեշտս, ցածունս,,. Ցածունս աստ զիմաստնոյն ասէ, զի ցածութիւնս այն իսկ ասի որ ինչ մտացն փրկութիւն գործիցէ: Քանզի են և են իսկ մարդք որ 'ի ծերութեան կատաղին, 'ի միտս անկանին, ոմանք 'ի գինւոյ, ոմանք 'ի

տրտմութեան. քանզի կարճամիտս ծերութիւն իսկ առնէ: «Ողջմիտս 'ի հաւատս, 'ի սէր, 'ի համբերութի՛»: Եւ բարւոք յարեաց զհամբերութիւն, քանզի այն իսկ կարի պատշաճ է ծերութեան: «Պառաւունս նոյնպէս 'ի զգաստութեան, սուրբս 'ի վայելչութեան». ընդ նմին կերպարանաց համեստութեամբ ցուցանել զպարկեշտութիւն:

«Մի բանսարկուս, մի գինեմոլս». զի այն իսկ է կարի թերութիւն կանանց և ծերութեան գրգռեցուցիչ. զի ցամաքեալ հասակին կարի մխիթարական է արբեցութիւն 'ի ցանկութիւն: Սաստի և ստէպ իսկ զնոյն պատուիրէ, զի յամենայն կողմանց զարբեցութիւնն քածուցանիցէ, և յախտէն յայնմանէ կամի 'ի բաց մերժել և ապրեցուցանել 'ի ձաղութենէն որ անտի ծնանիցի: Քանզի յայնմանէ յորդեալ ելանեն բազում մրրիկք, և մխալին երակքն չնչաբերք յորժամ յամեցէ անդէն զաւուրս գինին. և անտի իսկ առնի արբեցութիւնն: Պէտք են գինւոյ այնպիսի հասակի, քանզի [1] 'ի տկարութեան, այլ չափով. որպէս և մանկամարդացն ոչ վասն նորին պատճառանաց, այլ վասն յորդբոցոյ ցանկութեանն բորբոքելոյ:

«Բարեխրատս» ասէ: Այլում և արգելու իսկ ուսուցանելոյ զկանայս: Բայց զիարդ իցէ զի հրամայես կանանց ուսուցանել. քանզի անդ ասէ եթէ «Կնոջ մարդոյ ոչ հրամայեմ ուսուցանել»: Այլ լուր զինչ ասէ զնորին կնի. «Եւ ոչ ձոխանալ լինել քան զայր մարդ»: Որանց 'ի բնէ իսկ հրամայէ զարս և զկանայս ուսուցանել. բայց կանանց 'ի տան պատուիրէ խրատել, այլ ոչ եթէ յայտ յանդիման նստել և երկայնամիտս վարդապետութիւնս կարգել. նմին իրի իսկ յարէ 'ի նոյն՝ թէ «ոչ ձոխանալ լինել քան զայր մարդ»:

«Զի զգածուցանիցեն, ասէ, զմանկամարդսն»: Տեսանես զիարդ ժողովէ և գումարէ զժողովուրդն հնազանդեցուցանել զմանկամարդսն պառաւանց: Ոչ զդատերացն ինչ ասէ աստ, այլ լոկ թէ իւրաքանչիւր որ 'ի պառաւանցն ընդ համեստութեամբ հասակին զմանկամարդսն ածիցէ 'ի համեստութիւն: «Այրասէրս»: Այն իսկ

1 Այլպէս յօրինակին. յոյժն որպէս:

է գլուխ բոլոր իւրաքանչիւր անձանց բարութեանց ։ "Սիրեն, ասէ, զարանց գայցէ"։ Զի յորժամ այն լինիցի, ոչ ինչ յաւուլթեան գործք գործիցին ։ Եւ արդարեւ իսկ ոչ. յորժամ գլուխն 'ի վերայ ուսոցն կայցէ, և չիցէ ինչ անջրպետութիւն 'ի մէջի, ամենայն իսկ անդամքն 'ի խաղաղութեան կան ։ Յորժամ իշխանքն 'ի խաղաղութեան իցեն, ո՛վ իցէ որ բաժինս 'ի մէջ խաղաղութեան առկանիցէ ։ Զոր օրինակ եթէ նոքա ընդ միմեանս չարաբար իցեն, չիցէ ինչ շինութիւն որ 'ի տան բնակիցէ ։ Զիք ինչ քան զայն մեծ. քան զինչս և զազնուականութիւնս և զհամեստութիւն և քան զայլս ևս զամենայն առաւել շահաւոր է ։ Զատաց լոկ 'ի խաղաղութեան լինել, այլ սիրել զայս. յորժամ սէր ընդ միմեանս կայցէ, չիցէ ինչ պատճառ որ կարիցէ 'ի մէջ մտանել. և յայնմանէ առաս և այլ ևս բարութիւնք ծնանին ։ "Որդեսէրս" ասէ ։ Որ զարմատն սիրիցէ, որչափ ևս առաւել զոստս ։ "Ցածս, պարկեշտս, անարատս, բարեգործս"։ Այս ամենայն անտի ծնանին, մանաւանդ բարեգործս և անարատս լինել 'ի սիրոյն և ընդ խնամ ունելոյ ։ "Հնազանդս իւրաքանչիւր արանց, զի մի բանն Աստուծոյ հայհոյեսցի"։ Զի յորժամ զայրն չարիցէ, և տան խնամ տանի. սիրելոյ զայրն և զգաստութիւն բազում ծնանի, և հակառակութիւն 'ի մէջոյ բառնայ ։ Եթէ հեթանոս իցէ այրն, վաղվաղակի դառնայ. և եթէ քրիստոնեայ, ևս քան զևս յառաջադէմ 'ի լաւութիւնս լինի ։ Տեսանե՞ս զգիջանելն Պաւղոսի. ամենայն հնարիւք հնարի զի զմեզ յերկրաւորացս մերժեսցէ, բայց այժմ վասն կանանցն խնամակալութեան սակայ յորդորէ. զի յորժամ ամենայն բարւոք կարգիցի, ապա և զհոգևորացն մարթ իցէ զճառս 'ի մէջ բերել ։ Եւ այլ ազգ ևս. եթէ անարատ լինիցի, լկտութիւն 'ի մէջոյ բառնայ, և ցածութիւն 'ի տեղւոջն հաստատի. զի անարատն և խնամակալ լինի, չառնէ ինչ զփափկութենէ, և ոչ զվայրապար շրջելոյ, և ոչ այլոց ինչ այնպիսի իրաց պարապէ ։

"Զի մի բանն Աստուծոյ և վարդապետութիւն հայհոյեսցի"։ Տեսանե՞ս զի նախ քարոզութեան զգուշանայ, և ոչ վասն աշխարհական ինչ իրաց ։ Քանզի և առ Տիմոթէոս գրէ. "Զի խաղաղութեամբ, ասէ, և հան-

դարտութեամբ անցաւորացս զկեանս մեր ամենայն աս-տուածպաշտութեամբ և պարկեշտութեամբ„ . և աստ ասէ՝ զի մի՛ բանն այ և վարդապետութիւն հայհոյիցի: Թէպէտ և լինիցի կնոջ հաւատացելոյ ընդ առն անհա-ւատի կալ և չիցէ առաքինի, 'ի հայհոյութիւն այ սո-վոր է կրթել. և եթէ պարկեշտ իցէ, քարոզութեան յաջախեն փառքն 'ի կնոջն ուղղոյ և 'ի պարկեշտ վա-րուց: Լուիցեն կանայք որ ընդ արս չարս և ընդ անհա-ւատս կեցեն. լուիցեն և խրատեսցին, և իւրեանց բա-րուքն կարգօք յորդորեսցեն զարսն յածպաշտութիւն: Նա եթէ այլ ինչ չշահիցիս և չկարիցես ձգել զայրն յուղիղ 'ի կրօնիցն հաղորդութիւն, սակայն զբերանն կարկես և չտաս հայհոյել զքրիստոնէութիւնն: Նա չէ իսկ փոքր այն, այլ և կարի իսկ զարմանալի լինին կրօնքն մերոց գնացիցն:

„Զերիտասարդս նոյնպէս մխիթարեսջիր ցածուն լինել„: Տես զիարդ ամենայն ուրեք զարժանն պահէ. զկանանց վարդապետութէ զմեծ մասն 'ի պառաւունսն ապաստանն արար, զմանկամարդսն պառաւունքն խրա-տեսցեն, և զարանցն զամենայն նմա հրամայէ: Չիք ինչ դժուար և դժնդակ քան զայնպիսի տիս առ 'ի պատ-րել յանպատեհ ցանկութիւնսն. ոչ ընչից սէր, ոչ փա-ռաց ցանկութիւն և ոչ այլ ինչ այնպէս լլկէ զմատաղ տիս, որպէս և մարմնոյ ցանկութիւնս: Վասն որոյ զա-մենայն թողեալ, զգլխաւորն ածել՝ և այնմ պատուիրէ զգուշանալ. բայց և ոչ յայլսն ծուլալ հրամայէ: Նա զի՞նչ ասիցէ:

„Յամենայնի, ասէ, զանձն քո ցուցանիցես օրինակ գործոց բարեաց„: Ուսուցանեն, ասէ, պառաւունքն զմանկամարդսն, և դու մխիթարեսջիր զերիտասարդսն ցածունս լինել: Լինիցի առ հասարակ ամենեցուն վար-դապետ և օրինակ առաքինութեան քոյոց վարուցն պայ-ծառութիւն, իբրև զնախանկար տիպս պատկերի ունի-ցի յանձին զազնուութիւն բազում դիւրութեամբ՝ այ-նոցիկ ոյք կամիցին առնուլ 'ի նմանէ զօրինակ ազնուութե:

„Վարդապետութեան, ասէ, զանապականութիւն, զբանն ողջմտութեամբ զառանց ստգտանելոյ. զի որ հա-կառակորդ իցէ, յամօթ լիցի, մի ինչ կարասցէ խօսել զմէնջ յոռութիւն„: Զհակառակորդէն զսատանայէ

տաէ, և զամենայնէ որ ինչ նորա սպասաւորութիւն իցէ : Յորժամ վարք պարկեշտ իցեն և բանքն ընդունելիք, հանդարտք և քաղցունք, և ոչ ինչ տայցէ պատճառս թշնամանացն, բազում և անչափ շահք շահին : Յաճախ առաքինութե բանին սպասաւորութեան պէտք լինիցին, ոչ դոյզն ինչ բանի, այլ որ ընտիրն և անարատ իցէ, որ ոչ մի ինչ ուստեք տայցէ պատճառս նոցա որ զպատճառսն խնդրիցեն :

“Ծառայիցն իւրաքանչիւր տերանց հնազանդել, յամենայնի հաճոյ լինել”: Տեսանես զինչ ասաց յառաջագոյն. “Զի որ հակառակորդն է, ասէ, յամօթ լիցի, մի ինչ ունիցի զմէնջ խօսել յոռութիւն”: Ապա ուրեմն սոդոմանաց արժանի է որ զկանանայսն յարանց մեկնիցէ և զծառայս 'ի տերանց հրապուրիցէ նախկին կերպարանօք : Իսկ արդ չիցէ այն կարի սոդոմանք, և զբազում ինչ հաւատացելոց և անհաւատից տայցէ պատճառս բանսարկու զբերանս խօսել զմէնջ հայհոյութիւն : “Ծառայիցն իւրեանց տերանցն հնազանդ լինել 'ի յամենայնի հաճոյս, մի հակառակողս, մի հատուս. այլ զամենայն զբարի հաւատս ցուցանել, զի զվարդապետութիւն փրկչին մերոյ զարդարեսցեն յամենայնի”: Ապա ուրեմն յիրաւի ասաց 'ի միւսում վայրի՝ եթէ “Իբրև ոչ ծառայել և մի իբրև մարդկան”: Որպէս և զտէրն պաշտիցեն խնամով, այլ պատճառան յոյժ երկիւղէն առնի զսկիզբն :

## ՅՈՐԴՈՐԱԿ

Զի որ այնպիսի երկիւղիւ ծառայիցէ, մեծաց վարձուց լինիցի արժանի հասանելոյ : Եթէ զձեռն պահելով չառնիցէ և զլեզու յանդուգն չկարճիցէ, զիա՞րդ զարմանայ հեթանոսն ընդ կրօնս մեր : Եթէ զծառայն տեսանիցէ, որ [1] 'ի Քրիստոս իմաստնացեալ և քան զիմաստունս նոցա զգաստութեան առաւել ցուցանիցէ զպնդութիւն և բազում հեզութեամբ և խնամով պաշտիցէ զտեարսն, ամենայն կերպարանօք զարմանայցէ

1 Պակասէր յօրինակին որ . . . զիմաստունս նոցա . յաւելաւ 'ի յունականէն :

ընդ քարոզութիւն. քանզի յարդեանց և 'ի վարուցն փորձեն հեթանոսքն զմեր կրօնս։ Եղիցին այսուհետև նոցա կանայք և ծառայք վարդապետք իւրեանց պարկեշտութեան գնացիւք. քանզի առ նոսա ամենայն ուրեք այն, իմն յայտ յանդիման դաւանի, զի ծառայից ազգ կարի իսկ խիստ և ստամբակ և անհնազանդ է, և չէ այնպէս պիտանացու յառաքինութեան վարդապետութիւն. ոչ ըստ բնութեան ինչ ասեմք, քաւ լիցի, այլ ըստ սնոտեանն և ըստ տերանց անփոյթ առնելոյ։ Վասնզի ոչ այլ իմիք, այլ միայն իւրեանց սպասաւորութեանն փոյթ յանձին ունիցին հպատակս ուսուցանել. և եթէ զբարս ինչ նոցա փոյթ յանձին ունիցին ուղղել, և զայս վասն իւրեանց հանգստեան առնեն, զի մի զնոցա ինչ աղաւաղիցեն կամ պոռնկութեամբ կամ գողութեամբ կամ արբեցութեամբ. յիրաւի իսկ խոտանացեալք գտանին, քանզի չունին զոք որ զնոսա հետաքրքիր շրջիցի, և անտի 'ի խորխորատս չարեացն ընկղմին։ Եթէ ուր հայրն 'ի վերայ կայցէ և մայրն շուրջ փարիցէ, դաստիարակն օժանդակ կայցէ և դայեակն միտ դնիցէ և վարդապետն 'ի հրահանգս վարժիցէ և հասակակիցքն 'ի խրատ գրգիցեն և ազատութի՛ւ փառք շուրջանակի զգուշանայցեն և այլ ևս բազում ինչ նոյնպիսիք՝ հազիւ կայ յականտանի և ապրի 'ի չարեացն սովորութեանց, զնոցանէ[1] զինչ ածիցես զմտաւ, և որք յայսմանէ թափուր և լոկ իցեն՝ ընդ խառնագնացս գրնայցեն, և համարձակ յո՛ և կամիցին յարիցին, և չիցէ ոք որ[2] զանպատեհ խնամն նոցա խառնիցէ։ Եւ վասն այնր ամենայնի դժուարին է ծառայի լինել առաքինի։

Եւ այլ ազգ ևս, զի ոչ 'ի վարդապետութեան ուրեք վայելեն, ոչ յարտաքնոյ և ոչ 'ի մէնջ, և ոչ ընդ արս ազատս շրջին, ընդ ցածունս և ընդ պարկեշտս, բայց ընդ նոսա որ իւրեանց փառացն ևեթ վասն խրատեն զնոսա 'ի հպարտութիւն։ Վասն այնորիկ դժուարին է և զարմանք են եթէ յանկարծ ոք 'ի ծառայից պիտանի գտանիցի։ Յորժամ տեսանիցեն զազգն ստահակ և ստամբակ զօրութեան քարոզութեան՝ ածել 'ի

1 Յօրինակին զնոցանէ զկորգ ինչ ածիցես զմտաւ։

2 Յայնս որ բարեխառնութեան ընդ նոսա խառնիցէ։

հնազանդութիւն, եթէ կարի իսկ քան զնաստունսն եւս անաստունք իցեն, մեծամեծ միտս իմանան վասն մերոյ կրօնից, զյարութեան երկիւղէ և զդատաստանացն պատժոց և զայլոցն ամենայն քարոզութեանց որ 'ի մէնջ պատմի թէ յետ մահու լինելոց են, առեալ զյիշատակմն կռապաշտիցն. թէպէտ և տեարք իցեն 'ի գեղեցիկ 'ի բարուց 'ի ծառայիցն տնկիցեն 'ի միտս, և այնպէս կարիցեն մեկնել 'ի չարեաց, երկիւղ ինչ հակառակ չարեացն ցանկութեանց հաստատեն 'ի խորհուրդս: Որպէս զի ոչ զուր ինչ և վայրապար ձառէ այսպիսի բազում ձառս. քանզի որչափ չարք իցեն, եւս առաւել քան զայն երեւի զարմանալի քարոզութեան զօրութի: Քանզի ընդ բժիշկն յայնժամ զարմանամք, յորժամ ամենեւին յոյս 'ի մտացն մերժեալ իցէ և ոչ միում ինչ օգնականութեան ակն կայցէ, այլ երթեալ 'ի խոռ խառնեալ և ոչ ունիցի ակն ապրելոյ, և ածիցէ զայնպիսին յառողջութիւն:

Եւ տես զինչ պահանջիցէ 'ի նոցանէն, այնպիսի ինչ որ ամենեւին հանգիստ է տերանցն: "Մ՛ի, ասէ, հակառակօղս, մի հատուս". որպէս զի ասիցէ, յամենայնի բազում խնամս ցուցանել զոր ինչ հաւատայցեն նոցա զընդալով պահել, և առ նոսա քաղցունս և հնազանդս լինել, հրամանացն անսալ, սուրբ ինչ ըստ կամացն գործել:

Եւ մի համարիցիք թէ վայրապար ինչ ելի ընդ այսչափ բանս: Ի յուհետև ինձ ընդ ծառայսն բանք են: Մ՛ի դու ով իմաստունդ, ընդ այն ինչ նայիցիս թէ մարդկան ծառայիցես, այլ ոչ իսկ ծառայես, զի զքարոզութիւն զարդարիցես. և ամենայնի ժուժկալութեամբ համբերիցես հնազանդ լինել տեառն, և տանել ցասմանն 'ի ժամու և տարաժամու. մի ինչ զչարել, մի դըժկամակ լինել: Զմտաւ ած եթէ ոչ նմա ինչ շահ առնես, այլ զքո հրամանն կատարես, և զամենայն[1] դիւրաւ տարցիս: Եւ զոր հանապազ ասէի, զնոյն և այժմ ասեմ թէ և հզաւոր ուղղութեանցն մերոց և աշխարհի կեանք գան: Զի զայնպիսի ծառայն զբարերարն և

[1] Թերակատար համառօտն յօրինակին և զամենայն ինչ և առնիցէ, և այժմ առեմ, ըղձացաւ 'ի յունէն:

զլարեմիտ, որպէս հեզ և համբարտ իցէ, ոչ միայն մ̃ծ ընդունի և լուսաւոր պսակացն արժանի առնէ, այլ և իւր տէրն որում զհեշտ պաշտօնն մատուցանիցէ, թէպէտ և գաղանամիտ ոք իցէ, և քարեղէն և տմարդի և անագորոյն, գովիցէ և գրուատիս տայցէ և քան զամենայն զայլսն յառաջ անցուցանիցէ և ամենեցուն հրամանակատար կացուցանիցէ, թէպէտ և հեթանոս ոք իցէ : Իսկ զի զպիտանի ծառայն յառաջ ածէ տէրն՝ թէպէտ և հեթանոս ոք իցէ, թէ կամիք և օրինակ ինչ բերից 'ի մէջ :

Յովսէփ վաճառեցաւ մատակարարին Փարաւոնի, որ այլոց պաշտամանն էր յեգիպտացւոց պաշտամանէն : Իսկ զի ետես զմանուկն լի առաքինութեամբ, մի թէ չխմացաւ թէ յայլս է պաշտամանել[1], այլ խմացաւ և սիրեաց և բարի կալաւ, և ամենայն ծառայից իւրոց հրամանատար կացոյց, և զբնաւ իսկ տունն 'ի ձեռին եդ, և չգիտէր վասն նորա զինչ 'ի տանն կայցէ, քանզի երկրորդ տէր էր տանն և ևս քաջ մտերիմ քան զտէրն. զի նա չգիտէր ինչ և չճանաչէր զիւրն, և սա ևս քաջ գիտէր զտէրունին : Իսկ ինձ այսպէս թուի՝ թէ և յորժամ հաւատաց անօրէն զրպարտութեան կնոջն, և յայնժամ ևս պատուեաց զարդարն վասն առաջին ցածութեան և պատուոյ, և 'ի բանտ միայն հրամայեաց առցասմանն, զի կարի առ լաւ ունէր զպատանին վասն առաջին հպատակութեանցն : Իսկ եթէ ոչ այնպէս ինչ էր, վաղվաղակի իսկ սուր 'ի գործ արկանէր և զարեն յաչայն հատանէր, ըստ այնմ թէ "Լի է նախանձու և բարկութիւն առն, և չխնայեսցէ ընդ խմիք զթըշնամութիւն, և ոչ ջրեսցէ բազում կաշառանօք,, : Իսկ եթէ ամենայն առն այնպիսի է նախանձն, որչափ ևս առաւել նորա որ այր մի եգիպտացի էր, խուժ դուժ վայրենի, և իմաստականէ[2] միոջէ զօր կարի առ լաւ կալաւ և մեծարեաց՝ կարծէր վնասել :

Գիտէք ամենեքեան, գիտէք իսկ զի ոչ այնչափ ամենեցուն վնաս կսկծէ որպէս ընտանեաց, որ երբեմն սիրով լեալ իցեն ընդ մեզ, և յետոյ մեղանչիցեն. որոյ

1 Այսպէս յօրինակին. յոյնն ըն- տառաքինութեամբ, պայծառութեան ինչ ոչ խորհեցաւ, այլ սիրեաց :

2 Այսպէս յօրինակին. Թերևս 'ի ճառաչանէ կամ 'ի ճանչանէ. յոյնն 'ի նմանէ զօր :

բազում ինչ հաւատացեալ իցէ և բազում բարիս գը-տեալ 'ի մէնջ, այնպիսեացն մեաս կարի կործէ ։ Իսկ արդ չասէր արդեօք զնմանէն՝ թէ զծառայ մի առի և ամենայնի տէր արարի տան և կենաց ծառայից, և ինձ ընդէ՞ր երախտեացն այսպիսի ապախտիս հատոյց. եթէ ոչ առաջին ցածութիւն նորա կայր 'ի մտի տեառնն. և հաւատայր և չհաւատայր կնոջն ։ Իսկ զինչ զարմանք են թէ 'ի տանն այնչափ պատուական էր, ուր և 'ի բանտին իսկ պատուական գտաւ և 'ի բազում խնամս վայելէր ։

Գիտէք իսկ զիարդ անգութ և անագորոյն միտք այնոցիկ են որոց բանտքն հաւատացեալ իցեն. զայլոց վշտան շահս համարին, և զորս այլք վասն վշտաց առ ողորմել կերակրեն՝ նոքա չարչարեն և շահս կորզեն 'ի նոցանէ. բազում արտասուաց արժանի են գործքն, և չար անագորոյնք են քան զգազանս ։ Հորոց պարտ է ողորմութիւն գտանել կալանաւորաց, 'ի նոցանէ աւելի լլկին ։ Բայց որ բուն անագորոյն իցէ, զայնպիսւոյն մի այնչափ ինչ միայն համարիցիմք, քանզի և նոքա ոչ նոյնպէս անցս ընդ ամենայն կալանաւորսն անցուցանեն ։ Զի որք առ զրպարտութեան կամ առ 'ի խուսել վայրապար մտեալ իցեն 'ի բանտն և 'ի կապանսն, թերևս և ողորմութիւն ինչ գտանիցեն 'ի բանտապետացն. իսկ որք յոռի ինչ իրս և յանարժանս յանդգնեալ իցեն և անկանիցին 'ի բանտ, այնչափ տանջանօք տանջիցին ։ Որպէս զի ոչ միայն բարոյիւք խիստ լինի բանտապետն, այլ և 'ի պատճառանացն վասն որոյ և 'ի բանտն ոք մտանիցէ ։

Ո՞ ոք ոչ գրգռէին համբաւք պատուոյն, որ յայնչափ պատիւ հասեալ էր, և կարծեցաւ թէ 'ի տիկնոջն մտաբերեաց, և այնպիսի ապախտաւորութիւն երախտաւորին հատոյց ։ Բայց զայս իմացեալ բանտապետին, յորժամ և զպատիւ արկանելեացն ևս խորհէր, և զիրան վասն որոյ եմուտ 'ի բանտն՝ ածէր զմտաւ, զիա՞րդ ոչ քան զամենայն գազանս ևս վայրենագոյնս պատահէր պատանւոյն ։ Բայց յամենայն յայնպիսեացն ազատեաց զնա յոյսն որ ունէր առ ած. քանզի այնպէս գիտէ և զգազանս զգօնացուցանել ոգւոցն առաքինութիւն ։ Որպէս հեզութեամբ որով տեառնն եմուտ ընդ միտ, ածէր և զբանտապետն 'ի գութ ։

Պարծեալ և 'ի բանտին էր իշխան Յովսէփ, որպէս և 'ի տանն հրամանատար ամենայնի։ Քանզի թագաւորելոց էր, նմանագոյնս իսկ յառաջագոյն կրթէր ունել զիշխանութիւն, մինչդեռ ընդ իշխանութեամբն էր՝ հրամանատար տանն, իշխան 'ի բանտին։ Զի եթէ որ յիշխանութիւն եկեղեցւոյ կոչեսցի պահանջէ յայնպիսւոյն Պաւղոս զառաջին գնացիցն ուղղութիւն, "Եթէ ոք իւրում տանն, ասէ, դարման չգիտիցէ տանել, զիա՞րդ եկեղեցւոյ ա̃յ կարիցէ խնամակալ լինել,, , նոյնպէս և որ յիշխանութիւն ինչ հասանելոց իցէ, պարտ է յառաջագոյն առաքինի գտանել։ Հրամանատար եղև տանն, հրամանատար էր և 'ի բանտին, ոչ իբրև 'ի բանտի, այլ որպէս տանն զամենեցունց թեթևացուցանէր զբեռինս, և իբրև իւրոց անդամոց այնպէս ունէր խնամ կալանաւորացն։ Ոչ միայն զկարիսն մխիթարէր, այլ և զմիտս իւրաքանչիւր ուրուք քրքրէր և սփոփէր, քննէր և 'ի վերայ հասանէր և չտայր ումեք տրտմութեամբ մղձկել. չառնոյր յանձն, չունէր ժուժ եթէ ոչ նախ զտրտմութիւն յիւրաքանչիւր մտաց փարատէր։ Այնպիսի ինչ խնամովք խնամ ածէր, որպէս և ոչ հայր զորդիս առ գութ փայփայիցէ. և անտի իսկ եղև նմա ըսկիզբն ամենայն բարութեանց. քանզի պարտ է նախ 'ի մէջ երևել պտղոյ, և ապա յա̃յ գան հասանեն բարութիք։

Եւ զի այնչափ զընդայր և ունէր խնամ կալանաւորացն, ետես զներքինիսն Փարաւոնի 'ի բանտին զտակառապետն և զմատակարարն և ասէ. ընդէ՞ր տրտում էն երեսք ձեր այսօր։ Եւ ոչ յայտնանէ միայն, այլ և 'ի նոցա իսկ մտացն է իմանալ զառաքինութիւն պատանւոյն. ոչ իբրև արքունի գործակալք քամահեցին ինչ զնա, և ոչ առ տրտմութեան դանդաղեցան ինչ, այլ իբրև եղբօր հարազատի որ գիտիցէ վշտակից լինել՝ յայտնեցին զխորհուրդն։

Զայս ամենայն ասացի, զի յայտ արարից եթէ ոչ 'ի ծառայութեան և ոչ 'ի գերութեան և ոչ 'ի բանտի, և եթէ ընաւ իսկ 'ի սանդարամետսն ուրեք մտանիցէ առաքինին, չկարէ ինչ յաղթել նմա։ Զայս ասեմ առ ծառայս, թէպէտ և վայրենամիտ տեարս ունիցին իբրև զեգիպտացին և անագորոյն իբրև զբանտապետն, կարեն զմիտս հաճել թէ կամին. թէպէտ և հեթանոսք

իցեն իբրեւ զնա կամ թէ զինչ և իցեն, կարեն վաղվաղակի զգօնացուցանել։ Զի՞նչ ինչ հեշտական քան ըզբարս բարիս, և ոչ քաղցր և ախորժակ քան զգօնութիւն և զհնազանդութիւն։ Ամենեցուն պիտանի այնպիսին, ամենեցուն սիրելի. ոչ զծառայութիւն ամօթ համարի և ոչ յաղքատէն փախչի. չընտրէ զառողջն և զհիւանդն, այլ ամենեցուն դեր 'ի վերոյ լինի առաքինութեամբն։ Իսկ եթէ 'ի ծառայս այնպիսի ինչ զօրութիւն ունի լաւութիւն, որչափ եւս առաւել յազատս։

Ի սոյն կրթեսցուք ամենեքեան, ծառայք և ազատք, արք և կանայք, և այսպէս մարդկան և Այ լինիցիմք ցանկալիք. մարդկան՝ ոչ միայն որ յառաքինութիւնսն իցեն, այլ և որ կարի իսկ չարաբարք. քանզի այնպիսիքն առաւել ակնածեն և պատուեն զլաւութիւն։ Որպէս 'ի զգօն իշխանացն եւս առաւել դողան որ ընդ իշխանութեամբն իցեն, նոյնպէս և յառաքինեացն անօրէնքն, քանզի 'ի միտ առնու թէ յորպիսի բարութեանց վրիպեալ են։ Իսկ զի այնչափ շահք են առաքինութեան, զնորին զհետ երթիցուք, ընդ նոյն ընդելնուցումք, և զնոյն ունիցիմք հանապազ յանձինս, և չլինիցի ինչ մեզ դժուարին, այլ ամենայն ինչ դիւրին, ամենայն ինչ հարթ. թէպէտ և ընդ հուր անցանիցեմք և ընդ ջուր դիմիցեմք, ամենայն ինչ տեղի տայ առաքինութեան, խորշի և 'ի բաց մերժի և ինքն իսկ մահն։ Նախանձաւորք լիցուք նմին և նմանողք, զի և հանդերձելոց բարութեանցն հասանիցեմք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ վայել է փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՃԱՌ ՀԻՆԳԵՐՈՐԴ

“Երևեցաւ շնորհքն ա̃յ փրկիչ՝ ամենայն մարդկան. որ խրատէ զմեզ զի ուրացեալ զամբարշտութ̃ի և զաշխարհական ցանկութիւն, զգաստութեամբ և արդարութեամբ և ա̃ծպաշտութեամբ կեցցուք յաշխարհիս՝ ակն ունել երանելի յուսոյն և յայտնութեան փառաց մեծին ա̃յ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի. որ ետ զանձն վասն մեր, զի փրկեսցէ զմեզ յամենայն անօրէնութենէ, և սրբեսցէ իւր ժողովուրդ սեփական նախանձաւոր գործոց բարութեանց,,:

Բազում առաքինութիւն պահանջեաց 'ի ծառայից. քանզի բազում իսկ է զվարդապետութիւն ա̃յ և զփրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի զարդարել յամենայնի, և ոչ մի ինչ բարուրս տալ տերանցն ոչ 'ի մեծի և ոչ 'ի փոքու, արդ և զարժանաւոր իսկ պատճառս յարէ 'ի նոյն վասն որոյ պարտին այնպիսի ինչ լինել ծառայք: Զինչ իցէ. “Երևեցաւ, ասէ, շնորհքն ա̃յ փրկիչ,,: Որք զա̃ծ վարդապետ ունին, զիա՞րդ ոչ յիրաւի լինիցին այնպիսիք, որպէս այժմս ես շուրջ եկեալ գտի բազում մեղաց հնարս լուծման: Գիտէք իսկ զի հանդերձ այլովք և այն ոչ սակաւ ինչ պատկառեցուցանէ և ցածուցանէ զոգիսն՝ բազում մեղաց պատժապարտն գտանել և չտալ վրէժս, այլ թողութեան ևս հասանել և բիւրապատիկ բարութեանց արժանի լինել:

Եւ արդ աղէ ասա, եթէ ոք զծառայ պատժապարտ բազում վնասուց ըմբռնեալ՝ ոչ միայն 'ի հրահանգս չբառնայցէ, այլ յառաջագոյն յանցանաց թողութիւն շնորհիցէ, և վասն առ յապայ ինչ յանցանաց պատուէր տայցէ մի միւսանգամ յայնպիսի ինչ յանցանս գտանել, և պարգևօք ևս պատուիցէ, որպիսի՞ ինչ ածիցէք զմտաւ պատկառել յայնպիսւոյն որում այնչափ թողութիւն շնորհեցաւ: Այլ մի ինչ համարիցիս եթէ շնորհ առաջնոյ մեղացն ևեթ թողութիւն տայցեն, այլ և որ ինչ առ 'ի յապայ գործելոց իցեն՝ անուր

ևս զգուշանայցեն. քանզի և այն շնորհաց գործ է։ Ապա թէ ցանգ իսկ գչարագործսն չիցէ պատժելոց, ոչ այնուհետև շնորհք են, այլ գրգռիչք ապականութեան և եղծագործութեան։

«Երևեցաւ, ասէ, շնորհքն Աստուծոյ փրկիչ. որ խրատէ զմեզ, զի ուրացեալք զամբարշտութիւնս և զաշխարհական ցանկութիւնսն, զգաստութեամբ և արդարութեամբ և աստուածպաշտութեամբ կեցցուք յաշխարհիս՝ ակն ունել երանելի յուսոյն և յայտնութեան փառաց մեծին Աստուծոյ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի»։ Տես զկարգ պարգևս իսկ դնէ զառաքինութիւնն։ Եւ արդարև շնորհաց իսկ է ազատել յերկրաւորացս և վերացուցանել հանել յերկինս։ Երկուս յայտնութիւնս ցուցանէ աստ, քանզի և երկու իսկ են. առաջինն շնորհաց, և երկրորդն արդարութեան հատուցմանց։ «Զի ուրացեալ, ասէ, զամբարշտութիւն և զաշխարհական ցանկութիւնսն»։ Ահաւասիկ առաքինութեան պատճառք։ Ոչ ասաց թէ զի ուրասցուք, այլ թէ զի ուրացեալք։ Ուրացութիւն բազում անջրպետութիւն ցուցանէ, բազում ատելութիւն. կարի իսկ դարձուցանել զերեսս այնպիսի մտօք, այնպիսի փութով որպէս 'ի կըռոցն ուրացան, նոյնպէս և 'ի չարեացն և յաշխարհական ցանկութեանցն։ Քանզի և աշխարհիս ցանկութիւնք կուռք են, զի զագահութիւնն կռապաշտութիւն իսկ կոչէ. աշխարհական ցանկութիւն է և անձնասիրութիւն, քանզի և այն կռապաշտութիւն անուանի. և որչափ ինչ իցեն յաշխարհի ցանկութիւնք և ընդ մեզ յերկինս չլինիցին ուղեկից, աշխարհական ցանկութիւնք են։ Եւ արդ մի ինչ փոքօք պատաղեսցուք։ Եկն Քրիստոս, զի ուրասցուք զամբարշտութիւն և զկրօնսն հաստատեսցուք։ Եւ զաշխարհական, ասէ, ցանկութիւնս. զի վասն պարկեշտս ունիցիմք յանձինս։

«Զգաստութեամբ և արդարութեամբ և աստուածպաշտութեամբ կեցցուք յաշխարհիս»։ Տեսանե՞ս զի զոր ինչ ցանգն ասէր, աստ զնոյն ասէ՝ թէ զգաստութիւն ոչ միայն 'ի պոռնկութենէ մեկնել է, այլ և յայլոց ախտիցն 'ի բաց կալ։ Ապա ուրեմն որ ընչիցն ցանկանայ, չէ զգաստացեալ։ Որպէս նա 'ի մարմնոյն ցանկութիւն հատեալ է, նոյնպէս և սա յընչիցն. մանաւանդ թէ

ևս մոլեգին սա, որպէս զի ոչ այնպէս բռնութիւն ունի տարածեալ։ Վասնզի և կառավար այն անպիտան կոչի՝ ոչ որ զխիստն և զորմուղ ձի չկարիցէ յերիւրել, այլ որ զհանդարտն և զգօնագոյն չկարիցէ յորդարել։

Այլ ևս, ասեն, փոքր իցէ ընչիցն ցանկութիւն քան զմարմնոյն։ Ամենայն իւիք, և յայտ 'ի բազում իրաց է. նախ զի 'ի կարևոր իսկ պէտս եղև մարմնոյ ցանկութիւն, և որ կարևորն ինչ իցէ՝ յայտ է թէ բազում աշխատութեամբ ուղղի, քանզի 'ի ներքս 'ի բնութեան տնկեալ է. երկրորդ անգամ զի վասն ընչից չեղև երբեք խնդիր բանից առ առաջնովքն. վասն կանանց բազում ինչ 'ի զգաստութեան աղագս։ Այն օրինօք թէ մինչև ցծերութիւն ոք ունիցի, չլինի ոք այնմ մեղադիր. ընչասիրացն՝ ամենեքին։ Այլ յարտաքնոցն փիլիսոփայից բազումք զինչս արհամարհեցին, զկանայս և ոչ երբէք. զի այնպէս այս քան զայն բուռն է։

Այլ քանզի յեկեղեցւոյ խօսիմք, մի յարտաքնոցն բերցուք օրինակս, այլ 'ի գրոց։ Այնմ և հրաման իսկ տայր երանելիս. "Ունիմք, ասէ, կերակուրս և հանդերձս և այնու շատասցուք,,։ Իսկ վասն կուսանացն, "Զունիմք ինչ, ասէ, հրաման 'ի տեառնէ,,. և դարձեալ եթէ "Միւսանգամ 'ի նոյն եկեսջիք,,։ Այլ բազում անգամ տեսանես զսորա վասն օրինօք ամուսնութեան պատուիրեալ և հրաման տալ վայելել 'ի ցանկութիւն, և զերկրորդ ևս զամուսնութիւն չարգելու, և բազում փոյթ յանձին ունիցի ցուցանել զամուսնութիւնն սուրբ և ազատ 'ի պատժոց։ Իսկ զընչասէրն ամենայն ուրեք դատապարտէ. և Քրիստոս ընդ բազում տեղիս պատուիրէ փախչել յընչասիրութեան ախտէն, վասն 'ի կնոջէ մեկնելոյ ոչ ինչ այնպէս կարի։ Լուր զինչ ասէ վասն ընչիցն. "Եթէ ոք, ասէ, ոչ հրաժարեսցէ յամենայն ընչից իւրոց,,։ Այլ չասաց երբէք՝ եթէ ոչ ոք հրաժարեսցէ 'ի կնոջէ իւրմէ. քանզի գիտէ որպիսի բռնութիւն տնկեաց 'ի բնութեան։ Այլ երանելին ասէ. "Պատուական է ամուսնութիւն և սուրբ անկողինք,,. և չկոչէ ուրեք պատուական զընչասիրութիւնն, այլ նմին հակառակ. "Որ կամին, ասէ, մեծանալ, անկանին 'ի փորձութիւն և յորոգայթս և 'ի բազում ցանկութիւնս անմիտս և վնասակարս,,։ Այլ չա-

սաց թէ ագահել, այլ թէ մեծանալ ։ Զի 'ի հասարակաց մտացն հարկ լինի և զայս ևս բան 'ի մէջ բերել. քանզի յընչիցն յորժամ միանգամ ոք վրիպէ, ոչ ևս այնուհետև լլկիցի 'ի ցանկութենէ կարասւոյն ։ Զի ոչ ինչ այնպէս գրգռէ զընչիցն ցանկութիւն, որպէս զինչսն իսկ ունել. իսկ մարմնոյն ցանկութիւն ոչ այնպիսի ինչ, այլ և 'ի ներքինեաց բազումք 'ի ներքուստ զլլկիչ կրակն չկարացին 'ի բաց մերժել. քանզի ցանկութիւն յայլ ամենս կայ 'ի ներքս 'ի բնութեան տնկեալ ։ Եւ էր վասն եղև մեզ զայս ասել ։ Եւ թէ ագահքն քան զպոռնիկսն ևս զեղլիք են, որչափ և 'ի սակաւ ցանկութենէ լկանք. մանաւանդ թէ չեն իսկ ցանկութեան իրքն, այլ մեղկութեան ։ Իսկ մարմնոյն այնպէս բնաւոր է ցանկութիւն, որպէս թէ և 'ի կինն իսկ չմերձենայցէ, բնութիւն զխուրն վճարէ. իսկ անդ ոչ այնպիսի ինչ լինի ։

“Եւ ամպարշտութբ, ասէ, կեցցուք յաշխարհիս„ ։ Եւ զինչ յոյս, զինչ ինչ պարգևս ընդ վաստակոցն ընդունիցիմք ։ Ասէ. “զերանելի զյոյսն և զյայտնութիւն փառաց մեծին այ„ ։ Եւ արդարև իսկ չիք ինչ քան զայն երանելի և ոչ ցանկալի ինչ քան զնոյն, և չէ հնար եթէ բանիւք ոք կարիցէ յանդիման կացուցանել. նա և ըստ միտս անցանեն բարութիւնքն ։ “Ընդունիցիմք, ասէ, զերանելի յոյսն և զյայտնութիւն փառաց մեծին այ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի„ ։ Եւ արդ ո՞ր իցեն որ զորդի քան զհայր փոքր համարին. զի ահաւասիկ մեծին այ, ասէ, և փրկչի. որ զթշնամիս կեցոյց, որպիսի՞ ինչ բարութիւն ոչ պարգևիցէ հաճոյիցն ։ Մեծ յորժամ զայ ասիցէ, ոչ եթէ ըստ կշռոյ այլոյ ուրուք ասէ զմեծ, այլ արձակ համարձակ ըստ որում և ըստ իւրում չիցէ այլ ինչ մեծ. ապա թէ ո՞չ ըստ այլոյ իմիք լինի մեծ ։ Եւ եթէ ըստ այլոյ իմիք, ապա ըստ համեմատութեան և ոչ ըստ բնութեանն է մեծ ։ Իսկ[1] նա աւանիկ առաւել համեմատութեանն է մեծ, ըստ որում չիք ոք այլ այնպէս մեծ ։

“Որ ետ, ասէ, զանձն իւր վասն մեր„ ։ Տեսանես, զանձն ասէ և ոչ զայլ ոք ։ “Զի փրկեսցէ զմեզ յամենայն անօրէնութենէ„. ինքն և ոչ այլ ոք ։ “Սրբեսցէ

1 Յոյնն Իսկ առ փեղկաւոր առանց համեմատութեան մեծ ։ « Որ էր ։

իւր ժողովուրդ սեփական»։ իւր և ոչ այլ ումեք։ Տեսանե՞ս զի ամենայնիւ զատեալ մեկնեալ, և չունի ինչ ընդ այլոյն հաղորդութիւն ըստ ա̃ծութեանն, թէպէտ և մարմնով ընդ հաղորդ հաւատացելոց։ «Նախանձաւոր, ասէ, գործոց բարութեան»։ Տեսանե՞ս, զի և 'ի մէնջ պէտք են, ոչ վայրապար գործոց, այլ նախանձաւոր լինել. այսինքն է բազում յօժարութեամբ միջամուխ իսկ լինել առաքինութեան ջերմեռանդն մտադիւրութեամբ։ Պարտիւն և պատշաճիւն զծանրացեալսն մեղօք և զանբժշկական ախտն ախտացեալս նորա մարդասիրութեանն էր զերծուցանել, և այլոց ես յետ այնր և մեր և նորա։

«Զայս խօսեաց և մխիթարեա և յանդիմանեա ամենայն սաստիւք»։ Զայս, ասէ, խօսեաց և մխիթարեա։ Տես զիարդ տայ հրաման Տիմոթեայ. «Յանդիմանեա, ասէ, և սաստեա և մխիթարեա»։ և աստ՝ թէ «Զայս խօսեաց և մխիթարեա և յանդիմանեա ամենայն սաստիւք»։ Քանզի խիստ բանք էին նոցա, վասն այնորիկ խստագոյնս և ամենայն սաստիւ հրամայէ յանդիմանել։ Քանզի է ինչ 'ի մեղաց՝ որ սաստիւ պարտ է կարճել. այսպիսի ինչ, զինչսն արհամարհել՝ խրատու պարտ է հաւանեցուցանել, ցածունս լինել և որ այլ ինչ նորոյնպիսիք իցեն։ Իսկ զշունն և զպոռնիկն և զագահս սաստիւ մերժել յախտէն. զհաւահմայն և զհատահարց և զխոտորող և զայլոյն նոցին գործակիցս ոչ վայրապար սաստիւ, այլ ամենայն սաստիւ պարտ է յանդիմանել։ Տեսանե՞ս զիարդ իշխանութեամբ իսկ և բազում ձոխութեամբ կամի տալ զհրամանն։

«Մի ոք իցէ, ասէ, որ արհամարհիցէ զքեզ»։ Այլ յուշ արասջիր նոցա իշխանութեանց և պետութեանց հնազանդ լինել, մի ինչ հայհոյել»։ Իսկ արդ զիա՞րդ, և զչարագործս չիցէ՞ պարտ բամբասել. ոչ բամբասել, այլ խրատել։ «Այլ յամենայն գործս բարութեան պատրաստ լինել. մի ինչ, ասէ, զոք հայհոյել», ո ոք և իցէ։ Սուրբ լինիցին, ասէ, բերանք մեր 'ի բամբասանաց։ Թէպէտ և ստոյգ իցեն բամբասանքն, չէ մեր այն գործ խօսել, այլ դատաւորին է քննել, ըստ այնմ թէ «Դու զի՞ դատես զեղբայր քո»։ Իսկ եթէ չխօսիցես ես ստոյգ, տեսջիր որչափ ինչ հուր բորբոքեսցես ան-

ձին ։ Լուր և աւազակին որ ասէր ցմիւս եւս աւազակն․ "Մեք, ասէ, 'ի նմին դատաստանի կամք"։ Այլ մեք ասասցուք՝ թէ 'ի սմին աշխարհի եմք, և ընդ նովին կասկածանօք․ եթէ նախատիցես զընկերն, թերևս և դու վաղվաղակի 'ի նոյն կափուղ անկանիցիս ։ Վասն այնորիկ ստէպ ստէպ խրատէ երանելին․ "Որ համարին, ասէ, հաստատուն կալ, զգոյշ լինիցի, զուցէ անկանիցի"։

"Անկռիւս լինել, ասէ, հեզս, ցուցանել զամենայն հանդարտութիւն առ ամենայն մարդիկ", առ հեթանոսս և առ հրեայս, առ չարս և առ անզգամս ։ Զի 'ի հանդերձելոցն երկեցուցանէ որպէս և 'ի կորնթացւոց թղթին թէ "որ համարին հաստատուն կալ, զգոյշ լինիցի, զուցէ գլորիցի", իսկ աստ ոչ 'ի հանդերձելոցն, այլ յանցելոցն պատկառեցուցանել ։ Մի զոք նախատիցես, ասէ, քանզի դու այնպիսի էիր ։ "Զի էաք, ասէ, երբեմն և մեք անմիտք, խեռք, մոլորեալք և ծառայէաք ցանկութեանց և պէսպէս հեշտութեանց, չարութեամբ և նախանձու շրջէաք, ատեցեալք և զմիմեանս ատեաք"։ Որպէս զի առ ամենեսեան խոկ այնպիսիս պարտի հեզութիւն ցուցանել ։ Զի և որ ինքն յառաջագոյնն այնպիսի էր և ազատեցաւ, չպարտի զայլս նոյնպիսի ինչ իրօք դատել, այլ աղօթս առնել և շնորհ ունել այնմ որ նմա և նոցա ետ զայնպիսի ազատութիւն յառաջին չարեացն ։ Մի ոք պարծեսցի, զի ամենեքեան մեղան ։ Յորժամ կամիցիս զընկերն նախատել, մինչդեռ դու յուղղութեան գործս իցես, յառաջ վասն քո զմտաւ ածջիր՝ թէ որ ինչ հանդերձեալն է անյայտ է, նա հանջեսջիր զյանդգնութիւնն ։ Զի թէպէտ և յառաջին տիսն առաքինաբար կեցեր, սակայն ունիցիս բազում ինչ մեղս․ և եթէ չունիցիս որպէս կարծիցես, 'ի միտ առնուցուս եթէ 'ի քումմէ ինչ առաքինութենէ չեղև քեզ այն, այլ յԱ̃յ շնորհացն․ զի թէ չէր զնախնեան քո կոչեալ, և դու անդէն յանհնազանդութեան մնայիր ։ Տես որչափ ինչ չարիք գործէին ։ Այլ որչափ ինչ մարգարէիւքն Ա̃ծ մատակարարէր բարութիւն՝ միթէ լուեալ էր եթէ ոչ յԱ̃յ էր յայտնեալ։

"Զի էաք, ասէ, երբեմն և մեք անմիտք և խեռք և մոլորեալք ։ Այլ յորժամ քաղցրութիւն և մարդասիրութիւն երևեցաւ փրկչին մերոյ Ա̃յ"․ որպէս․ "ոչ,

ասէ, 'ի գործոց արդարութեան, այլ ըստ իւրում ողորմութեան ապրեցոյց աւազանաւն միւսանգամ ծննդեան և նորոգութեամբ հոգւոյն սրբոյ: Բաբէ որչափ եաք ներկեալք 'ի չարիսն և չկարէաք սրբել, այլ վերստին ծննդեանն կարօտէաք. այն իսկ է միւսանգամ ծնունդն: Զի որ օրինակ խարխուլ ինչ տան ոչ եթէ մոյթս ոք տայ և ոչ հին շինուածովք կարկատէ, այլ մինչև ցհիմն քակէ և ապա վերստին կանգնէ և նորոգէ, նոյնպէս և սա ոչ եթէ ծեփեաց, այլ վերստին միւսանգամ շինեաց. այն իսկ է նորոգութեամբ հոգւոյն, զի վերստին արար զմեզ նորս որպէս ինչ հոգւովն, որպէս և յայլում վայրի ցուցանէ. "Զոր եհեղն 'ի վերայ մեր առատապէս 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի փրկչին մերոյ": Բազում ինչ պէտք էին հոգւոյն: "Զի արդարացեալք, ասէ, նորա շնորհօքն": Ահաւասիկ շնորհք են և ոչ պարտք. "Ժառանգաւորք լիցուք ըստ յուսոյն կենացն յաւիտենից": Միանգամայն և յօժարութիւնք խոնարհութեան է և յոյս հանդերձելոց: Զի թէ այնչափ խոտեալք և անյոյսք եաք մինչև վերստին ծնանել և շնորհօք ապրել պարտ էր, և չունէաք ինչ բարութիւնս և կեցոյց, որչափ ևս առաւել 'ի հանդերձեալ աշխարհին զնոյն առնիցէ և բիւրապատիկ առաւել քան զնոյն:

Չգոյր այլ ինչ չար քան զմարդկեղէն վայրենութիւն յառաջ քան զգալուստն Քրիստոսի: Զի իբրև զթըշնամիս, իբրև զպատերազմողս էին ընդ միմեանս ամենեքին. զորդիս իւրեանց հարք և մարք սպանանէին, ամենևին մոլորեալք, առ հասարակ կատաղեալք. չգոյր ինչ հաստատուն, չէր ինչ որ կայր 'ի կայի, ոչ բնութիւն և ոչ միագիր օրէնք. ամենայն ինչ եղծեալ ապականեալ, ցանգ շնութիւնք, հանապազորդ սպանութիւնք, և եթէ այլ ինչ չար քան զսպանութիւնսն կայցէ, գողութիւնք. և ոմն յարտաքնոցն առաքինութեան իմն իրս զգողութիւն համարէր, և յիրաւի, քանզի աստուածս իսկ այնպիսի պաշտէին: Ստէպ հրամանք՝ եթէ զայս անուն և զայն անուն սպանանել պարտ է:

Ցուցից և պատմութիւն ինչ զայսց ժամանակաց. Անդրոգէոս ոմն որդի Մինոսի երթեալ յԱթէնս, թէ և յաղթեաց իսկ, սակայն զվրէժս պահանջեցաւ և ըսպանաւ: Իսկ արդ տես զիարդ Ապողոն չարաւն զչարն

բժշկէր, հրամայեաց երկուս եօթանս մանկանց կոտորել փոխանակ նորա։ Ո՜ր ինչ հայր այլ ինչ քան զայն անմարդութեան անագորոյն մնաց։ Այլ այն եղև, և այրն զիւաց սովորութեամբ մոլեալ՝ չոգաւ կոտորեաց զմանկունս։ Տեսանե՞ս զի յիրաւի իսկ թագաւորեալ էր մոլորութիւն. միթէ յարեան և խնդրեցին զգերեժ անձանցն. և ոչ երբէք։ Ո՜ թէ յիրաւի իրքն լինէին, չէր պարտ արգելուլ. և եթէ յանիրաւի, որպէս զի և յանիրաւ իսկ, ապա և զառաջինն իսկ չէր պարտ հրամայել։

Ըմբշաց և ախոյանաց երկիր պագանէին. պատերազմունք ցանկորդք և ստէպ ստէպ, ըստ իւրաքանչիւր քաղաքաց և գիւղից և 'ի տունս անգամ զխմբեալս կոտորէին։ Այլ ոմն 'ի նոցանէ զարմանալի փիլիսոփոս օրէնս ինչ կարգեաց՝ եթէ ծառայ այր մի իշխեսցէ պատանեկաց ցանկալ և մի օծանող[1] լինել, որպէս թէ առաքինութեան ինչ գործ իցէ և բազում պատուոյ նշանակ։ Զայսոնի պոռնկոցս չինեցին, եթէ ումեք պէտք ինչ իցէ՝ երթիցէ կողմ գտանիցէ. և այնպէս անօրէնութեամբ զբնութիւն թշնամանէին, և չէր ոք որ արգելոյր։ Այլ մատեանքն նոցա ամենայն չիցեն լի շնութեամբք և պէսպէս աղտեղութեամբք։ Հսկմունք լինէին լի պղծութեամբ, և կանայք կոչէին 'ի տեսիլս. յորում պղծալից հսկումն լինէր 'ի թատերսն զցայգն ամենայն, և կոյսք նստէին 'ի մէջ մոլեգնին երիտասարդաց, արբեալք ազմուկս ամենայն. և խաւարային տունք, և ազգի ազգի գործք ժանտութեանց 'ի նոցանէ կատարէին։ Վասն այնորիկ ասէ. «Նոքա երբեմն և մեք անմիտք անհաւանք և մոլորեալք, և ծառայեալք ցանկութեանց և պէսպէս հեշտութեանց»։ Այս անուն, ասէին, իւրում մօրուն ցանկացաւ, և այն անուն կին իւրում ուրջուի և 'ի խեղդս մտաբերէ։ Յանկալ մանկտւոյ, զոր և մանկտւոյ սովորութիւն էր կոչել, և զայլս ևս ինչ որ 'ի նոսա գործէր, և ասել աղտեղի է. և չամաչէին և չթրջին, չպատկառէին և ձորձ զգլխով լինէին։ Այլ զինչ, կամիցես և մայրախնութիւնս ևս անդ տեսանել. և առաւել չարիք այն էին, և զի ոչ անգիտութեամբ ինչ այնպիսի

1 Յօրինակին անծող. եգաւ ըստ յունին։

գործք գործելին, և չարգելոյր սովորութիւն որ զնոսա ունէր, այլ անփոյթ առնէր արհամարհէր զթշնամանս բնութեան, և այս առ նշանաւոր արամբք: Զի թէ որոց պարտ էր՝ եթէ ոչ վասն այլ իրիք, գէթ առ 'ի բազմացն փառաց բուռն հարկանել զառաքինութենէն՝ այնչափ մոլեալ էին 'ի չարիս, որպիսի՛ ինչ և այլոցն չէր 'ի դէպ մեծամեծ ևս չարիս գաղտ գործել: Զի՞նչ այլ ինչ յաձախ մեղք քան զայն որ յայնպիսի ցանկութիւն կայր: Յանկացաւ այս անուն կին այս անուն առն, և սպան զայրն հոմանեաւն. թերևս բազումք իսկ գիտիցեն զպատմութիւն. և զհոմանին սպան որդի սպանելոյն, և զկինն ևս զոհ արար. յետոյ և ինքն մոլորեցաւ, և զվշկապարեալ[1] զհետ ընթանայր: Յետոյ և ինքն չոգաւ և սպան այլ այր, և զկինն եհան, ինքն կին արար: Զի՞նչ ինչ չար կայր քան զայնպիսի ոձիրս: Վասն այնորիկ յարտաքնոցն ասեմ, զի զհեթանոսս հաւանեցուցից թէ որպիսի չարիք ունէին զտիեզերս:

Այլ թէ կամիք և 'ի մերոցս ևս ցուցցուք: "Զոհեցին, ասէ, զուստերս և զդստերս իւրեանց դիւաց": Դարձեալ և որ 'ի Սոդոմ բնակեալ էին, ոչ վասն այլ իրիք կորեան, այլ զի ամենեքին մոլորեալ էին: Եւ 'ի սկզբանն Քրիստոսի գալստեանն ո՞չ դուստր թագաւորին 'ի մէջ բազմականացն մոլորեալ կաքաւէր յարանց արբեցելոց 'ի միջի, մահ 'ի պարգևի խնդրէր և վարձս կաքաւելոյն զգլուխ մարգարէին: "Ո՞ պատմեսցէ զզօրութիւնս տեառն":

"Ատեցեալք էաք, ասէ, և զմիմեանս ատէաք": Հարկ իսկ է յորժամ զամենայն ցանկութիւնս ոգւոցն արձակիցեմք, բազում ատելութիւն 'ի մէջ մտանէ. ընդէ՞ր. քանզի ուր առաքինութիւն է, անդ է սէր, և յայնժամ չզրկէ ոք զոք. որպէս և Պաւղոս ասէ. "Մի՛ խաբէք, ոչ պոռնիկք և ոչ կռապարիշտք, ոչ շունք, ոչ իգացեալք, ոչ արուագէտք, ոչ ագահք, ոչ բամբասողք և ոչ արբեցողք զարքայութիւնն աստուծոյ ոչ ժառանգեն. և դուք այնպիսի ոմանք երբեմն էիք": Տեսանե՞ս զկարգ ամենայն չար կերպարանօք չարեացն ելեալ ծաւալեալ ծածկէին, և բազում մութ շուրջ պա-

1 Ցոյնն է 'ի վշկապարեալ (կամ 'ի կապարչեալ) խոստմունքէր:

տեալ պահէր, և խրատունք օրինաց եղծեալ ապականեալ էին։ Զի եթէ որք 'ի մարգարէութիւնսն վայելէին և այնչափ չարիս տեսանէին լեալ 'ի պատերազմունս և յիւրեանց իսկ անձինս, և սակայն չանսային, այլ ազգի ազգի չարիս գործէին, զինչ ևս ոչ այլն արդեօք։

Այլ ամենք 'ի նոցանէ կուսից մերկոց հրամայէին առաջի արանց կռուիլ։ Բազում բարութիւնք լինիցին ձեզ որ և զբանս անգամ չախորժէք լսել. յորոց և յարդեանցն փիլիսոփայքն իսկ գլխովին չամաչէին։ Այլ միւս փիլիսոփոս որ գլխաւոր իսկ էր նոցա, և 'ի Ճակատս ևս հրամայէր երթալ կուսից, և հասարակ ամենեցունց համարէր զնոսա։ Զի եթէ փիլիսոփայքն նոցա այսպիսի օրէնս դնէին, զինչ ևս զայլոցն որ չէին փիլիսոփայք՝ ասիցեմք։ Եթէ որ զմօրուսն երկայնս հանդերձ մանեալ պերճեշտիւք մարձէին, և սպիտակ աղաբողոնօքն կշտամբեալք այնպիսի հրամանս տային, զինչ խնչ զայլոցն ասիցեմք։

Այլ վասն այնորիկ եղև կինն կին, ո այր դու, զի յամենեցունց հասարակ կառ հարեալ խարգաւանիցի. որպէս և դուք զամենայն վեր 'ի վայր տապալէք, որք ընդարուս զիգական խառնակութիւնսն խառնակիք, և զէգս իբրև զարս 'ի Ճակատս տանիք. սատանայի գործ է զամենայն խառնակել և զբնաւն շփոթել և զսա 'ի սկզբանէ եղեալ սահմանսն խախտել և փոփոխել զոր Ած սահմանեաց բնութեան մարդկան, կնոջ 'ի տան նստել, տնարար լինել, և առն զհրապարակի պէտս վճարել։ Դու աւադիկ զգլուխն յոտս իջուցանես և զոտսն 'ի գլուխ հանես. զկանայս վառես 'ի Ճակատ յղես և չամաչես։ Այլ զմիւսն ևս անհնարին է լսել, և զկին զամն 'ի մէջ ածել որ կայցէ և զիւր որդիս կոտորիցէ, և չամաչեն և չքնեկանին, ընդ այնպիսի պղծալից պատմութիւնս կան լինեալ և ընդ մարդկան ականջս արկանեն։

“ Այլ յորժամ, ասէ, քաղցրութիւն և մարգասիրութիւն երևեցաւ փրկչին մերոյ Այ, ոչ 'ի գործոցն արդարութեան զոր արարաք մեք, այլ ըստ իւրում ողորմութեան ապրեցոյց զմեզ աւազանաւն միւսանգամ ծննդեան և նորոգութեամբ հոգւոյն սրբոյ զոր եհեղ 'ի մեզ առատապէս 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի փրկ-

չինՙ մեռոյ, զի արդարացեալք նորա շնորհօքն լինիցիմք ժառանգորդք ըստ յուսոյն կենացն յաւիտենից,,: Ո ինչ իցէ ըստ յուսոյն. որպէս յուսացաքն, ասէ, նոյնպէս և վայելեմք. և կամ թէ արդէն իսկ եղեաք ժառանգորդք:

“Հաւատարիմ է բանս,,: Քանզի զհանդերձելոցն ճառեաց և չև ևս զմտաւորացն, յարէ 'ի նոյն զարժանաւորն հաւատարմութիւն: Ճշմարիտ է, ասէ, այս, և յոյժ յեղելոց հաստելոցն է: Որ յայնչափ անօրէնութեանց փրկեաց զմեզ և յայնպիսի չարեաց, յոյժ է թէ և հանդերձելոցն ամենայնի առնիցէ զմեզ արժանի, կայցես մնայցես 'ի շնորհսն. քանզի 'ի նորա տեսչութենէն լինի ամենայն ինչ:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այսուհետև զոհացողք լիցուք զԱյ, և մի զոք նախատեսցուք և մի բամբասեսցուք զոք, այլ մանաւանդ մխիթարեսցուք, աղօթս արասցուք, խրատտու լիցուք: Թէպէտ և թշնամանիցեն, թէպէտ և մարտնչիցին, մեք 'ի միտս դիցուք, դուլ պատուէր տացուք կուտակել. քանզի այնպիսի իմն են բարք հիւանդաց: Այլ որք կամիցին զնոսա յառողջութիւն ձգել, ամենայնի համբերեն, զամ հնարս հնարին, թէպէտ և չվճարիցեն ինչ, սակայն յիւրեանց անձանց զմեղսն 'ի մտացն հանիցեն: Եթէ ոչ գիտիցէք բազում անգամ զի բժշկաց իսկ զհիւանդն անյոյս արարեալ իցէ, այլ ոք 'ի ջերմոցն՝ փութացեալ զդարմանս մատուցանէ, զի մի ինչ պակաս գտանիցի, և 'ի բամբասանս անկանիցի թէ անտես կորեաւ: Չտեսանիցէ՞ք որչափ ջերմքն դարմանս ազգի ազգի առնեն, պէսպէս հնարիւք հնարին, բժիշկս կոչեն, ինչս ծախեն, ցանգ պատկառ կան: Գէթ նոցա նմանեսցուք, թէպէտ և չիցէ ինչ զոյգ հոգն: Եւ վասն մանկան միոյ որ խօթն կայցէ, չդանդաղի հայրն երթալ 'ի հեռի ճանապարհս, զի ցաւոցն հնարս առնիցէ. և ոգիքն թէպէտ և 'ի կարուօջ ինչ ախտի ջերանիցի, չառնէ ինչ փոյթ ոք: Այլ ամենեքեան ծուլացաք, բոլորքս հեղգացաք, ամենեքեան պղերգ եմք, արք և կանայք և մանկտի չունիմք փոյթ յանձին դարման տանելոյ անձանց՝ որ յայսչափ ապականիլ ախտի ջեռեալ ծնկին. այլ յետոյ զգայցեմք:

Միտ դիք զիարդ յաղթութիւն, զիարդ [1] ծիծաղելի իցէ ասել՝ ոչ ակն ունէաք, ոչ կարծէաք այսպիսի ինչ լինել. որ ոչ միայն է յաղթութիւն, այլ և պատիժք իսկ իցեն ։ Եթէ աստէն յաշխարհի անմտութիւն իցէ արհամարհել զհանդերձեալ ինչ, որչափ ևս առաւել անդ. եթէ այժմ մինչ լսեմքս 'ի բազմաց և խրատիմք 'ի բազմաց և պատուէր առնումք զգործոյիցն և զչգործոյից՝ հեղգայցեմք, յորժամ չիցէ ուստեք պատսպարութիւն զի՞ գործեսցուք ։ Բնաւն հարցուք զյուսոյն, հոգասցուք վասն փրկութեան մերոյ, զա̃ծ աղաչեսցուք զի ձեռնկալու լիցի ։ Մինչև ցե՞րբ ծուլանայցեմք և անփոյթ առնիցեմք զծառայակցացն ։ Նա առատապէս եհեղ 'ի վերայ մեր զշնորհս հոգւոյն. 'ի միտ առցուք և մեք որչափ ինչ եցոյց մեզ շնորհս, զի մեք նոյնչափ ցուցանիցեմք փոյթ. մանաւանդ թէ չէ իսկ հնար այնպիսի փոյթ ցուցանել, գոնէ սակաւ ինչ ։ Իսկ եթէ յայնպիսի շնորհաց անհանճար գտանիցիմք, բազում պատիժս կրիցեմք. զի “Թէ իմ չէր եկեալ և խօսեցեալ, ասէ, չգոյր ինչ նոցա մեղ. բայց այժմ չունին պատճառս„ ։ Մի լիցի և վասն մեր ինչ այնպիսի լսել. այլ եղիցի ամենեցուն մեզ հասանել խոստացելոց բարութեանց սիրելեաց իւրոց շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

1 Պակասէր յօրինակին զիարդ . . . է յաղթութիւն . յաւելաւ 'ի յանէն ։

# ՃԱՌ ՎԵՑԵՐՈՐԴ

"Եւ վասն այսորիկ կամիմ զքեզ հաստատել, զի փոյթ արասցեն բարեաց գործոց վերակացու լինել որք հաւատացեալ իցեն յԱծ, զի այս իրքն է բարի և օգտակար մարդկան: Բայց զյիմարութեանս խնդիրս և զտոհմութիւնս և զհեռ և զկռիւս օրինականս 'ի բաց մերժեասջիր, զի անօգուտք և զրաբանք են: Զայրն հերետիկոսէ յետ մի անգամ և երկիցս խրատելոյ հրաժարեսջիր. գիտասջիր զի թիւրեալ է այնպիսին, և մեղանչէ անձամբ դատապարտեալ":

Բայց զի՞նչ մարդասիրութեանէն և զանչափ խնամոցն զոր եցոյց 'ի մեզ՝ եթէ որպէս էաք և որպիսիս արար, ասէ բառ 'նոցանէ և զայս՝ թէ "Վասն այսորիկ կամիմ զքեզ հաստատել, զի փոյթ առնիցեն գործոց բարեաց վերակացու լինել որք հաւատացեալք իցեն յԱծ". և զայս խօսել և յօժարեցուցանել յողորմածութիւն: Բանզի ոչ առ 'ի խոնարհութիւն միայն պատշաճ իցեն մեզ բանքն, այլ և առ այլ առաքինութիւն: Որպիսի ինչ և առ Կորնթացիսն ճառէր. "Պարտէք, ասէ, զի վասն ձեր աղքատացաւ մեծատունն, զի մեք նորա աղքատութեամբն մեծասցուք": Իմացեալ զխնամսն մեր և զաւաւել մարդասիրութիւն, յորդորէ զնոսա յողորմածութիւն, ոչ փայլապար ինչ և ոչ վեր 'ի վերոյ. այլ "զի փոյթ արասցեն, ասէ, գործոց բարեաց վերակացու լինել". այսինքն է և զրկելոց օգնական լինել ոչ միայն ընչիւք, այլ և վերակացութեամբք. և այրեաց և որբոց վրէժխնդիր լինել, և ամենայն նեղելոց ձեռնկալու. այս է բարեացն գործոց վերակացու լինել: "Զի այս է, ասէ, բարի և օգտակար մարդկան":

"Բայց զյիմարութեանս խնդիրս և զտոհմութիւնս և զհերձուածս և զօրինական կռիւս 'ի բաց մերժեա, զի անօգուտ և զրաբանք են": Զինչ իցեն տոհմութիւնքն. քանզի և 'ի Տիմոթեայ թղթին զսոյն գրէ. "Բաւա-

պելը, ասէ, և անչափ առհամաթիւս„. Թերևս¹ և աստ և անդ զՀրէից ակնարկիցէ, որք հպարտացեալ յանձինս ունել հայր զԱբրահամ անփոյթ առնէին զանձանց։ Նմին իրի և յիմարս կոչէ զնոսա և անօգուտս. քանզի և յիմարութիւն իսկ է յունայն յանօգուտ իրս։ Հերձուածս՝ զհերետիկոսաց հակառակութիւնսն ասէ. յորմէ չիք ինչ շահ, և կատարածն, ոչ ինչ է. Յորժամ իցէ որք թիւրեալ և չկամիցի այնուհետև փոխել զքարոզն, ընդէ՞ր բնաւ ջանայցես ընդ այնպիսւոյն՝ որ 'ի քարի վերայ սերմն ունիցիս. պարտ է զայն ջան 'ի քոյոյն ցուցանել, և վասն ողորմածութեան խօսել ընդ նոսա և վասն այլոց առաքինութեանց։

Եւ զիա՞րդ այլուր ասիցէ. "Թերևս տացէ նոցա ած ապաշխարութիւն„. և աստ ասէ. "Յառնէ հերետիկոսէ յետ մի անգամ և երկիցս խրատելոյ հրաժարեսջիր. գիտասջիր զի թիւրեալ է այնպիսին, և մեղանչէ անձամբ դատապարտեալ„։ Անդ վասն այնոցիկ՝ որոց յոյս գուցէ դառնալոյ, և վասն դոյզն ինչ ընդդէմ դարձելոց. իսկ յորժամ յայտնի և երևելի իցէ ամենեցուն, է՞ր աղագաւ 'ի զուր ջանայցես. ընդէ՞ր զհողմն կծիցես։ Զի՞նչ իցէ՝ անձամբն դատապարտեալ։ Զի չունիցին ասել թէ ոչ ոք խրատեաց զիս, չուսոյց ոք, չարար խելամուտ։ Յորժամ յետ խրատելոյն նոյնպէս մնայցէ, անձամբ զանձն դատապարտէ։

"Յորժամ յղեցից առ քեզ զԱրտեմաս կամ զՏիւքիկոս, փութասջիր գալ առ իս 'ի Նիկոպօլիս„։ Զի՞նչ խօսիդ. կացուցեր զնա 'ի վերայ կրետացւոց եկեղեցւոյն, և դարձեալ առ քե՞զ կոչիցես։ Ոչ եթէ մերժէ ինչ զնա յայնպիսի բարւոք պարապութենէ, այլ առաւել հաստատել կամի. և զի ոչ ընդ իւր ինչ շրջեցուցանելոյ վասն ամենայն ուրեք կոչէ զնա, լուր զինչ ասէն. "Զի անդ եդի 'ի մտի ձմերել„։ Այս Նիկոպօլիս 'ի Թրակացւոց աշխարհին է։ "Զենոն զօրինաւոր դըպիր և զԱպողոս փութապէս արձակեա առ իս, զի մի ինչ պակասեսցի նոցա„։ Նոցա չև ևս գործ ինչ հաւատացեալ էր, այլ էին ևեթ ընդ նմա։ Յորդոր էր Ա-

¹ Հատուածդ Թերևս . . . յունայն յանօգուտ իրս անկեալ էր յօրինակէն, 'ի յունականէն լրացաւ։

պողոս և կարող գրովք, այլ մի ճարտարախօս բանիբուն։ Եւ եթէ օրինաւոր դպիր էր Զենաս, չէր պարտ նմա յայլոց կերակրիլ։ Այլ օրինաւոր ասա՝ վասն զի հրէից գրոց տեղեակ էր, կոչէ զնա։ Եւ արդ զայն կամի ասել՝ թէ առատութեամբ տաջիր դոցա որ ինչ պիտոյ իցէ, զի մի ինչ, ասէ, պակասեսցէ դոցա։ «Ուսանիցին, ասէ, և մերքն բարեաց գործոց վերակացու լինել ՚ի պէտս արգոյս, զի մի անպտուղ լինիցին։ Ողջոյն տան քեզ որ ընդ իս են ամենեքեան. ողջոյն տաջիր սիրելեաց մերոց հաւատացելոց». կամ զիւրոց սիրելեաց ասէ, կամ զարանց հաւատացելոց։ «Շնորհք ընդ ամենեսին ընդ ձեզ»։

Զխորդ հրամայիցես նմա զհակառակորդսն ըմբերանել, եթէ մերժել ՚ի բաց պարտ ինչ իցէ ՚ի նոցանէն, յորժամ ամենևին զապականութեան գործս գործիցեն։ Ասէ, դու նախ ձեռն վասն նոցա օգտի այնպիսի ինչ երբէք մի առնիցես, քանզի ոչ օգտին երբէք, զի միանգամ իսկ թիւրեցին զմիտս։ Ապա եթէ զայլս ապականիցեն, պինդ կալ պարտ է և կռուել, և մեծաւ իսկ արութեամբ. և եթէ այնպէս ինչ չիցէ, ՚ի բաց մերժեսջիր։ Ապա թէ հարկ ՚ի վերայ հասանիցէ, տեսանիցես թէ զայլս ապականեն՝ մի լռիցես, այլ ըմբերանեսջիր. զի յայլսն որ կորնչելոցն իցեն՝ խնայիցես և չտայցես կորնչել։ Ընաւ չէ իսկ օրէն այնմ որ փոյթն իցէ և վարս բարւոք ունիցի, կռուիլ յանձն առնուլ։ Բայց սակայն, որպէս ասացիդ, այդպէս արասջիր. զի ՚ի պարապտութեանն[1] և առաքինութեան իւրքն յօրինին, մնասցին միայն պարապեալ։ Քանզի և բազում շատ խօսելն վնաս մեծ է, այլ պարտ է կամ ուսուցանել կամ յաղօթս կալ կամ գոհանալ. զի[2] ոչ եթէ ընչից խնայել պարտ է և բանից ոչ, այլ ևս առաւել սոցա քան նոցա. և մի վայրապար ամենեցուն զանձինս մատնել։

Զինչ իցէ՝ զի փոյթ արասցեն, ասէ, բարեաց գործոց վերակացու լինել։ Զի չմնայցեն կարօտելոյն գալ առ նոսա, այլ ինքեանք խուզիցեն, խնդրիցեն զկարօտեալսն լինել նոցա ձեռնկալու։ Զի որ փոյթ առնիցէ,

1 Յօրինակին՝ ի պարարտութեանն. Եւ ընչից խնայել պարտ է. յաւելեալ
եղաւ ըստ յունին. ՚ի յունէն։

2 Պակասէր յօրինակին զի ոչ է.

այնպէս առնէ փոյթ, այնպիսի բազում իսկ փութով զնոյն գործէ. ոլով զբարիսն գործէ, ոչ այնչափ նոցա որոց զբարիսն առնէ՝ որչափ իւր կուտէ շահս և օգուտս. համարձակութիւն տայ առ Ած, աչալրջութիւն առ մարդիկ. իսկ կատուն և ոչ ինչ վախճան չիք։ Օանուղղայն կոչէ հերետիկոս. զոր օրինակ որոց յոյս գուցէ դառնալոյ և ոչ ջանայցէ ոք՝ վատութեան գործ է, նոյնպէս և զանբժշկականսն բժշկել՝ անմտութեան և անհնարին յիմարութեան, քանզի ևս յանդգնագոյնս գործիցեմք զնոսա։

“Ուսանիցիս, ասէ, և մերքն բարեաց գործոց վերակացու լինել ՚ի պէտս արգոյս, զի մի անպտուղ լինիցիս,,։ Տեսանե՞ս զինչ նոցա տուեալ փոյթ առնէ քան մուրողացն։ Մարթ էր արդեօք և զնոսա յամենայն կողմանց դարմանել. այլ զմերոցն, ասէ, հոգամ։ Իսկ զինչ օգուտ էր, ասէ ասա, եթէ զանձս գտանէին և զվարդապետս կերակրէին։ Իսկ նոցա օգուտ ինչ ոչ լինէր, քանզի անպտուղք մնային։ Միթէ չկարէ՞ր Քրիստոս, որ ՚ի հինգ նկանակէն այնչափ յաճախեաց և յեօթն նկանակէն այնչափ բազմութիւնս կերակրեաց, կերակրել զանձն և որ ընդ նմայն էին։ Իսկ էր վասն ՚ի կանանց կերակրէր։ “Երթային, ասէ, զհետ նորա կանայք, որ և պաշտէին իսկ զնա յընչից իւրեանց,,։ Ընդուստ ՚ի սկզբանէ ուսուցանէր զմեզ՝ եթէ զբարեգործացն փոյթ յանձին ունի։ Չկարէ՞ր Պաւղոս, որ այլոց բաւական էր ձեռօքն իւրովք, չառնուլ ինչ յումեքէ. այլ տես զի խնդրէ և առնու. եթէ ընդէր, լուր զինչ ասէն. “Խնդրեմ, ասէ, ոչ զտուրսն, այլ զպտուղն որ յաճախէ ՚ի բան ձեր,,։ Իսկ յառաջինն յորժամ զիւրեանց ինչս վաճառէին և բերէին դնէին առ ոտս առաքելոցն, տես զառաքեալսն զիարդ նոցա առաւել խնամ տանէին քան մուրողացն։ Որպէս զի թէ աղքատաց միայն խնամ ունէին, ապա ոչ այնպիսի ինչ վասն Սափիրայ և Անանիայ փոյթ առնէին ՚ի ժամանակի իբրև գողացան ՚ի գնոցն. նա թէ այնպէս ինչ էր, և արգելուլն իսկ ոչ յանիրաւութենէն առնուլ, և ոչ Պաւղոս այնպիսի հրաման տայր՝ եթէ “Մի՛ ՚ի տրտմութենէ և ՚ի հարկէ,,։ Օ՜ ինչ խօսիս, ո՛վ Պաւղոս, խափանե՞ս զաղքատաց տուրս։ Ո՛չ, ասէ. քանզի չհայիմ ՚ի նոցա պէտս, այլ ՚ի տա_

ընացին։ Տես և զմարգարէն որ զբարուոք խրատն տայր Նաբուգոդոնոսոր արքային՝ ոչ ընդ աղքատաց միայն հոգալ։ Չասաց վայրապար՝ թէ տուր աղքատաց, այլ թէ «Զմեղս քո ողորմութեամբ քաւեա, և զանօրէնութիւնս քո գթալ տնանկաց»։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Թօթափեա զինչսն, ասէ, ոչ զի միայն այլք ուտիցեն, այլ զի և դու ապրիցիս 'ի պատժոց։ Դարձեալ և Քրիստոս. «Վաճառեա, ասէ, զինչս քո և տուր աղքատաց և եկ յարեաց յիս»։ Տեսանես զիարդ և վասն 'ի նա յարելոյ տայ պատուիրանն։ Քանզի խափանեն և ինչքն, վասն այնորիկ աղքատաց հրամայէ տալ առ 'ի խրատելոյ զմարդիկ ողորմած և գթած լինել, խրատէ զինչս արհամարհել, յագահութենէ 'ի բաց կալ։ Որ խրատիցի տալ չքաւորին, յորժամ ժամանակ 'ի վերայ անցանիցէ՝ կարէ խրատատու լինել չառնուլ ինչ 'ի դրաւորաց։ Եւ այս իսկ առնէ նմանողս ոչ։ Որպէս և կուսութիւն խիստ քան զայն աշխատութիւն ունիցի, և պահք և գետնատարածութիւնք, այլ չիք ինչ այնպէս հզօր և ուժգին առ 'ի շիջուցանել զմեղացն հրդեհ իբրև ողորմութիւն։ Քան զամենեսին նա մեծ է, անդ իսկ առ թագաւորին տանի կացուցանէ զգործեալսն. և կարի իսկ յիրաւի. զի կուսութիւն և պահք և գետնատարածութիւն առ այնս որ գործիցեն ևեթ՝ դադարեն, և զայլ ոք ոչ կարեն կեցուցանել. իսկ ողորմութիւն յամենեսեան տարածանի և ընդ ամենայն անդամոն Քրիստոսի գրկախառն լանջակից լինի. և բազում[1] քան զայն որ 'ի միում ևեթ իցէ, որ յամենեսեան տարածանիցի՝ ուղղութիւն մեծ։ Քանզի նա է մայր սիրոյ, սիրոյ որ զքրիստոնէութիւն յանձին նկարեալ ունիցի, որ քան զամենայն նշանս մեծ է, որով աշակերտքն Քրիստոսի երևէին. որ դեղն է վիրաց մեղաց, սանդուղք որ յերկինս հաստատեալ կան. նա է որ զանդամսն Քրիստոսի պահանջակապ յօդեալ պինդ ունի։

1 Ընթերցիր՝ բազում մեծ առաքինութիւն է որ յամենեսեան տարածանիցի քան զայն որ 'ի միում ևեթ։

Աստմիք ուսանել որչափ ինչ բարութիւն է սէր։ Նա առաքելովքն ամենեքեան զինչս իւրեանց վաճառէին, և տային իւրաքանչիւր զինչ և պիտոյ էր։ Եւ արդ աղէ ասա, թէ առանց հանդերձելոցն իսկ է. մի՞ ինչ տակաւին վասն արքայութեան զբոյսք յուզիցեմք, այլ աստէն տեսցուք ո՛ շատ շահի, որք առնուցունն եթէ որք տայցեննն. Նոքա տրտմէին և ընդ միմեանս քրթմնջէին, և սոցա մի ոգի է. «Էր, ասէ, ամենեցուն սիրտ և ոգի մի», և շնորհք տեառն 'ի վերայ ամենեցուն, և բազում օգտութեամբ յառաջ գային։ Տեսանես զի և աստէն իսկ նոքա շատ շահէին։ Եւ արդ աղէ ասա, յորմէ՞ կողմանէ կամէիր լինել, 'ի նոցանէ՞ որ իւրեանցն ընդ իւրեանց ձեռն բերէին ընկենուին և ոչ ինչ չունէին, եթէ 'ի նոցանէ որք առնուին։ Տեսանես զպտուղ ողորմածութեան, կրճիմն 'ի միջոյ բարձան, և եկին հասին ոգիքն 'ի միմեանս և մի եղեն։ Ամենեցուն էր սիրտ, ասէ, և ոգի մի. որպէս զի առանց տուրս իսկ տալոյ յընչիցն թօթափիլ մեծ շահ է։

Զայս ասացի զի որք ժառանգութիւն ինչ 'ի նախնեացն չառնուցուն, մի՛ տրտմեսցին և ստախօսեսցեն[1] թէ նուազագոյնքն ինչ իցեն քան զմեծատունս։ Եւս մեծամեծս նոքա ունին թէ կամիցին, և առ ողորմածութիւնն բազում դիւրութիւն և ոչ մի ինչ պատճառս, և յամենայնէ ազատք և անհոգք։ Չկարիցէ ոք սպառնալ այնպիսւոյն. և եթէ զտունն առնուլ յարացոց[2] արկանեմ, այլ 'ի վեր է քան զամենայն լլկանս։ Եւ զոր օրինակ զմերկս փախուցեալս չկարէ ոք վաղվաղակի ըմբռնել, նոյնպէս և ոչ զայնպիսիսն. և որք բազում հանդերձիւք պատատեալ փարաւաթիցին, արագ անկանին 'ի բուռն. նոյնպէս և մեծատունն և աղքատն։ Զի մին և որ հալածիցի յայլմէ՝ դիւրաւ փախչի, և միւսն յիւր իսկ գործիս շաղեալ պատի 'ի հոգս և 'ի պէսպէս տրտմութիւնս, 'ի բարկութիւնս։ Նմա ամենայն ընկղմեն զոգիսն. և ոչ այն միայն, այլ և այլ ինչ բազում որ 'ի մեծութենէն ծնեալ այսր անդր քարշիցէ։ Քանզի և խոնարհել մեծատանն դժուարին է

1 Այսպէս յօրինակին. թերևս փոխափէցին։

2 Այսպէս յօրինակին. այլ չիք 'ի յոյնն հաստատուած և եթէ զտունն առնուլ յարացոց արկանել։

քան զտնանկին, և չափով կալ և 'ի ցասմանէ ազատ լինել դժուարին է քան տնանկին: Իսկ եթէ այնպէս իցէ, աստէն բազում վարձս ընդունելոց է. քանզի դըժուարինս, ասէ, յուղղութիւնս ածէ: Իսկ ոչ ուրեք. քանզի ինքն ո՞ւր ուղղեցաւ դժուարինս. քանզի չառ հրաման մեծանալ, այլ զնորին հակառակն՝ անձամբ անձին կանգնեաց բազում որոգայթս և գայթակղութիս:

Այլ ոչ միայն զինչսն թօթափեցին, այլ և զմեծ մասն մարմնոյն հալեցին, զի ընդ նեղ և ընդ նուրբ ճանապարհն դիւրաւ գնասցեն: Դու ոչ զայն միայն, այլ ևս քան զես բորբոքես զհնոց ախտիցն, և այլ ևս 'ի վերայ այնր ագանիս. և եթէ այնպէս իցէ, ընդարձակ ճանապարհն գնասջիր. զի այն է որ զայնպիսիս տանի, անձուկն և նուրբն զնեղեալսն զմաշեալսն զլքաւորսն որ ոչ ինչ ունիցին, այլ բեռինք են զոր ընդ այն մարթի տանիլ՝ զողորմածութիւնն մարդասիրութիւն քաղցրութիւն հեզութիւն: Զնոսա թէ բառնայցես, դիւր անցանիցես ընդ նեղ և ընդ նուրբ ճանապարհն. իսկ եթէ զհպարտութիւն և զմտացն յոռի յիմարութիւն և ըզփուչ բեռն՝ զմեծութիւն ասեմ, բազում ընդարձակութեան պէտք լինիցին մեզ. նա և ոչ 'ի բազմաց 'ի մէջ կարիցես մտանել, զի մի յայլսն կոտեսցիս փշոցն բեռամբ, այլ բազում անջրպետութեան պէտք են: Որ զոսկին և զարծաթ առեալ կրիցէ՝ զառաքինութ̃ի ուղղութեանց ասեմ, ոչ միայն չփախչին 'ի նմանէ ընկերքն, այլ օժանդակ ևս լինիցին արկանել ընդ նմա զգանձն յամուր: Եթէ[1] փուչ է մեծութիւն, զի՞նչ ցանկութիւն իցէ զայն ստանալ. ընդէ՞ր ընդ քեզ առեալ անդր տանիցիս, զի և՛ս առաւել զլոյսն բորբոքիցես, և՛ս քան զկրակն պարարիցես. չիցէ՞ իսկ շատ քան զգեհենին հուր:

Զմտաւ ած զերեք մանկունսն՝ զիարդ յաղթեցին հրոյն հնոցին. այնպիսի ինչ համարիջիր զգեհենն: Նեղութեամբ հանդերձ արկան 'ի հնոցն կապեալք և պարաւանդեալք, բայց բազում ընդարձակութիւն գտին 'ի ներքս. այլ ոչ չարախօսքն որ արտաքոյ շուրջ կային: Այնպիսի ինչ և այժմ հաստատեսցուք, մտանիցեմք առնաբար յեկեալ հասեալ պատերազմունսն. և եթէ

1 Պակասէր յօրին. Եթէ փուչ է . . . անդր տանիցիս. լրացաւ 'ի յունէն.

առ ա͞ծ ունիցիմք զայս՝ լինիցիմք մեք յանդորրու, և որք արկնիմն զմեզ՝ սաստակեսցին: "Որ փորէ զխորխորատս, անկցի ՚ի նոյն": Այլ եթէ զձեռս և զոտս կապիցեն, նեղութիւն կարող է արձակել: Տես զքանչելիսն. զոր մարդիկն կապեցին, Հուրն արձակեաց: Որ օրինակ թէ մատնիցէ ոք զոք ՚ի ձեռս բարեկամացն ծառայից, և նոքա ՚ի բարեկամութենէն տեառն ակնածեալք՝ ոչ միայն չչարչարիցեն, այլ և բազում ևս պատիւ առնիցեն, նոյնպէս և Հուրն. քանզի ծանեաւ թէ սիրելիք էին տեառն իւրոյ, խզեաց զկապանսն և արձակեաց կացոյց ՚ի պատուի. Հարթեցաւ յատակեցաւ առաջի նոցա, և կոխէր իբրև զգետին ՚ի զարշապարացն սրբոց: Այս յիրաւի իսկ. քանզի փոխանակ փառացն ա͞յ անկան ՚ի Հնոցն: Արք ՚ի նեղութիւնս մատնիցիմք, զայն ունիցիմք օրինակ նկարեալ առաջի ա͞յ:

Այլ նոքա, ասեն, ապրեցան ՚ի նեղութենէն, և մեք չապրիմք: Այս յիրաւի իսկ. քանզի ոչ այնպէս մտին ՚ի Հնոցն որպէս թէ ապրեսցին, այլ որպէս թէ և մեռանիցին իսկ: Լուր զինչ ասեն՝ թէ "Կայ ա͞ծ յերկինս որ փրկէ զմեզ. բայց զայս գիտասջիր թէ դից քո պաշտօն ոչ տանիմք և պատկերիդ ոսկւոյ զոր կանգնեցեր՝ երկիր ոչ պագանեմք": Այս մեք իբրև զխանձատակեան լինիմք խրատուցն ա͞յ, և ժամանակ դնեմք թէ այսչափ և այսքան ժամանակս աղօթեսցի, թէ[1] չողորմի: Քան-զի և Աբրահամ ոչ որպէս թէ կենդանի առնուցու զոր-դին՝ երթայր սպանանել, և առանց ակն ունելոյ առողջ ևս դարձաւ: Այլ դու յորժամ ՚ի նեղութիւնս մտանիցես, մի ունիցիս ակն ապրելոյ. պատրաստեա զմիտս առ ամենայն համբերութիւն, և փաղփաղակի զերծանիս ՚ի նեղութենէն: Նման այնորիկ ածէ ա͞ծ զնեղութիւն, զի խրատեսցէ. և յորժամ զառաջինն խրատիցիմք ժուժկալ լինել և ոչ ինչ զանգիտիցեմք, ապա և յընդարձակութիւն Հանէ որպէս զի թէ կատարեալ իսկ իցէ զամենայն:

Կամիմ և պատմութիւն ինչ օգտակար պատմել ձեզ, որպէս և բազում շահիւք լի է: Այրքեան Հալածանք սաստիկ և պատերազմ եկին Հասին ՚ի վերայ եկեղե-

1 Ցոյնն վասն այնորիկ չապրիմք:

ցւոյ. յորժամ 'ի խնդիր ելին, երկու արք հաւատացեալք ըմբռնեցան, մինն պատրաստ էր ամենայն չարչարանաց՝ զինչ և գայցէ 'ի վերայ ժուժկալ լինել, և միւսն 'ի գլխատութենէ միայն յօժարէր, յայլ ինչ չարչարանս չկամէր անկանել, քանզի կարի երկնչէր 'ի պէսպէս տանջանաց։ Նա արդ տես զսէր տեսչութեան. իբրև նստաւ դատաւորն, զայն որ ամենայն տանջանաց պատրաստեալ էր, վաղվաղակի գլխատել հրամայեաց, և զմիւսն կախել և քերել ոչ մի անգամ միայն և երկիցս, այլ բազում անգամ քաղաք 'ի քաղաքի շրջեցուցանէր։ Եւ էր վասն այնպէս մատնեցաւ 'ի ձեռս. զի զանգիտանք մտացն հաստատեսցին տանջանօքն, և ամենայն երկիւղն 'ի բաց մերժեսցի, զի մի այնուհետև զանգիտիցէ 'ի տանջանացն։

Նա և Յովսէփ յորժամ մօտ եղև յելանելն, յայնժամ անդէն մնաց։ Լուր զինչ ասէր. "Գողանալով գողացան զիս յերկրէն եբրայեցւոց. յիշեսջիր զիս առաջի Թագաւորին"։ Ամենք ասեն՝ իբրև խնդալով իմն ասաց, քանզի ասաց՝ թէ յիշեսջիր զիս։ Զի ուսանիցի թէ չէ պարտ վստահ լինել յուսալ 'ի մարդիկ, այլ յած ապաստան ունել զյոյսն. և վասն այնորիկ անդէն մնաց և այլ ևս ժամանակ։

Զայս ամենայն իմացեալ՝ լինիցիմք գոհացողք զայ, և զամենայն ինչ յօգուտ գործեսցուք, զի և հանդերձեալ բարեացն հասանիցեմք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԹՂԹՈՑՆ ՓԻԼԻՊԵՑԻՈՑ



### ՊԱՏՃԱՌՔ

Փիլիպեցիք 'ի քաղաքէ մակեդոնացւոց են, 'ի գըլխաւոր 'ի Կողոնիա քաղաքէ, որպէս և Ղուկաս ասէ։ Անդ դարձաւ ծիրանավաճառ կինն երկիւղած և յօժ միտադիր. անդ և ժողովրդապետն հաւատաց. անդ տանջեցաւ Պաւղոս Շիղայիւ հանդերձ. անդ և զօրագլուխքն աղաչեցին զնոսա ելանել 'ի բանտէն, քանզի երկեան 'ի նոցանէ. և դեռ ևս պայծառագոյն էր սկիզբն քարոզութեանն։ Վկայէ զնոցանէ և խիղճն. իսկ բազում և մեծամեծ լաւութիւնս, նա և պսակ ևս իւր կոչէ զնոսա, և բազում չարչարանս կրեցին. “Ձեզ, ասէ, շնորհեցաւ յՔս ոչ միայն 'ի նա հաւատալ, այլ և վասն նորա չարչարանս կրել”։ Այլ 'ի ժամանակին յորժամ գրեաց առ նոսա զթուղթս, դէպ. եղև նմա 'ի կապանս մտանել. վասն որոյ և ասէ իսկ. “Մինչև զկապանս իմ յայտնի առնել 'ի Քրիստոս յամենայն հրապարակիս”։ Հրապարակ զարքունիսն Ներոնի կոչէ. բայց յետոյ արձակեցաւ յայնմ կապանաց։ Այլ զայս 'ի թղթին որ առ Տիմոթէոս գրեաց՝ յայտ առնէ. “Յառաջին նուագի պատասխանւոյն իմոյ, ասէ, ոչ ոք եղև ընդ իս, այլ ամենեքեան թողին զիս, մի համարեսցի նոցա այն. այլ տէր, ասէ, եկաց առ իս և զօրացոյց զիս”։ Կապանս զայն ասէ որ յառաջ քան զայն պատասխանիսն էին։ Այլ զի չէր անդ Տիմոթէոս յայնժամ, անտի յայտ է, “Յառաջնումն նուագի պատասխանւոյն ոչ ոք էր ընդ իս”։

Եւ զայս գրեալ յայտ առնէր. եթէ գիտէր զայն Տիմոթէոս, ոչ այնպէս գրէր առ նա: Բայց մինչդեռ զայս թուղթ գրէր, առ նմա էր Տիմոթէոս. և յայտ անտի առնէ զոր ասէն՝ եթէ "Յուսամ 'ի տէր Յիսուս Քրիստոս զՏիմոթէոս վաղվաղակի առաքել առ ձեզ, որպէս նոյնհետայն զանձնէ ինչ մարթացից առուգել": Երձակեցաւ յայնմ կապանաց, և դարձեալ կապեցաւ յետ առնասայն երթալոյ: Թէպէտ և ասէ "Որ ի թէ և նուիրիմ վասն պատարագի և պաշտաման հաւատոցն ձերոց", իբր ոչ եթէ յայնժամ իսկ լինէր այն, այլ եթէ և յորժամ պատահիցէ՝ ուրախ եմ, ասէ: Աթափել կամէր զմիտս նոցա 'ի տրտմութենէն, քանզի տրտմեալ էին վասն կապանաց նորա. և զի ոչ մերձ 'ի մեռանել էր 'ի ժամանակին՝ յայնմանէ զոր ասէն յայտ է, եթէ "Յուսամ 'ի տէր և ես իսկ վաղվաղակի գալ առ ձեզ". և դարձեալ եթէ "Ո՛չ այս յուսացեալ գիտեմ զի կացից մնացից ամենեցուն ձեզ": Առաքեալ էր առ նա փիլիպեցւոցն զԵպափրոդիտոս տանել ինչ նմա և իմանալ թէ որպէս կայցէ, քանզի յոյժ խնամով էին ընդ նմա. և զի առաքեցին ինչ նմա, նմին իսկ լուր. "Բաւ իմ, ասէ, ընկալեալ զամենայն և լի եմ, զի ընկալայ որ ինչ 'ի ձէնջն էր 'ի ձեռն Եպափրոդիտեայ": Եւ զի առաքեցին հրամուտ լինել իրացն նորա, և զայն 'ի սկզբան թղթիս յայտ առնէ. "Կամիմ, ասէ, թէ գիտակ լինիցիք, եղբարք, եթէ որ ինչ վասն իմ իրք էին՝ ևս քան զևս 'ի յառաջադիմութիւն աւետարանին եկին". և դարձեալ եթէ "Յուսամ 'ի տէր զՏիմոթէոս վաղվաղակի առաքել առ ձեզ, զի և ինձ սրտի դիւր լինիցի յորժամ գիտացից վասն ձեր": Եւ այս յայտ առնելոյ է՝ եթէ որպէս դուք բազում փութով առաքեցէք հմուտ լինել որպէս ինչ իրք զինև իցեն, նոյնպէս և ես զի սրտի դիւր լինիցի յորժամ գիտացից որպէս ինչ իրք են զձեօք: Քանզի բազում ժամանակք էին յորմէհետէ չէր առաքեալ նորա առ նոսա, զայս յայտ առնէ յասելոյն՝ թէ "Ո՛ իարդ և էր զուարճացարուք և զմտաւ ածէք վասն իմ": Եւ թէ մնաւ 'ի կապանս իցէ՝ յայնժամ լուան զնմանէ: Քանզի և զԵպափրոդիտեայ յայնժամ լուան թէ խօթացաւ, որ չէր ինչ կարի երևելի իբրև զՊաւղոս. թող թէ յորժամ զՊաւղոսէ լսէին եթէ 'ի կա-

պանս է, 'ի դէպ էր նոցա կարի յոյժ խռովել: Այլին իւր իսկ 'ի սկզբան Թղթիս բազում մխիթարութ̃ մատուցանէ նոցա վասն կապանացն. ցուցանէ թէ ոչ միայն չէ պարտ խռովել, այլ և ուրախ լինել: Նոյնպէս և վասն միաբանութեան խրատէ, և վասն խոնարհութեան մեծ զգուշութիւն ցուցանէ՝ թէ այնպէս դիւրաւ մարթի յաղթել թշնամեաց: Ոչ եթէ 'ի կապանս մնանել վարդապետացն ձերոց են տրտմութեան իրք, այլ յորժամ աշակերտքն չիցեն միաբան. զի և յանձումն ևս լինի աւետարանին, և միւսն օգտէ և պատակտէ:

Խրատեաց զնոսա պինդ ունել զմիաբանութիւնն, և եցոյց եթէ 'ի միաբանութեան են խոնարհութիւն. զառայ և ընդ Հրեայսն որ ամենայն ուրեք ապականիչ կրօնիցն լինէին 'ի պատճառս քրիստոնէութեան, զորս և շունս ևս կոչէ և չար մշակս. և միտս դնէ հեռանալ յայնպիսեացն և թելադիր լինել թէ ում պարտ է անսալ: Նոյնպէս և 'ի խրատսն մատուցեալ բազում ձաւս յուզեալ յորդորէ և արծարծէ և վերստին նորոգէ յաւելն՝ եթէ տէր մերձ է: Յիշէ, որպէս և իւրոյ իմաստութեանն պատշաճ էր, և զնոսա որ առաքեցինն և զինչ առաքեցինն. և այսպէս բազում մխիթարութիւնս մատուցանէ: Այլ երևի թէ բազում պատիւս զրէ նոցա 'ի թղթիս, քանզի ոչ ինչ սաստիւ և ոչ բանս պատուհասից. որ առաքինութեան իսկ նոցա նշանակ է՝ ամենևին չտալ ինչ պատճառս սաստի վարդապետին, այլ 'ի դէմս խրատու կարգեալ զամենայն առաքէ առ նոսա: Որպէս վերագոյն ասացաք, եթէ 'ի սկզբանէ իսկ բազում պիտանութիւնս եցոյց քաղաքն այն. զի թէ բանդապետս զորոց գիտէք զի բազում իսկ չարեաց պատահեն՝ վաղվաղակի 'ի միջէ նշանէ դիմեաց յառաքեալսն և մկրտեցաւ հանդերձ ամենայն տամբն իւրով. զնշանն որ եղև՝ միայն ետես, և զշահն որ եղև՝ ոչ միայն օգտեցաւ, այլ կնաւ և ամենայն տամբն հանդերձ: Եւ թէ 'ի դէպ ինչ իցէ ասել զԵւոդեայ և զՍիւնտիքէ, զմին թերևս կին բանդապետին և զնա այր նորին. այլ և զօրագլուխքն որ գան հարին զնոսա՝ գտանէին զի յայլոց յափշտակեցան, և ոչ առ իւրեանց ինչ չարութեան արարին զայն. քանզի վաղվաղակի առաքեցին և արձակեցին զնոսա, յետոյ և երկեան իսկ: Վկայէ զնոցանէ

լաւութիւն ոչ 'ի միայն 'ի հաւատան և 'ի վիշտան, այլ և 'ի բարիս գործել. քանզի ասէ՝ թէ "Ի սկզբան աւետարանին և մի անգամ և երկիցս առաքեցէք ինձ 'ի պէտս իմ". և զայս ոչ այլ ոք արար. "Եւ ոչ մի ոք յեկեղեցեաց անտի, ասէ, հաւասարեաց ինձ յաղագս տուրլոյ և առնլոյ": Եւ զանփութութիւնն 'ի նուաղութենէ ասէ և ոչ 'ի կամաց. զի ոչ, ասէ, անփոյթ ինչ առնէիք զինէն, այլ չհասանէր ձեռն: Զայս և մեր իմացեալ, քանզի և այնչափ ևս օրինակս ունիմք, կալցուք սէր ընդ միմեանս, որպէս և նա ընդ փիլիպեցիսն և նոքա ընդ նմա: Եւ զի յոյժ սիրէր զնոսա՝ յայտ անտի է, "Զի ոչ զոք ունիմ, ասէ, համաշունչ որ ընտանեբար հոգասցէ վասն ձեր". և դարձեալ. "Վասնզի ունիմ զձեզ, ասէ, 'ի սրտի 'ի կապանս իմ":

Զայս ամենայն իմացեալ և մեք տրասցուք զանձինս արժանի այսպիսի օրինակաց կրել չարչարանս վասն Քրիստոսի և լինել պատրաստք յամենայնի: Բայց այժմ, ասեն, չեն հալածանք: Ո՞չ այնպէս իցէ՝ թէ և այլով իւիք չլինիմք նմանողք նոցա, առատութեամբ և տուրս տալով լիցուք նմանողք: Մի՞ թէ յորժամ մի անգամ կամ երկիցս տայցեմք, զայն բաւական համարեսցուք. հանապազ պարտ է զայն առնել և ցանկ 'ի նմին յօժարագոյն գտանել. քանզի ոչ եթէ մի անգամ միայն պարտ է հաճոյ լինել, այլ միշտ և յամենայն ժամ: Զի և սուրհանդակն եթէ 'ի տասն ասպարէզ ընթանայցէ և յետոյ կասիցէ՝ զամենայն կորուսանէ. և մեք եթէ սկիզբն առնիցեմք գործոց բարեաց և յետոյ հեղգայցեմք՝ զամենայն կորուսանեմք, 'ի բնաւէ վրիպիմք: Լուր շահաւէտ խրատուն. "Զողորմութիւն, ասէ, և հաւատք 'ի քէն մի պակասեսցեն": Չասաց թէ մի անգամ արա և ոչ երկիցս և երիցս և ոչ տասնիցս կամ քսանիցս. այլ յար և ցանկ, ասէ, մի պակասեսցեն 'ի քէն: Եւ չասաց թէ մի թողուցուս զնոսա, այլ նոքա մի թողցեն զքեզ. ցուցանէ թէ մեք նոցօք եմք կարօտ, և ոչ նոքա մեօք. և ուսուցանէ թէ ամենևին պարտիմք հնարել զի զնոսա առ մեզ պինդ պահեսցուք. "Արկ զնոսա, ասէ, ընդ պարանոց քո": Զոր օրինակ մեծատանց մանկունք որ զարդ ոսկի ունիցին յանձին՝ չհանեն երբէք 'ի բաց, զի այնու ազնուականութիւնն երևեսցի, նոյն-

պէս և մեք պարտիմք զողորմածութիւնն յանձինս կրել. զի այնու երևեսցուք թէ ողորմածին այ եմք որդիք, որ ծագէ զարեգակն 'ի վերայ չարաց և բարեաց։ Ապա չհաւատա՞ն անհաւատքն թէ այնպէս իցէ։ Այնու հաւատասցեն յորժամ զնոյն գործ գործեսցուք։ Յորժամ տեսանիցեն թէ ամենեցուն ողորմիմք, և այնու ստուգեմք 'ի մեզ զվարդապետն. և անտի իմանան թէ նորին նմանողք եմք, յորժամ զնոյն գործ գործիցեմք։ "Ողորմութիւնք, ասէ, և հաւատք"։ Ոչինչ առիցէ առա զհաւատոն։ Ստոյգ ողորմութիւնն ոյք չկցենն յափըշտակութենէ, զի այլքն չեն հաւատք և ոչ ճշմարտութիւն։ Որ զողանայն՝ հարկ է նմա ստել և սուտ երդնուլ. բայց դու մի՛ այնպէս, այլ ընդ ողորմութեանն ունիցիս և հաւատս։ Զարդարեսցուք այնպիսի զարդուք. արկցուք զմանեակն ոսկի ընդ պարանոց՝ զողորմութենէն ասեմ, մինչդեռ աստէն եմք և յաստիս։ Եթէ անցանիցեմք զտիովք և զաստովք, չիցէ այնուհետև մեզ պիտանացու զարդն և մանեակն. ընդէ՞ր. քանզի չգոն անդ աղքատք և ոչ ինչք, չիք անդ աղքատութիւն. մինչդեռ 'ի մատաղ հասակի եմք, մի՛ զրկեսցուք զանձինս յայնպիսի զարդուէ։ Սա և մանկութեան զարդ յորժամ հասանիցեն 'ի չափ արութեան, մերկանան և այլ զարդ ածեն. նոյնպէս և մեզ ոչ ևս ընչիւք ողորմածութիւնն լինիցի զարդ, այլ այլ իմն առաւել մեծ քան զայն. որպէս զի յայնժամն մի՛ զրկեսցուք զանձինս, ջանասցուք գեղեցիկ երևեցուցանել զանձինս։ Մեծ և մեծարոյ է ողորմածութիւնն, գեղեցիկ և պատուական պարգևք երկնից։ Մանաւանդ թէ մեծ բարութիւն այն իսկ իցէ յորժամ ուսանիցիմք զինչս արհամարհել և այլ ինչ ուսանել։ Տես որչափ ինչ անտի բարութիւնք ծնանին։ Որ առնիցէ զողորմութիւնն որպէս պարտ է առնել, ուսանի զինչս արհամարհել, զարմատն ամենայն չարեաց ուսանի 'ի բաց խլել։ Որպէս զի ոչ այլում բարի առնէ, այլ մանաւանդ ինքն բարիս գտանէ. քանզի ոչ եթէ պարտք և փոխարէնք միայն կան մնան ողորմածութեան, այլ և ոգի ողորմածին 'ի զգաստութիւն կրթի և մեծատուն և բարձրագոյն լինի։ Որ ողորմութիւն առնիցէ, խրատի չզարմանալ ընդ ինչս, չհարկանել յակուղ. և յորժամ այնու խրատիցին միտքն, սկիզբն առ-

նուցուն վերանալոյ յերկինս, և պատճառս գտանեն պարուրելոյ զկռիւ և զհեռ և զնախանձ և զպէսպէս տրտմութիւնս: Գիտէք և դուք, գիտէք իսկ զի ամենայն չարիք վասն ընչից գործին, և պէսպէս պատերազմունք վասն ընչից առնին: Որ զայն ուսանիցի արհամարհել, 'ի խաղաղութեան պահէ զանձն, չերկնչի 'ի վնասուէ, չկասկածէ 'ի զրպարտութենէ, քանզի զայն ուսուցանէ զնա ողորմածութիւնն. չցանկայ այնուհետև այլոց ընչից: Այլ արդարեւ իսկ որ զիւրն 'ի բաց թօթափէ և այլոց բաշխէ, ոչ ևս նախանձիցի ընդ այլոց մեծութիւնս, և արդարեւ իսկ ոչ. որ կամօք ախորժիցէ լինել աղքատ, որքէ այնուհետև և զաչս մտացն 'ի չար ցանկութենէ: Այլ այն աստ. իսկ որ ինչ անդ է, զայն և ասել չէ հնար թէ որպիսի ինչ բարութեան հասանիցէ. չմնայ արտաքոյ ընդ անմիտ կուսանսն, այլ մտանէ ընդ իմաստունսն առ փեսայն, ունի 'ի ձեռն զվառեալ լապտերսն, և ևս պայծառագոյն իցէ քան զայնոսիկ որք 'ի կուսութեան նահատակիցեն. թէպէտ և չիցէ առեալ զփորձ այնպիսի վաստակոց, լաւագոյն քան զնոսա լինիցի. քանզի այնպիսի է ողորմածութեանն զօրութիւն, մեծաւ համարձակութբ մուծանէ զիւր սնուցիչսն: Քանզի ծանօթ է երկնից դռնապանացն որ կան յաշխարհապահու 'ի դրան փեսայեն. ոչ միայն ծանօթ է, այլ և մեծարոյ. և զորս ճանաչէ զի զնա պատուեցին, մուծանէ 'ի ներքս բազում համարձակութեամբ. չիցէ ոք որ ընդդէմ դառնայցէ, այլ ամենեքին տեղի տայցեն: Զի եթէ զա̅ծ յերկիր իջոյց և հաւանեցոյց մարդ լինել, որչափ ևս առաւել կարող իցէ զմարդիկ յերկինս հանել: Մեծ զօրութիւն ունի ողորմածութիւն. քանզի եթէ առ ողորմածութե̅ և մարդասիրութեան եղև ա̅ծ մարդ, և նոյն հաւանեցոյց զնա լինել ծառայ, որչափ ևս առաւել զծառայսն տանիցի յիւր պատիւն: Զնա սիրեսցուք և 'ի նոյն զթասցուք, մի՛ միայն մի օր և մի՛ զերկի կամ զերիր, այլ զամենայն ժամանակս, զի ծանիցէ ըզմեզ: Եթէ նա ծանիցէ, ապա և տէրն ճանաչէ. և եթէ նա յանծանօթս լինիցի, և տէր չճանաչէ և ասիցէ թէ չճանաչեմ զձեզ: Այլ քաւ և մի՛ լիցի մեզ զայն ձայն լսել, այլ զերանելի բարբառն եթէ "Եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ

զարքայութիւն 'ի սկզբանէ աշխարհիս ,, ։ Այսում լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

## ՃԱՌ ԱՌԱՋԻՆ

"Պաւղոս և Տիմոթէոս ծառայք Յիսուսի Քրիստոսի, ամենայն սրբոց 'ի Քրիստոս Յիսուս, որ էքդ 'ի փիլիպպեցիս առ եպիսկոպոսակիցս, շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱ̄յ 'ի հօրէ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ,, ։

Աստ որպէս առ համգիստապատիւս գրէ զԹուղթս ․ չդնէ զիւրոյ վարդապետութեանն պատիւ, այլ այլ իմն և մեծ ․ զինչ իցէ ․ զի ծառայն կոչէ զանձն և ոչ առաքեալ ։ Արդարեւ մեծ իսկ պատիւ է և գլուխ ամ̄ն բարութեանց ծառայ լինել Քի ։ Ոչ վայրապար կոչել ․ քանզի զի Քի ծառայն է արդարեւ ազատ 'ի մեղաց, և մնտերիմ ծառայ, և չէ այլոյ ուրուք ծառայ ․ ապա թէ ոչ՝ չէր հաւատարիմ ծառայ Քի, այլ պիտակ ։ Այս և առ հռովմայեցիսն յորժամ գրեաց զԹուղթն՝ ասէ ․ "Պաւղոս ծառայ Յիսուսի Քրիստոսի ,, ․ իսկ 'ի կորնթացւոցն և 'ի Տիմոթեայ Թղթին առաքեալ կոչէ զանձն ։ Այլ վասն էր արդեօք ։ Ոչ եթէ քան զՏիմոթէոս նոքա ինչ լաւագոյնք էին, ծն անդր ․ այլ առաւել իմն զնոսա պատուէ քան զամենեսեան, առ որս Թուղթ ուրեք գրեաց, և բազում ինչ զնոցա առաքինութենէ վկայէ ։ Քանզի զի անդ հրամանս ինչ տալոյ էր, վասն այնորիկ առանձին դնէ զառաքելոյ պատիւ ։ Իսկ աստ քանզի ոչ ինչ հրամանս տայր, այլ զայն եւեթ յիշեցուցանէր որում և անձամբ իսկ զգուշանային ․ վասն այնորիկ ասէ ․ "սրբոցդ 'ի Քրիստոս Յիսուս որ էքդ 'ի փիլիպպեցիս ,, ։ Քանզի 'ի դէպ էր և Հրէիցն զանձինս սուրբ անուանել ըստ առաջին սովորութեանն յորժամ ժողովուրդ

սուրբ և սեփական կոչէին. նմին իրի յաւել՝ եթէ սրբ-
բոցդ 'ի Քրիստոս Յիսուս: Քանզի սոքա միայն էին
սուրբք, և նոքա այնուհետև պիղծք:

“Ընդ եպիսկոպոսակիցս, ասէ, և առ պաշտօնեայս”:
Իսկ այս զի՞նչ իցէ, միթէ 'ի միում քաղաքի բազում
եպիսկոպո՞սք էին. և ոչ ուրեք, այլ զերիցունս այնպէս
կոչէր, քանզի խառն և հասարակ էին յայնժամ ա-
նուամբք: Եպիսկոպոս զպաշտօնեայս կոչէր, այսինքն
սարկաւագ. վասն այնորիկ և առ Տիմոթէոս գրէ՝ թէ
“Զպաշտօնն քո կատարեալ կալ”. թէպէտ և եպիս-
կոպոս էր: Իսկ զի եպիսկոպոս էր, ասէ ցնոյն՝ թէ “Ձեռս
վաղվաղակի յուրուք վերայ մի դնիցես”. և դարձեալ.
“Որ տուաւ քեզ ձեռնադրութեամբ երիցութեան”.
ոչ եթէ երիցունք եպիսկոպոսաց ձեռնադրութիւն տայ-
ին: Դարձեալ և առ Տիտոս գրէ. “Վասն այնորիկ,
ասէ, թողի զքեզ 'ի Կրետէ զի կացուսցես ըստ քաղա-
քաց երիցունս որպէս և ես քեզ հրամայեցի. թէ իցէ ոք
անարատ, միոյ կնոջ այր”. որ ինչ զեպիսկոպոսէն իսկ
ասէ: Քանզի իբրև զայն ասաց, յարեաց վաղվաղակի
'ի նոյն՝ թէ “Պարտ է եպիսկոպոսին անարատ լինել
իբրև յա՟յ հազարապետի, մի յանդուգն”: Իսկ որպէս
ասացի իսկ՝ թէ և երիցունք յայնժամ եպիսկոպոսունք
կոչէին և պաշտօնեայք Քրիստոսի. ուստի և յայնժամ
իսկ բազումք յեպիսկոպոսաց երիցանց առ երիցակիցս
գրեն, և սարկաւագաց առ պաշտօնակիցս: Բայց այժմ
այսուհետև իւրաքանչիւր զատեալ մեկնեալ են անուանք
եպիսկոպոսին, երիցուն և սարկաւագին: “Ընդ եպիս-
կոպոսակիցս, ասէ, և պաշտօնեայս. շնորհք ընդ ձեզ և
խաղաղութիւն յա՟յ 'ի հօրէ մերմէ և 'ի տեառնէ Յի-
սուսէ Քրիստոսէ”: Ընդէ՞ր ոչ երբէք ուրեք գրէ առ
քահանայս, ոչ 'ի Հռոմ, ոչ 'ի Կորնթոս, ոչ յԵփե-
սոս և ոչ այլ ուրեք, այլ առհասարակ ամենեսին սուրբս
և հաւատացեալս և նուիրեալս. և աստ առ քահանայս
ժառանգաւորս գրէ: Քանզի նոքա առաքեցին և ետուն
տանել նմա պտուղ 'ի ձեռն Եպափրոդիտեայ:

“Գոհանամ, ասէ, զա՟յ իմ՟յ 'ի վերայ ամենայն յի-
շատակաց ձերոց յամենայն ժամ”: Ասաց այլուր թէ
“Անսացէք առաջնորդաց ձերոց և հնազանդ կացէք,
զի նոքա տքնին վասն ոգւոց ձերոց, որպէս զի համարս

իսկ տալոյ են, զի խնդութեամբ առնիցեն զայն և մի յօգուտ հանելով. զի յօգուտն հանել չարոյ աշակերտացն իցէ. ապա խնդութեամբ զնոյն առնել՝ յառաջ գալոյ և զարգանալոյ։ Արշաւի և յիշեմ զձեզ, ասէ, փառաւորեմ զԱծ։ Զայն յայն սակս առնէր, զի զգաղումն ինչ բարութեան գիտէր նոցա։ Փառաւոր առնեմ, ասէ, և աղօթս մատուցանեմ. ոչ զի զարգացայքդ. յառաջնութեան՝ չդադարեմ յաղօթս առնելոյ վասն ձեր, այլ գոհանամ զԱյ 'ի վերայ յիշատակաց ձերոց։ "Հանապազ յամենայն աղօթս իմ վասն ամենեցուն ձեր խնդութեամբ աղօթս առնեմ". քանզի է տրտմութեամբ ըզնոյն առնել, որպէս յորժամ ասիցէ այլուր. "Ի բազում նեղութենէ և 'ի վշտաց սրտի գրեցի զայս առ ձեզ բազում արտասուօք"։

"Վասն հաղորդութեան ձերոյ, ասէ, ընդ աւետարանին՝ յօրէ յառաջնմէ մինչև ցայժմ"։ Մեծ իմն վըկայէ զնոցանէն և կարի մեծ, որպէս զառաքելոցն ոք կամ զաւետարանչացն վկայէ։ Եւ զի, ասէ, մի քաղաքդ ևեթ յանձն եղև ձեզ՝ այդմ միայն խնամ տանիցիք, այլ ամենևին ջանայք զի բաժանորդ լինիցիք իմոց վաստակոցս, ամենայն ուրեք հասեալք գործակից և հաղորդք լինիցիք քարոզութեան։ Եւ 'ի միում ժամանակի միայն և ոչ յերկրորդում և ոչ յերրորդում, այլ հանապազ յորմէհետէ հաւատացիք մինչև ցայժմ, զառաքելոցն յօժարութիւն կալայք յանձին։ Տես զիարդ որ 'ի Հռոմն էին, ապստամբ եղեն 'ի նմանէ. և զի այս այսպէս է, լուր նմին իսկ. "Զայս առաջին, ասէ, զի ամենեքին ապստամբ եղեն յինէն որք յասիացւոցն էին". և դարձեալ թէ "Դեմաս եթող զիս". և "յառաջնում նուագի պատասխանւոյ ոչ ոք եղև ընդ իս"։ Իսկ նոքա 'ի բացուստ հաղորդէին նեղութեանցն. առս յղէին առ նա և ըստ կարի տալս առաքէին, և բնաւին իսկ երբէք 'ի ձեռաց ոչ թողուին։ Եւ այժմ միայն, ասէ, այլ միշտ ամենայն իրօք օգնական լինէիք։ Ապա ուրեմն հաղորդութիւն ընդ աւետարանին է այն. յորժամ նա քարոզիցէ և դու դարմանիցես զքարոզն, հաղորդակից լինիս պսակացն։ Եւ և 'ի մարտիկան արտաքին մարտկացն ոչ միայն նահատակայն է պսակն, այլ և մերձակայիցն որ զնոսա մարզիցեն և կրթիցեն, և դարմանչաց

որ զնոսա դարմանիցեն, և ամենեցուն իսկ առհասարակ որ զնահատակսն տածիցեն և յորդորիցեն և քաջալերիցեն. այնպիսիքն և յաղթութեանցն յիրաւի լինիցին բաժանորդք: Եւ 'ի պատերազմունս ոչ միայն ախոյեանն, այլ և ամենեքեան որք խրախոյսն տայցեն և ձեռնտու յաղթութեացն, յիրաւի բաժանորդք լինիցին փառացն որք և քրտանցն բաժանորդք եղեն:

Քանզի ոչ եթէ սակաւ ինչ գործս վճարէ դարմանել զսուրբս, այլ մեծ. քանզի հասարակորդս առնէ զմեզ նոցա հանդերձելոց վարձուցն: Այսպիսի ինչ. ընկեց ոք 'ի բաց զբազում ինչս վասն այ, հանապազ խընամ ունի ընդ այ բանիւք չափ և մտօք անգամ; և ամենեւին իսկ բազում հաստատութիւն պահէ: Մա՛րթի քեզ՝ թէպէտ և այնչափ հաւատով ինչ չցուցանիցես՝ լինել հաղորդ վարձուցն որ պահիցին նոցա. զիա՞րդ. եթէ բժշկիցես զնոսա բանիւք և արդեամբք, եթէ մխիթարիցես, եթէ սփոփիցես, եթէ շնորհիցես զկարեւորսն, եթէ հարկանիցես բնաւին զամենայն սպասաւորութի. և այն իսկ է որ հարթ և յատակ առնիցէ քեզ զխիստ ճանապարհն: Որպէս զի թէ զարմանալ կամիցիք ընդ այնս որք յանապատսն երթեալ դադարեալ իցեն, որք զհրեշտակաց վարս յանձին ցուցանիցեն, և զնոսա որք յեկեղեցւոջ զնոցա ուղղութիւնսն ցուցանեն զարմանջիք: Եթէ զարմանայցէք և տխատիցիք զի կարի յոյժ մնացեալ զանձինս համարիցիք, մարթի և ձեզ նոցին հաղորդ լինել՝ պաշտելով դարման տանելով. քանզի և այն այ մարդասիրութեանն գործ է, զի զնոսա որ ծոյլքն իցեն և վարս ինչ պինդս և խիստս և հաւատով չկարիցեն յանձն առնուլ՝ ընդ այն ճանապարհ տանել 'ի նոյն աստիճան: Եւ այն է զոր հաղորդութիւն կոչէ Պաւղոս. հաղորդին մեզ, ասէ, մարմնաւորօքս, հաղորդեսցուք նոցա հոգեւորօքն:

Զի թէ մեծ փոխանակ փոքունցն և անպիտանեաց զարքայութիւնն շնորհէ, ապա և ծառայքն նորա փոխանակ սակաւուցն երեւելեաց զհոգեւորսն տան. մանաւանդ թէ և զայն և զայս նա իսկ տայցէ նոքօք: Չկարիցես պահել և ոչ մեռանել և ոչ 'ի գետին ննջել և ոչ զգիշերն 'ի գլուխ 'ի հսկումն հանել. մարթի քեզ ընդ այնր ամենայնի վարձս առնուլ եթէ այլ ազգ խնլս

իրացն խառնիցես, եթէ որ յայնմ ամենայնի խնձեալ լիցէ՝ հանգուցանիցես, եթէ դարմանիցես և խրախոյս տայցես, ստէպ երթիցես և թեթևացուցանես զվաստակն 'ի նմանէ մխիթարութեամբն։ Քանզի խարուեալ երիթացեալ կայ 'ի մարտին և վիրաւորեալ. դու դարման մատուցանիցես, խնամս տանիցիս, ընդ առաջ երթայցես յորժամ 'ի մարտէն գայցէ, գիրկս տարածանիցես 'ի քեզ ընդունիցիս, զովացուցես 'ի տապոյն, ըղքիրտն ջնջիցես, մխիթարիցես սփոփիցես քըքըրիցես զօրացուցանիցես զտարժանեալ հոգին։ Եթէ այնպիսի յօժարութեամբ պաշտիցեմք զուրբս, բաժանորդք լինիցիմք վարձուցն նոցա։ Սոյն և Քրիստոս ասաց՝ թէ "Արարէք ձեզ բարեկամս 'ի մամոնայէ անիրաւութեան, զի ընդունիցին զձեզ 'ի յարկսն յաւիտենից"։ Տեսանես զիարդ հաղորդ եղեն չարչարանացն յորէ յառաջնմէ մինչև ցայժմ։ Ուրախ եմ ոչ վասն անցելոցն միայն, այլ վասն հանդերձելոցն. քանզի յանցելոցն և զհանդերձեալսն կարծեմք։

"Յուսացեալ եմ, ասէ, թէ որ սկսաւ 'ի ձեզ ըղգործս բարիս, կատարեսցէ մինչև յօրն Յիսուսի Քրիստոսի"։ Տեսանես զիարդ և խոնարհել ուսուցանէ զնոսա։ Քանզի մեծամեծ իրս վկայեաց զնոցանէ զի մի մարդկօրէն ինչ ախտանայցեն, խրատէ զնոսա և զանցեալսն և զհանդերձեալսն 'ի Քրիստոս հանել։ Ո բա՞րդ. քանզի չասաց թէ յուսացեալ եմ, և որպէս սկսայքն՝ նոյնպէս կատարեցէք. այլ զի՞նչ. "Եթէ որ սկսաւ 'ի ձեզ զգործս բարիս և կատարեսցէ"։ Զգրկեաց զնոսա ամենևին յուղղութենէն. քանզի ասաց՝ եթէ ընդ հաղորդութիւնն ձեր ուրախ եմ. և յայտ արար թէ և նոցա էր ինչ ուղղութիւն։ Եւ չասաց զնոցանէն միայն, այլ թէ նախ յա͞յ. "Աստահ եմ, ասէ, թէ որ սկսաւ 'ի ձեզ զգործսն բարիս և կատարեսցէ մինչև յօրն Յիսուսի Քրիստոսի"։ Այսինքն թէ ա͞ծ ոչ ընդ ձեզ միայն, այլ և ընդ նոսա որ 'ի ձէնջն լինին՝ զնոյն խնամ ունիցի։ Եւ այն ոչ սակաւ մեծարանք են յորժամ ա͞ծ յաջողիչ գործոց ինչ լինիցի։ Եւ թէ չիցէ ակնառու, որպէս զի չէ իսկ, այլ ընդ յօժարութիւն նայի և գործակից լինի մերոց ուղղութեանցն, յայտ է թէ և զնա առ մեզ ձգելոյ մեք եմք պատճառք։ Որպէս զի և ոչ այն-

պէս զրկեալ գնոսա 'ի գոլութեանց։ Նա թէ և վայրապար և յախուռն ինչ ազդէր 'ի մեզ զուգութիւն, ապա չէին ինչ արգել և հեթանոսաց և ամենայն մարդկան ընդունել զազդեցութիւն, թէ իբրև զփայտս ինչ և զքարինս շարժէր զմեզ, և ոչ զառ 'ի մէնջն խնդրէր։ Որպէս զի ասէն թէ "Աստուած կատարեսցէ", և այն ևս 'ի նոցա գոլութիւն լինի, զի կորզեցին յինքեանս զշընորհս Աստուծոյ լինել նոցա գործակից յանցանել զանցանել ըստ մարդկեղէն բնութիւնն։ Նա և այլ ազգ իմն գոլութիւն էր նոցա, թէ այնպիսի ինչ էր ուղղութիւնդ ձեր, որպէս զի ոչ մարդկան, այլ իբրև յԱստուծոյ օգնականութեան էք կարօտ. եթէ Աստուած կատարեսցէ, ապա և աշխատութիւն ինչ կարի չիք. այլ քաջալերել պարտ է, որպէս զի թէ զամենայն կարող էք վճարել՝ 'ի նմանէ առեալ օգնութիւն։

"Որպէս զի իրաւունս իսկ թուի ինձ խորհել զայս վասն ձեր ամենեցուն վասն ունելոյ զձեզ 'ի մտի իմում 'ի կապանս իմ և 'ի պատասխանատրութեան և 'ի հաստատութեան աւետարանին և հաղորդակից շնորհացն զձեզ ամենեսին լինել"։ Բազում իմն գութ յայտ առնէ աստ առ նոսա եթէ 'ի մտի ունիցի զնոսա, և 'ի բանտին և 'ի կապանսն յիշիցէ զփիլիպեցիսն՝ չէ սակաւ ինչ գոլութիւն որերոյն. քանզի ոչ եթէ առ կանխակալ ինչ սովորութեան էր սէր սրբոցն առ նոսա, այլ քննութեամբ և ուղիղ խորհրդովք։ Որպէս զի սիրելն առ 'ի Պաւղոսէ մեծ իմն զարմանալի է, առաքինութե նոցա նշանակ է։ "Այլ 'ի պատասխանատուութեան, ասէ, և 'ի հաստատութեան աւետարանին"։ Ոչ ինչ զարմանք իցեն թէ և 'ի բանտին յիշէր զնոսա. նա և 'ի ժամանակի յատեանն մտանելոյ և 'ի պատասխանի տալոյ չանկայք, ասէ, 'ի մտաց իմոց։ Ոչ ի այնպէս է բանութիւն հոգևոր գթոյն մինչև ամենևին իսկ չանտալ ժամանակի, այլ միշտ 'ի մտի ունել զանձուկ սիրոյն, և չտալ յաղթել ոչ նեղութեան և ոչ վշտաց մըտացն անձկոյ։ Որպէս և 'ի հնոցին 'ի Բաբելոն ուր այնչափ բորբոքեալ էր՝ ցող ցօղէր զերանելեօքն. նոյնպէս և խնամ այնորիկ որ սիրիցէ և հաճոյ կամիցի լինել Աստուծոյ՝ 'ի սիրան կաթէ և շիջուցանէ զբորբոքեալ բոց նեղութեանց, և զտապն ցօղ զովացուցիչ գործէ։

“Այլ 'ի հաստատութեան, ասէ, աւետարանին”։ Ապա ուրեմն կապանքն հաստատութիւն էին աւետարանին և պատասխանի տալ. այս, ասէ, և կարի իսկ քաջ։ Զի թէ զանգիտեալ էր 'ի կապանացն, թուէր թէ խաբեբայ ոք իցէ. իսկ որ ամենայնի ժուժկալ լինիցի կապանաց և նեղութեանց, յայտ առնէ թէ ոչ վասն մարդկօրէն ինչ փառաց պատճառանաց կրէ զչարչարանս, այլ վասն այն որ հատուցանէ զբարեացն հատուցումն։ Եթէ ոչ այնպէս, ապա և մտաբերէր իսկ ոչ մեռանել և ոչ այնչափ ճգունս յանձն առնուլ և ոչ այնպիսի թագաւորի ընդդէմ դառնալ յօժարէր՝ զՆերոնէ ասեմ, եթէ ոչ ընդ այլ ոք թագաւոր նայէր որ կարի մեծ էր։ Ապա ուրեմն հաստատութիւն աւետարանին էին կապանքն։ Տես զիարդ յոլով առ այնս անդրէն 'ի հակառակսն դարձուցանէ. զամենայն տկարութիւն և չարախօսութիւն կարծէին, զնոյն հաստատութիւն ասէ. և եթէ այն չէր լեալ, յայնժամ տկարութիւն էր։ Ապա ցուցանէ թէ ոչ լոկ կանխակալ սովորութեան էր սէրն, այլ քննութեամբ։

“Վասն ունելոյ զձեզ, ասէ, 'ի կապանս իմ և 'ի պատասխանատուութեան իմոյ վասն հաղորդակից լինելոյ շնորհացն”։ Զինչ իցեն շնորհքն այն. թերևս այն իսկ էր կամք առաքելոյ զի կապիցի և հալածիցի և բազում չարչարանս կրիցէ։ Նոյն այն իսկ էր։ “Շատ են, ասէ, քեզ շնորհք իմ, զի զօրութիւն իմ 'ի տկարութեան կատարի”. նա և ինքն իսկ ասէր. “Վասն որոյ հաճեալ եմ ընդ տկարութիւս ընդ թշնամանս”։ Վասն զի տեսանեմ զձեզ, ասէ, զի արդեամբք իսկ ցուցանէք զառաքինութիւն և հաղորդ էք շնորհացն և յօժարագոյնք և յառաջադէմք, յիրաւի և զայն ես ինչ կարծեմ զձէնջ որ զփորձ իսկ զձեր գիտէի։ Այլ քանզի ամենեցուն ձեզ հմուտ եմ և ձերոց ուղղութեանցդ, զի և այսչափ հեռի լինել առ 'ի ձէնջ ջանայք չթափել 'ի մէնջ 'ի նեղութիւնս, այլ յաւետարանին փորձութիւն հաղորդս լինել, և ոչ ինչ ընդհատ գտանել 'ի պատերազմունս յորս ես մտեալ եմ և դուք դեռ մեկուսի կայք, իրաւունս համարիմ զայս վկայել զձէնջ։ Այլ ընդէ՞ր չասաց հաղորդս, այլ հաղորդակիցս։ Այլ ես իսկ, ասէ, այլում հաղորդիմ, զի եղէց հաղորդ աւետարա-

նին. այն իսկ է թէ եղէց հաղորդ բարութեանցն որ հանդերձեալ են աւետարանաւն։ Եւ այն է զարմանալի զի ամենեքեան իսկ այնմ ցանկացեալ էին։ Հաղորդակիցս ինչ, ասէ, լինել ձեզ ամենեցուն 'ի շնորհսն. անդուստ 'ի սկզբանէ յուսամ զի այնպիսիք կայցէք մինչև ցվախճան։ Զի չէ մարթ այնպիսի մեծապայծառ 'ի սկզբանն՝ շիջանել և խափանել, այլ ևս մեծ զվախճանն ցուցանել։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Եւ զի մարթի և այլ ազգ հաղորդ լինել շնորհացն և փորձութեանց և նեղութեանց, հաղորդեսցուք և մեք աղաչեմ։ Քանզի իցէք որ այժմ աստ կայցէք, մանաւանդ թէ ամենեքին իսկ, որք կամիք հաղորդ լինել Պաւղոսի 'ի հանդերձեալ բարութիւն։ Մարթի թէ կամիք նոցա որ զպաստաւորութիւնն յանձն առեալ իցէ, որք չարչարանս և վիշտս վասն Քրիստոսի կրիցեն, և ձեզ զօրավիգն և օգնական լինել։ Տեսանիցես զեղբայրն քո 'ի փորձութեան, ձեռն տուջիր. տեսանիցես զվարդապետ ոք պատերազմեալ, զօրավիգն լինիցիս։ Բայց չիք ոք, ասեն, իբրև զՊաւղոս. վաղվաղակի 'ի հպարտութի հատանեսին, 'ի զատ մնանեն։ Չիք ոք, ասեն, իբրև զՊաւղոս։ Բայց և ես զնոյն ասեմ. այլ "Որ ընդունի, ասէ, զմարգարէ յանուն մարգարէի, զվարձս մարգարէի առցէ"։ Մինթէ նոքա վասն այնորիկ էին զարմանալիք զի Պաւղոսի գործակից լինէին. այլ զի ընդունէին զքարոզութիւն Պաւղոսի և պատուական համարէին զնա զի այնպիսի չարչարանս կրէր վասն Քրիստոսի։ Իբրև ընդ Պաւղոս չիք ոք այժմ, և ոչ սակաւ ինչ մօտ յերանելին. բայց քարոզութիւնն նոյն է որ յայնժամն էր։ Ոչ միայն 'ի կապանսն հաղորդէին նմա, այլ և 'ի սկզբանէ իսկ, լուր նմին իսկ. "Գիտէք դուք ձեզէն, փիլիպեցիք, զի 'ի սկզբան աւետարանին և ոչ մի ոք յեկեղեցեացն հաղորդեաց ինձ յաղագս տալոյ և առնլոյ, բայց միայն դուք"։ Եւ առանց փորձութեանց բազում աշխատութիւն ունի յանձին վարդապետն հսկել վաստակել 'ի բանի վարդապետութեանն, երկերանս և բազում բանտանս, նախանձու պատճառս։ Սակաւիկ ինչ վիշտք

իցեն ընդ բազմացն բերանս անկանել՝ որում մարթն է անհոգ ազատ շրջել։

Այս ինձ, ուրախ անցք ընդ իս անցանեն. 'ի մէջ երկուց անհնարին իրաց պաշարեալ կամ։ Կամիմ յորդորել զձեզ և յառաջ կոչել զօրավիգն և պաշտպան լինել սրբոցն այ. դարձեալ կասկածեմ գուցէ ոք 'ի ձէնջ կարծիցէ թէ ոչ վասն ձերոյ օգտի, այլ վասն նոցա ինչ ասիցեմ։ Գիտէք թէ ոչ վասն նոցա, այլ ձեր աղագաւ. և թէ կամիք, և բանիւքն եւս հաւանեցուցից զձեզ, թէ չէ հասարակ ձեր և նոցա շահն։ Որ դուք թէպէտ և տայցէք, յայնմ իմեքէ տայք յորմէ յետ սակաւ ժամանակի և ականայ իսկ զրկելոց էք և այլոց թողուցուք. և զոր ինչ առնուք, առաւել մեծամեծք են։ Թէ չհամարիցիք այնպէս զի ընդ տալոյն առնլոց էք. և թէ այնպէս չհաւատիցիք, չկամիմ թէ և բնաւ տայցէք իսկ. այնպէս վասն ձեր ջանամ և ոչ վասն նոցա։ Եթէ ոչ նախ այնպէս դիցէ 'ի միտ որպէս թէ առնուցու, և ոչ թէ երախտիս առնիցէ, եթէ շնորհս առնըլեացն չվարկանիցի անձին, բնաւ տայցէ իսկ մի։ Նազի ոչ այնչափ փոյթ յանձին ունիմ վասն սրբոցն դարմանից, որչափ վասն ձերոյ օգտի։ Թէպէտ և դու չտայցես, սակայն այլ տայ։ Որպէս զի զոր կամիմն այս ինչ է՝ զի ձերոց մեղացն պատճառանք ինչ լինիցին. որ ոչ այնպէս տայցէ, չգտանէ պատճառս։ Քանզի ոչ եթէ տալն ինչ է առնել ողորմութիւն, այլ յօժարութեամբ և խնդութեամբ տալ և շնորհ ունել առնլեացն։ "Մի, ասէ, առ տրտմութեան և մի առ հարկի, զի զտուրս զուարթառատս սիրէ այ"։ Արդ եթէ այնպէս ոք չտայցէ, և տացէ իսկ մի. քանզի փոխս է այն և ոչ ողորմութիւն։ Ապա եթէ գիտէք թէ ձեզ շահ գործիցէք և ոչ նոցա, 'ի միտ առնուցուք եթէ ձեզ մեծամեծ օգուտ գործիցէք. քանզի նոցա մարմնոյն կերակուր, և ձեր ագիք արքայութեանն. 'ի նոցա առնուլն չթողուն մեղք, և 'ի ձեր տալոյն թօթափին յանցանքն։ Հաղորդեսցուք մեծամեծ նահատակութեանց նոցա։ Ոչ այր թագաւոր ոք յորժամ յորդեգիրս առնիցէ, չհամարի թէ տացէ ինչ, այլ թէ առնու. դու զՔրիստոս առնես յորդեգիրս, և վաստակս և չտայցես առատաբար, զի ունիցիս բազմապատիկ զգուշութեամբ։ Կամիցիս և Պաւ-

ղամբ լինել հաղորդ. և զինչ ասացից Պաւղոսի, ուր և Քրիստոս իսկ է որ ասնուն։

Այս զի գիտասջիք թէ վասն ձեր ջանամ և քանիւք և արդեամբք, և ոչ վասն այլոց ինչ համգստեան ածեմ թեկն խնամակալութեան, եթէ իցէ ոք յառաջնորդաց եկեղեցւոյ 'ի դիւրութեան և 'ի բարեկամեցութեան, և չիցէ ուժք կարօտ, այնպիսւոյն թէպէտ և սուրբ իցէ՝ մի տայցես. այլ առաւել քան զնա զկարօտեալն պատուեսցես, թէպէտ և չիցէ այնպիսի զարմանալի։ Ընդէ՞ր վասն. քանզի և Քրիստոս այնպէս կամի. որպէս յորժամ ասիցէ "Եթէ առնիցես ընթրիս կամ ճաշ, մի կոչիցես զբարեկամս և մի զազգականս, այլ զհաշմեալս և զկաղս և զկոյրս". և որք չիցեն քեզ փոխարէն հատուցանել, մի վայրապար զայնպիսի ինչ ընդունելութիւն առնել, այլ վասն քաղցելոց և ծարաւեաց և մերկոց։ Քանզի չասաց վայրապար եթէ կերակրեցէք, այլ թէ քաղցեալ տեսէք և կերակրեցէք։ Երկու արդարութիւն գործին. զի թէ զչուզն ոք քաղցեալ պարտ իցէ կերակրել, որչափ ևս առաւել յորժամ զսուրբն քաղցեալ տեսանիցես։ Ապա թէ սուրբ իցէ և կարօտ ուժք չիցէ, այնպիսւոյն մի տայցես, քանզի չէ ինչ օգուտ, նա և ոչ Քրիստոս հրամայեաց. մանաւանդ թէ և սուրբն իսկ որ 'ի դիւրութեան իցէ, չկամի ինչ առնուլ յումեքէ։ Տեսանես զի ոչ վասն զօշաքաղութեան խօսիմք զայսպիսի բանս, այլ վասն ձերոյ օգտի։ Կերակրեա զքաղցեալն, զի մի կերակրիցես զհուր գեհենին. նա յորժամ ուտիցէ 'ի քումմէն, և նշխար նորին սրբի։

Տես զիարդ կերակրեաց այրին զԵղիա. ոչ թէ կերակրեաց, այլ մանաւանդ կերակրեցաւ. ոչ ետ, այլ մանաւանդ առ։ Այնպիսի ինչ և այժմ լինի, և ևս առաւել յոյժ. ոչ սափոր ալերբ լնու և ոչ կամիփսակ իւղով. այլ զինչ. հարիւրապատիկ, և կեանքն յաւիտենից պարգևին այնպիսեացն։ Ողորմութիւնն այ հոգևոր կերակուրն է. լեր խմոր սուրբ, զի զբազումս ածիցես 'ի քո համգոյն։ Ով եկեալ կայր 'ի վերայ այրւոյն. մանկունք զանձամբ էին, և ոչ մի ինչ անտի եղև նմա արգել. այնմ այրւոյ՝ որ զերկուս խերևէշն պղնձիս արկ 'ի գանձանակն՝ նմանեցաւ։ Չասաց ընդ միտս թէ զինչ առնուցում 'ի սմանէ որ ինև կարօտ է. եթէ զօրու-

# ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

“Վասն զի վկայ է ինձ ա̃ծ որ անձկացեալ եմ ես առ ձեզ ամենեսեան գթովն Յիսուսի Քրիստոսի. և զայս աղօթս առնեմ զի սէրն ձեր ևս քան զևս յաւելցի ՚ի գիտութեան և յամենայն իմաստութեան, զի լինիջիք հաստատուն և առանց գայթակղութեան յաւուրն Քրիստոսի. լի լիցէք պտղով արդարութեան ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի ՚ի փառս և ՚ի գովութիւն այ”։

Ոչ որպէս թէ չհաւատացին նմա՝ կոչէ զա̃ծ վկայ, այլ ՚ի բազում գթոյ և ՚ի կարի հաստատութենէ և ՚ի խրախուսանաց։ Վասն զի առաջ եթէ հաղորդակից եղեն նորա, զի մի կարծիցեն թէ վասն այնր ինչ անձկայցէ նոցին առաքեալ, նմին իրի յարէ ՚ի նոյն՝ թէ գթովն Յիսուսի Քրիստոսի։ Զի՞նչ իցէ գթովն Քրիստոսի։ Թէ ըստ Քրիստոսի սիրոյն անձկամ, քանզի հաւատացեալ էք և սիրէք զՔրիստոս վասն Քրիստոսի սիրոյն։ Այս չասաց սէր, այլ որ ինչ ևս ջերմագոյն էր՝ աղեօքն Քրիստոսի ասէ. որպէս զի հայր ձեր իցեմ լեալ ըստ Քրիստոսի ազգականութեանն։ Աղեացն գութ զայն շնորհեաց մեզ։ Ջերմագոյն և գորովալ մայրենի ծառայիցն իւրոց զգութն շնորհէ։ Այնպիսի աղեօք, ասէ, սիրեմ զձեզ. ոչ բնութեան աղեօքն, այլ որ ևս ջերմագոյնքն են՝ Քրիստոսի աղեօքն, ջերմեռանդն գթովն։ Այս քանզի ամենեքեան այնպէս էք, և չկարեմ բանիւք յանդիման կացուցանել զսէրն. այլ անձկացեալ եմ, ասէ, զի չկարեմ բանիւք յայտնի առնել՝ յա̃ծ ապաստան առնեմ որ գիտէ քննել զգաղտնիս սրտից. և ոչ եթէ վասն պաշտօն ինչ առնելոյ ասէր զայս, զա̃ծ վկայ կոչէր. քանզի չէին առանց պատժոց այնպիսի իրք։ Այս զայն աղաչեմ, ասէ, զի սէրն ձեր ևս քան զևս առաւել ընտրիցի անյայտ բարութեանցն։ Այս ասէ զի այնչափ սիրեցեալ՝ ևս քան զևս կամիմ սիրելի լինել. զի որ սիրէր՝ ոչ կամիր թէ դադարեսցէ սէր սիրելեացն։ Չիք չափ այնր բարութեան. այսմ կամի պարտական զառա-

նել զմեզ երանելի առաքեալ ցանկ. «Մ՛ի ումեք, ասէ, պարտական գտանիցիք, բայց միայն զմիմեանս սիրելոյ»։ Զի ոչ երբէք դադարեսցէ չափ սիրոյն։

«Զի սէրն ձեր եւս քան զեւս առաւել լինիցի»։ Տես զբանին զգութ. «Եւս քան զեւս, ասէ, յաւելուցու գիտութեամբ եւ հանճարով»։ Ոչ ընդ վայր ինչ գութ զարմանայ եւ ոչ ընդ ախտական ինչ սէր, այլ ընդ այն որ ըստ գիտութեան իցէ. այսինքն ոչ առ ամենեսեան նովին սիրով վարել. զի այն ոչ սիրոյ է, այլ ուծութեան։ Զինչ իցէ գիտութեամբն. այն իսկ զի քննութեամբ եւ մտացն ընտրութեամբ լինիցի, զի խմաստութեամբ եւ հանճարով իցէ. զի են ոմանք որ ոչ հանճարով սիրեն, յախտական եւ որպէս դէպ ինչ լինիցի, ուստի եւ չաւանին իսկ այնպիսի սէրն սերտիւ։ «Գիտութեամբ, ասէ, եւ ամենայն հանճարով առ ՚ի յընտրել ձեզ զլաւն»․ այսինքն է զօգուտն։ Ոչ վասն իմ ինչ ասեմ, ասէ, այլ ձեր աղագաւ։ Երկիւղ է թէ գուցէ ապականիցի ոք ՚ի հերձուածողացն սիրոյ. քանզի ամենեւին իսկ զայն ակնարկէ։ Եւ տես զիարդ դնէ զնոյն. ոչ վասն իմ ինչ ասեմ, ասէ, այլ զի դուք լինիցիք հաստատունք. այն իսկ է թէ մի սիրոյն կերպարանօք երկեւանս ինչ ՚ի կրօնսն խառնիցէք։ Եւ զիա՞րդ ասիցէ, ասեն, «Եթէ հնար ինչ իցէ, ընդ ամենայն մարդկան խաղաղութիւն կալջիք»։ Խաղաղութիւն, ասէ, արարէք եւ ոչ եթէ սիրեցէք. որպէս զի ՚ի սիրոյն եւ բազում անգամ վնաս եւս լինի։ «Եթէ աջ ակն քո գայթակղեցուցանէ ըզքեզ, խլեա ընկեա ՚ի բաց»։ Զի իցէք, ասէ, հաստատունք՝ այն առ ա͞ծ, եւ առանց գայթակղութեան՝ այն առ մարդիկ։ Քանզի բազմաց բազում անգամ վնասեն բարեկամութիւնքն. եթէ քեզ չվնասեն, ասէ, այլ զընկերն գայթակղեցուցանեն։ «Յաւուրն Քրիստոսի»․ այսինքն զի յայնժամ գտանիցիք սուրբք, եւ չիցէ զոք գայթակղեցուցեալ։

«Լի իցէք պտղով արդարութեան որ Քրիստոսիւ Յիսուսիւ է ՚ի փառս եւ ՚ի գովութիւն ա͞յ»։ Այն իսկ հանդերձ կրօնիւքն եւ վարս պարկեշտս ունել. ոչ միայն պարկեշտս, այլ եւ լի լինել պտղով արդարութեան։ Է ինչ արդարութիւն՝ որ ոչ ըստ Քրիստոսի. իսկ վարքն պարկեշտք որ Քրիստոսիւ Յիսուսիւ իցեն՝ ՚ի փառս եւ

'ի զաւրութիւն ա՛յ են։ Տեսանես, ասէ, զի ոչ զիմոյ ինչ փառաց ասեմ, այլ զա՛յ արդարութենէն։ Արդարութիւն ամենայն ուրեք զողորմածութիւն ասէ։ Մի, ասէ, մնասցէ քեզ սէրն առ 'ի ճանաչել զօգուտն. մի յորժամ զամն սիրիցես, դու 'ի ծուլութիւն ինչ անկանիցիս։ Կամիմ ընդաձել սիրոյն ձերոյ. այլ ոչ այնպէս, որպէս զի մնաս ինչ գործիցէ. և ոչ կամիմ եթէ վայրապար ըստ կանխակալ ինչ սովորութեան, այլ զի ընտրեցէք եթէ բարիսք ինչ ասիցեմք։ Եւ չասաց թէ զի զմերս ախորժիցէք, այլ թէ զի ընտրիցէք. և չասաց յայտնի թէ յայս անուն մի հաղիցիք, այլ կամիմ թէ օգուտ արկանիցէք 'ի կիր զսէրն. ոչ զի անհանձար ինչ խնամ ածիցէք՝ զի անմտութիւն է, այլ զի վասն Քրիստոսի գործիցէք զարդարութիւնն և նովաւ։ Հաւասիկ դարձեալ նովաւն։ Միթէ որպէս արքանեկան վարիցի Աստուծոյն. քաւ լիցի. այլ թէ նովաւ աջողի ամենայն ինչ զոր 'ի գործ արկանիցեմք. ոչ զի ես գովեցայց, այլ զի ա՛ծ փառաւորեսցի։

"Կամիմ, ասէ, թէ գիտիցէք, եղբարք, թէ որ վասն իմ ինչ իրք էին, ևս քան զևս 'ի յառաջադիմութիւն աւետարանին եկին. մինչ զի և զկապանս իմ յայտնի առնել 'ի Քրիստոս յամենայն հրապարակիս և առ այլս ամենեսին„։ Ի դէպ էր յորժամ լուան եթէ 'ի կապանս է՝ տրտմել և խափան համարել քարոզութեն։ Եւ արդ զի՞նչ գործիցէ. վաղվաղակի զնոյն կարծիս 'ի միջոյ բառնայ։ Եւ այն սիրոյ նշանակ էր զիւր ինչ իրս յայտնել նոցա, քանզի 'ի հոգս էին։ Զինչ խօսիս. 'ի կապանս ես և խափան եղև, և զիա՞րդ յառաջ գայցէ աւետարանն։ "Որպէս զի զկապանս, ասէ, յայտնի առնել յամենայն հրապարակիս„։ Եւ այս ոչ միայն չըմբերանեաց զայլս և չզարհուրեցուցանէ, այլ ևս առաւել ետ խրախոյս։ Զի թէ ոք մօտ 'ի չարչարանս էին ոչ միայն չմնասեցան՝ այլ առաւել ևս խրախոյս առին, որչափ ևս առաւել պարտ իցէ խիզախել ձեզ։ Զի թէ 'ի կապանաց ինչ զանգիտեալ էր և լռեալ, ըմբան էր և նոցա այնպիսի ինչ վշտանալ. իսկ եթէ 'ի կապանս ևս քաջ համարձակեցաւ, ևս առաւել ետ նոցա քաջալերս. և եթէ չէր 'ի կապանս մտեալ յայնժամ, չունէին խիզախել։ Եւ զիա՞րդ յառաջադիմութիւն աւե-

տարանելին եղեն կապանքն: Աստուած, ասէ, այսինքն մնտանկարարեաց, զի մի ծանրկեցին կապանքս իմ. կապանքս իմ, ասէ, 'ի Քրիստոս. այսինքն վասն Քրիստոսի “յամենայն հրապարակին”. յայնժամ արքունիքն հրապարակս կոչէին. 'ի բնաւ, ասէ, քաղաքիս և առ այլս ամենեսեան:

“Այլ առ բազում եղբարս 'ի սէր որ յուսացեալ են 'ի կապանս իմ, առաւել ևս իշխել աներկիւղ խօսել զբանն”: Յայտնի առնէ թէ և զառաջին խրախուսեալք էին և համարձակութբ խօսէին, բայց այժմ ևս առաւել: Օր եթէ այլք վասն իմոյ կապանացս համարձակեցին, որչափ ևս առաւել ես. և եթէ այլոց պատճառք խրախուսանաց եմ, քանիօն և անձին ևս: “Այլ առ բազում եղբարս 'ի սէր”: Այլ քանզի մեծ էր ասելն եթէ իմ կապանքս ետուն նոցա խրախոյս, նախին իրի յառաջագոյն իսկ ասաց՝ եթէ 'ի սէր: Տես զիարդ թէպէտ և համարձակ էր մեծամեծս խօսել, սակայն 'ի խոնարհութենէ չհեռանայր: “Առաւել ևս իշխել աներկիւղ խօսել զբանն”: Առաւելն ևս ասելով յայտ առնէ թէ 'ի վաղուց հետէ իսկ սկիզբն արարեալ էր խօսելոյ ըզբանն:

“Ոմանք վասն նախանձու և հակառակութեան, և ոմանք մտադիւրութեամբ իսկ զՔրիստոս քարոզեն”: Այլ եթէ զինչ իցէ այն՝ պարտ է 'ի վերայ հասանել. քանզի կալեալ զՊաւղոս և կամէին սաստիկ յարուցանել զպատերազմ թագաւորին 'ի վերայ նորա. բազումք անհաւատից զՔրիստոս քարոզէին, զի ևս քան զևս բորբոքեսցեն զցասումն թագաւորին. զի որչափ քարոզութիւն տարածիցի, 'ի Պաւղոսի գլուխն կուտիցի ցասումն: Այլ արդ երկուց իրացն լինէին պատճառք կապանքն. զի կիսոցն բազում համարձակութիւն տային, և զկէսն 'ի կարծիս կորստեան իւրոյ ածէին՝ կազմեցան քարոզել զՔրիստոս: Այլ զի նախանձէին ընդ փառս իմ և ընդ հաստատութիւն, և կամէին կորուսանել զիս, ընդ հակառակս ելեալ գործակից լինէին ինձ. կամ թէ զի ինքեանք ևս պատուիցին, և կարծէին հասանել ինչ 'ի փառաց իմոց:

“Ոմանք մտադիւրութեամբ իսկ զՔրիստոս քարոզեն”. այսինքն առանց կեղծաւորութեան ամենայն յօ-

ժարութեամբ ։ “Ոմանք առ հեռի զՔրիստոս պատմեն, այլ ոչ սրբութեամբ”· այսինքն ոչ ճշմարտութբ, ոչ վասն նորին իրաց ։ Այլ ընդէ՞ր· “Կարծեն, ասէ, նեղութիւն հասուցանել ՚ի վերայ կապանաց իմոց”· այսպիսի իմն թուի նոցա եթէ մեծ ինչ վիշտս արկանիցեն, նեղութիւնս ՚ի վերայ նեղութեան ածիցեն ։ Ո՜վ անագորոյն միտք, ո՜ սատանայական գրգռութիւք ։ Կապեալ տեսանէին և ՚ի բանտ մտեալ, և ՚ի նախանձուէ չդադարէին, և ս քան զևս զվիշտսն աճեցուցանէին և մեծի բարկութեան յօդէին պատճառս ։ Այլ բարւոք ասաց զկարծենն· քանզի ոչ այնպիսի ինչ ելին ՚ի գլուխ ։ Նոքա հաշուէին այնու տրտմեցուցանել· և ես ուրախ լինէի, զի քարոզութիւնն ևս քան զևս աճէր ։ Այս այնպէս մարթի առնել ինչ բարի, և նոքա ոչ ՚ի բարիոք ինչ կամաց· և ընդ այնր ոչ միայն վարձք չիք, այլ պատիժք ևս կան ։ Քանզի ՚ի մեծամեծ վիշտս կամէին արկանել զՔրիստոսի քարոզս, վասն այնորիկ քարոզեն զՔրիստոս· և ընդ այնր ոչ միայն չառնուցուն վարձս, այլ և պատժոց և տանջանաց պարտապանք գտանիցեն ։

“Ոմանք ՚ի սիրոյ, քանզի գիտեն եթէ ՚ի պատասխանատուութիւն աւետարանին կամ” ։ Զի՞նչ իցէ պատասխանատուութիւն աւետարանին· այսինքն զհամարն իմ որ Այ տալոց եմ, յաճախէին և օգնական լինէին ինձ ։ Զի՞նչ իցէ պատասխանատուութիւն աւետարանին· կամեցայ, ասէ, քարոզել· տալոց եմ համարս և պատասխանի վասն գործոյն յոր կարգեցայ· զի դիւրաւ լիցի տալ ինձ պատասխանի, վասն այնորիկ լինէին ինձ օգնական ։ Եթէ գտանիցին բազում խրատեալք և հաւատացեալք, դիւրաւ լինի ինձ տալ պատասխանի ։

“Այլ այն զի՞ առնիցէ· որով օրինակաւ և իցէ, եթէ պատճառանօք և եթէ ճշմարտութեամբ, Քրիստոս պատմի” ։ Այլ տես զիմաստութիւն առնն· ոչ ինչ սաստիկ բամբասեաց զնոսա, այլ զորս նոր գործէին ասաց ։ Այլ ինձ զի՞նչ փոյթ իցէ, ասէ, ընդ այնր· եթէ այսպէս և եթէ այնպէս ; որով օրինակաւ և իցէ, եթէ պատճառանօք և եթէ ճշմարտութբ, Քրիստոս պատմի ։ Այլ չասաց եթէ պատմեսցի, որպէս ոմանք կարծեն թէ զհերձուածողն ակնարկիցէ, այլ թէ պատմի ։ Նոքա

յառաջ իսկ թէ պատմեցի, որպէս թէ և օրէնս ինչ դնելով. այլ որ ինչ պատահեաց 'ի ժամանակին, զայն պատմեաց: Երկրորդ անգամ թէպէտ և օրէնս ինչ դնելով տուեալ էր, և ոչ այնպէս զհերձուածսն մածանէր: Քննեսցուք զիրսն:

Թէպէտ այնպէս հրամայեալ էր քարոզել որպէս և նոքայն, սակայն և ոչ այնպէս զհերձուածսն մածանէր, զի և նոքա առողջ միտք քարոզէին. քանզի և կամք նոցա և միտք որով զայն առնէին՝ ոչ ինչ այնպէս ապականեալ էին, և ոչ ինչ փոխէին զքարոզութիւնն, նա և կարի իսկ փոյթ յանձին ունէին նոյնպէս քարոզել: Ընդէ՞ր. զի թէ այլ ազգ քարոզէին և ոչ որպէս Պաւղոսն և ոչ զնոյնգունակ ուսուցանէին որպէս և նա, ապա և ոչ իսկ կարէին զցասումն թագաւորին աճեցուցանել: Եւ առաւել նոյնպէս աճեցուցանելով զքարոզութիւնն և նոյնօրինակ ուսուցանելովն և նորին նման աշակերտս առնելով, ջանային զրգռել զթագաւորն 'ի բազմութենէ աշակերտացն երևելոյ: Այլ ո՞ր ժանտ և անհանճար խորհէ զտեղիս զայս: Եթէ հակառակս ինչ, ասէ, նորա գործոցն գործեալ էր և զվարդուց հաւատացեալսն հալածեալ էր, չասային յաճումն գալ հաւատացելոցն, եթէ զնա զայրացուցանել ինչ կամէին: Իսկ առ այն զի՞նչ ասիցեմք: Եթէ նոքա այնմ միայն ուշ ունէին՝ զնա 'ի մեծաւոր վիշտս արկանել զի չկարիցէ զերծանել, և այնու առաւել կամէին զնա տրտմեցուցանել, զի և զքարոզութիւնն չիջուցանել քան զնոսա կասեցուցանել: Իսկ այլ ազգ ևս. եթէ ցածուցեալ էր զցասումն թագաւորին և հանեալ էր զնա 'ի բանտէն և թոյլ տուեալ միւսանգամ քարոզել, և այնպէս ինքեամբք զամենայն ինչ 'ի միջոյ բարձեալ կարծէին, և սպանանէին ևս զնա: Իսկ այնմ չէր մարթ բաղձանց 'ի վերայ հասանել, բայց ոմանց դառանց:

"Իսկ ընդ այն, ասէ, խնդամ, այլ և ուրախ ևս եղէց": Իսկ զի՞նչ ևս իցէ՝ այլ և ուրախ ևս եղէցն: Թէպէտ և ևս սաստիկ լինիցի՝ ասէ, ինձ գործակից լինին ակամայ. իւրեանց աշխատութեամբն անձանց տանջանս կուտեն, և ես որ չխնամիմ ինչ 'ի նոցանէ՝ վարձս առնում: Ապա զո՞յ ինչ ևս դժնդակ քան զսատանայ քարոզութեանն խափանումն և բարւոք վաստակոցն հնա-

րանել[1] առնել պատիժս ։ Տեսանե՞ս ընդ որպիսի՛ չարեաց արկանէ զիւրսն Թշնամին, և պատերազմող փրկութեանն նոցա կազմէ զամենայն ։ Տեսանե՞ս զի որ ընդ Ճշմարտութեանն մարտնչի, չկարէ կամագիր լինել. այլ և առաւել զանձն խոցէ, որպէս որ ընդդէմ սրոյ աքացիցէ ։

“Պարծեմ, ասէ, թէ այս պահեսցի ինձ ՚ի փրկութիւն ՚ի ձերոց խնդրուածոցդ և ՚ի պարգևաց Հոգւոյն Յիսուսի Քրիստոսի”։ Տեսանե՞ս զի Հոգին նոյ Հոգի Յիսուսի Քրիստոսի կոչի ։ Ոչ ինչ քան զսատանայ անհանճար, զի ամենայն ուրեք յանդիման աշխատութիւնս արկանէ զիւրսն և օգնէ. ոչ միայն պարգևացն չտայ հասանել, այլ և տանջանացն պատժապարտս առնէ. գիտէ ոչ միայն քարոզութիւն ինչ տալ, այլ պահոց ինչ այնպիսեաց և կուսութեան օրէնս դնել նոցա. որ ոչ ՚ի վարձուցն զրկիցէ, այլ և մեծամեծ չարիս ածիցէ ՚ի վերայ այնոցիկ որ զնոս յանձն առնուցուն, զորոց ասէ եթէ “Խարեալք յիւրեանց մտացն խղճէ”։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Մասն որոյ աղաչեմ, ընդ ամենայնի գոհացողք լիցուք զնյ, զի մեզ զվաստակոն թեթևս արար և զվարձոն անձեցոյց ։ Ո՛ր որոց վարձուց մերքս որ ամուսնանայցեն պարկեշտութեամբ՝ արժանի լինելոց են, նոցա որ ՚ի կուսութեան են՝ վախճանելիս չլինիլն արժանի ։ Այլ ընդ պոռնկաց պատուհասիս կայցեն կուսանք հերձուածողացն, զի ոչ ուղիղ մտօք առնեն զոր առնենն, այլ խոտելով զնյ արարածս և զանբաւ իմաստութիւն նորա ։ Մի՛ ծուլասցուք և մի հեղգասցուք. ետ մեզ ած չափով պատերազմունս, և չիք ինչ առանց ջանից. սակայն[2] մի վասն այնորիկ արհամարհեսցուք ։ Ո՛ր թէ հերձուածողքն մաշեն զանձինս յանդիման և յանօգուտ վաստակս, մեզ զինչ կայցէ տալ պատասխանի, որոց վաստակքն սակաւք կան առաջի և վարձք բազումք, և չկամիցիմք ժուժկալ լինել ։

1 Այսպէս յօրինակին. ուր ՚ի յոյնն կան և այլ բացայայտութիւնք բանից ։

2 Պակասէր յօրինակին սակայն մի վասն այնորիկ. յաւելաւ ՚ի յունէն ։

Ո՛չինչ ծանր իցէ զի՛նչ խիստ 'ի հրամանացն Քրիստոսի : Զկարիցե՞ս զկուսութիւն պահել . իշխանութիւն է քեզ օրինօք ամուսնանալ : Զկարիցե՞ս յամենայն ընչիցն քոց թօթափել . իշխանութիւն է քեզ ըստ կարի տալ կարօտելոց . "Ձեր առաւելութիւն լիցի , ասէ , 'ի նոցա կարօտութիւն" : Այն իմն ծանր կարծի նոցա զինչս արհամարհել և մարմնոյ ցանկութեան յաղթել , և այլումն ամենայնի ոչ ծախոյ ինչ պէտք են և ոչ բռնութիւն 'ի վերայ : Ո՞չ է այս , ո՞ր բռնութիւն 'ի վերայ կայցէ և չտայցէ պահել 'ի չար խօսելոյ , 'ի բանսարկելոյ , ընդ այլոց բարիսն նախանձելոյ , 'ի փառաց պատճանս արկանելոյ , 'ի տանջելոյ և չլինելոյ ժուժկալ , ըզգաստութեամբն վառելոյ , ագահութեամբն համբերելոյ , ընդ քաղց և ընդ ծարաւ կռուելոյ : Յորժամ և ոչ մի յայսցանէ իցէ , այլ իշխանութիւն իցէ վայելել 'ի վայելչականն որպէս և քրիստոնէի վայելէ , և չնախանձիլ ընդ այլս , և դու հալիցես և մաշիցես անցաւորօք և զամենայն չարիս յանձնդ կուտիցես : Ո՜ թէ չհամարէիր ինչ զինչս և զփառս աշխարհիս , ապա ոչ ընդ այնոսիկ որ ունէին՝ նախանձէիր : Այլ զի հարեալ զանգեալ պագշոտեալ ես , և զարմանաս վասն այնորիկ , և նախանձուն իրք լինին զքեզ և փառասիրութեամբ . և ամենայն ինչ 'ի զարմանալոյ ընդ անցաւոր կեանս լինի : Նախանձիս զի անն մեծանայ . նա՝ ողորմելի և արտասուաց արժանի է այնպիսին :

Այլ թերևս ընդ ծաղր արկեալ առիցես՝ ես եմ արտասուաց արժանի և ոչ նա : Արտասուաց արժանի ես և դու , ոչ զի աղքատ ես , այլ զի վասն այնորիկ ողորմելի համարիս զանձն : Ո՞րս չիցեն ինչ 'ի վշտի և դժուարու տանիցին՝ արտասուեմք , ոչ զի 'ի վիշտս ինչ իցեն : Այսպիսի ինչ , որպէս ով զերծեալ իցէ 'ի ջերմանէ և տաղտապիցի , ողջ իցէ և այսր անդր շրջշրջիցի 'ի մահիճսն , քան զջերմնակալսն ո՛չ ապաքէն եւս առաւել արժանի իցէ արտասուաց . ոչ զի ջերմնայցէն , քան զի և ջերմնայ իսկ ոչ , այլ զի չէ խօթ և համարի թէ խօթ է : Արտասուաց արժանի ես վասն այնորիկ , զի զքեզ ողորմելի համարիս յաղագս աղքատութեան . չես ողորմելի , զի վասն աղքատութեան երանելի եւս ես :

Ընդէ՞ր նախանձիցես ընդ մեծատունն . զի բազում

հոգւովքն վարակեաց զանձն, եթէ զի 'ի դժնդակ ծառայութիւն անկաւ և 'ի պէսպէս և յանհնարին կապանս եմուտ, իբրև զշուն խառանեալ կապեալ կայ առ կարասեաւն։ Եղև երեկ, եհաս գիշեր և հանգստեան ժամանակ, նմա խռովութեան և անդլութեան և տըրտմութեան և հոգոց ժամանակ լինի։ Թրնդի՞ւն ինչ լուիցէ. վաղվաղակի ընդոստնու, զեռայ, չգտանէ դուլ։ Յայսր անուան տուն, ասէ, գո՞ղք մտին կարասի՞ գողացան. քան զնա որոյ կորուստն կորեաւ, սա ևս չար 'ի հոգս մաշի որ չկորոյս ինչ։ Նա մի անգամ կորոյս և տրտմեցաւ և թափեցաւ 'ի հոգոյն, և սա ցանկ ծնգի, միշտ ծիւրի։ Եկն եհաս գիշերն նաւահանգիստ մերոյ տառապանաց, սփոփանք ցերեկութե̃ վշտացն, դեղն ցաւոց. և նոքա իբրև 'ի ցաւս ինչ մեծամեծս հարկանին։ Թէպէտ և բարեկամք և ազգականք և ընտանիք, բազում անգամ և հարք իսկ զբօսուցանել մխիթարել կամիցին՝ չառնուն յանձն չհաւանին, այլ և ընդ բանսն ևս ըմբոստանան. նա թէպէտ և քուն ևս հրամայիցէ հանգչել, ջանան յաչացն հատանել. սակայն զայրանան 'ի սփոփանաց որպէս մարմին ինչ այրեցեալ 'ի զկծեցուցիչ իրաց. քան զամենայն զտապ և զխորշակ հոգք մըտացն դողացուցանեն զհոգիսն։ Որպէս մարմին այրեցեալ 'ի ջերմութենէ ճառագայթից արեգական՝ ևս քան զևս խարշի և խորովի, որպէս զիջևան ինչ ուր բազում աղբիւրք բխիցեն և քաղցրաշունչ օդք 'ի տապոյ զովացուցանիցեն, նոյնպէս և գիշեր քնովն զովացուցանէ զոգիս մեր. մանաւանդ թէ ոչ գիշերն և ոչ քունն իսկ առնեն զայն, այլ Աստուած որ գիտէ զտառապանս ազգի մերոյ՝ արար զամենայն 'ի հանգիստ և 'ի մխիթարութիւն, և մեք չողորմիմք անձանց։ Հնարեցաք մեզ 'ի վերայ բնութեան հարկին այլ իմն բռնութիւն զմեծութեանն տքնութիւն, զի ամենևին մերժեսցին 'ի մէնջ հանգիստքն. „Հոգք, ասէ, մեծութե̃ հատանեն զքուն յաչաց„։ Եւ դու տես, ասէ, որչափ է խնամակալութիւնն այ̃. չարար ապաստան 'ի կամսն զհանգիստն, այլ բնական հարկաւ կապեաց, զի և ակամայ իսկ վայելիցեն 'ի հանգստեանն. քանզի ննջելն բնութեանն է։ Եւ մեք որպէս թէ կարի ատիցեմք զանձինս, որպէս թէ ընդ այլս մարտնչիցիմք, բանադատեմք

զգնութեան հարկին. քանզի եւ սաստիկ վասն ընչիցն պահպանութեան հնարեցաք անձամբ անձանց զզգնութեան բանաւորութիւն։ Իբրեւ այդ լինիցի, երկնչի այնպիսին 'ի զրպարտչաց. գիշեր դայցէ, կասկածէ 'ի գողոց. մահ 'ի վերայ հասանիցէ, քան զմահն զայն չար համարի թէ այլոց թողուցու. որդի լինիցի, եւ չար յաձախէ 'ի ցանկութիւնն և յայնժամ համարի յաղքատութեան. և եթէ չլինիցի, եւս քան զեւս զոփայ և տառապի։ Արդ զայնպիսին երանի համարիցիս որ յամենայն կողմանց չկարէ երբեք ուրախ լինել, որ 'ի խաղաղ նաւահանգստեանն հողմակոծ ծուլածուփ լինիցի. և որպարեւ յաղքատութեան իցէ։ Այս այն իսկ թերութի է մարդկեղէն բնութեանս՝ բարեացն չտանել առաքինութեամբ, այլ զերախտաւորութիւնսն թշնամանել։

Այս այն առ. իսկ յորժամ անդր երթայցեմք, լուր զինչ ասէր մեծատունն որ բազում բարութեանց տէր էր, որպէս և դուք կարծես. այլ ես չասեմ զայն բարութիւնս, այլ ոչ բարութիւնս և ոչ չարութիւնս։ Այդ բարութեանցն տէր էր, լուր զինչ ասէր և իւ կարօտէր. "Հայր իմ, ասէ, Աբրահամ, առաքեա զՂազարոս զի ձկութեան իւրով կաթեցուսցէ 'ի լեզու իմ և զովացուսցէ, քանզի տապակիմ"։ Թէպէտ և ոչ իւիք յայնցանէ զոր ասացի՝ էր վայելեալ մեծատունն, թէպէտ և[1] 'ի դիւրութեան և առանց հոգոց անցուցեալ էր զամենայն աւուրս կենաց իւրոց, և զինչ ասեմ զամենայն աւուրս կենաց, զվայրկենին՝ քանզի մի վայրկենի է. մի, ասէ, վայրկենի է ամենայն յաւիտեանս մեր առ անչափ յաւիտենիւքն. արդ թէ ամենայն ինչ ըստ կամաց յաջողեալ էր, չէր արդեօք ողորմելի այնպիսի բանից, մանաւանդ թէ այնպիսի իսկ արդեանց։ Ոչ գինւովք ոռոգեալ էր սեղանն քո, և արդ կաթի մի ջրոյ չես իշխան, և յայդչափ կարօտութիւն հասեր։ Ոչ ընվիրած մի և զատուցեալ տեսանէիր և զանց առնէիր, և արդ աղաչես զնա տեսանել։ Յայնժամ առ քում դրանն անկեալ դնէր, և արդ 'ի գոգ Աբրահամու է։ յայնժամ 'ի մեծամեծ յարկսն բնակէիր, և արդ 'ի հուր գեհենիդ։

1 Յօրինակին էրէ. եղաւ ըստ յունին։

Լուիցեն զայս մեծատունք. մանաւանդ թէ ոչ մեծատունք, այլ անողորմքն: Վասնզի ոչ եթէ զի մեծատուն էր՝ մատնեցաւ 'ի տանջանս, այլ զի անողորմ էր. մարթի մեծատուն լինել և ողորմած, և հասանել ամենայն բարութեանց: Այլ վասն այնորիկ ոչ զայլ ոք տեսանէր, այլ զնա միայն որ նովաւ կարօտէր, զի ուսանիցի թէ յիրաւի կայ յայնպիսի չարչարանս, և յուշ լիցի նմա գործքն զոր գործեաց: Մինթէ չէի՞ն բազում ևս այլ աղքատք արդարք. այլ որ առ նորա դրունսն անկեալ դնէր, նա երևէր նմա զի խրատեսցէ զնա և զմեզ՝ թէ որչափ բարութիւն է չյուսալ յինչս: Ոչ ինչ եղև նմա փնասակար աղքատութիւնն արքայութեանն հասանել, և ոչ մեծատանն օգուտ ինչ մեծութիւն 'ի գեհենոյն չմըտանելոյ:

Մինչև ցե՞րբ տնանկք. քանզի ոչ այն աղքատ է որ չունիցի ինչս, այլ այն որ բազմացն ցանկանայցէ. և ոչ այն մեծատուն է որ բազում ինչս ունիցի, այլ այն որ չիցէն իւիք կարօտ: Զինչ օգուտ իցէ զմնաւ ինչսն ստանալ համօրէն ամենայն աշխարհօք, և քան զայն որ չունիցին ինչ՝ առաւել 'ի տրտմութիւն անկանել. կամքն են որ զմեծատունսն և զաղքատսն առնեն, ոչ ընչիցն առաւելութիւն և ոչ չքաւորութիւն կարօտութեան: Կամիս լինել մեծատուն դու որ աղքատդ իցես. իշխանութիւն է քեզ, թէ կամիցիս, և չիցէ ոք որ արգելու. արհամարհեա զկեանս աշխարհիս և զինչս, և համարեաց թէ չիցեն ինչ, որպէս և չեն իսկ. հան 'ի միոջ զցանկութիւն մեծութեանն, և մեծատուն ես: Սա է մեծատուն որ ոչ կամի մեծանալ. նա է աղքատ որ ոչ կամիցի աղքատանալ: Զոր օրինակ և այն խօթ է որ յառողջութեան տաղտապիցի, և ոչ այն որ քան զամենայն առողջութեան՝ ևս լաւագոյն ցաւոցն տանիցի, նոյնպէս այն է աղքատ որ աղքատութեան չկարիցէ ժուժալ, այլ 'ի մեծութեան՝ ևս քան զաղքատսն համարիցի թէ աղքատ իցէ. և ոչ այնքան որպէս մեծատունքն մեծութեանն՝ նա աղքատութեանն դիւրաւ տանիցի: Նոյնպիսին քան զամենեսեան ևս մեծատուն է:

Արդ ասէ սա, վասն էր երկնչիցիս յաղքատութենէն, էր աղագաւ դողայցես. ոչ ապաքէն վասն քաղցի և ծարաւոյ և ցրտոյ և մերկութեան, թէ չիցէ վասն

այսպիսի իրաց կասկածն ։ Չիք, քանզի և չիք իսկ ոք որ յայնպիսի իրաց զերծեալ գտանիցի ։ « Հայեցարուք, ասէ, յազգն առաջին և տեսէք՝ ո՞ հաւատաց 'ի տէր և 'ի ձեռաց թողաւ, կամ ո՞ յուսացաւ 'ի տէր և յամօթ եղև »․ և դարձեալ թէ « Հայեցարուք ընդ թռչունս երկնից՝ զի ոչ սերմանեն և ոչ հնձեն և ոչ ժողովեն յշտեմարանս, և հայր ձեր երկնաւոր կերակրէ զնոսա »։ Եւ չիք ոք որ կարիցէ վաղվաղակի ցուցանել եթէ 'ի տավշյ ոք և 'ի ցրտոյ մեռաւ ։

Եւ արդ ընդէ՞ր, երբեմ դողայցես յաղքատութենէ․ չունիս ինչ ասել թէ կարևորքն իցեն կարօտ ։ Զմէ՞ զարհուրիս յաղքատութենէ, զի բազմութիւն ծառայից չունիցիս․ այն 'ի տերանց ազատանալ է, այն հանապազորդ երանութիւն է, այն 'ի հոգոց ապահովութիւն է ։ Իսկ զի՞նչ, սակա՞ւ ինչ յոսկւոյ և յարծաթոյ չունիցիս կամ դահոյս 'ի փետրալից պաստառաց ։ Այլ զի՞նչ աւելի քան զքեզ 'ի վայելելոյն 'ի պէտս ունիցի որ այնպիսի ինչ սակաւ ստանայցէ․ վայելք պիտոյիցն հասարակաց են, եթէ այնպիսի ինչ իցէ և եթէ այսպիսի ։ Այլ թերևս զի չիցես ահագին բազմացն․ և մի լիցի իսկ երբէք ընաւ այն․ զի՞նչ օգուտ գործիցիս անտի եթէ դողայցեն և սարսեսցին 'ի քէն ։ Թերևս զի դու երկնչիցիս յայլոց․ չէ ինչ հարկ երկնչելն ։ « Կամի՞ս, ասէ, չերկնչել յիշխանութենէ, բարիս գործեսջիր և ընկալցիս գովութիւն 'ի նմանէ »։ Այլ զի արհամարհելի եմք, ասէ, բազմաց, և ո հասանէ՝ կռփէ․ մանաւանդ թէ ոչ աղքատութիւնն առնէ զայն, այլ չարիքն ։ Քանզի են բազում աղքատք որ առանց վշտի և ըկանաց անցուցանեն զամենայն աւուրս իւրեանց․ և իշխանք և մեծատունք և հարուստք քան զամենայն չարագործս և զաւազակս և զգերեզմանակրկխոս ևս թշուառ[illegible] ելին յաշխարհէս ։ Որ ինչ առ քեզ աղքատութիւնն՝ առ նմա մեծութիւնն զայն ոչ ունի․ զոր օրինակ զքեզ վասն արհամարհանացն աստէն չարչարիցեն որք կամիցին, նոյնպէս և զնա առ նախանձու և չարակնութե․ և ևս առաւել նորա քան զնոսա, և այն ևս բռնաւոր հարկ է և կարող լինել ։ Զի որ նախանձիցին, բազում բռնութեամբ և հարստութեամբ գործէ զինչ և կամի․ իսկ որ արհամարհիցէն, բազում անգամ թերևս և ո-

ղորմեցի իսկ այնմ զոր արհամարհէրն. և պատճառք ապրելոյ նմա 'ի լկանացն աղքատութիւն լինի, և զի ոչ ունի [1] զօրութիւն հարկանել 'ի դիմին: Յաղքատին վերայ թէ ոք յառնիցէ՝ մատչիմք աղաչեմք թէ զինչ օգուտ է թէ սպանանիցես. աղքատ է, թէ թող տաս և երկայնամիտ լինիս՝ յետ վարձս առնուս և 'ի մարդկանէ դրուատիս. և այսպէս ցածուցանեմք զցասումն: Իսկ ընդ մեծատունսն յորժամ ոք գրգռիցի, ցածնու՝ թէ ոչ զոր կամիցի նախ գործիցէ և զթոյնն թափիցէ: Տեսանե՞ս զի ոչ աղքատութիւն և ոչ մեծութիւն է բարութիւն, այլ մեր կամքն:

Ուղղեսցուք յարդարեսցուք խրատեսցուք զկամս. զի եթէ բարիոք զգաստութեամբ վարեսցին, ոչ մեծութիւն կարէ հանել զմեզ յարքայութենէ և ոչ աղքատութիւն. և եթէ մեծութեամբն 'ի բարիս վարիցիմք և աղքատութեան գոհութեամբ տանիցիմք, չէ ինչ որ մեզ հանդերձելոց բարութեանցն վնասել կարիցէ և ոչ աստէն հանգստեանց. այլ և այսմ վայելեսցուք և այնմ արժանի լիցուք: Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 Յօրինակին նուաղի:

## ՃԱՌ ԵՐՐՈՐԴ

"Այլ ընդ այս խնդամ, այլ և ուրախ եղէց, զի գիտեմ թէ այս պատահեսցի ինձ 'ի փրկութիւն ձերովք խնդրուածովքդ և պարգևօք հոգւոյն Յիսուսի Քրիստոսի ըստ ակնկալութեան և յուսոյն իմոյ, և իւիք յամօթ ոչ եղէց․ այլ ամենայն համարձակութեամբ, որպէս հանապազ, և այժմ մեծասցի Քրիստոս 'ի մարմնի իմում եթէ կենօք և եթէ մահու"։

Ոմեծ և զգաստացեալ և զուարթնի ոգի չիք ինչ 'ի մարմնաւոր տրտմութեանց որ վշտացուցանել կարիցէ․ ոչ թշնամեաց բամբասանք, ոչ բանտարկութիւնք, ոչ վիշտք և նեղութիւնք։ Որպէս և 'ի բարձրաւանդակս ինչ ելեալ ամպացեալ չանկանիցի 'ի բաւան ումեք որ 'ի ներքուստ 'ի վերմիք լիցին, այնպիսի էր և Պաւղոսի ոգի․ քան զամենայն բարձրաւանդակս վերացեալ բարձրացեալ, 'ի զգաստութիւն երթեալ հասեալ 'ի հոգևոր զգաստութիւնն 'ի ստոյգ իմաստասիրութիւնն։ Քանզի տատաքնոցն՝ բանք ևեթ են և մանկտւոյ խաղ։ Այլ այժմ ոչ են առ այն ինչ մեզ բանք․ զՊաւղոսին բարբառեսցուք։

Ի կապանս կայր երանելին և ընդ թագաւորի էր նմա մարտ պատերազմին, և յայնր վերայ այլ ևս թշնամիք որ պէսպէս իրօք տրտմեցուցանէին և դառն բանտարկութեամբ կսկծեցուցանէին։ Այլ արդ զինչ ասիցէ․ ոչ միայն, ասէ, չտրտմիմ ընդ այն և չցանգիտեմ, այլ և խնդամ և ուրախ ևս եղէց ոչ առ ժամանակ մի, այլ ցանկ իսկ ուրախ եմ ընդ այն, "զի գիտեմ թէ այս պատահիցէ ինձ 'ի փրկութիւն"։ Ոհանդերձեալն ասէ յորժամ և թշնամութիւնն քարոզութեան օգնիցէ, և նախանձն զոր ընդ իս ունէին՝ ինձ սատարիցէ։

"Ձերովք խնդրուածովքդ, ասէ, և պարգևօք հոգւոյն Յիսուսի Քրիստոսի ըստ ակնկալութեան և յուսոյն մերոյ"։ Տես զխոնարհութիւն երանելւոյն․ 'ի ճրգունս էր և 'ի պատերազմի կայր և մօտ 'ի պարանն հա-

սեալ և բազում ուղղութիւնս կատարեալ. Պաւղոս էր, զի՞նչ այլ ոք աւելի ասիցէ. Պաւղոս էր որ ցփիլիպեցիսն ասէր՝ թէ ձերովք խնդրուածովքդ կարեմ ապրել. որ 'ի բազում ուղղութեանց շահեցաւ զփրկութիւնն: "Եւ պարգևօք հոգւոյն Յիսուսի Քրիստոսի" այն իսկ է, թէ ձերոց աղօթիցդ արժանի լինիցիմ, ապա և շնորհացն արժանի լինիմ: Պարգևօքն ասելն այն է՝ եթէ պարգևեսցի, եթէ յաճախագոյն շնորհիցէ ինձ հոգին: Իսկ փրկութիւն՝ թերևս զապրելն ասիցէ 'ի մօտաւոր վշտացն՝ թէ և յայսմանէ ևս փրկեցայց. զորմէ և ասէ իսկ՝ եթէ "Յառաջնում նուագի պատասխանւոյն ոչ ոք եղև ընդ իս, մի՛ համարեսցի նոցա այն. այլ տէր եկաց առ իս և զօրացոյց զիս": Զայս թերևս և մարգարէանայ իսկ. "Ձերովքդ, ասէ, խնդրուածովք և պարգևօք հոգւոյն Յիսուսի Քրիստոսի ըստ ակնկալութեան յուսոյն իմոյ": Զի այնպէս յուսամ զի մեք մի՛ ամենևին 'ի նոցա աղօթսն ապաստան լիցուք. և յանձանց ինչ նպաստ լինիցիմք: Տես զիարդ դնէ զյոյսն իւր ամենայն բարութեան պատճառք, որպէս մարգարէն ասէ. "Եղիցի ողորմութիւն քո, տէր, 'ի վերայ մեր որպէս յուսացաք 'ի քեզ". և այլուր՝ եթէ "Հայեցարուք յազգսն յառաջինսն և տեսէք՝ ո՞ յուսացաւ 'ի տէր և յամօթ եղև". և դարձեալ երանելիս ասէ՝ եթէ "Յոյսն ոչ ամաչեցուցանէ": "Ըստ ակընկալութեան, ասէ, յուսոյն իմոյ. զի և իւիք, ասէ, յամօթ ոչ եղէց": Այն էր Պաւղոսի յոյս, յուսալն իսկ թէ չէր երբէք յամօթ լինելոց: Տեսանե՞ս որչափ ինչ է յուսալն յո՞յ: Զինչ և լինիցի, ասէ, չառնէ յամօթ. այսինքն թէ չյաղթիցեն նոքա ինձ:

"Այլ ամենայն համարձակութեամբ, որպէս և հանապազ, և այժմ մեծասցի Քրիստոս 'ի մարմնի իմում": Նոքա այնպէս ակն ունէին թէ այնու որոգայթիւ գողցես կարիցեն զՊաւղոս ըմբռնել և զքարոզութիւնն շիջուցանել, որպէս թէ կարող ինչ լինիցի զամագիտ լինել նեղութեան նոցա: Ոչ լինիցի, ասէ, այն. չմեռանիմ այժմէն. "այլ որպէս հանապազ, և այժմ մեծասցի Քրիստոս 'ի մարմնի իմում": Զիա՞րդ. բազում անգամ 'ի վիշտս մտի, յորս ամենեքեան իսկ վճիռ տային մեզ, նա և մեք անձանց. "Անձամբ իսկ, ասէ,

յանձինս զվճիռ մահու ընկալաք ”. այլ յամենայնէ փրկեաց զմեզ տէր. նոյնպէս և այժմ մեծասցի Քրիստոս 'ի մարմնի իմում ։ Եւ արդ զինչ. մի ոք կարծիցէ և ասիցէ, եթէ մեռանիցիմ՝ չմեծանայցէ՞ Քրիստոս ։ Այո, ասէ, և ես գիտեմ, առաւել ևս մեծանայ. ոչ վասն այնորիկ ինչ ասացի եթէ կեանքս միայն մեծացուցանեն զնա, այլ և մահ. բայց առաւել այժմ կենօքս, ասէ, չպատանանիցեն զիս, և այնպէս մեծասցի Քրիստոս ։ Զիա՞րդ. կենօքն՝ զի ապրեցոյց զիս, և մահու՝ զի ոչ մահն անգամ զարհուրեցոյց զիս ուրանալ զնա ։ Զի այնպիսի յօժարութիւն շնորհեաց ինձ, որպէս զի քան զմահ ևս բռնաւորոյն արար զիս. անդ զի ապրեցոյց զիս 'ի վշտաց, և աստ զի չետ ինձ երկնչել 'ի բռնութենէ մահու. և այնպէս մեծասցի Քրիստոս և կենօք և մահու ։ Զայս ասէր ոչ[1] զի մերձ ինչ էր մահն, այլ յորժամ մեռանիցի, զի մի մարդկօրէն ինչ ախտանայցեն ։ Եւ զի ոչ որպէս թէ մերձ 'ի մահ ինչ էր, որ կարի տրտմեցուցանէր զնոսա՝ զայս ասէր, տես զիարդ յարդարէ զնոյն ։

Որեթէ այնպէս ասէ՝ եթէ զայս առնեմ ոչ եթէ արդէն ինչ մեռանելոց եմ. վասն այնորիկ յառաջ մատուցեալ յարէ 'ի նոյն՝ եթէ “Զայս յուսացեալ գիտեմ, եթէ կացից մնացից ամենեցուն ձեզ. զի և իւիք, ասէ, ոչ եղէց յամօթ ”. այսինքն թէ չածէ յամօթ մեռանելն, այլ շահ մեծ ։ Ընդէ՞ր. զի չեմ անմահ, այլ ես պայծառագոյն լինիմ կամ թէ և անմահ իսկ էի, զի չէ զոյգ մահկանացուին և անմահին զմահն արհամարհել ։ Որպէս զի թէ և ոչ այն ինչ ամօթ է եթէ այժմ մեռանիցիմ. բայց չմեռանիմ և իւիք յամօթ ոչ եղէց ոչ 'ի կեանս և ոչ 'ի մեռանել. այլ երկոցունց առաքինութեամբ ժուժկալեցից եթէ կեալ իցէ և եթէ մեռանել ։ Եւ այն իսկ վայել է քրիստոնէին ոգւոյ ։

“Այլ ամենայն համարձակութեամբ ”։ Տեսանե՞ս զի չամաչեմ. զի թէ մահուն երկիւղիւ պարուրեալ էր զհամարձակութիւնն իմ, ապա ամօթոյ արժանի էր մեռանելն. իսկ թէ եկն 'ի վերայ և չզարհուրեցայ, չէ ինչ ամօթոյ ։ Եթէ 'ի կեանս՝ չամաչեմ, քանզի քարոզեմ

1 Պակասէր յօրինակին ոչ զի մերձ ինչ էր մահն. լրացաւ 'ի յունէն ։

զքաղցրութիւնն. և եթէ մեռանել հասանիցէ՝ չամաչեմ, չեմ փախչել ընդ երկիւղիւ, քանզի զնոյն համարձակութիւն ունիմ: Ո՛չ զի կապանս ասացի, ամօթ զիրան համարիցիք: Նախագիտի բարութեանց եղեն մեզ պատճառք, զի և այլոց եւս խրախոյս ետուն: Ոչ կապեցին զբանն Քրիստոսի, այլ զանգիտեցին 'ի կապանաց և մատն լինել իրաց ինչ Քրիստոսի՝ այն է ամօթ. մինչ այն չիցէ, և համարձակութեան եւս առիթ են կապանքն: Ո՛չ զի բազում անգամ զերծայ 'ի վշտաց, և նոյն են իմ պարծանք առ հաւատոմն, եթէ այնպէս ինչ պատահիցէ՝ ամօթ համարիցիք, զի և այս ոչ սակաւ քան զայն տայ ձեզ զհամարձակութիւն: Տես զիարդ յիւր դէմսն ձգէ զնոյն և բերէ յառաջ, զոր ընդ բազում տեղիս առնէ, որպէս և առ Հռովմայեցւովքն. "Զհամարիմ ամօթ, ասէ, զաւետարանն". որպէս առ Կորնթացիսն գրէ՝ եթէ "Զայս սահեցի յանձն և Ապողոս": "Եթէ կենօք, ասէ, և եթէ մահու": Ոչ եթէ առ տխմարութեան ինչ ասէր զայն. այլ գիտէր թէ յայնժամ չէր մեռանելոց, այլ յետոյ. բայց զնոցա միտսն յառաջագոյն կրթիցէ:

"Զի ինձ, ասէ, կեալն Քրիստոս է և մեռանելն շահ": Թէպէտ և մեռանիմ, ասէ, չմեռանիցիմ, քանզի զկեանս ունիմ յանձին. յայնժամ կարէին սպանանել զիս, եթէ երկիւղիւն զհաւատոյն մերժէին յոգւոյս իմմէ: Մինչ Քրիստոս ընդ իս է, թէպէտ և մահ 'ի վերայ գայցէ՝ կենդանի եմ: Սա և յայսմիկ 'ի կեանս ոչ եթէ այն ինչ իցէ իմ կեալն, այլ Քրիստոս: Իսկ եթէ և յայսմ 'ի կեանս չեն ինչ կեանք կեալ՝ այլ Քրիստոս, "Զոր այժմն կեամ, ասէ, մարմնով, հաւատովքն կեամ", զնոյն և անդ ասեմ. "Կենդանի եմ ոչ այսուհետև ես, այլ կենդանի է յիս Քրիստոս": Նայպիսի պարտ է լինել քրիստոնէին. չկեամ, ասէ, զհասարակաց կեանս: Զիարդ չիցես կենդանի, ո երանելիդ Պաւղոս. ո՛չ ապաքէն զարև տեսանես, ո՛չ ապաքէն ըզհասարակաց օդս առնուս, ո՛չ ապաքէն ամենեցուն կերակրովն կերակրիս, ո՛չ ապաքէն իբրև զմեզ զերկիր կոխես, ո՛չ ապաքէն քնով կարօտանաս և օդով և ձորձով. ընդէ՞ր ասես թէ չկեամ, զիա՞րդ չիցես կենդանի, հե՞մ մեծամտես, էրո՞ւմ պարծիս: Այլ այդ չիցէ ինչ

մեծարանութիւն. եթէ արդիւնքն չվկայեն, նմանագոյնս ոք ասէր եթէ մեծարանութիւն է. իսկ եթէ արդիւնքն վկայեն, ո՞ւր է զի մեծարանութիւն իցէ ։

Այլ եթէ զիարդ չիցէ կենդանի, 'ի վերայ հասցուք. քանզի և այլուր ասէ. «Ինձ աշխարհի խաչեալ եմ և աշխարհ ինձ»: Այլ զիարդ ասիցէ թէ «այսուհետև չեմ կենդանի» և դարձեալ թէ «իմ կեանքն Քրիստոս է», լուարուք: Կենաց անուն բազում ինչ նշանակէ, որպէս մահուն: Նախ են կեանք մարմնոյ, են կեանք և մեղացն, որպէս և ինքն այլուր ասէ. «Եթէ մեռաք մեղացն, զիա՞րդ տակաւին կենդանի լինիցիմք նմին»: Նոյա ուրեմն է կեանս և մեղացն կեալ: Միւս գիրք հաւատեաւ աղաչեմ, զի մի 'ի զուր ինչ խոնջիցիմք: Այն կեանք մշտնջենաւորք և անմահականք, յաւիտենականն և երկնաւոր. «Մեր, ասէ, զինուորութիւն յերկինս է»: Ի կենդանութիւն և մարմնոյ, զորմէ ասէ թէ «Նովաւ կեամք և շարժիմք և եմք»: Ոչ զգանակաւոր կենացն ասէ չկեալ, այլ զմեղացն կենաց զոր ամենայն մարդիկ կեան: Որ չցանկանայ մնաւոր կենացս, զիա՞րդ իցէ զի զայս կեանս կեցցէ. որ յայլ կեանս փութայ, ո՞րպէս իցէ զի զայս կեանս կեցցէ. որ զմահ արհամարհէ, ե՞րբ իցէ զի զայս կեանս կեցցէ. որ չցանկանայ իմիք, իցէ՞ զուցէ թէ զայս կեանս կեցցէ: Որ օրինակ եթէ յադամանդեայն ինչ յօղեալ իցէ, թէպէտ և բազում անգամ մալի՝ չէ հնար թէ ծլիցի երբէք, նոյնպէս և Պաւղոս. «Կենդանի եմ, ասէ, ոչ այսուհետև ես». այսինքն թէ ոչ այսուհետև հին մարդն. և դարձեալ այլուր. «Նոր մի տառապեալ եմ ես, ո՞վ ապրեցուսցէ զիս 'ի մարմնոյ մահուս այսորիկ»: Որ ոչ զկերակրոց փոյթ տանիցէ և զայլ իմեքէ զմնաւորացս, այնպիսին զիա՞րդ իցէ զի կենդանի իցէ, զանութեան կեանս կեայ. և զի ոչ ինչ զմարմնաւորացս հոգայ՝ չէ կենդանի: Մեք կեամք զաստի կեանսս, որք ամենևին զայնք կնի եմք. նա չէր կենդանի, զի ոչ ինչ շահէր զաստի կենացս, և զի չէր յիմիք զբաղեալ՝ զիա՞րդ էր կենդանի: Այս և մեք ասեմք՝ թէ այս անուն չէ մնա առ իս, յորժամ ոչ գործիցէ զայն ինչ որ ինձ յօգուտ իցէ. այս անուն չէ ինձ կենդանի, զի ոչ ինչ վաստակի: Դարձեալ նոյնպէս զի ոչ 'ի քնութենէ կենացն հրա-

ժարէ, ասէ այլուր՝ թէ “Որ այժմ կեամ մարմնով, հաւատովքն կեամ որդւոյն այ̃, որ սիրեացն զիս և մատնեաց զանձն իւր վասն իմ„. այսինքն թէ նոր կեանս կեամ այլազգի նորանշանս։

Զայս ամենայն 'ի մխիթարութիւն փիլիպեցւոցն ասէ։ Մի համարիք եթէ 'ի կենացս զրկիցիմ. քանզի և մինչ կէի, ոչ ինչ զայս կեանս կէի, այլ զոր Քրիստոսն կամէր։ Այլ ասա, որ զինչս արհամարհիցէ, զփափկութիւն ինչ չհամարիցէ, զքաղց և զծարաւ չգրիցէ ինչ, զվիշտս արհամարհիցէ, զառողջութենէ ինչ փոյթ չառնիցէ, որ ամենևին ինչ աստ չունիցի, և բաղձում 'ի բաց կամի թօթափել զոր ինչ ունիցի, և զանձն ևս 'ի վերայ դնել կամիցի, այսպիսին զայս ինչ կեանս կեցցէ. և ոչ երբեք։ Նա և օրինակաւ ինչ պարտ է ձեզ զայս առնել յայտնի. այսպիսի ինչ։ Դրեսջիր եթէ իցէ ոք 'ի բաղում մեծութեան և ունիցի ծառայս, ոսկի և արծաթ, և չվայելիցէ իւիք. միթէ ասիցեմք մեծատուն է այսպիսին. ոն անդր, և ոչ երբեք։ Տեսանիցէ զինչսն վատնեալ, զծառայսն թափառականս, և չառնիցէ ինչ փոյթ, միթէ ասիցեմք զայնպիսին մեծատուն, և ոչ երբեք. թէպէտ և նորա իցեն ինչքն և ծառայքն, չեն նորա։ “Ինձ, ասէ, կեալն Քրիստոս է„. եթէ կամիցիս զկեանս իմ քննել, ասէ, “և մեռանելն շահ„։ Ընդէ՞ր. զի ևս յայտնագոյնս լինիցիմ ընդ նմա, որպէս զի ևս առաւել կեանքս մեռանել է։ Նա ոչ ինչ չար առնեն ինձ որք սպանանենն զիս, զի յիմ կեանքսն առաքեն զիս, և յայսմանէ որ չենս ինձ անկ՝ զերծուցանեն զիս։ Զիա՞րդ, մինչ աստ ես չիցե՞ս Քրիստոսի։ Նա կարի իսկ քաջ։

“Զի եթէ կեալն մարմնոյ՝ այս ինձ պտուղ գործոյ է. և եթէ զինչ ընտրիցեմ, զայն ոչ գիտեմ„։ Զի մի՞ ոք ասիցէ, եթէ այն իցեն կեանք՝ էր վասն եթող ընդ քեզ աստ Քրիստոս, պտուղ գործոյ է ինձ՝ ասէ. և այս որպէս զի մարթի և զայս կեանս 'ի լաւն 'ի կիր արկանել, յորժամ ոչ կեցցէ ոք զայս կեանս։ Նա մի կարծիցես թէ խոտիցէ ինչ զայս կեանս որպէս թէ չար ինչ իցեն. զի թէ չառնիցեմք ինչ աստէն պիտանիք, ընդէ՞ր ոչ սպանանիցեմք զանձինս, զմէ՞ ոչ կոտորիցիմք. չէ այդպէս, ասէ. մարթի մինչ աստ եմք՝ շահել ինչ եթէ

ոչ կեցցեմք զայս կեանս, այլ զմիւսն։ Այլ թերեւս ասասցէ ոք՝ թէ այս քեզ պտուղ ինչ բերիցէ. այո, ասէ։ Այս արդ ո՛ւր իցեն հերձուածողքն. զի ահաւասիկ, ասէ, կեալս մարմնոյ՝ պտուղ գործոյ է. եւ որ այժմն կեամ մարմնով՝ հաւատովքն կեամ, վասն այնորիկ պտուղ գործոյ է։

"Այլ արդ զինչ ընտրեցից, զայն ոչ գիտեմ"։ Մաքէ քանի՜ զգաստութիւն եւ առաքինութիւն է. զխարդ եւ զցանկութիւն եւս 'ի բաց մերժէ զասոտի կենացս եւ չհամբաւէ իբրեւ զչար ինչ։ Զի եւ աւելի՛ն թէ մեռանելն շահ է, զցանկութիւնն 'ի բաց մերժեաց. եւ դաւանելով եթէ կեալս մարմնով պտուղ գործոյ է, եւ զայս կեանս կարեւոր եցոյց՝ եթէ 'ի լաւն փարիցիմք սովաւ, եթէ պտղաբերք լինիցիմք. որպէս զի թէ անպտուղ իցեն, եւ կեանք չեն իսկ։ Այս եւ զծառս անպտուղս այնպէս ընդ գետս համարիմք եւ 'ի հուր արկանեմք։ Զի կեալն դարձեալ միջոց անխտրութեան է. իսկ բարիոքն կամ չար կեալ՝ այն 'ի մեր ձեռս է. որպէս զի չառնէաք զկեալն։ Քանզի մարթի եւ բարիոք կեանս կեալ. որպէս զի թէ եւ չարաչար վարիցեմք կենօքս, սակայն եւ այնպէս չհամբաւեմք իբրեւ զչար ինչ։ Ընդէ՞ր. զի ոչ եթէ նա եղեալ պատճառք, այլ այնպիսեացն կեանքն որ չարաչար արկին զնա 'ի կիր։ Աստուած արար զկեալն, զի նմա կեցցես. եւ դու չարութեամբն մեղացն կեցեր, անպարտ յամենայն պատճառանաց առնիցես զնա։ Աղէ ասա, չգիտիցե՞ս զինչ ընտրիցես։ Այս մեծ իմն խորհուրդ յայտնեաց, թէ եւ երթալոյն ինքն է տէր. յայտն է թէ ինքն է տէր. "Այլ արդ զինչ ընտրեցից, զայն ոչ գիտեմ"։ Ի քո՞ ձեռս իցէ. այո, ասէ. եթէ կամիցի խնդրել պարգեւ 'ի տեառնէ, առնուլ։

"Յերկոցունց նեղեալ եմ, ասէ, ցանկացեալ եմ"։ Տես զգութ եւ զխնամ երանելւոյն, զի այսու եւս մխիթարէ զնոսա, յորժամ իմանայցեն թէ ինքն է ընտրոյ տէր կամացն. զի ոչ մարդկեղէն չարութեամբ գործի այս, այլ ա̄յ տեսչութեամբ։ Զի զչարիցիք ընդ մահն. զի կարի լաւ էր թէ վաղուց իսկ երթեալ էի։ Զի "դառնալն 'ի մարմնոյս եւ ընդ Քրիստոսի լինել առաւել լաւ է, եւ մնալ 'ի մարմնիս՝ եւս կարեւոր վասն ձեր"։ Այս յառաջագոյն իմն յարդարումն է հանդերձելոյ վախ-

ձանձի նորա. զի յորժամ լինիցի, տանիցին այնմ առա-
քինութեանն: Այս առաքինութեան և զգաստութե՟
նշանակիչ է: Աւորիւք ասէ դառնալն և ոչ վայրապար
դառնալն, այլ ընդ Քրիստոսի լինել: Վասնզի մահն
անխտիր իրաց է՝ ոչ բարի և ոչ չար. զի ոչ եթէ մահն
չար է, այլ մեռանելն և 'ի տանջանս մտանելն. և ոչ
բարի է մահն, այլ բարի այն է թէ յորժամ մեռանի-
ցի ոք՝ ընդ Քրիստոսի իցէ. յետ մահուն են կամ բա-
րիք կամ չարիք:

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Եւ արդ մի՛ վասն մեռելոցն ինչ սուգ ունիցիմք վայ-
րապար, և մի՛ ընդ կենդանեացն ուրախ լինիցիմք յա-
խուռն: Այլ զի՞նչ. սուգ առցուք զմեղաւորաց, ոչ մի-
այն յորժամ մեռանիցին, այլ յորժամ կենդանի իցեն:
Ուրախ լիցուք 'ի վերայ արդարոցն, մի՛ և եթ յորժամ
կենդանի իցեն, այլ իբրև վախճանիցին: Զի նոքա կեն-
դանւոյն իսկ մեռեալք են, և սոքա թէպէտ և մեռեալք՝
կենդանիք են. նոքա՝ մինչ աստ իսկ իցեն, ամենայն ու-
մեք ողորմելիք են, քանզի այ՟ ընդդէմ դարձան. և սո-
քա թէպէտ և անդր փոխեցան՝ երանելիք են, քանզի
առ Քրիստոս չոգան: Մեղաւորք ուր և իցեն՝ հեռի
են 'ի թագաւորէն, վասն այնորիկ արտասուաց արժա-
նի են. իսկ արդարքն՝ թէ աստ իցեն և եթէ անդ, ընդ
թագաւորին իցեն. մանաւանդ անդ իսկ մերձաւորք ոչ
կարծեօք և ոչ հաւատովք, այլ դէմ յանդիման:

Եւ արդ մի՛ վայրապար զգնացեալսն լայցեմք, այլ
զնոսա՝ որ մեղօքն երթեալ իցեն. նոքա են ողբոց ար-
ժանի, և նոքին կոծոյ և արտասուաց: Զի՞նչ յոյս կայ-
ցէ, ասէ աստ, այնպիսեացն որ մեղօք իցեն երթեալ
անդր, ուր չիք հնար մերկանալ զմեղսն. մինչ աստ էին,
թերևս գոյր ակնկալութի՟ բազում, թէ երբ և է դառ-
նալոց իցեն և պիտանիք լինելոց. եթէ երթայցեն 'ի դը-
ժոխս՝ ուր չիք ինչ հնար օգտիլ յապաշխարութենէ,
զի՞ գործիցեն. “Ի դժոխս, ասէ, ո՞ խոստովան առնիցի
առ քեզ„. զիա՞րդ չիցեն ողբոց արժանի:

Զայնպիսիսն լացցուք, չարգելում, լացցուք. այլ մի՛
անկարգութեամբ, մի՛ զհերս փետել, մի՛ զծամն խզել,

մի՛ զտիգս մերկանալ, մի՛ զայտս ցտել, մի՛ թուխս համակել. այլ մեղմով ընդ միտս և առ ծունր լալ, ողողանել, դառն արտասուս արկանել։ Սարթի և առանց այնպիսի ինչ նշանակութեանց լալ դառնապէս. ողբալ 'ի ձայն աղի և ողորմ աշխարանաց, և ոչ խաղ և ծաղր առնել։

Արդարև չէ ինչ ընդհատ 'ի խաղուց զոր ամենք անհեղեգս ատտուստ իմն աշխարեն. և զի ոչ վշտակցութեան են այնպիսի կոծիքն, զորս 'ի հրապարական կոծին, այլ 'ի ցոյց և առ մարդկան ականէ և վեր 'ի վերոյ։ Գիտեն և բազում կանայք արուեստականք՝ այնր արուեստի եղարամարքն և ձայնարկուք, ուր արուեստին կրթութիւն է, և ոչ 'ի սրտէն և 'ի մտացն վշտակից լինելոյ զայնպիսի ինչ գործ գործեն։ Այլ թէ լաս, լաց դառնապէս, հեծեա, հառաչեա, ծմրեաց, սգացիր առ տնին, առ ծունր. մի՛ առ մարդկան ականէ վեր 'ի վերոյ, զի այն չէ վշտակից լինելոյ։ Իսկ այս քեզ եւ օգնեսցէ, և նմա չիցէ սակաւ մխիթարութիւն. զի որ զայլոց մեղս սգայցէ, և ինքն փութայ չանկանել ընդ նովին յանցանօք. ահագին համարեա զմեղսն, դառն և անհնարին։

Իսկ արդ լացցես զանհաւատսն, և զայնոսիկ՝ որ առանց կնքոյ մեռանիցին. որք չիցեն լուսով աւազանին լուսաւորեալք, այնպիսիքն են ստոյգ լալոյ արժանի. որք արտաքոյ քան զարքունիսն գտանիցին, ընդ չարագործս և ընդ պատժապարտսն։ «Ամէն ասեմ ձեզ, ասէ, եթէ ոչ ոք ծնցի 'ի Ջրոյ և 'ի հոգւոյ, ոչ մտանէ յարքայութիւնն երկնից»։ Օ այնպիսեան լացցես՝ որ 'ի մեծութեան վախճանեալ իցեն, և ոչ մի ինչ հնարս իւրեանց օգւոցն 'ի մեծութենէն հնարեալ. և զայնոսիկ՝ որոց առեալ իշխանութիւն լուանալ զմեղս իւրեանց, և չիցեն կամեցեալ. զայնպիսիսն լացցուք և առանձինն և հասարակ ամենեքին։ Այլ օրինօք և կարգօք և պարկեշտութ՟ն. մի՛ անառակս և անհամս. զայնպիսիսն լացցուք մի՛ մի օր միայն և զերկուս, այլ զամենայն աւուրս կենաց մերոց։ Չէ անհանճար սգոյ այնպիսի արտօսր, այլ գթոյ և խնամոյ. և միւսն անհանճար սգոյ է, վասն այնորիկ վաղվաղակի խափնու. յորժամ վասն Ա՟յ երկիւղին լինիցի, միշտ հաստատուն կայ։

Լացցուք զայնպիսիսն, օգնական լիցուք. որչափ 'ի կարի իցէ՝ հնարեսցուք նոցա օգնականութիւն, թէպէտ և սակաւ ինչ, բայց սակայն օգնեսցուք: Զիա՞րդ և որո՞վ օրինակաւ: Աղօթս արասցուք, և զայլս ևս աղաչեսցուք առնել աղօթս վասն նոցա. աղքատաց տացուք յաղագս նոցա սուէպ: Գոյ մխիթարութեան ինչ հնարք, և լուր Այ իսկ. “Վերակացու եղէց, ասէ, քաղաքիս այսմիկ վասն իմ և վասն Դաւթի ծառայի իմոյ„. զի եթէ յիշատակ միայն արդարոյն այնչափ զօրութիւնս գործեաց, յորժամ արդեամբք ևս ինչ վասն մեռելոյն լինիցի, քանիօն ևս օգուտ գործիցի:

Ոչ վայրապար ինչ եդան օրէնքս այս յառաքելոցն, յառաջին խորհուրդն յիշել զգնացեալսն. գիտէին թէ բազում շահ լինիցի նոցա անտի, յաճախ և յոյժ օգուտ: Յորժամ ամենայն ժողովուրդն բովանդակ կայցէ ձեռս 'ի վեր համբարձեալ, միահամուռ քահանայութիւնն, և ահաւորն զենումն առաջի կայցէ՝ մարմին և արիւնն Քրիստոսի, զիա՞րդ ոչ ածիցեմք 'ի հաւան զԱծ՝ մատուցանելովն աղօթս վասն նոցա: Այլ զայն վասն նոցա՝ որք հաւատովքն երթեալ իցեն: Բայց երախայքն և ոչ այսմ մխիթարութեան լինին արժանի, քանզի զրկեալ են յայսպիսի օգնականութենէ. այլ միում միայն՝ որում մարթի, վասն նոցա տալ աղքատաց, և լինիցի նոցա այն 'ի հնարս ինչ օգնականութեան: Քանզի այնպէս կամի Ած, զի միմեանց օգնիցեմք, յորերաց յօգուտ գտանիցեմք:

Ընդէ՞ր վասն խաղաղութեան և շինութեան ամենայն աշխարհի հրամայեաց առնել աղօթս. զմէ՞ վասն ամենայն մարդկան, թէպէտ և բազումք յամենեսեան գողք և աւազակք և շունք և գերեզմանակրկիտք իցեն, և այլք բազումք յայլ ևս ինչ չարիս, բայց սակայն վասն ամենեցուն աղօթս առնեմք. զի թերևս լինիցի ինչ նոցա հնար դարձի: Զոր օրինակ վասն կենդանեացն աղօթս առնեմք՝ որ չիցեն ընդհատ 'ի մեռելոց, նոյնպէս և վասն նոցա պարտ է աղօթս առնել:

Յովբ վասն որդւոցն պատարագս մատուցանէր, և քաւէր զնոսա 'ի մեղաց. “Գուցէ, ասէ, չարութիւն ինչ դնիցեն 'ի սիրտս իւրեանց„: Այնպէս պարտ է խնամ ունել որդւոցն. Ջանէր որպէս և այժմ բազումք

ատեն, թողից ինչ, և որդեկաց կենաց խորհեցայց. չա-ւել՝ թէ 'ի փառս հանից, պատիւ և իշխանութիւն գնե-ցից, գեօղս և ագարակս շինեցից. այլ զի՞նչ. "Գնացէ, ասէ, թէ եղին ինչ չարութիւն 'ի սրտի": Օ՜ ինչ օ-գուտ է յայնժամ ամենայնէ. սատէն մնալոց է. զԹագա-ւորն ամենեցուն, ասէ, արարից ընդ նսա հաշտ, և չկե-նիցի ինչ նոցա պակաս: "Տէր, ասէ, հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցէ":

Այն մեծութիւն յաճախ է, այն զանձ մեծ. եթէ զերկիւղն այ ունիցիմք, չեմք ինչ կարօտ. և եթէ զայն չունիցիմք, թէպէտ և 'ի թագաւորութեան իցեմք, քան զամենեսին աղքատագոյն գտանիցիմք: Զի՞ք ոք զղջ այնժամ՝ որ 'ի տեառնէ երկնչիցի: "Երկիւղ տեառն, ասէ, անց զամենայնիւ". զայն ստասցուք, նորին փա-խանակ զամենայն ինչ արասցուք. եթէ զոգիս ևս հա-սանիցէ 'ի վերայ դնել, մի խնայեսցուք, և եթէ զմար-մինս պատառ պատառ կատարել, զամենայն հնարս հնա-րեսցուք, զի այնժամ երկիւղի հասանիցեմք, և ապա լինի-ցիմք քան զամենեսեան ընչաւէտք, և հանդերձելոց բա-րութեանցն հասանիցեմք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յա-ւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՉՈՐՐՈՐԴ

"Այս արդ զի՞նչ ընտրեցից՝ զայն ոչ գիտեմ. նեղեալ եմ յերկոցունց, ցանկութիւն ունել զատանել 'ի մարմ-նոյս և ընդ Քրիստոսի լինել լաւ է, և կալ մնալ 'ի մարմնիս՝ ևս կարևոր վասն ձեր: Այս զայս յուսացեալ գիտեմ, եթէ կացից մնացից ամենեցուն ձեզ 'ի ձեր յա-ռաջ գալ և ուրախ լինել 'ի հաւատոն, զի պարծանքն մեր առաւել լինիցին 'ի Քրիստոս Յիսուս յիս 'ի միւ-անգամ գալստեան իմոյ առ ձեզ":

Զի՞ք ոք որ քան զՊաւղոսի ոգէին եղև երանելի, քանզի և ոչ այնչափ առաքինի: Վասն այնորիկ յորժէ

ամենեքեան սարսեն՝ 'ի մահուանէն ասեմ, ոմանք վասն մեղաց յանձնառութեան՝ որպէս և ես իսկ, և ոմանք վասն անձնասիրութեան և անցաւորացս՝ յորոց քաւ և մի՛ երբէք լինիցի ինձ լինել, քանզի չնչաւորք են այնպիսիքն որ վասն այնպիսի ինչ իրաց երկնչիցին 'ի մահուանէ. և արդ յորմէ ամենեքեան սարսեմք, նա աղօթս առնէր այնմ հասանել. "Պատանալ 'ի մարմնոյս, ասէ, առաւել լաւ է": Օ՜ ինչ խօսիցդ. որ մերձդ ես աստի յերկինս փոխել և ընդ Քրիստոսի լինել՝ չգիտիցե՞ս զինչ ընտրիցես: Այլ հեռի էր այն 'ի Պաւղոսի ոգւոյն: Եթէ ոք ումեք խոստանայր այնպիսի ինչ և հասանէր, ո՞չ վաղվաղակի յափշտակէր: Այո, ասէ: Օ՜ որ օրինակ չէ մեր գառնալ աստի և ընդ Քրիստոսի լինել, նոյնպէս և ոչ այսմ հասանել եթէ ոչ աստէն իցեմք. այլ երկոքեան Պաւղոսի հոգւոյն վայելէին, քանզի հաստատեալ գիտէր թէ ընդ Քրիստոսի լինիցի:

Նա յիրաւի իսկ ընդ Քրիստոսի լինելոց ես, և ասե՞ս չգիտեմ զինչ ընտրեցից. և ոչ այսչափ միայն, այլ և աստէ՞ն հաճեալ ես մնալ 'ի մարմնիդ: Սա՛ն էր. ո՞չ գառն կեանս կեցեր աշխարհիս, 'ի նաւարկութիւնս, 'ի քաղց և 'ի ծարաւ և 'ի մերկութիւն, յահս, 'ի տառապանս. ընդ հիւանդս հիւանդանայիր, ընդ գայթակղեալսն խորովէիր. 'ի բազում համբերութիւնս, 'ի նեղութիւնս, 'ի գանս և 'ի բանտս և 'ի սրբութիւնս. հրնգիցս քառասուն անգամ պակաս միով արբեր, երիցս ձաղկեցար, մի անգամ քարկոծ եղեր, ժամէ 'ի ժամ յանդունդս տառապեցար. վիշտս 'ի գետոց, վիշտս յաւազակաց, վիշտս 'ի քաղաքի, վիշտս յանապատի, վիշտս 'ի սուտ եղբարց: Ո՞չ յորժամ գաղատացւոց ազգն ամենայն անդրէն 'ի խտիրս օրինացն դարձան, բողոք բարձեալ ասէիր. "Որք օրինօքն արդարանայք, 'ի շնորհացն անկայք": Ո՛րչափ այն ժամ սուգ ոչ առնէր, և դարձեալ ժամանակեան կենացս ցանկանաս: Օ՜ ի թէ չէին այնպիսի ինչ անցք անցեալ ընդ քեզ, այլ զամենայն զոր կամեցար ուղղել՝ յարդարեալ էր հաստատութեամբ, չպարտէ՞ր երկնչել յանյայտ հանդերձեալ ինչ իրաց փութալ հասանել 'ի նաւահանգիստն: Ո՞վ ոք, ազէ ասա, վաճառական որոյ լցեալ ազխազխեալ իցէ զնաւ բազում գանձիւք, և կարիցէ հասանել 'ի նաւա-

հանգիստ և հանգչել՝ եթէ կամիցի անդրէն 'ի ծովուն նաւարկեալ շրջել։ Ո՞ որ մարտիկ որ եկեալ հասեալ իցէ 'ի պսակել՝ և կամիցի անդրէն 'ի մարտին յամել։ Ո՞ որ բռնամարտիկ որում պսակ առաջի կայցէ՝ և յօժարիցի անդրէն 'ի կռուանոցն մտանել և ջարդել ջախջախել զգլուխն։ Ո՞ որ զօրավար յորժամ կարիցէ յապահով լինել 'ի պատերազմէ փառօք և յաղթութեամբ դարձեալ ընդ թագաւորին յարքունիս հանգչել, և միւսանգամ կամիցի ճակատս յարդարել, զէն զանձամբ առնուլ, արեամբ և քրտամբ խաղալ։ Իսկ դու զիա՞րդ որ այնչափ դառնութեան կեանս կեցեր՝ կամիցիս աստէն մնալ։ Ո՞չ դու իսկ ասէիր «Երկնչիմ, գուցէ որ այլոցս քարոզեցի՝ ես իսկ գլխովին անպիտան պտանիցիմ»։ եթէ ոչ վասն այլ իրիք, սակայն վասն այնր չպարտէի՞ր ցանկանալ ազատելոյ աստի. թէ և բազում իսկ բարութեամբ լի էին մտաւորքս, Քրիստոսի չէ՞ր պարտ ցանկանալ։

Նաքէ, քանի՜ ջերմ էր ոգին Պաւղոսի. չիք որ որ եղև նմա զոյգ և ոչ որ լինիցի։ Նա կասկածես՝ քանզի բիւր վտանգաւորութեամբ լի էն կեանքս, և առ Քրիստոս չկամի՞ս երթալ։ Ո՛չ, ասէ, և զայն վասն Քրիստոսի առնեմ. զի զորս շահեցայ նմա ծառայս՝ ես ազնուագոյնս արարից. զբուրաստանն զոր տնկեցի՝ 'ի պտուղ հասուցից։ Զլուա՞ր երբէք յինէն՝ թէ ոչ զանձին խնդրեմ, այլ զբազմաց օգուտ։ Զիչէ՞ լուեալ զի և աղօթս առնէի նզով լինել 'ի Քրիստոսէ, զի զբազումս մատուցից նմա. որ ընդ այնմ կամէի, ո՞չ առաւել ընդ այս հաճեալ իցեմ. ախորժելով յօժարեմ առնել անձին վընաս յամելովս և յապաղելով, զի նոցա փրկութիւն գործեցից։

Ո՞ խօսեսցի զզօրութիւնս քո, տէր, զի ոչ ետուր թագչել Պաւղոսի, զի ցուցեր աշխարհի զայնպիսի այր։ Օրհնեցին զքեզ ամենայն հրեշտակք 'ի միասին յորժամ զաստեղս արարեր, եթէ այնպէս իցէ և յորժամ զարեգակն. այլ ոչ այնպէս որպէս զՊաւղոս ցուցեր մեզ ամենայն տիեզերաց։ Վասն այնորիկ ևս լուսաւորագոյն եղև երկիրս քան զերկինս, առաւել պայծառագոյն սա քան զնա, յաճախագոյն ծագեաց զճառագայթս, յոլովագոյն սփռեաց զնշոյլս։ Որպիսի՜ պտուղ երևեցոյց

մեզ․ ոչ զհասկս պտղաբերէ և ոչ զնռնենիս 'ի չափ հա-
սուցանէ, այլ զածպաշտութեան զպտուղն և ծնանի և
'ի չափ յաստիս հասուցանէ, նա և զտարաժամ թա-
փեալն անդրէն ստէպ պատուաստէ ։ Զի այս արեգակն
որ զամ մի ինչ հարկանի 'ի մրգոցն, չկարէ միւսանգամ
առողջացուցանել. իսկ Պաւղոս զոր բազում փոութիս
'ի մեղացն ունէին, նորոգեաց և առողջացոյց ։ Նա տե-
ղի տայ գիշերոյ, և սա և սատանայի ևս յաղթեաց. քան-
զի ոչ ըմբռնեաց զնա և ոչ կալաւ և ոչ յաղթեաց ։ Նա
'ի բարձանց 'ի խոնարհ արձակէ զճառագայթս իւր, և
սա յերկրէ յերկինս ծագեաց. ոչ միայն 'ի միջոց երկ-
նից և երկրի ելից լուսով, այլ զբերանս ամենեցուն ե-
բաց, և զհրեշտակս ևս․ լի արար բազում ուրախութբ ։
Զի եթէ վասն միոյ մեղաւորի որ ապաշխարիցէ ուրա-
խութիւն առնի յերկինս, նա զի յառաջում նուագի
հրապարակախօս լինելոյ զբազումս որսացաւ՝ զխորդ ոչ
լնոյր ուրախութեամբ զվերին զօրութիւնսն ։ Եւ զինչ
ասիցեմ, բաւական իսկ էր Պաւղոսի բարբառելն միայն,
և զերկինս 'ի ցնծութիւն յորդորել ։ Զի եթէ յոր-
ժամ յերկրէն եգիպտացւոցն ելին իսրայէլացիքն՝ լե-
ռինքն որպէս խոյս ցնծացին և բլուրք որպէս գառինք
մաքեաց, յորժամ յերկրէ յերկինս փոխեցան մարդիկ՝
որչափ ուրախութիւն ինչ իմանայցես ։ Վասն այնորիկ
ասէր. “Այլ մնալ 'ի մարմնի՝ ևս կարևոր է վասն ձեր„ ։

Մեք որպիսի ինչ կարիցեմք տալ պատասխանի ։ Բա-
զում անգամ այր ոք յորժամ 'ի փոքր քաղաքի ծնեալ
և սնեալ իցէ՝ չկամի այլուր երթալ, զի զայն լաւ հան-
գիստ համարի. առ Քրիստոս երթալոց էր Պաւղոս,
և չկամէր երթալ որում սրտիւ ցանկացեալ էր, վասն
որոյ թէ և 'ի գեհենն անգամ երթեալ էր՝ չզանգիտէր,
մտաբերէր և վասն մարդկան կալ աստէն 'ի պատերազ-
մի, մեզ զինչ կայցէ տալ պատասխանի. և բնաւ ամե-
նեւին յիշել պարտ իցէ զՊաւղոս, որք այնչափ 'ի ծու-
լութեան եմք ։

Տես զինչ գործէ. եցոյց եթէ երթալն առաւել լաւ
է. հաճեաց զանձն եթէ չէ պարտ զչարել զի չերթայն
իսկ և իսկ. յայտ արար թէ և մնայցէ՝ վասն նոցա մնայ,
և ոչ եթէ վասն չարութեան նենգաւորացն ինչ լինի-
ցի ։ Եւ արդ զի հաւատարիմ առնիցէ զնոսա, և զպատ-

ճառումն ես եդ: Զի եթէ կարեւորն ինչ մնալն իցէ, ոչ վայրապար մնամ, այլ ընդ ձեզ. այսինքն թէ տեսից ըզձեզ 'ի ձեր յառաջ գալն և ուրախ լինելն 'ի հաւատսն: Աստէն յորդորէ իսկ զնոսա անձանց զգուշանալ: Զի եթէ վասն ձեր մնամ, ասէ, մի յամօթ առնիցէք զմընալն իմ. որ մօտեալ և զՔրիստոս տեսանել՝ և յանձին կալայ վասն ձերոյ յառաջադիմութեանն աստէն մնալ. քանզի իմ գալուստն 'ի հաւատսն նպաստ լինիցի ձեզ և ուրախութիւն, վասն այնորիկ յօժարեցի մնալ: Իսկ արդ զի՞նչ, փիլիպեցւո՞ցն միայն վասն մնաց: Ոչ նոցա աղագաւ եւեթ, բայց զայս ասէ զի նոցա խրախոյս տացէ: Եւ զինչ ազդէր յառաջ գալ 'ի հաւատսն. ևս քան զևս հաստատունն լինել. քանզի իբրև ձագք նորափետուրք տակաւին կարօտ էին մօրը, մինչև հաստանայցեն թեւքն: Եւ այն բազում սիրոյ նշանակ է: Որպէս և մեք յորժամ զայլս կամիմք յորդորել, ասեմք՝ եթէ վասն քո այնչափ ժամանակս մնացի, վասն քո տեւեցի բաւեցի, զի զքեզ պիտանի արարից:

“Զի պարծանք ձեր, ասէ, առաւել ևս լինիցին 'ի Քրիստոս Յիսուս յիս վասն իմոյ 'ի միւսանգամ գալստեանն իմոյ առ ձեզ”: Տեսանե՞ս զի ընդ ձեզ մնալն՝ այն է առ նոսա գալն: Տես զխոնարհութիւնն. քանզի ասաց՝ եթէ 'ի ձեր յառաջ գալ, ցուցանէ թէ և յիւր օգուտ է. որպէս և առ հռոմայեցիսն գրէ՝ եթէ “Այսինքն է ընդ միմեանս մխիթարակից լինել”: Նախ ասէ՝ թէ “Զի փոխեցից 'ի ձեզ շնորհս ինչ հոգեւորս”: Զինչ ասիցէ՝ թէ “Զի պարծանքն ձեր առաւել ևս լինիցին”: Որպէս Պաւղոսի պարծանքն իսկ էին նոցա հաստատել 'ի հաւատս, և ուղիղ վարս վարել էին պարծանք 'ի Քրիստոս: “Ձեր, ասէ, պարծանքն յիս վասն իմոյ գալստեանն միւսանգամ առ ձեզ”: Այս, ասէ, զի ո՞վ է մեր յոյս կամ պսակ պարծանաց, եթէ ոչ դուք: Զի պարծանք մեր դուք էք որպէս և մեք ձեր՝ այն իսկ է թէ զի առաւել ևս մարթիցիմ պարծել ձեօք, որպէս զի առաւել ևս լինիցին պարծանքն ձեր, և ես համարձակ պարծիցիմ ձեր յառաջ գալովն և զարգանալն: “Վասն իմոյ գալստեանն, ասէ, միւսանգամ առ ձեզ”: Իսկ արդ չոգա՞ւ արդեօք առ նոսա, զայն խնդրիցէք թէ չոգաւ թէ չչոգաւ:

«Միայն, ասէ, թէ արժանի աւետարանին գնայ-
ցէք»: Տեսանե՞ս զի զամենայն ինչ վասն այնորիկ ա-
սէր, զի յաճախումն առաքինութեանն յորդորեսցէ:
«Միայն, ասէ, թէ արժանի աւետարանին Քրիստո-
սի գնայցէք»: Ոչ ինչ իցէ միայնմ. զի այնոր միայն խնդ-
դիր իցէ և ոչ այլ ինչ. և եթէ այն իցէ, չիցէ ինչ
տրտմութիւն որ մեզ պատահիցէ: «Զի եթէ կայցեմ
և տեսանիցեմ զձեզ, և եթէ հեռի ևս իցեմ և լսի-
ցեմ ինչ վասն ձեր»: Ոչ եթէ իսկ և իսկ փոխելոց էր
և ոչ եթէ չէր գալոց առ նոսա՝ ասէ զայս. այլ եթէ լի-
նիցի, ասէ, այնպէս ինչ և հեռի իցեմ, մարթեմ ու-
րախ լինել:

«Զի եթէ լսիցեմ զի հաստատուն կայցէք ի մի հո-
գի և ի մի շունչ»: Այս իսկ է որ առաւել պինդ պա-
հիցէ զհաւատացեալս, և հաստատուն ունի զսէրն յոր-
ժամ մի և միաբանք լինիցին. քանզի և թագաւորու-
թիւն բաժանեալ յանձին՝ չկայցէ: Վասն որոյ իսկ ա-
մենայն ուրեք բազում խօսս առնէ վասն միաբանութեան.
և Քրիստոս ասէր՝ եթէ «Յայնժամ գիտասցեն զձեզ զի
իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք զմիմեանս»: Այս իսկ
է թէ մի յիմ ակնկալութիւն և եթ ապաստան լեալ
ի քան կայցէք որպէս թէ ես գալոց իցեմ, և առաս իբ-
րև տեսանիցէք թէ չեկի՝ լուծանիջիք. քանզի ի լսե-
լոյ նոյնպէս մարթի ուրախ լինել. Ոչ ինչ իցէ մի հո-
գին. այն իսկ է եթէ ի նոյն շնորհս նոքին յօժարու-
թեանն: Քանզի մի է հոգին, և յայտ առնէ թէ մի
իսկ է և նոյն. որպէս է ի մի շունչ կալ հաստատուն,
յորժամ մի հոգի ունիցիմք ամենեքեան: Ահաւասիկ
մի զգալոց միաբանութիւն ասէ, ահաւասիկ բազումք
ի միասին: Այնպիսի էր զառաջինն. «Էր, ասէ, ամե-
նեցուն սիրտ և շունչ մի»:

«Նահատակակիցք հաւատոց աւետարանին լինի-
ջիք»: Ուրեմն որպէս թէ հաւատքն նահատակիցեն,
կամ եթէ միմեանց նահատակիցք լինիցին, մի թէ ընդ
միմեանս ինչ կռուիցին: Ոչ, այլ զօրավիգն լերուք մի-
մեանց, ասէ, ի նահատակութեան հաւատոց աւետա-
րանին: «Եւ մի խիրտխիրտ ինչ լինիցիք, մի իւիք ի
հակառակորդացն, որ նոցա հանդէս կորստեանն է և
ձերոյ փրկութեն»: Նախ իբր ասաց զխիրտխիրտսն, քան-

զի կաղացուցանէին. և եթէ թշնամիքն, և մի ուխք, ա-
սէ, զինչ և գայցէ 'ի վերայ եթէ վիշտք և եթէ նեն-
գութիւն: Վասնզի այն է հաստատնոցն որք անշարժ
կայցեն. և նոքա ոչ կարեն կալ հաստատուն, այլ խոյտ
'ի խոյտս կաղ 'ի կաղս: Վասնզի 'ի դէպ էր նոցա զար-
հուրիլ ընդ այն, զի այնչափ 'ի չարչարանս կայր Պօ-
ղոս: Զասեմ; ասէ, թէ մի սասանիցիք, այլ թէ մի
խոյտս 'ի խոյտս կաղ 'ի կաղս կայցէք, բայց և քամա-
հեսջիք և ս զնոսա: Եթէ այնպէս կայցէք, իսկ և իսկ
ընոցա կորուստն և զձեր փրկութիւնն յայտ առնէք:
Յորժամ տեսանիցեն թէպէտ և բիւրազգի մեքենայս
խառնիցեն, և ոչ խոյտ 'ի խոյտս կաղ 'ի կաղս կարի-
ցեն առնել, առնուցուն նշանակ զիւրեանց կորստեան և
զձերոյ փրկութեան: Յորժամ հալածիչքն հալածելոցն
չյաղթիցեն, և նենգիչքն նենգելոցն չհերքիցեն, և որ
ունին կալանաւորացն չյաղթանիցեն, ո՞չ ապաքէն անդուստ
իսկ և ս յայտ լինի թէ նոքա կորնչելոց են, զի չկարա-
ցին լինել զօրագոյն, և 'ի մեր առնուցուն թէ իւրեանց
տկարութիւն է և սուտութիւն:

"Եւ այս, ասէ, յԱյ է որ ձեզ շնորհեցաւ 'ի Քրիս-
տոսէ ոչ միայն 'ի նա հաւատալ, այլ և վասն նորա չար-
չարանս կրել": Դարձեալ խրատէ զնոսա ցածնուլ 'ի
հպարտութէ, և զամենայն յԱծ կողմանէն դնէ,
և շնորհս և ձիրս և պարգևս ցուցանէ զչարչարելն վասն
Քրիստոսի, և մի յամօթ համարել. և արդարև շնորհք
իսկ են: Վասն զմեռանելն յարուցանել և նշանս առ-
նել՝ և ս առաւել զարմանալի է: Զի անդ և ս պարտա-
պան եմ, և աստ զԱծ պարտապան ունիմ. ուր զի ոչ
միայն չէ պարտ ամօթ համարել, այլ և ուրախ լինել
իբրև շնորհս ինչ ունել: Վասնզի զառաքինութիւնս
շնորհս կոչէ. ոչ այնպիսի ելին որպէս զայլ շնորհսն. զի
անդ ամենևին իսկ Այ է, բայց աստ մեր. և քանզի
յայսմ մեծ մասն Այ է, վասն այնորիկ զբնաւ իսկ նորա
ասէ. և ոչ եթէ զանձնիշխանութիւն ինչ եղծանէ, այլ
խոնարհս և շնորհակալս կազմէ:

"Զնոյն պատերազմ, ասէ, յանձին ընկալարուք զոր
տեսէքն յիս". և այն իսկ է թէ և օրինակք ևս կան
առաջի: Դարձեալ յարգէ զնոսա այնու. յայտ առնէ
թէ ամենայն ուրեք զնոյն պատերազմ զոր նոյն հար-

*կանէր հարկանելեն, զայն ճգունս ճգնէին և առանձինն և ըստ նմա որ ինչ նմա անկ էին փորձութիւնքն ։ Այս չասաց թէ լուարուք, այլ տեսէք․ քանզի և անդէն իսկ 'ի փիլիպեցւոց 'ի քաղաքին կրեաց ճգունս․ ապա ուրեմն մեծ առաքինութիւնն այն է ։ Վասն որոյ և առ գաղատացիսն գրէ՝ թէ "Այնչափ անցք անցին ընդ ձեզ զուր, թէ իցէ զուր"․ և առ հեբրայեցիսն գրէ․ "Յիշեցէք, ասէ, զաւուրսն զառաջինս մի ըստ միոջէ, յորս լուսաւորեալք բազում ճգնութիւնս չարչարանաց համբերէք, այն իսկ է՝ զի նախատանօք և նեղութեամբ խայտառակեցայք"․ և առ մակեդոնացիսն այսինքն առ թեսաղոնիկեցիսն գրէ՝ թէ "Դուք ձեզէն իսկ պատմէք զմէնջ թէ որպիսի ինչ մուտ եղև մեր առ ձեզ"․ և դարձեալ թէ "Դուք ձեզէն իսկ գիտէք, եղբարք, ըզմուտն մեր առ ձեզ զի ոչ ընդունայն ինչ եղև"։ Այս զամենեցուն նոյնպէս վկայէ ճգունս և պատերազմունս ։*

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

*Այլ ոչ այժմ այնպիսի ինչ առ մեզ գտանի ոք ։ Այժմ այն իսկ յարգի է թէ կարասեաւ ոք զրկիցի․ նա և զկարասւոյն բազում ինչ մեծամեծս վկայէ զնոցանէն ։ Ոչ ի զամենս ասէ՝ եթէ "Ոչ յափշտակութիւն ընչից ձերոց խնդութեամբ ընկալարուք"․ և զամենս ասէ՝ թէ "Հաճոյ եղև մակեդոնացւոցն և աքայեցւոցն հաղորդութիւն առնել ընդ աղքատս"․ և դարձեալ թէ "Որ զձէնջ նախանձն էր՝ յորդորեաց զբազումս"։ Տեսանե՞ս զգովութիւնս յայն ժամու մարդկանն ։ Մեք և ոչ մի ապտակ 'ի ծնօտն առնլոյ և ոչ զանի տանելոյ և ոչ թշնամանաց ժոյժ ունելոյ և ոչ ընչից վնասու համբերելոյ չկալաք երբէք փոյթ յանձին ։ Այլքա անդէն իսկ նախանձաւորք և վկայք էին և պատերազմողք ամենեքեան, մեք և զսէրն ևս Քրիստոսի ցամաքեցուցաք ։ Դարձեալ հարկ 'ի վերայ կայ բամբասել զասոր զգործս և զգնացս ։ Այս զինչ գործիցեմ չգիտեմ․ չկամիմ և բռնադատիմ ։ Ոչ թէ մարթէր լուռ կալ և չխօսել բնաւ և այնու փոքր մի կասէին ինչ գործքն յոռութեանցն, լռէի դադարէի և բնաւ իսկ ձիկ չհանէի ։ Սա աւասիկ*

նորին հակառակն լինի. ոչ միայն չկասին 'ի մեր լռութեան, այլ եւ քաջ ստուարանան, և հարկ լինի խօսել:

Որ բամբասիցէ զյանցաւորսն, թէ և այլ ինչ ոչ՝ գէթ եւ յառաջ չտայ մատչել. քանզի չիք ոք այնպէս անամօթ և յանդուգն որ ստէպ լսիցէ զդորովանս և չալարիցէ[1] և ցածնուցու 'ի բազում չարեաց: Մարթի և մարթի իսկ անամօթիցն փոքր մի պատկառել. քանզի ոմն տնկեալ 'ի բնի արարածի մերում զակնածութիւն: Զի չէ բաւական երկիւղն նորա միայն յորդորել զմեզ, բազում և այլ ճանապարհ հորդեաց առ 'ի չմեղանչել՝ 'ի բամբասելոյ, յահէ անօրինացն որ 'ի վերայ կայցեն, առ 'ի փառացն ցանկանալոյ, առ 'ի բարեկամութեան զթիկունս ունելոյ. այս ամենայն ճանապարհք առ 'ի հնարս չմեղանչելոյ: Բազում ինչ վասն այ̃ թերեւս չառնիցէ, և վասն պատկառութեան լինի. և է ինչ որ վասն այ̃ չառնի, և վասն մարդկան երկիւղի լինի: Իսկ խնդիր այն է նախ չմեղանչելն, և յետոյ զայն ուղղել՝ թէ վասն այ̃ պարտ է ուղղել զայն: Ապա թէ ոչ ընդէ՞ր իսկ Պաւղոս զայնոսիկ որ կամիցին վրէժ առնուլ 'ի թշնամեաց՝ ոչ յայ̃ երկիւղէն յորդորէ, այլ վրէժխնդրութեանն տայ ակն ունել. "Զայս, ասէ, իբրեւ առնիցես, կայծակունս հրոյ կուտեսցես 'ի գլուխ նորա": Առ ժամ զայն կամի զի նախ առաքինութիւնն ուղղեսցի:

Որպէս ասացի իսկ եթէ է ինչ ակնածութիւն տընկեալ 'ի բնի յարարածի մերում, և բազում բարութիւնս բնակաւորս ունիմք 'ի պէտս առաքինութեան. այսպիսի ինչ, զի յողորմելն բնութեամբ իսկ շարժիմք ամենայն մարդիկ, և չիք այլ[2] այնպիսի բարութիւնս 'ի մեզ. ուստի և 'ի դէպ ոք հարցանիցէ ընդէ՞ր[3] 'ի մեզ բնութեամբ տնկեալ ճմլելն փղձկելն, զարտասուս հարկանել, պատրաստ 'ի գութ և 'ի գորով լինել: Չիք ոք բնութեամբ վատ, բայց սակաւք. չիք ոք բնութեամբ անապարծ և ոչ 'ի վեր քան զնախանձ. այլ ողորմելն միայն հաստատեալ է 'ի բնութեանն, թէպէտ և կարի ոք անգութ և անագորոյն իցէ: Իսկ ընդ այն զինչ զարմանք իցեն, զի և անասնոց անգամ և գազանաց ողոր-

1 Յոյնն չանալիցէ: ուելաւ 'ի յունէն:
2 Պակասէր յօրինակին այլ. յաւ.
3 Պակասէր յօր. ընդէ՞ր:

միւսք, քանզի այնպէս յոգն և յաճախ անկեալ է 'ի մեզ ողորմութիւն. և եթէ զկորիւն առիւծու տեսանիցեմք՝ խայտեմք խաղան ազիքն, այլ յազգականն ևս առաւել: Այլ առեա որչափ խնդք և հաշմունք իցեն, և այն իսկ բաւական էր յորդորել զմեզ յողորմութիւն:

Ոչ ինչ որ այնպէս ուրախ առնէ զած որպէս ողորմութիւնն. քահանայք և թագաւորք և մարգարէքն նովաւ օծանին. ընդէ՞ր. զի զամենայն մարդասիրութեանն նշանակ առնուին յանձինս: Օծութիւնն ընդունէին զի յայտ առնիցեն եթէ իշխանքն ողորմութեան պէտք են, և ցուցանէին եթէ հոգին 'ի մարդիկ ողորմութեան է գալոց: Այլ քանզի իւղդ և ողորմութեան անուն մի է յունարէն, վասն այնորիկ զիւղն և զողորմութիւնն ընդ միմեանս համեմատէ: Այլ քանզի ած ողորմի մարդկան և մարդասիրութիւն ցուցանէ, վասն այնորիկ իւղով օծանէին և քահանայք և թագաւորք. "Ողորմիս, ասէ, ամենեցուն, քանզի կարող ես,,: Ահա և զիշխանսէն ևս ասիցես, չվայելէ ինչ նմա քան զողորմութիւն. և սեփական առաւել իշխանութեան ողորմելն է:

Ի միտ առ զի և աշխարհս ողորմութեամբ հաստատեալ կայ, և ըստ նմանող տեառն. "Ողորմութի մարդոյ, ասէ, 'ի վերայ ընկերի իւրոյ, և ողորմութի տեառն 'ի վերայ ամենայն մարմնոյ,,: Ոչ խնդր որպէս 'ի վերայ ամենայն մարմնոյ. եթէ զմեզաւորաց ասիցես, եթէ զարդարոց, ամենեքեան ողորմութեանն այ կարօտ եմք, ամենեքին 'ի նմանէ վայելեմք, թէպէտ և ինքն իսկ Պաւղոս իցէ կամ Պետրոս կամ Յովհաննէս: Այլ նոցին իսկ լուր և մի մերոց բանիցս. "Այլ ողորմութիւն գտի, ասէ, զի զայն յանդիմանութեան գործէի,,: Իսկ զիարդ, յետոյ չէ՞ր կարօտ ողորմութեան. լուր նմին իսկ. "Առաւել քան զնոսա ամենեսին վաստակեցի, ասէ, ոչ ես, այլ շնորհքն որ ընդ իս,,. և զԵպափրոդիտեայ ասէ. "Հիւանդացաւ մերձ 'ի մահ, այլ ողորմեցաւ նմա ած, ոչ նմա միայն, այլ և ինձ, զի մի տրտմութիւն 'ի վերայ տրտմութեան հասանիցէ,,. և դարձեալ թէ "Ծանրացաք առաւել քան զկար մեր մինչև չունել մեզ ակն կենաց, այլ անձամբ անձանց վճիռ մահու յանձինս ընկալաք, զի մի յանձնապաստան լինիցիմք. այլ ած որ յայնչափ մահուց փրկեաց զմեզ, և փրկեսցէ,,. և դար-

ձեալ՝ թէ "Ապրեցայ 'ի բերանոյ առիւծուն, և ապրեցուցէ զիս տէր ,,: Եւ ամենայն ուրեք գտանեմք զի այնու պարծի: Եւ Պետրոս յաղթութենէն եղև այնպիսի, և լուր Քրիստոսի. "Կամեցաւ, ասէ, սատանայ մաղել զձեզ իբրև զցորեան, և ես խնդրեցի վասն քո զի մի պակասեսցին հաւատք քո ,,: Յոհաննէս ողորմութեամբ եղև այնպիսի և ամենեքին իսկ առհասարակ. լուր Քրիստոսի. "Ոչ դուք, ասէ, ընտրեցէք զիս, այլ ես զձեզ ընտրեցի ,,: Ամենեքին կարօտեմք ողորմութեան այ. "Ողորմութիւնն այ, ասէ, 'ի վերայ ամենայն մարմնոյ ,,: Եւ եթէ նոցա ողորմութեամբն այ կարօտ էին, զինչ ոք զայլոց ասիցէ:

Ածէ սոսա, առ իմէ զարեգակն 'ի վերայ բարեաց և չարաց ծագիցէ. ոչ ապաքէն առ ողորմութեան: Եւ եթէ միայն մի տարի արգելոյր զանձրև, ոչ ապաքէն զամենեսին առ հասարակ սատակէր: Եւ կամ թէ ցանգ անձրևածս առնէր, և կամ թէ հուր տեղայր և եթէ այլ ինչ բազում առնէր, և զինչ ասիցեմ, եթէ խաւար առնէր և մթով պատէր որպէս երբեմն, ոչ ապաքէն ամենայն առ հասարակ կորնչէին. և եթէ զերկիր թօթափէր, ոչ ապաքէն ընաբարձ համայնաքինջ լինէին: Եւ արդարև իսկ այժմ 'ի դէպ ժամանակի է ասել՝ թէ "Զինչ է մարդ զի յիշես դու զնա ,,: Եւ եթէ սասանէր միայն երկրի, ոչ ապաքէն ամենեքեան ամանայրն[1] 'ի գերեզմանս. "Իբրև զկաթիլ մի 'ի դուլէ են, ասէ, ամ հեթանոսք առաջի նորա, և իբրև զշիթ մի համարեսցին, և իբրև զմէտ մի կշռոց ,,: Քան մեզ զծակ կշռոցն շարժել՝ նմա զամենայն միանգամայն կորուսանել և միւսանգամ նորոգել դիւրին է: Որ այնչափ իշխանութիւն ունի մեզ և համապազ տեսանէ զյանցանս և չտանջէ, ոչ ապաքէն առ ողորմութեան ներէ: Այս և անասունք ևս ողորմութ. կեան. "Զմարդիկ և զանասունս կեցուցանես դու տէր ,,: Նոյնես զերկիր և ելից անասնովք. ընդէ՞ր, վասն քո. զքեզ վասն է՞ր արար, վասն իւրոյ մարդասիրութեանն:

Զիք ինչ լաւ քան զողորմութիւն. լուսոյ պատճառք են և աստ և անդ. "Եւ ծագեսցէ, ասէ, մարդկան կա

1 Յօրինակին ամենայն:

նուխ լոյս քո”։ Եթէ ստանիցես ողորմութիւն ընդ ընկերին, որպէս իւղ զայս լոյս վառէ, նոյնպէս և ողորմութիւնն զայն լոյս զմեծն և զքանչելին շնորհէ մեզ։ Բազում ձայնս 'ի վերայ ողորմութեան յուզէ առաքեալ. “Բայց միայն, ասէ, զի զաղքատս յիշեսցուք”. և երբեմն “Թէ պէտք ինչ իցէ և ինձ երթալ՝ ընդ իս երթիցեն”. և ամենայն ուրեք զայսմանէ ևեթ հոգայ։ Եւ դարձեալ՝ թէ “Ուսանիցին և մերքն բարեաց գործոց վերակացու լինել”. և դարձեալ՝ թէ “Այն է բարի և օգտակար մարդկան”։ Ուր և այլում ումեմն. “Ողորմութիւն, ասէ, փրկէ 'ի մահուանէ”։ Եթէ զողորմութիւն 'ի բաց անուցուս, տէր, ո՛վ կարիցէ կալ։ Եւ դարձեալ ասէ՝ թէ “Մի՛ մտաներ 'ի դատաստան ընդ ծառայի քում”։ “Մե՛ծ է մարդ, և պատուական այր ողորմած”։ Ընդէ՞ր. զի այնպիսի է մարդ ողորմած, մանաւանդ ո՞յ է ողորմածութիւնն։ Տեսանե՞ս որչափ ինչ է ո՞յ ողորմութեանն զօրութիւն. նա է որ արար զամենայն, և նոյն որ հաստատեաց զաշխարհս, քանզի միայն վասն բարերարութեանն արար։ Վասն այնորիկ սպառնացաւ գեհեննն, զի արքայութեանն հասանիցեմք, նա և արքայութեանն ողորմութեամբ հասանեմք։ Բա՛ն իմէ՞ զի միայն էր, այսչափ բազում արար. ո՛չ ապաքէն առ բարերարութե՛ և մարդասիրութեան։ Եթէ հարցանիցես թէ այս ինչ ընդէ՞ր և այն ինչ վասն է՞ր, ամենայն ուրեք զբարերարութիւն գտանես պատճառ։

Ողորմեսցուք և մեք ընկերացն, զի ողորմութիւն գըտանիցեմք. ոչ նոցա, այլ առաւել մեզ համբարեմք ողորմութիւն։ Յաւուրն յայնմիկ յորժամ սաստիկ վառիցի բոցն, անդ լիցի ողորմութիւնն շիջուցիչ հրոյն, և մեզ պատճառս լուսոյ, և այնպէս ապրիցիմք նմաւ 'ի հրոյ գեհենին. ապա թէ ո՛չ յո՛ր սակս գթայցէ և ողորմեսցի մեզ։ Ի սիրոյ ծնանի ողորմութիւն. չիք ինչ որ բարկացուցանէ զԱծ քան անողորմ լինել։ Մատուցաւ նա ոմն պարտապան բազում տաղանդաց, գթացաւ և թողութիւն արար. և նմա պարտէր ոմն 'ի ծառայակցացն հարիւր դահեկան, և կալեալ պնդէր և խեղդէր. վասն այնորիկ մատնեաց զնա տէրն դահճաց մինչև հատուցանիցէ զոր և պարտիցի։

Զայս լուեալ ողորմածք լիցուք առ պարտապանս և

տա չարչարանացն 'ի պարտս և 'ի յանցանս։ Մ՞ի ոք չարայուշ ոխակալ լինիցի, եթէ չկամիցի անձին վնասակար լինել. զի ոչ այնչափ զնա տրտմեցուցանիցէ, որչափ զանձն։ Ո՛չ ի նմա թէ հանիցէ թէ չհանիցէ, զանձն 'ի պատժոց չազատէ։ Ո՛ ընկերին մեղս չթողու, և զարքայութիւնն երկնից խնդրիցես։ Ո՛ի մի՛ և ընդ մեզ այնպիսի ինչ անցք անցանիցեն, թողցուք պարտապանացն, շնորհեսցուք ընկերաց զյանցանս, զի շնորհեսցէ մեզ ա̃ծ զմեղս մեր. և այնպէս հանդերձելոց բարութեանցն հասանիցեմք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՀԻՆԳԵՐՈՐԴ

"Արդ եթէ իցէ ինչ մխիթարութիւն 'ի Քրիստոս, եթէ սփոփութիւն ինչ սիրոյ, եթէ հաղորդութիւն ինչ Հոգւոյն, եթէ գթութիւն ինչ ողորմութեանց, լցէք զխնդութիւնս իմ։ Զնոյն խորհեսջիք, զնոյն սէր ունիջիք, միամիտք միահաւանք. մի՛ ինչ ըստ հակառակութեան կամ սնապարծութեան, այլ խոնարհութեամբ զմիմեանս յառաջադէմ քան զանձինս համարել. մի՛ զանձանց եւեթ դիտիցէք, այլ իւրաքանչիւր ոք զընկերին խորհել"։

Չիք ինչ անզուգական[1], և ոչ այնչափ գթած քան զՀոգևոր վարդապետն. քան զամենայն իմաստն բնութեամբ հայրենիս անցանէ։ Նա արդ տես զերանելիս որպիսի ինչ խնդրուածս առնէր վասն օգտի Փիլիպեցւոցն։ Նա զինչ ասիցէ. վասն միաբանութեան աղաչէ որ ամենայն բարութեանց պատճառ է. տես զիարդ յորդորէ և յառատս և բազում վշտակից լինելով. "Եթէ իցէ ինչ, ասէ, մխիթարութիւն 'ի Քրիստոս"։ Որպէս զի

1 Գրեալ էր յօրինակին անզուգ ։

առնիցէ. եթէ ունիցիք ինչ զիմ բանս, եթէ երախտիս ինչ գտէք յինէն, զնոյն և դուք այլոց առնիջիք։ Յայն-պիսի օրինակաւ գթով վարեցուք, յորժամ վասն ի-րաց ինչ աղաչիցեմք, զայն առաւել քան զամենայն ինչ դնեմք. Նա և թէ առաւել քան զամենայն ինչ չդնեմք զայն, ոչ նուազ զհատուցումն ամենայնի առնուլ կա-րեմք։ Արդ մեք առաւել զմարմնաւոր իմն երախտիս յի-շեցուցանեմք. որպէս յորժամ հայր որ խօսիցի բանս ինչ աղերսանաց, և զծնունդ և զսնունդ յուշ առնիցէ, և զգութ և զխնամ թէ որպէս ես քեզ հեշտ եղէ, ո-պէս ես քեզ դիւր արարի, և դու այնպէս եղբօրն գնաս-ցես. մի թշնամութիւն ունել, մի քէնս վարել. այսինքն եթէ փոխանակ ընդ իմոց երախտեացն զայդ հատո ինձ։

Իսկ Պաւղոս ոչ եթէ այնպիսի ինչ մարմնաւոր երախ-տիս յիշեցուցանէ, այլ զամենայն հոգևորս։ Եթէ մխի-թարութիւն ինչ, ասէ, 'ի փորձութեանս մատուցանի-ցէք, եթէ յօժարութիւն 'ի Քրիստոս, եթէ սփոփու-թիւն սիրոյ, եթէ հաղորդութիւն հոգւոյն, եթէ գը-թութիւն ինչ ողորմութեան, լցէք զխնդութիւնս իմ։ Գութս իւր կոչէ զաշակերտացն միաբանութիւնս Պաւ-ղոս. ցուցանէ թէ յանհնարին վիշտս անկանելոց են ե-թէ ոչ 'ի միաբանութեան կայցեն։ Եթէ իցէ, ասէ, 'ի ձէնջ մխիթարութիւն գտանել, եթէ սփոփութիւն սիրոյ, եթէ հաղորդութիւն ընդ հոգւոյն, եթէ հաւա-սարութիւն ըստ տեառն, եթէ ողորմութիւն առնուլ ինձ 'ի ձէնջ, եթէ գթութեան հասանել, զայնր ամե-նայնի զփոխարէնս 'ի միմեանց սէրն ցուցանիջիք. և հա-մարիմ եթէ ես վայելեմ ամենայնի, եթէ դուք զմի-մեանս սիրիցէք։

„Լցէք զխնդութիւնն իմ„։ Եւ տես զի մի կարծի-ցի եթէ խրատ ինչ վասն թերութեան տայցէ, չասաց թէ արարէք ինձ, այլ թէ լցէք. այսինքն եթէ զոր սկը-սայքն տնկել յիս, աճեցուցէք՝ ընդ միմեանս խաղա-ղութիւն ունելով. և այնմ ցանկացեալ եմ, զի և 'ի գլուխ ես հանիցէք։ Ո՞ ինչ կամիցիս, ասէ ասա, զի 'ի վշտաց դադարեցուցանիցեմք, եթէ զի ձեռնտու իւիք լինիցիմք։ Ոչ ինչ այսպիսի խնդրեմ, ասէ. „Այլ զնոյն խորհիջիք, զնոյն սէր ունիցիք զոր սկսայքն, միասիրտք միահաւանք„։ Նաբէ քանիցս անգամ զնոյն ասէ առ-

բաղաւմ գթոյ՝ թէ զնոյն խորհիցիք, մանաւանդ թէ զմի ինչ խորհիցիք. զի քան զնոյնն այս մեծ է. «Զնոյն սէր, ասէ, ունիցիք». այս իսկ է թէ մի վայրապար 'ի հաւատոն միայն, այլ և յայլ ամենայն իրս: Քանզի մարթի զնոյն խորհել և չունել սէր, զնոյն սէր, ասէ, ունիցիք. եթէ որպէս սիրեցեան, նոյնպէս և սիրիցիս: Մի՛, ասէ, դու վայելեսցես, և այլումն չտայցես վայելել. զի մի՛ և այսմ ես ագահ գտանիցիս, այլ մի՛ առնուցուս յանձն: «Միասիրտք». այսինքն մի շունչ իցէ հասարակաց. մի մարմին և մի շունչ՝ ոչ բնութեամբ մի լինել, այլ մտօք և կամօք, որպէս թէ 'ի միոյ շնչոյ լինիցի ամենայն զինչ և լինիցի: Զինչ իցէ միաշունչ. միահաւանք, ասէ, լինիցիք. մի խորհուրդ լինիցին ամենեցուն իբրև 'ի միոյ շնչոյ:

«Մի՛ ըստ հակառակութեան»: Տակաւ աղաչէ և զօրինակն ցուցանէ թէ զիարդ այն լինիցի. մի՛, ասէ, ըստ հակառակութեան կամ ըստ սնապարծութեան, զոր ցանգ ասեմ թէ ամենայն չարեաց պատճառք այն են. սնոտի լինին կագ և կռիւք և նախանձ և հակառաթիւնք. սնոտի սիրոյ ցանկաքել յորժամ առ 'ի մարդկանէ փառացն ցանկանայցեմք, յորժամ ծառայք բաղմաց վասն պատուոյ լինիցիմք. և չէ մարթ զի որ փառացն ծառայիցէ՝ եթէ այլ սիրոյ ծառայ կարիցէ լինել: Դու արդ զիա՞րդ 'ի սնապարծութենէն փախիցիմք, չև ևս ցուցեր մեզ ճանապարհ. լուր յաջորդացն:

«Այլ խոնարհութեամբ, ասէ, զմիմեանս լաւ քան զանձինս համարել»: Աբէ քանի՜ հրամանօք զզգաստութեամբ լի է բանս, և զամենայն հնարս փրկութե մերոյ գումարեաց կարգեաց: Եթէ համարիցիս, ասէ, զոք մեծ քան զքեզ, և սրտի մտօք ես յանձն առնուցուս, ոչ զի ասիցես միայն, այլ զի արդեամբք հաստատեսցես և առնիցես նմա պատիւ. մի՛ յորժամ յայլոց պատուիցի, ընդ այն դժկամակ լինիցիս:

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Դու արդ մի՛ վայրապար ինչ մեծ քան զքեզ համարիցիս, այլ առաւել լաւ՝ որ կարի յոյժ մեծարանաց է. և այնուհետեւ չիցես խամ յորժամ տեսանիցես զնա 'ի

պատուի, և չլինիցիս ոժկամակ. այլ եթէ թշնամանի-
ցէ ես՝ համբերիցես մեծաւ հնազանդութեամբ, զի մեծ
քան զքեզ համարեցար. և եթէ բամբասեցար՝ յանձն
առնուցուս, և եթէ լլկիցէ՝ տանիցիս լռելեայն: Յոր-
ժամ միտքն հաստատիցին եթէ արդարև մեծ քան ըզ-
քեզ է, այնուհետև ոչ 'ի ցասումն գրգռիցիս. որչափ
ինչ և վիշտս կրիցես 'ի նմանէ, և ոչ 'ի նախանձ մտա-
բերիցես. քանզի ընդ կարի ոք լաւն ոչ նախանձի, զի
ըստ առաւելութեանն է ամենայն ինչ:

Եւ աստ զայս խրատէ այսպիսի ինչ միտս ունել: Յոր-
ժամ նա ես որ 'ի քէն պատիւ առնուցու՝ զնոյն խորհի-
ցի, 'ի միտ առ որպիսի ինչ պարգևս և պատուար զհե-
զութեանն ամբառնայցէ: Յորժամ դու զնա պատուոյ
արժանի համարիցիս և նա զքեզ, չիցէ ինչ տրտմական
որ 'ի մէջ մտանիցէ: Եթէ յորժամ 'ի միոջէ ումեքէ
լինիցի այն, բաւական է քակել զամենայն զգրգռու-
թիւնն. յորժամ յերկոցունց նոյն լինիցի, զինչ իցէ որ
խռամատել կարիցէ զամրութիւնն, և ոչ ինքն սատա-
նայ. քանզի երեքկին և չորեքկին և բազմապատիկ իսկ
փակիցի ամրութիւն:

Ամենայն պատճառք բարեաց խոնարհութիւն է. և
զի ուսանիցիս՝ լուր 'ի մարգարէէն. «Եթէ կամեցեալ
էր ընդ պատարագս՝ մատուցանէի. ընդ ողջակէզս ոչ
հաճեցար. պատարագ այ ոգի մաշեալ է. զսիրտ բե-
կեալ և զխոնարհ ած ոչ արհամարհէ»: Ոչ զզոյգն ինչ
խոնարհութենէ ասէ, այլ զսաստիկ խոնարհութենէ:
Զոր օրինակ 'ի մարմինս բեկեալն և ջախջախեալն չկա-
րէ ընդ ողջոյն հակառակել, և որչափ ինչ և մեծիցի՝ ես
քան զես աշխատի ինքն և չկարէ ինչ զամբարհիս լինել.
նոյնպէս և ոգի խոնարհ որչափ ինչ և չարչարանս կրի-
ցէ, ես քան զես կամի չարչարանս կրել, նա և մեռա-
նել ես, և ոչ վրէժ խնդրել յումեքէ:

Մինչև ցե՞րբ հպարտանայցեմք. հպարտութիւն ծա-
ղու արժանի է: Զոր օրինակ յորժամ զմանկտի տե-
սանիցեմք գրգռեալ և 'ի վերայ յարձակեալ՝ ծաղր առ-
նեմք կամ քարինս առեալ և ընդդէմ ձգեալ, այնպի-
սի է և մարդկորէն հպարտութի խակ մտաց ունկատար
խորհրդոց: «Զի՞ հպարտանայցէ, ասէ, հող և մոխիր»:
Ընդէ՞ր հպարտանայցես և մեծամտիցես, ով մարդ.

զինչ շահ իցէ, ո՞ր օգուտ։ Նա և արդ ևս մեծամեծօքս 'ի վերայ աղքատկանացն. ո՛չ զնոյն բնութիւն ունիս և զնոյն ոգի, ո՛չ առ հասարակ պատուեցար յԱյ։ Այլ իմաստուն ինչ իցես. գոհանալ պարտէիր և ոչ հպարտանալ։ Նա և զպարգևս երախտեացն իսկ բազմանայ հպարտութիւնն։ Որ հպարտանայցէն թէ մեծն ինչ արար ուղղութիւն, անշնորհակալ գտանի առ տուիչ պարգևին։ Մարթես ըմբոշխնել զբարութիւնն եթէ կամիս. լեր շնորհակալ, գոհացիր զպարգևատուէն։

Լուր զինչ ասէր Յովսէփ, ունկնդիր լեր Դանիէլի։ Յորժամ կոչեաց զնա արքայն եգիպտացւոց, և առաջի ամենայն զօրացն իւրոց հարցանէր զնա վասն իրացն, որում թուլացուցին տեղի եսուն եգիպտացիքն որք յայնպիսի իրս կարի դժնդակք էին, և պատմելոց էր նմա զամենայն իրսն և իմաստնագոյն երևել քան զատեղակէտսն և զկախարդս և զմոգս և զգէտս և քան զամենայն իմաստունս յայն ժամու՝ մանուկ մի 'ի գերեաց եկեալ կայր 'ի ծառայութեան, նա և յայնժամ իսկ առաւել լինէրն փառք. քանզի չէր ընդ մի համար երևելոյ ումեք փառաւոր լինել, և այն որում ոչ ինչ կայցէ ակն որ անկարծն և անյոյսն լինիցի զարմանալի։ Իբրև անց յառաջ, զինչ ասէր ցՓարաւոն. միթէ այս՝ գիտեմ. այլ զինչ, թէպէտ և չէր ոք որ յանդիմանէր առ իւրում բազում բարերարութեանն. զինչ ասէր. "Ո՛չ ապաքէն Աստուծով իցէ մեկնութիւն երազոյն"։ Ազգականի զաւէրն փառաւորեաց, յորս սակս և մեծն փառաւորեցաւ։ Նա այն ոչ սակաւ ուղղութեան գործ էր՝ զԱծն յայտնեալ. այլ առաւել յոյժ մեծ զնմանէ հաւատարիմ եցոյց և զխնամակալութեանն ընդ Այ մեծ նշանակ։ Զիք այնպիսի ինչ բարութիւն որպէս ընդ Այ ընտանութիւն ունել։ "Եթէ 'ի գործոց էր արդարացեալ, ասէ, Աբրահամ, էր նմա պարծանք, այլ ոչ առ Ած"։ Զի թէ որ շնորհաց արժանի լինի, յԱծ պարծի, վասն զի սիրի իսկ որում թոյլն տայցէ. և գործ ինչ գործիցէ, ունի պարծանս, այլ ոչ առ Ած իբրև զնա։ Նոյնում սիրոյ մեծագոյն նշանակ է յԱծն պարծել և ոչ 'ի գործս։ Ընկալաւ խոնարհութիւն յԱյ, եղև զարմանալի. փառաւորեաց զԱծ, և փառաւորեցաւ 'ի նմանէ։ "Զփառաւորիչս իմ, ասէ, փառաւորեցից"։

Դարձեալ և տորին զաւակն՝ քան զոր չգոյ ոք իմաստուն. "Մի՞թէ իմաստնագոյն ինչ իցես, ասէ, դու քան զԴանիէլ": Դանիէլ որ քան զամենայն իմաստունսն բաբելացւոց և քան զնոյն իսկ զաստեղագէտսն և զքաղդէս և զկախարդս, յորժամ ամենայն իմաստնոցն իմաստութիւն ոչ միայն յանդիմանէր, այլ սակաւուկ մի ինչ և 'ի միջոյ իսկ բառնայր, զի հրաման կատարածին զայն յայտ առնէր թէ և այլ խաբեալ էր զնոսա, յառաջ մատուցեալ կամէր զհարցուածսն եղծուլ, և ոչ նոյն ինչ անձին շուք արար, այլ նախ զամենայն յածակցս կողմանէն գնէր. "Ոչ ինձ, ասէ, ոչ եթէ առ առաւելութեան իմաստութեան ինչ իմոյ քան զամենայն մարդկան յայտնեցաւ խորհուրդն, արքայ": Երկիր եպագ նմա թագաւորն և հրամայեաց նմա նուէրս մատուցանել: Տեսանե՞ս զխոնարհութիւնն և զբարերարութիւն և զանհպարտութիւն: Սոյն և առաքելոցն. երբեմն ասէին. "Զի՞ հայիք 'ի մեզ, որպէս թէ անձին ինչ զօրութեամբ և ածպաշտութեամբ արարեալ իցէ զմա զգնալդ". և դարձեալ՝ թէ "Մե՞ք ձեր կարեկիցք եմք մարդիկ": Զի թէ նոքա որոց տուեալ էր պատիւ՝ այնպէս 'ի բաց մերժէին, մարդիկ որ քան զՔրիստոսան վասն Քրիստոսի խոնարհութեանն և ս մեծամեծ գործս գործէին և նորին զօրութեամբ, "Որ հաւատայ, ասէ, յիս՝ մեծամեծս և ս զոր ես գործեմ գործեսցէ", զինչ չիցեն հէք և թշուառականք, որք և զմժիխ չկարիցեն քշել, թող թէ զդևս հանել, որք զմի մարդ չկարիցեն շահել, թող թէ զամենայն տիեզերս, և այնչափ հպարտանայցեն որչափ և ոչ վարդապետն հպարտութեան սատանայ:

Չիք ինչ օտարոտի 'ի քրիստոնէիցն ուղւոց որպէս հըպարտութիւն. զհպարտութենէ ասեմ և ոչ զհամարձակութենէ և զզօրութենէ, քանզի այլ այն է և այլ սա, որպէս զի այլ խոնարհութիւն և այլ անազատութիւն, և ստկանքն և սուտակապաշտութիւն: Ոչ եթէ կամիք, զամենայն իսկ զայսր օրինակս տաց ձեզ: Քանզի այնպիսի իմն թուի՝ ընդդէմ միմեանց կայցեն հակառակք և միմեանց նմանիցեն, որպէս ցորենոյ որոմն և վարդի պտեմն[1]. այլ թերևս մանկտոյ գիտաւ խաբի-

1 Յոյնն փուշն :

ցին. բայց արք կատարեալք որք հոգևոր մշակութեան հմուտք իցեն, գիտեն զատոյգ բարութիւնն ընտրել 'ի չարեաց։ Արդ առեալ զօրինակն ընծայեցուսցուք կացուցանել ձեզ յանդիման թէ զինչ ստկանքն իցեն և զինչ անազատութիւն և սուտակապատութիւն։ Սիբա ստկէր Դաւթի յայնմ ժամանակի, և զտեառնէն չարախօսութիւնս խօսէր. մանաւանդ Աքիտոբէլ իսկ առ Աբիսողոմայ. այլ Դաւիթ չէր այնպիսի, այլ խոնարհ։ Ստկողք և սուտակապաք մեղմեխքն են, որպէս և գէտքն ասէին. «Թագաւոր, յաւիտեան կեաց»։

Նա և առ Պաւղոսի բաղում ինչ այսպիսի խոնարհութիւն գտանեմք 'ի գործս առաքելոցն յորժամ ընդ Հրէայսն խօսէր ոչ ստկանօք, այլ խոնարհութեամբ։ Վասնզի գիտէ և համարձակել, որպէս յորժամ ասիցէ. «Արք եղբարք, ոչ ինչ ընդ հակառակս ելի ժողովրդեան և ոչ հայրենեացն օրինաց, և կապեալ մատնեցայ յԵրուսաղէմ»։ Եւ զի խոնարհութեան բանք էին, լուր զկարգ սաստէ նոցա յաջորդօքն՝ թէ «Բարւոք ասաց հոգին սուրբ, լսելով լուիջիք և մի իմասջիք, և հայելով հայեսջիք և մի տեսջիք»։ Տեսե՞ր զարա զօրութիւնն, տես և զՅոհաննու մկրտչի զքաջութիւնն որով առ Հերովդէս համարձակեցաւ. «Չէ, ասէ, քեզ իշխանութիւն առնուլ զկին եղբօր քո Փիլիպեայ»։

Այս համարձակութիւն էր և արութիւն, և ոչ այն զոր Սեմէին ասէր՝ եթէ «Ել ել այրդ արեանց»։ Թէպէտ և նա համարձակեցաւ, չէր այն արութիւն, այլ յանդգնութիւն և թշնամանք և լեզուանութի։ Թշնամանեաց և Յեզաբէլ զԱհով, քանզի տիրասպանու կոչէր. այլ թշնամանք էին այն և ոչ համարձակութի։ Թշնամանեաց և Եղիա, այլ համարձակութիւն էր և արութիւն. «Ոչ, ասէ, ես կործանեմ զժողովուրդն, այլ դու և տուն հօր քո»։ Համարձակեցաւ դարձեալ Եղիա առ բնաւ իսկ հրապարակն. «Մինչև ցե՞րբ կաղայցէք, ասէ, յերկուս ոտս». այն էր համարձակութիւն և արութիւն կսկծեցուցանել։ Նոյնպիսի ինչ առնէին և այլ մարգարէքն։ Եւ թերևս ասիցես՝ թէ սուտ մարգարէքն. այլ նոցայն յանդգնութիւն է։

Կամիս տեսանել և զխոնարհութեան ինչ իրս, ոչ բանս ողոքանաց։ «Ինձ, ասէ, վատթարութիւն է թէ

'ի ձէնջ իսկ դատեցայց և կամ բնաւ ամենևին 'ի մարդկանէ. այլ և ոչ զանձն ինչ դատիմ, քանզի ոչ ինչ գիտեմ զանձին, այլ ոչ եթէ այնու արդարանայցեմ»: Այսպիսի միտք պիտին քրիստոնէին: Եւ դարձեալ. «Իշխէ՞ ոք 'ի ձէնջ յորժամ իրք ինչ ընդ ընկերին իցեն՝ դատել առաջի անիրաւաց և ոչ առաջի սրբոց»: Կամիս և զատկանս անիրաւ հրէիցն տեսանել, լուր զինչ ասէին. «Չիք մեր թագաւոր բայց 'ի կայսերէ»: Կամիս տեսանել խոնարհութիւն, լուր դարձեալ Պաւղոսի. «Ոչ եթէ զանձինս ինչ քարոզեմք, ասէ, այլ զՅիսուս Քրիստոս զտէր և զմեզ ծառայս ձեզ վասն Քրիստոսի»: Կամիս տեսանել զատկանս և խաւարութիս, նայեաց ընդ Աքաաղ և ընդ զինփացիսն որք ըստ իւրեանց կամացն մատնեցին զՆաբովթ: Կամիս զհամեստութիւն և ոչ զատկանս տեսանել զԴաւիթ, զիարդ անկաւ Սաւուղ 'ի բուռն և խնայեաց: Կամիս տեսանել զատկանս նոցա, որ զԱշխբոթեայն սպանին զորս կոտորեացն Դաւիթ: Բայց և զլուծ իսկ արասցուք բանիցս:

Յանդգնութիւն է այն յորժամ անիրաւ ոք բարկանայցէ և թշնամանիցէ կամ զանձին վրէժ խնդրելով վասն կամ առ ապիրատութեան. և համարձակութիւն այն է յորժամ զվիշտս կամ զմահ չհամարիցի ինչ, և ոչ 'ի բարեկամութենէ և 'ի թշնամութենէ ակնածիցէ վասն Այ հաճոյիցն ինչ: Դարձեալ սակաւք և անպատութիւն այն են յորժամ սուտակապաշս բանիւք ոք ողոքիցէ ոչ ինչ 'ի լաւութեանցն պէտս, այլ պատրել 'ի մարմնաւորացս: Իսկ խոնարհութիւն այն է յորժամ վասն Այ հաճոյից գործ ինչ մեծ վճարիցէ, թէպէտ և զինջանել հասանիցէ յիւրմէ պատուոյ: Եթէ զայնր ըղձեա երթիցեմք, երանելի եմք, մանաւանդ թէ առնիցեմք իսկ. քանզի ոչ թէ գիտելն միայն բաւական ինչ իցէ. «Ոչ եթէ լսողք օրինացն, ասէ, արդարացին»: Այս և պատուիրանէ եւս գիտելն միայն առանց գործոց արդարութեան: Այլ 'ի դատապարտութենէն ապրիցեմք՝ մխեցուք 'ի գործն, զի և հանդերձելոց բարութեանցն հասանիցեմք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. զի նորա են փառք իշխանութի և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ՃԱՌ ՎԵՑԵՐՈՐԴ

"Զայն խորհեսցի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ, որ և 'ի Քրիստոս Յիսուս. որ 'ի կերպարանս այ է, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զէանալն հաւասար այ, այլ զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի առեալ և 'ի նմանութիւն մարդկան եղեալ և կերպարանաւք գտեալ իբրև զմարդ. խոնարհեցոյց զանձն՝ լեալ հնազանդ մինչև ցմահ և մահու խաչի":

Տէր մեր Յիսուս Քրիստոս յորժամ 'ի մեծամեծս ինչ յորդորէր զիւր աշակերտսն, զիւր անձն զնէր առաջի և զՀայր և զմարգարէսն, որպէս յորժամ ասէր. "Այսպէս տանէին ընդ մարգարէսն որ յառաջ քան զձեզ էին". և դարձեալ. "Եթէ զիս հալածեցին, ապա և զձեզ հալածեսցեն". և "Ուսարուք յինէն զի հեզ եմ". և դարձեալ եթէ "Եղերուք գթած որպէս Հայրն ձեր որ յերկինս է": Այսպէս և Պաւղոս յորժամ կամեցաւ յորդորել զնոսա 'ի խոնարհութիւն, զՔրիստոս բերէ 'ի մէջ ոչ սոսկ միայն, այլ և յորժամ վասն աղքատութեան պատուիրէր. "Գիտէք, ասէ, զշնորհսն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զի վասն ձեր աղքատացաւ որ մեծատունն էր": Չիք ինչ որ զմեծ և զզգաստացեալ ոգին յորդորիցէ 'ի բարեացն գործ, որպէս զուսանելն թէ որով այ նմանող լինիցի. զի՞նչ ինչ այսմ զոյգ կայցէ 'ի յորդորումն. և ոչ ինչ: Զոր և Պաւղոս խնայեալ յորդորէ զնոսա 'ի խոնարհութիւն. նախ աղաչեաց և խնդրուածոց ունելի յորինեաց, ապա և պատկառեցուցանելով խաւսի. "Զի հաստատուն կայցէք 'ի մի հոգի, և նոցա հանդէս կորըստեան և ձեզ փրկութեան": Նա և արդ զի՞նչ ասիցէ:

"Զայն խորհեսցի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ, որ և 'ի Քրիստոս Յիսուս. որ 'ի կերպարանս այ է, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զէանալն հաւասար այ, այլ զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի առեալ": Մի՛տ դիք աղաչեմ և սթափեցարուք. զոր օրինակ առ

մինչ երկայրի պողպատեին որչափ Խակատել եւ հաստատեցէ՝ անխախտ և անարգել և դիւրաւ կատարէ, քանզի պողովատիկ է և երկայրի և չէ մինչ որ առաջի կացցէ, նոյնպէս և բանք հոգւոյն։ Այլ մանաւանդ այս բանիւք զԱ՛րիոսի աղեքսանդրացւոյ և՛ զԱ՛րկեղի գաղատացւոյ[1] և զՄ՛արկիոնի պոնտացւոյ և զՎ աղենտիանոսի և զՄ՛անեայ և զՍաբելլի լիբէացւոյ և զԱ՛պողինարի լաւոդիկեցւոյ և զՆաւատինոսի և զԱփրոնի և առհասարակ զամենայն իսկ զչարափառս հերձուածողացն արկանէ տապաստ։

Այլ արդ որ այնպիսի հանդերձի ունողք իցէք՝ մի այսր անդր օգտել զանեսիլ, այլ 'ի գունդս խառնեալս և Խակատեալս՝ թէ արդ փաղփաղեալ կործանելին, աթափեցարուք քրքրեցարուք, զի մի և հանդերձին ունելին ուրախարար մերկացեէ 'ի ձէնջ։ Ո՛չ եթէ 'ի կառամարտին պատանց 'ի ձիոցն ընդ միմեանս հակառակելոյ՝ չէր մինչ այնպիսի ունել գեղեցիկ, որպէս յորժամ ամենեքին իսկ զկառսն երիվարօք հանդերձ կործանիցէ ախոյեանն, և անդ կայցէ ոմն 'ի բերանս, ոմն յորսայս, ձիք բեկեալք և կառք խորտակեալք, և նա եւս քան զեւս ձեռնիցի մարտակառ թէ հնար մինչ լինիցի և զկառսն եւս 'ի վերայ բեկելոցն անցուցանել և բնաւ 'ի գլուխ հանել զպատերազմն և յամենայն կողմանց առնուլ զյաղթութիւնս և զբրաւանս, մինչ զի և աղաղակ բաղմամբոխին 'ի յերկինս կցիցի, և հարկ զթուչան առ խնդին և զբրաւատեաց այսր անդր զասպարիզօքն սլացեալ շահատակիցէ՝ արդարատն յոյժ երիվարացն և 'ի կառացն կողմանելթիւն, որչափ եւս առաւել և առա լինիցի բաղում ուրախութին յորժամ զգունդս հերձուածողացն և զժողովս ստամբակաց և զարուեստանացն փիւակերտոյն[2] հանդերձ նոցին կառավարօքն կործանիցեմք այս չնորհօքն զամենայն փաղփաղեալ համբրէն առհասարակ։

Եթէ կամիք կարգեսցուք մի ըստ միոջէ զհերձուածողսն և զժամանակսն։ Նախ թերեւս զժամանակս ամբարշութեանն[3] զժուարին իցէ հաւաստեաւ գտանել. բայց այն զի՞ առնէ։ Նախ Սաբելլիոս լիբէացի յառաջ եկաց, մանաւանդ թէ յետս իսկ. և զինչ ասիցէ. հայր,

1 Յաւելու յոյնն և Պաւղոսի սամոսատացւոյ։

2 Օրինակին փիլոսոփայիցն։

3 Օրինակին ապաշխարութեանն. եղաւ ըստ յունին։

ասէ, և որդի և հոգի սուրբ անուանք են լոկ միոյ երեսաց յորջորջմանք։ Մարկիոն պոնտացի ասէ՝ թէ ա՟ծ որ զամենայն հաստատեաց կացոյց, չէ բարերար և ոչ հայր բարերարին Քրիստոսի, այլ այլ ա՟ծ է արդար և սաստիկ, և Քրիստոս մարմին 'ի մէնջ ոչ էառ։ Մարկեղոս, Փոտինոս և Սոփրոնիոս զբանն ազդումն ասեն, և զազդումն բնակեալ յայնմ որ 'ի զաւակէն Դաւթի եղև, և ոչ էութիւն ինչ անձնաւոր։ Արիոս որդի զՔրիստոս խոստովանեալ խոստովանի, բայց բանիւք միայն. քանզի ասէ, արարած է և քան զհայր կարի խոնարհագոյն։ Իսկ այլքն ասեն՝ թէ շունչ չունէր։

Տեսե՞ր զկառսն խառնեալս և յարձակեալ, տեսե՞ր և զկործանումն նոցա զիարդ միանգամայն զանա տապալէ, և միով վիրօք առհասարակ զամենեսեան խոցոտէ։ Ո իա՛րդ. «Ո այն, ասէ, խորհեսցի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ, որ և 'ի Քրիստոս Յիսուս». զի՞նչ. «որ 'ի կերպարանս ա՟յ է, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար ա՟յ»։ Եւ միայն 'ի լսելոյ զբանս սոտակի Պաւղոս սամոսատցին, կործանի Մարկիոն, կործանի Սաբելլիոս։ «Ի կերպարանս ա՟յ է» ասէ, և դու զիա՞րդ ասիցես 'ի Մարիամայ առեալ սկիզբն, ի ժամս և աղդծալից, և թէ յառաջ քան զայն չէր. և զիա՞րդ իշխեցես ասել թէ ազդումն ինչ էր, ուր Պաւղոս աղաղակէ «Որ 'ի կերպարանս ա՟յ է. զկերպարանս, ասէ, ծառայի առ»։ Արդ կերպարանքն ծառայի ազդումն ինչ իցեն, եթէ բնութիւն ծառայի. ո՞չ ապաքէն յայտ է թէ բնութիւն ծառայի։ Եւ եթէ այս այսպէս է, քանզի և այսպէս իսկ է, ապա և կերպարանքն ա՟յ՝ բնութիւն ա՟յ է և ոչ ազդումն ինչ։ Եւ ահաւասիկ Մարկեղոս գաղատացի և Սոփրոնիոս և Փոտինոս առհասարակ կործանեցան, առ նոքին և ընդ նոքին Սաբելլիոս։ «Եւ ինչ յափշտակութիւն համարեցաւ, ասէ, զլինելն հաւասար ա՟յ»։ Հաւասար զմիոյ երեսաց չասի. զի հաւասարն՝ ուրուք հաւասար է, ումեք զուգակից։ Տեսանես զերկուց երեսաց անձնաւորութիւն, և ոչ լոկ անուանս առանց արդեանց յորջորջումն։ Լուար զի յառաջ քան զյաւիտեանս է էութիւն միածնին։

Եւ արդ զի՞նչ այսուհետև ասիցեմք առ Արիոս, որ յայլմէ էութենէ ասիցէ զորդի։ Ահա ասա, զկերպա-

րանս ծառայի առ Թէ չէաս. առ, ասէ: Եւ որպիսի ինչ. մարդ եղև, ասէ: Եղև՞ ստոյգ մարդ. եղև, ասէ: Թէ այդպէս իցէ, և զի 'ի կերպարանսն ա̃յ է՝ ա̃ծ է, քանզի և անդ կերպարանս ասէ և աստ կերպարանս. եթէ այն ճշմարիտ է, ապա և այս. եթէ 'ի կերպարանս ծառայի մարդ ստոյգ է, ապա և 'ի կերպարանս ա̃յ ա̃ծ ճշմարիտ է: Եւ ոչ այսչափ միայն, այլ և հաւասարն ասելով՝ վկայէ եթէ նորուն զուգական է. զոր օրինակ և Յովհաննէս աւետարանիչ ա̃ծ առ ա̃ծ ասէ, և չդնէ ինչ ընդհատ 'ի հօրէ: "Ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ լինել, ասէ, հաւասար ա̃յ":

Այլ ճարտարեն ինձ վայրապար, բայց սակայն իւրեանց հակառակ. 'ի կերպարանս ա̃յ է, ասեն, այլ չյափշտակեաց լինել հաւասար ա̃յ: Ասասցուք. եթէ հաւասար ա̃յ էր, զինչ պէտք էին յափշտակելոյ. և կամ զիա՞րդ չիցէ անհանճար զոր ասենն: Ո՞վ ոք ասիցէ Թէ այս անուն մարդ է, և չյափշտակեաց լինել մարդ. կամ ո՞ ոք զայն ինչ որ իցէն՝ յափշտակիցէ: Թէ՝ ասեն, էր ա̃ծ, բայց նուաղագոյն. և ոչ յափշտակեաց լինել հաւասար մեծին ա̃յ: Իսկ արդ զուգէ՞ մեծ և փոքր ա̃ծ. զհեթանոսաց բարբանջմունս յեկեղեցւոյ կրօնս մուծանէք: Մեծ և փոքր առ 'ի նոցանէն ասի ա̃ծ. եթէ և առ 'ի մէնջ՝ սակայն և զայն չգիտեմ. բայց 'ի գրոց և ոչ ուրեք գտանեմ, այլ ամենայն ուրեք զմեծ է, և փոքր և ոչ ուրեք: Եւ եթէ փոքր է, զիա՞րդ իցէ ա̃ծ. եթէ մարդ չիք փոքր և մեծ ըստ բնութեան, քանզի մի բնութիւն է ամենեցուն. և որ չիցէ 'ի բնութենէս մարդկան, նա և մարդ իսկ չէ. Նոյնպէս և նա եթէ 'ի հօրէ և յա̃յ բնութենէն չիցէ, նա և ա̃ծ չէ: Այլ քանզի 'ի հօրէ էութենէ ա̃ծ է և ա̃ծ ճշմարիտ, ամենայն ուրեք գիրք զմեծն ասեն. "Մեծ է տէր և օրհնեալ է յոյժ": Եւ զայս զորդւոյ ասէ, քանզի ամենայն ուրեք գիրք տէր կոչեն զորդի, և այս վասն երեսացն ընտրութեան. զի յորժամ տէր ասիցի՝ զորդւոյ իմանայցեմք: Եւ ոչ որպէս ոմանք զանդգաչեն՝ եթէ տէր ասի և Աստուած չասի: Թէպէտ և յաճախագոյն զտէր անուն կոչեն նմա գիրք վասն երեսացն ընտրութեան, այլ 'ի բազում տեղիս և զա̃ծն անուն. "Մեծ ես տէր, ասէ, և առնես սքանչելիս և դու միայն ես ա̃ծ". և դարձեալ Թէ "Մեծ

է տէր մեր և մեծ է զօրութիւն նորա և չիք չափ մեծութեան նորա,,։ Այլ[1] այսպիսիկ զՀօրէ են, այլ որդի, ասեն, փոքր է։ Դու ասես զայդ. բայց գիրք վարին հակառակն, որպէս զՀօրէ՝ նոյնպէս զորդւոյ։ Նա լուր Պաւղոսի իսկ. "Ակն ունիմ, ասէ, երանելի յուսոյն և յայտնութեան փառաց Մեծին Այ,,։ Միթէ ըզՀօր յայտնութենէ ասիցէ. և ոչ երբէք։ Զի առաւել ևս յանդիմանեացէ զձեզ, զյայտնութիւն Մեծին Այ յաւել։ Իցէ՞ թէ զՀօրէ ասիցէ։ Ոչ, քանզի յաջորդն չտայ թոյլ. "յայտնութեան, ասէ, Մեծին Այ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի,,։ Ահաւասիկ որդի մեծ է, և դու զխո՛րդ ասիցես մեծ և փոքր։ Նա լուր մարգարէին. Մեծի խորհրդոյ հրեշտակ ասէ։ Մեծի խորհրդոյ հրեշտակն չիցէ՞ մեծ. Հզօրն Աստուած չիցէ՞ մեծ, այլ փոքր։

Նա արդ զինչ ասիցեն յանդգնեալքն հոլովեալք. փոքր Աստուած է՝ ասեն զորդւոյ։ Զոր ասենն՝ սակաւ բաքում անգամ, զի ևս առաւել փախչիցիք 'ի նոցանէն։ Փոքր Այ է, ասէ, և չյափշտակեաց լինել զուգակից մեծին։ Ո՛չ է ասա, բայց մի համարիք թէ իմ ինչ իցեն բանքս, թէ փոքր ինչ ոք՝ ըստ նոցա աղանդաւորութեանն ասեմ, և կարի ինչ կարօտ հօր զօրութեան, թէպէտ և մնաբերէր՝ զխո՛րդ կարէր յափշտակել զլինելն հաւասար Այ։ Վասնզի խոնարհագոյն ինչ բնութիւն չկարէ յափշտակել առնուլ զմեծ ինչ. այսպիսի ինչ, մարդ չկարէ յափշտակել լինել հաւասար հրեշտակի ըստ բընութեան. և ձի թէպէտ և կամիցի՝ չկարէ յափշտակել լինել հաւասար մարդոյ ըստ բնութեանն։ Նա և առանց այսր ևս ասացից թէ զինչ կամէր յարգարել Պաւղոս. 'ի խոնարհութիւն կամէր յորդորել զփիլիպեցիսն։ Ընդէ՞ր բերիցէ այսպիսի բանս 'ի մէջ։ Ոչ որ յորժամ կամիցի 'ի խոնարհութիւն զոք յօժարեցուցանել՝ ասէ խոնարհ լեր, չափու կալ զանձնդ, մի մեծամտեր. այլ և զհանդիսապատիւ զոք օրինակ ածիցէ՝ թէ այս անուն ծառայ չյարեաւ 'ի վերայ տեառնն. և այս ոչ եթէ խոնարհութիւն ինչ է, այլ հպարտութիւն։

Ուսարուք եթէ զինչ իցէ խոնարհութիւնն որք զաս-

1 Պակասէր յօրինակին Այլ այսպիսիկ զՀօրէ են. յաւելաւ 'ի յունէն։

տմնայական ամբարտաւանութիւնն անկցին։ Ո՛չինչ իցէ խոնարհութիւնն. զխոնարհագոյն եւեթ իրս ածել զմտաւ. և զխոնարհագոյնսն այնպիսին ածէ զմտաւ՝ որ ոչ ՚ի հարկէ լինի խոնարհ, այլ անձամբ զանձն խոնարհեցուցանէ։ Նմանիսի ինչ ասել, ունին դիք։ Յորժամ որ կարիցէ մեծամեծս ածել զմտաւ, և զխոնարհագոյնսն ածիցէ, այնպիսին է խոնարհ. իսկ յորժամ առ տկարութեան ածիցէ զխոնարհագոյնսն զմտաւ, այնպիսին չէ խոնարհ։ Նմանապէս ինչ, թագաւոր թագաւորի թէ հնազանդիցի, խոնարհութիւն է այն, քանզի ՚ի բարձրութենէ էջ յայն. իսկ եթէ հազարապետն զայն առնիցէ, չէն ինչ խոնարհութեան բանք, այլ հարկ ՚ի վերայ կայ. զիա՞րդ. քանզի ոչ եթէ ՚ի բարձրութէ խոնարհեցաւ։ Զմարթի այլ ազգ խոնարհել, եթէ ոչ իշխանութիւն ունի խոնարհելոյ և ոչ խոնարհելոյ. ապա եթէ հարկ և բռնութիւն ՚ի վերայ՝ կայցէ, չէ խոնարհութեան ողջութիւն և ոչ ՚ի կամաց, այլ ՚ի հարկէ։ Խոնարհութիւն յայն սակս առի, զի մտացն իցէ խոնարհութիւն։

Նոյնէ ասա, եթէ որ չունիցի իշխանութիւն ազատել և յիւրում արարման կայցէ, զայնպիսին գովեցնենք ինչ արդարութեան յաղագս. և ոչ երբէք. զի ՚ի հարկէն որ ՚ի վերայ կայ չառնէ գովութիւն կամացն։ Եթէ չկարիցէ որ բռնանալ և թագաւոր լինել և կայցէ յռամկացն համարի, զայնպիսին գովեցնենք ինչ որպէս թէ չիցէ ագահ. և ոչ երբէք։ Ոչ է այնպէս է, և ոչ յայսմ։ Ո՛չ ի գովութիւն՝ թէպէտ և դուք ազատք քան զամենեսեան իցէք, սակայն գիտէք ոչ ՚ի աստամբակութեանն հեռանալոյ լինի, այլ ՚ի բարիսն գործելոյ։ Ո՛չ ի այն ՚ի պարտաւանաց եւեթ ազատ է, և չև ևս է ՚ի դրուատիսման. այլ գովութեան արժանի այն է յորժամ կարիցէ որ բռնանալ և չբռնանայցէ։ Եւ մեծ դիր զիարդ և Քրիստոս զայնպիսի իրս գովէ յորժամ ասիցէ “Եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւնն ՚ի սկզբանէ աշխարհի. զի քաղցեայ և ետուք ինձ ուտել, ծարաւեցի և ետուք ինձ ըմպել„։ Եւ չասաց թէ չագահեցէք և չյափշտակեցէք, զի այն մանունք էին. այլ թէ քաղցեալ ետուք զիս և կերակրեցէք։ Եւ ով որ այնպէս գովիցէ կամ զսարե-

կամս կամ զԹշնամիսն, նա և ոչ զՊաւղոս. և զԻնչ առիցեմ զՊաւղոս, նա և ոչ զա և իցէ զայլ ոք, որպէս դու զՔրիստոս զովես: Նա արդ զովեաց, ոչ զի զան-պատշաճ իշխանութիւնն չառ: Ո ի ընդ այնպիսիս զան-մանալ թաղում չարեաց վկայութիւն է: Որպէս. զի այնպիսեացն է այսպիսի գովութիւն, այսպիսի ինչ՝ ե-Թէ "Ոչ գողանայն, այլ ոչ ևս գողանայցէ": Իսկ բա-րեացն այն գովութիւն է, յորժամ չյափշտակիցէ ոք որ չիցէ նմա անկ իշխանութիւն ինչ և պատիւ:

Մի՛ իտ դիք աղաչեմ, երկայն է բանս և այլ ազգ ևս-ն ոք 'ի խոնարհութիւն յայսպիսի իրաց յօժարեցու-ցանիցէ: Մեծամեծ օրինակս կամիմք 'ի մէջ բերել, վասն որոյ յորդորիցեմք. քանզի չէ մարթ ոտար օրի-նակօք ինչ յորդորել: Նչ այսպիսի ինչ. յորդորեաց Քրիստոս բարի առնել թշնամեաց, եթէ օրինակ մեծ առ 'ի հօրէ՝ Թէ "Ծագէ զարեգակն 'ի վերայ բարեաց և չարաց, և ածէ զանձրև 'ի վերայ արդարոց և մեղա-ւորաց": Յօժարեցոյց և ս Թ յանախակալութիւն, եւ օրինակս մեծամեծս յանձնէ. "Ուսարուք, ասէ, յի-նէն, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ". դարձեալ. "Թէ ես տէրս և վարդապետս զայս արարի, որչափ ևս առա-ւել դուք": Տեսանես զի չեն հեռի օրինակքն, նա և ոչ այնչափ պարտ է հեռի լինել: Քանզի և մեք այն-պէս առնեմք. բայց այլ ազգ ևս՝ նա և ոչ մօտ ինչ է օրինակն. մի՞տ դիք զկարգ: Ո իսկ եթէ ծառայ է, և խո-նարհագոյն և հնազանդ մեծ ինչ իրաց, ապա և խո-նարհութիւն չէ այն: Բայց և զնորին հակառակն պարտ էր առնել, զմեծ ոք փոքրն հնազանդեցուցանել. այլ քանզի զայն չեգիտ զնոյ առնել զմեծն և զփոքրն, վասն այնորիկ զհաւատարն ասաց: Եթէ փոքր ինչ է որդի, չէր բաւական նովաւ 'ի խոնարհութիւն իջանել յոր-դորել: Ընդէ՞ր. քանզի չէ խոնարհութի՝ փոքուն չյառ-նել 'ի վերայ մեծին, չյափշտակել զիշխանութի, հնա-զանդ լինել մահու չափ: Իսկ այլ ազգ ևս ասէ և զմեծ օրինակին զինչ ասէ. "Խոնարհութեամբ, ասէ, զմի-մեանս առաւել քան զանձինս համարիցիք": Համա-րիցիք, ասէ. քանզի մի բնութիւն էք և մի պատիւ ու-նիք յայս, և արդ պարտ է կարծեաց ինչ երևել յերացն. Քանզի 'ի մեծամեծսն և 'ի փոքունս ոչ ոք ասէ զայն

եթէ համարեսջիք, այլ թէ պատուիցէք զայնպիսին որ քան զձեզն առաւել իցեն, որպէս և այլուր ասէ. “Հնազանդեք իշխանաց ձերոց և հնազանդ կացէք„: Ընդ ըստ իրացն պայմանի է հնազանդութիւնն, և ըստ մերում ընտրութեանս պարտիք լինել: “Խոնարհութեամբ, ասէ, զմիմեանս առաւել քան զանձինս համարեսջիք„. որպէս և Քրիստոս իսկ արար:

Նոցայն այնպէս եղծանի. բայց արդ և զմերն պարտ է ասել: Նախ զլուխ իսկ առնել առեալն համառօտիւք պարտ է՝ եթէ քանզի՛ ի խոնարհութիւն յորդորէր, չէր պարտ զփոքր ոք և զհնազանդ առնել յօրինակ: Զի եթէ զծառայս յորդորէր հնազանդ լինել տերանց, յիրաւի էր թէ այնպէս ինչ ասէր. իսկ եթէ զազատս ասաց, վասն Էր զծառայի հնազանդութիւն առ տէր բերէր կամ զփոքունս առ մեծն. միթէ ասա՞ց՝ փոքունք ծառայից հնազանդ լիցին. այլ թէ հանդիսապատիւք միմեանց հնազանդ լերուք, և զմիմեանս առաւել քան զանձինս համարեսջիք: Զմէ՞ և զկնաջ անգամ զհնազանդութիւն չեբեր՝ ի մէ՞ջ, թէ գէթ որպէս կին առն հնազանդի հնազանդիցիք: Եթէ որ ինչ հասարակն էր և ազատագոյն չեբեր՝ ի մէջ, քանզի ամենևին փոքր հնազանդութիւն էր, որչափ ևս առաւել զծառայիցն չեբեր: Եւ որպէս կանխագոյն իսկ ասացի՝ թէ ոչ ոք այնչափ ինչ գովէ զառ՝ ի չարեացն հեռանալ, և ոչ բնաւ յիշէ իսկ ոք զայն. և ոչ յորժամ զգածումն ոք կամիցի գովել՝ ասէ թէ չընացաւ, այլ յուրմէ ևս կնաջէն մեկուսի եկաց: Եւ ոչ երբէք զառ՝ ի չարեացն հեռանալ համարի ոք ինչ, քանզի այն ծաղու զրոյցք են:

Ասաց թէ՝ ի կերպարանս ծառայի. ճշմարիտ էր և չէր ինչ ընդհատ: Եթէ այնպէս իցէ, և զկերպարանսն ա̃յ կատարեալ ունի, չէ ինչ ընդհատ: Ընդէ՞ր չասաց թէ ՚ի կերպարանս ա̃յ եղև, այլ թէ է: Եւ այնմ հանգոյն է այս զոր ասէ՛ն՝ թէ ես եմ որ էն, այսինքն թէ ես այն եմ որ եմն ՚ի սկզբանէ. զայլակերպութիւն բնութեան յայտ առնէին կերպարանքն ըստ այնմ որպէս զկարգ կերպարանքն իցեն. չէ մարթ չէ հնար եթէ յայլմէ էութենէ իցէ, և զայլոյ կերպարանս ունիցի: Այսպիսի ինչ, չիք ոք ՚ի մարդկանէ որ զհրեշտակի կերպարանս ունիցի, և ոչ անասուն թէ զմարդոյ կերպարանս. իսկ որպէս զկարգ

թէ պղլուա էր՝ զնոյ կերպարանս ունէր։ Նա մեզ այն֊
պէս՝ քանզի յօդեալ ենք՝ են մարմնոյ կերպարանք. իսկ
յանստարած և յանյօդ բնութեան այնպիսի. ինչ կեր֊
պարանք որպէս հօրն են՝ նոյնպէս և որդւոյ։ Նաև ե֊
թէ վասն զի առանց աթերն ասացեալ է յաւետարա֊
նի՝ եթէ "ա̃ծ էր բանն,, և ոչ եթէ ա̃ծն էր բանն՝
յայն ինչ գայթակղեսցին, գիտասցեն թէ և զհօրէ բա֊
զում անգամ առի առանց աթեր, այսինքն առանց յա֊
ւելուածոց 'ի միոջ գրոց։ Նա զի տուեցեալ թէ ընդ բա֊
զում տեղիս, նա և աստ այժմ իսկ, "ոչ ինչ յափշ֊
տակութիւն համարեցաւ, ասէ, լինել հաւասար ա̃յ,,
և ոչ թէ ա̃յն։ Նմանէր և զմեր ինչ յաւելուլ. այլ կա֊
կածեմ զուցէ կարի ինչ թաղիցեմ զմիտս ձեր։ Նա
այժմ զոր ասացաւս զայս 'ի միտ կալարուք առ 'ի նոցա
մնոց կործանումն։ Նա այժմ զփուշն խլեսցուք, և ա֊
պա զպտղաբերս սերմն սերմանեսցուք. յետ զփուշն խլելոյ
փոքր մի ոգի տացուք առնուլ երկիրն մինչ զամենայն
միասնակար որպիսան պտուղս տացէ, և առաւ բազում
առաքինութեամբ ընդունիցի զա̃ծեղէն սերմն։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Գոհասցուք զա̃յ 'ի վերայ այսոցիկ որ ասացանս, և
աղաչեսցուք զմարդասէրն տալ մեզ զզուշութիւն առ 'ի
պահել զոր լուաքս. զի թէ և մեք և դուք ուրախ լինի֊
ցիմք, և հերձուածողք զամօթ զգենուցուն։ Խնդրես֊
ցուք 'ի նմանէն զի ևս յառաջ բացցէ զբերանս մեր, զի
և զմեր ևս սովին փութով յօրինեսցուք և դիցուք ա֊
ռաջի ձեր։ Աղաչեսցուք զի ընդ հաւատոյն և վարս ևս
շնորհեսցէ մեզ, զի 'ի նորա փառս կեցցուք, և մի անուն
նորա վասն մեր հայհոյեսցի. և "Վայ իցէ ձեզ, ա֊
սէ, եթէ վասն ձեր անուն ա̃յ հայհոյեսցի,,։ Նա թէ
որդի իցէ ուրուք սիրելի և վասն նորա հայհոյեսցի, ա֊
րտաքիր առնէ և անբաժին հանէ, ուրանայ չտեսանէ ա֊
կան, որչափ ևս առաւել ա̃ծ յորժամ ծառայս ստա֊
հակս ունիցի որ հայհոյիցեն և թշնամանիցեն զնա, գար֊
շի ատեայ և 'ի բաց մերժէ. և զոր ա̃ծն ատեայ և 'ի
բաց մերժէ, ով իցէ որ ընդունիցի՝ եթէ ոչ սատանայ
կամ դևք. և որ 'ի դիւացն ձեռս մատնի, զինչ յոյս

փրկութեան կայցէ նորա, որ մխիթարութիւն կենաց։ Մինչ յոյժ ձեռս իցեմք, չիք ոք որ կարիցէ 'ի նմանէ ըղմեզ յափշտակել. յորժամ 'ի նորա ձեռաց ելանիցեմք և 'ի նորին օգնականութենէ վրիպիցեմք, պատրաստ գտանիցեմք յափշտակութեան իբրև զորմ թիւրեալ և իբրև զցանկ մերժեալ. յորժամ արտաքսի որմ, խրամատիցի և ամենեցուն աւար լինի։

Մի՛ ի զԵրուսաղէմ և եթ կարծիցէք զայն որ ասելոցն եմ, այլ զամենայն մարդոյ. «Արգելցից, ասէ, սիրելւոյ այգւոյ իմոյ զերգս սիրելւոյն իմոյ։ Այգի տնկեցի սիրեցելոյն յեղջեր 'ի պարարտութեան տեղւոջ, ցանկով փակեցի և ձողաբարձ զարդարեցի. տնկեցի որթ սորեկ, այսինքն ընտիր, և շինեցի աշտարակ 'ի միջի և զբու հնձան փորեցի, և կացի մնացի զի բերիցէ խաղող և եբեր փուշ։ Արդ արք Յուդայ և բնակիչք Երուսաղէմի, դատ արարէք ընդ իս և ընդ այգի իմ. զինչ ինչ էր առնել այգւոյ իմոյ և ես ոչ արարի. կացի մնացի զի բերցէ խաղող և եբեր փուշ։ Արդ ինձէն պատմեցից զինչ արարից ընդ այգւոյ իմ. բարձից զցանկ նորա և եղիցի յափշտակութիւն, և քակեցից զորմն և եղիցի 'ի կոխումն. թողից լքից զայգի իմ, զի մի յատցի և մի բրեսցի, և բուսցի 'ի նմա փուշ իբրև 'ի խոպանի. հրաման տաց ամպոց իմոց չտեղալ յայգի իմ։ Զի այգի տեառն զօրութեանց տունն Իսրայէլի է, և մարդ Յուդայ նորատունկ սիրելի. կացի և մնացի զի արասցէ իրաւունս և արար անիրաւութիւն, և ոչ արդարութիւն, այլ աղաղակ»։ Այս առ ամենայն իսկ ոգի ասի. յորժամ զամենայն զոր ինչ պարտ է՝ կատարիցէ մարդասէրն Աստուած, և նա փուշ բերիցէ և ոչ խաղող, բառնայ զցանկն, քակէ զորմն, և լինիցիմք 'ի յափշտակութիւն։

Դաւր զխարդ և միւս մարգարէն ասէ ողբալով. «Ընդէ՞ր քակեցեր զցանկ նորա, և կթեն զնա ամենայն անցաւորք ճանապարհաց. ապականեաց զնա խոզ անտառի, և կինճ վայրենի արածեցաւ 'ի նմա»։ Այն զՄարէն և զԲաբելացւոցն ասէ. և ասա չէ զայլ ումեքէ ասել, այլ խոզ և կինճ սատանայ է և ամենայն զօրք նորա վայրենիք և անսուրբք 'ի նորին բանակէ։

Յորժամ զյափշտակող բարս նորա կամիցի յայտնել, առիւծս կոչէ. «Իբրև առիւծ, ասէ, յափշտակէ

և յածի կածէ խնդրէ թէ զո կարիցէ բեկանել և կլանել„։ Այլ յորժամ զթունաւորն և զագահողն և զատակիչ՝ օձ և կարիճ կոչէ. "Կոխեսջիք, ասէ, զօձս և զկարիճս և զամենայն զօրութիւնս թշնամւոյն„։ Այլ յորժամ միանգամայն զգազանութիւնն և զթունաւորութիւնն՝ վիշապ կոչէ, որպէս յորժամ ասիցէ. "Վիշապն զոր ստեղծեր խաղալ նմա„։ Նա և վիշապ և օձ կամակոր և իժ կոչէ զնա ընդ բազում տեղիս, քանզի ամենահնար և բազմանենգ է գազանն և յոյժ զօրութիւնս ունի, զամենայն շարժէ, զբնաւ խռովէ, զքաղաք վեր ’ի վայր կործանէ։ Արդ մի՛ ինչ երկնչիցիք, մի՛ զանգիտիցէք. հսկեցէք միայն, և իբրև զճնճղուկ մի կապով կապիցի առաջի. "Կոխեսջիք, ասէ, զօձս և զկարիճս„։ Կոխան ոտից մերոց արար զնա թէ կամիցիմք։

Այլ արդ տես որչափ ծաղր, քանի թշուառութիւն. զոր առաք հրաման ընդ ոտիւք կոխել, տեսանեմք զի ’ի վերայ գլխոց մերոց շրջի։ Այլ ուստի՞ լինիցի այն. ’ի մէնջ. թէ կամիմք մեծ լինի, և եթէ կամիմք փոքր։ Այլ թէ անձանց զգուշանայցեմք և մերում թագաւորին պատկառ կայցեմք, լինի իբրև զմանուկ մի մատաղ, եթէ մեք պնդագ ’ի մարտին կայցեմք. ապա եթէ զեղծիցիմք ինչ, մեծամեծս շնչէ մինչէ գոչէ, զատամունս կրճտէ, և վերիպեցուցանել ևս ջանայ ’ի մեծազօր օձնականութեանցն. բայց չիշխէ յարձակել, եթէ ոչ ա̄ծ տայցէ թոյլ։ Այլ թէ ’ի խոզիցն երամն չիշխեցին մտանել թէ ոչ ա̄ծ ետ թոյլ, որչափ ևս առաւել ’ի մարդկան ոգիս թողացուցանէ նմա ա̄ծ կամ վասն խրատելոյ կամ վասն վրէժս ինչ պահանջելոյ և կամ առաքինիս առնելոյ իբրև զՅոբն։ Տեսանես զի չիշխէ մերձենալ և ոչ հուպ լինել, այլ դողայ և սարսէ։

Այլ զի՞նչ ասիցեմ զՅոբայ, ուր և ոչ զՅուդայի՝ թէպէտ շողայր՝ ոչ իշխեաց մտանել մինչև ’ի սրբոյ զընդէն որոշեաց զնա Քրիստոս, և ապա ըմբռնեաց զնա բովանդակ և եմուտ ’ի նա. յայնժամ արտաքոյ եւեթ ընդհարկանէր և ’ի ներքս չիշխէր մտանել. և իբրև ետես քակեալ ’ի գեղեցիկ պատուակէն, քան զամենայն զայլ ևս սաստիկ յարձակեցաւ և չքակեցաւ՝ թէ ոչ նախ զնա սպան կրկին մահուամբ։ Այլ զայս ’ի մեր խրատ գրեալ է. ապա թէ ոչ զինչ օգուտ էր գիտել թէ մի

յերկոտասանից մատնեաց զնա, որ շահ զինչ լաւութիւն. և կարի իսկ մեծ յորժամ ուսանիցիմք թէ ուստի՞ եկն յայնպիսի սատակիչ խորհուրդ, զգուշանայցեմք և մեք չախտանալ ինչ այնպիսի ախտս: Եւ ուստի՞ եկն այն. յարծաթսիրութենէն. քանզի գող էր և ընդ երեսուն արծաթոյ վաճառեաց զտէրն. այնպէս արբեցեալ էր ախտիւն, զի զամենեցուն տէրն ընդ երեսուն արծաթոյ վաճառեաց: Ոչ ինչ չար քան զայն մոլորութիւնն կայր. որում չիքն գինք և ոչ զուգական ինչ, որում ամենայն հեթանոսք ոչ ինչ համարեալ են, զնա ընդ երեսուն արծաթոյ վաճառեաց: Չար բանութիւն է արծաթսիրութեան, անհնարին ադէտք, զոգիս քակացէ, 'ի մոաց արկանէ: Ոչ ոք այնպէս յարբեցութենէ լինի խելագար որպէս յարծաթսիրութենէ:

Աղէ ասա, զայր մի զաննշան կոչեաց զքեզ և մի յերկոտասանիցն արար վարդապետութեան արժանի, նշանս հրամայեաց առնել, բազում բարութիւնս խոստացաւ, սեղանակից վանակից, ընդ իւր ճանապարհորդ, ամենայնի հաղորդէր որպէս և այլքն: Այն ամենայն չէր բաւական զքեզ ունել, ընդէ՞ր մատնեցեր. իւ իւիք մեղադիր լինիցիս, զինչ ինչ երախտիս ոչ արար քեզ: Գիտէր զքո միտս և չդադարէր զիւր խնամսն ցուցանելոյ: Բազում անգամ ասաց թէ ոմն մատնելոց է զիս, բազում անգամ նշանակեաց զքեզ զի խնայէր 'ի քեզ. թէպէտ և գիտէր զի այնպիսի ես, չեհան 'ի գնդէն, այլ տակաւին ներէր, իբրև մտերմի և միոյ յերկոտասանիցն, այնչափ պատուէր, այնպէս սիրէր, զի յետոյ գլուխ ամենայնի զայն իսկ արար՝ զի սփածաւ զղենջակն և ամենասուրբ ձեռօքն զքոյ պղծոյ զոտս լուանայր, սակայն և այնու չկալաւ զքեզ յակաստանի. ո՜ անհնարին ժանտ առն: Գողանայիր զաղքատաց, և զի մի՛[1] յևս չարիս մտաբերիցես՝ և այն միւս համբերէր, և սակայն զքեզ ոչ հաւանեցոյց: Եթէ զազան լեալ էիր կամ քար, այնպիսի երախտեօք այնչափ սքանչելեօք պէսպէս վարդապետութեամբք զիարդ էր զի չդառնայիր: Նա և զվայրենացեալսն ևս կոչէր, և որ քան զքարինս ևս անզգայք էին՝ յորդորէր նշանօքն. սակայն դու և ոչ այնպէս 'ի լաւութիւն գայիր:

1 Յօրինակին գրեալ էր մեւս չարէս:

Մեք եւս զարմանայցէք ընդ անմտութիւն մտացն. եթէ այնպէս իցէ, երկերուք ՚ի հարուածոց արծաթսիրութեան. քանզի ընչից ցանկութիւն առաւել զնա այնպէս։ Պարուրեալ զախտ, քանզի այնպիսի ցաւս ծնանի, ամբարիշտս առնէ և լի անծանօթս պատրաստէ լինել, թէպէտ և բիւր անգամ երախտիս կրիցեմք։ Ի բաց պարուրեալ աղաչեմ, չեն դոյզն իրքն. ազգի ազգի մահս և սատակումն գիտէ ծնանել։ Լուեցարուք ընդ նորա ախտն և երկերուք, զի մի և մեք ՚ի նորայն անկանիցիմք յախտ. վասն այնորիկ գրեալ է, զի մի զնոյն ախտ ախտանայցեմք. նախ իրի իսկ ամենայն աւետարանագիրքն զնոյն պատմեցին, զի զմեզ խրատեսցեն։ Ի բաց փախիր. չէ այն միայն արծաթսիրութիւն շատին ցանկանալ, բնաւ ցանկանալն իսկ ընչից. անհնարին արծաթսիրութիւն է աւելի քան զպէտսն խնդրել։ Միթէ տաղանդ արծաթոյ էր որ հաւանեցոյց զմատնիչն. ընդ երեսուն արծաթոյ վաճառեաց։ Յիշիցէ՞ք արդեօք զի յառաջ քան զայս ասացի թէ ոչ շատն առնլովն երեւի ագահութիւն, այլ եւս առաւել սակաւոյն։ Տես որչափ չարիս գործեաց նա ընդ սակաւ ինչ ոսկւոյն. մանաւանդ թէ ոչ ընդ ոսկւոյ, այլ ընդ արծաթոյ վաճառեաց զՏէր։

Զի՞նչ հնար, քանզի և չիք իսկ, առն արծաթասիրի զՔրիստոսի երեսս տեսանել. մի յանհնարինս է, նա է արմատ ամենայն չարեացն։ Եթէ որ մի ինչ չար գործ ունիցի՝ անկանի յայնպիսի փառաց, որ արմատովն իսկ վարակեալ իցէ՝ ո՞ւր կարիցէ կալ։ Չէ մարթ ընչիցն ծառայի լինել եւս ծառայ Քրիստոսի. իւրքն իսկ Քրիստոս վճիռ ետ եթէ անհնարին իրք են. "Ոչ կարէք, ասէ, Այ ծառայել և մամոնայի". և "Ոչ կարէք երկուց տերանց ծառայել"։ Միմեանց հակառակ հրամանս տան. Քրիստոս ասէ՝ խնայեա յաղքատս, և մամոնայն ասէ՝ թէ և զմերկն եւս մերկա յափշտակէ զոր ունիցին։ Քրիստոս ասէ՝ թօթափեա զոր ինչ ունիս, և մամոնայն թէ առ զոր ինչ չունիս։ Տեսանես զդիմադարձ հակառակութիւն, տեսանես զպատերազմն. զիա՞րդ կարիցէ ոք երկոցունց հպատակ լինել, և հարկ է զի զմի ոք արհամարհիցէ։ Եւ արդ զի՞ պարտ իցէ արհամարհել, զՔրիստո՞ս եթէ զմամոնայն. չտեսանիցեմք ըզՔրիստոս արհամարհեալ և զմամոնայն պատուեալ։

գործիցի։ Վասն այնորիկ զայս առնեմ. աղօթեմք, զի 'ի միում գայցեմք վաղվաղակի։ Վասն զի և Տէր յայն սակս արար զգեհեան, զի մի 'ի գեհեն երթայցեմք, այլ զի ամենեքեան արքայութեանն հասանիցեմք. նախ իսկ զգեհենին ճառեմք, զի յարքայութիւնն առաջնորդիցեմք զձեզ, զի ահիւն կակղայցեմք զմիտս ձեր և պատրաստիցեմք լինել արժանի արքայութեանն։

Մ՛ի այսուհետև տաղտկայցէք ընդ ծանրութիւն բանիցս, զի ծանրութիւն բանիցս թեթևացուցանէ զոգիս ձեր 'ի մեղաց։ Այս և երկաթ և ուռն ծանր են, այլ կազմեն անօթս պիտանիս արծաթեղէնս և ոսկեղէնս. զի թէ չէիր ծանր, չուղղէիր ինչ արդեօք զթիւրն ինչ գործի։ Նոյնպէս և մեր բանքս թէ չէին ծանր, և ոչ ուրուք ուղղութիւն ինչ կարէին գործել։ Այլ արդ մի սակաւուցուք 'ի ծանրութենէ բանից և մի 'ի գանէն որ 'ի նոցանէն իցէ. ոչ զի մեղկիցէ և լուծանիցէ զոգիս ձանն, այլ զի ուղղութիւն ինչ գործիցէ։ Պնդեմք զմարդ սաստեմք, խմանամք զմարդ հարկանեմք զանն նոյ շնորհօքն. ոչ զի փշրիցեմք զանօթն, այլ զի ուղղիցեմք և յղկիցեմք, որպէս զի առնիցեմք պիտանացու տեառն մատուցանել նմա ըՉինչ սուրբ ձախարակեան՝ պիտանացու առ ուրն այցելութեան, յորում գեանն հրեղէն խաղայցէ։ Չիցէ ինչ պիտոյ անդ ընդ եռանդն անցանել. զի թէ աստ չանցուցանիցեմք զձեզ ընդ եռանդն, հարկ է զի անդ անցանիցէք, և չէ հնար թէ այլ ազգ վճարիցի. "Զի օրն տեառն, ասէ, հրով յայտնեսցի"։ Լաւ իցէ ձեզ մերովք բանիւքս սակաւ մի խայթել, քան թէ անդ ցանկ այրել բոցովն։ Այլ զի ստոյգ է այս և ընդնելոց է, յայտ իսկ է. քանզի ամենայն յօղեցի անվրէպ ինչ, բայց արդ և 'ի գրոց պարտ է հաւանեցուցանել։ Վասնզի բազումք ընդ հակառակս էին, 'ի մեռոց բազում ինչ ճառս յուզեցաք. և չէ ինչ արգել և այժմ, իսկ առել թէ զինչ էին զոր յայնժամ յուզեցաքն։

Զի արդար դատաւոր է Տէր՝ զայն ամենեքին իսկ խոստովանիմք և հեթանոսք և Հրեայք և հերձուածողք և քրիստոնեայք։ Այլ աստ բազում յանցաւորք առանց պատժոց գնացին, և բազում արդարք տառապանեալք 'ի պէսպէս նեղութիւնս և չև ևս առին։ Արդ եթէ արդար դատաւոր իցէ Տէր, որպէս և արդար իսկ

է, ուր նոցա բարութիւնս հատուցանէ կամ ուր նոցա պատիժս եթէ գեհեն չիցէ և յարութիւն չլինիցի: Ո՜վ այս քան ցանկ առ նոսա և առ անձինս կիրթ ունիջիք և 'ի միմեանց արկանիջիք, և չտայցէ ձեզ թերահաւատ լինել յարութեան. փութայցէ բազում զգուշութեամբ կեալ, զի և յաւիտենից բարութեանցն հասանիցէ. որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ԽՕԹՆԵՐՈՐԴ

“Զայս խորհեսցի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ, որ և 'ի Քրիստոս Յիսուս. որ 'ի կերպարանս այ՟ է, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար այ՟. այլ զանձն ունայնացոյց, զկերպարանս ծառայի առ, 'ի նմանութիւն մարդկան եղեւ և պատկերաւ գտաւ իբրև զմարդ. խոնարհեցոյց զանձն՝ լեալ հնազանդ մահու չափ և մահու խաչի: Վասն որոյ զնա ած՟ բարձրացոյց և շնորհեաց նմա անուն որ 'ի վեր է քան զամենայն անուն. զի յանուն Յիսուսի ամենայն ծունր կրկնեսցի երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց, և ամենայն լեզու խոստովան լիցի թէ տէր է Յիսուս Քրիստոս 'ի փառս այ՟ հօր„:

Մնացաւ 'ի մէնջ զհերձուածողացն. 'ի դէպ ժամանակի այժմ զմերն ասել: Նոքա ասեն՝ թէ ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ առնուլ որ չէր նորա անկ. ցուցաք թէ ամենեւին անդէպ է և անպատեհ և կորըստական է այն. զի ոչ 'ի խոնարհութիւն ոք յորդորի, և թէ ոչ զած՟ զարմանալի ցուցանէ, նա և ոչ զմարդիկ: Այլ արդ զինչ իցէ, սիրելիք. միտ դիք քանից ասացելոց:

Քանզի բազումք 'ի մարդկանէ կարծեն յորժամ խոնարհիցին և նուազ լինիցին՝ թէ յիւրեանց պատուէն

անկանիցին և նուաղիցին[1] . արդ զի զայն երկիւղ 'ի բաց քերիցէ՝ ցուցանէ թէ չէ պարտ յայնպիսի միտս կալ, ասէ զի թէ ա՛ծն միածին որ 'ի կերպարանս այ է, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ լինել հաւասար այ : Այնպիսի ինչ իցէ . զոր ինչ յափշտակիցէ ոք որ չիցէ նորա անկ՝ չիշխէ յանձնէ 'ի բաց մերկանալ, քանզի կասկածէ թէ գուցէ կորուսանիցէ և վրիպիցի յայնմանէ, այլ միշտ պինդ ունի : Իսկ որ բնակաւոր պատիւ ոք ունիցի, թէպէտ և իջանիցէ 'ի պատուոյն՝ չկասկածէ, քանզի գիտէ թէ չկրէ ինչ այնպիսի : Զի և օրինակ ինչ բերից 'ի մէջ, Աբեսողոմ յափշտակեաց զթագաւորութիւնն, և չիշխէր 'ի բաց մերկանալ : Եւ այլ ինչ օրինակեսցուք . եթէ չկարիցեն օրինակքն յանդիման կացուցանել հաւաստեաւ, ընդ այն մի ինչ դժուարիցիք . քանզի այնպիսի են օրինակքն, զբազում ինչ թողուցուն մտացն խորհել :

Յառնիցէ ոք 'ի վերայ թագաւորի և յափշտակիցէ զթագաւորութիւն : Ոչ մերկանալ 'ի բաց կարէ և թագացանել զիւրն իշխէ . և թէ մի անգամ թագուցանէ, բնաւին իսկ կորուսանէ : Կամ թէ և յայլ ինչ օրինակեսցուք . յափշտակիցէ ոք զինչս զուրուք, յամենայն ժամ պինդ առ իւր ունի . ապա թէ 'ի բաց հանէ, վաղվաղակի կորուսանէ : Եւ ամենևին իսկ զոր ինչ 'ի յափըշտակութենէ ոք ունիցի, երկնչի 'ի բաց հանել և թագուցանել և ոչ համարձակ ընդ իւր կրել : Եւ ոչ միայն որ ինչ 'ի յափշտակութենէ, բայց և այլ ազգ մարդ պատիւ ունի՝ զայն զի մարդն խօսուն և իմաստուն է : Նման չգտանեմ օրինակ . քանզի չիք ինչ առ մեզ բնակաւոր իշխանութիւն, և ոչ բարութիւնք մեր բնակաւորք . իսկ այ ամենայն ինչ բնակաւոր է :

Եւ արդ զինչ ասէ : Աստուած, ասէ, որդին չկասկածեաց իջանել 'ի պատուոյն, չհամարեցաւ յափշտակութիւն զա՛ծութեանն, չերկեաւ թէ գուցէ հանիցէ ոք 'ի նմանէ զբնութիւնն կամ զպատիւ . վասն որոյ և վստահութեամբ իսկ 'ի բաց մերկացաւ . յուսացեալ գիտէր թէ առնլոց էր, թագոյց ծածկեաց և չհամարեցաւ թէ նուաղութիւն ինչ հասանիցէ անտի նմա : Սան

1 Գրեալ էր նուաղիցին :

այսորիկ չասաց թէ յափշտակեաց, այլ թէ չհամարեցաւ յափշտակութիւն։ Ոչ թէ յափշտակութեամբ ունէր զիշխանութիւնն, այլ բնութեամբ և օրինօք և հաստատութեամբ. վասն որոյ և չհրաժարէր առնուլ զսպասաւորաց կերպարանս։ Ով ապստամբ որք բռնացեալ կասկածէ 'ի բաց հանել զթագ և զծիրանիս. իսկ որ բուն թագաւորն իցէ՝ համարձակ ունի և կամիցի։ Ընդէ՞ր. քանզի ոչ յափշտակութեամբ ունի զիշխանութիւնն. ոչ թէ յափշտակութեամբ ունիցի և չիշխիցէ 'ի բաց առնուլ, այլ որպէս զի բնութեամբ իսկ ունի, և չէ մարթ մերկանալ 'ի նմանէ։ Թագոյց զոր էրն հաւասար այ, զոր ոչ յափշտակութեամբ ունէր, այլ բնակաւոր, քանզի և ունայնացոյց զանձն։

Եւ արդ ո՞ւր իցեն որ ասեն՝ թէ բռնութիւն կրեաց և 'ի հնազանդութիւն եմուտ. "Զանձն, ասէ, խոնարհեցոյց, զանձն ունայնացոյց, հնազանդ եղև մահու չափ"։ Զիա՞րդ ունայնացոյց. զի "զկերպարանս ծառայի առ և 'ի նմանութիւն մարդկան եղև և պատկերաւ գտաւ իբրև զմարդ"։ Իսկ առ այն՝ թէ "Զմիմեանս առաւել քան զանձինս համարեսջիք", զայս ասէ՝ թէ "զանձն ունայնացոյց"։ Թէ հնազանդութիւն ինչ 'ի հարկէ կրեալ էր, նա խոնարհութեան իսկ չէին իրքն. եթէ անձամբ զանձն չէր կամեցեալ և իւրովի չէր ախորժեալ։ Կամ թէ չգիտէր իսկ թէ այնպէս ինչ լինելոց իցէ, և գտանէր անկատար. և կամ թէ գիտէր և կայր մնայր ժամանակի հրամանին, և թէ երբ լինիցի ժամանակն՝ չգիտէր. և թէ գիտէր և թէ պարտ է լինել և երբ լինիցի, ընդէ՞ր ընդ հրամանաւ կայր 'ի հարկի. միթէ զառաւելութիւն ցուցանիցէ։ Եւ ոչ եթէ զհօր առաւելութիւնն ցուցանել է, այլ զիւր նուաստութիւն։ Քանզի չէ՞ բաւական հօրն անուն ցուցանել զերիցութիւն. և առանց այսր իսկ ամենայն ինչ որ հօր է՝ նոյն և որդւոյն։ Նա և ոչ առաւել ինչ պատիւ է այն հօր քան որդւոյ։

Եւ առ այն զինչ ասիցեն հերձուածողք. ահաւասիկ, ասեն, չեղև մարդ. մարկիոնացիքն ասեն։ Այլ զինչ. 'ի նմանութիւն մարդկան, ասեն, եղև։ Զիա՞րդ իցէ 'ի նմանութիւն մարդկան լինել, սաուե՞ր ինչ զանձամբ արկանել։ Թէ այնպէս իցէ, պատկեր ինչ էր և

ոչ նմանութիւն մարդոյ. քանզի մարդոյ նմանութիւն միւս եւս մարդ է։ Այլ առ Յոհաննու բանն զի՞նչ ասիցես որ ասէ՝ թէ "Բանն մարմին եղեւ"։ այլ և այն իսկ երանելի այլուր ասէ՝ թէ "Ի նմանութիւն մարմնոյ մեղաց և կերպարանօք գտաւ իբրև զմարդ"։ Նշանակիկ, ասեն, և կերպարանօք եղև իբրև զմարդ, և այն չէ մարդ ճշմարիտ իբրև զմարդն. զի կերպարանօքն լինել մարդ՝ չէ բնութեամբ լինել մարդ։

Տեսանէք որչափ մտադիւրութ̃ զթշնամեացն բանս 'ի մէջ բերեմք. զի սերտ յաղթութիւն և յոլովագոյն այն է յորժամ զոր նոցայն կարծին թէ զօրագոյնք իցեն՝ չթագուցանեմք, զի այն խաբէութիւն է առնել և ոչ յաղթութիւն։ Զի՞նչ ասիցէ, դարձեալ զնոյն վերստին առցուք։ Կերպարանօք, ասեն, չէ բնութ̃, և իբրև զմարդն և 'ի նմանութիւն մարդոյն լինել՝ չէ մարդ լինել։ Այլ արդ զի՞նչ, միթէ զկերպարանս ծառայի առնուլ՝ չիցէ զկերպարանս ծառայի առնուլ։ Եթէ այնպէս իցէ՝ կռիւ 'ի միջի կայ, և ընդէ՞ր ոչ դու նախ զայն լուծանիցես. որպէս դու կարծես թէ այն ինչ մեզ հակառակ ինչ իցէ, նոյնպէս և մեք ասեմք թէ այն քեզ հակառակ է։ Քանզի չասաց թէ իբրև զկերպարանս ծառայի, և ոչ 'ի նմանութիւն կերպարանաց ծառայի, և ոչ 'ի պատկեր կերպարանաց ծառայի. այլ թէ զկերպարանս ծառայի առ։ Այլ արդ զի՞նչ իցէ. քանզի և կռիւ իսկ կա՛յ 'ի միջի. այլ և ոչ մի ինչ կռիւ, քաւ լիցի։ Այլ արդ տես զցուրտ և զծաղու արժանի բանն. զկերպարանս ծառայի առ, ասէ, յորժամ զգենջակն առ և սկսաւ զոտս աշակերտացն լուանալ։ Կերպարանք ինչ ծառայի էին. չէին կերպարանք, այլ գործ ծառայի. այլ ինչ է զկերպարանս ծառայի առնուլ։ Ընդէ՞ր, ասեն, չասաց թէ զգործ ծառայի արար, որ յայտնագոյն էր։ Զի և ոչ ուրեք 'ի գիրս զկերպարանս փոխանակ գործոյ ասէ. քանզի բազում ինչ կայ 'ի միջի, զի մին բնութեան է և միւսն ազդեցութեան. քանզի և ըստ սովորութեան և ոչ ուրեք զկերպարանս փոխանակ գործոյ ասեմք կամ առնումք։ Այլ այլ ազգ ևս, և ոչ զգործն առ յանձն ըստ նոցա և ոչ զգենջակն սփածաւ. զի եթէ առ աչօք ինչ էին, և ոչ ճշմարտութեամբ. զի եթէ ձեռս չունէր, զիա՞րդ զգենջակն սփածանէր, զո՞ր

հանդերձ առ 'ի բաց։ Որպէս զի ոչ գործ ինչ գտանի անդ գործեալ ըստ նոցա բանդագուշանացն, և ոչ լուաց զոտս աշակերտացն։ Զի եթէ անմարմին բնութիւնն չէր երևեալ 'ի մարմնի, չէր ոք որ զոտս աշակերտացն լուանայր։

Այլ առ Պաւղոս սամոսատացին զինչ իցէ ասել. զինչ ասիցէ և նա։ Այլ նա զնոյնս. այլ չէ այն ունայնանալն որ ինչ բնութեանն մարդկան իցէ, և մարդոյ լոկոյ զոտս խրոց ծառայակցացն լուանալ։ Զոր ինչ առ արիանոսս ասացաք, զնոյն և առ սոսա 'ի դէպ է ասել. քանզի չեն ինչ հեռի 'ի միմեանց, այլ սակաւ ժամանակաւ, զի և նոքա և սոքա արարած ասեն զորդին այ։ Այլ արդ զինչ ասիցեմք առ նոսա։ Եթէ մարդ զմարդիկ լուաց, ապա ոչ ունայնացոյց և ոչ խոնարհեցոյց զանձն. եթէ մարդ է և չյափշտակեաց լինել հաւասար այ, չէ ինչ գովելի. այլ զի ածն է և մարդ եղև, այն կարի խոնարհութիւն է և այնչափ ունայնանալ անճառ և անպատում. այլ մարդոյ զմարդկան գործ գործել զինչ խոնարհութիւն է։ Այլ ո՞ւր է զի կերպարանքն այ իցէ որ գործն այ կոչի։ Զի թէ մարդ լոկ իցէ և վասն գործոյն միայն ասիցի կերպարանք այ, ընդէ՞ր և զՊետրոսէ զնոյնս չասիցեմք, զի մեծամեծս ևս քան զնորայսն գործեաց։ Ընդէ՞ր և զՊաւղոսէ չասիցեմք եթէ պատկեր այ է. զմե՞ և զանձնէ ինչ չետ Պաւղոս որ բազում ինչ ծառայաբար գործեաց և չհրաժարեաց երբէք զանձն ծառայ կոչել. "Ոչ եթէ զանձինս ինչ քարոզեմք, ասէ, այլ զՅիսուս Քրիստոս տէր և զմեզ ծառայս ձեր վասն Քրիստոսի"։ Արդարեւ ծաղու արժանի են այնպիսի բանք և անօգուտ շաղխօսութիւն։

Զինչ իցէ ունայնացուցանել զանձն, և ո՞րպէս ունայնացոյց. զինչ իցէ խոնարհութիւնն, միթէ զի սքանչելիսն արար. Զայն և Պաւղոս և Պետրոս արարին. որպէս զի չէ այն ինչ որդւոյ առաւելութիւն։ Զինչ իցէ "Ի նմանութիւն մարդկան եղև"։ Զբազո՞ւմ ինչ ունէր զմեր, և շատ ինչ չունէր. այսպիսի ինչ, յամուսնութենէ չծնաւ իբրև զմեզ, մեղս չարար. այսու առաւել էր քան զամենեսին, որ չէ ուրուք 'ի մարդկանէ։ Չէր որ ինչ երևէրն միայն, այլ և ածութիւնն էր 'ի մարմնին. երևէր իբրև զմարդ, այլ չէր նման բազմաց.

զմարմինն նման ամենեցուն ունէր, և այլովն ոչ համա-
գոյն ամենեցուն։ Եւ արդ զայն ասէ թէ չէր մարդ լոկ.
վասն այնորիկ ասէ «Ի նմանութիւն մարդկան»։ Ի
մեզ շունչ և մարմին է, և ՚ի նմա Ածութիւն և շունչ
և մարմին. վասն այնորիկ ասէ «ի նմանութիւն մարդ-
կան»։ Զի մի յորժամ լսիցես եթէ ունայնացոյց
զանձն՝ փոփոխումն ինչ և եղծումն և ապականութիւն
կարծիցես, մնաց, ասէ, զոր ինչ էրն, և առ զոր ինչ
չէրն. և մարմին եղև՝ և կաց մնաց նոյնպէս բան Ած. և
է նոյն, որպէս զի և այսու իսկ նման է մարդկան։ Եւ
նմին իրի ասէ՝ թէ կերպարանօք. և ոչ թէ բնութիւնն
փոխեցաւ, և ոչ թէ շփոթութիւն ինչ կամ քայքայումն
եղև, այլ զկերպարանս արկ զիւրև, և ոչ թէ ցնորք
ինչ առ աչօք։

Յորժամ ասաց թէ զկերպարանս ծառայի առ, այ-
նուհետև վստահութեամբ և զայլն ևս ասէ, որպէս
զի այն իսկ բաւական իցէ ըմբերանել զհակառակորդսն։
Նա և յորժամ ասիցէ «Ի նմանութիւն մարմնոյ մե-
ղաց», ոչ զայն ինչ ասէ թէ մարմին չունէր, այլ մար-
մինն այն ոչ մեղաւ, բայց նման էր մեղաւորի մարմնոյ։
Ի՞ւ էր նման. ըստ բնութեանն և ոչ ըստ չարութեանն.
վասն այնորիկ նման է մեղաւորի մարմնոյ։ Արդ զոր օ-
րինակ անդ նմանն՝ վասն զի ոչ ամենայնիւ հաւասար է,
նոյնպէս և աստ նմանութիւնն՝ վասն զի ոչ ամենայնիւ
նոյնպէս էր. այսպիսի ինչ՝ զի ոչ էր յամուսնութենէ,
զի առանց մեղացն էր, զի չէր լոկ մարդ։ Եւ բարիոք ա-
սաց թէ իբրև զմարդ, քանզի չէր մի ՚ի բազմաց, այլ
իբրև զմի ՚ի բազմաց. քանզի ոչ եթէ ՚ի մարդ դարձաւ
Ածն բան և ոչ էութիւնն շրջեցաւ, այլ իբրև զմարդ
երևեցաւ. ոչ առ աչօք ինչ պատրելով զմեզ, այլ ՚ի խո-
նարհութիւնն խրատելով։ Արդ յորժամ ասիցէ թէ
իբրև զմարդ՝ զայս ասէ. քանզի և այլուր ասէ զնմանէ
իբրև զմարդ, յորժամ ասիցէ՝ թէ «Մի է Ած և մի է
միջնորդ մարդկան Յիսուս Քրիստոս». առ նոսա է ա-
սացեալ։ Եւ առ այնոսիկ որ չասեն թէ շունչ առ, կա-
րևոր է ասել զայս. զի թէ կերպարանքն Այ կատարեալ Ած
իցէ, ապա և կերպարանքն ծառայի կատարեալ ծառայ։

Դարձեալ և առ արիանոսն ասի այս վասն Ածու-
թեանն. զի ոչ ուրեք զեղևն ասէ անդ և ոչ զառն. այլ

'ի կերպարանս, ասէ, այ է, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար այ։ Իսկ զմարդկութենէն ասէ զառն և զերևեալն. զայս եղև և զայն առ, զի այն էր իսկ։ Մի՛ շփոթեսցուք և մի՛ անջրպետ 'ի մէջ արկցուք. մի է ած և մի է Յիսուս Քրիստոս որդի այ։ Զմին յորժամ ասիցեմ, միութիւն խոստովանիմ և ոչ քայքայութիւն ինչ, կամ լուծումն այսր բնութեան յայն՝ կամ այնր յայս, այլ միացեալ մի լեալ։

"Խոնարհեցոյց, ասէ, զանձն. հնազանդ եղև մահու չափ և մահու խաչի„։ Ահաւասիկ, ասեն, հնազանդ եղև, և չէ հաւասար այնմ որում հնազանդն եղև։ Նուազեցուցանէ զնա այնու, ապախտաւորքդ և անհանձարեղք. նա և մեք մերոց բարեկամաց հնազանդիմք, և չառնէ ինչ այն զմեզ նուազագոյնս։ Այլ իբրև որդի հօր հնազանդեցաւ, ոչ իբրև 'ի ծառայական ինչ պատիւ իջեալ. այնու առաւել պահեաց զարմանս սիրոյն և բազում պատուոյ առ հայր։ Պատուեաց ըզհայր. ոչ զի դու անարգիցես զնա, այլ զի առաւել զարմանայցես, և այնու իմանայցես թէ ստոյգ և սերտ որդի է առ 'ի քան զամենեսինն առաւել պատուելոյ ըզհայր։ Ոչ ոք այնպէս պատուեաց զած։ Որչափ ունէր բարձրութիւն, նոյնչափ ըստ նմին համեմատութեան եցոյց զխոնարհութիւն։ Որպէս և մեծն քան զամենեսին է և չիք ոք նման զուգական, նոյնպէս և 'ի պատուելն զհայր անց զամենեքումբք, ոչ 'ի հարկէ ինչ և ակամայ. այլ և այս նորին առաքինութեան է, և կամ թէ ասել ինչ որպէս պարտ իցէ՝ չգիտեմ ինչ ասել։ Բարէ, մեծ և այն իսկ էր ծառայն լինել և կարի իսկ անճառ, այլ մահու ևս չափ հնազանդ լինել՝ ևս առաւել մեծ։

Բայց է և այլ ևս ինչ ևս մեծ և նորանշան։ Զինչ. զի և մահն ոչ նման այլոց մահուց. այլ որ քան զամենայն մահն ևս նախատանաց թուի և անօթոյ և անիծից. "Անիծեալ լիցի, ասէ, ամենայն որ կախեալ կայցէ զփայտէ„։ Վասն իրի իսկ և Հրեայքն այնու փութացան սպանանել զնա, զի առաւել յաճախիցեն զնախատինսն. և 'ի սպանանելն մի ոք հպեսցի 'ի նա, այլ իբրև զչարագործ մեռանիցի։ Վասն այնորիկ և երկուս աւազակս հանին ընդ նմա 'ի խաչ, զի հաղորդ երևե-

ցի կարծեաց նոցա, և կատարեսցի բանն թէ " ընդ անօրէնս համարեցաւ ": Այլ այնչափ առաւել ծագէ ճըշմարտութիւնն, այնչափ պայծառագոյն երևի. զի յորժամ այնչափ հնարք 'ի թշնամեացն հակառակ փառաց նորա կազմիցին, նա ևս քան զևս լուսաւորիցի և մեծապայծառ երևեսցի: Այլ նոքա ոչ միայն սպանանելովն, այլ և այնպէս սպանանելով կարծէին զարշելի ամենեցուն առնել զնա, բայց սակայն ոչ ինչ վճարեցին: Նա և աւազակքն երկոքեան այնչափ ժանտք էին, թէպէտ և մին յետոյ դարձաւ, զի և 'ի խաչին էին և նախատէին զնա, և ոչ խիղճ իւրեանց չարեացն և ոչ զի ինքեանք ևս 'ի նմին տանջանս և 'ի չարչարանս էին՝ զիջոյց զնոսա 'ի մոլորութենէն, մինչև մին ցմիւսն ասէր՝ և ընթերանէր թէ և յա՞յ չերկնչիս զի և մեք 'ի նմին դատաստանի եմք: Որչափ վառեալ էին չարեաք:

" Վասն որոյ, և ասէ, թէ ա՟ծ զնա բարձրացոյց և շնորհեաց նմա անուն որ 'ի վեր է քան զամենայն անուն ": Յորժամ զմարմնոյն բուռն հարկանէ երանելին Պաւղոս, զամենայն խոնարհագոյնս այնուհետև համարձակագոյնս բարբառի: Մինչ չև ասացեալ էր եթէ զկերպարանս ծառայի առ՝ համարձակ զա՟ծութենէն խօսէր. և տես զկարգ բարձրագոյն ասէ ըստ կարի, այլ ըստ պատուին նորա չխօսի, քանզի և կարէ իսկ ոչ: " Ի կերպարանս, ասէ, ա՟յ է, և չհամարեցաւ յափշտակութիւն զլինելն հաւասար ա՟յ ": Քանզի ասաց եթէ մարդացաւ մարդանման եղև, ապա համարձակագոյնս իսկ զխոնարհագոյնսն բարբառի. վստահ է թէ չվնասէ ինչ ա՟ծութեանն խոնարհագոյնս խօսել զմարմնոյն, որով զայնս ընդունէր: " Վասն որոյ, ասէ, և ա՟ծ զնա բարձրացոյց և շնորհեաց նմա անուն որ 'ի վեր է քան զամենայն անուն. զի յանուն Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեսցի երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց, և ամենայն լեզու խոստովան լինիցի՝ թէ տէր է Յիսուս Քրիստոս 'ի փառս ա՟յ հօր ": Ասասցուք առ հերետիկոսսն. թէ մերկ զայն բանէն ասիցէ զայս առանց մարմնոյն, զիա՞րդ բարձրացոյց զնա, աւելի՞ ինչ տալով արդեօք բարձրացոյց: Ո՛չ է այնպէս իցէ, անկատար էր և վասն մեր պատուեցաւ. և եթէ մեզ չէր բարի արարեալ, չհատանէր 'ի պատիւ: " Այլ

շնորհեաց, ասէ, նմա անուն,,։ Ահաւասիկ անուն եւս չունէր ըստ ձերոց մտացդ, և եթէ պարտ ինչ առ՝ գտանի զի շնորհօք և պարգեւօք և զանունն եւս առ։ "Որ ՚ի վեր է քան զամենայն անուն,,. զո՞ր. տեսցուք և զանուն։

"Զի յանուն Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեսցի,,։ Անուն նոքա զփառսն կոչեն, և այս փառք ՚ի վերոյ իցեն քան զամենայն փառս։ Փառք այն իսկ են՝ երկիրն պագանել նմա։ Հեռի էք յայն մեծութենէն դուք որ կարծէք գիտել զա̃ծ որպէս ինքն զինքն գիտէ. և յայնմանէ իսկ յայտ է որչափ հեռի էք ՚ի մտաց։ Ո՞րպէս զա̃ծ պարտ իցէ իմանալ, աղէ ասա. փառքս այս մինչ չև մարդիկ լեալ էին և հրեշտակք և հրեշտակապետք՝ ո՞ւր էին, միթէ չէր ՚ի փառս։ Զի թէ այս փառք իցէ ՚ի վեր քան զամենայն փառս, քանզի նոյն իսկ է "՚ի վեր քան զամենայն անուանս,,, յայտ իսկ է թէ էր ՚ի փառս, բայց ՚ի նուազագոյն ինչ քան զայս փառս. եթէ այսպէս իցէ, վասն այնորիկ արար զամենայն, զի եւս փառաւոր լինիցի. ապա ոչ բարերարութեան, այլ զի կարօտ էր առ ՚ի մէնջ փառաց։ Տեսանե՞ք զանմտութիւնն, տեսանէ՞ք զամբարշտութիւնն։ Զմարմնոյն ՚ի դէպ ասել զայս, քանզի առնու յանձն ա̃ծն բան զիւրոյ մարմնոյն ասել զայս։ Քանզի ոչ եթէ մերկ ՚ի բնութիւնն ա̃ծութեանն յարի այս, այլ ՚ի տեսչութիւնն զոր իւրով մարմնովն կատարեաց։ Որպէս զի յորժամ ասիցէ եթէ արար ա̃ծ զմարդն անմահ, թէպէտ և զողջոյն իսկ զմարդոյն ասիցեմ, գիտեմ զինչ ասեմ։ Զինչ իցէ "երկնաւորացն և երկրաւորաց և սանդարամետականաց,,. այսինքն ամենայն աշխարհ և հրեշտակք և մարդիկ և դեւք, և կամ թէ զի և արդարք կենդանիք և մեռեալք։

"Եւ ամենայն լեզու խոստովան լիցի՝ թէ տէր է Յիսուս Քրիստոս ՚ի փառս ա̃յ հօր,,. այսինքն զի ամենեքեան զայն ասիցեն. և այն իսկ են փառք հօր։ Տեսանե՞ս զի ամենայն ուրեք յորժամ որդի փառաւորի, հայր փառաւորի. նոյնպէս և յորժամ որդի անարգի, հայր անարգի։ Եթէ առ մեզ այսպէս է, ուր բազում ինչ կայ ՚ի միջի ընդ հարս և ընդ որդիս, որչափ առաւել եւս առ ա̃յ ուր չիք ինչ ՚ի միջի, ՚ի նա անցանէ և պատիւն և թշնամանք։ Եթէ աշխարհքս հնազանդեսցի որդւոյ,

այն հօրն փառք են։ Եթէ այնպէս է, և յորժամ ասեմք եթէ կատարեալ և անկարօտական և չէ ինչ ընդհատ 'ի հօրէ, և այն փառք են հօր։ Զի այնպիսի ծնաւ զորդի, և այն զօրութեանն իսկ նորա մեծ նշանակ է և բարերարութեանն և իմաստութեանն, զի չէ նուազագոյն բարերարութեամբն և իմաստութեամբն։ Եւ յորժամ՝ ասեմք եթէ իմաստուն է իբրև զհայր և ոչ երբէք թերի, և այն բազում իմաստութեանն հօր է նշանակ. և յորժամ ասիցեմք թէ հզօր է իբրև զհայր, և այս զօրութեան նորա է նշանակ. և յորժամ ասիցեմք եթէ բարերար է իբրև զհայր, և այն բարերարութեան նորա է մեծ օրինակ զի այսպիսի ծնաւ զորդի, ոչ թերի ինչ և ոչ կարօտ։ Եւ յորժամ ասիցեմք թէ չէ նուազագոյն ըստ էութեանն, այլ զուգական, և ոչ յայլմէ էութենէ, և այնու դարձեալ զարմանամք ընդ զօրութիւն և ընդ բարերարութիւնն և ընդ իմաստութիւնն ա̃յ, զի միւս ևս նոյնպիսի յիւրմէ եցոյց մեզ, բայց միայն զի հայր չէ որդի։ Որպէս զի որչափ ասիցեմք ինչ մեծամեծս զորդւոյ, ամենայն 'ի հայր անցանէ։ Զի եթէ փոքր ինչ և նուազագոյն, քանզի կարի իսկ փոքր է 'ի փառս ա̃յ ամենայն աշխարհի նման երկիր պագանել. եթէ այն 'ի փառս ա̃յ լինիցի, որչափ ևս առաւել այլն ամենայն։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Հաւատասցուք այսուհետև 'ի նորա փառսն, և կեցցուք կեանս 'ի նորուն փառս. ապա թէ ոչ՝ չիք ինչ օգուտ յերկոցունց։ Որպէս զի յորժամ փառաւորիցեմք բարիոք, և չունիցիմք բարիոք վարս, յայնժամ առաւել թշնամանեմք զնա. զի առնումք 'ի գլուխ այնպիսի տէր և վարդապետ, և արհամարհեմք և չերկնչիմք յահագին ատենէն։ Զի հեթանոսաց անսուրբ ինչ վարս վարել՝ չէ ինչ զարմանալի և ոչ այնչափ ստգտանաց արժանի. բայց քրիստոնէից, որ յայնչափ խորհուրդս վայելեցին և յայնպիսի փառս, և անսուրբ ինչ վարս վարիցեն, այն իսկ են քան զամենայն ինչ անհնարին աղէտք։

Աղէ ասա, հնազանդեցաւ զվերջին հնազանդութիւն, վասն այնորիկ առ զվերին պատիւն. զոր ունէրն ըստ

ծութեանն, զնոյն առ և ըստ մարդկութեանն։ Ծառ-
այ եղև, վասն այնորիկ և տէր է ամենեցուն հրեշտա-
կաց և այլոցն բոլորեցունց։ Ոչ վարձս ինչ ընդ հնա-
զանդութեանն առ զայն, քանզի էր իսկ 'ի բնէ տէր ա-
մենայնի. այլ զի մեզ հաստատիցէ դնիցէ օրինակս ա-
ռաջի, որպէս զի մի համարիցիմք 'ի պատուոյ անկանել,
յորժամ զանձինս խոնարհեցուցանիցեմք. յայնժամ
է առաւել բարձրանալ, յայնժամ 'ի դէպ է զարմանա-
լի լինել։ Եւ զի բարձրն խոնարհ է և խոնարհն բարձ-
րագոյն, բաւական է Քրիստոսի իսկ վճիռն հաւատա-
րիմ առնել. բայց և մեք քննեսցուք զիրսն։

Զինչ իցէ խոնարհելն. ո՞չ ապաքէն պարսաւն լի-
նել և բամբասելն և 'ի չարախօսութիւն անկանել։ Զինչ
իցէ բարձրանալն. պատուելն, գովելն, փառաւոր լինել։
Տեսցուք թէ զիարդ այն լինիցի։ Հրեշտակ էր սատա-
նայ, բարձրացոյց զանձն. և արդ զիա՞րդ. ո՞չ ապաքէն
ևս առաւել քան զամենեսին խոնարհեցաւ. ո՞չ ապաքէն
զերկիր ունիցի 'ի բնակութիւն. ո՞չ ապաքէն յամենե-
ցունց բամբասի և դսրովի։ Արդ էր Պաւղոս, և խո-
նարհեցոյց զանձն, և արդ չիցէ՞ սքանչելի, չգովիցի՞, չը-
գրաւատիցի՞, չիցէ՞ բարեկամ Քրիստոսի. չգործեա՞ց ևս
մեծամեծս քան զոր Քրիստոսն գործեաց. ո՞չ իբրև
ստրկի միում բազում անգամ սաստէր սատանայի, ո՞չ
իբրև զգաւհիկ մի արտահալած խուճապէր. ո՞չ իբրև
հաւու՝ խաղայր նովաւ. ո՞չ ապաքէն ջախջախեալ ու-
նէր զգլուխ վիշապին ընդ ոտիւք. ո՞չ ապաքէն և այլոց
ևս աղօթս առնէր, զի բազում համարձակութեամբ
զնոյն առնիցեն. և այլ զի՞նչ ևս ասացից։

Վերացոյց զանձն Աբեսողոմ, խոնարհեցոյց զանձն
Դաւիթ. ո՞ բարձրագոյն եղև, ո՞վ ոք փառաւոր։ Զինչ
ինչ քան զայն բանս խոնարհութեան կայր՝ զոր առ Սե-
մէի խօսեցաւ երանելին՝ թագաւոր և մարգարէ. «Թո՛յլ
տուք դմա, ասէ, անիծանել. տէր հրամայեաց դմա
զայդ»։ Եւ հաւաստեաւ իսկ քննեսցուք զիրսն, թէ
կամիցիմք. խոնարհեցոյց զանձն մաքսաւորն, թէպէտ և
ոչ խոնարհութեան իրք էին, այլ միամիտ բարեբարու-
թեամբ խօսէր. և տես զի արդարացաւ. բարձրացոյց
զանձն փարիսեցին։ Բայց և այլ ազգ ևս քննեսցուք
զիրսն։ Դնեսջիր եթէ իցեն արք երկու, և երկոքին մե-

ծառատունք և 'ի բազում փառաւորութեան և յիմաստութեան և 'ի հարստութեան, և յայլ ինչ յաշխարհական իրս յոլովագոյնք. և առաջ մեր յամենեցունց պատիւ խնդրեսցէ. և եթէ չառնուցու՝ բարկանայցէ, և աւելի ինչ քան զդէպն խնդրիցէ, և առ աւագս ունիցի զանձն. և միւսն չհամարիցի ինչ զիրսն, և ոչ դըժկամակ լինիցի ընդ քամահանս ուրուք, այլ թէպէտ պատիւ ոք տանիցէ, զայն 'ի բաց մերժիցէ, ո՞վ ոք յերկուցունց գովելի իցէ. ո՞չ ապաքէն որ չիցէ զհետ փառաց:

Զմարթի այլ ազգ հասանել փառաց՝ եթէ ոչ փախչելովն 'ի փառաց. մինչ մեք զնոքա հետ իցեմք, փախչի 'ի մէնջ. և յորժամ թողուցումք, զհետ լինի և հասանէ. և եթէ կամիցիս փառաւոր լինել, մի ցանկար փառաց. և եթէ կամիս բարձրագոյն լինել, մի ունիր զանձնդ առ աւագս: Այլ այլ ազգ ևս. որ զպատիւ չխնդրիցէ, զնա ամենեքին պատուեն. և որ խնդրիցեն՝ յամենեցունց արհամարհի. քանզի այնպէս իմն է ազգ մարդկան վէս և ընդ հակառակս: Այլ արդ արհամարհեսցուք զփառս, զի այնպէս կարիցեմք լինել խոնարհք, մանաւանդ թէ բարձրագոյնք իսկ:

Մ՚ի ունիր զանձն առ լաւս, զի յայլոց մեծարիցիս. որ անձամբ զանձն վերացուցանէ, յայլոց չվերանայ. և որ անձամբ զանձն խոնարհեցուցանէ, յայլոց վերանայ: Մե՛ծ չարութիւն է հպարտութիւն. լաւ է մոլորանալ քան հպարտանալ. զի անդ՝ մոլորութիւն միայն է յանմտութենէ, և աստ՝ ևս չար մոլորութիւն և մոլութի՛ւն: Ո՛չ անձին ևեթ չար է. հպարտն և ընկերացն ապականութիւն. անմտութիւն յայնմ ախտէ ծնանի. չիք հնար առն մեծամտի լինել իմաստուն, այլ հարկ է անմիտ լինել հպարտացելոյն: Այլ զի այս այսպէս, յայտ իսկ է. բնաւ կարծելն թէ իցէ ինչ, չիցէ՞ անմտութի՛ւն. և հպարտքն միշտ այնպիսի միտք են: Լուր և իմաստնոյն. «Տեսի, ասէ, զայր մի պանծացեալ յանձն թէ իմաստուն իցէ, բայց առաւել յոյս գոյր յանմտին՝ քան 'ի նմա»:

Տեսանե՞ս, զի ոչ վայրապար ասացի՝ թէ ևս չար քան զմոլորութիւնն է այնպիսի չարութիւն: «Յուսալ յոյս գոյ, ասէ, յանմտին քան 'ի նմա»: Վասն այնորիկ և Պաւղոս ասէր. «Մ՚ի լինիք իմաստունք յանձինս ձեր»:

Նզէ ասա, և 'ի մարմնոյ իւրի զոր առիցեմք առաջի. ըզ-յոյրսն և զուառուցեալսն և զՔրադողեալսն, եթէ զնըր-բատարսն[1] և զկաղսն և զձողսն, որոց հարթ և ամփոփ իցէ տարրն։ Ոչէ այնպէս իցէ, և յոգիս՝ ուսուցեալն ևս չար յախտի է քան զՔրգողեալսն, և հեզն ազատ յամե-նայն ախտէ։

Որչափ ինչ բարութիւնս ծնանիցի մեզ խոնարհու-թիւնն. զինչ կամիցիս. սէր չունել, անցաւումն լինել, մարդասիրութիւն, արթնութիւն, մտադիւրութիւն. այս ամենայն բարիք 'ի խոնարհութենէն են, և սոցին հակառակք 'ի հպարտութենէ։ Հարկ է այնպիսւոյն թշնամանիչ լինել և հարկանող և բարկացող և դառն և անհամբեր, գաղան մանաւանդ և ոչ մարդ։ Ուժգին իցես, և յայն սակս մեծամտիցես. թէ այսպէս իցէ, վասն այնորիկ առաւել պարտիս խոնարհել։ Ոչ չնչին իրօքն մեծամտիցես. քանզի և աւիծ գազանագոյն քան զքեզ է և վարազ ուժգնագոյն, և իբրև զմժիխս մի ես առ նոքօք. և աւազակք և գերեզմանակրկիտք և 'ի վերս եկեալքն և ծառայքն իւր քո, և թերևս որ կա-րին իսկ անագաչք և չարաբարոյքն իցեն՝ զօրագոյն քան զքեզ իցեն. և այն գովութեան ինչ արժանի իցեն, և չկայցես ծանակ այնպիսի ինչ իրօք մեծամտել։

Նայլ թերևս գեղեցիկ իցես և բարեձայն ոք. և այն աղջկանց նագանք են. բայց սակայն քան զխրամարգ գեղեցիկ չիցես, և ոչ այնպէս ծաղկալից համապայծառ թեւս ունիցիս իբրև զայն թաչուն, որ վարսիւքն և գի-սակօքն, որ խորձնացեալ և խազմնեալ կարակնեալ բազ-մածանակ ստամոքն յաղթէ քեզ գեղեցկութեամբ։ Նա և փոքն կարի իսկ գեղեցիկ է, և այլք ևս բազումք 'ի թաչնոց, ընդ որս թէ կամիցիս անցանել 'ի հանդիսի՝ ոչ ինչ ամենևին առաւանիցես զանձն։ Նաղում անգամ և մատաղ մանկունք, և աղջկունք՝ անփորձք յամուսնու-թենէ, և պոռնիկ կանայք և որք կանացիք իգացեալք նազէցան այնպիսի պարծանօք. և արդ այն պարծանաց ինչ արժանի իցէ կամ մեծամտութեան։

Այլ թերևս զի մեծատուն իցես՝ հպարտանայցես. ուսոյ իցէ զոր ունիս, և կամ զինչ ունիցիս. ոսկի,

1 Այլազէս յօրինակին։

արծաթ, ականս պատուականս. այն և աւազակաց և սպանողաց պարծանք են, և ոսկեհանաց և որք 'ի քրէական մետաղսն խոնջիցին, և այն պարծանք ինչ իցեն ։ Ոչ երբեք զարդու՞ք ինչ և պաճուճանօք հպարտանայցես. զայն և 'ի ձիսն է տեսանել. պարսիկք և զշառաւունան[1] ևս նկարեն և պաճուճեն. այլ 'ի մարդկան միջի 'ի բոզանոցս եւեթ վայելեն այնպիսի պաճուճանք, ուր պատիրքն և որոգայթքն են ։ Զամաչես, չթրջիս այնպիսի իրօք հպարտանալ, որով և անասունքն հանգոյն քեզ լինիցին, և ծառայք և սպանողք և կանացիք և աւազակք և գերեզմանակրկիտք ։

Այլ 'ի տո՞ւնս ինչ գեղեցիկս պարծիցիս. բազում թռչունք ևս 'ի գեղեցիկ տունս բնակեն. մանաւանդ ճայք ևս առաւել պայծառագոյն քան զքո տունսն ունին բնակութիւնս ։ Այլ թերևս ձայնիւ ինչ հպարտանայցես. քան զփորն և զտխակ և զասպուճակ չկարիցես երբէք ձայն ինչ քաղցր և հեշտական մրմնջել ։ Այլ թերևս պէսպէս արուեստիւք. և ո՞վ ոք յայնմ զմեղուօք[2] զճարտարկօք անցանիցէ. ո՞ր դրօշագ, ո՞ր նկարիչ, ո՞ր գետնաչափ[3] գտանիցի քան զնոսա իմաստուն, որ կարիցէ ճարտարութեան մեղուաց նմանել ։ Այլ թերևս բարակ ինչ հանդերձիւք. այնու սարդք իսկ անցանեն զանցանեն զքև ։ Այլ թերևս ոտից արագութ՟բ. և այնու ևս անասունք զլեն, մանաւանդ նապաստակքն և այծեմունք, և այլ ևս ինչ յանասնոց՝ որ արագ իցեն ոտիւք ։ Այլ թերևս 'ի տա՞ր աշխարհ ինչ երթալով. և այնու թռչունք իսկ անցանեն զքև, մանաւանդ խորդք և ծիծառունք, որ դիւրաւ հարկանեն զատարաշխարհական ճանապարհս. ոչ պաշար բառնան, և ոչ զբառնառ կարօտանան, այլ ընդ ամենայնի բաւական են նոցա թեւքն. նովին և նաւ և զրաստ ինչ և կառք և հողմք և ամենայն զինչ և իցէ՝ արագագոյնք են քան զքեզ ։ Այլ թերևս քաջատեսութեամբ ինչ հպարտանայցես. այլ ոչ ինչ ժամանես այծեմանն և արծուոյ ։ Ոչ երբեք զի՞ արագ լսիցես. այլ չլիցես սուր ականջօք քան զէշ ։ Այլ թերևս հոտ քաջ առնուցուս. այլ չկարես անցանել

1 Միւսն [illegible] . . Զամ. [illegible] ։

2 Ցաւելուն օրինակքն ե ։

3 Միւսն գետնաչափ ։

զչարն։ Այլ թերեւս զի գործօ՞ն և համբերող իցես. այլ չես ձեռնհաս լինել անդադար իբրև զմրջիւն։ Այլ թերևս զի տկլի բազում յանձին ունիցիս. այլ ոչ որպէս զհնդիկ մրջիւնն։ Իսկ առողջութք և երագահալութք յոյժ իսկ առաւել են քան զմեզ անասունք. և անհոգութեամբ ևս չերկնչին երբէք յաղքատութենէ, չկասկածեն ՚ի կարօտութենէ։ "Հայեցարուք, ասէ, ընդ թռչունս երկնից, զի ոչ սերմանեն և ոչ հնձեն և ոչ ժողովեն ՚ի շտեմարանս„։ Ոչէ այնպէս իցէ, ասեն, քան զմեզ՝ զանասունս լաւագոյն արար ած։ Տեսանե՞ս որչափ ինչ վնաս իցէ չգիտել զքննելն. տեսանե՞ս որչափ ինչ շահ է մեզ իրացն քննութիւն. որ քան զամենայն մարդիկ առաւել մեծամեծէր, գտաւ և քան զանասունս ևս խոնարհագոյն. այլ խնայեսցուք ՚ի նա և չնմանեսցուք նմա։ Մ՚ի, զի քան զմեր բնութիւնս առաւել մեծամեծեաց, իջուցանիցեմք զնա յանասնոց աստիճան. այլ կանգնեսցուք զնա անտի, ոչ վասն նորա, այլ վասն հասարակաց պատուոյ. զի նա արժանի էր այնպիսի ինչ կրելոյ, այլ զի այ մարդասիրութիւնն ՚ի մեզ ցուցցէ զպատիւն։

Ո. Այլ է ինչ բազում, որովք ոչ հաղորդին ընդ մեզ անասունքն։ Ո՞ ինչ իցէ. ածպաշտութեամբ և վարուք առաքինութեան. և աստ չունիս ինչ ասել զպոռնկաց, և ոչ զպանդողաց. զատեալ մեկնեալ եմք ՚ի նոցանէ։ Ու. զի զած գիտեմք, և զխնամս նորա ՚ի միտ առնումք, և վասն անմահութեան ճարտարամտեմք։ Տեղի տացեն մեզ աստ անասունքն, և չեմք ինչ երկմիտ յայսցանէ. զգաստանամք, և այնմ չեն ինչ նոքա հաղորդք ամենևին. քան զնոսա անաւագ եմք, և տիրեմք նոցա. և այնու է մեծ իշխանութիւնն, զի չեմք հզօր քան զնոսա և տիրեմք նոցա. զի ուսանիցիս թէ ոչ դու ես այնմ պատճառք, այլ որ արարն զքեզ ած, և որ զբանն շնորհեաց քեզ։ Գործիս և թակարդս ձգեմք նոցա, և այնու ըմբռնեմք, յանկուցանեմք, ՚ի համբոյր ածեմք։

Յանձութիւն առ մեզ, հեզութիւն, հանդարտութի, ընչից անտեսութիւն։ Այլ դու քանզի ՚ի հպարտացելոց ոմն ես, և չունիս ինչ այնպիսի, յիրաւի կամ զմարդկանն մեծ համարիս, և կամ զանասնոցն խոնարհագոյն. քանզի այնպէս է անմտութիւնն և յանդգնութիւնն.

կամ հպարտանայ առաւել քան զչափն, և կամ խոնար-հի դարձեալ նոյնպէս, և չպահէ ուրեք զկշիռ չափոյն։

Հրեշտակաց զուգակամ եմք այսու, զի զարքայութիւն խոստացեալ է մեզ, և ընդ Քրիստոսի բնակութիւն և ցնծութիւն։ Արդ տանջի և չգիտէ ինչ. մարդ զմահ արհամարհէ, և չերկնչի և չդողայ, չցանկանայ առաւել իմիք. որպէս զի որք չիցեն այսպիսի, եւս չար են քան զանասունս. յորժամ 'ի մարմնաւոր ինչ իրս յաղթի-ցես, և հոգևորօքն ոչ գլիցես, զիա՞րդ չիցես 'ի վայր քան զանասունս։ Ո՞ն առաւել ածցուք 'ի մէջ զոք յայտնա-նէ՝ որք 'ի չարիսն կեցցեն, և յանհանձարից զոք՝ որ մինչ 'ի փափկութեան իցեն և զազրահութեան հետ. և ցուցանեմք թէ եւս քաջ պատերազմող է ձի քան զնա, և վարազ եւս զօրագոյն, և նապաստակ առաւել եւս արագագոյն, և սիրամարգ կարի եւս գեղագոյն, և վոր բնաւ իսկ քաջաձայն, և փիղ յոյժ յաղթանդամ, և արծուի քաջատես, և ամենայն իսկ թռչունք եւս ա-ռաւել մեծատունք են քան զնա։

Այս արդ զիա՞րդ իցէ արժանի տիրել անասնոցն։ Բա-նիւն և խօսողութեամբ. այլ չէ մարթ, չէ հնար, յոր-ժամ ոչ 'ի լաւ անդր 'ի կիր արկանիցէ զխօսողութիւն. եւս 'ի վայր գտանի քան զնոսա, յորժամ խօսող ոք ի-ցէ, և անասնագոյն և անխօսագոյն քան զնոսա իցէ. լաւ էր եթէ բնաւ ամենևին չէր լինել խօսող. քանզի չէ ընդ մի համար՝ առնուլ զիշխանութիւնս և մատն լի-նել, և չառնուլ իսկ բնաւ զառաջինն։ Ապականող որ քան զապաստաւորն վատթարագոյն է, լաւ էր նմա բնաւ չառնուլ իսկ զթագն 'ի գլուխ. նոյնպէս և աստ։

Այս արդ իմացեալ զի և քան զանասունս եւս վատ-թարագոյնք եմք առանց առաքինութեան, 'ի նմա կըր-թեսցուք, 'ի նոյն թևակոխեսցուք, զի լինիցիմք մար-դիկ. մանաւանդ թէ հրեշտակք իսկ, զի և յայլ բա-րութիւնսն վայելիցեմք. որոց լիցի ամենեցուն մեզ հա-սանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՃԱՌ ՈՒԹԵՐՈՐԴ

“Այսուհետև, սիրելիք իմ, որպէս յամենայն ժամ հնազանդեցարուք, մի միայն 'ի գալստեան իմում, այլ առաւել ևս այժմ յորժամ հեռի եմ 'ի ձէնջ, ահիւ և դողութեամբ զանձանց փրկութիւն գործեցէք. զի ա͞ծ է որ ազդէ 'ի ձեզ և կամելն և գործելն վասն հաճութեան։ Զամենայն ինչ գործեսջիք առանց տրտնջմանց և երկմտութեանց. զի եղիջիք անբիծք և անմեղք որդիք ա͞յ, անարատք 'ի մէջ կամակոր և խոտորեալ ազգիս այսորիկ, յորոց միջի երևիցիք իբրև լուսաւորք յաշխարհի. զբանն կենդանութեան ունիջիք 'ի պարծանս ինձ յաւուրն Քրիստոսի ա͞յ մերոյ”։

Զխրատն գովութեամբք պարտ է պատշաճել, զի այնպէս ընդունելի լինին յորժամ յիւրեանց նախանձն յորդորիցեմք զայնոսիկ զորս խրատիցեմք, որպէս և Պաւղոս այժմ աստ արար։ Եւ տես իսկ զիարդ խնամատութեամբ. “Այսուհետև, ասէ, սիրելիք իմ”։ Եւ չասաց վայրապար եթէ հնազանդիք, այլ նախ յառաջեայ գովեաց և ապա. “Որպէս յամենայն ժամ հնազանդեցարուք”. այսինքն թէ և այժմ նմանող լերուք, աղաչեմ, ոչ այլոց, այլ անձանց։

“Մի միայն 'ի գալստեան իմում, այլ առաւել ևս այժմ մինչ հեռի եմ”։ Յայնժամ թերևս այնպէս համարիցիք վասն իմոյ ինչ պատուոյ և ակնածութեան առնել զամենայն. բայց այժմ ոչ ինչ այնպիսի։ Եթէ երևեսցի զի այժմ առաւել յոլովէք, յայտնի լինի եթէ և յայնժամ ոչ վասն իմ, այլ վասն Աստուծոյ։ Զինչ կամիցիս։ Ոչ զի ինձ ինչ, ասէ, լինիցէք, այլ ահիւ և դողութեամբ զանձանց փրկութիւն գործիցէք։ Քանզի չէ մարթ այնմ որ աներկիւղն կայցէ՝ առաքինի և զարմանալի երևել։ Եւ չասաց լոկ եթէ ահիւ, այլ թէ և դողութեամբ, որ յաճախութիւն է երկիւղին։ Այնպիսի երկիւղիւ էր Պաւղոս, նմին իրի իսկ և ասէր.

“Երկնչիմ զուցէ որ այլոց քարոզեցի, ես ինքն գլխովին անպիտան գտանիցիմ,,: Օ՜ի եթէ զմարմնաւոր ինչ իրս ուղղել առանց երկիւղի չմարթի, որչափ ևս առաւել զհոգևորսն: Աղէ ասա, ո՞վ ոք դպրութիւն ուսաւ առանց երկիւղի, կամ այլ ինչ արուեստի եղև խելամուտ առանց երկիւղի: Եթէ ուր չլինի դարմանակալ ստամբակ՝ այլ ծուլութեամբն միայն թախանձէ, այնչափ երկիւղի պէտք են մեզ առ ՚ի բնութեան ծուլութիւնն միայն յորդորել, ուր այսչափ պատերազմ առաջի կայ, այսչափ արգելք, զիա՞րդ մարթիցի երբէք առանց երկիւղի ապրել:

Եւ զիա՞րդ անկիցի ՚ի մեզ երկիւղն: Եթէ զխոստովանիցեմք եթէ ած ամենայն ուրեք է, զամենայն լսէ, զամենայն տեսանէ ոչ միայն զգործս և զգնացս, այլ զամենայն ինչ որ ՚ի սիրտ անկանիցի և ՚ի խորս մտանիցի. քանզի քննիչ է խորհրդոց և իմաստութեանց սրտի: Եւ եթէ այնպէս յարդարեսցուք զանձինս, չգործեսցուք երբէք չար ինչ, ոչ ասիցեմք և ոչ իմանայցեմք: Աղէ ասա, եթէ համապազ առաջի իշխանի կայիր, ո՞չ ապաքէն¹ երկիւղիւ կայիր. և զիա՞րդ առ այ կացեալ ծիծաղիս և յողն երթաս, և ոչ երկնչիս և դողաս: Մի՛թէ զմեծերկայնմտութիւն նորա արհամարհեր, զի երկայնամիտ լինի յապաշխարութիւն ածել զքեզ: Եւ մի յորժամ անկանիցես ինչ, համարիցիս թէ չիցէ անդ ած մերձ, և այնպէս ինչ գործել յանձին կալցիս. յորժամ ուտիցես՝ համարեսջիր եթէ ած մօտ է, քանզի և մօտ իսկ է. յորժամ ննջել կամիցիս, յորժամ ցասնուցուս, յորժամ յափշտակիցես, յորժամ ՚ի խրախութեան իցես, և զինչ գործ և գործիցես, ոչ երբէք ՚ի ծաղր յանդգնիցիս, ոչ երբէք ՚ի ցասումն բորբոքիցիս: Եթէ ցանկ այսպիսի միտս ունիցիս, համապազ յահի և յերկիւղի կայցես, որպէս զի թէ միշտ առաջի թագաւորի կայցես: Ճարտարապետն թէ պէտ և կարի խելամուտ ճարտարութեանն իցէ, ահիւ և դողութեամբ կեայ՝ թէ զուցէ անկանիցի ՚ի շինուածոյն: Եւ դու հաւատացեր և բազում բարութիւնս արարեր. եթէ ելանիցես կայցես ՚ի բարձու, զգոյշ լինի-

1 Հատուածդ ո՞չ ապաքէն . . . յանձին խուզես թերի յօրինակին լրացեալ ՚ի յանձնականէն:

ձեր անձին, ահիւ և երկիւղիւ կացցես, զակն արթուն ունիցիս՝ գուցէ անկանիցիս ։ Բազում մեքենայք են այսոյն չարութեանց հնարել ընկենուլ զքեզ 'ի բարձրութենէն ։ « Ծառայեցէք, ասէ, տեառն երկիւղիւ և ցընծացէք առաջի նորա դողութեամբ » ։ Զիա՞րդ իցէ ցընծալն դողութեամբ ։ Այն իսկ միայն է ցնծութիւն յորժամ բարիս ինչ գործիցեմք, և այնպիսի ինչ որ պատշաճ իցէ այնոցիկ որ 'ի դողութեան իցեն ։ « Զանձն գործեցէք » ասէ ։ չասաց եթէ գործեցէք, այլ թէ մանր գործեսջիք ։ այսինքն թէ բազում փութով, բազում համարձակութեամբ ։

Այլ քանզի ասաց եթէ ահիւ և երկիւղիւ, տես զիարդ փարատէ զերկիւղն ։ Զինչ ասիցէ ։ « Աստուած է, ասէ, որ ազդէ 'ի ձեզ » ։ Մի զարհուրիցիս ինչ ընդ այն զի ասացի թէ ահիւ և դողութեամբ ։ ոչ վասն այնորիկ ասացի զի վհատիցիս, զի ոչ դժուարագոյն ինչ գործիցես զառաքինութիւնն, այլ զի զգոյշ լինիցիս և մի արձակիցես զանձն ։ Եթէ այն լինիցի, ո՞վ զամենայն ինչ արարեալ և կատարեսցէ ։ դու խիզախեա ևեթ, և ո՞վ է որ ազդէ 'ի մեզ ։ Այլ եթէ նա է որ ազդիցէ 'ի մեզ, կամի շնորհել որ միշտ ընդ նմա միաբան իցեն պընդել հաստատել առանց հեղգոյ, առանց քայքայմանց ։

Եթէ զկամելն 'ի մեզ նա ազդէ, զիա՞րդ իցէ զի հրամանս տայցէ ։ Թէ զկամելն նա արկանիցէ 'ի միտս, զոր ասես ցմեզ եթէ հնազանդ լերուք ։ քանզի ոչ հնազանդիմք, վայրապար ասես եթէ ահիւ և դողութեամբ, քանզի ամենայն ինչ յնա է ։ Ոչ զայն ինչ ասացի եթէ նա է որ ազդէ և զկամելն և զգործելն, այլ զերկիւղն փարատել կամեցայ ։ Եթէ դու ևս ախորժիցես, յայնժամ ազդէ զկամելն ։ մի զանգիտիցես, և չառնիս ինչ աշխատ, և զյօժարութիւնն տայ մեզ և զգործն յաջողէ ։ Յորժամ մեք կամիցիմք, նա յաճումն ածէ ։ կամելն 'ի մէնջ է ։ Այսպիսի ինչ ։ եթէ կամիցիմք բարի ինչ առնել, յաջողէ զգործն ։ զբարին ինքն յաջողէ, և նովաւ իսկ է կամելն յորժամ բարի կամին իմ յաջողէ 'ի գործ ։ Այլ կամ թէ առ բազում ինչ երկիւղածութեան ասէ, որպէս զուղղութիւնն մեր շնորհս 'ի նմանէ ասէ ։ Զոր օրինակ զուղղութիւնսն շնորհս ասէ և չարկանէ զմեզ յանձնիշխանութենէ, այլ թողու 'ի մեզ

զանձնիշխանութիւնն, նոյնպէս յորժամ ասիցէ 'ի մեզ ազդել զկամելն՝ չբառնայ 'ի մէնջ զանձնիշխանութիւն, այլ ցուցանէ թէ յաղղութենէ են: Բազում յօժարութիւն առնումք առ 'ի կամելն, զոր օրինակ յառնելոյն առնելն լինի և չառնելոյն չառնելն: Յորժամ տուրս տայցես, ևս քան զևս յորդորիցիս 'ի տալ. և յորժամ չտայցես, ևս քան զևս խամանաս: Յածութիւն կալար յանձին մի օր, յորդորիս նուազ և 'ի վաղիւն. ծուլայցես՝ ևս առաւել յաճախես 'ի ծուլութիւնն. «Ամբարիշտն, ասէ, հասեալ 'ի խորս չարեաց արհամարհէ»: Զոր օրինակ յորժամ հասեալ 'ի խորս չարեաց արհամարհէ, նոյնպէս յորժամ հասանիցէ 'ի խորս բարեաց՝ փութայ. զոր օրինակ նա յանկոյսն լինելոյ ևս առաւել 'ի ծուլութիւն հասանի, նոյնպէս և սորա զմտաւ ածեալ զյաճախութիւն բարեացն՝ ևս քան զևս փութագոյն գործի, կասկածէ թէ զբնաւն կորուսանիցէ:

«Վասն հաճութեանն», ասէ. այսինքն վասն սիրոյն, զի հաճոյքն նորա կատարիցին, զի ըստ կամաց նորա լիցի ամենայն: Աստ և խրախոյս իսկ տայ, թէ և ազդէ իսկ, քանզի կամի՝ ըստ նորա կամացն կեցցուք: Իսկ եթէ կամի, նմին իրի իսկ և ազդէ, և նոյն իսկ է ազդելն՝ կամի զի ուղիղ կեցցեմք: Տեսանես զի ոչ բառնայ զանձնիշխանութիւնն:

«Զայս ամենայն, ասէ, արասջիք առանց տրտնջելոյ և երկմտութեանց»: Այլ բանսարկուն յորժամ չկարիցէ զմեզ մերժել 'ի բարիս գործելոյ, այլ ազգ ջանայ հանել զմեզ սին 'ի վարձուց, կամ 'ի սնապարծութիւն կամ 'ի հպարտութիւն գրգռէ. և թէ այնու ևս ոչ գանեայ 'ի տրտունջ կամ յերկմտութիւն: Այլ արդ տես զիարդ սրբէ զայն Պաւղոս: Ասաց վասն խոնարհութեան, որչափ ինչ ասաց առ 'ի խափանումն հպարտութեան. ասաց վասն սնապարծութեան. «Մի միայն, ասէ, 'ի գալստեան իմում». ասէ աստ վասն տրտնջման և անխիղճ լինելոյ: Ընդէր արդեօք զայն և առ կորնթացիսն ասաց, զի զախտն բառնայցէ 'ի միջոյ, և յիշեցոյց զինչ անցք ընդ իսրայէլացիսն անցին. իսկ աստ ոչ ինչ այսոսիկ, այլ հրաման և եթ: Զի անդ լեալ իսկ էր գործն, վասն որոյ և սաստիկս ածէր զպատուհասն. իսկ աստ որպէս որ զի մի լինիցի, որոց չիցէ ինչ յանցուցեալ, ա-

ւելոյց է զնոսա սաստիւ խրատել: Նա և յորժամ 'ի խոնարհութիւն յորդորէր, չեդ առաջի օրինակս յաւետարանէ, որ հպարտքն պատժեցան, այլ Տն ընծայեցոյց զխոնարհս, և իբրև ընդ ազատս խօսի և իբրև ընդ որդիս սիրելիս, և ոչ իբրև ընդ ծառայս: Ի բարիս ինչ բարեբարս և ազնուականն յուղղոց յորդորէ, և ստահակն և ստամբակն յայնցանէ որոց չիցէ ինչ ուղղութիւն արարեալ. նա 'ի պատուոյ և սա 'ի պատժոյ: Վասն այնորիկ և յորժամ առ եբրայեցիսն գրեաց, զՅիսուս ած 'ի մէջ՝ որ փոխանակ միոյ կերակրոյ զանդրանկութիւնն վաճառեաց: Եւս դարձեալ, "Թէ զանգիտասցէ, ասէ, ոչ հաճեսցի ընդ նա անձն իմ": Եւ 'ի կորնթացիսն բազումք էին պոռնկեալք, վասն այնորիկ ասէր. "Գուցէ դարձեալ գայցեմ առ ձեզ, և նկուն ինչ առնիցէ զիս Ած իմ, և սգայցեմ զբազումս յանցուցելոց և ոչ ապաշխարելոց վասն պոռնկութեան և պղծութեան և գիջութեան զոր գործեցին":

"Զի լինիջիք, ասէ, ամբիծք և անմեղք". այսինքն անմեղք հաստատունք: Քանզի ոչ եթէ սակաւ սպիս դնէ տրտունջն: Զինչ իցէ՝ առանց երկմտութեանց. այն է յորժամ ասիցէ ոք՝ բարիք իցէ թէ չիցէ բարիք, մի, ասէ, յերկմիտս կայցէք, թէպէտ և աշխատել հասանիցէ կամ խոնջել կամ զինչ և իցէ: Ասաց թէ մի տրտնջեցիք. քանզի տրտնջանք պահին ընդ այնպիսի իրաց, և զայս 'ի կորնթացւոց թղթին յայտ արար: Ոչ ասաց ինչ այնպիսի, այլ թէ "լինիջիք ամբիծք և անմեղք որդիք Այ, անարատք 'ի մէջ կամակոր և խեղաթիւր ազգիս, յորոց միջի երևեսջիք իբրև լուսաւորք յաշխարհի. զբանն կենաց ունիջիք 'ի պարծանս իմ յաւուրն Քրիստոսի": Տեսանես զի խրատէ զնոսա չտրտնջել, որպէս զի ծառայից չարաբարոյ և դժնդակաց է տրտընջելն: Մի՛ ոք իցէ որդի, ասէ սա, որ 'ի հօր վաստակսն մանկանց թէ յանձինն իսկ տրտնջիցէ: Ի միտ առ, ասէ, զի անձին վաստակիս, քեզ ժողովես. նոցա սեփական իսկ է տրտնջելն յորժամ այլոց ջանայցեն, այլոց վաստակիցեն: Որ իւր համբարս կուտիցէ, էր վասն տրտնջիցէ, մինչ զի մեծութիւնն իւր աճիցէ. այլ չէ մարթ: Որ կամօքն և ոչ 'ի հարկէ գործիցէ, տրտնջել վասն էր տրտնջիցէ. լաւ է բնաւ չգործել, քան եթէ

տրտնջելով գործիցէ, քանզի և կորուսանէ իսկ զգործն։ Ահա չտեսանիցես զի և 'ի տունս մեր ցանկ զնոյն ասի-ցեմք՝ թէ լաւ է չգործել քան թէ տրտնջելով գործել. և բազում անգամ կամիմք զի և սպաս ինչ մեզ մի լի-ցի, քան զտրտունջ ուրուք յանձն առնուլ։

Չար է և կարի իսկ չար տրտունջ, մերձ 'ի հայհոյու-թիւն. ապա թէ ոչ՝ ընդէր անչափ իսկ ետուն նոքա վրէժս. անշնորհակալութիւն են իրքն։ Որ տրտնջէն, ապաշնորհ լինի զնոյ. և որ չլինի շնորհակալ զնոյ, ապա ուրեմն հայհոյիչ է։ Մանաւանդ յայնժամ իսկ մինչ-դեռ բազում փորձութիւնք էին և ստէպ ստէպ ճգունք, և ոչ մի ինչ ուրեք հանգիստ և ոչ մի ինչ մխիթարու-թիւն, և բազում յամենայն կողմանց յորդէին չարչա-րանքն. իսկ այժմ առաւել խոր խաղաղութիւն է և բա-զում դիւրութիւն։

Ը՞ր վասն տրտնջիցես, զի աղքատանայցես։ Ո՞ մնա-ած յորպիսի աղքատութիւն էջ Տէր։ Կամ զի թէ խօթանայցես ստէպ. և որպիսի ինչ լաւութիւնս գիտի-ցես զանձին, զո՞ր ուղղութիւնս որչափ սուրբն Յոբ, և այնչափ ցաւոց համբերէր. որ յաղբեւսն նստէր բազում ժամանակս, և որդունք եռայլին ելանէին 'ի մարմնոյն, և ցանկ զթարախն քերէր 'ի բաց։ Արև բազում ժա-մանակք անցին, ասէ, 'ի վերայ, եկն առ նա կինն և ա-սէ. մինչև ցե՞րբ համբերեալ կայցես և ասիցես եթէ տակաւին ժամանակս անսացից. ած ասա բան ինչ 'ի տէր և վախճանեաց։ Այլ թերևս որդիք մեռանիցին։ Մի թէ զամենեսին միանգամայն թաղեցեր չարաչար ինչ մահուամբ որպէս և նայն։ Կինէք իսկ կինէք, զի բազում մխիթարութիւն է նստելն առ հիւանդի, զնե-րանն 'ի միմեանս ածել, զաչսն ունել, զծնօտսն սփոփել, զյետին բանսն լսել. այլ ոչ ինչ այնպիսեաց եղև ար-ժանի արդարն, քանզի ամենեքին միանգամայն թաղե-ցան։ Այս զինչ ևս այլ ինչ ասիցեմ, եթէ հրամանս առ-նուիր սպանանել զորդիս, մատուցանել պատարագ, տա-րել տեսանել որպէս Երանելի նահապետն. ո՞ արդեօք չինէր զսեղանն, ո՞ զփայտն դիզանէր, ո՞ զսուր և զձեռս մանկանն կապէր. ո՞չ ապաքէն ինքնին անձամբ։

Այլ նախանձիցէ՞ք ոք. ո՞ ոք տանիցի այնչափ նախա-տանաց բարեկամաց ոքք 'ի մխիթարութիւն եկեալ ի-

ցեն ։ Թերեւս լուեալ իցէ զոր ասեմս ։ Մինչ թէպէտ և [illegible], յիրաւի նախատինք, քանզի մեղօք լի եմք. իսկ յայնժամ Ճշմարիտն և արդար մեկնեալ յամենայն իրաց չարաց զոցին հակառակն լսէր 'ի բարեկամացն ։ Այլ ասա, եթէ 'ի կնոջէ նախատանս և թախանձանս լսէիր՝ եթէ ես մոլորեալ և տառապեալ շըրջիմ տուն 'ի տանէ և տեղի 'ի տեղւոջէ, կարօտիմ աստանել զմնտանել արեգական զի հանգեայց և դադարեցից 'ի վշտաց որ շուրջ են զինև ։ Ընդէ՞ր խօսիցիս այդպիսի բանս, ով կին դու այլանդակ. միթէ մի՞րդ ինչ իցէ քեզ վշտացդ պատճառք. ոչ ապաքէն բանսարկուն սատանայ ։ “Ո՛չ ասա, ասէ, բան մի 'ի տէր քոյ և վախճանեաց„ ։ Եթէ նա ասիցէ և վախճանիցի, դու յապահո՞վ ինչ լինիցիս ։ Զի՞ք ինչ դժնդակ քան զայսպիսի բանս և զցաւս, թէպէտ և բիւր ինչ ասիցես ։

Յայսպիսի ցաւս մատնեցաւ, զի ոչ 'ի տան և ոչ ընդ յարկաւ նստել կամէր. այնպիսի ինչ հարուածք էին, մինչ զի ամենեքին իսկ անյոյս առնէին ։ Եթէ չէին անհնարին ցաւք լեալ, նա և ոչ արտաքոյ քաղաքին եղանէր նստէր. քան զուրկունս տրտմեալս ես յանհնարին հարուածս էր, քանզի նոքա 'ի տունս մտանեն և ընդ միմեանս բնակեն. իսկ նա օթեգացեալ հանէր 'ի գլուխ զգիշերս յաղբոյ վերայ մերկանդամ. ոչ հանդերձ զանձաձք կարէր առնուլ և ոչ օդ յոյս ։ Այլ զիա՞րդ իսկ, թերեւս օր ըստ օրէ ցաւք 'ի ցաւոց վերայ յաւելուին ։ “Հալեմ, ասէ, զկոշտս երկրի 'ի թարախս քերելոյ„. թարախ և որդունս ծնանէին 'ի մարմնոյն ոչ մի անգամ և երկիցս, այլ հանապազ ։ Տես զիա՞րդ իւրաքանչիւր ոք և 'ի լսելոյս սոսկայ ։ Եթէ ընդ լուրն դժկամակ լինիմք, ապա և ընդ տեսիլն առաւել դժկամակ. և եթէ տեսիլն չիցէ ախորժելի, որչափ ևս առաւել չարչարել զայնպիսի չարչարանս ։ Բայց սակայն կրեաց յանձին արդարն ոչ մի օր կամ զերկուս կամ զերիս, այլ բազում ժամանակս, և շրթամբք անգամ չմեղաւ ։ Որ ինչ ցաւոց ասիցես՝ բազում տանջանք էին, ևս չար քան զկուրութիւն, կարևոր քան զմարմնահարութիւն ։ Ճարա թուի ինձ, ասէ, կերակուր իմ ։ Այլ ոչ այսչափ միայն, այլ և որ այլոց հանգիստն է գիշերն և քունն՝ նմա չլինէր մխիթարութիւն, այլ քան զամենայն տանջանս ա-

հնարքն և անկիրթք ազգաց իցեն, փոխանակ ընդ մխի-թարչացն նախատողք գտանել մոլչաւ ևս առաւել վրէպք և վրէժք: «Մխիթարիչք չարեաց, ասէ, ինձ ամենեքեան»:

Եթէ զայս հանապազ յեղյեղէաք, ցանկ զմտաւ ա-ծէաք, ոչ ինչ էր 'ի մօտաւորացս որ տրտմեցուցանէր զմեզ, յորժամ ընդ այնպիսի նահատակն նայէաք, յայնպիսի ադամանդեայ ոգի, 'ի պղնձի յանդրիս միտ-քն. որպէս թէ պղնձի կամ քարեղէն մարմին ունէր՝ այնպէս ամենայնի ժուժկալէր առաքինութեամբ, բնա-ւին տանէր համբերութեամբ:

Այս արդ զմտաւ ածեալ զայնպիսի նահատակութիւն՝ զամենայն ինչ առնիցէք առանց տրտնջելոյ և երկմտու-թեանց: Յորժամ բարի ինչ առնիցես՝ տրտնջիցես. միթէ հարկ ինչ 'ի վերայ կայցէ: Գիտեմ զի բազում ընկերք սովորեն զքեզ տրտնջել. զայն իսկ ակնարկէ ա-սելովն՝ եթէ «Ի մէջ կամակոր և խեղաթիւր ազգիս»: Այն իսկ է զարմանալի յորժամ դրդուիցեն դք, և չախ-տանայցէ ոք այնպիսի: Այս և աստեղք 'ի գիշերի ծա-գեն և 'ի խաւարի լուսաւորեն, և չփնասին ինչ իւրեանց գեղոյն, այլ պայծառագոյնք ևս երևին. և յորժամ լոյսն լինիցի, ոչ այնպէս ինչ երևին: Այնպէս և դու յորժամ 'ի մէջ կամակորացն ուղիղ կայցես, յայնժամ առաւել պայծառագոյն երևիս. և զարմանք այն իսկ են՝ ամբիծս լինել: Զի մի զայն ինչ ասիցեն, ինքն նախ կանխէ դնէ. զի՞նչ. «Զբանն կենաց, ասէ, ունիցիք». այսինքն եթէ զրաւական կենաց ունիք զնա: Տես զիարդ վաղ-վաղակի դնէ զհատուցմանն վարձուցն: Լուսաւորքն, ա-սէ, զլուսոյն պէտս ունին, և դուք զկենաց բանն: Զինչ իցէ բանն կենաց. սերմն կենաց, ասէ, ունիք յանձինս զրաւական կենաց. զայս պինդ ունիջիք, քանզի այն իսկ է սերմ կենդանութեան 'ի ձեզ. զնոյն կոչէ բան կե-նաց: Այս ասեմն այլքն ամենեքին մեռեալք էին, և նա իսկ զայն յայտ արար. և կամ թէ զի այլք ևս ըզ-բանն կենաց ունէին, վասն այնորիկ ասէ թէ և դուք ունիջիք:

«Ի պարծանս ինձ, ասէ, յաւուրն Քրիստոսի»: Քանզի ես հաղորդ եմ ձերոց բարութեանց. այսպիսի ինչ է ձեր առաքինութիւնդ, զի ոչ միայն զձեզ կեցու-

ցանէ, այլ և զինս պայծառագոյնս առնէ։ Ո՜ր պար-ծանս առիցես, ով երանելիդ Պաւղէ. տանջիս հալա-ծիս թշնամանիս վասն մեր, և ասես թէ 'ի պարծանս ինձ էք։ Վասն այնորիկ ասէ՝ թէ "Յաւուրն Քրիս-տոսի, զի ոչ 'ի զուր ինչ աշխատեցայ և ոչ 'ի զուր ինչ վաստակեցի". և համարձակ պարծիմ զի ոչ 'ի զուր ինչ ընթացայ։ "Այլ թէպէտ և նուիրիմ". և չա-սաց՝ այլ թէպէտ և մեռանիմ, որպէս առ Տիմոթէոս իսկ գրէ։ Քանզի և անդ զայն բան 'ի կիր արկանէ. "Ես, ասէ, արդէն իսկ նուիրեալ եմ", և մխիթարէ զնոսա վասն իւրոյ վախճանին, և հրամայէ խնդութե-տանել մահուն զոր վասն Քրիստոսի մեռանէր։ Իբրև զնուէր ինչ, ասէր, և զպատարագ մատուցանիմ. ո՜վ ե-րանելի ոգի. պատարագ կոչէ զոգին մատուցանել։ Եւ եթէ զանձն ես իբրև զպատարագ մատուցանեմք, ա-պա խնդալ պարտ է։ Ո՛ ինչ իցէ պատարագն. զպաշ-տօնն ասէ։

"Ուրախ եմ, ասէ, և խնդամ ընդ ամենեսին ձեզ. նոյնպէս և դուք խնդացէք և ուրախ լերուք ընդ իս"։ Տեսանես զի ցուցանէ թէ պարտ է ուրախ լինել նոցա։ Ուրախ եմ, ասէ, զի նուիրիմ. և խնդամ ընդ ձեզ, զի պատարագն մատուցանեմ. ընդ նոյն և դուք ուրախ լե-րուք, զի մատուցանիմս. խնդացէք, ասէ, ընդ իս՝ որ ընդ իմս ուրախ եմ։

## ՑՈՐԴՈՐԱԿԱՆ

Այս ուրեմն չէ արտասուաց արժանի վախճանն ար-դարոց, այլ ուրախութեան։ Նոքա ուրախ են, և մեզ պարտ է ընդ նոսա խնդալ. նա և կարի իսկ անպատեհ իցէ եթէ նոքա խնդայցեն և մեք լայցեմք։ Այլ ըզ-համբոյրն, ասէ, և զսովորութիւն խնդրեմք։ Պատ-ճառք են այդ և բարուրք։ Եւ տես զինչ պատուիրէ. "Ուրախ լերուք, ասէ, և խնդացէք ընդ իս". զհամ-բոյրն և զսովորութիւն խնդրիցես։ Եթէ դու աստէն մնալոց էիր, յիրաւի ասէիր զայդ. իսկ եթէ յետ սա-կաւու մի ժամանակի և դու ևս առ նա երթալոց ես, զո՞ր սովորութիւն խնդրիցես։ Ո գուցէ և զսովորութիւն որ խնդրիցէ, յորժամ ամենեքին ոք մեկնիցի. իսկ եթէ

ընդ նոյն ճանապարհ երթալոց իցէ, զոր գութ և սիրութիւն խնդրիցէ։ Ուր 'ի տար աշխարհն իցեն, ընդէ՞ր ոչ զնոսա հանապազ արտասուիցեմք. ոչ յետ միոյ և երկուց աւուրց դադարեմք 'ի լալոյ։ Եթէ զգութն և զսիրութիւն խնդրիցէ, այնչափ միայն լաց։ Իսկ նա աւանիկ ասէ՝ թէ ոչ ինչ տխրտիմ, այլ և խնդամ ես. առ Քրիստոս երթամ, ասէ, և դուք ընդ իս խնդայցէք։

Ուրախ լիցուք և մեք յորժամ տեսանիցեմք զարդար ոք կատարեալ, նոյնպէս և յորժամ զոք յանյուսից վըճարեալ. զի մինն երթայ զհատուցումն վարձուցն առնու, և միւսն 'ի մեղացն ինչ ցածնուլ։ Այլ թէ կեցեալ էր, ասեն, թերևս դառնայր։ Այլ ոչ տանէր զնա ա՛ծ եթէ դառնալոց էր։ Որ զամենայն ինչ վասն մերոյ փրկութեան մատակարարէ, ընդէ՞ր ոչ թողուցու զայնպիսին որ հանդերձեալ իցէ հաճոյ լինել։ Եթէ նոցա որ չիցենն դառնալոց՝ թոյլ տայ, որչափ ևս առաւել որ դառնալոցն են։ Յամենայն կողմանց այսուհետև հատցուք զկոծն, բարձցուք զողբսն, և գոհացողք լիցուք զա՛յ և զամենայն ինչ արասցուք աւանց տրտնջելոյ. ցնծասցուք և հաճոյ լիցուք նմա, զի և հասանիցեմք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ԻՆՆԵՐՈՐԴ

“Յուսամ 'ի տէր Յիսուս զՏիմոթէոս վաղվաղակի առաքել առ ձեզ, զի և ինձ սրտի դիւր լիցի յորժամ զգացից ինչ լինիցի ինձ վասն ձեր. զի ոչ զոք ունիմ հաւաշունչ եթէ ընտանեբար հոգայցէ վասն ձեր. զի ամենեքեան զիւրաքանչիւր խնդրեն և ոչ զՅիսուսի Քրիստոսի”։

Ասաց թէ յառաջադիմութիւն եկն աւետարանին, մինչև զկապանս իւր յայտնի առնել յամենայն հրապարակին։ Այլ ասաց, թէպէտ և պատարագիմ և նուէ-

րիմ 'ի վերայ պաշտաման հաւատոց ձերոց, հաստատեաց զնոսա այաքիւք։ Թերեւս եւ այնպէս ինչ կարծէին եթէ զառաջինն մխիթարութեան ինչ վասն ասաց, եւ արդ զինչ. "զՏիմոթէոս արձակեմ առ ձեզ". քանզի եւ ցանկալին լսել թէ զինչ ինչ արդ իցէ զնովաւ իցեն։ Իսկ ընդէ՞ր չասաց եթէ զի իմանայցէք ինչ զիմ, այլ թէ իմացայց ինչ զձեր։ Զի զնորայսն Եպափրոդիտոս նախ քան զՏիմոթէոս պատմելոց էր նոցա. քանզի եւ յառաջ մատուցեալ ասէ. "Կարեւոր համարեցայ զԵպափրոդիտոս զեղբայր առաքել առ ձեզ, քանզի զձէնջ ինչ կամիմ ստուգել"։ Իմբռն է թէ բազում ժամանակս եղեւ առ Պաւղոսի վասն հիւանդութեան մարմնոյն, վասն այնորիկ ասէր թէ կամիմ ստուգել զձէնջ։ Տեսանե՞ս զի զամենայն ինչ 'ի Քրիստոս հանէ, եւ զՏիմոթէոս առաքելն առ նոսա. "Յուսամ, ասէ, 'ի տէր Յիսուս". այսինքն թէ վստահ եմ զի դիւրեացէ ինձ զայս տն։

"Զի եւ ինձ սրտի դիւր լինիցի յորժամ իմանայցեմ ինչ զձէնջ"։ Որպէս եւ զձեզ, ասէ, զուարթացուցի՝ լուրդ առնելով վասն որոյ աղօթս առնէիք 'ի վերայ իմ, զի եւ աւետարանն յաճումն եկն, եւ թշնամիքն յամօթ եղեն, եւ որով կամէինն ինձ վնաս առնել՝ նոքին ուրախ արարին զիս, նոյնպէս կամիմ զի եւ աստ եւս լինիցի ինձ վասն ձեր։ "Զի եւ ինձ, ասէ, սրտի դիւր լինիցի յորժամ իմանայցեմ ինչ վասն ձեր"։ Յայտնէ թէ եւ նոցա եւս պարտ է ուրախ լինել ընդ կապանսն եւ զնոցին հետ երթալ, քանզի բազում հեշտութիւն ծնանէին նմա. զի եւ ասելն թէ ինձ սրտի դիւր լինիցի, այն իսկ է՝ թէ որպէս ձեզդ է։ Ըաբէ որչափ ինչ գութ ունէր ընդ մակեդոնացիսն։ Քանզի եւ առ թեսաղոնիկեցիսն զնոյն գրէ, որպէս յորժամ ասիցէ. "Մեք թէպէտ եւ որբ մնացաք 'ի ձէնջ առ ժամանակ մի"։ "Յուսամ, ասէ, առաքել զՏիմոթէոս, զի գիտացից ինչ զձէնջ". որ մեծի խնամոց էր։ Յորժամ ինքն ուրեք ոչ կարէր երթալ, զաշակերտսն յղէր. քանզի չունէր ժոյժ եւ ոչ սակաւ մի ժամանակ թէ չիցէ տեղեակ ինչ վասն նոցա. զի ոչ եթէ զամենայն ինչ ոգւովն ճանաչէր, եւ այն յիրաւի լինէր։ Զի թէ զայն իմանայինն աշակերտքն, թերեւս եւ անամօթ իսկ լինէին. բայց զի կարծէին թէ չէ-

ծածկի ինչ 'ի նմանէն, յայն սակս թերեւս առնէին ուղղութիւնս. եւ առաւել յորդորէր ասելով՝ թէ և ինձ սրտի դիւր լինիցի: Այս և 'ի փոյթ ածէր զնոսա. որպէս զի թէ և Տիմոթէոս չերթայր, զայլ ոք գտանել յղել և պատմել նմա: Երեւի թէ և նա սովին ինչ օրինակաւ վարի, զի յապաղէ զիւր գալուստն առ նոսա անդ զի կորնթացիքն դառնայցեն: Վասն այնորիկ գրէ առ նոսա. “Զի խնայեցի, ասէ, 'ի ձեզ, վասն այնորիկ ոչ եկի 'ի Կորնթոս„: Ոչ զիւրն ինչ իրս միայն պատմելով երեւի սէր, այլ և զնոցայն խնդրելով ուսանել. այն իսկ է հոգած և խնամակալ ոգւոց որ ցանկ 'ի վտանգի կայցէ: Միանգամայն և պատուէ իսկ զնոսա, զի զՏիմոթէոսն առաքէ:

Ընդէ՞ր, զՏիմոթէո՞ս առաքիցես. այո, ասէ, “զի չունիմ զոք համաշունչ„. այսինքն թէ որ ինձ նման հոգայցէ. որ սրտիւ, ասէ, վասն ձեր հոգայցէ: Չունէր զոք ընդ իւր յիւրոցն, չունէր զոք համաշունչ որ նման նմա հոգայցէ և խնամ ածիցէ. զի ոչ վայրապար յօժարէ, ասէ, վասն այնպիսի ինչ իրաց այնչափ ճանապարհ հարկանել. որ զձեզ սիրէ ընդ իս՝ Տիմոթէոս է. մարթ էր և այլս առաքել, այլ չիք ոք այնպիսի: Ապա ուրեմն այն ինչ համաշունչ բարոյից է, յորժամ զաշակերտսն ոք իբրև զանձն սիրիցէ: “Որ սրտիւ, ասէ, հոգայցէ ինչ վասն ձեր„. այսինքն հայրենի գթովքն: “Զի ամենեքեան զիւրաքանչիւր խնդրեն, և ոչ որ ըստ Յիսուսի Քրիստոսի իցէ„. զանձանց հանգիստս և յապահով լինել. զայս և առ Տիմոթէոս գրեալ ասէ: Եւ ընդէ՞ր այնչափ զոփայցէ. զմեզ որ լսեմք՝ կամի խրատել, մի յայնպիսի ինչ իրս անկանել և մի զանձանց հանգիստ խնդրել: Զի որ զանձին հանգիստ խնդրիցէ՝ չխնդրէ զՔրիստոսին, այլ զիւրն. պարտ է առ ամենայն վտանգս պատրաստ գտանել:

“Բայց զփորձ նորա, ասէ, և դուք գիտէք, զի իբրև որդի հօր ծառայեաց ընդ իս յաւետարանին„: Յանձն առնէ նոցա զՏիմոթէոս, և յիրաւի իսկ, զի բազում պտուղ վայելիցէ 'ի նոցանէն: Զսոյն և 'ի կորնթացւոց թղթին ասէ. “Մի ոք զդա արհամարհիցէ, զի զգործ տեառն գործէ որպէս և ես„. ոչ նմա ինչ խնամ ունի, այլ նոցա որ ընդունիցինն, զի առնուցուն բազում վարձս:

"Զսա, ասէ, յուսամ առաքել որպէս նոյն հետայն զանձինէ մարթացից տեսանել". այսինքն թէ յորժամ տեսից որպիսի ինչ իրս կեցէք, և որպիսի ինչ վախճան իմոց իրացս լինիցի: "Վստահ եմ, ասէ, 'ի տէր, զի և ես ինձէն ընդ հուպ եկից առ ձեզ": Ոչ. յայն սակս ինչ առաքեմ զսա որպէս թէ ես չիցեմ գալոց, այլ զի սրտի դիւր լինիցի յորժամ իմացայց ինչ վասն ձեր. զի և զայն ևս ժամանակ որ 'ի միջին իցէ՝ լինիցիմ անդէակ: "Վստահ եմ, ասէ, 'ի տէր": Տեսանե՞ս զի զամենայն ինչ յանձակայս կացմանէ անտի դնէ, և ոչ յիւրոց մտացն ինչ բարբառի. եթէ ած, ասէ, կամեսցի:

"Արժան համարեցայ, ասէ, զԵպափրոդիտոս զեղբայր զգործակից զինուորակից զիմ արձակել առ ձեզ": Այլ զսա ևս դարձեալ նովին յարգանօք որով զՏիմոթէոսն առաքեաց՝ յղէ: Զնա երկուք իրօք ընծայեցոյց թէ սիրէ զնոսա. "որ սերտիւ, ասէ, հոգայցէ ինչ վասն ձեր". և թէ՝ յաւետարանին յառաջադէմ եղև: Զսա դարձեալ նովին իրօք վասն նորին պատճառանաց որով զՏիմոթէոսն յարգեաց. զիա՞րդ. զի կոչել զնա եղբայր և գործակից, և ոչ այսչափ միայն՝ այլ և զինուորակից, յայտ առնելոց էր եթէ բազում ինչ իրաց կցորդ եղև 'ի վիշտս, և այնպիսի ինչ վկայելոց որպէս զանձինէ. զի զինուորակիցն առաւել է քան զգործակիցն: Ոչ 'ի սակաւ ինչ իրս գործակից եղև, այլ 'ի պատերազմունս և 'ի ձգունս. քանզի զինուորակիցն ասելով զսա յայտ արար: "Զառաքեալն ձեր", ասէ. այսինքն եթէ զձերդ ձեզ շնորհեցի, կամ եթէ զմերս առ ձեզ առաքեմ, կամ եթէ ուսուցանիցէ իսկ զձեզ:

Դարձեալ և զբազում սիրոյ նորա յայտ արարեալ յաւելու. "Քանզի յոյժ անձկացեալ էր առ ձեզ ամենեսին և հոգայր. զի և լուայք իսկ եթէ խօթացաւ, և արդարեւ մերձ 'ի մահ խօթացաւ, այլ ած ողորմեցաւ նմա, ոչ նմա միայն՝ այլ և ինձ, զի մի տրտմութիւն 'ի տրտմութեան վերայ հասանիցէ ինձ": Սա և այլ իմն յարդարէ, յայտ արարեալ թէ և նա իսկ կարի քաջ գիտէ որպիսի ինչ սիրի 'ի ձէնջ: Զիա՞րդ. խօթացաւ, ասէ, և տրտմեալ էր ընդ այն, զի աղջացաւն և զձեզ չետես՝ զի 'ի ձէնջ փարատիցէ տրտմութիւնն զոր տրտմեցայքն վասն խօթութեանն նորա: Սա և այլ

ինն յարդարէ՝ թէ յետ բազում ժամանակաց յղէ առ նոսա. այլ ոչ առ ծուլութեան ինչ, քանզի զՏիմոթէոս՝ զի չգոյր ոք առ նմա, վասն այնորիկ ունէր առ իւր. «Չունիմ, ասէ, զոք համաշունչ». իսկ զԵպափրոդիտոս վասն խօթութեանն։ Զի ցուցցէ թէ ընդ երկար խօթացաւ, «և արդարեւ, ասէ, մերձ ՚ի մահ խօթացաւ»։

Տեսանե՞ս որչափ ինչ փոյթ յանձին ունէր Պաւղոս, զնմ ծուլութե̃ և յուլութե̃ բարուրս պարուրեալ ՚ի մտաց աշակերտացն, և չտալ կարծիս եթէ առ արհամարհել ինչ զնոսա չեկն առ նոսա։ Չիք ինչ այնպէս որ զաշակերտսն ՚ի հաւան ածել կարիցէ, որպէս յորժամ ՚ի վերայ հաստանիցէ թէ արդարեւ վասն նորա հոգայ վերակացուն, որ առաւել իսկ սիրոյ նշանակ է։ «Քանզի լուայք իսկ եթէ խօթացաւ, և արդարեւ մերձ ՚ի մահ խօթացաւ»։ Եւ զի ոչ պատճառս ինչ յօդեմ, դուք ձեզէն իսկ լուարուք. «Այլ ողորմեցաւ նմա ա̃ծ»։

Եւ առ այս զինչ ասիցես, ով հերձուածող. զի աստ աւասիկ ողորմութիւն ա̃յ կոչէ յորժամ զերթալոյն միւսանգամ դարձուցանիցէ։ Եթէ էր չար ինչ աշխարհս, չէր այն ողորմութիւն յաստէն յաշխարհի թողուլն։ Այլ առ հերետիկոսն դիւրաւ ասել է, բայց առ քրիստոնեայն զինչ ասիցեմք։ Թերևս և նա յերկրայս ինչ մտեալ ասիցէ. զի թէ դառնալն և ընդ Քրիստոսի լինել առաւել լաւ է, էր վասն առ ՚ի մահուանէն ապրել ողորմութիւն կոչիցէ։ Բայց արդ և ես իսկ ցքեզ հարցից՝ թէ էր վասն, և անձամբ տաց պատասխանի, ինքն իսկ ասաց թէ «կարևոր համարիմ կալ մնալ առ ձեզ վասն ձեր»։ Որպէս և նորայն կարևոր էր, նոյնպէս սորայն, բազում մեծութեամբ և առաւել համարձակութեամբ ՚ի դէպ ժամանակի երթալ առ ա̃ծ։ Զի այն առ ժամանակն չեղև, յետոյ կայր կարդայր. բայց զայլ ոգիս շահել՝ չէ ինչ հնար այնմ որ անդր երթիցէ։ Այլ բազում ինչ և ըստ հասարակ սովորութեան խօսի ընդ լսողսն Պաւղոս, և ոչ ամենայն ուրեք կարի սպոդէ և զգաստացուցանէ. քանզի ընդ մարդս աշխարհականս էին նորա բանք, որ տակաւին և ևս զանգիտէին ՚ի մահուանէ։

Ապա ցուցանէ թէ որպէս առ լաւս ունէր զԵպափրոդիտոս, զի և այնու ևս մեծարոյ առնիցէ զնա նոցա, և-

թէ զնոքա փրկութիւնն այնպէս ինչ իւր շահ համարի-
ցի՝ մինչ զի և ողորմութիւն ևս զտանել վասն նորա ա-
սէ։ Եւ թող զայս, այլ ազգ ևս, քանզի և բարիք իսկ
են կեանք աշխարհիս։ Եւ եթէ չէին բարիք, ընդէր
'ի պատժոց համարի զնէր զտարաժամ մահուն, որպէս
յորժամ ասիցէ. "Վասն այնորիկ են 'ի ձեզ բազում
հիւանդք և ախտաժէտք ննջեցեալք բաւականք,,։ Զի
հանդերձեալ կեանքն ոչ եթէ քան զչար ինչ լաւ են։
ապա թէ ոչ և չէին իսկ բարի, այլ քան զբարի ինչ
լաւ։ "Զի մի, ասէ, տրտմութիւն 'ի վերայ տրտմու-
թեան հասանիցէ ինձ,,։ Զապաքինելն նորա 'ի հի-
ւանդութենէն իւր փարատումն տրտմութեան համա-
րի, և յայտ առնէ զԵպափրոդիտոս նոյնպէս և նոքա
պատուիցեն։

"Փութապէս, ասէ, արձակեցի առ ձեզ,,։ Զինչ
իցէ փութապէս. առանց յամելոյ և յապաղելոյ. զի ե-
րագ վաղվաղակի հասանիցէ առ ձեզ և փարատիցէ
զտրտմութիւնն։ Զի ոչ այնպէս ընդ որոց առ որս անձ-
կայցեմքն զառողջութենէ ուրախ լինիմք, որպէս յոր-
ժամ տեսանիցեմք. և մանաւանդ յորժամ անյոյս ինչ
իրք իցեն և գիւրիցին, որպէս ինչ Եպափրոդիտայն դի-
պեցաւ։ "Փութապէս, ասէ, արձակեցի առ ձեզ, զի
տեսջիք զնա և ուրախ լինիջիք, և ես անտրտմագոյն ե-
ղէց,,։ Զիարդ լինիցիմ անտրտմագոյն. եթէ դուք ու-
րախ լինիցիք, ասէ, և ես ուրախ լինիմ. և այնպէս ու-
րախ լինի ընդ այնպիսի ցանկութիւն, զի ես, ասէ, ան-
տրտմագոյն լինիցիմ։ Եւ չասաց թէ անտրտում, այլ
անտրտմագոյն. զի ցուցցէ թէ ոչ երբէք էին միաք նո-
րա դատարկ 'ի տրտմութենէն։ Որ ասէրն "Ո՞վ է որ
հիւանդանայ և ոչ ես հիւանդանամ, ո՞վ է որ գայթակ-
ղի և ոչ ես ջեռնունամ,,, ե՞րբ լինէր ազատ 'ի տրտմու-
թենէն։ Յայտնիքն է թէ յայդմ տրտմութէ փարատիմ։

"Արդ ընկալարուք զդա 'ի տէր,,։ Ի տէրն՝ կամ տէ-
րամբ հանդերձ է կամ հոգեպէս, այսինքն մեծաւ փու-
թով. մանաւանդ թէ առաջի իսկ տեառն, այն իսկ է
թէ ըստ այ կամացն։ Արժանի սրբոց, ասէ, ընկալջիք. որ-
պէս սրբոց վայել իցէ։ "Ամենայն խնդութեամբ,,։ Եւ
զայն վասն նոցին իսկ, և ոչ վասն նոցա զոր առաքէրն։
Քանզի մեծ շահ այն իսկ է որ առնիցէ ինչ բարի քան

զարդիւն պսակն քաղցրին լինելոյ։ «Այլ զայդպիսիսդ, ասէ, 'ի պատուի ունիջիք»․ այն իսկ է թէ ընկալարուք զդա պատուականի սրբոց։

«Զի վասն գործոյ Տեառն մինչեւ 'ի մահ մերձեցաւ․ զանձն փորձեաց ողունակ չափ, զի լցցէ զձեր պակասութիւն առ իս պաշտամանն»։ Ի հաւատարակաց քաղաքէն փիլիպեցւոց էր առաքեալ նա անդր, որ սպաս իսկ առնէր Պաւղոսի, եւ թերեւս տանելոյ ինչ վասն նորա երթեալ էր անդր․ եւ զի տարաւ նմա պախրէ ինչ, մօտ 'ի կատարած թղթոյս ասէ՝ եթէ «ընկալեալ յԵպափրոդիտեայ զառ 'ի ձէնջն»։ Այլ 'ի դէպ՝ եթէ յորժամ եհաս 'ի քաղաքն հռոմայեցւոց, եգիտ զՊաւղոս 'ի բազում ինչ վիշտս, մինչ զի ոչ կամիցին մօտել առ նա՝ բազում զգուշութեամբ մերձենայցեն․ նա եւ որ մերձենայցենն իսկ, կային 'ի կասկածագոյնս․ որ սովորութիւն իսկ է 'ի մեծամեծ վիշտս լինելոյն եւ 'ի սաստիկ ցասմանս թագաւորաց։ Յորժամ ոք յանցաւոր առ թագաւորի գտեալ 'ի բանտ մնայցէ, եւ բազում զգուշութեամբ պահիցի, եւ ծառայից եւս մնալ եւ երբ արգելուն, զոր եւ Պաւղոսի գիտէր 'ի ժամանակին կրել․ բայց Եպափրոդիտոս քանզի այր առաքինի էր՝ չհամարէր ինչ զձգունսն մինչեւ մատչել համարձակ եւ սպաս ունել նմա եւ զամենայն պէտս վճարել։ Այլ արդ երկուս ինչ իրս դնէ որովք անուցէ զնա մեծարոյ․ զի մահու չափ, ասէ, ձրգնեցաւ վասն իմ եւ երկրորդ անգամ զի ընդ ամենայն իսկ քաղաքին այնպիսի վիշտս վշտացաւ, որպէս զի ընդ նորա վշտացն որք առաքեցինն՝ վարձս առնուցուն, որպէս թէ քաղաքն իսկ հրեշտակ յղեաց, եւ ունիցի նմա սպաս, եւ նովաւ հաղորդիցին եւ նորա չարչարանացն։

Այլ չասաց թէ վասն իմ, այլ զհաւատարմագոյնն ասէ՝ թէ վասն գործոյն Տեառն։ Ոչ վասն իմ ինչ, ասէ, այլ վասն ձեր մերձ 'ի մահ եղեւ։ Այլ թէ չմեռաւ՝ այն յոյժ տեսչութիւնն է, այլ նա յիւրմէ դիմեաց եւ եւ 'ի մեզ զանձն․ որպէս զի թէ լինեալ էր, ասէ, մեռանել վասն իմ, չէր 'ի բաց յիմմէ 'ի պատուասիրութենէն։ Ահա վասն Պաւղոսի սպաս ունելոյն մատնեաց զանձն, որչափ եւս առաւել վասն քարոզութեանն կրէր չարչարանս․ նմանապէս թէ եւ այն իսկ վասն քարոզութեանն էր՝ վասն նորայն մեռանել։ Ոչ միայն վասն չզգուշելոյ է առ-

նուլ զմարտիրոսութեան զպսակն, այլ և այնպիսի ինչ պատճառք մարտիրոսութիւն գործեն. և եթէ պարտ իցէ զարմանալի ինչ ասել՝ ևս առաւել այնպիսի պատճառք քան զայն։ Զի որ վասն դոյզն ինչ իրաց համարձակիցի 'ի մահ, որչափ ևս առաւել յաղագս մեծին։ Զի և մեք յորժամ տեսանիցեմք զսուրբս 'ի լլկանս ինչ, համարձակեսցուք զուն 'ի վերայ գործեսցուք։ Քանզի ոչ է մարթ չհամարձակել և գործ ինչ առաքինութեան գործել. այլ հարկ է որ այսմ աշխարհիս կենաց զգուշանայցէ, 'ի հանդերձելոցն անկանել։

«Զի լցցէ, ասէ, զձեր պակասութիւնն առ միմեանս պաշտամանս»։ Զինչ իցէ։ Ձեր մօտ, ասէ, նա իս քաղաքն, այլ 'ի սպասու եկաց ինձ տեղւոյ յանձնանց պէտս պաշտաման վասն զայս առաքելոյ։ Այս զպակասութիւն, ասէ, ձերոյ պաշտաման սա եկից, որպէս զի և այնմ խոկ իրաւունք իցեն 'ի բազում պատիւ վայելելոյ առ 'ի նոցանէ. զի որ ինչ պարտ էր ձեզ ամենեցուն առնել, սա փոխանակ ձեր վճարեաց։ Այս ցուցանէ, եթէ ոչ առաջին սպասաւորութիւն էր 'ի նոցանէ զգուշութեանն դարման տանել վշտացելոց. վասն որոյ թերութիւն ասէ և պաշտօն։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Տեսանե՞ս զմիտսն առաքելականս. զի այն ոչ 'ի հարստութենէ լինի, այլ 'ի բազում խնամոյ. զի ոչ մեծամանիցեն ինչ, այլ 'ի չափու ունիցին զանձինս. և ոչ մեծ ինչ համարիցին շնորհել, այլ խոնարհիցին։ Սպասաւորութիւն կոչէ զիրսն և պակասութիւն սպասաւորութեանն։ Քանզի և պարտս խոկ պարտիւքն որպէս, և ոչ եթէ ձիրս ինչ և շնորհս անձնական։ Զոր օրինակ զօրականացն՝ որք զպատերազմունս հարկանեն, 'ի նոցանէն որք լռազանէն նստիցին՝ հարկս երթան, քանզի վասն նոցա ճգնին, նոյնպէս և աստ. զի թէ չէր ուսուցեալ յայնժամ Պաւղոսի, ոչ որք արկանէր զնա 'ի բանտ. որպէս զի սպասաւորութիւն խոկ պարտ է համարձակել սրբոցն։ Այս զինչ կլիցեն անպատեհ իրք. զօրականն երկրաւոր թագաւորի զամենայն ինչ տայ, և համբերէ և պատերազմի, և ոչ միայն շնորհաւ, այլ և 'ի հարկէ, և զօ-

ըստկամի երկնաւոր Թագաւորին՝ յոր յանհնարին պա-
տերազմունս ցանկ պատերազմի, և ոչ զկարևոր պէտսն
շնորհել. «Այդ է, ասէ, մեզ կախ ընդ մարմնոյ և ընդ
արեան»: Որչափ ապախտաւորութիւն է, քանզի ա-
պաշնորհութիւն, պակասն զօշաքաղութիւն:

Այլ որպէս երևի՝ մարդկան երկիւղն իմն կարի զկէ
առ մեզ, քան գեհենի և հանդերձելոյ պատժոցն. և
վասն այնորիկ իսկ ամենայն ինչ եղծեալ կործանեալ
է. զի քաղաքաց իրք բազում փութով համապատ վը-
ճարին, և չիք ինչ որ ոչ վաղվաղակի կատարիցի. և ըղ-
հոգևորացն և ոչ ոք երբեք ունի փոյթ յանձին. այլ
զայն 'ի հարկէ և զանիւք պահանջեմք, և իբրև ծա-
ռայից կամաւ և ակամայ՝ վճարի բազում մտադիւրու-
թեամբ. և այս 'ի կամակարաց և յաղատաց խափանի.
քայեմ զամենեցունց, այլ զայնպիսեայն որ յայնպիսի
հանրկաց անպիտան առնիցեն զանձինս: Եթէ չկարէր
ամ բռնի իսկ առնել զայս. այլ չկամի, զի 'ի ձեզ քաջ
խմնայիցէ՝ քան 'ի նոսա, որ կերակրիցինն: Վասն այնո-
րիկ չկամի 'ի հարկէ պահանջել. քանզի և ընդ այնր ևս
վարձք իսկ չիք. և բազումք 'ի մէնջ և քան զհրեայս
ևս անզգամագոյնք են: Զմտաւ ած որչափ ինչ տային
հրեայքն. տասանորդս և պտուղս, դարձեալ և այլ տա-
սանորդս, դարձեալ միւս ևս տասանորդս. երիս տասա-
նորդս, և զսիկղն. սիկղն կշիռ ինչ արծաթոյ է. և չա-
փէր ոք՝ եթէ կարի շատ ունեն քահանայքն: Որչափ
նոքա շատ առնուցուն, ևս քան զևս յաճախեն ձեզ
վարձք. չասէ ինձ՝ թէ կարի շատ առնուն, որովայնապա-
շտք են. որպէս և այժմ լսեմք 'ի բազմաց: Նոքա ա-
պարանս շինեն, և գեօղս և ագարակս գնեն, և չհամա-
րին թէ ունին ինչ. և եթէ ոք 'ի քահանայից հանդեր-
ձիկ ինչ բարեքիկ արկանիցէ, և 'ի կարևոր կերակուրսն
գոյացուր իցէ, և կամ թէ սպասաւոր զոք ունիցի, զի մի
հարկ լինիցի զանձին շուք արկանել, մեծութիւն զերան
համարին: Իսկ արդարև իսկ մեծատունք են այնու, և
նոքա ակամայ իսկ խոստանան:

Մեք թէպէտ և սակաւ ինչ ունիմք, մեծատունք. և
նոքա թէպէտ և զամենայն ինչ ստացեալ իցեն, աղքա-
տանան: Մինչև յերբ անմիտք իցեմք. չիցեն բաւա-
կան իսկ մեր գործքն մեզ 'ի տանջանս. այլ և 'ի բամ-

խոստանիք են որդւոց ,,: Միթէ 'ի սակս իմոյ պարտ իցէ մեռանել. այլ չէ այն տնտեսապաշտ իմոյ մարդկան, և ոչ Ած ըստ այն կամի:

Այլ վաղվաղակի 'ի ճառաւորել հաւատանին: Կարեւոր է, ասէ. «Մի՛ ստանայք ոսկի, և մի արծաթ, և մի երկուս պարեգօտս, և մի պղինձ 'ի գօտիս ձեր, և մի գաւազան ,,. և դոքա երիս և չորս հանդերձս ունին, և մահիճս զարդարեալ: Այլ ըստ այն իսկ է դառնապէս յոգւոց հանել¹. և թէ չպատուհասէր զլալ իսկ հարկաւոր էր: Ընդէ՞ր. զի փառս այլոց շիւղոյ սոտյգ պահանջողք են, և զիւրեանց գերանն յականն բնաւ ամենեւին չզգան:

Այլ առ, քեզ ընդէ՞ր չասիցես զայդ: Ո՛չ է վարդապետացն միայն, ասէ, կարգեալ են այդպիսի հրամանք: Իսկ յորժամ Պաւղոս ասիցէ. «Ունիցիք կերակուր և հանդերձս և այնու շատասցուք ,,, առ վարդապետսն մի՛ այն ասիցէ: Այլ ոչ աւրէն. այլ առ ամենայն մարդիկ. և յայտ 'ի վերայդին բանէն է. և զինչ ասիցէ. «Շահ մեծ Աստուածպաշտութիւն է, բաւականութեամբ հանդերձ. զի ոչ ինչ բերաք յաշխարհս, յայտ է՝ թէ և ոչ տանել ինչ կարեմք ,,. և վաղվաղակի 'ի նոյն յարէ, եթէ «Ունիցիք հանդերձս և կերակուրս, և այնու շատասցուք. Իսկ որք կամին մեծանալ, անկանին 'ի փորձութիւնս և յորոգայթս և 'ի բազում ցանկութիւնս անմիտս և վնասակարս ,,.

Տեսանե՞ս, զի առ ամենեսին է ասացեալ բանն: Իսկ արդ յորժամ ասիցէ, եթէ «Մարմնոյ խնամ մի առնիք 'ի ցանկութիւնս ,,. ո՛չ առաքելն ընդ ամենեսին առ հասարակ խօսի. կամ յորժամ ասիցէ, «Կերակուր որովայնի, և որովայն կերակրոյ, այլ Ած զսա և զսա խափանեսցէ ,,. կամ յորժամ ասիցէ, թէ «Կերպարան կենդանւոյն մեռեալ է ,,, յորժամ զայլեւայլս խօսիցի. միթէ և այլոց վարդապետս իցէ. ո՛չ ինքն իսկ ասաց, եթէ «Կնոջ մարդոյ չհրամայեմ ուսուցանել, և ոչ ճոխաբան լինել քան զայր մարդ ,,. զի այլոց աւելորդ զտխան և զպատուութիւնն յայտ առնէ: Նմերութեան բազում պէտք են զգուշութեան, և մանաւանդ այնմ բնութեան. զի կանանց առն բազում հանգստեան կարօտ

¹ Միւսն եղեւ:

զքահանայսն առնէք, ազատ արարից վասն ձեր, լուարուք. զի հաստատեալն դնել 'ի մտի՝ թէ արդարեւ անցանիցեն զնոյ օրինօքն, բազում յոլովութիւն է 'ի չարիս։

Բայց 'ի մէնջ այսուհետեւ զայն եւ քննեսցուք։ Ասաց Քրիստոս՝ թէ "Մի՛ ստանայք ոսկի եւ մի արծաթ, մի երկուս պարեգօտս, մի կօշիկս, մի գօտի, մի ցուպ". արդ աղէ ասա, Պետրոս ո՞նց ինչ զհրամանօքն. թուի ինձ թէ չանց. զգօտին ածէր եւ հանդերձ ագանէր եւ օդ յոտն։ Լուր հրեշտակին որ ասէր ցնա. "Ա՛ծ զգօտիդ ընդ մէջ, եւ արկ զհողաթափս յոտս քո". թէպէտ եւ ոչ այնչափ միայն պէտք էին օգոյ տոկից, քանզի յայնմ ժամանակի մարթի եւ բոկ իսկ շրջել, եւ կարեւոր պէտք օգոյ՝ ձմերայնի են, սակայն ունէր։ Իսկ Պաւղոս յորժամ առ Տիմոթէոսն գրեաց, թէ փութասջիր յառաջ քան զձմեռն գալ առ իս, եւ պատուիրէ՝ թէ "Զփելոնն՝ զոր թողի առ Կարպոսի, յորժամ գայցես՝ բերջիր եւ զգիրսն՝ մանաւանդ զմատեանսն". ահաւասիկ փելոն ասէ. եւ չկարէ ոք ասել՝ թէ այլ ունէր, զոր արկանիցէ. եւ եթէ բնաւ չարկանէր փելոն, աւելորդ էր հրաման տալ՝ թէ բերջիր. եւ թէ չէր մարթ՝ թէ չարկանէր, յայտ է՝ թէ եւ այլ գոյր։ Իսկ յորժամ զերկեամն ողջոյն իւրով վարձու կալաւ վանս, միթէ անսաստեա՞ց ինչ Քրիստոսի՝ անօթն ընտիր, որ ասէր՝ թէ "Կենդանի եմ ոչ այսուհետեւ ես, այլ կենդանի է յիս Քրիստոս". զորմէ Քրիստոսն վկայէր՝ թէ "Անօթ ընտիր է ինձ սա"։

Պարտ էր զայս խնդիր ձեզ իսկ թողուլ, եւ չառնել ինչ լուծումն. եւ ընդ այնր առնուլ 'ի ձէնջ վրէժս, զի զրոյցն ընթերցուածոց ծոյլ էք, եւ այս ամենայն անտի ծնանի. եւ վասն այնորիկ յայլոց մեղսն աղխտարար տեարք եմք եւ դառն դահիճք, եւ վասն մերոյն չունիմք փոյթ յանձին. եւ այն անտի է՝ զի զգիրս չգիտեմք, եւ ածեղէն օրինօքն չխրատիմք. եւ արդ պարտ էր զայնր վրէժ առնուլ 'ի ձէնջ։ Այլ զինչ գործեցից՝ ոչ գիտեմ. քանզի յոյժ աւելի քան զպատշաճն շնորհեն հարք որդւոց, յորժամ գութքն հոգեւորք խաղայցեն. եւ յորժամ տեսանիցեն տրտում տխուր զմանուկն, ինքեանք եւս չար խորովլին եւ չգադարեն՝ մինչեւ զպատճառս տրտմութեան 'ի միջոյ բառնայցեն։ Բայց սակայն թէ եւ այնպէս լի-

նոցին, և տրտմեցիք ընդ չասելն, ընտանիք էք անմտա-
ցուք, և բարիոք անմտացուք։

Ոչ եթէ ընդ հակառակ ինչ ելին, քան զոյսն. այլ կարի իսկ յոյժ երեւելին զհետ պատուիրանացն Պղատոնոսի. զի այն պատուէրք առ ժամանակ մի էին և ոչ հանապազորդք։ Այլ զայս ոչ 'ի կարծեաց ինչ ասեմ, այլ յանձեղէն գրոց։ Զ խօսքդ։ Պօղոս ասէ՝ թէ առաջ տէր ցաշակերտսն. «Յորժամ առաքեցի զձեզ առանց քսակի և մախաղի և գօտւոյ և կօշկաց, միթէ պակասեաց ինչ ձեզ. ասեն, ոչ։ Ասէ ցնոսա՝ այսուհետև առացարուք»։ Ապա թէ ոչ՝ զինչ օգուտ էր մի միայն պարեգօտ ունել. և եթէ զայն լուանալ պիտոյ էր, մինչ ինչ պարտ էր նստել, կամ մերկ շրջել, եթէ այլազգ ինչ ակէտք ոչ էին։ Զմտաւ ած որպիսի ոք էր Պետրոս, վասն յուղղութիւն ածելոյ՝ մրջաւր աշխարհս հատանէր անցանէր, վասն հանդերձի կարօտութեան 'ի տան ինչ պարտ էր նստել. և յայնպիսի շահից խափանել։ Իսկ եթէ պարզ ուրեք գնդէր կամ քուքք և տնօրեանք լինէին, քրտամամ ինչ պարտ էր, կամ մերկ զատարկ 'ի տան նստել. եթէ ցուրտ մեր զմարմինս, հաշել մաշել ինչ պարտ էր և չխօսել։ Այլ զի ոչ անզամանդեայ մարմինս ինչ կազմեաց նոցա, լուր ամեն՝ զինչ գրէ առ Տիմոթէոս. «Այլ և սակաւիկ մի գինւոյ խառնեսջիր վասն ստամոքսիդ և ստէպ ստէպ հիւանդութեանց»․ դարձեալ և զմիւսոյն ասէ, թէ «Ա-րեոր համարեցայ արձակել առ ձեզ զառաքեալն ձեր և զպաշտօնեայ պիտոյից իմոց, քանզի խօթացաւ մերձ 'ի մահ. այլ ողորմեցաւ նմա Տէր, ոչ նմա միայն, այլ և ինձ»․ որպէս զի մի ընդունելիք յամենայնի լինիցին հաւրեօքն։

Այլ արդ զիարդ. նստէ՞լ և ծուլանա՞լ ինչ պարտ էր՝ Այլ ոչ ուրեք։ Իսկ էր վասն յայնժամ զայն հրամանեաց։ Զ զօրութիւն իւր կամեցաւ ցուցանել, թէ առ յապա կարէր այնպիսի ինչ առնել, այլ չառնէր։ Իսկ ընդէ՞ր չառնէր. զի տեսցէ և առաւել քան զԻսրայելացին էին զարմանալիք, որոց ոչ կօշիկքն մաշեցան և ոչ հանդերձքն լեշկեցան. և այն զի յանապատի եւս շրջէին՝ ուր եւ ջերմագոյն տապացուցանէին ճառագայթք արեգականն, և զքարինս եւս փշրել կարէին։ Այլ զայն էր

վասն արար․ քո աղագաւ․ քանզի չէիր ողջանալոց, այլ ևս քան զևս վիրաւորէիր, զդեղոյն պատճառս շնորհեաց քեզ։ Նա և այս անտի յայտ է․ մի թէ չկարէր ինքն իսկ կերակրել․ որ քեզ զխմագարձիր եա, ո՞չ ապաքէն ևս առաւել Պաւղոսի տայր․ որ իսրայէլացւոցն եա տրտնջօղաց, պոռնկաց, կռապաշտից, ո՞չ ապաքէն և Պետրոսի տայր, որ զամենայն վատնեաց, զնաւ վասն նորա եթող․ որ ժամանից մարդոց եա ունել ինչս, ո՞չ ապաքէն ևս առաւել Յովհաննու շնորհէր, որ զհայրն ևս վասն նորա եթող․ բայց չկամեցաւ․ այլ քև կերակրէ զնոսա, զի դու օրհնեսցիս։

Նա տես զանչափ մարդասիրութիւնն․ ախորժեաց զիւր աշակերտսն չքաւորս առնել, զի դու փոքր մի օգի առնուցուս․ զի թէ զնոսա չէր արարեալ կարօտս, յոյժ զարմանալիք լինէին, առաւել փառաւորագոյնք, այլ քո փրկութիւնն վնասէր ՚ի քէն։ Չկամեցաւ առնել զնոսա զարմանալիս, զի դու ապրիցիս․ այլ թոյլ ետ նուազել նոցա, զի դու փրկութեան հասանիցես։ Զի ոչ նոյնպէս մեծարանաց ինչ է վարդապետին առնուլ յաշակերտէն և չառնուլ․ այլ այն պատուի՝ որ չառնուցու․ բայց աշակերտն ինչ ոչ օգտի, այլ ՚ի դերև ելանէ ՚ի պտղոյն։

Տեսանե՞ս զիմաստութիւն մարդասիրին այ․ զոր օրինակ ինքն ոչ միայն զիւր փառսն չխնդրեաց, և ոչ զանձին ինչ խնդրեաց, այլ որ ՚ի փառսն էր՝ յանձին կալաւ անարգել վասն քո․ նոյնպէս և զվարդապետսն՝ որոց մարթէր մեծարոյ լինել, ախորժեաց վասն քո առնել քամահելիս, զի դու շահիցիս, զի դու մեծանայցես, և գոյաւոր հոգևորօքն լինիցիս։ Վասն այնորիկ նա չքաւորի մարմնաւորօքս, զի դու լինիցիս գոյաւոր հոգևորօքն․ կարող էր առնել զնոսա անկարօտս․ եցոյց եթէ վասն քո թոյլ ետ նոցա կարօտանալ, և այս ևս դարձեալ յայտնի է։

Զայս ամենայն իմացեալ՝ մի ՚ի բամբասանս, այլ ՚ի բարերարութիւնս դարձցուք․ մի զայլոց չարիս քննեսցուք, այլ զմեր մեղսն ածցուք զմտաւ․ զայլոց ուղղութիւնս յիշեսցուք, և զմեր մեղսն ածցուք զմտաւ և այնպէս հաճոյ լիցուք այ։ Զի որ զայլոց զմեղս որոնիցէ և զիւր ուղղութիւնսն, կրկին վնասի․ և այնտի ՚ի հպար-

տութիւն յօժարէ, և 'ի հպարտութենէ 'ի ծուլութի հաստանի։ Զի յորժամ զմտաւ ածիցէ թէ ոմն մեղաւ, և ինքն դիւրաւ մեղանչէ. յորժամ 'ի մտի դնիցէ՝ թէ ինքն ուղղութիւնս ինչ արար, վաղվաղակի հըպարտանայ։ Իսկ որ զիւր ուղղութիւնն մոռացաւ, ստ ատնիցէ, և զմեղսն առաջի աչաց դնիցէ, և զայլոց մեղսն չքննիցէ, այլ ընդ ուղղութիւնս միայն նայիցի, բազում շահս շահի։ Զի խորդ. յորժամ տեսանիցէ՝ թէ որք ուղղութիւնս ինչ արար, ընդ այն հայեցեալ 'ի նախանձ յորդորիցի. և յորժամ խմանայցէ թէ ինքն մեղաւ, խոնարհի և 'ի չափու ունի զանձն։ Իսկ եթէ այսպէս առնիցեմք, կարեմք հասանել խոստացելոց բարութեանցն. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՏԱՍՆԵՐՈՐԴ

« Այսուհետև, եղբարք, ուրախ լերուք 'ի Տէր. զնոյն գրել առ ձեզ ինձ ոչ ինչ դանդաղելի է. և ձեզ կարի զգուշալի։ Զգոյշ լերուք 'ի շանց. զգոյշ լերուք 'ի չար մշակացն, զգոյշ լերուք 'ի կրճատութենէն. Զի մեք եմք թլփատութիւնն մեք իսկ եմք որք Հոգւովս պաշտեմք զած և պարծիմք 'ի Քրիստոս Յիսուս, և ոչ 'ի մարմին ինչ ապաւինացեալ եմք երբէք »։

Տրտմութիւնք և հոգք առնելի քան զամ յորժամ մաշիցեն զհոգին, 'ի զօրութենէ հատուցանեն։ Այսմ աղագաւ և Պաւղոս սթափէ զփիլիպեցիսն 'ի տրտմութենէն։ Քանզի 'ի տրտմութեան էին թէ զինչ անցք ընդ Պաւղոս իցեն անցեալ, քանզի չգիտէին և հաստատէին եթէ մեռեալ իսկ իցէ. և վասն քարոզութեանն և յեպափրոդիտեայ սակս հոգացին։ Արդ զի վասն այսր ամենայնի սփոփութիւն մատուցանիցէ՝ ասէ. « Այսուհետև ուրախ լերուք 'ի Տէր »։ Զիք ինչ այսուհետ այսուհետև տրտմութեան պատճառք. ունիք, ասէ,

զԵպափրոդիտոս վասն որոյ տխրտէիք. առ ձեզ է և Տիմոթէոս, գամ և ես, ածէ աւետարանս. և այլ զինչ ևս պակաս իցէ, բայց միայն ուրախ լինել: Զգաղատացին որդիս կոչէ և զսոսա եղբարս. յորժամ ուղղել ինչ կամի կամ գութ ցուցանել՝ որդիս կոչէ, և յորժամ մեծարել և պատուել՝ եղբարս անուանէ. "Այսուհետև, եղբարք իմ, ասէ, ուրախ լերուք 'ի տէր,,: Բարւոք ասաց թէ 'ի տէր, և ոչ ըստ աշխարհի. չէ, ասէ, պարտ ընդ այն խնդալ, այլ որ վասն տեառն նեղութիւնք իցեն՝ լի են ուրախութեամբ:

"Զայս գրել առ ձեզ, ասէ, ինձ ոչ ինչ դանդաղելի է և ձեզ կարի զգուշալի. զգոյշ լերուք 'ի շանցն,,: Տես զհարդ ոչ 'ի սկզբանն ընծայեցուցանէ զխրատն, այլ յորժամ գովեացն և զարմացաւ՝ յայնժամ. և դարձեալ գովէ: Թուի թէ և ծանրագոյն իսկ իցէ բանս. ուստի և յամենայն կողմանց զեղչէ: Եւ զո՞ր կոչիցէ շունս: Այն ոմանք անդ՝ զորս յամենայն իսկ 'ի թուղթսն ակնարկէ, արք ժանտք և անօպայք հրեայք զօշաքաղ և ցանկացողք իշխանութեան, որ կամէին զբազումս 'ի հաւատացելոցն պառակտել. քարոզէին զքրիստոնէութիւն և զհրէութիւն միանգամայն, և ջրել այլայլել կամէին զաւետարանն. և զի չէին քաջ յայտնի, վասն այնորիկ ասէ՝ զգոյշ լերուք 'ի շանց: Չեն այսուհետև որդիք հրեայքն. յայնժամ հեթանոսք շուն կոչէին, և արդ նոքա: Ընդէ՞ր. զի որպէս յայնժամ հեթանոսք յոյ և 'ի Քրիստոսէ օտար էին, նոյնպէս և նոքա այժմ եղեն: Նա և զլրբութիւնն և զլկտութիւնն նոցա յայտ առնէ և զբազում անջրպետութիւնն նոցա յորդւոց: Եւ զի շունք կոչէին հեթանոսք, լուր քանանացւոյ կնոջն զինչ ասէր. "Այո, տէր, և շունք կերակրին 'ի փշրանացն որ անկանիցին 'ի սեղանոյ տերանց իւրեանց,,: Զի մի և զայն ևս ունիցին՝ թէ իբրև շունք սեղանոյն ապակեալ սպասիցեն, ածէ 'ի նոյն ոլոր և օտարոտիս իսկ ցուցանիցէ:

"Զգոյշ լերուք 'ի չար մշակացն,, ասէ: Կարի գեղեցիկս կոչեաց չար մշակս: Գործէին, ասէ, գործ ինչ, այլ չարոյ իւրեանց, և ևս չար քան զդատարկութիւնն, քանզի քակտէին որ ինչ բարիոքն հաստատեալ կայր:

"Զգոյշ լերուք 'ի կրճատութենէն,,: Պարկեշտ իմն

ոչ որ յայտնի թլփատութիւնն է, այլ որ 'ի ծածուկ հրեայն է. և թլփատութի՛ւն սրտի հոգւով և ոչ գրով,,: Իսկ աստ և յանուանէն իսկ թափէ. չէ, ասէ, թլփատութիւն: Վասնզի և օրինակ ինչ մինչ չև ճշմարտութիւնն հասեալ է՝ կոչի այնպէս. յորժամ ճշմարտութիւնն գայցէ, ոչ ևս այնուհետև նոյնպէս կոչի: Որպէս 'ի գեղ նմանութիւն նկարէ գրէ ոք թագաւոր նըշմարանօք, մինչ չև զերանգսն խառնեալ իցէ՝ ասեմք թէ զթագաւորի պատկեր գրեալ է. իսկ յորժամ երանգօքն գոյնն և պատկերն իսկ նկարիցի, ծածկի օրինակն ճշմարտութեամբն և չերևի: Չասաց թէ 'ի մեզ է թլփատութիւնն, այլ թէ մեք եմք թլփատութիւնն, և նմանապէս իսկ. զի թլփատութիւնն առաքինաւորէ զմարդն, այն իսկ է մարդ ճշմարիտ: Եւ չասաց թէ 'ի նոսա է ճշմարտութիւնն. այլ թէ նոքա են այսուհետև 'ի կորստեան և 'ի չարիս:

Եւ ոչ ևս, ասէ, 'ի մարմնի դրոշմի թլփատութիւնն, այլ 'ի սրտի: "Եւ ոչ, ասէ, 'ի մարմին ինչ պանծացեալ եմ. թէպէտ և ես իսկ ունիմ զնոյն պանծութի՛ւն,,: Զինչ իցէ պանծութիւնն. պարծանք: Եւ բարիոք յաւել զայն թէ և ես ևս. զի թէ 'ի հեթանոսաց լեալ էր և խոտէր զթլփատութիւնն, ոչ զթլփատութիւնն, այլ զնոսա որ յայն ժամանակի զնա 'ի ձեռն առին՝ կարծէր թէ որպէս զրկեալ ոք 'ի հրէութեանն ազնուականութենէ աղարտիցէ զթլփատութիւնն իբրև անտեղեակ ոք պարկեշտութեանցն, որ չեղև երբէք հաղորդ այնպիսեացն: Իսկ նա աւանիկ որովհետև նոցին հաղորդն զնոյնս բամբասէ, ոչ վասն այնորիկ բամբասէ զի չեղև հաղորդ, այլ իբրև զպարսաւ ինչ և զխոտան, ոչ առ ագիտութեան ինչ, այլ առ առաւել գիտութեան:

Եւ արդ տես զինչ ասէ. քանզի և 'ի գաղատացւոց թղթին յորժամ հարկ եղև մեծամեծս ինչ ասել զանձնէ՝ չզանգաղեցաւ, զի և այնու իսկ ստուգ խոնարհութիւն երևեսցի. "Լուեալ իցէ ձեր, ասէ, զգնացս իմ որ 'ի հրէութեանն էին,,. նոյնպէս և աստ. "Եթէ թուիցի ինչ ումեք ապաստան լինել 'ի մարմին, առաւել ևս ես,,. և վաղվաղակի 'ի նոյն յարէ՝ եթէ "երբայեցի յեբրայեցւոց,,: "Եթէ այլ ոք պանծացեալ է,,. յայտ առնէ զհարկն, ցուցանէ թէ վասն նո-

ցա ասէ. եթէ ապաստան ինչ լինիցիք, ասէ, և ես. ապա թէ ոչ՝ լռեմ։ Իսկ անտարապատուելի ասէ զյանդգնութիւնն. զի չասէ զոք յանուանէ, այլ նոցա թողու տեղի այսր անդր ընթանալ։ «Եթէ ոք, համարեսցի, ասէ, ապաստան լինել»։ Իսկ բարիոք առաց թէ համարեսցի, կամ թէ չունիցի ինչ ապաստան, և կամ թէ չիցէ ինչ ապաստանն ապաստան. քանզի ամենայն ինչ ՚ի հարկէ էր և ոչ ՚ի կամաց։

«Թլփատութեամբ, ասէ, ութօրեայ»։ Իսկ նախ զթլփատութիւն դնէ, որով կարի խնդայր ծէին։ «Յազգէ Իսրայէլի»։ Ոչ եկամուտ եղեալ եթէ չէր եկ ինչ ոք։ Իսկ յազգէն Իսրայէլի ասելով յայտ առնէ թէ չէր յեկաց նախնեաց։ Իսկ զի մի կարծիցես եթէ յազգէ Իսրայէլի ՚ի տասն ցեղիցն իցէ, «Ի ցեղէ Բենիամինի», ասէ. զի ցուցցէ թէ յընտիր կողմանէն է, քանզի միճակ քահանայիցն ՚ի մասն այնր ցեղի էր։ «Եբրայեցի, ասէ, յեբրայեցւոց»։ Եթէ ոչ եկ ոք, այլ ՚ի բնէ ընտիր և ՚ի բուն հրէից։ Մարթէր եթէ իսրայելացի էր. այլ ոչ եբրայեցի յեբրայեցւոց։ Բազումք իսկ այսուհետև խառնեցին զիրսն, և քանզի չէին տեղեակ լեզուին՝ քանզի ընդ այլ ազգս յածեալ շրջէին։ Կամ զայն, կամ բազում ազնուականութիւն ցուցանէ։

«Ըստ օրինացն, ասէ, փարիսեցի»։ Զայս այսուհետև յիւրոց կամացն առաքինութիւն. զի այն ամենայն ոչ ըստ իւրոց կամացն ինչ գործեցաւ, ոչ ութօրեայ թլփատել, ոչ յազգէն Իսրայէլի լինել և ոչ ՚ի ցեղէն Բենիամինի. որպէս զի և այժմ ես յոլովագոյն իցէ որով թուիցի թէ բազումք ինչ գլիցեն զնա։ Իսկ առ որս մեր իցէ առաւելն. մանաւանդ այնու իսկ զի չէր եկ ոք, յեկաց, այլ յընտիր ազգէ և ՚ի գլխաւոր կրօնից զոր ՚ի նախնեացն չունէին բազումք։ Այլ զոյ և կամացն առաքինութիւն, որով և առաւելն իսկ է. «Ըստ օրինացն, ասէ, փարիսեցի. ըստ նախանձու հալածէի զեկեղեցին»։ Այլ չէ այն բաւական. մարթէր զի իցէ փարիսեցի և չիցէ ինչ կարի նախանձայոյզ։ Այլ և զայն եւս յաւելու, ահաւասիկ առաւելն ըստ արդարութեանն օրի։ Այլ մարթ էր արկանել յանդգնութեանք զանձն ՚ի նեղութիւնս վասն իշխանութեան ինչ ցանկանալոյ և ոչ զօրինացն նախանձ խնդրելոյ, որպէս և քահանայք

պետքն առնելին։ Ոչ ինչ այնպիսի, այլ «Ըստ արդա-
րութեան օրինացն եղէ անարատ»։

Իսկ արդ եթէ վասն աղնուականութեան և յօժա-
րութեան և կարգաց և կրօնից՝ ամենեցուն յաղթէին,
տեսցուք ընդէր ասիցէ թէ թողի զայնպիսի պարկեշ-
տութիւնս․ զի զմեծամեծսն Քրիստոսի գտանիցէ, և
կարի իսկ մեծամեծս, վասն որոյ և յարէ իսկ 'ի նոյն․
«Այլ որ ինչ շահն էր ինձ, զայն ամենայն համարիմ
վասն Քրիստոսի 'ի վնաս»։ Պաւղոս զայնչափ առաքի-
նութիւն զոր յառաջին տիոց սկսեալ և հաստատեալ
ունէր զայնպիսի աղնուականութիւն, զպէսպէս մեծս,
զազգի ազգի նեղութիւնս զոր վասն Քրիստոսի 'ի վե-
րայ իւր ածէր, զզանազան վաստակս զառաջին
փոյթ 'ի բաց ընկեց և վնաս համարեցաւ՝ որ զառաջին
նմա շնորհքն էին, զի զՔրիստոս շահեսցի․ մեք և զինչ
չարհամարհեմք զի զՔրիստոս շահեսցուք, այլ 'ի հան-
դերձելոց կենացն կամիմք անկանել և ոչ յաստի ինչ
իրաց․ և թէպէտ և այլ ինչ չիցէ, այն իսկ է վնաս։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Այս արդ ասէ՝ աստ մի ըստ միոջէ իսկ քննեսցուք զիրս
մեծութեան; եթէ ոչ ամենևին իսկ վնաս իցէ․ զի առ-
խատութիւն միայն է և շահ ինչ ոչ գոյ։ Զինչ շահ
իցէ 'ի բազում և 'ի պէսպէս հանդերձիցն․ զինչ շա-
հիցիմք, զոր օգուտ օգտիցիմք յորժամ այնու պատա-
տիցիմք․ չէ ինչ օգուտ, այլ միայն վնաս։ Զխորգ․ զի
աղքատն որ զգձուձ և զմաշ հանդերձիկն ունիցի 'ի տօ-
թի՝ ոչ քան զքեզ դժուարա տանի տօթոյն, մանա-
ւանդ թէ նա դիւրաւ և դու դժուարաւ։ Քանզի որ
զմաշ հանդերձիկն և զմեկնակն ունիցի, նորա մարմինն
դիւր է քան քում․ զի նոր ինչ հանդերձ թէպէտ և
քան զսարդի ոստայնից ևս բարակագոյն իցէ՝ չէ հեշտ 'ի
տօթի մարմնոյն․ և դու առ պարծանս զաւելորդն երկոսս
երկուս ագանիս, բազում անգամ և երիս իսկ, և զքղա-
միթ և զկամար և զմուկս․ և զնա ոք չպարտաւէ թէ
ընդէր մի միայն ագանելիս ագանիս, այսով և դիւրաւ
իսկ ժուժկալ տօթոյն։ Զմեծատունս պետանեմք քըրտ-
նեալս շառաչունեալս, և զաղքատն ոչ ինչ յայսպիսի

'ի տունս գեղեցիկս, 'ի սիւնս կճեայս, և յորմս մար-
մարապատս, 'ի փողոցս և 'ի սրահս, և 'ի պէսպէս շըր-
ջանակս ծախել զոսկին չիցէ՞ վնաս. 'ի կուռս և 'ի պատ-
կերս կանգնել 'ի փողոցս և 'ի հրապարակս: Բազումք
և այնու զգեստ խոկ 'ի նուէրս կոչեն. բայց այժմ ոչ ինչ
է ժամանակ զայն քննելոյ: Զի՞նչ կամիցի որ ոսկե-
զօծ զձեղունս սենեկայն դրուագիցէ. զի՞նչ աւելի քան
զայն գտանիցէ որ 'ի չափ և 'ի պայմանի տունս բնակի-
ցէ: Այլ ական հեշտ թուի, ասեն, և երեւայ բազում
վայելչութիւն: Ցե՞րբ. առ օրին և առ վաղիւն, և ե-
թէ ևս քաջ՝ զերկիս աւուրս, և այնուհետև ոչ ինչ այն-
պիսի. քանզի յագի ակն և չհամարի ինչ. զի թէ արե-
գակն ոչ ինչ զարմացուցանէ զմեզ, քանզի ընդելեալ
եմք ցանգն հայելով, որչափ ևս առաւել ճարտարու-
թեան ինչ արուեստ. այլ այնպէս թուի եթէ յաղխ-
սեայ տունս բնակեալ իցեմք:

Ազէ ասա, 'ի պէտս բնակութեանն սիւնքն բազումք
և խոյակքն, ախաւեղազգեսք և ազգի ազգի գիմակք
պատկերացն, և ոսկին խառնեալ ընդ նկարս որմոցն, և
այլ ևս համապայծառ գունակ գունակք երանգացն, և
ազգի ազգի դեղքն ընդ միմեանս 'ի ճամուկոն մուեալ՝
զի՞նչ օգուտ իցեն. այլ հպարտութեան և պարծանաց
և յօրանալոյ պատճառք են, և աւելորդ անմտութեան:
Միանայն ուրեք կարևորացն պէտք են՝ որով կարօտ ի-
ցեմք, և զպէտսն վճարիցեմք:

Տեսանե՞ս զի վնաս է և ոչ օգուտ, և աւելորդ և ան-
շահ. զի թէ աւելի պէտս ինչ չտայցէ, և ոչ վայելչու-
թիւն երեւայ: Քանզի յորժամ ժամանակ 'ի վերայ
անցանիցէ, յագի ակն և չթուի ինչ վայելուչ. և յայտ
է թէ չէ ինչ, բայց վնաս միայն. այլ չտայ զայն խնա-
նալ մտապարծութիւնն: Պաւղոս և զոր շահն կարծէր՝
զայն վնաս համարէր վասն Քրիստոսի: Մինչև ցե՞րբ
ընդ երկիր բևեռիցիմք, մինչև ցե՞րբ ճնայիցիմք ընդ եր-
կինս: Զտեսանիցէ՞ք զծերացեալսն, զկարդ և ոչ զմիոյ
ինչ զանցելոցն յիշեն զախորժութիւն. չտեսանիցէ՞ք ըզ-
վախճանեալսն՝ զոմանս 'ի ծերութեան և զոմանս 'ի ման-
կութեան. չտեսանիցէ՞ք զբազումս կենդանւոյն խոկ զըր-
կեալս յընչիցն. զի՞ այնչափ ծնդլիցիմք ընդ չկայսս և չմը-
նալիս. ընդէ՞ր այնչափ կապեալ իցեմք ընդ վնասակարս.

մինչև յերբք ոչ բուռն հարկանիցեմք կրկնակին և զննա-ցիցն:

Ո՛չ ինչ ինչ ոչ տայցին արդեօք ծերքն մեծատունք՝ թէ հնար ինչ էր քերել ՚ի բաց ծերութեանն. զիա՞րդ չէին անմտութեան իրք, եթէ հնար ինչ էր անդրէն ՚ի մանկութիւն դառնալ՝ չտալ զամենայն ինչ և միւսանգամ մանկանալ, և առնել տուն և արտ ևս քաջ քան զառաջինն: Այլ ահա աւասիկ գոյ հնար մանկանալ ծերոց և լինել մատաղօրեայս, շահել գանձս գոյեալս և մեծութիւնս անանցաւորս, և չկամիք զանեալ սակաւ ինչ տալ՝ և այնպիսի կեանս գտանել, այլ բուռն հարեալ վաղ-ժամ լինել. այնոր պահել զայն ինչ՝ որ չէ օգուտ: Այլ ՚ի մահուանէ փրկել կարող է, և ոչ յախտէ զերծուցանել, և ոչ զծերութիւն մանկացուցանել, և ոչ այլ ինչ ՚ի կարևորացն շնորհել, և ոչ օրինաց բնութեանն հնարս գտանել. և տակաւին ժուժեալ ունիք: Ասա՛ ասա, զի՞նչ շահ, զի՞նչ օգուտ իցէ արքեցութիւնն, որովայնապարարտութիւնն, անպատեհ ցանկութիւնքն, պէսպէս դժնդակութիւնքն, որ ևս քան զևս հաշեն ըզ-մեզ և մաշեն. այս միայն շահ է ՚ի մեծութենէն և այլ ինչ ոչ, քանզի մեք զայն կամիմք. արդ եթէ ցանկանայցեք, և զերկինս ևս կարող էաք այնու ժառանգել:

Ոչ է այդպէս իցէ, ասեն, ապա ուրեմն բարիոք է մեծութիւն: Այլ եթէ մեծութիւնն առնէ զայն, այլ կամքն ստացողին. և զի կամքն առնէ զայն, անտի յայտ է՝ զի և աղքատին մարթի ժառանգել զերկինս. զոր բազում անգամ ասացի, թէ ոչ ըստ չափ տուրոցն հայի ած, այլ ըստ կամս տուողացն. և մարթի աղքատին ՚ի սակաւուն զամենայն տալ. քանզի բան կարին պահանջէ ած: Այլ մեծութիւնն՝ երկնից առիթ լինի, և ոչ աղքատութիւն՝ գեհենի. այլ երկոցունց՝ կամքն բարիք և չարք: Ո՛ կամին ուղղեսցուք, զնոյն վերստին շահեսցուք, յօրինեսցուք, յարդարեսցուք, և ամենայն ինչ մեզ դիւրաւ վճարի: Որպէս ճարտարապետին եթէ երկաթի և եթէ ոսկի ուրագ տայցես՝ զնոյն գործ գործէ, մանաւանդ թէ երկաթեաւն իսկ քաջ գործէ զգործ փայտին, նոյնպէս և աղքատութեամբն առաւել ուղղութիւն գործէ առաքինութիւնն: Ո՛ մեծութենէն ասէ այսպէս, թէ "Դիւրին է մալխոյ մտանել ընդ ծակ ասղան, քան մեծա-

միտ պաշտիցես։ Ետ քեզ և ինչս՝ զի յօգուտ ծախես-
ցես, և ոյժ՝ զի ՚ի լաւն վարիցես. ետ քեզ և ճարտա-
րութիւնս, զի կեանս աշխարհիս հաստատեսցես, և ոչ
զի ՚ի հոգևորացն զրկիցիս. ոչ զի ընդ պաճուճանս հա-
նիցեմք, այլ զի կարևորօքն միմեանց ձեռնտու լինիցիմք.
միմեանց օգնիցեմք, և ոչ զի զմիմեանս նենգիցեմք։
Ետ քեզ և յարկս, զի ՚ի ցողոյ և ՚ի ջերմոյ պահիցէ,
ոչ զի դու ոսկեով զարդարիցես, և աղքատն ՚ի սովոյ մե-
ռանիցի։ Ետ քեզ հանդերձ ՚ի զգեստ, և ոչ ՚ի ցոյցս
ինչ և ՚ի պարծանս. ոչ զի հանդերձքն ոսկեհուռն զար-
դարիցին, և Քրիստոս ՚ի ցրտոյ մեռանիցի։ Ետ քեզ տուն,
ոչ զի միայն բնակիցես, այլ զի և այլոց վանատուն լինի-
ցիս։ Ետ քեզ անդս, ոչ զի ՚ի պէտս պոռնկաց և կա-
քաւչաց և գուսանաց և փողարաց և ջնարահարաց զար-
ծիցես, և ծախիցես զայդ բարութիւնն, այլ ՚ի քաղցե-
լոցն և ՚ի կարօտելոց պէտս։ Ետ քեզ ծով, զի նաւա-
կեալ շրջիցիս, և չխանձիցիս աշխատութեամբ երկրային
ճանապարհաց. ոչ զի զանդունդս քննիցես վասն ականց
և մարգարտաց և այլոց ևս այնպիսեաց՝ զոր անտի հա-
նիցես։

Իսկ ընդէ՞ր բնաւ, ասեն, իցեն ականք պատուականք։
Ընդէ՞ր դու ասա, ընդէ՞ր այս քարինք այսպէս իցեն՝ որ այս-
չափ պիտանիքս իցեն. և այն այնչափ պատուականք, որ
չեն ինչ բնաւ պիտանիք։ Որքա՞ն գեթ ՚ի շինուածս մաս-
նեն, և նոքա չեն ինչ ումեք պիտանիք. և սոքա ևս կար-
ծունք քան զնոսա։ Այլ նոքա, ասեն, գեղեցկութիւնս
յօրինեն. վայելչութիւն են երեսաց, տեսիլ բարերաց ա-
չաց։ Ո՞ր վասն, յո՞ր պէտս, յո՞ր օգուտ. կարծիք միայն
են այն. կարի ինչ սակաւք իցեն, այլ չեն քան զկուռ՝
որ բուն սակաւն իցէ՝ սակաւագոյնք. և հասարակ նոր-
մին իսկ կարծունք ինչ իցեն, այլ և ոչ զայն ոք ինչ ունի
ասել. այլ պիտանիքն ինչ իցեն կամ մեծամեծք, այլ և
ոչ այն ինչ իցէ. և ուստի՞ եղեն այնպէս զարմանալիք,
եթէ ոչ՝ միայն ՚ի կարծեաց։ Իսկ եթէ ոչ գեղեցկա-
գոյնք ինչ իցեն, զի գտանեմք քան զնոսա ազնուագոյնս
և սակաւս, և ոչ ՚ի պէտս ինչ պիտանացուք, և ոչ
կարծունք քան զայլս, ուստի՞ եղեն այնչափ զարմանա-
լիք, եթէ ոչ ՚ի կարծեացն։

Իսկ ընդէ՞ր, ասեն, ետ զնոսա։ Ոչ եթէ նա ետ, այլ

դու կարծեցեր՝ եթէ պատուականք ինչ իցեն ։ Նու գիրք, ասէն , եթէ ընդէ՞ր զարմանալիս ասիցեն զնոսա ։ Բազում կարծեացն խօսին այնուհետեւ ․ նա և վարդապետն ըստ մանկանն խօսի , զնորայն զարմանալիս կարծեցուցանէ նմա , զի այնու ածիցէ զնա զկուրև , և յանկուցանիցէ ։ Ո՛վ խնդրիցես զգեղեցիկ հանդերձն՝ զոր չէտ քեզ 'ի պէտս՝ արկանել , այլ զչափով զհանդերձն և զօդ ոտիցն ․ զայն բաւական համարեսջիր , և մի՛ զայն՝ որ ինչ չիցէ 'ի դէպ ։ “ Յանկալի է , ասէ , քան զոսկի և քան զականս պատուականս դատաստանք քո տէր ,, ։ Ոչ են ինչ սոքա պիտանացուք ․ եթէ պիտանացուք ինչ էին , չհրամայէր արհամարհել ․ այլ ըստ մերում կարծեացն խօսին ա͞ծեղէն գիրք ․ և այն ա͞յ մարդասիրութեանն է ։

Իսկ էր վասն ես զծիրանին և զայլն նոյնպիսիս ։ Աստուծոյ պարգևք են գործք ինչ այնպիսիք ․ քանզի և այնպիսեօքն կամեցաւ ցուցանել զմեծութիւն իւր , զի զարմանայցեմք և փառաւորիցեմք զնա ․ և ոչ կապիցեմք ընդ այնս և բևեռիցիմք ։ Նա և զցորեանն ետ քեզ ա͞ծ միայն ․ և դու ազգս ազգս ինչ հնարիս հնարել անտի ․ զնաշիհն և զխորակն և զգերմակն և զծաղն և զկըտապն և զփոխընդեայս , զքաղքարսն և զտոխղուսն [1] և զայլն ամենայն ազգի ազգի խորտիկսն , որպէս զի ազգի ազգի համեղական 'ի քիմսն ծնուցանիցեն ։ Նու զայն՝ ցանկութիւնն և ախորժանք և մեծապարծութիւնն գտին ․ և այսպէս այնուհետև զպատճառանս քան զանձինն լաւ համարեցար ։ Ապա թէ ոչ , իցէ զի գտանէր ոք զքեզ 'ի մէջակացն՝ զխաւարն և զանտեղեակդ երկրի , զի կայիր զարմանայիր ընդ անդաստանս , չասէ՞ր արդեօք թէ զի՞ զարմանայցես , զի՞նչ կամիցիս տեսանել՝ զնոր ինչ զոր չիցէ տերուք տեսեալ ․ ո՞չ ապաքէն ըստ խամութեանն է զարմանալի ։

Դադարեսցուք այսուհետև յանօգուտ կարծեաց , և բուռն հարցուք զարդարև ճշմարտիցն ․ զի այս չէ ինչ , այլ ընդ վայր զաչս ևեթ խտղտէ , և գետոյ պէս սահի անցանէ և ոչ դադարէ ։ Վասն որոյ աղաչեմ , հաստատեսցուք զանձինս մեր 'ի վերայ վիմին , զի և հանդեր-

1. Միւսն պաչխտղուն .

ընկալանէր, քանզի չէին յայտնի, ոչ մանաւանդ և առաւել կղկղանս ասէին օրէնքն, մեաս կոչէին : Արդ. չէր մարթ զՔրիստոս շահել, եթէ ոչ զայն մեաս համարեալ էր : Յայն անհնարին պատրեաց զհերետիկոսս ընդունել զընթերցուածս, և համարեցան թէ նոցա լինի փոխանակ իցէ. և յորժամ ընկալան, ապա պատառեաց զնոսա իբրև ուռկանաւ և ընկենեաց իբրև կարթիւ : Այլ արդ զինչ ասիցեն նոքա :

Ահաւասիկ, ասեն, մեաս են օրէնքն և կղկղանք, և արդ զիա՞րդ ասիցեն թէ յոյժ են : Այլ նոյն իսկ քանզի փոխանակ օրինացն են : Այս աւասիկ յայտ իցէ . անդրանտրին իսկ 'ի բանիցն : Միտ դիցուք ստուգիւ . չասաց թէ մեաս են օրէնքն, այլ թէ մեաս համարիմ. և յորժամ զշահեն խօսէր՝ չասաց թէ համարէի 'ի շահ, այլ թէ շահ էր . և յորժամ զմեասուէն ասէ, զհամարիմն դնէ. և յիրաւի իսկ, զի այն բնութեամբ էր, և այս 'ի մերմէ կարծեաց եղև : Այլ արդ զիա՞րդ, ասեն, չիցէ մեաս : Այո, ասէ, մեաս է վասն Քրիստոսի : Այլ զիարդ էին շահ օրէնքն և կարծէին շահ՝ այլ էին, 'ի միտ առ : Ոչ ի չէր մարթ զանդրէն վայրենացեալս բնութեամբ միանգամ 'ի կերպարանս հաստատել . թէ չէին օրէնքն, նա և ոչ շնորհքն իսկ տային . ընդէ՞ր . քանզի իբրև կամուրջ եղև այն այնմ : Ոչ ի չէր մարթ իբրև 'ի կարի լինել 'ի խորոց ելանել 'ի բարձունս, եղեն օրէնքն սանդուղք . այլ այսուհետև չէ կարօտ սանդղոց՝ որ վերացեալն էր 'ի բարձունս, և չարհամարհէ զնա, այլ շնորհս ես ասեմ : Ոչ ի նա իսկ զնա չարար այլ ես կարօտ լինելոց քեանք, նա և ընդ այնր ես իսկ զի չէին այսուհետև կարօտ՝ պարտ է նմա առնել շնորհս :

Այլ արդ զի այսպէս օրէնքն հանէին զմեզ 'ի բարձունս, շահ զարծեցին մեզ և ոչ մեաս : Բայց այսուհետև վնասս համարիմ . զիա՞րդ . ոչ զի օրէնքն լինին մեաս են, այլ զի շնորհքն առաւել մեծ են : Ո՛ր օրինակ աք որ 'ի քաղցի իցէ, մինչ ունիցի փոքր մի արծաթ՝ ապրէ 'ի սովոյ . իսկ յորժամ ոսկի գտանիցէ և չիշխէ զերկոսին ունել, մեաս համարիցի զարծաթն ունել, այլ զայն թողու և զոսկին առնու . ոչ եթէ արծաթն լինի մեաս իցէ, քանզի և չէ իսկ . բայց քանզի չիցէն մարթ զերկոսին 'ի միասին ունել, այլ հարկ է զմին թողուլ և զմիւսն

ունել ։ Այլ արդ ոչ եթէ օրէնքն մեղս լինել իցեն, այլ առ օրէնսն զեզերել նստել և հեռանալ 'ի Քրիստոսէ․ որպէս յորժամ հեռացուցանիցէ 'ի Քրիստոսէ զմեզ, յայնժամ մեղս է․ ապա թէ առ Քրիստոս առաքիցէ, ոչ ևս է մեղս․ վասն այսորիկ ասէ՝ թէ վասն Քրիստոսի մեղս է ։ Եթէ վասն Քրիստոսի, ապա ոչ բնութեամբ ինչ մեղս է ։ Ընդէ՞ր ոչ տայցեն առ Քրիստոս մերձենալ օրէնքն․ նա ուսանիլ յայն սակս իսկ տուաւ․ և լրումն օրինաց Քրիստոս է, եթէ կամիցիք՝ կատարումն օրինացն է Քրիստոս ։ Որ օրինացն անսայ, թողու զօրէնսն․ եթէ անսայցեսցէք՝ թողուցուք, և եթէ չանսայցեսցէք՝ չթողուցուք ։

“Այլ և համարիմ իսկ, ասէ, զամենայն ինչ 'ի վնասու ”։ Ո՞չ ինչ ասիցեմ, ասէ, զօրէնսն․ ոչ արդարքն զեղեցիկ են ասաէն կեանքս․ այլ եթէ զիս 'ի Քրիստոսէ հեռացուցանիցեն օրէնքն՝ մեղս համարիմ։ Ընդէ՞մ, զմէ․ “Վասն առաւել գիտութեանն Յիսուսի Քրիստոսի տեառն իմոյ ”։ Յերևել արեգականն՝ զեզերել նստել առ ճրագի կարի մեղս է, որպէս անկանելոյ յառաւել գիտութենէն առնի մեղս ։ Տեսանես զի համեմատութիւնն գործէ․ “Վասն առաւել գիտութեանն ” ասէ, և ոչ վասն օտարուց․ զի առաւելն զազգակցութիւնն յայտ առնէ ։ Առաւել է, ասէ, որով լուս համեմատութեանն առաւելութիւնն գործէ, անդուստ և զնմանութիւն գիտութեանն ցուցանէ ։

“Վասն որոյ, ասէ, յամենայնէ զրկեցայ և համարիմ կորկորանս զի զՔրիստոս շահեցայց ”։ Ո՞ կորկորանս չև ևս է յայտ թէ զօրինացն ասիցէ․ ըմբռնեալ է թէ զաշխարհականն ինչ իրաց ասիցէ․ ասէ․ “Որ ինչ շահն էր ինձ, զայն ամենայն համարիմ վասն Քրիստոսի 'ի վնասու․ այլ և համարիմ իսկ զամենայն ինչ 'ի մեղս ”։ Թէպէտ և զամենայն ասացեր, այլ և զմնացորդն․ և եթէ այնպէս ինչ կամիցիս զի զօրինացն ասիցէ, սակայն և այնպէս ոչ թշնամանելին օրէնքն ։ Քանզի կորկորանքն 'ի ցորենոյն են, և ոժն [1] իսկ ցորենոյն ընկերացանքն, զծանծաղն ասեմ․ նա և առաջ իսկ կոթունն էր և ապա ցորեանն, և յետոյ զկոթունն 'ի բաց ընտրեմք 'ի ցորենոյն․ և եթէ չէր կոթունն, և ոչ ցորեանն լի-

1 Ցորենակին ոյժն ։

նէր։ Տեսանե՞ս զի ամենայն ուրեք ոչ զիւրն միայն կոչէ, այլ վասն Քրիստոսի. "Այլ որ ինչ շահն էր ինձ, ասէ, զամենայն համարիմ վասն Քրիստոսի ՚ի վնաս", ոչ վասն իւրայն, այլ վասն Քրիստոսի. "Եւ համարիմ իսկ, ասէ, զա̃մ ինչ ՚ի վնաս"։ Վասն էր. "Վասն առաւել գիտութեանն"։ Պարծեալ ասէ վասն նորուն. "Այլ համարիմ, ասէ, զամենայն ինչ ՚ի վնաս, զի զՔրիստոս շահեցայց"։ Տեսանե՞ս զի յամենայն կողմանց բառն հարկանէ զհաստատութիւնն Քրիստոսի, եւ չտայ թոյլ ուրեք մերկանալ օրինացն եւ զանձն յումեքէ ընկնել, այլ ծածկէ յամենայն կողմանց։

"Այլ գտայց, ասէ, ես ՚ի նմա իբր ոչ թէ զիմ ինչ արդարութիւն ունիցիմ որ յօրինացն է"։ Զի եթէ որ զարդարութիւնն ունէր՝ քանզի չէր ինչ այն՝ յայս ընթացաւ, որք չունիցին ո՞րչափ եւս առաւել պարտին այսր ընթանալ։ Այլ բարիոք ասաց թէ զիմ արդարութիւնն, զոր վաստակովք եւ քրտամբք ստացայ, այլ կեանքս, ասէ, բուն շնորհացս են։ Իսկ եթէ որ ուղղութիւնսն արար՝ ՚ի շնորհացն կեցցէ, ո՞րչափ եւս առաւել մեք։ Քանզի ՚ի դէպ էր ասել թէ այն արդարութիւն մեծ է որ ՚ի վաստակոցն իցէ, ցուցանէ թէ կեղկղանք են այն առ այսու արդարութեամբ։ Նա եւ ոչ ես իսկ որ զարդարութիւնն արարի, ընկենուի զայն երբեք ՚ի բաց եւ այսր ընթանայի. յո՞ր. յայս որ ՚ի հաւատոցն Յիսուսի Քրիստոսի է, այ̃ արդարութիւնն, ՚ի պարգեւացն այ̃. քանզի այ̃ ցուցեալ էր վաստակովք արդարանալ։ Այս պարգեւ իսկ է այ̃, եւ առաւել իսկ անցանէ զանցանէ ըստ նուազութիւն ուղղութեանցն որ ՚ի մերմէ փութոյ եւ ՚ի վաստակոյ լինիցին։

Զինչ իցէ հաւատն։ Այս ուրեմն ՚ի հաւատոցն է գիտութիւնն, եւ առանց հաւատոցն չէ մարթ ծանուցանել զնա. եւ արդարեւ իսկ ոչ, քանզի նուաստ պարտ է գիտել զզօրութիւն յարութեան նորա։ Ո՞ր խորհուրդք կարիցեն ստուգել մեզ զյարութիւնն. եւ ոչ մի, բայց միայն հաւատք։ Զի եթէ յարութիւն մարմնոյն Քրիստոսի հաւատովք ծանուցիցի, զիա՞րդ ծնունդն այն բանի խորհրդովք հասանիցի. զի քան զծնունդն յարութիւնն նուազագոյն է. ընդէ՞ր. զի ՚ի յարութեանն բազում օրինակք գործեցան, եւ ՚ի ծննդեանն եւ ոչ երբեք։ Ո՞ւ-

վեցուցանել զմեզ, այլ և ուրախ առնել. զի նոքօք լի-
նիմք կերպարանակից մահուն նորա. որպէս զի ասիցէ
թէ ՚ի նոյն պատկեր պատկերիմք: Որպէս և այլուր ա-
սէ՝ թէ "Զմեռելութիւն տեառն Յիսուսի ՚ի մարմինս
մեր կրեսցուք": Եւ այն ՚ի բազում հաւատոյն գործի:
Ոչ միայն զի յարեան հաւատամք, այլ զի և յետ յա-
րութեանն ունի բազում զօրութիւն. վասն այնորիկ ընդ
նոյն ճանապարհ ընդ որ նա գնաց գնամք. իբր թէ այ-
սու իսկ եղբարք նորա եղեաք, որպէս զի ասիցէ թէ
Քրիստոսք իսկ եղեաք մեք այսու, այսինքն օծեալք:
Քաջէ յորդորէ ինչ պատիւ հանէն չարչարանքն: Հա-
ւատամք զի կերպարանակիցք լինիմք մահուն նորա չար-
չարանօք: Զոր օրինակ ՚ի մկրտութեանն ընդունիմք թա-
ղեցաք նմանութեամբ մահուն նորա, նոյնպէս և աստ
կերպարանակից լինել մահուն նորա: Ընդ նմանադոյն
իսկ ասէ զնմանութեամբ մահուն նորա, քանզի ոչ ե-
թէ զամենայն մահն մեռաք, ոչ եթէ մարմնով անդա-
մօք մեռաք, այլ մեղօք մեղացն մեռաք: Եւ քանզի մահ
և մահ ասի, նա մարմնով և մեք մեղօք մեղացն. անդ
մարդկութիւն նորա մեռաւ, և աստ մարդն մեղաց՝ այս-
ինքն է մեղքն. վասն այնորիկ անդ ասէ՝ նմանութեամբ
մահուն նորա, իսկ աստ ոչ եթէ նմանութեամբ մա-
հուն նորա, այլ մահուն իսկ: Քանզի Պաւղոս ոչ ևս
մեղօք մեռանէր ՚ի հալածանս, այլ մարմնովն. քանզի
զնոյն իսկ մահ կրեաց:

"Որպէս հասանել կարացից, ասէ, առ ՚ի մեռելոցն
յարութիւն": Զի՞նչ խօսիս. ամենեքեան չիցե՞ն այնմ
հասանելոց. "Ամենեքեան, ասէ, ոչ ննջեսցուք, այլ
ամենեքեան նորոգեսցուք", ոչ միայն յարութե՛ն, այլ
և անեղծութեանն ամենեքեան, ոմանք ՚ի պատիւ և ո-
մանք ՚ի պատրաստեալ տանջանս: Իսկ եթէ ամենե-
քեան ոչ միայն յարութեանն հասանիցեն՝ այլ և անեղ-
ծութեանն, ընդէ՞ր որ ՚ի լաւն ինչ հասանելոց էր՝ զայն
ասիցէ, "Թերևս հասանել կարացից": Վասն այնո-
րիկ ասէ կամ ՚ի չարչարանս, "զի թերևս առ ՚ի մեռե-
լոց յարութեանն կարացից հասանել". զի թէ չէիր մե-
ռեալ, և յառնէիր իսկ ոչ: Եւ արդ զի՞նչ իցէ. թուի
թէ մեծ ինչ ակնարկէ. զի՞նչ իցէ. այնպէս ինչ մեծ է,
զի ոչ վստահ լինիմ վճիռ տալ, այլ զ՚ի թերևսն հա-

մին միայն 'ի պտակն գումարէ, և այլ ինչ ոչ տեսանէ։ Եթէ Պաւղոս որ զհետ մնեալ էր և զայնչափ չարչարանս կրէր՝ տակաւին ասէր թէ և հասից ես, մեք[1] զինչ ասիցեմք որ անկանիմքս։ Եւ զի ցուցցէ թէ պարտուց զրոյցք են, ասէ. "Վասն ըմբռնելոյ 'ի Յիսուսէ Քրիստոսէ"։ Ի կորստականաց էի, ասէ, ձեպէի ես ևս կորնչել. եհաս, ասէ, ինձ ած̃. քանզի և նա իսկ էր մեզ հետամուտ մինչ փախուցեալ խրտուցեալն էաք, բազում փոյթ յանձին ունէր զամենեսին առ հասարակ տուգիւ ընծայեցուցանել։ Զի ասելովն թէ ըմբռնեցայ՝ յայտ արար և զնորա որ կամեցաւն հասանել՝ ըղփոյթն, և զմեր բազում փախուստն և զծուլութիւնն թէ 'ի նմանէ հարթուցեալ սրանայաք։

Որպէս զի բազում պարտուց պարտապան եմք, և չէք որ սուգ առնու և ոչ որ արտասուիցէ և յոգւոց հանիցէ ընդ այն, զի ամենեքին յառաջին գնացս դարձաք։ Զոր օրինակ յառաջ քան զՔրիստոսի գալուստն փախչէաք յո̃յ, նոյնպէս այժմ։ Փախչել յո̃յ ոչ եթէ 'ի տեղեաց 'ի տեղիս ուրեք իցէ. և լուր մարգարէին. "Յո՞ երթայց ես, ասէ, յոգւոյ քումմէ, և յերեսաց քոց ես յո՞ փախեայց"։ Եւ արդ զիա՞րդ իցէ փախչելն յո̃յ. հեռանալն, օտարանալն, մեկուսինկալ 'ի նմանէ. "Ոյք հեռի արարին, ասէ, զանձինս իւրեանց 'ի քէն՝ կորիցեն". և այլուր. "Ո՞չ ապաքէն մեղքն ձեր անջրպետ լինին ընդ իս և ընդ ձեզ"։ Եւ զիա՞րդ լինիցի հեռանալն և անջրպետել. կամօք և ոգւովք, այլ տեղեաւն չէ ինչ հնար։ Քանզի ո՞ որ 'ի նմանէ որ յամենայն տեղիս հասեալ կայ բաւական՝ փախչել կարիցէ. բայց մեղաւորն միայն փախչի, և զայն իսկ ասէ գիր. "Փախնու մեղաւոր առանց ուրուք հալածելոյ"։ Կարի իսկ փախեաք յո̃յ, թէպէտ ցանկ իսկ հետամուտ իցէ մեր։ Առաքեալ հետամուտ էր զի մօտ երթայցէ, և մեք հալածիմք զի հեռի լինիցիմք յոյժ։

1 Յօրինակին պակասէր մեք զինչ ասիցեմք որ անկանիմքս. յաւելաւ 'ի յայնէն։

## ՑՈՐԴՈՐԱԿԱՆ

Իսկ արդ չիցէ՞ այս ողբոց արժանի, չիցէ՞ արտասուաց գործ։ Յո՞ փախիցիցես հէքդ և թշուառականդ, յո՞ փախիցիս 'ի կենաց և 'ի քումմէ փրկութենէ. եթէ յայդ փախիցիցես, զո՞ ապաստան առնիցես. եթէ 'ի լուսոյ փախիցիս, ընդ տեսանիցես. եթէ 'ի կենաց սրամտայցես, ընդ զինիցես կենդանի։ Փախիցուք 'ի թշնամւոյ փրկութեան մերոյ։

Յորժամ մեղանչեմք, փախչիմք յայդ, յօտար երկիր հատուած գնամք իբրև դողդին՝ որ վատնեաց զինչսն հայրենիս և գնաց յօտար երկիր, որ ծախեաց զամենայն արարն հայրենիսն և աղքատացաւ ընկեր։ Մեռանիմք և մեք խնչս հայրենիս. զի՞ր.. զերծայց զմեզ 'ի մեղաց, հալածեաց այժ և զօրութիւն 'ի գործ առաքինութեանն. աղարտեաց մեզ զյօժարութիւնս, զհամբերութիւնս. ես մեզ յաւազանին զհոգին որդոց. եթէ զայն ամենայն ծախիցեմք, աղքատանաք լինիմք։ Որ որպէս ախտացեալքն մնջդեռ ջերմանմբ և մարմինք ըկլցեն, ոչ յառնել կարեն և ոչ գործ ինչ գործել զօրեն. նոյն եթէ փարատեսցէ ոք 'ի նոցանէն զայն, և յառողջութիւն ածիցէ, և չհարկանիցեն բուռն զգործոց, յանձանց ծանրութենէ լինիցին նոցա կարօտութիւնն։ Այսպէս և առ մեզ. քանզի չարաչար ախտիւ և սաստիկ ջերմանմբ անկեալ դնիմք, ոչ 'ի մահիճս, այլ 'ի մեղս, և իբրև յաղքիս ընկեցեալ կամք 'ի չարութեանն 'ի կերպ վատաց, նեխեալք, հոտեալք, երկիթացեալք, խարուեալք, ծռեալք, ծիւրեալք, պատկերի նմանեալք և ոչ մարդոյ. շուրջ զմեօք պաշարեալք այսոց չարաց. և իշխան աշխարհիս եկեալ հասեալ ծառայ առնէ, և դնէ 'ի վերայ տրոփէ։

Այն ով միածինն, արձակեաց զձեռագայթս իւրոյ զաղատեանն, և զմուծն մածեալ՝ արար յանկարծ հալածական։ Այն առ մեզ թագաւորն որ յաթոռն հայրենի նստէր, եթող զաթոռն հայրենի։ Յորժամ ասեմ եթէ եթող զաթոռն հայրենի, մի փոփոխումն ինչ նմա կարծիցես, որ զերկինս և զերկիր առ հասարակ լնու. այլ ըստ տեսչութեանն ասեմ։ Այն՝ զի առ

մարմնով պատեալ էր, և անդ առ հօր նստէր. լնով 'ի խոնարհ, լնով 'ի վեր, լնով 'ի մարմնի, լնով յամենայ-նի. քանզի չէք աւել զինչ՝ եթէ մատամբ ուրեք լինիցի. եկն առ իւ. առ թշնամիս, որ առնէր զնա և փախչէր, որ և մտանել անգամ չկամէր, որ ցանկ հայհոյէր, միշտ թշնամանէր. Եւ եւս զի յաղթեալ ընկեցեալ կայր՝ որդ-նալից տարեալ, ախտաբեկ, տօլանոհ, ամենայն ցաւօք վարակեալ. ոչ եթէ ձեռամբ ինչ ընկեալ, այլ չար ցան-կութեամբքն. նա և պատուցեալ տրտմեալ էր, այ-նիքն հպարտութեամբն, և սովով և սրով սրայի[1], այ-նիքն ագահութեամբն, և հարեալ տարեալ էր մեղացն վէրօք, և աչաց կուրութիւն զկռապաշտութիւն, և խլու-թիւն և համրութիւն՝ զի. քարանց և փայտից երկիր պագանէին, և յանհնարինս ցաւս 'ի կարուած կայր, և բազ-մաձէր. զփայտն ած կոչէր, և զքարն նոյնպէս հա-մարէր:

Եւ տեսեալ զնա յայնչափ չարիս՝ և չզազրեցաւ և չխորշե-ցաւ, չտաղկացաւ և չատեաց. քանզի որդի էր, և զնոր սահղճուածն չմերժեաց. այլ գործէ իբրև բժիշկ ինչ հնարագէտ. կազմեաց դեղ բազմազգի, և նախ ինքն ճաշակեաց. քանզի ընդ պատժոյ նախ ինքն անց, և ապա մեզ ետ: Նախ իբրև զանդեղեալ եւ զա-ւազանն, և ապա փախեցաւ զամենայն զժանիս, և ա-մենայն ինչ փախստական եղև յանկարծակի. և ապ-տուհմնն զգլխաւ, և ձեռամբն ցածեաւ, և փուտն խարեցաւ. ամենայն ինչ՝ որ ինչ յապահութենէ և 'ի ցասմանէ և յայլոց չարեացն էին ախտքն, թափեցան հոգւովն. լու-սաւորեցան աչք, բացան ականջք. խօսեցաւ լեզու զօրհ-նութեան բարբառս, առ զօրութիւն ոտի. գեղեցկացաւ մարմին այնպիսի ինչ գեղեցկութեամբ, զի և որդի այ արժանի եղև կոչել. գեղեցկացեալ հոգւոյն շնորհօք, իբրև զնորածին ինչ որդի թագաւորի 'ի ծիրանիս և 'ի փափկութեան ածեալ:

Վայ ինձ, վայ ինձ. որչափ ինչ ապերախտութիւն շնորհեաց մեզ: Ոչ աք, մնաք, զարգացաք. արդ ընդէ՞ր փախչիցիմք 'ի բարերարէն. որ զայն ամենայն արար, զօրութիւն նոյն ասէ: Ձեր հնար պչչաւէ ցաւօք ծըն-

1 Ծխան սրածոյն:

գել և ժոյժ ունել, եթէ նորա չէր տուեալ մեզ զօրու-
թիւն և մեղաց թողութիւն։ Աերաք ծախեցաք զամե-
նայն զոր ինչ ետ մեզ. վատնեցաք զզօրութիւնն զոր
պարգևեաց, շիջուցաք զշնորհսն։ Օ խո՛րդ ծախեցաք.
զի ոչ 'ի լաւութիւն ինչ արկաք 'ի կիր, և ոչ 'ի պէտս
ինչ բարիս վարեցաք, և այն իսկ եղև մեզ կորուստ. և
որ քան զամենայն դժնդակագոյն է, յատարութեան եմք
և յեղջիւրն կերակուր եղեաք ապաստան. և չյօժա-
րիմք դառնալ առ հայրն և ասել՝ թէ մեղաք յերկինս
և առաջի քո, ուր այնպիսի հայր խնամակալ կայ, և
յոյժ ցանկացեալ է դարձին մերոյ. միայն դարձցուք, և
չունի 'ի դիպահօջ վասն առաջին յանցանացն։ Հաւա-
նի, աղաչէ, միայն թէ 'ի չարեացն հեռանայցեմք. բա-
ւական աղերս է դառնալն ևեթ. ոչ ինքն միայն չպա-
տուհասէ, այլ թէ և այլ ոք պատուհասիցէ, ըմբերա-
նէ. թէպէտ և կարի ոք յառաքինեաց իցէ։

Դարձցուք անդրէն և խնայեսցուք զանարգանս յորում
եմք. մինչև ցերբ հեռանայցեմք և չառնուցումք 'ի միտ
զնուազութիւնն. խողս առնեն զմեզ չարիքն, սովամահ
սպանանեն զոգիսն։ Արծարծեսցուք, նորոգեսցուք զան-
ձինս, սթափեսցուք, դարձցուք յառաջին ազնուակա-
նութիւնն, զի և հանդերձելոց բարութեանցն հասա-
նիցեմք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում
հօր և սուրբ հոգւոյն փառք, իշխանութիւն և պատիւ
այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

“Եղբարք, ես ոչ համարիմ զանձնէ եթէ հասեալ ի-
ցեմ. բայց մի ինչ է, զի որ ինչ զկնին՝ զայն մոռացեալ,
և որ ինչ առաջին կայ՝ յայն ձգտեալ դիմեալ սուրալիմ
'ի պատկն վերին կոչմանն այ 'ի Քրիստոս Յիսուս 'ի
տէր մեր ”։

Չիք այնպիսի ինչ որ թափուր առնիցէ յաղթու-
թեանց և փչլիցէ արտաքս իբրև զյիշատակն բարեաց
ինչ գործոց մերոց. քանզի երկուս ինչս ծնանի, և ծու-

լագոյնս գործէ և 'ի հպարտութիւն գրգռէ ։ Վասն ո-
րոյ և Պաւղոս քանզի գիտէր եթէ հակամէտ 'ի ծու-
լութիւնն է բնութիւն մեր, և ինքն կարի իսկ յարգեաց
զփիլիպեցիսն, տես զիարդ ցածուցանէ զնոսա 'ի հպար-
տանալոյ բազում իսկ և այլովք վերնովք բանիւքն, ա-
ռաւել ևս այսու զոր այժմ ասէ. «Եղբարք, ես ոչ հա-
մարիմ զանձնէ եթէ հասեալ իցեմ»։ Իսկ եթէ Պաւ-
ղոս չև ևս էր հասեալ և ոչ վստահէր վասն լաւագոյն
յարութեանն և ոչ վասն հանդերձելոց բարութեանցն,
զուն ուրեք և հազիւ ոք իսկ՝ որոց և ոչ մի ինչ մասն
յայդպիսի ուղղութեանցն կատարեալ իցէ։ Չհամա-
րիմ, ասէ, հասեալ. քանզի չև կատարեցի զամենայն
առաքինութիւնն։ Որպէս զսուրհանդակէ ոք ասիցէ՝ թէ
չև ևս եհաս զամենայն ընթացսն 'ի գլուխ։ Նոյնպէս և
այլուր ասէ եթէ «Զպատերազմն բարիոք պատերազ-
մեցայ, զընթացս իմ կատարեցի», և աստ թէ «Չհա-
մարիմ զանձնէ եթէ հասեալ իցեմ», թէ հաւաստեաւ
ոք ընթեռնու՝ իմանայ բարիոք զպատճառս զայնց բա-
նից և զայսց. քանզի չէ պարտ ստէպ զայնս յեղյեղել։
Այլ զի զայս բանս կարի իսկ յառաջ ասաց, և զայն մօտ
'ի վախճան, «Միում ևեթ ուշ ունիմ, ասէ, զի որ
ինչ զկնին է զայն մոռացեալ՝ և որ ինչ առաջին կայ յայն
ձգտեալ ստիպիմ 'ի վերին պատկն կոչմանն այ 'ի Քրիս-
տոս Յիսուս», և այն իսկ է որ յորդորէր զնա 'ի յա-
ռաջ ձգտել։ Որ համարիս թէ իսկ և իսկ կատարեալ
իցէ և չիցէ ինչ պակաս յառաքինութենէն, կասէ յըն-
թացից որպէս թէ ամենայնի իսկ հասեալ իցէ. և որ
չև ևս համարի զանձն հասեալ 'ի կատարումն, չդադա-
րէ երբէք յընթացից։

Զայն ևեթ պարտիմք ցանկ ածել զմտաւ, թէպէտ
և բիւր բարութիւնս գործեալ իցէ. զի թէ Պաւղոս
յետ բազում մահուանց՝ զկնի այնչափ վշտաց այնպէս
համարէր, որչափ ևս առաւել մեք։ Բայց և ոչ կասե-
ցի ինչ, ասէ, ընդ այն. զի այնչափ ընթացայ և չճա-
րեցի ինչ, և ոչ զանգիտեցի և վհատեցի. այլ տակա-
ւին դեռ ընթանամ, դեռ ճեպիմ. քանզի զայն ևեթ
գիտեմ եթէ զիարդ օր ըստ օրէ յառաջադէմ գտայց։
Նոյնպէս և մեզ պարտ է մոռանալ զուղղութիւնն և 'ի
թիկանց թողուլ։ Քանզի և սուրհանդակն ոչ որչափ

սուրհայեան զայն ինչ ածէ զմտաւ, այլ թէ որչափ ես կէտք և ասպարէզք առաջի կայցեն: Որպէս և մեք մի որչափ ինչ վճարեցաք զառաքինութեանն զմտաւ ածիցեմք, այլ որ ինչ թերին իցէ: Զինչ օգուտ իցէ մեզ վճարելն յորժամ թերին 'ի նոյն ոչ յաւելուցու: Ոչ ասաց թէ չածեմ զմտաւ, այլ թէ բնաւ և չյիշեմ իսկ ոչ: Զի այնպէս յոլովագոյնք լինիմք յորժամ զընաւ յօժարութիւնն զթերեւան ածիցեմք, յորժամ զառաջինսն մոռացօնս առնիցեմք: Զգուշացուք, ասէ, մինչ չև ախոյանին յաղթեալ իցէ. փութացուք առնուլ, զի որ ընդ[1] ոլորս իմն մտեալ իցէ այնպէս իմն թէպէտ և ամենեւին ընթացեալ երթայցէ՝ զոտն զամենայն մարմնոյն անցուցանել ջանայ, զգլուխն յառաջադէմ ուղղէ, զձեռն առնը պարզէ, զի այնու աւելի ինչ յընթացսն յոլովիցէ. և այն 'ի բազում յօժարութենէ լինի և յաճախ ջերմութենէ: Այսպէս պարտի որ ընթանայցէն՝ ընթանալ այնչափ փութով, այնպիսի յօժարութեամբ. մի ծոյլ, մի մեղկ, մի 'ի գեր մնաց:

Որպէս ինչ 'ի մէջ այնպիսի սուրհանդակաց իցէ և յուլին և պղերգին, նոյնչափ ընդ մեզ և ընդ Պաւղոս: Նա հանապազ մեռանէր, ցանկ առաքինանայր. չէր ժամանակ, չգոյր ժամ յորում ոչ յաւելոյր գամ քան ըզգամ յընթացսն. ոչ առնուլ կամէր, այլ յափշտակել զպսակն. քանզի այնպէս իսկ է առնուլ զբրաբիոն: Ի վեր կայ որ զբրաբիոնն տայ, այսինքն զպսակն յաղթութեան. 'ի վեր կայ, անդ 'ի բարձունս ունի պսակիչն: Տես որչափ ինչ անջրպետութիւն կայ 'ի միջի, այնչափ վայրս հատանել անցանել հասանէ, յորպիսի բարձրութիւնս վերանալ ելանել թեւօք հոգւոյն. այլ իւիք չմարթի սլանալ ելանել 'ի բարձունս: Արժան իսկ հասանէ երթալ անդր, իշխանութիւն և համարձակութիւն կայ առաջի. "Մեր, ասէ, առաքինութիւնն յերկինս է,,: Անդ է պսակն, անդ պսակիչն:

Տեսանե՞ս զսուրհանդակսն զկարգ ընդ օրինօքն կան, որպէս զկասեցուցիչսն զօրութեանն չառնեն հուպ յանձինս, զկարգ ճգնին, զօր հանապազ մըցին 'ի կռիւս, կրթին 'ի մարզիկսն և ըստ օրինացն յարգարին: Որ-

1 Յօրինակին անդ:

չափ ես առնել մեզ պարտ իցէ ցուցանել յօժարութիւն, քանզի չէ հասարակ պարգեւքն, եւ բազում արգելք կան առաջի. օրինակ կեաց, քանզի բազում ինչ է որ կասեցուցանէ զզօրութիւն: Այլ դու ճմի արկանիցես կարթ եւ հարկանիցես առամբ մտացդ. քանզի ոչ եթէ բնութք ինչ իցէ կռիւն, այլ կամաց: Եւ եթէ գործեսցուք զկամսն, զի մի ծանրութիւն հակիցէ եւ հատանիցէ զյժ֊ ոտիցն: Կրթեա զոտս լինել զգուշագոյնս, քանզի բազում են սահաւութիւնք. եթէ բազում անգամ գլորիցիս. կորուսանես զընթացսն. բայց թէ եւ գլորիցիս, յառնել ջանասջիր, քանզի գոյ հնար միւսանգամ յառնել եւ յաղթել: Մի ընդ սահաւումն եւեթ ընթանայցես, զի մի սահեալ գլորիցես. ընդ հաստատունն եւեթ ընթանայցես, 'ի վեր ունիցիս զգլուխ, 'ի բարձունս ամբառնայցես զաչս: Այսպիսի ինչ եւ մարձիկք սուրհանդակացն պատուիրեն, եւ այնպէս 'ի տես տոկայ զօրութիւնն: Ապա եթէ 'ի վայր նայիցես, զգետին նշմարիցես, վհատիցիս մեղկիցես գլորիս: Ի վեր նայեաց ուր պսակիչն կայցէ եւ զպսակն ունիցի, եւ պսակին տեսիլ առնել յորդորիցէ զկամսն եւ չտայցէ զգալ պարգեւացն, յոյս պարգեւին զերկայն ասպարէզն կարճ երեւեցուցանէ:

Զինչ իցէ բրաբիոնն. ոչ ոստ արմաւենի եւ ոչ պսակ ձիթենւոյ եւ ոչ պսակս ոսկի: Այլ զինչ. արքայութիւնն երկնից, հանգիստն յաւիտենական, փառքն Քրիստոսի, ժառանգութիւն, եղբայրութիւն, բիւրապատիկ բարութիւնք: Չիք ասել, չիք հնար պատմել զգեղ այնր պսակին. որ ունիցի զնա՛ նա միայն գիտէ, որ հանդերձեալն է առնուլ՝ նա միայն է տեղեակ. ոչ յոսկւոյ եւ ոչ յականց պատուականաց, այլ անչափ պատուական: Ոսկի ցիխ է առ այնու պսակաւ, եւ ականք պատուականք իբրեւ զկաւ առ այնու գեղեցկութեամբ: Եթէ զայն ունիցիս, բազում փութով երթայցես յերկինս, անդ ձեմեսցիս, անդ յօրանայցես. նա եւ հրեշտակքն ես մեծարիցեն զքեզ յորժամ տեսանիցեն զայն պսակ 'ի գլուխ, եւ առ ամենեսին համարձակ մտցես:

"Ի Քրիստոս Յիսուս" ասէ: Տես զլսողութիւն բարերար ծառայն. Քրիստոսիւ Յիսուսիւ առնեմ, ասէ, զայս: Քանզի չէր հնար առանց նորա օգնականութեանն հատանել անցանել զայնչափ անջրպետս֊

թիւնս. բազում պաշտպանութեան պէտք են, յոյժ զօրաւորին լինելոյ: Ի խոնարհ կամի զի պատերազմիցիս, և անդ 'ի բարձունս տայ զպսակն. ոչ որպէս աստ ուր մարտն է՝ անդէն և պսակ, այլ 'ի լուսաւոր աշխարհին է պըսակն: Զտեսանիցէք զբազումս 'ի նահատակաց և 'ի կառամարտակաց զի զպատուականսն ոչ անդէն 'ի խոնարհ 'ի կռուանոցին պսակեն, այլ 'ի վեր կոչէ թագաւորն և պսակէ: Նոյնպէս և 'ի մերում մարտիս յերկինս կոչէ և առնուս զպսակն:

«Այսուհետև, ասէ, որ միանգամ կատարեալքդ իցէք՝ զայս խորհեսջիք, և եթէ այլ ազգ ինչ խորհիջիք՝ և զայն ձեզ ա̃ծ յայտնեսցէ»: Ո՞ր. թէ պարտ է զառ 'ի յետոյսն մոռանալ և յառաջադէմսն նկրտել. որպէս զի կատարեալ մնաց է չհամարել զանձն կատարեալ: Իսկ արդ զիա՞րդ ասիցես թէ «որ միանգամ կատարեալքդ իցէք»: Աղէ ասա, զայն խորհեսցիմք զոր դուն խորհեցիս. եթէ չառեր ինչ և չիցես կատարեալ՝ զիա՞րդ հրամայիցես կատարելոցն զայն խորհել զոր դուն խորհեցիս որ չեւ ես կատարեալ: Նա այն իսկ է կատարումն: «Իսկ եթէ այլ ինչ խորհեսջիք, և զայն ձեզ ա̃ծ յայտնեսցէ». այսինքն, թէ համարիցի ոք զանձն ինչ ուղղութիւնս արարեալ՝ զգոյշ կայցէ անձին: Բայց չասաց այսպէս. այլ զի՞նչ. «Իսկ եթէ այլ ազգ ինչ խորհիջիք, ասէ, և զայն ձեզ ա̃ծ յայտնեսցէ». այսինքն յորդորեսցէ յայն: Քանզի Պաւղոս ուսոյց, և ա̃ծ 'ի նոյն յորդորեսցէ: Իսկ չասաց թէ յորդորեսցէ, այլ թէ յայտնեսցէ. զի կարծեցուցէ թէ ես անյայտն է իրքն: Ոչ զհաւատոյն կրօնից ասէ զայս, այլ զվարուցն կատարմանէ, և զի մի զանձինս կատարեալս համարիցին: Որ համարի թէ ամենայնի հասեալ իցէ, չունի ինչ:

«Բայց յոր ժամանեցաքն, ասէ, 'ի նմին կանոնի կացջիք, զնոյն խորհել»: Բայց յոր ժամանեցաքն, ասէ. զի՞նչ իցէ: Որ այժմ, ասէ, զոր ուղղեցաքն, պինդ կալցուք զայն, զսիրոյն, զմիաբանութեանն, զխաղաղութեանն. զայն, ասէ, է իսկ ուղղեալ. «յոր ժամանեցաքն». այսինքն թէ զայն արդէն իսկ ուղղեալ է: Տեսանե՞ս զի իբրև զկանոնս կամի ունել մեզ զպատուիրանսն: Կանոնն ոչ յաւելուած և ոչ թերութիւն ըն-

թեան՝ որպէս և այժմ իսկ բազումք կորնչին. նա և 'ի թագաւորութեան և յընկերահաշտեայ զօրաւորութե զբազումս կարեմ ցուցանել զկորուսեալս։ Կամիս տեսանել 'ի զինուորութեան զբազումս ապրեալս, որպէս Կոռնելիոս և նոյնպիսիք. և 'ի գործակալութեց տանց, որպէս Ներքինին եթովպացւոյն։ Նոյնպէս յամենայն կողմանց, եթէ 'ի լաւ արկանիցեմք 'ի կիր զմեծութին, չլինիցի ինչ մեզ վնասակար. և եթէ չծախիցեմք 'ի լաւ, կորուսանէ։ Նա և թագաւորութիւն և աղքատութիւն և մեծութիւն՝ արթնոցն չկարէ ինչ վնասել. ուր գերութիւնն իսկ չեղև վնասակար, և ոչ աղքատութիւն և ոչ վաճառակուր լինել։

Օ մուտ ած զՅովսէփ. ծառայ եղև, և զառաքինութիւնն ողջ պահեաց. զմուտ ած զԴանիէլ և զերիս մանկունսն. գերիք էին, և զկարգ պայծառագոյնս եղեն։ Ամենայն ուրեք առաքինութիւնն պայծառանայ. և չկարէ ոք պամագիտ լինել, և չիցէ ոք որ զնա խափանել կարիցէ։ Նա զինչ աւելի աղքատութիւն և գերութի և ծառայութիւն և սով և կեղ և չարչարանս. քան ըզծառայութիւն ևս չար են ցաւք ինչ չարաչարք, որով Ղազարն և Յովբ տանջեցան. ցուցած էր և Տիմոթէոս՝ որ բազում ցաւօք լլկէր։ Տեսանես, զի չիք ինչ որ առաքինութեանն գեր 'ի վերոյ լինիցի. ոչ մեծութիւն, ոչ աղքատութիւն, ոչ իշխանութիւն, ոչ գործակալութիւն, ոչ ցաւք, ոչ անարգանք, ոչ 'ի պատուոյ անկանել, այլ զայն ամենայն թողեալ յերկրի՝ յերկինս վերանայ. միայն թէ ոգին առաքինի իցէ, և չիք ինչ արգել լինելոյ ընտիր։

Յորժամ միակն առողջ իցէ, չիք ինչ արտաքուստ որ կարիցէ նմա խափան լինել. որպէս 'ի ճարտարացն արուեստս յորժամ ճարտարապետն հմուտ և մտադիր գործոյն իցէ, թէպէտ և ցաւք ինչ հասանիցեն, և աղքատութիւնն 'ի վերայ հասանիցէ, թէպէտ և զգործին ևս այլոյ յանօթ տայցէ, թէ գործիցէ և թէ չգործիցէ՝ չնուազի ինչ, քանզի արուեստն 'ի միտսն նկարեալ կայ, նոյնպէս և առաքինին՝ որ ընդ այ միամիտ իցէ, եթէ 'ի մեծութիւն հասանիցէ՝ ցուցանէ զարուեստն, և եթէ յաղքատութիւն իջանէ՝ նոյնպէս, եթէ 'ի ցաւ իցէ և եթէ յառողջութեան, եթէ յանար-

յոր նոքայն արժանի եղեն հասանել՝ կամիցիս երթալ, ընդ այն ճանապարհ գնա՝ որ անդր տանիցի։ Հանգըստեան ճանապարհն չտանի անդ, այլ նեղութեանն. այն ընդարձակ է, և այս անձուկ. ընդ անձուկն գնասցուք, զի յաւիտենից կենացն հասանիցեմք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԹՂԹՈՑՆ ԿՈՂՈՍԱՑԻՈՑ



## ՊԱՏՃԱՌՔ

Նմանայն սուրբ թուղթքն Պաւղոսի ունին աւելի ինչ որք 'ի կապանսն գրեցան, որպէս Եփեսացւոցն և որ առ Փիլիմոն գրեցաւ, որպէս առ Տիմոթէոսն և առ Փիլիպեցիսն, կամ որպէս այս ինչ որ առաջիս կայ. քանզի և այս մինչդեռ 'ի կապանսն էր գրեցաւ, որպէս և գրէ իսկ թէ "վասն որոյ և կապեալս իսկ եմ, զի յայտնի արարից զնա որպէս և պարտ իցէ ինձ խօսել": Նմանայս թուղթ թուի ինձ եթէ կրտսեր է քան զՀռոմայեցւոց թուղթն. զի զայն մինչ չև տեսեալ էր զՀռովմայեցիսն գրեաց, և զայս յետ տեսանելոյն և մօտ 'ի վախճան քարոզութեան էր: Եւ յայտ անտի է, քանզի 'ի թղթին որ առ Փիլիմոն է՝ ասէ. "Այնպիսի ոք որպէս Պաւղոս ծերացեալ", և զՈնեսիմայ աղաչէ. և յայսմ զՈնեսիմոս յղէ որպէս և ասէ իսկ՝ թէ "Ոնեսիմաւ հանդերձ հաւատարմաւ և սիրելի եղբարբ": Հաւատարիմ և սիրելի եղբայր կոչէ զնա, վասն որոյ և համարձակութեամբ իսկ ասէ յայսմ թղթի՝ թէ "Ի յուսոյ աւետարանին զոր լուարուք քարոզեալ ընդ ամենայն արարածս 'ի ներքոյ երկնից": Եւ յայտ է թէ ժամանակք էին քարոզութեանն: Եւ թուի ինձ թէ քան զայն թուղթ որ առ Տիմոթէոսն է՝ երէց է, և մօտ 'ի վախճանն էր այնուհետև. քանզի անդ ասէ. "Ես այսուհետև նուիրեալ եմ": Եւ քան զայս Փիլիպեցւոցն

# ՃԱՌ ԱՌԱՋԻՆ

«Պաւղոս առաքեալ Յիսուսի Քրիստոսի կամօքն այ»:

Պարտ է և զպատճառս Թղթոյն ասել, զոր առաքէն. Խակ 'ի Թղթիս գտանեմք. Զինչ եղեն: Հրեշտակաց համարէին մերձենալ առ ած, բազում խոնարհ հրեշտակօք և հեթանոսականս ունէին. որոց ոչ կայր ուղղեցէ, սկիզբն առնելով Թղթոյն՝ ասէ «կամօքն Աստուծոյ»: Նշանակէ դարձեալ զորովն եղ: Զի եթէ կամօքն այ ասէ՝ զՀայր փայլը չասէ, և ոչ յարժամ առաջասացէ՝ և ոչ զորդին նուաստագոյն զործէ: «Եւ Տիմոթէոս, ասէ, եղբայր»: Նաև սուրբն և նա առաքեալ էր: Ի դէպ է թէ և զնա ճանաչէին սուրբքն որ 'ի Կողոսացւոցն էին: Կողոսիս քաղաք էր 'ի փռիւգացւոց աշխարհին, և յայս նշան է զի Լաւոդիկիա մօտ յայն քաղաք կայր: «Եւ սրբոց հաւատացելոց եղբարց 'ի Քրիստոս»: Ուստի, ասէ, եղեր սուրբ, այլ ասա զիա. ուստի կոչեցար հաւատացեալ. ոչ ապաքէն մահուանն այն սրբեցար, ոչ ապաքէն վասն 'ի Քրիստոսն հաւատոյ կոչեցար հաւատացեալ: Ուստի եղեր եղբայր. ոչ զործովք, և ոչ հրեշտակօք[1] և ոչ ուղղութեամբք երևեցար հաւատարիմ: Նմանապէս խորհուրդք ուստի հաւատացան քեզ. ոչ ապաքէն Քրիստոսիւ:

«Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յայ 'ի Հօրէ մերմէ»: Ուստի տուան ձեզ շնորհքն, ուստի խաղաղութիւն. յայ, ասէ, 'ի Հօրէ մերմէ. Թէպէտ և չյիշեցէ աստ զանուն Քրիստոսի: Եւ այնպիսիկ որք զՀոգին սուրբ բամբասեն՝ ասեմ. ուստի ած Հայր ծառայից կոչեցաւ. ո՞ զայսպիսի մեծամեծս յարդարեաց. ո՞ արար զքեզ սուրբ. ո՞ կացոյց զքեզ հաւատարիմ և որդի այ ընծայեցոյց: Որ արարն զքեզ արժանի, նոյն և հաւատարմութեան ամենայնի եղև քեզ պատճառք: Վասնզի հաւատացեալք ոչ միայն 'ի հաւատալոյն կոչիմք, այլ

1 Յոյնն բանիւ :

զի և խորհուրդքն առ 'ի յայն հաւատացան մեզ, զոր և ոչ հրեշտակք յառաջ քան զմեզ գիտէին: Նա և անխախիր իմն է Պաւղոսի զայս այսպէս դնել:

«Գոհանամ, ասէ, զԱյ զՀօրէ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»: Զի թէ իմն եթէ զամենայն ինչ 'ի Հայր հանիցէ, զի մի վաղվաղակի ընտանեցուցանիցէ նոցա զբանն: «Յամենայն ժամ, ասէ, աղօթս առնեմ վասն ձեր»: Ոչ միայն գոհութեամբն, այլ և հանապազորդ աղօթիւք ցուցանէ զսէրն. զի և զոր չէր տեսեալ, այնպէս ունէր 'ի միտ: «Յորժամ, ասէ, լուաք զհաւատոյն ձերոց որ 'ի Քրիստոս Յիսուս է»: Ներագոյն ասաց՝ տեառն մերոյ, և ապա՝ Յիսուսի Քրիստոսի. Նա է, ասէ, տէր և պատճառք ամենայնի, և ոչ ծառայքն Յիսուսի Քրիստոսի, և այս ինչ է նշանակ բարեպաշտութեանն. «Զի նա, ասէ, փրկեսցէ զժողովուրդ իւր 'ի մեղաց իւրեանց»: «Յորժամ լուաք զհաւատոյն ձերոց որ 'ի Քրիստոս Յիսուս և սիրոյն զոր ընդ ամենայն սուրբս»: Հաւատոյն ընտանեցուցանէ զնոսա: Աշակերտեալ է որ զայս ամենայն պատմէ: Առաքէ զթուղթն 'ի ձեռն Տիւքիկոսի, և զնա առ իւր ունի: «Եւ զսէրն, ասէ, որ ընդ ամենայն սուրբս»: Ոչ առ սա կամ առ նա. թէ այնպէս իցէ՝ և առ մեզ:

«Վասն յուսոյն, ասէ, որ կայ պահի մեզ յերկինս»: Զհանդերձելոց բարութեանցն ասէ զայս, վասն փորձութեանցն առ 'ի մի աստէն խնդրելոյ զհանգիստ. զի մի ոք ասիցէ զինչ օգուտ իցէ 'ի սիրոյն որ առ սուրբսն իցէ եթէ հարկանիցին և չարչարիցին: Բերանս եմ, ասէ, զի մեծամեծ բարութիւնք ածեն նոցա յերկինս: Վասն յուսոյն, ասէ, որ կայ պահի: Զգուշագոյն եցոյց: «Զոր յառաջագոյն լուարուք բանիւ ճշմարտութեանն»: Այս բանիւ կսկծեցուցանէ զնոսա թէ 'ի բազում ժամանակաց հետէ ունէին զքարոզութիւնն և զեղծեցին: «Զոր յառաջագոյն լուարուք բանիւ ճշմարտութեանն աւետարանին»: Նա զճշմարտութիւնն վկայէ, և յիրաւի իսկ, քանզի չիք 'ի նմա ստութիւն: Աւետարանին, ասէ. և չասէ թէ քարոզութեանն: Աւետարան կոչէ, զի յաճախագոյն յուշ առնիցէ նոցա զերախտեացն Այ: Նախ գովեաց զնոսա, և ապա յուշ առնէ նոցա զերախտեացն:

«Որ եկեալ համարեալն 'ի ձեզ, ասէ, որպէս և յամե-նայն աշխարհի»: Հաւատսիկ շնորհս իմն համարի առ-ցա. զեկեալ համարեալն 'ի ձեզ՝ այլ ընդ այսր ասաց. Եկն եհաս, ասէ, և դարձեալ վերացաւ, այլ եկն հանգեաւ և անդէն կայ և մնայ: Այս զի և առաւել բազումք առ 'ի զբաղումն հարորդս ունելոյ կրօնիցն հաստատին, վասն այնորիկ ածէ զնմանն՝ թէ «որպէս և յամենայն աշ-խարհի»: Յամենայն ուրեք, ասէ. 'ի բնաւ ի ունի, ընդ-հանուր հաստատեալ կայ: «Այլ է, ասէ, պտղաբեր և աճեցուն որպէս 'ի ձեզ»: Պտղաբեր վասն գործոցն, աճեցուն վասն զբաղումն ընդ իւրև փախելոյ: Այս և 'ի տունկս յայնժամ առաւել ստախիտ լինի ծառն, յոր-ժամ արմատք մնկոյն հաստատիցին: «Որպէս և 'ի ձեզ», ասէ: Յառաջագոյն զրուէ զլսողսն գովութիւքն[1], զի մի և ակամայ իսկ մերկնեցի: «Յօրէ յորմէ հետէ, ասէ, լուարուք»: Այս այն են զարմանք զի վաղվաղակի մերձեցայք և հաւատացէք, և իսկ և իսկ 'ի սկզբանն ցուցէք զպտուղ: «Յորմէ, ասէ, լուարուք և 'ի միտ ա-ռէք զշնորհսն այ ճշմարտութեամբ»: Ոչ բանիւք, ա-սէ, և ոչ պատրանօք, այլ արդեամբք իսկ: Զայն իսկ ասէ պտղաբերս, կամ զնշանսն և զքանչելիսն, թէ իսկ և իսկ իբրև լուարուք, իսկ և իսկ ծանեարուք զշ-նորհսն այ: Այլ արդ զոր իսկ և իսկն ընկալարուք ան-ձամբ զօրութեամբ, և արդ թերահաւատ իմիք մնալ լինիցիք, զիարդ չիցեն անհնարին իրք:

«Որպէս ուսարուք, ասէ, յԵպափրեայ սիրելւոյ ծառ-այակցէ մերմէ»: Ի դէպ է եթէ սորա քարոզեալ էր անդ. ուսարուք, ասէ, զաւետարանն: Այլ աստ զհա-ւատարմութիւն առնն յայտ առնէ. «Ի ծառայակցէ մերմէ, որ է հաւատարիմ պաշտօնեայ ընդ ձեր քսի. որ և պատմեաց մեզ զսէրն ձեր հոգւով»: Մի, ասէ, երկմտէք վասն հանդերձեալ յուսոյն. քանզի ձեզէն իսկ տեսանէք զամենայն տիեզերս դարձեալ: Այլ զինչ պիտոյ է ասել զայլոցն. որ առ ձեզդ իսկ է, առանց այլոց ամենայնի հաւատարիմ: Ի միտ առէք, ասէ, զշնորհսն այ ճշմարտութեամբ. այսինքն արդեամբք: Զի այսր իսկ երկրգեան հաստատեն զհանդերձեալսն, և ամենե-

1 Օրինակին գովութիւնքն. եղաւ ըստ յունին:

ցուն հաստատեալ, և ձերդ։ Որ է, ասէ, հաւատարիմ, այսինքն ճշմարիտ։ Զինուորդ է ընդ ձեր պաշտօնեայ. առ նայն երթալով. և պատմեաց, ասէ, զսէրն ձեր հոգւով, այսինքն զհոգևորսն զոր ունիք ընդ մեզ։ Այլ եթէ ոպ՝ Եփափրասի պաշտօնեայ իցէ, զխորհուրդ առէք հրեշտակօք մերձենալ առ Ած։ Որ պատմեաց մեզ զսէրն ձեր հոգւով. այն իսկ է զարմանալի և հաստատուն սէր։ Այլ այլք սնոյն եւեթ սիրոյ ունին, վասն այնորիկ վաղվաղակի քակտի։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Բազում պատճառք են որ զսէրն գործեն. բայց զաղտեղիսն 'ի բաց թողցուք, քանզի չիք ոք որ վասն այնպիսեացն հակառակի ընդ մեզ եթէ չիցեն յառաւելք. Բայց եթէ կամիք և զբնականսն և զաշխարհականսն 'ի մէջ բերցուք։ Աշխարհականքն այնպիսի ինչ են, յորժամ բարիս ինչ ոք գտանիցէ, 'ի նախնեաց ստանայցէ բարեկամ, ազգականակից կամ ուղեկից լինիցի, կամ եթէ դրացի ոք իցէ, բարւոք են և այնպիսի սէրք։ Մանաւանդ եթէ և արուեստակից ոք լինիցի, այն իսկ է սէր հաստատուն. բայց գոյ ինչ 'ի մէջի նախանձ և չարակնութիւնք։ Իսկ բնականքն՝ որպէս հօր առ որդի և որդւոյ առ հայր, եղբօր առ եղբայր, հաւոյ առ թոռն, մօր առ որդիս. եթէ կամիք՝ և զկնոջ առ այր, և զամենայն իսկ զամուսնութեանցն. զի այնք քան զայլսն թուին սաստկագոյնք։ Թուին ասացի, վասն բազում անգամ ջրելոյ. զի բարեկամք ընդ բազում տեղիս սերտագոյնք երևեցան քան զեղբարս և զորդիս առ հարս. և իսկ ծնունդն չօգնեաց ինչ. որ ոչն ճանաչէր զնա՝ 'ի թիկունս եհաս, օգնական գտաւ։

Բայց հոգևոր սէրն քան զամենայն 'ի վերոյ է, իբրև զարքայն ոք թագաւորացն որ իւրոցն տիրիցէ և պայծառագոյն կերպարանս ունիցի։ Զի չիք ինչ երկրաւոր որ ծնանիցի զնա որպէս զմիւսն, ոչ սովորութիւն, ոչ երախտիք, ոչ բնութիւն, ոչ ժամանակ. այլ 'ի վերուստ յերկնից իջանէ։ Այլ ընդ այն զի՞ զարմանայցես եթէ չէ կարօտ երախտեաց ընդ խնամ ածանելոյ, ուր զի և չարչարանս կրելով չլքի։ Այլ զի այս քան զայն մեծ է,

լուր Պաւղոսի որ ասէ. «Ուխտուք խնդրէի նզով լինել ես ինքնին ՚ի Քրիստոսէ վասն եղբարցն իմոց»։ Ո՞վ ոք Հայր ուխտուք խնդրէ ՚ի չարչարանս մտանել վասն որդւոյ իւրոյ։ Եւ դարձեալ եթէ «Լուծանալ և ընդ Քրիստոսի լինել առաւել յոյժ լաւ է. բայց կալ մնալ ՚ի մարմնի կարևորագոյն է վասն ձեր»։ Ո՞վ ոք մայր ունիցի յանձին այսպիսի ինչ ասել և զխուր զգթութիւնս անտես առնել։ Եւ դարձեալ լուր նմին. «Մեք մնացաք ՚ի ձէնջ առ ժամանակ մի երեսօք և ոչ սրտիւք»։ Եւ աստ եթէ թշնամանիցի Հայր՝ քակէ զխնամն. իսկ անդ ոչ ինչ այնպէս, այլ առ քարկոծիչսն երթայր երախտիս առնել նոցա։

Զի՞նչ ինչ և չէ իսկ այնպէս կարծրագոյն իբրև զՀնագոյն կռապաշտս։ Որ վասն բարի գործոց՝ բարեկամ լինիցի, եթէ ցանգ չգտանիցէ՝ թշնամի լինի։ Մինչդեռ առողջութիւնն է՝ անքակ կայ, և ՚ի հիւանդել առողջութեանն՝ չիջանի բարեկամութիւնն։ Եւ կին դարձեալ յորժամ կաղ լինիցի, թողուցու զայրն և զգութն քակէ ՚ի միոյ. որդի յորժամ տեսանիցէ եթէ կարի չքակեալ Հայրն, տաղտկանայ, ծանր համարի։ Իսկ ՚ի Հոգևոր սէրն այսպիսի ինչ զամբաւ չկարէ լինել, և ոչ իւիք յայսպիսեացս ասացի յաղեցաւ. ոչ ժամանակ, ոչ ճանապարհաց երկայնութիւն, ոչ չարչարանս կրել, ոչ չարլսել, ոչ սրտմտութիւն, ոչ թշնամանք և ոչ այլ ինչ ՚ի վերայ նորին մնեալ չկարէ զնա քակել։ Եւ զի ուսանիցիս թէ այս այսպէս է, քարկոծէր Ստեփանոս ՚ի Հրէիցն, և աղաչէր զԱծ վասն նոցա։ Ո՞վ ոք Հայր այնպիսի գութ ՚ի վերայ քարկոծչաց ցուցանիցէ, և ոչ անդէն փոխարէն քարկոծ առնիցէ։

Զայնպիսի զսիրոյ զՀետ երթիցուք որք ըստ Հոգւոյն իցեն, զի սաստիկ սէրս և անքակ են. մի զայնպիսեացն որ ՚ի սեղանոյն ծնանին. զի անդր և արգելուլ Հրամանս առաք զայնպիսիսն մուծանել։ Եւ լուր Քրիստոսի որ ասէ յաւետարանին՝ եթէ «Յորժամ առնիցես ընդունելութիւն, մի կոչեսցես զբարեկամս և մի զեղբարս, այլ զկաղս և զՀաշմեալս»։ և յիրաւի իսկ, քանզի ընդ այնոր բազում են վարձք։ Դու մի չկարիցես և չախորժիցես ընդ կաղս և ընդ կոյրս ճաշել. ծանրատաղտուկ Համարիցիս և տաղտկասցես. մանաւանդ թէ չէր իսկ պարտ,

բայց սակայն չկայ ինչ հարկ 'ի վերայ։ Եթէ ընդ քեզ չկամիցիս հատուցանել, առաքեսջիր 'ի սեղանոյն քումմէ հացս կերակուր։ Որ զբարեկամս կոչէ՝ չառնէ ինչ մեծ, քանզի աստէն առնու զվարձս. որ զհաշմն և զաղքատն կոչէ, զած ունի պարտապան։ Մ՚ի ինչ զչարեսցուք յորժամ աստէն չառնուցումք փոխարէնս, զի անդ առնլոց եմք ընդ այնր հատուցումն։ Զի եթէ մարդ չհատուցանէ, ած չզրկէ. եթէ նա չտայցէ, սակայն ած տայ։ Մ՚ի խնդրեսցուք յայնպիսեացն երախտիս գտանել որք զփոխարէնսն կարող են մեզ հատուցանել, և մի վասն այնպիսի ինչ յուսոյ ումեք բարի ինչ առնիցեմք. քանզի ցուրտ են այնպիսի միտք։ Զբարեկամսն եթէ կոչիցես, մինչև ցերեկոյ են պարգևքն ձիրքն, և քան զխորտիկսն ես վաղվաղակի ծախի ժամանակացն բարեկամութիւն. իսկ եթէ զաղքատն և զհաշմն կոչիցես, ոչ երբէք կորնչին շնորհքն, քանզի զամենայնսն ած որ ոչն երբէք մոռանայ՝ ունիս պարտապան։ Որչափ ինչ ամբարհաւաճութեան գործ է չախորժելն տանել զաղքատն 'ի տուն։ Դու զինչ ասիցես. եթէ աղտեղի և զարշելի է, նախ լուա և ապա տանիցիս 'ի սեղան քո։ Այլ թերևս հանդերձքն չիցեն մաքուր, փոխեա և տուր սուրբ պատմուճան։ Տեսանիցե՞ս որչափ շահք լինին. Քրիստոս նովաւ գայ առ քեզ, և դու դանդաղիս ընդ այն. զԹագաւորն կոչես 'ի սեղան քո, և դու ձգձգիս և խիրտ 'ի խիրտս մատչիս։

Եթէ այնչափ ինչ սոսկայցես, երկուս սեղանս յօրինեսջիր, զմինն կաղօք և կուրօք և կարկամելովք ընուցուս, թողով և որ մի միայն պարեհնակսն[1] ունիցին և զայն ծակոտիքն. և զմինն հարստօք, զօրավարօք աշխարհակալօք, իշխանօք մեծամեծօք, որ ազգի ազգի պատմուճան զգեցեալ իցեն և պէսպէս կտաւս բարակս երևելիս, կամարաւորս ոսկեզօտիս։ Դարձեալ յաղքատացն սեղան մի արծաթ կուտել, մի գինի յաճախել, այլ որչափ ինչ բաւական է ուրախ առնել. բաժակս և զայլ ինչ անօթս յապակեաց և կամ յես նուազագունեաց, և սեղանն ես աղքատացն մի ինչ զարդարուն կամ քանդակեալ կամ նկարուն, այլ անտաշ ինչ

1 Այդպէս յօրինակին. յոյնն պարփոտաճան։

և անկարի։ Իսկ անդ 'ի մեծամատանցն սեղանն ամենայն տաճարքն յօրինեալ կային յարծաթոյ և յոսկւոյ, զոր երկու 'ի նուաճասուորացն Հայոց չարչարեցին. և մի քաղ-մականն յօրինել, այլ զի շուրջ զատ անատ կարգաւ նրա-տեցին. և այն առաւել պայծառագոյն է քան զմիւսն որ յարծաթոյն և յոսկւոյն յարդարեցի, և քան զաւագանա-կանն որ կանգուն անկողնեօք յօրինեալ շուրջանակի ա-կումբն բոլորակ կարգեալ, ուր և պաշտօնեայքն ա-ւելի քան զաւագանականն կային 'ի սպասու՝ զուգա-բեալք յաղագի ազգի հանդերձս, պաճուճեալք և պճ-նեալք յօդ և 'ի ձորձ, գեղեցիկ հանդերձիւք, հաստա-կօք, դուռնեանք, մուռնաւորք և ոզնազարդք։ Եւ անդ եր-կու միայն սպասաւորք կային և զամենայն զպատարագն հայրապետութեան որ համարձակեալ և քնդ սոն հարկեալ։ Եւ եղիցին կիսոցն խորանիկք ամենայնքն, և կիսոցն այնչափ ինչ որ զքաղցն ցածուցանիցեն և ուրախութեամբ խնդա-ցուն։ Եւ այսպէս յօրինեալ կային երկոքեան սեղանքն լոյս իւրաքանչիւր պայծառութեամբ։ Թուի ինձ թէ և զկենդա-կանն և զպատմուճանս սպասուցն և զաւագանականացն յօրինուածս և զխորանականն օրէնս համարեցայ. բայց թէ և թողաք ինչ, ևս յառաջ մտաբերեալ զառաջիկայսն։

Եւ քանզի պեղեցին կարգեցան կերպարանք սեղա-նոցն, ոչ առաւել տեսցուք եթէ զոր կամիցիք բաղձա-նք։ Եւ 'ի կաղացն և 'ի կուրաց յօժարեմ երթալ. բայց 'ի ձէնջ թերևս բազումք 'ի զօրավարացն և 'ի մեծամե-ծացն, 'ի պաճուճեալն և յօրինեալն։ Եւ արդ տեսիլք որ բազում ուրախութեամբ լի իցէ։ Նայց մի պարզեալ ինչ զհանդերձեալն քննիցեմք. զի նոցա սեղանոյն իմն տէր է։ Զանզի աստ Վրիստոս է բազմեալ, և անդ մարդիկ. աստ տէրն, և անդ ծառայքն։ Նաև մի այժ-մէն յայն ինչ նայել, բայց տեսցուք աստէն իսկ յորում աւելի խրախութիւն է։ Եւ և այնպէս իսկ յայսմ մեծ ուրախութիւն է քան յայնմ. զի ընդ թագաւորի բազ-մել առաւել ուրախութիւն բերէ քան ընդ ծառայս։ Նայց սակայն և զայն ևս 'ի բաց թողցուք, և զառն իսկ զիւրան քննեսցուք։ Ապա ուրեմն ես և որք ընդ իս կամի-ցին յայսմ սեղանն նստել, բազում ազատութեամբ և զուարճալից մտօք խօսիմք զամենայն և լսեմք։ Եւ դուք յահի և յերկիւղի կայք, կասկածեալք անդէն 'ի ձե-

խորտակաց նախընծայ անարգութիւնս մերժէ, և յագեցութեանն ըկտութիւն։ Զանզի ոչ սակաւ քան զքաղցն հարկանէ զմարմինն անչափ յագեցութիւնն և արկանէ ՚ի ցաւս, այլ առաւել ևս զժնդակագոյնս, և որչափ ինչ կամիցիս՝ ցուցանեմ։ Զի ՚ի քաղցոյ դիւրաւ է զերծանել, և ոչ յագեցութենէ. և քաղց քան զյագեցութիւն ժուժկալութեան է. զի ՚ի քաղցի և զքսան օր ոք տևէ, բայց յագեցութեան և ոչ զերկուս անգամ։ Ընդ քաղցի ցանկ մարտնչին որք յանապատս իցեն, և յառողջութեան են և չեն կարօտ բժշկաց. իսկ ՚ի յագեցութեանն չկարեն ժուժալ եթէ ոչ ստէպ բժիշկս կոչիցեն. նա և զբժշկացն անգամ օգնականութիւն բազում անգամ յանդիմանէ յագեցութեանն բռնաւորութիւն, և ՚ի խրախութեան աղագս սա քան զնա յառաջագահ մնանէ։ Զի թէ պատիւն քան զանարգանսն քաղցր է, և իշխանութիւնն քան զհնազանդութիւնն, և համարձակութիւն քան զանկածութիւն, և բաւականն վայելել քան զանչափն ՚ի փափկութեան մրրկէն ընկղմեալ, ապա և այս սեղան քան զայն լաւագոյն է և ՚ի խրախութեան աղագս և ՚ի ծախից սակս. զի այն բազում ծախիւք, և սաստ սակաւ ինչ պէտք։

Իսկ արդ զիա՞րդ, բազմականայն միայն քաղցր է այս սեղանք թէ և կոչելեացն՝ տեսցուք թէ և ոչ կոչելեաց առաւել բերիցէ խրախութիւն սա քան զնա. և այն իսկ է որ կարի պիտոյն է մեզ խնդրել։ Զպա ուրեմն որ զնոսայն կոչէ՝ յառաջ քան զբազում աւուրս պատրաստի, և կազմած հարկ է առնել և հոգս յանձին ունել, ոչ զցայգ ննջել և ոչ զցերեկ դադարել. զմասս ածել, ընթերհուրդս այսր անդր հարկանել, բազում հրամանս խոհակերացն տալ, ամձաբերացն պատուիրել, սեղանայարդարացն զգուշացուցանել։ Այլ յորժամ օրն իսկ եկեալ հասանիցէ, զնա առաւել ոք ՚ի տագնապի տեսանիցէ քան զայնոսիկ որք պատրաստեցին ընդ նաւհատակս ելանել, գուցէ չմարթութիւն ինչ լինիցի կամ նախանձ ծնանիցի, գուցէ զբազումս ՚ի նոցանէ և ոսոխս ստանայցէ։

Իսկ միւսն յամենայն յայնպիսի հոգոց և երկեղց ազատ է. վարկպարազի կազմէ զսեղանն, ոչ ինչ յառաջագոյն քան զբազում աւուրս հոգայ։ Այլ հանդերձ

այնուհիկ նա վաղվաղակի կորուսանէ զշնորհսն. և սա զա̃ծ ունի պատրաստական, և հեշտական յուսովք վայելէ համապազ խրախալից յայնպիսի սեղանոյ: Խորտիկքն ծախին և շնորհքն չծախին. այլ ցանգ ուրախ լինի և բերկրի քան զնոսա որ բազում գինեաւ թմբրին: Չիք ինչ որ պարարիցէ զոգիս իբրև զայս բարի և իբրև ըղ-քաղցր ակնկալութիւն. բայց մի ինչ յայն որ առ յապայն լինելոց իցէ հայեսցուք, այլ յատենան: Անդ փողքըն և քնարք և սրինգք, և աստ ոչ ինչ լկտութեան նուագք: Այլ զինչ. օրհնութիւնք, սաղմոսք, երգ հոգևորք: Անդ դևք օրհնին, և աստ ամենեցուն տէր ա̃ծ: Տեսանե՞ս որչափ ինչ սա շնորհաց է, և որչափ ինչ միւսն ապախտաւորութեան և լի ամենայն անմտութեամբ:

Բայց ազէ եկ ասա դու ցիս. ա̃ծ զքեզ կերակրեաց յիւրոց 'ի բարութեանցն, պարտ էր և քեզ գոհանալ զնմանէն յետ կերակրելոյն. և դու զդե՞ս մուծանես: Քանզի խաղալկացն հոտոտանք ոչ այլ ինչ են, եթէ ոչ դիւաց երգք: Պարտ էր ասել եթէ օրհնեալ ես տէր ա̃ծ որ կերակրեցեր զիս 'ի բարութեանց քոց, դու աւադիկ իբրև զշուն մի անարգեալ ընաւ և զմտաւ չածես, այլ զդեւս մուկաբեան մուծանես: Մանաւանդ թէ շունքն իսկ թէ առնուցուն և եթէ չառնուցուն, փաղաքշեն, 'ի քծինս հարկանեն նոցա ընդ որս համբոյրն իցեն. դու և զայն անգամ չառնես: Շունն թէպէտ և չառնուցու ինչ, ագեաւն հպատակէ տեառն. դու աւադիկ թէպէտ և առնուցուս՝ հաջես: Շունն դարձեալ թէպէտ և բարիս գտանիցէ յօտարէ, և այնպէս չպարզէ զթշնամութիւն և չկայ 'ի քծինսն. և դու թէպէտ և բազում չարչարանս 'ի դիւացն կրիցես, 'ի Ճաշս հրաւիրես ածես զնոսա. որպէս զի երկպատիկ վատթարագոյն քան զշունն գտանիցիս: Բարւոք յիշեցի այժմ զշունս առ այնոցիկ որ յայնժամ միայն գիտեն գոհանալ յորժամ երախտիս առնուցուն: Ակն ածեցէք աղաչեմ 'ի շանց, որք թէպէտ և սովամահ մեռանիցին, հպատակեն տերանց. դու յորժամ լցիցես թէ և բըռժըշկեաց զքեզ, թողուս վաղվաղակի զտէրն, ո՛ և քան զշունս անգամ ես անհանճարագոյնդ:

Այլ բողքն, ասեն, ցանկալիք են: Տեսցուք որպիսի ինչ ցանկութիւն, և ոչ անարգութիւնիցին: Պոռնկոց

գործեցաւ տունն , մոլութեամբ և անզգայութեամբ լցար · չամաչեմ չկորանամ , այլ լռեալ՝ ախորժութիւն կոչեմ : Եթէ մարթ էր վարել յամենայն ցանկութիս , մեծ ամօթ գտանէր և անհնարին լլկանք անտի որ ինչ ծնանէին՝ ՚ի պոռնկոցս զտունն գործելոյ , իբրև զխոզս ընդ տիղմ թաւալելոյ : Իսկ եթէ հայեմ միայն ախորժանք ինչ իցեն , աՀաւասիկ դարձեալ կրկին ցաւք · զի երեսքն չեն ախորժականք , եթէ պէտքն ոչ վճարիցին , այլ զցանկութիւնն ես քան զես յաճախէ և բոցն առաւել բորբոքի : Իսկ զվախճանն կամիցիս ուսանել · որք մոլեալն և շամբելոցն նմանիցեն յորժամ ՚ի ծերանոյն յառնիցեն յանդգնեալք զայրագնեալք ծաղրալից խայտառակեալք և ՚ի ծառայից անգամ քամահեալք · ստրուկքն լուրջ ՚ի գլխոց թողուցուն և գնայցեն , և նոքա արբեալք և զեղխեալք մնայցեն · անդ կայցեն ամօթ , անարգանք և վատթարութիւն : Իսկ ՚ի միւսումն ոչ ինչ այնպիսի · այլ գոհութեամբ արարեալ զբաւ սեղանոյն մեկնիցին յիւրաքանչիւր տունս հասեալ · հանգուցեալ քաղցր քուն գայռիցեն , յարուցեալք զգաստացեալք ազատք յամ ամօթոյ և ՚ի քամբասանաց :

Եթէ կամիս և զկոչնականսն ես տեսանել , տեսանիցես և զնոսա ես այնպիսիս ՚ի ներքոյ որպէս և սոքա արտաքոյ , կոյրք և հաշմեալք և կաղք են · և որպէս սոցա մարմինքն է , նոյնպիսի ինչ և նոցա ոգիք ջրգողեալք մնտղեալք տորմեալք : Քանզի այնպէս իմն է հպարտութիւնն , զի յետ խրախութեանն այսումն իմն գործի · քանզի այնպէս յագեցութիւնն և արբեցութիւնն կաղս և միակողմանս առնեն · որպէս և զսոցա զվերին երեսս տեսանես , նոյնպէս և նոցա ոգիքն ձուլին : Եւ որպէս նոցա երեսքն գեղեցիկ են , նոյնպէս և սոցա ոգիք զարդարունք · որք գոհութեամբն կեան , և զբաւականութիւնն և ոչ ինչ աւելի խնդրեն · որ զգաստութեամբն շրջիցին և յամենայն վայելչութեան իցեն :

Տեսցուք և յայամ ես զսոցա և զնոցա վախճան : Ընդ ուրախութեան լկտութեան է ծաղրարձակ համարձակ արբեցութիւն , անհամութիւն , խեղկատակութեան խառնիխոստութիւն · քանզի ինքեանք անկածեն զաղտեղիսն բարբառել , պոռնկօք զնոցն վճարեն : Իսկ ասա մարդասիրութի , ցածութի : Որում զնսայն

կոչեցէ, առընթեր կայ անապարծութիւնն և փառք զնո-սա 'ի քրիստոնէութիւնս. և միւսումն մարդասիրութիւնն և ցածութիւնն: Զայն աւազան մարդասիրութիւն հաստատէ, և զմիւսն անապարծութիւնն և աղքատութիւն յանիրաւութենէ և յագահութենէ. այն յանմտութէ յանկուցանէ և 'ի մոլորութենէ և 'ի խելագարութենէ, և այս 'ի գոհութիւնս և 'ի փառս Այ. որոյ զօրութիւնն ոչ 'ի մարդկանէ է, այլ յԱյ: Ընդ նմա թաղեցայք նախանձին, և զառ իբրեւ զհասարակաց հայր համարին ամենեքին, և որոց չիցէ ինչ բարի գտանել: Զոր օրինակ և 'ի զրկեալսն և որք չիցեն զրկեալ՝ ընդ նմին մշտանան և առ հասարակ ամենեքին թշնամիք լինին, նոյնպէս և 'ի նոցա միջի որ 'ի բարիսն վայելիցեն և որք չվայելիցեն որպէս թէ վայելիցեն՝ գովեն և զարմանան ընդ գովելիսն: Ուր բազում նախանձ է, և առ յոյժ խնամակալութիւն և յաճախ աղօթք յամենեցունց:

Այլ աստէն իսկ ամենայն ինչ. իսկ յորժամ Քրիստոս գայցէ, կայցէ այնպիսին բազում համարձակութեամբ, և լուիցէ առաջի ամենայն տիեզերաց՝ թէ քաղցեալ տեսեր զիս և կերակրեցեր, մերկ և զգեցուցեր, օտար և ժողովեցեր, և զայլսն եւս զայսպիսիս: Այլ միւսն ագահն հափշտակողն լուիցէ՝ եթէ ծառայ չար և վատ և անպիտան, և զմիւսն թէ "Վայ այնոցիկ որ փափկանայցեն յանկողինս իւրեանց և որք ննջիցեն 'ի գահոյս փղոսկրեայս և որք ըմպիցեն զզտեալ գինի և ընտիր իւղովք օծանիցին, և բնակաւորս և ոչ անցաւորս համարիցին զայն": Այլ զայս ոչ վայրապար ինչ եղեւ ասել մեզ, այլ 'ի փոխել բարուց ձերոց, և մի ինչ յորմէ չիցէ շահ՝ գործել:

Իսկ այն զի առնիցէ, ասեն, թէ և զայն և զայս արարից: Ամենեցունց իսկ յաճախ առ բանս այս: Այլ զինչ հարկ 'ի վերայ կայցէ, ուր մարթի զամենայն ինչ յօգուտ գործել՝ և զայն այսր անդր բաժանիցէ, զկէս յանօգուտ և զկէս յօգուտ ծախել: Չէ ասա, եթէ յորժամ սերմանէիր, զկէսն 'ի վերայ աւազի ցանէիր և զկէսն յերկիր բարւոք, միթէ օգուտ ինչ բերէր քեզ. իսկ թէ ասէիր թէ զինչ վնաս իցէ զկէսն ընդ վայր վարել և զկէսն յերկիր բարւոք: Այլ ընդէր ոչ զամենայն իսկ յերկիր բարւոք: Նոյն արդ տեսցուք ընդէր

զշահն նուազեցուցանես ։ Եթէ ինչս աղքատ իցէ ժողովեալ՝ չատես զայս, այլ յամենայն կողմանց ժողովես ․ և անդ ոչ նոյնպէս ինչ ։ Եթէ փոխ տալ իցէ, չատես եթէ ընդէ՞ր ոչ զկէսն չքաւորաց և զկէսն ընչաւորաց տայցես, այլ զամենայն նոցա ։ Նոյն աստ առ այսչափ շահ է, չվարկանիս զայն, և չդադարես երբեք ընդ վայր վատնելոյ և 'ի վայրապար ծախելոյ ։

Այլ դու, ասէ, և յայնժամ շահս ։ Որպիսի՞ ինչ ։ Բարեկամութիւնք, ասէ, յաճախեն ։ Չիք ինչ ցուրտ բարեկամութիւն քան զայն որ 'ի սեղանոյն լինիցի և տա 'ի զհացկատակին շուայտացուցանելոյ ։ Սերտ բարեկամութիւնք անտի և եթ ծնանին ուր հոգևոր սէրն իցէ ։ Մի՛ թշնամանել զիրար որոց այնպէս զարմանալի է սէրն, և մի՛ զայն ինչ նորա տեսանտ համարիցիս ։ Ո՞ր օրինակ եթէ ծառ ինչ որ ոսկի և ականս պատուականս բերէր, ոչ զինչ՝ արմատն հաշուէր ոք արմատ, այլ զպտուղ ինչ, նոյնպիսի ինչ վարկցիս և դու ․ թէպէտ և ծնանիցի ինչ անտի բարեկամութիւն, չիք ինչ ցրտագոյն քան զայն ։

Այլ այն սեղանք ոչ ընդ մարդկան գործեն բարեկամութիւն, այլ ընդ այ, և սերտ բարեկամութի որ զկէս աստ և զկէս անդ ծախիցէ ․ թէպէտ և մեծ տայցէ, ոչ ինչ մեծ գործեաց ։ Իսկ որ զամն յայնժամ ծախիցէ, թէպէտ և սակաւ ինչ տայցէ, զամենայն բովանդակ ետ ։ Ոչ այն խնդիր է եթէ բազում ինչ ոք տայցէ կամ սակաւ, այլ զի ըստ իւրում կարին ոչ նուազեցուցանիցէ ։ Ի մտաւ ածցուք զայն որ զհինգ տաղանդն և զերկուսն առին ․ զմտաւ ածցուք զայն որ զերկուս դանկան էարկ 'ի գանձանակն ․ զմտաւ ածցուք զայրին որ առ Եղիաիւն էր ։ Չասաց այն որ զերկուս դանկան արկ եթէ զինչ ձուաս եթէ զմինս ինձ պահեցից և զմիւսն տաց ․ այլ զամենայն զկեանս իւր ետ ։ Իսկ դու որ յայնչափ յղփութեան ես, ձգձգագոյն քան զնա լինիս ։

Մի՛ այսուհետև անփոյթ առնիցեմք զփրկութենէ անձանց, այլ դուն 'ի վերայ եդեալ արասցուք ողորմութիւնս ․ և չիք ինչ քան զայն լաւագոյն, և ցուցցէ հանդերձեալ ժամանակն ․ բայց առ այժմ և մտաւորս ցուցցէ ։ Այսուհետև և 'ի փառս այ կեցցուք և զնորա հաճոյսն արասցուք, զի արժանի լիցուք խոստացելոց բարութեանցն ․ որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնոր-

հօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

"Վասն այսորիկ և մեք յօրէ յորմէ լուաք, ոչ դադարեցաք աղօթս առնել և խնդրուածս, զի լցջիք գիտութեամբ կամացն նորա ամենայն իմաստութեամբ և հոգևոր հանճարով գնալ ձեզ արժանի Տեառն յամենայնի 'ի հաճութեան, և յամենայն 'ի գործս բարիս պտղաբերեալք և աճեցուցեալք 'ի գիտութեան Այ":

"Վասն այսորիկ": Վասն որոյ: Քանզի լուաք ըզհաւատոյն ձերոյ և զսիրոյ, և քանզի հեշտականն յուսոյն աճին ունիք, վասն այնորիկ վկայք եմք և վասն հանգերձելոյն խնդրել: Զոր օրինակ և 'ի մարմնոյն և 'ի պատերազմունսն զնոսա յորդորեմք որք յաղթութիւն կցեն, նոյնպէս և Պաւղոս զնոսա առաւել մխիթարէ որոց բազում ինչ ուղղութիւնս ցուցեալ իցէ: "Յորմէ յորմէ; ասէ, լուաք ոչ դադարեմք վասն ձեր աղօթս առնել": Ոչ մի օր առնեմ աղօթս և ոչ զերկուս և ոչ զերիս: Այսու և զսէրն ցուցանէ և մեղմով զնոցանէ ակնարկէ. որպէս թէ չև ևս 'ի կատարումն հասեալ են: Քանզի լցջիքն ասել՝ զայն յայտ առնելոյ էր: Այլ դու տես զիմաստութիւն երանելւոյն. չասէ ուրեք յամենայնէ նուաստեալս զնոսա, այլ ամենայն ուրեք՝ թէ թերի են. քանզի լցջիքն զայն յայտ առնէ և ամենայն իմաստութեամբ զնոյն գուշակէ: Այլ դարձեալ "Հաճութեանն և յամենայն գործս բարիս". դարձեալ "Ամենայն զօրութեամբն զօրացեալ և յամենայն համբերութիւն և յերկայնմտութիւն". զի միշտ զամենայն յաւելլով՝ վկայութեան նշանակ է զնոցանէ, թէ ցուցին ինչ ուղղութիւնս, թէպէտ և ոչ զամենայն: Զի լցջիք, ասէ, և ոչ զի առնուցուք: Այսպէս և յանդիմանութիւնն անտարակուսելի լինէր, և զովութիւնս չտայր

թեան փառաց նորա ասէ ձեզ. «Յամենայն 'ի համբե-րութիւն և երկայնմտութիւն»։ Զոր ասէն՝ այսպիսի ինչ է. աղօթս առնեմք, ասէ, ունել ձեզ յանձին զա-ռաքինութեանն փառս և արժանի լինել նահատակու-թեանն և կալ հաստատուն, զօրացեալք որպէս 'ի դէպ իսկ է թէ յԱյ է զօրանալն։ Վասն այնորիկ չև ևս միտ 'ի կռուսն, այլ սակաւ ինչ ևս մնացորդքն կայ, ուր չգոյ ինչ պատճառք համբերելոյ. և յորդորեաց որով պարտն էր յորդորել. և ապա զայս յամբաստանութիւնն։

Զայս ամենայն իսկ աւելի առնէ. յորժամ կամիցի ոք զրկել և պարտ իցէ. մեղադիր լինել, 'ի դէպ իցէ և յորդորել, նախ գովէ և ապա միտ 'ի մեղադրութիւն. նախ ընդունելութեանց զհասն, և զամբաստանութիւնն աղատէ յամենայն կարծեաց. և յայտ առնէ եթէ նա կամէր յամենայնի գովել, բայց 'ի հարկէ մեծ յայնպի-սի բանս։ Զայս և յառաջնում թղթին կորնթացւոց ցուցանէ. բազում ինչ գովեաց զնոսա, որպէս թէ սի-րելեացն զնոսա, և ապա 'ի պատճառանաց պոռնկացելոցն մեծ յամբաստանութիւնն։ Իսկ 'ի գաղատացւոցն ոչ այս-պիսի ինչ, այլ զոտքին հակառակն. մանաւանդ՝ թէ քննիցէ ոք, և այն գովութեան է և ոչ ամբաստանու-թեան։ Քանզի չգոյր ինչ յայնժամ զաղդութենէ նո-ցա ասել, և մեղադրութիւնն սաստիկ էր, և ամենե-քին եղծեալք էին, և հանդարտել կարէին պատուհա-սին, քանզի զօրաւորք էին, յամբաստանութենէն ըն-կրկեն առնէ. «Զարմացեալ եմ» ասէ. որպէս զի և այն իսկ գովութիւն էր։ Բայց յետոյ և զայն՝ ոչ մե-տաւոր ինչ խօսք, այլ անցեալք. «Եթէ հնար ինչ էր, ասէ, զաչս ձեր հանէիք և տայիք ինձ»։

«Պտղաբերք» ասէ. զայս զգործոցն ասէ։ «Զօրա-ցեալք» ասէ. զայս զփորձութեանցն. «Ամենայն համ-բերութեամբ և երկայնմտութեամբ». երկայնմտու-թիւն առ միմեանս է, համբերութիւն առ արտաքինսն։ Երկայնամիտ առ այնս ոք լինի, յորոց և վրէժ կարի-ցէ առնուլ. և համբերող առ այնոսիկ, յորոց չկարիցէ վրէժ խնդրել։ Վասն այնորիկ զԱյ չասէ երբեք համ-բերութիւն. բայց երկայնմտութիւն 'ի բազում տեղիս, որպէս և աստ իսկ Կորնթացւոց այլում գրէ. «Եթէ զմե-ծութեամբ քաղցրութեան նորա և զհամբերութիւն և զեր-

չգիտելն զնոյն է, որպէս պարտ իցէ գիտել։ Նաև թէ յառաջադէմ լինել 'ի գիտութեանն այ աճիցէ. զի եթէ որ զորդի չգիտէ, և զՀայր չգիտիցէ, յայտ է եթէ նմանագոյնս առաւել՝ գիտութեանն այ. քանզի չեն ինչ օգուտ վարք առանց գիտութեան։

« Յամենայն, ասէ, համբերութեան և յերկայնմտութեան ուրախութեամբ գոհանայցեմք զայ »։ Նամէր զնոսա մխիթարել, չառնէր նոցա յուշ զհանդերձելոց բարութեանցն, բայց յառաջնումն ակնարկեաց զնոյնս. « Մասն յաւսյն, ասէ, որ հանդերձեալն է ձեզ յերկինս »։ Բայց աստ զանցեալ ինչ գործոց յուշ առնէ. այս, ասէ, այնմ պատճառք է։ Նա 'ի բազում տեղիս զայն յայտ առնէ. աստէն ինչ զյառաջագոյն գործելովք հաւատարիմ առնէ զհանդերձեալսն, և այսպէս առաւել ընկենէ զկասկածն։ « Ուրախութեամբ, ասէ, գոհանայցեմք զայ »։ Նորին այսպիսի ինչ է. ոչ դադարեմք աղօթս առնել վասն ձեր և գոհանալ վասն առաջնոցն. Տես զիարդ մխէ զանձն 'ի ճառս որդւոյ. զի եթէ գոհանամք բազում ուրախութեամբ, այսպէս մեծամեծ են որք ճառեցանն։ Եւ զի առ երկիւղի միայն է գոհանալ. է և 'ի վիշտս ինչ գոհանալ, որպէս և Յովբն գոհանայր վշտագնեալ թախծեալ. « Տէր, ասէ, ետ և տէր առ »։ Մի ոք ասիցէ եթէ չտրտմեցուցանէին զնա գործքն, որ չէր զգածեալ թախծութեամբն, և մի մեծ գովութիւն արդարոյն զրկեսցի։

Յորժամ այսպիսի ինչ իրք լինիցին, մի առ երկիւղի և մի միայն վասն տէրութեան, այլ և վասն իբրացն բնութեան « գոհանայցեմք, ասէ, զայնմանէ, որ բաւականս արար զմեզ 'ի մասն վիճակի սրբոցն 'ի լոյս »։ Մեծամեծս բարբառեցաւ. այնպիսի ինչ, ասէ, են պարգևքն, ոչ միայն առ 'ի տալն, այլ և զօրագոյնս ևս առնելն առ առնուլ։ Քանզի եթէ որ բաւականս արար, զբազում ծանրութիւնն եցոյց, այսպիսի ինչ. եթէ անկած ոք իցէ և թագաւոր լինիցի, կարող է հազարապետութիւնս տալ ում և կամիցի, և այնչափ միայն կարող է զպատիւն տալ, և ոչ եթէ պիտանի իշխանութեանն առնել։ Բազում անգամ զայնպիսին և ձաղ իսկ առնէ պատիւն։ Իսկ եթէ և զպատիւն տայցէ և պիտանի պատւոյն առնիցէ և բաւական գործակալութեանն, յայն-

ժամ են մեծապատւոյ իրք ։ Սո՛րա զայն ասէ և ասա՝ ե-թէ ոչ միայն զպատիւն ետ մեզ, այլ և բաւականս ա-րար առնելոյ ։ Արկեն պատուէ, և պիտանիս եւ կարգմեղ պարգևացն ։ Զասաց վայրապար թէ ետ, այլ թէ բա-ւականս արար 'ի մասն վիճակի սրբոցն 'ի լոյս ․ այսինքն 'ի կարգեալ զմեզ ընդ սուրբս ։ Այլ ոչ վայրապար ասաց թէ կարգեաց, այլ թէ 'ի նոցին բարութիւնսն պար-գևեաց մեզ վայելել ։ Զի մասն այն է զոր իւրաքան-չիւր ոք առնուցու ․ մարթի 'ի նմին քաղաքի լինել, և ոչ 'ի նոյնս վայելել ․ զնոյն մասն ունել և ոչ 'ի նոյնս վայե-լել չէ մարթ ․ մարթ է¹ զնոյն վիճակ ունել, և ոչ զնոյն զմասն ․ որպէս և այժմ որ 'ի միում վիճակի եմք ամե-նեքին, և ոչ զնոյն մասն ունիմք ։ Իսկ աստ ոչ այսպէս, այլ և զմասն համօրէն վիճակաւն ․

Իսկ ընդէ՞ր վիճակ կոչեաց ։ Ցոյց առնելով եթէ ոչ ոք յիւրում ինչ ոք ուղղութեանց հասանիցէ արքայու-թեանն ․ այլ որպէս զի վիճակն հասանելով է, նոյնպէս և աստ ։ Այլ ոք այնպէս զառաքինութիւնն կարիցէ ցու-ցանել՝ որպէս թէ արքայութեանն արժանի լինել, այլ նորա պարգևացն է ամենայն ։ Զայս և Տէրն իսկ յայտ առնէ առաքելոցն, թէ «Յորժամ զամենայն առնիցէք, ասասջիք թէ մեք ծառայք անպիտանք եմք, զոր ինչ պարտեաք առնել՝ արարաք» ։ «Ի մասն, ասէ, վիճակի սրբոցն 'ի լոյս» ․ և զհանդերձեալսն ասէ և զաստիս, այ-սինքն է գիտութեամբն ։ Նոյն թուի ինձ թէ զաստեացս և զհանդերձելոցն միանգամայն ասել ։

Սոյա ցուցանէ թէ որպիսեաց արժանի եղեաք ։ Քան-զի ոչ այն միայն զարմանալի է զի արքայութեանն ար-ժանի լինիցիմք ․ և որպիսի եմք և զինչ՝ պարտ իցէ յա-ւելուլ ․ քանզի չէ նոյնգունակ ․ որպէս 'ի Հռովմայեցւոց թղթին ասէ ․ «Հազիւ ոք վասն արդարոյն մեռանիցի ․ վասն բարւոյ թերևս ժպրհիցի ոք մեռանել» ։ «Որ փրկեաց, ասէ, զմեզ յիշխանութենէ խաւարի» ։ Սո-րա է ամենայն և զայս առ և զնոյն պարգևել ․ չէր ինչ ուրեք մեր ուղղութիւն ։ «Իշխանութենէ, ասէ, խա-ւարի» ․ այսինքն 'ի մոլորութենէ բռնութեանց սատա-նայի ։ Զասաց թէ 'ի խաւարէ, այլ թէ յիշխանութե-

1 Պակասէր յօրինակին մարթ է ․ յաւելաւ 'ի յունէն ։

նէ․ քանզի բազում իշխանութիւն ունէր մեզ և բռնաւորեալ տիրէր։ Չար է և դոյզն ինչ լինել ընդ սատանայիւ, բայց ընդ իշխանութեամբ՝ կարի իսկ դժընդակագոյն է։

"Եւ ընդ նմին կացոյց յարքայութեան որդւոյն սիրելւոյ իւրոյ"։ Նա ոչ ուրեմն գոյ հնար զերծանել 'ի խաւարէն, և եցոյց եթէ նորա միայն մարդասիրութեան է։ Մեծ, մեծ է 'ի խաւարէ զերծուցանել․ բայց յարքայութիւն ևս տանել առաւել մեծ է։ Տես զիարդ բազմապատիկ երևին պարգևքն․ զի որք յատակին խաւարին շրջեալ նստէաք, զերծոյց անտի․ երկրորդ անգամ զի ոչ միայն զերծոյց, այլ զի և փոխեաց յարքայութիւնն։ "Որ փրկեացն զմեզ" ասէ․ և չասաց թէ եհան, այլ փրկեաց, զբազում թշուառութիւն մեր յայտ առնէ և զանդարձ գերութիւնն, ապա և զմ̃յ զօրութեանն զիւրութիւնն․ "Ընդ նմին կացոյց" ասէ․ զոր օրինակ եթէ զինուոր ոք 'ի տեղւոջէ 'ի տեղի փոխիցի։ Եւ չասաց թէ փոխեաց կամ փոփոխեաց, զի ամենայն փոփոխելեայն էր և ոչ այնոցիկ որ փոխիցին, այլ "ընդ նմին կացոյց" ասէ, որպէս զի մեր և նորա իցէ։

"Յարքայութիւն որդւոյն սիրելւոյն իւրոյ"։ Չասաց լոկ եթէ յարքայութիւն երկնից, այլ պայծառագոյն յարգարեաց զբանն՝ յարքայութիւն որդւոյն ասելով։ Չիք ինչ մեծ քան զայնպիսի յարգանս, զոր և այլուր իսկ ասէ․ "Եթէ համբերեմք, ընդ նմին և թագաւորեսցուք"։ Նորին որդւոյն և նա արար զմեզ արժանի։ Եւ ոչ այսչափ միայն, այլ ևս յաճախագոյն՝ սիրելւոյն ասելով․ զթշնամիս զխաւարեալս յանկարծակի անդր փոխեաց՝ ուր որդին էր՝ 'ի նոյն պատիւ։ Եւ չհամարեցաւ զայս միայն բաւական, զի ցուցցէ թէ մեծ է պարգևն, չշատացաւ արքայութեան ասելով, այլ և զորդւոյն յաւել․ և ոչ այնու, այլ և զընութեանն զուգական պատիւ։ Զինչ ասիցէ․ "Որ է, ասէ, պատկեր աներևութին ա̃յ"։ Եւ չեկն իսկ և իսկ յայս, այլ 'ի միջի եդ զերախտիսն որ առ մեզ եղեն․ զի մի յորժամ լուիցէ ոք եթէ ամենայն հօր էր և զորդի մեկուսի ինչ համարիցի, տայ և զամենայն որդւոյ և զամենայն հօր։ Նա, ասէ, փոխեաց․ այլ սա զպատճառն պարգևեաց։ Զինչ ասիցէ․ "Որ փրկեացն զմեզ, ասէ, յիշխանու-

թենէ խաւարին »: Բայց նոյն է. «Արդ, ասէ, ըն-կալայք և զատ 'ի փրկութենէն 'ի թողութիւն մեղաց »: Զի եթէ զմեղացն թողութիւն չէր ընկալեալ, այլ և փոխելոյն չլինէաք արժանի: Հաւաստիկ դարձեալ դնէ զորոշն: Եւ չասաց փրկութիւն, այլ զի առ 'ի փըր-կութենէն. որպէս զի թէ չէ այսուհետև վերկալել ան-տի, և ոչ միւսանգամ լինել մահկանացու: «Զթո-ղութիւն, ասէ, մեղաց. որ է պատկեր աներևութին այ, նախածին ամենայն արարածոց »:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Եւ քանզի 'ի խնդիրս հերձուածողացն անկանելոց եմք, վասն այնորիկ այսօր պարտ է թողուլ, և վասն մինչ նորոգ իցեն լսելիք ձեր՝ կարգել զնել առաջի: Ե-թէ պարտ է աւելի ինչ ասել, մեծ է որդւոյ գործն: Զի՞նչ. քանզի այն գժուարին է որք 'ի մեղսն իցեն՝ տալ նոցա զարքայութիւն. և այս դիւրագոյն, պար-գևօքն ճանապարհորդել առ նա: Զինչ խօսիս. մե-ղացն թողութիւն քեզ նա արար. թէ այնպէս իցէ, և մերձեցուցանելոյն պատճառք նոյն է: Հաւաստիկ յա-ռաջագոյն գրեալ կալար զարմատ կրօնիցն:

Բայց առ այժմ զայս ասացեալ և հանգուցանել պարտ է զբանս: Զի՞ր. զայս զի այսչափ յերախտիս վայելեցաք, մինչ զնոյն պարտիմք ածել զմտաւ, զանց յեղյեղել 'ի խորհուրդս զպարգևսն այ եթէ 'ի միտ առնուցումք ուստի զերծաք և ուր արժանի եղեաք. և այնպէս լինիցիմք գոհացողք, այնպէս և զսէրն որ առ նա է կատարեսցուք: Զի՞նչ գործեմ, ով մարդ. յարքայու-թիւն հրաւիրեալ ես, յարքայութիւն որդւոյն այ, և յօրանջես և քնչքոտիս և ձգտիս: Եթէ 'ի բազմապա-տիկ մահս դիմեալ հասանէր հանապազ, չէ՞ր պարտ ա-մենայնի համբերել: Իսկ վասն իշխանութեան զամե-նայն հնարս հնարիս, և արքայութեան միածնին հան-դերձեալ ես հաղորդակից լինել և չհարկանիս 'ի դիմի բազում սուսերաց և չդիմես 'ի հուր: Եւ չէ ես ըն-դժուարինսն ասեմ. այլ յորժամ մերձ լինիցիս, աշխա-րես և գութ առնէն զաշխարհաւս արկանես, քանզի մարմնասէր ես:

Ընդէր իսկ ընաւ ահագին իրս զմահն համարիցիս. ո՞չ ապաքէն փափկութիւնն է այնր պատճառք և անձնդիւրութիւն. նա աւանիկ որ զվշտագին ինչ և զդառնութեան կեանս կեցցէ, եթէ հնար ինչ էր՝ թռչել կամէր և զերծանել աստի: Արդ ահաւասիկ իմն դանդաղիմք, զոր օրինակ ձագք նորափետուրք մինչ չև յարգունդսն հասեալ իցեն, դանդաղեալ անդէն զբունովքն ջերմակիծս պատաղին. այլ որչափ անդէն յամիցեն, ևս քան զևս տկարագոյնք լինին: Նոյն՝ կեանք աշխարհիս են, 'ի շիւղոց և 'ի կաւոյ են յօդեալ: Թէպէտ և մեծամեծ տունս ցուցանիցես և զարքունիսն իսկ բազում ոսկւով և ականբք պայծառացեալ, չհամարիմ ինչ աւելի քան զբոյնս ծիծռանց, որ 'ի հասանել ձմերայնոյն իքնին ամենայն անկանիցի: Ձմեռն զօրն զայն ասեմ, ոչ ամենեցուն ձմեռն. նա և ա̃ծ գիշեր միանգամայն և տիւ կոչէ զնա, զմինն առ մեղաւորն և զմիւսն առ արդարն: Այնպէս և ես այժմ ձմեռն կոչեմ զօրն. եթէ ոչ ամարանւոյն իսկ բարւոք բուծանիցիմք, զի կարող լինիցիմք 'ի հասանել ձմերանւոյն թռչել, չբառնայցեն զմեզ մարքն, այլ լքանիցեն թողուցուն 'ի սովու սատակել յորժամ և բոյնն իսկ աւերեսցի: Քան զբոյն 'ի ձմերայնոյ՝ ևս դիւրագոյն կործանեսցէ զամենայն յայնժամ և ա̃ծ՝ առ 'ի նորոգել և վերստին յարդարել զամենայն: Եւ անթևքն որ չկարիցեն ելանել ընդ առաջ նորա յօդս, որք այնպէս մեղկս մնեալ իցեն որպէս զի չունիցին թևս թեթևս երագունս, այնպիսի ինչ կրիցեն որպէս նոքա որ առանց թևոցն իցեն, և սատակիցեն: Ձագք ծիծռանցն յորժամ անկանիցին 'ի բունոց, վաղվաղակի սատակին. իսկ մեք ոչ եթէ սատակիցիմք, այլ տանջիմք յանդ:

Ձմեռն է ժամանակն, մանաւանդ թէ ևս դժնդակագոյն քան զձմեռն: Ոչ ուղխք ջուրց խաղայցեն, այլ գետք հրեղէնք գնայցեն. ոչ խաւար յամպոց մածանիցի, այլ խաւարն պարզ և անլոյս. որպէս ոչ զերկինս տեսանել հասանիցէ և ոչ զօդս նշմարել, այլ քան ընդ փապս երկրի մտանել՝ ևս առաւել հասանիցէ անկանել յանձուկ: Բազում անգամ ասեմք զայս, այլ ոչ զոք հաւանեցուցաք: Այլ չեն զարմանք եթէ խաժամուժ մարդիկ մեք այսպիսի ինչ կրիցեմք վասն զայս խօսելոյ,

ուր և մարգարէքն այսպիսի ինչ կրէին ոչ միայն զայս-
պիսի ինչ իրաց խօսելոյ, այլ և վասն պատերազմաց և
գերութեանց. և Սեդեկիա յԵրեմիայէ յանդիմանէր
և չամաչէր։ Վասն այնորիկ ասէին մարգարէքն. «Վա՜յ
այնոցիկ ոյք ասիցեն՝ մերձեսցին վաղվաղակի, արասցէ
ած զի տեսցուք, և եկեսցէ խորհուրդ սրբոյն Իսրայէլի
զի ծանիցուք»։ Իսկ արդ մի ինչ զարմասցուք ընդ այս.
քանզի և որք առ տապանաւն էին, չհաւատային. այլ
յայնժամ հաւատացին յորժամ չէր ինչ օգուտ 'ի հա-
ւատալոյն։ Իսկ ոչ սոդոմայեցիքն ակն ունէին, այլ հա-
ւատացին և նոքա, և չգործեցաւ ինչ նոցա անտի շահ։
Իսկ զի՞ ասիցեմ զհանդերձելոյն. ո՞վ ոք ակն ունէր այսմ
որ այժմ եղև և տակաւին լինի 'ի տեղիս տեղիս։ Ո՞վ
ոք ակն ունէր շարժմանց քաղաքաց և միանգամայն կո-
տորելոց. Թէպէտ և այս քան զայն հաւատարմագոյն
իցէ, զտապանէն ասեմ։ Իսկ ուստի՞ յայտ իցէ։ Զի նո-
քա չունէին ինչ օրինակ յոր հայիցեն, և ոչ 'ի գրոց եր-
բէք լուեալ էր. և աստ բիւրոց բիւրք գործեցան և առ
մերովք իսկ աւուք և առ Նախնեօք։

Այլ ուստի՞ իցէ չհաւատալ այսպիսի իրաց։ Ի Թոյլ
ոգւոց և 'ի մեղկացելոց։ Ուտէին և ըմպէին և
յայն սակս չհաւատային։ Զոր կամի ոք, զնոյն և կար-
ծէ, նմին և ակն ունի. և որք ընդ այնր ընդդէմ խօսի-
ցին, իբրև զառանցեալս Թուին։ Այլ գուցէ նոյն անցք
և ընդ մեզ անցանիցեն. ոչ ևս այսուհետև ջրհեղեղ
գայցէ, և ոչ մինչև ցոր վախճան մարդոյն լինիցին տան-
ջանք, այլ ակիզբն պատժոց է մահն որոց[1] չհաւատան
եթէ գոյ դատաստան։

Իսկ ո՞վ, ասեն, եկն անտի և եբեր այդպիսի զրոյցս։
Եթէ ընդ խաղ ասիցես, սակայն և այնպէս չէ բարւոք,
քանզի չէ պարտ զայնպիսի զրոյցս ընդ խաղ արկանել։
Ոչ ընդ խաղս, այլ ընդ արթունս խաղամք։ Ապա եթէ
ստոյգ իսկ այնպէս հաստատեալ իցես և չհամարիցիս
եթէ յետոյ լինիցի ինչ, զիա՞րդ ասիցես եթէ քրիստո-
նեայ եմ։ Զիք ինչ իմ բանք ընդ արտաքինսն։ Ընդէր
աւանդեցուս զմկրտութիւնն, վասն էր մատնիցես յեկե-

1 Պակասէր յօրինակին որոց չհաւատան եթէ գոյ դատաստան. յաւելաւ 'ի յունէն։

ղեցի. միթէ իշխանութիւնս ումեք խոստանայցեմք. ա-
մենայն յոյս մեր 'ի հանդերձեալն է: Արդ զի մերձե-
նաս եթէ չհաւատայցես գրոց, եթէ չհաւատայցես
Քրիստոսի: Չասեմ երբէք զայնպիսին քրիստոնեայ.
օն անդր, քաւ լիցի. այլ և վատթար քան զկռապա-
րիշտս: Իւ. այնուիկ զի զՔրիստոս ա̃ծ համարի, և ոչ
իբրև ա̃յ հաւատայ: Այնր ամբարշտութեան կարգն և
սովորութիւնն ձգէ: Ով որ չհամարիցի զՔրիստոս
ա̃ծ, հարկ է թէ չհաւատայ. և այսր ամբարշտութեան
չիք ինչ կարգ՝ ա̃ծ խոստովանել և չհամարել արժանի
հաւատալոյ բանիցն նորա: Արբեցութեան բանք են,
փափկութեան և անձնդիւրութեան. "Կերիցուք արբ-
ցուք, ասեն, քանզի վաղիւ մեռանիմք": Ոչ եթէ վա-
ղիւ, այլ յորժամ ասիցէք զայնպիսի բանս, յայնժամ
իսկ մեռանիք: Եւ արդ չիցեմք ինչ լաւագոյնք քան ըզ-
խոզս և ոչ վերագոյն քան զէշս, ասէ սա: Եթէ դա-
տաստանք և հատուցմունք չիցեն, և ոչ ատեան և ոչ
խնդիրք, և էր վասն այսպիսի պարգևով պատուեալ
եմք՝ բանիւքս և խօսիւք, և զամենայն ինչ ընդ մեօք
ունիմք 'ի հնազանդութեան. ընդէ՞ր մեք իշխեմք, և
նոքա ընդ իշխանութեամբ են:

Տես զկարգ ամենայնիւ ջանայ սատանայ հաւանեցու-
ցանել զմեզ անծանօթ լինել 'ի պարգևացն ա̃յ. զծա-
ռայսն ընդ ազատս խառնէ իբրև զմարդելոյզ ոք, և ըզ-
ծառայ ստամբակ որ սախալիցէ զազատ յանարգութիւն
յանցաւորաց իջուցանել. և թուի թէ զդատաստանն 'ի
միջոյ բառնայցէ, և այնու զա̃ծ կամի 'ի մտաց քակել:
Քանզի այնպէս իսկ միշտ սատանայ ջանայ յամենայնի
հնարս գտանել, ոչ ընդ ուղիղ ճանապարհն գայ եթէ
զգուշանայցեմք, այլ զարտուղի հետ արածի: Եթէ դա-
տաստան չիք, ապա չէ արդար ա̃ծ, ըստ մարդկան մտաց
ասեմ. և եթէ չիցէ արդար ա̃ծ, ապա և ա̃ծ չէ. և
եթէ ա̃ծ չիցէ, ապա ընդ վայր է ամենայն, ոչ առաքի-
նութիւնն ինչ է և ոչ չարիք: Այլ հասէ ինչ յայսցա-
նէ յայտնի:

Տեսանե՞ս զսատանայական խորհրդոյն զմիտս, զկարգ
'ի մարդկանէ անասունս կամի առնել, մանաւանդ թէ
գազանս ևս, մանաւանդ թէ և դևս իսկ: Մի՛ այսուհետև
և հաւանեսցուք նմա. քանզի գոյ դատաստան, հէքդ

և թշուառական։ Գիտեմ ուստի գաս յայսպիսի բանս. բազում մեղս գործեցեր, ընդդէմ դարձար հրամանաց, աչակորեցեր և չունիս համարձակութիւն, համարիս եթէ զքո բանիցդ զհետ գայցէ իրացն բնութիւն։ Տէ՛ր, ես, ասէ, առ ժամանակս չհարից զմիտս, չմաշեցից զանձն գեհենին կասկածանօք. թէպէտ և իցէ գեհեն, հաւանեցուցից զանձն թէ չէ գեհէն. ո՛ր, ես առ այժմս բարի կեցից։ Ընդէ՞ր յաւելուցուս մեղս ՚ի վերայ մեղաց. եթէ մեղար և հաւատայցես եթէ գոյ գեհեն և երթայցես, ընդ մեղացն միայն տայցես վրէժս. իսկ եթէ զայն ես ամբարշտութիւն յաւելուցուս, և ընդ ամբարշտութեանն և ընդ այնպիսի մտացն կրեսցես զվերջին տանջանսն. և որ առ սակաւ մի ժամանակ մխիթարութիւնն թուէր քեզ, ցուրտ սփոփանք, ցանկորդ լինիցին քեզ և հանապազորդ տանջանաց պատճառք։

Գիտեսջիր եթէ մեղար. ընդէ՞ր և զայլս ես յօժարեցուցանես մեղանչել՝ ասելովն եթէ չիք գեհեն։ Զի՞մ խաբես զտգէտս, ընդէ՞ր լքանես զձեռս ժողովրդեանն. ՚ի քէն կուսէ ամենայն ինչ եղծեալ ապականեալ է։ Զի մի՛ փոյթքն ես փութագոյնք լինիցին, այլ ծոյլքն, և չարք մի՛ մեկնեսցին ՚ի չարեացն։ Մի՛թէ յորժամ զայլոց միտս ապականիցեմք, մեզ ներե՞ ոք և թողութի՞ մեղաց լինիցի՞։ Չտեսանիցե՞ս զսատանայ զիարդ ջանացաւ կործանել զԱդամ. մինչ այնու ներե՞լ ինչ թողութեան եղև նմա։ Այլ այն մեծամեծ ես տանջանաց պատճառք են, զի մի՛ միայն վասն իւր՝ այլ և վասն այլոց մեղաց տանջիցի։ Եւ արդ մի՛ համարեսցուք զընկերան կործանելով եթէ ՚ի նոյն կորուստ հանդարտագոյն մեզ տանջանք կազմիցին. այլ այն իսկ սաստկագոյն գործիցէ զնոսա։ Զի՞ մղեմք և արկանեմք զանձինս ՚ի կորուստ։ Սատանայական է այն ամենայն։ Սա մարդ մեղաւոր, մարդասէր տէր ունիս ՚ի գլուխ, աղաչեա պաղատեա արտասուեա յոգւոց հան, և զայլս երկեցո և աղաչեա մի՛ ընդ նոյն յանցանօք անկանել։

Աղէ ասա, եթէ ծառայ ոք իցէ ՚ի տան յանցաւոր և ասիցէ ցիւր մանուկ. որդեակ, ես յանցաւոր գտայ առ տէրն, դու ջանա հաճոյ լինել, զի մի՛ նոյն անցք և ընդ քեզ անցանիցեն, չգտանիցէ՞ ինչ ողորմութիւն, ո՞չ ապաքէն յաղերս և յարդահատանս զտէրն ածիցէ։ Ա-

պա եթէ զայսպիսի բանս թողեալ և ցուրտս ինչ խօսիցի, որպիսի ինչ միտս համարիցիս տեառնն ունել առ նա. այլ ըստ արժանի իւրաքանչիւր ումեք հատուսցէ. և զի չէ ամենայն ինչ ընդ վայր ոչ բարիքն և ոչ չարիքն, այն յայտ իսկ է: Եւ զի այնպիսին ոչ ընդ իւրոց եւեթ մեղացն մեծամեծ վրէժս հատուցանիցէ, այլ և ընդ այլոց, և այն չէ անյայտ. և իւրովի իսկ զյանցանսն խոստովան լինիցի, թէպէտ չգտանիցէ ինչ օգուտ: Եւ զի պարտ է զայլս 'ի մեղաց զգուշացուցանել, թէպէտ և ոմն չիցէ զգուշացեալ: Թէպէտ և այլ ուստեք չիմանայցես, գոնեա զմեծատունն ած զմտաւ, որ 'ի գեհենին կայր և ասէր. “Հայր Աբրահամ,, առաքեա ըզգուշացո եղբարցն իմոց, զի մի և նոքա գայցեն 'ի սոյն տանջանս,,. քանզի իւր չէր հնար երթալ, աղաչէր զի մի և նոքա եւս 'ի սոյն տանջանս գայցեն: Ի բաց մերժեսցուք 'ի մէնջ զայնպիսի բանս սատանայականս:

Եւ արդ զիա՞րդ յորժամ հեթանոսք զմեզ հարցանիցեն եթէ ած ցանգ տանջիցէ, զի՞նչ պատասխանի տայցեմք: Ոչ զնոսա կամիս բժշկել, այլ զքրիստոնեայն յերկմտութիս արկանել. պատճառանօք եթէ զհեթանոսն բժշկիցես, զսատանայական կրօնսն կամիս հաստատել: Քանզի դու միայն առանձին ընդ անձին խօսիս վասն այսպիսի իրաց և չհաւանեցուցանես, զայլս կամիս ածել վկայս: Եթէ ընդ հեթանոսի պարտ իցէ խօսել, ոչ անտի է սկիզբն խօսիցն, այլ թէ Քրիստոս է ած և որդի այ, և ոչ դեւքն ոյ 'ի նոցանէն աստուածք կոչին: Եթէ այս յարդարիցի, այլն ամենայն զօրին հետ գայ: Նախ քան զսկիզբն տուեալ, ընդունայն է զվախճանէն խօսել. նախ քան զառաջին ալփաբետսն ուսանել, աւելորդ և անօգուտ է 'ի վախճան ընթանալ: Զհաւատայցէ հեթանոսն դատաստանին, նա և դու չհաւատաս. զքո ախտն ախտանայ նա: Եւ նա զբազում ունի որ վասն այնր փիլիսոփայեցանն. թէպէտ և զմարմինն քակեցին յօդուցն, այլ վասն ատենի դատաստանին ճարտար խօսեցան: Եւ այնպէս յայտնի են իրքն՝ զի գրէ եթէ և ումեք չեն անյայտ, այլ և բանաստեղծացն և ամենեցուն այլոց ամենայն իմաստնոց յայսմ միմեանց միաբանեալ և վասն ատենին և վասն դատաստանին: Այս ուրեմն և հեթանոսն թէ չհաւատայ, նախ

իւրոյն չհաւատայ . նա և ոչ հրեայն երկմիտ ինչ է անտի և ամենայն իսկ մարդիկ : Իսկ արդ ընդէ՞ր խաբիցեմք զանձինս : Զայս աւասիկ առ իս խօսիս . իսկ առ ա̃յ զինչ ասիցես , որ ստեղծն առանձինն իւրաքանչիւր ըզմիրտս մեր , որ տեսանէն զամենայն ինչ որ 'ի միտս կայցէ , որոյ բանն կենդանի է և ազդու և հատու քան ամենայն սուր երկսայրի : Բայց ազէ ասա , դու իսկ չստգըտանիցե՞ս զանձն . եթէ ինքնակաց ինչ իցէ ամենայն , ուստի՞ ստեղծաւ իմաստութիւն , մինչ զի որ յանցանէն՝ զանձն ստգտանիցէ . մեծ իմաստութեան է այս : Դու աւադիկ զանձն ստգտանես . և[1] որ զայս միտս տայ քեզ , զամենայն ընդ վա՞յր թողուցու սահել : Արանս համաշխարհական է այս և սահման . ոչ ոք յայնցանէ որ յառաքինութեանն կեցցէ , թերահաւատէ 'ի դատաստանին ճառից , թէպէտ և հեթանոս իցէ կամ հերետիկոս . և ոչ ոք 'ի թաթաւելոցն 'ի բազում չարիս , բայց 'ի սակաւուց , ընդունի զյարութեան ճառս : Իսկ զայս առէ սաղմոսանուագն . "Բարձեալ են դատաստանք քո յերեսաց նորա ,, . ընդէ՞ր . զի "պիղծ են ճանապարհք նորա յամենայն ժամ ,, : "Կերիցուք , ասեն , արբեցուք , քանզի վաղիւն մեռանիմք ,, : Տեսանե՞ս զի վատթարաց խօսք են . յուտելոյն և յըմպելոյն են այնպիսի բանք եղծիչք յարութեանն : Զժուժայ չտանի խղճի մտացն ընդունել զճառս դատաստանին . և նոյնպէս լինի որպէս զի սպանողն նախ դնէ 'ի մտի թէ չանկանի 'ի բուռն և ապա սպանանէ : Եթէ խիղճ զմիտսն ունէր , ապա ոչ վաղվաղակի գայր յայնպիսի յանդգնութիւն . և արդ գիտէ և չգիտել պատճառի , զի մի տանջիցի 'ի խղճէն և յերկիւղէն , և զանգիտիցէ 'ի յանդգնութենէն : Նոյնպէս և որք մեղանչենն և համապազ 'ի նոյն չարիս թաւալիցին , չկամին գիտել , թէպէտ և խիղճն տագնապէ : Բայց մի հայեսցուք ընդ նոսա , քանզի լինի և լինելոց իսկ է դատաստան և յարութիւն , և չթողու ընդ վայր զայնչափ գործս ա̃ծ :

Վասն որոյ աղաչեմ մերժեսցուք 'ի չարեաց և բուռն հարցուք զառաքինութենէն , զի զճշմարիտ բանն ընկալցուք որ 'ի Քն̃ Յն̃ 'ի տէր մեր : Թէպէտ և դիւրագոյն

[1] Գաղափարը յօրինակին ն . . . փոխ ծէզ . յաւելուած 'ի յունէն :

զյարութեան բանն է ընդունել, և ոչ զբախտէն զոր և հրամանն կոչէն. զի այն անիրաւութք լի է և անհանճարութեամբ և ապերախտութեամբ և տմարդութք և անագորոյնութեամբ, և այս արդարութեամբ ըստ իւրաքանչիւր արժանեաց հատուցանելոյ. և սակայն զայն ախորժեն քան զայս։ Եւ պատճառք այնր դատարկութիւնն է։ Նա ոչ ոք իսկ 'ի մոացեաց զայն ընդունի։ Քանզի 'ի մէջ հեթանոսաց որք զցանկութիւն սահմանեցին վախճան ամենայնի, նոքա ընկալան զայն բան. և որք զառաքինութի սիրեցին, նոքա ոչ ընկալան, այլ և խոտեցին ևս իբրև զանբան ինչ բան։ Եւ եթէ 'ի մէջ հեթանոսացն այսպիսի ինչ, որչափ ևս առաւել և յարութեան բանիս։ Եւ արդ տես զընդդէմ հակառակութիւնն զիարդ երկուս միմեանց հակառակ եմոյծ. զի անփոյթ առնիցեմք զառաքինութենէն, եմոյծ 'ի մէջ զհարկաւորն[1] սատանայ. զի պաշտօն մատուցանիցեմք դիւաց յօժարութեամբ, 'ի ձեռն երկուց հակառակաց հաւանեցոյց։ Եւ արդ զինչ պատասխանի կարիցէ տալ որ թերահաւատ յայսպիսի աքանչելի իրաց լինիցի և նոցա առանցելոց բանիցն հաւանիցի։ Մի այսուհետև մի այնպիսի ինչ մխիթարութիւն պարարիցէ զքեզ, որպէս թէ թողութեան ինչ հասանիցէ. այլ ամփոփեսցուք զանձինս և արթունք յառաքինութեանն լիցուք, և կեցցուք ճշմարտիւ ա̃յ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Ցօրինակքն զհանջատոյն. նզաւ ըստ յունին։

## ՃԱՌ ԵՐՐՈՐԴ

«Որ է պատկեր աներևութին Ա̃յ նախածին ամենայն ա֊րարածոց. զի 'ի նմա հաստատեցաւ ամենայն ինչ որ յեր֊կինս և որ ինչ յերկրի երևելիք և աներևոյթք. եթէ աթոռք և եթէ պետութիւնք և եթէ տէրութիւնք և եթէ իշխանութիւնք, ամենայն ինչ նովաւ և 'ի նոյն հաստատեցաւ. և ինքն է յառաջ քան զամենայն, և ամենայն 'ի նմա հաստատեցաւ. միանգամայն և ինքն է գլուխ մարմնոյ եկեղեցւոյն»:

Այսօր պարտ է հաստատել զպարագայն զոր երէկ յառաջադրեցի 'ի նորոգ միտս ձեր ունկնդիրք. Ճառս պատուոյ որդւոյն Պաւղոս զայս ասաց. գրեալ է մեք յայտ արարաք. «Որ է, ասէ, պատկեր աներևութին Ա̃յ»: Ո՞ր համարեցիր զնա պատկեր. ո՞չ ապաքէն ան֊փոփոխականին: Յոր կողմ և շրջեսցիս, 'ի նոյն և եր֊թայ: Այլ եթէ իցէ զանազան պատկեր համարեսցիս, և ես այսուհետև իցէ 'ի մեկնեանէ 'ի քոց մերժեցայց: Իսկ եթէ իցէ Ա̃յ և որդւոյ Ա̃յ, ապա յայտ է եթէ պատկեր զանփոփոխականն ցուցանէ: Ընդէ՞ր ոչ ասէր ոչ պատկեր և ոչ որդի կոչի հրեշտակ, այլ մարդ միայն և երկրաբնակ հողր: Ընդէ՞ր. զի անդ առ 'ի բնութիւն ա֊ստուածութեանն չմերձանելոյ վարդապետ, զի մի զբա֊ղումս յայնպիսի ամբարշտութիւնս արկանիցէ թէ բա֊զումք իցեն աստուածք. և աստ անպարգութիւն և խո֊նարհութիւնն լինի երաշխաւոր զգուշութեանն, զի թէ և կամիցին՝ չտայ կարծել այնպիսի ինչ և իջուցանել 'ի խոնարհ զբանն: Վասն այսորիկ ուր բազում խոնար֊հութիւնս է, աստ համարձակ դնեն զիրք զպատիւն. և ուր մեծ բնութիւնն է, անդ և ոչ ումեք զաներևութին պատկեր, բայց միայն որդւոյն. զի աներևոյթ և նոյն֊պէս աներևոյթ. ապա թէ ոչ չկարէ պատկերն պատ֊կեր երևել: Քանզի պատկերն որպէս զհարդ մըր պատ֊կերն իցէ, և առ մեզ և անդ զանփոփոխականն ցուցա֊նէ նկարագրօքն և զնմանութիւնն: Բայց սակայն չէա

րէ մեր արուեստս զՃշգրտութիւնն պահել, քանզի մարդկան գործ է և 'ի բազում իմիք սխալէ, մանաւանդ թէ ամենայն ուրեք, եթէ հաւատեաւ քննիցես. իսկ որ ած է, անդ և երբեք չսխալէ և ոչ վրիպակ ինչ լինի։ Եթէ արարած է, զիա՞րդ իցէ պատկեր. նա և ոչ ձի մարդոյ պատկեր է։ Եթէ ոչ զանփոփոխականութիւն աներևութին յայտ առնիցէ պատկերն, զինչ արգելու և զհրեշտակս լինել պատկեր. քանզի և նոքա աներևոյթք են, այլ թէպէտ և մեզ, ոչ թէ անձանց կամ այ։ Նա և ոգիք մարդկան աներևոյթք են և պատկեր կոչին, այլ ոչ այնպէս ինչ որպէս և որդին է. նոյնպէս և ոչ հրեշտակք, թէպէտ և աներևոյթք են, չեն պատկերք, բայց միայն միոյն զի է Ճշմարիտ պատկեր աներևոյթ աներևութին այ, և զնոյն անփոփոխականութին ունի բնութեամբ յանձին ոչ իբրև զեկամուտ ինչ յետոյ, այլ 'ի բնէ և յաւիտենից զառ 'ի հօր էութենէ։

“Նախածին, ասէ, ամենայն արարածոց„։ Հաւասիկ, ասեն, արարած է։ Ոստի՞ յայտ է։ Զի նախածինն, ասեն, ասէ։ Նախ այն իսկ զի չասաց նախարար, այլ նախածին. և դարձեալ քանզի բազում ինչ 'ի դէպ էր զնմանէ ասել, և եղբայր անուանել և ամենեցուն նմանող մեզ ասել, և չհայել ինչ ուր դէպ իցէ յածութեանն պատուին, յորժամ զանտեսութին Ճառիցէ։ *Քանզի նախածինն ասել ոչ պատուոյ ինչ մեծարանաց է և ոչ այլ իրիք, բայց միայն ժամանակին։ Զի ինչ նշանակիցէ նախածինն։ Զայն, ասեն, զի արարածն է։ Րարուօք է. թէ այնպէս իցէ, և եղբարս ունի. եթէ անդրանիկ ամենայն արարածոց է, ապա այնպիսի ինչ է որոց անդրանիկն է՝ և քարանց և փայտից, քանզի ամենայն արարածոց ասաց. թէ այնպէս իցէ, և 'ի քարանց. և իմ անդրանիկ է ածն բան։ Նու այլ ազգ ես. աղէ ասա, անդրանիկն 'ի մեռելոց զինչ յայտ առնիցէ. ո՞չ ապաքէն զայն զի նախ ինքն յարեաւ. քանզի չասաց թէ մեռելոց, այլ անդրանիկ 'ի մեռելոց. չասաց եթէ նա նախ մեռաւ, այլ թէ անդրանիկ 'ի մեռելոց նա նախ յարեաւ. որպէս զի ոչ զայլ ինչ յայտ առնէ, եթէ ոչ զայս՝ եթէ յարութեան սկիզբն նա արար և ինքն եղև պտուղ։ Նոյն ուրեմն և 'ի միւսումն՝ արարածոց սկիզբն ինքն արար. քանզի նախածին ամե-

և նոյնին վարքն՝ յայտ առնէ։ Դա և ոչ յորժամ ասիցէ Պաւղոս եթէ «Հաւատեցի», ոչ զանուանելոյն ասէ, այլ զազդեցութեանն։ Ոչ ի մի համարեսցիս եթէ սպասաւոր ինչ իցէ, զնմանէ ասէ՝ զնոսա ունել, որ չէ ինչ խոնարհագոյն քան զառնելն։ Դա արդ մեզ ունելն հաստատուն՝ մեծ է քան զառնելն. զի զառնելն արտաքուստ բերէ ՚ի մէջ, և զունելն ոչ եւս. և զերծանելն չկարէ ունելն հաստատուն։

«Եւ նա է, ասէ, յառաջ քան զամենայն»։ Նա յայս միայն պատշաճ է։ Ո՞ւր իցէ Պաւղոս Սամոսատացի։ «Եւ ամենայն ինչ ՚ի նա հաստատեցաւ միանգամայն». այսինքն նովին հաստատեցաւ և ՚ի նոյն հաստատեալ կայ։ Ստէպ զնոյն յեղյեղէ, զի յաճախութեամբ բանիցն իբրև ստէպ հարուածովք արմատաքի խլիցէ ըզկրօնսն ապականիչս. զի եթէ այսչափ ասացաւ և յետ այնչափ ժամանակաց բուսաւ Պաւղոս Սամոսատացի, որչափ եւս առաւել թէ չէր զայս ամենայն ասացեալ յառաջագոյն։ «Եւ ամենայն ինչ, ասէ, ՚ի նա հաստատեցաւ»։ Ո խարդ ՚ի նա որ չէրն՝ հաստատեցաւ։ Այս ուրեմն և որ հրեշտակացն ինչ զարդեցաւ, նորա է։

«Եւ ինքն է գլուխ մարմնոյ եկեղեցւոյն»։ Իբրև ասաց վասն պատուոյն, ապա ասէ և վասն մերձաւորութեանն։ Ինքն է, ասէ, գլուխ մարմնոյ։ Եւ չասաց թէ կատարման, թէպէտ և զնոյն յայտ առնէ։ Կամի ընտանեգոյն մեզ ցուցանել զնա, եթէ որ այնչափ ՚ի վերն է և վերագոյն քան զամենայն; ընդ ներքինս քան զամենեսին հաղորդեաց զանձն։ Ամենայն ուրեք առաջին է ՚ի վեր. առաջին է, քանզի արարիչ ամենեցուն է. յեկեղեցւոջ առաջին է, քանզի գլուխ եկեղեցւոյ է. ՚ի յարութեան առաջին, քանզի սկիզբն արար յարութէ, զի եղիցի յամենայնի ինքն յառաջեալ։ Այս ուրեմն և ՚ի ծննդեանն ինքն առաջին է. և զայս իսկ փութայր ցուցանել Պաւղոս։ Եթէ այս յարդարիցի եթէ յառաջ քան զամենայն հրեշտակս էր, և այն ընդ սմին մըտանէ թէ և զնոցայն սա առնէ հրամանս տալով։ Եւ այս են զարմանք, զի և ՚ի վերջին ծննդեանս հակառակի զնա առաջին ցուցանել. թէպէտ և այլուր զԱդամ առաջին ասէ, որպէս զի և էր իսկ։ Նա զեկեղեցւոյ դէմս առեալ փոխանակ ամենայն ազգաց մարդկան, քանզի

եկեղեցւոյ առաջին է. և ամենայն մարդկան, որպէս թէ և արարածոց ևս անդրանիկ է ըստ մարմնոյն, այսինքն պատուական. զի ինքն եղև առաջին եկեղեցւոյ ըստ տնտեսութեանն։ Նաև վասն այնորիկ յայսմ վայրի. յայս միտս դնէ զանդրանիկն, այսինքն զնախծինն. զի ինքն նախ քան զամենեսեան յարեաւ 'ի մեռելոց, որպէս և անդ. զի ցուցցէ թէ յառաջ քան զամենայն էր, եդ զնախծինն. նոյնպէս և աստ զի յայտ արասցէ թէ պտուղ և առաջին մեռելոց եղև ըստ տնտեսութեանն՝ դնէ զանդրանիկն. քանզի ասէ. «Որ է պտուղ անդրանիկ 'ի մեռելոց. զի եղիցի ինքն յառաջեալ յամենայնի». յայտ արարեալ թէ և այլքն նոյնպիսիք յարդարելոց են որպէս և նա ըստ մարմնոյն։ Ընդ չասաց թէ պտուղ արարածոց, այլ նախ՝ թէ պատկեր աներևութին, և ապա ասէ զնախծինն։ Նաև յորժամ զծնունդն կոչէ, չզանդաղի ասել եթէ ամենայն արարածոց, այսինքն թէ նախծին է քան զամենայն արարածս, և ոչ նախագործ կամ նախեղեալ։

«Զի 'ի նմա հաճեցաւ ամենայն լրութիւն բնակել, և նովաւ հաշտեցուցանել զամենայն 'ի նոյն. արար զխաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ եթէ յերկրի և եթէ յերկինս»։ Որ ինչ հօր է, ասէ, նոյն և որդւոյ, և յաճախ փութով հանդերձ, զի և մեռեալ եղև և միացոյց զանձն մեզ։ Պտուղ ասէ իբրև յարդենէ իմեքէ։ Նաև չասաց յարութիւն, այլ պտուղ, յայտ արարեալ թէ զամենեսին զմեզ սրբեաց և իբրև զպատարագս մատոյց։ Զլրութիւնն ոմանք զծնութեանն ասեն, որպէս և Յովհաննէս ասէ՝ եթէ «Ի լրութենէ անտի նորա ամենեքին մեք առաք». այսինքն թէ զինչ և էրն որդի, ամենևին որդին անդ յիւրում մարմնին բնակեաց ոչ եթէ ազդեցութիւն ինչ, այլ էութիւն։ Նաև չիք ինչ ասել այլ պատճառս, և ոչ մի ինչ, այլ զկամսն ա̃յ։ Այն խոկ է եթէ «'ի նմա հաճեցաւ, և նովաւ հաշտեցուցանել զամենայն 'ի նոյն»։ Նաև զի մի կարծիցես եթէ ապաստաւորի ինչ կարգ էառ, յանձն իւր, ասէ. այսինքն եթէ ընդ ինքեան և ընդ հօր հաշտեցոյց. յանձն իւր ասէ, զի ցուցցէ թէ ընդ ինքեան հաշտեցոյց. և զի ընդ ա̃յ հաշտեցոյց, 'ի կորնթացւոց թղթին ասէ։ Նաև բարւոք ասաց եթէ անձամբ հաշտեցուսցէ. քանզի և

էին յառաջագոյն հաշտեալք, այլ ոչ կատարեալ, որպէս զի մի եւս ունիցին զթշնամութի ընդ նմա: Զ խորհ: Ոչ եթէ զհաշտութիւնն միայն հաստուցանէր, այլ եւ կերպարանք հաշտութեանն յայտ լինէին:

«Արար, ասէ, խաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ»: Զ թշնամութիւնն հաշտելն ցուցանէ. իսկ զպատերազմ՝ ասելն եթէ «արեամբ խաչին իւրոյ անձամբ, եթէ յերկրի ինչ էր եւ եթէ յերկինս»: Մեծամեծ էր հաշտեցուցանելն. բայց անձամբ հաշտեցուցանել առաւել մեծ է, եւ քան զանձամբն հաշտեցուցանել՝ եւս մեծ արեամբն իւրով. եւ ոչ վայրապար արեամբ, այլ եւ մեծ քան զնոյն՝ զի խաչիւն: Որպէս զի հինգ իսկ իրք զարմանալիք են, ընդ ոյ, հաշտեցոյց, անձամբ, մահու, խաչիւ[1]: Տարբէ զխորհ դարձեալ արար միախուռն. զի մի համարիցիս եթէ մի ինչ իցէ, եւ մի զխաչ համարիցիս թէ իցէ ինչ առանձինն, ասէ՝ անձամբ: Զ խորհ գիտէ մեծ զիրս հաշուել. զի ոչ եթէ բանիւք ասաց, այլ զանձն մատնեաց վասն հաշտութեան եւ այնպէս վճարեաց զամենայն: Զ ինչ իցէ՝ թէ որ ինչ յերկինս. զի 'ի յերկրի՝ յիրաւի իսկ, քանզի թշնամութք լի էր եւ 'ի բազում իրս բաժանեալ, եւ ընդ անձին իսկ իւրաքանչիւր ոք 'ի մէնջ մարտնչէր եւ ընդ բազումս: Իսկ յերկինս զինչ խաղաղութիւն արար. եւ անդ պատերազմ է եւ կռիւ: Եւ արդ զխորհ կամք յաղօթս եւ ասեմք «Եղիցին կամք քո որպէս յերկինս եւ յերկրի»: Իսկ արդ զինչ իցէ. քակեալ էր երկիր յերկնից. մարտնչէին հրեշտակք ընդ մարդկան, զի տեսանէին թշնամանեալ 'ի նոցանէ զտէրն իւրեանց. բովանդակեաց ասէ զամենայն 'ի Քրիստոս որ ինչ յերկինս էր եւ յերկրի: Որ ինչ յերկինս զխորհ. փոխեաց անդր զմարդկութի, եհան առ նոսա զթշնամիս զատեցեալս. ոչ միայն յերկրի արար խաղաղութիւն, այլ եւ յերկինս խոր խաղաղութիւն. երեւեցան եւ յերկրի հրեշտակք, քանզի եւ յերկինս յայտնեցաւ մարդկութիւնս: Թուի ինձ թէ եւ յափշտակելն Պաւղոսի նմին իրի եղեւ, զի ցուցանիցէ թէ եւ մարմին որդւոյն ընդ համբարձութեանն անդր վերացաւ: Արկին խաղաղութիւն եղեւ երկրի, եւ ընդ երկ-

1 Յօրինակին Ն-ր-ոյ անյինն. եղաւ ըստ յունին:

նաւորս և ընդ անձինս, և յերկինս մեկնի: Զի եթէ ընդ միոյ մեղաւորի որ ապաշխարէ՝ ուրախ լինին հրեշտակք, որչափ ևս առաւել ընդ այսչափ բազմութիւն: Եւ զամենայն զայն այ՟ զօրութեամբ յորդորեաց:

Եւ արդ ընդէ՞ր ապաստան լինիցիք 'ի հրեշտակս. այնչափ հեռի են 'ի մերձեցուցանելոյ զձեզ, որչափ զի և պատերազմ ևս տային ընդ ձեզ. թէ չէր այ՟ խնամքն յայց ելեալ, ոչ երբէք լինէր խաղաղութիւն. նա հաշտեցոյց զձեզ ընդ նոսա: Արդ ընդէ՞ր ընթանայցէք առ նոսա: Կամիս ուսանել զհրեշտակաց եթէ որչափ ատելութիւն ընդ ձեզ ունէին, կամ զիարդ էին թշնամութբ̄ և հանապազ: Նախանձէին 'ի պատիւս առ խոնարհելացուցքն և առ Գրաւթիւ և առ սոդոմայեցւոցն և 'ի հոլխտան տրտմութեան: Այլ ոչ և այժմ նոյնպէս էին. այլ նմին հակառակ յերկրի երևեցան, օրհնէին խնդային և ուրախ լինէին: Զնոսա այսր իջոյց, և զմարդիկ անդր վերացոյց: Եւ տես զաքանչելիսն, նախ զնոսա այսր իջոյց, և ապա զմարդիկ առ նոսա վերացոյց: Երկինք եղև երկիր, քանզի և զերկրաւորս ընդունելոց էին երկինք: Վասն այնորիկ գոհացեալ ասէին. "Փառք 'ի բարձունս այ՟ և յերկիր խաղաղութիւն, 'ի մարդիկ հաճութիւն": Տեսանիք, ասէ, այսուհետև և մարդիկ երևեցան հաճոյք: Զի՞նչ իցէ հաճութիւնն. հաշտութիւնն: Չեն այսուհետև միջնորդ կրձիմ երկինք: Զառաջինն ըստ թուոյ ազգաց էին հրեշտակք. իսկ այժմ ոչ ըստ թուոյ ազգաց, այլ ըստ թուոյ հաւատացելոց: Եւ ուստի՞ յայտ իցէ: Լուր Քի՟. "Զգուշ կացէք, ասէ, մի արհամարհիցէք զմի 'ի փոքրկանցս յայսցանէ, զի հրեշտակք նոցա հանապազ տեսանեն զերեսս հօր իմոյ որ յերկինս է": Ընդ իւրաքանչիւր ումեք 'ի հաւատացելոց հրեշտակ է. քանզի զառաջինն ընդ իւրաքանչիւր ումեք 'ի պիտանեացն հրեշտակ էր, որպէս և Յակոբ ասէ՝ եթէ "Հրեշտակն որ կերակրէ և ապրեցուցանէ զիս 'ի մանկութենէ իմմէ":

## ՅՈՐԴՈՐԱԿ

Արդ եթէ հրեշտակս ունիցիմք, արթունք լիցուք որպէս զի դաստիարակս ունիմք ընդ մեզ: Ա՞ստ կայ և

դև ։ Վասն այնորիկ և աղօթս առնեմք և խնդրեմք հրեշտակ խաղաղութեան, և ամենայն ուրեք զխաղաղութիւն հայցեմք. չիք ինչ այնմ համեմատ ։ Յեկեղեցւոջ խաղաղութիւն, յաղօթս և 'ի խնդրուածս և յառաջին բանս քահանայից մի անգամ և երկիցս և երիցս և բազում անգամ զայն տայ վերակացու եկեղեցւոյն. "Խաղաղութիւն, ասէ, ընդ ձեզ"։ Ընդէ՞ր. զի նա է մայր ամենեցուն, նովաւ առնին որդիք այ, ուրախութեան և բարութեանց պատճառք է ։ Վասն այնորիկ և Քրիստոս ասէր յաշակերտսն, թէ յորժամ 'ի տուն մտանիցէք, ողջոյն տաջիք իբրև աւետիս ինչ բարութեանց. "Յորժամ մտանիցէք, ասէ, 'ի տուն, ասասջիք թէ ողջոյն ընդ ձեզ"։ Զի ուր այն չիցէ, ամենայն ինչ աւելորդ է ։ Եւ ցաշակերտսն ասէր՝ եթէ "Խաղաղութիւն թողում ձեզ"։ Նա և սիրոյն ճանապարհ նոյն հորդէ ։ Եւ չասէ վերակացու եկեղեցւոյն վայրապար եթէ խաղաղութիւն ընդ ձեզ, այլ թէ խաղաղութիւն ընդ ամենեսեան ։

Զինչ օգուտ իցէ եթէ ընդ միում խաղաղութիւն ունիցիմք, և ընդ միւսումն կագ և կռիւ ։ Եւ ոչ 'ի մարմնի՝ եթէ կէսքն 'ի խառնուածսն 'ի հանդարտութեան իցեն և կէսքն յամբոխի, չկարէ երբէք առողջութիւնն հաստատուն կալ, այլ ամենեցուն միախուռն կալ միախառնութեամբ և միաբանութեամբ և խաղաղութբ ։ Եւ 'ի տունս եթէ ոչ ամենեքին հանդարտութիւն ցուցանիցեմք, ամենայն կործանի ։ Եւ 'ի միտս թէ ոչ ամենայն խորհուրդքն 'ի հանդարտութեան չիցեն, չառնի երբէք խաղաղութիւն ։ Այնպիսի բարութիւն է խաղաղութիւնն, զի և որդիս այ արժանիս առնէ կոչելոյ զառնելիսն և արարիչս խաղաղութեան. և նմանագոյնս իսկ, քանզի և որդին այ յայն եկն առնել խաղաղութիւն յերկրի և յերկինս ։ Ապա եթէ խաղաղարարքն խակագործք լինիցին զխաղաղութեան գործ ոչ գործել, որդիք սատանայի կոչին ։

Ընդէ՞ր, ասեն, հերձուածս և կռիւս 'ի մէջ արկանես. և ո՞վ ոք իցէ այնպէս հեգ և թշուառական ։ Բազումք են որ ուրախ լինին ընդ այն չարիս, և զմարմինն Քրիստոսի պատառեն ևս չար քան զզինուորսն գեղարդեամբն և զհրեայսն բևեռօքն ։ Եւ այս հարուած չար

է քան զայն. զի անդ անդամք թէպէտ և ծակոտեցան, դարձեալ 'ի միմեանս եկին. և աստ եթէ քակեսցին 'ի միմեանց, եթէ աստէն չգան 'ի միմեանս, ոչ երբէք գայցեն, այլ արտաքոյ քան զլրութիւնն գտանին: Յորժամ կամիցիս ընդ եղբօրն մարտնչել, 'ի միտ առնուցուս եթէ ընդ անդամն Քրիստոսի մարտնչիս, և դադարեսցես 'ի մոլորութենէն:

Եւ եթէ ապաժամն ոք իցէ, ասեն, և անարգ և արհամարհեալ: Այլուր այսպէս ասէ. “Չեն կամք հօր իմոյ եթէ կորիցէ մի 'ի փոքրկանցս յայսցանէ„. և դարձեալ եթէ “Հրեշտակք նոցա հանապազ տեսանեն զերեսս հօր իմոյ որ յերկինսն է„: Աստուած վասն նոցա և ծառայ եղև և սպանաւ, և դու չհամարիս ինչ զնա: Ապա ուրեմն և այսու ընդ Այ մարտնչիս, զի հակառակ նորայոցն բերես զվճիռն 'ի մէջ: Յորժամ մտանիցէ վերակացուն եկեղեցւոյն, իսկ և իսկ ասէ՝ եթէ խաղաղութիւն ընդ ամենեսեան. յորժամ օրհնիցէ ասէ՝ խաղաղութ̃ի ընդ ամենեսեան. յորժամ միմեանց ողջոյն տալ հրամայիցէ ասէ՝ խաղաղութ̃ի ընդ ամենեսեան. յորժամ դարձեալ օրհնիցէ ասէ՝ շնորհք և խաղաղութ̃ի ընդ ամենեսեան: Ո՜ խորդ չլիցեն անպատեհ իրք զի այնչափ անգամ լսեմք խաղաղութիւն ունել ընդ միմեանս, և կռուիցիմք ընդ միմեանս. առնուցումք, և անդրէն տամք տալեաց զխաղաղութիւն և կռուիմք: Ասեն՝ և ընդ հոգւոյդ քում. և յորժամ արտաքս ելանես, բարկացուցանես զնա: Վայ է ինձ զի պարկեշտութիւնք եկեղեցւոյ կերպարանք իրացն միայն եղեն և ոչ ճշմարտութիւն: Վայ ինձ զի բանիւք միայն են նշանք բանակիս. ուստի և չգիտէք իսկ թէ ընդէր առասցի խաղաղութիւն ընդ ամենեսեան:

Այլ լուարուք յետ այնր զինչ ասէ Քրիստոս. “Յոր քաղաք կամ 'ի գեղ մտանիցէք, յորժամ մտանիցէք, ասէ, 'ի տունն, ողջոյն տայջիք. և եթէ տունն արժանի իցէ՝ եկեսցէ ողջոյն ձեր 'ի վերայ նորա. և եթէ չիցէ արժանի՝ ողջոյնն ձեր առ ձեզ դարձցի„: Վասն այնորիկ չիմանամք, զի բանից օրինակ համարիմք զայն, և չմիաբանեմք մտօք: Միթէ ես տայցեմ ողջոյնն. Քրիստոս է՝ որ մեօքն բարբառիլ արժանի առնէ. թէպէտ և զայլ ժամանակն ընկ 'ի շնորհացն իցեմք, այլ ոչ եթէ

այժմ մինչ խօսիմքս։ Եթէ յէշն և ՚ի դիւթն ազդեցին այ շնորհքն վասն տեսչութեան ինչ և վասն իսրայէլացւոցն օգտի, կարի իսկ քաջայայտ է՝ թէ և ոչ ՚ի մեզ հրաժարեն ազդել, այլ անսան վասն ձեր։

Նա և արդ մի ոք ասիցէ՝ եթէ անարգ և տառապեալ և ոչ ինչ արժանի եմ, և չանսայցէ։ Նամ իսկ այնպէս, այլ սովոր է այ վասն բազմաց և յայնպիսիսն խոնարհել։ Ո՛յլ զի ուսանիցիք, և ընդ. Կայենի. ևս չզարշեցաւ խօսել վասն Աբելի, և ընդ սատանայի վասն Յովբայ; և ընդ Փարաւոնի վասն Յովսեփու, և ընդ Նաբուքոդոնոսորայ վասն Դանիէլի, և ընդ Բաղտասարայ վասն նորին. և մոգքն յայտնութեան արժանի եղեն, և Կայիափա, թէպէտ և տիրասպանն և անարժան էր, մարգարէացաւ վասն քահանայութեան պատուոյն. և Ահարոնն, ասեն, յայն սակս չքորոտեցաւ։ Նա եթէ վասն այնորիկ ոչ, աղէ ասա, յոր սակս. զի երկոքեան բամբասեցին, և քոյրն միայն պատժեցաւ։ Նա ընդ այն մի ինչ զարմանար, քանզի և յարտաքին պատուէն՝ թէպէտ և բազում չարախօսութիւնք լինիցին, չմտանէ յատեան՝ եթէ ոչ նա[illegible] յիշխանութենէն մերկանայցէ, զի մի և պատուէն ընդ նմին թշնամանեսցի. որչափ ևս առաւել ՚ի հոգևոր իշխանութեանս, մինչ դեռ զիշխանութիւնն ունիցի, ո ոք և իցէ, ազդեն շնորհքն այ. ապա թէ ոչ՝ ամենայն միանգամայն կորնչի։ Յորժամ յիշխանութենէն մերկանայցէ՝ կամ անդր երթեալ կամ աստէն իսկ, յայնժամ զանհնարագոյն պատիժս կրիցէ։ . . .

Նա մի համարիցիք եթէ ՚ի մտաց ինչ ասիցեմ, եթէ շնորհքն այ և անարժանօքն գործ գործեն՝ ոչ վասն մեր, այլ վասն ձեր. լուարուք այսուհետև Քրիստոսի. "Իսկ եթէ իցէ, ասէ, տունն արժանի, եկեսցէ ողջոյնն ձեր ՚ի վերայ նորա,,։ Ո կա՛րդ լինիցի արժանի։ "Եթէ ընդունիցին զձեզ,, ասէ. և եթէ չընդունիցին զձեզ, և ոչ բանից ձերոց լուիցեն, "Ամէն ասեմ ձեզ՝ դիւրագոյն լիցի երկրին սոդոմացւոց և գոմորայեցւոց յաւուրն դատաստանի քան քաղաքին այնմիկ,,։

Օ՛ ինչ օգուտ իցէ ընդունելն զմեզ, եթէ բանիցն զոր խօսիցիմք՝ ոչ լուիցէք. զի՞նչ շահ իցէ եթէ զմեզ հանդուցանիցէք, և խօսիցն չանսայցէք. այն է մեզ պա-

տիւ, այն է մեզ հանգիստ զարմանալի, որ և մեզ յօգուտ է և ձեզ։ Այս լուր Պաւղոսի. “Չգիտէք, ասէ, եղբարք եթէ քահանայապետ իցէ„։ Լուր և Քրիստոսի. “Ամենայն, ասէ, զոր ասիցեն ձեզ պահել՝ պահեսջիք և արասջիք„։ Ոչ զիս արհամարհես, այլ զքահանայութիւնն. եթէ տեսանիցես մերկ յայնմանէ, յայնժամ արհամարհեսջիր. յայնժամ և ես չթողում հրաման տալ։ Մինչդեռ յաթոռ նստիցիմք՝ և ըզզահերիցութիւնս ունիցիմք, և զպատիւ և զզօրութիւն ունիմք, թէպէտ և անարժանք իցեմք։ Եթէ Մովսէսի աթոռն այնպէս մեծարոյ էր, որպէս եթէ նմա լսիցեն, ո՛րչափ ևս առաւել Քրիստոսի աթոռն. քանզի այն 'ի մեզ կարգեցաւ. անտի խօսիմք, ուստի և Քրիստոս ետ զմեզ 'ի սպասաւորութիւն հաշտութեան։

Հրեշտակք զինչ ոք և իցեն, վասն հրեշտակութեն պատուոյ 'ի բազում մեծարանս վայելեն։ Տես զի որք 'ի բարբարոսաց երկրի կեան 'ի մէջ բազում պատերազմաց, և զի առաւել զօրագոյն են հրեշտակութեն օրէնք, յորժամ գայցեն՝ ամենեքին պատուեն, ամենեքին 'ի նոսա հային, ամենեքին սիրով յուղարկեն։ Այս մեք զհրեշտակութեան պատգամաւորութի լուաք և առաք յայ, քանզի այն է եպիսկոպոսութեանն պատիւ. եկեալ եմք առ ձեզ պատգամաւորել, աղաչել ցածուցանել զպատերազմ. չխոստանամք ումեք քաղաքս տալ, և ոչ ա՛նձինս այսչափ ինչ կամ այնչափ. ոչ ծառայս և աղախնեայս, ոչ ոսկի և արծաթ, այլ զարքայութիւնն երկնից, զկեանսն յաւիտենից, ընդ Քրիստոսի գնդակից լինել. և զայլ բարութիւնսն զոր և ասել չէ հնար՝ մինչ դեռ 'ի մարմինս իցեմք և յաշխարհի։ Պատգամաւորիմք և աղաչեմք. կամիմք զի 'ի պատիւսն վայելիցեմք, ոչ վասն մեր ինչ, քաւ լիցի, զի այն մեզ 'ի վատթարութիւն է. այլ վասն ձեր, զի դուք զմեր բանս փութով լուիցէք և օգտիցիք. զի մի ծուլութեամբ և յուլութեամբ հայիցիք ընդ խօսսն։

Չտեսանիցէք զհրեշտակսն, զիարդ ամենեքին կատին զնոքօք. և մեք այ հրեշտակք եմք առ մարդիկ։ Եթէ ձեզ ինչ այն վայրապար թուեսցի, այլ ոչ եթէ մեզ. ոչ եթէ ումն եպիսկոպոս է, այլ գործն եպիսկոպոսութեն. մի ոք համարեսցի ինձ լսել, այլ պատուոյն։

Արդ յայսմհետէ զամենայն ինչ արասցուք ըստ այ կամացն, զի 'ի փառս այ կեցցուք, և խոստացելոց բարութեանցն սիրելեացն նորա արժանի լիցուք հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՉՈՐՐՈՐԴ

"Այլ զձեզ որ երբեմն օտարացեալքն էիք և թշնամիք խորհրդովք 'ի գործսն չարութեան, արդ ահաւասիկ հաշտեցոյց զձեզ անդամովք մարմնոյն իւրոյ մահուն յանդիման կացուցանել զձեզ սուրբս և անբիծս և առանց բամբասանաց առաջի իւր":

Արդ այսուհետև ցուցանէ թէ չէին արժանաւորք հաշտութեանն և հաշտեցոյց. քանզի ասելովն եթէ ընդ իշխանութեամբն խաւարին էին, ցուցանէ թէ յորպիսի՛ ինչ տագնապի կային: Այլ զի մի՛ յործամ լսիցես իշխանութիւն խաւարի, բռնութիւն ինչ համարիցիս, յաւելու 'ի նոյն թէ "և դուք որ օտարացեալքն էիք". որ թուի թէ նոյն իցէ, բայց չէ նոյն. քանզի չէ ընդդէմ 'ի հաւնոր, զնոսա որ զակամայ չարչարանսն կրիցեն, և որ զկամաւ, զերծուցանել 'ի վշտաց. զի նա ողորմելոյ արժանի է, և սա ատելութեան: Բայց սակայն զձեզ, ասէ, ոչ եթէ որք ակամայ և 'ի հարկէ, այլ կամօք և ախորժելով հարթուցեալք էիք 'ի նմանէ՝ և անարժանք էիք, և ապրեցոյց:

Այլ քանզի զերկնիցն յիշեցոյց, ցուցանէ թէ և թշնամութիւնն աստի ունէր սկիզբն և ոչ եթէ անտի. քանզի նոքա վաղ իսկ կամէին, և ած, բայց դուք չախորժէիք: Այլ ամենևին յայտ առնէ թէ և ոչ ինչ վճարեցին հրեշտակք յառաջին ժամանակսն, թէ և թշնամութեամբ էին. և ոչ հաւանեցուցանել կամէին, և եթէ հաւանէիք ևս՝ չկարէին զերծուցանել 'ի սատանայէ: Քանզի և ոչ 'ի հաւանելոյն շահ ինչ էր,

եթէ որ ունէրն՝ չէր կապեալ. և ոչ 'ի կապելոյն օգուտ ինչ էր, եթէ կապելոցն չէր կամեցեալ արձակել: Այլ երկոցունց պէտք էին, յորոց ոչ ինչ վճարեցին նոքա. իսկ Քրիստոս զերկոսին արար: Որպէս զի թէ քան զմահն լուծանել՝ ևս սքանչելագոյն հաւանեցուցանելն է. զի այն ամենեւին նորա. միւսն ոչ միայն նորա, այլ և մեր. բայց որ ինչ դիւրագոյնն քան զայս իցէ, վճարեմք և մեք որոց մեք միայն տեարք եմք: Իսկ սա աւասիկ զմեծն յետոյ դնէ. զի չասաց թէ թշնամիք էիք, այլ օտարացեալք, որ սաստիկ թշնամութեանն է. ոչ միայն օտարացեալք, այլ բնաւ իսկ չունէիք ակն 'ի հաշտութիւն գալոյ: "Եւ թշնամիք էիք, ասէ, 'ի խորհրդովք". ոչ կամօք միայն էր օտարութիւնն. այլ զինչ. "և գործովքն չարութեանց": Թշնամիք էիք, ասէ, և զթշնամեաց գործ գործէիք:

"Արդ աՀա աւասիկ հաշտեցոյց զձեզ անդամօք մարմնոյն իւրոյ մահուն յանդիման կացուցանել զձեզ սուրբս և անբիծս և առանց բամբասանաց առաջի իւր": Պատձեալ և զօրինակ հաշտութեանն դնէ, եթէ մարմնովն ոչ դոյզն ինչ լլկեցաւ, այլ տանջեցաւ, նա և մեռանելն ձաղանաց մահու մեռաւ: Վասն այնորիկ դարձեալ յիշէ զխաչէն, դարձեալ զմիւս երախտիսն դնէ: Ոչ միայն, ասէ, ապրեցոյց, այլ զոր և վերագոյնն ասէ՝ թէ բաւականս արար զմեզ, զնոյն և աստ ակնարկէ. "Մահուն, ասէ, յանդիման կացուցանել զձեզ սուրբս և անբիծս և առանց բամբասանաց առաջի իւր": Զի ոչ միայն 'ի մեղաց զերծոյց, այլ և ընտիրս կացոյց. ոչ միայն զի 'ի չարեացն ազատիցէ չարչարեցաւ, այլ զի և վերին աստիճանացն հասանիցեմք: Զոր օրինակ եթէ զմահապարտ ոք ոչ միայն 'ի պատժոցն ազատիցէ, այլ և 'ի պատիւ ևս ածիցէ, և ընդ այնորիկ որ չլիցէն յանցուցեալ կարգիցէ, մանաւանդ թէ ոչ միայն ընդ յանցաւորսն, այլ և ընդ բարեգործսն, մեծամեծ երախտիք էին: Եւ առաւել մեծ այն է զի զսրբութիւնն պարգևեաց, և առաջի իւր կացուցանելոյ արժանի արար: Եւ անբամբասն առաւել է քան զանբիծն, յորժամ ոչ ամբաստանելոյն ինչ և բամբասելոյ գործք 'ի մեզ գտանիցին:

Եւ քանզի զամենայն 'ի նմանէ եդ, եթէ մահու իւրով ուղղեաց զամենայն, զի մի ասիցեն եթէ մեզ զինչ

անկ. իցէ անուր միթէ չիցեմք ինչ պիտանացուք, վասն այնորիկ յարէ 'ի նոյն. "Եթէ կայցէք, ասէ, 'ի հաւատոն հիմնացեալք և հաստատունք և չշարժեցիք 'ի յուսոյ աւետարանին": Զծուլութիւն նոցա կտրէ այսուիկ. քանզի մարթի կալ մնալ շարժուն և դանդաչել. մարթի կալ և այսր անդր տատանել. "Եթէ կայցէք, ասէ, 'ի հաւատոն հիմնացեալք և հաստատունք և չշարժեցիք": Նաղէ քանի օրինակս 'ի կիր արկանէ. ոչ միայն, ասէ, չտատանիցիք, այլ և մի շարժիցիք: Տես զի չև եւս ինչ ծանրագոյն դնէ և ոչ աշխատութիւն, այլ զհաւատոն և զյոյս դնէ. այսինքն թէ պինդ կացէք 'ի հաւատոն եթէ ճշմարիտ է յոյս հանդերձելոցն: Քանզի սուտ մարթի լինել[1]. իսկ յառաքինութեանն չէ հնար շարժել գէթ սակաւ ինչ. զի այնպէս չէ տաղտկալի: "Որպէս 'ի յուսոյ աւետարանին զոր լուարուք քարոզեալ ընդ ամենայն արարածս որ 'ի ներքոյ երկնից": Զինչ իցէ յոյս աւետարանին, եթէ ոչ Քրիստոս. քանզի նա իսկ է խաղաղութիւն մեր, և զայս ամենայն նա արար: Ապա ուրեմն որ այլոց համարիցի, շարժուն է և դանդաչուն և զամենայն կորուսանէ, եթէ ոչ 'ի Քրիստոս հաւատայցէ: "Զոր լուարուքն", ասէ: Նախ զնոսա ածէ 'ի վկայութիւն, ապա զամենայն տիեզերս: Չասէ եթէ քարոզեցին, այլ թէ արդէն իսկ հաւատարիմ եղելոյ, զոր և 'ի սկզբան թըղթին յարդարեաց. առ 'ի բազմացն վկայութենէ և 'ի նոցանէ կամի առնուլ հաստատուն: "Որոյ եղէ ես Պաւղոս պաշտօնեայ": Քանզի և այս 'ի հաւատարմութիւն նպաստ լինի. "Ես, ասէ, Պաւղոս պաշտօնեայ": Մեծ է պատիւն այնուհետև ընդ մնալ իսկ հնչեալ՝ թէ ամենայն աշխարհաց վարդապետ է:

"Եւ արդ ուրախ եմ, ասէ, ընդ չարչարանս իմ վասն ձեր, և փոխարէն լնում զմնացորդս նեղութեանց Քրիստոսի 'ի մարմնի իմ վասն մարմնոյ նորա որ է եկեղեցի": Եւ զինչ ինչ կարգ իցէ աստ: Թուի թէ չիցէ կատարեալ, և բազում հաստատութիւն է կարգին: Պաշտօնեայ կոչէ զանձն փոխանակ ասելոյ թէ ոչ յինէն ինչ մուծանեմ, այլ զայլոց պատմեմ: Որպէս հա-

1 Յօրինակին Մխիթարի. եղաւ ըստ. յաւելին:

ւատամ, զի և չարչարիմ իսկ վասն նորա. և ոչ միայն չարչարիմ, այլ և ուրախ եմ ընդ. չարչարանսն 'ի հանդերձեալ յոյսն հայեցեալ. և չարչարիմ ոչ վասն անձին ինչ, այլ վասն ձեր: "Եւ փոխարէն լնում զմնացորդս նեղութեանցն Քրիստոսի 'ի մարմնի իմում": Թուի թէ մեծաբանութիւն ինչ իցէ, բայց չէ հպարտութիւն, քաւ լիցի, այլ բազում գութ ընդ Քրիստոսի ունել: Քանզի չկամի թէ իւր համարեսցին չարչարանքն, այլ նորա, և զնոսա կամի իւր ընտանեցուցանել: Որ ես չարչարիմ, ասէ, վասն նորա չարչարիմ. զի մի ինձ շնորհ ունիցիք, այլ նմա, քանզի ինքն չարչարի զիմ չարչարանս: Որպէս թէ զի առաքեսցի ոք առ ոք և զայլ ոք աղաչիցէ՝ թէ աղաչեմ զքեզ երթ ընդ իմ առ այս անուն, և նա ասիցէ՝ եթէ վասն այսր անուան առնեմ զայս: Իսկ ուրեմն չհամարի անձն և զայն նմա չարչարանս համարել: Քանզի ոչ եթէ մեռանի միայն վասն մեր, այլ և յետ մահուանն պատրաստ է նեղել վասն մեր. Ջանայ և ազորի ցուցանել թէ և այժմ միշտ կրէ վասն եկեղեցւոյ իւրում մարմնոյն. և առ նոսա ձգէ՝ եթէ ոչ մեզ մերձենայք, այլ նմա, թէպէտ և մեք առնիցեմք զայս. ոչ եթէ զանձանց ինչ գործ յանձինս ընկալաք, այլ զնորա: Եւ այնպիսի ինչ է որպէս թէ զօրավար ոք իցէ 'ի բանակի և զիւր պաշտպան յիւր տեղի 'ի պատերազմ յղիցէ; և նա երթեալ զվէրս զօրագլխին զանձամբ առնուցու, և դայցէ ցուցցէ եթէ ես վասն քո խոցեցայ, նոյնպէս և աս զի վասն նորա չարչարէր, լուր նմին իսկ. "Վասն մարմնոյ նորա" ասէ: Եւ կամ եթէ զայն իսկ կամիցի ասել, թէ ոչ ձեզ ինչ շնորհս վարկանիմք, այլ Քրիստոսի. զի զոր ինչ նմայն պարտ էր չարչարել, ես չարչարիմ ընդ նորա: Տես զիարդ կամի ցուցանել զջերմ գութն. որպէս և յերկրորդում թղթին կորնթացւոց գրէ՝ եթէ "Հաստատեաց 'ի մեզ զպաշտօն հաշտութեանն", և դարձեալ եթէ "Վասն Քրիստոսի պատգամաւորիմք որպէս թէ ած իսկ աղաչիցի մեօք", զնոյն և աստ ասէ՝ վասն նորա չարչարիմ, զի ևս առաւել ածիցէ զնոսա զինքեամբ. այսինքն զի թէպէտ և որ պարտն էր ձեզ՝ վերացաւ, այլ ես հատուցանեմ. Նմին իրի իսկ և մնացորդս կոչէ, զի ցուցցէ թէ չհամարի զայն միայն,

և չև ևս է լիով չարչարեալ վասն ձեր, այլ և յետ մահուն չարչարի՝ եթէ մնացորդք ինչ մնացեալ իցեն: Որ 'ի հռովմայեցւոց թղթին ասէ, "Որ և բարեխօս իսկ է վասն մեր", յայտ արարեալ եթէ չհամարեցաւ ըզմահն միայն բաւական, այլ և յետ այնորիկ ազգի ազգիս գործէ: Եւ արդ ոչ եթէ զանձն ինչ յարդարէ զայս ասելով, այլ զՔրիստոսէ կամի յայտ առնել եթէ և այժմ խնամակալ լինի նոցա. և զբանն հաւատարմագոյն ցուցանէ յաղորդացն. "Վասն մարմնոյն նորա", ասէ: Եւ զի այս այսպէս է և չէ ինչ անպատշաճ, յայտ առնելով՝ զի վասն մարմնոյ նորա, ասէ: Տես զիարդ և զմեզ խառնեաց ընդ ինքեան: Իսկ արդ ընդէ՞ր մակաքեան 'ի մէջ մածանիցէք զհրեշտակս: "Որոյ եղէ ես Պաւղոս պաշտօնեայ": Այս ցուցանէ եթէ ոչ ինչ արար ինքն, թէպէտ և պաշտօնեայ իցէ:

"Որոյ եղէ ես Պաւղոս պաշտօնեայ ըստ տնտեսութեանն այ որ տուաւ ինձ 'ի ձեզ կատարել զբանն այ": Տնտեսութիւն կամ զայն ասէ, թէ այնպէս կամեցաւ յիւր երթալ մեզ յանձն առնել զտնտեսութիւն, զի մի իբրև զթողեալս և զլքեալս համարիցին զանձինս. ինքն, ասէ, չարչարի. ինքն բարեխօս լինի: Կամ թէ զայն իսկ ասիցէ, թէ ինձ որ առաւել քան զամենեսին հալածիչ էի, և թոյլ ետ հալածել զի հաւատարիմ քարոզ լինիցիմ: Կամ զայն ասէ տնտեսութիւն, զի ոչ գործս խնդրեաց, ոչ վարս և ոչ ուղղութիւնս, այլ հաւատս և մկրտութիւնս. քանզի և ոչ ընդունէին այլ ազգ ինչ զբանն:

"Ի ձեզ, ասէ, կատարել զբանն այ": Ո հեթանոսաց ասէ, յայտ արարեալ զնոցանէ թէ տակաւին շարժունք էին, ասելովն թէ կատարեալ. զի հեթանոսաց խոտորելոց բաւական լինել զայնչափ բարձրութիւն կրանիցն՝ ընդունել՝ ոչ Պաւղոսի էր, այլ այ տնտեսութեանն. նա և չէր ես իսկ կարող: Իբրև եցոյց զմեծն թէ իւր չարչարանքն Քրիստոսի են, ապա յայտնագոյն 'ի նոյն յարէ՝ թէ և նորայն այ է, քանզի ըստ այ կամաց է. "Կատարեալ, ասէ, զբանն 'ի ձեզ": Եւ ցուցանէ աստ, ոչ ինչ յայտնագոյնս, թէ և այժմուս խօսել նորին տեսչութեան էր. և զի կարող էք լսել, բայց ոչ եթէ ծուլութեան ինչ պատճառք իցէ, այլ որպէս թէ ընդու-

նիչս լինելոյ։ Զի ա̃ծ ոչ յանկարծակի զամենայն առնէ, այլ մեղմով ըստ զիջանելոյ վասն իւրոյ բազում մարդասիրութեանն. և Քրիստոսի գալստեանն նոյն պատճառք է նա և ոչ վաղագոյն գալ։ Եւ յայս յաւետարանին առնէ՝ զի նախ զծառայսն առաքեաց, զի մի 'ի սպանումն որդւոյն գայցեն. զի եթէ յետ ծառայիցն եկն և չախնածեցին յորդւոյն, որչափ ևս առաւել թէ ևս յառաջագոյն եկեալ էր. եթէ նուազագոյն հրամանացն ոչ լուան, զիարդ մեծամեծացն լսէին։

Իսկ արդ զիարդ, ասեն, այժմ չիցեն հրեայք և հեթանոսք թերահաւատք։ Այն պատահեալ առաւելութիւն ծուլութեան է. զի յետ այնչափ ժամանակաց և յետ այնչափ վարդապետութեանց մնալ թերահաւատս, բազում յուլութիւն է։ Արդ յորժամ ասիցեն հեթանոսք թէ ընդէր այժմ եկն Քրիստոս, միայն մի ինչ տացուք պատասխանի նոցա, այլ թէ ոչ ուղղեաց ինչ զայն հարցցուք։ Զի թէ անդէն 'ի սկզբանն իսկ եկեալ էր և չէր ուղղութիւնս գործեալ, չէր բաւական մեզ 'ի պատասխանատուութիւն ժամանակն. նոյնպէս քանզի ուղղութիւնս գործեաց, չեմք իրաւացիք եթէ զժամանակացն համարս խնդրեսցուք։ Նա և ոչ 'ի բժշկէ՝ որ զցաւս փարատիցէ և յառողջութիւն ածիցէ, համարս բժշկութեան ոք պահանջիցէ. և ոչ զօրավարէ՝ որ յաղթիցէ, մեղադիր ոք լինի թէ ընդէր ոչ յայսմ կամ յայնմ ժամանակի, և զմէ ոչ յայսմ կամ յայնմ վայրի. բայց այնմ միայն եթէ ընդէր ոչ յաղթեցեր, ընդէր չգտար պառաքինի 'ի պատերազմին։

Արդ աղէ ասա, ո՛ հաւատարմագոյն իցէ, քո՛ խորհուրդք և զրպարտութիւն, եթէ իրացն կատարումն։ Արդ զայն ցոյց, յաղթեա՞ց թէ չյաղթեաց, կալա՞ւ թէ չկալաւ, եհա՞ն 'ի գլուխ զոր ասացն թէ ոչ. զայն համարս պահանջեա։ Աստուած ապաքէն խոստովանիս, թէպէտ և ոչ զՔրիստոս ա̃ծ. իսկ արդ աղէ ասա, ընդէ՞ր ոչ յառաջ քան զբիւրս բիւրոց ամաց արար զմարդիկ զի բազում ժամանակս կեցցեն։ Զի եթէ բարւոք իցէ լինելն, ևս առաւել լաւագոյն վաղ լինել և բազում ժամանակս կեալ. մի թէ պիտանեցա՞ն ինչ զայնչափ ժամանակս զոր ոչն եղեն։ Այլ չպիտանեցան։ Իսկ եթէ ընդէր և որպէս, զայն որ արարն՝ միայն գիտէ։

Հարցանեմ զորձեալ եթէ ընդէ՞ր ոչ միանգամայն ա-
րգել զամենեսեան. այլ որոնեն զգի յառաջագոյն եղե-
լոյ այսչափ ամս ունի., միւսոյն չև ևս լեալ: Ընդէ՞ր զոմն
յառաջ և զոմն յետոյ արար զոր 'ի նոյն աշխարհ՝ ածե-
լոց էր: Այնպէս և արդարեւ իսկ այս խնդրելոյ արժա-
նի է: Այլ ես ասացից զպատճառն զորոյ ասացի: Հա-
մարեաց զամենայն բնութիւն մարդկան իբրև զմի հա-
սակ, և զառաջին ժամանակն զմանկութեան կարգ ունել
ազգիս մերոյ, և յետ նոցա զերիտասարդի, և մտաւո-
րացս զծերութեանն: Յորժամ ազգքն հասին 'ի չափ,
'ի վառել մարմնոյն անդամոցն և 'ի ցածնուլ պատերազ-
մին, յայնժամ եկաք 'ի զգաստութիւն:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այլ զնորին հակառակն, ասեն, ասես: Մանկութեան
է բուսումն և ոչ ծերոց. այլ ոչ եթէ զմեծամեծ ինչ
կրօնսն մանկութեան է ուսանել, այլ զհնեփորականն և ըզ-
բանիցն զժողովակ միցութիւն. բայց 'ի կատարեալ կրօնսն՝
յորժամ հասուն իցէ՝ գայ: Տես զի և ած զնոյն առ-
նէր առ Հրէիւքն. որոց զպարսպեալ 'ի վերայ զՄովսէս
կացոյց, և իբրև մանկութեան այնպէս տայր նոցա հրամանս.
զեղանմանս ստուերագիրս գրէր, որպէս և մեք զաշխա-
փեսսն զառաջինն. քանզի զտուներսն ունէին օրէնքն
զհանգերձելոց սրբութեանցն, և ոչ զնոյն իսկ զպատ-
կերագիր իրացն: Այլ զոր օրինակ մեք մանկութեան պէղա-
կունս և պախարակման զնեմք և արծաթով պատրեմք,
և զմին միայն պահանջեմք զի 'ի դպրոցն երթայցեն,
նոյնպէս և ած յայնժամ և մեծութիւն ետ նոցա և
փափկութիւն, և զմին միայն պահանջէր 'ի նոցանէն՝ զի
բազում մտադիւրութեամբ Մովսէսի ունկնդիր լինի-
ցին: Նա այնորիկ ետ զնոսա վարդապետաց, զի մի
զնա արհամարհիցեն. իբրև հօր զթածի արար զնոսա
յանձն: Այլ արդ տես զիարդ 'ի նմանէ միայն երկնչէին.
չասացին թէ ո՞ւր է ած, այլ թէ ո՞ւր է Մովսէս. մինչև
մօտն էր, ահագին էր ամենեցուն: Այլ յորժամ զյա-
ուր գիրն զքեցին, տես զիարդ տանջեաց զնոսա:

Աստուած կամէր տարագիր առնել զնոսա, և նա՛ չետ
թոյլ. մանաւանդ թէ ամենայն իսկ ոչ էր: Զոր օրի-

նակ յորժամ Հայր. տպաւորեսցէ, և վարդապետսն զան-
ձանձիս առնուցու թէ յիս թող, յայսմ հեռուէ ես եմ ե-
րաշխաւոր։ Նա այսպէս լինէր անապական դպրոց. և իբ-
րև մանկունս յորժամ յամեն 'ի դպրոցի՝ փախչել կա-
մին, նոյնպէս և նոքա յայնժամ զԵգիպտոս խնդրէին,
զարտասուս հարեալ լային թէ կորեաք ծախեցաք սպա-
ռեցաք. և զպնակիտս նոցա խորտակեաց Մովսէս, յա-
րուեմ գրեացն նոցա իբրև անուանս ինչ։ Որպէս և վար-
դապետք առնիցեն. յորժամ տեսանիցէ եթէ չարա-
չար գրեալ է, զպնակիտսն ևս 'ի բաց ընկենուցու յոր-
ժամ զբազում ցասումն կամի ցուցանել. և եթէ բե-
կանիցէ զպնակիտսն, հայրն չգտանու։ Նա ստէպ գրէր,
և նոքա չհայէին 'ի գիրսն, այլ այլուր դարձեալ լկտե-
նային. և որպէս 'ի դպրոցի զմիմեանս հարկանեն, նոյն-
պէս և նոցա հրաման ետ ընդ միմեանս խոսանել և կո-
տորել։ Դարձեալ ետ զսաստումն և խնդրէր զհամարս.
չետուն և զան եհար։ Որպիսի ինչ գիր զայս զօրութիւն
ծանուցիչ յերկրին եգիպտացւոց։ Այո, ասեն, այլ
այն գիր զանի զուշակիչ էր և զթշնամիսն տանջէր, նո-
ցա և այն դպրոց էր։ Ոչ ինչ իցէ տանջանքն թշնա-
մեացն, թէ ոչ որ մեզ բարերարութիւն եղև։ Նա այլ
ազգ ևս, համարեաց թէ այնպէս որպէս թէ խստա-
նայցէ ոչ գիտել զգիրն, և յորժամ զան աստ անդ հար-
ցանիցէ և չասիցէ՝ զան ընկալցէ; նոյնպէս և նոքա կամէին
գիտել զԱյ զօրութիւնն, և յորժամ զան աստ անդ պա-
հանջէին վասն գիտութեանն՝ չտային համարս, վասն
այնորիկ և զան իսկ ընկալէին։ Տեսե՞ր ջուր. պարտ էիր
յիշել զջուրն որ յերկրին եգիպտացւոց էր. զի որ 'ի
ջրոյն արիւնն արար, կարող է և զղասն ջուրն 'ի քաղց-
րութիւն դարձուցանել։ Ո՞չ օրհնակ և մեք առնեմք
զմանկունս բազում անգամ, յորժամ տեսանիցես 'ի գիրս
զայբն, յիշես զի և 'ի պնակիտսն նոյն կայր։ Տեսե՞ր
ամպ, յիշեա զի նոյն էր որ զարդիւնսն եգիպտացւոցն
կորոյս. տեսե՞ր պատերազմունս, յիշեա զընկղմել զօ-
րացն Փարաւոնի. տեսե՞ր զի անարիք բնակեալ էին
յերկրին քանանացւոց, այլ ոչ ինչ մեծամեծք քան
զեգիպտացիսն էին։ Ո՞չ 'ի նոցա միջոյ զերծոյց զքեզ,
ո՞չ ապաքէն մինչև արտաքոյ ես՝ պահեսցէ։ Այլ ոչ
ծանեան զգիրն յորժամ զան աստ անդն հարցան. նը-

մին-խոյծ իսկ և զանս տղային , կնոջան տղային և կիցս ըն-կեցին : Չէ պարտ առ մանկանայինն այլ փափկութիւն խնդրել , այլ 'ի միտ առնուլ զչարիսն որ անտի ծնանին : Իսկ այնպէս ինչ գործ գործէին որպէս ազատ մանկտոյ 'ի դպրոցս ստիպեցին երթալ , և նա ընդ ծառայս 'ի տաղաս կամիցի մնալ . նոյնպէս և նոքա զԵգիպտոս խնդրէին , և զհարկաւորութեանն և ոչ ազատութեանն առ սե-ղանն հօրն նստել և 'ի նոյն խորտիկս վայելել , այլ ընդ շարաւ խոհակերացն կամէին զալ , ամբոխեալք 'ի վերայ եկեալք : Նա ցՄովսէս ասէին . այս տէր , զամենայն ինչ զոր և առիցես , արասցուք և լուիցուք : Իսկ որ ինչ տղահասակ մանկտւոյն պատահիցէ յորժամ հայրն տպա-նանել կամիցի զնոսա , և վարդապետն սակայն դանդա-ղիցի , այսպիսի ինչ և առ նոքօք պատահէր : Զայս ա-սացի զի ցուցից թէ չէին ընդհատ 'ի մանկտւոյ :

Կամիս և զկրօնիցն լսել զի չէին ինչ աւելի քան ըզ-մանկտւոյ : « Ակն , ասէ , ընդ ական և ատամն ընդ ա-տաման » : Չէ ինչ մեծ 'ի վրէժխնդրութիւնն իբրև ըզ-մանկտւոյ միտս , և քան զանհանճարութիւն և բազում ունայնութիւն խորհրդոց . 'ի մատաղ հասակին յիրաւի իսկ բանաբարի 'ի ցասումն մանուկն . և այնչափ ինչ բըռ-նութիւն է , որպէս զի յորժամ բազում անգամ զը-րիցեն և յառնիցեն , թէ և այլ ինչ ոչ կամ բաժրանս կործանեսցեն կամ զզեստիցն տանջեսցեն , և այս ցածնու-ցասումն նոցա : Սոյնպէս և ած հրամայեաց նոցա ակն ընդ ական հանել և ատամն ընդ ատաման թափել , և զեգիպտացիսն և զամաղէկացիսն սրտմտեցուցիչս նոցա կոտորել : Իսկ այնպէս ինչ քնքշեցոյց որպէս և մանուկն ասիցէ ցհայր իւր եթէ այս անուն եհար զիս . և հայրն ասիցէ նթէ չարահար է այս անուն այր , և մեք ատես-ցուք զնա : Սոյնպէս և ած ասէ՝ եթէ թշնամեաց քոց թշնամի եղէց և զատելիս քո ատեցից : Իսկ դարձեալ յորժամ Բաղաամ գայր , մանկաբար իմն զիջանել լի-նէր ըստ նոցա : Որպէս և մանկտոյ յորժամ երկնչիցին 'ի չարհազէն ինչ իրաց , կամ յառուէ կամ 'ի չուանէ կամ յայլ իմեքէ , այնպէս յանկարծակի իմն պակչին , մինչև թալանալ և անմռունչ լինել յերկիւղէն . և հարկ լինի բերել յորմէ երկնչին , և 'ի ձեռին իսկ ունել նո-ցա և ընդելուցանել : Սոյնպէս և ած արար . քանզի ա-

հազին թուէր նոցա գիւթն, դարձուցց նոցա զսիրտն 'ի խրախոյս նոցա. և զոր օրինակ յորժամ 'ի սմենէ հատուցանիցեն մանկտի ;'ի սպասաւորս ինչ մթերեալք և պահեսցէ զկերակուրս նոցա, նոյնպէս և նոցա զամենայն ինչ ետ և բազում փափկութիւնս: Այլ մանուկն ըղմայրն խնդրէ, նոյնպէս և նոքա զԵգիպտոս և զմիսն: Որպէս զի չխաբէ ոք վարդապետ և դայեակ և դաստիարակ կոչել զՄովսէս և զարմանալ ընդ բազում իմաստութիւն առնն. քանզի չէ ընդ մի արանց կատարելոց և փիլիսոփայից վարդապետ լինել, և խակ մանկտւոյ իշխան կալ: Այլ եթէ կամիցիք այլ ազգ ևս ինչ լսել, որպէս դայեակն ասիցէ ցմանուկն յորժամ յապարահեղն երթիցէ՝ եթէ 'ի վեր հար զհանդերձդ, և ըղտեղղն ևս ցուցանիցէ եթէ ցած վայր: Այլ այնպիսի իրաց ևս սպասաւոր լինէր նոցա Մովսէս: Այլ քանզի ամենայն կարիք բուռն են մանկտւոյ և չև ևս հասեալ է 'ի չափ կատարելոյն, զմտացն ասեմ, չարակնութի, անապարծութիւն, ցանկութիւն, անհանճարութիւն, ցասումն որպէս 'ի մանկանս կրիցի, նոյնպէս և 'ի նոսա. քամահելին տանջելին զՄովսէս. և որպէս մանուկ զի քար 'ի ձեռն առնուցու և հարկանել կամիցի զհայր կամ ըղդայեակ, և ամենեքեան զբողոք բառնամք թէ մի ձգեր, նոյնպէս և նոքա քարինս առնուին ձգել 'ի հայրն, և նա փախչէր. և զոր օրինակ եթէ զարդ ինչ առնիցի հայրն, և մանուկն ցանկանայցէ զարգուն և խնդրիցէ, նոյնպէս և Դաթան և Աբիրոն յարեան 'ի վերայ քահանայութեան, քանզի չարակունք քան զամենեսեան էին և կարծամիտք և անկատարք:

Աղէ ասա արդ, յայնմ ժամանակի ինչ պարտ էր յայտնել Մովսէսի. զայնպիսի վարդապետութիւն զգաստութեան յայնժամ տալ, մինչդեռ 'ի մոլորութեան էին առ անզգայ ցանկութեանն, մինչդեռ ձիքն մատակախաղք էին, և ընչից և որովայնի ծառայք: Զընդունելին զգաստութեանն վարդապետութիւն առ բազում անմտութեանն. զայս չուսանէին, և յայնմանէ ևս անկանէին: Զոր օրինակ որ յառաջ քան զգիրն ընթեռնուլ ուսուցանիցէ, և զգիրն իսկ երբէք չուսուցանէ, նոյնպէս և յայնժամ: Բայց ոչ այժմ, քանզի շնորհօքն ա̃յ բազում հանդարտութիւն է և յաճախ առաքինութիւն ընդ համօրէն աշխարհ տնկեալ:

Այլ արդ գոհասցուք ընդ ամենայնի և մի քննեսցուք զժամանակս. քանզի ոչ գիտեմք մեք զժամանակսն, այլ արարիչ ժամանակացն և յաւիտեանցն հասանիչ։ Արդ թոյլ տացուք զամենայն. զի այն իսկ է փառաւորել զԱծ, չպահանջել 'ի նմանէ համարս զգործոցն զոր առնիցէ. որպէս Աբրահամ ետ զփառս այ. և հաստատեցաւ, ասէ՝ որ խոստացաւն նոյն կարող է և առնել։ Դա և վասն հանդերձելոցն չհարց. մեք և զանցելոցն համարս պահանջեմք։ Տես որչափ անգիտութիւն է, քանի ապախտաւորութիւն։ Դադարեսցուք այսուհետև. քանզի չիք ինչ անտի շահ, այլ և վնաս ևս մեծ։ Մատաղեր կամօք ընկալցուք զամենայն ինչ զպետանս մերոյ և փառս հանցուք այ, զի վասն ամենայնի գոհութիւն մատուսցուք և մարգասիրութեանն նորա լիցուք արժանի շնորհօք և մարդասիրութեամբ միածնի որդւոյ նորա. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՀԻՆԳԵՐՈՐԴ

“ Խորհուրդն ամրածածուկ յաւիտեանցն և ազգաց՝ այժմ ահաւասիկ յայտնեցաւ սրբոց իւրոց. որոց կամեցաւ ած ցուցանել զինչ է մեծութիւն փառաց խորհրդոց 'ի հեթանոսս, որ է Քրիստոս 'ի ձեզ յոյսն փառաց. զոր մեքն պատմեմք. խրատեմք զամենայն մարդ ամենայն իմաստութեամբ, զի կացուսցուք զամենայն մարդ կատարեալ 'ի Քրիստոս ”։

Իբրև ասաց որոց արժանին եղեաք, և եցոյց զայ ըզմարդասիրութիւնն և զպատիւն մեծութեան պարգևացն, դարձեալ այլ առաւելութիւն մուծանէ՝ թէ ոչ ոք յառաջ քան զմեզ զայն ուսաւ։ Զոր և յեփեսացւոց թղթին ասէ՝ թէ ոչ հրեշտակք և ոչ հրեշտակապետք և ոչ այլ ինչ արարած զօրութիւն, բայց միայն այ որդին գիտէր։ Այլ չասաց վայրապար ծածկեալ, այլ ամրածածուկ. և ոչ եթէ այժմ եղև, այլ հին է. և 'ի բնէ ած

զայն կամէր, և նոյնպէս նկարեալ էր: «Յաւիտեանսն» ասէ. այսինքն 'ի սկզբանէ: Եւ յիրաւի խորհուրդ կաչէ. քանզի ոչ ոք գիտէր, բայց միայն Ած: Եւ ո՞ւր է ծածկեալ. 'ի Քրիստոս. որպէս յեփեսացւոց թղթին ասէ, կամ որպէս յորժամ մարգարէն ասիցէ՝ եթէ «Յաւիտենից մինչև յաւիտեանս դու ես»:

«Այժմ ահաւասիկ յայտնեցաւ, ասէ, սրբոց իւրոց»: Այս ուրեմն մծ տեսչութեանն է այն ամենայնի: Այժմ ահաւասիկ, ասէ, յայտնեցաւ. և չասաց եթէ եղև, այլ թէ յայտնեցաւ սրբոց իւրոց: Այս ուրեմն առաւելին ծածուկ է, թէպէտ և սրբոցն միայն յայտնեցաւ: Արդ մի խափեսցեն զձեզ նոքա, քանզի չգիտեն իսկ ընդէր սրբոցն միայն որոց կամեցաւն, ասէ: Տես զիարդ ամենայն ուրեք ընծայրանէ զհարցուածս նոցա: «Որոց կամեցաւ Ած, ասէ, ցուցանել»: Զի կամելն նորա ոչ անհանճար ինչ չհարցանելի է, այլ մանաւանդ պատժապարտս առնէ, կամ յորդորէ զնոսա յուղղութիւնս մտաբերել: «Որոց կամեցաւն, ասէ, ցուցանել զինչ է մեծութիւն խորհրդոյն նորա 'ի հեթանոսս»: Պարկեշտագոյնս իմն ճառէ և առաւելութիւն 'ի վերայ դնէ առ բազում գթոյ, յոլովութիւն 'ի յոլովութիւն յարէ. նա և այն իսկ յոլովութեան է կետն չդնելով ասել թէ «մեծութիւն փառաց խորհրդոյս այսորիկ 'ի հեթանոսս երևի». որպէս և այլուր ասէ՝ եթէ «հեթանոսք վասն ողորմութեան փառաւոր առնեն զԱծ»:

Երևի իսկ և այլովք, բայց առաւել սորօք յաճախութիւն խորհրդոյն փառաց. զի յանկարծակի զմարդիկ որ քան զքարինս եւս անզգայագոյն էին, 'ի հրեշտակաց պատիւ հանել լոկ բանիւք միայն և հաւատովք առանց գործոց ամենևին իսկ՝ արդարև փառք և մեծութիւն խորհրդոյն է: Զոր օրինակ զշուն մի սովեալ զքոսոտ և զկոտեալ և զչարատես, որ և շարժել անգամ չկարիցէ, այլ ծնգրտեալ անկեալ դնիցի, յանկարծակի մարդ առնիցէ և յարքունական աթոռն հանիցէ, նոյնպէս և զբնութիւն մարդկան որք քարանց երկիր պագանէին, զերկիր երկիր ուսան և զերկինս երկինս, զարեգակն արեգակն և զանձինս քան զամենայն ազնուագոյն, և ամենայն աշխարհ կայ նմա 'ի ծառայութեան: Գերիք և կալանաւորք էին սատանայի և յան-

կարծակի եղեն 'ի վերայ գլխոյն նորա, հրամանս տան և տանջեն զնա. դիւաց վտարանդիք էին, և հրեշտակաց անուանս և հրեշտակապետաց եղեն մարմնակիցք. ոչ զի արժանիք ինչ էին՝ եղեն յանկարծակի աթոռակիցք նմա, այլ զի մարդասիրութեանն ամենաքաւրութն նմա եղեն արժանիք։

Ամբիցես թէ որչափ աստիճանս վերացան ելին զխորհրդոյն. նախ զայն պարտ է ուսանել թէ քարինքն չեն մեծ, այլ քարինք. երկրորդ անգամ զի ոչ միայն չեն մեծք, այլ և քան զմարդիկ խոնարհագոյն. երրորդ անգամ թէ և քան զանասունս. չորրորդ անգամ թէ և քան զտունկս. հինգերորդ անգամ զի բնաւին իսկ 'ի վերայ հասին, թէ ոչ միայն քարինքն, այլ և ոչ երկիր և ոչ անասունք և ոչ տունկք և ոչ մարդ և ոչ երկինք, թէ և վերստին ինչ պարտ իցէ կրկնել, թէ և ոչ քարինք և ոչ տունկք և ոչ անասունք և ոչ սոխաքիք, այսինքն համօրէն իսկ երևելի արարածքս, ոչ որ 'ի վերն են և ոչ որ 'ի խոնարհսն, ոչ մարդ և ոչ դևք, ոչ հրեշտակք և ոչ հրեշտակապետք, ոչ այլ ինչ յայնց զօրութեանց չպարտի առնուլ պաշտօն 'ի մարդկեղէն բնութենէ։ Որպէս յանդնդոց ինչ խորոց վերացելոց պարտ էր 'ի միտ առնուլ թէ որ ամենեցուն տէրն է՝ նա է մեծ և նմա միայն պարտ է պաշտօն մատուցանել, գործս հաճոյս և զքանչական առաքինութիւնս. և եթէ այս մահ չէ մահ և ոչ կեանքս կեանք. և թէ մինչին յառնելոց է և անեղծական լինելոց և յերկինս վերանալոց և անմահութեանն հասանելոց և յանոյշն վայելելոց և ընդ հրեշտակս գնդակից լինելոց. որ աստ 'ի խոնարհ անկեալ դնէր 'ի թշուառութեան, զմարդկան բնութենէ ասեմ, անդր 'ի բարձունս վերացաւ և նստաւ յաթոռն արքունական. և 'ի վերայ քան զհրեշտակս և զաթոռս և զտէրութիւնս եհան տիրացոյց զայն որ ընդ քարամբն դնէր։ Արդարև զինչ է մեծութիւն փառաց խորհրդոյս այսորիկ։ Ոչ որ օրինակ զմորոս ոք յանկարծակի փիլիսոփայ յարդարիցէ. մինուանդ թէ որչափ ինչ ասիցէ ոք, չասէ ինչ։ Նմանի և Պաւղոսին անկէտք են, “Ո՞ ինչ իցէ մեծութիւն փառաց խորհրդոյս այսորիկ 'ի հեթանոսս”։

“Որ է Քրիստոս 'ի ձեզ”։ Պարձեալ պարտ էր ա-

սանել՝ թէ որ քան զամենեսեանն վերագոյն է, և հրեշտակաց տիրէ և այլոց ամենայն զօրութեանց իշխէ, էջ 'ի խոնարհ և մարդ եղև և բազում չարչարանս չարչարեցաւ, մեռաւ և յարեաւ և վերացաւ ։ Այլ այս ամենայն խորհրդոյն էր . քանզի և գովութեամբ հանդերձ դնէ . “Որ է, ասէ, Քրիստոս 'ի ձեզ„ ։ Եթէ Քրիստոս 'ի ձեզ է, ընդէ՞ր խնդրէք զհրեշտակս ։ “Խորհրդոյս այսր„ . և այլ խորհուրդ, ՝որ յամենեցունց հասարակաց ակնկալութեանն է, ծածուկ էր ։ “Որ է, ասէ, Քրիստոս 'ի ձեզ յոյս փառացն„ զորմէ մեքն պատմեցաք, 'ի վերուստ բերմք ։ Զոր մեքն, ասէ, և ոչ հրեշտակք՝ ուսուցանեմք և խրատեմք. ոչ հրաման տալով և հարկ ինչ 'ի վերայ դնելով . քանզի և բռնաբարն չմատուցանելն այ մարդասիրութեանն է ։ Այլ քանզի ուսուցանելն մեծ է, ածէ զնովիմբ թէ խրատեմք, որ հօր է մանաւանդ և ոչ վարդապետի ։ “Զոր մեքն, ասէ, պատմեմք և ուսուցանեմք և խրատեմք ամենայն իմաստութեամբ յանդիմանն կացուցանել զամենայն մարդ կատարեալ„ ։ Այս. ուրեմն ամենեքին իմաստութեան պէտք են . այսինքն զամենայն ինչ իմաստութեամբ խօսել ։ Այլ այնպիսի մեծամեծացն բաւական լինել ոչ ամենեցուն է ։

“Զի յանդիմանն կացուսցուք, ասէ, զամենայն մարդ կատարեալ 'ի Քրիստոս Յիսուս„ ։ Զինչ խօսիս, զամենայն իսկ մարդ կատարեա՞լ կացուցանիցես ։ Այո, ասէ, քանզի մեք յայն փութամք . թէպէտ և չլինիցի, սակայն երանելին Պաւղոս յաղաչանայր ։ Կատարեալ, ասէ . ապա ուրեմն այս կատարեալն է, և միւսն անկատարութեան . որպէս զի որ զամենայն իմաստութիւնն չունիցի, անկատար է ։ “Կատարեալ 'ի Քրիստոս Յիսուս„ . ոչ օրինօք և ոչ հրեշտակօք, զի այն չէր կատարեալ ։ Ի Քրիստոս Յիսուս, ասէ . այսինքն 'ի գիտութիւն Յիսուսի Քրիստոսի ։ Որ 'ի վերայ ուսուցա եթէ զինչ գործեաց Քրիստոս, մեծամեծս իմանալ քան զհրեշտակս ։ “Ի Քրիստոս Յիսուս . վասն որոյ և աշխատ լինիմ պատերազմեալ„ ։ Ոչ դոյզն ինչ փութամ ; ասէ, և ոչ չափ ինչ, այլ աշխատ լինիմ պատերազմեալ սաստիկ փութով բազում արթնութեամբ ։ Եթէ ես վասն ձերոց բարեաց այսպէս ջանիմ, ձեզ չափ

եւ առնուլ դուք պարտիցէք։ Նա՛ւ դարձեալ զի ցուցէ թէ ամենեցուն է փոյթն, "Ըստ ազդեցութեանն նորա, ասէ, որ ազդեալն է յիս զօրութեամբ"։ Ցուցանէ թէ իւր է գործն։ Նա՛ւ արդ որ բաւականն առնէ 'ի նոյն, յայտ է եթէ զնոյն կամի. վասն որոյ և 'ի սկզբանն իսկ ասէ՝ եթէ "Կամօքն իւր"։ Նա ուրեմն ոչ միայն առ խոնարհութեանն եդ զայս, այլ և զարդարին. իսկ խօսի։ Պատերազմեալ, ասէ. յայտ առնէ թէ բազումք կը-ռուէին ընդ նմա։ Նոյն և զբազում գութ 'ի մէջ բերէ։

"Կամիմ, ասէ, եթէ գիտիցէք եթէ որպիսի ճգնութիւն ունիմ յանձին վասն ձեր և վասն լաւոդիկեցւոցն"։ Նա՛ւ զի մի կարծեցուցանիցէ թէ նոցա ինչ տկարութեան իցէ այն, խառնէ և զայլսն ընդ նոսա և չև ևս տեսանէ։ Ո՞րք "որոց միանգամ, ասէ, չիցէ տեսեալ զերեսս իմ մարմնով"։ Եւ այսու յայտ առնէ թէ տեսանէին զնա յաճախ հոգւով։ Ակայեր ևս բազում սէր[1] զնոյանէ. "Զի մխիթարիցին, ասէ, սիրտք նոցա և տեղեկացեալ լիցին սիրոյն. և յամենայն մեծութիւն հաստատութեանն իմաստութեանն 'ի գիտութիւն խորհրդոյն իւր հօր և Քրիստոսի, յորում են ամենայն գանձք իմաստութեան և գիտութեան ծածկեալ"։ Նհաւասիկ երկնէ տակաւին և սատանայի մտանել 'ի կրօնսն. ոչ անմտատան լինի և ոչ աղատէ զնոսա յամբաստանութենէն. Ճգնութիւն ունիմ, ասէ, յանձին վասն ձեր, զի տեղեկասցին. Նա՛ւ զոր ասէն այսպիսի ինչ է, թէ զի համատմաութին կացցեն 'ի հաւատսն։ Բայց չդնէ այսպէս, այլ հանէ ինչ յամբաստանութենէն. այսինքն թէ զի 'ի մի միաբանս եկեսցեն սիրովն, ոչ 'ի հարկէ ինչ կամ բռնութեամբ։ Որպէս և ասացի իսկ եթէ անտաղտուկ կամի միշտ լինել 'ի հրամանսն. և վասն այնորիկ ճըգնիմ, ասէ. ոչ զի 'ի հարկէ ինչ, այլ զի ինքնակամս կամիմ. և ոչ զի բերանով եւեթ դաւանիցեմ, և ոչ զի վայրապար ինչ ժողովիցին, այլ զի մխիթարեսցին սիրտք նոցա տեղեկացեալք սիրոյն յամենայն մեծութիւն հաստատութեան իմաստութեանն. այսինքն զի մի՛ և յիմիք երկմիտք գտանիցին, այլ զի վասն ամենայնի հաստատեալ իցեն։ Հաստատութիւն զհաւատոցն ասեմ. քանզ

1 Գաղափար յօրինակին մեր. յաւելու 'ի յունէն։

մասնականութիւնն և անբովանդակութիւնն այսպէս տա-
րակուսանաց են :

Իսկ զանմարմնականութիւնն տեսցուք եթէ խորհըր-
դով քննել կարիցեմք : Անմարմինն է ա͞ծ : Ո՞չ ինչ իցէ
անմարմինն . միթէ բանիւք և եթ իցէ , զի միայնք չկարեն
ինչ նկարել և ոչ ընդունել : Այլ եթէ նկարել կամի-
ցին , 'ի բնութիւն ինչ գան , և այն մարմնոյ նշանակիչ
է : Այս ուրեմն ասել ասէ բերան , և միտքն ոչ գիտեն
զինչ ասիցէ , բայց զայն միայն թէ չէ մարմին՝ զայս և եթ
գիտէն : Այլ զի ասիցեմ զայս . 'ի մեր ազխոս , որ կցեալ
են և արգելեալ և ընդ սահմանաւ , բնաւ ցոյց ասա թէ
զինչ իցէ անմարմինն : Այլ գիտեմ զի չունիս ինչ ա-
սել : Միթէ օդ իցէ . այլ օդս մարմին է , թէպէտ և
չիցէ թանձր , և ամենայն ուստեք յայտ է զի մարմին
լոյծ և տարած է : Այլ հուր մարմին է , թէպէտ և նըր-
բագոյն իցէ . այլ ազդեցութիւն ոչ ուրուն անմարմին է .
թէպէտ և ամենայն ուրեք շրջիցի , մնացն կարծեօք և
ոչ ճշմարտութեամբ : Այլ եթէ ոգիքն մարմին իցեն ,
ապա 'ի տեղւոջ է անմարմինն : Եթէ այնպէս իցէ , և
ընդ սահմանաւ մտանէ . զի որ ինչ ընդ սահմանաւ մը-
տանէ , կերպարանս ունի , և կերպարանքն 'ի ծրագրացն
են , և ծրագիրքն մարմնոյ նշանակիչք : Դարձեալ զան-
կերպարանն ո՞ր միտք ընդունիցին , որ ոչ տեսիլն ինչ իցէ
և ոչ տպաւորութիւնն : Տես զիարդ ցնորին միտք : Դար-
ձեալ անընկալուչ չարեաց իցէ բնութիւնն այն . կամօք
ինչ իցէ բարի թէ տկարանայ . եթէ այնպէս է ընդունիչ
է , այլ չէ իշխանութիւն զայս ասել , քաւ լիցի : Դար-
ձեալ կամօք իցէ՞ն յէականն թէ ակամայ . այլ և ոչ զայս
իշխանութիւն է ասել : Դարձեալ բովանդակէ՞ զամե-
զերս թէ ոչ . եթէ չբովանդակէ՝ ինքն բովանդակի , և
եթէ բովանդակէ՝ անբովանդակ է բնութեամբ : Դար-
ձեալ զանձն բովանդակէ՞ եթէ չբովանդակէ . և եթէ
բովանդակէ , ապա չէ անձին անսկիզբն , այլ մեզ . եթէ
այնպէս իցէ , չէ բնութեամբ անսկիզբն : Այլ այսպէս
ամենայն ուրեք զընդդիմամարտից հակառակսն հանանէ տալ
և առնուլ : Տեսանես որչափ մութ , քանի աղջամուղջ
ծնանի . և ամենայն ուրեք հաւատոց պէտք են , զի նա
է հաստատութիւն և հաստատիչ :

Այլ եթէ կամիք , յետ նուաղագոյնս եկեսցուք : Ու-

նիցի ազգութիւն ինչ այն էութիւն եթէ ոչ։ Նա զինչ է ազգութիւն, մինթէ յինքեան ինչ շարժումն. թէ նոյնպէս իցէ, չէ անշրջափական. քանզի որ ինչ շարժի, չէ մարթ անշրջափական իցէ. զի յանշարժութենէն գայ 'ի շարժումն, բայց սակայն շարժի և ոչ ուրեք դադարէ։ Նա արդ որպիսի ինչ շարժումն ասիցես անդ. քանզի առ մեզ եօթն շարժմունք են, կամ 'ի խոնարհ կամ 'ի վեր կամ 'ի ներքոյ կամ արտաքոյ կամ յաջ կամ յահեակ կամ հոլովելով։ Նա եթէ այն ոչ, աճումն, խարխարելն, ծնունդն, ապականութիւնն, փոփոխումն. այլ և ոչ մի ինչ յայսցանէ անդ։ Մի թէ որպէս միտքս շարժիցին. այլ և ոչ այսպիսի ինչ, քաւ լիցի. քանզի միտք բազում անգամ և 'ի յոռութիւնս շարժին։ Կամելն իցէ ազդելն եթէ ոչ. եթէ կամելն իցէ ազդելն, ընդ ամենայն մարդկան կամի բարիս լինել և կեալ։ Իսկ ընդէ՞ր չլինիցի։ Այլ այլ ինչ է կամելն և այլ ազդելն. եթէ այնպէս իցէ, չպատարկանան առ ազդումն կամքն։ Իսկ զայն առ որ ասիցեն գիրք եթէ "Զամենայն զոր կամեցաւ և արար,, դարձեալ և բորոտն ասէր ցՔրիստոս. "Եթէ կամիս, կարող ես զիս սրբել,,։ Նա ահա ուր կամի, չյամէ դարձն առ կամսն։ Նա արդ զինչ իցէ առ այս ամենայնն ասել։ Կամք զի և այլ ինչ ասացից. զիա՞րդ յոչնչէ եղև ամենայն. որպէս դարձեալ յոչինչ դառնայցէ։ Զինչ իցէ 'ի վերոյ քան զերկինս, և կամ զինչ քան զմիւսն երկինս, և կամ քան զնա զինչ, և կամ քան զմիւսն ևս զինչ։ Համարեա ահա և այս ևս յանչափ տարակուսանս ձգէ, եթէ քան զերկինս 'ի խոնարհ զինչ իցէ, մինթէ ծով. և ծովուն 'ի ներքոյ զինչ կայցէ. և դարձեալ այնր 'ի ներքոյ զինչ։ Կամ յաջմէ կամ յահեկէ, ոչ ապաքէն 'ի նոյն տարակուսանս ձգեն։

Այլ այն աներևոյթք իցեն։ Կամք զի յերևելիս և 'ի վաղուց ինչ իրս ածցուք զբանս։ Ահա ապա, զիա՞րդ գազանն որ զՅովնան եկուլ՝ պահէր ողջ յորովայնին և ոչ հեղձուցանէր.. ոչ ապաքէն դժուարագոյն է առ հաւատալ. ոչ ապաքէն յախուռն շրջի այնպիսի գազանն. չհեղձոյց զնա ջերմութիւնն, ոչ ապաքէն առաւել չհաւատալի և տարակուսանաց։ Ո՞չ ապաքէն յօդոյս առնումք շունչ, զիա՞րդ լինէր բաւական երկուց կենդանեացն մի շունչն. զիա՞րդ եթուք զնա արտաքս առանց

որ ինչ յանապատին գործք ընդ Իսրայէլացիսն գործե-ցան ։ Էջ մկրտութեան բազում օրինակք յառաջագոյն նկարէին. մկրտութիւնք իսկ հնոյն՝ աւազանն, յորում 'ի տարւոջ մի անգամ ոք միայն բժշկէր. Ջրհեղեղն իսկ, և որ ինչ միանգամ 'ի Ջուրսն եղեն. և Յովհաննու մկրտ-ութիւնն ։ Պարտ էր և այնմ հաւատալի լինել եթէ ա͞ծ զորդի իւր մատնելոց է փոխանակ ամենեցուն. և այնմ ես օրինակ յայլում առն նկարէր՝ զԱբրահամեան ասեմ զնահապետէն ։ Ամենայնի այսմիկ եթէ կամիք խնդրել, գտանեմք օրինակ 'ի գիրս ։ Բայց զի մի ձանձ-րացուցանեմք, սոքօք զոր ասացաքս յարդարեսցուք զան-ձինս ։ Հաստատուն կալցուք զհաւատոն, և զճշմարտու-թիւն նահատակութեանն ցուցցուք. զի ամենեքին հա-ճոյք լիցուք ա͞յ և արժանաւորք խոստացելոց բարու-թեանցն սիրելեացն նորա շնորհօք և մարդասիրութե տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

## ՃԱՌ ՎԵՑԵՐՈՐԴ

“ Որպէս ընկալարուք զՅիսուս Քրիստոս տէր մեր, նո-վին գնասջիք՝ արմատացեալք և շինեալք 'ի նոյն և հաս-տատեալք 'ի հաւատս, որպէս ուսարուքն՝ առաւելեալք 'ի նոյն գոհութեամբ ” ։

Պարզեալ զնոսա նոցին վկայութեամբն գրաւէ. “ Որպէս ընկալարուքն ” ասէ ։ Չմուծանեմք ինչ, ասէ, օտարոտի, և մի դուք մուծանիցէք ։ Նովաւ գնացէք, քանզի նա է ճանապարհ որ տանի առ հայր ։ Մի ընդ հրեշտակաց արահետսն գնայցէք, քանզի չտանի այն անդր ։ Արմատացեալք ասէ, այսինքն հաստատեալք, մի երբեմն ընդ այս և երբեմն ընդ այն. զի արմատա-ցեալքն և շինեալք՝ զայն յայտ առնէ թէ 'ի նա հաստա-նիջիք մտօք ։ Եւ 'ի նմին հաստատուն կացջիք, զնմանէ իսկ բուռն հարեալ ունիցիք իբրև 'ի հիման վերայ շի-նեալք ։ Որպէս և զանկելոց ոմանց յայտ առնէ զխօսա-

նել. քանզի չիցեալք զայն իմն նշանակէ. Ճշմարտեւ չէ-
նուած է հաւատքն. պարտ է և հիմն հաստատուն լի-
նել և շինուածոյն չզաղփաղփուն։ Զի եթէ ոչ որ 'ի
վերայ հաստատութեանն շինիցէ՝ շարժի, և եթէ 'ի հաս-
տատութեանն և չնշխիցի՝ չկայ։ "Առաքելատուրքն"։
Պատրաստեալ զորպէսն դնէ. "Առաւելեալք, ասէ, 'ի նոյն
գոհութեանս"։ Զի միւս ածզահաց է. չասէ մեկ-
բայպար գոհանալ, այլ բազում առաւելութեամբ. քան
որչափ ուսուցոքն, եթէ հնար իցէ՝ և ս մեծաւ առա-
տութեամբ։

"Ով ջոյլ եղբարք, մի ոք իցէ որ զձեզ կողոպտիցէ"։
Տես զիարդ ցուցանէ զող և օտարոտի, և կայ 'ի կողմ
ամենխմթի մտանել մտանէ, աւազակ, ասէ, զգոյշ լե-
րուք։ Այս բարւոք առաւել զկողոպտեալն. զոր օրինակ եթէ
զոր մէ զք 'ի ներքոյ մեղմով փորիցէ և չտայցէ զգալ, ե-
թէ ազդմոն ոք իցէ՝ զիարդ և է ատնուցու զխորշ...,
նոյնպէս և դուք զգոյշ լինիջիք. և քանզի նոցա այնագործ
է կալ 'ի կողմն մտանել։ Զոր օրինակ եթէ կորու-
սանիցէ ոք ինչ, և ցանգ պատուիրիցէ թէ զգոյշ լեր,
և դշհեան ես ցուցանիցէ եթէ ընդ այս տանիս ընդ այս
նիշ ինչ մտի է մտ. նոյնպէս և սա։

"Փիլիսոփայութեամբ" ասէ. այսինքն իմաստու-
թեամբն։ Այլ քանզի պարկեշտ իմն թուի անուն փի-
լիսոփայութեանն, յաւել 'ի նոյն՝ թէ խաբէութեամբն։
Քանզի գոյ և բարւոք խաբէութիւն, որով բազումք
խաբեցան, զոր չէ իսկ պարտ խաբէութիւն կոչել, զոր-
մէ Երեմիայի ասէր՝ թէ "Խաբեցեր զիս, տէր, և խա-
բեցայ"։ Բայց ես չասեմ յանձն զայսպիսի խաբէու-
թիւն՝ խաբէութիւն կոչել. այս և Յակոբ ըհնայրն խա-
բեաց, և չէր խաբէութիւն, այլ տնտեսութիւն։ Փի-
լիսոփայութեամբն, ասէ, ընդունայն խաբէութեամբն
"ըստ մարդկան աւանդութեանն, ըստ տարրեցն արա-
րածոց աշխարհիս և ոչ ըստ Քրիստոսի"։ Տանուէին
յանդիմանութիւն խորանաց աւուրցն մնի, աւուրքն
աշխարհի՝ զգործեալն և զլուսին կոչէ։ Որպէս և 'ի Գա-
ղատացւոց թղթին ասէր՝ եթէ "Զիարդ դարձեալ
դառնայք 'ի տկար և 'ի տառապեալ տարերսն"։ այս-
ինքն յարարածսն։ Զայս եթէ յաւուրցն խորութիւն,
այլ զի ամենայնիւ զննութեան արարածոց ամենայն

նմա բնակեաց,,։ Եւ անդէն վաղվաղակի թէ և "Դուք նովաւ էք լցեալ,,։ Այլք ասեն թէ զեկեղեցւոյ ասէ՝ լցեալ զա̃ծութենէն նորա, որպէս և այլուր ասէ թէ "Ո ամենայն յամենեսեան լնու,,։ Իսկ զմարմնապէսն ասաց՝ որպէս գլխոյ ընդ անդամս յօդեալ յայտ առնէ։ Արդ զիարդ չյարեաց 'ի նոյն՝ եթէ որ է եկեղեցի։ Իսկ ոմանք զհօրէ ասեն՝ եթէ ա̃ծութեանն լրումն 'ի նմա բնակէ։ Նախ զի բնակելն իսկ չասէ զայս ճշգրտիւ, քանզի ոչ եթէ իբրև 'ի տեղւոջ ինչ բնակիցէ. երկրորդ անգամ զի լրութիւնն ոչ եթէ տանիլ ինչ է, քանզի չիք որ զնա տանիցի կամ ունիցի. "Տեառն է, ասէ, երկիր լրիւ իւրով,,. և առաքեալ. "Մինչև լրումն հեթանոսաց մտցէ,,։ Ողջոյն ինչ ամենևին ասի լրումն։ Ապա և մարմնապէսն զինչ յայտ առնիցէ. եթէ ոչ իբրև զգլուխ 'ի մարմինն։ Եւ դարձեալ թէ "էք դուք 'ի նմա լցեալք,,, այսինքն նովաւ։ Իսկ զինչ իցէ նովաւն լցեալք։ Այն իսկ է եթէ յիւրում մարմնին լիով բնակեաց, և զձեզ ամենևին ելից. և յիմիք ոչ բովանդակեցաւ, այլ 'ի վեր լիով և 'ի խոնարհ բովանդակ։

Եւ յամենայնի և ընդ բնաւ միշտ ջանայ Պաւղոս մօտ տանել զմեզ 'ի Քրիստոս որչափ ինչ մեզ մարթ իցէ մօտել. որպէս յորժամ ասիցէ եթէ "Ընդ իւր յարոյց զմեզ և ընդ իւր նստոյց զմեզ,,. և "եթէ համբերեմք, ընդ նմին և թագաւորեսցուք,,. և դարձեալ եթէ "Ո խորդ ոչ նովաւ հանդերձ զամենայն շնորհեսցէ մեզ,,. և ժառանգակիցս և մարմնակիցս կոչէ։ Այլ մեք որպէս և մեք, նա որպէս և նա. նա տէր և մեք ծառայք, նա արարիչ և մեք արարածք։ Ապա և զաստուածութեանն պատուոյ ձայնէ։ "Եւ ինքն է, ասէ, գլուխ իշխանութեան և պետութեան,,։ Որ 'ի վերն է քան զամենեսեան և պատճառք ամենեցուն, ամենեցուն պատճառք և արարիչ է, և ոչ է էակից ամենայն իշխանութեանն և պետութեանն։

Իբրև ասաց հաստատութեամբ զպատուոյն, ապա և զերախտեացն սքանչելապէս 'ի նոյն յարէ, և ևս առաւել զարմանալի քան զՀռովմայեցւոց թղթին։ Եւ զի անդ ասէ. "Թլփատութիւն սրտի հոգւով և ոչ գրով,,. և աստ թէ Քրիստոսիւ։ "Ո ի նովաւ, ասէ, թլփատեցարուք զանձեռագործ թլփատութիւնն 'ի մերկա-

ծէին։ Եւ թո՛ղ ինչ արդեօք անտի. ոչ, ասէ, այլ ջըն-
ջեաց եւս. ոչ եթէ զդրոշմեաց միայն զի մի երեւեսցի եւեթ,
այլ ջնջեաց։ Հրամանօքն, ասէ. զհաւատոյն կոչէ հրա-
մանս։ Բաւական իսկ է հաւատալն միայն։ Ոչ եթէ
ընդ գործոյն գործս կշռեաց, այլ հաւատոյն զգործոյն
համեմատեաց։ Եւ ապա զի՞նչ եւս առաւել յաղթու-
թիւն. զի քան զթողուլն ջնջելն մեծ է, եւ քան զջըն-
ջելն 'ի միջոյ բառնալն։ Զխո՛րդ. զի եւ այնպէս չպա-
հեաց, այլ պատառեաց բեւեռեաց ընդ խաչին. մերկա-
ցաւ զիշխանութիւնս եւ զպետութիւնս, յայտ յանդի-
ման խայտառակեաց զնոսա յանձն իւր։ Ջբարբառե-
ցաւ ուրեք այսպէս մեծամեծս։ Տես զփոյթն, զի եղ-
ծանել զդատակնիքն որպիսի ինչ գործս գործեաց. ա-
մենեքեան ընդ մեղօք էաք եւ ընդ պատժովք. ինքն
պատժեցաւ, եւ եղծ զմեղսն եւ եբարձ զպատիժսն։
Պատժեցաւ 'ի խաչին եւ անդ իսկ բեւեռեաց զնոսա, որ-
պէս զի իշխանութիւն իսկ ունիցի այնուհետեւ եւ պա-
տառելոյ զդատակնիքն։ Զո՞ր դատակնիք. կամ զայն
զոր ցՄովսէսն ասացին՝ թէ «Զամենայն զոր ասաց
ա̃ծ, արասցուք եւ լուիցուք»։ եւ եթէ այս չիցէ, այն՝ զի
պարտիմք իսկ ա̃յ հնազանդութիւն. եւ եթէ այս չիցէ,
այն է զի ըմբռնեալ ունէր սատանայ զդատակնիքն զոր
ետ ա̃ծ Ադամայ՝ եթէ «Յորում աւուր ուտիցես 'ի
ծառոյն՝ մեռանիցիս»։ Ըմբռնեալ սատանայի ունէր
զայն 'ի ձեռին եւ չտայր ցմեզ. եհան 'ի նմանէ Քրիս-
տոս եւ չետ ցմեզ, այլ ինքն պատառեաց. եւ խնդութե̃
իսկ զիւրութիւն առնելոյ։

«Մերկացաւ, ասէ, զիշխանութիւնսն եւ զպետու-
թիւնսն»։ Եւ զո՞ր ասիցէ անդ իշխանութիւնս. զսա-
տանայական զօրութիւնսն այնպէս կոչէ։ Եւ քանզի
մարդկեղէն բնութիւն զգեցեալ ունէր զնոսա իբրեւ ըզ-
բարուրս ինչ, եղեւ մարդ եւ մերկացաւ զբարուրսն։ Զի՞նչ
իցէ խայտառակեացն. բարւոք ասաց, քանզի ոչ երբէք
այնպէս նշաւակեցաւ սատանայ. կարծէր ըմբռնել եւ զնա,
եւ զորս ունէրն եւս կորոյս. 'ի բեւեռել մարմնոյն մե-
ռեալք յառնէին։ Եւ անդ առ վէրս մահ 'ի մեռեալ
մարմնոյն զաղդոյն եւ զապականութե̃ն։ Եւ զոր օրինակ
մարտիկ ոք որ կարծիցէ զախոյեանն ընկենուլ եւ զաղդոյ
վէրսն առնուցու, նոյնպէս եւ նա ցուցանէր թէ խիզա-

խելօքն մեռանել խայտառակութիւն է սատանայի, զա-
մենայն հնարս հնարէր նա թէ մարթ ինչ էր՝ առ 'ի հաւանեցուցանել զմարդիկ եթէ ոչ մեռաւ։ Եւ քանզի յարութեանն ամենայն իսկ առ յապա ժամանակն նշանակիչ էր, և մահու, եթէ այն չէր լեալ՝ այլ ոչ լինէր, վասն այնորիկ յանդիմանն ամենեցուն հրապարակաւ մեռաւ։ Եւ չյարեաւ յանդիմանն բազմաց հրապարակաւ, քանզի գիտէր թէ առ յապա ժամանակն է լինելոց վկայ ճշմարտութեան։ Բայց զօձն սպանանել և կախել վերամբարձ զփայտէ 'ի տեսիլ աշխարհի, այն զարմանալի էր։

Եւ զինչ արար սատանայ զի թագուցանել կարիցէ զմահն նորա. լուր Պիղատոսի. «Առէք, ասէ, և դուք ձեզէն հանէք զդա 'ի խաչ, քանզի ես ոչ մի ինչ պատճառս մահու գտանեմ 'ի դմա»։ Եւ առ այնչափ հակառակ կոչոյ ընդդիմաս, դարձեալ ասէին ցնա Հրեայքն. «Եթէ որդի ես այ, էջ 'ի խաչէդ»։ Եւ քանզի 'ի մահն էր եկեալ մեռանել՝ չէջ, վասն այնորիկ և 'ի գերեզմանն մատնեցաւ. ապա թէ ոչ՝ անդէն իսկ վաղվաղակի կարող էր յառնել, այլ զի հաւատարիմ իրքն լինիցին։ Թէպէտ և յաւելոց վախճան մարթի առ վստահութեան պատճառանաց կարծիք լինել, իսկ անդ ոչ ինչ այնպէս։ Եւ զինուորն չերեկ զնորա բարձան իբրև զայլոցն, զի յայտ լիցի եթէ մեռաւ. և որք զմարմին նորա թաղեցին՝ յայտ էն. վասն այնորիկ և ինքեանք իսկ Հրեայքն հանդերձ զինուորօքն կնքեցին զգերեզմանն։ Եւ ամենեցուն փոյթ այն էր զի մի ծածկիցի, և վկայք 'ի թշնամեացն իսկ նորա 'ի Հրէից լինէին։ Լուր զինչ ասէին ցՊիղատոս. «Մոլորեցուցիչն այն մինչդեռ կենդանի էր ասէր՝ եթէ յետ երից աւուրց յառնեմ. հրաման տուր պահել զգերեզմանն զինուորացն»։ Եւ նոցին իսկ կնքեալ լինէր այս։ Լուր նոցին իսկ և յետոյ զինչ ասէին ցառաքեալսն. «Կամիք ածել 'ի վերայ մեր զարիւն առնդ այնորիկ»։

Աերպարանաց խաչին չեւս թոյլ տանջելոց մեռանել։ Քանզի հրեշտակք այնպիսի ինչ չարչարանս երբեք ոչ կրեցին, վասն այնորիկ զամենայն ինչ նախնի իրի հնարի. յայտ արարեալ՝ թէ մեծամեծ օգտութիւնս պարծեաց մահն։ Նորա միայն ընդ միայն իսկ առաջնոյանց գործ էր։

Եհար մահն զՔրիստոս, այլ առեալ վէրս 'ի Քրիս-տոսէ. յետոյ 'ի միջոյ իսկ եբարձ զնա։ Մեռեալ մարմ-նոյն՝ պարտէր անկանէր մահն, որ կարծէր թէ անմահ իցէ. և զայն ամենայն իսկ տիեզերք տեսին։ Եւ որ ա-ռաւել սքանչելին էր, ոչ այլում հրամայեաց առնել զայն, այլ զրեր այլ դատակնիք. ոչ զնոյն զառաջին պա-նակն, այլ այլ ինն նորանշան։

Տեսէք զուգէ 'ի նոյն ըմբռնիցիմք, յետ ասելոյն ե-թէ հրաժարիմ 'ի քէն սատանայ, և ընտանի լինիմ քեզ Քրիստոս։ Սանաւանդ թէ չիցէ իսկ պարտ դա-տակնիք կոչել, այլ դաշն. դատակնիք անդ գրի յորժամ ընդ պարտուք ոք գրաւեալ իցէ. և այս դաշն, քան-զի ոչ եթէ պատիժք գրին, և չասէ եթէ ոչ զայս ա-րասցես՝ զայս ինչ պատիժս կրեսցես։ Զարիւն ուխտին յորժամ ցանէր Մովսէս, ասէր՝ այս ուխտ կտակին։ Նոյնպէս և ած զկեանսն յաւիտենից խոստացաւ։ Եւ արդարեւ ամենեւին իսկ դաշն է։ Ընդ ծառայն առաջի տեառն, և աստ իբրև բարեկամ առ բարեկամի։ Ընդ առ ոտս սպառնալիք. „Յորում աւուր ուտիցես, ասէ, մեռանիցիս„. և աստ ոչ ինչ այնպիսի։ Ընդ ած յայտ-նէր, և աստ եկն իսկ ած։ Ընդ մերկութիւն, և աստ մերկութի. այլ անդ մեղք մերկացուցին՝ քանզի մեղան, և աստ 'ի մեղացն մերկանայ։ Նա մերկացաւ 'ի փա-ռացն զոր ունէր, և սա մերկացաւ զհին մարդն. և մինչ չև մտեալ՝ ևս դիւրագոյն քան զհանդերձ մերկանայ։ Օծանի իբրև զմարտիկսն որ 'ի կռիւ մտանելոց իցեն. վաղվաղակի մտանէ, և իսկ և իսկ օծանի։ Եւ զոր օրի-նակ առաջինն ոչ առ սակաւ սակաւ եկն յաճումն, այլ միանգամայն իսկ կատարեալ, նոյնպէս և սա միանգա-մայն կատարեալ։ Եւ ոչ որպէս քահանայք հնոյն 'ի գլուխ և եթ առնուին զօծութիւնն, նոյնպէս ինչ և սա. նոքա 'ի գլուխն միայն և յունկն յաջոյ և 'ի ձեռն, զի 'ի հնազանդութեանն և 'ի գործս բարիս յորդորեսցին, և սա ամենեւին իսկ ողջոյն օծանի։ Ոչ յուսանել միայն մտանէ, այլ և նահատակել և կրթել յայլ ինն արա-րածս։ Յորժամ խոստովանիցի զկեանսն յաւիտենից, այլ ինն արարածս խոստովանի։ Հող առ յերկրէ և ըս-տեղծ զմարդն. ոչ այսուհետև հող, այլ զհոգի սուրբ. և նախա ստեղծանի, նախա յարդարի, որպէս և իւր

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այլ զի մի ուտեմք լիցի 'ի մէնջ ընդ այնպիսիս պատ-ժովք մատնել. այլ առաքինութեամբ կեալ եւ փութալ առնել զհանգիստն մեզ, զի կարասցուք եւ 'ի տանջանացն ազատել եւ յաւիտենից բարութեանցն հասանել։ Որոց լիցի մեզ արժանի լինել շնորհօք եւ մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում հօր միանգամայն եւ հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ԵՕԹՆԵՐՈՐԴ

"Մի ոք այսուհետեւ զձեզ դատեսցի ուտելով կամ ըմ-պելով կամ մասամբ տօնից կամ ամսագլխոց կամ շա-բաթուց որ են ստուերք հանդերձելոցն. բայց մար-մինն Քրիստոսի։ Մի ոք զձեզ խաբեսցէ, եւ կամիցի խոնարհութեամբ եւ կրօնիւք հրեշտակաց զոր ոչ եւտես զնահետ վարիցէ; տարապարտ հպարտացեալ 'ի միտս մարմնոյն իւրոյ, եւ չունիցի զգլուխն, ուստի ամենայն մարմինն յօդիւք եւ խաղալեօք 'ի միմեանս տուեալ, ընդ միմեանս յարեալ աճէ զաճումն այ"։

Նախ առաջինն իմն ասաց եթէ "Զգոյշ լերուք, մի ոք իցէ որ զձեզ կողոպտիցէ". եւ դարձեալ վերագոյն՝ թէ զայս ասէ "Մի ոք իցէ որ զձեզ խաբեսցէ պատիր բանիւք"։ Յառաջագոյն զբռեաց զմիտս նոցա եւ կա-կածագոյնս գործեաց. ապա իբրեւ եդ զերախտիսն 'ի մէ-ջի եւ յաճախագոյնս եցոյց, յայնժամ յետոյ ածէ զնո-վինն յանդիմանութիւն։ "Մի ոք, ասէ, այսուհետեւ դատեսցի զձեզ ուտելով կամ ըմպելով կամ մասամբ տօնից կամ ամսագլխոց կամ շաբաթուց"։ Տեսանես զիարդ զայն քակէ։ Եթէ այսպիսեայս, ասէ, հասէք, ընդէ՞ր ընդ փոքումբք պարտապանս զանձն կացուցանէք։ Նա աղարտէ իսկ ասելովն՝ թէ մասամբք տօնից։ Քանզի ոչ եթէ զամենայն զառաջինսն ունէին. կամ ամսա-

գլխոյ, կամ շաբաթուց: Զասաց թէ մի այսուհետև պահէք. այլ թէ մի ոք զձեզ դատեսցի: Եցոյց եթէ անցեալ էր նոցա ըստ այն և լուծանել. և զայլովք եարկ զմեղադրութիւնն: Մի՛ անսայք նոցա որ դատիցին. նա և ոչ այսչափ միայն, այլ ընդ նոսա ևեթ խօսի և ըմբերանէ զնոսա եթէ չպարտիք դատել: Եթէ այնպէս ինչ էր, ապա ոչ զնոսա մասն կոչելով մորմոքեցուցանէր: Զասաց եթէ սրբովք և անսրբովքն, չասաց եթէ տաղաւարահարօքն և բաղարջակերօք և պենտեկոստէիւքն, այլ թէ մասամբք տօնից: Քանզի չիշխէին զամենայն պահել. և եթէ պահէին ևս, ոչ իբրև տօն առնելով: Մասամբն, ասէ. յայտ արարեալ եթէ մեծ մասն լուծանէր: Թէպէտ և դատարկանային 'ի շաբաթուն, այլ ոչ ինչ ճշդիւ գտակաւ:

"Որ են, ասէ, ստուերք հանդերձելոցն". զնորոյս ասէ: "Բայց մարմինն Քրիստոսի": Քանզի ոմանք աստանօր[1] դնեն զստիւքսն, թէ բայց մարմինն՝ Քրիստոսի. այսինքն թէ ճշմարտութիւնն առ Քրիստոսիւ եղև: Իսկ այլք միանգամ ասեն՝ բայց մարմին Քրիստոսի, մի ոք ձեզ խաբեսցէ. այսինքն թէ մի ոք բաղաղայս ինչ 'ի վերայ դնիցէ. զի խուելն այն է՝ զի յորժամ այլ յաղթիցէ և այլ պարգևս առնուցու, յորժամ մնասիցի այն որ յաղթեացն: Ի վերոյ գեր զատանայ և քան զմեզս ելեր կացեր, ընդէ՞ր միւսանգամ խոնարհեցուցանես արկանես զանձն ընդ մեզօք: Նմին իրի իսկ ասէր. թէ "Որ թլփատին՝ պարտ է նմա այնուհետև զամենայն օրէնս կատարել". և դարձեալ 'ի նմին թղթի գաղատացւոցն ասէ. "Ապա ուրեմն Քրիստոս մեղա՞ց պաշտօնեայ եղև": Յորժամ ելից զնոսա ցասմամբն ասելովն՝ թէ մի ոք խաբեսցէ, այսինքն եթէ մի ոք յաղթութեանն նենգեսցէ, ապա և այլոցն սկիզբն առնէ:

"Խոնարհութեամբ, ասէ, և կրօնիւք հրեշտակաց զոր չիցէ տեսեալ՝ զհետ վարիցէ, տարապարտ հպարտացեալ 'ի մտաց մարմնոյ իւրոյ": Զիա՞րդ խոնարհութ̃ կամ որպէս հպարտացեալ: Ցուցանէ թէ ամենայն իսկ մնապարծութիւն է. բայց և խնդիր այս իսկ է եթէ զինչ ասիցէ: Կան ոմանք որ ասէին եթէ չէ պարտ Քրիս-

1 Յօրինակին գրեալ է ստորանոյ:

տոսի նուաձել, այլ հրեշտակօք. զի այն մեծ է քան թէ որ ինչ ըստ մեզ իրքն իցեն. վասն այնորիկ վեր 'ի վայր յեղյեղէ զայն ինչ որ զՔրիստոսէ ասիցի. «Ուրեամբն, ասէ, խաչին նորա». վասն այնորիկ ասէ յաղագս մեր չարչարեցաւ, զի սիրեաց զմեզ։ Քանզի այնու իմն յարդեաց զանձինս։ Զասաց նուաձութի կամ մօտ տանել, այլ կրօնս։ «Օ որ չիցէ, ասէ, տեսեալ՝ հետ վարիցէ»։ Քանզի ոչ երբէք եաես զհրեշտակս, և այնպէս հարեալ է որպէս թէ եաես։ Վասն այնորիկ ասէ. «Տարապարտ հպարտացեալ 'ի մտաց մարմնոյ իւրոյ», և ոչ եթէ 'ի ճշմարիտ իրս ինչ հպարտացեալ է 'ի կրօնսն. և կերպարանս խոնարհութեան արկանէ 'ի մարմնաւոր մտաց և ոչ 'ի հոգևոր՝ մարդկեղէն խորհուրդք են։

«Եւ չունի, ասէ, զգլուխն, ուստի ամենայն մարմին» ունի զլինելն և զգեղեցիկ լինելն։ Ընդէր թողուս զգլուխն, և զանդամոցն բուռն հարկանես. եթէ անտի զերծանիս, կորնչիս։ «Ուստի ամենայն մարմին», ասէ։ Որ զինչ և իցէ, ոչ միայն զկեալն՝ այլ և զյօդուածն անտի ունի։ Նորա է ամենայն եկեղեցի. և մինչ զգլուխոյն ունիցի՝ աճէ. ապա թէ ոչ՝ ամբարտաւանութեան և սնապարծութեան յաճախութիւն չկարէ կալ, քանզի մարդկեղէն մտաց գիւտ են։ Ահաւասիկ զուստին զոր հօր ևեթ տան, և որդւոյն եւս։ «Յօդօվք, ասէ, և խաղալեօք 'ի միմեանս տուեալ, ընդ միմեանս յօդեալ աճէ զաճումն այ»։ Օ այնմ աճմանէ որ ըստ այն իցէ՝ ասէ, որ 'ի բարուք վարուցն լինիցի։

«Եթէ մեռարուք ընդ Քրիստոսի»։ Յայնց միջի դնէ զայս, և սաստկագոյն քան զերկոսեան։ «Եթէ մեռարուք, ասէ, ընդ Քրիստոսի յաշխարհիս արարածոյ, զի՞ ևս իբրև կենդանիք աստէն յաշխարհիս կրօնաւորիք»։ Զիք ինչ կարգ բանիս. պարտ էր ասել՝ թէ զի՞ ևս իբրև զկենդանիս մտանէք ընդ արարածովքս։ Այլ զայս եթող. իսկ զի՞նչ ասիցէ։ «Մի՛ մերձենար, ասէ, մի՛ ճաշակեր, մի՛ հուպ լինիր. զի ամենայն իսկ այն յապականութեան պէտս է ըստ մարդկան պատուիրանաց և վարդապետութեան»։ Զեք, ասէ, յաշխարհի, զիա՞րդ ընդ արարածովքն մտանիցէք, կամ ո՞րպէս ընդ աշխարհի խորութեամբք։ Այս տես զիա՞րդ հեգնէ զնո-

սա ։ Մի՛ մերձենար, ասէ, մի՛ հուպ լինիր, մի՛ ճաշակեր ․ որպէս զի թէ գիտիցէ զնոսա, և ՚ի մեծամեծ իրաց հեռացեալս, և դարձեալ ՚ի նոյն խոնարհեալս ։ « Որ ինչ են, ասէ, յապականութեան պէտս » ։ Քակեաց զբազմաց ՚ի նոցանէ զհպարտութիւնն, քանզի ածէ զնովիմբ եթէ « ըստ պատուիրանաց և վարդապետութե՛ մարդկան » ։ Զի՞նչ խօսիս ․ միթէ զօրինացն ասիցես ։ Այո, ասէ ․ այսուհետև և յետ ժամանակին մարդկան վարդապետութիւն է ։ Կամ զայն ասիցէ զի բազում ինչ և այլայլէին իսկ յօրինացն, կամ զհեթանոսացն զկրօնից ակնարկէ ․ ամենևին իսկ, ասէ, մարդկօրէն են կրօնքն ։

« Որ ինչ բան ևեթ իմաստութեան, ինքնակամ կրօնիւք և խոնարհութեամբ, անխնայութեամբ մարմնոյ, և ոչ ՚ի պատիւ ինչ լրութեան մարմնոյ » ։ Բան է, ասէ, իմաստութեան և ոչ զօրութիւն և ոչ ճշմարտութիւն ։ Որպէս զի թէ և բան ինչ իմաստութեան ունիցի, խոտորեսցուք ՚ի նմանէն ։ Թուի թէ և երկիւղած ոք և խոնարհ իցէ և զմարմնոյ անփոյթ առնիցէ, այլ չէ ինչ պատիւ լրութեան մարմնոյ ․ ա̃ծ պատուեաց, և նոքա չզնեն պատիւ մարմնոյ ։ Այսպէս ինչ ․ յորժամ ըզկրօնսն որք գիտեն զնա պատուական կոչել՝ անարգիցեն ․ զմարմինս իսկ, ասէ, զրկեն, և զանձնիշխանութիւնն ՚ի միջոյ բառնան, զի չհամարին կամօք զժուժկալութիւն, և այնպէս անարգեն զմարմինն զոր ա̃ծ պատուեաց ։

« Եթէ յարերուք ընդ Քրիստոսի » ։ Ամփոփէ զնոսա ՚ի վեր, յարդարեալ իմն թէ վասն այնորիկ մեռաւ ։ « Ապա եթէ յարերուք ընդ Քրիստոսի, ապա և զվերինն խնդրեցէք » ։ Չիք անդ խտիրք ։ « Զվերինն խընդրեցէք ուր Քրիստոսն նստի ընդ աջմէ ա̃յ » ։ Բաբէ՛ յո՛ տարաւ եհան զմիտս, որպիսի մեծ հանճարով ելից զնոսա ։ Այն իսկ չէր բաւական թէ ուր Քրիստոսն է ․ այլ զի՞նչ ․ թէ « ընդ աջմէ ա̃յ նստի » ։ Եւ արդ անտի իսկ յերկրիս յարդարէ զնոսա հայել ։ « Զվերինն, ասէ, խորհեցարուք, մի որ ինչ յերկրի ․ քանզի մեռարուք, և կեանքն ձեր ծածկեալ կան ընդ Քրիստոսի առ ա̃ծ ․ յորժամ Քրիստոս յայտնեսցի կեանքն ձեր, յայնժամ և դուք ընդ նմա յայտնեսջիք փառօք » ։ Չեն այս կեանք, ասէ, կեանք ․ այլ կեանք մեր ։ Ջանայ փոխել զնոսա, և հակառակի ցուցանել թէ ՚ի վեր իսկ նստիցին, և մե-

ռեալք իցեն աստի. երկոքումբք յորդորէ մի ինչ զաստիս խնդրել։ Եթէ մեռեալք էք, ասէ, ապա չպարտիք ինչ զկենդանեաց խնդրել. և եթէ 'ի վեր նստիցիք, ապա չպարտիք զայս հայցել։ Ո՞ր եթէ երևեսցի Քս, ապա և ոչ կեանքն ձեր, քանզի յԱծ են 'ի վեր։

" Եւ արդ ե՞րբ, ասեն, կեցցեմք։ Յորժամ Քրիստոս, ասէ, յայտնեսցի կեանքն ձեր, յայնժամ խնդրեցէք զկեանս, յայնժամ զփառսն, յայնժամ զփափկութիւնն։ Այս կանխայայտարար իմն կազմութիւն է առ 'ի փափկութենէ հեռացուցանել զնոսա և 'ի հանգստենէն. քանզի այսպիսի իմն բարս ունի, այլ իմն յարդարեալ, և այլ իմն փոխեալ։ Որպէս մինչ առ այնոսիկ որ յընթրիսն յառաջանայինն՝ խօսէր, մխեցաւ վաղվաղակի և 'ի խորհրդոցն զգուշութիւն. զի սաստիկ յանդիմանութիւն այն է՝ որ առանց կարծեաց լինիցի։ Ծածուկ է 'ի ձէնջ, ասէ. յայնժամ և դուք ընդ նմա յայտնեսջիք. որպէս թէ այժմ երևիք իսկ ոչ։ Տես զիարդ զնոսա անդր իսկ յերկինս տարաւ եհան։ Զոր և միշտն ասէր՝ հակառակի ցուցանել թէ գրեթէ զայն իսկ ունին զոր և Քն։ Եւ յամ թուղթսն զայն բանս ասէ, զի զամենեսեան հաղորդս նմա ցուցանիցէ։ Նմին իրի իսկ զնա գլուխ, և զմեզ մարմին ասէ. և ամենևին ջանայ զի զնոյն ճշգրտեսցէ։ Իսկ արդ եթէ յայնժամ յայտնիցիմք, մի ինչ զչարեսցուք յորժամ 'ի պատիւ չվայելիցեմք։ Եթէ չիցեն այս կեանք կեանք, այլ ծածկեալ իցեն, ապա իբրև զմեռեալս պարտիմք կեալ զայս կեանս։" Յայնժամ և դուք ընդ նմա յայտնեսջիք փառօք"։ Փառօք ասաց, և ոչ վայրապար ինչ. նա և մարգարիտն ծածկեալ կայ մինչդեռ 'ի գաղտակրին իցէ։

Եւ եթէ թշնամանիցիմք, մի տխատեսցուք. և զոր ինչ չարչարանս չարչարիցիմք, մի վհատեսցուք։ Քանզի չեն այս կեանք՝ մեր կեանք. օտարք և պանդուխտք եմք իբրև 'ի գերեզմանս բնակեալք. քանզի մեռարուք, ասէ։ Ո՞վ ոք այնպէս անմտագոյն կայցէ՝ մեռեալ և թաղեալ մարմնով՝ ծառայի բարկանալ և կամ տունս շինել կամ ազգի հանդերձս կազմել. և ոչ ոք։ Ապա և մի դուք։ Այլ զոր օրինակ զմինն միայն խնդրեմք զի մերկ չհասանիցէ շրջել, նոյնպէս և աստ զմին միայն խնդրեսցուք։ Թաղեցաւ հին մարդն մեր ոչ յերկրի,

այլ 'ի ջուր. ոչ զի մահճն զնա եղծ, այլ զմահճն նա եսպան և թաղեաց. ոչ բնութեան օրինօք, այլ եւս սաստիկ քան զբնութեն՝ տէրունական հրամանօք: Ո՛ր որ ինչ 'ի բնութե լինիցի, զայն և եղծանել ոք կարէ. բայց որ ինչ 'ի նորա հրամանէ, զայն ոչ ոք երբէք: Զի՞ք ինչ երանելի քան զայն գերեզման, ընդ որ ամենեքեան իսկ ուրախ լինին և հրեշտակք և մարդիկ և հրեշտակաց տէրն: Զէ ինչ պիտոյ յայսմ գերեզմանի ոչ հանդերձ և ոչ պատանք և ոչ այլ ինչ նոյնպիսի: Կամիս զի նշանակ ինչ ցուցից քեզ զաւազանին, յորում ամն մեռանի և ամն յառնէ: Ի կարմիր ծովուն եգիպտացիքն ընկղմեցին և իսրայելացիքն ելանէին: Ըստ նմին օրինակի և սա զամն թաղէ և զամն ծնանի: Եւ մի ինչ զարմանայցես եթէ ծնունդ և ապականութիւն գործի: Ապա թէ ոչ, ասէ սա, հալեալն և կցեալն չիցեն միմեանց հակառակ. ամենեցուն իսկ յայտ է թէ միմեանց հակառակ են: Եւ զայն հուրն գործէ, զամն հալէ և կորուսանէ, և զհողն բրեական 'ի միմեանս կցէ և ոսկի գործէ. նոյնպէս և աստ զմոմեղէն պատկերն եղծանէ զօրութիւն հրոյն, ցուցանէ ընդ այնր ոսկեղէն: Արդարեւ մոմեղէնք իսկ և կաւեղէնք էաք յառաջ քան զաւազանն, և յետոյ ոսկեղէնք: Եւ ուստի՞ յայտ իցէ. ասին իսկ լուր. "Առաջին իսկ մարդն, ասէ, յերկրէ հողեղէն, և երկրորդ մարդն տէր յերկնից":

## ՅՈՐԴՈՐԱԿ

Արդ ես մինչդեռ զայն կշռէի թէ որչափ ինչ ընդ կաւեղէնն և ընդ ոսկեղէնն իցէ, այլ իմն մեծ առաւելութեն զտի զերկնաւորին քան զերկրաւորին: Զէ որչափ ընդ կաւեղէնն և ընդ ոսկեղէնն 'ի միջի, որչափ ընդ երկնաւորս և ընդ երկրաւորս: Մոմեղէնք իսկ և կաւեղէնք էաք. քանզի ցանկութեանն մեզ հալէ զմեզ առաւել քան զհուր զմոմ. և դոյզն ինչ փորձութիւն խորտակէր եւս առաւել քան քար զկաւեղէն ինչ: Եւ եթէ կամիք, նկարեսցուք իսկ զառաջին մարմն եթէ չէին ամենեին հող և ջուր, և այսր անտի հարկանել իբրև զփոշի անկայ և անկախ: Եւ եթէ կամիցիք ոչ զառաջինն, այլ զայժմուս քննեսցուք, եթէ ոչ փոշի և ջուր զառանիցեմք զմոմ.

Ո՞րչ կամիցիս ասել. կամիս զի զիշխանութիւնս իսկ և զհարստութիւնս ասիցեմք. զի չթուի ինչ քան զայն նախանձելի և երանելի յաշխարհիս: Այլ զփոշոյն թերևս գտանիցէ ոք զկայ 'ի վերայ օդոյն առաւել քան զայնս: Որո՞ւմ իմիք ցանկութեց չկայցէ 'ի հարկի, ներքինեա՛ց ոչ՝ թէ ընչից ոչ. վասն որոյ զա՞մ հնարս հնարին եթէ ցասման ռամկին չիցէ ծառայ, և բարկութեանց որ քան զնա ես հարստագոյնք իցեն: Որ երէկ յատենի յաթոռն 'ի բարձունս նստէր, և քարոզքն առաջի գեղգեղէին իմն զբարբառսն, և բազումք աստի անտի ընթանային և զաւմիկն 'ի հրապարակայն խոլէին, այսօր 'ի թշուառութիւն իջեալ ծրարեալ նստի քան զամենեսեան գձուձ և մերկ, իբրև զփոշի մաղեալ այսր անդր հարեալ, իբրև զկտակս գետոց սահեալ անցեալ: Իսկ զոր օրինակ փոշին յոտից մերոց յառնէ, նոյնպէս և իշխանութիւնքն 'ի նոցանէ որ զընչիւք գայցեն՝ ծնանին, և զոտից տեղի ունին յամենայնի 'ի կեանս աշխարհիս. և որպէս փոշին յորժամ յառնիցէ՝ զբազում մասն օդոյն ունի, թէպէտ և ինքն սակաւ ինչ է, նոյնպէս և իշխանութիւնն. և որպէս փոշին կուրացուցանէ զաչսն, նոյնպէս և իշխանութեանն հպարտութիւն կացուցանէ զաչս մտաց:

Այլ զի՞նչ, կամիցի՞ք եթէ քննեսցուք զբազմատենչիկ իրսն, զմեծութենէն ասեմ: Ա՛ռ 'ի մէջ առ սակաւ սակաւ զայն ես քննեսցուք. յորում փափկութիւնքն և պատիւք և կարողութիւն իրաց զինչ և կամիցի: Իսկ նախ եթէ կամիս, զփափկութիւնն իսկ քննեսցուք: Ո՞չ ապաքէն փոշի իսկ է, և ես երագագոյն քան զփոշի անցանէ. մինչև ցլեզուն է քաղցրութիւն փափկութեանն, և յորժամ յորովայն լնուցու՝ և մինչև ցլեզուն իսկ չէ: Իսկ պատիւքն իցե՞ն ինչ. այո, ասեն, քաղցր իսկ իրքն են: Իսկ զի՞նչ քան զայն դառնագոյն կայցէ յորժամ բազում ընչից պէտք լինիցին. յորժամ ոչ կամօք և մըտացն յօժարութեամբ ծախել հասանիցէ, զի՞նչ շահ յայնպիսի պատուոյ լինիցի: Իսկ մեծութիւն իցէ՞ ինչ, որ քան զամենայն ինչ նա անարգ առնէ զայն որ մեծանալն կամիցի: Այնպիսի ինչ է, եթէ զքո բարեկամ ամենեքեան պատուէին և զքեզ չհամարէին ինչ, բայց վասն նորա իմն հարկ համարէին պատուել, ո՞չ ապաքէն

զիարդ և էր՝ անարգէին զքեզ։ Նա ուրեմն անարգութեանն պատճառք մեծութիւն է, զի քան զամենայն պատուականագոյն Թուի, և տկարութեանն հարստութիւնն նշանակիչ։

Եւ զիա՞րդ չիցեն անպատեհ իրք, ևս վատթարք քան զհող և զմոխիր, զոր ոսկին գործէ, չհամարել զքեզ արժանիս պատուոյ, այլ վասն նորա պատուիլ։ Եւ յիրաւի իսկ. քանզի այնպէս յարգեցաք զոսկին քան զանձինս. այլ ոչ եթէ որ զմեծութիւնն արհամարհիցէ, այնպէս ոք իցէ։ Նա իցէ չպատուել քան այնպէս պատուել։ Բայց ասէ սա, եթէ ոք զքեզ և ոչ միոյ պատուոյ արժանի համարէր, և վասն ծառայիցն քոց ասէր պատուել զքեզ, զի՞նչ ինչ քան զայն անարգութիւն վատթարագոյն կայր։ Ոչ թէ վասն ծառայից պատուել յետին անարգանք իցեն՝ որք սոքին ազգաց և սոքին բնութեան են հաղորդակիցք, որչափ ևս առաւել որք վասն վատթարացն քան զնոյն, զասանցն որոց ասեմ և զորահիցն և զոսկի սպասուց և զհանդերձից։ Արդարեւ ծաղու և ամօթոյ իսկ է այն. լաւ իցէ մեռանել քան այնպէս պատուիլ։

Բայց ասէ եկ տես դու զիս, եթէ միչտք ինչ 'ի վերայ հասանէին, և անարժան ոք և քամահեալ՝ կամէր զքեզ 'ի վշտացն հանել, չհամարէիր զայն վատթարութիւն։ Ոչ ինչ զբաղաքէս առ միմեանս զորոյ տուեալ, զնոյն կամիմ և առ ձեզ ասել։ Պիտառարձ եղև երբեմն քաղաքս մեր իշխանի, և զամենայն միաբանական հրամանն ետ ապականել հանդերձ արամբք և կանամբք և մանկտով և շինուածովք։ Որանզի այնպէս են Թագաւորաց ցասմունք. զի որպէս զպարգևս ձեռնհասս են տալ իշխանութեամբ, նոյնպէս և զպատիժս 'ի վերայ ածել։ Եւ յորժամ կարի 'ի տագնապի կայր քաղաքս, և առջին գրացի քաղաքն որ 'ի ծովեզերն կայ առաջէպաց վասն այսր քաղաքի զԹագաւորն, և բնակիչք քաղաքին մերոյ ասէին՝ Թէ լաւ իցէ 'ի հիմանց բարձ եղել քաղաքիս, քան Թէ նոցա բարեխօսութեամբ ապրիցէ։ Եւ այնպէս քան զանարգելն՝ այնպէս ինչ պատուել կամէ։ Տես ուստի է արմատ պատուոյն։ Խորհակերացն ձեռն առնէին զմեզ պատուական. ապա ուրեմն նոցա պարտիմք շնորհակալ լինել, և սպասաւորացն որ զմեզանի

կացմեն, և ոստայնանկացն և ասրագործացն և որ զբրէականն գործսն գործիցեն, և զծաղարարացն և որ զփոխընդեայսն գործիցեն և որ զսեղանսն յօրինեսցեն ։ Այլ արդ քան այնպիսեացն շնորհ ունել, ո՞չ լաւ իցէ բնաւ չպատուել իսկ ։ Այլ առանց այսր զի և անարգութեամբ իսկ լի է մեծանալն, ես իսկ ջանացայց ցուցանել քեզ յայտնագոյնս. և զոգին տգեղագոյն գործէ ։

Ազէ ասա, զինչ ինչ քան զայն անագորոյն կայցէ ։ Եթէ մարմին ուրուք գեղեցիկ էր և զամենեքումբք անցանէր գեղեցկութեամբ, և մատուցեալ մեծութեանն սպառնայր առնել զնա տգեղագոյն, և ընդ առողջութեն ցաւս փոխանակել և ընդ նրբութեան այտուցս, և զամենայն մարմինն ջրգողեալ տոռոմեցուցեալ, և զերեսս և զամենայն իսկ ըմփոփոտեալ, և զոտս ես մեծամեծ քան զգերանս առնացուցանել, և զընդերսն փքեցուցանել՝ ես մեծ քան զկարաս փչեցուցանել, և յետ այնորիկ սպառնայ ես բժշկաց որ բժշկել կամէին, մինչև 'ի պատիժս ածել զայն որ 'ի փառաւորացն ապրեցուցանել խոստանայր, և արդ մեծութիւն ինչ իցէ այն որ զոգին այնպէս գործէ, և կամ զիա՞րդ իցէ բարի ։ Իսկ իշխանութիւնն ես գժնդակագոյն քան զցաւսն է. զի քան զխօթանալն՝ բժշկացն չանսալ՝ ես վատթարագոյն է ։ Զոր և մեծութիւնս ունի, և յամենայն կողմանց այտուցանէ և տոռոմէ զոգին, և արգելու և չտայ բըժըշկաց հուպ երթալ. զնոյն և իշխանութիւնն ։ Ապա ուրեմն վասն իշխանութեանն չպարտիմք երանի տալ այնպիսեացն, այլ ողորմել ես ։ Նա և ոչ յորժամ ըզջրգողեալսն տեսանիցեմք վտակս ջուրց 'ի ներքս յորովայնն արգելեալ և աւելի շաւիղ փառաւորս աճեցեալ, երանի ինչ տայցեմք նոցա. նոյնպէս և ոչ վասն իշխանութեանն ումեք ինչ պարտիմք տալ երանի ։ Քանզի ոչ եթէ ամենայն ուրեք իշխանութիւնն բարի իցէ, զոր օրինակ և ոչ պատիւքն. քանզի և նոքա բազում հպարտութեամբ լի են ։ Զի եթէ զմարմնոյ համգերձ մեծութեամբն՝ չախորժես զցաւսն, զիա՞րդ է զի զոգին անտես առնիցես, ոչ[1] զայս միայն, այլ զի և այլ ես պատիժս կրիցես ։ Քանզի իբրև 'ի ջերմանէ այտմամբք

1 Պակասէր յօրինակին ոչ զայս միայն. յաւելաւ 'ի յունէն ։

այտուցեալ յամենայն կողմանց, և զջերմն զայն չիք ոք որ չիջուցանել կարիցէ. զի ոչ տայ թոյլ մեծութիւնն, և որ ինչ թերութիւնքն զայն յոլովութիւնս հաւանե-ցոյց համարիլ. զո՞ր. զկանսալն ումեք և իշխանութե՞ն զամենայն ինչ գործելն: Նա և գտանէ իսկ ոք ոչ այլ հոգի այնչափ ցանկութեամբք լցեալ և ոչ այնչափ յո-ռութեամբք, որպէս և նոցայն որ մեծանալն կամիցին:

Որչափ ինչ զձառս առանցելոյն յանձին նկարեն, ա-ռաւել աւելի քան զայնպիսեացն որք զձիացուլսն 'ի քմաց ստեղծանեն և զքիմառսն, այսինքն որ զվիշապառիւծ քաղսն համբաւեն և զայլսն նոյնպիսիս վիշապառունս և զօր օձիւղսն անուանեն, որ թարգմանի ապուռք. որ-պէս և Հայք ծովացուլս ինն և վիշապս մարդակերպս և պայս և ապլեզս համբաւեն: Իսկ այսու յայտ առնեն թէ առասպելս ինն 'ի քմաց կարկատեն: Իսկ եթէ զմի ինչ ցանկութիւն նոցա կամիցի ոք նկարել, ոչ ապուռքն, ոչ վիշապառիւծքն քաղքն, և ոչ ձիացուլքն երևեսցին ինչ առ այնու առասպելութեամբ. այլ գտանիցէ ոք զա-մենայն գազանս միանգամայն անդր կուտեալ, և այնմ ինչ ոչ համեմատել:

Իսկ թերևս համարիցի ոք և զիս 'ի բազում մեծու-թեան կեցեալ, զի այսպէս ճշմարտիւ տամ զօրինակ իրացն: Այլ թերևս համարիցի ոք այնպէս՝ համարեա-ցէ. և նախ որ առ հեթանոսացն համբաւի, զայն բան ճշգրտեսցիս: Եւ ինձ 'ի նոցանէ թագաւոր այնչափ յղ-փացեալ բարեկեցութեամբ, մինչև ծառ հանգոյն սօ-սոյն ծառոյ ոսկեղէն գործել և երկինս 'ի վերայ, և ընդ այնու նստել, և այն զի զօրաժողով եւս լինէր՝ ընդ արս հմուտս տալ պատերազմ: Իսկ արդ չիցէ՞ այնպիսի ցան-կութիւն եւս յուշապարիկ գործ քան զձիացլուցն և զա-պուռ գազանացն: Իսկ միւսն դարձեալ յեզն փայտե-ղէն ամփոփեր զմարդիկ. և չիցէ՞ այն գործ ապուռն գա-զանաց: Մին[1] յառաջնոցն յառնէ կին արար զթագա-ւորն, և զզօրականն 'ի կնոջէ. զինչ[2] ասացից, զի եթէ գազան հոչիցեմ զնա՝ չէ ինչ 'ի դէպ. և զինչ. եւս չար քան զգազանն: Ոչ գազանքն եթէ ընդ ծառով իցեն,

1 Յօրինակին գրեալ էր Աս... [illegible] ... ընդ յանձինս:

2 Պակասէր յօրինակին զի՞նչ ա-[illegible] յանձնելն 'ի յանձն:

անսան բնութեան և աւելի ինչ քան զայն ոչ խնդրեն. իսկ նա և զգազանացն բնութիւն ևս անցոյց զանցոյց։

Իսկ արդ ո՞վ ոք անմտագոյն քան զմեծատունն կայցէ. յագահութենէ ցանկութեանցն գործի այն։ Իսկ արդ զարմանայցե՞ն ընդ նա բազումք։ Նա և 'ի ծաղրն կալցի նորա ընկերք դատնին։ Զի այն ոչ զմեծութիւն ցուցանէր, այլ զանմտութիւնն։ Ո՞րչափ քան զսոսոյն ոսկեղէնն, որ յերկրէն բուսանի լաւ է. զի որ ինչ ըստ բնութեանն իցէ, քան զայն որ արտաքոյ քան զբնութիւնն իցէ՝ ախորժելի է։ Զինչ օգուտ է քեզ յերկնիցն զոր գործեցեր՝ եղև, ով մարդ։ Տեսանե՞ս զիարդ բազում մոլեկանս գործէ մեծութիւնն, կամ յորպիսի ինչ հպարտութիւն ածէ. թուի ինձ նման և զծով չճանաչել, այլ և 'ի վերայ ևս ծովուն յօժարել գնալ։ Ո՞չ եթէ չէ՞ր նա իսկ վիշապաբիւծ քաղն, միթէ չէ՞ր ևս չար քան զձիացուլն յուշկապարիկն։

Այլ են և այժմ ոմանք որք չեն ինչ ընդհատ 'ի նըմանէ, այլ ևս առաւել անմտագոյնք։ Զինչ ընդհատ իցեն 'ի նմանէ որ զսոսոյն ոսկի գործեաց անմտութք, որքա որ այժմ զսափորս ոսկիս գործեն և պտուղս և կաւշարպս. և կամ զինչ ընդհատ կանայք իցեն, ամաչեմ ասել և հարկ է ասել, որք միզաւանս արծաթիս գործեն ձեզ։ Ամաչեցէք ընդ գործս այնպիսեաց կանանցն։ Պա՞րտ ինչ էր, մինչդեռ Քրիստոս սովամահ լինի, քեզ այնչափ փափկանալ, մանաւանդ թէ փոխելանալ իսկ։ Որպիսի տանջանաց արժանի լինիցին։ Իսկ տակաւին հարցանես եթէ ընդէր հէն և ընդէր աւազակք, ընդէր սպանողք, ընդէր այսչափ չարիք զմեօք պատեալ. և զայն չառնուս 'ի միտ եթէ զիարդ այսր անդր քարշէ զմեզ սատանայ սկաւառակս ոսկիս առնել։ Իսկ այն չէր զգատասէր ոգւոց, այլ գրգանաց և փափկութեան։ Իսկ զամենայն անօթս, և աղտեղի ինչ իրաց անդամ, յարծաթոյ կազմել փափկութեա՞ն ինչ իցէ։ Ոչ ասեմ երբէք զայն փափկութեան, այլ անմտութեան. և ոչ անմտութեան, այլ մոլութեան, և թէ քան զմոլութիւնն ինչ յոռագոյն կայցէ։

Գիտեմ զի բազումք զիս հեգնեն վասն բանիցս, այլ չզանգիտեմ ինչ. լիցի ինչ միայն բարի, և ես թող հեգնիմ։ Արդարև իսկ անմիտս և շամբեալս գործէ մե-

ծութիւնն։ Եթէ ձեռնհաս ինչ էին՝ կամէին զի և երկիրս ոսկեղէն լինէր և որմքս ոսկեղէնք, թերևս և զերկինս և զօդս յոսկւոյ։ Ո՛ ինչ մոլորութիւն իցէ, զի՜նչ անօրէնութիւն, որպիսի՜ ջերմն։ Ընկերն ՚ի ցրտոյ մեռանի որ ըստ պատկերի ո՛յ արարաւ, և դու այնպիսի անօթս ոսկեղէ՜նս կազմես. այնչափ մոլեա՛լ պատուես զապարահեղձն, մինչև յարծաթի ամանս ընդունել։ Գովեալ զի քաքնիք[1] ՚ի բանիցս զոր լսէք. այլ նոքա պարտէին քաքնել և նոյին արք՝ որ յայնպիսի ցաւս ջերանին. անառակութիւն է այն և ցեղխութիւն, անարգութիւն է և տմարդութիւն և գազանաբարոյ լինել։ Ո՞ր ապուռ, ո՞ր քիմառ, ո՞ր վիշապաբուծն քաղ, ո՞ր վիշապ, մանաւանդ թէ ո՞ր դև, ո՞ր սատանայ այնպիսի ինչ գործս գործիցէ։ Ո՛ ինչ օգուտ ՚ի Քրիստոսի գալստենէն իցէ, ո՞ր շահ ՚ի հաւատոյն, յորժամ մարդոց ոք ՚ի հեթանոսաց անասցէ. մանաւանդ թէ ոչ հեթանոսաց, այլ դիւաց։ Եթէ ոսկւով և մարգարտով զգլուխ չիցէ պարտ զարդարել, որ արծաթ յաղտեղի սպասաւորութիւն վարիցէ՝ որո՞ւմ թողութեան արժանի լինիցի։ Զիցեն շատ այլ սպասքն, թէպէտ և այնք չեն համբաւեան, աթոռքն և պատուանդանք յարծաթո՛յ. նա և այն իսկ անմտութեան է։ Այլ ամենայն ուրեք հպարտութիւնն գործէ զաւելորդսն, ամենայն ուրեք մնապարծութիւնն նիւթէ զանուղղայսն։ Զիք ուրեք չարի պիտոյից, այլ ամենայն ուրեք աւելորդաց են խնդիրք։

Բայց կասկածեմ դուցէ կարի զհետ երթեալ մոլութեանցն կանանց ազգին, զնշաւակացն և զքարուակաց կերպարանս առնուցուն. ՚ի դէպ է և զծամսն ոսկիս ըղձանայցեն։ Թէպէտ և ասիցէք իսկ եթէ չախտացայք ինչ այսպիսի որ ասացաւ և յօժարեցէք և ցանկացայք, թէ չէր առնեթոյն կալեալ՝ չզանդաղէիք ինչ։ Ո՛ի թէ յեռ անպատեհան ժտիք, որչափ ես առաւել է կարծել թէ և յայն մտաբերէք որ՝ զշրթունս և զյօնս և զամենայն հալէիք զոսկին և օծանէիք։ Թէ չհաւատայք և համարիք ծաղր ինչ խօսել, պատմեցից ձեզ զոր ինչ լուեալ է, մանաւանդ թէ և այժմ իսկ է։

1 Յօրինակին քաքանիք և զինի քաքանել. ուղղեալ ըստ այլ օրինակաց։

Պարծից Թագաւորն ոսկի պերճախշտս ետ զարդել նոցա, որ յայնժամ խակ մնեալ, և դժնդակագոյնք իմն էին։ Եւ որպէս ընդ Թեզանն, նոյնպէս և ընդ նորա մազ մօրուացն ընդելուզեն զոսկին. այլ իբրև զնշաւակ ինչ անկեալ դնի։ Փառք քեզ Քրիստոս, որչափ բարութիւնք ցեր զմեզ, որպիսի առողջութիւն շնորհեցեր, յորչափ նշաւակութենէ յորչափ անհամձարութենէ ազատեցեր զմեզ։

Ահաւասիկ յառաջագոյն ասեմ. և ոչ ես խրատեմ, այլ հրաման տամ և դուլ և պատուէր. որ կամի լսիցէ, և որ չկամի հաւանել մի հաւանեսցի. եթէ դարձեալ 'ի նմին կայցէք, չառնում յանձն, չընդունիմ, չտամ կոխել զսեամս դրան։ Զինչ օգուտ իցէ բազմութիւն հիւանդացն։ Զչափ ինչ զարդ չարգելում 'ի ձէնջ, որ չիցէ յաւելորդաց համարի, թէպէտ և Պաւղոս արգել զոսկի և զմարգարիտ։ Ծաղր կայցէք հեթանոսաց. առասպելս համարեն զմեր կրօնս։ Եւ արանց խրատ տամ 'ի վարդապետութիւն ժողովել այսր, 'ի խրատ հոգևոր զգաստութեանց 'ի բաց մերկանալ զայնպիսի հպարտութիւնն. Եւ արանց և կանանց առ հասարակ զնոյն խրատ տամ։ Եւ թէ այլ ազգ ինչ որ գործիցէ, չառնում յանձն։ Երկոտասան աշակերտ մեայն էին. և լուր զինչ ասէ Քրիստոս. «Միթէ և դուք կամիք երթալ»։ Եթէ ցանգ ողջեմք, երբ շահեսցուք զձեզ, երբ պիտանիս արասցուք։

Այլ են, ասեն, և այլ հերձուածք, և անդր փոխին։ Ոյծ բանք են այդ. լաւ է մի որ առնիցէ զկամս տեառն, քան զբիւր անօրէնս։ Նախ դու, ասէ սա, զինչ կամիր, բիւր ծառայս գողս և փախստականս, եթէ մի ներքինի հաւատարիմ։ Ահաւասիկ դուլ և պատուէր տամ 'ի բաց առնել զայնպիսի պաճուճանս յերեսաց, և զանօթսն զայնպիսիս մանրել և տալ աղքատաց, և մի այնպէս մոլել։ Որ կամի սրանալ սրասցի, և որ կամի տրտնջել տրտնջեսցէ. չառնում յանձն, չանսամ ումեք։ Յորժամ առաջի ատենին Քրիստոսի դատիցիմ, դուք 'ի բաց կայցէք, և ո՞ր 'ի ձէնջ շնորհքն ինձ լինիցին յորժամ ես պատիժս տայցեմ, զո՞ր օգուտ գործիցեմ։

Իսկ այն ինչ լաւ իցէ, ասեն, զի երթայցէ յայլ աղանդս հարկանիցի. տկար է, ասեն, և ըստ նմա պարտ

է գալ։ Յերբ, մինչ ցո՞ր վայր, մի անգամ և երկիցս և երիցս․ միթէ հանապազ։ Ահաւասիկ պատուիրեմ և վկայութիւն դնեմ ըստ երանելւոյն Պաւղոսի, զի եթէ եկից միւսանգամ, ոչ խնայեցից։ Ապա եթէ ուղղիցիք, յայնժամ ծանիջիք թէ որչափ շահ է, քանի օգուտ։ Այս աղաչեմ ապաքէն և փոխան ասեմ, և զոտից եւս բուռն չզանդաղիմ հարկանել, և յաղօթս և'ի մաղթանս անկանել վասն նորին։ Զինչ անձնդիւրութիւն իցէ, զինչ փափկութիւնն․ չէ փափկութիւն, այլ թշնամանք։ Զինչ անմտութիւն իցէ, զինչ մոլորութի[1]։ Այսչափ աղքատք զեկեղեցեաւ շուրջ կան, այսչափ ծնունդս մեծատունս ունի եկեղեցի, և ոչ միում աղքատի կարէ օգնական լինել․ այլ ոմն քաղցնու, ոմն արբենայ․ ոմն յարծաթի անօթս զապարահեղին պէտս վճարէ, և ոմն հացկատն չասէ։ Զինչ մոլութիւն իցէ, զինչ այնչափ գազանաբարոյք։

Մ՛ի լիցի ձեզ գալ 'ի հանդէս պատժոց անհաւատից, և մի 'ի ցասումն այնմ որ զայս պատուէրս արհամարհիցէ․ այլ ինքնակամ յօժարութեամբ խորշիցիք 'ի վնասակարացն։ Զի 'ի փառս ա̃յ կեցցուք և յանուն տանջանացն ապրեսցուք և խոստացելոց բարութեանցն նորա հասցուք շնորհօքն և մարդասիրութ̃բ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի․ ընդ որում հօր, միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն։

1 Ցօրինակին [illegible] · նշանաւ ըստ յունին։

**րի, այլ չէ նուաղէն ըստ իւրաքանչիւր արարոց, և միւսն խաղ առնելոյ նշանակ է ։**

"Սպանէք, ասէ, զանդամս ձեր զերկրաւորս": Զի՞նչ խօսիս. ո՞չ դու իսկ ասացեր եթէ թաղեցան անդամքն, ասէիր ընդ նմին թաղեցայք և թլփատեցայք և մերկացայք զմարմինն մեղաց մարմնոյ. և արդ զիա՞րդ միանգամ ասիցես թէ սպանէք. մի թէ խա՞ղ ինչ առնիցես. որպէս թէ տակաւին 'ի մէջ իցեն, այնպէս իմն խօսիս. և արդ չիցէ այս ընդդէմ հակառակութեան ։ Այլ զոր օրինակ զպատկեր ինչ աղտեղի ջնջեսցէ, մանաւանդ եթէ ձուլիցէ իսկ ոք, և ապա վերստին պայծառագոյն նորոգիցէ՝ և ասիցէ եթէ ընկղմեցաւ ժանգն և կորեաւ, և խրատեսցէ միւսանգամ փութալ թօթափել զժանգն, չէ հակառակն ընդդէմ ինչ, զոր ասէն՝ ոչ զայնմ ժանգոյ ասէ զոր ջնջեացն, այլ զմիւսոյն որ յետոյ ժանգոտեցաւ՝ պատուէր տայ թօթափել, նոյնպէս և սա ոչ զառաջին մեռելութիւն ասէ և ոչ զնախնի պոռնկութեցն, այլ զայնցանէ որ յետոյն 'ի վերայ նորին գործեցան ։ Զեն, ասէ, այս կեանք մեր, այլ այլ կայ յերկինս ։ Բայց արդ աղէ եկ իսկ ասա դու ցիս, քանզի ասաց եթէ սպանէք զանդամս ձեր զերկրաւորս, թէ այնպէս ինչ իցէ՝ և երկիրս ինչ բծկան իցէ ։ Ոչ եթէ երկիր երբեք զբծկան ինչ բամբասիցի, այլ գործք երկրաւորք. երկրաւոր կոչէ զմեղսն ։

"Զպոռնկութիւնն, ասէ, և զպղծութիւն": Զանց արար զբաղում իրօք զոր և ասել չէր արժան. և զպղծութիւն ասելով՝ զամենայնն յայտ արար ։ "Զախտն, ասէ, զչար ցանկութիւնն": Հաւասիկ ազգականութեամբ զամենայն իսկ ասաց. քանզի ամենայն իսկ չար ցանկութիւն է, չարակնութիւնն բարկութիւնն տրտմութիւն ։ "Եւ զագահութիւնն, ասէ, որ է կռապաշտութիւն. քանզի վասն այնորիկ իսկ գայ բարկութիւն Այ 'ի վերայ որդւոցն անհաւանութեան": Բազում իրօք մերժեաց զնոսա 'ի բծիցն, անցելովքն, երախտեօքն, հանդերձելովքն՝ թէ յորոց չարեացն ապրեցաք և որպիսիք ոք էաք և ընդէր. այն ամենայն որպիսիք ոք էաք և յորպիսի իրս, և զի զերծաք 'ի նոցանէն, զիարդ և որով օրինակաւ ։ Եւ այս իսկ բաւական էր յորդորել. այլ քան զամենայն միւսն սաստկագոյն է, քարքնելի է

տա ասել, բայց ոչ. թէ անօգուտ, այլ և օգտակար ես։ “Վասն որոյ, ասէ, գայ բարկութիւնն այ. ՚ի վերայ որդւոցն անհաւանութեան„։ Եւ չասաց ՚ի վերայ ձեր, այլ ՚ի վերայ որդւոցն անհաւանութեան։

“Յորս և դուք երբեմն շրջէիք մինչ էիքն ՚ի նոսա„։ Պատկառեցուցանելով ասէ՝ մինչ էիքն ՚ի նոսա, և գովութեամբ հանդերձ. որպէս թէ այժմ չիցեն կենդանի յայնմ յոռւում յայնժամ կենդանին էին։ “Արդ ահաւասիկ, ասէ, ՚ի բաց թօթափեցէք և դուք ՚ի ձէնջ զայն ամենայն„։ Եւ միշտ համօրէնս իմն ասէ և առանձինն, քանզի այն իսկ է խնամոց։ “Զբարկութիւն, ասէ, և զսրտմտութիւնն, զչարախօսութիւնն և զհայհոյութիւնն, զխօսս պղծութեան ՚ի բերանոց ձերոց. մի ստէք միմեանց„։ Զխօսս պղծութեան ՚ի բերանոց ձերոց, յայտնագոյնս իմն զայնմանէ ասէ եթէ այն աղտեղացուցանէ։

“Մերկացեալ զհին մարդն գործովքն իւրովք հանդերձ, և զգեցեալ զնորն նորոգեալ ՚ի գիտութիւն ըստ պատկերի արարչին իւրոյ„։ Պարտ է խնդրել յայսմ վայրի թէ վասն էր արդեօք անդամս և մարդ և մարմինս կոչէ զապականեալ վարսն. նոյնպէս դարձեալ զառաքինութեան վարսն։ Եւ եթէ մարդ իցեն մեղքն, զմարդ ասէ՝ հանդերձ գործովք իւրովք։ Միանգամայն իբրև ասաց զհին մարդն, յայտ արարեալ թէ ոչ սա է մարդն, այլ նա. զի քան զբնութեանն՝ ես[1] հաստատագոյն կանոնս է, և նոյն մանաւանդ է մարդ և ոչ միւսն։ Քանզի բնութիւնն ոչ ՚ի գեհեն տանի և ոչ յարքայութիւն մուծանէ, այլ խորհեանք մարդկան որպէս զմարդ ինչ կամօքն լինիցին. և ոչ զոք ոչ սիրեմք և ոչ ատեմք, այլ թէ որպէս ոք ինչ սա իցէ և որպէս ինչ ոք նա՝ յայնմ ընտրի սէրն և ատելութիւնն։ Եթէ բնութիւնն որ է մարմինն, և նոյն անփոփոխական յերկոսին, զմարդ չար կոչիցեն զնա։

Զինչ իցեն՝ գործովքն հանդերձ։ Զկամացն՝ հանդերձ գործովքն ասէ. նա և հին կոչէ զնա, զի զյոռութիւնն նորա կամի ցուցանել և զտգեղութիւնն և զտկարութիւնն. և նոր ասէ, փոխանակ ասելոյ եթէ մի

1 Ճառընտիրն յօժարութիւն փխրագոյն է, եւ այս նմանաւոր։

ինչ ասէք ունիցիք եթէ և սա նոյնպիսի ինչ կրեսցէ, այլ զնորին հակառակն։ Արշաւէ և յառաջ գայցէ, ոչ եթէ 'ի ծերութիւն մտօք, այլ եւս 'ի մանկութիւն քան զառաջինն։ Յորժամ եւս յաճախագոյն զգիտութիւն առնուցու և մեծամեծացն արժանի լինիցի, եւս քան զեւս զօրանայ ոչ միայն մանկութեամբն, այլ և կերպարանօքն յարում և իցէ։ Ահաւասիկ արարած ազնուականն առաքինութեանն կոչի։ Ըստ պատկերին Քրիստոսի՝ այն իսկ է ըստ պատկերի արարչին իւրոյ. քանզի և Քրիստոս ոչ մտօք 'ի ծերութիւն վախճանեցաւ, այլ դեռ յաստախս, և այնպէս էր գեղեցիկ՝ որպէս զի և ասել չէր հնար։

«Ուր ոչ, ասէ, հեթանոս և ոչ հրեայ, թլփատութիւն և անթլփատութիւն, խուժ, սկիւթացի, ծառայ և ազատ. այլ ամենայն և յամենայնի Քրիստոս»։ Ահաւասիկ երեք զօրութիւնք են մարդոյ, յորժամ ոչ ազգի և ոչ պատուոյ և ոչ նախնեաց առաւելութիւն 'ի ներքս մտանիցէ, յորժամ չունիցի ինչ զարտաքինսն և ոչ կարօտ ինչ նոցին իցէ. քանզի այնպիսիք են առաքինիքն։ Թլփատութիւնն և անթլփատութիւնն, ծառայն և ազատն, հեթանոսն, սկիւթացին եկամուտն, և հրեայն 'ի նախնեաց։ Եթէ զայն միայն որ պիտոյն է՝ ունիցիս, նոցին պարգևացն արժանի լինիս որոց և այլքն որ 'ի բնէ ունէին զազնուականութիւնն։ «Այլ ամենայն և յամենայնի Քրիստոս»։ Ամենայն ինչ ձեզ, ասէ, Քրիստոս եղիցի, և պատիւ և ազգ, և յամենեսին 'ի ձեզ զնոյն։ Իսկ կամ թէ զիարդ ասիցէ՝ եթէ ամենեքեան 'ի Քրիստոս մի էք, քանզի նորա մարմին եղերուք։

«Զգեցարուք այսուհետև իբրև ընտրեալք Աստուծոյ սուրբք և սիրեցեալք»։ Այսու զգիտութիւն առաքինութեան ցուցանէ, որպէս և հանապազօրդ իսկ ունել զայն, որպէս մեծաւ զարդու վայելեալ։ Իսկ զօրութեամբք հանդերձ է խրատն. յայնժամ առաւել զօրանայ։ Քանզի և լինէին երբեմն սուրբք, այլ ոչ եթէ ընտրեալք. իսկ այժմ և ահաւասիկ և ընտրեալք և սուրբք։ «Զաղիսն գթութեանն», ասէ. Իսկ չասաց զողորմութիւնն, այլ զեւս յայտնագոյնն երկոքումբք իսկ. չասաց՝ իբրև եղբարց, այլ իբրև որդւոց հարք։ Իսկ զայն մի ինչ ա-

սիցես ցխ եթէ յանցեաւ։ Եւ վասն այնորիկ ասաց ա-
ղիք և ոչ գութ, զի մի զնոսա առ վատթարս ունիցի,
այլ զաղխն գթոյ ասէ։

«Զքաղցրութիւնն, զխոնարհութիւնն, զհեզու-
թիւնն, զերկայնմտութիւնն, ներել միմեանց, շնորհել
անձանց եթէ ուրուք զումեքէ տրտունջ ինչ իցէ. որ-
պէս Քրիստոս շնորհեաց ձեզ, նոյնպէս և դուք»։ Դար-
ձեալ ըստ իւրաքանչիւր իմն կերպարանաց ասէ. և միշտ
զնոյն առնէ, 'ի քաղցրութենէն 'ի խոնարհութիւն և
անտի յերկայնմտութիւն։ «Ներել, ասէ, միմեանց».
այսինքն զոր ինչ լսիցէ ոք, չլուեալ[1] առնիցէ։ Եւ տես
զիարդ ոչ ինչ մեծացուցանէ զայն՝ տրտունջ կոչելով։
«Որպէս և Քրիստոս, ասէ, շնորհեաց ձեզ»։ Օրի-
նակն մեծ է, զոր և ցանգ իսկ առնէ, Քրիստոսիւ յոր-
դորել զնոսա։ Տրտունջ կոչելով փոքրիկ իմն եցոյց. և
զօրինակն նմին բերելով հաւանեցոյց թէ և մեծամեծս
ինչ ունիցիմք պատուհասել, պարտ է շնորհել. քանզի
որպէս և Քրիստոսն՝ զայս նշանակէ. և ոչ զայս միայն,
այլ թէ և սիրել պարտ է. զի յորժամ Քրիստոս 'ի
մէջ մտանէ, զամենայն զայն 'ի մէջ բերէ։ Եւ եթէ
մեծամեծք ինչ իցեն, և չիցէ մեր նախ մեղուցեալ, և
թէպէտ և մեք աւագ իցեմք և նոքա փոքունք, և եթէ
նշանս[2] ևս հասանիցէ կրել 'ի նոցանէ, նա յետ այնր
և զանձինս ևս 'ի վերայ նոցա պարտ է դնել. քանզի
«որպէս և Քրիստոսն» ասաց, զայն պահանջէ. և ոչ
մահու չափ միայն, այլ թէ հնար ինչ իցէ՝ և յետ մա-
հուն երախտիս առնել։

«Եւ յայսր ամենայնի վերայ, ասէ, զսէրն որ է կապ
և զօդ կատարմանն»։ Տեսանես զի զայս իսկ ասէր։
Քանզի մարթ է շնորհել և ոչ սիրել, այո, ասէ, և սիրել.
նա և զճանապարհն ևս ցուցանէ որով մարթ է շնորհել։
Մարթ է և քաղցր ումեք լինել և հեզ և խոնարհ և եր-
կայնամիտ, և չունել գութ. վասն որոյ սկիզբն իսկ զաղխ
գթութեան արար և զողորմութիւն և զսէրն։ «Եւ յայսր
ամի վերայ, ասէ, զսէրն որ է կապ և զօդ կատարմանն»։
Զոր կամին ասել այս է, եթէ չիք ինչ անտի շահ. քակ-
տի ամ, եթէ ոչ սիրով լինիցի. զամենայն զայն սա ունի

1 Յօրինակին չլուեալ։ 2 Յոմն թշնամանս։

պինդ։ Որ ինչ և ասիցես բարի և առանց սոսա իցէ, ոչ ինչ է, վարի և մաշի։ Եւ զոր օրինակ 'ի նաւի թէպէտ և մեծամեծ գործք իցեն, և ներքնապատ կողմանքն չիցեն՝ չէ ինչ օգուտ. նոյնպէս և 'ի շինուածի եթէ ոչ պահանգ կապիցին, չէ հաստատուն. և 'ի մարմնի թէպէտ և հաստատուն ոսկերք իցեն, և յօդքն չիցեն պինդ, չէ ինչ օգուտ։ Նոյնպէս զոր ինչ և ուղղութիւն և ասիցես և առանց սիրոյ է, ոչ ինչ իսկ է։ Զասաց եթէ գլուխ է և ոչ թէ մեծ, այլ կապ և զօդ. զի այս կարևոր է քան զայն։ Վասնզի գլուխն յաճախութիւն է կատարմանն, և կապն և զօդ ունելի նոցա որ զկատարումն գործիցեն իբրև արմատ ինչ և հաստատութիւն։

"Եւ խաղաղութիւնն Քի, ասէ, յաղթեցուսցէ 'ի սիրտս ձեր, յոր և կոչեցարուք 'ի մի մարմին, և գոհացողք լինիջիք"։ Ո ի խաղաղութիւն սերտ և հաստատուն այն է զոր վասն Քի ունիցիք. ապա թէ վասն մարդոյ ունիցի ոք, վաղվաղակի քակտի. իսկ եթէ վասն Քի, և ոչ երբէք։ Թէպէտ և համօրէն զամենեցունց սիրոյն ասաց, այլ և յառանձինն ևս յուշոգին իւրաքանչիւր ոք զայ։ Գոյ և անչափ ինչ սէր. որպէս յորժամ առ բազում սիրոյ մեղադիր ոք լինիցի և կագիցի և սարտնիցի։ Ոչ ասէ չկամիմ զայն. մի զկցկտուրն[1], այլ որպէս Քս արար ընդ ձեզ խաղաղութիւն, նոյնպէս և դուք արարէք։ Եւ զիա՞րդ արար նա. չկամեցաւ ինչ 'ի ձէնջ առնուլ, այլ զամենայն ինչ ետ ձեզ։

Ո ինչ իցէ՝ խաղաղութիւն Քի յաղթեսցուսցէ[2] 'ի սիրտս ձեր։ Եթէ կռուիցին ընդ միմեանս երկու խորհուրդք, մի կացուցանիցես զցասումն, մի կացուցանիցես զփառակարութիւն՝ ունել 'ի ձեռին զբրաբիոնն որ է յաղթութեան պարգևքն, այլ զխաղաղութիւն։ Գործեսջիր եթէ թշնամանեցաւ ոք զուր, և 'ի թշնամանացն ծնեան երկու խորհուրդք. մին հրամայիցէ վրէժ առնուլ, և միւսն համբերել, և երկոքեան ընդ միմեանս կռուիցին։ Եթէ խաղաղութիւն Քի 'ի միջի կայցէ և ունիցի զպարգև յաղթութեանն, այնմ որ համբերէն՝ հրամայէ տալ զյաղթութեան պարգևն, և զմիւսն յանձն առնէ։ Ո իարդ.

1 Յօրինակին Մ՝ զկցկտուրն, որ և չէք 'ի յոյնն։

2 Յօրինակին յաղթել ծածուկ. ուղղեցաւ ըստ այլ ձեռագրաց։

հաւանեցուցանէ եթէ ած 'ի խաղաղութեան է և խաղաղութիւն արար մեզ ։ Իսկ ոչ դոյզն ինչ ցուցանէ, այլ բազում իսկ պատերազմ իրացն ։ Մի, ասէ, ցասումն յաղթեսցէ, մի հակառակութիւնն, մի մարդկան խաղաղութիւնն՝ որ 'ի վրէժխնդրութենէն լինի և 'ի չկրելոյն ինչ չարչարանս ․ ոչ զայն կամիմ, ասէ, այլ զմիւսն ։ Իսկ մարտի տեղի 'ի խորհուրդսն գործեաց, և մարտեանահատակութիւնն և պարգևիչ ։

Այս և խրախոյս իսկ տայ ․ "Յոր կոչեցարուքն", ասէ ․ այսինքն եթէ որով կոչեցարուքն ։ Յուշ արար եթէ որչափ բարեաց պատճառք է խաղաղութիւնն ․ Նովաւ կոչեաց զքեզ յայդ, զի հաւատարմագոյն առնիցես զպարգևական նշանն ։ Վասն է՞ր մի մարմին արար ․ ո՞չ ապաքէն զի նա ունիցի և՝ նոյն տիրիցէ ․ ո՞չ ապաքէն զի պատճառս ունիցիմք խաղաղութիւն առնելոյ և իցեմք ամենեքեան մի մարմին ․ ո՞չ ապաքէն խաղաղութեամբն եմք մի մարմին, և վասն մի մարմին լինելոյ ունիմք զխաղաղութիւն ։ Ընդէ՞ր չասաց՝ եթէ խաղաղութիւնն այ յաղթեսցէ, այլ թէ յաղթեսցուսցէ ։ Արժանի հաւատարմութեանն եցոյց զխաղաղութիւնն ․ չար խորհրդոյն ոչ ետ թոյլ ընդ նմա մարտնչել, այլ 'ի ներքոյ ընդ նովաւ կալ ․ և յաղթութեանն անուն յորդորեաց ըզլսողն ։ Եթէ տացէ զյաղթութե պարգևն բարւոյ խորհրդոյն, որչափ և յանդգնիցի միւսն, և ոչ ինչ չօգտի ։ Իսկ այլ ազգ ևս, զի և յորժամ տեսանիցէ եթէ այնչափ գուն 'ի վերայ գործեաց և չառ զպարգև յաղթութեանն, ևս քան զևս ոգւով չափ ջանայցէ և սաստկագոյնս յանդգնիցի առ 'ի մրցել, և տեսանիցէ եթէ յանօգուտ ջանայ 'ի բաց մերժել ։

Իսկ բարւոք յաւել թէ "Գոհացօղք լինիջիք" ․ քանզի այն իսկ է պիտոյ գոհացողքն լինել ․ և կարի իսկ պատկառագոյնս, այն զի նման ծառայակցացն լինիցի, որպէս և նմա ած ։ Անսալ տեառն, հաւանել և ընդ ամենայնի շնորհակալ լինել, թէպէտ և թշնամանիցէ ոք, թէպէտ և գան իսկ ոք հարկանիցէ ։ Վասնզի ոչ եթէ որ այն շնորհս վարկանիցի, ընդ չարչարանացն 'ի չարչարելեաց վրէժս պահանջիցէ ․ որպէս զի որ վրէժն առնուցու, չհամարի այ շնորհս ։ Այլ մի ըստ այնմ որում հարիւր դահեկանն թողաւ՝ լինիցիմք, զի մի և մեք լուիցեմք՝ եթէ

ծառայ չար։ Չիք ինչ չար քան զայնպիսի անշնորհակալութիւն։ Նոքա ուրեմն չեն շնորհակալք որ զպէտսն խնդրիցեն։

Մնդէր նախ 'ի պոռնկութիւնն եկն. ասէ "զանդամս ձեր երկրաւորս սպանէք". և անդէն վաղվաղակի՝ եթէ զպոռնկութիւնն. և գրեթէ ամենայն ուրեք զայն առնէ, քանզի այն խիկ ախտ յաճախ լինի։ Այլ 'ի Թեսաղոնիկեցւոց Թղթին զնոյն գրէ. Այլ ընդ այն զինչ զարմանալի իցէ, ուր զի և առ Տիմոթէոս գրէ՝ եթէ "Զքեզ անձն սուրբ պահեա". և զարձեալ այլուր եթէ "Զխաղաղութեան զհետ երթայք ընդ ամենեսեան և զսրբութեան, զի առանց նորա ոչ ոք տեսցէ զտէր"։

Սպանէք, ասէ, զանդամս ձեր։ Զմեռեալս զխօսէք եթէ որպէս ասելի է, զիարդ զարշելի և ընկենլի։ Եթէ սպանանիցես՝ չկայ մնայ մեռեալ, այլ առաջ վաղվաղակի իբրև մարմին ապականի. չիքն զջերմութիւնս, և չմնայ այնուհետև մեռեալն մեռեալ, այլ և եղծանի եւս։ Ցուցանէ այնուհետև անդ այնպիսի ինչ գործ որպէս և Քրիստոս աւազանաւն։ Այս ասն այնորիկ և անդամս կոչէ, իբրև զնահատակ ոք 'ի մէջ մատուցանիցէ և առաքինի 'ի մարտին կացուցանէ։

Այլ բարուք ասաց՝ զերկրաւորսն. քանզի ամենայն մնայ և ամենայն ապականի, և եւս չար քան զանդամսն։ Որպէս զի ոչ այնպէս մարմինն յերկրէ է, որպէս մեղքն երկրաւորք. զի սա երբեմն և բարուք երևի. բայց նոքա և ոչ երբէք, և ամենայն երկրաւորացս ցանկան այնպիսի անդամքն։ Եթէ ակն իցէ՝ նոյնպէս չհայի յերկինս, և եթէ ունկն և եթէ ձեռն և եթէ զոր ասիցես անդամ։ Եթէ ակն իցէ, մարմինս և եթ տեսանէ նա և զգեղեցիկան և եթ և ինչս միայն որ ինչ յերկրէն են։ Այլ ունկան այս ինն քաղցր թուի՝ մեղկ նուագքն, Ջնարն և քնարն, սրինգն և խառնխառնութիւն, որ ինչ յերկրին է և յերկրէ։

Այլ զի այնուհետև նշան կացոյց զնոսա 'ի վեր առ աթոռն արքունական, ապա ասէ՝ եթէ սպանէք զանդամս ձեր զերկրաւորս։ Զմարթի անդ 'ի վեր կալ այնպիսի անդամօք. չիք ինչ անդ որով զպէտս վճարիցէ. և սա քան զկար եւս պատեհ է, և նա աւելի անօթ յարդարելոց է. "Պայծառ է, ասէ, ապականացուիս այս

միկ զգենուլ զանապականութիւնն,,: Զ՛ի այսմ կա-
ւոյ չէ հնար եթէ միւսանգամ կարիցէ ձուլել. ապա
ուրեմն այս առաւել յերկրէ է քան զայն: Վասն այնո-
րիկ չասաց յերկրէ, այլ թէ յերկրի. քանզի մարթի
այնմ չլինել յերկրի, և սմա հարկ է յերկրէ լինել, և
նմա չէ ինչ հարկ: Յորժամ ունկն չլուիցէ ինչ զաստի,
այլ զերկնաւոր ձայնսն, և յորժամ ակն չտեսանիցէ ինչ
զաստի, այլ զվարձանց՝ չէ յերկրի. յորժամ բերանն
չխօսիցի ինչ զաստի, չէ յերկրի. յորժամ ձեռն չգործի-
ցէ ինչ զչարեաց, չէ այս ոմն յերկրաւորաց, այլ յերկնա-
ւորաց: Զայս ասէ և Պ՛ղ. եթէ ակն քո աջ գայթակ-
ղեցուցանէ զքեզ լկտիս ինչ հայելով, խլեա ընկեա 'ի
բաց, այսինքն զչար խորհուրդսն: Ասելի ինձ եթէ ըղ-
պռնկութիւնն և զպղծութիւնն և զցանկութ՟ն ախտ
կոչէ, և մինչ յամենայնէ հեռացուցանէ: Որպէս մար-
մին ախտանայ յորժամ ջերմանայցէ կամ վիրաւորի-
ցի, նոյնպէս և այն ոգւոյն ախտ է: Եւ չասաց եթէ
արգելէք, այլ թէ սպանէք, զի բնաւ իսկ այնուհետև
մի յառնիցէ: Եւ 'ի բաց ընկեցէք զմեռեալն. քանզի
մինչ բիծքն 'ի մարմնին են, մարմինն մեռեալ է, և զնա
ես 'ի բաց ընկեսցուք: Եթէ կենդանւոյն կտրիցեմք,
ցաւս ածէ 'ի վերայ. և եթէ յորժամ մեռանիցի, չըզ-
գամք ինչ: Նոյնպէս և ախտքն պղծեն զոգիս, մահկա-
նացու առնեն զանմահն:

Եթէ ընդէր զկռապաշտութիւնն ագահութիւն կո-
չէ, բազում անգամ ասացաք. զի բուռն ազգի մարդ-
կան քան զայլն ամենայն ագահութիւնն և անառակու-
թիւնն և չար ցանկութիւնն է: "Վասն որոյ, ասէ, գայ
բարկութիւնն ա՛յ 'ի վերայ որդւոցն անհաւանութե՟,,:
Որդիս անհաւանութեան կոչէ առ անյոյս առնելոյ զնո-
սա 'ի ներելոյ և 'ի թողութենէ, և ցուցանէ եթէ 'ի
չհաւանելոյն են այնմ ամենայնի: "Յորում և դուք,
ասէ, երբեմն շրջէիք և հաւանեալք էիք,,: Յայտ առ-
նէ եթէ երբեմն էին յայնմ. և գովէ եթէ արդ ահա-
ւասիկ թօթափեցէք և դուք 'ի ձէնջ զայն ամենայն
զբարկութիւն զսրտմտութիւն զչարութիւն զհայհոյու-
թիւն զխօսս պղծութեան: Եւ յայլս տանի զբանն:
Ախտս և հայհոյութիւնս՝ զամբաստանս կոչէ. որպէս
և 'ի սրտմտութենէն զչարութիւնն ասէ: Այլուր և ա-

ղերսիւ իսկ ասէ եթէ “Միմեանց անդամք եմք”, իբ-րեւ արարիչս կազմէ զնա մարդկան, զոմն յընկենլեաց եւ զոմն յընդունելեաց։ Կոչէ նմա անդամս, եւ ասա զող-ջոյն իսկ ասէ, սիրտ նորա՝ զըրտմտութիւնն, բերան՝ ըն-հայհոյութիւնն, աչս՝ զպոռնկութիւնն եւ զագահու-թիւնն, ոտս եւ ձեռս՝ զստութիւնն, խորհուրդս եւ միտս զհին մարդն. եւ զմին միայն զարքունի կերպարանսն ա-ռեալ զՔրիստոսի խրատէ։ Մտածի ինձ թէ եւ 'ի հե-թանոսաց էին նոքա։ Այլ զոր օրինակ երկիր հող է, թէպէտ եւ մի ինչ կերպարանք առեալ իցեն եւ միւսն նուաստագոյն, յորժամ ձուլիցի՝ զիւր կերպարանսն զա-ռաջինս կորուսանէ եւ յետոյ լինի ոսկեղէն, եւ իբրեւ ասր՝ զինչ եւ իցէ ազգ, իբրեւ ներկանի՝ զառաջինն գոյնն կո-րուսանէ եւ այլ գոյն առնու, նոյնպէս եւ հաւատացեալք։ “Ներել, ասէ, միմեանց”. եւ ցոյց զարժանն։ Ներես-ցես դու նմա, ասէ, եւ նա քեզ։ Որպէս եւ 'ի գաղատա-ցւոց թղթին, “Զմիմեանց բեռն բարձէք”։ Այլ գոհա-ցող լինիջիք, ասէ։ Ամենայն ուրեք զայս խնդրէ, քան-զի այս է գլուխ ամենայն բարութեանց։

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այսուհետեւ գոհացողք լիցուք ամենայնի զինչ 'ի վե-րայ գայցէ. քանզի այն է գոհութիւն։ Այլ յորժամ 'ի բարւոք ոք իցէ եւ գոհանայցէ, այն չէ ինչ մեծ. յայն իւրովի իսկ ձգեն իրքն։ Այլ յորժամ 'ի վշտի իցեմք եւ գոհանայցեմք, այն է զարմանալի։ Յայնժամ 'ի նմին վիշտսն այլք հայհոյիցեն եւ բամբասիցեն եւ մեք գոհա-նայցեմք, տես որչափ առաքինութիւն է. նախ զԱծ ուրախ առնես. երկրորդ անգամ զԹշնամին յամօթ. երրորդ անգամ զի եւ վշտացն իսկ չզգաս։ Իսկ եւ իսկ իբրեւ դու գոհանայցես, եւ Ած զչարիսն բառնայ, եւ սատանայ հե-ռանայ. ապա եթէ հայհոյեսցես, նա զոր ինչ կամի վճ-ճարէ. եւ Ած որ հայհոյեցաւն, 'ի ձեռաց թողու եւ վիշտն եւս քան զեւս սաստկանայ։ Իսկ եթէ գոհանայցես, նա ինչ չօգտիցի եւ 'ի բաց հեռանայ, եւ Ած պատուեալ փո-խարէն յաճախ պատուիցէ։ Այլ չէ հնար մարդոյ որ 'ի վիշտսն գոհանայ եթէ զգայցէ վշտացն. քանզի բերկրին միտքն ընդ ուղղութիւնսն եւ զուարճանայ խորհուրդքն

իւրով գոհութեամբքն, և զուարճացելոցն չէ մարթ եթէ տրտմիցի. իսկ զմիւսն հանդերձ վշտօքն և խիղճն սաստիկ տանջէ։ Իսկ աստ և պսակէ եւս վկայութիւն մըտացն և յայտ յանդիմանն քարոզէ։

Չիք ինչ քան զայն լեզու սուրբ որ 'ի վիշտսն զնա գոհանալ գիտիցէ։ Արդարև չէ ընդհատ 'ի մարտիրոսացն լեզուաց. որպէս նոցայն, նոյնպէս և նա պսակի։ Քանզի և 'ի սորա վերայ յարուցեալ կան դահիճք, ստիպեն ուրանալ յնյ. 'ի վերայ կան հայհոյութեամբն իբրև դահիճս խորհուրդքն, քերեն տրտմութեամբքն, խաւարեցուցանեն տարակուսանօքն։ Եթէ համբերէ ցաւոցն և գոհանայցէ, մարտիրոս և վկայ կատարեալ գտանի, պսակ առնու։ Եթէ մանուկ ուրուք 'ի հիւանդութե իցէ և նա գոհանայցէ զնյ, այդ պսակ է նմա[1]։ Քան զորպիսի տանջանս չիցէ չար, քան զոր քերանս տրտմութիւնն, և չհանիցէ բան հայհոյութեան ընդ բերան. և եթէ մեռանիցի եւս, և զմահն գոհութեամբ ընդունիցի մայրն, եղև դուստր Աբրահամու։ Թէպէտ և ոչ իւրովք ձեռօքն եսպան, այլ զի ընդ պատարագն ուրախ եղև, այնմ զոյգ է, նմին հաւասար. զի չեղև դժկամակ ընդ առնուլ պատարագին։ Դարձեալ և յախտին եթէ չգայցէ զբժժանօք, ընդ մարտիրոսութեան համարի է և այն. քանզի մտօքն պատարագ մատոյց զորդին։ Թէպէտ և չօգնիցէ ինչ այն, այլ պատիրք և խաբկանք են, և բազումք էին որ ստիպէին եթէ օգնէ. և յանձին կալեալ՝ թէ լաւ է մեռեալ տեսանել զորդին, և ոչ կռապաշտութեան առնել։ Որպէս այս 'ի մարտիրոսութեան համար է, եթէ վասն անձին կամ վասն որդւոյ կամ վասն առն կամ վասն ջերմ ուրուք սիրելւոյ առնիցէ, նոյնպէս և միւսն 'ի կռապաշտութիւն. յայտ է թէ մատուցանէր իսկ պատարագ, թէպէտ և լեալ էր մատուցանել, մանաւանդ թէ գործեաց իսկ ըզգործ պատարագի։ Քանզի վասն բժժանացն եթէ հազար ոք ճարտարախօսիցէ յայնցանէ՝ որք այնմ պահակիցեն, և ասիցէ թէ զած կարդամք, և չառնեմք աւելի ինչ, նա քրիստոնեայ է պառաւն և հաւատացեալ, սակայն կռապաշտութեան իրք են։

1 Ցօրինակն պակասէր այդ պսակ է նմա։

Եթէ հաւատացեալ ես՝ կնքեա, զխաչին միայն զնըշան դրոշմեա. զայն միայն գիտեմ զէն, զնոյն դեղ, և այլ ինչ ոչ։ Ասէ սա, եթէ մատուցեալ բժիշկ՝ թողուցու զբժշկութեան դեղս, և յուռութս ասիցէ, զայնպիսին բժիշկ համարիցիմք. և ոչ երբէք, քանզի չուսանեմք ինչ դեղս բժշկութեան. նոյնպէս և ոչ 'ի մուտումն զքրիստոնէութեան ինչ կարգս։ Այլք և 'ի գետոց անուանս՝ դեղ իմն հատանեն, և բազումք և յայլ ինչ իրս յայսպիսիս յանդգնին։ Հաւատոյ կամիմ և վկայութիւն դնեմ յառաջագոյն, եթէ դարձեալ 'ի նմինոք գտանիցի, ոչ խնայեմ. եթէ դեղ հատանել, և եթէ յուռութս յուռթել, և եթէ այլ ինչ վասն նորին արուեստի։

Իսկ զինչ առնեմք, ասեն. եթէ մեռանիցի մանուկն։ Այս եթէ այնու կեցցէ, յայնժամ մեռանի. և եթէ այնպէս մեռանիցի, յայնժամ կեայ։ Դու աւադիկ եթէ տեսանիցես եթէ զբռզիւք գայ, աղօթս առնես՝ եթէ յանկարծ սատակէր, և չհամարիս ինչ օգուտ զկեանսն. և վասն ոգւոյն փրկութեան 'ի տագնապի տեսանես, և չկամիս թէ կեցցէ։ Չլսիցես Քրիստոսի. «Որ կորուսանէ, ասէ, զանձն իւր՝ գտցէ զնա, և որ գտանէ՝ կորուսցէ»։ Հաւատամք բանիցն, եթէ առասպելք թուիցին։ Ասէ սա, եթէ ասէր ոք ցքեզ, թէ տար առ կուռսն և կեայ, առնուիր յանձն։ Ոչ, ասէ։ Ընդէ՞ր։ Զի 'ի կռապաշտութիւն ածիցէր. այն չէ կռապաշտութիւն, այլ դոյզն յուռութք։ Այն իսկ են սատանայական միտք և բանսարկուին մեքենայք, ծածկել զմոլորութիւնն յորժամ կամիցի զսպանող դեղն տալ. քանզի գիտէ թէ ընդ այն չհաւանիս, ընդ միւս ճանապարհն գայ, աղանդեօք և պառաւանց առասպելեօք խաբել. խաչն անարգեալ է, և աղանդիքն պատուականք. Քրիստոս արտաքս ընկեցեալ, և պառաւն մտեալ՝ թուէ առասպելս, և կատարէ զխորհուրդ խաբէութեանն. Ճշմարտութիւնն առ ոտն հարեալ, և մոլորութիւն բանսարկուին մտեալ կաքաւէ։

Ընդէ՞ր, ասեն, ոչ յանդիմանեաց նմ զառ 'ի յայնպիսեացն օգնականութիւն։ Բազում անգամ յանդիմանեաց և չեկն 'ի հաւան, այսուհետև և նա թոյլ տայ զքեզ մոլորութեանն. «Մանկանց զնոսա, ասէ,

զձեզ ՚ի մեղաց անդարձս,,. զայն և ոչ հեթանոսն՝ որոց մեղաց իցեն՝ յանձինս ածել : Որպէս՝ եթէ զօրավարի ուրումն յԱթենս քաղաքի՝ ասեն փիլիսոփոս մի նորին վարդապետ՝ դեղ բժժանաց ըստ անձին արկեալ, անդամոնեաց սատակեալ, հեղձնեաց, կործեցոյց : Յայնչափ ՚ի թշուառութիւն հասուք, մինչ զի և այնմ եւս հաւատալ : Ընդէ՞ր ոչ դու այժմ յարուցանիցէ մեռեալ և բժշկութիւնս կատարիցէ : Այս չաւետ եթէ ընդէր ոչ այնս լինիցի, այլ թէ ընդէ՞ր չէք դու այժմ որ զկեանս աշխարհիս արհամարհիցէ · վարձուք ծառայեսջիք դոյ : Մինչ դեռ ակարութեամբ զգածեալ էր բնութիւն մարդկան, մինչ դեռ հաւատոցն պարտ էր տնկել, եւն և այնպիսիք բազումք · իսկ այժմ չկամի նշանաց կատարել զմեզ, այլ պատրաստ ՚ի մահ գտանել :

Ընդէ՞ր այսչափ զանցաւոր կենաց կարօտագին իցես · զմէ՞ ՚ի հանդերձեալսն չհայիցիս · վասն այսր կենաց և ՚ի կապաշտութիւն եւս յօժարես · վասն այնր և սակաւինչ տրտմութիւն չկամիս ունել յանձին : Յայն սակս իսկ չեն այժմ այնպիսիքն, զի անտարբեր հանդարտեցան մեզ այն կեանք, և վասն այնր չդանդաղիմք և վշտաց եւս համբերել :

Այլ դարձեալ մի՞ւս եւս ծաղր · մանկիք և ածուխ և առեալ պատուացն և անցեալ ՚ի մէջ գետոյն, արդարեւ ծաղր իսկ է և անօթ · անհնար է, ասէ, մանուկ : Ո՞չ չեն ցե՞րբ սատանայական սովորութիւնք չհատանիցին · և արդ չառնիցե՞ն ծաղր զայն հեթանոսքն, չհեզնիցե՞ն : Յորժամ ցնորս ասիցեմք՝ եթէ մեծ է զօրութիւն խաչին, զիա՞րդ հաւանեսցին, յորժամ տեսանիցեն զմեզ այնու կարօտ զոր նոքայն ծաղր առնեն :

Սակս այնորիկ ետ Ած բժիշկս և դեղս : Եթէ նոքա չբժշկիցեն, ասեն, զի՞նչ գործեսցուք, թո՞յլ տայցեմք զի երթիցեն մանուկն : Յո՞ր երթիցէ, ասէ, ասա, հէքն և թշուառական · մինթէ առ դևս երթայցէ և կամ առ նոցա բանսարկու իշխանն · ո՞չ ապաքէն առ Տէր իւր անէր երթայ : Ընդէ՞ր տրտմիս, վասն էր լայցես, զի մեռանես ՚ի սուգ · մինթէ քան զտէրն քո դու քաջ սիրիցես զմանուկդ · ո՞չ ապաքէն նորա ունիս զնա · ընդէ՞ր իցես անշնորհակալ, և զպարգևն առնել քան զպարգևիչն սիրիցես : Այլ տկար եմ, ասէ, և չունիմ ժոյժ, և ապիրատ

այն էին՝ եղբօրն զեղբայրն սպանանել: Նա և զայլն եղբայրասպանութենէ յիշեցից, զԱբեսողոմայ՝ որ զԱ-մնոնն զորդին Դաւթի զանդրանիկն սպան, և Դաւիթ առքայ կարևոր սիրէր զմանուկն. քուրձ զգեցաւ, 'ի մոխ-րոյ վերայ նստաւ, այլ դիւթ չած, և ոչ յուսաթիչս, թէպէտ և էին յայնժամ, և յայտ Սաւուղ առնէ, այլ զԱծ աղաչէր: Նոյնպէս և դու արա, որպէս արդարն ա-րար. զնոյն բանս ասա յորժամ մեռանիցի քո մանուկն, եթէ "Ես առ նա երթալոց եմ, բայց նա առ իս չէ գա-լոց": Այն է փիլիսոփայութեան, նոյն գթոյ խնամոյ. Որչափ և սիրեցես զմանուկն, ոչ այնչափ սիրես՝ որչափ և նայն, զի դեռ երանելին նորաէր էր ընդ մօրն, թէ-պէտ և 'ի շնութենէ էր մանուկն: Գիտէք զի խառն են գութք ծնանելեացն ընդ ծնունդսն, և այնչափ էր ցան-կութիւնն, մինչ զի թէպէտ և ամբաստանելին,ման-կանն որ 'ի շնութենէն էր՝ չէր պարտ կեալ. բայց սա-կայն գոհացաւ զԱծ:

Որպիսի ինչ վիշտս Ռաբեկ վշտացաւ, յորժամ եղ-բայրն սպառնացաւ Յակոբայ. և չտրտմեցոյց զայրն, այլ հրաման ետ այլուր երթալ: Ո՛ մեաւ ած զայն ևս ամենայն կարևոր վիշտս՝ յորժամ 'ի վիշտս համբերի-ցես, և ունիցիս բազում մխիթարութիւն. խորհիջիր, մինթէ 'ի պատերազմի մեռաւ, կամ 'ի հուր այրեցաւ. յորժամ զայլ ևս դժնդակ զմահուն զմտաւ ածիցես, այնու առաւել բաւական մխիթարութիւն, թէ չկրեցաք ինչ այնպիսի չարաչար վիշտս: Նոյնպէս և Պաւղոս մխի-թարէ, թէ "Ոչ ևս արեամբ չափ հակառակ կացէք մեղացն ընդդէմ պատերազմեալք". և դարձեալ՝ թէ "Փորձութիւն 'ի ձեր վերայ չէ եկեալ, բայց մարդկան": Յոր վիշտս և իցեմք, և զմտաւ ածիցեմք զայլոց կարևոր վիշտս, գտանեմք մխիթարութիւն, և լինիցիմք գոհացողք:

Բայց նախ քան զամենայն ինչ գոհացուք յամե-նայնի ցանգ. զի այնպէս և վիշտքն փարատեսցին, և մեք 'ի փառս Այ կեցցուք, և խոստացելոց բարութեանցն հասցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ՃԱՌ ԻՆՆԵՐՈՐԴ

«Զի բանն քի բնակեսցէ 'ի ձեզ առատապէս, ամենայն իմաստութեամբ ուսուցանել և խրատել զմիմեանս սաղմոսիւք և օրհնութեամբք և երգովք հոգևորօք, և շնորհօք օրհնել 'ի սիրտս ձեր զա̄ծ։ Եւ զամենայն ինչ զոր ինչ և գործիցէք բանիւք կամ արդեամբք, զամենայն յանուն տեառն Յիսուսի Քրիստոսի. գոհացող լինիջիք զա̄յ և զՀօրէ նորա»։

Հրամայեաց գոհացող լինել, և զճանապարհն եցոյց որ յառաջագոյն ընդ ձեզ խօսեցայք։ Եւ արդ զինչ ասիցէ. «Բանն, ասէ, քի բնակեսցէ 'ի ձեզ առատապէս»։ Եւ ոչ զայն միայն ճանապարհ, այլ միւս ևս։ Քանզի ես զայն ասացի եթէ զայնմանիկ որք են չարաչար քան զմեր միշտում կրիցեն, պարտ է զմեզ ածել և համբերել և գոհանալ վասն այնպիսի ինչ կարեաց 'ի վերայ ձգելոյ։ Իսկ նա զինչ ասիցէ. «Բանն քի, ասէ, բնակեսցէ 'ի ձեզ առատապէս». այսինքն վարդապետութիւն, կրօնքն, խրատքն, որովք չնայ ինչ համարել զաշխարհիս կեանս և ոչ զասոր բարութիւնս։ Եթէ յայն հայեցիւք, չզանգիտեսցուք 'ի դժուարին ինչ իրաց։ «Բնակեսցէ 'ի ձեզ առատապէս». ոչ վայրապար ինչ, այլ բազում առաւելութեամբ։

Լուարուք որ աշխարհականքդ էք, և կնոջ և որդւոց հոգայցէք, զիարդ և զձեզ առաւել յորդորէ 'ի գրոց ընթերցուած. և ոչ վայրապար ինչ կամ թոյլ, այլ փութով բազում։ Զի որ օրինակ մեծատունն վասն ընչիցն միտս և պատժոց յանձին ունի համբերել, նոյնպէս որ մեծատունն 'ի կրօնս փիլիսոփայութեանն կամիցի լինել, ոչ միայն աղքատութեանն, այլ ամենայն վշտաց զիւրաւ տանել պարտի, և ևս դիւրագոյն քան զմիւսն. Զի անդ զբաւ լինել միտասուն՝ հարկ է մեծութեանն նուաղել, և թէ բազում անգամ և զնոյն կրիցէ՝ չկարէ համբերել. իսկ աստ ոչ այնպիսի ինչ, քանզի և ծախսն ինչ ոչ առաջի խաղհարկն յարժամ համ-

բերել պարտ իցէ անհաճոյից[1], այլ կամ միայն համա-
պաշորդք ։ Նա տես զիմաստութիւն զերանելոյն. չա-
սաց լոկ եթէ բանն ա̃յ եղիցի ՚ի ձեզ, այլ թէ բնակես-
ցէ, և առատապէս բնակեսցէ ։

«Ամենայն իմաստութեամբ ուսուցանել և խրատել զմիմեանս յամենայնի»։ Զառաքինութիւնն իմաստութիւն կոչէ. նա և խոնարհութիւնն իմաստութիւն է, և ողորմածութիւնն և այլ ինչ նոյնպիսիքն իմաստութիւն են. որպէս և սոցին հակառակքն անմտութիւն. քանզի և չողորմածութիւնն յանմտութենէ է ։ Ուստի ընդ բազում տեղիս իսկ զամենայն մեղս անմտութիւն կոչէ. «Ասաց, ասէ, անմիտն ՚ի սրտի իւրում եթէ չիք ա̃ծ». և գործեալ եթէ «Նեխեցան և փտեցան վէրք իմ յերեսաց անզգամութեան իմոյ»։ Զինչ քան զայն անմտագոյն կայցէ, զի ինքն աւելի հանդերձս ազանիցի, և զեղբարս մերկս տեսանիցէ և անփոյթ առնիցէ. և զշունն բուծանիցէ, և զպատկերն ա̃յ անտես ՚ի սովի առնիցէ. և այն զի գիտիցէ ևս թէ չեն ինչ իրք մարդկօրէնք. և իւրու յանմահս համարեալ է ՚ի նոսա ։ Որպէս զի չիք ինչ իմաստնագոյն, քան որ զառաքինութեանն ուղղութիւն ցուցանել ։ Տես զկարգ, ասէ, եթէ իմաստունն է որ բաշխիցէ զինչս. ողորմածն և մարդասէր ՚ի միտ առնու զընչիցն պէտս՝ եթէ չեն իմիք արժանի. և յիւր մարմինն չէ պարտ խնայել, թող եթէ յինչս ։ Վասն այնորիկ և զփառսն իսկ արհամարհէ, և ճանաչէ զմարդկան և զա̃յ իրս. քանզի գիտութիւն ա̃ծեղէն իրաց իմաստութիւն և զգաստութիւն են ։ Ապա ուրեմն գիտէ եթէ ո՛ր ա̃ծեղէնն է և ո՛ր մարդկօրէնն, և յորմէ խորշել պարտ է և զո՛ր առնել. և գիտէ գոհանալ զա̃յ յամենայնի ։ Նա չհամարի ինչ եթէ իցեն կեանք աշխարհիս. վասն այնորիկ ոչ ընդ բարիս խնդայ և ոչ ընդ չարիս տրտմի ։

Ո՛ի միմար այլում վարդապետի, զի ունիս զպատգամսն ա̃յ. և չիք ոք որ զքեզ այնպէս ուսուցանիցէ. զի այլ վարդապետն բազում ինչ և վասն մնապարծութեան, վասն չարակնութեան և առնախանձու չուսուցանէ ։ Լուրուք աղաչեմ ամենայն աշխարհականք, և ստացարուք զգիրս՝ դեղս և բժշկարանս ոգւոց. թէ և զայլ ինչ չկա-

1 Օրինակին անհանճարիցն. եդաւ ըստ յունին ։

միցիք, զմեծայ զնոր կտակարանսն, զառաքելսն, զպղպակ-քըս և զաւետարանն զհանապազորդ վարդապետսն ։ Եթէ տրտմութիւն ինչ հասանիցէ, իբրև 'ի բժշկարանս դեղոց անդր հայիցիս և առնուցուս անտի մխիթարութիւն կարեացն, եթէ վնաս և եթէ մահ և եթէ 'ի տանց անկանել իցէ ։ Մանաւանդ թէ ոչ միայն հայել, այլ և 'ի ներսն առնուլ և 'ի մտի ունել. քանզի ամենայն չարեացն պատճառք՝ չգիտելոյն զգիրս է ։ Առանց զինու 'ի պատերազմ երթամք, և զիարդ ակն ունիմք ապրելոյ. լաւ իցէ նոքօք, և ոչ առանց նոցա կեալ ։

Մի զամենայն ինչ 'ի մեզ ապաստան առնէք. թէպէտ և ոչխարք էք, ոչ եթէ անասունք, այլ խօսունք. և ձեզ յաճախ պատուիրէ Պաւղոս ։ Ոչ ուսանել կամիցի, ոչ ցանգ 'ի դպրոցն դեգերիցի առ ժամանակս ինչ. ապա թէ ոչ՝ բնաւ իսկ չուսանի ։ Եթէ հանապազ ուսանիս, ոչ երբէք ուսանիցիս ։ Եթէ ոչ այնպէս կայցես որպէս թէ ուսեալ և այլ ուսանել կամիցիս. ապա թէ ոչ՝ և ոչ երբէք իսկ առնուցուս 'ի միտ ։ Այլ այնպէս ջանալ լինել եթէ քո 'ի քեզ համբարեալ եղեալ իցէ և զընկերն ուսուցանիցես ։ Յայլ արուեստսն ո՞չ ապաքէն յայտնի ինչ ժամանակս կան յուսմանն և ապա ուսեալք գտանին. եթէ հանապազ ուսանիցիք, այն չուսանելոյ նշանակ է. Հրէից նախատինք են այն. “Ընկալեալքդ յորովայնէ, ասէ, և խրատեալքդ մինչև ցծերութիւն”։ Եթէ հանապազ ակն ունիցիք, և չգայք երբէք յառաջ ։ Մարթ էր ոմանց ուսանել և քան զայլս որ ուսանելոցն էին յառաջադէմ գտանել. զկէսն 'ի մեզ ապաստան առնել, և կիսոյն և ձեզ ընդ մեզ օգնական լինել ։

Աղէ ասա. որ առ դպրապետսն երթայցեն, և եթէ որ վաղուցն մտեալ են զայլսն ուսուցանիցեն, ո՞չ ապաքէն չառնեն կարի աշխատ զվարդապետսն ։ Յե՞րբ վասն վաղուցն ևեթ խօսիցիմք ընդ ձեզ ։ Առաքելովքն չէր այնպէս, այլ ատէպ անդամանէլին զվաղուցն ուսելովք, և զուսեալսն այլոց վարդապետս կացուցանէին. և՛ այնպէս կարացին ընդ ամենայն աշխարհ՝ շրջել, եթէ զմեզ 'ի միում վայրի կալցիցէք ։ Որչափ ինչ վարդապետութիւն կարօտ ոչ կարծիցէք զեղբարսն ձեր որ 'ի շէնսն և յագարակսն իցեն, նա և զվարդապետսն նոցա. այլ զայք

բևեռեալ ունիք զիս առ ձեզ: Ի՛ և այդ բարւոք. զի յառաջ քան զգլխոյն ողջանալ՝ այլոց անդամոցն դարման տանել աւելորդ է: Դուք աւադիկ զամենայն ինչ ապաստան առնէք 'ի մեզ: Զեզ պարտ էր զամենայն ինչ 'ի մէնջ ուսանել, և կանանց և որդւոց ձերոց 'ի ձէնջ. դուք ահաւադիկ զամենայն 'ի մեզ մթերէք: Վասն այնորիկ բազում աշխատութիւն է:

16 "Ուսուցանել և խրատել, ասէ, զմիմեանս սաղմոսիւք, օրհնութեամբ, երգովք հոգևորօք,,: Տես և զանտաղտուկն Պաւղոսի. քանզի ընթերցուածքն աշխատութիւն և ծանրութիւն են, ոչ 'ի գրոյն պատմութիւ ստիպէ, այլ 'ի սաղմոսն, զի միանգամայն և ուրախ ես առնիցես զոգիդ օրհնութեամբքն և գոհանալով առնիցես զաշխատութիւնն: Օրհնութեամբք, ասէ, և հոգևոր երգովք: Նա աւանիկ սատանայականն միայն երգոյ և կաքաւուց ցանկացեալ են որդիք ձեր, և իբրև զխոհակերան և զմնավաճառան և զկաքաւիչսն: Սաղմոս և ոչ ոք գիտէ, այլ և ամօթոյ զիրսն համարին և ծաղր և կատականաց. և անտի իսկ ծնանին ամենայն չարիք: Որպէս ինչ երկիրն իցէ ուր տունկն կայցէ, նոյնպիսի ինչ և զպտուղն բերէ. եթէ յաւազոջ և յաղտաղտուկ վայրի՝ այնպիսի ինչ, և եթէ 'ի քաղցր և 'ի պարարտ երկրի՝ նոյնպիսի ինչ. նոյնպէս իբրև զաղբիւր ինչ են վարդապետութիւնքն:

Ուստ երգել զսաղմոսն որք զգաստութեամբն և խրատու լի են. նախ վասն ցածութեան, մանաւանդ իսկ և իսկ վասն առ 'ի ընդ չարսն չհաղորդելոյ, որ անդէն 'ի սկզբան գրոցն կայ: Նմին իրի և անտի սկիզբն արարեալ մարգարէին և ասէ. "Երանեալ է այր որ ոչ գնաց 'ի խորհուրդս ամբարշտաց,,. և դարձեալ եթէ "Ոչ նստայց յաթոռ նանրութեան,,. և դարձեալ եթէ "Արհամարհեալ է առաջի նորա չարագործն. բայց զերկիւղածս տէր փառաւոր առնէ,,: Նա և ընդ բարիս կցորդ լինելոյ յաճախ գտանիցես անդ, և վասն զորկոր չարձակելոյ, և վասն ձեռն ունելոյ, վասն անառակութեան զհետ չերթալոյ, վասն չագահելոյ, և զի չէն ինչք և ոչ փառք և ոչ այլ ինչ նոյնպիսիք: Յորժամ այսպիսի իրօք 'ի մանկութենէ կրթեսցես զնա, առ սակաւ սակաւ և 'ի բարձրագոյնսն ածիցես: Ի սաղմոսն ամե-

նալ. քանզի յորժամ զորդին կոչիցես՝ զՀայր կոչեցեր. և յորժամ զորդւոյն գոհանայցես՝ զնմանէ գոհացար։ Նա զայս մի քանիւք եւեթ ուսանել, այլ և արդեամբք կատարել։

Զինչ իմչ զուգական անուանն. նոյն իսկ է սքանչելի ամենայն ուրեք, զոր և աստ իսկ եթէ "Իւղ անուշութեան հեղեալ է անուն քո„։ Որ մերձենայ, վաղվաղակի ընդ հոտոյն անուշութեան. "Զկայրէ որ ասէր, ասէ, տէր Յիսուս, եթէ ոչ 'ի հոգին սուրբ„։ Այնպիսի մեծամեծս գործէ անունն։ Եթէ ասիցես զանուն Հօր և որդւոյ և Հոգւոյն սրբոյ հաւատովք, զամենայն վճարես։ Տես զինչ գործս գործեցեր։ Զարդ իսկ հաստատեցեր, և՛ զամենայն և զայն ես ինչ արարեր ատեանամբն։ Նա և յորժամ 'ի ջրան յիշիցի, ահագին է. վասն այնորիկ սատանայ ամենայն 'ի ներքս զանուն հրեշտակաց, քանզի նախանձեցաւ ընդ պատիւն, և անտի զգեցան ես յաւսաւթս։

Այլ դու մի զհրեշտակի և մի զհրեշտակապետի և մի զքերովբէից զանուն յանձն առնուցուս կոչել. քանզի և ոչ այն զօրութիւնք իսկ ախորժեն զայն, այլ և սակաւ ևս և 'ի բաց մերժեն յորժամ տեսանիցեն անարգեալ զանէր իւրեանց։ Նա, ասէ, պատուեցի զքեզ և ասացի՝ եթէ զիս կոչեա, և դու զիս անարգես։ Եթէ զայն յաւսոթս ասիցես հաւատովք, և դզաւս և զդեւս հալածես. և եթէ չհալածիցես զդաւս, ոչ եթէ առ անուանն ինչ տկարութենէ, այլ վասն իւրեք ինչ օգտի։ Այս մեծութեան քում, ասէ, նոյնպէս և որհնութիւն քո։ Զանուանքն այնուիկ, ասէ, տիեզերք զարձան, բռնութիւնն քակտեցաւ, սատանայ կոխեցաւ, երկինք բացան, և մեք վերստին ծնաք անուամբն։ Եթէ զնա ունիցիմք, մեծապայծառ լինիմք. զի նոյն և մարտիրոս կատարէ և դաւանիչս յորդորէ։ Զնա փոխանակ մեծամեծ պարգեւացն կալցուք յանձին, զի 'ի փառս կեցցուք և հաճոյ լիցուք նմա և արժանաւորք խոստացեալ բարութեանցն նորա գտցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում Հօր, միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՏԱՍՆԵՐՈՐԴ

“ Կանայք, հնազանդ լերուք արանց ձերոց որպէս և հաճոյ է 'ի տէր։ Արք, սիրեցէք զկանայս ձեր, և մի դառնանայք առ նոսա։ Որդիք, հնազանդ լերուք հարց և մարց ձերոց, զի այն է հաճոյ 'ի տէր։ Հարք, մի դկծեցուցանէք զորդիս ձեր, զի մի տրտմեսցին։ Ծառայք, հնազանդ լերուք յամենայնի մարմնաւոր տերանց ձերոց. մի առ աչս ծառայել իբրև մարդահաճոյք, այլ միամտութեամբ սրտիւ երկիւղիւ յայ։ Եւ զամենայն զինչ և առնիցէք, սրտի մտօք գործեսջիք իբրև տեառն և ոչ իբրև մարդկան. գիտասջիք զի 'ի տեառնէ առնուցուք զհատուցումն ժառանգութեան. քանզի տեառն Քրիստոսի ծառայէք։ Իսկ որ մեղանչէն, ընկալցին զմեղանչելոյն. զի ոչ գոյ աչառութիւն. Տեարք, զիրաւունս և զհաւասարութիւն պահեսջիք առ ծառայսն. գիտասջիք զի և ձեր տէր գոյ յերկինս ”։

Ընդէր ոչ յամենայն 'ի թղթի զայս պատուիրէ, այլ աստ և յԵփեսացւոց և 'ի Տիմոթէոյ և 'ի Տիտոսի։ Զի 'ի դէպ է եթէ յայս քաղաքս կարի իմն էր անարգութիւն և 'ի միմեանց ապստամբութիւն. և կամ եթէ զայլ ուղղութիւնս առաքեալ էր, և զայս ևս պարտ է լսել։ Եւ աստ իմն յանձնէ. քանզի բաւական իմն չքնաղանակս այս թուղթ ունի քան զԵփեսացւոցն, նա և յայլում իսկ իրս։ Կամ թէ յորժամ ընդ այլս խաղաղութիւն ունիցին, ապա պարտ է և բարեձևագոյն կրօնից ինչ ուսանել. և եթէ յայնմանէ նուաղագոյն իցեն, չէր ինչ 'ի դէպ և զայլոցն ևս ձգել։ Կամ թէ միաբանութեանցն 'ի փորձութեանցն աւելորդ էր զայսպիսեաց ինչ լսել։ Բայց ինձ այսպէս թուի թէ հաստատագոյն էր այնու հետև և եկեղեցի, և յետոյ յետ այլոց կրթելիցն զայն խօսի։

“ Կանայք, ասէ, հնազանդ լերուք արանց ձերոց որպէս և հաճոյ է 'ի տէր ”։ Փոխանակ ասելոյ եթէ հնազանդ լերուք վասն այ, որպէս զի այն զձեզ զարդարէ,

և ոչ զնոսա։ Ոչ զտէրունական ինչ նոցա հնազանդութիւնն, և ոչ միայն զբնութեանն, այլ և վասն այն ասեմ։ «Այրք, սիրեցէք զկանայս ձեր և մի դառնանայք առ նոսա»։ Տես զիարդ դարձեալ զպատշաճ խրատն խրատեաց։ Որպէս անդ զերկիւղն և զսէրն դնէ, նոյնպէս և աստ զայս։ Մարթի սիրել և դառնանալ։ Արդ զոր ասէն՝ այսպիսի ինչ է. մի կագիք, մի կռուիք. և արդարև չիք իսկ ինչ դառնագոյն քան զկռիւն որ ընդ այր և ընդ կին լինիցի։ Զի յորժամ ընդ սիրելի երեսս կագ լինիցի, այն դառնագոյն կռիւ է քան զամենայն կռիւս, և ցուցանէ եթէ առ բազում դառնութեան լինի այն, որպէս թէ ընդ անդամս ոք ընդ իւր մարտնչիցի։ Ասէ, սիրել արանցն է, և հնազանդ լինել կանանցն. եթէ զիւրաքանչիւր կարգն պահիցեն՝ հաստատուն կան իրքն, զի ՚ի սիրելոյ և կինն խնամոտ լինի, և ՚ի հնազանդութենէն և այրն հանդարտագոյն։ Նա տես իսկ զի և բնութեամբն այնպէս կազմեալ է, միումն սիրել և միւսումն հնազանդ լինել։ Յորժամ իշխանն զայն որում իշխիցէն՝ սիրիցէ, ամենայն ինչ հաստատուն կայ. զի ոչ այնպէս յիշխանաւորէն՝ որպէս յիշխանէն պահանջի սէրն. ՚ի նմանէ հնազանդութիւն, և ՚ի սմանէ սէր։ Զի կնոջն գեղեցիկ լինել, և առն գեղոյն ցանկանալ ոչ այլ ինչ յայտ առնէ, եթէ ոչ վասն սիրոյ այնպէս արարաւ։

Նաև արդ մի վասն զի կինն հնազանդութեան կողմն ունի, դու ձոխանայցես ինչ կարի. և մի վասն զի այրն սիրէ, դու հպարտանայցես։ Մի առնն սէր զկինն ամպարհաւանեցուսցէ, և մի կնոջն հնազանդութ̃ի զայրն հպարտացուսցէ։ Վասն այնորիկ հնազանդեցոյց քեզ զկինն, զի առաւել սիրեսցես. և յայն սակս արար ըզքեզ սիրուն, ով կին դու, զի դիւրաւ տանիցիս հնազանդութեանն։ Մի երկնչիր ՚ի հնազանդութենէն, զի սիրելոյ հնազանդութեան չկայ ինչ դժուարութիւն. և մի դու կասկածիցես ինչ յորժամ սիրիցես, քանզի ընդ հնազանդութեամբ ունիս զոր սիրեսն։ Նաև չէ հնար եթէ այլ ազգ ինչ լինէր կապ և զօդ։ Սկիզբն ՚ի բնութեան իսկ հարկէ ունիս, կալ և սիրոյն զկապն և զօդ. զի տկարագունին զհանգստեան կողմն եդ, անհոգ եթող։ «Որդիք, ասէ, հնազանդ լերուք հարց և մարց ձե-

րոց յաշխարհի, զի այն է հաճոյ 'ի տէր,,: Դարձեալ զի տէրն եդ, փոխանակ ասելոյ եթէ վասն տեառն, և օրէնս կարգեաց հնազանդութեան, և պատկառեցուցանէ և զարծուցանէ. զի այն է, ասէ, հաճոյ 'ի տէր: Տես զի ոչ միայն 'ի բնութենէն, այլ և յայս հաճոյիցն կամի առնել մեզ զայն, զի վարձս առնուցումք:

“Հարք, ասէ, մի զկծեցուցանէք զորդիս ձեր, զի մի տրտմեսցին,,: Հաւասարիկ և աստ հնազանդութի կայ և գութ: Զասաց եթէ սիրեսջիք զորդիս ձեր, քանզի այն աւելորդ է, և բնութիւնն իսկ 'ի հարկէ պահանջէ. այլ որ ինչ պիտոյն էր ուղղել՝ ուղղեաց, և զի և գութն յայնժամ սաստիկ երևի, և քանզի հնազանդութիւնն մեծ է: Զածէ ուրեք օրինակ զգթոյ յառնէ և 'ի կնոջէ. այլ ուստի. լուր մարգարէին. “Որպէս գթայ, ասէ, հայր յորդիս իւր, գթացաւ տէր յերկիւղածս իւր,,. դարձեալ և Քրիստոս ասէ. “Ով իցէ 'ի ձէնջ հայր, եթէ խնդրեսցէ որդի իւր հաց՝ միթէ քար տացէ նմա; և եթէ ձուկն խնդրեսցէ՝ միթէ օձ կարկառուցու,,: “Հարք, ասէ, մի զկծեցուցանէք զորդիս ձեր, զի մի տրտմեսցին,,: Զոր գիտէրն եթէ առաւել զնոսա մերձեցուցանէր՝ զայն եդ և խնամով ասաց և պատուէր ետ; և չդնէ ուրեք զնոսա առաջի, այլ զծնողսն կոչեաց դառնալ յաղթին. այսինքն թէ մի եւս յառաւել հակառակութիւնս գրգռեսջիք զնոսա, այլ է ուրեք զի և ներել պարտիք.

Նաև և յերրորդ իշխանութիւնն եկն. “Ծառայք, ասէ, հնազանդ լերուք յաշխարհի մարմնաւոր տերանց ձերոց,,: Դոյզ և անդ գութ ինչ, այլ ոչ եթէ բնութեան իցէ որպէս և 'ի վերնումն, այլ համբոյր և առաքինութի է և յիշխանութենէն իսկ և 'ի գործոյն: Այլ քանզի յայնժամ գթոյ ինչ աղերս չկայ 'ի մէջի, և 'ի հնազանդութեանն յաճախագոյն, զայնու զայս ասէ. և կամի թէ զոր առաքինիքն 'ի բնութենէն ունէին, զնոյն և սոքա 'ի հնազանդութենէն ունիցին: Որպէս զի ոչ վասն տերանց ընդ ծառայսն միայն խօսի, այլ և վասն նոցա, զի սիրունս զանձինս առնիցեն տերանցն: Այլ չդնէ զայս յայտնի. ապա թէ ոչ՝ և 'ի յանդգնութիւն իսկ ածէր զնոսա: “Ծառայք, ասէ, հնազանդ լերուք յաշխարհի մարմնաւոր տերանց ձերոց,,: Այլ [illegible] [illegible]

ողբոց կայր յաղօթս, և վասն հասարակաց երախտեաց զոհանայր:

Գիտեմ ես այր մի սուրբ, որ այսպէս եւեթ կայր յաղօթս, և այլ ինչ աւելի քան զայս բանս չասէր, այլ թէ Գոհանամ զքէն վասն ամենայն բարերարութեանց քոց, զորս յօրէ յառաջնմէ մինչև ցայսօր արարեր ընդ անարժանս զանձինս արարածս, զորոց գիտեմք. գոհանամք և զորոց ոչ գիտեմք. զյայտնեաց և զանյայտնեաց, որ արդեամբք ինչ իցեն և որ բանիւք, զկամաւն և զակամայ, զամենայն իսկ որ 'ի մեզ անարժանս գործեցան, վասն նեղութեանն և վասն հանգստեանց, վասն գեհենին և վասն տանջանաց և վասն արքայութեանն երկնից: Աղաչեմ զքեզ պահել զոգիս մեր սուրբս, յստակս և անխիղճ կատարումն ունել արժանի քում մարդասիրութեանդ. որ սիրեցեր զմեզ, մինչև զորդիդ քո միածին տալ վասն մեր, արժանի արա լինել արժանաւորս սիրոյ քում: Տուր մեզ զիմաստութիւն բանիւդ քով. անկեալ 'ի մեզ զերկիւղ, միածին որդիդ ա͞յ Քրիստոս. լցո զմեզ զօրութեամբ առ 'ի քէն: Որ զմիածինդ ետուր վասն մեր, և զհոգիդ սուրբ առաքեցեր 'ի թողութիւն մեղաց մերոց, եթէ կամաւ ինչ և ակամայ մեղաք, ներեա և թող և մի համարիր: Յիշեա զայնոսիկ որք կոչեցին զանուն քո ճշմարտութեամբ. յիշեա զայնոսիկ որ բարի և կամ այլ ինչ խորհիցեն զմէնջ. քանզի ամենեքեան մարդիկ եմք:

Նա ապա իբրև մխեալ յաղօթս հաստատեցելոյն կամէր յայս բանս հանգուցանել, իբրև կէտ ինն և կայ և զօդ ընդ ամենեցուն զաղօթսն մատուցանել առնէր: Քանզի բազում ինչ ակամայ բարութիւնս առնէ մեզ ա͞ծ, զոր և բնաւ իսկ չգիտեմք: Յորժամ հակառակս ինչ կայցեմք յաղօթս, և նա զնորին հակառակսն առնիցէ, յայտ է թէ զոր չգիտեմք զբարիսն՝ զայն առնէ:

“Աղօթս արասջիք, ասէ, միանգամայն և վասն մեր„: Տես զխոնարհութիւնն. ընդ նոցա համարի զանձն: “Զի ա͞ծ, ասէ, բացցէ մեզ դուռն բանին խօսել զխորհուրդն Քրիստոսի„: Զմուտն, ասէ, և զհամարձակութիւն: Բարէ, նահատակն որ յայնչափ տագնապի կայր, չասաց՝ զի ապրեցայց 'ի կապանացս. այլ 'ի կապանս էր և աղաչէր՝ և վասն մեծամեծ իրաց աղաչէր,

չհամարձակիր լաւ քան զամենայն ունել։ Զի ոչ եթէ զար-քունի ինչ զարդ տամ քեզ, այլ զԹագաւորն իսկ զըլ-խոյլն ընդ անձն արկանեմ։

Եւ զիարդ, ասեն, մարթիցի զՔրիստոս ընդ անձն արկանել։ Լուր նախ իսկ Պաւղոսի. «Որ 'միանգամ, ասէ, 'ի Քրիստոս մկրտեցարուք, զՔրիստոս էք զգե-ցեալ»։ Լուր և զխրատն առաքելական. «Զմարմնոյ, ասէ, խնամ մի առնիջք 'ի ցանկութիւնս»։ Եթէ ըզ-Քրիստոս զգենուցուս, և դևք երկնչին. ապա եթէ զոսկին, և մարդիկ ևս ծաղր առնիցեն։ Եթէ զՔրիս-տոս զգենուցուս, և ընտիրք ևս ակնածիցեն. և եթէ զոսկին, և անարգք ևս ատիցեն և զերեսս դարձուցա-նիցեն։ Կամիցիս բարւոք և գեղեցիկ երևել. բաւական համարեաց զարարչին ստեղծուածս. զի՞ ոսկին վերադիր կապես, որպէս թէ ուղղիցես ինչ զԱյ ստեղծուածն։ Կամիս գեղեցիկ երևել. զգեցիր զողորմութիւն, զգե-ցիր զմարդասիրութիւն, զգեցիր զցածութիւն և զան-հպարտութիւն։ Այս ամենայն առաւել պատուական է քան զոսկի. սա և զգեղեցիկն ևս գեղեցկագոյն առ-նէ և զտգեղն գեղեցիկ գործէ։ Յորժամ զԹով ոք ընդ երեսս նայիցի, ըստ սիրոյն բերէ զվՃիռն. իսկ զչարա-բարոյն Թէպէտ և բարի իցէ, չկարէ ոք բարի ասել, քանզի զայրացեալ են միտքն և չածէ ուղիղ զվՃիռն։

Զարդարեցաւ երբեմն եգիպտացին, զարդարեցաւ և Յովսէփ. իսկ արդ ո՞վ արդեօք գեղեցկագոյն էր։ Ոչ ասեմ մինչ դեռ յարքունիսն էր, այլ մինչ և 'ի բան-տին մերկ էր՝ զգեցեալ էր զպատուութեան հանդերձ. զգեցեալ էր և կին, այլ քան զմերկ ևս ծանակագոյն էր, քանզի չունէր զպատուութեան հանդերձ։ Յորժամ կարի իսկ զարդարեսցիս, ով կին դու, յայնժամ տգե-ղագոյն քան զմերկն գտանիս. քանզի մերկացար զբա-րեաց մարդն։ Էր երբեմն Ադամ մերկ. այլ յորժամ զգե-ցաւն, յայնժամ եղև տգեղագոյն. և մինչ մերկն էր, զարդարեալ էր զարդու փառացն Այ. և իբրև զմեղացն հանդերձ զգեցաւ, յայնժամ եղև տգեղ։ Եւ դու յոր-ժամ զզարդասիրութե̄ հանդերձն զգենուցուս, յայն-ժամ երևիս տգեղագոյն։ Եւ զի չկարեն պաՃուՃանք ցուցանել գեղեցիկ, այլ մարթի և զգեցելոյն քան ըզ-մերկն ևս ծանակագոյն երևել, եթէ զՃնարաւորի և

զվարձակի հանդերձ զգեստուք՝ մինչ չէ՞ ծանակութի՞ւն։ Թէպէտ և ոսկեհուռ հանդերձքն իցեն, այլ վասն այնորիկ ծանակութիւն է զի ոսկեհուռն է։ Պաճուճանք վարձականացն վայելեն և գուսանաց և կատակաց, կաքաւչացն և որ նոցունց նմանել կամիցին, զազրանանատիցն 'ի վսեր ենկելոց։

Մինչ հաւատացելոյ այժ հանդերձ տուեալ է ա̄յ, նմանին իսկ զկնովլին միածնին որդին ա̄յ. որպէս և ասէ իսկ Պաւղոս թէ "Որ 'ի Քրիստոսն մկրտեցարուք, զՔրիստոս էք զգեցեալ"։ Արդ ասա, եթէ զպարգևորի ոք հանդերձ զգեցուցանէր քեզ, և դու 'ի վերայ այնր զմարդաղաց հանդերձ ագանէիր, ո՞չ ապաքէն հանդերձ խայտառակութեան և 'ի տանջանս եւս մատնէիր։ Ո՛ երկնից տէրն և դ՛հրեշտակաց զգեցար, և տակաւին ընդ երկիր գաս։ Ո՛ այս ասացի զի ցուցից թէ և աւանձինն չար է զարդասիրութիւնն. Թէպէտ և այլ ինչ անարի չծնանէր, լաւ էր չանկանիլ յայնպիսի տագնապ. քանզի 'ի մնապարծութիւն և 'ի հպարտութիւն կրթէ։ Իսկ նա աւանիկ բազում ինչ և այլ ծնանի 'ի պաճուճանացն, կործիք չարք, ծախք ընդվայր, հայհոյութիւնք, ապահութիւնք, և [1] բազում ցանկութեանց պատճառք։

Ասէ ասա զի զարդարիցիս. մինչ ո՞ւմ կամիցիս հաճոյ լինել։ Եթէ այնպէս իցէ, 'ի տան զարդարեաց։ Նաւանորիկ հակառակ իմն նմին լինի։ Եթէ 'ի տան առն հաճոյ կամիցիս լինել, այլոց մի լինիցիս հաճոյ. իսկ եթէ այլոց հաճոյ լինիցիս, քումն հաճոյ չկարես լինել։ Արդ ուրեմն զամենայն զարդ 'ի բաց պարտ է մերկանալ յաժամ 'ի հրապարակ երթիցէ կինն կամ յեկեղեցի գայցէ։ Զի այլ ազգ եւս, մի այնու հաճոյ լինիցիս առնն, որով և բոզքն հաճոյ լինիցին. այլ այնու՝ որով և կանայքն ազատք և ցածունք։ Ոչ ընդհատ իցէ այնպիսի կին 'ի բոզիցն. զի մին զարդու ևեթ միայն գնէ, զի զեղեցկութեամբ մարմնոյ կարիցէ պատրել զզանձկացողն. և միւսոյն զնոյն կերպարանս առեալ նմին հակիցէ, որ տան վերակացու է և որդւոց հաղորդ և այլ եւս ամենայն կենաց կցորդ։ Դուստր ունիցիս, զգոյշ լեր գուցէ և նա մխեսցի 'ի նոյն բծկանաւորութիւն. քանզի սիրէ

1 Դանկաւանէր յարմանակին ու բազում ցանկութեանց. յաւելեալ 'ի յաւնեն։

ըստ քում զնացելոյն զգայնոյն փոփոխել և նմանել մայրենի բարոյեցդ ։ Եր զզաստութեան օրինակ դատեցին . այնպէս զորդս զարդարեաց, և տես զկարգ վաղվաղակի զայս արհամարհեցեր ։ Արդ՝ [illegible]արեւ իսկ այն զարդարէ, և այս անզարդութիւն ։ Ծաղրական է ՚ի խրատ որ ինչ ասացաւս . և եթէ չիցէ բաւական, ՚ի դէպ ժամանակի հաստատեսցուք զպարտս ։ Այլ ամէն որ զզարդն տարար և ետ մեզ զզարդ հոգւոյ, զարդարեսցէ զմեզ, և իւրովք փառաւօքն զգեցուսցէ զմեզ ։ Ի գործովք բարեօք պայծառացեալ ՚ի փառս կեցցուք, և օրհնութիւն հանցուք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

## ՃԱՌ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

«Իմաստութեամբն գնասջիք առ արտաքինսն, և զժամանակն ՚ի բաց գնեսջիք . և բանն ձեր յամենայն ժամ լի շնորհօք իբրև աղիւ համեմեալ, գիտել թէ որպէս արժան իցէ ձեզ իւրաքանչիւր ումեք տալ պատասխանի»։

Զոր ինչ Քրիստոս ասաց աշակերտացն, զնոյն այժմ և Պաւղոս խրատէ ։ Զի՞նչ ասաց Քրիստոս . «Ահաւասիկ ես առաքեմ զձեզ իբրև զոչխարս ՚ի մէջ գայլոց . եղերուք այսուհետև խորագէտք իբրև զօձս և միամիտք իբրև զաղաւնիս»։ Այն իսկ է թէ զգոյշ և աշխոյժ լերուք, և մի՛ իւիք տայցէք զանձանց պատճառս ։ Վասն այնորիկ և առընթեր կայ «ընդ արտաքինսն» . զի՛ ուսանիցիմք թէ առ մեր անդամս ոչ ինչ այնչափ ըզգուշութեան պէտք են որպէս առ արտաքինսն ։ Զի ուր եղբարք իցեն, բազում ինչ և ներելոց և [illegible] և սիրոյ տեղի կայ ՚ի միջի . պարտ է և անդ զգուշանալ, բայց առաւել առ արտաքինսն . քանզի չէ ընդ մի համար ՚ի մէջ թշնամեաց և պատերազմողաց և բարեկամաց կեցեալ ։

Իբրև երկեցոյց, տես զկարգ ապա և խրախոյս տայ . «Զժամանակն, ասէ, ՚ի բաց գնեսջիք» . այսինքն եթէ կարճ է աշխարհիս ժամանակ ։ Զայս ասէ ոչ զի

խորամանկս կամիցի առնել զնոսա կամ կեղծաւորս, քանզի այն ոչ իմաստութեան՝ այլ անմտութեան է. այլ զի՞նչ. որով վնաս ինչ չգործիցի, ասէ, այնու ամենեքին պատճառս ինչ մի տայցէք: Որպէս և առ Հռովմայեցիսն գրէ՝ եթէ "Հատուցէք ամենեցուն զպարտսն, որում զհարկ զհարկն, որում զմաքսն զմաքս և որում զպատիւն զպատիւ": Վասն քարոզութեն միայն, ասէ, հարկանիցես զպատերազմ, և այլ ուստեք ինչ մի առնուցու պատերազմն այս սկիզբն: Զի թէ վասն այլ ինչ իրիք ատիցեն զմեզ, ապա և վարձս ինչ չառնուցումք, և նոքա եւս առաւել չարանան, և համարիցին յիրաւի իսկ պատուհասել զմեզ: Որպէս զհարկսն յորժամ չտայցեմք, և զպատշաճ զպատիւսն չհատուցանիցեմք, և եւս առաւել գրգռեմք. իսկ եթէ խոնարհ լինիցիմք, զնոսա եւս մեղմագոյնս ընդ մեզ գործեմք:

Տեսանիցես զՊաւղոս, ուր չվնասէր ինչ քարոզութեանն զիարդ մորմոքեցուցանէր: Եւ լուր նմին իսկ յորժամ ընդ Ագրիպպայ խօսէր. երանելի ասէ զանձն, "Զի քո առաջի, ասէ, հասանէ ինձ այսօր տալ պատասխանի. մանաւանդ զի գիտակ եւս ես Հրէից կրօնից և խնդրոց": Զի եթէ թշնամանս համարեալ էր դնել իշխանին, ապա զբնաւ իսկ զիրսն ապականէր: Ուր և պետրոսեանց զիարդ հեզութեամբ տային պատասխանի Հրէից. "Հաւանել, ասեն, այ պարտ է առաւել քան մարդկան": Նոյնպէս և իւրեանց անձանց կենաց ակն ոչ ունէին, և թշնամանել և զինչ և կամէին առնել՝ կարէին, այլ վասն այնորիկ իսկ եդին զանձն 'ի մահ, զի մի սնապարծութիւն ինչ կարծեցուցանիցեն. այլ զի քարոզիցեն, և զի համարձակ զամենայն խօսիցին:

"Եւ բանն, ասէ, ձեր յամենայն ժամ լի շնորհօք իբրև աղիւ համեմեալ": Այսինքն մի անխտրութեամբ ինչ շնորհել. քանզի մարթի և այլ ազգ ինչ շնորհել: "Գիտել, ասէ, իւրաքանչիւր ումեք տալ պատասխանի": Զիա՞րդ. զի ոչ մի ազգ պարտ է ընդ ամենեսին խօսել, և ընդ հեթանոսս, ասեմ, և ընդ եղբարս. քանզի յետին անմտութիւն է:

"Այլ որ ինչ զինէն իցէ, ասէ, ցուցցէ ձեզ Տիւքիկոս սիրելի եղբայր և հաւատարիմ պաշտօնեայ և ծա-

ռայակից 'ի տէր,,: Առաքէ քանի խոնարհութիւն է Պաւղոսի. զիարդ ոչ զամենայն ինչ դնէ 'ի թուղթսն, այլ զպիտոյսն և զկարևորս: Եւս զթուղթսն իսկ երկայնել չկամի. ապա զայն որ երթալոցն իցէ՝ մեծարոյ առնէ, զի և նա ունիցի ինչ պատմել. երրորդ անգամ՝ ցուցանէ եթէ զիարդ իցէ ընդ նմա: Քանզի թէ ոչ առ լաւս ունէր, ոչ զայնպիսի ինչ իրս հաւատայր նմա, և զի գրով ևս պարտ է ցուցանել: "Սիրելի, ասէ, եղբայր,,: Եթէ սիրելի իցէ, ապա զամենայն ինչ գիտէ, և չիք ինչ զոր 'ի նմանէ թագուցանիցէ: "Եւ հաւատարիմ պաշտօնեայ և ծառայակից 'ի տէր,,: Եթէ հաւատարիմ է, ապա չստէ. և եթէ ծառայակից իցէ, և փորձութեանցն հաղորդ է. ապա ուրեմն յամենայն կողմանց զհաւատարմութիւնն 'ի մի վայր գումարեաց:

"Զոր առաքեցի, ասէ, դմին իրի,,: Այսու զանձն բազմացուցանէ. եթէ նմին իրի առաքեաց, ապա և երթալոյն պատճառք նոյն եղև. զոր և առ Թեսաղոնիկեցիսն գրէր՝ թէ "Զի ոչ կարացաք ժոյժ ունել, հաճոյ եղև մեզ միայն մնալ յԱթէնս, և առաքեցաք զեղբայրդ մեր զՏիմոթէոս,,: Այս և առ Եփեսացիսն զնոյն առաքէ և վասն նորին իրաց. "Զի գիտացից, ասէ, ինչ վասն ձեր,,: Եւ աստ ասէ. "Զի մխիթարեսցէ զսիրտս ձեր,,: Տես զինչ ասէ. ոչ զի դուք, ասէ, զիմ ինչ ունիցիք, այլ զի ես զձեր. և այսպէս չդնէ ինչ ուրեք զիւր: Զայս առնէ զնոցանէ թէ և 'ի փորձութիւնս ինչ էին, ասելովն "Զի մխիթարեսցէ զսիրտս ձեր,,: "Ընդ Ոնեսիմաւ հանդերձ հաւատարմաւ և սիրելի եղբարբ որ է 'ի ձէնջ. զամենայն ինչ ցուցցէ ձեզ որ ինչ աստ է,,: Այս այն Ոնեսիմոս է վասն որոյ գրէ առ Փիլիմոնի. "Զոր ես կամէի առ իս ունել, զի ընդ քո պաշտօնեայ լիցի ինձ 'ի կապանս աւետարանին. բայց առանց քո կամաց ոչ կամեցայ ինչ առնել,,: Եւ յարգանս իմն յաւելու քաղաքին, զի և 'ի պարծանս ևս լինիցի նոցա և ոչ յամօթ. "Որ է, ասէ, 'ի ձէնջ. զամենայն ինչ ցուցցէ ձեզ որ ինչ աստ է,,:

"Ողջոյն տայ ձեզ Արիստարքոս գերեկից իմ,,: Չիք ինչ մեծ քան զայս գովութիւն: Այս այն Արիստարքոս է որ յԵրուսաղէմ չոգաւ ընդ նմա 'ի վերին կողմանս: Զայս և քան զմարգարէիցն ևս մեծ առաց. զի

նոքա օտարս. և պանդուխտս կոչէին զանձինս, և ոչ զե-րի։ Իբրև զգերի մի և զամենայն շրջէր թափառականն, և առաջին ամենեցուն պատրաստ կայր 'ի չարչարանս։ Մա-նաւանդ թէ և ս չար քան զնոսա. զի զնոսա յորժամ ատեանցուն թշնամիքն, բազում խնամ ածեն 'ի վերայ, քանզի իբրև իւրեանց ստացուածոց զարման տանին այ-նու հետև. և զսա իբրև զթշնամի և զպատերազմող ա-մենեքին այսր անդր տանէին ածէին. զանազան առնէին, վէրս 'ի վերայ վէրայ, թշնամանէին զբազմապատկէին։ Ապա և նոցա իսկ մխիթարութիւն էր յորժամ լսէին զվար-դապետեանն եթէ յոքունս վշտի է։

“Այս Մարկոս, ասէ, եղբօրորդի Բառնաբայ”։ Այս զսա յարգեաց ազգականութեանն. քանզի սա ազգ էր Բառնաբայ։ “Յաղագս որոյ, ասէ, առէք պատուէրս. եթէ եկեսցէ առ ձեզ, ընկալջիք զնա”։ Միթէ չըն-դունէին զնա։ Այլ “բազում, ասէ, մեծարանօք”։ Այս զայսմ առնէ ցուցանէ եթէ մեծ ոմն էր. բայց թէ ուստի առին զպատուէրսն, զայն չասէ։ “Եւ Յիսուս որ Յուստոս կոչի”։ Սա թերևս կորնթացի էր։ Ամե-նեցուն իսկ զզօրութիւն հաւատարմոց բաշխէ, և զիւրա-քանչիւր ինչ առանձինն ասէ։ “Որք են, ասէ, 'ի թլփատ-ութենէն. սոքա միայն գործակիցք եղեն յարքայու-թեանն այ, որք և մխիթարութիւն իսկ եղեն ինձ”։ Այս քանզի ասաց զմիոջէն եթէ գերեկից իմ է, զի մի վհատեցուցանէ զմիւս լռողացն՝ տես զիարդ զմիւսն գնէ և քերթէ զնոսա. “Գործակից իմ են, ասէ, յարքայու-թեանն այ”։ Ապա ուրեմն փորձութեանն կցորդ լինել՝ արքայութեանն հաւասար լինել է։ “Որք, ասէ, և մխի-թարութիւն իսկ եղեն ինձ”։ Յայտ առնէ զնոցանէ թէ աւագագոյն էին, մինչ զի և Պօղոսի ևս մխիթարու-թիւն լինէին։ Այլ տեսցուք զխնամատարութիւնն։

“Իմաստութեամբ գնասջիք առ արտաքինսն. գնե-ցէք 'ի բաց զժամանակս”. այսինքն թէ չէ ձեր ժամա-նակս, այլ նոցա։ Այլ մի կամիցիք ձախաւաղ լինել, այլ գնեցէք զժամանակն. այսինքն թէ ձեզ արարէք այլ ազգ. քանզի աւելորդ անմտութեանն լի է և պատե-րազմօք և թշնամութ(եամբ) և պատճառս 'ի վերայ պատճա-ռանաց խնամալից, չէ հնար առնել ձեզ զժամանակն. ա-սէ աւելորդ միշտս հաստատեցէ կռուել. և շահ ինչ ոչ առնէ

ցէք , այլ և փառս եւս 'ի փառաւորացելոյն առ 'ի զՀեթանոսսն չզգուշելոյ : Եթէ յորժամ առ եղբարս իցես , իբաւական Համարիս զՀամարձակեալն . այլ առ արտաքինսն չէ ինչ այնպէս պարտ : Տեսանես զիարդ ամենայն ուրեք արտաքինն զՀեթանոսսն կոչէ . նոյն իրի իսկ և առ Տիմոթէոս գրեալ ասէր՝ եթէ "Պարտ է նմա վկայութիւն բարւոք և յարտաքնոցն ունել" . և այլուր եթէ "Զի՞ կայ իմ և զարտաքինսն դատելոյ" : "Իմաստութեամբ , ասէ , գնասջիք առ արտաքինսն" : Քանզի արտաքոյ են . թէպէտ և 'ի նմին աշխարհի ընդ մեզ բնակեալ են , այլ արտաքոյ արքայութեան են և տարագիրք 'ի Հայրենի տանէն : Մխիթարէ միանգամայն և զնոսա , փառս արտաքինսն կոչելով : Որպէս և վերագոյնն ասաց եթէ "Կեանքն ձեր ծածկեալ են ընդ Քրիստոսի յԱծ" : Նոքա յայտնեսցին , յայնժամ խնդրեսջիք զփառս , յայնժամ պատիւս , յայնժամ զայլն ամենայն . այժմ մի . նա աւանիկ և տայ իմն նոցա :

Զի մի կարծիցես եթէ զինչ կից առիցէ , "Բանն , ասէ , ձեր յամենայն ժամ լի շնորհօք իցէ և աղիւ Համեմեալ լիցի . գիտել եթէ զիարդ պարտ իցէ ձեզ իւրաքանչիւր ումեք տալ պատասխանի" : Ոչ կեղծաւորութեամբն չեն շնորհք և ոչ աղիւ Համեմեալ : Եթէ մարթ իցէ առանց փառաց բժշկել , մի Հրաժարիցես : Եթէ ժամանակ 'ի դէպ իցէ Հեզութեամբ խօսել , մի ստակարատութիւն ինչ զիրսն Համարիցիս : Զամենայն ինչ զայն առնիցիք , որ ինչ պատուոյն արժան է , առանց փառս ինչ ծածկապաշտութեան առնելոյ : Տեսանես զիարդ Պանծիել զայլն ամպարիշտ ողջէր . չտեսանես և զերիս մանկունսն , զիարդ խոստովանութեամբ մնայցէին , և զզօրութիւնն և զՀամարձակութիւնն ցուցանէին , և ոչ ինչ յանդգնութիւն և ամբարտաւանութիւն : Զի այն չէ Համարձակութիւն , այլ սնապարծութիւն :

"Գիտել , ասէ , զիարդ պարտ իցէ ձեզ իւրաքանչիւր ումեք տալ պատասխանի" : Ոչ այգ իշխանին , և ոչ նոյնպէս այնմ որ ընդ իշխանութեամբն իցէ . այլ այգ մեծատանն , և այլազգունակ աղքատին : Ընդէ՞ր . վասն զի մեծատանցն և իշխանացն միտք տկարագոյնք են , մանաւանդ թէ ուռուցեալք , մանաւանդ թէ քայքայեալք իսկ . ապա ուրեմն առաւել զգուշանալ պարտ է : Եւ

աղքատաց և իշխանաւորաց հաստատուն և խնամատա-գոյն միտք. և անդ մեծի համարձակութեան պէտք են, ՚ի մին միայն հայել՝ եթէ զիարդ չխնայութիւն ինչ լինի-ցի։ Ո՛չ վասն զի անն մեծատուն է և անն աղքատ, մին աւելի պատուիցի և միւսն նուաստագոյն. այլ վասն ակա-րութեանն միումն ներել և միւսումն ոչ ինչ այնպէս։ Վ՛ասնզի չիք ինչ պատճառք ՚ի մէջի, մի կոչիցես զհե-թանոսն պիղծ և մի լինիցիս թշնամանող։ Այլ թէ վասն կրօնից ինչ հարցանիցես, առաջիկր պատասխանի թէ պիղծ և անպարիշտ են կրօնքն. իսկ եթէ չիցէ որ որ հարցանիցէ և ստիպեսցէ ասել, չէ պարտ տարա-պարտ թշնամանութիւն յանձին առնել։

Ո՛չ ինչ հարկ կայցէ ՚ի վերայ աւելորդ թշնամանութիւն ստանալ։ Եթէ խրատել կամիցիս, ՚ի պատճառանացն որ առաջին կայցեն սկիզբն արասջիր. այսպէս թէ ո՞չ լուա-լիջիր։ Եթէ իցէ բանն աղխ համեմատ, եթէ ՚ի լուծ ազխս մտանէ՝ պնդէ զմեղկութիւն, և եթէ ՚ի բերան՝ կակղէ զխստութիւն. քանզի շնորհաց է բանն, մի ծան-րատաղտուկ ինչ լինիցի, և մի դարձեալ թոյլ վասն շնոր-հացն, այլ և կծու և քաղցր։ Եթէ կարի կոկծեցու-ցանիցէ, միսս աւելի առնէ քան զօգուտ. և եթէ կա-րի զուարթագոյնս՝ տրտմեցուցանէ աւելի քան թէ ու-րախ առնիցէ. այլ ուրեք չափոյ պէտք են։ Մ՛ի տրտում և տխուր լինել, զի այն կարի չախորժելի է. և մի կարի զուարթերես, զի այն արհամարհանաց և քամահանաց է. այլ զերկոցունց օգուտն առեալ՝ ՚ի միւսոյն փախ-չել, որպէս և մեղու երբեմն զքաղցրութիւն և ռուսեմն զգեղեցկութիւնն։ Ո՛չ թէ բժիշկ ոչ մի ազգ մտանջի առ ամենայն մարմինս, որչափ և ոչ տաւեալ վարդապետ-տին պարտ իցէ. թէպէտ և մարմնոյն առաւել տանիցի յաճախութեան դեղոցն, և ոչ ազիցն բանիցն։ Կայցէ հեթանոսն և լինիցի քո բարեկամ. իսկ եթէ վասն կրօ-նից ինչ ճառիցես, մինչ քաջ ընդ բարեկամութիւնն մտանիցէ և իբրև սերտ բարեկամ լինիցի, այսպէս տա-կաւ մեղմով ճառես։

Հայեաց ընդ Պաւղոս յորժամ հագաւ յԱթէնս զիարդ խօսէր ընդ նոսա. չասաց թէ ով պիղծք և ամենա-պիղծք. այլ զինչ. ասէ "Այր աթենացիք, ամենևին իմն դիցապաշտագոյնս տեսանեմ զձեզ"։ Դարձեալ

և որ թշնամանելն պարտ էր, չզանգիտէր ինչ. այլ և բազում իսկ սաստիւ ասէր ցԵղիմաս. «Ով լի ամե-նայն նենգութեամբ և բոլորից խարամանկութեամբ որ-դի սատանայի, թշնամի ամենայն արդարութե»: Որ-պէս զնոսայն թշնամանել անմտութեան էր, նոյնպէս և զայս չթշնամանելն անմտութեան էր: Պարծեաւ ե-թէ տանիցին առաջի իշխանին վասն պատճառ ինչ ի-րաց, առնիցիր պատիւ:

«Զամենայն, ասէ, ցուցցէ ձեզ որ ինչ առ իս է»: Այս զինչ զամենայն ցուցանիցեն: Զկապանս, ասէ, և զայն որ զինև կրեն: Զի թէ չէր յօժար գալ, ապա և ոչ աղօթս իսկ առնէր ուսանել զձեզ՝ որ զայլոց առաքեմ, և զանձն ինչ զրկել՝ եթէ ոչ մեծամեծ վտանգք շուրջ էին զինև: Այս էր մեղ ջնել, և չէր: Զի ի վերայ հա-սանել եթէ ի փորձութիւնս անկաւ և համբերէր ա-ռաքինութեամբ, հաւատարիմ առնելոյ զիրան էր, և ուղղելոյ զմիտս նոցա թէ չէր ձեռնհաս գալ: «Ոնեսի-մաւ հանդերձ, ասէ, հաւատարմաւ և սիրելի եղբարբ»: Եղբայր զծառայն կոչէր Պաւղոս. և յիրաւի իսկ, քան-զի և զիւր անձն ծառայ հաւատացելոցն անուանէր:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Ցածուցուք ամենեքեան զհպարտութի՛, կոխեսցուք զամբարտաւանութիւնն: Ծառայ զանձն անուանէր Պաւղոս որ աշխարհացն զինք էր և բազում երկնից, և դու հպարտանաս: Որ զամենայն տանէր և ածէր որպէս և կամէր, և զաւհերիցութիւն յարքայութեան երկնից ունէր, պսակեալ անթառամ պսակաւն. որ յերրորդ յերկինս ել, և զծառայս իւր եղբարս կոչէր և ծառայակիցս: Ո՞ւր իցէ մոլորութիւնն, ո՞ւր ամբարտաւանութիւնն: Նոյնպէս արժանի հաւատարմութեան եղև Ոնեսիմոս, մինչ զի այնպիսի իրք հաւատայքն նմա: «Եւ Մարկոս, ասէ, եղբօրորդի Բառնաբայ. վասն ո-րոյ առէք պատուէր ընդունել զնա»: Թերևս ի Բառ-նաբայ առին զպատուէրսն: «Որք են, ասէ, ի թլփա-տութենէ անտի»: Ցածուցանէ այսուհետև զհպար-տութիւն Հրէիցն՝ թէ սակաւք էին ի թլփատութե-նէն, և բազումք ի հեթանոսաց:

«Որք եղեն ինձ, ասէ, 'ի մխիթարութիւն»: Ցու-ցանէ զանձնէ եթէ 'ի մեծամեծ փորձութիւնս էր: Ապա ուրեմն չէ փոքր յորժամ մխիթարիցեմք զսուրբս և երթալով և բանիւք և յանձնելով առ նոսա յորժամ վշտակիցք լինիցիմք: Ընդ կապեալսն, ասէ, իբրև թէ ընդ նոսա կապեալ իցէք. յորժամ զնոցա չարչարանսն մեզ համարիցիմք, յայտ է թէ և պսակացն նոցա հա-ղորդ լինիցիմք: Չկոչեցա՞ր 'ի մարտ, չմտե՞ր 'ի կռիւ. այլ մերկացար, այլ կռուի: Այլ թէ կամիցիս, և դու հա-ղորդ լինիս. եկ և դու, օծ և տուր խրախոյս, լեր սի-րելի և յորդորիչ: Թէ և արտաքոյ կայցես, ձայն տուր, զարթո զոյժն, զուարթացո զմիտսն: Այս ամենայն ա-յլս 'ի դէպ լինիցի. այլ Պօղոս չէ այնպիսեօք կարօտ, բայց զի զնոսա յորդորիցէ՝ ասէր զայս:

Այլ դու որք զայլոց նահատակացն կամիցիս զառա-քինութիւնս ապարտել՝ զգերանանս խնուցուս, և զպա-զում անանիցես նմա ցանկացողս. ցուցանիցես եթէ ե-լին առաքինիք 'ի պատերազմին և վայելեցին 'ի բազում խնամս: Իսկ այնպէս և պսակացն և փառացն հաղորդ լի-նիցիս, թէպէտ և չառնիցես ինչ. բայց միայն ընդ գործ-ոյն ուրախ լինիցիս, և այնպէս հաղորդ եղեր. ոչ եթէ սակաւ ինչ նպաստ եղեր, այլ զմեծն իսկ որ զլուխ ամե-նայն բարութեանց է՝ առեր: Զի թէ որ լայցեն՝ հա-մարին թէ ազգին ազակիցք իցեն, և բազում ջերմս սպա-ւորացն վարկանելին, և բազում ինչ 'ի վշտացն թեթևա-ցուցանեն, որչափ ևս առաւել որք ուրախն լինիցին՝ յորդորեն զցանկութիւնս:

Իսկ եթէ որչափ չարիք իցեն յորժամ վշտակիցք չկայցեն, լուր մարգարէին. «Ակն ունէի, ասէ, եթէ ո տրտմեսցի ընդ իս, և ոչ ոք էր»: Այսմ իրի ասէր և Պօղոս. «Ուրախ լինել ընդ խնդացողս և լալ ընդ լալոցս»: Աճեցո զխնդութիւն. եթէ տեսանիցես զեղբայրն առաքի-նեալ, մի ասիցես եթէ նորա է առաքինութիւն, եւ ընդէր ուրախ լինիցիմ: Չեն այն բանք եղբօր, այլ թշնա-մւոյ: Իսկ թէ կամիցիս, չէ առաքինութիւն նորա, այլ քո. դու ես տէր առնել զառաքինութիւնս. մեծ եթէ ոչ տրտմիս, այլ ուրախ լինիս, եթէ զուարճանայցես և բերկրիցիս: Իսկ զի այս այսպէս է՝ անտի յայտ է, զի որք նախանձինն, ոչ ընդ նոսա միայն որ քաղցանանն՝ նա-

խանձին, այլ և ընդ նոսա որք ընդ նոցա քաջութեանն բերկրիցին. քանզի այնպէս գիտեն եթէ նոքա առաւել ընտրեցան, և նոքա առաւել պարծին. զի որ քաջն եղև՝ և պատկառէ 'ի բազմացն գովութենէ, և գովիչն բա-ղում խնդութեամբ զուարճանայ:

Զտեսանիցէ՞ք իսկ 'ի նահատակացն միջի, զի որ պսա-կին՝ չգիտէ բնաւ եթէ պսակեալ իցէ. այլ ուրախու-թիւն և տրտմութիւն սիրելեացն լինի և ատելեացն. նոքա կայթեն և կաքաւեն: Տեսանե՞ս որչափ ինչ է չնա-խանձելն. այլոյ աշխատութիւն, և քո խնդութիւն, այլ առնու զպսակն, և դու խաղաս կայտառես և պար-ծիս: Քո՞ է սա, զի այլ յաղթեաց, դու ընդէ՞ր 'ի վեր վազիցես: Քայլ գիտեն և նոքա սոյզ եթէ հատարա-կաց է յաղթութեն: Վասն այնորիկ նախանձորդք զայն չառնուն 'ի վեր, քանզի կամին զյաղթութիւնն ծած-կել, և լսիցես՝ զայսպիսի ինչ բանս առիցեն, եթէ ջըն-ջեցի զքեզ և կործանեցի և ծածկեցի. թէպէտ և ջանն այլոյ իցէ, այլ գովութիւնն քո է:

Եթէ յարտաքնոցն 'ի միջի այնչափ բարութիւն է չնախանձելն՝ այլ և ընտանի ևս լինել այլոց բարու-թեանցն, որչափ ևս առաւել յաղթութեանն որ սա-տանայի ոք յաղթիցէ. որ մեր ընդդէմ դառն հաղմին չնչիցէ, պարտ իցէ առաւել ուրախ լինել: Թէպէտ և պիղծ իցէ և դառն, սակայն ճարտար գիտէ եթէ մեզ մեծ ուրախութի է և նմա յոյժ տրտմութի: Կամիցես տրտմեցուցանել զնա. ուրախ լեր և բերկրեաց: Կամի-ցիս ուրախ առնել. տրտմեաց ընդ յաղթութիւն եղ-բօրն որ նմա յաղթեաց. զնորա տրտմութիւնն փարա-տես քո խաժոռութեամբն: Իսկ ընդ նմին կայցես քա-կեալ յեղբօրէն, և ևս մեծամեծ չարիս գործիցես քան զնորայն: Քանզի չէր ընդ մի համար թշնամւոյն զթըշ-նամեաց գարծ գործել, և բարեկամին զթշնամեաց ա-ղին առնել. ևս չար քան զթշնամին այնպիսի բարեկամն իցէ: Քաջացաւ եղբայրն կամ խօսելովն կամ գովե-լովն[1] ուրուք կամ ուղղութիւնս ինչ գործելով, լեր և դու հաղորդ քաջութեանն. ցոյց թէ անդամ քո է:

Իսկ զիարդ, ասէ, ես չքաջանամ և զնա գովիցեմ: Մի՛ խօսիր զայնպիսի բանս, ամփոփեա զշրթունս. և

1 Օրինակին գործելովն. եղաւ ըստ յունին:

եթէ մօտ ես կայի յորժամ ոտնակէս ինչ խօսէիր, և ահ ես 'ի վերայ գնէի՝ մի լուիցէ զայդ թշնամի։ Նաղում անգամ եթէ թշնամութիւն ինչ ընդ միմեանս ունիցիմք, թշնամեացն չհանեմք 'ի վեր. և սպասնայի համարձակ իմն հանես 'ի վեր։ Մի ասեր ինչ այնպիսի և մի զմտաւ ածեր. այլ զնորին հակառակն՝ եթէ անգամ իմ է և իմ է փառաւորութիւնն։

Այլ զի՞ գործիցեմ, ասէ, զի արտաքինքն ընդ իս այնպէս են։ Դու ես այնր պատճառք. յորժամ տեսանիցեն զքեզ ստորացեալ 'ի խնդութենէն, և նոքա ստորանան. և յորժամ տեսանիցեն ընտանացեալս, այնուհետև և նոքա չիշխեն ինչ այնպիսի զմտաւ ածել։ Նոյլ թէ և դու ոչ ինչ քաղցեսցես, զի ուրախ եղեր ընդ քաղցրութիւնն՝ քաղցացար և դու ես քաղց քան զնա։ Ո՞ք թէ սէրն մեծ է և գլուխ ամենայնի, դու նովաւ առեր զպսակն. նա 'ի ծառայութենէն, և դու յառաւել սիրոյն. նա զբանիցն զօրութիւն եցոյց, և դու արդեամբքդ՝ նախանձուն յաղթեցեր, առ ոտն կոխեցեր զչարակնութիւնն. որպէս և յիրաւի իսկ, և դու առաւել քան զնա պսակիցիս, զի առաւել առաքինութեան քո մարտն է քան զնորա։

Զարարեր միայն կոխան զչարակնութիւնն, և այլ իմն մեծ գործ գործեցեր. նա մի միայն պսակ առնու, և դու երկու և զերկոսեանն պայծառագոյն քան զնորայն։ Ո՞րպէս. մի՞ ոք ընդ նախանձուն յաղթելոյ առեր, և զմիւսն՝ զոր 'ի սիրոյն եդեր 'ի գլուխն։ Եւ միայն սուրբ 'ի նախանձուէն լինելոյ նշանակ է խնդալն, այլ և զսէրն արմատացեալ յանձին ունելոյ. զնա թերևս և մարդկեղէն ինչ իրք լինիցին՝ մնապարծութիւն կամ յօրանալ, և դու յամենայնէ կարեաց սուրբ ես, և քանզի ոչ եթէ առ մնապարծութեան ինչ ընդ այլոյ բարիս խնդայցես։ Որ է ասա, ո՞չ ապաքէն ուղղեաց զեկեղեցին, անձեցոյց զժողովուրդս։ Սակայն զայն միւսանգամ. քանզի կրկին պսակ ունիս, նախանձուն յաղթեցեր, զսէր՝ պսակ 'ի գլուխ կազմեցեր։ Նոյ աղաչեմ և փարելի ասեմ։

Կամիս և զերրորդ պսակէն լսել. զոր և 'ի խոնարհ իսկ մարդիկ գովեն, և 'ի վեր հրեշտակք։ Վասնզի չէ ընդ մի համար զբանիցն զեղեցկութիւն գովել, և զպա-

ընտանի յաղթութիւն հանդիսացուցանել. այս գովութիւն ժամանակեան է, և այն յաւիտենականն. այս 'ի մարդկանէ, և այն յԱյ. այս երևի, և այն ոչ երևի, քանզի դու ծածուկ պսակիս՝ առ Հայրն միայն տեսանել: Եթէ մարթ էր զիւրաքանչիւր մարմին ուրոյն յուզւոյն տեսանել, ցուցանէ թէ որչափ քան զայն այս պայծառագոյն է, մանաւանդ եթէ լուսաւորագոյն իսկ:

Սոխեսցուք զխայթոցս չարակնութեան. անձանց օգուտ գործեմք, սիրելիք. 'ի մեր գլուխ առնումք զպըտուղն: Չարակն ընդ Այ կռուի, և ոչ ընդ նմա ընդ որում նախանձին: Յորժամ տեսանիցէ զոմն եթէ շընորհս ունիցի, և խանտայցէ և կամիցի քակել զեկեղեցին, ոչ ընդ նմա մարտնչի, այլ ընդ Այ: Ա՛ղէ ասա, եթէ ոք զաղջիկ մի կոյս զարդարէր 'ի պէտս արքունիս, և առաւել ինչ լաւութիւն 'ի զարդարելն ցուցանէր և 'ի պարկեշտագոյնն առնել, և այլ ոք կամէր ձգել և անհեղեղ և անպիտան առնել, ում նենգէր, ոչ՛ եթէ նմա և կամ հօր իսկ աղջկանն: Նոյնպէս և դու իսկ այժմ որ նախանձիսդ, ընդ եկեղեցւոյ կռուիս, ընդ Այ մարտնչիս. քանզի ընդ քաջութեան եղբօրն զրկախառն կայ եկեղեցւոյ օգտութիւնն, և հարկ է թէ 'ի սորա քակտելն և նա լուծանի: Ապա ուրեմն և այնու զսատանայի գործ գործես, և նենգութեամբ ընդ մարմնոյն Քրիստոսի գնաս, զի ընդ եղբօրն խանտաս չար: Եւ այն իսկ չար է; զի որոյ չէ ինչ մեղուցեալ՝ և մարտնչիցի ոք. և առաւել չար այն է, որ ընդ Քրիստոսի ոք կռուիցի: Ո՞չ ինչ մեղաւ քեզ զի չտաս թոյլ զարդարել զեղով զմարմինն նորա. ընդէ՞ր չտաս թոյլ պայծառանալ հարսին: Տես որչափ ինչ պատիժք են, զի զքո թշնամին ուրախ առնես, և զքաջն զոր կամիս առ նախանձու տրտմեցուցանել՝ ես քան զես ուրախ առնես, և քո նախանձուն ցուցանես թէ ես յաճախեաց 'ի լաւութիւնն. և դու զի նախանձիսն, ես առաւել 'ի տագնապի զանձն կացուցանես:

Ամաչեմ այսպիսեօքս յորդորել. բայց քանզի այնչափ յախտի կամք, զերծանիցիմք յապականիչ ախտէն: Խանտայցե՞ս ինչ զի քաջացաւն. միթէ զքաջութիւնն նախանձո՞ւն խափանել կարիցես, միթէ 'ի պատիժս ինչ արկանել կամիցիս. զի՞նչ յայտ առնես խանտալովն,

բայց միայն զանձն 'ի պատիժս մուծանես առաջի այնո_
րիկ զորոյ չկամիս զքաջութիւնն ։ Ո՛ր նմա այսուհետև
կրկին խնդութիւն լինիցի, և քեզ կրկին տանջանք. ոչ
միայն զի մեծացուցանիցես զնա, այլ զի և այլ խնդու_
թիւն նիւթես նմա՝ զքո անձն 'ի տանջանս մատնելով.
և դարձեալ ընդ որ դուն տրտմիս, նա ուրախ լինի ։ Տես
որչափ գանս՝ չարչարանս յանձին կրեմք և չզգամք ։
Խոչնամի ինչ իցէ քո. և վասն էր իցէ թշնամի, և զի
մեղաւ ։ Սակայն թշնամոյն պարծանս տամք, և զմեզ
առաւել տանջեմք և պատժիմք և չզգամք ։ Իսկ ընդ այն
ևս կսկծիմք եթէ նա խմնցու առողջոք և ուրախ իցէ.
և թերևս նա չառնիցի ուրախ, և մեք կարծեմք թէ ու_
րախ լինիցի, դարձեալ ընդ այն ևս կսկծիմք ։ Իսկ թէ այն_
պէս իցէ, դադարեա 'ի նախանձուէ. ընդէ՞ր վէրս 'ի վէ_
րաց վերայ դնիցես քեզ ։

Ո՛մաւ ածցուք, սիրելիք, զկրկին պսակս չնախան_
ձնտացն՝ զառ 'ի մարդկանէ և զառ 'ի յայ գովութիւն,
և չարակնութիւնն զչարչարանս. և այնպէս կարիցեմք
պատրել զչար գազանն, և առաքինանալ առաջի այ, և
նոցին ընտրութեան ընտրելոցն հասանել. և եթէ չընտա_
րիցիմք ինչ աստէն նոյնպէս, թերևս և այն վասն մե_
րոյ ինչ օգտի լինիցի ։ Իսկ այնպէս կարասցուք 'ի փառս
այ կեալ, և խոստացելոց բարութեանցն սիրելեաց նորա
հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մե_
րոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում հօր միանգամայն
և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ
և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

# ՃԱՌ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

"Ողջոյն տայ ձեզ Եպափրաս որ է 'ի ձէնջ ծառայ Քրիստոսի, հանապազ պատերազմեալ վասն ձեր յաղօթս, զի կայցէք կատարեալ և լցեալք կամօքն այ: Վկայեմ և ես զնմանէ զի ունի զնախանձ յոյժ վասն ձեր և վասն Լաւոդիկեցւոցն և վասն այնոցիկ որ Հերապօլիսն են".

Ի սկզբան թղթիս ընծայեցոյց մեծարեաց զայրս 'ի սիրոյ, զսէր բազում իմն յայտ առնէ. զնորա և գովէ: Որպէս և 'ի սկզբանն իսկ ասաց՝ թէ "Որ պատմեաց մեզ վասն հոգևոր սիրոյն ձերոյ". զսէրն ցուցանէ թէ և սիրէ, և աղօթս 'ի վերայ առնէ: Զնա յարգէ և իւրոյ բանիցն դուռն բանայ. զի մեծարոյ վարդապետին լինել՝ աշակերտացն օգտութիւն է: Դարձեալ և վասն այնորիկ ասէ ձեր, զի և պարծիցին ևս արամբն՝ թէ այնպիսի այր ունին:

"Հանապազ պատերազմեալ վասն ձեր յաղօթս": Ոչ վայրապար ինչ կայր յաղօթս, այլ պատերազմաւ, դողութեամբ և կսկծանօք: "Վկայեմ և ես զնմանէ զի նախանձ յոյժ ունի վասն ձեր": Արժանի հաւատարմութեան է վկայն: Զի ունի, ասէ, նախանձ վասն ձեր. այսինքն թէ կարի սիրէ զձեզ և յոյժ խռովի գթովն ձերով: "Եւ վասն Լաւոդիկեցւոցն, ասէ, և վասն այնոցիկ որ Հերապօլիսն են": Եւ առ նոսա ևս յարգէ զայրն: Այլ ուստի իմանալոց էին զայն: Մանաւանդ թէ լուեալ իսկ էր. բայց թէ և ոչ, յորժամ զթուղթն ընթեռնույր յայնժամ ուսանէին. "Արարջիք, ասէ, զի և 'ի Լաւոդիկեցւոց եկեղեցւոջն ընթերցցի":

"Զի կայցէք, ասէ, կատարեալք": Միանգամայն և ամբաստան լինի զնոցանէ և յանտաղտուկ պատուիրէ և խրատէ: Քանզի մարթի կատարեալ լինել և չկալ. որպէս թէ զամենայն ոք գիտիցէ, և միով իւիք շարժուն իցէ: Մարթի չլինել կատարեալ և կեալ. որպէս

թէ սակաւ ոք ինչ գիտիցէ, և կայցէ զաղփաղփուն ։ Այլ սա, ասէ՝ երկոցունց աղօթս առնեմ, զի և կայցէք և կատարեալ իցէք ։ Տես ուր դարձեալ յիշեցոյց նոցա զվասն հրեշտակաց բանն և վասն վարուց ։ " Եւ լցեալք, ասէ, կամօքն Աստուծոյ ": Եւ եթէ դոյզն ինչ բաւական իցէ առ 'ի զկամսն կատարելոյ. զի լցեալն չտայ թոյլ այլոց կամաց մտաց մտանել յինքն. ապա թէ ոչ՝ և լցեալ իսկ չէ ։ " Վկայեմ, ասէ, զնմանէ զի նախանձ յոյժ ունի վասն ձեր ": Երկոքեան յաճախութեանն են ։ Արդէն ինքն իսկ առ կորնթացիսն գրէ թէ " Նախանձեցուցանեմ զձեզ 'ի նախանձն Աստուծոյ ":

" Ողջոյն տայ ձեզ Ղուկաս բժիշկ սիրելի ": Սա է որ զաւետարանն գրեաց ։ Եւ զսա ինչ առ խոնարհագոյնսն կալեալ յետոյ դնէ, այլ զՆոպափրաս կամի առ նոսա յարգել ։ Բայց թերևս և այլք կոչէին նորին անուամբն ։ " Եւ Դեմաս ", ասէ ։ Իբրև սորա թէ ողջոյն տայ Ղուկաս բժիշկ, յաւել և սիրելին ։ Ոչ ինչ և այն սակաւ գովութիւն, այլ և կարի իսկ մեծ՝ Պաւղոսի սիրելի լինել ։

" Ողջոյն տաջիք, ասէ, Լաւոդիկեցւոց եղբարցն, և Նիմփեայ և որ առտնին եկեղեցին է նորա ": Տես զիարդ յարէ և միաբանէ զնոսա ընդ միմեանս, ոչ միայն ողջոյնն տալով, այլ և զթուղթսն միմեանց փոխարէնս տալով ։ Դարձեալ մեծարէ զնա և առանձինն ողջոյն տալով ։ Եւ զայս ոչ եթէ վայրապար ինչ առնէ, այլ և վասն զայլսն 'ի նոյն նախանձ ածելով. զի չէ փոքր յորժամ ոչ ընդ այլսն համարիցի ։ Տես որպիսի իմն մեծացուցանէ զայրն, զի և տունն եւս իւր եկեղեցի էր ։

" Եւ յորժամ ընթերցցի, ասէ, առ ձեզ թուղթդ, արասջիք զի և 'ի Լաւոդիկեցւոց եկեղեցւոջն ընթերցցի ": Թուի ինձ եթէ ինչ ինչ 'ի թղթոյն սոցա և նոցա պարտ է լսել. զի յորժամ սոքա պատուհասիցին, նոքա զիւրեանց մեղս 'ի միտ առնուցուն ։ " Եւ զան 'ի Լաւոդիկեցւոյն, ասէ, զի և դուք ընթեռնուցուք ": Ոմանք ասեն եթէ ոչ զՊաւղոսին ինչ թղթոյն որ առ նոսա գրեալ՝ ասէ, այլ զնոցա որ առ Պաւղոս ։ Քանզի չասաց եթէ զթուղթն որ առ Լաւոդիկեցիսն, այլ թէ զան 'ի Լաւոդիկեցւոյն ։ " Եւ ասասջիք ցԱրքիպպոս, զգոյշ լեր սպասաւորութեանդ զոր ընկալար դու 'ի Տէր, զի լնու-

ցաւս զոա վշաս,,։ Խնդէր արդեօք ոչ առ Նա խոկ զրեցէ։ Աներեւս չէր խօսկ կորոււ, բայց միայն դայն յիշատակէ առ եւս փութայ լինելոյ։

“ Ողջոյն, ասէ, իմոյ ձեռին Պաւղոսի է,,։ Նայս սիրոյ եւ գիթոյ նշանակ է, զձեռագիրն խոկ տեսանել, եւ աւերք խոստովանեալ այնու։ “ Յուշ լիցին, ասէ, կապանքս իմ,,։ Նարէ. քանի ինչ մխիթարութիւն է. այս խոկ բաւական է յամենայնի յորդորեալ զնոսա եւ առաքինագոյնս առ պատերազմունսն առնել, նա եւ ընտանեգոյնս եւս յորդորել։ “ Շնորհք ընդ ձեզ. ամէն,,։

Մեծ գովութիւն է եւ առաւել քան զայլսն ամենեսին, ասել զԱրքիպպոս եթէ “ Որ 'ի ձեռնս ծառայ է Քրիստոսի,,. եւ պաշտօնեայ ընդ նոցա կոչէ զնա, որպէս եւ զինքն եկեղեցւոյն պաշտօնեայ ասէ յորժամ ասիցէ եթէ “ Որոյ եղէ-ես պաշտօնեայ,,։ Ի նոյն պատիւ-հանէ զայրն. մերագոյն ծառայակից կոչէ եւ սոտ ծառայ. “ Որ 'ի ձեռնս, ասէ, ծառայ է Քրիստոսի,,։ Որպէս եւ ընդ մօր որք խօսիցի՝ եթէ 'ի քումմէ որովայնէդ, 'ի քումմէ աղեաց։ Նոյն յայսմ գովութենէ Թերեւս նախանձ ինչ ծնանէր. վասն այնորիկ ոչ այնու միայն յարգէ, այլ եւ առ 'ի նոսա խնամուն եկելոյ եւ այնու զնախանձն պարզէ, եւ այսու. “ Յամենայն ժամ, ասէ, պատերազմեալ վասն ձեր,,։ Ոչ միայն մինչ առ մեզ իցէ՝ իբրեւ առ 'ի ցոյց ինչ, եւ ոչ եթէ մինչ առ ձեզ էր՝ նոյնպէս 'ի ցոյց ինչ։ Մեծ յօժարութիւն տայ ասելովն՝ թէ պատերազմեալ։ Զի մի կարծիցի եթէ աւելի ինչ հարստահարութի մատուցանիցէ, ածէ զնովիմբ. “ Ակայեմ, ասէ, զի նախանձ յոյժ ունի վասն ձեր եւ վասն Լաւոդիկեցւոց եղբարցն եւ վասն այնոցիկ որ Յերապօլիս են,,։ Իսկ “ Զի կայցէքն կատարեալք,,, չէ ինչ աւելի հպարտութեան, այլ մեծարանաց վարդապետին։ “ Իսկ լցեալք, ասէ, եւ կատարեալք,,։ Զմին եա, եւ զմիւսմէն ասէ թէ թերի է։ Իսկ չասաց եթէ զի մի շարժիցիք, այլ թէ զի կայցէք. զի բազմացն ողջոյն տալ նոցա՝ յորդորէր զնոսա, յորժամ ոչ միայն ընտանիքն որ խուրեանցն իցեն, այլ եւ այլք յիշեսցեն զնոսա։

“ Իսկ սպասեցէք, ասէ, ցԱրքիպպոս, զգոյշ լեր սպասաւորութեանդ զոր ընկալար 'ի տէր,,։ Նա եւ զայս խոկ առնել հնազանդեր զնոսա նմա։ Իսկ ոչ եւս կա-

ընէին մերձաւորք լինել նորա յորժամ ասասցէ նոցա. ա-
րակհետև և ինքեանք ես խնդալեօք ամենայնի եղեն: Այս և չէ իսկ 'ի դէպ ընդ աշակերտս վասն վարդապետ-
տի խօսել. այլ ըմբերանէ փոխաս զայս գրելով: "Աշա-
ջիք, ասէ, ցՄ'ըքերայս, զգոյշ լեր". Աշկերտեալս նոյն
արկանելոյ է բանս, նա և ամենայն իսկ ուրեք աչադին
է. որպէս յորժամ ասիցէ. "Զգոյշ լերուք 'ի չանց
անտի". և դարձեալ եթէ "Զգոյշ լերուք մի ոք իցէ
որ զձեզ կողոպտիցէ". և այլուր. "Զգոյշ լերուք զա-
ցէ իշխանութիւնս մեր այս գայթակղութիւն լինիցի
տկարաց": Այլ ամենայն ուրեք ուր և երկեցուցանել
կամիցի, այսպէս ասէ. և աստ եթէ "Զգոյշ լեր սպա-
սաւորութեանդ զոր ընկալար 'ի տէր": Որպէս զի չասա-
ցէ իսկ նմա անձին տէր լինել, որպէս և ինքն իսկ ասէր.
"Եթէ կամաւ զայս գործեմ, վարձք են ինձ. և եթէ
ակամայ, տնտեսութիւն հաւատացեալ է ինձ": "Զի
լցցես, ասէ, դու զգա". այն իսկ է զի ցանկ 'ի նմին
փոյթ զամանիցի: "Զոր ընկալար 'ի տէր": Դարձեալ
և աստ 'ի տէրն տէր է. նա ետ քեզ, ասէ, և ոչ մեք:
Այլ զնոսա հնազանդէ նմա յորժամ յայտ առնիցէ ե-
թէ յոյյ հաւատացեալ է նմա սպասաւորութիւնն:

"Ողջոյն լիցի ձեզ, ասէ, կապանացս իմ. շնորհք ընդ
ձեզ": Երկիւղն պարզեաց 'ի նոցանէն. զի թէ վար-
դապետն 'ի կապանս իցէ, այլ շնորհքն արձակ են: Այս
և այն իսկ շնորհաց է՝ թողացուցանելն նմա 'ի կապանս
մնանելոյ: Այլ լուր Պ ուկայ. "Պարծանս, ասէ, առա-
քելքն յերկոսց առաքելոյն, և ուրախ էին զի արժանի
եղեն վասն անուանն անարգիլ": Այլ արդարև արժա-
նի իսկ լինել է՝ և անարգիլն և 'ի կապանս մնանել վասն
անուանն: Զի եթէ ցանկացեալ ոք ուսեք իցէ, զոհա-
համարի վասն նորա չարչարանս կրել, որչափ ևս առա-
ւել վասն Քրիստոսի:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Այլ արդ մի արտմեսցուք ընդ նեղութիւնս մեր որ
վասն Քրիստոսի իցեն. այլ յաւէժ լիցին և մեզ կա-
պանքն Պաւղոսի, և նոյն եղիցին մեզ յորդորիչ: Եթէ
խորասիցես զանձնս ազգաւանց ասալ վասն Քրիստոսի,

յուշ արասջիր նոցա զկապանսն Պաւղոսի, և զանձն և զնոսա եղբարս համարեսջիր. եթէ նա զմարմինս եւս 'ի կապանս մատնեաց վասն նոցա, դու և ոչ կերակրելով զքաղցեալս՝ լինիս հաղորդ ողորմութեանցն: Յուշ արա զկապանսն Պաւղոսի, թէ չկրեցեր ինչ այնպիսի չարչարանս. և չցանկանայցես այսուհետև ընչից ընկերին: Յիշեա զկապանսն Պաւղոսի, և տեսջիր զիարդ անպատեհութիւն է՝ նմա այնչափ 'ի վիշտս կալ, և քեզ այդչափ փափկանալ:

Յանկանայցես դրգութեան, զմտաւ ածջիր զկապանսն Պաւղոսի. զի նորին աշակերտ ես և նորին զինուորակից. զիարդ 'ի դէպ իցէ զզինուորակիցն 'ի կապանս տեսանել և զանձն 'ի դրգութեան: Նեղութիւն ինչ 'ի վերայ հասանիցէ, և կարծիցես եթէ թողար 'ի ձեռաց. առաջի աչաց նկարեա զկապանսն Պաւղոսի, և տեսանիցես եթէ 'ի նեղութեան լինել չէ 'ի ձեռաց թողլոյ նշանակ: Այլ յորժամ 'ի միտ անկանիցի կերպասեայ հանդերձ զգենուլ, յիշեսջիր զկապանսն Պաւղոսի, և քան զկապերտան ապարահից անարգագոյն ես թուեսցին քեզ, և կամ որ ընդ այլ զարդ ինչ թաւալեալ իցեն: Կամիցիս ոսկի զարդս կրել յանձին. զմտաւ ածջիր զկապանսն Պաւղոսի, և քան զչուան ինչ հին չթուիցի քեզ այն լաւագոյն: Կամիցիս ծամս գործել և գեղեցիկ երևել. 'ի մտի նկարեսջիր զերկաթն Պաւղոսի 'ի բանտին, և խանդաղատեսցին միտք քո յայն գեղ. և զքո այժմեանն զարշելի համարեսջիր, և դառնապէս հեծիցես հառաչիցես, ցանկացեալ նորա կապանացն: Կամիցիս մօրուք և ծամիր յաչսդ և յայտս նկարել, և այլ ինչ նոյնպիսիս. զմտաւ ածջիր զարտասուս նորա: «Երրեամ մի զցայգ և զցերեկ ոչ դադարեցի արտասուօք խրատել և ուսուցանել». և այնպիսի զարդու զարդարեա զայտսդ. իբրև զմարգարիտ հեղուցուս զերեսօքդ զարտասուս, և այն իցէ որ առաւել գեղեցկագոյն զայտսդ առնիցէ: Չասեմ եթէ վասն այլոց մեղաց արտասուեսջիր. կամել և զայն կամիմ, այլ վերագոյն քան զքեզ է այն. գոնեա զի վասն քոյոց մեղաց առնիցես՝ խրատեմ:

Հրամայեցեր կապել զծառայն, զայրացար, բարկացար. յիշեա զկապանսն Պաւղոսի, և վաղվաղակի ցա-

ծուցանիցես զպարկուԹիւնն. զմտաւ ածջիր՝ զի 'ի կապելոցն եմք մեք և ոչ 'ի կապելեացն. 'ի արտաքսականացն, և ոչ 'ի նոցանէ որ զսիրտս բեկանիցեն: Յայրաստեցար; քրքջեցեր՝ մեծամեծս. 'ի միտ առ զնորա լալն և զհեծելն, և ես զուարԹագոյն զքեզ արտասուքն ցուցանիցեն: Տեսանիցես զխաղս և զխնձոյս այլոց, զկաքաւս և զկատակուԹիւնս. յիշեսջիր զնորա արտասուսն: Ո՛ր աղբիւրք այնպէս յորդաբուղխ բղխիցեն՝ որպէս նորա աչքն զարտասուսն. "Յիշեցէք, ասէ, զարտասուսն իմ". որպէս և աստ՝ Թէ "Յուշ լիցին քեզ կապանքս իմ". և նմանագոյնս ասաց նոցա զայս, յորժամ յեփեսացւոց քաղաքէ կոչեաց զնոսա 'ի Միլետոս: Քանզի ընդ վարդապետումն խօսէր, զի 'ի նոցանէ զվշտակիցս լինել պահանջէ, և 'ի սոցանէ զվշտանալն միայն:

Ո՛ր աղբիւրս կշռեցես արտասուացն նորա. մինչ Թէ զայն որ 'ի դրախտէն ելանէր և արբուցանէր զամենայն երկիր. այլ չասես այնմ հանգոյն. քանզի արտասուացն աղբիւր զոգիսն ոռոգանէր, և ոչ զերկիր: ԵԹէ ոք մեզ զՊաւղոս արտասուօքն և յոգւոցն հանելով ցուցանէր, չէր այնպէս գեղեցիկս տեսանել բիւրոց բիւրս պարս կաքաւչաց զուարճալից պսակեալս: Ես չասեմ ինչ ըղձէնջ, այլ եԹէ ոք 'ի Թատերացն և 'ի բոզանոցաց յանկարծ յափշտակէր զոք երիտասարդ 'ի վեղխելոցն, մելգնեալ կողեալ 'ի մարմնոյ ցանկուԹիւնս, և ածէր կացուցանէր առջին մի կոյս նմին համեմատ, 'ի նոյն տիս, 'ի նմին հասակի. և ես անցանէր զանցանէր զնովաւ՝ գեղով և հասակաւ. աչս ծաւիս, յօնս միակիցս, բիբս խաղատեաչս, մեղմս, քաղցրահայեացս, ցածունս, հանդարտագոյնս. մեղմ 'ի նստել, ցածուն 'ի յառնել, ընդաստացեալ, համեստագոյն լի ամենևին շնորհօք. առտևանունս ԹոյրաԹուխս, ներքոյ և արտաքոյ անտառախիտ մազառաձև զարդօքն պաճուճեալ, որպէս Թէ շունչ ինչ և ոգի 'ի բիբսն կայցէ. ճակատն պազպաջուն, այտքն 'ի ներքոյ միահարԹք, երկայնածնօտք, յղկեալք մարմարաձևք, կլափն բոլորակ, ունչքն պորզք, շրԹունքն հաստարակ, ատամունքն սպիտակք, ամենևին գեղեցիկ, բնաւին վայելուչ: Ապա և զՊաւղոս ոք ածէր արտասուօքն՝ հանդէպ նմին կացուցանէր, Թուի ինձ, Թէ և կարի ոք պակշոտեալ երիտասարդն էր, Թողոյր զայն-

չափ գեղեցիկ երեսս, և 'ի սոս դառնայր. քանզի առաւել լուսաւորութիւն 'ի սորա աչացն արձակէր. զի հոգևոր և շնորհալից է։

Այն զեղ զերկնաւորացն միտս զրքէ և պայծառէ, և այլս խրբէ 'ի կրակի. և սա նմին հակառակ ցածուցանէ և զովացուցանէ։ Զիք ինչ գեղեցիկ քան զայս աչս, որ զագխս տեսողին գեղեցկագոյնս գործէ. պարզէ զորովայնն, զզաստութեամբ լնու զմիտսն, իմաստակից վրշտացելոց լինելոյ կազմէ զխորհուրդ. նա և զանզգամագոյն ևս զմիտս կարող է կակղել։ Այնու արտասուօք ոռոգանին եկեղեցիք, նովին տնկին տունկք հոգևորք։ Եթէ հուր բորբոքեսցի, կարող են արտասուքն շիջուցանել, եթէ փնեալս և եթէ անփշինս. բաւական են արտասուքն և զնետս մոլոս չարին շիջուցանել։

Յուշ լիցին և մեզ այսուհետև արտասուքն նորա, և զամենայն ինչ զաշխարհիս արհամարհեմք։ Այսպիսի արտասուաց ետ երանութիւն Քրիստոս. "Երանի, ասէ, որ սգայցեն այժմ, զի նոքա մխիթարեսցին"։ Այսպիսի արտասուս և Եսայի և Երեմիա հեղուին. զի մին ասէր. "Թող տուք ինձ՝ լացից դառնապէս". և միւսն՝ եթէ "Ո՛ տայր գլխոյ իմ ջուր, և աչաց իմ աղբիւրս արտասուաց". որպէս զի թէ բնութեամբ արտասուքն չիցեն բաւական։

Զիք ինչ քաղցր քան զայնպիսի արտասուս. քան զամենայն ծաղու հեշտականս են. և գիտեն՝ որ զայն սուգ սգայցեն, թէ որպիսի ինչ մխիթարութիւն կայցէ յնոսն. մի չըղձանալի համարիցիմք զնա, այլ առաւել ըղձանալի։ Ոչ եթէ որպէս այլոց ինչ մեղանչելով, այլ որպէս թէ քոյդ նոցա մեղանչելոյն մեզ բեկանել։ Զայնպիսի արտասուս յիշեսցուք. այն կապանք յուշ լիցին մեզ. ապա ուրեմն և կի կապանաց արտասուս հեղցը. չտայր նմա թոյլ ուրախութիւն կապանացն չզգալ զմահ կորուսելոցն՝ որք կապեցինն զնա. քանզի և զնոցանէ ասէր. զի նշանակեալ էր այնորիկ՝ որ արտասուս արկանէր 'ի վերայ քահանայիցն հրէից. ոչ զի 'ի խաչն հանելոց էին զնա, այլ զի ինքեանք կորնչէին. և ոչ զի ինքն միայն տանէր զայն, այլ և այլոց թերևս լինէր՝ թէ "Մ՛ի զիս լայք, դստերք Երուսաղէմի, այլ զանձինս"։

Այլքն որ մինչ յարտասուս ողողանէին, զզրախտն

տեսլեն և զերրորդ երկինսն. այլ ոչ այնչափ ինչ երանեմ՝ զի զայնպիսի տեսիլս տեսին, այլ զի այնպիսի արտասուս հեղուին։ Տեսին և զՔրիստոս, և արդարեւ երանելի իսկ է՝ զի զՔրիստոս տեսանէին, քանզի և ինքն իսկ այնու պարծի. «Ո՞չ առաքեալ, ասէ, զՅիսուս ՔՍ զտէրն մեր աչօք տեսի»։ այլ եւս երանելի այնու էին՝ զի զարտասուսն հեղուին։ Զի տեսանելոյն բազումք իսկ եղեն նմա հաղորդք. և որք ոչն տեսին՝ նոցա առաւել երանի տայ Քրիստոս. «Երանի իցէ, ասէ, նոցա՝ որք ոչն տեսին զիս և հաւատասցեն»։ իսկ այնմ ոչ եթէ բազումք հասին։ Զի եթէ կալ-մնալ առաւել վասն Քրիստոսի՝ քան զզատանելն և ընդ նմա լինել՝ կարեւորագոյն իցէ վասն այլոց փրկութեան, ապա և քան տեսանելն զնա, վասն նորա յօգուտ համբել առաւել կարեւորագոյն է։ Զի թէ քան ընդ նմա լինել, վասն նորա 'ի գեհեն երթալ՝ աւելի ցանկալի իցէ, ապա և քան ընդ նմա լինել՝ վասն նորա մեկնել 'ի նմանէ՝ եւս առաւել ցանկալի է. զի զայս իսկ ասէր՝ եթէ «Աղօթիւք խնդրէի ես ինքնին նզով լինել 'ի Քրիստոսէ վասն եղբարցն իմոց»։ որչափ եւս առաւել և արտասուելն վասն նորա քան զտեսանելն զնա՝ լաւագոյն իցէ։

Զղաղարեցի, ասէ, արտասուօք խրատել զամենայն մարդ։ Ընդէ՞ր. ոչ եթէ 'ի վշտաց ինչ զանգիտեալ, այլ որպէս թէ առ հիւանդի ոք նստիցի, և չգիտիցէ զինչ անցք անցանելոց իցեն, և արտասուիցէ առ դուռն, և կասկածիցէ թէ գուցէ վրիպիցէ 'ի կենացն. նոյնպէս և նա կասկածէր եթէ գուցէ վրիպիցեն յերկնից։ Զայժամ տեսանէր զտկարն և սատանել ոչ կարէր, այնուհետև զարտասուս հարկանէր։ Զայն և Քրիստոս արար, զի գոնեա յարտասուացն ակնածիցեն։ Ա՞կնածնչէր ոք, և սատանէր, և նա արհամարհէր զասացեալն և յանդըգնէր. դարձեալ զարտասուս հարկանէր, զի գոնեա այնպէս դարձուցէ։

Զայնպիսի արտասուս յիշեսցուք, և այնպէս մխուցուք զդստերս մեր. նոյնպէս արկցուք և 'ի վերայ առաւելոց արտասուս յորժամ 'ի չարիս տեսանիցեմք, կանայք՝ որ ցանկանան կանացին, յիշեսցեն զարտասուսն Պաւղոսի և յօգուտ համեցեն. երանելիք և երջանիկք՝ որ յառաջագոյն նստիցին, և 'ի ցանկութեանն հարեալ

զանկեալ, զայն յիշեսցեն ։ Որ 'ի սուգն իցեն, փոխիցեն զարտասուս ընդ արտասուացն . զի ոչ եթէ զմեռեալս լայր նա, այլ զկենդանիս և զկորուսեալս ։

Բոսացից և զայլ ինչ արտասուս . լայր և Տիմոթէոս սրբոյն աշակերտ . " Յիշեմ, ասէ, զարտասուսն քո, զի ուրախութեամբ լցայց „ ։ Եղգումք և առ խնդութեան արտասուեն . քանզի խնդութեան իսկ իրք են և յաճախ խնդութէ ։ Բայպէս չեն ինչ ծանր արտասուքն . այլ առաւել ևս լաւ որ 'ի հոգևոր խնդութենէն իցէ՝ քան զայն որ յաշխարհիս խնդութենէն լինիցի . և լուր մարգարէին . " Լուաւ, ասէ, տէր ձայնի լալոյ իմոյ . լուաւ տէր ձայնի խնդրուածոց իմոց „ ։ Նաև ո՞ր չիցէ պիտանի արտօսրն . յաղօթս . ո՞չ եթէ 'ի խրատս ։ Նաև մեք բամբասեմք զարտասուսն, զի ոչ յոր տուեալ են՝ յայն ծախեմք . յորժամ մխիթարեմք զեղբայրն յանցուցեալ՝ որ 'ի սուգ և 'ի տրտմութեան իցէ, լաւ պարտ է . յորժամ խրատ ումեք տայցեմք և չանսայցէ՝ այլ կորնչիցի, լալ պարտ է ։ Բայլսի արտասուք զգաստութեան և իմաստութեան են ։ Իսկ յորժամ աղքատանայցէ ոք, և կամ 'ի մարմնաւոր ցաւս անկանիցի և մեռանիցի ևս, չէ պարտ լալ . քանզի չէ արտասուաց արժանի ։

Զոր օրինակ զծաղր բամբասեմք՝ յանդէպ ժամանակի զնա 'ի կիր արկանելով, նոյնպէս և զարտասուսն՝ յանպատշաճ ժամանակի նովին վարելով . զի երկոցունց առաքինութիւն յայնժամ երևի, յորժամ գործն յօգուտ ինչ պէտս գայցէ . իսկ յորժամ յանօգուտ ինչ, անդ չէ ինչ պիտանացու ։ Բայլսի ինչ, զի գինի յուրախութիւն տուեալ է, այլ ոչ եթէ յարբեցութիւն . հաց 'ի կերակուր, և խառնքն յորդէծնութիւն . որպէս և զայն ոմանք չար համարին, նոյնպէս և զարտասուսն . օրէնօք և կարգօք յօգուտ նկարեսցեն, և տեսանիցես զիարդ ցանկալի ևս են իրքն ։ Զի՞ք ինչ որ իբրև զարտասուս ջնջիցէ զմեղսն, և գեղեցիկ և զմարմնոյն երեսս ցուցանիցէ . պարկեշտադոյն գործէ զդէմսն . չի՞ք ինչ քաղցր քան զաչս արտասուալից տեսանել . ազնուական անդամ 'ի մեզ և գեղեցկագոյն և մերձաւորագոյն՝ ակն է . որպէս և զոգին վշտագնեալսն տեսանեմք, նոյնպէս և աչօքն ըստ նմին խոնարհիմք ։

Նաև զայս ոչ եթէ վայրապար ինչ եղև ձառել մեզ

Որ տառապեալ է, ասէ, թող ընդ կենցաղ ան-
ցանէ : Այն զի տառապեալ է, պարտ է ցածութեամբն
զարդարել՝ փոխանակ մեծութեանն : Զիցէ ձեռնհաս
թախանձս և կռիւս 'ի մէջ բերել, ընդէ՞ր և անարգու-
թեամբն ևս քամահելի առնես զնա : Բարւոք է, և զո-
վեմ իսկ՝ եթէ կոյսք գայցեն զհերեանց հասակակիցն
պատուել, և առնականայքն զնա՝ որ 'ի նոցա համարի
լինելոց իցէ՝ մեծարել . բարւոք է, և չէ պարսաւելի,
այլ այնպէս իսկ է սահմանեալ յոյ, երկուց դասուցն
վայելէ մտանել 'ի հարսանիս՝ կուսիցն և առնականաց .
նոքա տան, և սոքա առնուն, և հարսնն 'ի միջի կայ, ոչ
կոյսն և ոչ առնակինն, այլ դեռ անտի ելանէ, և 'ի
միւս սահմանն մտանէ : Իսկ բոզիցն վատախնդրաց անդ
զի՞նչ խնդիրք կայցեն . պարտ էր նոցա ամաչել և 'ի փա-
պարս երկրի մտանել՝ յորժամ հարսանիք լինէին . քան-
զի ապականիչ հարսանեաց պոռնկութիւն է . մեք ա-
ւասիկ զնոսա ածեմք 'ի հարսանիս :

Այլ յորժամ գործ ոք ինչ գործիցէ, և բանիւք ան-
գամ զնոցա հակառակն խօսել լսել . յորժամ սերմա-
նիցէ ոք և կամ զինի 'ի հնձանէ կրիցէ՝ ոչ լսել կամի
զանուն քացախոյ և ոչ ասել . իսկ ուր ցածութեանն ա-
նուշութիւն գործիցի, զիա՞րդ իցէ զի զքացախ 'ի մէջ
բերիցեն . քանզի քացախ իսկ է պոռնկութիւնն : Յոր-
ժամ իւղս ինչ 'ի խնկոց կազմիցես, զհոտ ինչ յոռի
չհպես անդ . իւղ անուշութեան են հարսանիքն, ըն-
դէ՞ր զտղմոյն հոտ 'ի խանգարեալ[1] իւղոյն անդր մուծա-
նիցես : Ընդէ՞ր աւիցես, եթէ կաքաւիցէ այս անուն
կոյս . և չամաչիցէ հարսն ընդ ծանականս իւրոյ հասա-
կակցին . զի քան սմա՝ նմա ևս պարտ էր երևել պար-
կեշտագոյն :

Մի՛թէ 'ի կռիւս մարտկաց կազմիցես զկոյսն . բնաւ
և երևել իսկ 'ի հարսանիսն պա՛րտ ինչ էր կուսին :
Զտեսանիցե՞ս յարքունիսն, զի պատուականքն՝ փայրա-
պար արտաքս չելանեն, այլ 'ի ներքս 'ի սենեակս թա-
գաւորաց համապազորդին . և աւելորդքն խառն արտա-
քոյ շրջին : Այլ կուսին պարտ է 'ի ներքս առ հարսինն
նստել, և մի արտաքոյ զվայրօք ածել զկուսութիւնն, զի

1 Միւսն՝ 'ի խանգարելոյ :

զգլխաւորութիւն երկու կողմնացութեանն ցուցանէ ։ Առաջինն՝ զմին յերկուս բաժանեալ, և կամի ցուցանել թէ յետ բաժանելոյն նոյն մին կայ միայն. չեւս թոյլ բաժանան լինել միոյն 'ի ծնունդս. քանզի չէ մի և չև՛ եւս է մի, այլ կէս միոյ. և յայտ անտի է՝ զի միայն չծնանի որդիս. եթէ մի էր, ապա և որդիս ծնանէր իբրև զառաջինն ։

Տեսանես զխորհուրդս հաւասարեացն, որոր 'ի միաջէ մի, և դարձեալ զերկասեան զնոսա արարեալ մի, ասանէ միւս եւս։ Այպա արկեմ և այժմ 'ի միջէ ծնանի մարդ. քանզի այր և կին չեն երկու մարդք, այլ մի մարդ։ Այս 'ի մտաւոր իսկ իրացն և նմանայն ուսուք հաւատարիմ է. և 'ի Յակոբայ, և 'ի Մարեմայ մերէն Քրիստոսի, և յասելոյն եթէ. արու և էգ արար զնոսա։ Եթէ ամն գլուխ է, և ամն մարմին, զխառն իցեն երկու. վասն այնորիկ ամն զաշակերտի, և ամն զվարդապետի կարգ ունի. ամն զիշխանի, և ամն զիշխանաւորի։ Այս և անդստին իսկ 'ի մարմնոյ ստեղծուածոյ անսանիցէ որ՝ զի մի են. քանզի 'ի կողէ միջէ եղև կինն, և իբրև խնդեմք են երկոքեան. վասն այնորիկ և օգնական կոչէ. զի ցուցցէ թէ մի են. Նմին իրի իսկ և քան զՀայր և զՄայր՝ նախամեծար զամուսինն ասէ, զի ցուցցէ թէ մի են. Նոյնպէս և Հայրն և Մայրն խնդան ընդ ուստերն և ընդ դստերն ամուսնութիւնն, իբրև ընդ իւր ինչ անդամոց որ փութայցէ 'ի մարմինն խառնել։ Այս թէպէտ և բազում ծախք ծախիցին, և ընչիցն նուազութիւն լինիցի, չախորժէ ամուրի տեսանել զորդին իբրև անջատ ինչ 'ի մարմնոյ, անկատար յորդեծնութեանն. և երկոքին կողմանքն անկատարք 'ի կացուցանելոյ զկենաս աշխարհիս։ Վասն այնորիկ և մարգարէն ասէ, թէ "Միացորդք է ոգւոյ քո"։

Այս զխառն առնելոյն մի մարմին։ Որ օրինակ զսակող եթէ զոսկերն ընտրիցես և ընդ այլ ոսկի խառնիցես, նոյնպէս և աստ կին հաւատարմացուցն է. իբրև զձուլեալ ինչ զզանկութիւնն ընդունի կինն, ժողովէ և մեծացուցանէ. նա և յերկրէ ինչ նպաստ 'ի նոյն լինի, և ածէ յայս, և հատուցանէ զխառնն զոր առ. և մանուկն իբրև կամուրջ իմն 'ի միջի անկանի, որպէս զի երկոքին մի մարմին լինիցին, մանկան յերկոցունց կողմանցն ընդ

Նշանակ՝ թէ և զմիմեանց խորհուրդ իցէ եկեղեցւոյ։ Որ օրինակ և Քրիստոս եկն առ եկեղեցի. և յորժամ հեռի էին՝ հաղորդ անմահութեանն անմահանալով ընդ նմա. "Խօսեցայց զձեզ, ասէ, առն միում իբրև զկոյս մի սուրբ". և "Զի ՚ի նմանէ եմք, և անդամք, ասէ, յան-դամոց նորա, և ոսկր ՚ի մարմնոյ նորա". Ոչ այս միայն.զմիաւ ածեալ, մի՛ ինչ ամօթ համարեսցուք զայս-պիսի խորհուրդ. օրինակ Քրիստոսի զարատեանն են հարսանիքն, և զու առաքինոյն և զեղխիս։ Նշէ ասա, եւ թէ զպատկեր թագաւորի տեսանէիր միթէ ամօթ համարէիր. և ոչ երբէք։ Ուրեմն թէ անխտիր ինչ իցէ հարսանիքն իցեն. և այն իսկ է պատճառք ամենայն չարեաց, զի անխտիրն համարին. և լի ամենայն անօրէնութեամբ, աղտեղութեամբ, մորապաբանութեամբ, խառնխօսութեամբ, խեղկատակութեամբ. "Խեղկատակութիւն, ասէ, ՚ի բերանոյ ձերմէ մի՛ ելցէ". և անդ խեղկատակութիւնն և մորախօսութիւնն և գարշաբանութիւն յաճախեն։ Որուխտի են իրքն և մեծամեծ գովութեանց՝ որ ընդ նա ընդելանել գիտիցեն. նա աւանիկ միղայն արտեսուտ եղև։

Մի՛ վայրապար անցանել ընդ իրսն համարիցիք, այլ մեծաւ փութով և բազում խնամութեամբ. և ահաւանիկ սատանայի զօրս գումարեալ՝ խաղացեալ գայ ՚ի վերայ. զի ուր արբեցութիւն է, անդ է անառակութիւն. և ուր խառնխօսութիւն, անդ մօտակաց սատանայ զիւրսն բերեալ ջամբէ նոցա։ Նշէ ասա, զխորհուրդ Քրիստոսի կատարես, և զսատանայն կոչես։ Ուրեմն և ծանրապատուակ իսկ զիս համարիցիք. քանզի որ յանդիմանէն՝ ծանր թուի։ Մի՛ ինձ, այլ Պաւղոսի լուարուք. "Զամենայն ինչ զոր և առնիցէք, ասէ, եթէ ուտիցէք, եթէ ըմպիցէք, եթէ զինչ և գործիցէք, ՚ի փառս Աստուծոյ արասջիք". դուք աւասիկ ՚ի հայհոյութիւն և յանփառութիւն գործէք զինչ գործէքդ. լսիցէք մարգարէին. "Ծառայեցէք տեառն երկիւղիւ, և ցնծացէք առաջի նորա դողութեամբ": Դուք աւասիկ զաւլամբ իւրն երթայք և զեղխիք։ Մարթի ուրախ լինել և զգուշանալ։

Նմանս քաղցր նուագաց լսել. մի՛ սատանայականացն, այլ հոգևորականաց։ Նմանս զպարս գեղուսպացն տեսա-

նել. զհրեշտակացն տես և մի՛ զմարդկան։ Այս զիա՞րդ մարթիցի, ասեն, զայն ստանալ։ Այլ թէ զայն ամենայն 'ի բաց հալածիցես, զոր Քրիստոս յայտնապէս հրամա-նիս. և յորժամ Նա՛ գայցէ, և հրեշտակաց պարքն հասանեն. եթէ կամիցիս՝ և այժմ սքանչելիս գործէ, 'ի Ջրոյ գինի արարեալ և առնել զարմանալի. զլուծ և զմեղկ և զցուրտ ցանկութիւնն 'ի հոգևորն փարձա-ցէ. և այն իսկ մեծ է քան 'ի Ջրոյն գինի առնել։ Որ փողահարքն իցեն, անդր չմտանէ Քրիստոս. և եթէ մտանիցէ, նախ 'ի բաց հրամայէ հանել զնոսա, և ապա առնէ զսքանչելիս։ Ոչինչ քան զստանայական մտաց անհեթեթ կայցէ. զի ուր նուագք ինչ և մանաւանդ չընտրի-ցին, այն բնաւ իսկ խուլ է. և եթէ նուագքն ևս և մասն ընտրիցին, ապա այս և այն անպատկառութիւն է և լկտութիւն։ Ոչինչ քաղցր քան զպատուականութեանն նուագս, և ոչ հեշտական քան զհամեստութեանն, և ոչ ցանկալի քան զպարկեշտութեանն։ Որպէս որք ա-րարցեն հարսանիս, որպէս և ես ասեմ, ապա ստանայիցեն անդ զխնդութիւն։

Այս որպիսի ինչ զօրէն հարսանեացն ասիցեմ։ Մի՛ իս-դիք. նախ այր աղջիկ խնդրեսցէ կուսին և վերակացու, որպէս թէ անճառանց գնելոյ զնիւթս. մի՛ իբրև զաղա-խին; այլ իբրև զդուստր առցես. մի՛ ինչս խնդրիցես, մի՛ զազգն ընտրիցես, այլ զբարոյսն. մի՛, թէ աշխարհս մեծ ունիցի, և մի՛, թէ և գանձս բազումս. այլ միտս խոհեմս, և երկիւղածութիւն, զճշմարիտ իմաստութեան զոյգ երկիւղին։ Այլ թէ կամիցիս զհեշտ կեանս կեալ ընդ դստերն, մի՛ մեծա-տուն առն տայցես ցանկանալ. զի այնու ոչ միայն չօգնի, այլ և վնասի ևս. զի աղախինն փոխանակ ազատի լինիցի. ոչ այնչափ յանկուցին չա՛հի զհեշտութի, որչափ յաղախ-նութենէն զդժնդակութիւնս. մի՛ խնդրեր զայնպի-սին, այլ որ ըստ քեզ ոք իցէ. և եթէ հնար ինչ իցէ՝ զաղքատագոյնն, և մի՛ որ քան զքեզ մեծատուն ոք իցէ՝ եթէ ոչ վաճառել սեպհ, այլ առնել առն կամիցիս ըն-դունօղն։ Յորժամ տայց 'ի վերայ առնն առաքինու-թեանն հասանիցես և տալ կամիցիս, աղաչեա զՔրիս-տոս գալ 'ի հարսանիսն. չհամարի ամօթ, քանզի խոր-հուրդ է իւրոյ գալստեանն։ Մանաւանդ և յայնժամ իսկ աղաչեսջիր, յորժամ զուգն[1] կամիցիս զնել և առ-

1 Այսպէս յօրինակին, որ և չէր 'ի յոյնն։

ուսուցու[1] առնել, թէ ահա զաւ պատրաստես բարիոք մանկանն. և մի առնիր 'ի վայր քան զծառայն Աբրահամու, որ այնչափ տարաշխարհս առաքեալ՝ գիտաց թէ յո՛ պարտ է աղաւթան լինել. վասն այնորիկ և անենայնի եհաս:

Յորժամ շրջիցիս և խնդրիցես զայր[2], դարձեալ աղօթս արասջիր, թէ ահա զոր կամիս զու պատրաստես. 'ի նա աղաւթան առնիցես զիրսն. և յորժամ այնու պատուիցի՝ հաստացանէ քեզ զփախուստենն. Արկաւս ինչ իրս պարտ է առնել, և զնա աղաւթան առնել, և զորպիսի ոք և նա կամիցի:

Այլ յորժամ հարսանիս կամիցիս առնել, մի շրջիցես ամնէ 'ի տուն, և հայելիս խնդրիցես, զմայրն ասել, և հանդերձս յանօթս. զի ոչ 'ի ցոյց ինչ են իրքն, և ոչ ընդ հրապարակս փարես զզաւսարն, այլ ուրախ առնես զառունն ընտանեօքն հանդերձ: Կոչեա զզրացիս և զազրեկամս և զազգականս. զորս գիտիցես եթէ հանդարտաւքեալք իցեն՝ զնաւս կոչեսջիր, և նոքիմբ խրախ տուր շառտանաւղ. մի ոք 'ի կաքաւչաց զացցէ անդր. զինչ պիտոյ են աւելորդ ծախքն և ծանակութիւնք: Նախ քան զամենեսեան զՔՍ կոչեա. գիտես իսկ՝ յոր ձեռն կոչիցես զնա: "Որ ոք արասցէ, ասէ, միում 'ի փոքրըկանցս յայսցանէ, ինձ արար". մի դսրովանաց ինչ զերսըն համարիցիս. զի աղքատօքն զՔրիստոս կոչես: Զարդարեսջիր զհարսնն, մի ոսկի զարդուք, այլ ցածութեամբ և հեզութեամբ համապազորդ հանդերձկաւն. փոխանակ ոսկի և մարգարտեայ զարդուց՝ զամօթ և զակնածութիւն զգեցուցանիցես, և չխնդրել զայնպիսի ինչ. մի ինչ խառվութիւն գործիցի, մի ինչ աղաղակ լինիցի. կոչեսցի փեսայն, և առցէ զկոյսն: Ճաշ և ընթրիքն մի արբեցութեամբ, այլ բաւականութեամբ և խրախութեամբ հանդերձ. և տեսջիր որչափ ինչ բարութիւնք անտի ծնանիցին. և չհասանիցէ այնպիսի ինչ տեսանել, որպիսի ինչ այժմ գործք 'ի հարսանիսն գործիցին. եթէ հարսանիս և ոչ ձազութիս պարտ իցէ կոչել զայն:

Վաղվաղակի իբրև զբաւ հարսանեացն լինիցի, հօգք

1 Այլուրեք յօրինակին. յոյնն ֆիլոսոփ այնպիսի փող:

2 Այլուրեք յոյնն. յօրինակին պայծառ:

և կրակածք 'ի վերայ հասանիցեն, եթէ զուցէ կորեա-լինչ յանօթոցն՝ զոր 'ի զարգն առեալ էր. և այն ադա-մանդ զակնեղէնն կայցէ. մանաւանդ թէ ոչ զակնեղէնն, այլ և զհարսանեացն. զի այնուհետև ամենայն հոգք ոչ սկեսրին՝ այլ հարսին լինիցի։ Դա և զբանն խակ ամե-նայնի ուսանել որդւութեան պատճառք են, և ամենե-թափուր յառաջադատելութենէ։ Յայսմ հարսանիս ՔՍ է, և յայսմ սպասաւոր. անդ անհոգութիւն, և աստ հոգք. անդ խաղաղութիւնք, և աստ տրտմութիւնք. անդ ոչ ինչ կարի ծախք, և աստ անթիւ և անծախս լի-նել. անդ համեստութիւն, և աստ անպատկառութիւն. անդ աննախանձաւորութիւն; և աստ նախանձ. անդ սթափութիւն, և աստ արբեցութիւն. անդ փրկութիւն և 'ի նմին զգաստութիւն։ Ո՞չ այս ամենայն զսոսա ա-ծեալ, անդր քան զմեզ սահմանեցուցք զչարիսն. զի եղ հանձն լիցուք, և խոստացելոյ քաղաքութեանցն սիրելեացն նորա արժանի լիցուք հասանել շնորհօք և մարդասիրու-թեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԹՂԹՈՑՆ ԵՓԵՍԱՑՒՈՑ



## ՊԱՏՃԱՌՔ

*Եփեսոս մայրաքաղաք է Ասիացւոց. պաշտօնեայ հարկաւոր էր Արտեմեայ դիցն, և քան ամենայն ուրեք առաւել անդ պաշտէին զայն դիւն: Եւ այնպէս սաստիկ էր դիցապաշտութիւնն 'ի քաղաքին, զի թէպէտ և այրեցաւ մեհեանն, և ոչ զանուն անգամ այրեցողին կամեցան յայտնել, որպէս թէ չիցէ ձեռնհաս այրել զայնպիսի մեհեան. այլ այնպէս կարծեցուցանէին թէ իւր իմն այնպիսի կամք եղեն. Եւ երանելին Յովհաննէս աւետարանիչ յաճախապէս անդ պարապէր. քանզի անտի իսկ տուաւ յաքսորս, և անդ վախճանեցաւ: Եւ զՏիմոթէոս Պաւղոս անդ եթող, որպէս և իւր իսկ գրեալ ասէ. "Որպէս հրաման ետու քեզ կալ յԵփեսոս": Եւ և բազումք 'ի փիլիսոփայիցն նշանաւորք և երևելիք 'ի կողմանցն Ասիացւոց էին. և ըղՊիթագորայ իսկ ասեն թէ անտի էր, և ամենայն իսկ յունալեզուք նշանաւորք Պարմենիդէս և Զենոն և Դեմոկրատէս. նա և այժմ բազում փիլիսոփայք գտանին անդ: Եւ զայս ոչ եթէ վայրապար ինչ եղև ասել, այլ առ 'ի ցուցանել թէ բազում փոյթ եղև Պաւղոսի գրել առ նոսա: Բայց ասի թէ հաւատացան, քանզի 'ի վաղուց իսկ հաւատացեալք էին. և վասն այնորիկ բարձրագոյն կրօնիւք լի է թուղթս: Եւ գրեաց զսա 'ի Հռովմէ մինչդեռ 'ի կապանս կայր, որպէս և ինքն իսկ*

ասէր, եթէ "Աղօթս արարէք 'ի վերայ իմ, զի ինձ տացի բան 'ի բանալ բերանոյ իմոյ՝ համարձակութեամբ ցուցանել զխորհուրդ աւետարանին վասն որոյ կապեալս կամ,,։ Այլ բարձրագոյն և առաւել մտօք լի է թուղթս, որպէս գրեթէ ոչ երբէք ճառեաց այսպիսի ինչ. որպէս յորժամ ասիցէ՝ թէ "Յայտնեսցի իշխանութեանց և պետութեանց որ յերկինս են, եկեղեցեաւ բազմապատիկ իմաստութիւնն այ,,. և դարձեալ թէ "Ընդ նմին յարոյց և ընդ նմին նստոյց զմեզ յերկնաւորս 'ի Քրիստոս,,. և դարձեալ թէ "Այլոց ազգաց ոչ յայտնեցաւ որպէս այժմ յայտնեցաւ սրբոց իւրոց առաքելոց և մարգարէից հոգւովն՝ լինել հեթանոսաց ժառանգակիցս և մարմնակիցս և հաղորդս աւետեացն որ 'ի Քրիստոս Յիսուս,,։

## ՃԱՌ ԱՌԱՋԻՆ

"Պաւղոս առաքեալ Յիսուսի Քրիստոսի կամօքն այ սրբոցդ որ են յԵփեսոս և հաւատացելոցդ 'ի Քրիստոս Յիսուս. շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յայ հօրէ մերմէ և 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ,,։

Ահաւասիկ զկամս հօր ետ։ Իսկ արդ զիա՞րդ, փո՞քր ինչ պարտիցիմք համարել զհայր. և ոչ երբէք։ "Սրբոցդ, ասէ, որ էք յԵփեսոս հաւատացելոցդ 'ի Քրիստոս Յիսուս,,։ Ահաւասիկ սուրբս կոչէ զարս որ կանայս և որդիս և ծառայս ունէին։ Այլ այս 'ի կատարածէ թղթոյս յայտ է, որպէս յորժամ ասիցէն՝ եթէ "Կանայք, հնազանդ լերուք արանց ձերոց,,. և դարձեալ եթէ "Որդիք, հպատակ կացէք հարանց ձերոց,,. և "Ծառայք, հլու տերանց ձերոց,,։ Ի միտ առցուք եթէ որչափ ըմբռնեալ ունի այժմ ծուլութիւն և որպէս բանաւորք են իրք առաքինութեանն, և որչափ յայնժամ ազգի ազգի ընտրութիւն էր առաքինեացն, մինչև զաշխարհականս ևս սուրբս և հաւատացեալս անուանէին։ "Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յայ հօրէ և 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ,,։ Նայց շնորհս

և կոչեաց հայր զա՟ծ, քանզի այնր շնորհաց նշանակ է այս. որպէս. լուր սմին իսկ զիարդ ասէ այլուր եթէ "Զի էք դուք որդիք, առաքեաց ա՟ծ զհոգի որդւոյ իւրոյ 'ի սիրտս ձեր որ աղաղակէ աբբայ հայր",: "Նաև 'ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ",. Քանզի վասն մեր եղև կարօտ օծութեան օծեալն և երևեցաւ մարմնով:

"Օրհնեալ է ա՟ծ և հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի",: Հաւասարիկ ա՟ծ ասէ զհայր մարմնացելոյն. միթէ ա՟ծութեա՞նն. և ոչ երբէք, այլ մարմնաւորութեանն. որպէս և ինքն իսկ ասէ՝ թէ "Երթամ առ հայր իմ և առ հայր ձեր, և ա՟ծ իմ և ա՟ծ ձեր",: Որ ոչ գարշեցաւ լինել մարդ և առնուլ զկերպարանս ծառայի, ոչ դանդաղի կոչել իւրոյ մարմնոյն հայր զա՟ծ, զի ամենեքումբք մեզ ընտանեցուցանէ զա՟ծ հայր. զի թէպէտ և ա՟ծ յամենայնի է, որպէս և է իսկ, այլ զի օտարացեալ էր 'ի նմանէ ազգ մարդկութեանն, վասն այնորիկ չառնէր արժանի կոչել նոցա ա՟ծ: Նաև այսպիսի օտարութիւն Քրիստոսիւ ընտանեցաւ, քանզի զմեր տկարութիւնս իւր ընտանեցոյց. վասն այնորիկ ըստ մարդկութե՟ն իւրում կոչէ հայր զա՟ծ և ոչ ըստ ա՟ծութեանն: "Օրհնեալ է, ասէ, ա՟ծ որ օրհնեաց զմեզ յամենայն օրհնութի՟ս հոգևոր երկնաւորս 'ի Քրիստոս",: Զհրեականութիւնն ակնարկէ աստ. քանզի և օրհնութիւն էր և այն, այլ ոչ հոգևոր: Որպիսի՞ ինչ ասէ. "Օրհնեսցէ զքեզ ա՟ծ և օրհնեսցէ զծնունդս որովայնի քո. օրհնեսցէ զմուտ և զել քո",. իսկ աստ ոչ այնպիսի ինչ, այլ ամենայն օրհնութիւն հոգևոր: Արդ զի՞նչ պակաս իցէ. եղեր անմահ, եղեր ազատ, եղեր արդար, եղեր որդի, եղեր եղբայր և ժառանգակից և թագակից և փառակից. ամենայն ինչ շնորհեցաւ քեզ. "Զիա՞րդ ոչ նովաւ, ասէ, ամենայն ինչ շնորհիցէ մեզ",: Պտուղն որ 'ի քէն առաւ՟ն՝ մարմինն, 'ի հրեշտակաց երկրպագութիւն առնու 'ի սրովբէից և 'ի քրովբէից: Նաև արդ զի՞նչ պակաս իցէ. "յամենայն օրհնութիւնս հոգևորս",. Զի՞նչ ինչ աստ մարմնաւոր: Վասն այնորիկ 'ի բաց մերժեաց ասելովն՝ եթէ "Յաշխարհի աստ նեղութիւն ունիցիք",. և յայս ած հասոյց զմեզ: Զի որ օրինակ որք զմարմնաւորսն ունիցին՝ զհոգևորսն չհանդարտեն լսել, նոյնպէս և որ հոգևորացն հասանեն՝ նոցին չկարեն պա-

տահել, եթէ ոչ նախ 'ի մարմնաւորացն [1] 'ի բաց կացցեն։

Զինչ իցէ օրհնութիւն հոգևոր յերկնաւորսն։ Ոչ յերկրի որպէս և Հրէիցն՝ եթէ "Զբարութիւնս երկրի կերիջիք. և տաց ձեզ երկիր որ բղխէ զկաթն և զմեղր. և օրհնեսցէ ա՛ծ զերկիր քո"։ Իսկ աստ ոչ այսպիսի ինչ, այլ զի՛նչ. "Որ սիրէ, ասէ, զիս՝ զպատուիրանս իմ պահեսցէ. ես և հայր իմ եկեսցուք և օթեվանս առ նմա արասցուք". և "Որ լսէ զբանս իմ և առնէ զնոսա, նմանեսցի առն իմաստնոյ որ շինեաց զտուն իւր 'ի վերայ վիմի. շնչեցին հողմք, յարեան գետք և բախեցին զտունն և ոչ կործանեցաւ, քանզի հաստատեալ էր 'ի վերայ վիմի"։ Զինչ իցէ վէմն, եթէ ոչ երկնաւոր իրք որ 'ի վերոյ են քան զփոփոխմունս։ "Որ խոստովանեսցի զիս առաջի մարդկան, և ես խոստովանեցից զնա առաջի հօր իմոյ որ յերկինս է. և որ ուրասցի զիս, և ես ուրացայց զնա". և դարձեալ թէ "Երանի որ սուրբ են սրտիւք, զի նոքա զա՛ծ տեսցեն". և դարձեալ "Երանի աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւնն երկնից". և դարձեալ "Երանի որք հալածեալ էք վասն արդարութեան, զի բազում վարձս ունիք յերկինս"։ Տեսանե՞ս զի ամենայն ուրեք զերկինս ասէ և ոչ զերկիր և ոչ որ ինչ երկրի իցէ։ Եւ դարձեալ թէ "Մեր առաքինութիւնն յերկինս է, ուստի և փրկչին ակն ունիմք տեառն Յիսուսի". և դարձեալ թէ "Մի զերկրաւորս խորհիջիք, այլ զերկնաւորսն 'ի Քրիստոս Յիսուս" ասէ. այսինքն է եթէ Քրիստոսիւ Յիսուսիւ, և ոչ եթէ Մովսէսիւ են օրհնութիւնքն. որպէս զի ոչ այսպիսութեամբ առաւելութեանն, այլ և միջնորդաւն առաւել եմք քան զնոսա. որպէս և յեբրայեցւոց թըղթին ասէ՝ եթէ "Մովսէս հաւատարիմ է ամենայն տան նորա իբրև զծառայ առ 'ի վկայութիւն բանիցն ասացելոց. այլ Քրիստոս իբրև զորդի 'ի վերայ ամենայն տան իւրոյ, որոյ տունն մեք եմք"։

"Որպէս ընտրեաց զմեզ, ասէ, նովաւ յառաջ քան զսկիզբն յաշխարհիս՝ լինել մեզ սուրբս և անարատս առաջի նորա"։ Եւ զոր ասէս այսպիսի ինչ է, եթէ որով օրհնեաց զմեզ՝ նովիմբ և ընտրեաց, և այսուհետև ինքն տացէ մեզ զամենայն, քանզի ինքն է դատաւոր.

1 Պակասէր 'ի մերն 'ի մարմնաւորացն . . . Ու։

և ասիցէ "Եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւն 'ի սկզբանէ աշխարհիս". և դարձեալ թէ "Ուր եսն եմ, կամիմ զի և նոքա անդ իցեն": Այլ զրեթէ յամենայն թուղթսն զայս առաջնոյ ցուցանել՝ եթէ կրտսեր ինչ չեն մեր իրքս, այլ անդուստ 'ի վերուստ մատակարարեալք և ախանկեալք. և ոչ եթէ անփոյթութեան ինչ, այլ այնպէս տպաւորեալք, նոյնպէս և նկատեալք. և այս բազում խնամակալութեան նշանակ է: Զինչ իցէ՝ նախաւ ընտրեաց: Ի նոյն հաւատալով մեզ Քրիստոս, ասէ, ուղղեաց կատարեաց զամենայն ինչ յառաջ քան զլինելն մեր. մանաւանդ թէ յառաջ քան զլինելն աշխարհի, նախ քան զհիմն արկեալ: Այլ բարւոք ասաց զհիմն արկանելն, որպէս և մեծաց բարձանց ինչ 'ի խոնարհ հիմն արկեալ ցուցանէին. քանզի մեծ իսկ է և անհաս ա̄յ բարձրութիւնն՝ ոչ տեղեօք, այլ բնութեամբ անջրպետութեամբ, քանզի բազում կրճիմ 'ի միջի կայ ընդ արարածս և ընդ անարար բնութիւն:

Ամաչեսցեն հերձուածողքն յորժամ զայս լուիցեն: Զինչ ընտրեաց. լինել, ասէ, մեզ սուրբս և անարատս առաջի նորա: Այլ արդ զի մի՛ յորժամ լսիցես եթէ ընտրեաց՝ զհաւատս միայն բաւական համարիցիս, և զվարուն յաւելու. վասն այնորիկ ասէ և ընտրեաց զմեզ 'ի նոյն, զի սուրբք և անարատք լինիցիմք: Ընտրեաց երբեմն, ասէ, և զՀրեայսն: Որպիսի՞ ինչ է, ասէ, ազգս այս: Զոր ընտրեաց 'ի հեթանոսաց: Եթէ մարդիկ յորժամ ընտրեն՝ զլաւն ընտրեն, որչափ ևս առաւել ա̄ծ: Այս և ընտրելն ա̄յ մարդասիրութեանն նշանակ է և նոցին առաքինութեան. քանզի զլաւն ընտրել արար զմեզ սուրբս, քանզի ինքն սուրբ է: Որ հաւատոցն հաղորդ է՝ սուրբ է, և որ զանարատ վարս ունիցի՝ սուրբ է. բայց սրբութիւն և ամբծութիւն ոչ վայրապար ինչ խնդրէ, այլ զի առաջի նորա այսպիսիս երևել: Քանզի են սուրբք և անարատք, այլ առ մարդկան ական՝ նմանողք գերեզմանաց բռելոց. որպէս և որք զգառանց մորթ ունիցին: Այլ ոչ եթէ զայնպիսիսն խնդրիցէ, այլ զայնպիսիսն զորոց մարգարէն ասէ, եթէ "Ըստ սրբութեան ձեռաց իմոց առաջի աչաց նորա": Զայն սրբութիւն խնդրէ զոր ա̄յ աչքն տեսանէ և հաճի:

Սրբաց և զնոցա ինչ ուղղութիւն. դարձեալ ամբիծն և 'ի շնորհսն եղանել: Ոչ ըստ վաստակոց և ոչ ըստ ողորմութեանց լինի, ասէ, այս, այլ 'ի սիրոյ. և ոչ միայն 'ի սիրոյ, այլ և 'ի մերմէ առաքինութենէ: Զի եթէ 'ի սիրոյն էր՝ ամենեցուն պարտ էր փրկել, քանզի զամենեսեան սիրեաց. և եթէ 'ի մերմէ միայն յառաքինութենէ էր, ապա նոցա միայն կեանք էին որ զհամարձակութիւնն ունէին, և մատակարարեալքն ոչ ինչ վճարէին: Այլ ոչ 'ի սիրոյ միայն է և ոչ 'ի մերմէ առաքինութենէ ևեթ է, այլ յերկոցունց: "Նախընտրեաց, ասէ, զմեզ": Որ ընտրէն՝ գիտէ զինչ ընտրէ. սիրով, ասէ, յառաջագոյն նկատեաց զմեզ. այլ և ոչ առաքինութիւն կեցուցանէր զոք առանց սիրոյ: Զի՞նչ ասա զինչ օգուտ էր Պաւղոսի ուր ցուցանէր զհանդէսն զոր եցոյց, եթէ ոչ 'ի բնէ կոչեցեալ էր և սիրով ձգեալ առ նա: Եւ այլ ազգ ևս. և այնչափ յայնմ յամենայնի արժանի առնել՝ նորա սէր էր և ոչ մերոյ առաքինութեան: Նա և առաքինանալն իսկ և հաւատալ և մերձենալն առ նա, թէպէտ և կոչեցեալն է, այլ կամի թէ և 'ի մէնջ ինչ անդր նպաստ լինիցի: Եւ արդարեւ մեծամեծ երախտիք իցեն առնել պատիւ՝ յանկարծակի վաղվաղակի թշնամեացն յորդեգրութիւն եղանել. արդարեւ կարևոր սիրոյ նշանակ:

"Սիրով, ասէ, յառաջագոյն նկատեաց զմեզ յորդեգրութիւն 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի 'ի նոյն": Տեսանե՞ս զի չիք ինչ առանց Քրիստոսի, որպէս և ոչ առանց Հօր. զի նա յառաջագոյն նկատեաց, և սա յորդիւնս եած զնկատեալսն: Զայս դնէ առ 'ի յարգելոյ զգործեալսն և զօրհնեալսն, որպէս 'ի միւսում վայրի ասէ՝ եթէ "Ոչ այնչափ միայն, այլ և պարծիմք ևս 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի": Մեծամեծ պարգևք պարգևեցան և առաւել մեծամեծք, զի Քրիստոսիւ տուան. ոչ զոք 'ի ծառայիցն առ ծառայս առաքեաց, այլ զմիածինն:

"Ըստ հաճութեան, ասէ, կամաց իւրոց": Զյօժ կամելն յայտ առնէ. որպէս զի ասիցէ՝ թէ այնմ իմն կարի ցանկացեալ էր. և ամենայն ուրեք հաճութիւն առաւել կամքն են, քանզի են և այլ կամք՝ այսպիսի ինչ: Առաջին կամք չկամելն ընդ կորուստ յանցուցելոցն.

երկրորդ կամք զայնոսիկ որ 'ի չարութիւնս համառնեցին՝ կորուսանել: զի ոչ եթէ առ 'ի հարկէ ինչ տանջէ զնոսա, այլ կամօք: Նոյնպէս ինչ է տեսանել և առ Պաւղոս, որպէս զի յորժամ ասիցէ "Կամիմ զի ամենայն մարդ լինէր իբրև զիս,,. և դարձեալ ասէր. "Կամիմ ընդ մանկամարդացն՝ ամուսնանալ, որդիս ծնանել,,: Իսկ հաճութիւն զամենայն զկամսն ասէ զառաւել ախորժութիւնն. որպէս և մեղ ինչ լինի, և չդանդաղիմք զհաստատակաց բանն 'ի կիր արկանել վասն յայտնի առնելոյ միամտաց, զոր մեք հաւանութիւն կոչեմք. քանզի հաւանութիւն յանձն առնուլն է, կարի քաջ ախորժել. յայժ ցանկացեալ է մերոյ փրկութեանն: Իսկ եթէ վասն այնպէս սիրեսցէ զմեզ, յո՞ր սակս այնպիսի խնամ ածիցէ. միայն առ բարերարութեանն և ոչ վասն այլ իրիք, քանզի շնորհն բարերարութիւն է: Վասն այնորիկ ասէ՝ եթէ յառաջագոյն նկատեաց զմեզ յորդեգրութիւն. քանզի կամեցաւ և արժանաւորս արար զմեզ 'ի հաճոյս իւր, զի շնորհացն նորա փառք յայտնի լինիցին:

"Ըստ հաճութեան, ասէ, կամաց իւրոց 'ի գովեստ փառաց շնորհաց նորա, որով զուարճացոյց զմեզ,, ասէ: Եթէ այնպէս իցէ, ապա ուրեմն 'ի գովեստ փառաց շնորհաց իւրոց զուարճացոյց զմեզ. և զի ցուցցէ զշնորհսն, 'ի գովեստ, ասէ, փառաց: Իսկ ո՞վ իցէ, ասէ, որ զնա փառաւորիցէ. միթէ կամ հրեշտակք կամ հրեշտակապետք կամ ամենայն արարածք. այլ չէ ինչ այն, քանզի անկարօտ է Ած: Իսկ էր վասն կամիցի գովել և փառաւորել առ 'ի մէնջ. զի զմեր սէրն որ առ նա է՝ ջերմագոյն առնիցէ: Քանզի չցանկայ իմիք առ 'ի մէնջ, բայց միայն փրկութեան. ոչ պաշտամանս ոչ փառաց ոչ այլ իմիք: Իսկ զամենայն ինչ վասն այնորիկ առնէր, զի որ գովիցէն և զարմանայցէ ընդ շնորհս նորա, ևս քան զևս փութագոյն և զգուշագոյն գտանիցի:

"Որով զուարճացոյց զմեզ,, ասէ: Ոչ ասաց եթէ որով շնորհեացն, այլ թէ որով զուարճացոյցն զմեզ. այս ինքն ոչ միայն 'ի մեղաց ազատեաց, այլ և ցանկալիս արար: Որ օրինակ եթէ ոք զքոսոտ և զտոված և զախտաժէտ զեղծեալ և զապականեալ ծերութեամբ և անանկութեամբ[1] և սովու՝ յանկարծ վայելչուց պատա-

1 Յօրինակին թերի էր, և գրեալ [illegible] և զամենայն գեղեցկաթեամբ, լրացաւ 'ի յունէն:

նի դարձուցանիցէ, և զամենայն գեղեցկութեամբ մարդկութեանս անցուցանիցէ զի և արեգական եւս ճառագայթից յաղթիցէ, լուսաւորութիւն երեսացն ծածկիցէ, և անդէն 'ի բուն յատակին և յորբունսն դարձուցանիցէ, զի ոչ կարի ծեր իցէ և ոչ կարի մատաղ, այլ դեռ 'ի ծաղկի տակաւին և 'ի փթթել, ապա և ծիրանիս եւս զգեցուցանիցէ և թագ 'ի գլուխն դնիցէ և պէսպէս զարդուք զարդարիցէ, այնպէս յօրինեաց զոգիս մեր գեղեցիկս և հաճոյս և կատարեալս։ Յանկանան և հրեշտակք նայել ընդ այնպիսի հոգի, հրեշտակապետք և ամենայն սուրբք. այնպէս հաճոյս և ցանկալիս արար զմեզ, ըղձալիս և զարմանալիս. "Յանկացաւ, ասէ, թագաւոր գեղոյ քո"։ Տես որպիսի ինչ փոխանակեր ճառս ճառէաք, որպիսի ազեղ բարբառս բարբառէաք. իսկ այժմ ոչ եւս ընդ մեծութիւնս զարմանամք և ոչ ընդ առատ փառաւորութիւնս, այլ ընդ երկնաւորսն և ընդ երկնից բարութիւնսն։ Չիք այնպիսի ցանկալի մանկունք որ ընդ գեղոյ մարմնոյն և բանս եւս ցանկալիս խօսեսցի. այնպիսին են հաւատացեալք։ Տեսե՞ր որպիսի բանս խօսին. գիտեն խորհրդականք խորհրդոյն։ Ո՜ ինչ ինչ ցանկալի քան զայնպիսի բանս կայցէ, կամ ո՞ր բերան լի խնդութեամբ որպէս յորժամ այնպիսի բանս բարբառիցին, և սուրբ ոտիւ և սուրբ շրթամբք ճաշակեսցեն յայնպիսի սեղանոյ առաւել լուսաւորութեամբ, բազում համարձակութեամբ։ Ո՜ ինչ բանք բերկրութեան քան զայն կայցեն որովք ուրանամք 'ի սատանայէ և ընծայ լինիմք Քրիստոսի, կամ քան զխոստովանութեան որ յառաջ քան զմկրտութիւնն խոստովանիմք, և զկնքոյ զաւանութիւնն։ Ի միտ առցուք որք եղաք զմկրտութիւնն և յոգւոց հանցուք և հեծեսցուք, զի կորուսցուք միւսանգամ նորոգիլ։

"Սիրելեաւն, ասէ, որով ընկալաք զփրկութիւն արեամբ նորա"։ Ո՜րպէս. ոչ միայն զի զորդին ետ՝ զարմանալի է, այլ զի այնպիսի օրինակաւ թողացոյց սպանանել զսիրելին. այնչափ առաւելութեան սիրոյ է, զի զսիրելին փոխանակ ատելեացս ետ։ Տես որպիսի պատուով պատուեաց զմեզ, զի մինչ թշնամիքն էաք և ատելիք, զսիրելին ետ վասն մեր. իսկ այժմ ինչ ոչ տանիցէ. "Ո՜ թողութիւն, ասէ, յանցուածոց"։ Ի վե-

րուստ 'ի խոնարհ իջանէ. Նախ զարդարութիւնն ասաց և զզօրութիւնն և զանարատոն լինել, և ապա զչարչարանսն. ոչ նուազեցուցանելով ինչ և ոչ 'ի մեծամեծացն 'ի փոքունս իջուցանելով զբանն, այլ 'ի փոքունցն 'ի մեծամեծս հանէ: Վասնզի չիք այսպիսի ինչ մեծ որպէս որ զարիւն որդւոյն հեղուլ վասն մեր, նա և քան զորդեգրութիւնն և զայլ պարգևսն այն մեծ է զի յիւր որդին ոչ խնայեաց: Մեծ է զմեղս թողուլ, այլ առաւել մեծ այն է զի տէրունական արեամբն եղև թողութիւն: Նա զի առաւել քան զամենայն մեծ այս է, տես զիարդ և աստ աղաղակէ. “Ըստ մեծութեան, ասէ, շնորհաց նորա”: Մեծութիւն էր և այն, բայց այս այնչափ առաւել որով առաւելն արար 'ի մեզ. և մեծութիւն է և առաւելութիւն. այսինքն է թէ այնչափ զեղաւ հեղաւ, և չէ հնար բանիւ յանդիմանս կացուցանել զայնս զորոց արդեամբք զփորձ առաք: Մեծութիւն է և առաւելեալ մեծութիւն ոչ 'ի մարդկանէ, այլ յԱյ. որպէս զի ամենայն ուստեք անհնարին էր զնմանէ ճառել:

“Ամենայն, ասէ, իմաստութեամբ և հանճարով եցոյց մեզ զխորհուրդս կամաց իւրոց”. այսինքն իմաստուն և հանճարեղս արար զմեզ, արդարև իմաստութեամբ և ստոյգ հանճարով: Տեսէ քանի ինչ սէր է և որչափ խնամք, զի և զխորհուրդսն իւր մեզ յայտնեաց: Ըստ կամացն իւրոց ասէ. որպէս զի ասիցէ ոք՝ թէ որ ինչ 'ի սրտի իւրում կայր, մեզ յայտնեաց: Նա այն իսկ է մեծ խորհուրդ լի իմաստութեամբ . . .[1] զհրեշտակական վարս ցուցցուք, զհրեշտակական առաքինութիւն և զնահատակութիւն. այժմ աղաչեմ և փոխան ասեմ, զի մի 'ի դատաստան և 'ի դատապարտութիւն լիցի այն ամենայն, այլ 'ի վայելել սրբութեանցն: Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 Թուղթ անկեալ յօրինակէն պակասի վերջին մասն առաջնոյ ճառին և սկիզբն յորդորակի նորա:

# ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

"Յոր և վիճակեցաք մեք նկատեալքս յառաջագոյն ըստ յառաջադրութեանց նորին՝ որ զամենայն ազդէ ըստ խորհրդոց կամաց իւրոց, լինել մեզ 'ի գովեստ փառաց նորա յառաջագոյն յուսացելոցս 'ի Քրիստոս։ Որով և ձեր լուեալ զբանն ճշմարտութ̄ե զաւետարանն փրկութեան ձերոյ, յոր և հաւատացեալք կնքեցարուք սրբոյ հոգւոյն աւետեաց, որ է առհաւատչեայ ժառանգութեան մերոյ 'ի փրկութիւն կենաց 'ի գովեստ փառաց նորա"։

Ամենայն ուրեք զանքաւ մարդասիրութիւնն ա̄յ փութայր Պաւղոս ցուցանել որպէս և իւր մարթէր. և զի հաւատեաւ չէ այնմ հասանել, լուր զինչ ասէ ինքն իսկ. "Ով խորք մեծութեան և իմաստութեան և գիտութեան ա̄յ, որպէս առանց քննելոյ են դատաստանք նորա և առանց զննելոյ են ճանապարհք նորա"։ Բայց սակայն որպէս ինչ ազգ մարթիցի։ Իսկ արդ զինչ ասիցէ. "Յոր վիճակեցաք, ասէ, նկատեալքս յառաջագոյն"։ Վերագոյն ասէ՝ թէ ընտրեաց զմեզ, և աստ՝ եթէ վիճակեցաք։ Եւ քանզի վիճակ յանկարծադէպ իրաց է և ոչ կամաց կամ առաքինութեան, քանզի յանդէպս և զանխուլս ելանէ, և բազում անգամ թերևս զառաքինիս թողեալ զանպիտանս յառաջ ածիցէ, տես զիարդ յարդարէ զայն. "Նկատեալքս յառաջագոյն, ասէ, ըստ յառաջադրութ̄ե այնորիկ որ զա̄մ ազդէ"։ այսինքն թէ ոչ վայրապար վիճակեցաք, քանզի ա̄ծ է որ վիճակեցոյցն, այլ ըստ յառաջադրութ̄են ասէ։ Զայս և 'ի հռովմայեցւոց թղթին գրեալ ասէր՝ թէ "Ըստ յառաջադրութեան կոչեցելոցն զոր և կոչեացն. զորս և արդարացոյցն՝ զնոսին և փառաւոր արար"։ Նախ ասէ՝ ըստ յառաջադրութեան կոչեցելոցն, միանգամայն և զանդու-գոչանութիւնն որ ժան զայլոց իցէ կամեցաւ յայտ առնել, զվիճակէն ասաց, որպէս զի մի անձնիշխանութիւնն 'ի

միջոյ բանայցէ ։ Իսկ որ ինչ առաւել երանութիւն է՝ զայն դնէ ։ Քանզի վիճակն ոչ առաքինութեան ինչ է, այլ ըստ յաջողութեան. որպէս զի ասիցէ ոք՝ եթէ 'ի վիճակին հասելոյ ընտրեաց զմեզ. բայց սակայն բնաւ առ 'ի կամացն ասէ, և ոչ զյանկարծադէպ ինչ իրաց ։ “Նկատեալքս, ասէ, յառաջագոյն„ ։ Ի նորա միտս, ասէ, նկատեալք, և այնպէս ընտրեաց և մեկնեաց որ-պէս ինքն տեսանէր զմեզ յառաջ քան զլինելոյն վիճա-կեալ. քանզի սքանչելի ա̃յ յառաջածան գիտութիւնն էր, և զամենայն ինչ յառաջ գիտէ մինչև ինչ լեալ իրք իցէ 'ի նոցանէն ։

Բայց դու տես զիարդ ամենայն ուրեք փութայ յայտ առնել եթէ ոչ յետոյ զղջացեալ, այլ անդուստ 'ի վե-րուստ այնպէս կարգեալ էին իրքն, որպէս զի մի ինչ նուազագոյն ունել մեզ այսուիկ քան զհրեիցն. վասն այնորիկ զամենայն ինչ յաղագս նորին իրաց գործէ ։ Իսկ Քրիստոս զիա՞րդ ասիցէ՝ եթէ “Ոչ առաքեցայ առ ոք, այլ առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի„. և դար-ձեալ յաշակերտսն ասէր՝ եթէ “Ի ճանապարհս հե-թանոսաց մի երթայցէք, և 'ի քաղաքս շամրտացւոց մի մտանիցէք„. և զայն իսկ Պաւղոս ասէր. “Առ ձեզ նախ կարևոր էր խօսել զբանն ա̃յ. բայց քանզի դուք մերժեցէք զնա և ոչ համարէք զանձինս արժանիս կե-նացն յաւիտենից, ահաւասիկ դառնամք 'ի հեթանոսս„ ։ Այլն իսկ իբր անցաւ յայս, զի մի յախուռն ինչ կար-ծիցես զլեալ իրացն ։

“Ըստ յառաջադրութեանն, ասէ, այնորիկ որ զամե-նայն ազդէ ըստ ախորժութեան կամաց իւրոց„ ։ Այս-ինքն եթէ ոչ յետոյ ինչ եկն յայն ազդեալ. քանզի ամենայն ինչ անդուստ 'ի վերուստ դրոշմեալ էր, և յա-ջորդաւն յայտ առնէ թէ այսպէս իսկ կարգեալ էր ։ “Ըստ հաճութեան, ասէ, կամաց իւրոց„ ։ Որպէս զի ոչ վասն զի հրեայքն չանսային՝ յայն սակս կոչեաց ըզ-հեթանոսս, և ոչ հարկ ինչ 'ի վերայ կայր, և ոչ առ նոցա հեստի ինչ յանգիմանեաց ։ “Լինել մեզ, ասէ, 'ի գովեստ փառաց նորա յառաջագոյն յուսացելոցս 'ի Քրիստոս. որով և դուք իբրև լուարուք զբանն ճշմար-տութեան զաւետարանն փրկութեան ձերոյ„ ։ Տես զի ամենայն ուրեք զՔրիստոս պատճառ ամենայնի առնէ,

և չանուանէ զանուն արքանեկի կամ տապատուրի. որ-պէս և այլուր գրէ Եբրայեցւոցն՝ թէ «Յառաջագոյն խօսեցաւ ընդ հարս մեր մարգարէիւք. 'ի վախճան ա-ւուրցս այսոցիկ խօսեցաւ ընդ մեզ որդւովն». այսինքն է 'ի ձեռն որդւոյն, ասէ, զբանն ճշմարտութեան, և ոչ ևս զօրինակին և ոչ ևս զպատկերին: «Աւետարանն, ասէ, փրկութեան ձերոյ»: Նորուք իսկ աւետարան փրկութեան կոչէ, զի միովն զօրինացն ակնարկէ և միւ-սովն զհանդերձեալ պատժոցն. և չէ այլ ինչ քարոզու-թիւնն, եթէ ոչ փրկութեան աւետիք. զի զորս արժա-նի կորստեան էին, այսուհետև ոչ կորուսանէ:

«Յոր և հաւատացեալք կնքեցարուք հոգւովն որով աւետեաց, որ է առհաւատչեայ ժառանգութեան մե-րոյ»: Դարձեալ բազում տեսչութեան օրինակ է կնի-քելն՝ ոչ միայն զատանելն և վիճակել, այլ և կնքելն: Որ օրինակ որք զծառայս որ 'ի վիճակի հասանիցեն դրոշմիցեն, նոյնպէս և Տէր զատ մեկնեաց առ 'ի հաւա-տալ և կնքեաց առ 'ի ժառանգել զհանդերձեալսն: Տե-սանես զխարդ ըստ ժամանակի յառաջ խաղալով զար-մանալիս առնէ զբանս: Մինչդեռ 'ի կանոնս գիտութեն էին, չէին ուրեք յայտնիք. իսկ յորժամ կնքեաց, երևե-լիք եղեն: Այլ ոչ որպէս մեք, զի կնքեցաք և տակաւք 'ի մէնջ երևելիք եմ: Կնքեցան և Իսրայէլացիքն, այլ թլփատութեամբ իբրև զծառայականս և զանասունս. կնքեցաք և մեք, այլ իբրև որդիք հոգւովն աւետեաց: Զ ինչ իցէ հոգւովն աւետեաց, և կամ զի ըստ աւե-տեացն ընկալաք զհոգին: Վասնզի երկու աւետիք են, մի մարգարէիւքն և միւս որդւովն. որ մարգարէիւքն էր՝ լուր զայնմանէ 'ի Յովէլայ մարգարէէ. «Հեղից, ասէ, յոգւոյ իմմէ 'ի վերայ ամենայն մարմնոյ, և մարգարէա-ցեն ուստերք ձեր և դստերք ձեր, և երիտասարդք ձեր տեսիլս տեսցեն և ծերք ձեր երազովք երազեսցին»: Լուր դարձեալ և զՔրիստոսին. «Առնուցուք, ասէ, զօրութիւն 'ի հասանել հոգւոյն սրբոյ 'ի վերայ ձեր, և լինիջիք ինձ վկայք յԵրուսաղէմ և 'ի Հրէաստանի և 'ի Սամարիա մինչև 'ի ծագս երկրի»: Որպէս և պարտ էր նմա իբրև Այ հաւատարիմ լինել, առ այնու ոչ ինչ վիճի այժմ, բայց որպէս մարդոյ քննէ, որպէս և յԵբ-րայեցւոց թղթին ասէ. «Ոչ երկու անշարժ իրօք ա-

րովք չմարթի առնել ո՛յ՝ հաստատուն մխիթարութիւն ունիցիմք„։ Այնպէս և աստ նշանակ հանդերձելոյ ա-ւետեացն զառեալ բարութեանն ցուցանէ, վասն այսո-րիկ և առհաւատչեայ կոչէ․ քանզի առհաւատչեայն մասն ինչ է յամենայնէ որ ինչ առնլոցին։ Պանեաց 'ի մէնջ զփրկութիւն մեր, և ետ մեզ զառհաւատչեայն։ Իսկ ընդէ՞ր ոչ միանգամայն զամենայնն ետ․ քանզի և ոչ մեք զմեաւ գործեցաք։ Հաւատացաք՝ այն սկիզբն է, ետ և նա զառհաւատչեայն․ իսկ յորժամ զհաւատոն գործովք ցուցանիցեմք, յայնժամ և նա զամենայն ըստ․ մանաւանդ թէ զամենայն իսկ պատիւն ետ, զի զիւր ա-րիւնն եհեղ և դարձեալ այլ ինչ խոստացաւ։ Որ ե-րինակ յորժամ պատերազմ ազգաց ընդ ազգս զրգռի-ցի և կամիցին խաղաղութիւն 'ի միջի առնել՝ պատանդս տան միմեանց, նոյնպէս և Ած զորդին իւր ետ մեզ խա-ղաղութեանց և հաշտութեանց գրաւական, և զհոգին սուրբ որ յիւրմէ․ զի որք ստուգութեամբ հոգւոյն սըր-բոյ հաղորդ լինին, գիտեն եթէ առհաւատչեայ ժառան-գութեան մերոյ է։ Այնպիսի էր Պաւղոս՝ աստէն իսկ զանտիսն առեալ ճաշակս․ վասն որոյ փութայր և առա-տանէր զաստիս թողուլ, հեծէր և յոգւոց հանէր․ քանզի այլովք աչօք տեսանէր, զամենայն միտս անդր ամփոփէր։ Զհաղորդիս իւրացն, վասն այնորիկ և անկա-նիս 'ի բանից։ Եթէ լինէաք ամենեքեան հաղորդք հո-գւոյն որպէս և պարտ է լինել, և զերկինս տեսանէաք և զանտի հաստատութիւնն յառհաւատչեայն։ Ո՞ր առ-հաւատչեայ իցէ փրկութեամբ ապրելոյս․ քանզի սուրբ փրկութիւն յայնժամ լինի։ Այժմ և յաշխարհիս շրջիմք, և բազում ինչ մարդկօրէն իրք պատահեն և ընդ ամբարիշտս խառն եմք․ իսկ սուրբ փրկութիւն յայն-ժամ է յորժամ ոչ 'ի մեղաց ինչ հպիցի և ոչ մարդկօ-րէն կարիք ըսկիցեն և ոչ խառն ընդ ամենեսեան լինի-ցիմք․ բայց այժմ զառհաւատչեայն ունիմք։ Իսկ եթէ ուղիղ խնամայցեմք, և այժմէն իսկ մեկնեալ եմք 'ի մարմ-նաւորացս․ քանզի ոչ ունիմք վարս ինչ երկրաւորս, զատեալ մեկնեալ եմք, և պանդուխտք եմք և առանց մեզանաց։

„Ի գովեստ, ասէ, փառաց նորա„։ Ոչ իցէ զի ըն-տէպ զայն ղնէ․ բաւական է հանձել զլաղղն։ Եթէ վա-

արն մեր, ասէ, առնէր ինչ զայն, Թերեւս երկմտութիւն ինչ կայր 'ի միջի. իսկ եթէ յիւր սակս և վասն ցուցանելոյ զիւր բարերարութիւնն, իբրև վկայութիւն ինչ եդ զպատճառն՝ եթէ ոչ այլ ինչ իրաց վասն լինի այն, այլ միայն վասն փառաց նորա. զոր և Իսրայելացիքն ըն-տէպ ասէին՝ եթէ “Արա ընդ մեզ վասն անուան քո”. և դարձեալ ինքն իսկ ա̃ծ ասէ. “Արարից վասն անուան իմոյ”. և Մովսէս՝ թէ “Արա ընդ մեզ վասն անուան քո” եթէ ոչ վասն այլոյ ուրուք: Ապա յայտ է թէ հաճէ հաւանեցուցանել զլսողսն և հանգուցանել զմիտս նոցա, յորժամ ուսանիցին եթէ վասն իւր բարերարութեանն արդարեւ առնէ զամենայն զոր խոստացաւ:

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Այլ մի ինչ հեղգասցուք յորժամ լսիցեմք եթէ վասն իւր առնէ. Թէպէտ և վասն իւր առնէ, սակայն և 'ի մէնջ ինչ նմին նպաստ պահանջէ: Զի թէ զփառաւորիչս իմ, ասէ, փառաւորեցից և զարհամարհիչս իմ արհամարհեցից, 'ի միտ առցուք թէ և 'ի մէնջ ինչ 'ի նոյն նպաստ խնդրէ: Ի գովեստ փառաց նորա է կեցուցանել զթշնամիսն. այլ զնոսա որ յետ լինելոյ բարեկամն չկասցեն բարեկամս, որպէս զի թէ միւսանգամ յառաջին թշնամութիւնն դառնայցեն, ապա ամենայն ինչ զուր և 'ի նանիր է. քանզի չիք միւս մկրտութիւն և ոչ այլ հաշտութիւն, այլ ահագին ակնկալութիւն դատաստանին և նախանձ հրոյն որ ուտիցէ զհակառակորդսն: Զի թէ ցանկ թշնամութիւն ունիցիմք ընդ նմա, և միշտ աղաչիցեմք առ 'ի նմանէն և ոչ երբէք դադարիցեմք 'ի թշնամութենէ առ 'ի քնքշել և 'ի պչրել, ևս քան զևս յոռութիւնս հաստանիցիմք և շլացեալ գտանիցիմք 'ի ծագել արեգականն արդարութեան: Չտեսանիցես ըղձառագայթմն որ բանան զաչս քո, և առողջս և գեղեցիկս և քաղցրատեսս առնեն: Եցոյց քեզ զլոյսն ճշմարիտ. եթէ փախիցես 'ի լուսոյ և 'ի խաւարն դիմեսցես, զի՞նչ պատասխանատուութիւն, զո՞ր ներել թողութեան գտանիցես. չիցէ ինչ այսուհետև և ոչ մի, քանզի անհնարին ատելութեան նշանակ է այն: Մինչ չգիտէիրն զա̃ծ և թշնամի էիր, զիարդ և էր ունէիր ինչ ներել

թողութեան. իսկ որովհետեւ զճաշակս քաղցրութեանն մեղու առեր՝ և թողուցուս զայն և 'ի քայլին փոխածն դառնայցես, ոչ այլ ինչ եթէ ոչ մեծի առելութեան և արհամարհանաց ցուցանես նշանակ: Ոչ այդպէս, ասէ, այլ 'ի բռնութենէ բռնադատիմ: Սիրեսցուք զՔրիստոս, զի թէպէտ և բռնադատիցիմք ինչ 'ի բռնութենէն. եթէ բռնութիւն ինչ և հարկ 'ի վերայ կայր, գոյր ներել թողութեան. իսկ եթէ առ յուլութեան ծուլանայցես, ոչ ևս այնուհետեւ:

Եւ արդ ձն ա՛ռ 'ի մէջ, զայն քննեսցուք, 'ի հարկէ՞ ինչ և 'ի բռնութենէ մեղք գործիցին, եթէ 'ի յուլութենէ և 'ի ծուլութենէ: "Մ՛ի սպանանիցես" ասէ. և արդ զի՞նչ հարկ 'ի վերայ կայցէ սպանանել. հարկ այն իսկ էր՝ չսպանանելն, և ոչ սպանանելն: Քանզի ո՞ ոք 'ի ձէնջ կամիցի թանալ զսուր իւր 'ի պարանոց ընկերին, և շաղախել զձեռս արեամբ. և ոչ ոք: Տեսանե՞ս զի նորին հակառակն է հարկ, և մեղանչելն է բռնութիւն: Տնկեաց ած 'ի բնութեան մերում խնամ առ 'ի զմիմեանս սիրելոյ. և "Ամենայն, ասէ, կենդանի սիրեսցէ զնմանի իւր, և մարդ զընկեր իւր": Տեսանե՞ս զի յառաքինութիւնն ունիմք 'ի բնութենէ սերմն. և չարութիւնն արտաքոյ քան զբնութիւնն է. և եթէ որ ինչ արտաքոյ քան զբնութիւնն է՝ այն կարի ունիցի, բազում ծուլութեան մերոյ նշանակ է:

Իսկ 'ի շնալն ո՞ր հարկ տանիցի: Այո՛, ասեն, ցանկութեանն բռնութիւնն: Ընդէ՞ր. չիցէ՞ իշխանութիւն ընդ իւրում կնոջն վայելել, և ցածուցանել զբնութիւն: Այլ միտք կարի իմն, ասեն, ցանկանան ընկերին կնոջ: Եւ աստի իսկ յայտ է թէ չկայ ինչ հարկ 'ի վերայ. զի ցանկութիւն ոչ 'ի հարկէ ինչ է. քանզի ոչ 'ի հարկէ ոք սիրէ, այլ կամօք և ախորժելով: Ո՛չ ի խառնակելն թերևս 'ի հարկէ ինչ իցէ. իսկ զոմն սիրել և զոմն չսիրել, այն ոչ 'ի հարկէ է. նա և այնպիսի ցանկութիւնն ոչ ամուսնութեան ինչ իրք են, այլ սնապարծութեան և թշնամանաց, և աւելի քան զչափն փափկութիւն: Եւ արդ ասէ ասա, ո՛ր 'ի դէպ իցէ, զօրինեալն՝ զօրինօք ամուսնացեալ՝ զորդէծնութեանն հաղորդ՝ ունել, եթէ զանծանօթն զստարոտի: Ոչ չիցէ՞ք տեղեակ զի սովորութիւնք զսէր ծնանին. որպէս զի ոչ բնութեանն

ինչ իցէ ։ Այլ մի պատճառս ցանկութեանն զշնութիւնն համարիք․ քանզի ամուսնութեան վասն տուաւ, որդեծնութեան սակս շնորհեցաւ, ոչ վասն շնութեան և ոչ ապականութեան աղագաւ ։

Գիտեն և արտաքինն օրէնքն ներել յանցանաց ինչ որ 'ի հարկէ լինիցի․ մանաւանդ զի չէ ինչ յանցանք որ 'ի հարկէ լինիցի, այլ ամենայն ինչ 'ի թշնամանաց․ քանզի ոչ այնպիսի արար ած. զբնութիւնն եթէ 'ի հարկէ մեղանչիցէ․ Նա թէ այնպէս ինչ էր, ապա և տանջանք չգոյին․ զի 'ի հարկէ և 'ի բռնութեան յանցանացն և ոչ մեք պահանջեմք համարս, թող թէ ած՝ որ այնպէս բարերար և մարդասէր է ։

Նաև գողանալն ինչ 'ի հարկէ՞ իցէ ։ Ո՛չ, ասէ, քանզի աղքատութիւնն առնէ զայն ։ Աղքատութիւն մանաւանդ 'ի գործ ստիպէ և ոչ 'ի գողանալ․ աղքատութիւն փոյթին հակառակն գործէ․ քանզի գողանալն 'ի դատարկութենէ է և աղքատութիւն ոչ զդատարկութիւն, այլ զխանձութիւն սովոր է ծնանել․ որպէս զի յայտ լինիցի եթէ և գողութիւնն ծուլութեան գործ է ։ Այլ զի այլ ևս ինչ ուսանիցիս, ասէ տես․ զինչ դժուարին իցէ, որ դժնդակագոյն, զգիշերն ամենայն յածել շրջել, և զանկիւնս փորել, և ընդ խաւար խարխափել, և զոգիսն 'ի բուռն[1] ունել, և 'ի սպանութիւն մտաբերել, դողալ, սրտաբախ սրտաթափանց լինել, եթէ հանապազորդ վտատակոցն միտ դնել, և յանհոգս վայելել, և անկասկած կալ զգուշութեամբ․ յայտ է թէ այս դիւրագոյն է․ և զի այս դիւրագոյն է՝ անտի երևի, զի բազումք զայս առնեն և ոչ զայն ։ Տեսանես զի ըստ բնութեանն է առաքինութիւն, և արտաքոյ քան զբնութիւնն չարութիւն․ զոր օրինակ ցաւքն և առողջութիւն ։

Իսկ արդ ստելն և սուտ երդնուլն 'ի հարկէ՞ ինչ իցէ ։ Այլ ոչ մի ինչ հարկ կամ բռնութիւն 'ի վերայ կայ անդ․ այլ կամաւ և ոչ ակամայ գամք յայն ։ Պահանջիմք, ասեն, և զի գործիցեմք ։ Վասն զի կամաց պահանջիմք․ մարթ էր մեզ 'ի բարոյիցն հաւատարիմ գտանել առաւել քան յերդմանէ ։ Այլ արդ ասէ տես, ընդէր կիսոց՝ թէպէտ և երդնուն՝ չհաւատամք, և զայլս՝ թէպէտ և

1 Երկու օր․ 'ի բուռն․․ ուրփապակն ։

չերդնուն՝ հաւատարիմ համարիմք: Տեսանես զի չեն ինչ պէտք երդման. այս անուն, ասէ, թէպէտ բանիւք ասիցէ առանց երդման՝ հաւատամք. և դու թէպէտ և երդնուցուս՝ ոչ հաւատամ. ապա ուրեմն աւելորդ է երդումնն, և անհաւատութեան առաւել քան հաւատոյ նշանակ: Փութեւն լինել առ երդմունս՝ չտայ թոյլ կարծիս լաւութեան ունել. որպէս զի որ յերդումն յանձանիցէ, այնպիսին է՝ որ ոչ երբէք համարի կարեւոր ըզպէտս երդմանն. և որ ոչն երբէք երդնուցու, նա է որ 'ի նորուն պէտսն վայելիցէ: Երդման պէտք հաւատալոյ վասն են. և արդ տեսանեմ, զի որ չերդնուն՝ նոքա առաւել հաւատարիմք են:

Իսկ թշնամանողն ինչ լինել 'ի հարկէ իցէ: Ոչ, ասէ, քանզի յորդէ ցասումնն և բորբոքի, և չտայ թոյլ մեղմանալ ոգւոյն: Ոչ 'ի ցասմանէ ինչ է թշնամանել, ով մարդ, այլ 'ի կարճմտութենէ. զի եթէ 'ի ցասմանէն ինչ էր, ապա ամենեքեան իսկ որ ցասնուին՝ չդադարէին 'ի թշնամանելոյ: Ցասումն ունիմք ոչ զի զընկերս թշնամանեսցուք, այլ զի զյանցաւորսն դարձուսցուք. զի յորդորիցիմք, ոչ զի 'ի պղերգութիւն հատանիցիմք. իբրև զխթան ինչ 'ի ներքս կայ 'ի մեզ ցասումնն, զի սատանայի ընդդէմ ատամունս կրճտիցեմք, զի նմա գազանիցեմք, և ոչ զի միմեանց եղջիւր ածիցեմք: Զէն ունիմք՝ ոչ զի ընդ անձինս մարտնչիցիմք, այլ զի ընդ թշնամւոյն կռուիցիմք սպառազինութեամբն: Ցասկոտիցես. մեղացն գազանեսջիր, զմիտսդ հարկանեսջիր, զխիղճ խորհրդոցդ տանջիցես. սաստիկ դատաւոր և դառն դահիճ լինիցիս քոց մեղացդ. այն է շահ ցասմանն. նմին իրի իսկ ոնկեաց զնա 'ի մեզ ա͞ծ:

Իսկ յափշտակութիւն 'ի հարկէ ինչ իցէ. և ոչ երբէք. զի՞նչ ինչ հարկ իցէ յափշտակելն, ասէ ասա, ո՞ր բռնութ͞ի 'ի վերայ կայցէ: Աղքատութիւնն, ասէ, առնէ զայն, և կասկած կարեւոր պիտոյիցն: Եւ վասն այնորիկ իսկ չէ պարտ յափշտակել, քանզի չէ զգուշալի այնպիսի մեծութիւն. դու գրեա թէ այնպիսի ինչ առնես՝ որպէս յորժամ ոք ցոք հարցանիցէ՝ թէ ընդէ՞ր 'ի վերայ աւազոյ դնես զհիմունս տանդ, և նա ասիցէ՝ եթէ վասն հեղեղի և անձրևի: Նա յայն սակս իսկ չէր պարտ 'ի վերայ աւազոյ դնել զհիմն, քանզի վաղվաղակի յանձ-

ըսէ և 'ի հեղեղէ և 'ի հողմոց կործանի: Այսպէս զի թէ մեծութիւն կամիցիս, մի ագահիցես. և եթէ որդւոց կամիցիս ստանալ զմեծութիւն, արդարութեամբ ըստասջիր. եթէ իցէ ոք այնպիսի, նա է որ հաստատուն կացցէ. և որ չիցէ այնպիսի, վաղվաղակի կործանի և ապականի:

Ոչ է սոս, մեծանալ կամիցիս և զայլոց յափշտակել. նա և այն իսկ չէ մեծութիւն, այլ զիւրն ունել. որ զայլոց ինչ ունիցի՝ չէ նա մեծատուն: Ոչա եթէ այլպէս ինչ իցէ, և որք զկերպաս հանդերձսն յայլոց առնուցուն և վաճառիցեն, մեծատունք և ընչաւէտք կոչեցին. Թէպէտ և առ ժամանակն նոցա իցեն հանդերձքն, այլ չկոչեսցի՞ք զնոսա մեծատունս. ընդէ՞ր, քանզի զայլոց ունեին. զի թէպէտ և հանդերձքն նոցա իցեն, սակայն զինքն չեն նոցա. Թէպէտ և զինքն ևս նոցա իցեն, այլ այն չէ մեծութիւն: Այլ եթէ տուրևառիկ փոխախմաւքըն չգործիցեն մեծութիւն՝ վասն վաղվաղակի նոցա 'ի մէնջ 'ի բաց մեկնելոյ, իսկ յափշտակութեամ՛նն ինչք մեծատունս առնիցեն: Այլ եթէ մեծանալ ես ցանկանայցես, որ չէ ինչ հարկ մեծանալ, և կամիցիս վայելել երկայն ինչ կենօք բազո՛ւմ ժամանակօք: Այս և այնպիսիքն սակաւակեացք լինիցին, վաղվաղակի անցանեն, և բազում անգամ վրէժս իսկ տան զյափշտակութեան և զագահութեանն՝ մահու տարաժամս, և չվայելեն յաւարսն. սակաւ ինչ կեան, և զգեհենն առնուն 'ի ժառանգութիւն: Բազում անգամ և 'ի փափկութենէ և 'ի վատակոց և 'ի հողոց ցաւք ծնանին և սատակեն:

Ասմէի 'ի վերայ հասանել թէ էր վասն այնչափ ձեպիցին մեծանալ մարդիկ, թէպէտ և ոմն վասն այնորիկ եդ չափ և սահման բնութեանն, զի մի և մի ինչ հարկ ունիցիմք խնդրել զմեծութիւն: Հանդերձ ինչ պէտք իցեն, մի և երկու զգեստք բաւական են մարմնոյն, և աւելորդացն չեն ինչ պէտք. Էր վասն բազում հանդերձս ժողովել և ցեցակեր և մեցամեցս առնել: Չափ սահմանեալ է որովայնի. և որ ինչ աւելի քան զայն իցէ, ապականիչ է ամենայն կենդանւոյ. Էր վասն այնչափ անդեայք և խաշինք և այնքան շահից պատատել, ուր սակաւ ինչ պէտք են որովայնի: Այլ մի յարկ բաւական էր 'ի բնակութիւն, ընդէր այնչափ փողոցք և

սրահք և այնպէս սենեակք. զի բուք և ազատուք ընտկեցեն, զարդարեալ մերկացուցանես և այնպէս սենեակս զարդարես. դադարիմ գեհենի չիցէ այն արժանի: Այս և 'ի տեղիս ինչ՝ զորս ընտ. երբեք ոչ տեսին, սիւնս հզնեայս և քարինս ծանրագինս տառքեն, և շինուածս զարդարուն կազմեն. և զինչ այլ ինչ հնարս ոչ հնարին. յորում ոչ ինքեանք վայելեն, և ոչ այլք. քանզի չատ նոցա թայլ անդր երթալ անապատն. սակայն և այնպէս ոչ դադարեն 'ի զուր աշխատութենէն:

Տեսանես զի ոչ վասն շահի ինչ կարասւոյ այնպէս լինի, այլ ամենայնի այնորիկ անմտութիւն և անհանճարութիւն և մտապարծութիւնն է պատճառք: Զգուշեմ փախչել յայնպիսի զուր աշխատութենէ. զի և յայլոց չարեացն փախչել կարիցեմք, և հաստատել խոստացելոց բարութեանցն որ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում Հօր, միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ԵՐՐՈՐԴ

"Վասն այսորիկ և ես իբրև լուայ զհաւատս ձեր որ 'ի տէր Յիսուս և զսէրն որ ընդ ամենայն սուրբս, ոչ դադարեմ գոհանալ վասն ձեր, յիշել զձեզ յաղօթս իմ. զի Ա͞ծ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Հայրն փառաց տացէ ձեզ զհոգին իմաստութեան և յայտնութեան գիտութեան նորա, լուսաւորեալ աչօք սրտից ձերոց առ 'ի գիտել զինչ է յոյս կոչման նորա, և զինչ է մեծութիւն փառաց ժառանգութեան նորա 'ի սուրբս, և զինչ է առաւելութիւն մեծութեան զօրութեան նորա 'ի մեզ հաւատացեալս":

Ոչ ինչ հանգոյն առաքելական գթոցն, և ոչ նմանիսկ վշտակցութեան իմաստից և գթոց երանելւոյն Պաւղոսի. որոյ ամենայն աղօթքն իւր 'ի վերայ բովանդակ քաղաքաց և ժողովրդոց լինէին. և առ ամենեսեան ըղձոյն գրէ՝ եթէ "Գոհանամ զԱ͞յ վասն ձեր և յիշեմ

զձեզ յաղօթս իմ„։ Ի միւս առաջս որչափ ինչ բազմա-թիւն ունի 'ի մտի, զորոց և զյիշատակ առնել գործ համարէր. զքանիս յիշէր յաղօթսն. վասն ամենեցուն, ասէ, գոհանամ զԱյ, այնչափ որչափ զի մեծ երախտաւորութիւն ընկալաւ. և վասն այսորիկ զայն ասէ՝ եթէ վասն ձեր հանդերձելոց բարութեանցն այնոցիկ զոր ուղիղն հաւատացեն և բարիոք վարս վարիցեն։ Արժան է գոհանալ զԱյ 'ի վերայ ամենայնի որ 'ի նախնեացն պարգևեցան ազգի մարդկան նա և յաւել քան զայն և յետ այնր ամենայնի։ Պարտ է գոհանալ զԱյ և վասն հաւատոցն, ասէ, հաւատացելոցն։

"Եւ ես լուեալ զհաւատս ձեր որ 'ի Տէր Յիսուս և ըզսէրն որ ընդ ամենայն սուրբս„։ Զրա ամենայն ուրեք ընդ միմեանս յարէ և 'ի միմեանս կցէ զհաւատսն և զսէրն։ Եւ արդ զարմանցեալ ընդ լծակիցսն՝ ոչ զնոցանէն եթէ որք յայն տեղիս էին, այլ զամենեցունց ձայնէ. "Ոչ դադարեմ, ասէ, գոհանալ վասն ձեր և յիշել զձեզ յաղօթս իմ„։ Զինչ հայցիցես զոր աղօթս մատուցանիցես. "Զի Այ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Հայրն փառաց տացէ ձեզ զհոգին իմաստութեան„։ Երկուս ինչս աղաչէ ուսանել նոցա որպէս պարտ իցէ ուսանել՝ թէ յինչ կոչեցան և ուստի ազատեցան յառաջին վնասակարացն։ Բայց ինքն ասէ թէ երեք են։ Եւ զխորհուրդ իցեն երեք. զի և զհանդերձելոցն ևս ուսանիցիմք։ Վասնզի առ 'ի պատրաստելոցն բարութեանց զանձառն և որ 'ի վերն է քան զամենայն միտս՝ ուսանիցիմք զմեծութիւն նորա։ Եւ յուսանելոյն եթէ զիարդ էաք՝ զօրութեան նորա և իշխանութեան տեղեկանամք, զի զոր յայնչափ ժամանակս օտարացեալք էին՝ դարձոյց. "Զի որ տկարն է, ասէ, Այ՝ զօրագոյն է քան զմարդիկ„. 'ի նմին զօրութենէ, որով զՔրիստոս յարոյց, և զմեզ առ ինքն ձգեաց։ Եւ ոչ մինչ 'ի յարութիւնն եւեթ է զօրութիւնն, այլ և առաւել։

"Եւ նստոյց ընդ աջմէ իւրմէ, և 'ի վեր քան զամենայն իշխանութիւնս և պետութիւնս և տէրութիւնս, և քան զամենայն անուն անուանեալ. և զամենայն ինչ արար հնազանդ 'ի ներքոյ ոտից նորա, և զնա ետ գլուխ 'ի վերայ ամենայն իրիք եկեղեցւոյ՝ որ է մարմին նորա, լրումն՝ որ զամենայն յամենայնի լնու„։ Ընդդարձեւ մե-

ծամեծ և անճառ խորհրդոց արար զմեզ հաղորդս. և զայն չէ մարթ այլ ազգ ուսանել, եթէ ոչ հաղորդութեամբ հոգւոյն սրբոյ վայելեալք 'ի բազում շնորհս: Վասն այնորիկ Պաւղոս աղօթս առնէ: "Հայրն փառաց," ասէ. որպէս զի ասիցէ՝ թէ որ զամենայն մեծամեծ բարութիւնս շնորհեաց մեզ: Վասնզի միշտ յիւրաց որ առաջի կայցեն՝ կոչէ զԱծ. որպէս յորժամ ասիցէ՝ թէ "Հայրն գթութեանց և Ած ամենայն մխիթարութեանց,". և դարձեալ մարգարէն՝ թէ "Տէր զօրութիւն իմ և օգնութիւն իմ,": "Հայրն փառաց," ասէ: Զկարէ զիրսն յայտ ածել յանգիմանն կացուցանել, և վասն այնորիկ ամենայն ուրեք փառս կոչէ. որ քան զամենայն ինչ պայծառագոյն անուն է առ մեզ: Ահաւասիկ փառացն հայր է և Քրիստոսի Ած: Իսկ արդ զի՞նչ. միթէ նուազագո՞յն ինչ քան զփառսն իցէ որդի: Այլ զայն և ոչ մոլեկան ոք իշխէ ասել. այլ որպէս 'ի գթալոյն հայր գթութեանց կոչի և 'ի մխիթարելոյն Ած մխիթարութեանց, նոյնպէս և 'ի փառաւորան գործելոյն հայր փառաց: Այլ Ած Քրիստոսի, որպէս վերագոյն ասացաք, ըստ մարմնոյ կոչի և ոչ ըստ Աստուածութեանն, և այն 'ի մեր դէմս է և ոչ համօրէն 'ի նորայն:

"Տացէ, ասէ, ձեզ,": Բարձրացուսցէ, ասէ, զմիտս ձեր և 'ի վեր թռուսցէ: Վասնզի չէ հնար այլ ազգ ուսանել, բայց հոգւովն. զի ընչաւոր մարդ ոչ ընդունի զհոգւոյն, զի յիմարութիւն է նմա: Ապա ուրեմն հոգևոր իմաստութեան պէտք են, զի զհոգևորսն իմանայցեմք և զծածուկսն ճանաչիցեմք. քանզի հոգին է որ զամենայն խորհուրդս յայտնէ, և Այ խորհրդոցն հոգին միայն է գիտակ, որ և զխորհուրդս Այ քննէ. ոչ հրեշտակ և ոչ հրեշտակապետ և ոչ այլ ինչ արարած զօրութիւն պարգևել զշնորհս կարէ: Իսկ եթէ յայտնութեան գործ է զծածուկսն ճանաչել, ապա չեն խորհրդոց գիւտք. զի որ Այ տեղեկանայ և զԱծ ճանաչէ, ոչ ևս յումեքէ լինի երկմիտ: Զասիցէ թէ այս հնար է, և այն անհնարաւոր, և այն զի՞նչ աջողեացի մեզ: Եթէ Այ հմուտ լինիմք որպէս պարտ իցէ լինել, եթէ զԱծ ուսանիմք ա-րով մարթ իմ ուսանել 'ի հոգւոյն, ոչ ևս այնուհետև վասն ի՞րիք յերկբայս լինիմք. վասն այնորիկ ասէ՝ թէ "Իմաստութեան [illegible] լուսաւորեալ աչօք սրտից ձերոց,":

Որ ճանաչէ զա̃ծ, ոչ եւս 'ի խոստացելոցն երկմտեսցի, եւ ոչ 'ի վախճանս գործելոց թերահաւատ լինիցի։ Աղօթս առնել, զի տացի նոցա հոգի իմաստութեան եւ յայտնութեան. բայց սակայն եւ ինքն 'ի մտաց որչափ եւ մարթ ինչ իցէ՝ զնոյն յորդորէ։ Եւ զվաղուց գործեալսն եւ զառ 'ի յապա լինելոցսն եւ քան զվաղուց եղեալսն եւ զառ 'ի յապառնիսն պատմելոց էր նոցա, վասն այնորիկ յեղելոցն զլինելոցն հաւատարիմ առնէ, այսպիսի ինչ։

«Առ 'ի ճանաչել ձեզ զինչ է յոյս կոչման նորա»։ Դեռ տակաւին, ասէ, անյայտ է, այլ ոչ եթէ հաւատացելոցն. «եւ զինչ է մեծութիւն փառաց ժառանգութեան նորա 'ի սուրբս». եւ այս եւս տակաւին անյայտ է։ Եւ ո՞ր իցէ յայտնի. զի հաւատացաք զօրութեանն նորա զի յարոյց զՔրիստոս. քան զմեռեալս յարուցանել՝ այն եւս առաւել զարմանալի է յորժամ զոգիս որք հաւանեցուցանէ, եւ ես զնոյն ջանացայ առնել յայտնի. եւ լուր։ Հրամայեաց Քրիստոս մեռելոյն Ղազարու՝ արի եկ արտաքս, եւ վաղվաղակի լուաւ հրամանին. ասաց եւ Պետրոս՝ Տաբիթա արի կաց, եւ ոչ եղեւ դիմադարձ։ Ասելոց է եւ ինքն յաւուրն յետնում, եւ ամենեքին յառնիցեն, եւ այնչափ վաղվաղակի մինչեւ տակաւին կենդանեաց չժամանել ննջեցելոցն, մինչեւ յանկարծակի եւ յական թօթափել ամենայն ինչ լինիցի, եւ 'ի մի վայր ապա խառնընթաց ժողովլիցին։ Իսկ 'ի հաւատալն ոչ այնպէս, այլ լուր նմին իսկ. «Քանիցս անգամ կամեցայ ժողովել զմանկունս քո եւ ոչ կամեցարուք»։ Տեսանես զի այն դժնդակագոյն է քան զայս, որպէս զի յայտմանէ զամենայն յորդորէ։ Կարի իսկ դժուարին է մարդկեղէն մտօք զկամս հաւանեցուցանել քան զբնութիւն գործել. եւ պատճառք այն իսկ է, քանզի ինքն այնպէս կամի՝ կամաւ եւ ոչ ակամայ առնել զմեզ բարիս։

Եմննագոյն ասաց՝ եթէ «Առաւելութիւն մեծութեան զօրութե̃ նորա 'ի մեզ հաւատացեալս»։ Յորժամ ոչ մարգարէքն ինչ վճարեցին եւ ոչ հրեշտակք եւ ոչ հրեշտակապետք եւ ոչ ամենայն երեւելի եւ աներեւոյթ արարածք եւ որ 'ի միջի կային չկարէին ձեռնտու լինել, երեւելի յարդարեաց զիւր գաղտնիս, եւ յայտ արար թէ մեծեղէն զօրութեանն պէտք էին. եւ այն իսկ է մեծութիւն փառաց։ Ո՞ր բան զայդպիսի փառաց ճառել կա-

րասցէ, յորում յայնժամ սուրբքն փայլեսցեն. չէ ինչ, չիք ուրեք։ Այլ արդարեւ շնորհաց պէտք են ուսանելոյ զայնպիսի միտս, և գտանել սակաւ ինչ նշոյլս ընդունել յայնպիսի յանձառ լուսաւորութենէն։ Ինչ ինչ գիտէին յառաջագոյն, բայց կամէր թէ աւելի ուսանիցին և համարձակագոյնս ճանաչիցեն։ Տես որչափ ինչ գործեաց. յարոյց զՔրիստոս, չէր և այն սակաւ. այլ տես՝ նստոյց ևս ընդ աջմէ։ Այլ որպիսի բան կարասցէ զայն բովանդակ պատմել, զի զայնպիսի զխոնարհագոյն յերկրէ որ ամենեւին տկարացեալ և դիւաց ևս անգամ խաղալիկ էր՝ տես ուր եհան։

Արդարեւ առաւել մեծութեան նորա է, զի ոչ միայն յերկինս եհան, այլ 'ի վերոյ քան զամենայն արարած բնութիւնս արար և քան զամենայն իշխանութեանցն և զպետութեանցն. "Ի վեր քան զամենայն իշխանութիւնս,, ասէ. արդարեւ հոգւոյն իմաստութեան պէտք են։ Գիտութեամբ իւրով, ասէ. արդարեւ յայտնութեան և գիտութեան պէտք են։ Իմա առ որչափ ինչ 'ի միջի կայ ընդ այ և ընդ մարդկան բնութիւնս. և յայսպիսի նուաղութենէ յայնպիսի պատիւ եհան, ոչ 'ի մի աստիճան կամ յերկրորդ կամ յերրորդ, այլ քան զամենայն 'ի վեր։ Նաեւ ոչ վայրապար ասաց թէ 'ի վեր, այլ թէ ևս 'ի վեր քան զ'ի վերն. զի քան զամենայն զօրութիւնս անչափ 'ի վեր է ած. որպէս զի անդր իսկ 'ի վեր եհան զառ 'ի մէնջն 'ի վերին աստիճանէն 'ի վերին իշխանութիւնն, որում չիք այլ ինչ պատիւ համագոյն զուգական։ Քան զամենայն իշխանութիւնս 'ի վեր. ոչ քան զմին միայն 'ի վեր և քան զայլսն ոչ. և քան զզօրութիւնս և զպետութիւնս և տէրութիւնս և քան զամենայն անուն անուանեալ, որ ինչ յերկինս 'ի վեր իցէ՝ քան զամենայն վերագոյն եդև։ Ընդ այս բան մարմնոյ զօրութիւն պարտ է զարմանալ և ոչ ըստ ածութեանն. քանզի ածն բան միշտ ընդ հօր 'ի պատուի և 'ի փառս էր, և ոչ եթէ յայնժամ եւեթ փառաւորեցաւ որ 'ի բնէ 'ի սկզբանէ փառաւորն և պատուականն էր։ Ոչ որպէս մտիք առ մարդկան են, նոյնպէս ամենայն արարածք առ Աստուծով։ Եթէ ամենայն հեթանոսք իբրև չէին մի համարեսցին և իբրև զմէտ մի 'ի կշռոց համարեցան, դէր ընդ նոսա և զաներեւոյթ զօրութիւնսն իբրև զմեթիս։

Այլ ընդ մերոյ բնութեանն յաղթական պատուի ելանելոյ են զարմանք, եթէ յորպիսի խորոց յոր բարձրութիւնս վերացաւ եւ՝ ոչ միայն ՚ի պատիւ, այլ ՚ի մարմինս միածնի որդւոյն այ։ Եւ եթէ ամենայն հեթանոսք իբրև զկաթ մի ՚ի դուլէ են, որչափ ևս առաւել մասն ինչ ՚ի կաթէն՝ զայն քան զամենայն և քան զամենեսեան ՚ի վերոյ արար՝ ոչ միայն յայսմ աշխարհի, այլ և ՚ի հանդերձելումն։ Ապա ուրեմն գոն զօրութեանց ինչ անուանք մեզ աննշանք և անծանօթք։

“Եւ զամենայն ինչ, ասէ, հնազանդ արար ՚ի ներքոյ ոտից նորա”։ Ոչ վայրապար ինչ ՚ի վերոյ քան զամենեսին արար և պատուական ինչ քան զայլսն, և ոչ ըստ համեմատութեանն առաւել քան զնոսա, այլ որպէս քան զծառայս։ Ապա է, արդարև զօրութեան իրք են և ահագինք, զի մարդոյ ամենայն արարածք ծառայեցան վասն այ բանին բնակութեան։ Զի ինչ որ վերագոյն է և չունի ինչ ընդ հնազանդութեամբ, այլ միայն պատուով մեծարեալ. իսկ անդ ոչ այնպիսի ինչ, այլ զամենայն ինչ հնազանդ արար ՚ի ներքոյ ոտից նորա։ Եւ ոչ վայրապար հնազանդեաց, այլ զվերջին հնազանդութիւնն, և վասն այնորիկ ասէ՝ ՚ի ներքոյ ոտից նորա։

“Եւ զնա ետ գլուխ ՚ի վերայ ամենայն եկեղեցւոյ”։ Ապա է ո՞ւր դարձեալ տարաւ եհան զեկեղեցի. որպէս մեքենայիւ ինչ ձգեալ ՚ի մեծ բարձունս վերացոյց եհան, և զեկեղեցի ևս նստոյց յաթոռն. քանզի ուր գլուխն իցէ, անդ և մարմինն. և եթէ գլուխ է և մարմին է, ապա չէ ինչ տեղեաւ բաժանեալ. իսկ եթէ բաժանեալ իցէ, չէ այնուհետև մարմինն մարմին, և ոչ գլուխն գլուխ։ “Ի վեր քան զամ”, ասէ։ Ո՛չ ինչ իցէ ՚ի վերոյ քան զամենայն. ոչ զհրեշտակս ասէ և ոչ զհրեշտակապետս և ոչ զայլ ինչ եթող վերագոյն։ Ոչ այնու միայն պատուեաց զի զնա ՚ի մէնջն ինքեամբ ՚ի վեր եհան, այլ զի և զհասարակացն իսկ զամենայն ազգս ընդ նմին յօդեաց զնորին հետ երթալ և ՚ի նմանէն չզրիպել որոյ մարմինն իցէ։ Եւ յարժամ լսիցես զգլուխն, մի զիշխանութիւնն միայն զմտաւ ածիցես, այլ և զհաստատութիւնն. մի միայն իբրև զիշխան, այլ իբրև ըզգլուխ մարմնոյ։

“Լրումն, ասէ, այնորիկ որ զամենայն լնու”։ Ո՛չ ինչ

իցէ լրումն սորա. իսկ եթէ չէր այս բաւական ցուցանել զազգականութիւնն և զմերձաւորութիւնն, լրումն, ասէ, Քրիստոսի եկեղեցի է. քանզի լրումն գլխոյն մարմին է, և լրումն մարմնոյդ՝ գլուխդ: Տես զորպիսի ինչ կարգ 'ի կիր արկանէ Պաւղոս, զիարդ և միում բանի չխնայէ, որպէս զի կարասցէ հմուտ առնել փառացն նմ̃: Լրումն ասէ. այսինքն թէ գլուխն լնու 'ի մարմնոյն. որպէս զի ասիցէ թէ յամենեցունց միաբանուն[1] յարուցեալ կայ մարմինն, և իւրաքանչիւր ումեք ոչ զհաստատակայն պէտս առանձինն մուծանէ վճարել. այլ եթէ ոչ, ասէ, լինիցիմք բազումք՝ ոմն ձեռն, ոմն ոտն, ոմն այլ ինչ անդամ, չլնու, ասէ, մարմինն. ապա ուրեմն ամենեքումբք լնու մարմինն: Այս յորժամ ամենեքումբք լնու, ապա կատարի գլուխն. յայնժամ բովանդակի մարմինն, յորժամ ամենեքեան 'ի միմեանս ժողովեցիմք: Տեսեր զմեծութիւն փառաց ժառանգութեանն, տեսեր զառաւելութիւն մեծութեան զօրութեան 'ի հաւատացեալսն, տեսեր զյոյս կոչմանն. այն իսկ է զի 'ի գլուխն հրաւիրեաց զանդամս:

Պատկառեսցուք 'ի գլխոյն մերոյ, 'ի միտ առցուք եթէ ոյր մարմին եմք. գլխոյն՝ որում ամենայն ինչ հնազանդեալ է և հրեշտակայն զօրութիւնք: Այնու օրինակաւ պարտիմք լինել միամիտք, զի և քան զհրեշտակապետս ամենայն մեծամեծար պատուեցաք: Քանզի ոչ եթէ զհրեշտակաց բուռն եհար նմ̃, որպէս առ հեբրայեցիսն գրէ, այլ զզաւակէն Աբրահամու. ոչ ըզպետութեանց և զիշխանութեանց և ոչ զտէրութեանցն և ոչ զայլ իմիք զօրութենէ, այլ զմերմէ բնութենէ, և նստոյց ընդ աջմէ իւրմէ: Այս զինչ ասիցեմ եթէ նստոյց ընդ աջմէ, այլ պատմուճան եւս իւր արար. և ոչ վայրապար, այլ զամենայն ինչ հնազանդ արար 'ի ներքոյ ոտից նորա: Որչափ ինչ կամիցիս մահս 'ի միջի դընել, քանիցս ոգիս. բիւրոց բիւրս, եւս բազմապատիկ քան զնոյն. այլ չասեմ ինչ այժմ հանգոյն: Երկուս ինչս մեծամեծս գործեաց. զի ինքն այնչափ 'ի խոնարհութիւն եկն, և զմարդկութիւն յայնչափ բարձրութիւն վերացոյց: Արեամբն իւրով, ասէ, կեցոյց զմեզ: Ապա

1 Միւս օրինակն միաբան:

առաքելոյ բերանն Քրիստոսի, որ պիղծ ձեռօք և շղթայիւք ժամեցիս 'ի մարմինն : Եւ զԹագաւոր ոք չիշխեսցես համբուրել՝ եթէ հոտ ինչ չար 'ի բերանոյդ գայր . և զերկնաւոր Թագաւորն հասեալ հոգւովդ համբուրես . մեծի Թշնամանաց իրք են : Ըզէ սոս, ամենայն ձեռօք յօժարեցիս մերձենալ 'ի պատարագն . Թո՛ղ ինձ Թէ լաւ համարեցես բնաւ չմերձենալ՝ քան Թէ աղտեղի ձեռօք մատուցցես : Ի փոքրումն այնքան երկիւղած ես , և աղտեղի ոգւովդ անխտիր ժամս հաղորդել . Թէպէտ և ձեռաց աղտ առ ժամանակ մի է , և ոգւոյն ամենևին ներկեալ :

Զատուսանիցես , զխորդ զապական սրբեսջիք , և ջինջ և մաքուր առնեսջիք . առաւել քան զայն զոգիս մեր պարտիմք սրբել . և ես յանձամբ լուսաւորագոյն և պայծառագոյն առնել : Ասան էր . զի այն վասն մեր սրբի , և այն չհաղորդի ընդ այսմ որ 'ի ներքս 'ի մեզ մտանէ . քանզի ոչ եթէ զգայութեն ինչ է սպասն . իսկ մեք ամենայն իսկ հաղորդիմք : Եւ եթէ սպասն աղտեղի էր , չառնուիր յանձն նոսկաւ զորութիւնն մատուցանել . և ոգւովդ աղտեղաւ անխտիր մերձենաս : Նայց կարի իմն անհարթ և անձահ և այլ ազգ զիրսն տեսանեմ . յայլ ժամանակս Թէպէտ և սուրբք իցեն՝ չմերձենան . և զատկի Թէպէտ և կարի ոք յանդգնեալ 'ի չարիս իցէ , անխտիր մատչի : Ո՜ չար սովորութեան և կանխակալոյ անմտութեան : Ի զուր ուրեմն հանապազորդ զենումն լինի , վայրապար ինչ կայցեմք առաջի սեղանոյն , չիք ոք որ հաղորդի , չէ ոք որ յօրէնսն մերձենայ : Ոչ զայն ինչ ասեմ , զի անխտիր ոք մերձենայցէ , այլ զի արժանիս զանձինս յօրինեսջիք : Չիցես արժանի պատարագին և ոչ մերձենալոյ 'ի սրբութիւնն , եթէ այնպէս իցէ՝ և ոչ աղօթիցն :

Չլինիցես զինչ աղաղակէ քարոզն , եթէ ապաշխարողք յաղօթս կացէք . որ ոչն հաղորդի՝ ընդ ապաշխարողսն է . զի կայցես 'ի ներքս որ ընդ ապաշխարողսն իցես . քանզի որ չհաղորդին՝ ընդ ապաշխարողսն է : Ընդէր ասիցես , եթէ որ ոչ էք կարող՝ երԹայք , և դու ժպրհեալ մնացեալ կաս որպէս զուրր ոք : Դու չիցես յայնպիսեացն , այլ 'ի կարողացն . և ընդէր չփութայցես հաղորդել . ո՛չ ապաքէն՝ զի չհամարիս ինչ զիրսն :

Միտ դիր աղաչեմ, արքունական սեղան է , և հրեշ-

տանք առաքինութեան նեղմանցն. խնդրելն իսկ թագաւորին եկեալ համբաւ է 'ի նեղմանն, և դու կաս և յօրանջես և ձկտիս, և ազատեալ հանդերձս ունիս. և չհամարիս ինչ վնաս: Մ՞այլ սուրբ հանդերձս ունիս. եթէ այնպէս իցէ, բարեկաց և վայելես: Հանապազ զայդ չրջիլ զբաղմա-կանօքն, և ընդ ամենեսեան միշտ խօսի, և տայ ցխրախա-կանն, «Ննջե՞ր զինուորդ կաս սուտ, որ ոչ ունիս հանդերձ հարսանեաց»: չասաց թէ ընդէ՞ր բաղձեցար, այլ յա-ռաջ քան զբաղձեալն և մտանելոյն եւս անարժան համա-րեցաւ. քանզի չասաց եթէ ընդէ՞ր բաղձեցար, այլ ե-թէ ընդէ՞ր մտեր:

Սոյն և այժմ ընդ մեզ ամենեսեան խօսի, որք անամօթութեամբ և յանդգնութեամբ այսր մտանե-ցեալք. ամենայն որ ոչն հաղորդեցաւ խորհրդոյն, անա-մօթ է և ժպրհութեամբ կայ, ուր չէ պարտ նմա կալ: Վասն այնորիկ որ 'ի մեղսն են, յառաջագոյն արտաքսէք 'ի բաց և սոյա զխորհուրդն կատարեսցէ: Այս և առաւել իսկ յորժամ սէր այր 'ի հաց կոչեցեալ լինել[1], որ ոչ յան-ցաւոր 'ի ծառայիցն իցէ՝ մերկանայ զնոյն. նոյնպէս և աստ, յորժամ պատարագն եղանիցի 'ի սեղանն, և Քրիստոս 'ի վերայ դնիցի զատն անարատ, յորժամ լսիցես եթէ ամենեքեան աղօթս արարեալք, յորժամ տեսանիցես զգործոնոն 'ի մաքրսնոս անձեալ, 'ի մեր առնացուն՝ եթէ երկինք 'ի վերուստ բացեալ և հրեշտակք իջանեն: Ո որ ոքինակ երախայի ունիք չէ պարտ 'ի ներքս մտանել, նոյնպէս և ոչ կնքեալոցն ապաշխարողաց:

Մի՛ է սուտ, եթէ ոք 'ի Ճաշ կոչիցի, զձեռս լուանայ-ցէ և բազմեսցի, և մնասցէ չկամիցի 'ի սեղանն և Ճաշա-կել ինչ, չթշնամանիցէ՞ զկոչեցեալսն. ոչ ապաքէն լաւ էր այնպիսոյն եթէ բնաւ իսկ չէր եկեալ. նոյնպէս և դու մտեր 'ի ներքս, զօրհնութիւնն ընդ ամենեքին օրհ-նեցար, յայտ արարեր թէ յարժանաւորացն իցես, այ-նու զի ոչ ընդ անարժանսն արտաքս գնացեր. զիա՞րդ մնացեր 'ի ներքս և չհաղորդեցար սեղանոյն: Ո՛չ եմ, ա-սէ, արժանի: Եթէ այնպէս իցէ, և ոչ աղօթիցն հա-ղորդութեան. քանզի ոչ միայն 'ի պատարագն, այլ և յօրհնութիւնսն իջանէ Հոգին:

1 Երկաթագրին կոչել:

Զտեսանիցե՞ս զկարգ սանդղուքք փակեղանն լուսանան, և զդռանն[1] որքեն, և զսկաւեզսն և զգաւժակսն յօրինեն զնեն. և այն յաղօթիցն ժամն լինի, մինչդեռ քարոզն ազդարարէ, իբրև սանդղով շուրջ լուսացուք զեկեղեցին, զի 'ի սուրբն եկեղեցւոյ յօրինեսցի զնիցի ամենայն ինչ. և մի ինչ իցէ անդ սալի կամ խոշոր կամ աղբ. չէին արժանի և ոչ աչք անարժանիցն հայել յայնպիսի սրբութիւնս, և ոչ ականջք լսել զահագին բարբառն՝ Թէպէտ և գազան, ասէ, մերձենայցէ, քարամբք քարկոծեսցի. և այնպէս և հայելոյ անգամ 'ի լեառնն չէին արժանի, թէպէտ և յետոյ մատչէին և տեսանէին առ կայսն ած. յետոյ համարձակ էր մտանել և տեսանել: Մինչև եկեալ հասեալ կայցէ՝ անտի 'ի բաց գնա. չէ քեզ իշխանութիւն անդ կալ առաւել ևս քան զերախայիցն. քանզի չէ հասարակ բնաւ չհայելն 'ի խորհուրդսն, և հայելն, և յետոյ յանցանելն և արհամարհել, և անարժան զանձն իւրայն կացուցանել:

Էր և այլ ինչ բազում ասել ահագինս, այլ զի մի ծանրաբեռնի առնիցեմք զմիտս ձեր, բաւական համարիմ այսչափ միայն ասել՝ զի որք սակաւուքս չզգաստանայցեն, և ոչ բազմօքն խրատեսցին: Զի մի առաւել դատապարտութիւն գործիցեմք ձեզ, աղաչեմ զամենեսեան, մի միայն 'ի գալն փութայցէք, այլ հանդերձ գալովն և մերձենալովն արժանի զանձինս պատրաստեսջիք: Ապա ասա, եթէ թագաւոր ոք հրաման տայր եթէ ոք զայս ինչ գործիցէ՝ յիմմէ սեղանոյս 'ի բաց կացցէ, ո՞չ ապաքէն զամենայն հնարս հնարէիք, զի մի գտցիք վրիպեալք 'ի սեղանոյն. իսկ նա աւանիկ յերկինս կոչեաց զմեզ յարքունական սեղանն, 'ի մեծն և 'ի սքանչելին, և մեք հեղգամք և յապաղեմք և ոչ գամք 'ի վերայ իրացն գործեմք. և զի՞նչ յոյս փրկութեան կայցէ մեզ: Զի ոչ պատճառք զտկարութիւն դնել, և ոչ զբնութիւն. ծուլութիւն միայն անարժանս կացուցանէ զմեզ:

Այս 'ի մէնջ առասցու. բայց որ բանայ զմիտս և տայ զհոգին յորդորման, յորդորեսցէ զմիտս ձեր, և տնկեսցէ 'ի խոր զսերմանիսն. զի աճեցեալ նոքա եղիցին յղանալ և ծնանել զհոգին փրկութեան, և գալ այսր հա-

1 Օրինակ մի դռանն.

մարձակութեամբ սրտիւ և աչալուրջ երեսօք, ըստ այնմ՝ եթէ «Որդիք քո որպէս նորատունկ ձիթենեաց շուրջ զսեղանովք քո»։ մի աւելորդս ինչ և մի դաժանագոյնս, և մի խակ և տհաս. զի այնպիսի նորատունկքն պիտանացու են պտղաբերութեան զարմանալի պտղոյն, զձիթենեացն ասեմ, և ընդ պտղաբերութեանն զի և սերտք ևս իցէք։ Որպէս զի ամենեցուն լիցի շուրջ զսեղանովս պսակել, և մի 'ի զուր ինչ և ընդ վայր ժողովել աստ. այլ ահիւ և երկիւղիւ, այնպէս զի և զՏէր ևս տեսանիցէք անդ համարձակութեամբ. որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՉՈՐՐՈՐԴ

«Այլ դուք որ երբեմն մեռեալն էիք 'ի մեղս ձեր և յանցանս, յորս երբեմն գնայիք ըստ յաւիտենի աշխարհիս այսորիկ, ըստ իշխանի պետութեան օդոյս այսոյ որ այժմ ազդէ յորդիսն անհաւատութեան. որով և մեք ամենեքեան շրջէաք երբեմն 'ի ցանկութիւնս մարմնոյ մերոյ և առնէաք զկամս մարմնոյ և մտաց, և էաք բնութեամբ որդիք բարկութեան որպէս և այլքն»։

Այս մեռելութիւն մարմնական; գոյ և շնչական. այլ այնմ՝ չիք ինչ մեղադրութիւն և ոչ պատիժք ինչ 'ի վերայ. նա և ոչ մեղադրութիւն իսկ է, քանզի բնութեան և ոչ կամաց ինչ է իրն, զի այն 'ի նախագործ մարդոյն յանցանաց եղև, և այնուհետև 'ի բնութիւն դարձան իրքն. և այլ ազգ ևս, քանզի փոփոխական լուծանելոց է։ Իսկ շնչական մեռելութիւնն, քանզի կամաց է, ընդ պատժովք է; և չիք երբեմն այնմ լուծումն լինել։ Այլ արդ տես քանի սաստկագոյն է, զի և Պաւղոս այնպէս իմն յայտ առնէ թէ քան զմեռեալս յարուցանել՝ զոգի մեռեալ բժշկել առաւել մեծ է. և այժմ իբրև զմեծ իմն դնէ։ «Այլ դուք, ասէ, որ մեռեալք էիք 'ի մեղս

ձեր և յանցանս, որ երբեմն գնայիք ըստ յաւիտենի աշխարհիս այսորիկ ըստ իշխանութեան օդոյս այսց, որ այժմ ազդէ յորդիսն անհաւանութեան»։ Տես զհանդարտութիւնն Պաւղոսի զիարդ ամենայն ուրեք մխիթարէ զլսողսն և չառնէ ծանրաբեռնի. քանզի ասաց թէ յանհնարին չարիս ընթանայիք, զի այն իսկ է մեռանելն։ Արդ զի մի յոյժ ծանրացուցանիցէ նոցա, քանզի ամաչեն մարդիկ ընդ առաջին ինչ յանցանս որ 'ի մէջ գայցեն, թէպէտ և յանցանքն թողեալ իցեն և պատիժք ինչ 'ի վերայ չկայցեն, ցուցանէ նոցա զոմն գործակից, զի մի կարծիցի եթէ նոցա ինչ միայն է վնասն։ Այլ գործակից սաստիկ ով իցէ. զսատանայէ ասէ։ Այսպէս և 'ի կորնթացւոց թղթին ասէ՝ թէ «Մի խաբիք, ոչ պոռնիկք, ոչ կռապաշտիչք»․ և զայլն ամենայն մի ըստ միոջէ համարեալ յաւէ 'ի նոյն եթէ «զարքայութիւնն ա̃յ ոչ ժառանգեն»։

«Այլ դուք, ասէ, երբեմն այնպէս ոմանք էիք»։ Այլ չասաց լոկ թէ էիք, այլ թէ ոմանք էիք, այսինքն թէ երբեմն այնպիսի ոմանք էիք։ Աստ յանդգնեալ հերձուածողքն՝ զայս, ասեն, զո̃յ ասէ. և զարձակերեսանակ լեզուն զվայրօք ածեն, և որ ինչ սատանային միայն է 'ի Ձահ՝ զայն զնմ̃ կամին արկանել։ Այլ արդ զիարդ ընկերանիցեմք զնոսա. այլ անդստին 'ի բանիցն։ Եթէ արդար իցէ, ասէ, ա̃ծ որպէս ասէքդ, և զայն գործ գործեաց, չէ այնուհետև արդարոյ գործ, այլ կարի անիրաւի, և անիրաւ ա̃ծ՝ և ոչ երբէք է ա̃ծ։ Այլ արդ ընդէր կոչիցէ զսատանայ իշխան յաւիտենիս աշխարհիս այսորիկ. զի եթէ ամենայն իսկ մարդկեղէն բնութիւն ետ նմա զանձնիշխանութիւն կամօք, և ամենեքին զայն ախորժեցին. և Քրիստոսի որ բազում բարութիւնս խոստացաւ տալ՝ չանսայ ոք. և նմա որ ոչ այնպիսի ինչ, և 'ի գեհեննն առաքէ, ամենեքին անսան։ Այլ իշխանութիւն նորա յայսմ աշխարհի է, և քան զա̃ծ նա բազումս ունի, և նմա առաւել անսան քան ա̃յ բայց 'ի սակաւուց, և այն 'ի մերմէ ծուլութենէ։

«Ըստ պետութեան, ասէ, օդոյս այսց»։ Զայս ասէ զի յայտ արասցէ թէ 'ի ներքոյ երկնից ունի բնակութիւն. և օդոյ այսմ՝ վասն զի անմարմնական զօրութիւնքն են՝ կոչէ. նա է որ ազդէն զչարիսն, այլ ոչ բռ-

նութեանն, բայց գրգռելով միայն։ Եւ յաշխարհիս միայն է իշխանութիւն նոցա, և ընդ լուծանիլ աշխարհիս լուծանի իշխանութիւնն։ Ուր և զայն զոր 'ի կատարածի թղթիս ասէ՝ թէ "Ոչ է մեզ մարտ ընդ արեան և ընդ մարմնոյ, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս և ընդ աշխարհակալս խաւարի յաւիտենիս այսորիկ"։ Եւ զի մի՛ յորժամ աշխարհակալս լսիցես՝ անտարաս ինչ կարծիցես զնոսանէն, այլուր և յաւիտեան չար կոչէ զժամանակ ինչ թիւր, և ոչ եթէ զարարած ինչ չար կոչէ։ Եւ ինձ այսպէս թուի թէ եղև ինչ իշխան 'ի ներքոյ երկնից. և թէպէտ և յանցեաւ, այլ չև ևս է անկեալ յիշխանութենէն։ Եւ այլք ասեն թէ յիշխանութենէն անկաւ, բայց զանուն միայն ունի։ Բայց այս զի տանիցէ՝ թէ այսպէս և եթէ այնպէս, այլ խնդիր այն է՝ թէ բռնութեամբ զօր ունիցի թէ ոչ։ Եւ զի չունի զօր բռնութեամբ, յայտ յաջորդէն է. "Որ այժմս, ասէ, ազդէ յորդիսն անհաւանութեան"։ Տեսանես զի որ ոչն չհաւանին, 'ի նոսա ազդէ զչարիսն, և ոչ բռնութեամբ և 'ի հարկէ, այլ հաւանեցուցանելով և խաբելով պատրէ տանի 'ի մոլորութիւնն։ Եւ այլք ասեն թէ յերկինս ընդ բուն հրեշտակապետան էր, և փոքր յանցեաւն՝ անկաւ անտի այսր 'ի ներքոյ երկնից յօդս։ Եւ վկայ յաւետարանէն ածեն՝ եթէ "Տեսանէի զսատանայ զի իբրև զփայլակն անկանէր յերկնից"։ Եւ այլքն յերկնիցն անկանել՝ յիշխանութենէն անկանել ասեն։

Եւ ոչ այնու միայն մխիթարէ զգործակիցսն այլ[1] հաղորդ չարեաց տայ նոցա զսատանայ, այլ զի և զանձն ևս ընդ նոսա խառնէ. "Յորս և մեք ամենեքեան շրջէաք երբեմն"։ Ոչ, ասէ, եթէ ասպրեալ ոք էր։ "Ի ցանկութիւնս մարմնոյ մերոյ, ասէ, և առնէաք զկամս մարմնոյ և զմտաց, և էաք բնութեամբ որդիք բարկութեան որպէս և այլքն ամենեքեան"։ Բնութեամբ ասել աստ՝ ստուգիւ և մտերմութեամբ է, և ոչ եթէ արդարև բնութեամբ։ "Որպէս և այլքն ամենեքեան", ասէ. այսինքն թէ ոչ ինչ զհոգևորսն խնայաք։ Նաև զի մի ըզմարմինն ինչ բամբասիցէ, և մի զի չհամարի ոք ինչ

1 Այսպէս յօրինակն. յայլն այլ։

վասն այնորիկ 'ի նոյն յարէ՝ թէ 'ի Քրիստոս Յիսուս։ Եւ եթէ այս այսպէս չիցէ, այլ յարուցանել ընդ նմին՝ ասացանաւն յարոյց, և ո՞ր իցէ զի ընդ նմին նստոյց, եթէ ոչ այնպէս իցէ որպէս և ասէ իսկ, «Եթէ համբերեմք՝ ընդ նմին և թագաւորեսցուք»․ և եթէ մեռանիմք՝ ընդ նմին և կենդանանամք։ Արդարեւ Հոգւոյն յայտնութեան պէտք են զայսպիսի խորոց խորհրդոց իմանալ։ Ապա զի մի անհաւատ լինիցիս, տես զինչ յարէ 'ի նոյն։

«Զի ցուցցէ, ասէ, զյաւիտեանսն որ գալոցն են՝ զառաւելութիւն մեծութեան շնորհաց իւրոց քաղցրութեամբ 'ի մեզ 'ի Քրիստոս Յիսուս»։ Եւ քանզի բազում ինչ ասաց զՔրիստոսէ, և չթուէր ինչ մեզ այն 'ի շահ, զի մի ոք ասիցէ մեզ առ ի՞նչ ըմբռն իցէ այն զի նա յարեաւ, եցոյց եթէ և մեզ իսկ կարի 'ի դէպ է, թէպէտ և այնպէս իսկ միացեալ է ընդ մեզ։ Սակայն և զմերն առանձինն ասէ․ «Քանզի էաք, ասէ, մեռեալք 'ի յանցանս․ ընդ նմա յարոյց, ասէ, և ընդ նըմին նստոյց»։ Որպէս զի զոր ասացին, յայտնեսցէ մի անհաւատ լինիցիս, յառաջնոցն և 'ի գլխոյն և 'ի կամելոյն ցուցանել զբարերարութիւն նորա առեալ զհանդէսն։ Քանզի զիա՞րդ իսկ եթէ այն չլինիցի՝ ցուցանիցի ինչ, և յայտնիցի յաւիտեանսն որ գալոցն իցեն․ քանզի մեծամեծ բարութիւնք էին և բանս զմնաւ հաւատարմագոյնք։ Այժմ շատախօսութիւն իմն թուէին բանքըս անհաւատիցն, բայց յայնժամ ամենեքին 'ի միաբանուցուն և ընթերցանիցեն։ Կամիս ուսանել թէ զիարդ և ընդ նմին նստոյց, լուր նմին իսկ Քրիստոսի որ ասէր ցաշակերտսն․ «Նստջիք և դուք յերկոտասան աթոռ դատել զերկոտասան ազգն Իսրայէլի»․ և դարձեալ թէ «Նստուցանել ընդ աջմէ և ընդ ահեկէ իմմէ՝ չէ իմ տալ, այլ որոց պատրաստեալ իցէ 'ի Հօրէ»։ Ապա ուրեմն պատրաստեալ է։ Եւ բարւոք ասաց՝ եթէ քաղցրութեամբ 'ի մեզ 'ի Քրիստոս Յիսուս։ Եւ արդ ոչ միայն մինչ 'ի Քրիստոս դադարեցուցանէ[1] զխրատ, և զիա՞րդ իսկ 'ի մեզ, ասէ, 'ի Քրիստոս Յիսուս։ Քան-

1 Միւսն դադարեցուցանէ․ և չէք 'ի յոյնն համաձայնք․ Եւ արդ ոչ միայն . . . 'ի մեզ, ասէ, 'ի Քրիստոս Յիսուս։

զի և նստուցանելն ընդ աջմէ մեծ պատիւ է և 'ի վեր քան զամենայն պատիւս, որում ոչ գոյ այնպիսի ինչ պատուոյ զուգական: Այլ արդ զայն ասէ թէ և մեք նըստեցիմք: Արդարև առաւել մեծութիւն է, արդարև առաւել աւագութիւն է զօրութեան նորա ընդ Քրիստոսի նստել: Այլ եթէ բիւր ոգիս ունէիր, չպարտէի՞ր վասն նորա կորուսանել. և եթէ 'ի հուր հասանէր մըտանել, չէ՞ր պարտ այնմ յօժարութեամբ համբերել: Այս և ինքն իսկ ասէ՝ թէ "Կամիմ զի ուր եսն իցեմ, և պաշտօնեայքն իմ անդ իցեն": Այլ եթէ ցանկ պատառ պատառ հասանէր կոտորել վասն այնպիսի իրաց, չէ՞ր պարտ ախորժելով յանձին ունել: Ի միտ առ ուր նստէր, 'ի վերոյ քան զիշխանութիւնս և զպետութիւնս. և ո՞ւմ աթոռակից լինիցիս, եթէ ոչ նմա. և ուստի՞ անդր վերացար, 'ի մահկանացուաց. որդիք բարկութեան էին և չէր ինչ երբէք ուղղութիւնս արարեալ: Այլ արդարև այժմ իսկ 'ի դէպ ժամանակի է զաղաղակ բառնալ գոչել և գուժել՝ թէ ո՞վ խորք մեծութեան և իմաստութեան և գիտութեանն ա̃յ:

"Շնորհօք, ասէ, էք ապրեալք": Զի մի մեծութիւն բարերարութեանցն հպարտացուցանիցէ զքեզ, տես զիարդ յածուցանէ. "Շնորհօք էք ապրեալք 'ի ձեռն հաւատոցն": Դարձեալ զի մի զանձնիշխանութիւնն ևս քայքայիցէ՝ դնէ և զառ 'ի մէնջն, զի հաւատալքն՝ ասէ: Դարձեալ վաղվաղակի 'ի բաց բառնայ. "Այլ այն, ասէ, ոչ 'ի ձէնջ ինչ". և հաւատքն, ասէ, չեն 'ի մէնջ: Զի եթէ չէր եկեալ և կոչեցեալ, ո՞րպէս կարէաք հաւատալ. "Զիա՞րդ, ասէ, հաւատասցեն, եթէ ոչ լուիցեն. որպէս զի ոչ հաւատքն մեր ինչ են. "ա̃յ պարգև է": Միթէ բաւակա՞ն էին, ասէ, հաւատքն կեցուցանել. այլ զի մի իբրև զունայնս և զդատարկս կացուցանիցէ, խնդրեաց զհաւատոն: Այլ ա̃ծ, ասեն, ասաց թէ հաւատքն կեցուցանեն: Քանզի ա̃ծ այնպէս կամեցաւ, հաւատքն կեցուցին. արդ թէ ոչ ո՞ր կեցուցին հաւատքն առանց գործոց: "Այլ այն իսկ ա̃յ պարգև է, զի մի ոք պարծեսցի". զի շնորհակալ առ շնորհսն գործիցէ: Իսկ արդ զիա՞րդ, ասեն, միթէ ինքն ինչ արգել գործովքն արդարանալ. և ոչ երբէք. այլ ոչ ոք 'ի գործոցն արդարացաւ, զի երևեսցին շնորհքն

նոյ և մարդասիրութիւնն ։ Ոչ վասն ինչ որ զգործս առնէին մերժեաց, այլ որք 'ի գործսն ծուլացան՝ զնոսա շնորհօք ապրեցոյց, որպէս զի մի՛ ումեք լինիցի պատճառ ։

Նաև զի մի՛ յորժամ լուիցես եթէ ոչ 'ի գործոցն՝ այլ 'ի հաւատոցն ամենայն իրիք ուղղութիւն գործի՝ և դու վատանայցես, տես զինչ յարէ 'ի նոյն. "Նորա եմք, ասէ, արարածք հաստատեալք 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի 'ի գործս բարիս. յորս պատրաստեաց Ած զի 'ի նոյնս գնասցուք ": Եւ արդ տես զինչ ասիցէ. զվերին ծնունդն ակնարկէ այսուիկ ։ Արդարև մեք եմք հաստատուն և նոր գործուած. զի 'ի չգոյէ եկաք 'ի գոյ. յարում էաքն յառաջագոյն, յայնմանէ մեռաք, այժմիկ ըստ հին մարդոյն. և որպիսիք եղեաք, այնպէս չէաք զառաջինն. ապա ուրեմն հաստատուն և նոր գործուած եմ իրքն և քան զառաջինն եմ պատուականագոյն. զի այնու կեանքն շնորհեցաւ, և այսու բարւոք կեալ ։ "Ի գործս բարիս, ասէ, յորս պատրաստեաց զմեզ Ած զի 'ի նոյնս գնասցուք ": Ոչ զի սկիզբն միայն առնիցեմք, այլ զի և ցբուն գնայցեմք ։ Քանզի բաւական են մեզ այժմ առաքինութեանն 'ի կատարումն հասանել ։ Ոչ միայն 'ի ճանապարհ անկանել պարտ է որ 'ի քաղաքն արքունի անցանիցէ, և զմեծ մասն երթեալ և յետոյ լքանել և նստել՝ եթէ այնու ինչ մեզ շահ լինիցի ։ Զի 'ի յոյս կոչմանն կոչեցաք. "'Ի գործս, ասէ, բարիս ". եթէ ոչ ցբունն 'ի նմին կայցեմք, ոչ ինչ մեզ օգուտ յերկոցն գործիցի ։ Նոյնպէս և աստ ոչ զայն ինչ հրամանս տայ եթէ զմի գործ միայն գործեսցուք, այլ զամենայն ։ Զորօրինակ հինգ զգայութիւնք են 'ի մեզ և ամենեքումբք պարտ է 'ի դէպս վարել, նոյնպէս և ամենայն առաքինութեամբքն յարժանն պարտ է վարիլ ։

ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Եւ եթէ ցածուն ոք իցէ և ողորմած չիցէ, և կամ թէ ողորմած ոք իցէ և ագահիցէ, կամ թէ յայլում ինչ չժտիցէ և զիւրն ումեք չտայցէ, բնաւ ընդ վայր է, ամենայն 'ի զուր ։ Չէ. բաւական մի միայն առաքինութիւն համարձակութեամբ յանդիմանել կացուցանել առաջի բեմին Քրիստոսի. այլ բազում և պէսպէս և ազգի ազ-

գի, և ամենայնի իսկ և բնաւի պէտք են ։ Այլ լուր նմին իսկ որ առաքեր ցաշակերտսն, եթէ "Երթայք և աշակերտեցէք զամենայն զհեթանոսս, և ուսուցէք զնոսա պահել զամենայն զոր միանգամ պատուիրեցի ձեզ"։ և դարձեալ թէ "Որ ոք լուծցէ մի ի պատուիրանացս յայսցանէ փոքրկանց, կրսեր կոչեսցի յարքայութեանն երկնից"։ այսինքն ի յարութեանն։ և ոչ եթէ յարքայութենէն մնասցէ, քանզի գիտէ և զժամանակն յարութեանն արքայութիւն կոչել։ Ոմն ինչ, ասէ, թէ լուծանիցէ, կրսեր կոչեսցի, որպէս զի ամենայն իսկ պատուիրանացն պէտք են ։

Այս ասէ զիարդ չէ հնար առանց ողորմածութեան մտանել յարքայութիւնն. այլ թէպէտ և նա միայն չիցէ, ի հուր երթալոց եմք. "Երթայք յինէն, ասէ, անիծեալք ի հուրն յաւիտենից որ պատրաստեալն է սատանայի և հրեշտակաց նորա"։ Եր վասն և ընդէ՞ր. քանզի "Քաղցեայ և ոչ ետուք ինձ ուտել, ծարաւեցի և ոչ ետուք ինձ ըմպել"։ Տեսե՞ր զի ոչ այլ ինչ պատուհաս կրեցին, և այնու միայն կորեան. և կուսանքն յայն ասկս չմտին յառագաստն, թէպէտ և ցածութիւն ունէին. զորմէ Պաւղոսն ասէր թէ առանց սրբութեան ոչ ոք տեսցէ զտէր ։ Ի միտ առ այսուհետև, զի առանց ցածութեան ոչ ոք կարէ զտէր տեսանել, և ոչ դարձեալ ցածութեամբ միայն կարէ տեսանել. բազում անգամ թերևս և այլ ինչ իցէ որ խափանել կարիցէ ։ Դարձեալ թէ և զամենայն իսկ ուղղութիւնս ածիցեմք, և ընկերին օգուտ ոչ ինչ գործիցեմք, սակայն և այնպէս ոչ մտանիցեմք յարքայութիւնն. և ուստի՞ յայտ իցէ. ի տաղանդացն՝ որ հաւատացան ծառայիցն ։ Նա բնաւ իսկ առաքինութիւնն ողջ բովանդակ էր, և չէր ինչ պակաս. բայց քանզի ի գործն աշխատել և ի շահ ածել վատացաւ, յիրաւի խոտեցաւ ։ Այս և ի բամբասանացն միայն է երթալ ի գեհենն. "Որ ասիցէ, ասէ, ցեղբայր իւր մորոս, պարտաւոր լիցի ի գեհեն հրոյն"։ Այլ եթէ զամենայն ուղղութիւնս ածիցէ և թշնամանող միայն իցէ, սակայն չմտանէ ։

Այլ մի ոք անագորոյն մտաց պարսաւանս ինչ իշխեսցէ ածել զմտաւ զայդ, թէ և վասն գոյզն ինչ յանցանաց յարքայութենէն երկնից հանիցէ ։ Այլ թէ առ մարդկան

զինչ և գործիցէ ոք արտաքոյ քան զօրէնսն, ելանէ յաչաց Թագաւորին, Թէպէտ և զմիով իւիք յօրինացն որ 'ի վերայ կայցեն՝ անցանիցէ, եթէ զրպարտիցէ կամ բամբասիցէ, կորուսանէ զբնաւ իշխանութիւնն. եթէ 'ի շնութեն գտանիցի կամ յայլ ինչ յանարժան գործս, Թէպէտ և բիւր ինչ հաճոյս արարեալ իցէ, զամենայն միով յանցանօքն կորուսանէ. և մանաւանդ եթէ սպանութիւն գործեալ իցէ, և 'ի վերայ գայցէ, այն իսկ միայն բաւական է զնա կորուսանել: Եթէ մարդկան օրէնք այնպէս զգուշութեամբ պահիցին, որչափ ևս առաւել ա̃յքն:

Այլ, ասեն, բարերար է: Մինչև ցե՞րբ զմերս բանս բարբառիցիմք. մերս ասեմք՝ ոչ զի բարերարն է, այլ զի զբարերարութիւն նորա այնու իմն մեզ պատճառանացու համարիմք: Թէպէտ և բազում անգամ բազում ինչ վասն այսր խօսեցաք, այլ լուր գրոյն որ ասէ. "Մի ասիցես եթէ ողորմութիւն նորա բազում է, և զբազմութիւն մեղաց իմոց քաւէ": Չարգելու զմեզ ասել թէ ողորմութի նորա բազում է, և ոչ այնպիսի ինչ խրատ տայ. այլ կամի թէ հանապազ իսկ զայն ասիցեմք. և նմին իրի իսկ զամենայն ինչ յուզէ Պաւղոս, այլ վասն նոցին յաջորդացն: Մի, ասէ, 'ի մեղանչելն միայն զարմասցիս ընդ ա̃յ մարդասիրութիւնն և ասիցես եթէ ըզբազմութիւն մեղաց իմոց քաւեսցէ:

Ոչ վասն այնորիկ ճառեմք այնչափ ինչ վասն բարերարութեանն, զի յայն ապաստան՝ զամենայն ինչ անխտիր գործիցեմք. ապա թէ ոչ՝ բարերարութիւնն նորա ապականիչ մերոյ փրկութեանն լինիցի. բայց զի մի անյոյսք լինիցիմք՝ յորժամ մեղանչիցեմք, այլ զի ապաշխարեսցուք և փրկութեան հասցուք: "Զի քաղցրութիւնն, ասէ, ա̃յ զքեզ յապաշխարութիւն ածէ" և ոչ 'ի բազում չարութիւնս: Ապա եթէ յոռութիւնս ինչ վասն ա̃յ քաղցրութեանն համարիցիս, դու առաւել բամբասես զնա քան զամենայն մարդիկ. քանզի զբազումս իսկ տեսանեմ զի տհաճ են ընդ ա̃յ երկայնմտութիւնն. որպէս զի վրէժս իսկ պահանջիցիս, եթէ ոչ 'ի լաւն արկանիցես զնա 'ի կիր:

Մարդասէր է ա̃ծ, այլ և արդար դատաւոր. Թողու զմեղս, այլ և հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործս իւր.

զանց առնել զանիրաւութեամբք և բառնայ զանօրէնութիւնն, այլ և քննութիւն գործել։ Եւ արդ զի՞նչ, հակառակ ինչ միմեանց են սոքա. չեն հակառակ միմեանց, եթէ ժամանակօքն որոշեսցեք 'ի միմեանց։ Բառնայ զանօրէնութիւնս ասա աւազանաւն և ապաշխարութեամբ, և քննութիւն առնէ գործոցն անդ հրով և տանջանօք։

Եթէ բազում ինչ չարիս գործիցեմ, ասէ, և եթէ մի, անկանել 'ի բարութեանցն հասանէ և յարքայութենէն ելանել. և ընդէ՞ր ոչ զամենայն չարիսն գործիցեմ։ Թէպէտ և չարաբար ծառայի բանք են, սակայն տրասցուք և այնմ լուծումն։ Մ՛ի յաճախեր 'ի չարիս, զի անձին օգուտ առնիցես. յարքայութենէ ամենեքեան իսկ որոց զչարիս գործեալ իցէ՝ առ հասարակ անկանիցիմք, բայց 'ի գեհեննին ոչ ամենեքեան զնոյն վրէժս տայցեմք. այլ ոմն մեծամեծ և ոմն մեղմագոյն։ Վասն զի դու արհամարհեցեր և նա արհամարհեաց, այլ ոմն բազմօք և ոմն սակաւուք, յարքայութենէն նոյնպէս առ հասարակ անկանիցիմք. բայց զի ոչ նոյնպէս արհամարհիցէք, այլ ոմն մեծամեծօք և ոմն սակաւուք, 'ի գեհեննին ոչ միապէս զգայցէք տանջանացն։

Եւ ընդէ՞ր, ասեն, սպառնացաւ այնոցիկ որ զողորմութիւն ոչ առնեն՝ 'ի հուրն երթալ, և ոչ 'ի վայրապար ինչ, այլ յայն որ պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա. էր վասն և ընդէ՞ր։ Վասնզի ոչ այնպէս ինչ բարկացուցանէ զՔծ այլ[1] քան զամենայն չարիս, զայն նախ դնէ։ Եթէ զթշնամիս պարտ իցէ սիրել, իսկ որ բարեկամացն և ոչ միւս առնիցէ, և քան զհեթանոս ևս այնու չար լինիցի, որպիսի՞ տանջանաց չիցէ արժանի։ Եւ քանզի այնպէս մեծ էին մեղքն, ընդ սատանայի կարգեաց այնպիսւոյն երթալ 'ի հուրն։ "Այս, ասէ, այնմ որ ոչ առնէ ողորմութիւն"։ Ոչ եթէ առ հնոցն այնպէս էր, որչափ ևս առաւել առ նորովս. եթէ առ համարձակն էր ինչս ստանալ և վայելել՝ այնչափ պատուէրք էին վասն աղքատաց օգնականութեան, որչափ ևս առաւել առ՝ ուր հրաման առաք զամենայն 'ի բաց

1 Այսպէս յերկուսին օրինակսն. [illegible]

ընկենուլ։ Զի՞նչ ինչ ոչ առնէին նոքա. առաջնորդս տային, և մինչ ևս այլ առաջնորդս որոց և այլոց և եկաց. այլ Թէ յանկարծ ոք ուրեք առաջնորդս տայցէ, զարմանս առնեն, սքանչս[1] համարին. և որպիսի անմ-Թոյ չիցէ այն արժանի։ Իսկ առ Հրէիւքն չէր զարմանալի, առ քրիստոնէիւք սքանչելի իմն Թուի. և եԹէ յայնժամ պատիժք 'ի վերայ կային այնմ՝ որ զառաջնորդսն խափանէր, 'ի միտ առ՝ որպիսի ինչ պատիժք այնմ[2] 'ի վերայ կայցեն.

Եւ յայն մի ինչ որ առաքելական լինիցի, եԹէ ընդ բազումս չժառանգեսցէ զարքայուԹիւնն։ Ո՞չ է այդպէս, ասէ. եԹէ ես և նա 'ի միում պատժի իցեմք, չէ ապա միաբանուԹիւն՝ յորժամ[3] ես և նա 'ի միում պատժի իցեմք։ Նա և չիցեմք իսկ 'ի միում պատժի, այլ մին 'ի մեծամեծս և մին 'ի սակաւս. և այլ ապա ևս, և ոչ միաբանուԹիւն ինչ իցէ հաղորդուԹիւն չարչարանացն։ ՄիաբանուԹիւն յայնժամ է յորժամ չափով ինչ պատիժք իցեն. իսկ ուր աւելի քան զչափն է, և անհնարին տագնապ 'ի վերայ հասանիցէ, չգայ այնուհետև զգալ միաբանուԹեանն։ Ո՞չ է ասա ցայն որ առնէ ջիցին և քերիցի, և զոր 'ի հուրն ոք արկանիցէ, Թէ և այս անուն զգոյն պատիժս կրեաց. այլ չգգայ ինչ միաբանուԹեանն։ Ո՞չ ամենեքեան առ հասարակ սատակեցան Իսրայէլացիքն, զի՞ր միաբանուԹիւն մնացոյց նոցա այն զի 'ի միասին կորեան. ո՞չ ապաքէն առաւել այն իսկ տրտմեցուցանէր զնոսա. վասն որոյ և ասէինն իսկ, եԹէ կորեաք աստապեցաք սպառեցաք. և ո՞ր միաբանուԹիւն կայցէ այսմ։ Զուր տարփեմք զանձինս մնալի յուսով. մի միայն միաբանուԹիւն է, չանկանելն 'ի բուռն անշէջ հրոյն, և եԹէ անկանիցի ոք 'ի բուռն, չիք ինչ այնուհետև միաբանուԹիւն. ուր լալ աչաց է և կրճել ատամանց, և հուրն անշէջ և որդնն անվախճան։ Ուր նեղուԹիւնն է և անձկուԹիւն՝ բնաւ անձին զգալ չկարասցես ինչ անդ, Թող Թէ և միաբանուԹիւն յումեքէ առնուլ։

Ո՛հ, աղաչեմ և փարելի ասեմ, մի վաղվաղակի խա-

1 Մի օրին. սքանչելս։
2 Յոյնն այժմ։
3 ԿրկնուԹիւն բանիցս յերկուսին ևս օրինակսն՝ չիք 'ի յոյնն։

բերցուք զանձինս, և մի այսպիսի բանիւք քաղցրակերս տացուք անձանց. այլ զայն ինչ գործեսցուք՝ որով աղարել կարասցուք։ Քրիստոսի աթոռակից լինել կայ քեզ առաջի, և դու այնպիսի բանից հայթայթանս խնդրես. Թէ և այլ ինչ մեղք չէին, վասն այնպիսի բանից չէաք բազում պատժոց պարտաւորեալք, զի այսչափ հեղգ և ծոյլք և յոյլք եմք. ուր այնչափ պատիւ առաջի կայ, և մեք զայսպիսի բանս խօսիմք։ Յորժամ 'ի միտ առնուցուս զպատիւ այնոցիկ, որ զուղղութիւնն 'ի գլուխ հանին, չմեռանիցիս առաւել. յորժամ տեսանիցես զգազազեմս 'ի ծառայից և յանարգոյ մարդոց, որ սակաւ ինչ վաստակեցին աստ, և անդ արքունական աթոռոյն աթոռակից լինիցին։ Ո՞չ քան զտանջանսն՝ այն ևս չար լինիցի քեզ, զի տեսանիցես և յար հայիցիս։ Ասէ թէ այժմ յորժամ տեսանիցէ ոք զառաքեալսն 'ի պատիւ ելեալ, թէպէտ և չլինիցի խելք, սակայն քան զամենայն պատիժս զայն չար համարի, և 'ի սուգ և 'ի տարակուսութիւն[1] մտանէ, զորս առաւել հարկանի, և ազգի ազգի մահ անձին ընձանայ, զի նա յայնչափ պատուի է, և սա յայսչափ յանարգանս. իսկ յայնժամ որչափ ինչ չարչարկարիցէ։ Ո՞չ է բնաւ չէր իսկ գեհեն, յարքայութենէն միայն վրիպել՝ չէ՞ բաւական եղծանել և կործանել զմեզ։ Այլ զի այս այսպէս է, փորձ իսկ իրացն ուսուցանէ։

Այլ արդ մի 'ի զուր ինչ փարաւալս[2] անձանց տայցուք այսպիսի անօգուտ բանիւք. այլ միտ դիցուք և հագասցուք վասն անձանց փրկութեան. առածեսցուք զաղմանն տարցուք առաքինութեան, և 'ի վաստակս գործոց բարեաց զանձինս յորդորեսցուք. զի արժանի լիցուք այնպիսի փառաց հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Օրինակ մի 'ի տրտմութիւն։ 2 Երկու օր. փարատասցուք։

# ՃԱՌ ՀԻՆԳԵՐՈՐԴ

„Վասն այսորիկ յիշեցէք զի և դուք երբեմն հեթանոսքդ մարմնով որ կոչիք անթլփատութիւն յանուանեալ թլփատութենէն մարմնաւոր ձեռագործին. զի էիք 'ի ժամանակին յայնմիկ առանց Քրիստոսի, և օտարացեալ էիք յառաքինութենէն Իսրայէլի և օտարոտիք յուխտից աւետեացն, և յոյս ինչ ոչ ունէիք, և առանց Այ էիք յաշխարհի„։

Բազում ցուցանէ զՃյ մարդասիրութիւն. նախ զի անձամբն կեցոյց և այնպիսի օրինակաւ՝ իւրով անձամբն. երկրորդ անգամ թէ զորպիսիս զք կեցոյց. երրորդ անգամ թէ ուր տարաւ եհան։ Այս ամենայն առանձին իսկ բաւական է ցուցանել զհանդէս Այ մարդասիրութեանն։ Այլ զայս ամենայն յաւելեաց այժմ Պաւղոս՝ եթէ մեռեալք էաք 'ի յանցանս և որդիք բարկութեան, և կեցոյց զմեզ. և այժմ ասէ՝ թէ զորպիսի ինչ արար. վասն որոյ ասէ՝ յիշեցէք։ Քանզի սովորութիւն է ամենեցուն յորժամ 'ի բազում նուաղութենէ կամ 'ի հասարակ ինչ պատուէ և կարի յառաւելուն ելանիցեմք՝ չյիշել զառաջինն նուաղութիւնն առ փառօքն, վասն այսորիկ ասէ՝ թէ յիշեցէք։ Ընդէ՞ր ասիցէ զվասն որոյն. քանզի հաստատեցաք 'ի գործս բարիս, այն իսկ բաւական է հաւանեցուցանել զմեզ զփոյթ յանձին ունել զառաքինութեանն։

„Յիշեցէք„ ասէ. զի բաւական է յիշատակն շնորհակալս առնել առ երախտաւորն։ „Զի դուք, ասէ, որ երբեմն հեթանոսքն էիք„։ Տես զիարդ զհրէական առաւելութիւնսն քակէ և ընդ հեթանոսաց նուաղութիւնսն զարմանայ, որ չէր ինչ նուաղութիւն, այլ 'ի կարգացն և 'ի վարուցն զերկոսին կողմանս հաձէ։ „Անուանեալք„ ասէ։ Անուանք[1] էր պատիւն, մարմնով նու-

1 Ցայնն Բանիւք էր պատիւն, մարմնով նախատութիւն. չէ ինչ առաքինութեան, չէ ինչ Բեղմնաւորութեան։

խաւարութիւնն չէ ինչ Թլփատութիւն։ "Ի յանուանեալ Թլփատութենէն, ասէ, մարմնաւոր ձեռագործին. զի էիք 'ի ժամանակին յայնմիկ առանց Քրիստոսի, և օտարացեալք յաւաքինութենէն Իսրայէլի և օտարագիրք յուխտից աւետեացն, և յոյս ինչ ոչ ունէիք, և առանց Այ էիք յաշխարհի"։ Դուք' որ 'ի Հրէիցն այնպէս կոչէիք։ Ընդէր արդեօք զերախտիսն որ եղեն նոցա' կամէր յայտ առնել, որով հաղորդակից եղեն Իսրայէլի, դարձեալ զպատիւն իսրայէլական քակէ։ Այլ 'ի կարեւորսն յարգէ զնոյն, և որով չհաղորդեցանն քակէ։ Քանզի եւս յառաջագոյն մատուցեալ ասէ' եթէ "Քաղաքակիցք էք սրբոց և ընտանիք Այ"։ Տեսանես զիարդ չաղաղակէ զայն, և զայսոցիկ ասէ թէ առաւելութիւն են։ Ո՛չ, ասէ, զի Թլփատութեանն չեղաք հաղորդք և յանթլփատութեանն էիք' զայն առաւելութիւն ինչ համարիցիս Հրէիցն. այլ չար այն էր, զի առանց Քրիստոսին էիք և յաւաքինութենէն օտարացեալք և օտարագիրք յուխտից աւետեացն և յոյս ինչ ոչ ունէիք զհանդերձելոցն և առանց Քրիստոսի էիք յաշխարհի։ Նոցա յորում էինն և ձաւեաց զերկնաւորացըն. ասէ և զերկրաւորացս։ Քանզի մեծամեծ կարծիս զանձանց ունէին Հրեայքն, վասն այնորիկ վասն նոցա խաւսէ և զայն ընդ այս Պաւղոս։ Այնպէս և Քրիստոս մինչ մխիթարէր զաշակերտսն, յետ ասելոյն թէ "Ուրախ լերուք որ հալածեալ իցեն վասն արդարութեան զի նոցա է արքայութիւնն երկնից", զնուաղագոյնն եդ. "զի այդպէս հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզն էին"։ Եւ այն առ մեծութիւն նուաղագոյն է, բայց առ 'ի մտանել և հաւատալ' մեծ և բաւական և բազում զօրութիւն ունի. ապա այլ ուրեմն է առաքինանալն։ Չասաց եթէ մերկացեալք էիք, այլ թէ օտարացեալք յաւաքինութենէն։ Եւ չասաց թէ չանսայիք, այլ թէ ընաւ և հաղորդ իսկ չէիք, և օտարագիրք ասէ։ Բազում յայտնութիւն է բանիցս. յոյժ իմն հեռաւորութիւն յայտ առնէ։ Եւ և իսրայէլացիքն յոյժ հեռի էին յաւաքինութենէն ոչ իբրև զօտարս, այլ իբրև ըղծոյլս. և անկեալք յուխտիցն ոչ իբրև զօտարոտիս, այլ իբրև զանարժանս։ Զինչ իցեն դաշինք աւետեացն. "Քեզ և զաւակի քում տաց զերկիրս զայս", և զայլ-

ամենայն զոր խօսեցայ ։ "Դու յայս ինչ ոչ անկեալք, ա-
սէ, և տանց ոչ էիք,,։ Խոստացաւ և աստուածոց երկիր
պատգամէին, այլ չէին աստուածք, քանզի ոչ ինչ էին բնաւ
կուռքն ։

"Իսկ այժմ 'ի Քրիստոս Յիսուս դուք որ երբեմն
հեռաւորքն էիք, մերձաւորք եղերուք արեամբն Քրիս-
տոսի ։ քանզի նա է խաղաղութիւն մեր որ արար զեր-
կոսին մի, և զմիջնորմն ցանկոյն քակեաց՝ զԹշնամութիւն
'ի մարմնի իւրում,,։ Նա արդ այն է, ասէ, մեծ զի 'ի
Հրէից առաքինութիւնն եկաք ։ Զինչ խօսիք ։ բա-
վանդագնեաց զամենայն որ ինչ յերկինս և որ ինչ յերկ-
րի, և զիսրայէլացւոց առաքինութեանն Հնաց ։ Այո,
ասէ, զայն հաւատովք պարտ է ընդունել, և զայս զօր-
ծովք ։ "Իսկ այժմիկ, ասէ, 'ի Քրիստոս Յիսուս դուք
որ երբեմն հեռաւորք էիք՝ մերձաւորք եղերուք,,։ Յա-
ռաքինութեանն, ասէ, մերձաւորք եղերուք ։ զի հեռի
և մեզ՝ կամաց միայն է ։

"Զինա է, ասէ, խաղաղութիւն մեր որ արար զերկո-
սինն մի,,։ Զոր զերկոսեան արար մի ։ Ոչ զայն ինչ ասէ
թէ յայն ազնուականութիւն եհան զմեզ, այլ եթէ զմեզ
և զնոսա 'ի մեծն եհան, բայց մեզ առաւել երախտա-
ւորութիւն եղև ։ Զի նոցա խոստացեալ էր և մերձա-
ւորք էին, բայց մեզ չէր խոստացեալ և հեռաւորք եա
էաք ։ վասն որոյ և ասէ բնկ՝ եթէ "Հեթանոսք վասն
ողորմութեան փառաւոր առնեն զԱծ,,։ Իսրայէլացւոցն
խոստացաւ, այլ չէին արժանի ։ բայց մեզ չէր խոստա-
ցեալ, այլ օտարք էաք և չուներաք ընդ նոսա հաղոր-
դութիւն ։ "Նա արար զերկոսին մի,,։ Ոչ զմեզ ընդ
նոսա կցեաց, այլ զմեզ և զնոսա 'ի մի ինչ յօդեաց ։
Որպէս զի և ոսկեայ ևս 'ի մէջ քերից, դրեսցուք եթէ
երկու պատկերք իցեն, մինն ոսկեղէն և միւսն կապա-
րեայ, և երկաթեան ձուլիցին և մի պատկեր ոսկեղէն լի-
նիցին ։ Ահաւասիկ երկուսն մի եղեն ։ Որպէս և այլ ազգ
ևս ։ դրեսցուք թէ իցէ ոմն ծառայ և ոմն որդեգիր, և եր-
կոքեան հօրն երկիր պագանիցեն ։ մինն թէպէտ և որդի
է՝ տարագիր իցէ, և միւսն փախստական որ և կամ
չնաշխարհիկ որ բնաւ ոչ ժառանգիցէ զհայրն, և ապա եր-
կոքեան լինիցին ժառանգաւորք ։ Ահաւասիկ 'ի մի պա-
տիւ եկին հասին երկոքեան և եղեն երկոքեան մի, մինն

'ի բացուստ եկեալ և միւսն անդէն 'ի մօտոյ, և եւս քաղ-քան զայն մինչև յանցուցեալ էին՝ մանրամագցունք լի-նելցին ։

«Զմիջնորմն ցանկոյն, ասէ, քակեաց»։ Այս որ էր միջնորմն։ «Զթշնամութիւնն, ասէ, 'ի մարմնի իւրում, և զօրէնս պատուիրանացն հրամանօքն խափանեաց»։ Ո-մանք ասեն թէ զմիջնորմ զարգելուն առ հեթանոսս ա-սէ, զի չտայր խառնել նոցա ընդ նոսա։ Բայց ինձ ոչ այսպէս թուի. այլ միջնորմ զհասարակաց թշնամու-թիւնն ասէ, զոր մարմնովն քակեաց. այն էր միջնորմ որ կայր կրծիւն 'ի միջի, որպէս և մարգարէն ասէ. «Մեղք ձեր որոշեն ընդ իս և ընդ ձեզ»։ Միջնորմ թշնամութիւնն է զոր ընդ Աստուծոյ և ընդ հեթանոսս ունէր. և մինչ օրէնքն էին, ոչ միայն չքա-կեր, այլ և աճէր։ «Զի օրէնքն, ասէ, զբարկութիւն գործեն»։ Զոր օրինակ առնդ ասէ թէ օրէնքն զբար-կութիւն գործեն, և ոչ զամենայն ինչ յօրէնսն ասպա-տան առնէ, այլ քանզի յանցեաք՝ հնազանդ լինի, նոյնպէս և աստ միջնորմ կոչէ զթշնամութիւնն. քան-զի յորժամ անուանգանէին օրինացն՝ թշնամութիւն գոր-ծէր։ Այլ ցանկ օրէնքն իսկ էին որ տուան 'ի զգուշու-թիւն. վասն որոյ և ցանկ անուանեցան զի շուրջ փակի-ցէ։ Լսեր զդարձեալ մարգարէին. «Այլ ցանկով, ասէ, փակեաց». և դարձեալ՝ թէ «Ընդէր քակեցեր զցանկ նորա, և կթեն զնա ամենայն անցաւորք ճանապարհի»։ Ընդ զամբոսութեանն ասէ. և դարձեալ ասէ. «Պատե-ցից զցանկ նորա, և եղիցի 'ի կոխումն»։ և դարձեալ թէ «Զօրէնսն յօգնականութիւն ետ»։ և դարձեալ թէ «Ցանէ ողորմութիւն և դատաստանս տէր»։ և «Այ-ցոյց զիմաստութիւն իւր Իսրայէլի»։ Այլև միջնորմ, ոչ զի զնոսա 'ի զգուշութեան պահիցէ[1], այլ յոյն որոշիցէ ըզ-նոսա. քանզի այնպիսի է միջնորմ, որ ցանկոյն իցէ։ Ո՞ր իցէ այն. թշնամութիւնն՝ զոր մարմնովն քակեաց. քան-զի ապանէ և քակեաց զթշնամութիւնն։ Այլ ոչ ապա-ջաւ միայն, այլ զի և ինքն իսկ պահեաց զօրէնսն։ Այլ որպ զիարդ՝ թէ յառաջին յանցանացն զերծաք, և դար-ձեալ միամտական բանադատեցինք զօրէնսն պահել,

1 Ցարմօսական պակասէր այլ յոյն որոշիցէ զնոսա. յաւելաք 'ի յաւելեն։

դարձեալ 'ի նոյն չափ հաստանիցեմք։ Այլ և զօրէնսն ես ելոյծ. "Զօրէնս պատուիրանաց, ասէ, հրամանօք խափանեաց"։ Բաբէ քանի ինչ է մարդասիրութիւն. եւտ մեզ զօրէնս զի պահեսցուք. և քանզի չպահեցաք՝ պարտ էր և պատիժս կրել, զօրէնսն ելոյծ։ Որպէս որ տայց զմանուկ իւր ցդաստիարակ, և եթէ չանսայցէ կ 'ի դաստիարակէն եւ ազատ առնիցէ՝ որչափ մարդասիրութեան նշանակ է։

Զինչ իցէ՝ հրամանօքն խափանեաց։ Բազում իմն այլազգունակ կերպարանս զառաջին պատուիրանացն և զնորա հրամանացն ցուցանէ։ Զհաւատոյն կոչէ հրամանս, քանզի հաւատովք կեցոյց, և կամ զպատուիրանան զոր ետ։ Որպէս յորժամ ասիցէ Քրիստոս, "Բայց ես ասեմ ձեզ՝ ամենևին չարկանալ". այսինքն է, թէ հաւատասցես թէ ած յարոյց զնա 'ի մեռելոց՝ կեցցես". և դարձեալ թէ "Մերձ է բան 'ի բերան քո և 'ի սրտի քում"։ Մի ասիցես թէ ով ելանիցէ յերկինս կամ ով իջանիցէ յանդունդս կամ ով հանիցէ զնա 'ի մեռելոց. ընդ վերուց զհաւատոյն եմոյծ։ Զի մի ձրի կեցուցանիցէ, և ինքն եւ չարչարեցաւ և պահանջէ 'ի նոցանէ զհաւատոյն հրամանօքն։

Եւ "զի զերկոսեան հաստատեսցէ յինքեան 'ի մի նոր մարդ"։ Տեսանե՞ս, ոչ զհեթանոսս լեալ հրեայ ցուցանէ, այլ զսա և զնա 'ի մի հաստատութիւն եկեալ. ոչ զի սա այլ ինչ գործիցէ, այլ զի զերկոսեան հաստատեսցէ։ Եւ բարւոք անմնայն ուրեք 'ի կիր արկանէ զանուն հաստատելոյն։ Եւ չասաց թէ փոխեսցէ, զի ցուցցէ ըզհաստատութիւն գործոյն. զի թէպէտ և աներևոյթ արարած իցես, այլ քան զառաջինն չես ինչ ընդհատ, և այսուհետև իբրև 'ի բնակութիւն ինչ իւրաց չէ ուրեք մեզ պարտ շուշել։ "Զի զերկոսեանն հաստատեսցէ յինքեան". այսինքն ինքեամբ։ Եւ ոչ ումեք հրամայեաց զայն; այլ ինքն անձամբ և զսա և զնա ձուլեաց և 'ի մի ինչ զարմանալի ած եհան. ինքն նախ եղև այնպէս, և քան զառաջինն արարածն առաւել մեծ է։ Այն իսկ է զի ինքեամբն, քանզի ինքն իսկ եւ նախ օրինակ և տիպս։ Զի 'ի միջէ կուտէ զհրեայն կալաւ և 'ի միասնէն ըղհեթանոսս, և ինքն 'ի միջի եղև և խառնեաց զնոսա ընդ միմեանս և զամենայն զօրութիւն նոցա եղծեալ

տարածկանեաց. վերստին առեղծ հրով և ջրով։ Ոչ ևս այսուհետև ջրով և հրով, այլ ջրով և հոգւով։ Հրեայն թէպէտ և թլփատէր՝ ընդ անիծիւք էր, քանզի ոչ կարէր բովանդակել զօրինացն պահպանութիւնս. և հեթանոսք արտաքոյ օրինացն, և արդ զՀրեայս և զհեթանոսս արար մի մարդ նոր։

“Որպէս, ասէ, խաղաղութիւն,, կամ ընդ այ և ընդ նմա և կամ ընդ միմեանս։ Այլ ոչ են այսուհետև թշնամութեանք ընդ միմեանս Հրեայք և հեթանոսք, քանզի հաշտեցան ընդ իրեարս։ Այլ թէ զերծանիցեն յիւրաքանչիւր 'ի կրօնից, յայլ 'ի մեծ հաստատութիւն գան երկոքեան կողմանքն. քանզի հրեայն ընդ հեթանոսին յայնժամ խառնի, յորժամ հաւատացեալ լինիցի. Որ օրինակ երկու տունք որ մին 'ի վերոյ իցէ և միւսն 'ի ներքոյ, չկարեն միմեանց հանդիպել՝ եթէ ոչ միջնաձեղունն 'ի միջոյ բառնայցէ։ “Որպէս, ասէ, խաղաղութիւն,, ընդ ած և ընդ նոսա. քանզի և յաջորդն զայն յայտ առնէ։ Որինչ ասէ. “Այլ հաշտեցուսցէ, ասէ, սերտիւ զերկոսին 'ի միում մարմնի ընդ այ խաչիւն,,։ Այլ չասաց թէ հաշտեցուսցէ, այլ թէ սերտիւ հաշտեցուսցէ. զի յայտ արասցէ թէ յառաջ քան զայս մարդկեղէն բնութիւն առանց հաշտութեան էր, զի յառաջին հաշտութենէն 'ի կազ դարձեալ էր որպէս առ անոսր որբովք և առ օրինօքն։ “Ի միում մարմնին,, ասէ. յիւրում ընդ այ։ Այլ այն զիարդ լինիցի. զի զվրէժսն զոր պարտէին, ինքն յանձին կալաւ խաչիւն։

“Այլ սպան, ասէ, զթշնամութիւն յանձին իւր,,։ Չիք ինչ հաստատուն քան զայս բանս և ոչ յայտնագոյն։ Մահն նորա, ասէ, զթշնամութիւն եսպան, խոցոտեաց և սատակեաց. ոչ այլ ումեք հրամայեաց և ոչ ազդեաց միայն, այլ և չարչարանս իսկ կրեաց։ Չասաց թէ ելոյծ, չասաց թէ եբարձ. այլ որ քան զամենայն սաստկագոյն էր՝ եսպան ասէ, զի մի ևս այնուհետև լինիցի նմա յառնել։ Որհարդ յառնիցէ։ Ի մերոց բազում չարեացն յառնէ։ Մինչև հաստատեալ կայցեմք 'ի մարմնին Քրիստոսի, մինչ ընդ նմա իցեմք միացեալք՝ չյառնէ չկանգնի, այլ անկեալ դնի մեռեալ. մանաւանդ թէ առաջինն իսկ չյառնէ։ Ապա թէ այլ ծնանիցիմք, ոչ ևս այնուհետև 'ի նմանէ ինչ է որ զառաջինն եսպան և

սատակեաց, այլ զու երկնեւս և ծնանիս այլ. "Խորհուրդք, ասէ, մարմնոյ թշնամութիւն են յԱծ"։ Եթէ չխորհիցիմք ինչ մարմնաւոր, չծնանիցի այլ, այլ կայ հաստատուն խաղաղութիւնն։

## ՑՈՐԴՈՐԱԿԱՆ

Ի միտ առ որչափ ինչ չարիք են, որ այնպիսի հնարս հնարեցաւ նա և վճարեաց զի մեք հաշտեսցուք, և մեք 'ի թշնամութի գայցեմք։ Նայնժամ ոչ եւս այսու հետև առաքանն, այլ զեհեանն կայցէ մնայցէ. ոչ եւս այսուհետև թողութիւն, այլ վրէժուց պահանջումն։ Խորհուրդք մարմնոյ փափկութիւն է, զրգանք. խորհուրդք մարմնոյ ագահութիւն է և ամենայն մեղք։ Նոգէր առաջին խորհուրդք մարմնոյ, թէպէտ և առանց ոգւոյն ոչ ինչ գործիցէ։ Եւ չար ինչ կոչելով զմարմինն՝ զայն ասէ. նա և յարժամ ասիցէ թէ շնչաւոր մարդ, ոչ զի չար ինչ կոչիցէ զհոգին՝ զայն ասէ. նա և չէն իսկ բաւական ոչ մարմինն և ոչ ոգին առանձինն առաքինութիւն ինչ գործել, եթէ ոչ 'ի վերին օգնականութենէն վայելեսցեն։ Այս վասն այնորիկ շնչաւորս զայն գործս կոչէ զոր շունչ առանձինն գործիցէ, և մարմնաւորս զայնս զոր մարմինն ոշոգիս առնիցէ։ Այլ այն ոչ եթէ բնականք ինչ են, այլ զի ոչ վայելեցին վերին վերակացութեանն. վասն այնորիկ զայլայլս գործեն։ Նա և աչք գեղեցիկ են և առանց լուսոյ բիւր չարիս գործեն, և այն 'նոցա տկարութեանն ժամանակ է. ապա թէ բնականաւ ինչ էին չարիքն որով 'ի չարն վարէաք, չկարէաք երբէք զնասին 'ի կիր արկանել 'ի լաւութիւնս. չիք ինչ բնականաւոր չար։ Ուր ինչ ինչ ասիցէ զմարմնաւոր խորհուրդսն. զմեղսն և զչարիս. քանզի յարժամ մարմինն յաղթիցէ կառավարին, արձակեալ համարձակեալ անսաստեալ՝ ազգի ազգի չարիս ծնանի։ Առաքինութիւն մարմնոյ այն է յարժամ ոգւոյն անսայցէ, և չարութիւն նորին՝ զեր 'ի վերայ լինել ոգւոյն։ Որ օրինակ եթէ իցէ ձի ինչ գեղեցիկ ձևով, այլ ոչ եթէ առանց վարժելոյն յարդարիցի. նոյնպէս և յարժամ զմարմինսն զխայտանս 'ի բաց պարուրիցեմք, յայնժամ կարեմք յօրինել և յառաջն կայացուցանել։ Նա և ձիավարժն թէ չիցէ հմուտ և ու-

ղեակ, չկարէ զմին յառին կացուցանել։ Այլ այսպէս պարտ է վարժելոյն յամենայն ժամ պատրաստ կալ։ Այլ հոգին յորժամ 'ի վերայ հասանիցէ, և զկատարեալսն զօրագոյն գործէ, նոյն և զշունչն և զմարմինն զարդարէ։ Ո՛վ որ օրինակ շունչն մինչ միացեալ ընդ մարմնոյն իցէ, գեղեցիկ ցուցանէ զնա. և յորժամ թափուր առնիցէ յիւրմէ ազդմանէ և 'ի բաց մերժիցի, զոր օրինակ նկարիչ ոք որ զգեղոն ընդ մեկենանս խառնիցէ՝ 'ի գեղեցկութիւն ածէ զնկար պատկերին, և այլայլին խանգարին իւրաքանչիւր անգամանցն պայմանք, նոյնպէս և Հոգին յորժամ զշունչն և զմարմինն թողուցու, եւս չար քան զայն այլայլին և յանհնարին տգեղութիւնն դառնայցեն։ Այլ արդ զի մինուաղագոյն քան զշունչն է մարմինն՝ չար ինչ համարեսցիս. նա և ոչ ես զշունչն չար ինչ համարիմ վասն այնր զի առանց հոգւոյն չկարէ ինչ վճարել։ Այլ եթէ 'ի դէպ ինչ է ասել, մեծ ամբաստանութիւն շնչոյն է քան զմարմնոյն. զի մարմինն և առանց շնչոյ և ոչ ինչ չկարէ գործել ոչ չար և ոչ բարի, և ոգին առանց մարմնոյ բազում ինչ։ Իսկ և յորժամ մաշիցի մարմինն և դադարէ 'ի խայտալոյ, բազում ինչ չարիս գործէ հոգին. որպէս կախարդք և մոգք և դիւթք և նախանձաւորք իսկ կարի մաշեն զնա։ Այլ այլ ազդ ևս. նա և փափկութիւնն ոչ 'ի մարմնոյն ինչ հարկէ է, այլ յոգւոյն անառակութենէ. կերակուր՝ և ոչ փափկութիւն է 'ի մարմնոյն հարկէ։ Այլ եթէ կամիցիմ քաջ պնդել զեբաստանականն, նահանջեմ զերիվարն։ Իսկ մարմինն զհոգին չկարէ ցածուցանել 'ի նորա ինչ չարեացն։ Այլ արդ էր վասն խորհուրդս մարմնոյն կոչիցէ։ Ո՛վ ի ամենեւին մարմնոյն լինի. յորժամ տիրեսցէ ոգւոյն մարմինն, յայնժամ մեղանչէ, յորժամ զմիտսն քայքայիցէ և զիշխանութիւն ոգւոյն։ Այլ եթէ այս այսպէս է, 'ի հնազանդել մարմնոյն՝ ոգւոյն է առաքինութիւն, և մարմնոյն միայն առանձինն ոչ չար է և ոչ բարի. քանզի զինչ կարիցէ գործել մարմինն առանձինն։ Բայց ուրեմն հաղորդակից լինելով է բարի մարմինն վասն հնազանդութեանն, և առանց այնր ոչ բարի է և ոչ չար, այլ յայս և յայն պատրաստագոյն, քանզի յերկոսին կողմանսն ունի զմտութիւն. Ցանկանայ և մարմինն ոչ պոռնկութեան և շնութեան, այլ խառնութեան. ցան-

կանոնայ ոչ փափկութեան, այլ կերակրոյ. ոչ արբեցութեան, այլ ըմպելոյ։ Նա զի արբեցութիւնն ոչ եթէ մարմնոյ ցանկութիւն է, մեռ դիր զմարդ. չկարէ համզարտել յորժամ ըստ չափն անցանիցէ, յորժամ առհմանաց մարմնոյն յաղթիցէ. ապա եթէ ոչ՝ այն ամենայն օգուտն է, յորժամ 'ի մարմնաւոր խորհրդոց խորհիցի, յորժամ թմբրանայցէ։ Ոչ թէ և բարի եւս է մարմինն, այլ յոյժ նուաստագոյն է քան զհոգին. որպէս անտառ առ ոսկւոյ՝ իբրև զմնացուկ մի ազնուական կարօտ զաստուածական։ Յորժամ զմանկաւոյ ինչ իրաձառիցեմք, ոչ եթէ զերս ինչ հաստատեն առհասարակցեմք, այլ զհաստատուն զաստուածային միտս։ Նոյնպէս յորժամ զմարմնոյն խօսիցիմք, ոչ եթէ զմարմինն իբրև զչար ինչ բամբասիցեմք, այլ զգործսն որ ըստ մարմնոյն եւեթ գործիցեն։ Այլ մարթի լինել 'ի մարմնի և չլինել, որպէս յերկինս և յերկրի և 'ի հոգին. Ոչ է լինելն ուրեք ոչ ըստ տեղաց ինչ կայենից է, այլ ըստ միտացն յոր կացեալ զիմիցեն։ Ոչ բազումն յորժամ ուրեք իցեն, ասեմք թէ չեն անդ. և թերևս խօսիցի ընդ մեզ, և ասիցեմք թէ չես աստ, քանզի չեն միտքդ աստ։ Նա բազում անգամ ասեմք զոք՝ թէ չես առ քեզ և կամ թէ չեմ առ իս, թէպէտ և չկայցէ քան զայն ինչ մարմնաւորն յորժամ միտ առ ինքեան[1] իցէ. բայց սակայն ասեմք թէ չես առ քեզ։

Նիցուք այսուհետև առ անձինս, յերկինս և 'ի հոգին. հաստատեսցուք 'ի խաղաղութիւն և 'ի շնորհսոյ. զի յամենայն մարմնաւորացս ազատեալք կարասցուք հասանել խոստացելոց բարութեանցն 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր. ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Միւսն առ ինք ելանիցէ։

# ՃԱՌ ՎԵՑԵՐՈՐԴ

“Եւ եկն աւետարանեաց զխաղաղութիւն ձեզ հեռաւորացդ և մերձաւորացն. զի նովաւ ընկալաք զնուաճութիւն երկոքին 'ի մի Հոգի առ Հայր։ Ապա այսուհետև չէք օտարք և պանդուխտք, այլ քաղաքակիցք սրբոց և ընտանիք Այ, շինեալք 'ի վերայ հիման առաքելոց և մարգարէից, որ է գլուխ անկեան Քրիստոս Յիսուս. որով ամենայն շինուածն յօդեալ և պատշաճեալ աճէ 'ի սուրբ տաճարին տերունի, յորում դուք շինեցարուք 'ի բնակութիւն Հոգւոյն”։

Ոչ այլով առաքեաց, ասէ, և ոչ յուրուք ձեռն զաւշակեաց զայս մեզ, այլ ինքնին անձամբ։ Ոչ հրեշտակ առաքեաց և ոչ հրեշտակապետ, քանզի յարդարել զայնպիսի չարիս չէր հնար այլ ումեք, բայց միայն նորա գալստեան և պատմել զամենայն որ ինչ եղև վասն այլոցն։ Կրկնէ թէ զարբանեկի և սպասաւորի կարգ էառ յանձն անձին։ “Եւ եկն, ասէ, աւետարանեաց զխաղաղութիւն ձեզ հեռաւորացդ և մերձաւորացն”։ Զհրէից ասէ մերձաւորս։ “Զի նովաւ, ասէ, ընկալաք զնուաճութիւն երկոքեան 'ի մի Հոգի առ Հայր”։ Զխաղաղութենէ ասէ որ եղև ընդ Այ. քանզի հաշտեցոյց զմեզ ընդ Հօր և ընդ իւր, որպէս և ինքն իսկ ասէ՝ թէ “Խաղաղութիւն թողում ձեզ, զխաղաղութիւն զիմ տամ ձեզ”. և դարձեալ թէ “Քաջալերեցարուք, ես յաղթեցի աշխարհի”. և “Զոր ինչ խնդրիցէք յանուն իմ, առնուցուք”. և դարձեալ թէ “Զի և Հայր իսկ սիրէ զձեզ”։ Այս ամենայն խաղաղութեան նշանակ է, և նախ նոցա. զիարդ. “Քանզի նովաւ, ասէ, ընկալաք զնուաճութիւն երկոքեան 'ի մի Հոգի”։ Ոչ ձեզ նուաղագոյն և նոցա յոլովագոյն, այլ միով շնորհօք. զպարկութիւնն ցածոյց մահուն և ցանկալիս արար զմեզ Հօր Հոգւով։ Ահաւասիկ և աստ ևս[1], ՈՐՈՎ, է. անձամբ և Հոգւով մերձեցոյց առ նա։

1 Այսինքն 'ի նախդիրն։

«Արդ այսուհետեւ ոչ էք օտարք եւ պանդուխտք, այլ քաղաքակիցք սրբոց»: Տեսանե՞ս զի ոչ զդգին հրէից ասէ, այլ զսրբոց եւ զաւագաց արանց՝ զաբրահամեանց զմովսիսեանց եւ զեղիայեանց. 'ի նոյն քաղաք գրեցաք, զայն նշանակեմք՝ զի որք զայս ասեն, ասէ, յայտ առնեն թէ զգաւառն խնդրեն: Արդ ոչ այսուհետեւ մեք օտարք եւ պանդուխտք եմք, այլ որք չլինիցին արժանի հասանել երկնաւորացն՝ օտարք եւ պանդուխտք են. զի որդին, ասէ, մնայ 'ի տան յաւիտեան: «Այլ ընտանիք, ասէ, այ»: Ո՛չ ընդ նոքա, ասէ, 'ի սկզբանէ բազում վաստակովք ունէին. նոյն մեզ այ շնորհօքն պարգեւեցաւ:

Յաւելու յոյս կոչմանն. «Շինեալք, ասէ, 'ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից»: Յայտ առնէ թէ պայծառութեան մարգարէիցն պարգեւաց արժանի եղեաք: Տես զկարգ զամենեսին ընդ միմեանս խառնէ զհեթանոսս եւ զհրեայս, զառաքեալս եւ զմարգարէս, զՔրիստոս. եւ երբեմն 'ի մարմնոյն, բայց այժմ 'ի շինուածոյն զմիաւորութիւն յայտ առնէ: «Շինեալք, ասէ, 'ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից»: Հիմն զառաքեալս եւ զմարգարէս կոչէ. եւ նախ զառաքեալսն դնէ, որք ժամանակօք յետոյ եղեն եւ նախագիտութեամբն առաջինք: Այլ արդարեւ բուն հիմունք եկեղեցւոյ առաքեալք են եւ մարգարէքն, քարոզք եւ կարապետք: Այլ կամ զայնց մարգարէից ասիցէ որ առ առաքելովք էին, որպէս Ագաբոս եւ դստերքն Փիլիպպոսի. եւ կամ զայն իսկ ասիցէ եթէ նոքա եւ սոքա միոյ շինուածի հիմն են, քանզի մի շինուած է ամենայն եւ մի արմատ: Տես զհեթանոսս յորպիսի իմն հիմանց 'ի վերայ շինեցան՝ 'ի նահապետացն եւ 'ի մարգարէիցն: Առաւել իմն հաստատագոյն ասէ քան զի յորժամ զառաքելեանն ասիցէ, զի այնու կարի կանխեցուցանէ: Նոյն սակայն ասէ թէ որ զամենայն միաւորեաց ունի՝ Քրիստոս է. քանզի վէմն գլուխ անկեան՝ եւ զորմն զերկոսեան պնդեալ ունի եւ զհիմունսն յորոց վերայ ամենայն շինուածն շինիցի: Տես զկարգ ընդ միմեանս խառնեալ. մերթ ասէ՝ թէ 'ի վերայ ունի զամենայն մարմինն առմով միաւորեալ, եւ մերթ՝ թէ 'ի ներքոյ բարձեալ ունի զշինուածն, եւ արմատ է զի հաստատեսցէ միաբանեալս 'ի մի մարդ նոր: Այսու յայտ առնէ թէ իւրով ան-

ձայնին խրատանաց զերկրաւոր զորմն ընդ միմեանս և 'ի նմին հաստատեցաւ ։ Այլ անդրանիկ, ասէ, ամենայն արարածոց ․ այսինքն թէ զամենայն ինքն բարձեալ ունի ։

“Յոր ամենայն շինուածն յօդեալ և պատշաճեալ„ ։ Եթէ զձեղուածսն ասիցէ և եթէ զորմոյն և եթէ զիմէ և իցէ, զամենայն և զհիմն ինքն բարձեալ ունի ։ Այլուր և հիմն իսկ կոչէ զնա ․ “Հիմն, ասէ, այլ ոք ոչ կարէ դնել քան զայն որ եդեալն է, որ է Քրիստոս Յիսուս„ ։ “Յոր ամենայն շինուածն յօդեալ և պատշաճեալ„ ։ Յուցանէ և զհաստատութիւնն՝ եթէ այլ ազգ ինչ չմարթի դնել ումեք 'ի շինուածին, եթէ ոչ հաւաստեաւ վարս յանձին ցուցանիցէ ։ “Աճէ 'ի սուրբ տաճարի տերամբ, յոր և դուք շինեցարուք„ ։ Ստէպ զնոյն ասէ՝ թէ 'ի տաճար և 'ի բնակութիւն այ սուրբ Հոգւոյն ։ Ոինչ յայտ առնիցէ զշինուածն, եթէ ոչ զի ած բնակիցէ 'ի տաճարին ․ և այնպէս ուրաքանչիւր ոք 'ի մէնջ տաճար է և առ հասարակ ամենեքեան, և իբրև 'ի մարմնի Քրիստոսի և 'ի Հոգւոյ որ տաճարի բնակէ ։ Այլ չասաց մերձաւորութիւն, այլ նուաճութիւն ․ քանզի ոչ եթէ յանձանց ինչ մերձեցաք, այլ նա մերձեցոյց ․ “Ոչ ոք, ասէ, գայ առ Հայր եթէ ոչ ինև„ ․ և դարձեալ թէ “Ես եմ ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք„ ։ Այլ յարէ զնոսա 'ի սուրբսն, և դարձեալ յառաջին օրինակն վերանայ, և չառնէ յայտ եթէ կատարեալ է շինուածն, քանզի դեռ տակաւին շինի երթայ ։ Որպէս և Պաւղոս ասէ՝ եթէ “Ես իբրև իմաստուն ճարտարապետ հիմն եդի, բայց այլ է որ շինէ„, մանաւանդ թէ այլք բազումք ․ և դարձեալ թէ հիմն Քրիստոս է ։ Այլ ընդէ՞ր կոչիցէ զՔրիստոս հիմն ։ Տեսանես զի յիրացն որ առաջի կան՝ պարտ է հնազանդ լինել, և ոչ զօրինակսն իբրև հաստատուն ինչ իմանալ ․ ապա թէ ոչ՝ չեն օրինակք ։ Որպէս յորժամ զՀօրէ ասիցէ թէ մշակ է, և զիւրմէ թէ արմատ, միթէ Հայր մշա՞կ իցէ կամ ինքն արմա՞տ ․ այլ քանզի զմշակի գործ էառ յանձն՝ կոչի մշակ ․ և քանզի ինքն արկ հիմն շինուածոյն, կոչի հիմն և արմատ ։

“Վասն այսորիկ, ասէ, ես Պաւղոս կապեալ Յիսուսի Քրիստոսի վասն ձեր հեթանոսաց ․ Թերևս լըւեալ իցէ„ ։ Ասաց զՔրիստոսի զբազում խնամսն, և

արդ այսուհետև յիւրն երթայ. որ թէպէտ և փոքր ինչ է, այլ սակաւիկ. և թէպէտ և սակաւիկ, այլ չէ ինչ այնր համեմատ։ Բայց քանզի և այնու ևս բաւական էր զիւրեւ ածել զնոսա, վասն այնորիկ ասէ թէ և ես կապեալ եմ. զի թէ տէրն իմ խաչեցաւ վասն ձեր, որչափ ևս առաւել ինձ պարտ իցէ կապել. ոչ ինքն միայն կապեցաւ, այլ և իւրոց ծառայից թոյլ տայ 'ի կապանս մտանել։ "Վասն ձեր, ասէ, հեթանոսաց"։ Բազում պայծառութիւն. ոչ միայն, ասէ, այսուհետև չզարշիմք 'ի ձէնջ, այլ և 'ի կապանս ևս մտանեմք վասն ձեր, քանզի և այնչափ վայելեցի 'ի շնորհսն։

"Որպէս լուեալ իցէ ձեր, ասէ, զտնտեսութիւն շնորհացն այ որ տուան ինձ 'ի ձեզ"։ Զկանխասացութենէն ակնարկէ որ առ Անանիա ասացաւ վասն նորա 'ի Դամասկոս յորժամ ասէրն թէ "Երթ զի անօթ ընտրութեան է նա ինձ կրել զանուն իմ առաջի հեթանոսաց և թագաւորաց"։ Տնտեսութիւն շնորհաց զյայտնութիւնն ասէ, այսինքն թէ ոչ 'ի մարդոյ ուսայ. այլ թէպէտ և միայն՝ արժանի արար յայտնել ինձ վասն ձեր։ Ինքն իսկ, ասէ, ասաց ցիս՝ թէ "Երթ զի յազգս հեռաւորս առաքեցից զքեզ"։ "Որպէս լուեալ իցէ ձեր, ասէ, զտնտեսութիւնն"։ Եւ արդարեւ մեծ տնտեսութիւն էր, զնա որ ուստեք երբեք ոչ հաւանեցաւ՝ 'ի վերուստ կոչել և ասել "Սաւուղ Սաւուղ ընդէր հալածես զիս", և շլացուցանել զնա անձառ լուսովն։ "Որպէս լուեալ իցէ ձեր, ասէ, զտնտեսութիւն շնորհացն այ որ տուան ինձ 'ի ձեզ. զի ըստ յայտնութեանն ցուցաւ ինձ խորհուրդն, որպէս յառաջագոյն փոքր մի գրեցի"։ Որպէս յամանց ձեռն յառաջագոյն ինչ աղդ արար նոցա, և կամ զի վասն[1] յետ բազում ժամանակաց գրեաց։ Յայտ առնէ թէ ամենայն ինչ այ է, և մեք ինչ ոչ երբեք եղեաք նպաստ։ Արդ ազէ ասա, ո՞չ ապաքէն մեծն Պաւղոս և զարմանալին և օրէնսդիրն որ առ ոտս Գամաղիէլի ըստ հաւաստեաց օրինացն խրատեալ՝ շնորհօք ապրեցաւ։ Եւ արդարեւ խորհուրդ իսկ է հեթանոսացն յանկարծակի 'ի մեծ ազնուականութիւն հրէիցն ելանել։

"Որպէս յառաջագոյն, ասէ, գրեցի փոքր մի սակաւ

1 Ցոյնն ու։

ինչ բանիւք, զի կարող լինիցիք ընթեռնուլ և 'ի միտ առնուլ,,։ Դարձեալ, ասաց ոչ ուրեմն զամենայն գրեաց, և ոչ որչափ պարտ էր գրել։ Այլ սոսա իրքն այսպէս իմն պահանջէին. իսկ այլուր չարութիւնն եղև պատճառք, որպէս եբրայեցւոցն, որպէս առ 'ի կորնթացւոցն։ "Որ 'ի կարող լինել, ասէ, ընթեռնուլ և 'ի միտ առնուլ զիմաստութիւն զիմ 'ի խորհրդեանն Քրիստոսի,,։ Այսինքն է եթէ որպէս իմացայ, զիարդ ասի 'ի միտ թէ որպէս խօսեցայ ես, կամ թէ զի ընդ ամէն հասցի։ Եւ ապա զպատճառն յայտ առնէ. "Ոչ արար այսպէս ամենայն ազգաց,,։ Որ ազգ իցէ որում այնպիսի ինչ արար ես։ "Որ այլոց ազգաց ոչ ցուցաւ որդւոց մարդկան, որպէս այժմ յայտնեցաւ սրբոց առաքելոց և մարգարէից Հոգւովն,,։ Զոր ասէ սոսա միթէ չգիտէին մարգարէքն. և զիարդ ասիցէ Քրիստոս՝ եթէ "Մովսէս և մարգարէքն վասն իմ գրեցին,,. և դարձեալ. "Եթէ հաւատացեալ էր Մովսէսի, ապա և ինձ հաւատայիք,,. և դարձեալ եթէ "Քննեցէք զգիրս, զի դուք համարիք եթէ նոքօք ունիցիք զկեանս յաւիտենից, և նոքա են որ վկայեն վասն իմ,,։ Ուրեմն զայն ասիցէ եթէ ամենայն մարդկան առ հասարակ չյայտնեցաւ. քանզի յաւել 'ի նոյն. "Որ այլոց ազգաց ոչ յայտնեցաւ որդւոց մարդկան որպէս այժմ յայտնեցաւ,,։ Եւ կամ թէ այսպէս. ոչ յայտնեցաւ, որպէս այժմ արդեամբք իսկ և գործովք. քանզի և ասէ իսկ թէ "Որպէս այժմ յայտնեցաւ սրբոց առաքելոց իւրոց և մարգարէից Հոգւովն,,։ Զմտաւ ած զՊետրոս. եթէ չէր լուսեալ 'ի Հոգւոյն սրբոյ, չերթայր 'ի Հեթանոսս. և լուր զինչ ասէր. "Ապա ուրեմն ետ նոցա ած Հոգի սուրբ որպէս և մեզ,,. այսինքն է թէ Հոգւովն ընտրեաց ած առնուլ նոցա զշնորհսն,,։ Գրել ասէին մարգարէքն, բայց հաւատացեալ ինչ այնպէս ոչ գիտէին, ուր և առաքեալքն իսկ յետ լսելոյն. քանզի կարի անցանէ բան մարդկեղէն միտս և բան յոյս հասարակաց։

"Լինել, ասէ, հեթանոսաց ժառանգակիցս և մարմնակիցս և հաղորդս,,։ Զինչ իցէ ժառանգակիցսն, աւետեացն հաղորդս[1] և մարմնակիցս։ Այն իսկ է մեծ

1 Այսպէս յայսն. իսկ մերքն ժառանգակիցս։

ձեռաց ասէ. “Յառաջագոյն խորհիմք զբարիս ոչ միայն առաջի տեառն, այլ և առաջի մարդկան„. և յետ այնր ամենայնի թէ “Հանապազ մեռանիմ. 'ի պարծանս ձեր, ասէ, երդնում 'ի Քրիստոս Յիսուս„. և դարձեալ թէ “Ո՞վ մեկնեսցէ զմեզ 'ի սիրոյն Քրիստոսի, նեղութի՞ւնք թէ անձկութիւնք թէ հալածանք„. և դարձեալ թէ “Համբերութեամբ բազմաւ 'ի նեղութիւնս 'ի վշտս 'ի հալածանս 'ի յանձկութիւնս 'ի գանս 'ի բանտս„. դարձեալ և սպասաւորութիւնն իւր ասէ՝ թէ “Եղէ ընդ Հրեայս իբրև զՀրեայ և ընդ անօրէնս իբրև զանօրէն և առ նոսա որ ընդ օրինօքն էին որպէս թէ ընդ օրինօք„. քանզի և զգլուխ ևս փոքրեաց և այլ ևս ազգի ազգի հնարս հնարեցաւ. Որ ամենայնին իսկ գլուխ է, “Ի զօրութիւն հոգւոյն„, ասէ. “Քանզի ոչ իշխեմ խօսել ուրեք ինչ քան զայն զոր գործեաց Քրիստոս ինև„. և դարձեալ թէ “Ոչ ինչ իցէ որում 'ի վայր գտայց քան զայլ եկեղեցիս„. և դարձեալ թէ “Ոչ ինչ պակաս գտայ քան զգլուխ առաքեալսն, թէպէտ և չիցեմ ինչ„. և առաւելագոյն ամենայնի չկամէր ինչ. Քանզի ոչ եթէ նշանօք ինչ նորա եղեն հաւատացեալքն, և ոչ եթէ նշանքն զայն գործեցին, և ոչ անուն ինչ կամէր զանձն յորջել, այլ ճգամբք ջանայր զանձն օրինակ կացուցանել. քանզի պարտ էր անարատ լինել և խոնարհել և յանխնայ տալ զանձն 'ի վիշտս և ուսուցիչ լինել, զի այնու առաւել ածիցէ յուղղութիւն. Այսուր այն էր, առանց նշանաց ինչ պէտք չլինէին. քանզի տեսանէաք և յառաջ քան զնշանսն այնպիսի ինչ ուղղութիւնս առաքեալ նորա.

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Իսկ այժմ չունիմք ինչ այնպիսի, և կամիմք ամենեցուն տիրել. զի եթէ մին 'ի միւսոյն քակիցի, երկոքեանքն իսկ անօգուտք գտանին. զի՞նչ օգուտ իցէ եթէ 'ի վիշտս յանխնայ ոք տացէ զանձն, և վարս անարատս չունիցի. “Եթէ լոյսդ որ 'ի քեզ է՝ խաւար է, խաւարն քանի՜ ևս իցէ„. զի՞նչ օգուտ իցէ եթէ վարք անարատք իցեն, և ծոյլ և քնած իցէ. “Եթէ ոչ առնուցու, ասէ, զխաչ իւր և գայցէ զկնի իմ, չէ ինձ արժանի„. և եթէ չգիտէ-

՝Նոքա ետուն վրէժս, և մեք ևս մեծամեծս տացուք, որ և ոչ նոցա աղետիւքն խրատեցաք։ Ծանր ինչ իցէ բանս, և ես գիտեմ զի ծանր իսկ է. բայց թէ միտ դնիցեք, մեծամեծ շահք ծնանին աստի. քանզի ոչ միշտ պարտ իցէ պաշտօն ինչ առնելոյ վասն խօսել, մանաւանդ թէ և ոչ երբէք. այլ որ զոգիսն ցածուցանիցէ և զմիտսն զգաստացուցանիցէ, և այն լինի մեզ պատճառք հանդերձելոց բարութեանցն. որոց լիցի ամենեցուն մեզ հասանել ՚ի Քրիստոս Յիսուս ՚ի տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն։

# ՃԱՌ ԵՕԹՆԵՐՈՐԴ

«Ինձ որ կրսերս եմ ամենայն սրբոց, տուաւ շնորհքս այս ՚ի հեթանոսս աւետարանել զանքննին մեծութիւնն Քրիստոսի և լուսաւորել զամենեսեան եթէ զինչ է տնտեսութիւն խորհրդոյն որ ծածկեալն էր յաւիտենից յԱծ որ զամենայն ինչ արար ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի։ Զի յայտնեսցի այժմ իշխանութեանց և պետութեանց որ յերկինս են եկեղեցեաւ բազմապատիկ իմաստութիւնն Այ ըստ յառաջադրութեն յաւիտենից զոր արար ՚ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»։

Որք ՚ի բժշկանոցսն երթիցեն, չէ պարտ վայրապար անդր երթալ, այլ ուսանել թէ զիարդ մարթասցեն բժշկել և դնել զդեղն ըստ ցաւոյն։ Եւ մեզ որ այժմ աստ ժողովեալ եմք, ոչ վայրապար պարտ է գալ, այլ ուսանել զխոնարհութիւնն Պաւղոսի և զառաքելութիւնն։ Զի լուր. քանզի ասելոց էր զմեծութիւնն Այ շնորհացն, լուր զինչ ասէ. «Ինձ, ասէ, որ կրսերս եմ ամենայն սրբոց, տուաւ շնորհքս այս»։ Եւ այն իսկ խոնարհութեան, զառաքինսն ջնջել զմեղսն, ապաշաւել և յիշել զյանցանսն և խոնարհել. որպէս յորժամ հայհոյիչ կոչիցէ զանձն և հալածիչ և թշնամանիչ։ Այլ չէ ինչ այն այսմ հանգոյն։ Զառաքինսն, ասէ, այսպէս էի, և արդ որում առաւելոց զանձն կոչէ։ Եւ յետ այնչափ ուղղութեանց, և աստէն յաշխարհէս զանձն զձու

համարի և քան զամենայն սուրբս կրսերագոյն. բազում և առաւել խոնարհութեան օրինակ է։ «Ինձ, ասէ, որ կրսերս եմ ամենայն սրբոց»։ Եւ չասաց թէ առաքելոց. այլ ուրեմն այն քան զայս նուաղագոյն է։ Զի անդ ասէ՝ թէ չեմ բաւական կոչիլ առաքեալ, և աստ՝ քան զամենայն սուրբս կրսերագոյն ասէ։

«Ինձ, ասէ, որ կրսերագոյնս եմ ամենայն սրբոց, տուան շնորհքս այս աւետարանել ՚ի հեթանոսս զանքնին մեծութիւնն Քրիստոսի և լուսաւոր առնել զամենեսեան թէ զինչ է տնտեսութիւն խորհրդոյն որ ծածկեալն էր յաւիտենիցն յԱծ որ զամենայն ինչ արար ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի. զի յայտնեսցի այժմ իշխանութեանց և պետութեանց որ յերկինս են եկեղեցեաւ բազմապատիկ իմաստութիւնն Այ»։ Գրեաջիր թէ մարդկան չյայտնեցաւ, միթէ և զհրեշտակս զու լուսաւորեցեր և զիշխանութիւնս և զպետութիւնս։ Այո, ասէ. քանզի Աճ ծածկեալ կայր ՚ի Քրիստոս, որ զամենայն ինչ արար ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի։ Եւ իշխէր զայս ասել։ Եւ ուստի եղև յայտնի հրեշտակաց. եկեղեցեաւ՝ ասէ։ Եւ չասաց լոկ՝ թէ իմաստութիւնն Այ, այլ թէ բազմապատիկ իմաստութիւնն Այ։ Եւ արդ զինչ իցէ այս, չգիտէին հրեշտակք. զի թէ իշխանութիւնք չգիտէին, որչափ ևս առաւել հրեշտակք չգիտէին։ Եւ եթէ հրեշտակապետք չգիտէին և ոչ նոքա, ուստի էին ուսանելոց. յայտ է թէ յամէքէ որ յայտնիցէ։ Յորժամ մեք ուսաք, յայնժամ և նոքա մեօք։ Եւ լուր հրեշտակին որ ասէր ցՅովսէփ՝ թէ «Կոչեսցես զանուն նորա Յիսուս, զի նա փրկեսցէ զժողովուրդ իւր ՚ի մեղաց իւրեանց»։ Արդ սա ՚ի հեթանոսս առաքեցաւ և նոքա ՚ի թլփատութիւնն. որպէս զի զարմանալի և սքանչելի այն է զոր ասէն՝ թէ ինձ որ կրսերագոյնս եմ ամենայն սրբոց։ Եւ ոչ իբրև մեծի ումեք և զարմանալւոյ, այլ կրսերոյս. և այն իսկ շնորհացն էր՝ փոքուն զմեծամեծն հաւատալ, լինել այնպիսի իրաց աւետարանիչ։ Որ մեծամեծաց աւետարանիչ լինիցի, այնու իսկ հաստատէ յաւագութիւն։

«Աւետարանել, ասէ, ՚ի հեթանոսս զանքննին մեծութիւնն Քրիստոսի»։ Եւ եթէ մեծութիւնն նորա և յետ յայտնելոյն անքննին իցէ, որչափ ևս առաւել էու-

թիւնն. և եթէ խորհուրդն տակաւին խորհուրդ իցէ, առաւել ևս[1] նախ քան զյայտնելն: Վասնզի վասն այնորիկ կոչի խորհուրդ զի ոչ հրեշտակք գիտէին և ոչ այլ ումեք յայտնի էր: "Լուսաւորել, ասէ, զամենեսեան եթէ զինչ է տնտեսութիւն խորհրդոյն որ ծածկեալն էր յաւիտենիցն յԱծ, որ զամենայն ինչ արար ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի,,: Հրեշտակք զայն միայն գիտէին եթէ "Եղև բաժին տեառն ժողովուրդ իւր Իսրայէլ,,. և զմիւսն թէ "Իշխան Պարսից եկաց ինձ հակառակ,,: Ապա ուրեմն չէին ինչ զարմանք թէ և զայս չգիտէին. որ և զարձին չէին գիտակ, ևս առաւել զայս ամենայն: Եւս և յաւելորդն այն կայ, թէ "Որ փրկեսցէ զժողովուրդ իւր զԻսրայէլ,,: Եւ զհեթանոսաց ինչ բնաւ չձայնէ, այլ հոգին յայտնեաց վասն հեթանոսաց: Զի հրաւիրեցան՝ զայն գիտէին, բայց թէ յայնպիսի ինչ իրս և յաթոռն Այ նստել հասանիցէ մերում բնութեան՝ չունէր ինչ ոք ակն, ով ոք հաւատայր այնմ. քանզի ասէ՝ եթէ ծածկեալ էր յԱծ: Զայս տնտեսութիւն լուսաւորագոյն ՚ի հռովմայեցւոց թղթին յայտնէ. բայց աստ ասէ թէ յԱծ որ զամենայն ինչ արար ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, որ զամենայն նովաւ արար և զայս նովաւ յայտնեաց, քանզի ոչ ինչ արար առանց նորա. "Առանց նորա եղև, ասէ, և ոչ ինչ,,: Ասաց զիշխանութիւնս և զպետութիւնս, և զվերինս և զներքինս:

"Ըստ յառաջադրութեանն, ասէ, յաւիտենից,,: Եթէ ոչ այժմ ինչ եղև և ոչ այժմ ինչ սահմանեցաւ, այլ անդուստ ՚ի վերուստ նկատեալ էր: "Ըստ յառաջադրութեանցն, ասէ, յաւիտեանցն զոր ուսարուք ՚ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի,,: Այսինքն թէ ըստ նախագիտութեանն յաւիտեանցն. զի յառաջագոյն գիտէր զհանդերձեալսն, զհանդերձելոցն յաւիտեանցն ասէ. քանզի գիտէր զլինելոցն, և այնպէս սահմանեաց: "Ըստ յառաջադրութեան յաւիտեանցն զոր արար ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի,,. Քրիստոսիւ, ասէ, եղև ամենայն ինչ: "Զի նովաւ, ասէ, ընկալաք զհամարձակութիւն և զնուաձութիւն յուսով ՚ի ձեռն հաւատոցն նորա,,: Ոչ իբրև զգերիս

1 Յօր. պակասէր առաւել ևս նախ քան զյայտնելն. լրացաւ ՚ի յաւելեն:

մատեայք, ասէ, և ոչ իբրև ներելոյ և թողութեան լեալ արժանիք և ոչ իբրև զյանցաւորս. այլ և համարձակութիւն ես ունիմք յուսով, այսինքն է խրախուսանօք և քաջութեամբ, ուստի հաւատովք նորա։

"Վասն որոյ աղաչեմ մի ձանձրանալ 'ի նեղութիւնս որ վասն ձեր է, զի այս իսկ են փառք ձեր": Զիա՞րդ իցէ վասն նոցա, և կամ որպէս իցէ փառք նոցա նեղութիւնն։ Զի այնպէս սիրեաց զնոսա ա̃ծ, մինչ զի զորդին իւր տայ վասն նոցա և զծառայս իւր չարչարել։ Զի նոքա հասանիցեն այնպիսի բարութեանց, Պաւղոս 'ի կապանս մտանէր. ապա ուրեմն և այն բազում սիրոյն այ̃ առ նոսա օրինակ էր։ Որպէս զմարգարէիցն ասէ ա̃ծ՝ թէ "Սպառեցի զնոսա 'ի բանս բերանոյ իմոյ": Իսկ նոքա ընդէ՞ր ձանձրանային յորժամ այլ ոք 'ի նեղութիւն մտանէր. այս՝ քանզի խաւլէին և աղմկէին։ Զսոյն և առ Թեսաղոնիկեցիսն գրէ՝ թէ "Մ՛ի ձանձրանայք 'ի նեղութիւնս". ոչ միայն զչարել, այլ և ուրախ պարտ է լինել։ Եթէ 'ի կանխասացութենէ ինչ տխրիցէք[1], յառաջագոյն ասացաք եթէ նեղութիւնք հասանելոց են մեզ սաստ. ընդէ՞ր. քանզի այնպէս հրամայեաց տէրն։

"Վասն այնորիկ, ասէ, դնեմ ծունր առ հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ուստի ամենայն նահապետութիւնք երկնաւորաց և երկրաւորաց անուանեալ են": Զօգուտ աղօթիցն որ վասն նոցա էր՝ ցուցանէր։ Չասաց լոկ թէ աղօթս անեմ, այլ պարտի մտօք յաղօթսն ծունր դնեմ ասելով յայտ արար։ "Ուստի ամենայն նահապետութիւնք": Ոչ ըստ թուոյ հրեշտակացն ասէ, այլ զայնմանէ որ զվերին և զներքին ազգս արար, ոչ որպէս հրեականն։

"Զի տացէ, ասէ, ձեզ ըստ մեծութեան փառաց իւրոց զօրութեամբ հաստատել 'ի ձեռն հոգւոյն իւրոյ 'ի ներքին մարդն բնակել Քրիստոսի հաւատովք 'ի սիրտս ձեր": Տես որչափ անդադ առնէ աղօթս վասն նոցա 'ի բարիս, զի մի դանդաղեսցեն։ Իսկ զի՞նչ լինիցի այն։ "Հոգւովն, ասէ, որով 'ի ներքին մարդն ձեր բնակեալ Քրիստոսի հաւատովք 'ի սիրտս ձեր". զիարդ. "սիրով արմատացեալք և հիմնեալք հաստատեալք. զի

[1] Յոյնն ձանձրանայցէք։

կարող լինիցիք հասանել ընդ ամենայն սուրբս թէ զինչ է լայնութիւն և երկայնութիւն և խորութիւն և բարձրութիւն, ճանաչել զառաւելութիւն գիտութեան սիրոյն Քրիստոսի,,: Զոր 'ի սկզբան թղթիս արարեալ աղօթս, զնոյն և աստ: Զինչ ասաց 'ի սկզբանն. "Զի Ա՟ծ, ասէ, տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի հայրն փառաց տացէ ձեզ զհոգին իմաստութեան և յայտնութեան գիտութեամբ իւրով լուսաւորել զաչս սրտից ձերոց առ 'ի ճանաչել ձեզ թէ զինչ է յոյս կոչմանն նորա և զինչ է մեծութիւն փառաց ժառանգութեան նորա 'ի սուրբս, և զինչ առաւելութիւն մեծութեան զօրութեան նորա 'ի մեզ հաւատացեալս,,. և այժմ զնոյն ասէ. "Զի կարող լինիջիք հասանել ընդ ա՟մ սուրբս թէ զինչ է լայնութիւն և երկայնութիւն և խորութիւն և բարձրութիւն,,. այսինքն զխորհուրդս որ վասն մեր մատակարարեցաւ՝ ճանաչել հաստատութեամբ: Նաև լայնութիւն և երկայնութիւն և բարձրութիւն և խորութիւն՝ զառաւելութիւն սիրոյն Ք՟ի ասէ որ ընդ ամենայն տարածեցաւ. և մարմնաւոր կերպարանօք դրոշմեաց, զի ցուցցէ յամենայն կողմանց 'ի վերնոց և 'ի ներքնոց, 'ի մարդկանէ և 'ի հրեշտակաց: Զառաւելութիւն սիրոյն ասացի, ասէ, թէ չէ իմոց բանիցս ցուցանել զայն, այլ հոգւոյն սրբոյ զօրութեան է զօրանալ և հաստատուն կալ 'ի փորձութիւնսն և ոչ դանդաչել: Որպէս ուրեմն չէ հնար այլ ազգ զօրանալ, բայց միայն հոգւովն և 'ի փորձութիւնս և 'ի մտաց խռովութիւնս: Նա թէ զիարդ Քրիստոս բնակիցէ 'ի սիրտս, նմին իսկ լուր. "Նա, ասէ, և Հայր իմ եկեսցուք և օթեվանս առ նմա արասցուք,, 'ի սիրտս հաւատացելոց, որ աւարտեալք իցեն սիրովն նորա, և չիցեն այսր և անդ դանդաչեալք: "Զի կարող լինիջիք,, ասէ. ապա ուրեմն բազում զօրութեան պէտք են: Նաև[1] թէ ուր այնք մեզ պէտք իցեն, 'ի վերայ ածէ: Զի կարող լինիջիք հասանել ընդ ամենայն սուրբս՝ զինչ է խորութիւն և բարձրութիւն, և ճանաչել զառաւել սէրն գիտութ՟են Քրիստոսի:

1 Հատուածդ Նաև թէ . . . մ՟ և ա՟ծ || պակասեալ 'ի մերումն՝ լրացաւ 'ի յօրինակացն:

«Զի լցջիք, ասէ, ամենայն լրութեամբն այ»։ Եւ զոր ասէն՝ այս է. Թէպէտ և 'ի վեր քան զամենայն մարդկեղէն գիտութիւն է սէրն Քրիստոսի, սակայն դուք գիտասջիք՝ եթէ զՔրիստոս ունիցիք 'ի ձեզ բնակեալ։ Եւ ոչ զայս միայն գիտասջիք 'ի նմանէ, այլ և լցջիք ամենայն լրութեամբն այ։ Լրութիւն այ կամ զգիտելն ասէ, զի 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սուրբ երկրպագի ած, կամ այնպէս փութալ յորդորէ՝ մինչ զի լնուլ ամենայն առաքինութեամբ որով լի է ած ‖։

«Այլ Նմա որ կարողն է առնել քան զոր խնդրեմքն և իմանամք առնել ըստ զօրութեանն որ զօրացեալն է 'ի մեզ»։ Եւ զի ըստ զօրութեան իւրում առնել քան զոր խնդրեմքն և իմանամք՝ արար, յայտ անտի է զոր ինքն իսկ գրէ. «Ես, ասէ, աղօթս առնեմ»։ բայց նա և առանց իմից իսկ աղօթից մեծամեծ քան զոր խնդրեմք՝ առնէ։ Եւ ոչ վայրապար մեծամեծս, այլ առաւելս. և ոչ վայրապար առաւելս, այլ 'ի վեր քան զառաւելսն։ Եւ յայտ 'ի զօրութենէն է որ զօրացեալն էր 'ի մեզ. քանզի ոչ երբէք խնդրեցաք և ոչ ակն ինչ ունէաք և ոչ զմտաւ ինչ ածէաք։

«Նմա, ասէ, փառք յեկեղեցւոջ 'ի Քրիստոս Յիսուս յամենայն ազգս յաւիտենից յաւիտեանս ամէն»։ Նորուք իսկ յաղօթս և 'ի փառաբանութիւնս համգոյց զբանն։ Քանզի պարտ իսկ էր որ այնչափ շնորհեաց մեզ փառաւորելոյ և օրհնելոյ. որպէս զի և այն իսկ մասն ինչ է զարմանալոյ և ընդ պարգևելոյ բարութեանցն 'ի մեզ 'ի մեծութենէն այ։ Փառաւոր առնէ զնա 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի։ Յորժամ փառաւորութիւն 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի ասէ, ոչ եթէ որպէս արքանեկաւ ինչ փառս տայ այ. նա և ոչ յորժամ ասիցէ թէ հաւատարիմ է ած որով կոչեցարուք դուք 'ի հաղորդութիւն որդւոյ նորա՝ որպէս սպասաւորութիւն ինչ ասիցէ հայր կոչեցեալ 'ի հաղորդութիւն որդւոյն նորա, այլ զի Հայր որդի ճանաչիցի և որդւով հայր։ Զի որպէս ծանեաքն Յիսուսիւ Քրիստոսիւ զՀայր, նոյնպէս և փառաւորեմք նովաւ. քանզի նովաւ իմացաք զփառաւորութիւնն, և նովաւ ընդ նմա փառաւորեմք զՀայր, նովաւ ըստ մարդկութեան և ընդ նմին ըստ ածութեան։

«Նմա փառք, ասէ, 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի յե-

կեղեցւոյն»։ Նորուք ասաց եթէ յեկեղեցւոյն, զի սա միայն գիտէ մշտնջենաւոր հաստատուն կալ 'ի փառաւորութեանն։

Զինչ իցեն նախապատուութիւնքն՝ հարկ է ասել։ Նոքա նախապատուութիւնք ազգքն են. իսկ յերկինս զխարգ արգելք, ուր ոչն ոք յաւմեքէ եղև։ Կամ թէ զզօւնդն առեցէ անդ նախապատուութիւնս, որպէս և 'ի գիրս իսկ գտանեմք՝ թէ նախապատուութիւնն Մանասարեայ, կամ թէ ուստի հարքն կոչիցին։ Ոչ յայս զամենայն դնէ, այլ և 'ի նոցանէ պահանջէ հաւատս և սէր։ Նաև զարմատացեալն և զհիմունս հաստատեալ, որպէս զի մի 'ի հողմոյ շարժիցի և մի յայլ ուրեք կործանեսցի։

Նոյն թէ փառք են նեղութիւնք. եթէ իմքն, ասէ, որչափ ևս առաւել ձերքն։ Պարծեալ և աղօթս ևս առնէ, եթէ ոչ որպէս թէ 'ի ձեռաց ինչ թողեալ իցէ՝ նեղիք. քանզի ոչ եթէ որ այնպէս երախտիս առնէ, զայն գործէր։ Եթէ զոր սէրն ուսանել՝ Պաւղոսի աղօթիցն պէտաք էին և հոգւոյն զօրացուցանելոյ, իսկ զէութիւնն Քրիստոսի ո՞ կարէ ճանաչել՝ զխորհրդոցն ևեթ զհետ երթալով։ Թէպէտ և չեն ինչ դժուարին իրք իմանալ թէ սիրէ զմեզ ած, այլ և յոյժ իսկ դժուարին է, սիրելիք։ Զի ոմանք և այնմ իսկ չեն տեղեակ, զի և կարծեն իսկ թէ բիւր չարիք գործիցին 'ի նմանէ յաշխարհի. և ոմանք թէ որչափ ինչ իցէ՝ այնմ չեն հմուտ։ Նա և Պաւղոս՝ թէ որչափ ինչ իցէ և ոչ թէ որպէս ընդ չափով արկանել խնդրէ, քանզի և չէ ինչ մարթ. այլ թէ առաւել և մեծ իսկ է՝ զայն ուսանել։ Նոյն ասէ այսպէս՝ թէ նախքին իսկ այնու մարթի ցուցանել՝ գիտութեանն որով մեք արժանի եղեաք. թէպէտ և այն իսկ առաւել է զօրանալ հոգւոյն զօրութեամբ, և ունել զՔրիստոս 'ի ներքին մարդն։ Մեծ են, ասէ, խորհուրդքն. այլ գիտէ և զայն յարդարել. որպէս զի մի միայն ուսանել, այլ և սիրել. և մի միայն սիրել, այլ և առաւելագոյն սիրել։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Հոգացարուք, սիրելիք, իմանալ զսէրն այ։ Մեծ գործ է, և չիք ինչ որ այնպէս մեզ օգտակար լինիցի, և չիք

ինչ որ այնպէս յորդորել կարասցէ քան զերկիւղն գե-
հենին. այն բաւական է ընթռնել զոգիս մեր։ Աստի
կարիցեմք 'ի միտ առնուլ. յասացելոցն և 'ի հանապա-
զորդ իրաց որ մեզ պատահիցեն։ Ո՞ր վասն լինիցի այն,
յո՞ր պէտս 'ի նորա. և ոչ 'ի մի ինչ։ Բայց վեր 'ի վայր
զսէրն զնէ պատճառս. և առաւել սէր այն է՝ յորժամ
երախտիս անձնացուն մարդիկ, և զայնպիսի ինչ երախ-
տիս՝ զոր ոչ երբէք ունէին, այլ 'ի նմանէ առին և ին-
քեանք չհատուցին երբէք երախտեացն երախտիս, մա-
նաւանդ թէ ապախտիս իսկ։ Այնմ նմանող լիցուք և մեք.
թշնամեաց բարի արասցուք, զատելիս սիրեսցուք, և այն
առնէ զմեզ նմանողս նմ։ Եթէ զբարեկամսն, ասէ, սի-
րեսցուք, զինչ շահեսցուք. զայն և հեթանոսքն առնեն։
Այլ զինչ. սիրոյ նշանակ այն է յորժամ զատելիս ոք
սիրիցէ։ Կամիմ օրինակ ինչ 'ի մէջ ածել, անսացէք նե-
րեցէք. և չգտանիցեմք ինչ 'ի հոգևորացն, վասն այնո-
րիկ յարտաքնոցն ասեմ։ Զտեսանիցէ՞ք զայնոսիկ որ 'ի
սէրսն հարեալ իցեն որչափ թշնամանին 'ի նոցանէն զոր
սիրիցենն. որչափ նենգին, քանի ծախս ծախեն, և կա-
պեալ կաշկանդեալ են, և այլին իմն և առատանին, և
քան զիւրեանց անձինս զնոսա առաւել սիրեն։ Ընդ զայդ
առնեն և անդէն զերեկ, անդ ջերմանին և անդէն առ
նոցա դուրս դեգերեալ նստին։ Աստի առնուցուք օրի-
նակ. ոչ այնպէս զպոռնիկ կանայս սիրել, այլ նոյնպէս
զթշնամիս սիրել։ Աղէ ասա, ո՞չ քան զթշնամիս ես չար
թշնամութեամբ գնան ընդ նոսա. զարարս ծախեն և
զինչս վատնեն, ձեռագրեն [1], ձեռակոծ առնեն, թշնա-
մանեն զերեսս, կոչկոճեն և քան զստրկացն ես սաստ-
կագոյն հրամայեն. և սակայն չթափին 'ի նոցանէն։ Աւէ-
պէտ և չիք ոք որ այնպիսի թշնամի ունիցի, որպէս հա-
րեալն զայն յոռում հարեալն իցէ։ Պչրի ընդդէմ ար-
համարհէ զայն առնէ, դեռ նոյն կարգ համարի, չդնէ
մեծարանս. և որչափ սիրիցի, ես քան զևս արհամար-
հէ. թէպէտ և քան զգազան ինչ չար ես գազանագոյնս
ցանկ 'ի դիմի հարկանիցի, և սակայն որ սիրենն սիրէ և
տանին աղետիցն։

Բայց թերևս և 'ի հոգևորսն գտանեմ այնպիսի սէր,

1 Միւսն յառագրէն, յառակոծ առնէն։

մանաւանդ թէ և ստանալ, ոչ յորդորէ՝ քանզի ցա-
մաքեցաւ, այլ յառաջինն յորս առաջս և սքանչելիս։
Ատրանկլին Մ՛ովսէս որ զայնպիսի մոլեգնեալսն յաղտե-
ղի սէրսն անդորյ զանցոյց սուրբ սիրովն։ Ի՛ւ և արմ օ-
րինակաւ։ Ապա զի զարքունիսն եթող և զփափկութիւն
և զոսկս և զփառաւորութիւնս, և յանձին կալաւ ընդ
խորամէլացեալն վշտանալ։ Ո՛չ ոչ այլ ոք գործեաց զայն-
պիսի գործ, այլ թէ և յիւրոց ծառայիցն թշնամանե-
ցաւ, կամեցաւ զանձն ազգական ծառայիցն երևեցու-
ցանել և ոչ տէր. և այն ոչ 'ի ծառայից միայն, այլ և
յաղտեղի ծառայից։ Նոյց նա թէպէտ և տէր էր, սա-
կայն զազգականութիւնն չհամարեցաւ ամօթ, այլ գա-
զանեաց և վրէժ խնդրեաց և զանձն 'ի տագնապի կա-
ցոյց վասն նոցա։ Ո՛ խորդ. ետես, ասէ, զոմն զրկեալ,
վրէժ խնդրեաց զրկանացն և եսպան զզրկիչն։ Ո՛չ Ն չե-
ւս էր այն վասն թշնամեաց. մեծամեծ էր[1] և այն, այլ
ոչ իբրև զայս զոր յետոյն եցոյց։ Ի վաղիւ անդր, ասէ,
նոյնպիսի ինչ իրս ետես և այնմ վրէժխնդիր եղև. ե-
տես զզրկիչն և սկսաւ խրատ տալ գայթակղել 'ի զրկա-
նացն։ Իսկ նա բազում ապախտութեամբ վանեալ՝
ո՞, ասէ, կացոյց զքեզ իշխան և դատաւոր 'ի վերայ մեր։
Ո՞ ոք ոչ կակծեցուցանէր այնպիսի բանք. եթէ ցա-
ման ինչ զորոյք լեալ էին զառաջին վրիպակարութեան,
ապա զնա և հարկաներ ընկեցոյր և չասոյր պրկել և լի-
նել գուշակ զնմանէ։ Բայց զի ազգականք էին, վասն
այնորիկ ոչ մնաբերեաց յայնպիսի գործ։ Իսկ նա մինչ-
դեռ զրկերն յայլոց, չասաց այնպէսի ինչ՝ թէ ո՞ կացոյց
զքեզ իշխան և դատաւոր 'ի վերայ մեր։ Ինքէր երեկ
չասացեր զայդպիսի բանս մինչդեռ դու զրկեիր յայլոց.
քո անիրաւութիւնդ և զրկողութիւն կացոյց զիս իշխան
և դատաւոր 'ի վերայ ձեր։

Այլ այժմ տեսցանեմ զի և զմայ կա խօսին ամենք
զայնպիսի բանս. յորժամ զրկիցեն, յայնժամ զամ-
սաստկագոյնս կամին և զերկայնմտութիւն նորա բամ-
բասեն. և յորժամ զրկիցեն, ոչ ինչ այնպիսի։ Ո՛ ինչ
քան զայնպէսի բանս դառնագոյն կայցէ։ Նոյց ասական
յետոյ յորժամ էառ հրամանն երթալ առ ապախտա-

1 Ո՛րև մեծ էր։

ւորան և տպաշխարհս, ոչ ինչ դանդաղեցաւ։ Այլ յետ այնչափ նշանս և արուեստս ցուցանելոյ, բազում անգամ քարկոծ եւս մտաբերէին առնել զնա, և ապրեցաւ 'ի ձեռաց նոցա։ Եւ ցանկ տրտնջէին. բայց սակայն սիրէր զնոսա կարեւոր սիրով, մինչև ցմահ եւս առնել յօժար. յորժամ զանհնարին մեղսն գործեցին. «Եթէ թողուս, ասէ, դոցա զմեղս՝ թող. ապա թէ ոչ՝ և զիս ջնջեա 'ի դպրութենէն յորում գրեցեր»։ Կամիմ, ասէ, ընդ նոսա կորնչել քան թէ առանց դոցա կենդանի իցեմ։ Այն էր արդարեւ մոլի սէր, և կարեւոր փութ և խնամ։ Ո ինչ խօսիս, և զերկինս եւս առ դոքօք արհամարհիցես։ Այո, ասէ, քանզի սիրեմ զիմ վնասակարսն։ Ջնջել խնդրես 'ի դպրութենէն։ Իսկ զինչ առնեմ, ասէ, քանզի սիրեմ և չունիմ ժոյժ։ Եւ յետոյ զինչ. լուր զինչ ասեն գիրք՝ եթէ «չարչարեցաւ Մովսէս վասն նոցա»։ Բազում անգամ թշնամանեցին, քանիցս անգամ և յիշխանութենէն կամեցան հանել զնա և զեղբայրն, քանիցս անդրէն յԵգիպտոս կամէին դառնալ։ Եւ յետ այնր ամենայնի այրեր և տառապանէր, և վասն նոցա յամենայն չարչարանս պատրաստ էր զանձն։ Այնպէս պարտ է սիրել զթշնամիս, թէպէտ և նեղիցի ոք և տառապիցի, զի զամենայն հնարս հնարիցի ցանկացեալ նոցա փրկութեանն։ Իսկ Պաւղոս զինչ. ո՞չ ապաքէն և 'ի գեհեանն եւս խնդրէր երթալ վասն նոցա։

Այլ և 'ի տեառնէ կարեւոր համարիմ բերել օրինակ 'ի մէջ. քանզի և ինքն իսկ ասէ զհօրէ՝ թէ «Որ զարեգակն իւր ծագէ 'ի վերայ չարեաց և բարեաց»։ Նա 'ի հօրէ տայ օրինակ, և մեք 'ի Քրիստոսէ։ Եկն առ նոսա, ըստ տնտեսութեանն ասեմ. ծառայ եղև վասն նոցա, խոնարհեցոյց զանձն, ունայնացոյց, զկերպարանս ծառայի էառ. և յորժամ եկն, ոչ ինքն 'ի ճանապարհս հեթանոսաց չոգաւ, և ոչ աշակերտացն հրամայեաց. և ոչ այնչափ միայն, այլ և շրջէր և բժշկէր զամենայն ցաւս և զհիւանդութիւնս։ Եւ զինչ. այլքն ամենեքեան զարմանային և սքանչանային և ասէին՝ ուստի իցէ սմա այս ամենայն։ Եւ որք զերախտիսն ընդունէին, և հայհոյէին, ասէին, և մոլեգնի և մոլորեցուցիչ է։ Միթէ մերժեա՞ց երբէք զնոսա. և ոչ երբէք։ Այլ թէպէտ և զայն ամենայն լսէր, եւս քան զեւս յաճախէր յե-

րախտին, և ինքնին երթայր առ նոսա որ 'ի խաչն հանելոց էին զնա, զի որով հնարիւք և իցէ՝ միայն զի կեցուսցէ զնոսա։ Նա՛ և յետ 'ի խաչն հանելոյ աղօթս մատուցանէր վասն նոցա. «Հայր, ասէ, մի համարիր դոցա զայդ մեղս»։ Նա՛ և յառաջ քան զայն լլկեցաւ 'ի նոցանէն, և յետ այնորիկ չարչարեցաւ. և ամենայն մինչև ցյետինն շունչն վասն նոցա զամենայն հնարս հնարէր, և յետ խաչելութեանն ընդ նոցա աղօթս մատուցանէր։ Զինչ ինչ ոչ արար վասն նոցա. ո՛չ առաքեալս առաքեաց և նշանս արար և ազգի ազգի հնարս վասն նոցա հնարեցաւ։ Այնպէս պարտ է սիրել զթշնամիս, նմանողական նմանող լինել Քրիստոսի։

Այնպէս և Պաւղոս արար, քարկոծեալ, բազում չարչարանս չարչարեալ 'ի նոցանէ, զամենայն հնարս վասն նոցա հնարէր. և լուր նմին իսկ թէ «Կամ կամք և աղօթք վասն նոցա են 'ի փրկութիւն». և դարձեալ թէ «Ակայեմ զնոցանէն զի զնախանձն ա՛յ ունին». և դարձեալ թէ «Դու որ վայրենի ձիթենիդ էիր պատուաստեցար, որչափ ևս առաւել նոքա պատուաստեցին 'ի բուն իւրեանց ձիթենին»։ Նա որպէս զի թոյ կարծիցես զայս բանս, առ ո՛րչափ խնամոց։ Զիք, ասէ, և չէ իսկ։ Այնպէս պարտ է սիրել զթշնամիս, և այն զա՛ծ իսկ է սիրել, որ հրաման եսո և զայնպիսի օրէնս եդ, նմա նմանող լինելով, զթշնամիս սիրելով։ Զմտաած թէ ոչ թշնամւոյն ինչ առնես երախտիս, այլ անձին. և ոչ զնա սիրես, այլ զա՛յ հրամանն կատարես։ Զայս ամենայն խմացեալ հաստատեսցուք 'ի միմեանս զսէրն, զի ճշմարտութեամբ անկիցեմք զնա 'ի մեզ և հաստանիցեմք խոստացելոց պարգևացն 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՈՒԹԵՐՈՐԴ

«Աղաչեմ զձեզ ես որ կապեալս եմ 'ի տէր, արժանի գնալ ձեզ կոչմանն յոր կոչեցարուք ամենայն հեզութեամբ և խոնարհութեամբ և հանդարտութեամբ»։

Վարդապետաց առաքինութիւն է չխնդրել փառս և պատիւ յաշակերտացն, այլ զփրկութիւն նոցա, և զամենայն ինչ վասն այնորիկ առնեն։ Որպէս զի որ զայն խնդրիցէ՝ նա չէ վարդապետ, այլ բռնաւոր։ Քանզի ոչ վասն այնորիկ կացոյց զքեզ 'ի վերայ նոցա Աստուած՝ զի քեզ բազում սպասք լինիցին, այլ զի քոյն արհամարհիցի և ամենայն ինչ նոցայն լինիցի. և այս իսկ է գործ վարդապետի։ Այնպիսի էր երանելին Պաւղոս՝ զատեալ մեկնեալ յամենայն հպարտութենէ, և այնպէս համարէր զանձն իբրև զմի 'ի բազմաց, մինչև անգամ թէ 'ի վայր քան զնոսա. վասն այնորիկ և ծառայ կոչէր նոցա զանձն, և յաճախ աղերսիւ խօսի։ Նա և այժմ իսկ տես զի ոչ հրամանս տալով գրէ և ձոխութեամբ, այլ մեղմով և ամոխթի։ «Աղաչեմ զձեզ, ասէ, ես որ կապեալս եմ 'ի տէր, արժանի գնալ ձեզ կոչմանն յոր կոչեցարուք»։ Ոչ աղաչիցես, ասէ ասա, զի քեզ ինչ դիւրութիւն լինիցի։ Ոչ, ասէ, այլ զի զայլս ապրեցուցից։ Թէպէտ և որք աղաչիցենն՝ վասն իւրեանց օգտի ինչ աղաչիցեն. թէ և ինձ այսպէս լուացոյն է, որպէս և այլուր գրէ. «Այժմ, ասէ, կենդանի եմք, եթէ դուք միայն հաստատուն կայցէք 'ի տէր»։ Այրի իսկ ցանկ փրկութեան աշակերտացն ցանկացեալ էր։

«Ես, ասէ, որ կապեալս եմ 'ի տէր»։ Մեծ պատիւ են կապանք և առաւել մեծ և քան զթագաւորութիւնս իսկ և զարդեշխութիւն և զառաւել ինչ իշխանութիւն, որպէս առ Փիլիմոն գրէ՝ թէ «Որպէս Պաւղոս ծերացեալ, արդ և կապեալ ևս Յիսուսի Քրիստոսի»։ Զի ոչ այնպէս պայծառացեալ ինչ որպէս վասն Քրիստոսի 'ի կապանս մտանել, և ոչ իբրև զշղթայսն զոր ունէր 'ի սուրբ ձեռսն և 'ի պարանոցն։ Քան զառաքեալ լինել

և զկարգաւորեալս և զհրեշտակս անգամ՝ ՚ի կարգս փառա-
ւորել վասն Քրիստոսի առաւել պայծառագոյն է։ Եթէ
որք սիրեցէ զՔրիստոս, ՚ի միոյ աւուր զոր ասեմ։ Որ
որք հարկաւոր և խանդակաթ իցէ ՚ի սէրն տէրունական,
գիտէ զզօրութիւն կապանացն, և ՚ի շղթայս վասն Քրիս-
տոսի ախորժելով մտանէ՝ քան զերկինս ՚ի ժառանգու-
թիւն առնուլ։ Քան զամենայն ոսկի պայծառագոյն ցու-
ցանէին զձեռս որքայն, քան զամենայն թագս թագա-
ւորութեան լուսաւորագոյն. քանզի ոչ այնպէս վայե-
լուչ ցուցանէ զգլուխն խոյր ականակապ և թագն ոսկւով
և մարգարտով, որպէս շղթայքն երկաթիք վասն Քրիս-
տոսի։ Եւ քան զարքունիսն յայնժամ առաւել լուսա-
ւորագոյն էր բանտն. և զինչ ասացից քան զարքունիսն,
նաև քան զերկինս քաջ ՚ի բաց պայծառագոյն, զի ըն-
Քրիստոսի կապեալն ունէր յանձին։ Եթէ որք սիրեն
զՔրիստոս, գիտեն զխորհուրդ պատուոյն, ՚ի միոյ աւանդ
զառաքինութիւնն հմուտ է թէ որպիսի ինչ բարութիւն
շնորհեաց ազգի մարդկան։ Եւ զինչ ասիցեմ զձեռագ-
կապէն ինչ իրաց. քանզի ամօթ համարիմ համեմատել
զմեծութիւն և զզարդ ինչ ոսկեհուռ՝ կապանացն, և
զառաւել մեծամեծս։ Թէ բնաւ իսկ վարձք չկային ընդ-
խրացն, այն միայն մեծ վարձք էին և բաւական հատու-
ցումն՝ զի վասն նորա զոր սիրեցէն որք՝ այնպիսի չարչա-
րանս կրիցէ։ Եւ գիտեն որք սիրեն զինչ ասեմ, թէ-
պէտ և ոչ զամն, այլ զմարդիկ, որք ախորժելով վշտա-
նալ կամին քան պատուել ՚ի սիրելեացն։ Եւ զայն սբր-
բոյ գնդին միայն էր գիտել, զառաքելոյն ասեմ։ Եւ
լուր առաքելոյն Պօղոսի. «Պարծանս, ասէ, յերեսաց
առեալին ուրախութեամբ, զի վասն անուանն արժանի
եղեն անարգանս կրելոյ»։ Որ այլոց ծաղր իմն և կատա-
կանք թուէին՝ եթէ անարգելն արժանի լինել իցէ, ե-
թէ անարգելն ուրախ առնել իցէ նոցա։ Որք հմուտք
սիրոյն Քրիստոսի իցեն, այն իսկ առաւել երանութիւն
է քան զամենայն ինչ։ Եթէ զերկինս ոք հանդերձ փա-
մենայնիւ պարգևէր ինձ և զկապանսն Պաւղոսի, զայն
ընտրէի և զնոյն պատուական համարէի։ Եթէ ընդ
հրեշտակս ոք ՚ի վեր կայցուցանէր և ընդ Պաւղոսի ՚ի
կապանսն, զբանտն յանձն առնուի և ոչ զհրեշտակացն
կայեանս։ Եթէ ՚ի բարձանց զօրութեանց ոք առնէր

զիս որ շնորհք զաւթուածս կան, և այնպիսի ոք կարգաւորեալ առնէր, զկարգաւորութիւնն ընտրէի և ոչ զպայծառ պատիւ. չիք ինչ երանական քան զայնպիսի շղթայս:

Արժէր և այժմ իսկ 'ի տեղիսն հատանել, քանզի ասեն թէ ցայժմ կան շղթայքն, և յիշելի իսկ խորհել զմեծ նշան յաղթութեան, և զարմանայի և փառէի զնո-քեզ, որ վասն սիրոյն Քրիստոսի պահեն 'ի պատուի զերկաթն. Արժէր տեսանել զշղթայսն՝ յորմէ դևք սարսեն, սատանայ սոսկնալի, հրեշտակք ակնածեն, հրեշտակապետք պատուեն. Ձիք ինչ լաւագոյն քան զչարչարելն վասն Քրիստոսի: Ոչ այնպէս ինչ երանեմ զՊաւղոս զի 'ի դրախտն յափշտակեցաւ, որպէս զի 'ի բանտն եմուտ. և ոչ ինչ երանի առնէ նմա զի զբանս անճառս լուաւ, այլ զի կապանաց համբերէր. ոչ այնքան ինչ երանելի զնա համարիմ զի յերրորդ յերկինսն յափշտակեցաւ, որպէս վասն կալանաւորութեանն. Իսկ զի այս քան զայն մեծ է, նմին իսկ լուր որ ձայնարկէ զկե-տեր. Ջատաց թէ աղաչեմ զձեզ ես որ զբանս անճառս լուայ. այլ զինչ. «Աղաչեմ զձեզ, ասէ, ես որ կապեալս եմ 'ի տէր»: Այլ եթէ ոչ յիմ թուղթս գրեր գիրս, քանզի ոչ եթէ յամենայն ժամ 'ի կապանս կայր, այլ ընդ ժամանակս ժամանակս: Յանկամ, ասէ, չարչարանս կրել վասն Քրիստոսի, քան պատուել 'ի Քրիստոսէ. քանզի այն իսկ է մեծ պատիւ և նոյն փառք որ քան զամենայն ինչ առաւել է: Եթէ նա վասն իմ ծառայ եղև և զփառսն ունայնացոյց և չհամարէր զայն լաւ մինչ 'ի փառսն էր, որպէս յորժամ 'ի խաչին էր վասն իմ, ինձ զորպիսի ինչ չարչարանս չիցէ պարտ չարչարել: Այլ նմին իսկ լուր. «Փառաւորեա, ասէ, արդ զիս Հայր»: Ո՜ ինչ խօսիս. 'ի խաչ երթալոց ես ընդ աւազակս և ընդ գերեզմանակրկիտս, զանարգելոց մահ յանձն առնուլ, թուք յերեսս ընդունել, ապտակել, և փառս կոչես: Այո, ասէ, քանզի վասն սիրելեաց չարչարիմ զայսպիսի չարչարանս և կարի իսկ փառս համարիմ: Իսկ եթէ զանարգանանն ոք և զտառապեալս սիրեաց՝ փառս կոչէ զիրսն, որչափ ևս առաւել ես. քան 'ի հայրենի աթոռն նստել. և 'ի փառսն լինել ընդ աջմէ, զի յանարգանս եմ՝ զայս համարիմ փառս:

Ո՜ երանելի կապանքն և ձեռքն որ շղթայիւքն զարդարա-

րեցան։ Ոչ էին այնպէս ձեռքն Պաւղոսի սքանչելագործք մինչ զկապն 'ի Լիւստրացւոց քաղաքին յանիւյց, որպէս մինչ կապանօքն զարդարեալ էին։ Եթէ յայնմ ժամանակի անդ գտեալ էի, շաղէի պատէի զնովաւ և առնուի զսուրբ ձեռսն և 'ի վերայ բբաց աչացս դնէի և չդադարէի 'ի համբուրելոյ զձեռսն որ արժանի եղեն վասն տեառն շղթայիցն կապել։ Այլ ընդ այն զի զարմանայցես թէ բուռն եհար իժն զձեռանէն Պաւղոսի և չվնասեաց ինչ. քանզի կապանօք մեծարեալ էին։ Այս և ծովն իսկ ողջոյն պատկառէր 'ի նմանէն, քանզի և յայնժամ 'ի կապանս էր։ Այլ եթէ զմեռեալս ոք տայր ինձ այժմ յարուցանել, չընտրէի զայն քան զկապանս Պաւղոսի։ Եթէ յեկեղեցեացս հոգոց 'ի բացեայ՝ և մարմնովս ազատ էի, չզանգահէի զայնչափ ճանապարհ հատանել անցանել, զի զշղթայսն միայն տեսից և զբանտն յորում կապեալ կայր. Նա և նշանացն իսկ նորա նշանաքն կան ուրեք ուրեք, այլ չեն այնպէս ցանկալի իբրև զչարչարանացն նշանաքն։ Այլ զգիրսն յորժամ ընթեռնում, ոչ այնպէս ուրախ առնեն զիս ուր զնշանսն արար, որպէս չարչարանս ինչ չարչարեցաւ կամ տանջեցաւ և քարշեցաւ։ Մինչ զի ասէ “Ի քրտանէ նորա տանէին թաշկինակս և վարշամակս և բժշկութիւնք լինէին”, զարմանալի գործ էր արդարև այն, այլ ոչ իբրև զչարչարանսն։ Գան հարին զնա և եդին վէրս բազումս և արկանէին 'ի բանտ. և դարձեալ 'ի կապանսն էին և օրհնէին զԱծ։ Դարձեալ քարկոծեցին և քարշեցին և հանին արտաքս քան զքաղաքն և համարեցան թէ մեռեալ իցէ։

Գիտիցէք ուսանել թէ որչափ ինչ իցեն մեծարանաց երկաթքն որ վասն Քրիստոսի 'ի մարմինս ծառայիցն արկանիցին, նախ իսկ լուարուք Քրիստոսի. “Երանի իցէ, ասէ, ձեզ” ոչ զի զմեռեալս յարուցանիցէք և ըզկոյրս բժշկիցէք. այլ զինչ. “յորժամ նախատիցեն ըզձեզ և ասիցեն զձէնջ բան չար սուտ վասն իմ”։ Եթէ բան չար լսել այնպէս երանելի առնիցէ, չարչարանս ինչ կրել վասն նորա որչափ ևս երանելի իցէ գործիցէ։ Այլ լուր ամին իսկ երանելոյ գիտարդ ասէր 'ի միւսումն վայրի թէ “Այսուհետև կայ և մնայ ինձ արդարութեան պսակն”։ Այլ քան զպսակն կապանքն պայծառագոյն

ելոյն։ Նոյնմ, ասէ, արժանիք արարացէ զիս, եւ վասն այնր չխնդրեմ ինչ հատուցումն. շատ է ինձ ընդ ամենայն հատուցման չարչարանս կրել վասն Քրիստոսի։ Ցուցէ ինձ զայն բարբառ բարբառել՝ թէ զմնացորդս նեղութեանցն Քրիստոսի լնում 'ի մարմնի իմում, եւ չեմ այլ իւիք կարօտ։

Արժանի եղեւ եւ Պետրոս այնպիսի շղթայից. "Եւ, ասէ, կապեցաւ եւ մատնեցաւ զինուորաց,,, եւ 'ի քուն եմուտ։ Այնպէս ուրախ էր եւ չէր տրտմեալ, մինչ զի եւ խոր 'ի քուն մտեալ ննջէր. եւ ոչ երթէ 'ի բազում հոգս ինչ էր, այնպէս յանհոգս կայր։ Ի մէջ զինուորաց էր, ասէ, եւ եկն հրեշտակն առ նա եւ խթեաց զկողս նորա եւ յարոյց։ Իսկ թէ ասէր ոք այժմ ցիս՝ զինչ կամիցիս լինել, հրեշտակն որ զՊետրոս յարոյց, թէ Պետրոս որ ապրեցաւն, Պետրոս ընտրէի լինել՝ վասն որոյ եւ հրեշտակն եկն. զկապանսն գնէի թէ հնար էր, եւ ոչ զհրեշտակին պատիւ։ Նոյն արդ զխնդիր, ասէն, որպէս թէ 'ի մեծամեծ ինչ չարեաց զերծեալ՝ կայր յաղօթս։ Ընդ այն մի ինչ զարմանայր. աղօթս առնէր, քանզի կասկածէր թէ զուցէ մեռանիցի. 'ի մահուանէն կասկածէր, թէ զուցէ խափան ինչ լինիցի նմա յայլոց չարչարանաց։ Լու-լուր երանելոյն Պաւղոսի. "Պատուեալ, ասէ, եւ ընդ Քրիստոսի լինել առաւել լաւ համարիմ, եւ կալ մնալ 'ի մարմնի եւս կարեւոր վասն ձեր,,։ Այս եւ շնորհս եւս կոչէ զայն. քանզի եւ գրէ իսկ՝ թէ "Շնորհեցաւ ձեզ 'ի Քրիստոսէ ոչ միայն 'ի նա հաւատալ, այլ եւ վասն նորա չարչարանս կրել,,։ Արդ ուրեմն այս քան զայն մեծ է։ Շնորհեցաւ ասէ։ Այս արդարեւ մեծ շնորհ է. քան զարեգական կացուցանել եւ զլուսին արգելուլ եւ ըղհանուրեքն աշխարհ դղրդել այն մեծ է, եւ քան սատանայի տիրել եւ զդեւս հալածել։ Ոչ ինչ այնչափ խառնին յորժամ հաւատացեալք հալածիցեմք զնոսա, որ զի 'ի չարչարանս ինչ վասն Քրիստոսի տեսանիցեն եւ 'ի կապանս. մեծ համարձակութիւն տայ այն մեզ, առաւել խրախոյս։ Ոչ վասն այնր ինչ լաւ են կապանքն զի արքայութեան առիթ լինիցին, այլ զի վասն Քրիստոսի համանիցէ 'ի կապանս մտանել։ Ոչ յայն սակս երանելի համարիմ զկապեալսն զի յերկինս տանիցին զմեզ, այլ զի վասն տեառն իցէ կապանքն։

Ո՛րչափ ինչ պարծանք իցեն զի վասն Քրիստոսի կապեցաւ, քան զիշխանութիւն, քան զպատիւ, որպիսի պայծառութիւն։ Կամէի հանապազ զայսմանէ եւեթ ճառել. կամէի և զշղթայսն եւեթ ածել ընդ բերանս. թէպէտ և որդեակք զրկեցայ, զանց բանիւք և թղթով պատմէի շղթայսն զգուշոյս. « Հարժեցաւ, ասէ, բանտն ուր Պաւղոս կապեալն էր, և ամենեցուն կապանքն լուծան »։ Տեսանես զկապանացն զօրութիւն զիարդ զկապանսն լուծանէին։ Որպէս և մահն տեառն զմահ եսպան, նոյնպէս և կապանքն Պաւղոսի զկապեալսն արձակեցին, զբանտն շարժեցին, զդրունսն բացին։ Թէպէտ և չիցէ այն գործ կապանաց, այլ նորին հակառակն՝ ակնոդ ունել զգուշութեամբ պահել զկապեալսն, ոչ զդրունսն բանալ և զորմն ճակել. չէ այն գործ կապանաց, բայց միայն որ վասն Քրիստոսի կապանքն իցեն՝ կարող են զայն առնել։ « Ընկեց, ասէ, անկաւ առաջի Պաւղոսի և Շիղայի բանտապահն »։ Այլ և ոչ զայն ինչ առնեն լոկ կապանքն եթէ զկապիչսն յոտս կապելոցն ածիցեն. այլ զնորին հակառակն զառաս ընդ նոցա ձեռանս առնեն։ Իսկ անդ աւանիկ արձակն 'ի կապելոցն յոտս եկն անկաւ. և որ կապեացն՝ զկապեալն աղաչէր լուծանել յերկիւղէն։ Մ՛չ դու կապեցեր և 'ի ներքին բանտն արկեր և 'ի կոճեղ պնդեցեր զոտսն. արդ զի՞ դողաս և զի՞ խռովեալ ես և զի՞ լաս և գեր գործես և սուր առեալ զինքնին կամիս երթալ։ Ոչ զաք, ասէ, այսպիսի կապեցի. չգիտէի զչափ զօրութեան Քրիստոսի կապելոցն։ Ո՜ հինչ խօսիս. զերկինս բանայր իշխանութիւն աւրն, և զբանտն չկարէին բանալ. զդիւաց կապանս արձակէին, և երկաթք կարէին գերիվերոյ լինել զոցա։ Զգիտես զարդ, տեղեակ չես. վասն այնորիկ ներելոյ և թողութեան եղեր արժանի։ Պաւղոս է կապեալդ, յորմէ հրեշտակք ակնածեն. Պաւղոս է, որոյ վարշամակն և թաշկինակք զդևս հալածեն, զցաւս փախստականս առնեն։ Թէպէտ և կարի իսկ քան զերկաթի և զադամանդեայ կապանս անլոյծ են դիւացն կապանքն, զի նոքա զոգիս կապեն և սոքա զմարմինս. որ զոգիս կապեալս արձակէ, զմարմինս կապեալս չկարասցէ՞ արձակել. որ դիւաց զանհնարին կապանս խզէ, զերկաթիսն չկարիցէ՞ 'ի բաց թօթափել. որ հանդերձիւքն զկապանս դիւացն

զշղթայիցն բառնալ և զկապանացն արձակել, մանաւանդ զի բանտապահն ևս 'ի քուն կայր։ Այլ փոխանակ երկաթի կապանացն կապանք քնոյն ալին պահէին զնոսա. որպէս զի և սքանչելիքն լինիցին և բանտապանին վնաս ոչ լինիցի, որ մերձն էր փրկութեանն հասանել։ Այլ այլ ազգ ևս. և զկալանաւորս ցայգ քաջ պնդեն 'ի կապանս, քան ցերեկ. և անդ էր տեսանել արձակեալ 'ի շղթայից և կապեալ քնով։ Եթէ զցերեկ լեալ էին իրքն, բազում ինչ խառնակութիւն լինէր։

Ընդէ՞ր շարժեցաւ տունն. զի բանտապանն զարթիցի և տեսանիցէ զսքանչելիսն, քանզի նա միայն արժանի էր փրկութեանն։ Բայց դու տես զՔրիստոսի շնորհացն զառաւելութիւն. հանդերձ Պաւղոսի կապանօքն և զշնորհսն իւր պարտ է յիշել, թէ և այն ևս իւր շնորհացն էր։ Զի են ոմանք որ բամբասեն թէ ընդէ՞ր ապրեցաւ բանտապանն. և վասն որոյ պարտ էր զարմանալ ընդ իւր մարդասիրութիւնն, նովին և պարսաւեն ևս։ Այլ չեն ինչ ընդ այն զարմանք. քանզի և հիւանդքն այնպիսի իմն են որք և զկերակուրսն որ կերակրէ՝ չար համարին, ընդ որ զարմանալն պարտ էր, և զմեղքն դառն կոչեն. և կուրացեալքն որով պարտէին լուսաւորել, այնու խաւարին, և այն ոչ յիրացն ինչ բնութենէ, այլ 'ի նոցա հիւանդութենէ և որ չիցենն կարող զնոսա 'ի լաւն 'ի կիր արկանել։ Այլ արդ զի՞նչ ասիցեմ. ընդ որ պարտն էր զարմանալ, զի զոր յանհնարին չարիսն կորուսեալ էր՝ կանգնեցին և 'ի լաւութիւն ածին, նոքա զայն բամբասեն և պարսաւեն։ Այլ ընդ այն է զարմանալ թէ զիարդ չհամարեցաւ զնոսա կախարդս և մեքենաւորս[1], և ևս չար կալաւ պնդեաց և նեղեաց։ Քանզի բազում ինչ էր ձեռնտու արանցն. նախ զի լուաւ թէ զԱծ օրհնէին. և երկրորդ անգամ զի չփախեան 'ի նմանէն, այլ և զնա ևս արգելին, զի մի զանձն սպանանիցէ։ Այլ յայտ է զի թէ վասն անձանց ինչ առնէին, ապա ոչ կային և մնային անդէն 'ի բանտին, այլ նախ զանձինս ապրեցուցանէին։ Բազում ինչ ցուցին մարդասիրութիւն. զայն որ կապեաց զնոսա չարաչար կապանօք՝ արգելին զի մի անձին առնիցէ վնաս։ Կապեցեր զմեզ, զի դու լուծանիցիս յան-

1 Միւսն Ջնեփէնոյաւորս. նոյնպէս և զինի։

հնարին կապանացն ։ Ի կապանս մեղաց իւրոց, ասէ, շաղի իւրաքանչիւր ոք ։ Այն անխծից կապանք են, և այս երանութեան և բազում աղօթից արժանի. և զի այն կապանք լուծանիցին, յայտնի կապանք յայտ արարին ։ Տեսե՞ր զկապեալսդ երկաթի կապանօք լուծեալս. տեսցես և զքո զանձնդ արձակեալ յանհնարին կապանաց ։ Զայս կապանս զկալանաւորացն ասեմ և ոչ զՊաւղոսի. զի յայն կապանս զնոսա մեղաց կապանացն էր ածեալ ։ Արկին կապանօքն կապեալ էին 'ի բանտին, նա և բանտապանն իսկ կապեալ էր. նոքա երկաթոյն և մեղացն կապանօք կապեալ էին, և սա մեղացն կապանօք ։ Արձակեաց զնոսա Պաւղոս 'ի սորա հաստատութիւն, քանզի էին նոցա կապանք յայտնիք և սորայս 'ի ծածուկ ։

Այնպէս և Քրիստոս արար, մանաւանդ եթէ անդէն շրջանակաւ. զի անդ երկու անդամալուծութիւնք էին, մի մեղաց և միւսն մարմնոյն ։ Իսկ արդ զինչ ասիցէ. "Քաջալերեա, ասէ, որդեակ. թողեալ են մեղք քո" ։ Նախ 'ի սոցա անդամալուծութենէն զերծոյց, և ապա 'ի միւսն եկն և հաստատեաց. "Իսկ ոմանք 'ի դպրրացն ասէին ընդ միտս թէ հայհոյէ դա ։ Գիտաց Յիսուս զխորհուրդս նոցա և ասէ. ընդէ՞ր խորհիք չարութիւն 'ի սիրտս ձեր. զինչ դիւրագոյն է ասել թողեալ են մեղք քո, թէ ասել արի և գնա. զի գիտասջիք եթէ իշխանութիւն ունի որդի մարդոյ. ասէ ցանդամալոյծն՝ արի առ զմահիճս քո և գնա 'ի տուն քո" ։ Իսկ հաստատէր իմանալին յերևելոյն, 'ի մարմնաւորէն շընչականն. այլ նախ զշնչականն հաստատեաց ։ Իսկ ընդէ՞ր արար զայն այնպէս. զի կատարեսցի բանն որ ասացաւ՝ եթէ "Ծառայ չար, 'ի բերանոյ քումմէ դատեցայց ըզքեզ" ։ Զի՞նչ ասացին նոքա. "Ոչ ոք կարէ, ասէ, թողուլ զմեղս, բայց միայն մի Աստուած". ոչ հրեշտակ և ոչ հրեշտակապետ և ոչ այլ ինչ արարած զօրութիւն ունի ։ Ահաւադիկ դուք ձեզէն խոստացայք ։ Իսկ արդ զինչ պարտ է ասել. ո՞չ ապաքէն զայն, եթէ ցուցանիցեմ զի կարող եմ թողուլ զմեղս՝ յայտ է թէ ա̄ծ եմ ։ Բայց չասաց այդպէս, այլ զինչ. "Զի գիտասջիք, ասէ, զի իշխանութիւն ունի որդի մարդոյ յերկրի թողուլ զմեղս. յայնժամ ասէ ցանդամալոյծն՝ արի առ զմահիճս քո և գնա 'ի տուն քո" ։ Յորժամ ասէ զըզ-

ժուտրադոյթն առնիցեմ, վասն զիւրաքանչիւրն և ոչ մի ինչ պատճառք 'ի միջի մնան և ոչ հակառակութիւն: Այսպէս այնպիսի նախ զխնամակալսն արար, քանզի բազումք էին որ հակառակ ունէին: Իսկ առա յերեւելոյն յիմանալին տարաւ զնա Պօղոս. քանզի չէին թեթև ինչ իւրաց հաւատքն: Յետոյ զկապեալսն, և չետես ինչ 'ի նոսա յօռութիւն, և ոչ լուաւ ինչ մենքենաւոր. զայն և եթ ետես զի զտեղ փառաւորէին, և առ նա մարդասիրութիւն ցուցանէին. չխնդրէին զվրէժ անձանց, թէպէտ և կարող էին: Մարթ էր և զանձինս և զկալանաւորսն հանել և առնուլ փախչել. և եթէ ոչ զկալանաւորսն, գոնեա զանձինս. այլ չարարին զայն, որպէս զի ոչ միայն 'ի սքանչելեացն, այլ զի և[1] 'ի վարուցն պատկառեցին: Ո՛րքան աղաղակեաց: Ասէ՝ 'ի ձայն մեծ և ասէ, մի ինչ գործեր չար ընդ անձին, զի ամենեքեան աստ եմք: Տեսանե՞ս զանամբարտաւանութիւնն և զչամբարտաւանութիւնն: Զառաց թէ վասն մեր եղև այս, այլ որպէս թէ մի ոք 'ի կալանաւորացն իցէ՝ աստ եմք, ասէ, ամենեքեան: Թէպէտ և ոչ յառաջ քան զայն և ոչ վասն սքանչելեացն լուծին զանձինս, սակայն լուել մարթ էր նոցա, և զամենեսեան զկալանաւորսն արձակել: Այլ թէ լուեալ էր և եթէ չէր ուժգին բարբառով կալեալ ըզձեռս նորա, հանէր զսուրն և ընդ իւր փողսն անցուցանէր. և վասն այնորիկ աղաղակեաց, զի 'ի ներքին բանտն էր արկեալ: Անձամբ արարեր, ասէ, և մի ումեք մեղդներ, զի 'ի ներքին բանտս արկեր զմեզ ոչ 'ի մշտաց տարրեցուցանելոյ եաք զքեզ: Այլ չարարին ինչ այնմ համգոյն զոր նայն գործեաց. զի եթէ նորա մեռեալ էր, ամենեքեան փախչէին: Յետոյ եթէ լաւ համարեցան զանձինս 'ի կապանս, և ոչ զի նա կորնչիցի. և 'ի միտ առ՝ եթէ կախարդք էին, ապա զանձինս արձակէին և հանէին 'ի բանտէս. քանզի 'ի դէպ էր եթէ բազումք և այնպիսիք իսկ էին 'ի ներքս: Այլ այլ ազգ ևս. բազում անգամ բազում կախարդս էարկ 'ի բանտն, և չցուցին ինչ այնպիսի գործ: Այլ ընդ այն իսկ զարմացաւ. կախարդ ոք ոչ եթէ շարժեր զհիմունս և զաղ-

1 Այսպէս յոյնն. իսկ մեր օրինակքն այլ ընդ Ն բարբառն (Թերևս բարբառն) խաղէցին զնա:

'Թուցանէր զբանտապանն և դժուարին գործէր զփախուստն ։

Նայց տեսցուք և զհաւատս բանտապետին ։ Խընդրեաց, ասէ, լոյս և դիմեաց 'ի ներքս ․ զահի հարաւ, անկաւ առ ոտսն Պաւղոսի և Շիղայի ․ ած եհան զնոսա արտաքս և ասէ, տեարք զինչ պարտ է ինձ առնել զի ապրեցայց ։ Եւ նոքա ասեն ․ հաւատա 'ի տէր Յիսուս Քրիստոս և կեցցես դու և տուն քո ։ Նայս ոչ կախարդաց, ասէ, հրաման է և ոչ այնպիսի ինչ հայհոյութիւնք և ոչ դիւաց յիշատակ ։ Տես զիարդ էր արժանի ապրելոյ ։ Ետես զաքանչելիսն, և զերծեալ յահէն չմոռանայր զօգուտսն, այլ այնչափ ձգունս վասն փրկութեան ոգւոցն փոյթ յանձին ունէր ․ որպէս պարտ էր՝ առ վարդապետսն մերձենայր ։ Անկաւ յոտս նոցա և խօսեցաւ ընդ նոսա, ասէ, զբանն տեառն և ընդ ամենայն ընտանիս նորա ․ և էառ զնոսա անդէն 'ի ժամու գիշերոյն, լուաց 'ի վիրացն, և մկրտեցաւ ինքն և ամենայն ընտանիքն իւր առժամայն ։ Տեսանես զջերմութիւնն ․ չյապաղեաց չասաց՝ թող այգ լինիցի, տեսցուք հանդէս արասցուք ․ այլ բազում ջերմութեամբ ինքն և ամենայն տուն նորա մկրտեցաւ ։ Նայլ ոչ որպէս այժմ չառնեն փոյթ բազումք զծառայից և զկանանց և զորդւոց թէ երախայք իցեն ։ Եղուք, աղաչեմ, իբրև ըզբանտապանն ․ ոչ զի 'ի նորա աշտիճանն իջանիցէք 'ի ձերմէ պատուոյդ, այլ զի զնորա կամսն ունիցիք ։ Ոչ ինչ օգուտ 'ի պատուոյն գործիցի յորժամ կամքն խօթ. իցեն ։ Որ[1] անագորոյն էր, անողորմ, ընդ բիւր չարիս եկեալ, որ հանապազ զայն ընթեռնոյր և այնմ միայն սկէր՝ եղև յանկարծակի մարդասէր խնամակալ ․ “Լըւաց, ասէ, զնոսա 'ի վիրացն,, ։

Տես և զՊաւղոսի ջերմութիւնն ․ կապեալ տանջեալ վէրս առեալ և չդադարէր յաւետարանելոյ ։ Ո՛վ երանելի շղթայք, որպիսի ինչ երկուեան երկնեցին զծայգն, որչափ որդիս ծնան ։ Եւ զնոցանէն 'ի դէպ ժամանակի է ասել՝ եթէ “զորս ծնայ 'ի կապանս իմ,, ։ Տեսանես զիարդ ցնծայ և զծնեալ որդիսն կամի այնու լուսաւորագոյն երևեցուցանել ։ Տեսանես որչափ առաւելութիւն

1 Օրինակն պակասէր Որ ․ էր ․ յաւելաք 'ի յունէն ։

է փառաց 'ի կապանացն. որ ոչ միայն զկաշկանդեալն, այլ և զնոսա որ 'ի ժամանակին 'ի նմանէ ծնան պայծառագոյնս առնէ։ Սեւին և աւելի ինչ որք 'ի Պաւղոսէ 'ի կապանսն ծնանէին. ոչ ըստ շնորհաց ինչ ասեմ, զի շընորհք նոյն են, և ոչ ըստ թողութեան, քանզի նոյն թողութիւն է, այլ զի անդէն 'ի սկզբան խրատիցին ուրախ լինել և քերկրել ընդ այնպիսի ինչ իրս։ Ի նմին ժամու, ասէ, գիշերոյն էառ զնոսա առ ինք և լուաց 'ի վիրացն և մկրտեցաւ ինքն հանդերձ ընտանեօքն։ Նատես իսկ և իսկ զպտուղն, զի ետ վաղվաղակի փոխարէն զմարմնաւորսն։ Տարաւ զնոսա 'ի տուն և եդ սեղան առաջի, և ցնծայր զի հանդերձ ամենայն տամբն հաւատաց յամ։ Նա ընդէր ոչ արդեօք որում 'ի բանալ դրաց բանտին՝ բացան դրունք երկնից։ Լուաց զվարդապետն և եդ սեղան առաջի և ուրախ եղև։ Մտին 'ի բանտն շղթայքն Պաւղոսի և գործեցին եկեղեցի։ Ամենայն ինչ յարդարեր անդ. մարմին Քրիստոսի բաշխեր և սեղան հոգևոր կազմէր, և երկունք և ծնունդ հոգևոր, ընդ որ հրեշտակք ուրախ լինին։ Միթէ 'ի զուր ինչ ասա՞ցի թէ բանտն առաւել պայծառագոյն է քան զերկինս. զի երկնից ուրախութեանն սա եղև պատճառք։ Եթէ վասն միոյ մեղաւորի դարձելոյ ուրախութիւն լինի յերկինս, և եթէ ուր երկու և երեք ժողովեալ լիցին յանուն նորա՝ անդ 'ի մէջ նոցա է Քրիստոս, ուր Շիղա և Պաւղոս և բանտապանն հանդերձ ամենայն ընտանեօքն իրովք և այնչափ հաւատք, որչափ ես առաւել։ Տես ըղսաստկութիւն հաւատոցն։ Բայց յայնմ բանտի այնչափ ինչ։

Բայց զմիւս ևս բանտն յիշեցից յորում Պետրոսն էր։ Բայց այսպիսի ինչ անդ չեղև. այլ էր մատնեալ չորից չորրորդաց զինուորաց պահել զնա։ Ոչ օրհնութիւն ասէր և ոչ հսկէր, այլ 'ի քուն կայր. ոչ գան արբեալ և ոչ վէրս յանձն առեալ, այլ անդ մեծ վիշտք էին։ Իսկ աստ ամենայն ինչ գործեցաւ, քանզի և տոկոսխս ինչ ետուն. իսկ անդ չև ևս. թէպէտ և վէրք ինչ չկսկծէին, այլ կասկած հանդերձեալոց ինչ իրաց տագնապէր զնա։ Տես և արդ զգքանչելիսն։ Ահաւասիկ, ասէ, հրեշտակն տեառն եկն եկաց 'ի վերայ և լոյս ծագեաց 'ի տանն, խթեաց զկողն Պետրոսի և ասէ ցնա՝

արի փողփողակի. և խիկ և խիկ թօթափեցան կապանքն 'ի ձեռաց նորա: Այնպէս զի մի կարծիցեն իրքն թէ լու-սոյն միայն ինչ իցեն, և զՊետրոս խաբեաց: Այլ արդ ոչ որք տեսանէր զլոյսն, բայց միայն նա, և կարծէր թէ տե-սիլ ինչ իցէ. զի այնպէս որք 'ի քունն կայցեն, չզգան զմեծ երախտիսն: Ապա, ասէ, ցնա հրեշտակն. ած զգօ-տի ընդ մէջ քո և արկ հողաթափս յոտս, և արար այն-պէս: Այլ ասէ ցնա. զգեցիր զհանդերձս քո և եկ զկնի իմ: Այլ ելեալ երթայր զհետ նորա, և ոչ գիտէր թէ արդարև ստոյգ իցէ որ ինչ լինիցի 'ի հրեշտակէն, քան-զի երազ տեսանել համարէր: Իբրև անցին ըստ առա-ջին պահն և ըստ երկրորդն և մտին ընդ դուռնն երկա-թի որ հանէր 'ի քաղաքն, որ ինքնին բացաւ նոցա: Այլ իբրև մտին անցին ընդ փողոց մի, և յանկարծակի հրեշ-տակն մեկնեցաւ 'ի նմանէ: Մինչեր այնպիսի ինչ չեղև անդ որպէս առ Պաւղոսիւն և Շիղայիւ: Զի նոքա լուծանելոց էին, վասն այնորիկ ոչ փախեան թէ այնպէս լուծանիցին. իսկ զերանելին Պետրոս 'ի մահ կամէին տանել:

Ուլ ոյն, ասեն, զարմանալի էր եթէ ելեալ և մտա-նեալ էր 'ի ձեռս թագաւորին և ապրէր 'ի վշտացն և չկրէր ինչ չարչարանս, և այնպէս և ոչ զինուորքն մե-ռանէին և ոչ վնոցա զպահպանչեացն ծածկէին: Մեծ խն-դիր կայ 'ի բանիս. զի զիւր ծառայն, ասեն, այլոց պատժովք ապրեցոյց և այլոց կորստեամբ: Նախ զայն ասասցուք՝ եթէ ոչ այլոց կորստեամբ կեցոյց զնա. երկ-րորդ անգամ[1] զի ոչ յիրացն տեսչութենէ եղև այն, այլ 'ի դատաւորին անիրաւութենէ: Աստուած այնպէս մատակարարեաց, ոչ միայն զի նոքա չկորնչիցին, այլ զի և սա ապրիցէ. որպէս և անդ բանտապանն: Զի սա ոչ 'ի լաւ անդր վարեցաւ սքանչելեօքն:

Իբրև այգ եղև, ասէ, էր խռովութիւն ոչ սակաւ 'ի մէջ զինուորացն զի՞ արդեօք Պետրոս եղև: Այլ տեսա զինչ արդեօք: Խնդիր խրացն անէր Հերովդէս. իբրև քննեաց, հրամայեաց զնոսա սպանանել: Այլ թէ չէր քըն-նեալ, գոյին ինչ խրատունք պատասխանի տալոյ. նա ա-ւանիկ սուաղի էւ ածել, պատուհասեաց, 'ի վերայ ե-

1 Գաղափար յօրինակին երկրորդ անգամ. յաւելու 'ի յունն:

հաս եթէ կապեալ կայր և բանտն փակեալ էր և բան-
տապահքն առաջի դրանցն կային . ոչ որմ փորեալ և ոչ
դուռն բացեալ, և ոչ այլ ինչ չարագործութեան հետք
և նշմարանք երևէին ։ Ապա էր անտի զարմանալ ընդ
ն̃յ զօրութիւնն, զի 'ի մէջ տագնապին զերծոյց եհան
զնա, և երկիր պապանձել նմա որ այնչափ զօրաւոր է, և
զնոսա 'ի բաց արձակել ։ Նա արդ զիա՞րդ . ա̃՞ծ ինչ պատ-
ճառք իցէ իրացն ։ Ո՛չ եթէ զորմ ծակեալ և հանեալ
էր զնա, թերևս կարծէր 'ի նոցա կեղծաւորութենէ
լեալ իրացն . իսկ եթէ ա̃ծ այնպէս յարդարեաց, զի ցու-
ցանիցէ եթէ ոչ 'ի նոցա ինչ չարագործութենէ է, այլ
յա̃ծեղէն զարմանագործութենէ էին իրքն, և արդ ըն-
դէ՞ր արդեօք այնպէս արար ։ Եթէ փախչել կամէր, շղ-
թայիւքն փախչէր . և եթէ տագնապաւ կամէր փախ-
չել, ոչ այնպէս յապահով զանձնայն կազմէր մինչև առա-
դալս ևս առնուլ, այլ հարկ էր թողուլ զկապանսն և
գնալ ։ Նա աւանիկ վասն այնորիկ ասէր ցնա հրեշտակն՝
թէ արկ զանդրալոդ յոտս, զի ուսանիցիս թէ ոչ փախըս-
տեամբ, այլ բազում հանդարտութեամբ անձնայն ինչ
վճարեցաւ ։ Կապեալ կայր 'ի մէջ երկուց զինուորաց,
ոչ այնչափ ինչ յապահով էր մինչև զշղթայսն լուծա-
նիցէ, և այն զի և նա ևս 'ի ներքնում բանտին էր ։ Ա-
պա ուրեմն ըստ անիրաւութեան դատաւորին եղեն պա-
տիժք պահապանացն ։ Իսկ ընդէ՞ր Հրէայքն չարարին
ինչ այնպէս ։ Նա և զմին ևս բանտ յիշեցի որ 'ի Հռոմ
էր, և զմիւսն որ 'ի Կեսարիա, և այս յԵրուսաղէմ .

Արդ լուան, ասէ, քահանայապետքն և փարիսեցիքն
'ի նոցանէ որ առաքեցանն հանել զՊետրոս 'ի բանտէն՝
թէ չգտաք զոք 'ի ներքս, այլ զդուրսն փակեալ և զպա-
հապանսն առաջի դրանցն պատրաստ, ընդէ՞ր ոչ սպանին
զպահապանսն, այլ զի հիանային վասն նոցա թէ զինչ
արդեօք գործք գործեցան ։ Եթէ որ կարին իսկ մահուն
պարտաւորին նոցա՝ ոչ ինչ այնպիսի խնայեցան, որչափ ևս
առաւել զու որ զանձնայն ինչ վասն նոցա միայն պաշ-
տօն առնլոյ գործեցեր ։ Վասն այնորիկ դարձաւ 'ի նա
դատաստանն վաղվաղակի ։ Եթէ վասն այսր մեղադիր
լինիս ա̃յ, ապա և վասն այնց մեղադիր լեր որ 'ի Ճանա-
պարհսն կոտորեցին, և վասն այլոց բազմաց որ յանի-
րաւի մեռանիցին յընկերաց, և վասն մանկանցն որ 'ի

Քրիստոսի սակս կատարեցան։ Քանզի և նոցա որպէս դու համարիս՝ Քրիստոս եղև պատճառք. բայց ոչ Քրիստոս, այլ մոլութիւն և բռնութիւն հօրն Հերովդէ։ Ապա թէ ասիցես՝ ընդէ՞ր ոչ 'ի ձեռացն իսկ Հերովդի յափշտակեաց զնոսա, և զայն կարէր առնել, այլ ոչ ինչ օգտէին աստի։ Բազում անգամ և Քրիստոս զերծաւ 'ի ձեռաց նոցա, մինչ օգո՞ւտ ինչ եղև այն ապախտաւորացն։ Բայց յայսմանէ բազում ինչ շահ լինի հաւատացելոց։ Յորժամ յիշատակք գործելոցն լինիցին, և թշնամիքն ևս վկայիցեն իրացն, առանց կարծեաց ինչ իրիք է վկայութիւնն։ Զոր օրինակ անդ ոչ այլ ուստեք ըմբերանեցան, այլ 'ի գալոյ և 'ի պատմելոյ զիրսն գործեալս, նոյնպէս[1] և աստ։ Ընդէ՞ր բանտապանն այնպէս ինչ չարար։ Թէպէտ և ոչ ինչ նուազագոյն քան զստրայսն Հերովդիքն էին։ Զի տեսանել զբանալ դրացըն զարմանալոյ աղագս ոչ ինչ ընդհատ էր յուսանելոյն եթէ գրոցն փակելովք եւ կապեալն. թէպէտ և այս ցնորք ինչ առաջօք թուէին, և այն ոչ ինչ այնպիսի, քանզի հաւաստեաւ իրքն պատմէին։ Ապա ուրեմն թէ և սա այնպէս անզգամ ոք պատահեալ էր, սպանանէր զՊաւղոս, որպէս և նա զզինուորսն. այլ չէր այնպիսի։ Ապա թէ ասիցէ ոք՝ թէ ընդէր և մանկտւոյն թոյլ ետ Ած կոտորել, եթէ զայն յուզիցեմք, յերկայն ճառս մխիմք. զոր 'ի սկզբանն պարտ էր ասել և ոչ այժմ։ Բայց այժմ յոյժ փոհացողք լեալ զՊաւղոսէ, դադարեցուսցուք ըզբանս, զի այսչափ բարութեանց եղև մեզ պատճառք։

Աղաչեմ զձեզ, մի միայն չլինել դժկամակ ընդ չարչարանսն որ վասն Քրիստոսի կրիցէք, այլ ուրախ լինել որպէս առաքեալն պարծէր և ասէր. "Ուրախութեամբ պարծեցայց ընդ նեղութիւնս իմ,,։ Եւ վասն այնորիկ լուաւ՝ թէ շատ են քեզ շնորհք իմ։ Պաւղոս կատարեալն պարծի, և դու մեծութեամբ մեծամտես. առաքեալքն ուրախ էին զի արժանի եղեն տանջելոյ, և դու հանգիստ և փափկութիւնս խնդրես. և զիարդ կամիցիս նոցին՝ որում նոքայն հասին՝ հասանել որ զնոցին ընդդէմ զճանապարհս գնաս։ "Եւ այժմ, ասէ, երթամ յԵրուսաղէմ կապեալ հոգւովս, և զինչ անդ ան-

[1] Յաւելու 'ի յունէին նոյնպէս և աստ, որ 'ի մերումն չկայր։

ցանկիցէ ընդ իս՝ զայն ոչ գիտեմ. բայց միայն զի Հոգին յամենայն քաղաքս վկայէ ինձ թէ կապանք և նեղութիւնք մնան ինձ»: Այլ զի երթիցես եթէ կապանք և նեղութիւնք պահիցին քեզ: Ամէն իրի իսկ, ասէ, թէ կապեցայց վասն Քրիստոսի, զի մեռայց յաղագս նորա. ոչ միայն կապելոյ, այլ և մեռանելոյ պատրաստ եմ վասն անուան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զեր ոք քան զայն ոգի երանելի. տես և պարծի. կապանօքն և նեղութեամբ, շղթայիւքն և տանջանօք: «Այս, ասէ, զերաշխէպս տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի մարմնի իմում կրեմ», իբրև զյաղթութեան ինչ մեծ: Այլ զարձեալ եթէ «Վասն Իսրայելի կրեմ զշղթայս». և դարձեալ եթէ որում բարեխօսեմ շղթայիւքս: Օ՜ ինչ իցէ այդ. չամաչիցեմ չերկնչիցիս զի ընդ ամենայն տիեզերս կապանօքդ շրջիս. չկարծիցես թէ գուցէ տկարութեան ոք պարսաւանս դնիցէ նմին քում, գուցէ յայն սակս ոք չմերձենայցէ: Զեն, ասէ, այնպիսի կապանքս իմ. զի գիտէն և յարքունիսն պայծառագոյն երևել. որպէս զի և կապանացս իմոց, ասէ, յայտնի լինել յամենայն Հրապարակս, և բազումք յեղբարց 'ի տէր ոմք յուսացեալ են 'ի կապանս իմ, առաւել իշխել աներկիւղ խօսել զբանն: Տեսանե՞ս զկապանացն զօրութիւն, զի ևս առաւել են քան զմեռելոցն յարութիւն. կապեալ, ասէ, տեսին զիս, և առաւել համարձակեցան: Ուր կապանք իցեն, հարկ է անդ և մեծ ինչ լինել. ուր նեղութիւնն իցէ, 'ի դէպ է թէ և փրկութիւն իցէ անդ, 'ի ձահ է թէ և հանգիստ իցէ, ընթանս է թէ և մեծամեծ ինչ ուղղութիւնք: Օ՜ ի սատանայ յորժամ կիցս ընկենուցու, յայնժամ վիրաւորի. և յորժամ կապիցէ զծառայսն նոյ, յայնժամ առաւել աճէ բանն: Այլ տես զի ամենայն ուրեք այնպէս իսկ լինի: Կապեցաւ, և 'ի բանտին զայնպիսի գործս գործեաց. «Ընդէ՞ն, ասէ, 'ի կապանս իմ»: Կապեցաւ և 'ի Հռոմ և զբազումս յորդորէր. ոչ ինքն միայն համարձակէր, այլ և այլքն վասն նորա: Կապեցաւ և յԵրուսաղէմ. և մինչդեռ 'ի կապանսն էր, Հրապարակախօս լեալ զարմացուցանէր զթագաւորն, և զիշխանն ահաբեկ առնէր: Օ՜ ահի Հարաւ, ասէ, և արձակեաց զնա. և ոչ համարէր անօթ 'ի կապելոյն ուսանել վասն հանդերձելոցն որ կապեացն զնա: Կապեալ

կոչեցեալ էր արտաքս, նոյնպէս և ոչ երեք մանկունքն չելլին մինչ որ էարկ զնոսա հրամայեաց ելանել։ Այլ առաւել զինչ ուսանիցիմք։ Մ՚ի մեղէն փութալ երթալ առաջի թագաւորաց և իշխանաց, և մի անձամբ ստիպել մտանել ՚ի նեղութիւնս. այլ յորժամ յայլոց ՚ի վերայ գայցեն՝ կալ և ժուժկալել, և յորժամ զրաւ լինիցի՝ մի յամել անդէն։ Նանտապանն եկն անկաւ առ ոտսն, քանզի մտանել կամէր ուր սուրբքն էին. և նա առ դուռն հնոցին եկաց և չիշխէր մերձենալ ՚ի բանտն զոր հրոյն կազմեաց նոցա։ Այլ մի՛տ դիր իրացն. սա ասէ՝ տեարք, զինչ պարտ է ինձ առնել զի ապրեցայց։ Իսկ նա ոչ այնչափ ինչ խոնարհութեամբ, բայց սակայն և ոչ նուաղագոյն ինչ քան զայն. քանզի յաղերս անկեալ առնէր ողոքանօք. Սեդրաք, Միսաք և Աբեդնագով ծառայք ա՟յ բարձրելոյ, եկայք ելէք արտաքս։ Ո՜վ խո՟րդ եղանիցեն, ով քաջ արանցդ. կապեալս ընկեցեր ՚ի ներքս, ՚ի հուրն այնչափ ժամս յամեցին. եթէ աղամանդդեայք եղեալ էին և կամ ՚ի քրէական ինչ նիւթոց, մինչ զայն ամենայն օրհնութիւնս ասէին՝ չապառէին. այլ յայն սակս ապրեցան զի օրհնէին։ Պատկառեաց ՚ի յօժարութենէ նոցա հուրն, յետոյ և ՚ի զքանչելի օրհնութեանցն ակնածեաց։ Ո՜վ խո՟րդ կոչիցես արտաքս։ Յառաջագոյն, ասէ, ասացի թէ ծառայքդ ա՟յ բարձրելոյ, քանզի ա՟յ ծառայից ամենայն ինչ հնարաւոր է. եթէ մարդկան ծառայք ՚ի տերանց ինչ իրս ոչ սակաւ ինչ ընդհատ ՚ի տերանցն հրամանս տան, որչափ ևս առաւել ա՟յ ծառայքն։ Աղերսիւ կոչեաց արտաքս. գիտէր թէ այնու առաւել կակղացուցանէր զնոսա։ Ո՜վ ծառայք ա՟յ կայցեն մնայցեն՝ մտին ՚ի հուրն, չթուէր ինչ նոցա քաղցր քան զայն բան։ Այլ թէ թագաւոր անգամ կոչեցեալ էր զնոսա և աշխարհաց տեարս, չթուէր նոցա այնպէս քաղցր զի ծառայս ա՟յ բարձրելոյ կոչեաց։ Այլ ընդ այն զի՛ զարմանայցես. զի մեծ քաղաքն որ զամենայն աշխարհն ընդ իւրեւ ունէր, և մեծամտեալ հըպարտացեալ ՚ի պատուում՝ որպէս թէ հասարակ աշխարհի իցէ, և մանաւանդ թէ ևս առաւել մեծ և առանց համեմատութեան մեծ, այլ քան զայնչափ իշխանութիւնս և պետութիւնս և թագաւորութիւնս զայն առաւել մեծարանս համարեալ Պաւղոսի, զոր՝ թէ "Պաւ-

զոա ծառայ Յիսուսի Քրիստոսի ,,: Ծառայքդ, ասէ, ա̃յ բարձրելոյ: Եթէ այնչափ փոյթ յանձին ունէին, ասէ, զի ծառայք ա̃յ էին, ապա և մեք այնու ողջախոհեցուք զնոսա:

Տես և զմանկանցն ազնուականութիւն. չցասեան չբարկացան չեղեն դիմադարձ, այլ ելին եկին արտաքս վաղվաղակի: Եթէ պատիժս ինչ համարէին 'ի հնոցն մտանել, թերևս զայրանային ինչ ընդ արկանելն. իսկ նոա աւանիկ ոչ ինչ այնպիսի, այլ որպէս թէ անդուստ իսկ յերկնից իջեալ՝ գային արտաքս յօժարութեամբ: Եւ զոր ինչ զարեգականէն ասէ մարգարէն՝ թէ "Իբրև փեսայ ելանէ յառագաստէ իւրմէ ,,, զնոյն թէ և զնոցանէ ոք ասիցէ՝ չմեղանչէ: Այլ քան զսա որ ցանկ այսպէս ելանէ, նոքա յայնժամ ևս պայծառագոյնս ելանէին: Սա որ այժմն ելանէ զաշխարհս լուսաւորէ երևելի լուսովս, և նոքա իմանալի լուսովն լուսաւորեցին զտիեզերս ամենայն: Զի վասն նոցա առաքեաց վաղվաղակի թագաւորն հրամանս այսպիսի բանիւք. Հաճոյ եղև, ասէ, առաջի իմ, զնշանս և զարուեստս զոր արար ա̃ծ՝ պատմել ձեզ, զի մեծամեծք և զօրաւորք են: Ապա ուրեմն լուսաւորագոյնք ելին ծագել զպայծառագոյն ճառագայթսն անդէն զտեղեօքն. մանաւանդ թէ ընդ բնաւ իսկ տարածեցան արքունի հրովարտակօքն, և փարատեցին զխաւարն որ ընդ համօր տարածեալ մածեալ կայր: Ելէք, ասէ, և եկայք արտաքս առ իս: Եւ չիշխեաց շիջուցանել զհնոցն, այլ այնու ևս առաւել պատուեաց զնոսա հաւատալ ամենայն ումեք թէ կարող են ոչ միայն 'ի ներքս անարատս շրջել, այլ մինչդեռ բորբոքեալ վառեալ իցէ հնոցն՝ արտաքս ելանել:

Տեսցուք, եթէ կամիք, և զբանտապանին բանս: "Տեարք, ասէ, զի՞նչ պարտ է առնել ինձ զի ապրեցայց ,,: Զի՞նչ այլ ինչ քան զայն բարբառ կայր քաղցր, որ զհրեշտակս բերկրէր և զհրեշտակապետս ուրախ առնէր. զի զայն բարբառ լսիցէ, և ծառայ ևս ա̃յ եղև և միածնին: Զնոյն բարբառ և առ Պետրոսի ասէին զառաջինն հաւատացեալքն՝ թէ զի՞նչ արասցուք և կեցցուք. և նա ասէ՝ հաւատացէք և մկրտեսջիք: Եւ 'ի դեհեն ևս խնդալով երթայր Պաւղոս, թէ միայն զայս բարբառ լուեալ էր 'ի հրէից. քանզի այնպէս ցանկացեալ

դայծառագոյն, այլ երկոքեան զոյգ հաւասար[1] օգտեցան։ Բայց որպէս ասացի իսկ՝ եթէ յորժամ 'ի նեղութիւնս են սուրբքն, յայնժամ առաւել յորդորեն. յորժամ 'ի կապանս իցեն, յայնժամ առաւել առաքինանան. վասն Քրիստոսի ինչ չարչարանս կրել՝ քան զամենայն մխիթարութիւնս առաւել քաղցր է։

Ակամք զի և այլ բանս յիշեցուցանեմ ձեզ, և յայսմ շղթայից յայն բանս փոխիցուք։ Զո՞ր կամիցիք, զԵրեմիայն եթէ զՅովսեփայն եթէ զՅովհաննու։ Շնորհ ունիմ Պաւղոսի կապանացն, որչափ բանս եբաց բանիս։ Այլ թերևս զՅովհաննուն կամիցիք։ Կապեցաւ և նա երբեմն վասն Քրիստոսի և վասն այ. օրինացն. մի՞թէ զատարկ ինչ կայր մինչ 'ի բանտին էր. ո՞չ 'ի բանտէն առաքեաց զաշակերտսն իւր թէ "Երթայք ասացէք ցՔրիստոս դու՞ ես որ գալոց ես, թէ այլում ակն ունիցիմք"։ Թէպէտ և 'ի բանտի էր, ուսուցանէր և չհեղգայր։ Իսկ Երեմիա ո՞չ ապաքէն 'ի բանտին մարգարէանայր վասն ապրեստանացն։ Իսկ Յովսէփ ո՞չ ապաքէն զերեքտասան ամ եկաց 'ի բանտին. մի՞թէ անփոյթ ինչ արար զառաքինութենէն։ Զմիւսոյն ես որ կապեցաւ ասասցուք և զազարեցուսցուք զնանս. Կապեցաւ և տէրն մեր, որ զամենայն տիեզերս ելոյծ 'ի մեղաց կապանաց։ Կապեցան ձեռք նորա, որ բիւրապատիկ բարութիւնս արարին. "Կապեցին, զնա ասէ, և ածին առ Կայիափա"։ Կապեցաւ որ այնչափ զքանչելիս արար։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Եւ մեք խնայեալ զայս ամենայն, թէպէտ և 'ի կապանս հաստանիցէ մնալ՝ մի երբէք տրտմեսցուք, այլ ուրախ լիցուք. և եթէ այլ կապեալք իցեն, ընդ նոսին կապեսցուք մտօք։ Տեսանե՞ս որչափ բարութիւք են կապանքն։ Զայս ամենայն խնայեալ զոհասցուք զայ 'ի վերայ ամենայնի 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր, միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Միւսն հաւասար։

# ՃԱՌ ԻՆՆԵՐՈՐԴ

"Աղաչեմ զձեզ ես որ կապեալս եմ 'ի տէր, արժանի գնալ ձեզ կոչմանն յոր կոչեցարուք, ամենայն խոնարհութեամբ և հեզութեամբ և հանդարտութեամբ երկայնմտութեամբ անսալ միմեանց սիրով, փութալ պահել զմիաբանութիւն հոգւոյն 'ի հաստատութիւն խաղաղութեան":

Ցուցանէ առաւել զօրութիւն կապանացն Պաւղոսի, քաջ 'ի բաց պայծառագոյն քան զնշանսն: Այլ ոչ վայրապար ինչ, որպէս թուի ինձ, զայս առաջի արկանիցէ, և ոչ 'ի զուր և ընդվայր, այլ զի պատկառեցուցանիցէ: "Արժանի, ասէ, գնալ ձեզ կոչմանն յոր կոչեցարուք". զիա՞րդ. "ամենայն խոնարհութեամբ հեզութեամբ և հանդարտութեամբ և երկայնմտութեամբ անսալ միմեանց սիրով": Ոչ վայրապար ինչ մտանել 'ի կապանս լաւ իցէ, այլ վասն Քրիստոսի, քանզի ասէ՝ թէ 'ի տէր, որ է վասն տեառն. չիք ինչ այնր զուգական: Պարծեալ այլուր ձգեն զմեզ 'ի ճառս որ առաջի կայ՝ շղթայքն Պաւղոսի և կորզեն 'ի մի կողմն, և դիմադարձ լինել չկարեմք, այլ երթամք զկնի՝ կամօք հաճեալք և հաւանեալք, և աղօթս ևս առնեմք: Այլ երանի թէ ցանկ իսկ վասն կապանացն Պաւղոսի հասանէր խօսել. բայց մի՛ ումեք ձանձրանալ, քանզի և այլ ինչ խնդիր անկաւ 'ի միտս: Մինչդեռ զիրաւանց պատասխանի տայր առաջի Ագրիպպեայ՝ թէ "Աղօթս առնեմ առ Ած և փոքու և մեծաւ, ոչ միայն զքեզ, այլ և զամենեսին որ լսեն ինձ այսօր լինել այսպիսի որպէս ես եմ բայց 'ի կապանացս", ոչ որպէս թէ վասն կապանացն չիցէ պարտ աղօթս առնել՝ զայն ասէր, քաւ լիցի. զի եթէ չըղձանալի ինչ իրք էին, ապա և պարծէր իսկ ոչ կապանօքն և բանտիւք և այլովք նեղութեամբք. Նա և գրէ իսկ թէ "Ախորժելով պարծեցայց ընդ տկարութիւնս": Այլ զի՞նչ. այն իսկ էր նշանակ առաւել համարելոյ ըզկապանսն: Որպէս առ Կորնթացիսն գրէր՝ եթէ "Աաթն

Ջամբեցի ձեզ և ոչ հաստատուն կերակուր, քանզի չև ես կարէք „, նոյնպէս և անդ քանզի չկարէին լսել և 'ի միտ առնուլ զկայծակնութիւնն և զզարդն և զօգուտն կապանացն. վասն այնորիկ ասէ՝ Թէ բայց 'ի կապանացս։ Իսկ զեբրայեցիսն ես յորդորէ կապել ընդ կապեալսն. նմին իրի և ինքն իսկ ուրախ էր ընդ կապանսն, զի կապէր և ընդ այլ կապեալսն փութայր 'ի բանտ մտանել։

Մեծ զօրութիւն է շղթայիցն Պաւղոսի, և բաւական ընդ ամենայնի այնպիսի տեսիլ՝ կապեալ տեսանել զՊաւղոս և յորժամ 'ի բանտէ ելանիցէ. կապեալ տեսանել և յորժամ 'ի տան նստիցի քան զորպիսի ցանկութիւն չիցէ տեսանել, ընդ որպիսի ինչ իրաց կարիցեմ կշռել զիրս։ Զիցէ տեսեալ զԹագաւորս և զհիւպատոս կառօք և երիվարօք ելեալ 'ի Ձեմելիս, ոսկեով և մարգարտով զարդարեալ, և զսպասաւորսն ևս յուկի համակեալս ոսկետեգ գեղարդամբք, ոսկեզօծ վահանօք, կուռ ոսկի գմբէթիւք, ոսկեհուռ հանդերձիւք, ոսկեսանձ երիվարօք, համակ ոսկի վարաւանդօք և ապարդմօք. զի՞նչ ինչ վայելուչ քան զայն տեսիլ կայցէ։ Բայց քան զամենայն բազում անգամ մի անգամ միայն ընձանայի զՊաւղոս տեսանել 'ի բանտէ ելեալ կապանօք հանդերձ, քան զնոսա բիւր անգամ հանդերձ պէսպէս փառօքն և սպասաւորօքն։ Որչափ հրեշտակս կարծիցես առաջի երթեալ նորա մինչ ելանէր 'ի բանտէն։ Այլ զի ոչ ստեմ, 'ի հին ինչ պատմութենէն յայտնի արարից ձեզ։ Եղիշա մարգարէ, Թերևս գիտիցէք իսկ զայրն, մինչդեռ պատերազմ 'ի միջի էր իսրայէլացւոց Թագաւորին և Ասորւոց, նստէր 'ի տան. և զամենայն ինչ զոր նա 'ի սենեկի խորհէր ընդ իւրում խորհրրդականսն, սա 'ի մէջ բերէր և յայտնէր Թագաւորին իսրայէլացւոց, և չառնէր վաւերական զծածուկ խորհուրդսն Թագաւորին Ասորւոց, և չտայր յորոգայթսն զոր պատրաստէր՝ անկանել նոցա։ Եղէին իրքս այս ընդ Թագաւորն Ասորւոց. 'ի տարակուսի կայր, 'ի վարանս մտանէր Թէ ո՞վ իցէ որ զխորհուրդն 'ի վեր հանիցէ և զհնարսն զոր հնարի՝ ջրիցէ։ Այլ իբրև բազում ժամանակս այնպէս տարակուսէր, ապա եդ 'ի մտի խնդրել զպատճառն։ Եւ ցնա մի ոմն յիւրոց եկապաշտէիցն[1].

1 Միւսն յաւելուածով էխոնաց էկապաշտէիցն։

մարգարէ ասէ Եղիշա առաւն 'ի Շամրին նստի և չասաց կալ խորհրդոց քոց, արքայ. այլ զոր ինչ ասա խորհիս, նա անդ զամենայն 'ի վեր հանէ։ Զուեցաւ թագաւորին թէ ենհաս յիրացն վերայ և վճարիցէ ինչ. չկարէր ինչ քան զայն խօլութիւն։ Զորպէս և այնու իսկ պատրաստէր պատուել զայրն, զարմանալ և սքանչանալ թէ որպիսի զօրութիւն ունի, զի այնչափ հեռաստանք 'ի բացեայ նստի, և զոր ինչ նա 'ի սենեկի խորհի՝ զամենայն 'ի վեր հանէ և առանց ուրուք պատմելոյ ճանաչէ։ Նոյնպիսի ինչ չկարաց խորհել. այլ զայրացեալ, 'ի ցասման միայն եղեալ՝ հեծեալս և սպառազէնս գումարեաց երթալ ունել զմարգարէն։ Եւ Եղիշայի աշակերտ որ դեռ յարտաքին դրունս մարգարէութեան էր, ելեալ ետես այնպիսի իմն յայտնութեանց արժանի լեալ։ Եկին հասին զօրականք թագաւորին կալել զայրն, մանաւանդ թէ զմարգարէն իսկ։ Ո՛ կապանաց ճառեալ դարձեալ 'ի կապանս եկաք, քանզի այնպէս իմն բանս անցրէն 'ի նոյն շղթայակեալ պատի։ Տեսեալ աշակերտն բազում զօրականս. երկեաւ պախեաց տագնապեցաւ, ընթացաւ պատմել վարդապետին զաղէտսն զոր աղէտս իմն կարծէր դուշակել զիրաց ինչ յորմէ չկցէ հնար զերծանել։ Ուաղր սկսաւ առնել զնա մարգարէն, զի յորմէ չէր ինչ պարտ նմա երկնչել՝ երկնչէր. սկսաւ խրախոյս տալ։ Բայց նա քանզի թերակատար էր՝ չհաւանէր, այլ յաճախ պակուցեալ զերկիւն հայելի տարեալ նշմարէր։ Եւ արդ զինչ գործիցէ մարգարէն. տէր, ասէ, բաց զաչս մանկանս և տեսցէ զի ընդ մեզ բազումք են քան ընդ նոսա։ Եւ յանկարծակի ետես զլեառնն ամենայն ուր մարգարէն բնակէր՝ հրեղէն ձիովք հրեղէն կառօք հեծեալս լցեալ. և այն ոչ այլ ինչ էր եթէ ոչ հրեշտակաց բանակ։

Եթէ զԵղիշայիւ վասն միոյ ինչ իրաց այնչափ բանակք հրեշտակաց շուրջ պատէր, իսկ զՊաւղոսիւ որչափ ինչ։ Ո՛սոյն և մարգարէն Դաւիթ ասէր՝ թէ "Բանակ հրեշտակաց տեառն շուրջ զերկիւղածօք իւրովք". և դարձեալ թէ "Ի վերայ ձեռաց առցեն զքեզ, և մի գայթակղեսցի զքարի ոտն քո"։ Եւ զինչ ասիցեմ զհրեշտակաց, յորժամ իսկ տէրն ընդ նմա էր մինչ ելանէր 'ի բանտէն. քանզի ոչ եթէ Աբրահամու երեւէր և ընդ

տես չէր. ինքն իսկ խոստացաւ թէ "Ընդ ձեզ եմ զա-մենայն աւուրս մինչև 'ի կատարած աշխարհի". և դար-ձեալ երևեցաւ և ասէր. "Մ՛ի երկնչիր, այլ խօսեաց, զի ես ընդ քեզ եմ. և չիցէ ոք որ յաչս դնիցէ չարչա-րել զքեզ": Դարձեալ երազ ևս ցուցանէ նմա՝ թէ քա-ջալերեաց. որպէս վկայեցեր սոսա վասն իմ յԵրուսաղէմ, նոյնպէս պարտ է քեզ և 'ի Հռոմ վկայել: Հանապազ իսկ սուրբք զարմանալիք են և լի բազում շնորհօք, բայց առաւել յորժամ վասն Քրիստոսի կապիցին և յորժամ 'ի կապանս մտանիցեն: Զոր օրինակ զօրականին որ հա-նապազ իսկ ցանկալի է յորժամ զինուքն և կազմածով կրթիցի. բայց առաւել յայնժամ յորժամ 'ի ճակատ մտանիցէ, և երևել արարեալ առաջի թագաւորին զա-խոյեանն մղիցէ, նոյնպէս և զՊաւղոսէ զմտաւ ած. որ-պիսի ինչ տեսիլ էր զնա տեսանել մինչ կապանօքն ու-սուցանէր:

Ասացից և այլ ինչ որ այժմ 'ի միտս անկաւ: Երա-նելի վկայն Բաբիլաս եմուտ 'ի կապանս և նա վասն այնպիսի ինչ պատճառանաց յոր սակս և մարգարէն Յովհաննէս յանդիմանելոյ զանօրէն թագաւորն: Իբ-րև մօտ 'ի վախճանել էր երանելի վկայն, պատուիրեաց և զշղթայսն ընդ մարմնոյն դնել, կապեալ զմարմինն թաղել. և այժմ կան երկաթքն ընդ աճեանն. քանզի այնպէս կարևոր էր զութ կապանացն որ վասն Քրիս-տոսի էին: Ի շղթայս, ասէ, եմուտ անձն նորա. զՅովսէ-փայ ասէ մարգարէն: Եւ և կանայք իսկ բազումք ա-ռին զհանդէս այնպիսի կապանաց: Այլ զմեզ, ասեն, չկապէ ոք: Եւ ոչ ես զայն ինչ ասեմ մինչզի եւ չէ ժա-մանակ կապանաց: Մի՛ կապեր զձեռս և զոտս, այլ զմի-միտս: Են և այլ ինչ կապանք. զի որք այժմ չժուժայ-ցեն, այնմ տանիցին. և լուր Քրիստոսի. "Կապեցէք, ասէ, զդորա զոտս և զձեռս": Այլ մի լիցի զայնր կա-պանաց զփորձ առնուլ, բայց այսու կապանօք լնուլ զոր և Պաւղոս ասէր՝ եթէ "Ես որ կապեալս եմ 'ի Տէր":

"Արժանի, ասէ, գնալ ձեզ կոչմանն յոր կոչեցա-րուք": Զ՛ինչ իցէ կոչումնն. մարմին, ասէ, կոչեցա-րուք և գլուխ ունիք զՔրիստոս: Ընդ նմին, ասէ, յա-րոյց և ընդ նմին նստոյց զձեզ որ թշնամիքն էիք և բազ-մապատիկ չարութիւնս գործէիք: Մեծ է կոչումնն և 'ի

մեծամեծս. ոչ զի անտի միայն զերծայք, այլ զի և յայնպիսի կոչումն կոչեցարուք և յայնպիսի կարգս: Որպէս և ինչ. «Արժանի, ասէ, գնալ ձեզ ամենայն խոնարհութեամբ»: Այնպիսին է որ արժանի կոչմանն գնացս գնայ. և այն իսկ է ամենայն առաքինութեանց պատճառք: Յորժամ խոնարհիցիս և 'ի միտ առնուցուս թէ ով էիր և զիարդ ապրեցար, առաքինութեան պատճառք լինիցի քեզ յիշատակն: Զի ոչ կապանօք հպարտանայցես և ոչ այնպիսի ինչ իրօք զոր ասացին, այլ 'ի միտ առնուցուս թէ ամենայն ինչ շնորհացն է, և 'ի չափու ունիցիս զանձն: Խոնարհ բարերար և շնորհակալ եւս ծառայ դիւրաւ լինիցի, յորժամ զմտաւ ածիցէ զայն որ ասէն՝ թէ «Զի՞նչ ունիս զոր ոչ առեր». և զմիւսն զոր սոյն իսկ ասէ՝ եթէ «Առաւել քան զնոսա ամենեսին վաստակեցի. ոչ ես, այլ շնորհքն որ ընդ իս էն»:

«Ամենայն, ասէ, խոնարհութեամբ»: Մի՛ բանիւք միայն և մի՛ արդեամբք եւեթ, այլ կերպարանօք և խօսիւք. մի՛ առ միոյն խոնարհագոյն և առ միւսն յանդգնագոյն: Այլ առ ամենեսեան լինիջիր խոնարհ, թէպէտ և թշնամի ոք իցէ և կամ բարեկամ կամ մեծ ոք կամ փոքր. քանզի այն իսկ է խոնարհութիւն: Նա յուղղութիւնս ինչ զոր գործիցես, խոնարհութիւն ցուցանիցես. և լուր Քրիստոսի որ ասէ՝ եթէ «Երանի ոյք խոնարհ իցեն հոգւով». և զայս յառաջագոյն դնէ: Վասն այնորիկ և սա ասէ՝ եթէ «Ամենայն խոնարհութեամբ և հեզութեամբ երկայնմտութեամբ»: Քանզի մարթ է խոնարհ լինել, և յանդուգն և ցասկոտ. այլ չէ ինչ անտի օգուտ. բազում անգամ 'ի բարկութենէ ըմբռնեալ զամենայն կորուսանէ: «Անսալ միմեանց, ասէ, սիրով»: Զի՞արդ կարիցէ անսալ բարկացողն. հարկ է զի առ ասելն ևս յաճախագոյն ասիցէ, և ո՞ւր իցէ զի սիրով անսայցէ: Եթէ դու, ասէ, ընկերին քում չանսայցես, իսկ ա՟ծ քեզ զիա՞րդ ներիցէ. դու ծառայակցին քում չհամբերես, և քո տէրն քեզ զիա՞րդ տանիցի: Ուր սէր է, ամենայն ինչ կրելի է բնաւին իսկ թեթևագոյն:

«Փութալ պահել, ասէ, զմիաբանութիւն հոգւոյն կապով խաղաղութեան»: Կապեա, ասէ, զձեռսդ հեզութեամբ: Դարձեալ քաջանուն կապանքն. մեք թո-

ղակք 'ի բաց, և նա այսրէն առ մեզ ընթանայ։ Նարօտք էին և այն կապանք, գեղեցիկ է և սա. նա և այն իսկ յայտնապէս ծնանի։ Կապեա զքեզ ընդ եղբարն, զի այնպիսիքն դիւրաւ կրեն զմիմեանս որք սիրովն կապեալ ընդ միմեանս իցեն. կապեա զքեզ ընդ նմա և զնա ընդ քեզ, քանզի երկոցուն դու ես տէր. զի զոր կամիցիմ առնել բարեկամ, դիւրաւ կարող եմ առնել։ "Փութալ պահել, ասէ, զմիաբանութիւն"։ մի՛ դոյզն ինչ երագ և մի վայրապար, այլ փութալ պահել զմիաբանութիւն հոգւոյն։ Զինչ իցէ միաբանութիւն հոգւոյն։ Զոր օրինակ 'ի մարմնի հոգին է որ զամենայն միախառն առնէ, թէպէտ և ազգի ազգի ինչ անդամք իցեն, նոյնպէս և աստ. քանզի նմին իրի իսկ տուաւ հոգին, զի զնոսա որք ազգաւ և պէսպէս վարուք անջատեալ 'ի միմեանց իցեն' միաբանեսցէ միաւորեսցէ։ Նանզի ծերն և մանուկն, աղքատն և մեծատունն, ծառայն և տէրն, կին և այր և ամենայն իսկ ոգիք մի լինին, և առաւել քան զայն զի մի մարմին է։ Եւ յաճախագոյն գործէ զազգականութիւնն և յոլովագոյն առնէ զմիութեանն հաւատոյ. զի ոգւոյն ցանկութիւն առաւել հաստատագոյն է քան զմարմնոյն այնչափ որչափ պարզն և միատարրն իցէ։ Եւ զինչ պահիցի այն։ Խաղաղութեամբն, ասէ, կապով. քանզի չմարթի 'ի թշնամութե և 'ի կռուոյ լինել այսմ։ "Մի 'ի ձեզ, ասէ, հեռ և նախանձ և երկպառակութիւնք են, ո՞չ ապաքէն մարմնաւոր էք և ըստ մարդկան գնայք"։ Զոր օրինակ հուր յորժամ փայտ չոր գտանիցէ' 'ի մի խարոյկ ձուլէ զամենայն, և յորժամ դալար' ոչ այնպէս ընդմանէ, նա և կաւի իսկ ոչ, նոյնպէս և աստ. քանզի չիք ինչ որ զցրտոյն կասեցի, այլ ամենայն ինչ 'ի ջերն առաւել յանկչի. և անտի այնուհետև ջերմութիւն սիրոյն ծնանի' 'ի խաղաղութեանն կապոյն, քանզի այնպէս կամի զմեզ ամենեսեան ընդ միմեանս կապել։ Զոր օրինակ թէ կամիցիս զքեզ կապել, չէ մարթ այլ ազգ կապել, եթէ ոչ զի ընդ այլում հաստիցիս։ Եւ արդ եթէ կամիցիս կրկին զօրել զկապանսն, պարտ է և զնա ընդ քեզ հաստել։ Նոյնպէս և աստ ընդ միմեանս կամի ըզմեզ կապել. ոչ դոյզն խաղաղութիւն պահել և ոչ վայրապար բարեկամութե, այլ ամենեցուն միաշունչ լինել։

Պատուիրեցին են կապանքս. այսու կապանօքս ընդ միմեանս և ընդ Տր կապեսցուք զանձինս: Զանոյն չնեղեն զձեռս այս կապանք, այլ 'ի դիւրութեան և 'ի բազում ընդարձակութեան պահեն և քան զարձակեն եւս 'ի համարձակութեան ածեն: Զի ի զհզօրն ընդ տկարին կապեալ, թեթևագոյն առնէ զկապանսն և չտայ ծանրանալ. թէպէտ և ընդ հեզգին կապիցի, առաւել յաղթողէ: "Եղբայր, ասէ, յեղբօրէ օգնեալ իբրև զքաղաք ամուր է": Զայնպիսի շղթայս ոչ ձանձրանապարհաց հեռաւորութիւն կարէ արգելուլ, ոչ երկինք և ոչ երկիր, ոչ ծով և ոչ այլ ինչ, այլ քան զամենայն ինչ մերագոյն է և քան զամենայն զօրագոյն. 'ի միջէ սորա ծնեալ՝ կարէ զբազումս ընդ իւրև ամփոփել. և լուր Պաւղոսի. "Նեղիք, ասէ, 'ի մեզ, այլ 'ի գթոյն ձերոյ": Ընդարձակեցարուք, ասէ, և դուք: Իսկ արդ զինչ իցէ որ զայն կապանս խախտեցէ: Ինքնիշխանութիւն, իշխանութեան յանկալ, փառաց տենչանալ և այլն եւս նոյնպիսիք թուլացուցանեն զայնպիսի կապանս, նա և խզեն իսկ 'ի բաց: Իսկ զիարդ ոչ 'ի բաց խզեսցին: Եթէ այն ամենայն անհետ լինիցի, և չիցէ ինչ որ լուծիցէ թէ կռծանիցէ զսէրն. և լուր Քրիստոսի. "Յաղագս, ասէ, բազմասցի անօրէնութիւն, ցամաքեսցի սէր բազմաց": Իսկ չիք ինչ այնպիսի սիրոյ հակառակ իբրև ըղձերս. ոչ որ առ ած միայն իցէ, այլ և առ ընկերս:

Իսկ աւազակքն, ասէ, զիարդ ունիցին ընդ միմեանս զխաղաղութիւն, ոչ ապաքէն աւազակութեանն կերպարանօք: Եթէ օրէնք աւազակութեանն 'ի նոսա չպահիցին և միմեանց զհաւասարն չտայցեն, գտանես 'ի նոսա եւս աւելի մարտս և պատերազմունս. ապա ուրեմն չէ մարթ 'ի մէջ չարաց խաղաղութիւն գտանել. այլ ամենայն ուրեք անդ գտանի ուր արդարութեանն ինչ և առողջմտութեանն իրք վճարիցին: Իսկ հակառակքն ընդ միմեանս խաղաղութիւն ունիցին. և ոչ երբէք: Իսկ այլ զոր կամիցիս. մինչ ագահն ընդ ագահին երբէք խաղաղութիւն ունիցի: Ապա ուրեմն թէ չէին արդարք և հեզք և զրկեալք 'ի մէջ նոցա, վաղուց իսկ ջնջեալ լինէր ազգ մարդկան. Զոր օրինակ 'ի մէջ երկուց գազանաց քաղցելոց եթէ չիցէ ինչ 'ի միջի զոր ծախիցեն՝ զմիմեանս ուտեն, նոյնպէս և 'ի մէջ ագահացն և չա-

րաց լինէր. և յայտ է եթէ չէ մարթ խաղաղութեան լինել, եթէ ոչ նախ առաքինութիւն ինչ յարդարիցի: Աղէ ասա. եթէ շնացող ոք իցէ, ո՞ւմ կարիցէ սիրելի և բարեկամ լինել: Կամ թէ քաղաք ինչ ագահօք և ընկերահաշատօք[1] լի իցէ, և չիցէ ոք որ զրկիցի, այլ ամենեքեան զրկիցեն, միթէ խաղաղութիւն կարիցէ լինել անդ. և կամ 'ի շնացելոց միջի խաղաղութիւն ինչ կայցէ. չիք, չգտանես ուրեք և ոչ զերկուս եղբարս 'ի նոյն միաբանեալս: Որպէս զի չէ ինչ այնր պատճառք, այլ միայն սիրոյն ցամաքել: Իսկ պատճառք սիրոյն ցամաքելոյ անօրէնութեանն յաճախութիւն է. քանզի յանձնասիրութիւն [illegible]այս, և քակէ և ձեղքէ զհամբոյրն 'ի միմեանց, և մեղկէ և բաժանէ զկապ սիրոյն: Իսկ ուր առաքինութիւնն է, զնորին հակառակն գործէ. զի առաքինին և քան զընչիցն ցանկութիւն 'ի վերոյ գտանի: Իսկ եթէ բազում իցեն յաղքատութեան, կարեն ընդ միմեանս խաղաղութիւն առնել. իսկ ագահքն եթէ երկու յերկուց իցեն, չկարեն ընդ միմեանս խաղաղութի ունել: Ապա ուրեմն եթէ[2] եմք առաքինիք, և ոչ վրիպէ 'ի մէնջ սէրն. քանզի 'ի սիրոյն է առաքինութիւն և յառաքինութենէն սէրն: Իսկ եթէ զիարդ իցէ, ես ասեմ: Առաքինաւորն չմեծարէ զինչս քան զբարեկամութիւն, և ոչ ոխակալ լինել և ոչ զրկել զընկերն և ոչ վայրապար թշնամանել զոք, ամենայնի առաքինութեամբ տանի. և յայնմ ամենայնէ կայ հաստատուն սէրն: Որ սիրէն, ամենայնի այսմիկ համբերէ. քանզի այսպէս միմեանց յարդարիչ են իրքն. և այն ասա, այլ որչափ ինչ անդ իցէ՝ այնմ չէ ոք բաւական հասանել: Իսկ զի յառաքինութենէն է սէր՝ ասելով թէ յորժամ յաճախեսցի անօրէնութիւն, պակասեսցի սէր, զայն յայտ արար: Իսկ զի 'ի սիրոյն է առաքինութիւնն, ասէ. “Որ սիրէ զընկերն, զօրէնսն կատարէ„: Որպէս զի յերկուց միուն ինչ պարտ է լինել, կամ յոյժ հակառակել և առողջանալ, և կամ կարի իսկ առաքինի լինել. և որ զմին ունիցի, հարկ է թէ և զմիւսն ծնանի: Այս և նորին հակառակն որ սիրել չգիտէ, նա բազում չարիս գործէ. և որ բազում չարիս գործիցէ, նա և սիրել չգիտէ:

1 Ոմանք ընկերաշահողօք:  2 Օրինակին [illegible]:

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Այլ արդ սակայն զՀետ երթիցուք սիրոյ, քանզի պահ-պանութիւն է և չտայ մեզ վայրապար չարչարել։ Կապեսցուք զանձինս ընդ միմեանս, և մի ինչ գտցի 'ի մեզ նենգութիւն կամ խարդախութիւն։ Այլ ուր սէր իցէ, անդ այնպիսի ինչ ոչ գտանի։ Վասն զայն ասէ իմաստուն այր. "Եթէ զսուր Հանիցես, ասէ, 'ի վերայ բարեկամի, մի անյոյս լինիցիս, զի գոյ դարձ 'ի բարեկամն։ Եթէ զբերան բանայցես, քանզի գոյ Հաշտութիւն առանց նախատանաց և զխորՀուրդս 'ի վեր Հանելոյ և Հարուածոյ և նենգութեանց"։ Քանզի այսու փախչի ամենայն բարեկամ եթէ խորՀուրդ ինչ 'ի վեր գայցէ, յայնժամ քակի բարեկամութիւնն։ Իսկ մեք ամենեքեան եթէ միմեանց բարեկամք լինիցիմք, և ոչ խորՀրդոց ինչ պէտք լինին։ Որպէս ոք ընդ անձին չունիցի խորՀուրդ ինչ գաղտ, և ոչ ինքն յանձնէ թաքչել կարիցէ. նոյնպէս և սիրտ բարեկամաց 'ի միջի յորժամ խորՀուրդ ինչ գաղտ 'ի միջի չկայցէ, չիցէ ինչ որ զբարեկամութիւն քակել կարիցէ։ Եւ վասն այլ իրիք ունիմք խորՀուրդ, եթէ ոչ զի մի յամենեսեան յուսայցեմք։ Վասն ուրեմն 'ի ցամաքելոյ սիրոյն եղև մուտ խորՀրդոցն։ Զինչ խորՀուրդ ունիցիս. զընկերն կամիցիս զրկել և արգելուլ զի մի 'ի բարիս ինչ վայելիցէ և վասն այնր թագուցանիցես։ Չէ ինչ այն, այլ ամօթս ինչ Համարիցիս։ Եթէ այնպէս իցէ, այն իսկ է չՀամարձակելոյ և չյուսալոյ նշանակ։ Զի եթէ սէր 'ի միջի կայցէ, ոչ խորՀուրդ յայտնի և ոչ նախատինք։ Այլ արդ ազէ ասա, ո՞վ իցէ որ անձամբ զանձն նախատիցէ. և եթէ լինիցի ևս ինչ այնպէս, թերևս և յօգուտ իսկ լինի։ Կա և զմանկտի յորժամ նախատիցեմք, զայրացուցանել կամիմք։ Այլ Քրիստոս յայնժամ նախատել սկսաւ զքաղաքն "Վայ քեզ, ասէ, Քորազին; վայ քեզ Բեթսայիդա", զի 'ի նախատանաց ապրեցուցանիցէ։ Քանզի չիք ինչ այնպէս որ զմիտս կակղեցուցանիցէ և զզգեցուցանէ և զծուլութիւնն յորդորիցէ։ Այլ արդ մի վայրապար նախատեսցուք զմիմեանս։ Մի՛ ընչիւք պարտ իցէ նախատել զընկերն. և ոչ երբէք, քանզի 'ի Հասա-

րակաց պէտս հաստատեցան ստացուածքն։ Նոյն 'ի մե-
ղաց ինչ սակս․ այլ և ոչ ախտու պարտ էր նախատել,
բայց սաստել զանձն ածել յաղթութիւն։ Նոյն 'ի հա-
րուածոցն, ասէ, նենգութեան։ Մի՛ լիցի որ զանձն սպա-
նանել կամիցի և կամ խռովել զիւրքն հարկանել․ և ոչ որ։

Նոյն արդ զհետ երթիցուք զսիրոյ։ Չասաց ինչ եթէ զդիւղն սիրեսցուք, այլ թէ զհետ երթիցուք։ Նորոգում փութոյ պէտք են․ քանզի փաղփաղուկի մերձենայ, տրուագ է առ 'ի մեկնել, քանզի բազում ինչ իրք են որ զնա խորտակեսցեն․ սակայն զհետ երթիցուք և չժամանէ ու-րեք խուսել, այլ փաղփաղուկի այսրէն առ մեզ ձգիցեմք։ Մերձ էր ըստ երկինս կցեաց զերկիրս․ մերձ էր յաթոռն արքունական առաք արժանի զմարդկութիւնս նստել․ մերձ էր զմեզ յերկրի երևեցոյց․ մերձ էր զանէրն ծառայ արար․ մերձ էր վասն թշնամեաց և ատելեաց զորդին իւր ետ, վասն ծառայից զանէրն, վասն մարդկան զանձն, վասն սորկաց զազատն։ Նոյն ոչ միայն այսչափ, այլ և 'ի մեծամեծսն կոչեաց զմեզ․ զի ոչ միայն յառաջինն չա-րեացն ազատեաց, այլ և մեծամեծ ևս խոստացաւ տալ։ Վասն այսր ամենայնի գոհասցուք զնա և ընդ ամենայն առաքինութիւն անցցուք, և նախ քան զամենայն զսէրն հաստատեսցուք 'ի մեզ, զի արժանի լիցուք խոստացե-լոց բարութեանցն հասանել շնորհօք և մարդասիրու-թեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի․ ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխա-նութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յա-ւիտենից․ ամէն։

## ՃԱՌ ՏԱՍՆԵՐՈՐԴ

"Մի մարմին և մի հոգի, որպէս և կոչեցարուք 'ի մի յոյս կոչման ձերոյ"։

Յորժամ 'ի մեծամեծս ինչ յորդորեսցէ երանելին Պաւղոս, քանզի կարի իմաստուն է և հզօր, յերկնից բարութեանցն յորդորէ․ և զայս 'ի տեառնէ ուսեալ։ Որպէս այլուր ասէ "Գնացէք սիրով, որպէս Քս սի-

րեաց զմեզ և ետ զանձն վասն մեր», և դարձեալ թէ «Զայս խորհեսցի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ որ 'ի Քրիստոս Յիսուս, որ 'ի կերպարանս Այ էր, ոչ ինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար Այ», նոյնպէս և այս: Յորժամ օրինակքն առաջի կայցեն՝ մեծամեծք իցեն, յորդորի նախանձն և յաճախէ գութն: Այլ արդ զինչ ասիցէ. 'ի միաբանութիւն յօժարեցուցանէ. «Մի մարմին, ասէ, և մի հոգի որպէս կոչեցարուք 'ի մի յոյս կոչման ձերոյ: Մի է տէր և մի հաւատ և մի մկրտութիւն»: Զինչ իցէ մի մարմինն. ամենեքեան որ ընդ ամենայն տիեզերս իցեն հաւատացեալք, որ են և որ եղեն և որ լինելոցն իցեն և որ յառաջ քան զՔրիստոսի գալուստն հաճոյ եղեն, մի մարմին են: Զիարդ. քանզի նոքա զՔրիստոս գիտէին: Այս ուսանի յայտ իցէ. «Աբրահամ, ասէ, հայր ձեր ցանկացաւ տեսանել զօր իմ, ետես և ուրախ եղև»: և դարձեալ «Եթէ հաւատացեալ էր ձեր, ասէ, Մովսէսի, ապա հաւատայիք և ինձ, զի նա վասն իմ գրեաց»: Եւ և մարգարէքն եթէ չգիտէին, և գրէին իսկ ոչ գայնմանէ որ ոչն ճանաչէին. չէին անտեղեակ զորոց ասէին՝ եթէ տեսին զնա և երկիր պագին նմա: Ապաքէն զի և նոքա մի մարմին են. քանզի ոչ է հեռի մարմինն 'ի հոգւոյն, ապա թէ ոչ՝ և չէ իսկ մարմին: Զի և մեր իսկ սովորութիւն է զմիացեալս և զխարի յանկաւորս մի մարմին ասել: Նոյնպէս և որ վասն միաբանութեանն օրինակիցէ, զմարմինն և զգլուխ առնումք և մի մարմին ասեմք: Մարմին 'ի պատուականն և յանարգ անդամոց յօդեալ կայ միախուռն. բայց սակայն ոչ յուրոյն վերայ յառնէ պատուականն, և ոչ սա ընդ նմա նախանձի, թէպէտ և ոչ զնոյն կատարումն իւրաքանչիւր ամենայն անդամքն նպաստ լինիցին, այլ ըստ հարկին պահանջելոյ: Այլ զի ամենայն ինչ 'ի կարևոր և 'ի պէսպէս պէտս եղև, վասն այնորիկ ամենեքեան պատուականք միմեանց են, և կէսք 'ի կարևոր պէտս են և կէսք 'ի նուաղագոյնս: Նայեսցիր ինչ. գլուխ քան զամենայն մարմին յարգոյ է, զի ամենայն զգայութիւնք անդ են և ճշգրիտ պետութիւն, և առանց գլխոյն կեալ չէ հնար: Յոտից հատանել բազումք բազում ժամանակս կեցին: Ապաքէն ոչ եթէ գլխոյն միայն լաւ իցէ քան զայլ ան-

ղամանն, այլ և ազգամանք և կարգաւ։ Նա էր վասն առն-ցեալ զայս։ Զի և յեկեղեցւոջ բազումք են որ 'ի բար-ձունս վերացեալ ելեալ իբրև զգլուխ զերկնաւորսն և ենթ-ղիալեն և իբրև զաչս որ 'ի գլուխն իցեն, և բազում ան-ջրպետութիւն ունին յերկիրս և չեն իւիք հաղորդ ընդ-նոսա։ Նոյն այլքն զայնց աշտիճան ունին, և զերկիր կո-խեն, և զառաջն առնեն։ Զի ոչ եթէ զերկիրն կոխել մերձաւորութիւն ինչ իցէ նոցին, այլ 'ի չարիսն ընթա-նալ. "Ոտք նոցա, ասէ, 'ի չարիս ընթանան"։

Սոյլ մի ինչ այնու մեծամտիցեն, ասէ, գլուխն և աչքն առ ոտս, և մի ոտքն նախանձիցեն ընդ նոսա. ա-պա թէ ոչ՝ խորտակեսցեն զմարմնոյ միութիւնն 'ի միջոյ բառ-նալ, և ապէտքն ինքնակատարք խափանին։ Նա որ ընկե-րին նենգէ, նախ անձինն նենգէ։ Նա եթէ ոտքն չկա-միցին տանել զգլուխն 'ի կարևոր ճանապարհն, նախ ան-ձինն վնաս առնէ 'ի հեղգալոյն և 'ի չշարժելոյն. և եթէ գլուխն չկամիցի դարմանս տանել ոտիցն, նախ իւր վնաս առնէ։ Սոյլ անդ նմանագոյն չհակառակին ընդ միմեանս, քանզի բնութեամբ այնպէս կարգեալ են։ Նոյնպէս մարդոյն զիարդ չմարթիցի յառնել 'ի վերայ մարդոյն. նա և ոչ հրեշտակաց է իշխանութիւն յառնել 'ի միմեանց վե-րայ, քանզի և ոչ նոցա՝ հրեշտակապետաց։ Նա ոչ քան զիս դարձեալ անաստուածքն մեծամտել կարիցեն. քանզի ուր մի պատիւ է, անդ հասարակ է պարգևն և չունի ինչ մին քան զմիւսն աւելի։

Նա զիարդ, ասէ, չհպարտանայցեմ թէ աւելի քան զընկերն իցեմ։ Այս այնու իսկ չպարտիս հպարտանալ 'ի վերայ ընկերին, ով մարդ. զի եթէ ամենայն ինչ որ կարևորն է՝ հասարակաց է և չունի ինչ որ աւելի քան զընկերն, ուստի իցէ հպարտութիւնն։ Զնոյն բնութիւն ունիմք, զնոյն շունչ, զնոյն մարմին, զմի օդ ձգեմք ամենեքեան, նովին կերակրով կերակրիմք, ուստի իցէ ամբարհաւանութիւնն։ Այս աւանիկ որով կարողն էաք անմարմնականն զօրութեանցն յաղթել, զառաքինութեանն ասեմ, այն զմեզ 'ի հպարտութիւն տանի. մանա-ւանդ թէ չիցէ իսկ հպարտութիւն, այլ անմտութիւն։ Ապա եւ յիրաւի իսկ մեծամտեմ և անգամեմ զդէս և կարի իսկ յաճախագոյնս։ Տես և զՊաւղոսի զիարդ մեծամտէր առ դէս. յորժամ զմեծամեծսն և զքան-

չեկեալն խոստացաւ վճարել զկէն, մինչ դեռ որպէս ընծեռա-նեաց զնա. Թէպէտ և հաստատութիւն մատուցանէր, չառնայր յանձն: Յորժամ աղախինն զոր այսն հարցուկ ունէր՝ ասաց, եթէ "Այս արք են ծառայք Այ բարձ-րելոյ, որք պատմեն մեզ զփրկութեան ճանապարհն", սաստեաց սատանայագոյնս և կարկեցոյց զյանդուգն ըն-դոսն. Դարձեալ և այլուր գրէ թէ "Խորտակեսցէ Ած զսատանայ ընդ ոտիւք ձերովք մերձ ընդ մերձ", միթէ բնութեան փոփոխումն իմն առնէր: Տեսանես զի չառ-նէ իմն բնութեանն անզգայութիւն, այլ զկամացն առնէ. քանզի կամք են վատթարք քան զամենեսեան.

Բայց առ հրեշտակս չհպարտանայ, Թող թէ առ իս, զի բազում իմն ՚ի միջի կայ ընդ իս և ընդ ձեզ: Այս-պէս և առ մարդ չպարտէիր հպարտանալ առաւել քան առ հրեշտակ. քանզի հրեշտակն չէ իմն հեռի բնութիւն, որ ոչ զօրութիւն իմն է նմա և ոչ պատուականք. բայց մարդ քան զմարդ ոչ բնութեամբ, այլ կամօք է աւելի. Եւ է այնպիսին ՚ի մէջ մարդկան իբրև զհրեշտակ: Ոչ թէ առ հրեշտակս չիցէ պարտ հպարտանալ, որչափ ևս առաւել առ մարդիկ որ զնոյն բնութիւն ունիցին և ա-ւելի են քան զհրեշտակս: Թէ լինիցի ոք ՚ի մէջ մարդ-կան առաքինի, առաւել սա յոյժ մեծ է քան զնա, և ոչ նա: Ընդէ՞ր. զի զոր-նոյն բնութեամբ ունի, սա զայն կամօք ուղղեաց: Եթէ վասն զի անեղեանն հեռի իցէ հրեշտակն և յերկինս բնակիցէ, և սա ընդ քեզ շրջի և զգենու զքեզ ՚ի նախանձ՝ յայն սակս հպարտանայցես, ո՞չ արդեօք նաև սա ևս առաւել հեռի է ՚ի քէն քան զնա. "Մեր, ասէ, առաքինութիւն յերկինս է": Եւ զի սա առաւել հեռի է ՚ի քէն քան զհրեշտակս՝ լուր և ՚ի միոյ առ մեր նմանի զլուխն. յաթոռն արքունական: Որչափ հեռի է ՚ի քէն աթոռն, նոյնչափ և սա:

Այլ անսահմանեմ, ասէ, ՚ի մեծի պատուի վայելել, և ՚ի նախանձ գրգռիմ: Եւ այն իսկ է որ զամենայն իմն վեր ՚ի վայր օգտեաց. ոչ միայն զաշխարհս, այլ և զե-կեղեցի ելից բազում խռովութեամբ: Որ որինակ ՚ի նաւահանգիստ իմն խաղաղ հողմ զառնաշունչ ընդդի-մակաց մտանիցէ՝ քան զամենայն վիճումն և զդժուա-րին անդրէն առաւել վտանգաւոր զնաւահանգիստն առնի-ցէ, և զմեծամեծ նաւսն իբրև զմանրականս իմն ՚ի տապ-

ո՛ զառն արտասուք. զի զայն ամենայն բորբոքեաց և այրեաց սնապարծութեանն բնութիւն ամենածախ բոցն, և չկարաց ոք դեր 'ի վերոյ լինել իրացն: Այլ կամք ամենեքեան ընդ բոցն պշուցեալք, և չիք ոք որ զչարիսն շիջուցանել կարիցէ. Թէպէտ և շիջուցանեմք առ սակաւ մի ժամանակ, այլ դարձեալ յետ երկուց և երից աւուրց իբրև յաճեան կայծակ մնացեալ դարձեալ բորբոքի և զառաջինն վրէպսն գործէ: Այնպիսի ինչ և աստ լինի. որ և 'ի շինուածոյն հրայրեացս սովորութիւն է լինել: Այլ պատճառք ամենայնի, զի նախ սիւնքն անկան 'ի հաստատութենէ, և անտի ճարակեցաւ եկն յամենայն շինուածն, նախ զնոքօք որ զշինուածն ունէին 'ի վեր՝ վառեցաւ հուրն, և 'ի նոցանէն յայլ ևս շինուածն եւ բոցն: Նա և 'ի շինուածան յորժամ զփայտիցն հարկանիցի հուրն, յայնժամ առաւել վառի և տայ 'ի քարինսն: Յորժամ զսիւնսն այրիցէ և 'ի խոնարհ ընկենուցու, այնուհետև չիցէ ինչ ջան զայլն ամենայն մանր այրել: Յորժամ մոյթքն որ զշինուածն 'ի վեր ունիցին՝ անկանիցին, ապա բազում իսկ դիւրութեամբ ամենայնն յերկիր կործանեսցի: Այնպէս և այժմ եղև յեկեղեցւոջ. զամենեցունց հուր հարաւ, հրդեհ վառեցաւ. ըղպատիւս և եթ 'ի մարդկանէ խնդրեմք, և զփառօքն և եթ խանդաղակաթ խորովիմք, և չլսեմք Յովբայ՝ որ ասէրն "Եթէ մեղանչէի կամակար, չպատկառէի 'ի բազմամբոխ ժողովրդենէն": Տեսէ՞ր զառաքինի ոգին. չհամարէի, ասէ, ամօթ առաջի ամենեցուն խոստովանել զկամայ և զակամայ զմեղսն: Այլ եթէ նա չհամարէր ամօթ, որչափ ևս առաւել մեզ պարտ է առնել զայն: "Ասա, ասէ, դու նախ զմեղս քո, զի արդարասցիս": Բազում սաստկութիւն եղև չարեացս այսոցիկ. ամենայն ինչ եղծաւ ապականեցաւ. Թողաք զմեծ և պատուոյ ծառայ եղաք: Այլ ոչ ևս կարեմք սաստել որոց իշխիցեմքն, զի և մեք 'ի նմին ջերման ծնկիմք. քանզի և մեք կարօտ բժշկութեան եմք, որք կարգեցաք յայլ զայլս ողջացուցանել:

## ՑՈՐԴՈՐԱԿԱՆ

Այլ աւուրդ որ յայս փրկութեան կայցէ մնայցէ մեզ. զի բժշկեաս այլոց ձեռաց եւեթ կարօտ: Այլ զայս ոչ զայլ ինչ ասացի, եւ ոչ վայրապար ինչ աշխարեմ, այլ զի ամենեքեան առ հասարակ 'ի մեծի տարաժամութեան, քուրձ զգենուցումք, 'ի պահս մտանիցեմք, զԱծ աղաչիցեմք, զի ձեռնկալու լինիցի, եւ շիջուցանիցէ զչարիսն. քանզի նորա ձեռինն պէտք են մեծին եւ սքանչելւոյն. զի եւ մեծամեծս քան զնինուէացւոցն առ մեզ գործեսցէ: "Երեք եւս աւուրք, ասէ, եւ Նինուէ կործանեսցի": Ահագին էր քարոզութիւնն եւ լի բազում սպառնալեօք. զիարդ չէր ահագին՝ յետ երից աւուրց ակն ունել լինելոյ քաղաքի նոցա գերեզմանն, եւ միով պատուով կործանել ամենեցուն առ հասարակ: Ո՛ ի թէ դէպ լինիցի ընդ նոյն ժամանակս 'ի միում տան երկուց որդւոց մեռանել, անհնարին աղէտք լինին. նա եւ Յոբայ այն իսկ թուէին անհնարին չարիք, զի յամենեցուն վերայ միանգամայն անկաւ տունն: Այլ անդ զինչ էր տեսանել, ոչ մի տուն եւ ոչ երկուս որդիս, այլ ազգ մի ողջոյն երկոտասան բիւրուք՝ ծածկեալ 'ի կործանմանէն: Գիտիցէք որչափ ինչ աղէտք են:

Ահա եւ մեզ ինչ այնպիսի սպառնալիք եկին, ոչ մարգարէի բարբառով, քանզի եւ չեմք իսկ արժանի լսել զայնպիսի բարբառ. այլ քան զամենայն փող բարբառ առաւել նշանաւոր 'ի վերուստ եկեալ ցասմանն սպառնալեաց: Բայց որպէս ասացի իսկ՝ թէ երեք աւուրք են եւ Նինուէ կործանեսցի, բազում աւուրք իսկ են յամէհետէ տիեզերական եկեղեցիս 'ի կործանումն բերէ մեզ, եւ մերձ եւ մօտ է յատակս իջանել. քանզի ամենեքեան առ հասարակ միով չարեօք վառեալ են. եւ եւս առաւել որք յիշխանութիւնսն իցեն, որչափ աւելի ինչ նոցա հարկ 'ի վերայ կայ: Այլ ընդ այն մի ինչ զարմանայցէք զի եւ մեծամեծ քան զնինուէացւոցն ետու խրատ հնարս հնարել. քանզի ոչ եթէ պահս միայն քարոզեմ այժմ, այլ եւ զդեղն ցուցանեմ որով քաղաքն մերձ էր 'ի կործանել՝ եւ կանգնեցաւ: Այլ զինչ իցէ. "Ասեա, ասէ, տէր զի հեռացաւ իւրաքանչիւր ոք

'ի ճանապարհաց իւրոց չարաց, և զղջացաւ 'ի վերայ չարեացն' զոր խորհեցաւ առնել 'ի վերայ նոցա":

Զնոյն արասցուք և մեք և դուք. հեռասցուք յընչից ցանկութենէ և 'ի փառացն փափաքանաց. աղաչեսցուք զա̅ծ զի ձեռնտու լիցի և յարուսցէ զանկեալ անդամսն: Վասնզի ոչ եթէ նոքին ինչ իրօքն է ահն. զի անդ քարինք և փայտք անկանելոց էին, և մարմինք' սատակելոց. իսկ աստ աւասիկ ոչ ինչ այնպիսի, այլ ոգիք մատնելոց են 'ի հուր գեհենին:

Աղաչեսցուք, խոստովան լիցուք, վասն առաջնոցն դահացողք լիցուք, և յաղագս հանդերձելոցն պաղատեսցուք. զի կարող լիցուք 'ի չար և յանհնարին գաղանէն զերծանել և առաքել զոհութիւն մարդասիրին ա̅յ. զի նորա են փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

"Մի մարմին և մի հոգի որպէս և կոչեցարուք դուք 'ի մի յոյս կոչման ձերոյ: Մի է տէր և մի հաւատ և մի մկրտութիւն և մի ա̅ծ հայր ամենայնի որ 'ի վերայ ամենեցուն, և ամենայնիւ և յամենեսեան 'ի մեզ է: Այլ իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ տուեալ են շնորհք ըստ չափոյ պարգևացն Քրիստոսի":

Մեր խնդրէ 'ի մէնջ Պաւղոս ոչ զոյգն ինչ, այլ որ ընդ միմեանս բևեռեսցէ և անքակ 'ի միմեանց առնիցէ, և այնպիսի ինչ միութիւն իբրև անդամոց առ անդամս ցուցանիցէ հաստատութիւն. և այն է որ զմեծամեծ բարութիւնս գործէ: Սմին իրի իսկ և ասէ' թէ "Մի մարմին և մի հոգի". զի և վշտակցութիւն կայցէ, և ընդ միմեանց բարիս չխանդայցեմք, և միմեանց ուրախակից լինիցիմք: Սա զամենայն իսկ այնու յայտ արարեալ, ցուցանէ զի մի մարմին և մի հոգի կոչեաց, և 'ի միոջէ մարմնոյ մի հոգի լինի: Վասնզի մարթի թէ իցէ մի մարմին, և մի հոգի չիցէ. որպէս յորժամ հերձուածողացն ոք բարեկամ իցէ: Կամ թէ այնու իսկ պատկառեցուցանիցէ թէ մի հոգի առէք և 'ի միոջէ աղբերէ

տրբէք, չպարտիք յերկուս միտս կալ: Այլ կամ թէ հո-գի ասա զյօժարութիւնն կոչեցէ:

"Որպէս կոչեցարուք դուք, ասէ, ՚ի մի յոյս կոչմանն ձերոյ": Այլ ա̃ծ զձեզ, ասէ, ՚ի նոյն հաւասարակ կոչեաց, և ոչ ինչ աւելի ումեք քան ընկերին. պարգևեաց ա-մենեցուն զանմահութիւն, բոլորեցունց զկեանսն յա-ւիտենից, հաւասարակաց զփառս անմահականս, ամենե-ցուն զեղբայրութիւն, բնաւին զժառանգութիւնն շնոր-հեաց. հաւասարակաց ամենեցուն եղև գլուխ, զամենե-սեան ընդ իւր յարոյց և ընդ իւր նստոյց: Այլ արդ որ ՚ի հոգևորսն այնչափ ունիք զհաւասարակ պատիւն, իւ մե-ծանայցէք, ուստի՞ հպարտանայցէք. զի ամն մե̃ծ իցէ և ամն հարուստ. և զխնդիր չիցէ այս ծաղու գործ: Նշէ ասա. եթէ այր թագաւոր առնուցու տասն այր, ամե-նեցուն ծիրանիս զգեցուցանիցէ և զամենեսեան յա-թոռն արքունի նստուցանիցէ և հաւասարակաց զնոյն պա-տիւ տացէ, միթէ իշխիցէ՞ որ զընկերն նախատել, որ-պէս թէ մեծատուն որ քան զնա և պայծառագոյն. և ոչ երբէք: Այլ չև ևս զամենայն ինչ ասացի. քանզի ոչ այնչափ միայն խտրոց կայ ՚ի միջի. զի յերկինս հաւա-սարակ եմք, և աստ ընդհատ ՚ի միմեանց:

"Մի, ասէ, տէր և մի հաւատ և մի մկրտութիւն": Ահաւասիկ յոյս կոչմանն: "Մի է ա̃ծ և հայր ամենայ-նի և ՚ի վերայ ամենեցուն և ամենայնիւ և յամենե-սեան ՚ի մեզ": Միթէ քեզ մեծ և նմա փոքր կոչե-ցաւ. միթէ դու հաւատովք և նա գործովք փրկեցաւ. միթէ քեզ թողու մկրտութեամբն և նմա չթողո՞ւ: "Մի է, ասէ, ա̃ծ և հայր ամենեցուն և ՚ի վերայ ամենայնի և ամենայնիւ և յամենեսեան ՚ի մեզ": Միթէ քո իցէ հայր և նորա՞ չիցէ: Զի՞նչ իցէ՝ ՚ի վերայ ամենեցուն և ՚ի վերայ ամենայնի և ամենայնիւն և յամենեսեան ՚ի մեզ: Ի վերայ ամենայնին իբրև զտէր ՚ի վերայ ամենե-ցուն, և ամենայնիւն իբրև զդարմանիչ և զտեսուչ, և յամենեսեան ՚ի մեզ բնակեալն. Թէպէտ և որդւոց տան զբնակելն: Եթէ նուաստութիւն ինչ էր, ապա ոչ զհօրն ասէր: Այլ արդ զի՞նչ ասիցէ, ուստի գնիցէ զազգի ազգի ճարահան: Վասնզի այն խակ միշտ զնաս և զկարծեցուցին և զայլս բազումս զամենայն ՚ի հպարտութիւն ածէ, զա-մանս ՚ի տրտմութիւն և ՚ի նախանձ, նմին իրի ամենայն

ուրեք 'ի մարմնոյն օրինակ առնու. վասն այնորիկ և այժմ գնոյն եդ, քանզի զպէսպէս շնորհացն յիշեցուցանելոց էր նոցա: Զորոց հաւատեաւ մանր 'ի կորնթացւոց թղթին համարի, քանզի և անդ ախտն այն տառապանայր: Բայց աստ այժմ ակնարկեալ եւեթ. և տես զինչ ասէ:

Զատուց թէ ըստ իւրաքանչիւր հաւատոց, զի մի 'ի տրտմութիւն անկիցէ զայնոսիկ որ մեծամեծացն չհասին. այլ թէ՝ "ըստ չափոյ պարգևացն Քրիստոսի": Որ քան զամենայն գլխաւոր է, զայն ամենեցուն առ հասարակ շնորհեաց և զմկրտութիւնն և զհաւատովքն արդարել և զանձ հայր ունել և ամենեցուն միում հոգւոյ հաղորդակից լինել: Իսկ եթէ ոք աւելի շնորհս ինչ ունիցի, ընդ այն մի ինչ զչարասցիս, քանզի և վաստակք ինչ աւելի իցեն: Այս և որ զհինգ տաղանդն էառ, զհրնգի միայն զհամարս պահանջէ. և զերկուսն երկուս եւեթ, և չկալաւ ինչ նուազագոյն քան զնորայն: Վասն այնորիկ և աստ պատճառքն տայ մխիթարութիւն լսողին: "Ի հաստատութիւն, ասէ, սրբոց 'ի գործ պաշտաման 'ի շինուած մարմնոյն Քրիստոսի": Մինն իրի և խնքն ասէր. "Վայ ինձ եթէ ոչ աւետարանեցից". այսպիսի ինչ առաքինութեան զշնորհսն էառ: Այլ վասն այնոր իսկ է նմա վայ. դու ազատ ես 'ի պատժոց: "Ըստ չափոյն" ասէ: Զինչ իցէ ըստ չափոյն: Որպէս թէ ոչ ըստ մերում արժանաւորութեան, քանզի և մեք չէաք արժանի. և չառնոյր ինչ ոք, այլ ամենեքեան ձրի առաք: Ընդէր ոմն աւելի և ոմն սակաւ: Զառնէ ինչ, ասէ, այն. քանզի բազմադէմ են իրքն: Իւրաքանչիւր ոք, ասէ, 'ի շինուածն մտեալ՝ զպէտս վճարէ. և վասն այնորիկ իսկ չառնէ յայտ եթէ ըստ իւրում արժանաւորութեանն ոմն շատ էառ և ոմն սակաւ, այլ այլովք՝ որպէս խնքն, ասէ, բաժանեաց: Քանզի և այլուր ասէ՝ թէ զանազանեալ եդ զիւրաքանչիւր ոք 'ի նոցանէն որպէս և խնքն կամեցաւ: Իսկ չասաց թէ զքանն, զի մի շփոթեցուցանիցէ զմիտս լսողացն:

"Վասն որոյ և ասէր իսկ՝ թէ ել 'ի բարձունս և գերեաց զգերութիւն և ետ պարգևս մարդկան": Նայսխնքն թէ դու զի՞ մեծամեծես. յո՞յ եղև ամենայն ինչ: Մարգարէն ասէ 'ի սաղմոսին՝ թէ "Էառ և ետ պար-

գևս մարդկան „ . և սա ասէ՝ թէ ետ պարգևս մարդկան ։ Նոյն է ։ Զխո՞րդ իցէ նոյն ։ “ Զի ել զի՞նչ է, եթէ ոչ զի նախ էջ 'ի ստորինս կողմ երկրի. որ էջն նոյն է և որ ելն 'ի վերոյ ամենայն երկնից, զի լցցէ զամենայն „ ։ Զի՞նչ. զամենայն ։ Զայս իբրև լսիցես, մի՛ փոփոխումն ինչ 'ի տեղեաց 'ի տեղիս կարծիցես ։ Զի զոր 'ի փիլիսոփեցւոց թղթին յարդարէ, զնոյն և աստ. որպէս և անդ քանզի վասն խոնարհութեան խրատէր՝ զՔրիստոս 'ի մէջ էած օրինակ, նոյնպէս և աստ, քանզի ասէ՝ թէ 'ի ստորին կողմ երկրի էջ։ Իսկ եթէ չէր այս լեալ, ապա աւելորդ էր բանն զոր անդն ասէ՝ թէ հնազանդ եղև մահու չափ։ Յելանելոյն զիջանելն ակնարկէ։ Իսկ 'ի ստորին կողմ երկրի զմահն կոչէ ըստ մարդկան կարծեաց։ Որպէս և Յակոբ ասէր՝ թէ “ Իջուցէք զծերութիւն իմ տրտմութեամբ հանդերձ 'ի դժոխս „ . և որպէս 'ի սաղմոսին ասէ թէ “ Նմանեցայ ես այնոցիկ որ իջանեն 'ի գուբ „ . այն իսկ է զի զմեռելոցն ասէ ։ Յո՞ր սակս մանր կրկնիցէ զտեղին. զո՞ր գերութիւն գերեաց։ Զսատանային. զնա իսկ գերի էառ, և զմահն և զմեղսն և զանէծսն։ Տեսանե՞ս զառն և զաւարն։ Իսկ ելն զի՞նչ է, եթէ ոչ զի էջ։ Զի՞նչ հարկ 'ի վերայ կայցէ. Յաղթեա ել, միթէ և էջ արդեօք։ Զայս ընդդէմ Պաւղոսի սամոսատացւոյ աշակերտացն 'ի դէպ է ասել. ամաչեսցեն, յերկիր կործանեսցին։

“ Որ էջն, ասէ, նոյն է և որ ելն 'ի վերոյ քան զամենայն երկինս, զի լցցէ զամենայն „ ։ Ի ստորին կողմ, ասէ, էջ, որում չիք հանգոյն այլ խոնարհութիւն. և 'ի վերոյ քան զամենայն երկինս վերացաւ, որում չիք զուգական այլ բարձրութիւն։ Տեսանե՞ս զի զմիօջէ ասէ և ոչ զերկուց. “ Որ էջն, ասէ, նոյն է և որ ելն 'ի վերոյ քան զամենայն երկինս „ ։ Էջն ըստ մարդկան զիջանելն յայտ առնէ, և ելն ըստ մերոյ բնութեան բարձրանալ 'ի բարձունս. և իւր է և միոյն և էջն և ելն, և իբրև միոյ երեսաց և ոչ երկուց. և այնմ իւր տէրութիւնն բաւական էր և ազդումն։ Զի և մինչ առ հօրն էր, զամենայն լնոյր. և մինչ 'ի մարմնին էր, և 'ի հօր և յամենայնի և զամենայն լնոյր. 'ի վեր լեալ կատարեալ և 'ի խոնարհ լեալ բովանդակեալ. և իւր և միոյ երեսաց են խոնարհագոյնն և մեծամեծք, խոնար-

հագուստքն իւրոյ մարդկութեանն և մեծամեծք նորին աստուածութեանն ։

«Այս նա է, ասէ, զոմանս առաքեալս, զոմանս մարգարէս, զոմանս աւետարանիչս, զոմանս հովիւս և վարդապետս 'ի հաստատութիւն սրբոց 'ի գործ պաշտաման, 'ի շինուած մարմնոյն Քրիստոսի»։ Այլուր ասէ՝ թէ ինձ զնա բարձրացոյց, և աստ՝ թէ որ էջն նոյն է և որ ելն. նախ իսկ տայ զվերանալն։ Որպէս և մարգարէն ասէ՝ թէ «Որ շինէ 'ի բարձունս զելս իւր և զաւետիս իւր յերկրի հաստատէ, տէր ամենակալ անուն է նորա»։ Տեսանես զի տէր ամենակալ է որ էջն ըստ զիջանելոյ և վերացաւ ըստ մարդկութեանն. և ոչ ինչ վնասեաց նմա 'ի ստորին կողմանն երկրի իջանելն, և ոչ խափան ինչ եղև լինելոյ 'ի վերոյ քան զերկինս։ Այսպէս ուրեմն որչափ խոնարհիցի ոք, նոյնչափ առաւել բարձրանայ։ Որպէս և զջուր որչափ 'ի խոնարհ ոք ստիպիցի՝ այնչափ 'ի վեր գայ, և որչափ 'ի բացեայ ոք ձգիցէ՝ նոյնչափ առաւել դիպեցուցանէ. նոյնպէս և 'ի խոնարհութեանն որչափ և խոնարհի ոք, այնչափ բարձրանայ։ Այլ յորժամ վասն մեր եղանել ասիցէ, նախ զիջանելն 'ի միտ ածանուցուս. և յորժամ զմարդոյ ումեք, ոչ ինչ նոյնպիսի։ Այս և զխոնարհականութիւնն և զիմաստութիւնն նորա յայտ առնէ՝ եթէ այնչափ ինչ գործեաց և այնքան կարող եղև, մինչ 'ի ստորին կողմ երկրի ոչ հրաժարեաց իջանել վասն մեր, և ոչ խառն 'ի խուռն ինչ զբաժինս շնորհացն բաշխեաց։ Այլուր ասէ թէ հոգին արար զայն, քանզի ասէ՝ թէ «Յորում եդ զձեզ հոգին սուրբ տեսուչս հովուել զեկեղեցին մեր զոր գնեաց արեամբն իւրով»։ Այս աստ ասէ թէ որդի, և այլուր թէ ինձ, զհօրէ ասէ. և նա եդ յեկեղեցւոջ զոմանս առաքեալս, զոմանս մարգարէս։ Իսկ առ Կորնթացիս գրէ՝ թէ «Ես տնկեցի և Ապողոս ջուր ետ, այլ ինձ աճեցոյց». և դարձեալ թէ «Որ տնկեացն և որ զջուրն ետ՝ մի են, բայց իւրաքանչիւր վարձս ընդունելոց ըստ իւրաքանչիւրում վաստակոց»։ Այնպէս և աստ յորդւոյն դնէ զաստուածայնոյն շնորհսն ։ Այս արդ ընդէ՞ր [illegible] լինիցին որ այնչափ առնէր ։

Նախ զառաքեալսն իսկ դնէ[1]. քանզի էին ոմանք որ

1 Ցոյնն յաւելու. զի նոքա ունէին զամենայն. Եղեն և մարգարէք ։

չեղեալն խաւսեցաւ զնմանէ դեն, մինչ դեռ որպէս ընկերա-նեաց զնա. Թէպէտ և ճշմարտութիւն մատուցանէր, չառնոյր յանձն։ Յորժամ աղջիկն զոր ոգին հարցուկ ունէր՝ ասաց, եթէ «Այս արք են ծառայք Այ բարձ-րելոյ, որք պատմեն մեզ զփրկութեան ճանապարհն». սաստեաց սատանայազգոյն և կարկեցոյց զյանդուգն լե-զուն։ Պարծեալ և այլուր գրէ թէ «Խորտակեսցէ Այծ զսատանայ ընդ ոտիւք ձերովք մերձ ընդ մերձ», մինչ թէ բնութեան փոփոխումն ինչ արար։ Տեսանես զի չառ-նէ ինչ բնութեանն անձնիշխանութիւն, այլ զկամացն ասէ. քանզի կամօք են վատթարք քան զամենեսեան։

Բայց առ հրեշտակս չհպարտանայ, թող թէ առ իս, զի բազում ինչ 'ի մէջի կայ ընդ իս և ընդ ձեզ։ Թէ-պէտ և առ մարդ չպարտէիր հպարտանալ առաւել քան առ հրեշտակ. քանզի հրեշտակն չէ ինչ հեռի բնութեամբ, որ ոչ զօրութիւն ինչ է նմա և ոչ պարտաւանք. բայց մարդ քան զմարդ ոչ բնութեամբ, այլ կամօք է աւելի. և է այնպիսեաց 'ի մէջ մարդկան իբրև զհրեշտակ։ Զի թէ առ հրեշտակս չիցէ պարտ հպարտանալ, որչափ ևս առաւել առ մարդիկ որ զնոյն բնութիւն ունիցին և ա-ւելի են քան զհրեշտակս։ Թէ լինիցի ոք 'ի մէջ մարդ-կան առաքինի, առաւել ևս յոյժ մեծ է քան զնա, և ոչ նա։ Ընդէ՞ր. զի զօր նոյն բնութեամբ ունի, սա զայն կամօք ուղղեաց։ Եթէ վասն զի անդրեան հեռի իցէ հրեշտակն և յերկինս բնակիցէ, և սա ընդ երկրի շրջի և զգուշէ զքեզ 'ի նախանձ՝ յայն սակս հպարտանայցես, ո՞չ արդեօք նախ սա ևս առաւել հեռի է 'ի քէն քան զնա. «Մե՛ր, ասէ, առաքինութիւն յերկինս է»։ Եւ զի սա առաւել հեռի է 'ի քէն քան զհրեշտակն՝ լուր և 'ի միտ առ մեր նստի գլուխն. յաթոռն արքունական։ Որչափ հեռի է 'ի քէն աթոռն, նոյնպէս և սա։

Ոչ տեսանեմ, ասէ, 'ի մեծի պատուի վայելել, և 'ի նախանձ գրգռիմ։ Եւ այն իսկ է որ զամենայն ինչ վեր 'ի վայր օգտեաց. ոչ միայն զաշխարհս, այլ և զե-կեղեցի եւս բազում խռովութեամբ։ Զոր օրինակ 'ի նաւահանգիստ ինչ խաղաղ հողմ զառնաշունչ ընդդի-մակաց մտանիցէ՝ քան զամենայն վիմնուտս և զդժուա-րին տեղիս առաւել վտանգաւոր զնաւահանգիստն առնի-ցէ, և զմեծամեծ նաւսն իբրև զմանրականս ինչ 'ի սուզ-

ո՛ զառն արտասուք. զի զայն ամենայն բորբոքեաց և այրեաց սնապարծութեանն բռնութիւն ամենածախ բոցն, և չկարաց ոք գեր 'ի վերոյ լինել իրացն: Այլ կամք ամենեքեան ընդ բոցն պշուցեալք, և չիք ոք որ զչարիսն շիջուցանել կարիցէ. Թէպէտ և շիջուցանեմք առ սակաւ մի ժամանակ, այլ դարձեալ յետ երկուց և երից աւուրց իբրև յաճեան կայծակ մնացեալ դարձեալ բորբոքի և զառաջին վրէպսն գործէ: Նոյնպիսի ինչ և աստ լինի. որ և 'ի շինուածոյն Հրայրեացս սովորութիւն է լինել: Եւ պատճառք ամենայնի, զի նախ սիւնքն անկան 'ի հաստատութենէ, և անտի ճարակեցաւ եկն յամենայն շինուածն, նախ զնոքօք որ զշինուածն ունէին 'ի վեր՝ վառեցաւ հուրն, և 'ի նոցանէն յայլ ևս շինուածն ետ բոցն: Նա և 'ի շինուածսն յորժամ զփայտիցն հարկանիցի հուրն, յայնժամ առաւել վառի և տայ 'ի քարինսն: Յորժամ զսիւնսն այրիցէ և 'ի խոնարհ ընկենուցու, այնուհետև չիցէ ինչ ջան զայլս ամենայն մանր այրել: Յորժամ մոյթքն որ զշինուածն 'ի վեր ունիցին՝ անկանիցին, ապա բազում իսկ դիւրութեամբ ամենայնն յերկիր կործանեսցի: Նոյնպէս և այժմ եղև յեկեղեցւոջ. զամենեցունց հուր հարաւ, հրդեհ վառեցաւ. ըղպատիւս ևեթ 'ի մարդկանէ խնդրեմք, և զփառօքն ևեթ խանդաղակաթ լինիմք, և չլսեմք Յովբայ՝ որ ասէրն “Եթէ մեղանչէի կամակար, չպատկառէի 'ի բազմամբոխ ժողովրդենէն„: Տեսե՞ր զառաքինի ոգին. չհամարէր, ասէ, ամօթ առաջի ամենեցուն խոստովանել զկամայ և զակամայ զմեղսն: Եւ եթէ նա չհամարէր ամօթ, որչափ ևս առաւել մեզ պարտ է առնել զայն: “Ասա, ասէ, դու նախ զմեղս քո, զի արդարասցիս„: Բազում սաստկութիւն եղև չարեացս այսոցիկ. ամենայն ինչ եղծաւ ապականեցաւ. Թողաք զա̃ծ և պատուոյ ծառայ եղաք: Եւ ոչ ևս կարեմք սաստել որոց իշխիցեմքն, զի և մեք 'ի նմին ջերման ծնկիմք. քանզի և մեք կարօտ բժշկութեան եմք, որք կարգեցաք յայ̃ զայլս ողջացուցանել:

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Այլ արդ որ յոյս փրկութեան կայցէ մնայցէ մեզ. զի բժիշկքս այլոց ձեռաց ենք կարօտ։ Այլ զայս ոչ զուր ինչ ասացի, և ոչ վայրապար ինչ աշխարեմ, այլ զի ամենեքեան առ հասարակ 'ի մոխիր տարածանիցիմք, քուրձ զգեցուցումք, 'ի պահս մտանիցեմք, զհեծ առաչիցեմք, զի ձեռնկալու լինիցի, և շիջուցանիցէ զչարիսն. քանզի նորա ձեռինն պէտք են մեծին և սքանչելոյն. զի եւս մեծամեծս քան զնինուէացւոցն առ մեզ գործեցին։ «Երեք եւ աւուրք, ասէ, և Նինուէ կործանեսցի»։ Ահագին էր քարոզութիւնն և լի բազում սպառնալեօք. զինչ չէր ահագին՝ յետ երից աւուրց ակն ունել լինելոյ քաղաքին նոցա գերեզման, և միով պատժով կործանել ամենեցուն առ հասարակ։ Ո՜ր թէ դէպ լինիցի ընդ նոյն ժամանակս 'ի միում տան երկուց որդւոց մեռանել, անհնարին աղէտք լինին. նա և Յովբայ այն իսկ թուէին անհնարին չարիք, զի յամենեցուն վերայ միանգամայն անկաւ տունն։ Այլ անդ զինչ էր անսանել. ոչ մի տուն և ոչ երկուս որդիս, այլ ազգ մի ողջոյն երկոտասան բիւրուք՝ ծանկեալ 'ի կործանմանէն։ Գիտիցէ՞ք որչափ ինչ աղէտք են։

Այս և մեզ իսկ այնպիսի սպառնալիք եկին, ոչ մարգարէի բարբառով, քանզի և չեմք իսկ արժանի լսել զայնպիսի բարբառ. այլ քան զամենայն փողոյ բարբառ տուեալ նշանաւոր 'ի վերուստ եկեալ ցասմանն սպառնալեաց։ Նայց որպէս ասացի իսկ՝ թէ երեք աւուրք եւ և Նինուէ կործանեսցի, բազում աւուրք իսկ են յորմէհետէ տիեզերական եկեղեցիս 'ի կործանմանն բերէ մէջ, և մերձ և մօտ է յատակս իջանել. քանզի ամենեքեան առ հասարակ միով չարեօք վառեալ են. և եւս առաւել որք յիշխանութիւնսն իցեն, որչափ աւելի ինչ նոցա հարկ 'ի վերայ կայ։ Այլ ընդ այն մի ինչ զարմանայցէք զի եւս մեծամեծ քան զնինուէացւոցն ետու խրատ հնարս հնարել. քանզի ոչ եթէ պահս միայն քարոզեմ այժմ, այլ և զդեղն ցուցանեմ որով քաղաքն մերձ էր 'ի կործանել՝ և կանգնեցաւ։ Այլ զինչ իցէ. «Ետես, ասէ, տէր զի հեռացաւ իւրաքանչիւր ոք

'ի Ճանապարհաց խելոց չարաց, և զզջացաւ 'ի վերայ չարեացն՝ զոր խորհեցաւ ածել 'ի վերայ նոցա,,։

Զնոյն արասցուք և մեք և դուք. հեռասցուք յընչից ցանկութենէ և 'ի փառացն փափաքանաց. աղաչեսցուք զա̃ծ զի ձեռնտու լիցի և յարուցէ զանկեալ անդամսն։ Քանզի ոչ եթէ նոյն ինչ իրօքն է ահն. զի անդ քարինք և փայտք անկանելոց էին, և մարմինք՝ ապականելոց. իսկ աստ աւասիկ ոչ ինչ այնպիսի, այլ ոգիք մատնելոց են 'ի հուր գեհենին։

Աղաչեսցուք, խոստովան լիցուք, վասն առաջնոցն գոհացողք լիցուք, և յաղագս հանդերձելոցն աղաղակեսցուք. զի կարող լիցուք 'ի չար և յանհնարին գաղանէն զերծանել և առաքել գոհութիւն մարդասիրին այ̃. զի նորա են փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

"Մի մարմին և մի հոգի որպէս և կոչեցարուք դուք 'ի մի յոյս կոչման ձերոյ։ Մի է տէր և մի հաւատ և մի մկրտութիւն և մի ա̃ծ հայր ամենայնի որ 'ի վերայ ամենեցուն, և ամենայնիւ և յամենեսեան 'ի մեզ է։ Իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ տուեալ են շնորհք ըստ չափոյ պարգևացն Քրիստոսի,,։

Մեր խնդրէ 'ի մէնջ Պաւղոս ոչ դոյզն ինչ, այլ որ ընդ միմեանս բևեռեսցէ և անքակ 'ի միմեանց առնիցէ, և այնպիսի ինչ միութիւն իբրև անդամոց առ անդամս ցուցանիցէ հաստատութիւն. և այն է որ զմեծամեծ բարութիւնս գործէ։ Նմին իրի իսկ և ասէ՝ թէ "Մի մարմին և մի հոգի,,. զի և վշտակցութիւն կայցէ, և ընդ միմեանց բարիս չխանդայցեմք, և միմեանց ուրախակից լինիցիմք։ Եւ զամենայն իսկ այնու յայտ արարեալ, ցուցանէ զի մի մարմին և մի հոգի կոչեաց, և 'ի միոջէ մարմնոյ մի հոգի լինի։ Քանզի մարթի թէ իցէ մի մարմին, և մի հոգի չիցէ. որպէս յորժամ հերձուածողացն ոք բարեկամ իցէ։ Կամ թէ այնու իսկ պատկառեցուցանիցէ թէ մի հոգի առէք և 'ի միոջէ աղբերէ

տրբէք, չարարանք յերկուս միսս կայ ։ Այլ կամ թէ հա-գի սաս զյօժարութիւնն կոչիցէ ։

«Որպէս կոչեցարուք դուք, ասէ, 'ի մի յոյս կոչմանն ձերոյ»։ Այլ ա̃ծ զձեզ, ասէ, 'ի նոյն հաւասարակ կոչեաց, և ոչ ինչ աւելի ումեք քան ընկերին. պարգևեաց ա-մենեցուն զանմահութիւն, բոլորեցունց զկեանսն յա-ւիտենից, հաւասարակաց զփառս անմահականս, ամենե-ցուն զեղբայրութիւն, բնաւի զժառանգութիւնն չնոր-հեաց. հաւասարակաց ամենեցուն եղև գլուխ, զամենե-սեան ընդ իւր յարոյց և ընդ իւր նստոյց։ Այլ արդ որ 'ի հոգևորսն այսչափ ունիք զհաւասարակ պատիւն, իւ մե-ծամեծայցէք, ուստի հպարտանայցէք. զի ոմն մեծ իցէ և ոմն հարուստ. և զիա՞րդ չիցէ այս ծաղու գործ։ Ո՞չ է սա. եթէ այր թագաւոր ամենեցուն տասն այր, ամե-նեցուն ծիրանիս զգեցուցանիցէ և զամենեսեան յա-թոռն արքունի նստուցանիցէ և հաւասարակաց զնոյն պա-տիւ տացէ, միթէ իշխիցէ՞ ոք զընկերն նախատել, որ-պէս թէ մեծատուն ոք քան զնա և պայծառագոյն. և ոչ երբէք։ Այլ չև ևս զամենայն ինչ ասացի. քանզի ոչ այնչափ միայն խառոց կայ 'ի միջի. զի՛ յեկեղեցին հաւա-րակ եմք, և աստ ընդհատ 'ի միմեանց։

«Մի, ասէ, տէր և մի հաւատ և մի մկրտութիւն»։ Ահաւասիկ յոյս կոչմանն։ «Մի է ա̃ծ և հայր ամենայ-նի և 'ի վերայ ամենեցուն և ամենայնիւ և յամենե-սեան 'ի մեզ»։ Միթէ քեզ մեծ և նմա փոքր կոչե-ցաւ. միթէ դու հաւատովք և նա գործովք փրկեցաւ. միթէ քեզ թողու մկրտութեամբն և նմա չթողու՞։ «Մի է, ասէ, ա̃ծ և հայր ամենեցուն և 'ի վերայ ամենայնի և ամենայնիւ և յամենեսեան 'ի մեզ»։ Միթէ քո իցէ հայր և նորա՞ չիցէ։ Ո՛չ ինչ իցէ՝ 'ի վերայ ամենեցուն և 'ի վերայ ամենայնի և ամենայնիւն և յամենեսեան 'ի մեզ։ Ի վերայ ամենայնին իբրև զտէր 'ի վերայ ամենե-ցուն, և ամենայնիւն իբրև զպարփակիչ և զտեսուչ, և յամենեսեան 'ի մեզ բնակելովն. թէպէտ և որդւոց տան զբնակելն։ Այլ թէ նուաստութիւն ինչ էր, ապա ոչ զհօրէ ասէր։ Այլ արդ զի՞նչ ասիցէ, ուստի ընկեցէ զազգի ազգի չնորհսն։ Վասնզի այն իսկ միշտ զնոսա և զկարողութեանսն և զայլս բազումս զամենս 'ի հպարտութիւն ածէ, զա-մենս 'ի տրտմութիւն և 'ի նախանձ, նմին իրի ամենայն

ուրեք 'ի մարմնոյն օրինակ առնու. վասն այնորիկ և այժմ վճռեալ եդ, քանզի զպէսպէս շնորհացն յիշեցուցանելոց էր նոցա։ Զորոց հաւաստեաւ մանր 'ի կորնթացւոց թղթին համարի, քանզի և անդ ախտն այն ստահականայր։ Բայց աստ այժմ ակնարկեաց և եթ. և տես զինչ ասէ։

Չասաց թէ ըստ իւրաքանչիւր հաւատոց, զի մի 'ի տրտմութիւն անկցէ զայնոսիկ որ մեծամեծացն չհասին. այլ թէ՝ "ըստ չափոյ պարգևացն Քրիստոսի"։ Որ քան զամենայն գլխաւոր է, զայն ամենեցուն առ հասարակ շնորհեաց և զմկրտութիւնն և զհաւատովքն ապրել և զնոյն հայր ունել և ամենեցուն միում հոգւոյ հաղորդակից լինել։ Իսկ եթէ ոք աւելի շնորհս ինչ ունիցի, ընդ այն մի ինչ զչարանայցես, քանզի և վաստակք ինչ աւելի իցեն։ Այս և որ զհինգ տաղանդն էառ, զհըն-գի միայն զհամարս պահանջէ. և զերկուսն երկուս և եթ, և չկալաւ ինչ նուազագոյն քան զնորայն։ Վասն այնո-րիկ և աստ պատճառքն տայ մխիթարութիւն լսողին։ "Ի հաստատութիւն, ասէ, սրբոց 'ի գործ պաշտաման 'ի շինուած մարմնոյն Քրիստոսի"։ Այնպէս իրի և ինքն ա-սէր. "Վայ ինձ եթէ ոչ աւետարանեցից". այսպիսի ինչ առաքինութեան զշնորհսն էառ։ Նայլ վասն այնո-րիկ է նմա վայ. դու ազատ ես 'ի պատժոց։ "Ըստ չա-փոյն" ասէ։ Զինչ իցէ ըստ չափոյն։ Որպէս թէ ոչ ըստ մերում արժանաւորութեան, քանզի և մեք չէաք արժանի. և չառնոյր ինչ ոք, այլ ամենեքեան ձրի ա-ռաք։ Ընդէր ոմն աւելի և ոմն սակաւ։ Չառնէ ինչ, ա-սէ, այն. քանզի բազմադէմ են իրքն։ Իւրաքանչիւր ոք, ասէ, 'ի շինուածն մտեալ՝ զպէտս վճարէ. և վասն այ-նորիկ իսկ չառնէ յայտ եթէ ըստ իւրում արժանաւո-րութեանն ոմն շատ էառ և ոմն սակաւ, այլ այլովք՝ որ-պէս ինքն, ասէ, բաժանեաց։ Քանզի և այլուր ասէ՝ թէ զանազանման եդ զիւրաքանչիւր ոք 'ի նոցանէն որպէս և ինքն կամեցաւ։ Այլ չասաց թէ զբանն, զի մի շփոթեսցա-նիցէ զմիտս լսողացն։

"Վասն որոյ և ասէր իսկ՝ թէ ել 'ի բարձունս և գե-րեաց զգերութիւն և ետ պարգևս մարդկան"։ Նա-խնիքն թէ դու զի մեծամեծս. յայտ եղև ամենայն ինչ։ Մարգարէն ասէ 'ի սաղմոսին՝ թէ "Առառ և ետ պար-

գեւս մարդկան „ . և սա ասէ՝ թէ ետ պարգևս մարդկան ։ Այն է ։ Զխորգ իցէ նոյն ։ " Զի ելն զի՞նչ է, եթէ ոչ զի նախ էջ 'ի ստորինս կողմ երկրի . որ էջն նոյն է և որ ելն 'ի վերոյ ամենայն երկնից, զի լցցէ զամենայն „ ։ Զինչ . զամենայն ։ Զայս իբրև լսիցես, մի փոփոխումն ինչ 'ի տեղեաց 'ի տեղիս կարծիցես ։ Զի զօր 'ի փիլիպեցւոց թղթին յարդարէ, զնոյն և աստ . որպէս և անդ քանզի վասն խոնարհութեան խրատէր՝ զՔրիստոս 'ի մէջ էած օրինակ, նոյնպէս և աստ, քանզի ասէ՝ թէ 'ի ստորինս կողմ երկրի էջ ։ Իսկ եթէ չէր այս լեալ, ապա աւելորդ էր բանն զոր անդն ասէ՝ թէ հնազանդ եղև մահու չափ ։ Յեղանակելովն զիջանելն ակնարկէ ։ Իսկ 'ի ստորինս կողմ երկրի զմահն կոչէ ըստ մարդկան կարծեաց ։ Որպէս և Յակոբ ասէր՝ թէ " Իջուցէք զծերութիւն իմ տրտմութեամբ հանդերձ 'ի դժոխս „ . և որպէս 'ի սաղմոսին ասէ թէ " Նմանեցայ ես այնոցիկ որ իջանեն 'ի գուբ „ . այն իսկ է զի զմեռելոցն ասէ ։ Զո՞ր սակս մանր կրկնիցէ զտեղին . զո՞ր գերութիւն գերեաց ։ Զսատանային . զնա իսկ գերի եառ, և զմահն և զմեղսն և զանէծսն ։ Տեսանես զառն և զաւարն ։ Իսկ ելն զի՞նչ է, եթէ ոչ զի էջ ։ Զի՞նչ հարկ 'ի վերայ կացցէ . Իջեալ եղ, մինթէ և էջ արդեօք ։ Զայս ընդդէմ Պաւղոսի սամոսատացւոյ աշակերտացն 'ի դէպ է ասել . ամաչեսցեն, յերկիր կործանեսցին ։

" Որ էջն, ասէ, նոյն է և որ ելն 'ի վերոյ քան զամենայն երկինս, զի լցցէ զամենայն „ ։ Ի ստորինս կողմ, ասէ, էջ, որում չիք հանգոյն այլ խոնարհութիւն . և 'ի վերոյ քան զամենայն երկինս վերացաւ, որում չիք զուգական այլ բարձրութիւն ։ Տեսանես զի զմիօջէ ասէ և ոչ զերկուց ։ " Որ էջն, ասէ, նոյն է և որ ելն 'ի վերոյ քան զամենայն երկինս „ ։ Էջն ըստ մարդկան զիջանելն յայտ առնէ, և ելն ըստ մերոյ բնութեանս բարձրանալ 'ի բարձունս . և իւր է և միոյն և էջն և ելն, և իբրև միոյ երեսաց և ոչ երկուց . և այնմ իւր տէրութիւնն բաւական էր և ազդումն ։ Զի և մինչ առ հօրն էր, զամենայն լնոյր . և մինչ 'ի մարմնին էր, և 'ի հօր և յամենայնի և զամենայն լնոյր . 'ի վեր լեալ կատարեալ և 'ի խոնարհ լեալ բովանդակեալ . և իւր և միոյ երեսաց են խոնարհագոյնն և մեծամեծք, խոնար-

Հագոյնքն իւրոյ մարդկութեանն և մեծամեծք նորին աստուածութեանն։

«Եւ նա ետ, ասէ, զոմանս առաքեալս, զոմանս մարգարէս, զոմանս աւետարանիչս, զոմանս հովիւս և վարդապետս 'ի հաստատութիւն սրբոց 'ի գործ պաշտամանն 'ի շինուած մարմնոյն Քրիստոսի»։ Այլուր ասէ՝ թէ ա̃ծ զնա բարձրացոյց, և աստ՝ թէ որ էջն նոյն է և որ ելն. Նմին իսկ տայ զվերանալն։ Որպէս և մարգարէն ասէ՝ թէ «Որ շինէն 'ի բարձունս զելս իւր և զաւետիս իւր յերկրի հաստատէ, տէր ամենակալ անուն է նորա»։ Տեսանե՞ս զի տէր ամենակալ է որ էջն ըստ զիջանելոյ և վերացաւ ըստ մարդկութեանն. և ոչ ինչ փոխեաց նմա 'ի ստորին կողմանն երկրի իջանելն, և ոչ խափան ինչ եղև լինելոյ 'ի վերոյ քան զերկինս. Ապա ուրեմն որչափ խոնարհիցի ոք, նոյնչափ առաւել բարձրանայ։ Որպէս և զջուր որչափ 'ի խոնարհ ոք տանիցի՝ այնչափ 'ի վեր գայ, և որչափ 'ի բացեայ ոք ձգիցէ՝ նոյնչափ առաւել զխաղացուցանէ. նոյնպէս և 'ի խոնարհութեանն որչափ և խոնարհի ոք, այնչափ բարձրանայ։ Այլ յորժամ վասն ա̃յ իջանել ասիցէ, նախ զիջանելն 'ի միտ առնուցուս. և յորժամ զմարդոյ ումեքէ, ոչ ինչ նոյնպիսի։ Ապա և զխնամակալութիւնն և զիմաստութիւնն նորա յայտ առնէ՝ եթէ այնչափ ինչ գործեաց և այնքան կարող եղև, մինչ 'ի ստորին կողմ երկրի ոչ հրաժարեաց իջանել վասն մեր, և ոչ խառն 'ի խուռն ինչ զբաժինս շնորհացն բաշխեաց։ Այլուր ասէ թէ հոգին տար զայն, քանզի ասէ՝ թէ «Յորում եդ զձեզ հոգին սուրբ տեսուչս հովուել զեկեղեցին ա̃յ զոր գնեաց արեամբն իւրով»։ Եւ աստ ասէ թէ որդի, և այլուր թէ ա̃ծ, զհօրէ ասէ. և նա եդ յեկեղեցւոջ զոմանս առաքեալս, զոմանս մարգարէս։ Իսկ առ Կորնթացիսն գրէ՝ թէ «Ես տնկեցի և Ապողոս ջուր ետ, այլ ա̃ծ աճեցոյց». և դարձեալ թէ «Որ տնկեացն և որ ջրեացն մի են, բայց իւրաքանչիւր վարձս ընդունելոց ըստ իւրաքանչիւր վաստակոց»։ Նոյնպէս և աստ յորդւոյն դնէ զամենայն շնորհսն։ Եւ արդ ընդէ՞ր առաքեալք նախադաս լինիցին որ այնչափ առնէր։

Նախ զառաքեալսն իսկ դնէ[1]. քանզի էին ոմանք որ

1 Յոյնն յաւելու՝ զի նոքա ամենեքին ունէին զամենայն. Եկեղեցւոյ [illegible]։

առաքեալք չէին, բայց մարգարէք էին, որպէս և Ագա-բոս․ Երրորդ զաւետարանիչսն, որ ոչ ամենայն ուրեք շրջէ-ին, այլ անդ աւետարանէին, որպէս Պրիսկիղա և Ա-կիւղաս։ Հովիւս, ասէ, և վարդապետս․ որով ամենայն իսկ ժողովուրդք անդէն իսկ զտեղեօքն հաստատեցեալ էին։ Եւ արդ զիա՞րդ, հովիւքն և վարդապետքն նուա-զագո՞յնք ևս իցեն։ Եւ կարի իսկ նուազագոյն քան զայ-նոսիկ որ շրջէին և աւետարանէին՝ նոքա որ նստէին և զմիով տեղեաւն պարապէին, որպէս Տիմոթէոս և Տի-տոս։ Եւ այլ ազգ ևս․ չէ մարթ ասել յայտ սահմանել զհնազանդութիւնն և զմեծարանսն, այլ յայլմէ թղ-թոյ։ Այս, ասէ, եւս․ և դու մի բանընդդէմ լինիցիս։ Նման զնոսա ասէ աւետարանիչս որք զաւետարանսն գրե-ցին։ "Ի հաստատութիւն սրբոց ՚ի գործ պաշտաման ՚ի շինուած մարմնոյն Քրիստոսի"։ Տեսանես զպա-տիւն․ իւրաքանչիւր ոք շինէ, իւրաքանչիւր ոք հաստա-տէ, իւրաքանչիւր ոք պաշտէ։

"Մինչև հասցուք ամենեքեան ՚ի մի միաբանութիւն հաւատոց և ՚ի գիտութեան որդւոյն Այ յայր կատա-րեալ ՚ի չափ հասակի լրման Քրիստոսի"։ Հասակ աստ զկատարեալ գիտութիւն ասէ։ Զոր օրինակ այր կատարեալ հաստատուն միտքն է, և մանկունք՝ զեղխ[1] և զաղփաղփուն խորհրդովք, նոյնպէս և ՚ի մէջ հաւատա-ցելոց։ "Ի միաբանութիւն, ասէ, հաւատոց"։ Այս-ինքն թէ մինչ ցուցանիցեմք ամենեքեան զի հաւատս ունիցիմք․ այն է միաբանութիւն հաւատոց, յորժամ ամենեքեան մի իցեմք, յորժամ բոլորեքեան առ հա-սարակ զխառնուածս գիտութեանն ճանաչիցեմք։ Մին-չև յայն ժամ պարտ է գործել․ վասն այնորիկ առեր զշնորհս զի զայլս շինեսցես։ Զգոյշ լեր գուցէ զանձն կորուսանիցես յորժամ ընդ ընկերին նախանձիցես։ Պատուեաց զքեզ Ած և կարգեաց զընկերն հաստատել։ Առաքեալք վասն այնորիկ, մարգարէք վասն նորին ի-րաց մարգարէանային և հաւանեցուցանէին, աւետա-րանիչքն աւետարանէին, հովիւքն և վարդապետք ՚ի նոյն կարգեցան, ամենեքեան ՚ի մի գործ կոչեցեալք։ Եւ զայն ինչ մի ասիցես թէ ընդէր այլ և այլ են շը-

1 Մեւան վէղն ։

նորհքն, այլ զայն ևեթ զի մի գործ ունէին. յորժամ ամենեքեան մի ազգ հաւատայցեմք, յայնժամ է միութիւն և միաբանութիւն։ Եւ զի զայն ասէ այր կատարեալ՝ յայտ իսկ է։ Բայց նա ասանիկ այլուր և տղայս կոչէ զմեզ, և թէ առ յաղագս կատարելոց եմք. այլ անդ այլուր նայի՝ զառ 'ի հանդերձեալ գիտութիւնն։ Տղայս կոչէ զմեզ, քանզի ասաց՝ թէ փոքր 'ի շատէ գիտեմք. զնովիմբ էած՝ թէ և օրինակօք և որ այլ ինչ նոյնպիսիք էին։ Նոյն աստ առ այլ իմն ասէ՝ առ վաղվաղակի փափուխումնն. որպէս և այլուր ասէ՝ եթէ կատարելոցն է հաստատուն կերակուրն։ Տեսանե՞ս զի և անդ կատարելոց կոչեաց, տես զի և աստ յաղորդօքն կատարեալս կոչէ։

“Զի մի յայսմհետէ, ասէ, իցեմք տղայք„։ Զսակաւ ինչ զչափն զոր առաքելոյն կալցուք, ամենայն փութով արագեսցուք հաստատութեամբ սրտիւ։ “Զի մի յայսմհետէ„։ Մի՛ն յայսմհետէ ասել՝ յայտ առնէ թէ երբեմն կրեցին ինչ այնպիսի. զանձն ընդ նոսա դնէ և պատմութեամբ կարգաւ զիրսն ուղղէ։ Վասն այնորիկ ասէ՝ այնչափ հիւսունք եղեն, զի չշարժիցի շինուածն, զի ոչ տատանիցի, այլ զի հաստատուն կայցեն քարինքն. Նոցա է խռովեն և տատանելն և դանդաչելն։ “Զի մի, ասէ, յայսմհետէ լինիցիմք տղայք խռովեալք և տատանեալք և դանդաչեալք ամենայն հողմով վարդապետութեամբ խաբէութեամբ մարդկան և խորամանկութիւ առ 'ի հնարս մոլորութեանն„։ Մի՛ լիցուք, ասէ, դանդաչեալք յամենայն հողմոյ։ Համարեցաւ մի լեառն միայն զհանգամանս կործանմանն. ցուցանէ և զերկմտեալ ոգիսն թէ յորչափ վտանգի են։ “Խաբէութեամբ մարդկան, ասէ, խորամանկութեամբ առ 'ի պատրանս մոլորութեան„։ Խաղէք[1] կոչեն որ զչափոյն և զաւելորդն 'ի մէջ բերիցեն։ Նոյնպիսիք են և խորամանկք. յորժամ գտանիցեն զմիամիտսն, վաղվաղակի դարձուցանեն, արագ արագ պատրեն 'ի մոլորութիւնն։ Նոյս տակաւին 'ի վարսն մխի։

“Ճշմարտեալք, ասէ, սիրով աճեսցուցուք 'ի նա զամենայն որ է գլուխ Քրիստոս. ուստի ամենայն մարմինն„։ Տեսանե՞ս զիարդ զաւստին զոր հօր ևեթ տան

1 Միւսն խաբէբայք։

Հերձուածողքն, ասա և Քրիստոսի տայ. «Ուստի ամենայն մարմին, ասէ, զօգեալ և հաստատեալ ամենայն խաղաղեօք բաշխիցն ըստ ազդման չափոյ իւրաքանչիւր կողման զաճումն մարմնոյ իւրոյ գործէ 'ի շինուած անձին իւրոյ մարմնովն[1] »: Կարի անյայտս իմն մեկնէ, այնու զի զամենայն միանգամայն կամեցաւ ասել: Այլ զոր ասէն այսպիսի ինչ է. զոր օրինակ մարմնոյ ոգին յուղղոյն իջանէ և ընդ յօդսն գնայ և զազդումն ոչ խառն 'ի խուռն տայ ամենեցուն, այլ ըստ չափոյ իւրաքանչիւր անդամոցն, որում զշատն կարող իցէ առնուլ՝ զշատն, և որում զսակաւն՝ սակաւ, քանզի այն է արմատ մարմնոյ, նոյնպէս և Քրիստոս ոգւոց որ զնմանէն կախեալ, զդարմանսն և զպարգևս շնորհացն ըստ չափոյն իւրաքանչիւր կողման զաճումն գործէ: Զինչ իցէ խաղաղեօք բաշխիցն: Այսինքն թէ զգայնովքն. զի ոգին որ տայ յանդամսն 'ի գլխոյն իւրաքանչիւր կողմանց անդամոցն խաղայ, և այնպէս ազդէ զգալն ընդ ամենայն մարմինն: Որպէս զի ասիցէ ոք թէ մարմինն յարժամ սնուցու 'ի տալոյն ըստ չափոյ անդամոցն գործէ յինքեան զաճումն: Կամ այլ ազգ ևս, եթէ անդամքն ըստ իւրաքանչիւր չափոյն ընդունին զբաշխս ոգւոյն և այնպէս աճեն: Կամ այլ ազգ ևս, եթէ հոգին 'ի վերուստ բըղխեալ առատութեամբ խաղայ յամենայն անդամսն, և բաշխի ընդ նմ իւրաքանչիւր որպէս ընդունել կարիցեն:

Իւ ընդէր յաւել զսիրովն: Քանզի ոչ է մարթ իջանել այնմ հոգւոյն ուր սէր չիցէ: Զոր օրինակ եթէ ձեռն 'ի մարմնոյ անտի հատանիցի, այս հոգի որ յուղղոյս բղխէ՝ քանզի խնդրէ զամբողջութիւնն և ոչ գտանէ, չշարժի 'ի մարմնոյն և ոչ հատանի և երթայ 'ի ձեռնն, թէպէտ և մօտ ուրեք կարեալ կայցէ, այլ թէ չգտանիցէ 'ի մարմնոյն՝ չխաղայ 'ի ձեռինն, նոյնպէս և աստ, թէ չիցեմք սիրով կապեալ, չիջանէ 'ի մեզ հոգին: Զայս ամենայն վասն խաղաղութեան ասէ: Ո՞չ ապաքէն եթէ շատ ոք առնուցու և եթէ սակաւ ոգի, զնոյն ոգի առնու 'ի միջէ գլխոյն առաքեալ, որ նոյնպէս ազդէ, նոյնպէս խաղայ. «Յօդեալ, ասէ, և հաստատեալ». այսինքն զի յամենայն զարմանս վայելիցէ: Ոչ

1 Այսպէս յօրինակն, զոր զինի սիրով ասեն:

վայրապար ինչ, այլ կարի խելօք և իմաստութեամբ պարտ է կալ հաստատուն ՚ի մարմնին. զի եթէ զտեղին փոխիցէ, չկայ այնուհետև ՚ի մարմնին: Որպէս ոչ միայն միանալ ընդ մարմնոյն պարտի, այլ և զիւր տեղին ունել. և եթէ անցանիցես ըստ քո սահմանն, չես այնուհետև միացեալ, նա և ոչ զոգին ընդունիցիս: Չիցէ՞ տեսեալ զանկերս ինչ որ ՚ի տեղեացն թափիցին ՚ի պէսպէս պատճառանաց. յորժամ յիւրմէ տեղւոյն խախտիցի և յընկերէն մեկնիցի, զկարգ ամենայն իսկ մարմնոյն ապականիչ լինի, բազում անգամ և մահ իսկ գործէ: Իսկ եթէ չիցէ հնար անդէն ՚ի տեղւոջն հաստատել, բազումք բազում անգամ հատանեն իսկ և ՚ի բաց ընկենուն և լոկ թողուն զտեղին. քանզի ամենայն ուրեք աւելորդն միապակար է: Նա և ՚ի բնութիւնս իսկ յորժամ մին ըստ իւր չափուն ելեալ բազմանայցէ, ամենայնի ապականիչ լինի: Այն իսկ է զօդեալն և հաստատեալն, զի յիւրաքանչիւր զիւր տեղին ունիցին և ոչ յընկերէն որ չիցէ նմա պարտ՝ անցանիցէ: Ի միտ առ, որչափ ինչ իցէ. դու զանգամսն յարես[1], և նա ՚ի վերուստ զզօրութիւնն բաշխէ: Ո՞ր օրինակ և ՚ի մարմնի է տեսանել այնպիսի անգամս ընդունիչս, նոյնպէս և զհոգին ընդունելոյ՝ ՚ի վերուստ է ամենեւին արմատն, զոր օրինակ ասա սիրտն է հոգւոյն ընդունիչ և լեարդն արեան և փայծաղն մաղձոյ և այլքն այլ ինչ, ամենեքեան զպատճառս յուղղոյն ունին: Նոյնպէս և մեծ արար զմարդն և յոյժ պատուեաց, և չկամի ՚ի նմանէ մեկնել, և զպատճառն զընքենէ կախեաց և զայլսն գործակիցս կացոյց, և զոմն յայս կարգեաց և զոմն յայն: Այսպիսի ինչ. Առաքեալ ամանն[2] է մարմնոյն, որ և զգլխաւորն ընդունի, այսինքն զամենայն ինչ առ ՚ի նմանէն իբրև երակօք և խաղաղեօք, զբանէն ասեմ, յամենեսեան ընթանալ անցանել առնէ զյաւիտենից կեանսն: Մարգարէն յառաջագոյն ասէ զհանդերձեալսն, և նա զնոյնս կազմէ և յօրինէ դնէ զմիջինան[3], և ինքն է որ տայ նոցա զկեանսն ՚ի հաստատութիւն սրբոց ՚ի գործ պաշտաման: Իսկ սէրն շինէ և ընդ միմեանս պնդէ և ընդ իրեարս յօդէ և հաստատէ:

1 Յօրինական յօդես:
2 զնմանէ. եղեալ ըստ յաւելին:
3 Յոյնն պակերան:

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Արդ եթէ կամիցիմք 'ի հոգւոյն վարիլ որ 'ի գրելոյն բղխէ, զիրերօք եկեսցուք, զմիմեանս ալխօղ կալցուք: Նշանք երկու են որ քակեն յեկեղեցական մարմնոյն. մի յորժամ սէրն ցամաքեսցի, երկրորդ յորժամ անարժանս ինչ յանդգնիցիմք առ 'ի կատարումն մարմնոյն. երկոքումբք քակիցեմք ալտահեան զանձինս 'ի լրմանէն: Եթէ որք զայլան կարգեցաք 'ի շինել՝ մեք նաւս 'ի քակել մատչիցիմք, որպիսի անցք ընդ մեզ չանցանիցեն: Զիք ինչ որ այնպէս զեկեղեցի կարէ քակել իբրև զիշխանասիրութիւնն. և ոչ որ այնպէս բարկացուցանիցէ զԱծ որպէս եկեղեցւոյ պառակտութիւնն: Թէպէտ և բազմապատիկ ինչ բարիս գործիցեմք և զմարմինն նորա յանդգնիցիմք կտտորել, ոչ ինչ նուազ պատիժս կրիցեմք որք զլրումն եկեղեցւոյ օտարել ջանայցեմք. զի այն յաշխարհաց շահ եղև և ոչ յախտաքինի ինչ միտս. խոկ միայն բնաւ ամենևին չէ ուրեք պիտանացու, այլ բազում և անչափ վնաս: Այլ զայս ոչ առ իշխանս միայն ասեմ, այլ և առ նոսա որք ընդ իշխանութեամբն իցեն:

Մեծ այր սուրբ ասաց, որ թուի թէ յանդգնագոյն ինչ իցէ, բայց սակայն համարձակեցաւ ասել. Ո՛չ ինչ իցէ. և ոչ մարտիրոսութեան, ասէ, արիւն կարէ զայնպիսի մեղս ջնջել: Զի՞նչ ասես, էր վասն մարտիրոսացն, յո՞ր սակս վկայիցես. ո՛չ ապաքէն վասն Քրիստոսի փառացն: Որ զանձն 'ի մահ վասն Քրիստոսի տայցես, զիա՞րդ իցէ զի զեկեղեցին պառակտիցես վասն որոյ և Քրիստոս զիւր զանձնն ետ: Լուր և Պաւղոսի. "Ոչ եմ արժանի, ասէ, կոչիլ առաքեալ, զի հալածեցի զեկեղեցին այ". աւերէի և աւար հարկանէի: Ոչ այն սակաւ վնաս քան զթշնամեացն, այլ կարի խոկ մեծ. զի այն և լուսաւորագոյն եւս առնէ զնա, և այս թշնամեացն եւս առաջի ամօթալից կացուցանէ յորժամ յիւրոց որդւոց պատերազմ կրիցէ: Մեծ օրինակ խաբէութեան թուի նոցա, յորժամ որք նոցա ծնեալ և սնեալ իցեն և անձառ խորհրդոյն 'ի վերայ հասեալ, և դառնայցեն յանկարծակի և զթշնամեաց գործ գործիցեն:

Զայս առ այնպիսիսն ասեմ որ անխտիր տայցեն զան-

ձևոյ այնոցիկ որ զեկեղեցին պառակտեցին ։ Այլ թէ կրօնս ինչ հակառակս ունիցին, վասն այնորիկ իսկ չէ պարտ խառնակել ընդ նոսա ։ Եւ եթէ 'ի նոյն միտս կայցեն, սակայն և այնպէս պարտ է փախչել 'ի նոցանէն ։ Ընդէր ։ զի զերկպառակութեան ախտն ախտանան ։ Գիտացէք զինչ անցք ընդ Կորխ և ընդ Դաթան և ընդ Աբիրոնի անցին ։ միթէ նոքա միայն ընկղմեցան ։ ոչ ապաքէն և որ ընդ նոսայն էին ։

Մի ինչ խօսիս, ասեն ։ նոյն հաւատք են, և նոքա յօրթոդոքսացն կրօնիցն իցեն ։ այսինքն յուղղակարծիցն կամ թէ որք ուղիղ փառաւորութիւն տայցեն, քանզի յերկուստեան լոյ օրթոդոքսն ։ Այլ ընդ մեզ ընդէր չիցեն ։ ոչ ապաքէն մի է տէր և մի հաւատ և մի մկրտութիւն ։ Զայս գիտեմ ։ կամ թէ նոցայն բարւոք իցէ և մերս չարահաւ[1], և կամ թէ մերս բարւոք, նոցայն անօրէն ։ Մ՛ի, ասէ, լիցուք տղայք խռովեալք և տատանեալք և դանդաչեալք յամենայն հողմոց ։ Այլ արդ զայն ինչ բաւական իցէ համարել, զի որ յօրթոդոքսացն կոչին՝ նոսա անուանիկ ձեռնադրութիւնն չէ հաստատուն, այլ ապական և կործանեալ ։ Այլ այլ զինչ օգուտ կայցէ անդ ուր ձեռնադրութիւնն չիցէ հաստատուն ։ զոր օրինակ 'ի վերայ հաւատոյն, նոյնպէս և 'ի վերայ ձեռնադրութեան պարտ է կալ ։ Ապա թէ ոչ և ամենեցուն ինչ պարտ իցէ զձեռս կատարել ըստ ռամկաց և քահանայանալ, ամենեքեան իսկ անխտիր մատիցեն ։ և այսուհետև 'ի զուր սեղանն կանգնի, ընդվայր լրումն եկեղեցւոյ, վայրապար քահանայիցն ձեռք համբառնայցեն 'ի միջոյ ժողովրդեանն, և ապականեսցուք զկարգն ։

Մ՛ի, ասեն, քաւ լիցի ։ Զիարդ ասիցես թէ քաւ լիցի, զի այն աւանիկ լինի երթայ ։ Ես ասեմ և վկայեմ ։ ոչ զանձինս ինչ գիտեմ, այլ զձեր փրկութիւնն ։ Աթէ ոք անխտիր լինիցի, այնպիսին գիտասցէ զանձին չափ ։ և եթէ չիցէ ումեք զայնմանէ փոյթ, այլ մեզ փոյթ է և հարկ 'ի վերայ կայ ։ "Ես, ասէ, տնկեցի և Ապողոս ջուր ետ, այլ Ած աճեցոյց" ։ Զիարդ կարիցեմք տանել կռապաշտիցն լեզուաց ։ եթէ վասն հերձուածոյն բամբասեն զմեզ, վասն այնպիսի իրաց զինչ

1 Միւսն չարափ ։

տուիցեն։ Եթէ նոյն կրօնք իցեն և նոյն խորհուրդք, ընդ-դէմ այլ իշխան և այլ եկեղեցի. ով անմիտ, ասէն, ՚ի բաց առէք. ամենայն ինչ քրիստոնէից մեծապարծութիւն է այն, իշխանութիւն առ նոսա և խաբէութիւն ՚ի նոցանէն. մերկացո զնոսա ՚ի բազմութենէն, և տես զի ոչ ինչ են. փարատեա ՚ի ժողովրդոցն, և տես զիարդ քայքային կարգքն։

Կամի՞ք ասեմ զոր ինչ զքաղաքէս մերմէ ասեն, զիարդ զմեզ բամբասեն ՚ի թեթևութիւն։ Ամենայն ումեք, ասեն, որ կամիցի համարձակ է գտանել աշակերտս, և չիցէ ոք երբէք որ յայտնանէ զերկիցի։ Ո՜ ծաղր և կատականք. որչափ անօթոյ արժանի իցէ այս։ Կայ միւս ևս ծաղր, մանաւանդ թէ միւս ևս անօթ. եթէ ոմանք որ առ մեզ են՝ ՚ի յառութիւնս ինչ ըմբռնիցին և սակաւ ինչ տասոա կրիցեն, անդ կայ երկիւղ բազում, կասկած յամենայն կողմանց թէ դուցէ ՚ի մէնջ ստանիցին[1] և անդ անկանիցին։ Բազում անգամ որոնցի այնպիսին և ընդ նոսա լիցի. ոչ զյանցաւորացն ինչ ասեմ, այլ որ չհամարիցէ զանձն յանցաւոր և առ նոսա կամիցի երթալ՝ գնասցէ։ Այլ լամ և կոծիմ և աշխարեմ և խորովիմ, զի իմ աղիքն յինէն կտտորատին. բայց ոչ այնպէս տրտմիմ որպէս թէ հարկ ինչ ՚ի վերայ կայցէ վասն այնպիսի երկիւղի չպահանջել զպատուհասն։ Ոչ եթէ տիրել ինչ ջանամք ձեզ հաւատովքս, սիրելիք, և ոչ ձոխութեամբ հրամայեմք. ՚ի վարդապետութեան համար կոչեցաք և ոչ յիշխանութեան և ՚ի հարկաւորութեան, այլ ՚ի թելադրաց և ՚ի խրատտուութեանց աշխի-ձան։ Որ խրատտուն իցէ, նա զիւրն ասէ և չբռնադատէ զլսողն, այլ զնա առնէ ընտրող տէր առասցելոցն. այնու ևեթ պատժապարտ գտանի, եթէ զինչ պարտն իցէ ասել՝ չասիցէ։ Վասն այնորիկ և մեք զայն ասեմք, զի մի լիցի ձեզ յաւուրն յայնմիկ ասել եթէ չասաց ոք մեզ և չպատուիրեաց, չէաք տեղեակ և բնաւ չհամարէաք եթէ մեղք իցեն։ Վասն այնորիկ ասեմ և վկայութիւն դնեմ թէ քան ՚ի հերձուածսն ելանել՝ զեկեղեցեաւն պատառել ևս անհնարին չարիք են։

Ազէ ապա, եթէ ոք ընդ թագաւորի իցէ և յայլ ոք

1 Այլպէս յօրինակն։

ձեռս չտայցէ, և զխուռն թագաւորին առեալ զծիրանիսն յաձեացն մինչև 'ի խոնարհ պատառիցէ և ծուէնս ծուէնս գործիցէ, միթէ սակաւ ինչ քան զայնոսիկ որ յայլսն ձեռս տայցեն տանջիցի. և յետ այնր և զթագաւորէն իսկ քուռն հարկանիցէ և սպանանիցէ և պատառ պատառ զանդամսն կոտորիցէ, որպիսի՞ ինչ վրէժս ըստ յանցանացն իցէ տալ բաւական։ Արդ եթէ 'ի թագաւոր ոք որ ծառայակից իցէ իշխեսցէ ձեռն արկանել՝ անհնարին վրէժս հատուցանիցէ, իսկ որ զՔրիստոսն սպանանիցէ և պատառ պատառ կոտորիցէ՝ որպիսում գեհենի չիցէ արժանի, ոչ այնմ զոր սպառնացեալն է, այլ թուի ինձ թէ այլում որ կարի դժնդագոյն է քան զայն։ Այլ որ միանգամ աստ էք պատմեսջիք այլոց, զի յաճախ կանանց է մոլս այս. և վասն այնորիկ նոցա որ 'ի բացէն են պատմեսջիք, և այսպիսի օրինակաւ արհաւիրս արկանիջիք։

Արդ եթէ ամենք տրտմեցուցանել և վրէժս խնդրել 'ի մէնջ այնու կարծիցեն, գիտասցեն թէ 'ի զուր ջանան։ Արդ եթէ յինէն վրէժս առնուլ կամիցիս, ես քեզ տամ օրինակ, զի քեզ մոլս չլինիցի և զվրէժսն խնդրիցես. մանաւանդ թէ չիցէ իսկ և այն վրէժխնդրութիւն առանց մոլսու, բայց սակայն սակաւ մոլս։ Յորժամ 'ի հրապարակի պատահիցես ինձ, ձեռակոծ[1] արասջիր, թուք յերեսս արձակեսջիր, գանալից առնիցես։ Մերկես զարհուրեսցիս 'ի բանիցս։ Ո՞չ իս ասեմ թէ ապտակեաց և զարհուրիս, և զանէրն քո գէշ գէշ պատառես և չզարհուրիս. զանդամսն տէրունական պատառ պատառ կոտորես և չերկնչիս։ Տուն հայրենի է եկեղեցիս, մի մարմին և մի հոգի։ Յինէն կամիս վրէժս առնուլ, շատ է այնչափ, և հանդարտես. ընդէ՞ր ընդ իմ 'ի Քրիստոսէ առնուս վրէժս. մանաւանդ թէ հիմ իսկ ընդդէմ խթանի աքացիցես։ Այլ ոչ ուրեք իսկ վրէժս առնուլ բարւոք է։ Յորժամ այլ մեղանչիցէ և զայլ թշնամանել՝ անհնարին աղէտք են. 'ի մէնջ մոլասեցար, ընդէ՞ր զայն որ ոչ ինչ մեղաւ քեզ՝ տրտմեցուցանես. յետին մոլորութեան նշանակ է այն։ Ոչ եթէ առակաւ[2] ինչ ասեմ զոր ասեմն և ոչ վայրապար, այլ որպէս իրքն իսկ

1 Մեկն. ապտակոծ։ 2 Օրինակն առ առակս։

են և ես ունիմ 'ի մտի. զի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ որք տրտմեալ իցեն առ մեզ և տրտմութեամբն անձանց վը-նաս արարեալ իցէ և այլով երթեալ, կամիցի զանս ըմ-պել և կոչկոճել զերեսս, մերկանալ և վէրս 'ի կողս առնուլ յայնպիսեացն որք յիրաւի կամ յանիրաւի մե-ղադիր լինիցին, զի 'ի մեզ թափէին զցասումն և ոչ այնպէս ինչ յանդգնել որ յանդգնեին։ Եթէ այն լինէր, չէին ինչ քանզի առն միոջ անպիտանի այնպիսի անար-գանս կրել։ Իսկ այլ ազգ ես. եթէ աղաչէի զա̃ծ թըշ-նամանեալս և զրկեալս, գիտեմ զի թողոյր զմեղսն. ոչ զի այնպէս ինչ համարձակութիւն ունիցիմ, այլ յոր-ժամ զրկեալն վասն զրկչին աղաչիցէ՝ բազում համար-ձակութիւն ունի. «Եթէ առ մարդ ոք մեղանչիցէ, ա-սեն, առ Տծ աղօթս արասցեն վասն նորա»։ Իսկ եթէ ես չէի բաւական, զայլ սուրբս սատար ունէի և աղա-չէի և վճարէի։ Իսկ արդ զո՞ աղաչիցեմք. քանզի ա̃յ իսկ թշնամանս արարին։

Իսկ արդ տես որչափ ինչ անհարթութիւն է որ զե-կեղեցւոյս կարգս խռովեն։ Ոմանք մտանեն իսկ ոչ այսր, բայց միայն թէ մի անգամ 'ի տարւոջն, և յայն-ժամ զուր և ընդվայր. և ումանք մտանել սակայն մտա-նեն, բայց 'ի զուր, այլ 'ի խօսս միայն և 'ի հակառա-կութիւն և յոչինչ պէտս օգտի. և որ զոգցես թէ 'ի փոյթ ան կարծեցուցանեն զանձինս, նոքա են որ զաղէտս զայս գործեն։ Եթէ վասն այսպիսի ինչ իրաց փութայ-ցէք, լաւ էր ձեզ 'ի հեղգացն կարգի մնալ. մանաւանդ թէ և այն իսկ լաւ էր թէ նոքա ևս չէին հեղգք, և մի ձեզ այնպիսի ինչ լինել։ Ոչ զձէնջ ինչ ասեմ որ աստ էք, այլ զնոցանէ որ անդր ատեանն անկան. ընդ չնու-թեամբ համար է և այն։ Եթէ չառնուս յանձն 'ի նո-ցանէ զայս լսել, թէ այնպէս իցէ՝ և մի զմէնջ. քանզի յերկոցունց միում պարտ է թէ անօրէն գործ իցէ։ Թէ զմէնջ ինչ այնպիսի կարծիս կարծիցէք, պատրաստ եմ 'ի բաց կալ յիշխանութենէս որով օրինակաւ և իցէ. Ջանացարուք զի մի միայն եկեղեցի կայցէ։ Իսկ եթէ մեք օրինօք ծնաք և սնաք, հաւանեցուցէք յանձն առնուլ փրկնացն թէ անարժանութե̃ նստան յաթոռն։ Ո այս ասեմ ոչ իբրև հրաման ինչ տալով, այլ զգուշացուցա-նելով և պահելով։ Վասնզի ամենայն ոք 'ի չափ հա-

տեսող են և ընդ իւրաքանչիւր գործոց տացեն համարս, աղաչեմ մի յորժամ զամենայն ինչ 'ի մեզ ընկենուցուք՝ համարիցիք եթէ դուք ազատք ինչ իցէք 'ի պատժոց, զի մի վայրապար խաբիցէք զանձինս։ Ի միտ առէք զի համարս իսկ տալոց եմք ընդ ոգւոց ձերոց, այլ յայնժամ յորժամ 'ի մէնջ ինչ ծուլութիւն լինիցի, յորժամ չյորդորիցեմք, յորժամ չսաստիցեմք խրատ, յորժամ չցուցանիցեմք վկայութիւն. յետ այնր ամենայնի հարկ լինիցի և ինձ ասել թէ անպարտ եմ ես յարենէ ձեր ամենեցուն, և զի զիմ անձն ապրեցուցի տէր։ Ասացէք զինչ կամիք, և ցուցէք իրաց պատճառս վասն որոյ կամիցիք աստի մեկնել և անդր երթալ, և ես յանձին կալայց և առաջի կացից։ Այլ գիտեմ թէ չասէք ինչ։ Վասն որոյ աղաչեմ զի դուք որ կայքդ՝ կացէք հաստատուն, և զնոսա որք քակեցան՝ ջանացարուք այսրէն ժողովել. զի առ հասարակ հանցուք զփառս այ̃, զի նմա են փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

«Զայս ասեմ և վկայեմ 'ի տէր մի այսուհետև ձեզ զնոյն օրինակ գնալ որպէս և այլ հեթանոսք գնան յունայնութիւն մտաց իւրեանց խաւարեալք մտօք»։

Վարդապետի ասան ոչ միայն խրատել և ուսուցանել և յարգարել և ուղղել զմիտս աշակերտացն պարտ է, այլ և երկեղուցանել և այ̃ մատանել։ Քանզի որ ինչ 'ի մարդկանէն ասիցի, որպէս 'ի ծառայակցաց՝ չէ բաւական մորմոքեցուցանել զմիտսն, հարկ է այնուհետև տեառն մատանել։ Այնպէս իսկ և Պաւղոս առնէ. վասն խոնարհութեան և միաբանութեան ճառեալ, և եթէ չէ պարտ ումեք հպարտանալ 'ի վերայ ընկերին, լուր զինչ ասէ՝ եթէ «Զայս ասեմ և վկայեմ 'ի տէր մի այսուհետև ձեզ զնոյն օրինակ գնալ որպէս և այլ հեթանոսքն գնան»։ Եւ չասաց թէ մի այսուհետև գնալ ձեզ որպէս և գնայիքն. քանզի այն կարի կսկծեցուցանէր զնոսա։ Ոչ ասաց, բայց զրեթէ զնոյն ասաց և յայ-

լոց եւեթ զօրինակն 'ի մէջ: Նա եւ առ Թեսաղոնիկեցիսն գրէ այսպիսի՝ թէ «Մի՛ 'ի հարուածս ցանկութեան որպէս եւ այլ հեթանոսք»: Զատայք մեկնեցարուք 'ի կրօնիցն նոցա. այն ամենայն յայ եղև, բայց ես եւ առ 'ի ձէնջ խնդրեմ զբարուոք գնացս ձեր. եւ այդմ զանէր մկայ կոչեմ զի ոչ ինչ խորշեցայ, այլ համարձակ քարոզեցի թէ չէ պարտ ձեզ ըստ ունայնութեան մտացն գնալ:

Զինչ իցէ ունայնութիւն. 'ի սնոտիսն պարզապէս: Զինչ իցեն սնոտիքն, եթէ ոչ ամենայն կեանք աշխարհիս. զորմէ եւ եկղեսիաստէսն ասէ թէ «Սնոտիք սնոտեաց, ամենայն ինչ սնոտի է»: Այլ թերեւս ասիցէ ոք. եթէ սնոտիք եւ սնոտեացն սնոտիք իցեն, ընդէ՞ր եղեն. եթէ այ գործ իցեն, զիա՞րդ սնոտիք են. եւ վասն այնորիկ եւ բազում եւ այլ բանք են: Այլ լուր, սիրելի. ոչ զայ գործսն սնոտիս ինչ ասաց, քաւ լիցի. ոչ երկինք սնոտի են եւ ոչ երկիր, ոչ արեգակն եւ ոչ լուսին, ոչ աստեղք եւ ոչ մարմինս. այլ ամենայն բարի է եւ յոյժ բարի: Այլ եթէ զինչ իցէ սնոտին, նմին իսկ եկղեսիաստէին լուիցուք. «Տնկեցի ինձ, ասէ, այգիս եւ արարի ինձ վարձակս եւ կատակս եւ արարի ինձ աւազանս ջրոց, եւ եղեն իմ հօտք եւ անդեայք. ժողովեցի ինձ ոսկի եւ արծաթ, եւ տեսի զի ամենայն ինչ սնոտի է. սնոտիք սնոտեաց ամենայն ինչ սնոտի է»: Լուր եւ մարգարէին որ ասէ. «Գանձէ եւ ոչ գիտէ ում ժողովէ զայն»: Այլ ըստ այնմ են սնոտիք սնոտեաց շինուածք գեղեցիկք, բազում եւ յաճախամուտ ոսկի, գերդաստանաց[1] դասակք սպասաւորքն որ 'ի հրապարակին այսր անդր զբամբիկան խաղիցեն[2], հպարտութիւն եւ մեծապարծութիւն, մեծամտութիւն, ամբարհաւաճութիւն: Այս ամենայն են սնոտիք. քանզի ոչ յայ եղեն, այլ 'ի մէնջ: Այլ ընդէ՞ր իցեն սնոտիք. քանզի ոչ ունին վախճան ինչ օգտանի: Սնոտի են իբր յորժամ 'ի փափկութիւնս եւեթ ծախիցին. եւ չեն սնոտիք յորժամ յաղքատս բաշխիցին: Այլ տեսցուք յորժամ 'ի փափկութիւնսն ծախիցին թէ չլիցեն սնոտիք. 'ի գիրութիւն մարմնոյն լինին, 'ի զգայս եւ 'ի փուք եւ յաղագս յաճախութիւն, գլխոյ թմբրութիւն եւ մարմնոյ թուլութիւն, ջերմութիւն եւ

1 Ոմանք գերդաստանաց:    2 Ոմանք խաղիցեն:

մեղկութիւն ։ Որպէս թէ 'ի կարաս ուր ծակ ջուր կըրցէ 'ի զուր խոնջի, նոյնպէս և որ փափկանայն՝ 'ի ծակ կարաս ածանայ ։ Զի սնոտի այն ասի որ կարծեսցի թէ ունիցի ինչ և չունիցի, զոր ունայն կոչեն և ընդվայր վաստակս և զուր յոյս ․ նա և զուրն և ընդվայրն սնոտիք ասին որ չիցեն իմիք պիտանացուք ։

Տեսցուք թէ ոչ ինչ իցեն այսպիսի իրք մարդկօրէնք ․ “Կերիցուք, ասեն, արբցուք, զի վաղիւ մեռանիմք ,,․ և այն զինչ վախճան իցէ ։ Զգեցարուք և ագցուք․ և այնր զինչ վախճան կայցէ․ և ոչ ինչ ։ Այնպիսի ինչ ճարտարապետեցին հեթանոսացն իմաստունքն, այլ 'ի զուր ցուցին զայնպիսի խիստ վարս և ընդվայր․ քանզի ոչ 'ի բարւոք ինչ վախճանն հայէին, այլ 'ի սնապարծութիւն և առ 'ի բազմացն պատիւ ։ Զի՞նչ իցէ առ 'ի բազմացն պատիւ․ և ոչ ինչ ։ Զի եթէ նոքա որ ըզպատիւն առնեն՝ կորնչիցին, որչափ ևս առաւել պատիւն ։ Որ այլում պատիւ տայցէ, նախ անձինն պարտի տալ․ և եթէ իւր չտացէ, այլում զիա՞րդ տացէ ։ Իսկ այժմ աւասիկ և յանարգաց պատիւս խնդրեմք, 'ի վատթարաց և յարհամարհելոց մարդոց, արդարև 'ի յանարգաց իսկ և 'ի նախատաց․ և այն զինչ պատիւ իցէ, զինչ մեծարանք ։ Տեսանե՞ս զի սնոտիք սնոտեաց են, ամենայն ինչ սնոտի է ։ Վասն այնորիկ ասէ․ “Ունայնութիւն մտաց իւրեանց ,, ։

Իսկ պաշտօն նոցա չիցէ՞ այնպիսի ինչ, ո՞չ ապաքէն փայտք և քարինք են ։ Զարեգակն 'ի ճրագի տեղ արար մեզ․ ո՞վ իցէ որ իւրում ճրագին երկիր պագանիցէ ։ Արեգակն լոյս տայ․ այլ յորժամ նա չկարիցէ տալ լոյս, ճրագն զնոյն գործ գործէ․ իսկ արդ ճրագին ընդէ՞ր չպագանիցես երկիր ։ Այո, ասէ, պագանեմ երկիր հրոյ ։ Ո՛ ծաղր և կատականք, որպիսի՜ թշնամանք ։ Նա և այլ իմն անմտութիւն․ որում երկիրն պագանես, ընդէ՞ր շիջուցանես, ընդէ՞ր կորուսանիցես, զմէ՞ սպանանիցես զաստուածն քո, ընդէ՞ր չտայցես զտուն քո լնուլ ։ Եթէ ոճ իցէ, ճարակեսցէ զմարմինդ, և մի՛ ընդ պուտամբ և ընդ կատսայիւ վառիցես, այլ 'ի սենեակն տանիջիր և 'ի կերպասեղէն հանդերձն հանգուսջիր ։ Դու աւադիկ ոչ միայն չտանիս անդր, այլ թէպէտ ուրեք ընդ ծերպս անդր մտանիցէ, յամենայն կողմանց 'ի բաց հալածես,

զամենեսեան միախուռն կոչես, իբրեւ ընդ չար ինչ գազանի մտեալ 'ի ներքս՝ աշխարհս եւ հեծես եւ անհնարին աղէտս զիրսն համարիս զաստուածոյն քո 'ի ներքս մտանել։ Այս զիմ ա̃ծն թէ հնար ինչ էր, 'ի գիրկս առնուլ, յաչս եւ 'ի բերանս համբուրել, եւ երանի տայի անձին եթէ այնմ արժանի լինէի, ոչ զի 'ի տունն միայն մտանէր, այլ զի եւ 'ի սրտիս բնակէր։ Զգեա եւ դու զհուրն 'ի սիրտ քո։ Ո՞չ ապաքէն ծաղու գործք են եւ սնոտիք սնոտեաց։ Բարւոք է հուր 'ի պէտս եւ ոչ յերկրպագութիւն, 'ի սպասաւորութիւն եւ ոչ 'ի պաշտօն առնուլ, 'ի ծառայութիւն եւ ոչ զի ինձ տիրեսցէ. նա վասն իմ եղեւ, եւ ոչ ես վասն նորա։ Եթէ երկիր պագանես հրոյ, ընդէ՞ր դու 'ի գահոյսն բազմեցլիս եւ առաստուածոյն քո զխոհակերսն կացուցանես. դու քեզէն իսկ լինիջիր եւ խոհակեր եւ հացարար, թէ կամիցիս եւ դարբին. քանզի չիք ինչ այլ արուեստ քան զնոսա պատուական, զի զայնու արուեստիւք ստէպ գայ աստուածն քո։ Դու ընդէ՞ր թշնամանս զարուեստն համարիցիս զորով ստէպ գայցէ աստուածն քո. ընդէ՞ր ծառայիցն հրամայիցես եւ ոչ դու քեզէն կայցես 'ի սպասու։ Բարւոք է հուր, քանզի բարւոք արարչին է արարած. բայց չէ ա̃ծ, այլ գործ ա̃յ. ոչ եթէ ա̃ծ կոչեցաւ, այլ սպասաւոր։ Զտեսանիցե՞ս եւ զյանդգնութիւն նորա. զի յորժամ զտանց վառիցի, չգադարէ չհանդարտէ, այլ զոր ինչ մօտ գտանէ՝ առ հասարակ սրբէ. եթէ ոչ հիւսանց ձեռք եւ կամ այլոց արուեստականաց շիջուցանիցեն զմոլորութիւն նորա, ոչ զբարեկամս ճանաչէ եւ ոչ զթշնամիս ընտրէ, այլ առ հասարակ զամենեսեան գերծու։ Եւ արդ այն ա̃ծ իցէ. եւ չամաչիցէ՞ք եւ չկորանայցէ՞ք։ Եւ արդարեւ բարւոք ասաց թէ "Յունայնութիւն մտաց իւրեանց"։

Իսկ արեգակն ա̃ծ իցէ. ուստի՞ եւ է՞ր վասն։ Զի լոյսն բազում, ասեն, ծագէ։ Այլ չտեսանիցե՞ս զի յաղթի յամպոյն եւ 'ի ծառայութեան կայ հարկի բնութեն, եւ երբեմն եւ խաւարի եւ ընդ լուսնով ծածկի. թէպէտ եւ ամպն տկարագոյն քան զարեգակն իցէ, սակայն բազում անգամ ունի եւ արգելու. եւ այն ա̃յ իմաստութեն գործ է։ Աստուծոյ ամենաբաւ պարտ է լինել, եւ սա բազում իւիք կարօտ է. եւ այն չէ ա̃յ։ Քանզի եւ օդով

արկանիցեն և ընդ յարկաւ ինչ դնիցեն և աղաւալից տա-
նիցեն, թէպէտ և սակաւագոյն իցէ, սակայն կաւ ի տանէ
ինչ և բուսանին սերմանիք. որպէս զի յայտ լինի է թէ
մեծ մասն յաղբոյն և յերկրէն է առ 'ի կատարումն
տնկոց և սերմանեաց. և այնմ առաւել քան զմիւսոցն
պարտ է երկիր պատգամել, որ երկնից կարօտ իցէ և օդոյ
և ջրոյ զի մի՛ մնասեսցին, որ իբրև սանձօք նուաճանջեն
զգապանաբար զօրութիւն նորա և չտան մեղանչել, քանզի
զի արձակէ զճառագայթան ընդ ամենայն տիեզերս իբ-
րև զձի ամեհի արշաւ:

Ողջ ասա մեր թադէոսի 'ի մէնջ զգայս, յորոյ խոյ տա-
ղիս դէմ եգեալ տարապէմ զնայցէ ած: Չէ ած փա-
կեալն և սահմանեալն և յեզր ելեալ. մարմնոց միայն է
այն և ոչ անմարմնաւորաց: Այլ զօրութիւն իմն կայ,
ասեն, 'ի նմա և շարժի: Այլ արդ այն զօրութիւն ա՞ծ
իցէ. և ընդէ՞ր ինքն կարօտ իցէ և չկարիցէ արգելուլ
զհուրն: Դարձեալ նոյն բանք են. զի՞նչ իցէ զօրութիւն
այն, լուսեղէ՞ն ինչ իցէ և յայն սակս տացէ զլոյսն, և
ընդէ՞ր նմա միայն հաղորդիցի և այլ ինքն չիցէ կարօտ:
Եթէ այսպէս իցէ, մեծ ինչ է արեգական: Մինչև ցե՞րբ
բաւիցս և բաւղակս շինիցեմք: Իսկ ջուրն, ասեն, չի-
ցէ՞ ած: Այլ այն իսկ ծաղու արժանի է որով կարի իմն
հակառակին: Այլ չիցէ՞, ասեն, ած որով զայնչափ պէտս
վճարեմք: Այլ զերկրէ դարձեալ նոյնպէս ասեն: Եր-
դարեւ յունայնութի մնաց իւրեանց խառաւրեալ որակիւք.

Այլ զվարուցն զի՞նչ պիտոյից հարցանելը. զի պտղնեղին
և չնան հեթանոսք, որք այնպիսի ասացուածս անձանց
անուանեն. նմանապէս իսկ զյամենայն ինչ անխոտոր
գործեն: Այլ եթէ 'ի մարդկան ականէ ևեթ պահել
կարիցեն, չիցէ ինչ որ զնոսա արգելուլ կարիցէ: Որոց
յարութեանն ճառք առասպելք թուին. իսկ դժոխոցն
ինչ պատմութիւնք՝ նա և այն յառասպելս համարին նո-
ցա: Այլ սէս զաստուածայական միտսն. յորժամ զաս-
տուածսն իւրեանց պոռնիկս անուանիցեն, չասեն թէ
առասպելք են, այլ հաւանին և յանձն առնուն. և յոր-
ժամ զսանդարանացն ճառիցեն, ասեն զիմաստասիրացն թէ
բանաստեղծք են, և որպէս կամին առասպելս կարկատեն,
զի յամենայն կողմանց եղծանի բարւոք կենացն հաւա-
տառութիւն: Այլ թերևս փիլիսոփայքն զանձն առա-

ւել լինի և պարկեշտագոյն քան զնոցայն. որք զխմոր-մինն մածանեն, այսինքն զբաշխն և զբախտն և զհմա-կատակագիր, և անամօթս և անատերունչ ասեն զամենայն՝ թէ չիցէ լինի ումեք փոյթ զումեքէ, այլ յանհաստ կա-տարոց իմեքէ է զնչայն ամենայնի։ Նա այլք մարմին ասեն զնծ։ Նակ այն զի՞նչ իցէ, ասէ սուս, զի զմարդկան շունչս շանց ասեն, և զմարդիկ պատարեն՝ թէ և շուն իսկ եղև ամն երբեմն և արիծ և ձուկն։ Մինչև ցե՞րբ ոչ դադարէք յառանցեալ 'ի զառանցեալ բանից, խա-ւարեալքդ սրտիւք։ Նա արդարև զամենայն լինել ընդ-մութ խօսին և 'ի խաւարի գործեն և զկրօնիցն և զվա-րուց։ Պատանգի ոչ լինի որ 'ի խաւարի կայցէ՝ կարէ տե-սանել խաւարեալսն. այլ թէ չունն տեսանիցէ, թերևս ոձ հանճարի. և եթէ ցանկ լինի զհանդերձից կառուցի, հանճարի թէ մարդ ոք կամ դև կալաւ. և անդ է բա-զում խառնակութիւն, անչափ ապակաւ զի զայնպիսի եր-կիւղ երկնչիցին. "Երկիցեն, ասէ, երկիւղ ուր ոչ իցէ երկիւղ"։ Նա ուստի պարտն է երկնչել չերկնչէին. այլ իբրև զմանկտի որ 'ի կրակ յանխնայ զձեռսն մխիցեն մնչղես 'ի դայեկացն կրիցին, և 'ի մարդոյ որ քարձ լինի զդեռոյցս՝ պակչիցեն։

Այնպէս և հեթանոսքն արդարև իսկ հանապազ մանկունք են. զի որ չէնն մեղք՝ յայնմանէ խորշին, 'ի մարմնոց աղտոյ, 'ի մեռելոյ, 'ի ծնելոյ, յաւուր խորհու-թենէ երկնչին, և այլ լինի նոյնպիսի իցէ. և որ այլ լինի մեղքն իցեն՝ պոռնկութիւն արուագիտութիւն չնութիւն չարութիւն, զայն չհամարին ինչ։ Նոյլ տեսանես զի 'ի մեռեալ յարժամ մերձենան՝ զձեռս լուանան, և 'ի մե-ռելոտի գործան հայեալք՝ չառնեն ինչ այնպիսի փոյթ. ինչս ժողովելոյ բազում հոգաբարձութիւն յանձին ու-նին, և 'ի հաւու ժամ ամենայն չարեացն փարատել հա-մարին. այնպէս խաւարեալ են սրտիւք, բազում խորա-նօք և կիւտիւք լի են մտք նոցա։ Նա յարժամ 'ի տա-նէ արտաքս ելանէ այնպիսին, ասէ՝ ամն պատահեաց, և հարկ է զի բազում ինչ վիշտս անցանիցեն ընդ իս այ-սօր։ Ոսպաւ ոք ժանգ յարժամ զօդ մատուցանիցէ, նախ զձախն կարկառ, չար պատահարս և թշնամանս իմն համարի զայն. եթէ նախ ձախու ոտամբն քայլիցէ, և զայն չար պատահարս իմն համարի։ Նա այս ամենայն

զանձինս մատնեցին ։ Ո՛չ խ՛րդ իցէ զի ա՛ծ մատնեաց զնոսա․ եթէ ա՛ծ մատնեաց, զխ՛րդ իցէ զի ինքեանք զանձինս մատնեցին ։ Տեսանե՞ս զի որ ինչ հակառակ թուի, չէ հակառակ․ այլ մատնելն թոյլ տալ է, 'ի կամս ապաստան առնել ։ Տեսանե՞ս զի վարքն անսուրբք՝ և կրօնից ինչ այսպիսեաց պատճառք են ։ "Ամենայն, ասէ, որ զչար գործէ, ատեայ զլոյս"։ Քանզի զխ՛րդ կարիցէ մարդ աղտեղի որ քան զխոզսն ևս չար թաթաւի 'ի տղմի, ընդ ամենայն կանանց մարմինս զանգեալ և ընչից ցանկացեալ, որ չիցէ երբէք փափագեալ զգաստութեան՝ սուրբ ինչ վարս յանձն առնուլ ։ Գործ, ասէ, արարին զիրսն ; և անտի եմուտ կուրութիւնն, անդուստ խաւարեցան և միտքն, և 'ի ծագել լուսոյ խաւար է աչաց որ ցաւոտք լինին․ ցաւոտք՝ կամ 'ի չարաչար ինչ մաղասոյ, կամ 'ի յաճախութենէ արբոյ և մաղձոյ լինին ։ Այնպէս և աստ յորժամ յորձանք երկրաւոր իրաց զտեսանելիս մտացն աչաց հեղեղակոծ առնեն, խաւարին 'ի մութ դառնան, և իբրև 'ի խորս ինչ 'ի ջուրցն բազմաց ընկղմեալք չկարիցեմք զարև տեսանել իբրև զխիթս ինչ և զարգելս որ 'ի բազում ջուրցն 'ի վերայ կայցեն ։ Այնպէս և մտացն աչաց լինի կուրութիւն սրտին, որ է անզգայութիւն, յորժամ չիցէ ինչ երկիւղ որ զոգիսն ընդոստուցանիցէ․ "Չիք, ասէ, երկիւղ ա՛յ առաջի աչաց նորա"․ և դարձեալ․ "Ասաց անզգամն 'ի սրտի իւրում թէ չիք ա՛ծ"։ Քանզի կուրութիւնն ոչ յայլ ումեքէ լինի, բայց յանզգամութենէն, զի այն իսկ է որ խնու զեղագսն ։ Յորժամ աւրն մածեալ 'ի մի վայր ժողովիցի, մեռանի անդամն և անզգայ լինի․ թէպէտ և խարիցես կամ հատանիցես կամ զինչ և առնիցես, ոչ զգայ ։ Այնպէս և նոքա, քանզի միանգամ մատնեցին զանձինս գիջութեանն, թէպէտ և հրով այրիցես և իբրև զերկաթ զբանն 'ի գործ արկանիցես, չմերձենայ հագդէ ինչ 'ի նոսա, քանզի միանգամ մեռաւ անդամն․ եթէ ոչ նախ զանզգայութիւնն պարուրիցես և որպէս թէ յողջ ինչ անդամս մատչիցիս, 'ի զուր ջանաս և ընդվայր վաստակիս ։

"Ամենայն ագահութեամբ" ասէ ։ Այսուիկ կարի եբարձ 'ի նոցանէ զպատասխանատուութիւնն․ քանզի մարթ էր նոցա թէ չէր կամեցեալ՝ ոչ ագահ լինել և

ոչ աղտեղանալ և ոչ որովայնապարար լինել և ոչ յայլ ինչ ցանկութիւնս զեղխել։ Մարթ էր յինչս և 'ի ցանկութե̃ և 'ի փափկութե̃ վայելել չափով. այլ քանզի անչափ վարեցան իրօքն, զամենայն եղծին ապականեցին։ "Ի գործս, ասէ, պղծութեան"։ Տեսանես զկարգ զրկէ զնոսա 'ի ներքելոյ թողութեանն։ Ի գործս պղծութեան, ասէ։ Ոչ յանկարծօրէն ինչ պատրանօք յանցեան, այլ գործ իսկ արարին զմեղանչելն և զբօսանս համարեցան։ Զամենայն պղծութեան, ասէ։ Զո՞ր պղծութիւն։ Զամենայն շնութիւնն և զպոռնկութիւնն և զարուագիտութիւնն և զնախանձ. և ամենայն իսկ մեղքն պղծութիւն են և ամենայն անկարգութիւն պղծութիւն և աղտեղութիւն է։

"Այլ դուք, ասէ, ոչ այսպէս ուսարուք զՔրիստոս. թէպէտ լուարուք արդեօք և 'ի նոյն ուսարուք որպէս է ճշմարտութիւնն 'ի ձեռն Յիսուսի"։ Իսկ եթէ լուարուք արդեօք՝ ոչ երկմտութեան ինչ է, այլ կարի հաստատութեան. որպէս և այլուր ասէ՝ թէ "Իրաւունք իցեն առ 'ի յա̃յ հատուցանել փոխարէն նեղութիւնս ձերոց նեղչացն". այսինքն թէ ոչ յայնպիսի ինչ գործս ուսարուք զՔրիստոս, զի թէ լուարուք արդեօք և 'ի նոյն ուսարուք որպէս է ճշմարտութիւնն 'ի ձեռն Յիսուսի։

"Ի բաց թօթափել 'ի ձէնջ ըստ առաջին գնացիցն զհին մարդն"։ Այս ուրեմն ուղիղ վարուք ուսանել է զՔրիստոս։ Որ չարաչար վարս ունիցի, չճանաչէ զնա և չճանաչի 'ի նմանէ. և լուր նմին իսկ զկարգ ասէ այլուր՝ թէ "Ոմն խոստանան ճանաչել և գործովքն ուրացեալ են"։ "Որպէս է ճշմարտութիւնն 'ի ձեռն Յիսուսի. 'ի բաց թօթափել 'ի ձէնջ ըստ առաջին գնացիցն զհին մարդն"։ Այսինքն թէ ոչ այսպիսի ինչ գործովք եղիր ուխտ, և ոչ վայրապար ինչ են կարգքս մեր, այլ ճշմարտութիւն. որպէս կամք ճշմարիտ են, նոյնպէս և վարքն պարկեշտ լինիցին։ Ունայնութիւն մեղք են և ստութիւնն չարիքն, և վարքն ուղիղ ճշմարտութիւն և զգաստութիւն. արդարև ճշմարտութիւն, և ունի վախճան բարւոք։ Իսկ անառակութիւնն յոչինչ պէտս վախճանի։

"Ապականեալն, ասէ, ըստ ցանկութեանց խաբէու-

թեան նորա,,: Որպէս ցանկութիւնքն նորա ապակա-
նելին, նոյնպէս և նա: Զիա՞րդ ապականելին ցանկութիւնք
նորա: Մահու լուծանելին ամենեքեան. լուր մարգա-
րէին. "Յայնմ աւուր կորիցեն ամենայն խորհուրդք
նոցա,,: Եւ ոչ միայն մահու, այլ և այլովք բազմօք.
քանզի գեղն և ցաւովք և ծերութեամբ եղծանի և մե-
ռանի, վասն ոյժ զօրութեանն. ըստ նոսին ծախի և
փափկութիւնն, քանզի ոչ նոյն ցանկութիւն է 'ի ծե-
րութեանն և ոչ նոյն զօրութիւն. և յայտ է 'ի Բեր-
զելլիայէ, թերևս և գիտիցէք զպատմութիւնն: Դար-
ձեալ և այլ ազգ ևս. նոյն իսկ ցանկութիւն ապականէ
զնոսա և կորուսանէ. որպէս և զասր զի յիւրմէ ծննդե-
նէ ապականի: Քանզի և փառացն ցանկութիւն կորու-
սանէ, նա և ցանկութիւնքն իսկ բազում անգամ կո-
րուսանեն. և ցանկութիւնն 'ի պատրանաց լինի և չէ
ստոյգ ցանկութիւն, այլ դառնութիւն: Պատրանք են
և կերպարանք և ցնորք առ աչօք. 'ի վերոյ իմն ցանկալի
երևելին, և արդեամբք ոչ այլ ինչ են իրքն, բայց միայն
թշնամութիւնք և տառապանք և դժկամակութիւն: Եւ
եթէ 'ի բաց անուցուս զպատրուակն և բանայցես զե-
րեսսն, ոչ այլ ինչ տեսանես, բայց միայն խաբէութիւն.
քանզի խաբէութիւն այն է յորժամ ոչ որպէս իցէն
երևեսցին, այլ որպէս ինչ չիցէն՝ կարծիս տայցէ. այն-
պէս լինելին պատիրքն:

Զորս մարդս դրոշմէ առաքեալ, և զզօրեցուցանէ իսկ
զօրինակն յայտնի արարից. բայց աստ երկուս, քանզի
ասէ՝ թէ "Ի բաց թօթափել զհին մարդն և նորոգել
հոգւով մտաց ձերոց և զգենուլ զնոր մարդն,,: Եւ 'ի
հռովմայեցւոց թղթին այլ ևս երկուս. որպէս յորժամ
ասիցէ՝ եթէ "Տեսանեմ յանդամս իմ միւս ևս օրէնս
հակառակեալ և ընդդէմ դարձեալ օրինացն մտաց ի-
մոց և գերեալ զիս օրինօք մեղացն որ են յանդամս իմ,,,
զմտացն ասէ և զմարմնոյ. և սոքա ըստ նոսա ունին ազ-
գականութիւն, ընդ ներքնոյն նորս և ընդ արտաքնոյն
հինն: Այլ երեքն ապականեցան. մանաւանդ թէ երեքն
իսկ իցեն, նորս, և հինն, և անձնաւորս և բնականն:

"Նորոգել, ասէ, 'ի հոգին մտաց ձերոց,,: Զի մի՛
ոք կարծիցէ թէ հին և նոր մարդն ասելով միւս ևս
մարդ մուծանէ, տես զիարդ յարդարէ: Նորոգել ասէ:

և լուր Քրիստոսի իսկ. «Եթէ ոչ, ասէ, առաւել լիցի արդարութիւնն ձեր քան զդպրացն և զփարիսեցւոցն, չմտանիցէք յարքայութիւնն երկնից»: Եւ դարձեալ արդար այն ասի, որ և ոչ մի ինչ ունիցի երկեւան: Սա և յատեանսն զայն ասեմք արդար որ զրկիցին և ոչ փոխարէն զրկիցէ: Եւ արդարեւ մեք եթէ յահագին ատենին արդարք առ միմեանս գտանիցիմք, կարեմք մարդասիրութե՞ ինչ հասանել: Քանզի առ ա̃ծ չէ հնար արդար գտանել. որչափ և ցուցանիցեմք արդարութիւնս ամենայն ուրեք, նա իբրաւ արդարութեամբքն յաղթէ. որպէս մարգարէն ասէ՝ թէ «Որպէս արդար լիցիս 'ի բանս քո և յաղթեսցես 'ի դատել քեզ»: Այլ առ միմեանս յորժամ զիրաւունս չկորուսանիցեմք, յայնժամ լինիմք արդար. մանաւանդ՝ թէ ցուցանել ես կարիցեմք թէ մեք յայլոց զրկեցաք, յայնժամ գտանիցիմք արդարք: Զխո՛րդ զգեցելոցն ասիցէ միւսանգամ զգենուլ: Զառ 'ի վարուց և 'ի գործոց զգեստուէն ասէ, թէ զոր 'ի մկրտութենէն առէք՝ զնոյն և այժմ վարուք և առաքինութեամբ նորոգեցէք. ոչ եւս այսուհետև ըստ ցանկութեանց խաբէութիւն, այլ ըստ ա̃յ: Իսկ սրբութեամբ ասել ասա զինչ է: Անպարտ լինել. վասն այնորիկ և զոգիս գնացելոցն անպարտս կոչեմք, այսինքն թէ չեն ինչ ումեք այսուհետև պարտական, ոչ մեղաց և ոչ թշնամեաց: Նոյնպէս և մեր սովորութիւն է ասել՝ թէ անպարտ եմ ես, չեմ ինչ ումեք պարտական: Եւ արդ զինչ այլ ինչ պարտիցիմք առնել. զգոյշ լինիցիմք գուցէ մերկանայցեմք զարդարութեան զհանդերձն, զոր մարգարէն հանդերձ փրկութեան կոչէ, զի և այնու նմանողք լինիցիմք ա̃յ, քանզի և ինքն իսկ զարդարութի̃ զգեցեալ է:

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Զայն հանդերձ զգեցցուք և մեք. քանզի զգենուլն ոչ այլ ինչ յայտ առնէ, եթէ ոչ չմերկանալն երբէք: Եւ լուր մարգարէին զինչ ասէ. «Զգեցաւ զանէծս որպէս հանդերձ, և եկեսցէ 'ի վերայ նորա». և դարձեալ թէ «Որ զգենուն զայս իբրև զօթոց»: Սա և մեր իսկ սովորութիւն է ասել զմարդկանէ թէ այս անուն զայս ա-

նուն զգեցաւ ։ Ոչ միայն զմի որ կամ զերկուս կամ զերե-
քի, այլ համապատաղ կամի զի զառաքինութիւն զգեցցուք,
և մի երբէք զատանիցիմք մերկք յայնպիսի զգեստուէ ։
Ոչ է ոչ այնպէս առակ և ծանակ է մարդ յորժամ մերկ
'ի հանդերձից է, որպէս յորժամ մերկն յառաքինու-
թենէն իցէ ։ Նմա իբր ծառայակիցքն տեսանեն զմեր-
կութիւնն, և անդ տէրն և հրեշտակք ։ Եւ տեսանի-
ցես ասա մերկ զոք 'ի հրապարակս, չչարչարեցիս չարչա-
միցիս. իսկ յորժամ զքեզ յայնպիսի հանդերձէ մերկ
տեսանիցես, ո՞րչափ ինչ աղէտք իցեն ։ Զտեսանիցես
զմուրողսն զոր բազումք զորոտոս կաչեն, զմարդ յա-
ծեալ ծփեալ շղլին, մանաւանդ որք խաբեբայքն իցեն.
ասայց աղքատացն թերևս ողորմիմք, բայց այնպիսեացն
չարգահատեմք որք զդրաւուցն խաղացեն, և զհանդերձսն
կորուսանիցեն. իսկ մեզ ած զիա՞րդ արգահատիցէ, թէ
զայնպիսի հանդերձս կորուսանիցեմք ։ Յորժամ տեսա-
նիցէ զոք սատանայ մերկ յառաքինութենէ, մեկ զե-
րեսս այնպիսւոյն և եղծանէ, հարկանէ խոցոտէ և մե-
ծամայն քրքջէ ։ Մերկասցուք յընչից, զի մի մերկանայ-
ցեմք յարդարութենէ. զի ընչիցն հանդերձ ապականէ
զարդարութեան հանդերձ ։ Փշեղէն հանդերձք են ինչքն.
և որչափ զգենուցումք զփուշն, ևս քան զևս մերկա-
նամք ։ Կծծութիւնն մերկանայ յայնպիսի զգեստուէ,
քանզի հուր է և հուր ծախիչ է հանդերձից ։ Ցեց է
մեծութիւն. և որպէս ցեցն զամենայն հարկանէ և ոչ
կերպարանացն ամենայն խնայէ, նոյնպէս և նա.

Այս արդ զամենայն զայն 'ի բաց ընկեսցուք, զի լինի-
ցիմք արդարք և զգենուցումք զնոր մարդն. մի ինչ հին
և մի առ աչօք և մի եղծանելի ինչ ունիցիմք ։ Չէ աշ-
խատութիւն առաքինութիւնն, և ոչ դժուարին ինչ առ-
ուղղել ։ Զտեսանիցես զմիայնակեցանս, զի նոքա և ըն-
տանիս թողլին և զկանայս և զորդիս և զամենայն պաշտ-
պանութիւն, և առաւելքոյ արտաքին զանձինս յաշխար-
հէ. քրձեայս զգենուն, մոխիր 'ի ներքոյ տարածանեն,
մնուրս ընդ պարանոցս արկանեն, 'ի փոքր ինչ խցկան[1]
դագաղեցուցանեն զանձինս. և ոչ զայն միայն բաւական
համարին, այլ և արտասուք և քաղցիւ հարկանեն զան-

1 Երկու օր. խցկան ։

այնու առաւել պարտի իշխան լինել, զի և առաքինութեամբն յաղթիցէ. ապա թէ յաղթիցի, չէ այնուհետև իշխան։ Տեսէք որչափ ինչ է Քրիստոսի գալստեանն զօրութիւն. զիարդ եբարձ զանէծսն. և բազում են կանանք քան զառնականայս. որչափ յաճախեաց ցածութիւնն քան զամուսնութիւնն. քանիօն այրիք զգաստացան, և չէ այսուհետև վայրապար ուրեք լսել բան ինչ յուռի 'ի կանանց։ Իսկ դու ընդէ՞ր այդչափ խեղկատակիցես [1]։

Եւ մի ինչ զանյուսիցն ասիցես. քանզի զարդասէր է ազգն, և քան զամենայն ինչ զայն թերութիւն յաճախ ունի. այլ գէթ այնու յաղթիցէք դուք նոցա, որք ընդ նոցա զարդն իբրև ընդ անձանց ինչ պաճուճանս յօրանայք։ Եւ թուի ինձ եթէ ոչ այնչափ կինն ընդ իւր ոսկի զարդն քրքուիցի [2], որպէս այրն ընդ նորա. և ոչ ընդ իւր կամարն այնպիսի ինչ զուարճանայ որպէս ընդ կնոջն ոսկի զարդն. ապա ուրեմն և այնմ դուք էք պատճառք, որ զկայծն արծարծէք և զբոցն բորբոքէք։ Եւ այլ ազգ ես, ոչ այնչափ մեղք կնոջն են, որչափ առնն. դու կարգեցար զնա յարդարել, և ամենայն ուրեք զառաջինն պատիւն ունիս. եթէ այնպէս իցէ, և այնմ լինիցիր վարդապետ, թէ չէ պարտ 'ի պէսպէս զարդս հատանել [3]. նա թերևս և դու իսկ զարդարիցիս. և կնոջ մարդոյ առաւել 'ի դէպ է զարդն քան առն. յորժամ դու զայն չարհամարհիցես, կինն զիա՞րդ արհամարհիցէ։

Ունին և այլ իմն աւելի զանապարծութիւնն, բայց և այն հասարակաց է արանց և կանանց։ Բարկացողք իմն են, այլ և այն հասարակաց է։ Բայց զոր աւելին ունին, այն չէ հասարակաց. զպարկեշտութենէն ասեմ, զերկիւղէն Քրիստոսի և զսիրոյն։ Եւ ընդէ՞ր, ասեն, արգել զնոսա 'ի վարդապետացն աթոռոյ։ Եւ այն բազում անջրպետութեան՝ որ 'ի մէջ արանց և կանանց՝ նշանակ է, թէպէտ և մեծամեծ կանայք էին յայնժամ. այլ ուր Պաւղոս և Պետրոս և այլ սուրբքն էին, զի՞նչ պէտք էին կանանց յայնպիսի իրս ժտել։ Իսկ այժմ յայնպիսի չարիս հասաք, զի և խնդրոյ ես անգամ ար-

1 Երկու օր. խեղկատակ կամ խեղկատակ իցես։

2 Երկաթագիրն փքքուիցի։

3 Երկու օր. հարկանել։

ժանի զիրան համարիմք, թէ ընդէ՞ր չաւատացանեն կա-
նայք. զի այնպէս 'ի նոցա տկարութիւնն իջանք:

Այլ զայս ոչ եթէ զնոսա ինչ յարգելոյ վասն ասեմ, բայց զի զձեզ պատկառեցուցից և խրատեցից և ողջեցից, որպէս՞ զի զպատշաճ իշխանութիւնն առեալ, մի զմեծութիւնն իշխանութեամբն յարգիցեմք, այլ զխնամակալութիւնն և զվերակացութիւնն և զառաքինութիւնն. զի այնպէս և մարմինն 'ի բարւոք կարգի կացէ, յորժամ ազնիւ իշխանի պատահիցէ: Այլ եղիցի ամենեցուն արանց և կանանց ըստ այ հաճոյիցն կեալ. զի արժանի լիցուք ամենեքեան յահագին աւուրն 'ի մարդասիրութեան տեառն վայելել, և խոստացելոց բարութեանցն հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

“Վասն այսորիկ 'ի բաց թողէք զստութիւն. խօսեցարուք զճշմարտութիւն իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում, զի եմք միմեանց անդամք: Բարկանայք և մի մեղանչէք. արեգակն 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ, և մի տայք տեղի սատանայի”:

Ասաց զհին մարդն բովանդակ. այսուհետև և ըստ իւրաքանչիւր անդամոյն դրոշմէ, քանզի այն իսկ է դիւրին առ ուսումն վարդապետութեան յորժամ ըստ իւրաքանչիւր անդամոցն ուսանիցիմք: Այլ զի՞նչ ասիցէ: “Վասն այսորիկ 'ի բաց թողէք զստութիւն”: Ո՞րմէ ստութենէ ասիցէ, միթէ զկռոցն: Ոչ վասն նոցա ինչ. թէպէտ և այն ստութիւն է, այլ նոցա չէր ինչ յայնժամ հաղորդութիւն ընդ կուռսն: Միմեանց, ասէ, մի ստէք. նենգութեամբ և խորամանկութեամբ մի գնայք ընդ միմեանս: “Խօսեցարուք զճշմարտութիւն իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում”: Նա և զպատկառեցուցիչն 'ի մէջ բերէ, թէ զի եմք միմեանց անդամք, մի

որ զընկերն խաբեսցէ. զոր առաքելականաւս ազգաւ վեր 'ի վայր լինի յանձնս երգէ եթէ «Շրթամբք նենգաւորօք սըրտէ 'ի սիրտ խօսեցան»։ Ոչ չիք ինչ և չէ իսկ որ այնպէս թշնամութիւն գործիցէ որպէս զխաբել և զպատրել։ Տես զկարգ ամենայն ուրեք պատկառեցուցանէ զնոսա մարմնովքն։ Մի, ասէ, ստեսցէ ակն ոտին և մի ոտն ականն։ Ո յաղիսի ինչ. եթէ փոս ինչ փորեալ իցէ և եղեգամբ և հողով ծածկեալ, և 'ի վերայ երկիրն հաստատուն թուիցի աչացն, ո՞չ ապաքէն ոտիւքն գործ իցէ որոնել և ճանաչել եթէ տեղի տայցէ և եթէ ոչ, ունիցի՞ եղուզ ինչ եթէ ոչ ունիցի. միթէ կարիցէ՞ ոտնն ստել, այլ որ ինչ էն՝ զայն պատմէ։ Եւս այլ զիմն. եթէ օձ տեսանիցէ ակնն կամ այլ ինչ գազան, միթէ ստիցէ՞ ոտիւնն և ո՞չ վաղվաղակի պատմեսցէ. և նորա 'ի սմանէ ուսեալ ոչ ևս յանդուգն 'ի վերայ երթայցէ։ Եւս եթէ ակնն և ոտն չկարիցեն ճանաչել, այլ ամենևին ապաստան ցհոտոտելիսն իցէ, զուցէ թէ դեղ ինչ մահասակար իցէ, միթէ ստիցե՞ն հոտոտելիքն բերանոյն. ո՞չ ապաքէն և ինքեանք ընդ նմին կորնչին. այլ որ ինչ նոցայն 'ի դէպ իցէ ճանաչել՝ պատմեն։ Կամ թէ լեզուն ստիցէ՞ ստամոքսին. ո՞չ ապաքէն որ ինչ զառն և դաժան է՝ զայն 'ի բաց թքանէ, և որ ինչ քաղցր իցէ՝ զայն 'ի ներքս կլանէ։ Տեսանե՞ս զսպասաւորութիւնն և զփոխարինօքն միմեանց ծառայութիւն։ Տեսանե՞ս զճշմարիտ խնամակալութիւնն և սերտ սիրով զմիաբանութիւնն։ Նոյնպէս և մեք մի ստեսցուք, եթէ միմեանց անդամք եմք. զի այն է սիրոյ նշանակ, և նորին հակառակ թըշնամութիւնն։ Եւ եթէ նենգութեամբ գնայցէ, ասէ. հարց քննեա ճշմարտիւ 'ի վերայ հասիր[1], այնպիսին չէ անդամ։ Մի, ասէ, ստէք անդամոցն։

«Բարկանայք և մի մեղանչէք»։ Տեսանե՞ս զիմաստութիւնն. զի և ասէ իսկ՝ թէ որպէս զինչ[2] մեղանչիցեմք, և եթէ յանցանիցեմք, չթողու անգէն 'ի յանցանսն. քանզի չարայ նմա զուլթն հոգևոր աղեսցն։ Որ օրինակ և բժիշկ պատուիրէ հիւանդին զամենայն զոր ինչ պարտ իցէ առնել. և եթէ չառնայցէ, առկայն ոչ

1 Միւսն վերահասիր։

2 Միւսն որպէս զի. յոյնն որպէս չմեղանչիցեմք։

արհամարհեայ, այլ դարձեալ ողոքանօք և խրատու տալով բժշկէ, նմանապէս և Պաւղոս. զնոցայն ևեթ կամս առնէ՝ նա փառս ևեթ խնդրէ, և յորժամ արհամարհիցի ըմ-բոստանայ։ Իսկ որ զառաքինութիւն հիւանդին խնդրիցէ, նա 'ի նմին ևեթ հայի եթէ զիարդ կարիցէ կանգնել զանկեալն։ Նոյնպէս ինչ և Պաւղոս առնէ. մի, ասէ, ասէք. և եթէ յանկարծ լինիցի 'ի սաստութենէ բարկու-թեան, և զայն ևս դարձեալ բժշկէ. "Բարկանայք և մի մեղանչէք"։ Բարւոք է չբարկանալն. ապա եթէ ոք երբեք անկանիցի յախտն, մի յայնչափ ինչ անհնարին։

"Արեգակն, ասէ, 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ"։ Կամիցես յագել ցասմանդն, շատ է քեզ մի ժամն կամ երկրորդն և երրորդն, մի թողուցու զձեզ թշնամիս արեգականն և գնայցէ. յոյժ բարերարութե-նէն ծագեաց, մի թողուցու զքեզ անարժանս բարերա-րութեանն և գնայցէ։ Զի եթէ տէրն զնա առ իւրում բարերարութեանն առաքեաց և եթող քեզ զմեղսն, դու ընկերին ոչ թողուցուս։ Տես որչափ ինչ չարիք են։ Իսկ միւս ևս հանդերձ սովիմք. կասկածէ 'ի գիշերոյն երանելին Պաւղոս թէ զուցէ առնուցու զզիկեալն յան-շշունչ յանպարապս[1] վասն գիշերոյն պարապութիւն, ևս քան զևս հուրն բորբոքիցէ. իսկ մինչդեռ տիւն իցէ, որչափ և զբաղիցի ընդ քեզ, մարթի քեզ տանել։ Իսկ յորժամ երեկն հասանիցէ, հաշտեաց վաղվաղակի, զի մի զչարիսն. ապա եթէ գիշերն 'ի վերայ հասանիցէ, չկա-րիցես այնուհետև յետ այնորիկ զժողովեալ չարիսն շի-ջուցանել զչայգն։ Այլ թէպէտ և զմեծ մասն ցածու-ցանիցես, քանզի զամենայն չկարացեր, դարձեալ 'ի մնա-ցորդացն անդրէն մթերբ և նմին ցայգութեան և ևս սաս-տիկ վառէ զկրակն։ Զոր օրինակ և արեգակն եթէ զամպացեալ թանձրացեալ օդն չկարիցէ զչայգն փարա-տել, միւսոյ տուընջեանն ջերմութեամբ ձմերայնոյ պա-ղատս գործէ վաղուեան գիշերոյն, յորժամ դարձեալ մնացորդքն յայն հասանիցեն և ուռուցանիցեն զամպս այլովք շողուովք, նմանապէս և 'ի ցասմանն։

"Մի տայք, ասէ, տեղի սատանայի"։ Պատերազմ էր ա-մենևին զգուշանալ և առ նա հաստատել զթշնամու-

1 Միւսն յանպարապ։

թիւն. մեր զնորա թշնամութիւնն առեալ՝ 'ի միմեանս դարձուցանեմք: Ոչ երբէք այնպէս տեղի գտանէ սատանայ որպէս 'ի թշնամութեանն, և անտի ծնանին ազգի ազգի չարիք: Եւ զոր օրինակ մինչ իցեն մած ընդ միմեանս քարինք շինուածոյն և չկայցէ ինչ ունայն 'ի ներքս, անքակ կան 'ի միմեանց. ապա եթէ քան զա-զան ծակ 'ի միմեանց բաժանեսցեն և միով մազով չափ 'ի միմեանց անջրպետեսցին, թերևս և այն իսկ լինիցի ամենևին քակելոյ պատճառք. նոյնպէս և առ սատանայի, մինչ մեք ընդ միմեանս պնդեալ և յօդեալ իցեմք, չկարէ ինչ ամենևին յուրմէն 'ի ներքս արկանել: Իսկ յորժամ սակաւ մի ինչ թուլացուցանիցէ, ապա այնուհետև իբրև զհեղեղս ինչ 'ի վերայ հասիցէ զազգի ազգի հնարս թշնամութեանն: Ի սկզբան ևեթ թէ մուտ գտանիցէ, այնուհետև ինքնին իւր զամենայն ընդարձակէ. ապա և չարախօսութեանց զականջս բանայցէ, և որք սուտն խօսիցեն՝ հաւատարիմ թուիցին. քանզի զթշնամութիւնն ունի դատաւոր՝ որ ոչ զճշմարտութիւնն քննիցէ: Եւ զոր օրինակ 'ի բարեկամութեան սուտք ինչ չարիք սուտ թուին, նոյնպէս և 'ի թշնամութեանն սուտն արդար: Ո՛չ այլ միտք լինին, այլ ատեան. ոչ զկշիռն լսէ, այլ կարի իսկ անդր միտեալ: Եւ զոր օրինակ 'ի կշիռս եթէ կապար գնիցի՝ զամենայն յայնկոյս ձգէ, նոյնպէս և թշնամութեան ծանրութիւն ևս ծանրագոյն է քան զկապարն: Վասն այսորիկ աղաչեմ ամենևին հնարել զի յառաջ քան զարևուն մտանել թշնամութիւնն շիջանիցի: Եթէ յառաջինումն աւուրն ունիցիս զոխս 'ի սրտի, թերևս և 'ի վաղիւն, բազում անգամ և 'ի տարին իսկ ձգիցի, և ինքն զինքն այնուհետև աճեցուցանէ թշնամութիւնն և չիցէ ումեք կարօտ: Եւ զգանսն որ այլ ազգ սաստէին, այլ ազգ տայ կարծել, և զկերպարանս և զինչ և իցէ գրգռէ զայրացուցանէ և ևս չար քան զանկլիան հանիցէ յանդգ[1]. բնաւ զանուն իսկ ոչ ասել և ոչ լսել կամիցի. այլ չև յիշեալ և անդէն ըզբամբասանս ևեթ խօսեսցի:

Եւ արդ զիա՞րդ կակղիցեմք զցասումն, որպէս շիջուցանեմք զբոցն: Եթէ զանձանց մեղս զմտաւ ածիցեմք,

1 Միւսն յագայ:

եթէ զմեր յանցանսն յիշիցեմք, ապա այնուհետեւ չբարկանայցեմք. եթէ զմտաւ ածիցեմք եթէ որչափ պարտապան եմք այ. եթէ խելամուտ լինիցիմք եթէ ոչ 'ի թշնամւոյն վրէժս առնումք, այլ մեզ վրէժս հատուցանեմք. եթէ զմտաւ ածիցեմք եթէ զսատանայ ուրախ առնեմք զստոյգ թշնամին մեր, որով անզգամացն մերոց մեղանչիցեմք: Կամիս օրինակաւ եւ թշնամի լինել. ընդ սատանայի եւ մի քում անդամոցն: Վասն այնորիկ վառեաց զմեզ ած ցասմամբ, ոչ զի զնուրն 'ի մեր մարմինս ձգիցեմք, այլ զի 'ի սատանայի կուրծս թաղիցեմք. անդ մինչեւ ցկատարածն յագեցուցանիցիր. թէ կամիցիս եւ զկատարածն եւս 'ի ներքս արկանիցես. եւ մի երբէք 'ի բաց ձգիցես, այլ միշտ եւս սուր 'ի նոյն յաւելուցուս: Նա այս յաղթեալ լինի յորժամ մեք 'ի միմեանս խնայիցեմք, յորժամ ընդ միմեանս խաղաղութեամբ իցեմք: Որք ծնացեն ինչքն, որք ծնացեն փառքն եւ քաջութիւնք. քան զամենայն ինչ իմ անզգամն մեծարոյ է: Զայս առնեմք առ միմեանս, զի մի մեղանչիցեմք մերում բնութեանն վասն ինչս սատանայի եւ փառաց հասանելոյ:

«Որ գողանայրն, այսուհետեւ մի եւս գողասցի»: Տեսանես զանդամն հնոյ մարդոյն. սուտութիւն է եւ օխակալութիւն եւ գողութիւն: Ընդէր չասաց թէ որ գողանայրն զրկեսցի տանջեսցի քերեսցի, այլ զինչ, թէ «Այսուհետեւ մի եւս գողասցի, այլ առաւել վաստակեսցի ձեռօք իւրովք եւ գործեսցէ զբարիս, զի եւ ուժ ունիցի իցէ՝ տալ կարօտացէ»: Որ իցեն կաթոտանքն, այսինքն սուրբք աննուանեալք, որ առմենայն աղտով էին եւ զայս անուն իշխեն անձանց անուանել. զի գոյ եւ գոյ հնար զպատիժս մերկանալ, ոչ միայն 'ի մեղացն մեկնել, այլ եւ բարիս եւս գործել: Տեսանէք զիարդ մարթի ջրել զմեղս: Գողացան, եւ այն իսկ էին մեղք. եթէ չէր գողացեալ, ոչ եթէ այնու մեղքն ջնջէին: Այլ զիարդ. վաստակելովն եւ այլոց տալովն ջրէին զմեղս: Ոչ դոյզն ինչ զգործս մեր կամի, այլ զվաստակելն եւ այլոց տալ. քանզի եւ որ գողանայն՝ գործէ, այլ չար գործէ:

«Ամենայն բան տգեղ 'ի բերանոյ ձերմէ մի ելցէ»: Զինչ իցէ տգեղն. զոր եւ դատարկն ասէ, զչարախօսութիւնն, զբանս պարշելիս, զխեղկատակութիւն, զնե-

րախօսութիւն։ Տեսանե՞ս զիարդ կտրէ զարմատ ցասմանն, զստութիւն, զգողութիւն, զխօսս ընդվայրահանս [1]։ Ո՛չ այսուհետև գողասցին ասելով, ոչ այնչափ նոցա ինչ ներէ, որպէս զղրկեալն կամի զգօնացուցանել. և այսուհետև ասելով՝ թէ մի ևս զնոյն ախտ ախտանալ, այլ զիւրեանցն բաւական համարել խրատէ։ Քանզի ոչ ընդ գործոց ևեթ, այլ և ընդ բանից տայցեմք դատաստանս։

“Այլ որ ինչ բարին իցէ, ասէ, 'ի շինուած պիտոյիցն, զի տացէ շնորհս լսողացն„։ Այսինքն թէ որ զլսելերն շինիցէ, զայն ևեթ պարտ է խօսել և առելի ինչ ոչ։ Վասն այսորիկ ետ քեզ Ած բերան և լեզու, զի զնմանէ՞ գոհասցիս և զլսելերն շինեսցես. եթէ զլսելերն քակիցես, լաւ էր լռել և բնաւ երբէք չխօսել։ Զի և ձեռք ճարտարապետին որ փոխանակ զորմն շինելոյ՝ քակել մտաբերիցեն, կտրել պարտին. քանզի և սաղմոսերգուն զնոյն ասէ՝ թէ “Սատակեսցէ տէր զամենայն շրթունս նենգաւորս„։ Այսպիսի բերան է պատճառ ամենայն չարեաց՝ ոչ եթէ բերանն, այլ նոքա որ 'ի չարիսն ինչ զնա 'ի կիր արկանիցեն։ Ո՞րք են թշնամանք, բամբասանք և հայհոյութիւնք, հրայրք [2] ցանկութեանց, ստախօսութիւնք, շնութիւնք, գողութիւնք, ամենայն ինչ անտի ծնանին։ Իսկ ստախօսութիւնքն, ասեն, զիա՞րդ անտի ծնանիցին։ Ի թշնամանացն 'ի բարկութիւն գայ և 'ի բարկութենէն 'ի հարուածս և 'ի հարուածոցն 'ի սպանութիւն։ Իսկ շնութիւնքն զիա՞րդ իցեն անտի։ Այսանուն կին զքեզ սիրէ և զքեզ ևեթ յիշէ. և իսկ և իսկ քաղէ զկինդ, թողացուցանէ զօգուտ, և այնպէս բորբոքի 'ի քեզ ցանկութիւն։ Վասն այսորիկ ասէ Պաւղոս թէ որ ինչ բարին իցէ։ Քանզի չեն ինչ առաւել պարծանք բանից, նմանապէս առանց նշանակելոյ ասաց, և զայնս հրամայեաց բարբառել և ետ օրինակ. զո՞ր. թէ “Որ ինչ 'ի շինութիւն իցէ„. և կամ թէ զայն ասիցէ՝ թէ զի շնորհ ունիցի քեզ որ լսիցէն. Այսպիսի ինչ թերևս. պատահեցաւ քո եղբայր, մի ձաղիցես զթշնամանսն, քանզի չառնես ինչ օգուտ միսումն որ լսիցէ. այլ և վնաս ևս, թերևս և 'ի նախանձ

[1] Միւսն ընդվայրաբանս։ [2] Միւսն հրեայք։

եւս զրգռիցես զնա։ Ապա թէ յոր արժան իցէ գործել
յորդորեսցես, բազում շնորհս առնես նմա։ Եթէ խրատ
տայցես բարւոք միայն բանս հանել ընդ բերան, եթէ
ուսուցանիցես չքամբասել, առաւել ածեր 'ի խրատ և
ետուր նմա շնորհս։ Եթէ վասն 'ի խոր խոցելոյ յա-
ղագս յանցանաց է, եթէ վասն երկիւղածութեան խօ-
սիցիս, կակղէ այն ամենայն զմիտս նորա վասն ամենայ-
նի այնորիկ ունել քեզ շնորհս։ Ապա եթէ զլեզուդ
շարժիցես և անարժանս խօսիցիս, առաւել բորբոքես.
եթէ գովեսցես զչարսն, կործանես կորուսանես. կամ
թէ շնորհաւորս իսկ գործիցէ զնոսա։ Զոր օրինակ իւղ
ինչ անոյշ կամ խունկ շնորհս տան կրելեացն, նոյնպէս
և բանք բարիք. վասն այնորիկ և ոմն իմաստուն ասէր՝
եթէ "Իւղ անոյշ կաթեալ է անուն քո ինձ". զհա
անուշութեան տայ առնուլ նոցա։ Տեսանե՞ս զի զոր միշտ
խրատէ, զնոյն և այժմ աստ ասէ. իւրաքանչիւր ումեք
զընկերն պատուիրէ շինել ըստ իւրում կարի։ Եւ որ
այլոց այսպիսի խրատս տայցէ, որչափ եւս առաւել անձին։

"Եւ մի տրտմեցուցանէք, ասէ, զհոգին սուրբ"։
Կարի ինձ ահագին և զարհուրեցուցիչ է բանս. որպէս
'ի թեսաղոնիկեցւոց թղթին այսպիսի ինչ ասէ՝ թէ "Որ
անարգէն՝ ոչ զմարդ անարգէ, այլ զԱծ", նոյնպէս և
աստ ասէ. եթէ խօսեսցիս, ասէ, բանս թշնամանաց,
եթէ զայրացուցանես զեղբայրն, ոչ զնա զայրացուցեր,
այլ զհոգին տրտմեցուցեր։ Եւ զյաւելուած երախտեա-
ցըն յառաջ բերէ, որով առաւել յաճախէ զամբաստա-
նութիւնն։ "Մի՛ տրտմեցուցանէք, ասէ, զհոգին սուրբ,
որով կնքեցարուք յաւուրն քաւութեան"։ Նա երեւե-
ցոյց զմեզ խաշն արքունական, նա հեռացոյց զմեզ յա-
ռաջին գործոցն, նոյն չետ կալ մեզ ընդ պատժապարտս
յայս բարկութեանն, և դու զնա տրտմեցուցանե՞ս։ Տես
զիարդ ահագինս ասէ՝ թէ որ անարգէ՝ ոչ զմարդ ա-
նարգէ, այլ զԱծ։ Եւ աստ պատկառեցուցանելով և
ակնածութեամբ "Մի՛, ասէ, տրտմեցուցանէք զհոգին
սուրբ որով կնքեցարուք"։ Այս կնիք կացցէ 'ի վերայ
բերանոյ, մի առնուցուս զնշանակն 'ի բաց։ Բերան հո-
գևոր չխօսի ինչ այնպիսի։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Մ՚ի ասիցես թէ չեն ինչ բանք զծաղու բանս խօսել. եթէ թշնամանիցեմ զոք և ոչ 'ի սրտէ, զինչ վնաս իցէ։ Վասն այնորիկ իսկ մեծ վնաս է, զի չթուին ինչ վնաս. զի՝ որ չթուիցին ինչ, և արհամարհի վաղվաղակի և արհամարհանքն ևս քան զևս աճեն, և ուր և աճիցեն՝ առանց բժշկութեան լինին։ Հոգևո՛ր բերան ունիս. 'ի միտ առ որպիսի ինչ բանս բարբառեցար մինչ ծնանէիրն, որպիսի ինչ խօսք արժան իցեն բերանոյդ քում։ Զա̃ծ հայր կոչես, և զեղբայրն թշնամանե՞ս։ Զմտաւ ած ուստի կոչիցես զա̃ծ հայր. միթէ 'ի բնութենէ՞. ոչ, քանզի չունէիր զնա հայր. միթէ 'ի կամաց, և ոչ այնպէս ինչ. իսկ ուստի՞. միայն 'ի մարդասիրութենէն և 'ի գթոյ և 'ի բազում ողորմածութենէն ա̃յ։ Եւ արդ յորժամ հայր կոչիցես զա̃ծ, մի զայն և եթ զմտաւ ածիցես եթէ անարժանս ազնուականութեանն գործս գործես յորժամ զեղբայրն թշնամանես, այլ թէ 'ի մարդասիրութենէն ունիցիս զազնուականութիւնն։ Մ՚ի առնիցես զնա յամօթ եթէ 'ի խնամակալութենէն առեալ՝ անագորոյն մտօք ընդ եղբարսն գնայցես։ Հայր կոչես զա̃ծ և թշնամանե՞ս. չէ այն որդւոյն ա̃յ, այլ կարի քաջ 'ի բաց 'ի նմանէ։ Զինչ գործ իցէ որդւոյն ա̃յ։ Թշնամեացն թողութիւն առնել, վասն խաչահանուացն աղօթս մատուցանել, փոխանակ ատելեացն զանձին արիւն հեղուլ։ Այս ամենայն արժանի է որդւոյն ա̃յ, զթշնամիս զապախտաւորս զգողս զյանդգունս զնենգիչս՝ իւր եղբարս առնել և ժառանգակիցս. և ոչ որ եղբարքն են՝ զնոսա իբրև զստրուկս թշնամանել։ Զմտաւ ած որպիսի ինչ բանս բարբառեցաւ բերանդ, որում սեղանոյ արժանի եղև, յինչ մերձենայ, զինչ ճաշակէ, յոր կերակուր վայելէ, և չհամարիցես ինչ վնաս զեղբայրն բամբասել. և զիա՞րդ կոչիցես եղբայր. թէ չիցէ եղբայր, զիա՞րդ ասիցես հայր մեր, զի մերն բազում երեսաց նշանակիչ է։ Զմտաւ ած ընդ որպիսիս ոք կայցես յորժամ խորհուրդքն կատարեսցին. ընդ քրովբէս և սրովբէս, որք ոչ թշնամանեն, այլ զմի և եթ պէտս կատարեն նոցա բերանքն, զսուրբն ասել փառաւորեն զա̃ծ. և դու

զիա՞րդ կարիցես ընդ նոսա զսուրբ սուրբ սուրբն ասել, որ թշնամանաց ամանս ածանես զբերանդ։ Սպաս արքունական ես, և զցանկալի արքունի խորտիկք յայն միայն կարգեալ. արդ աղէ ասէ ո՞ ոք 'ի ծառայից այնպիսի անօթով իշխիցէ աղբ արտաքս կրել, և դարձեալ 'ի նոյն սպաս որ յայն կարգեալ իցեն՝ միւսանգամ բերել խառնել զոր միանգամ աղբոյն աման արար։ Ոչ ոք, ոչ ուրեք։ Եւ արդ զի՞նչ իցէ ամբաստանութիւնն. այսպիսի ինչ են թշնամանքն։ Հայր մեր ասես։ Իսկ այն ինչ միայն իցէ. լուր և զյաջորդսն՝ թէ որ յերկինսդ ես. և անդէն վաղվաղակի իբրև ասես թէ Հայր մեր որ յերկինսդ ես, կանգնէ զքեզ բանն, թռուցանէ զմիտդ, ցուցանէ թէ Հայր ունիս յերկինս։ Մի այլ ինչ գործիցես և մի զերկրաւորաց ինչ խառնիցես. զի 'ի վերին աշխարհին կարգեաց կացոյց զքեզ, յայնմ բնակութենէ համարեցաւ զքեզ. ընդէ՞ր զանձն 'ի խոնարհ ձգիցես. յաթոռն արքունական հասեր կացեր, և թշնամանես. և չերկնչիս թէ գուցէ իբր ինչ թշնամանս համարիցի զայն թագաւորն։ Այլ թէ ծառայ ոք մեր առաջի զիւր ծառայակից կամ հարկանիցէ կամ թշնամանս դնիցէ, թէպէտ և իրաւունք ինչ իցեն, վաղվաղակի 'ի սաստ մտանիմք, պատուհաս ածնեմք և թշնամանս զիրան համարիմք։ Իսկ դու առ քերովբէսն կաս, առ աթոռն արքունական, և թշնամանես զեղբայրն։ Զտեսանիցես զսուրբ զսպասն, ո՞չ ապաքէն 'ի մի ինչ իրս կարգեալ կան հանապազ. միթէ իշխէ՞ ոք զնոսա յայլ ինչ 'ի գո՞րծ 'ի կիր արկանել։ Իսկ դու որ և քան զսպասն ևս սուրբ ես և առաւել սրբազոյն, ընդէ՞ր աղտեղացուցանես զանձն և ընդ գայռ ածիցես։ Որ յերկինս հաստատեցար կացեր, և 'ի թշնամա՞նս հաստատեալ ես. ընդ հրեշտակս զինուորեալ, և 'ի թշնամանաց չակնածես. համբուրելոյ զտէրն եղեր արժանի, և թշնամանես զծառայակիցն։ Որպիսի պարկեշտութեամբ զարդարեաց ա͞ծ զբերանդ քո պէսպէս օրհնութեամբք կերակրով ոչ հրեշտակաց, այլ որ ինչ 'ի վեր է քան զհրեշտակացն՝ համբուրելով զտէրն իսկ, գրկախառն ընդ նմին լինելով, և թշնամանես։

Մի աղաչեմ. բազում չարեաց պատճառք են այնպիսի իրք, հեռի է 'ի քրիստոնէից ոգւոց։ Զհաւանեցուցանե՞մք խօսիւք, չկարե՞մք պատկառեցուցանել. եթէ

այնպէս իցէ, երկեցուցանել պարտ է. և լուր Քրիս-տոսի խակ. "Որ ասացէ ցեղբայր իւր մորոս, պարտա-պարտ լիցի 'ի գեհեննն հրոյ": Եթէ որ քան զամենայն ինչ թեթևագոյն է՝ գեհենի առիթ լինի, որ զյան-դգնեն խօսիցի՝ զի՞մ իմիք չլինիցի արժանի: Խրատեսցուք զբերանս մեր՝ բարի ևեթ բանս խօսել, զի յայնմանէ են բազում և մեծամեծ շահք, և 'ի թշնամանացն յա-ձախագոյն վնասք: Զի՞նչ անդ զինչս ծախել և ոչ պէտք թոշակաց: Դնիցուք դուռն և աղխ բերանոյ. և անձամբ անձանց արասցուք պատիժս եթէ բան ինչ յանդուգն ընդ բերան ելանիցէ: Աղաչեսցուք զՏէր, առաջի կաց-ցուք այնմ զոր թշնամանեցաքն. մի ինչ ստանայցեմք և մի ամօթ զիւրսն համարիցիմք. քանզի ոչ եթէ զնա վի-րաւորեցաք, այլ զանձինս. զմեզ խոցեցաք և ոչ զնա. գիտցուք դեղ վիրին զաղօթսն և զհաշտութիւննն ընդ այնմ զոր թշնամանեցաքն: Այլ մի միայն բանիւք հա-ճեսցուք, այլ առաւել ես արգելմամբք: Օրէնս դիցուք անձանց, եթէ բարեկամս ունիցիմք կամ զո և իցէ՝ և չար խօսեսցին, մի ընդ այնր վրէժս խնդրիցեմք. զանէ ուսցուք թէ ընաւ մեղք են այնպիսի իրք: Եթէ ուսա-նիցիմք, ապա վաղվաղակի 'ի բաց իսկ մերժիմք: Այլ ա̃ծ 'ի խաղաղութեան պահեսցէ զմեր միտս և զլեզու, և պարսպեսցէ ամուր պարսպաւ իւրով երկիւղին 'ի Ք̃ս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

"Ամենայն դառնութիւն սրտմտութիւն և բարկութիւն և աղաղակ և հայհոյութիւն բարձցի 'ի ձէնջ ամենայն չարութեամբն հանդերձ":

Զոր օրինակ յաման ինչ աղտեղի կամ 'ի հան-դերձ անուրը ոչ երբէք իջանէ ազգ մեղուաց, վասն այնորիկ և խունկս ծխեն և այլ ինչ որոյ հոտ անոյշ իցէ՝ զկայրդքն ցանեն, որ այնպիսի իրաց խեղամուտ ի-

արհամարհեալ, այլ դարձեալ ողոքանօք և խրատ տալով բժշկէ, նոյնպէս և Պաւղոս. զնոցայն ևեթ կամի առնել՝ նա փառս ևեթ խնդրէ, և յորժամ արհամարհիցի ընդբոստանայ: Այլ որ զառողջութիւն հիւանդին խնդրիցէ, նա 'ի նմին ևեթ հայի եթէ զիարդ կարիցէ կանգնել զանկեալն: Նոյնպիսի ինչ և Պաւղոս առնէ. մի, ասէ, ասէք. և եթէ յանկարծ լինիցի 'ի սաստելն բարկութիւն, և զայն ևս դարձեալ բժշկէ. "Բարկանայք և մի մեղանչէք": Բարւոք է չբարկանալն. ապա եթէ ոք երբէք անկանիցի յախտն, մի յայնչափ ինչ անհնարին:

"Արեգակն, ասէ, 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ": Արամիցես յագել ցասմամբքն, շատ է քեզ մի ժամն կամ երկրորդն և երրորդն, մի թողուցու զձեզ թշնամիս արեգակնն և գնայցէ. յոյց բարերարութենէն ծագեաց, մի թողուցու զքեզ անարժանս բարերարութեանն և գնայցէ: Զի եթէ տէրն զնա առ ի քում բարերարութեանն առաքեաց և եթող քեզ զմեղսն, դու ընկերին ոչ թողուցուս: Տես որչափ ինչ չարիք են: Այլ միւս ևս հանդերձ ասլիմք. կասկածէ 'ի գիշերոյն երանելին Պաւղոս թէ գուցէ առնուցու զզրկեալն յանշշունչ յանտառաստ[1] վայրս գիշերոյն պարապութիւն, և քան զևս հուրն բորբոքիցէ. իսկ մինչդեռ տիւն իցէ, որչափ և գրգռիցի ընդ քեզ, մարթի քեզ առնել: Այլ յորժամ երեկն հասանիցէ, հաշտեաց վաղվաղակի, շիջո զչարիսն. ապա եթէ գիշերն 'ի վերայ հասանիցէ, չկարիցես այնուհետև յետ այնորիկ զժողովեալ չարիսն շիջուցանել զցայգն: Այլ թէպէտ և զմեծ մասն ցածուցանիցես, քանզի զամենայն չկարացեր, դարձեալ 'ի մնացորդացն անդրէն մթերիւ նմին ցայգութեան և ևս առաւ տիկ վառէ զկրակն: Զոր օրինակ և արեգակն եթէ զամայացեալ թանձրացեալ օդն չկարիցէ զցայգն փարատել, միւսոյ տուընջեանն ջերմութեամբ ձմերանւոյ պատճառս գործէ վաղուեան գիշերոյն, յորժամ դարձեալ մնացորդքն յայն հասանիցեն և ուռուցանիցեն զամենայն այլովք շոգւովք, նոյնպէս և 'ի ցասմանն:

"Մի՛ տայք, ասէ, տեղի սատանայի": Պարտ էր ամենևին զգուշանալ և առ նա հատատել զթշնամա-

1 Միւսն յանդարդ:

թիւն. մեր զնորա թշնամութիւնն առեալ՝ 'ի միմեանս դարձուցանեմք: Ոչ երբէք այնպէս տեղի գտանէ սատանայ որպէս 'ի թշնամութեանն, և անտի ծնանին ազգի ազգի չարիք: Իբր զոր օրինակ մինչ իցեն մած ընդ միմեանս քարինք շինուածոյն և չկայցէ ինչ ունայն 'ի ներքս, անքակ կան 'ի միմեանց. ապա եթէ քան զասեղան ծակ 'ի միմեանց բանայցեն և միով մազով չափ 'ի միմեանց անջրպետեսցին, թերևս և այն իսկ լինիցի ամենևին քակելոյ պատճառք. նոյնպէս և առ սատանայի, մինչ մեք ընդ միմեանս պնդեալ և յօդեալ իցեմք, չկարէ ինչ ամենևին յուրմէն 'ի ներքս արկանել: Իսկ յորժամ սակաւ մի ինչ թուլացուցանիցէ, ապա այնուհետև իբրև զհեղեղս ինչ 'ի վերայ հոսիցէ զազգի ազգի հնարս թշնամութեանն: Ի սկզբան և եթ թէ սուտ գտանիցէ, այնուհետև ինքնին իւր զամենայն ընդարձակէ. ապա և չարախօսութեանց զականջս բանայցէ, և որք սուտն խօսիցին՝ հաւատարիմ թուիցին. քանզի զթշնամութիւնն ունի դատաւոր՝ որ ոչ զճշմարտութիւնն քննիցէ: Իբր զոր օրինակ 'ի բարեկամութեան առոյգ ինչ չարիք սուտ թուին, նոյնպէս և 'ի թշնամութեանն սուտն արդար: Ոչ միտք լինին, այլ ատեան. ոչ զկշիռն լռէ, այլ կարի իսկ անդր միտեալ: Իբր զոր օրինակ 'ի կշիռս եթէ կապար դնիցի՝ զամենայն յայնկոյս ձգէ, նոյնպէս և թշնամութեան ծանրութիւն ևս ծանրագոյն է քան զկապարն: Վասն այսորիկ աղաչեմ ամենևին հնարել զի յառաջ քան զարևուն մտանել թշնամութիւնն շիջանիցի: Եթէ յառաջնումն աւուրն ունիցիս զոխս 'ի սրտի, թերևս և 'ի վաղիւն, բազում անգամ և 'ի տարին իսկ ձգիցի, և ինքն զինքն այնուհետև աճեցուցանէ թշնամութիւնն և չիցէ ումեք կարօտ: Իբր զբանս որ այլ ազգ ասացին, այլ ազգ տայ կարծել, և զկերպարանս և զինչ և իցէ գրգռէ զայրացուցանէ և ևս չար քան զմոլիսն հանիցէ յանգոյ[1]. բնաւ զանուն իսկ ոչ ասել և ոչ լսել կամիցի. այլ չև յիշեալ և անդէն ըղբամբասանս եւեթ խօսեսցի:

Իբր արդ զիարդ կակղիցեմք զցասումնն, որպէս շիջուցանեմք զբոցն: Եթէ զանձանց մեղս զմտաւ ածիցեմք,

1 Միւսն յանգոյ:

եթէ զմեր յանցանսն յիշիցեմք, ապա այնուհետեւ չբարկանայցեմք. եթէ զմտաւ ածիցեմք եթէ որչափ պարտապան եմք Այ. եթէ խելամուտ լինիցիմք եթէ ոչ 'ի թշնամւոյն վրէժ առնումք, այլ մեք վրէժ հատուցանեմք. եթէ զմտաւ ածիցեմք եթէ զսատանայ ուրախ առնեմք զստոյգ թշնամին մեր, որով անդամանցն մերոց մեղանչիցեմք։ Նմանիս օտարակալ եւ թշնամի լինել. ընդ սատանայի եւ մի քում անդամոցն։ Վասն այնորիկ վառեաց զմեզ մծ ցասմամբ, ոչ զի զսուրն 'ի մեր անդամս ձգիցեմք, այլ զի 'ի սատանայի կուրծս թաղիցեմք. անդ մինչեւ ցկռուանն յագեցուցանիցիր. թէ կամիցիս եւ զկռուանն եւս 'ի ներքս արկանիցես. եւ մի երբէք 'ի բաց ձգիցես, այլ միւս եւս սուր 'ի նոյն յաւելուցուս։ Իսկ այս յայնժամ լինի յորժամ մեք 'ի միմեանս խնայիցեմք, յորժամ ընդ միմեանս խաղաղութեամբ իցեմք։ Ոչ մնասցեն ինչքն, ոչ մնասցեն փառքն եւ քաջութիւնք. քան զամենայն ինչ իմ անգամ մեծագոյն է։ Ոչ այս առնեմք առ միմեանս, զի մի մեղանչիցեմք մերում ընութեանն վասն ինչս ստանալոյ եւ փառաց հասանելոյ։

“Որ գողանայրն, այսուհետեւ մի եւս գողասցի„։ Տեսանես զանդամն հնոյ մարդոյն. ստութիւն է եւ ոխակալութիւն եւ գողութիւն։ Ընդէ՞ր չասաց թէ որ գողանայրն պատժեսցի տանջեսցի քերեսցի, այլ զի՞նչ, թէ “Այսուհետեւ մի եւս գողասցի, այլ առաւել վաստակեսցի ձեռօք իւրովք եւ գործեսցէ զբարիս, զի եւ ում պիտոյ իցէ՝ տալ կարասցէ„։ Ո՞ւր իցեն կաթարաքն, այնոքիկ սուրբք անուանեալք, որ ամենայն աղտով լի են եւ զայս անուն իշխեն անձանց անուանել. զի գոյ եւ գոյ հնար զպատիժս մերկանալ, ոչ միայն 'ի մեղացն մեկնել, այլ եւ բարիս եւս գործել։ Տեսանէ՞ք զիարդ մարթի ջնջել զմեղս։ Գողացան, եւ այն իսկ է մեղք. եթէ չէր գողացեալ, ոչ եթէ այնու մեղքն ջնջէին։ Այլ զիա՞րդ. վաստակելովն եւ այլոց տալովն ջնջէին զմեղս։ Ոչ դոյզն ինչ զգործս մեր կամի, այլ զվաստակելն եւ այլոց տալ. քանզի եւ որ գողանայն՝ գործէ, այլ չար գործէ։

“Ամենայն բան տգեղ 'ի բերանոյ ձերմէ մի ելցէ„։ Օ՞ ինչ իցէ տգեղն. զոր եւ դատարկն ասէ, զչարախօսութիւնն, զբանս զարշելիս, զխեղկատակութիւնն, զձե

րախօսութիւն։ Տեսանե՞ս զիարդ կտրէ զարմատ ցաս-
մանն, զստութիւն, զգողութիւն, զխօսս ընդվայրա-
հանս[1]։ Ո՛չ այսուհետև գողասցիս ասելով, ոչ այնչափ
նոցա ինչ ներէ, որպէս զշրկեալն կամի զգօնացուցանել.
և այսուհետևն ասելով՝ թէ մի ևս զնոյն ախտ ախտա-
նալ, այլ զիւրեանցն բարւոքեան համարել խրատէ։ Քան-
զի ոչ ընդ գործոց ևեթ, այլ և ընդ բանից տայցեմք
դատաստանս։

“Այլ որ ինչ բարի իցէ, ասէ, ՚ի շինուած պիտոյից,
զի տացէ շնորհս լսողացն„։ Այսինքն թէ որ զընկերն
շինիցէ, զայն ևեթ պարտ է խօսել և աւելի ինչ ոչ։
Վասն այսորիկ ետ քեզ ած բերան և լեզու, զի զնմա-
նէ գոհասցիս և զընկերն շինեսցես. եթէ զընկերն քա-
կիցես, լաւ էր լռել և բնաւ երբեք չխօսել։ Եւ ձեռք
ճարտարապետին որ փոխանակ զորմն շինելոյ՝ քակել
մտաբերիցեն, կտրել պարտին. քանզի և սաղմոսանո-
ւագն զնոյն ասէ՝ թէ “Սատակեսցէ տէր զամենայն շըր-
թունս նենգաւորս„։ Այսպիսի բերան է պատճառ ա-
մենայն չարեաց՝ ոչ եթէ բերանն, այլ նոքա որ ՚ի չա-
րիսն ինչ զնա ՚ի կիր արկանիցեն։ Անտի են թշնամանք,
բամբասանք և հայհոյութիւնք, հրայրք[2] ցանկութեց,
սպանութիւնք, շնութիւնք, գողութիւնք, ամենայն ինչ
անտի ծնանին։ Եւ սպանութիւնքն, ասեն, զիա՞րդ ան-
տի ծնանիցին։ Ի թշնամանացն ՚ի բարկութիւն գայ և
՚ի բարկութենէն ՚ի հարուածս և ՚ի հարուածոցն ՚ի սպա-
նութիւն։ Իսկ շնութիւնքն զիա՞րդ իցեն անտի։ Այս
անուն կին զքեզ սիրէ և զքեզ ևեթ յիշէ. և իսկ և
իսկ քաղէ զկինն, թուլացուցանէ զօգսդ, և այնպէս
բորբոքի ՚ի քեզ ցանկութիւն։ Վասն այսորիկ ասէ
Պաւղոս թէ որ ինչ բարի իցէ։ Քանզի չեն ինչ ա-
ռաւել պարծանք բանից, նմանապէս առանց նշանա-
կելոյ ասաց, և զայս հրամայեաց բարբառել և ետ օ-
րինակ. զո՞ր. թէ “Որ ինչ ՚ի շինութիւն իցէ„. և կամ
թէ զայն ասիցէ՝ թէ զի շնորհ ունիցի քեզ որ լսիցէն։
Այսպիսի ինչ թերևս. պատնկեցաւ ոք եղբայր, մի ձա-
ղիցես զթշնամանեալն, քանզի չառնես ինչ օգուտ միւ-
սումն որ լսիցէ. այլ և վնաս ես, թերևս և ՚ի նախանձ

1 Միւսն ընդվայրաբանս։ 2 Միւսն հրեայրք։

ևս գրգռիցես զնա։ Ապա թէ յոր արժանի իցէ գովել յորդորեսցես, բազում շնորհս առնես նմա։ Եթէ խրատ տայցես բարւոք միայն բանս հանել ընդ բերան, եթէ ուսուցանիցես չբամբասել, առաւել ածեր 'ի խրատ և ետուր նմա շնորհս։ Եթէ վասն 'ի խոր խոցելոյ յաղագս յանցանաց է, եթէ վասն երկիւղածութեան խօսիցես, կակղէ այն ամենայն զմիտս նորա վասն ամենայնի այնորիկ ունել քեզ շնորհս։ Ապա եթէ զլեզուդ շարժիցես և անարժանս խօսիցիս, առաւել բորբոքես․ եթէ գովեսցես զչարսն, կործանես կորուսանես․ կամ թէ շնորհաւորս իսկ գործիցէ զնոսա։ Որ օրինակ իւղ ինչ անոյշ կամ խունկ շնորհս տան կրելեացն, նոյնպէս և բանք բարիք․ վասն այնորիկ և ոմն իմաստուն ասէր՝ եթէ «Իւղ անոյշ կաթեալ է անուն քո ինձ»․ զհօտ անուշութեան տայ առնուլ նոցա։ Տեսանե՞ս զի զոր միշտ խրատէ, զնոյն և այժմ աստ ասէ․ իւրաքանչիւր ումեք զընկերն պատուիրէ շինել ըստ իւրում կարի։ Եւ որ այլոց այսպիսի խրատս տայցէ, որչափ ևս առաւել անձին։

«Եւ մի տրտմեցուցանէք, ասէ, զհոգին սուրբ»։ Այարի իմն ահագին և զարհուրեցուցիչ է բանս․ որպէս 'ի Թեսաղոնիկեցւոց թղթին այսպիսի իմն ասէ՝ թէ «Որ անարգէն՝ ոչ զմարդ անարգէ, այլ զԱծ», նոյնպէս և աստ ասէ․ եթէ խօսեսցիս, ասէ, բանս թշնամանաց, եթէ զայրացուցանես զեղբայրն, ոչ զնա զայրացուցեր, այլ զհոգին տրտմեցուցեր։ Եւ զյաւելուած երախտեացըն յառաջ բերէ, որով առաւել յաճախէ զամբաստանութիւնն։ «Մի տրտմեցուցանէք, ասէ, զհոգին սուրբ, որով կնքեցարուք յաւուրն քաւութեան»։ Նա երևեցոյց զմեզ խաչն արքունական, նա հեռացոյց զմեզ յառաջին գործոցն, նոյն չետ կալ մեզ ընդ պատժապարտ յոյժ բարկութեանն, և դու զնա տրտմեցուցանե՞ս։ Տես զիարդ ահագինս ասէ՝ թէ որ անարգէ՝ ոչ զմարդ անարգէ, այլ զԱծ։ Եւ աստ պատկառեցուցանելով և ակնածութեամբ «Մի, ասէ, տրտմեցուցանէք զհոգին սուրբ որով կնքեցարուք»։ Նոյն կնիք կացցէ 'ի վերայ բերանոյ, մի առնուցու զնշանակն 'ի բաց։ Բերան հոգևոր չխօսի ինչ այնպիսի։

# ՅՈՐԴՈՐԱԿԱՆ.

Մ՚ի ասիցես թէ չէն ինչ բանք զծաղու բանս խօսել. եթէ թշնամանիցեմ զզք և ոչ 'ի սրտէ, զինչ վնաս իցէ։ Վասն այնորիկ իսկ մեծ վնաս է, զի չթուին ինչ վնաս. զի՝ որ չթուիցին ինչ, և արհամարհի վաղվաղակի և արհամարհանքն ևս քան զևս աճեն, և ուր և աճիցեն՝ առանց բժշկութեան լինին։ Հոգևո՛ր բերան ունիս. 'ի միւս առ. որպիսի ինչ բանս բարբառեցար մինչ ծնանէիրն, որպիսի ինչ խօսք արժան իցեն բերանոյդ քում։ Օ̃ծ Հայր կոչես, և զեղբայրն թշնամանես. Օմնաւ ած ուստի կոչիցես զա̃ծ Հայր. միթէ 'ի բնութենէ՞. ոչ, քանզի չունէիր զնա Հայր. միթէ 'ի կամաց, և ոչ այնպէս ինչ. իսկ ուստի՞. միայն 'ի մարդասիրութենէն և 'ի գթոյ և 'ի բազում ողորմածութենէն ա̃յ։ Իսկ արդ յորժամ Հայր կոչիցես զա̃ծ, մի զայն և եթ զմտաւ ածիցես եթէ անարժանս ազնուականութեանն գործս գործես յորժամ զեղբայրն թշնամանես, այլ թէ 'ի մարդասիրութենէն ունիցիս զազնուականութիւնն։ Մ՚ի ա՛նուիցես զնա յամօթ եթէ 'ի խնամակալութենէն առեալ՝ անագորոյն մօրք ընդ եղբարսն գնայցես։ Հայր կոչես զա̃ծ և թշնամանես. չէ այն որդւոյն ա̃յ, այլ կարի քաջ 'ի բաց 'ի նմանէ։ Օ՛ ինչ գործ իցէ որդւոյն ա̃յ։ Թշնամեացն թողութիւն առնել, վասն խաչահանուացն աղօթս մատուցանել, փոխանակ ատելեացն զանձին արիւն հեղուլ։ Այս ամենայն արժանի է որդւոյն ա̃յ, զթշնամիս զապախտաւորս զզօղս զյանդգունս զնենգիչս՝ իւր եղբարս առնել և ժառանգակիցս. և ոչ որ եղբարքն են՝ զնոսա իբրև զաղուկս թշնամանել։ Օմնաւ ած որպիսի ինչ բանս բարբառեցաւ բերանդ, որում սեղանոյ արժանի եղև, յինչ մերձենայ, զինչ ճաշակէ, յոր կերակուր վայելէ, և չհամարիցիս ինչ վնաս զեղբայրն բամբասել. և զիարդ կոչիցես եղբայր. թէ չիցէ եղբայր, զիարդ ասիցես Հայր մեր, զի մերն բազում երևացնշանակիչ է։ Օմնաւ ած ընդ որպիսիս ոք կայցես յորժամ խորհուրդքն կատարեսցին. ընդ քրովբէս և սրովբէս, որք ոչ թշնամանեն, այլ զմի և եթ պէտս կատարեն նացս բերանքն, զաւրքն ասել փառաւորեն զա̃ծ. և զա-

զիա՞րդ կարիցես ընդ նոսա զսուրբ սուրբ սուրբն ասել, որ թշնամանաց աման ածնես զբերանդ։ Սպաս արքունական ես, և զցանկալի արքունի խորտկօք յայն միայն կարգեալ. արդ աղէ ասէ ո՞ ոք 'ի ծառայից այնպիսի անօթով իշխիցէ աղբ արտաքս կրել, և դարձեալ 'ի նոյն սպաս որ յայն կարգեալ իցեն՝ միւսանգամ բերել խառնել զոր միանգամ աղբոյն աման արար։ Ոչ ոք, ոչ ուրեք։ Եւ արդ զի՞նչ իցէ ամբաստանութիւնն. այսպիսի ինչ են թշնամանքն։ Հայր մեր ասես։ Իսկ այն ինչ միայն իցէ. լուր և զյաջորդսն՝ թէ որ յերկինս ես. և անգէն վաղվաղակի իբրև ասես թէ հայր մեր որ յերկինս ես, կանգնէ զքեզ բանն, թռուցանէ զմիտսդ, ցուցանէ թէ հայր ունիս յերկինս։ Մի՛ այլ ինչ գործիցես և մի՛ զերկրաւորաց ինչ ճառիցես. զի 'ի վերին աշտիճանին կարգեաց կացոյց զքեզ, յայնմ բնակութեանն համարեցաւ զքեզ, ընդէ՞ր զանձն 'ի խոնարհ ձգիցես. յաթոռն արքունական հասեր կացեր, և թշնամանես. և չերկնչիս թէ գուցէ իւր ինչ թշնամանս համարիցի զայն թագաւորն։ Այլ թէ ծառայ ոք մեր առաջի զիւր ծառայակից կամ հարկանիցէ կամ թշնամանս դնիցէ, թէպէտ և իրաւունք ինչ իցեն, վաղվաղակի 'ի սաստ մատչիմք, պատուհաս ածնեմք և թշնամանս զիւրոն համարիմք։ Իսկ դու առ քերովբէսն կաս, առ աթոռն արքունական, և թշնամանես զեղբայրն։ Զտեսանիցես զսուրբ զսպասն, ո՞չ ապաքէն 'ի մի ինչ իրս կարգեալ կան հանապազ. մի՛թէ իշխէ՞ ոք զնոսա յայլ ինչ 'ի գործ 'ի կիր արկանել։ Իսկ դու որ և քան զսպասն ես սուրբ ես և առաւել սրբագոյն, ընդէ՞ր աղտեղացուցանես զանձն և ընդ գայռ ածիցես։ Որ յերկինս հաստատեցար կացեր, և 'ի թշնամա՞նս հաստատեալ ես. ընդ հրեշտակս զինուորեալ, և 'ի թշնամանաց չակնածես. համբուրելոյ զտէրն եղեր արժանի, և թշնամանես զծառայակիցն։ Որպիսի պարկեշտութեամբ զարդարեաց ա̅ծ զբերանդ քո այսպէս օրհնութեամբք կերակրով ոչ հրեշտակաց, այլ որ ինչ 'ի վեր է քան զհրեշտակացն՝ համբուրելոյ զտէրն իսկ, գրկախառն ընդ նմին լինելոյ, և թշնամանես։

Մի՛ աղաչեմ. բազում չարեաց պատճառք են այնպիսի իրք, հեռի է 'ի քրիստոնէից ոգւոց։ Զհաւանեցուցանե՞մք խօսիւքս, չկարե՞մ պատկառեցուցանել. եթէ

այնպէս իցէ, երկեցուցանել պարտ է. և լուր Քրիս-տոսի իսկ. "Որ ասասցէ ցեղբայր իւր մորոս, պարտա-պարտ լիցի 'ի գեհենն հրոյ"։ Եթէ որ քան զամենայն ինչ թեթևագոյն է՝ գեհենի առիթ լինի, որ զյանդ-գգունս խօսիցի՝ զի՞նչ իմիք չլինիցի արժանի։ Խրատեսցուք զբերանս մեր՝ բարի ևեթ բանս խօսել, զի յայնմանէ են բազում և մեծամեծ շահք, և 'ի թշնամանացն յա-ճախագոյն վնասք. Չիք անդ զինչ ծախել և ոչ պէտք թօշակաց։ Պնդեսցուք դուռն և աղխ բերանոյ. և անձամբ անձանց արասցուք պատիժս եթէ բան ինչ յանդուգն ընդ բերան ելանիցէ։ Աղաչեսցուք զԱծ, աղաչի կաց-ցուք այնմ զոր թշնամանեցաքն. մի ինչ տրտմայցեմք և մի ամօթ զիրան համարիցիմք. քանզի ոչ եթէ զնա վի-րաւորեցաք, այլ զանձինս. զմեզ խոցեցաք և ոչ զնա. գիտցուք դեղ վիրին զաղօթսն և զհաշտութիւնն ընդ այնմ զոր թշնամանեցաքն։ Այլ մի միայն բանիւք հա-ճեսցուք, այլ առաւել ևս արդեամբք։ Որչափ դիցուք անձանց, եթէ բարեկամս ունիցիմք կամ զօ և իցէ՝ և չար խօսեսցին, մի ընդ այնր վրէժս խնդրիցեմք. զանէ ուսցուք թէ բնաւ մեղք են այնպիսի իրք։ Եթէ ուսա-նիցիմք, ապա վաղվաղակի 'ի բաց իսկ մերժիցիմք։ Այլ Ած 'ի խաղաղութեան պահեսցէ զմեր միտս և զլեզու, և պարսպեսցէ ամուր պարսպաւ իւրով երկիւղին 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր. ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

"Ամենայն դառնութիւն սրտմտութիւն և բարկութիւն և աղաղակ և հայհոյութիւն բարձցի 'ի ձէնջ ամենայն չարութեամբքն հանդերձ"։

Որ օրինակ յաման ինչ աղտեղի կամ 'ի հան-դերձ անսուրբ ոչ երբէք իջանէ ազգ մեղուաց, վասն այնորիկ և խունկս ծխեն և այլ ինչ որոյ հոտ անոյշ իցէ՝ զկայարզքն ցանեն, որ այնպիսի իրաց խելամուտ ի-

ցեն՝ զինի արկեն մեղուանոցացն, զի պարան որ ելանի-
ցէ՝ վազվազակի անդ իջանիցէ, զի և մի ինչ յուռի հոտոյ
խրտուցանիցէ և 'ի բաց հալածիցէ, նոյնպէս և հոգւոյն
սրբոյ տաճար է մեր ոգիքս և մեղուանոց, որ զպտուղս շնոր-
հացն հոգևորացն ընդունիցին։ Իսկ եթէ իցէ 'ի ներքս
մաղձ կամ դառնութիւն կամ սրտմտութիւն, խորշի
պարան, սրտնեալ և չհպի։ Վասն այնորիկ երանելին ի-
մաստուն հողագործ սրբէ մաքրէ զամանս մեր. ոչ ման-
գաղ 'ի ձեռս ունի և ոչ այլ ինչ անօթ երկաթի, և կո-
չէ առ մեզ զհոգևոր պարան, ժողովէ միախուռն զու-
մարէ, և զմեզ սրբէ աղօթիւք և վաստակովք և պա-
հովք եւս ամենայն կարգօք։ Տես զիարդ սրբէ զմիտս մեր։
Հալածեաց զստութիւնն, խաւարական սպառ զգայ-
կութիւնն. ցուցանէ դարձեալ թէ զիարդ արմատաքի
խլեսցէ զչարիսն. Եթէ չունիցիք, ասէ, դառնութիւն 'ի
միտս։ Որ օրինակ և մաղձն թէպէտ և սակաւ իցէ,
յորժամ փոքր մի շարժիցի ելանել յշտեմարանէն՝ զամե-
նայն, զի այնպէս իսկ է տաժանիկ հիւթն այն և խայ-
թող, չկարէ այնուհետև համբերել ամանն որ յա-
ռաջին զնա ունէր. զոր օրինակ հուր յորժամ բորբոքի-
ցի՝ չիցէ ինչ որ զնա արգելուցու, նոյնպէս և մաղձն զի-
ցէ ինչ որ ունիցի և պահիցէ զնա յիւր սահմանին, այլ
ամբոխեալ յայնչափ դաժանութեանն զիմէ ելանէ
յամանոյն և զինի ապականիչ ամենայն մարմնոյն։ Որ-
պէս զգազան ինչ ահագին և անհնարին մինչդեռ 'ի գա-
ռագղին արգելեալ կայցէ, թէպէտ և գոչիցէ և մռնչիցէ,
չկարէ ումեք վնաս առնել. յորժամ կարի զայրանայցէ
և կարիցէ զքարամբսն գառագղին խորտակել՝ արտաքս
դիմիցէ և բազում խռովութեամբ զքաղաքն լնուցու, զա-
մենեսեան խռովեցուցանէ, զբնաւ 'ի տագնապի կացու-
ցանէ։ Նոյնպէս և մաղձոյն հիւթ մինչդեռ յիւր սահ-
մանին կայցէ, չառնէ ինչ մեզ մեծ վնաս. իսկ յորժամ
փամփուշտն որ զնա ունիցի պատառիցի, չէ ինչ այնու-
հետև որ զնա արգելուլ կարիցէ 'ի տարածելոյ ընդ բնաւ
բնութիւնն. թէպէտ և սակաւ ինչ իցէ չափով, այլ
վասն առաւել սաստկութեանն իւրոյ հիւթոյն զօրու-
թեամբ 'ի նոյն դարձուցանել կարէ զամենայն մարմինն։
Օտարին եւս գտեալ անդէն մերձաւոր տեղեօքն և ըն-
տանի և յանկաւոր իւրոյ հիւթոյն սրտմտութեամբ, և

քեննայիւք ինչ զոր մեզ պատրաստեալ իցէ։ Ծնաւղք զայս[1] ընդ այնպիսւոյն զի մանկունս են այնպիսի խօսք որ 'ի չահաւորացն[2] երկնչիցին։ Զի պարտ զոք այնպէս արհամարհել և ոչ ծաղր առնել որպէս զմարդ դատն և չար. չիք այնպէս ինչ ունայն. նա և մարդոս եւ և անմիտս ատանէ դատնութիւնն։ Զուեսանիցէք զի կուրացուցանէ չարութիւնն. չուեսանիցէք թէ որ փորէ խորխորատ ընկերին, անձինն փորէ։ Այլ արդ ընդէր պարտ իցէ երկնչել յայնպիսի անձնէ որ ինքն լի իցէ խաւարութեամբ։ Այլ թէ 'ի դիւաց ինչ պարտ իցէ երկնչել և 'ի մոլեկանաց և 'ի մարդոց, այս և 'ի դառանցն և 'ի չարաց. քանզի և նոքա զամենայն ինչ ընդվայր գործեն. եթէ յայն ասես ինչ զի իրաց իմիք խելամուտ իցեն, նա և այն չէ ինչ։ Ո՛ իցէ այնպէս իրացն տեսչութեան պիտանացու իբրև զիմաստութիւն. և չիք ինչ այնպէս իմաստութեան հակառակ իբրև զդատնութիւնն և զչարութիւն և զխորամանկութի։ Զանեսանիցէք զմարմինս ցասկոտացն զիարդ դեղինք և տգոյնք են և քան զամենայն ծաղիկ խամրեալք ասաւեալ խարուրեալք անտակք անզօրք մաշեալք և ծնկեալք և յամենայն պէտս անպիտանք։ Այնպէս և ոգիքն այնպիսիք. քանզի դալուկն ոգւոցն այլ ինչ չէ, բայց միայն չարութիւնն։ Զի այսուհետև չարութիւնն զօրաւոր և չէ իսկ։

Կամիք զի և օրինակաւ եւս յայտնի արարից զիրսն. 'ի չարագործէ և 'ի միամտէ բերից օրինակ 'ի մէջ։ Չարագործ էր Աքեսողոմ և զամենեսեան իւր կամէր անել։ Տես որպիսի ինչ էր չարագործութիւնն. շրջէր առ ամենեքումք և ասէր՝ միթէ դատաստան ինչ ընդ ումեք իցէ քո. քանզի յիւրն կամէր արկանել զամենեսեան։ Իսկ Դաւիթ այր միամիտ էր։ Այլ արդ նայեաց յերկոցուն վախճան. մեծ դիր որպիսի անմտութեամբ լի էր նա, քանզի 'ի մեծամտութեան հօրն միայն նայէր, և ամենայնիւ այլ իւիք կուրացեալ էր։ "Որ գնաց, ասէ, միամտութեամբ, գնայ յուսով„. որ ոչ նենգութեամբ և ոչ մանկա ընդ ումեք գնացէ։ Հաւանեացուք երանելւոյս Պաւղոսի, և տղայմացուք և արատաւս 'ի վերայ դառանցն արկցուք. և զամենայն ինչ արա-

1 Իսկն զայս ինչ։ 2 Միւսն Ի չարհաւոցն։

ցուք և հնարիւք հնարեսցուք, զի քերեսցուք յանձանց զպարտութիւնն ։

Ոխարդ չիցեն անպատեհ իրք յորժամ մաղձն 'ի մեզ մթերեալ կայցէ և մեք չառնիցեմք փոյթ, թէպէտ և պխտանայցու՝ իցէ մեզ հիւթն այն. քանզի չէ հնարաւոր առանց մաղձոյ կեալ մարդոյ. զայսմանէ ասեմ որ բունս հիւթական է[1] ։ Նա զխարդ չիցեն անպատեհ իրք զայս մաղձ թափել ըստ կարի որչափ ձեռնհաս ոք իցէ. որ թէպէտ և վնասակար է, այլ և օգուտ ինչ գործէ 'ի մեզ. և զայնմ մաղձոյ որ յոգւոյն ծնանի՝ չունել ինչ փոյթ յանձին և ոչ 'ի բաց թափել, որ ամենեւին ի-միք չէ պիտանացու, այլ առաւել վնասակար ։ "Որ ոք կամիցի, ասէ, 'ի ձէնջ իմաստուն լինել, մորոս լիցի զի լինիցի իմաստուն". լուր դարձեալ և Ղուկայ. "Հա-ղորդէին, ասէ, կերակրոյն ցնծութեամբ և միամտու-թեամբ սրտիւ օրհնէին զԱծ, և ունէին շնորհս առ ա-մենայն ժողովուրդն" ։ Ջանասիցեմք այժմ զմիամիտն և զանմեղն զսիրտ 'ի հասարակաց ամենեցուն վայե-լեն 'ի պատիւս ։ Եւ ոք ընդ այնպիսի ուսումն նախանձի յորժամ 'ի բարիս իցէ, և ոչ ոտնհար լինի յորժամ 'ի վերջոս մնանիցի. այլ յորժամ 'ի բարիս իցէ՝ ընդ նմին ուրախ լինի, և յորժամ գթիցէ՝ ընդ նմին տրտմի ։ Նա թէ դառն ոք երբէք 'ի բարիս հասանիցէ, որպէս թէ չարիք ինչ պատահեալ իցեն, ամենեքեան յոգւոց հա-նեն. և եթէ վշտանայցէ ինչ, ամենեքեան ուրախ լի-նին ։ Ողորմեսցուք այնպիսեացն, քանզի բազում թըշ-նամիս ունին, մանաւանդ թէ զամենեսեան իսկ որ 'ի նոսա մօտ իցեն ։ Յակոբ միամիտ էր, այլ յաղթեաց խորամանկին Լաբանայ. "Յանձն, ասէ, խորամանկ ի-մաստութիւն մի մտցէ" ։

"Ամենայն դառնութիւն բարձցի 'ի ձէնջ" ։ Ամաւ-խոկ, ասէ, նշխար մի մնասցէ. քանզի գիտէ սակաւ ինչ արծարծել, իբրև 'ի կայծէ ողջոյն իսկ խարոյկ գործեալ 'ի ներքս ։ Նա թէ զինչ իցէ դառնութիւնն, հաւա-տեաւ 'ի վերայ հասցուք ։ Որ զխորամանկութիւն ունի-ցի և զնենգութիւն և զամենայն չարիս պատրաստ իցէ գործել, աղէկարծն, կեղակարծ, չարիմաց. և անուր

1 Յօրինակին գրեալ էր կէսն ուրեմն ։

միշտ ցասումն և բարկութիւն ծնանի. և չիք երբէք 'ի հանդարտութեան զայնպիսի անձն տեսանել: Այլ արմատ իսկ բարկութեան դառնութիւն է. այնպիսին և ծանրացասումն իսկ է, և չցածնու իսկ միտքն, այլ ցանկ մտախորհ յիմարեալ սրտառուչ տրտում և տխուր շրջի. զոր և առիցէ իսկ թէ նախ ինքեանք վայելիցեն յանձանց չարեաց:

“Եւ աղաղակ„ ասէ: Ո՞ր վասն և զաղաղակն 'ի բաց պարուրիցես: Զի հեզոյն այնպիսի ինչ պարտ է լինել: Քանզի ձի է աղաղակն յորում ցասումն հեծեալ է. պաշարեա զձին և ընկենու զհեծեալն: Լուիցեն զայս ամենեքեան, մանաւանդ կանայք, որ յամենայն իրս աղաղակեն և աղմկեն: Ի մի իրս միայն պիտանացու է աղաղակն 'ի քարոզելն և յուսուցանելն, և այլ ուրեք բնաւ ոչ ամենևին ոչ յաղօթս և ոչ յայլ ինչ իրս: Եւ եթէ կամիցիս և արդեամբք իսկ զփորձ առնուլ, մի ուրեք աղաղակիցես՝ և չբարկանաս երբէք. և այն իսկ է օրինակ անցասումն լինելոյ: Զոր օրինակ չէ հնար այնմ որ չաղաղակիցէն բարկանալ, նոյնպէս և այնմ որ աղաղակիցէն չբարկանալ: Բայց մի ինչ զոխակալէն և զայմանէ որ չարայուշն իցէ՝ ասիցես, քանզի և այն դառնութիւն է և մաղձ. զի մեք առ այժմ զյանկարծօրէն ցասմանէն ասեմք:

Որպէս զի ոչ սակաւ ինչ նպաստ լինիցի առ ի խրատել զանձն, չաղաղակել երբէք և չաղմկել. և հաստատիցես այսուհետև զթև բարկութեանն, զաղաղակն 'ի բաց պարուրելով և զյանդգնութիւն սրտին ցածուցանիցես: Զոր օրինակ չէ հնար առանց զձեռս ընդդէմ տարածանելոյ կռուել, նոյնպէս չէ մարթ առանց կազդոյ բարկութեամբ վառել: Կապեա զձեռս մրցողին և հրամայեա մրցել, այլ չէ հնար: Ցածո զաղաղակ, և չէ մարթ ցասմամբ փքասել. բայց աղաղակ՝ ուր և չիք ցասումն՝ անդ ցասումն բորբոքէ: Եւ այսու կանանց ազգ կարի իմն ըմբռնեալ է. որք յորժամ նաժշտացն բարկանայցեն, աղաղակաւ և աղմկաւ զամենայն տունն լնուն: Բազում անգամ յանձուկ ինչ տեղւոջ 'ի մէջ բազում թաղորդաց տունն իցէ շինեալ. ամենեքեան որ շուրջն իցեն և որք ընդ կիրճն անցանիցեն լսիցեն զնորա զաղաղակն և զնաժշտացն զգերն և զկառաչն, զինչ քան զայն ծանա-

կանք կայցեն։ Յորժամ ամենեքեան զկականչիւնս[1] լսի-
ցեն, ամենք 'ի պատուհանից յառեալ և այլք 'ի հրա-
պարակս առաջի դրանցն կցորդեալք և ցմիմեանս հարցա-
նեն թէ զինչ գործք գործիցին, զինչ աղաղակ կայցէ,
և ասիցեն թէ այս անուն կին զաղախինն իւր տանջէ,
զինչ այլ ինչ յառութիւն քան զայն կայցէ։ Այլ չիցէ
պարտ, ասեն, զծառայակարն գան հարկանել։ Այլ ոչ զայն
ինչ ասեմ, այս պարտ է, այլ մի յաճախ և մի անչափս
և մի աւելի քան զյանցանսն։ Ո՛ր միշտն ասէր և այժմ
ասեմ. եթէ 'ի սպաս առնելոյ ինչ հեղգայցէ, չափով
խրատել չէ վնաս. և մանաւանդ թէ յագուոց ինչ զորոյց
զեղծութիւն իցէ և յայն սակս խրատիցես, 'ի բազմաց
զովիցիս, յամենեցունց դրուատիս առնուցուս, և չիցէ
ոք որ մեղադիր լինիցի։ Իսկ եթէ վասն զքո ինչ զցա-
սումն յագեցուցանելոյ, իբրև զանագորոյն և զտմարդի
յամենեցունց պարսաւ լինիցիս։ Այլ ևս քան զամենայն
դժնդակութիւնս այն է, զի գրգռեալք կին և զայրաց-
նեալք այնչափ գան հարկանեն, մինչև առ օրին չողջա-
նան վէրքն. մերկանան ծառայքն և զարսն ևս աղաչեն
և կապել հրամայեն ընդ ոտս բաժրոնաց։ Այս է ինձ,
եղուկ եմ ես, չանկանիցին 'ի սիրտ 'ի ժամանակին յի-
շատակ գեհենին. այլ մերկանաս զաղջիկն և ցուցանես
զանարգանս քում առնն, և չամաչիցես թէ գուցէ և
դու ևս ելանիցես յաշաց. այլ առաւել գրգռես և բա-
զում սպառնալեօք ժտես[2] երկեցուցանել. Նախ 'ի Թըշ-
նամանս հատանիս, սանդաստակս կապես 'ի վերայ,
զանդամն և զամոթի անուն կոչես զլեզն և զպոռնիկն,
զողողեալն և զբազմահոմեանն[3], զգայթակղականն և
զանաշխարհիկն, զվարատականն և զամայն. զի այնպէս
յանդգնեալ 'ի ցասմանէն չկարէ[4] համ դնել բերանոյն,
այլ միում ևեթ ուշ ունել թէ զիարդ կարիցէ 'ի նմա-
նէ վրէժս պահանջել, թէպէտ և զիւրոյ անձինն շուք
արկանիցէ և դիւացեալ[5] անկանիցի 'ի ստուգ և 'ի հա-
մոյ։ Այլ յետ այնչափ սանդաստականաց և Թշնամա-
նաց անցեալ նստիցի իբրև զվիշապ մի և զխարամանի,
կոչիցէ զծառայս, զառաջեաւ ածիցէ զայրն անմիտ, իբ-

1 Միւսն զկականչիւնն։
2 Միւսն փասս։
3 Միւսն զբազմահոմանն ... զա- նաղախիչն։
4 Ցօրինակն չկարէ ունն համ դնել։
5 Միւսն դիւրացեալ։

րև ղաւհձաւ միով նովաւ գործ վճարիցէ. և այնպիսի գործոց 'ի քրիստոնէից տունս պարտ իցէ գործել:

Այլ չար է, ասեն, ազգն, ժմերտ, լիրբ և անամօթ, չգայ փաղփաղակի յուղղութիւն, չկայ յակատանի: Գիտեմ և ես. այլ մարթի և այլ ազգ ևս յերիւրել, ահիւ, սպառնալեօք, այնպիսի ինչ բանիւք որ զնա կսկծեցուցանել կարիցեն, և զքեզ ազատ առնեն յամօթոյ: Դու աւադիկ բանս գարշելիս խօսիս և չածես զմտաւ զազատութիւնդ, և չգիտիցես թէ զքեզ առաւել քան զնա յամօթ առնես: Իսկ եթէ 'ի բազմանիս ևս երթայցէ և մերկանայցէ, և երաշխէպքն երևեսցին՝ նշանակք տմարդութեան և անագորոյն և անողորմ մտաց:

Այլ անհնարին է, ասեն, զիւրաւուն առնել զաղախնաց ազգ: Գիտեմ և ես. այլ որպէս ասացին իսկ՝ թէ և այլ ազգ մարթի յարին կացուցանել, ոչ գանիւ միայն և ոչ ահաբեկ[1] առնելով, այլ և ողոքանօք և բարի առնելով: Իսկ քո եղև աղախինն թէ հաւատացեալ իցէ. զմտաւ ած թէպէտ և քոյր է վասն հաւատոյն, այլ յաղախնութեան կայր իբրև տիկնոջ: Եթէ, արբեցող իցէ, բարձ 'ի միջոյ զպատճառս արբեցութեան. զայրն քո կոչեա և առաջի նորա խրատեա: Մի զխօցես որչափ տգեղութիւն է զկին մարդ հարկանել: Որ բազմապատիկ օրէնս վասն արանց կարգեցին, և կենդանւոյն այրել, և քերանօք և պրկանօք հաշել. յանկարծ ուրեք երբեք՝ և այն դժնդակք՝ ըստ կախեցին ընկանայս. այլ մինչև ցարդ պատահս միայն ցածուցին զպասումն. զի այնպէս ինն 'ի դէպ էր ակնածել 'ի կանանց բնութենէն: Իսկ թէ կարի ինչ վնասակարք իցեն, չկախէ ոք վայրապար, մանաւանդ թէ յղի իսկ իցեն: Ո՞րձ անարգանք են առն զկին մարդ զան հարկանել. և եթէ առն, որչափ ևս առաւել իւրոց ազգականին: Իսկ [illegible] իսկ առնէին ատելի արանց կանայք:

Իսկ եթէ պոռնկասցի, ասէ, զինչ առնիցես առնել: Մի՛ն տուր. հատ զպատճառս պոռնկութեանն. մի՛ տացես թոյլ այլանդակել և մի՛ ազատաբար ինչ գործել: Իսկ թէ 'ի կծծութիւնս մտաբերիցէ, ասէ: Պահեա զզգաստկաց: Ո՞չ ևս կայցէ, ասէ, թէ պահապան լինիցիմ:

1 Միւսն և Ն ձեռագրէլ:

թիւն ունիցիս՝ չառնիցես ինչ այնպիսի, որչափ և ա-ռաւել որում չիշխիցես՝ չգործիցես ինչ այնպիսի :

Այս ուրեմն զգօնութիւնն զոր առ աղախնայսն ունիցիք, մեծի խնամոյ ընդ արսն ձեր լինիցի պատճառք : “Որով չափով, ասէ, չափէք՝ չափեսցի ձեզ„ : Դիր սանձս բերանոյդ, և կրթիցես համբերելովն աղախնայն դիմադարձի 'ի համբերութիւն ամուսնոյն հանդիսապատուի. և այնուհետև թէպէտ թշնամանիս, չլինիս դժկամակ. և յորժամ ոչ պչարիցիս, զգլխաւոր իսկ զգօնութեանն ցուցանիցես զուգութիւնն : Բայց են ոմանք որք յերգմունս և յաճախեն : Չիք ինչ տգեղագոյն քան զայնպիսի յանդուգն ցասումն : Եւ եթէ 'ի պաճուճանս և 'ի զարդարանս հատանիցի, ասէ : Զայն և ես պատուիրեմ արգելուլ և կարճել. անդէն 'ի սկզբանն իսկ կարճեա մի այնչափ ուհիւ և սպառնալեօք, որչափ յանձնէ օրինակ ցուցանելով՝ նախանկար տիպք և պատկեր լինիցիս :

“Եւ հայհոյութիւն, ասէ, բարձցի 'ի ձէնջ„ : Տես զիարդ յառաջ խաղայ չարն : Դառնութիւն զցասումն ծնանի և ցասումն զբարկութիւն և բարկութիւնն զաղաղակ և աղաղակն զհայհոյութիւն, այսինքն զանարգանսանս. հայհոյութիւնն զգանս և գանքն զհարուածս և հարուածքն զմահս : Այլ ոչ ինչ յայնպիսեաց կամեցաւ բարբառել Պաւղոս, այլ ասէ. “Բարձցի ամենայն չարութեամբ հանդերձ„ : Զի՞նչ իցէ հանդերձ ամենայն չարութեամբն : Ամենայն իրքն յայն վախճանին զի մահ գործիցի : Են ոմանք իբրև զշունս գաղտակիծք որք չհայհոյիցեն 'ի ճանապարհորդս և ոչ գազանացեալ 'ի վերայ յարձակեսցեն, այլ քծինս տալով ընդ անձն անկանիցի և յանպատրաստից զժանիս 'ի խոր ցցիցեն. այնպիսիքն առաւել գժնդակք քան զայնուսիկ են որք յայտնի զթշնամանութիւնն ունիցին : Մարդք որ և չար իցեն քան զշունս գաղտակիծս, որ ոչ աղաղակիցեն և ոչ զցասումն երևեցուցանիցեն, և յետոյ գաղտնիւ թիցեն զնենգութիւնս և աղէտ աղէտ չարիս հնարիցեն և արդեամբք առնուցուն վրէժս : Արդ զայն իմն ակնարկեալ “Բարձցի, ասէ, 'ի ձէնջ ամենայն չարութեամբն հանդերձ„ : Մի, ասէ, բանիւք մեղմեցիցես, և արդեամբք վրէժս պահանջիցես : Ես վասն այնորիկ պատ-

ժեցի զլեզուն և զաղաղակն 'ի բաց պարուրեցի, զի մի՛ ևս առաւել բորբոքեսցէ զխարոյկն քո։ Իսկ եթէ առանց աղաղակի զնոյն գործ գործիցես և 'ի ներքս ստէպ վառիցես զխարոյկն և զկայծան միմեամբք արծարծիցես, զի՞նչ օգուտ 'ի լռութենէն գործիցի։ Եթէ անտեղեա՞կ ինչ իցես զի այն հրդեհք որ 'ի ներքս այրեցին և չերևեցին, առաւել դժնդակք են քան զայնս որ յայտնի բորբոքին։ Այնպէս և ցասումն այն դժնդակ է որ 'ի ներքս 'ի սրտին ճարակեսցի. այլ և այն, ասէ, բարձցի հանդերձ ամենայն չարութեամբն և մեծն և փոքրն։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Ունկնդիր լիցուք նմա, և զամենայն դառնութիւն և զբնաւ չարութիւն բարձցուք 'ի միջոյ, զի մի՛ տրտմեցուցանիցեմք զհոգին սուրբ։ Արմատաքի խլեսցուք զդառնութիւնն, տակակոտոր ծայրակտուր արասցուք. զի չիք ինչ բարութիւն որ 'ի դառնութենէ օգուտն գործիցին, և ոչ առողջութիւն և բժշկութիւն, այլ ամենայն վիշտք, բնաւ արտասուք, համակ ողբք, ամենևին հաչիւն և հառաչիւն։ Զտեսանիցէ՞ք և զգազանացն իսկ. զի որ առատիկսն գոչեն, 'ի նոցանէ զարհուրեալ 'ի բաց փախչիմք յառիւծէ յարջոյ յընծէ և յայլոց նոյնպիսեաց. իսկ յոչխարէ ոչ ինչ այնպիսի, քանզի չէ գոչիւն, այլ քաղցր և հեշտական բարբառ։ Եւ նուագաց արուեստականացն խստաձայնիցն դժկամակութեամբ լսեմք՝ թմբկի, պատերազմացն փողոց. և որ չիցեն նոյնպիսիք, զայն ախորժելով լսեմք զփողոյ զշնարի և զքնարի զփանդռան զվինի զսրնգի։ Այնպէս և մեք յօրինեսցուք զոգիս. մի՛ ինչ աղաղակ և մի՛ աղմկել երբէք, զի այնպէս կարիցեմք և մեք բարկութեանն գեր 'ի վերոյ լինել. զի յորժամ զայն 'ի բաց պարուրիցեմք, նախ մեք իսկ լինիցիմք 'ի խաղաղութեան, և նաւարկեալ հասանիցեմք 'ի խաղաղ և յանքոյթ նաւահանգիստն։ Զոր լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՃԱՌ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

«Ամենայն դառնութիւն եւ սրտմտութիւն եւ բարկութիւն եւ աղաղակ եւ հայհոյութիւն բարձցի 'ի ձէնջ ամենայն չարութեամբն հանդերձ։ Եղերուք ընդ միմեանս քաղցունք գթածք. շնորհեցէք միմեանց. որպէս եւ Աստուած 'ի ձեռն Քրիստոսի շնորհեաց մեզ»։

Չէ բաւական 'ի չարեաց միայն զատանել՝ տանել յարքայութիւն երկնից, այլ եւ բազում գործոց բարութեանց պէտք են. եւ արքայութեան հասանելոյ՝ զառաքինութեան գործ յանձին ցուցանել։ Եւ է չգիտիցէք զի եւ յարտաքին ատեանս յորժամ իւրաքանչիւր գործոց քննութիւնք լինիցին 'ի ժողովել քաղաքին ամենեցուն 'ի մի վայր, նոյնպէս լինի [1]. նա եւ արտաքնոցն տնօրութիւն իմն է տեսլի պսակս պսակել ոչ զայն որոյ չարիս ինչ չէր արարեալ քաղաքի, զի այնպիսի առաքեալ վրէժս ինչ ընդ այնպիսի գործոց միայն պատշաճ էր, այլ զայն՝ որ մեծամեծ ինչ երախտիս քաղաքին ցուցեալ էր, եւ ապա գայր յայնպիսի պատիւ։ Բայց չգիտեմ զիարդ տակաւին ինչ անց զինեւ ասել ձեզ որ ինչ առաւել կարեւոր պիտոյ էր ասել։ Բայց զորոշմանս զայսօրիկ պատմեցից նախ զմասն ինչ, սակաւ ինչ ուղղութիւն արկեալ 'ի գործ։

Քանզի ասացի թէ 'ի գեհենէ ապրեցուցանելոյ՝ 'ի չարեաց հեռանալ բաւական է. եւ մինչդեռ զայն ասէի, այլ իմն ահագին սարսափելիք անկան 'ի միտս, որ ոչ չարագործաց ինչ ածեն պատիժս 'ի վերայ, այլ զայնպիսիս որ 'ի բարեաց թերութիւնս ունիցին՝ տանջեն։ Ո՞ ինչ էր։ Յորժամ օրն ահագին 'ի դուռն [2] եկեալ 'ի վերայ հասանիցէ, եւ նստեալ յաթոռ դատաւորն՝ զոչխարսն ընդ աջմէ տրահիցէ եւ զայծիսն ընդ ձախմէ, եւ զոչխարսն ասիցէ՝ «Եկայք օրհնեալք հօր իմոյ, ժառանգե-

1 Պակասէր յօրինակին նոյնպէս 2 Միւսն ի դուռն։
Լինի. յաւելու 'ի յունէն։

ցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւնն 'ի սկզբանէ աշխարհի, զի քաղցեայ և ետուք ինձ ուտել,,, այն բարւոք իսկ է. զի պարտ էր նոցա զայնպիսի մարդասիրութեանն զհատուցումն առնուլ: Այլ նոքա որք յիւրեանց ընչիցն չետուն կարօտելոց, ոչ մինչև 'ի բարեացն զրկելոց միայն տանջելով, այլ և 'ի գեհենն հրոյ առաքելով, և այն զինչ 'ի դէպ իցէ, ասեն. Այս այն իսկ կարի քաջ 'ի դէպ է, և ոչ ինչ նուաղագոյն քան զառաջինն. զի այնու խրատիք թէ որք զբարիսն գործեն, յերկնից բարութիւնսն վայելեն. և որք պատուհաս ինչ վասն չարեացն չկրիցեն, և 'ի բարեացն գործոց թերի ինչ գտանիցին, ընդ այնոսիկ որք զչարիսն գործիցեն՝ երթայցեն 'ի հուրն: Բայց թէ և զայն իսկ ասիցէ թէ զբարին չգործել չարեաց մասն է. քանզի դատարկութեան գործ է այն, դատարկութիւն. է[1] չարութեան մասն. մանաւանդ թէ ոչ իսկ մասն, այլ պատճառք և արմատ չարեաց. քանզի զամենայն չարիս դատարկութիւնն ուսոյց: Այս արդ մի ինչ այսպիսի անմիտ հարցուածս հացանիցեմք, թէ որ չար չգործեաց և բարի ինչ չարար յոր տեղի երթիցէ: Զի չառնելն բարի՝ չար գործել է:

Ասէ ասա, եթէ ծառայ ունէիր որ ոչ գողանայր և ոչ թշնամանէր և ոչ բանընդդէմ լինէր և ոչ արբեցող էր և յայլ իրս բծկան, բայց 'ի տան և եթ դատարկ նստէր և զծառայից սպաս չունէր քեզ որ տէրդ էիր, չտանջէիր չպատժէիր, թէպէտ և չար ինչ ոչ գործէր. և չհամարէիր և զայն իսկ մեծ չարիս զի դատարկն նստէր: Ասացէք և յայլ ինչ օրինակ զբանս. եթէ մշակ ոք էր և չապականէր ինչ և չհատանէր յարարոցն, ոչ նենգէր և ոչ գողանայր և այլում տայր, բայց զձեռս և զոտս կծկէր և անցանէր 'ի տան նստէր, ոչ եզինս լծէր և ոչ հերկս հարկանէր և ոչ սերմ 'ի վար տանէր, ոչ զայգիս դարմանէր և ոչ այլ ինչ գործ զմշակաց գործէր, միթէ չպատժէաք զայնպիսին. թէպէտ և ոչ այլ ինչ չարիս գործէր, նա և այնու իսկ մեծ վնաս գործէր զի դատարկութեամբն վնաս առնէր մեզ, և չվճարէր ըզպէտս որ ինչ 'ի նմանէն պարտ էր վճարել: Այլ ոք յարուեստաւորաց ոչ միայն օտարի իւրոյ արուեստին չվե-

1 Այլպէս յայլն. մասն դատարկութեան է:

նաւէր, այլ և ոչ իւրում առաւելատակցի, և ճնչն զա-
տարկ ևեթ կայր, ո՞չ առաքէն եղծանէին ապականէին
ամենայն կարգք և կեանք մեր։

Կամիս զի 'ի մարմին ածիցեմք զբանս. Ձեռն՝ զդրա-
ջէր թէ չհաստատնիցէ զգլուխն և ոչ զնեղուն կարեացէ և
ոչ զանկն հանիցէ և ոչ այլ ինչ այնպիսի վնաս գործիցէ,
բայց միայն դատարկ լինիցի և զիւր դարման չառնիցէ
մարմնոյն, միթէ չիցէ՞ արժանի կտրելոյ և ոչ այնպէս զա-
տարկ կրելոյ և ամենայն մարմնոյ լինելոյ ապականիչ։ Նոյն-
կամ բերան՝ ուտել չուտիցէ զձեռս և ոչ խածատիցէ
զկուրծս և զիւր դարմանն չտանիցի, չիցէ՞ լաւ թէ բնա-
ւին իսկ կարկեր։ Նոյն արդ եթէ ծառայից և արուես-
տագիտաց և մարմնոց ոչ զչար ինչ գործել մեծ վնաս է,
այլ և 'ի բարեացն նուաղութիւն, որչափ ևս առաւել
Քրիստոսի մարմնին նոյն լինիցի։ Այժմ իրի իսկ և ե-
րանելին Պաւղոս հրամայեցուցանէ զմեզ 'ի չարեաց և մե-
տէ 'ի գործս առաքինութեան։ Ո՞ր ինչ օգուտ իցէ, ա-
ղէ ասա, զփուշ խլել և 'ի բաց ընկենուլ, և սերմ սուրբ
չսերմանել։ Նոյն նոյն վնաս համարէ թէ բնաւ ձեռն
իսկ 'ի գործ չէր արարեալ յորժամ վաստակքն 'ի գլուխս
չելանիցեն։

Սոյն այնորիկ և երանելոյն Պաւղոսի առաքեալ յանձնն
զդէմս խնամակալութեանն՝ ոչ միայն մինչև 'ի չարեացն
հեռանալ կարգէ զպատուէրսն, այլ և վաղվաղակի առնե-
կել բարութեանցն յորդորէ։ Քանզի ասաց. "Ամե-
նայն դառնութիւն բարկութիւն և սրտմտութիւն և ա-
ղաղակ և հայհոյութիւն բարձցի 'ի ձէնջ ամենայն չա-
րութեամբն հանդերձ". յարէ 'ի նոյն՝ թէ "Եղե-
րուք ընդ միմեանս քաղցունք և գթածք, շնորհեցէք
միմեանց". քանզի բարք են նոքա և խնամք։ Նոյ չէ
հնար միոյն զերծումն 'ի միւսոյն բարս հաստատել զմեզ.
այլ պարտ է միւսանգամ յորդորել որպէս 'ի չարեացն
մերժելոյ, նոյնպէս և 'ի բարեացն ստացուածս յորդո-
րագոյնս գտանել։ Այս և 'ի մարմնի իսկ թուխն յոր-
ժամ յիւրմէ զունոյն այլայլիցի, ոչ անդէն վաղվաղակի
լինի ապիտակ։ Մանաւանդ զի մի բնութեանն ինչ իրք
կրթիցեմք զբանս, այլ 'ի կամայականն տարրցուք զիրս։
Որ չէ թշնամի, ոչ եթէ վաղվաղակի բարեկամ իցէ.
այլ իրք ինչ միջինք են որ ոչ 'ի թշնամութենէ և ոչ 'ի

բարեկամութենէ, և բազումք 'ի մարդկանէ զայն իսկ յաճախագոյն ունին ընդ մեզ։ Որ չարտասանեցան, ոչ իսկ և իսկ ծիծաղեսցի. այլ միջին ինչ համեստութիւն։ Նոյնպէս և աստ որ արժանն չէ, ոչ եթէ իսկ և իսկ քաղցր իցէ. և ոչ որ չէն ցանկալ՝ ոչ եթէ վաղվաղակի գթած գտանի։ Այլ պիտոյ է այլ ինչ փոյթ տալ բարին ստանայցի։

Այլ տես զիարդ ըստ օրինաց ազնիւ միակութեան երանելին Պաւղոս զհաւատացեալ նմա անդն 'ի միակենս որբէ և գործէ։ Եբարձ 'ի միջոյ զյոռի սերմնն. աղաչէ պատուհեան ընդունել զսերտ տունկն. “Երթայք, ասէ, քաղցրունք„։ Եթէ յորժամ փուշքն խլիցին, երկիրն դատարկ մնայցէ, անշահ բանջարս բուսուցանէ միւսանգամ։ Վասն այնորիկ նախ զդատարկութիւն և զյղփութիւն պարտ է կանխել սերմանել զբարւոք սերմնն և տնկել տունկս ազնուականս։ Որ զբարկութիւնն, եդ 'ի տեղւոջ զքաղցրութիւնն. եբարձ զդառնութիւնն, տնկեաց զգթածութիւնն. կտրեաց զչարիսն և զհայհոյութիւնն, և յարմնեաց զներելն. քանզի շնորհեն միմեանց՝ զներելն միմեանց յայտ առնէ։

## ՑՈՐԴՈՐԱԿԱՆ

Մեծ են այն շնորհք քան զընչիցն ձիրս։ Որ զինչսն թողուցու պարտապանին՝ որում փոխ տուեալ իցէ, բարւոք գործ գործէ. բայց մինչ ցմարմին միայն են շնորհքըն, թէպէտ և իւրում անձինն զփոխարէնսն 'ի հոգևորսն և յոգւոցն պէտս գանձէ։ Իսկ որ զմեղսն շնորհիցէ, և իւրում մարմնոյն օգուտ գործէ և նմա ում ներիցէն. և այսու օրինակաւ ոչ միայն զանձն, այլ և զնա 'ի հեզութիւն ածէ։ Քանզի ոչ այնպէս վրէժս պահանջելով 'ի մեղանչականացն մերոց հանեմք զքէնս, որպէս թողութեամբն կսկծեցուցանեմք և ածեմք յակնածութիւն։ Ո՛ի այլ ազգ ոչ անձանց և ոչ նոցա ինչ օգուտ գործեմք, այլ երկոցունց կողմանց վնաս առնեմք. զի մեք զանձանց վրէժս խնդրելոյ զհետ երթամք իբրև զ[illegible]րէից իշխանան, և զնոցա բարկութիւնն ևս քան զևս բորբոքեմք։ Իսկ եթէ հեզութեամբ զվրէժսն պահանջիցեմք, զամենայն բարկութիւնն 'ի նոցանէ 'ի բաց կոր-

զեմք և 'ի նոսին խիկ տուեան դատաստանի կանգնեալք, որ մեզ իրաւունս համիցէ և զնոսա դատապարտիցէ։ Յանձանց տուգիւս լինիցին և անձամբ անձանց վճիռ տայցեն, և զամենայն հնարս հնարիցին, որով կարիցեն զտուեալ նոցա փոխն յերկայնմտութեան կողմանէ՝ հատուցանել սպառապուռ չափովն ստուգեալ գտանիցեն։ Ոչ թէ զսակն և զկշիռն հատուցանիցեն, սակայն և այնպէս նուազեալ գտանիցին. զի ոչ ինքեանք նախ արարին օկիզքն, այլ 'ի մենջ առեալ օրինակ և այնպէս յետնեալք գտան։

Փութայցեն այսուհետև առաւել քան զչափն հատուցանել, զի զթերութիւնն վասն յետնոյն իմանալոյ առաւելութեամբ կշռոց հատուցմանն ծածկիցեն. և որ 'ի ժամանակէ նուազութիւն եղև յորում չարչարեցին յանձախէին, զնոյն ըստ առաւելութեան հեզութեան 'ի լաւութիւն դարձուցեալ 'ի հասարակաց շահս գործիցեն։ Նանզի մարդք յորժամ 'ի բարի միտս եկանիցեն, ոչ այնչափ ընդ չարեացն որչափ ընդ բարեացն զղջս 'ի նոցանէ որոց մեղանն կրիցեն՝ յոգւոց հանեն. զի մին չարութեան գործ է, և միւսն նախատանաց և ծաղու լի. զի որ յերախտիսն վայելեաց, չհատոյց փոխարէն երախտիս։

Այլ այն խիկ է գովութիւն և դրուատիք յամենեցունց և գործ պարծանաց յորժամ վշտանայցէ ոք և փոխարէն չարի չար չհատուցանէ. վասն այնորիկ և այնու խիկ առաւել կծծին չարարարքն։ Որպէս զի թէ կամիցիս վրէժ առնուլ, այնպիսի օրինակաւ խնդրիցես վրէժ՝ ընդ չարին բարի հատուցանելով, զի զնա քեզ պարտական կացուցանիցես, և դու յաղթեսցես զարմանալի յաղթութիւն։ Զարչարանս ինչ յումեքէ կրեցեր, բարի արասջիր, և այնպէս առնուս վրէժս 'ի թըշնամեաց։ Նոյն եթէ զքէնն կամիցիս խնդրել, նոյնպէս և զքեզ և զնա ամենեքեան գովիցեն։ Իսկ եթէ այլ ազգ յաղթիցես, քեզ դրուատիս տայցեն և զարմանայցեն, և զնա բամբասիցեն։

Ոչինչ չար քան զայն թշնամի կայցէ և զինչ քան զայն զարմանալի յորժամ և 'ի թշնամեացն ոք գովութիւն առնուցու։ Ոչինչ դառն քան զթշնամի կայցէ և զինչ քան զայն աղէտս առնուանել յորժամ ամենեցունց

առաջի քո թշնամին թշնամանիցի։ Եթէ քեզէն վրէժս պահանջիցես, թերեւս և պարսաւիցիս, և դու միայն խնդրեցեր զվրէժն. ապա թէ թողուցուս, փոխանակ քո ամենեքեան 'ի նմանէ վրէժս խնդրիցեն. և քան զչարչարանս կրելոյ այն անհնարին աղէտք են յորժամ 'ի թշնամեացն այնչափ վրէժխնդիրք քենս պահանջիցեն։ Եթէ զբերան բանայցես, ամենեքեան լռեսցեն. իսկ եթէ դու լռիցես, ոչ այնուհետեւ ընդ մի միայն բերան, այլ ընդ բիւր բերանս ընդ այլոց արկանիցես, և այնպէս առաւել խնդրիցես զվրէժս։ Ի քո թշնամանել, բազումք թերեւս մեղադիր լինիցին և ասիցեն թէ առ սրտի խօսի զինչ և կամի. իսկ յորժամ որում չիցէ ինչ մեղուցեալ, այնպէս գանգատանաւ ասիցէ զնա թշնամանօղք, յայնժամ առաւել սուրբ յամենայն կարծեաց լինիցի վրէժխնդրութիւնն։ Յորժամ որք չկրեցինն ինչ չարչարանս վասն քո առաւել հեղութեանն, իբրեւ զնասեալ վշտակիցք և ցաւակիցք քո լինիցին, յամենայն կարծեաց սուրբ է այնուհետեւ վրէժխնդրութիւն։

Այլ եթէ չլինիցի ոք, ասէ, վրէժխնդիր, զի՞ գործիցեմ։ Ոչ է մարթ և չէ իսկ եթէ այնպէս քարեղէնք իցեն որք տեսանիցեն զայնչափ զքո զգօնութիւն և չզարմանայցեն։ Թէպէտ և առժամայն չխնդրիցեն վրէժ, յետոյ յորժամ աղմուկն անցանիցէ, ընդ քեզ զարմանայցեն և զնա պարսաւիցեն։ Այլ եթէ այլ ոք չգովիցէ, սակայն նա որ մեղաւն՝ զարմանայ, թէպէտ և 'ի վեր չհանիցէ. զի լաւութեանն ատեան որ 'ի մեզ է, թէպէտ և 'ի խորխորատս ինչ չարեաց հատանիցեմք, սակայն անաչառ պահէ զիրաւանցն ընտրութիւն, և չթիւրի և չմիտի ումեք։ Այլ եթէ այլ ազգ ոչ, սակայն վասն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի բանին ընկալ յանձին զզրկանսն։ "Եթէ ածիցէ ոք քեզ ապտակ յաջ ծնօտ քո, մատո դու նմա և զմիւսն եւս"։ Քանզի որչափ երկայնամիտ ոք լինիցի, այնչափ եւս առաւել իւր և նմա օգուտ գործէ և օգուտ մեծ։ Վասն այնորիկ հրամայեաց զմիւս ծնօտն մատուցանել, զի կատարեսցէ զկամն ցանկութեան ցասուցելոյն։ Ո՞ ոք այնպէս գազանամիտ իցէ որ ոչ այնուհետեւ ակն ածիցէ։ Այս և զշանց ասեն թէ յորժամ հաջեն և 'ի վերայ յարձակիցին, և ոչ յորսայս լինիցի, չմեղանչեն ինչ, և ցա-

ծուցանէ զամենայն գաղանութիւնն ։ Իսկ եթէ զշունան այնպէս զգօնացուցանէ խոնարհելն, որչափ եւս առաւել զազգս մարդկան զասուն եւ զխօսուն ։

Այլ պարտ է զայնու որ յառաջ քան զամկաւորն ինչ 'ի միտ անկաւ եւ 'ի վկայութիւն ձգեալ զմեզ, չառնել ցանց ։ Ո՞ ինչ իցէ․ զոր հրէիցն եւ զնոցին իշխանացն առնեմք եթէ զվրէժխնդրութեան զհետ երթայցեն, նա եւ օրէնքն զայն հրամայէին․ "Ակն, ասէ, ընդ ական եւ ատամն ընդ ատաման"։ Ոչ զի զմխեանց աչս հանի-ցեն, այլ զի ահիւ սաստանալեացն 'ի չարեացն գործելոց կարճիցին, մի այլոց վնաս առնիցեն եւ մի ինքեանք յայ-լոց կրիցեն այնպիսի ինչ ։ Վասն այնորիկ ասաց ակն ընդ ական, զնոցա ձեռս կապիցէ, եւ ոչ եթէ քոյոցն համար-ձակութիւն ինչ տացէ․ ոչ զի 'ի քոյոց աչացդ միայն կար-ճիցէ զվնասն, այլ զի եւ զնորայն անարատ պահիցէ ։

Այլ զոր ինչ 'ի խնդիր արկեալ քննէի եթէ էր վասն զի համարձակութիւն էր վրէժխնդրել, պատիժ կրէին որք զիրսն 'ի գործ արկանէին ։ Իսկ արդ զի՞նչ իցէ․ զա-խատակաութենէն առեմ ։ Վաղվաղակի այնմ որ զչարչա-րանսն կրէր, վրէժ առնուլ համարձակէր, որպէս ասա-ցի իսկ, եթէ կարճել կամէր զմիւս եւս յայնպիսի ի-րաց․ բայց ոխս ունել չտայ հրամանն ։ Զ՞անզի ոչ այ-նուհետեւ իրքն ցասման ինչ էին եւ ոչ յանկարծադէմ բարկութեան, այլ օրացու մթերք չարեաց ։ Արգա-հատէ զմե այնպիսեացն որ յանկարծակի յանպատ-րաստից յափշտակիցին եւ 'ի վրէժխնդրութիւնն զինեա-ցեն ։ Զ՞անզի եւ ասէ իսկ՝ ակն ընդ ական․ եւ դարձեալ՝ եթէ ճանապարհք ոխակալաց 'ի մահ ։ Իսկ եթէ ուր ակն ընդ ական կուրացուցանել հրամայէր՝ այնչափ կայլն պա-տիժք 'ի վերայ ոխակալաց, որչափ եւս առաւել ուր պա-տուէրքս են զանձինս տալ 'ի չարչարանս եւ ոչ զայլս չար-չարել ։

Ո՞չ այսուհետեւ լիցուք ոխակալք, այլ շիջուսցուք զդ-բարկութիւնն, եւ յաւիտենից բարութեանցն հասանի-ցեմք եւ նորա մարդասիրութեանն արժանի լինիցիմք ։ "Որով չափով չափէք, ասէ, չափեսցի ձեզ․ որով դա-տաստանաւ դատիք, դատիցիք"։ Որպէս զի եւ ատեան յաշխարհիս զերծցուք յորոգայթից եւ 'ի հանդերձե-լումն աւուրն հասցուք թողութեան 'ի Քրիստոս Յի-

սուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն եւ հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ՃԱՌ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

"Լերուք ընդ միմեանս քաղցունք եւ գթածք. շնորհեցէք միմեանց, որպէս եւ ած 'ի ձեռն Քրիստոսի շնորհեաց մեզ: Եղերուք այսուհետեւ նմանողք այ իբրեւ որդիք սիրելիք, եւ գնացէք սիրով որպէս եւ Քրիստոս սիրեաց զմեզ եւ մատնեաց զանձն իւր վասն մեր պատարագ եւ զենումն այ 'ի հոտ անուշից":

Անցեալքն քան զհանդերձեալսն առաւել ունին զօրութիւն, եւ յոյժ զարմանալիք եւ հաւատարիմք թուին. վասն որոյ եւ Պաւղոս 'ի վաղուց ինչ իրաց գործելոց տայ մխիթարութիւն, զի այնք վասն Քրիստոսի մեծ զօրութիւն ունին: Քանզի ասելն՝ թող եւ թողից ձեզ, եւ եթէ չթողուք՝ եւ ոչ ձեզ թողուցու, առ առս զգաստաւէրս անցեալ է եւ որք մերձ իցեն 'ի հաւատալ, մեծամեծ ինչ իրս վճարէ: Իսկ Պաւղոս ոչ այսպիսի. ինչ միայն բանիւք պատկառեցուցանէ, այլ եւ 'ի վաղուց ինչ իրաց գործելոց. զի ընդ այնր պատիժք 'ի վերայ կան, եւ այսու բարւոյ իմիք հաղորդակից հասանէ լինել: Քրիստոսի, ասէ, նմանող լեր. եւ բաւական է այն միայն 'ի մխիթարութիւն առաքինութեան՝ այ նմանող լինել: Ո՞ր այս մեծ է քան զայն, որպէս եւ ասէ իսկ՝ թէ "Ծագէ զարեգակն 'ի վերայ չարաց եւ բարեաց, եւ տեղայ 'ի վերայ արդարոց եւ անօրինաց": Այլ ոչ վայրապար ինչ ասէ նմանող լինել այ, այլ որպէս եւ մեք, ասէ, վայելեցաք 'ի սէր, զհարց աղիս կամի ունել մեզ ընդ միմեանս. քանզի աղիքն ոչ այլ ինչ են, եթէ ոչ գութ եւ խնամ եւ մարդասիրութիւն: Այլ զի չէ հնար՝ քանզի մարդիկ եմք՝ չարանալ եւ չարանացուցանել, երկրորդ իմն դեղ եգիտ. "Շնորհել, ասէ, միմեանց": Սակայն եւ կիցէ այս այնմ հանդերձ. զի դու աստ շնորհես, եւ նա քեզ աստ եւ անդ. եւ զոր շնորհեսն, ոչ այ ինչ շնորհես.

րայ կայ նմանող լինելոյ նմա, ոչ միայն զերախտիսն առնելով, այլ որդիսն կոչելով. «Իբրեւ որդիք սիրելիք» ասէ։ Եւ քանզի ոչ ամենեքեան հարց նմանող լինին, բայց միայն սիրելիքն, վասն այնորիկ ասէ թէ իբրեւ որդիք սիրելիք։ «Եւ գնացէք սիրով»։ Ահաւասիկ ամենայնի պատճառք նա է. զի ուր սէր իցէ, անդ ոչ բարկութիւն եւ ոչ սրտմտութիւն եւ ոչ աղաղակ եւ հայհոյութիւն, այլ ամենայն ինչ 'ի միջոյ բարձեալ. նմին իրի իսկ յետոյ զգլխաւորն ամենայնի դնէ։ Ուստի՞ եղեր որդի։ Քանզի թողութիւն եղեւ քեզ 'ի սիրոյն պատճառանաց, որով այնչափ պատուոյ եղեր արժանի, նովին եւ ընկերին պարտիս շնորհել զյանցանսն։ Աղէ ասա, եթէ ոք զքեզ իբրեւ զկալանաւոր եւ բազմաց պատժոց պարտական յարքունիսն արժանի առնէր տանել, որպիսի՞ ինչ պարգեւս համարէիր։ Բայց զայն 'ի բաց իսկ թողցուք. եթէ ոք քեզ ջերմնոտի եւ սարսռացելոյ օգնէր դեղով իւիք, ո՞չ ապաքէն զնա քան զամենեսեան պատուական համարէիր եւ զանուն դեղոյն եւեթ անուանէիր։ Եթէ զժամանակս եւ զտեղիս ուստի օգնականութիւնս ինչ գտանեմք՝ այնպէս համարիմք իբրեւ զանձանց ոգիս, ո՜րչափ եւս առաւել զիրսն իսկ զլխովին։ Յանկացող լինիցիս սիրոյն որով ապրեցար, որով որդին իսկ եղեր. թէ եւ զայլ եւս ոք կարիցես ապրեցուցանել, ո՞չ ապաքէն զնոյն դեղ 'ի կիր արկանես եւ խրատ տաս ամենեցուն թողուլ, զի եւ նոցա թողուցու։ Բարերար ոգւոյ է այնպէս յորդորել, ազատաց եւ ազնուականաց։

«Որպէս եւ Քրիստոս, ասէ, սիրեաց զմեզ»։ Դու 'ի բարեկամն, ասէ, զընդգաս, եւ նա զթշնամիսն սիրեաց։ Ո՞չէ այնպէս իցէ, մեծ գործ տեառն է քան քո։ Եւ որպէսն ասել՝ ո՞ր է զի ողջ գտանիցի. յայտ իսկ է թէ յորժամ թշնամեաց բարի առնիցեմք եւ մեք, լինիցիմք նմանողք Քրիստոսի։ «Եւ ետ, ասէ, զանձն պատարագ եւ զենումն ա՟յ 'ի հոտ անուշից»։ Տեսանե՞ս զի վասն թշնամեացն չարչարել՝ հոտ անուշից է, պատարագ ընդունելի. յորժամ մեռանիցիս, յայնժամ լինիս պատարագ եւ նմանող ա՟յ։

«Այլ պոռնկութիւն, ասէ, եւ ամենայն պղծութիւն կամ ագահութիւն եւ անուանեսցի մի՛ 'ի միջի ձերում որպէս վայել է սրբոց»։ Ասաց վասն դառն ախտին ցաս-

ման, եղեն և 'ի նուաղագոյն չափն։ Այլ զի նուաղագոյն չար է ցանկութիւնն, լուր զինչ ասէն յօրէնսն Մովսեսի. նախ՝ թէ մի սպանաներ, որ ինչ 'ի ցասմանէն գործին. և ապա՝ թէ մի շնար, որ ինչ 'ի ցանկութենէն է։ Զոր օրինակ դառնութիւն և աղաղակ և ամենայն չարիք և հայհոյութիւն և որչափ այլ ինչ այսպիսիք իցեն՝ 'ի ցասմանէն գործին, նոյնպէս և 'ի ցանկութենէն պոռնկութիւն պղծութիւն և ագահութիւն. քանզի նախքին ցանկամք ընչից և մարմնոց։ Այլ որպէս անդ զաղաղակն պարսաւեաց՝ զկատս բարկութեանն, նոյնպէս և աստ զխեղկատակութիւնն և զբանս զարշութեան՝ զկատս պոռնկութեանն։

«Այլ զազրութիւն, ասէ, և խօսք յիմարութեան կամ խեղկատակութիւն որ ոչ վայելէ, այլ առաւել գոհութիւն»։ Մի խօսիցիս ինչ աղտեղիս և մի ածիցես ընդ բերան բանս զազրութեան, և այսպէս կարիցես շիջուցանել զբոցն։ «Այլ անուանեսցի, ասէ, մի 'ի միջի ձերում»․ այսինքն թէ ամենևին իսկ հեռակորոյս լինիցի։ Զսոյն և առ Կորնթացիսն գրէ․ «Լսաւ, ասէ, անուանի իսկ 'ի ձեզ պոռնկութիւն»։ Ամենեքեան սուրբք եղերուք, և չպարտիք խօսել աղտեղիս. քանզի բանքն ճանապարհք են գործոց։ Այլ զի մի կարծիցեն ծանրագոյն և աղտեղի իրք, խեղկատակութեանն 'ի միջոյ բառնալոյ, յարէ 'ի նոյն և զպատճառսն. «Որ ոչ վայելէ» ասէ։ Չէ ինչ մեզ այն անկ. այլ առաւել գոհութիւն։ Զինչ օգուտ 'ի կատակելոյն գործիցի. զծաղրն եթէ գրգռեսցեր։

Աղէ ասա, դերձակն և թաւագործն[1] զինչ ինչ՝ որ չիցէ պատշաճ նոցա արուեստին՝ ստանայցեն, կամ գործի ինչ կամ օրինակ. ոչ ապաքէն չառնեն ինչ փոյթ զանպիտանէն։ Զի որ պիտոյն չիցէ, զինչ անկ իցէ մեզ։ Մի ճառեսցին 'ի միջի մերում բանք դատարկք. զի 'ի դատարկ բանից 'ի գործս անպիտանս կործանիմք։ Չէ փափկութեան ժամանակս, այլ սգոյ և նեղութեան և ողբոց, և դու 'ի խեղկատակութիւնս հասանեալ ես։ Ո՞ր նահատակ 'ի մարտիկս մտեալ՝ թողուցու զգօրեկն, և բանս կատակութեան խօսիցի։ Այկեալ հանեալ կայ

1 Օրինակ մի Խաղագործ։

'ի վերայ սատանայ, շուրջ գայ, գոչէ, մինչեւ յափշտակել. զամենայն դղրդէ, զնաւ վեր 'ի վայր հարկանէ, զի քում գլխոյդ սկսցէ և 'ի քումմէ բունոյդ հանիցէ. կրճէ զատամունս, փրփրայ, որոտայ, հուր և կայծակունս շնչէ հակառակ քում փրկութեանն, և դու նորատիս և կատաղես, և մորոս բանս խօսիս, և զանօգուտս բարբառիս: Այս ուրեմն քաջիկ կարիցես լինել նորա գեր 'ի վերոյ: Զանձինս խաբեք, սիրելիք:

Լսեմք ուսանել զորբացն վարս և զկեանսն, լուր Պաւղոսի. "Զերեամ, ասէ, ոչ դադարեցի զցայգ և զցերեկ արտասուօք հանդերձ ուսուցանել զիւրաքանչիւր ոք 'ի ձէնջ": Արդ թէ վասն մեղուցելոցն և եփեսացւոցն այնչափ փոյթ յանձին ունէր, ոչ կամիս ինչ խօսել, այլ արտասուօք կարգել զխրատն, զի՞նչ ոք այլ ինչ զայլոցն ասիցէ: Նոր զինչ գրէ առ կորնթացիսն, "Ի բազում, ասէ, նեղութենէ և 'ի վշտաց սրտի գրեցի առ ձեզ բազում արտասուօք". և դարձեալ՝ թէ "Ո՞ հիւանդանայ, և ոչ ես հիւանդանամ. ո՞ գայթագղի, և ոչ ես ջեռանիմ": Նոր դարձեալ նմին և այլուր զինչ ասէ, "Մեք, ասէ, որ եմք ընդ յարկաւ՝ հեծեմք զօրհանապազ". որպէս զի ասիցէ, ելանել ցանկամք յաշխարհէս. և դու ծիծաղիս և խաղաս. ժամանակ պատերազմի է, և դու զգեղաւորացն արուեստ ասնուս 'ի ձեռն: Եւ տեսանիցես զերեսս պատերազմողացն, զիարդ տրտմագին 'ի խոնարհ կախին. յօնքն ահագինք և գէմք խոժոռք, աչք արիւնախառն և սիրտք 'ի թնդոյն՝ 'ի վեր վազեն և զկուրծս բաբախեն, ժողովեալք գումարեալք համօրէն, զահի հարեալք, 'ի մի վայր խռնեալք և ճակատեալք բազում կարգօք, առաւել յօրինուածովք: Եւ ասեմ չխօսել անգամ բանս ինչ աղտեղիս, այլ և մի վայրապար ինչ բարբառել, բազում լաւութիւն յանձին ունել քան զզօրականացն:

Արդ թէ որ յերկեւրի պատերազմունս պատրաստին և ոչ ինչ զուարթին 'ի բանիցն՝ այնչափ վառին լաւութեամբ, դու որ բանիւք խոկ ունիս պատերազմ, և զմեծ մասն պատերազմին, և զայնչափ մասն մերկանաս. և թէ չիցէ տեղեակ զի առաւել 'ի բանից նենգիմք. և դու խաղաս և առաւել կայտառես և կատակես և զծաղր գրգռես, և չհամարիս ինչ զուարթակար զիրսն: Որչափ 'ի

խեղկատակութենէ սուտ երդմունք լինին, քանի՛ մեծամեծք, որչափ բանք զազրութեան։ Զի՞նչ, ասեն, այնպէս մե՛ծ-նաս խեղկատակութիւնն։ Այլ լուր զիարդ զամենայն խեղկատակութիւնն 'ի բաց մերժէ։ Պատերազմի ժա-մանակ է, կռուոյ և քրտնութեան, պահպանութեան և վառելոյ և ճակատելոյ, և չիք ինչ անդ անպատեհ քան զծաղր. քանզի աշխարհիս է ծաղրն. և լուր Քրիստոսի իսկ. "Աշխարհ, ասէ, խնդասցէ և դուք տրտմեսջիք"։ Քրիստոս 'ի խաչ ել վասն քո չարեաց, և դու 'ի ծաղրս և 'ի խաղս հատանել ես. նա ապտակեցաւ և այնչափ չար-չարանս կրեաց վասն քո վշտաց և վասն ձմերայնոյն՝ որ եկեալ հասանել կայր 'ի վերայ, և դու զրգես և փափկա-նաս. և զիա՞րդ ոչ այնու առաւել զայրացուցանիցես զնա։

Այլ քանզի բազումք անխտիր իմն զիրսն համարին, վասն որոյ և դժուարապատահ իմն թուի նոցա, ծանրացեալ և վասն այնորիկ խօսեսցուք սակաւ ինչ, և ուսուցուք եթէ որչափ ինչ չարիք են. քանզի և այն սատանայի գործ է, յորժամ իբրև զանխտիր ինչ իրս զխորշելի արհա-մարհել փութացուցանիցէ։ Նախ թէ և անխտիր իսկ իրք էին, չէր պարտ զայնու արհամարհել, այլ գիտել եթէ մեծամեծ չարիք անտի ծնանին և աճեն, և 'ի պոռնկութիւն կատարի վախճանն։ Այլ զի ոչ անխտիր ինչ իրք են, անտի իսկ յայտ է։

Բայց տեսցուք եթէ ուստի ծնանիցին. մանաւանդ զի տեսցուք իսկ եթէ որպիսի ինչ պարտ իցէ լինել սըր-բոյն. գահ, հեզ, սգաւոր, նեղեալ, յողբս անցուցանել զժամանակս կենաց իւրոց։ Այս ուրեմն որ զխեղկատա-կութիւնն խօսեսցի՝ չէ սուրբ, նա և հեթանոս իսկ է, և ծաղր և ծանակ այնպիսին. քանզի գուսանաց միայն համարձակ է այն, ուր զազրութիւն միայն է և խեղկա-տակութիւն և ծաղր անժամ։ Իսկ եթէ զինչ ասա վայել իցէ, լուր մարգարէին. "Ծառայեցէք տեառն երկիւ-ղիւ, և ցնծացէք առաջի նորա դողութեամբ"։ Իսկ խեղկատակութիւնն թուլացուցանէ զոգիսն և 'ի ծու-լութիւն մեղկէ. բազում անգամ և թշնամանս իսկ ծնանի և կռիւս։ Ո՞չ ապաքէն 'ի չափ կատարեալ ա-րութեան հասեր, խափանեա զմանկութեանն։ Այլ ծառայլին քում 'ի հրապարակս չտաս ինչ խօսել զանօ-գուտս. և դու զանձն՝ որ առ ա՛ծ ծառայ ունիս, կատա-

կես, շրջիս 'ի հրապարակս։ Պատշաճ այն էր արթուն ոգւոց՝ թէ չլինիցին գողացեալ յիմեքէ. իսկ զալէկոծն զտաճեալն և զծփեալն ով իցէ որ ոչ խախտիցէ։ Այլ եթէ այլ ոք ոչ, անձամբ յանձնէ քայքայի, և չլինիցի կարօտ սատանայինենդութեանն և վնասակարութեան։

Այլ զի ուսանիցիս՝ միտ դիր. և անուն իսկ խեղկատակութեանն՝ յանդիմանիչ է կատականացն. զի խեղն յայտ է թէ չէ առողջ, և կատակն նախ ինքն իսկ յանձնէ կատակի. զի հարկ լինի և զերեսս ծռել, և զձեռան և զաչս այլայլել. և այն հեռի է յայնցանէ որք 'ի վերայ վիմին հաստատեալ կայցեն և անշարժք իցեն. քանզի արագ արագ կործանի այնպիսին, և փաղափոխուկ լինի. զի հարկ է նմա այնուհետև և զկերպարանս և զծաղր և զգնացս փոփոխել, և հպտել[1] և ամենեցուն նմանել, և ազգի ազգի պարսաւանս հնարել իմանալ. և հեռի են 'ի քրիստոնէից գուսանական բանք։ Հարկ լինի նմա այնուհետև թշնամութիւն բազում ստանալ յայնցանէ՝ զորս 'ի զուրն պարսաւիցէ, եթէ 'ի մօտ իցեն, և թէ 'ի բացուստ լսիցեն։ Այլ թէ բարւոք ինչ իցեն իրքն, ընդէ՞ր գուսանացն միայն արուեստ իցէ։ Գուսան և հացկատակ լինիս, և չամաչես. վարձակ, բոզ և երգեցիկ։ Ընդէ՞ր աղատ կանանցն ոչ հրամայէ ոք այնպիսի հրճուանս հպտել. ո՞չ ապաքէն այլանդակաց բարս համարին, և ոչ ցածնոց։ Մեծամեծ չարիք բնակեն 'ի սիրտ հացկատակին, յոյժ մեղկութիւն, առաւել լուծութի՜, և ոչ հաստատութիւն. խախտի շինուածն, 'ի բաց մերժի երկիւղն, հեռանայ ցածութիւնն։ Եղու ունիս, ոչ զի զայլս յերգ արկանիցես, այլ զի՛դ գոհացող լինիցիս։ Զուեսանիցես զանուանեալ ծաղրածուսն, զոր և շաղակրատսն կոչեն. նոքին իսկ են խեղակատակքն և հացկատակք։

## ՑՈՐԴՈՐԱԿԱՆ

Ի բաց մերժեցէք հանէք 'ի մտաց ձերոց, աղաչեմ, զանշնորհաւոր շնորհսն, զանպատեհ պաշտօնուկսն. երկապաշտէիցն է այն արուեստ, գուսանացն և կաքաւ-

1 Երկու օր. հպդփէն։

չացն, պոռնկացն և բոզաց կանանց. հեռի է յաղատ ա-
գւոց, մեկուսի յաղնուականաց, քաջ 'ի բաց և 'ի ծա-
ռայից անգամ. անարգ ոք և աղտեղի 'ի խեղկատակու-
թիւնս հատանի։ Բազմաց և քաջութիւն իմն իրքն
թուին, և այն իսկ է սգոյ արժանի. որպէս դառնութի̃
առ սակաւ սակաւ 'ի չարիս ձգէ մեղմով, նոյնպէս և խեղ-
կատակութիւնն թուի թէ ուրախութիւն ինչ իցէ, և
չիք ինչ քան զայն անմտութիւն. և լուր իսկ գրոյն զինչ
ասէ. "Յառաջ քան զորոտումն փութան փայլատա-
կունք, և նախ քան զամօթալեածն կանխեսցեն շնորհքն"։
Չիք ոք անամօթ քան զխեղկատակն. քանզի ոչ եթէ
շնորհօք լի է բերանն, այլ ցաւօք։ Մերժեսցուք հան-
ցուք զչար սովորութիւնն 'ի սեղանոյ։ Ոմանք և անան-
կաց զայն արուեստ ուսուցանեն. ո՛ անկարգութիւն և
անպատեհ լկտութիւն. որք 'ի ներութեան մաշեալ են,
նոցա խեղկատակութիւն ուսուցանեն. և ո՞ր իցէ զի
չիցէ աղտն այն. արդ և յեկեղեցիս իսկ եմուտ, և 'ի
գիրս ևս մեսեցաւ։

Ասացից ինչ, զի ցուցից զչարեացն առաւելութիւն.
ամաչեմ, բայց սակայն ասացից. քանզի կամիմ ցուցա-
նել՝ թէ որչափ տարածեցան չարիքն, զի մի կարծիցես
եթէ վասն ընչին իրաց սուտ խօսիցիմ. այլ զի գտանես
այնպէս կարացից մերժել զձեզ 'ի պատրանացն. և մի
ոք համարեսցի եթէ 'ի մտաց ինչ կարկատեմ, այլ զոր
ինչ լուայն՝ զայն ասեմ։ Եմուտ ոմն 'ի տուն ուրուք ա-
ւագաց, թէպէտ և ծաղու բանք են, սակայն ասացից.
իբրև զսկուտղն խորտկօքն առաջի եդին, ասէ. Նկա-
լարուք զխորատ, զի մի բարկասցի որովայն։ Պարձեալ
և այլք ասեն. Վայ քեզ մամոնայ, և այնմ որ զքեզ
չունիցի։ Եւ բազում և այլ ինչ անպատեհութիւն ե-
մուտ 'ի խեղկատակութենէ. որպէս և յորժամ ասի-
ցեն, և արդ չիցեն բախտք և ծնունդք և Ճակատագիր
և հրամանք[1]. առ անպատեհութիւնն, ասեն, ասեմք և
առ բարս յուխս։ Ոգւոց որ թափուր յերկիւղածութե-
նէ իցեն, են այնպիսի բանք։

Եւ արդ չիցե՞ն երկնից բարկութեանցն արժանի այն-
պիսի խօսք. և բազում ինչ և այլ այնպիսի բանս գտա-

1 Երկաթագիրն հմայք։

նէ ոք 'ի խեղկատակութենէն: Վասն որոյ աղաչեմ, յամենայն կողմանց 'ի բաց մերժեսցուք յայնպիսի սովորութենէ. և զայն ինչ խօսեսցուք՝ որ մեզ վայել իցէ. և մի սուրբ բերանքս զաղտեղի և զկծծի բանս խօսեցին. քանզի զի՞նչ հաղորդութիւն է արդարութեան ընդ անօրէնութեան, և կամ զի՞նչ հաւասարութիւն իցէ լուսոյ ընդ խաւարի: Պարտ և պատշաճ է յամենայն անօգուտ բանից մերժել զանձինս, զի կարասցուք խոստացելոց բարութեանցն հասանել. և մի ցանկ ընդ այն ելանել, և 'ի հաստատութենէ մտացն անկանել. զի խեղկատակն անձին դատախազ է, և ցանկ յիւր գլուխն կուտէ բազում չարիս:

Զերկուս ինչ բարս ոգւոյն ուղղեսցուք, իբրև զերկուս երիվարս յարդարեալս, զցանկութիւնն և զցասումնն. լծեսցուք ընդ միմեանս իբրև զերիվարս 'ի կառս, և հանցուք կացուսցուք զմիտսն իբրև զկառավար 'ի վերայ կառացն, զի և զպսակն վերին կոչմանն առնուցումք. որում լիցի ամենեցուն մեզ հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութի և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

«Զայս գիտասջիք եթէ ամենայն պոռնիկ կամ պիղծ կամ ագահ, որ է կռապաշտ, ոչ ունի ժառանգութի յարքայութեանն Քրիստոսի այ: Մի ոք զձեզ խաբեսցէ բանիւք սնոտեօք. զի վասն այսորիկ իսկ գայ բարկութիւն այ 'ի վերայ որդւոց անհաւանութեան»:

Էին, որպէս թուի ինձ, ոմանք և առ նախնեօքն մերովք որ զձեռս ժողովրդեանն լքանէին, և զիրսն որ յԵզեկիէլէ ասացան՝ յարդիւնս ածէին. մանաւանդ թէ զսուտ մարգարէիցն գործ գործէին, որք վասն ափոյ միոյ գարւոյ բամբասէին զած առաջի ժողովրդեանն, որ թուի ինձ թէ և 'ի բազմաց գործիցի այժմ: Յորժամ ասիցեմք՝ թէ որ մորոս զեղբայր իւր կոչիցէ՝ 'ի գեհենն եր-

թայ, ոչ՝ ասեն. և յորժամ ասիցեմք թէ ագահն կռապաշտ է, և այնու ևս դարձեալ բամբասեն. ուստի բանք է, ասեն, այն. և այնպէս զամենայն իսկ զպատուիրանսն աղարտեն: Արդ զայնպիսեացն առակմարկեալ երանելոյն Պաւղոսի գրէ առ Եփեսացիսն. "Զայս գիտասջիք, ասէ, եթէ ամենայն պոռնիկ կամ պիղծ կամ ագահ, որ է կռապաշտ, ոչ ունի ժառանգութիւն յարքայութեանն Քրիստոսին և Այ". և անդէն ՚ի նոյն յարէ՝ թէ "Մի ոք զձեզ խաբեսցէ բանիւք սնոտեօք": Բանք սնոտիք այնպիսի բանք են որ առ ժամանակ մի այնպիսի շնորհաւորք երևին, զի դիւր թուին և արդիւնս ինչ ոչ ցուցանեն, քանզի պատրանք են:

"Վասն այնորիկ իսկ գայ, ասէ, բարկութիւն Այ ՚ի վերայ որդւոց անհաւանութեան" վասն պոռնկութեան պղծութեան և ագահութեան. կամ վասն այնպիսի ինչ բանից պատրանաց, քանզի էին ոմանք խաբեբայք: Վասն այնորիկ որդիս անհաւանութեան կոչէ զնոսա զկարի անհաւանսն, զինքնակամ անհաւանսն: "Ամենայն, ասէ, պոռնիկ կամ պիղծ կամ ագահ, որ է կռապաշտ, ոչ ունի ժառանգութիւն յարքայութեանն Քրիստոսին և Այ": Տեսանես զի զարքայութիւնն ցուցի[1] հաւասար երանելի առաքեալն: Քրիստոսի, ասէ. զոր և Ած իսկ կոչէ: "Յարքայութեան Քրիստոսին, ասէ, և Այ". անթերը հանդերձ դնէ զՔրիստոսին, և առանց աթեր զԱյ, այսինքն վերադրով. քանզի Քրիստոսին ասէ և ոչ լոկ Քրիստոսի: Նա զնոյն Ած կոչէ. զԱյն ոչ ասէ՝ զեդիւ նուոյ միոջ գրոյ, այլ լոկ թէ Այ: Նա եթէ արքայութիւն Քրիստոսի է, յայտ է թէ և Ած աստ զնոյն կոչէ:

"Մի այսուհետև լինիք հաղորդակիցք նոցա. զի թէպէտ և երբեմն էիք խաւար, արդ լոյս էք ՚ի Տէր". զոր և ՚ի հռովմայեցւոց թղթին գրէ. "Ո՞ ինչ պտուղ ունէիք, ասէ, յայնժամ վասն որոյ այժմիկ զամօթիդ հարեալ էք": Նա յուշ առնէ նոցա զառաջին չարիսն՝ եթէ ՚ի միտ առէք զինչ էիք երբեմն և զինչ արդ եղեւաք. մի միւսանգամ անդրէն յառաջին չարիսն զառա-

1 Յօրինակին պակասի. այլ հաստատեալ. Տեսանես զի զարքայութիւնն ... աստ զնոյն կոչէ չէք ՚ի յոյնն:

ծանիցէք և թշնամանիցէք զնոյ գշնորհսն։ "Թէպէտ և երբեմն էիք խաւար, արդ լոյս էք 'ի Տէր": Ոչ 'ի ձերմէ առաքինութի, այլ յնոյ շնորհացն շնորհեցաւ ձեզ այն. քանզի և դուք այնմ արժանի էիք որում և այլ հեթանոսքն որ զնոյն չճանաչեն. բայց "Այսուհետև իբրև զորդիս լուսոյ գնացէք": Ոչ ինչ իցէ իբրև զորդիս լուսոյ։ Վասնզի 'ի խաւարէ 'ի լոյս եկիք լուսով աւետարանին որ ծագեաց 'ի տեառնէ 'ի սիրտս ձեր, մի ևս այսուհետև անդրէն 'ի խաւարին գործսն դառնայցէք. այլ իբրև զորդիս ճշմարիտ լուսոյն որ լուսաւոր արար զաշխարհ, գնացէք լուսով պատուիրանացն։

"Ի պտուղ հոգւոյն, ասէ, ամենայն բարութեամբ արդարութեամբ և ճշմարտութեամբ է։ Փորձեցէք զինչ հաճոյ իցէ տեառն": Ամենայն, ասէ, բարութի։ Այս առ բարկացողսն և առ դառինսն ասէ, և զարդարութեամբն առ ագահսն, և զճշմարտութեամբն առ պատիր ցանկութիւնն։ Չասացի, ասէ, զայս, այլ զնոցին հակառակսն։ Ամենայն, ասէ. այսինքն պտղաբերք լինել հոգևոր պտղոց։ "Փորձեցէք, ասէ, զինչ իցէ հաճոյ տեառն": Այս ուրեմն տղայական և անկատար մտաց են այնք, և սոքա կատարելոցն։

"Եւ մի կցորդ լինիք անպտղութեան գործոյն խաւարի, այլ յանդիմանեցէք ևս. քանզի և որ ինչ 'ի ծածուկն ասի, զայն և խօսել աղտեղի է։ Այլ ամենայն ինչ որ յանդիմանի 'ի լուսոյն, յայտնի է": Ասաց թէ լոյս էք, և եթէ լոյսն յանդիմանէ որ ինչ 'ի խաւարին գործի։ Եթէ դուք, ասէ, առաքինիք և զարմանալիք իցէք, չկարեն թաքչել չարքն։ Որ օրինակ յորժամ ճրագ առաջի կայցէ, ամենեքեան լուսաւորին և գող 'ի ներքս ոչ կարիցէ մտանել, նոյնպէս և յորժամ լոյսն զձեզ լուսաւորեսցէ, յանդիմանեալ ըմբռնին չարքն. ապա ուրեմն պարտ է յանդիմանել։ Եւ զիարդ այլուր ասիցէ թէ "Մի դատիք զի մի դատիցիք". յանդիմանել ասաց և ոչ դատապարտել, խրատել և ոչ կշտամբել": "Մի դատիք, ասէ, զի մի դատիցիք". վասն դոյզն ինչ մեղաց ասէ զայն, քանզի և 'ի նոյն իսկ յարէ՝ թէ "Ի հայիս տեսանել զշիղ յական եղբօր քո, և 'ի քում ականդ գերանդ ոչ նշմարես": Ոչ ինչ իցէ զոր ասէն. այսպիսի ինչ է. զոր օրինակ մէր մինչդեռ

'ի ներքոյ փորիցէ կնքեալ վիրին ընդ մորթովն՝ եւս քան զեւս 'ի խոր գործէ և չօգտի ինչ և ոչ 'ի միոյ իմիք դարմանոյ, նոյնպէս և մեղքն մինչ 'ի ծածուկ գործիցին իբրև 'ի խաւարի, բազում յանդգնութեամբ համարձակին. և յորժամ յայտ գայցեն, լոյս լինին ոչ եթէ մեղքըն, այլ որ զմեղսն գործէր։ Յորժամ 'ի մէջ գայցէ յանցաւորն, յորժամ պատժիցի խրատիցի և ապաշխարեսցէ, յորժամ թողութեան հասանիցէ, ո՞չ ապաքէն փարատեցեր 'ի նմանէ զխաւարն, ո՞չ ապաքէն բժշկեցեր զվէրսն, ո՞չ ապաքէն ածեր 'ի պտուղ զանպտղութիւնն։ Կամ զայն ասէ կամ զայս՝ եթէ մեր վարքս յայտնիք՝ լոյս են։ Իսկ չիք ոք որ զանարատ վարս թաքուցանիցէ. իսկ որ ինչ ծածկին, վասն խաւարելոյն ծածկին։

"Վասնզի ասէ. արի որ ննջես և կանգնեաց 'ի մեռելոց, և լուսատու լիցի քեզ Քրիստոս,,։ Զայս[1] վկայութիւն չգտանեմք ուրեք թէ գրեալ իցէ։ Այլ քանզի բազում ինչ ասացաւ և չգրեցաւ, որպէս յորժամ ասիցէ 'ի գործս առաքելոցն թէ "Երանի է տալն մանաւանդ քան առնուլ,,, թէպէտ և ասէ թէ տէրն իսկ ասէր, այլ չգտանեմք թէ գրեալ ուրեք իցէ 'ի գիրս, նոյնպէս և այս և այլ եւս սոյնպիսիք և 'ի հնումն և 'ի նորումն ասացան. բայց առաքեալքն քանզի հոգւովն գիտէին և զգրեալսն եւս և զչգրեալսն, բերէին համարձակ վկայութիւն մինչ այնպիսիս։ "Արի, ասէ, որ ննջես և կանգնեաց 'ի մեռելոց, և լուսատու լիցի քեզ Քս,,։ Քուն և մահ աստ զայն ասէ որ 'ի մեղսն ոք իցէ. նա և հոտեալ եւս է այնպիսին իբրև զմեռեալ և անզգայ իբրև զքնած և չտեսանէ ինչ նոյնպէս, այլ իբրև յերազի սահեալ և յածեալ շրջի։ "Եւ լուսատու լիցի քեզ Քրիստոս,,։ Ի բաց լեր 'ի մեղացն, և ապա կարիցես տեսանել զՔրիստոս։ "Որ զչարիս գործէ, ասէ, ատեայ զլոյս, և չգայ 'ի լոյսն,,։ Իսկ որ չգործէ ըզմեղս, գայ 'ի լուսաւորութիւնն Քրիստոսի։ Իսկ ոչ եթէ զանհաւատիցն միայն ասէ զայս. զի բազումք 'ի հաւատացելոցն չեն ինչ ընդհատ յանհաւատից 'ի չարիս,

1 Համառօտք. Զայս վկայութիւն . . . մինչ այնպիսիս երկաթագիրն միայն ունի, չիք 'ի միւսն և ոչ 'ի յոյնն։

և են ոմանք որ ևս յանձնառագոյնս. և առ այնպիսիսն 'ի դէպ է ասել՝ թէ "Արի որ ննջեսդ և կանգնեաց 'ի մեռելոց, և լուսաւորեսցէ զքեզ Քրիստոս": Առ նոսին դարձեալ 'ի ձայն է ասել և զայս՝ եթէ "Աստուած ոչ է մեռելոց, այլ կենդանեաց". և եթէ չէ մեռելոց, ապա պարտիմք կենդանանալ:

Ոմանք ասեն՝ թէ աւելի ինչ է ասելն, եթէ ագահն կռապաշտ է: Ոչ ինչ աւելեաց բանք, այլ ճշմարտութեան: Ու և որով օրինակաւ. հեռի է յայ̃ ագահն իբրև զկռապաշտն: Այս զի մի վայրապար զբանս համարեսցիս, լուր զի Քրիստոսի իսկ վճիռ է. "Ոչ կարէք, ասէ, այ̃ ծառայել և մամոնայի": Որք մամոնային ծառայեն՝ մերժեցին զանձինս յայ̃ ծառայութենէն. և որք ուրանայյեն զնորա տէրութիւնն, 'ի ծառայութեան կան անշունչ ոսկւոյն. և կարի իսկ յայտ է՝ թէ կռապաշտք են:

Այլ չքանդակեցի, ասէ, կուռս և չկանգնեցի բագինս, և չզոհեցի[1] արջառս և ոչխարս, և չնուիրեցի գինի. այլ յեկեղեցի գամ և զձեռս ամբառնամ առ միածինն որդին այ̃, և 'ի խորհրդոյն ճաշակեմ, և աղօթից հաղորդակից լինիմ, և այլոցն ևս ամենայն կարգաց՝ որ քրիստոնէից վայել իցեն. և զինչ իցէ զի կռոցն երկիր պագանիցեմ: Այս այն իսկ են զարմանք, զի զփորձ առեալ զպարգևացն, և ճաշակեցեր զայ̃ մարդասիրութիւնն, և տեսեր զի քաղցր է տէր. և թողուս զՔրիստոս, և առ անպիտանն իշխանն ընթանաս, և պատճառիս՝ թէ սմա ծառայիցեմ, և ճշմարտութեամբ ընդ խրատիւ և ընդ անհնարին ծով արծաթսիրութեանն արկեր զպարտանսդ. և չև ևս զքո ինչ ուղղութիւնս թուեցեր, այլ զտեառնն զձիրս և զպարգևս: Ադէ ասա աղաչեմ, զզինուորն ուստի խմանայցեմք՝ եթէ զինուոր է. յորժամ առաջի թագաւորին մտանիցէ և ելանիցէ և նմին 'ի սպասու կայցէ և զնորին զհրամանսն կատարիցէ և յարքունեացն զռոճիկսն առնուցու և նորին կոչիցի, եթէ յորժամ զթշնամեացն թեկն առիցէ, և ընդ իւրում թագաւորին բարբառոք իցէ, և զպատերազմողացն զկիրս յանձնանձիցէ. ոչ ապաքէն ասեմք՝ եթէ քակեաց

1 Երկաթագիրն չզոհեցի:

զանձն 'ի ծառայութենէ իւրոյ թագաւորին, և զթշնամւոյն արար թիկունս։

Իսկ դու թշնամանես զնա իբրև զկռապաշտն, ոչ միայն միով քոյով բերանովդ, այլ բազմաց, ասէ, զզեղելոցն։ Այլ կայն, ասէ, չեմ կռապաշտ։ Յորժամ ասիցեն՝ թէ տես զինչ գործէ քրիստոնեայն, զինչ առնէ ագահն, ահա քրիստոնեայ, ահա ծ̃ապաշտ, յայնժամ ոչ դու միայն թշնամանես քոյով գործովքն, այլ և զըզկելոցն ևս հարկ առնես զայնպիսի բանս խօսել. և եթէ չխօսիցին ինչ այնպիսի բանս, այն նոցա ազնուականութեանն է համար։ Ո՞չ է չտեսանիցեմք, զի այնպէս վճարին իրքն։ Ո՛ կռապաշտն զինչ այլ ինչ պաշտէ, ո՞չ ապաքէն և նա կարեացն երկիր պագանէ. և թերևս բազում անգամ յաղթէ իսկ կարեացն։ Նոյնպէս ինչ՝ յորժամ ասիցեմք եթէ կռոց երկիր պագանէ. ոչ, ասէ. այլ զԱփրոդիտ պաշտեմ, ասէ, և զԱստղիկ կամ զԱրէս։ Իսկ եթէ ասիցեն, ո՞վ է Ափրոդիտն. որք պարկեշտագոյնս 'ի նոցանէ զանձինս համարին, ասեն թէ ցանկութիւնն է։ Իսկ եթէ հարցանեմք՝ եթէ Արէսն զինչ իցէ. ասեն՝ թէ ցասումն է։

Նոյնպէս և դու զմամոնայ պաշտես. և եթէ ասիցեմք՝ զինչ է մամոնայն, հարկ է ասել՝ թէ ագահութիւն. և դու այնմ երկիր պագանես։ Ոչ երկրպագանեմ, ասէ, երկիր. ընդէ՞ր. զի ոչ հարկանիցիս 'ի բերանս։ Նա յայնժամ աւելի ևս երկիր պագանես արդեամբք և իրօք. և այն իսկ է մեծ երկրպագութիւն։ Իսկ զի ուսանիցիս՝ եթէ այն այնպէս իցէ՝ յայտ երկրպագութենէն. թէպէտ և նոքա որ կարեացն երկիր պագանիցեն, թերևս և ազատ իսկ իցեն 'ի կարեացն։ Իսկ բազում անգամ գտանես յԱրեայ պաշտօնէիցն ազատ 'ի ցասմանէ. 'ի նոցանէ զբազումս բազում անգամ, և դու ոչ երբէք ազատ ես 'ի կարեացն. այլ հանապազ կաս 'ի ծառայութեան։

Թերևս ասիցես՝ եթէ չզոհեմ արջառս և ոչխարս։ Ո՛ մարդիկ զոհես, զոգիս զասունս և զխօսունս, զոմանս սովով և զոմանս հայհոյութեամբ. չիք քան զայն զոհ մոլեկան տեսանել, ուր ոգիքն մեռանին և մարմինք կոտորին։ Անիծեալ նզովեալ ագահութեանն բագին. 'ի կռոցն բագին թէ երթայցես՝ զնոխազաց և զարջառոց

զարիւն և զշարաւ տեսանես, և յագահութեան բագին զմարդկան արիւն և զշարաւ։ Իսկ եթէ միտ եդեալ հայիցիս, չտեսանիցես անդ թեւս թռչնոց խանձատեալս, և ոչ խանձիր և ճենճեր ծխեալ, այլ զմարդկան մարմինս խորովեալս խարշատեալս. ոմանք քարավէժ դարահոս եղեն, այլք խեղդամահ զանձինս[1] արարեալ մեռան, և այլք զսրով երթեալ՝ զիւրովին չոգան 'ի սովէ։

Տեսեր զոհս մարմնոյ և մարդասպանս. կամիս ևս չար քան զայն տեսանել, ես քեզ ցուցից ոչ ևս զմարմինս մարդկան, այլ զոգիս խոսնոց կոտորեալ տապաստ արկեալ. քանզի մարթ 'ի ոգւոց կոտորել որպէս նոցա մարթ իցէ մեռանել. որպէս մահն իցէ մարմնոյն[2], նոյնպէս և կոտորումն ոգւոյն. "Ոգի, ասէ, որ մեղիցէ, նոյն և մեռցի". և այն ոչ իբրև զմարմնոյ մահ իցէ, այլ ևս քան զայն դժնդակագոյն. զի մարմնաւոր մահն՝ որ զոգին 'ի մարմնոյն քակիցէ, զմարմինն 'ի բազում հոգոց և 'ի ցաւոց հանգուցանէ, և զոգին 'ի յայտնի ինչ բնակութիւն տանիցէ. և յորժամ ժամանակքն վախճանեսցին, դարձեալ միւսանգամ անեղծութեամբ հանդերձ առնու անդրէն զիւր ոգին մարմինն։ Իսկ ոգւոց մահ ահագին և դղրդութեամբ է. և եթէ ժամանակքն ևս վախճանեսցին, և անդրէն 'ի մարմինն գայցէ, կայցի ընդ անեղծ[3] մարմնոյն և առաքի 'ի հուրն անշէջ, և այն իսկ է մահ, ոգւոցն մահ։

Իսկ զոր օրինակ մահ է ոգւոց, նոյնպէս և սպանումն ոգւոց։ Զինչ է սպանումն մարմնոյ. մեռանելն և քակելն 'ի շնչոյն ազդմանէ։ Զինչ իցէ շնչոյն սպանումն. զոր օրինակ մարմին յայնժամ մեռանի, յորժամ թափուր թողուցու զնա շունչն յիւրմէ ազդմանէն, նոյնպէս և շունչն յայնժամ մեռանի, յորժամ թափուր թողուցու զնա հոգին սուրբ յիւրմէ ազդմանէն։ Այսպիսի սպանութիւնք յագահութեան բագինսն գործին, որ ոչ յագի, և ոչ շատ երբէք ասէ, մինչ ըմպէ զարիւն մարդկան. նա և զոգիսն ևս ընդ մարմինսն առ հասարակ կոտորէ, և չլինու ագահութեանն բագինն, և զերկոցունց զոգիսն քաղէ առնու, և զզոհելեացն և զզո-

1 Երկու օր. անձինս։

2 Ցերեսին օրինակն գրեալ էր ոգւոցն, նոյնպէս և կոտորումն։ « Ոգի, ասէ. եղաւ ըստ յունին։

3 Օրինակ մի անեղծ։

հիցն ։ Այլ հարկ է՝ թէ որ զոհիցէն՝ նախ զոհիցի և ապա զոհիցէ․ և մեռեալն զոհէ գոգցես զկենդանին ։ Յոր-ժամ հայհոյիցէ և բամբասիցէ և տժգոհ զԱյ լինիցի, ո՞չ ապաքէն այն հարուածք առանց բժշկութեան ողւոցն իցեն ։ Տեսանես զի չէ յաւելեալ համարի բանն ։

Ասեմ և այլ ևս ինչ լսել և ուսանել, թէ զիարդ կռապաշտութիւն է ագահութիւնն, և ևս չար քան զկռապաշտութիւն ։ Որք արարածոցն Այ երկիր պագանեն, "Ընդ պաշտօն մտին, ասէ, և պաշտեցին զարարածս և ոչ զարարիչն"․ նոքա զԱյ արարածս պաշտեն, և դու զքո արարածս․ քանզի Ած զագահութիւնն չարար, այլ քո անյագութիւնն եգիտ զանչափութիւնն ։ Այլ ասես զմոլութիւնն և զծառս․ որ կռոցն երկիր պագանեն, պատուեն զնոսա զորս պաշտեն․ և եթէ բամբասիցէ ոք, 'ի թիկունս իջանեն, վրէժխնդիր լինին․ և դու իբրև յարբեցութենէ ինչ զեղխեալ՝ իւրացն երկիր պագանես, որ ոչ միայն չէ ազատ 'ի բամբասանաց, այլ և լի ամբարշտութեամբ ։ Այլ յայտ է թէ ևս չար դու ես քան զնոսա․ քանզի ոչ եթէ ունիս ինչ իրաւունս ցուցանել՝ եթէ չիցէ չար գործն․ թէպէտ և նոքա ևս կայցեն պապանձեալք 'ի պատասխանւոյ, այլ դու ևս առաւել քան զնոսա, որ բազում անգամ բամբասես զագահութիւն, և զպաշտօնեայս և զծառայս նորին զզուես, և զնոյն պաշտօն առեալ ունիս ։

Եթէ կամիք՝ քննեսցուք ուստի եմուտ կռապաշտութիւնն ։ Ասէ ոմն իմաստուն, թէ ոմն մեծատուն առաժամ սգով որդւոյն իւրոյ խանդաղատեալ, չգտանէր մխիթարութիւն ուստեք․ այնու իմն հայթայթեաց փարատել զցաւսն, պատկեր անշունչ վախճանելոյն հաստատեաց կացոյց, զի հանապազ ընդ նա նայիցի, և համարէր թէ զվախճանեալն տեսանիցէ պատկերաւն ։ Ամենայն մարդք սուտակապատք, որոց Ած որովայնն իւրեանց էր, 'ի նորա պատիւ՝ զի զնա մխիթարեսցեն՝ պատկերին երկիր պագանէին․ և անտի սերեցաւ կալաւ կռապաշտութիւնն ։ Եթէ այնպէս իցէ, ապա 'ի տխրութենէ ողւոցն եմուտ կռապաշտութիւնն և յանհանճար սովորութենէ․ իսկ ագահութիւնն ոչ ինչ այնպէս․ թէպէտ և նա 'ի տխրայեալ ողւոց, այլ և 'ի կարի դժնդակաց ։ Զկորոյս ոք զորդի, և ոչ ազգ ինչ մխիթա-

րութեան հնարս այնու խնդրեաց, և ոչ 'ի սուտակա-պատից պատրեցաւ. այլ թէ որպէս իցէ, ես ասացից: Վայելն ագահեաց խորեաց յոյժ. որ ինչ պարտ էր նմա մատուցանել՝ զայն իւր պահեաց, և որ ինչ իւր՝ զայն նմա մատոյց, և անտի եղև սկիզբն չարեաց. զի թէ մեք մեր եմք, որչափ ևս առաւել ընտիր ընտիր մերոց ստա-ցուածոցն նմա վայել է:

Դարձեալ և 'ի կանոնս յանդգնութենէ եղև ագահութիւնն. «Տեսին, ասէ, զդստերս մարդկան և թաւալեցան 'ի ցանկութիւն» և անտի յղեցին ագահութիւն: Ո՞չելի ինչ քան զընկերին կամել ունել յերկրաւոր ինչ իրաց՝ ոչ այլ ուստեք լինի, եթէ ոչ 'ի սիրոյն ցամաքելոյ և յամբարհաւաճութենէ, և 'ի մարդատեցութենէ և յանտես առնելոյ զաղքատս: Զանսամանի-ցեա զերկիրս քանիօն է, որչափ առաւել քան զպէտսն, կամ օդք կամ երկինք. զի զքո ագահութիւնդ ցածուցանիցէ ա՛ծ, այնպէս մեծ քան զքո պէտսն արար զարարածս, և դու յափշտակես. մանաւանդ զի լսես ևս թէ ագահութիւնն է կռապաշտութիւն, և ոչ այնպէս զարհուրիս, այլ ժառանգել կամիս զամենայն երկիր. այնմ չհասանես, և յերկինս չունիս ժառանգութիւն. այլոց ձեռպիս թողուլ զժառանգութիւն, զի զքեզ զրկիցես 'ի կենաց:

Ո՞ղէ սաս, եթէ տայր քեզ ոք առնլոյ իշխանութիւն զամենայն, միթէ չկամէիր: Մ՛արթի և այժմ առնուլ՝ եթէ կամիս: Որպէս և այժմ իսկ են ոմանք, որք չկամին թէ ժառանգութիւնն յայլս երթիցէ. կամէին թէ զետինն բանայր և ծածկէր, և ոչ զի զայլս իւրեանց ընչիցն տեսարս տեսանիցեն: Կա և ոչ ես ինչ թախանձեմ զքեզ ազատել յայնպիսի որոմութենէ. թէպէտ և այն ախտացեալ ոգւոց բարք են, բայց սակայն և այն գրեսցի 'ի կտակսն, և թողուցուս քեզ ժառանգաւոր զՔրիստոս. պարտ էր զայն մինչդեռ կենդանին էիր առնել, և այն իսկ էր ուղիղ կամաց գործ: Բայց սակայն և վասն հարկին որ 'ի վերայ կայցէ՝ լինիցիս առատամիտ. քանզի և Քրիստոս յայն սակս հրամայեաց բաշխել զինչս աղքատաց, զի կենդանւոյն զմեզ ցանկացողս զգաստութեան գործիցէ. զի հաւանեցուսցէ արհամարհել զինչս և անփոյթ առնել զերկրաւորաց: Ո՛չ

չէ արհամարհել զինչ յորժամ 'ի վախճանին՝ որոց չէ-
ցես ունէր՝ այլում շնորհիցես. այնուհետեւ ոչ 'ի քումմէն
ինչ տայցես, այլ 'ի հարկէն որ 'ի վերայ կայցէ, մահուն
շնորհես. եւ այն չէ գթոյ եւ խնամոյ գործ, այլ առ մշտի
եւ վայրանի հայթայթանք: Բայց սակայն գէթ յայն-
ժամ լինիցի, գոնեա մերձ 'ի մահն բուժիցիս յախտէն.
զմտաւ ածիցես որչափ յափշտակեցեր, քանիցս ապա-
հեցեր, չարեքպատիկ հատուսջիր. եւ այնպէս կարիցես
կալ առաջի ա̃յ եւ ընդ անձին աղերս մատուցանել:

Այլ ոմանք յայնպիսի մոլորութիւն եւ 'ի կուրութիւն
դարձան, զի եւ ոչ յայնժամ յարժանն հայցեն, այլ փու-
թան. եւ սաստկագոյնս գործել իւրեանց զա̃յ դատաս-
տանն. վասն այնորիկ երանելին գրէ, թէ "Իբրեւ զոր-
դիս լուսոյ գնացէք". ագահն 'ի խաւարի գնայ, եւ բա-
ղում խաւար կազմէ իւր անգ. "Եւ մի, ասէ, կցորդ
լինիք անպտղութեան գործոց խաւարի, այլ առաւել
յանդիմանեցէք, զի որ ինչ ծածուկ գործի 'ի նոցա,
զայն եւ խօսել աղտեղի է. բայց ամենայն ինչ որ յան-
դիմանի 'ի լուսոյ՝ յայտնի է":

## ՑՈՐԴՈՐԱԿԱՆ

Լուարուք, աղաչեմ, ամենեքեան՝ որ միանգամ չկա-
միցիք 'ի զուր ատելի լինել: Ո՞ ինչ հարկ իցէ ինձ, ա-
սէ, 'ի զուր ատելի լինել: Յափշտակէ եւ չյանդիմանեմ,
այլ յատելութենէն երկնչիս. յանդիմանեա զեղբայրն,
առ յանձն թշնամութիւն վասն Քրիստոսի սիրոյն. ար-
գել զնա եւ մի տար անկանել 'ի խորխորատ: Սեղանոյ
սեղանակից լինել եւ բանից հեշտականաց եւ ողջունի եւ
փափկութեան հաղորդ, այն չէ իսկ կարի սիրոյ. այն-
պիսի ինչ պաշտօն արասցուք բարեկամացն, որով զոգիս
նոցա կարիցեմք զերծուցանել յա̃յ բարկութենէն: Ի
հուր դիմեալ երթան, եւ մեք տեսանեմք եւ չարգելումք:

Այլ չգայ, ասեն, յուղղութիւն: Դու քոյն արա եւ
կալ առաջի ա̃յ զիրաւունսն, մի թագուցաներ զտա-
ղանդն. վասն այնորիկ եղեր խօսուն, նմին իրի տուաւ
քեզ լեզու եւ բերան, զի զընկերն յուղղութիւն ածի-
ցես. անասունք միայն չհոգան ընդ ընկերաց, քանզի եւ
ոչ զխօսս խօսնոյ ունին. իսկ դու որ հայր կոչես զա̃ծ եւ

եղբայր զՔրիստոս, տեսանես զեղբայրն քո 'ի չարիս, և չլինիս ձեռնտու ։ Մի՛ աղաչեմ, մի՛ անտես առնել. զի չիք ինչ այնպէս սիրոյ նշանակ, որպէս զյանցաւոր եղբարսն չառնել անտես ։

Տեսանես 'ի թշնամութեան, քակեսջիր զթշնամութիւնն. տեսանիցես զի ագահիցեն, արգելջիր. տեսանիցես զզրկեալն, վերակացու լինիջիր. ոչ նոցա ինչ, այլ նախ քեզ շնորհս առնես ։ Վասն այնորիկ կոչիմք բարեկամք, զի միմեանց օգնեսցուք ։ Այլ ազգ լուիցէ 'ի բարեկամէն, և այլ ազգ յումեմն և իցէ, և այլ ազգ կարծիցէ, թերևս և 'ի վարդապետէն իսկ նոյնպէս. բայց յեղբօրէն ոչ նոյնպէս ինչ ։ «Որ ինչ ծածուկն գործի 'ի նոսա, ասէ, զայն և խօսել աղտեղի է. այլ ամենայն ինչ որ յանդիմանի 'ի լուսոյ, յայտնի» ։ Զինչ կամիցի այսու յայտ առնել. եթէ աստ կէս մեղք 'ի ծածուկ գործին, և կէսքն յայտնի. իսկ անդ ոչ այնպէս ինչ լինիցի. քանզի չիցէ ոք՝ որ ոչ գիտիցէ զանձինն յանցանս. վասն այնորիկ ասէ՝ թէ ամենայն ինչ որ յանդիմանի 'ի լուսոյն՝ յայտնի է ։ Միթէ զկռապաշտութենէ՞ն ասիցէ զայս. ոչ, այլ վասն վարուց և մեղաց են բանք. զի ամենայն ինչ որ յայտնի է՝ լոյս է ։

Վասն որոյ աղաչեմ, մի՛ դուք դանդաղիք յանդիմանել, և մի՛ յորժամ յայլոց յանդիմանիք՝ դժկամակ լինիցիք ։ Մինչ դեռ 'ի խաւարի ոք գործ գործիցէ, բազում համարձակութեամբ գործէ. և յորժամ 'ի մէջ բազում վկայից գործէ, լուսաւորին գործքն ։ Վասն որոյ աղաչեմ, զամենայն հնարս հնարեսցուք, զի զմեղանելութիւն եղբարց մերոց կենդանի արասցուք, և զխաւարն փարատեսցուք, զի զարեգակն արդարութեան 'ի մեզ և 'ի նոսա ընդունել կարասցուք. եթէ բազում լուսաւորք լինիցին, դիւրաւ երևեսցի առաքինութեանն Ճանապարհ. և 'ի սփռել լուսոյն, վաղվաղակի ըմբռնիցին՝ որ 'ի խաւարի գնայցեն ։ Ապա եթէ նորին հակառակն լինիցի, երկիւղ է՝ թէ գուցէ և նոքա ևս շիջանիցին. յորժամ թանձրամած խաւարն շուրջ պատիցի, և մերժիցէ 'ի բաց զլոյսն յատակ և պարզ ։ Յորժամ ընկերացն օգնիցեմք, համարեսցուք եթէ անձանց օգնիցեմք. զի ամենայնիւ և ամենևիմբ փառս հանցուք մարդասիրին այ, շնորհօք և գթութեամբ միածնի նորա, ընդ

որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխա֊նութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յա֊ւիտենից. ամէն։

## ՃԱՌ ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

«Տեսէք որպէս ճշմարտիւ գնայցէք. մի իբրեւ անի֊մաստք, այլ իբրեւ իմաստունք. գնեցէք զժամանակս, զի աւուրքս չարութեան են։ Վասն այսորիկ մի լինիք անմիտք, այլ իմացարուք զինչ կամք են Տեառն»։

Տակաւին զարմատս դառնութեան սրբէ, տակաւին զպատճառս բարկութեան հատանէ։ Զինչ ասիցէ. «Տեսջիք, ասէ, որպէս ճշմարտիւ գնայցէք»։ Աշակերտք 'ի գայլոց մէջ են, և հրամայէ նոցա իբրեւ զաղաւնիս լինել. «Միամիտք լերուք, ասէ, իբրեւ զաղաւնիս»։ Քանզի 'ի մէջ գայլոց են և չունին հրաման զվրէժս անձանց խնդրել։ Որպէս և առաջինն իսկ բաւական էր ակարագոյնս առնել զնոսա. իսկ յորժամ երկրոր֊դին եւս յաւելուած 'ի մէջ գայցէ, 'ի միտ առ որչափ ինչ իցէ առաւելութիւնն։ Տես զիարդ զգուշացուցանէ զնոսա Պաւղոս։ Համօրէն քաղաքաց կայր մարտ պա֊տերազմի ընդ նոսա, եմուտ 'ի տունս նոյն պատերազմ. հայր ընդ որդւոյ և որդի ընդ հօր մարտնչէին. մայր ընդ դստեր և դուստր ընդ մօր, քակեալք անջատեալք 'ի միմեանց։ Սաստիկ եղեն բաժինք։ Լուար Քրիստոսի. «Եթէ ոչ ոք հրաժարեսցէ, ասէ, յամենայն ընչից իւ֊րոց, չէ ինձ արժանի»։ Լուար դարձեալ 'ի նմանէ՝ ե֊թէ «Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս, չէ ինձ արժանի»։ Զի մի համարիցին եթէ վայրապար ինչ պատերազմունս և կռիւս մուծանիցէ, զի հանդեր֊ձեալ էր մեծ բարկութիւն ծնանել, թէպէտ և նոքա անցանելոց էին ընդ այն, յայն սակս ասէ. «Տեսէք որ֊պէս ճշմարտիւ գնայցէք». այսինքն թէ բայց 'ի քարո֊զութենէն այլ ուստեք ամենեւին պատճառս մի տայցէք թշնամութեանն որ զձէնջ իցէ։ Այն միայն լինիցի բա֊րուք, և մի այլ ինչ որ բամբասիցէ զձեզ։ Այլ և պա֊

տիւ եւս և զամենայն հնազանդութիւն ցուցանիցէք, յորժամ քաղցրութիւնն ինչ ոչ մնասիցի, յորժամ խափան ինչ ամբարշտութեանն չառնիցի. որպէս և այլուր ասէ՝ թէ "Հատուցէք իւրաքանչիւր զպարտիս, որում զհարկն հարկ, որում զմաքս մաքս": Յորժամ յայլ ամենայն իրս հեզս տեսանիցեն զմեզ, ակնածեն:

"Մի՛ իբրև, ասէ, անիմաստք, այլ իբրև իմաստունք. գնեցէք 'ի բաց զժամանակս": Ոչ զայն ինչ կամի թէ խորամանկք և խարդախք լինիցիք. այլ զայս իրատէ՝ թէ չէ ձեր այժմու ժամանակս, քանզի պանդուխտք և նժդեհք էք և հիւրք և օտարք: Մի՛ խնդրէք պատիւս, մի՛ խնդրէք փառս, մի՛ խնդրէք հարստութիւն, մի՛ զանձանց վրէժխնդրութիւն. այլ ամենայնի տարայք, բնաւին համբերէք, և այնպէս կարէք գնել զժամանակս. զամենայն զոր և կամիցիս՝ յանձին ունիցիք: Օրինակ, որպէս զի թէ տուն ուրուք գերեցիկ իցէ, և ոմանք մտանիցեն զնա սպանանել, և նա բազում ինչ տայցէ և զանձն ապրեցուցանիցէ, յայնժամ ասեմք թէ գնեաց զանձն: Նոյնպէս և դու տուն մեծ ունիս հաւատարիմ և ճշմարիտ, 'ի վերայ գան առնուլ, զամենայն զինչ և ունիցիս պահանջիցեն. տուր 'ի բաց. բայց միայն զգլուխն ապրեցո, զհաւատոցն ասեմ:

"Զի աւուրքս չարութեան են", ասէ: Զինչ իցէ չարութիւն աւուրցն: Չարութիւն աւուրն՝ աւուրն պարտի լինել և ոչ այլում իմիք: Զինչ իցէ չարութիւնն. ապւոցն յոռութիւն: Զինչ է չարութիւն ջրոյ. դառնութիւնն: Նոյն իւրաքանչիւր իրիք չարութիւն՝ իւր յոռութիւնն է, անդէն զանութեամբն ուստի և իցէ մարթի լինել չարութիւնն: Արդ եթէ աւուրն իցէ չարութիւնն, անդէն զաւուրբն պարտ է լինել, և զժամուքն և զլուսովն. քանզի և Քրիստոս ասէ՝ թէ "Շատ է աւուրն իւր չարութիւնն": Յայսմանէ և զայն իմանամք: Նա արդ զինչ կոչիցէ աւուրս չարս, ժամանակ չար: Ոչ եթէ զանութիւնն կամ զարարածոն ասէ, այլ որ ինչ 'ի նոսա չարիքն գործին. որպէս մեր իսկ սովորութիւն է ասել՝ թէ դառն և չար օր անցուցի: Նոյնպէս և չիցէ մարթ աւուրն չար լինել, այլ որ ինչ իրք յաւուրն պատահիցին՝ զայն կոչեմք բարի կամ չար. եթէ բարիք ինչ պատահիցին՝ այն յոյժ են, և եթէ չա-

րիք՝ այն 'ի մարդկանէ ։ Որպէս ուրեմն որ ինչ 'ի ժամանա-նակին չարիք դիպեցին, այնոց արարիչ մարդիկ են, և վասն այնորիկ կոչին ժամանակք չարք. նա և մեք իսկ յայն սակս կոչեմք ժամանակս չարս զայնպիսի ժամա-նակս ։ Եւ զի չեն բնութեամբն չար ժամանակքն, անտի յայտ է զի մինչդեռ կիսոյն չարիքն պատահեն, այլոց 'ի նոյն ժամանակս բարիք են և դիւրութիւնք ։ "Եւ մի լինիք, ասէ, անմիտք, այլ իմացարուք զինչ են կամք տեառն"։

"Եւ մի արբենայք գինւով, զի 'ի նմանէ է գիջու-թիւն"։ Զանզի և գինւոյ անչափութիւն ցանկոտս և յանդգունս և արագասախալս և բարկացողս և չարաբարոս գործէ ։ Գինին յուրախութիւն տուեալ է և ոչ յարբե-ցութիւն. և այդ աւասիկ իր իմն և քաղջութիւն կարծի և ծաղր արբենալն ։ Եւ արդ որ յայս փրկութեան կայ-ցէ. ծաղր և ուրախութիւն չարբենալն է և ոչ թէ ար-բենալն ։ Ամենեքին ամենեցուն իսկ պարտ է յարբեցու-թենէն հրաժարիլ, մանաւանդ շինականին, և առաւել ևս զօրականին որ միշտ սրով և արեամբ խաղայ, և հա-մարձակութիւն և իշխանութիւն ունի յայլս թանալ զսուրն. նա և ինքն իսկ ցանկ 'ի մէջ մերկի և աղմկի կայ 'ի նենգութիւնս 'ի մարտս 'ի պատերազմունս ։

Կամիք ուսանել ուր բարւոք իցէ գինի, լուր զոյն որ ասէ. "Տուք գինի որ 'ի տրտմութեան իցեն, և արբե-ցութիւն վշտագնեալցն"։ Եւ յիրաւի իսկ, զի զվիշտս և զտրտմութիւնս գինի է փարատել, և զնութ և զմէգ պարզել ։ "Գինի, ասէ, ուրախ առնէ զսիրտ մարդոյ"։ Եւ զի՞արդ իցէ 'ի գինւոյն արբեցութիւն, չէ մարթ նմին իւր հակառակ զայն ինչ գործել ։ Որպէս ուրեմն ոչ 'ի գի-նւոյ է արբեցութիւնն, այլ յանչափութենէն ։ Գինի ոչ վասն այլ իրիք տուեալ է մեզ, բայց միայն վասն մար-մնոյ առողջութեան. այլ և այնմ խափան լինի անչա-փութիւնն ։ Լուր սմին իսկ երանելոյ զխարդ գրէ առ Տիմոթէոս. "Սակաւիկ մի, ասէ, գինեաւ խառնեսջիր վասն ստէպ ստէպ հիւանդութեանցդ"։ Վասն այնո-րիկ կազմեաց ած մարմնոցս մերոց չափս և 'ի սակաւիկ իմեքէ յագել. և այնու խրատէ թէ այլում ումեմն կե-նաց արար զմեզ պիտանացուս ։ Կամէր և 'ի սկզբանն իսկ այլն տալ. բայց քանզի անձամբ զանձինս չարարարք

արժանիս, և նա յապաղեաց յերկարեաց. և 'ի ժամանակին յորում յերկարեաց, չտայ մեզ անչափ վայելել. այլ դորակաւ միոյ գինւոյ և նկանակաւ հացի բաւական առնէ լցուցանել զորովայն մարդոյ: Եւ որ ամենայն անասնոց տիրել կարէ, նուազագոյն քան զնոսա արար զնա չափով, մարմնով փոքր ինչ հասակաւ պատմամբ. ոչ զայլ ինչ, եթէ ոչ զայն յայտ առնէ զի յայլ կեանս փութասցուք հասանել: "Մի, ասէ, արբենայք գինեաւ յորում է պղծութիւն,,: Ոչ ապրեցուցանէ, այլ կորուսանէ. ոչ զմարմին միայն, այլ և զոգի:

"Այլ լցարուք հոգւով. խօսեցարուք 'ի միտս ձեր սաղմոսիւք և օրհնութեամբ յերգս հոգևորս. օրհնեցէք և սաղմոս ասացէք 'ի սիրտս ձեր տեառն. գոհացարուք յամենայն ժամ 'ի վերայ ամենայնի յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զա̃յ և զհօրէ. հնազանդ լերուք միմեանց յերկիւղն Քրիստոսի,,: Կամիցես, ասէ, ուրախ լինել, կամիցիս զամենայն օրն յուրախութեան ծախել. ես տամ քեզ, ասէ, զհոգևոր ըմպելին: Քանզի արբեցութիւն և զքաղցրաբարբառ ինչ ձայն կարէ զլեզուի մերոյ և թօթովել տայ, զաչս այլայլէ և զմարմին յողդողդէ և զամենայն իսկ վեր 'ի վայր խախտէ: Ուսիր սաղմոս ասել, և տեսանիցես որպիսի ինչ է ուրախութիւնն: Որք սաղմոսսն ասեն, հոգւովն սրբով լնուն. որպէս որք զսատանայականն երգսն երգեն, պղծով այսովն յագին: Զինչ իցէ "Ի սիրտս ձեր տեառն,,: Այսինքն թէ իմաստութեամբ միտ եղեալ հայեսջիք. որք ոչ դնիցեն միտ օրհնութեանցն, զբանսն վայրապար բարբառին, և սիրտն այսր անդր յածիցի:

"Յամենայն ժամ, ասէ, 'ի վերայ ամենայնի գոհացողք լինիջիք յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զա̃յ և զհօրէ. հնազանդեցարուք միմեանց յերկիւղն ա̃յ,,: Որպէս և այլուր ասէ՝ թէ "Խնդրուածք ձեր գոհութեամբ հանդերձ յայտնի լիցին առ ա̃ծ,,: Չիք ինչ որ այնպէս ուրախ առնիցէ զա̃ծ, որպէս յորժամ գոհացող ոք լինիցի: Ուսանել յայնժամ կարեմք գոհացող լինել, յորժամ յառաջնոցն զոր առաք մերժիցեմք զոգիս մեր, և սոքօք զոր այժմն առաք սրբիցեմք: Այլ լցարուք, ասէ, հոգւով. ապա ուրեմն ցմեզ են իւքն և ցմեզ իսկ է ազատատան: Եւ յորժամ զատութիւն և զաւր-

կութիւն զզաստութիւն և զչարութիւն և զաղծութիւն և զագահութիւնն 'ի բաց մերժիցեմք յոգւոց մերոց, յորժամ լինիցիմք քաղցունք և գթածք և շնորհիցեմք միմեանց, յորժամ խեղկատակութիւնն բառնայցէ 'ի մէնջ, յորժամ զանձինս արժանիս կազմիցեմք, զինչ արգել իցէ հոգւոյն սրբոյ գալ և շողալ զմեօք. և ոչ միայն վայրապար եկեալ շողայցէ, այլ և լցուցանիցէ ըզ-սիրտս մեր: Եւ յորժամ այնպիսի լուսով լուսցուցանեն ներ-քին առագաստքն, այնուհետև և ոչ առաքինութիւն դժուարին առ ուղղել լինիցի մեզ, այլ և կարի իսկ դիւրին:

"Յամենայն ժամ, ասէ, գոհացարուք 'ի վերայ ամե-նայնի": Որ ինչ և դիպիցի պա՛րտ իցէ գոհանալ: Ա՛յո, ասէ, եթէ ցաւք հասանիցեն, եթէ աղքատութիւն: Եթէ 'ի հնումն խրատէ ամե իմաստունն "Ամենայն ինչ, ասէ, որ գայցէ 'ի վերայ քո՝ ընկալ ախորժելով, և 'ի փոփոխմունս խոնարհութեան քո երկայնամիտ լինիջիր", որչափ ևս առաւել 'ի նորումն պարտ իցէ նմին լինել: Եւ եթէ ձառք անգամ աւետեաց ինչ չհասանիցեն քեզ, գոհացող լինիջիր. քանզի այն իսկ է գոհութիւն: Եթէ յորժամ 'ի բարիս իցես և յաջողեալ և 'ի դիւրու-թեան և յաւուրս բերկրութեան և գոհանայցես, չէ ինչ այն մեծ և զարմանալի. խնդիր այնր է եթէ 'ի նե-ղութեան ոք իցէ և 'ի ցաւս և 'ի տրտմութիս և գոհա-նայցէ: Ո՛չ ինչ առաւել այնր ատենի բարբառիցիս, բայց միայն զայն՝ թէ գոհանամ զքէն տէր: Եւ զինչ առիցեմ վասն աստինեղութեանցն, այլ և վասն գեհեննին պարտ է գոհանալ զքոյ և վասն անդ տանջանացն և պատժոց, քանզի յոյժ օգտակար են մեզ իւրքն եթէ միտ դնի-ցեմք: Իբրև սանձք 'ի բերան են արհաւիրքդ գեհեննին. զսիրտն տանջեն, զմիտսն նուաճեն: Ո՛չ վասն յայտնի երախտեացս եթէ գոհանայցեմք, այլ վասն անյայտիցն և վասն որոց ակամայն վայելիցեմք՝ պարտիմք գոհանալ: Քանզի բազում ինչ և ակամայ երախտաւս գործէ 'ի մեզ, որ բնաւ իսկ զմտաւ չածիցեմք. և եթէ չհաւա-տայցէք, յայտնի իսկ զիրան արարից:

Եւ արդ զմտաւ ածէք. պիղծք անհաւատք հեթա-նոսք ո՞չ զամենայն ինչ արեգական համարին և իւրեանց կռոցն: Եւ արդ զիա՞րդ գործիցէ և 'ի նոսա երախտիս ինչ. ո՞չ 'ի նոցա տեսչութենէն են կեանքն նոցա և առող-

ջութիւնն և ողջախոհ ծնանել և այլ ինչ նոյնպիսի ։ Եւ որ մարկիոնեանցիքն ասեն և մանիքեցիք ո՞չ ապաքէն հայհոյեն ևս զնա ․ միթէ չվայելեցի՞ն հանապազ 'ի նորա բարերարութիւնս ։ Եթէ 'ի նոսա այնչափ յանդգնութիւն երախտիս գործէ, որչափ ևս առաւել 'ի մեզ ։ Եւ զի՞նչ այլ ինչ գործ իցէ այ̃, եթէ ոչ միշտն երախտիս առնել ազգի մարդկան և պատժովք և հանդարտեամբ ։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Եւ արդ մի միայն յորժամ 'ի հանգստեանն իցեմք գոհանայցեմք ․ քանզի չէ ինչ այն մեծ ։ Գիտէ զայն և բանսարկուն, քանզի և ասէր իսկ ․ «Միթէ ձրի՞ ինչ պաշտիցէ Յոբ զա̃ծ ․ ո՞չ քո փակեալ և ամրացուցեալ առ հասարակ զներքինս և զարտաքինս նորա ․ աղէ 'ի բաց մերկեա 'ի նմանէ զամենայն ինչս նորա, եթէ ոչ յերեսս իսկ օրհնեսցէ զքեզ„ ։ Այլ ոչ ինչ աւելի եղև պղծոյն, և մի այլ լիցի, և մի 'ի մէնջ լինիցի նմա աւելի ինչ ։ Այլ յորժամ յաջողութեան իցեմք և յորժամ 'ի ցաւս և յորժամ 'ի վիշտս, յայնժամ առաւել յաճախեսցուք զգոհութիւնս ․ գոհութիւնս ոչ զբանից ինչ ասեմ, այլ զարդեանց և զգործոց ․ զի մտօք և սրտիւ և ամենայն ոգւովք գոհանայցեմք զնմանէ, զի առաւել քան զծնողսն մեր սիրէ զմեզ ։ Եւ որչափ ինչ 'ի մէջ չարութեանն և բարութեան է, նոյնչափ 'ի մէջ այ̃ սիրոյն և մերոց հարցն կայ խտրոց 'ի միջի ։ Եւ այս ոչ եթէ իմ ինչ բանք են, այլ այ̃ իսկ որ յայտ առնէ եթէ որչափ ինչ 'ի միջի է իւրոյ սիրոյն և մերոց հարցն ։ Եւ ոչ եթէ իմ ինչ բանք են, այլ և Քրիստոսի որ սիրեացն զմեզ ․ լուր զինչ ասէ ․ «Ո՞վ իցէ 'ի ձէնջ մարդ յորժամ խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր տացէ նմա ։ Եթէ դուք որ չարքդ էք, ասէ, գիտէք պարգևս բարիս տալ որդւոց ձերոց, որչափ ևս առաւել հայրն ձեր երկնաւոր տացէ բարութիւնս այնոցիկ որ խնդրեն 'ի նմանէ„ ․ դարձեալ լուր զինչ ասէ այլուր ․ «Միթէ մոռանայցէ՞ կին զթալ 'ի ծնունդս որովայնի իւրոյ ․ և եթէ մոռանայցէ զայս կին, սակայն ես ոչ մոռացայց ըզքեզ ասէ տէր„ ։ Եթէ չսիրեացէ, ե՞ր վասն արար զմեզ ․ միթէ հա՞րկ ինչ 'ի վերայ կայր, կամ զպէ՞տս պաշտա-

տանել։ Մի՞թէ օդ շրջիցէ՞ զերկրաւեանն։ Բայց նա մեծ լոյծ և մեծաքանակագոյն քան զջուրսն է, և չկարէ իմիք համադարատել և համադուրժել և ոչ անօսր ինչ իրաց։ Բայց զամենայն 'ի բաց թողցուք, և զմնաւի ծանրութիւնս 'ի բանիւն տեւչութիւն ապառատան արասցուք։ Բայց զամենայն մի ըստ միոջէ մանր թուել և ոչ ամենայն իսկ ժամանակք կենաց մերոց բաւական են պատմել մեզ։

Բայց արդ և ես հարցից[1] յայն որ զայս ամենայն խնդրէ, տեւչութեա՞ն գործ իցէ այս ամենայն եթէ անտեւչութեան։ Բայց թերևս ասիցես թէ չէ տեւչութիւն։ Իսկ դարձեալ հարցից թէ զիա՞րդ եղև և եկաց ամենայն. բայց գիտեմ թէ չէ ումեք հնար ասել, այլ զայն միայն թէ չգիտեմ։ Իսկ եթէ այնպէս իցէ, ես առաւել զմարդկան իբրս չպարտիս 'ի հարց և 'ի քննին արկանել և ոչ 'ի խոյզ և 'ի խնդիր մուծանել. ընդէ՞ր. զի քան զամենայն ինչ մարդ պատուական է, և ամենայն ինչ վասն նորա եղև և ոչ նա վասն ամենայնի։

Իսկ եթէ զտեւչութեանն նորա զխնամատութիւն և զդարմանոց չգիտիցես, զիա՞րդ կարիցես զայնպիսի բանս իմանալ որ զնմանէ ասիցեն։ Ապէ ասա, ընդէ՞ր հիւսիսայինն կողմանքն անշէն իցեն, և կամ զհարաւայինն ընդէ՞ր այնպէս խառնարհագոյնս արար և հեռի յերկնից բարձրութենէն, մինչև երկմիտ ես լինել յայնցանէ որ 'ի բարձունս երևեսցին։ Իսկ կամ զայն ասա, ընդէ՞ր ըղձմեռն գիշերն երկայն իցէ և զամառն կարճ. ընդէ՞ր այնչափ ցուրտ, և վասն է՞ր այսչափ տօթ. ընդէ՞ր մարմինն մահկանացու։ Իսկ այլ ես բազում հարցից. և եթէ կամիս, բնաւ իսկ ոչ դադարեցից 'ի հարցանելոյ, և յամենայնի չքաւորիցիս 'ի տալոյ պատասխանի։ Որպէս և այն իսկ առաւել տեւչութեան է զի 'ի ծածուկս են 'ի մեզնէ բանքն։ Բայց թերևս զմարդ իսկ ոք կարծէր պատճառս ամենայնի, եթէ ոչ այս ամենայն ցածուցանէր զմիտս մեր։ Բայց այս անուն, ասեն, աղքատ է և մերկացուցած, և չար է աղքատութիւն և գռան ցաւքն։ Ո՛ ինչ ցաւքն իցեն և կամ զի՞նչ փառաւորութիւնն. չէ ինչ այն վնաս, ով ապիրատդ և անհանճար. մին միայն չար է՝ մեղանչելն, և զայն ևեթ պարտիմք 'ի հարց և 'ի խնդիր արկանել։

1 Յորինական հատուածից. եգաւ բառ յունին։

Այլ թողեալ զամենայն չարեացն պատճառս քննել, այլ ինձ խնդիր 'ի մէջ արկեալ խուզեսցէ. ընդէ՞ր ոչ ոք երբէք 'ի մէնջ քննեցէ թէ ընդէ՞ր մեղաւ. յինէ՞ն իցէ մեղանչելն, չիցէ՞ յինէն։ Դու զի՞ պիտոյցի զքաղաքամ բանիւք զալ. աստէն իսկ յիս խնդրեսցիս. կամի՞ս արդեօք զչաստուածն, կամի՞ս երբէք զաւարկութիւն կամ վասն անօթոյ կամ վասն մարդկան երկիւղի։ Դու յորժամ զտանիցես զայս յիս գործեալ, գտանես զի յիմ ձեռս է մեղանչելն և չմեղանչելն։ Զիք ոք որ քննիցէ զայն. չիք ոք որոյ 'ի խոյզն անկեալ խնդրիցէ. այլ խառան 'ի խաւան, որպէս և Յոբն ասէր՝ թէ "Մարդ այլ ազգ իմն զուգի բանիւք"։ Դու քեզ զի՞ փոյթ իցէ զայնմանէ եթէ ոք կայր և ոմն աղքատ. և ոչ զայն հրամայեաց քեզ գիտել ա՜ծ, այլ զոր ինչ դու գործս գործիցես։ Դու եթէ երկմիտ լինիցիս եթէ չկայցէ ինչ զօրութիւն 'ի վերայ աշխարհի, քան զամենեսին անմտագոյն լինիս. և եթէ զայն հաստատուն գիտիցես, վասն այլոցն զի երկմիտ լինիցիս, և զի հաճոյ լինել պարտ է այ՜ յամենայն ժամ՝ ասէ, "Ի վերայ ամենայնի գոհացարուք"։

Ագէ աստ աղաչեմ, յորժամ 'ի բժշկանաց երթիցես և տեսանիցես զոք վիրած կամ ցաւած զի խարիցէ բժիշկն կամ կտրեսցէ զվէրն, միթէ 'ի քնին արկանիցես զայն թէ վասն էր զայն գործիցէ։ Բայց թողցուք զայն 'ի բաց անդր. եթէ 'ի հիւսանց վասն երթայցես, միթէ մի ըստ միոջէ զարուեստն 'ի քնին ինչ արկանիցես, թէպէտ և կարի իսկ գործոց անտեղեակ իցես, ձախարակերյն քերելոյն յղկելոյ զփայտն։ Մանաւանդ զի 'ի դիւրին արուեստն տարայց զքեզ. նա և յայնմ իսկ կարի խելացնոր լինիցիս. զնկարչացն արուեստէ ասեմ։ Ո՞չ ընդվայր իմն զգործն զոր գործէ՝ թուի, շուրջ գրելն և արուձանակս հանել, այլ յորժամ զերանգսն խառնիցէ, ապա երևի արուեստն գեղեցիկ. նա և այնպէս չկարիցես ստուգիւ խելամուտ լինել։

Դու զի՞ զհիւսանց և զնկարչաց և զքոյոց ծառայակցաց ճառիցեմ։ Մեղուն զիա՞րդ զմաղսն գործիցէ, նախ զայն ասա, և ապա զայ՜ ճառեսջիր. զմրջեանցն գործ, զսարդիցն արուեստս, զծիծառանցն զճարտարակաց[1], և

1 Միւսն զճարտարկաց ։

առաջս զոյգ խօսեսցիր : Նոյն գիտեմ թէ չունիս ինչ ա-
սել : Զլուծս չդադարեն, ով Միտրոդ, յաղթելոյ խօսելոյ,
յաւելորդումն քննելոյ : Արդարեւ խակ աւելորդք են. ցերեկ
չդադարելոյս զուր 'ի խույզ եւ 'ի խնդիր ելանելոյ : Զինչ
ինչ քան զայն անզգուշութիւն իմաստասիրացն՝ յորժամ
յանձինս ունիցին թէ չգիտեմք զանդէտսն. այնպիսիքն
քան զամենեսեան իմաստուն են : Այլ ոքք ձեռն յանձինս
հարկեալ կամիցին քննութեամբ 'ի վերայ հասանել, քան
զամենեսին անխմբագրդիք : Այս՝ ուրեմն ոչ ամենայն
ուրեք ձեռն յանձինս հարկանել գիտել իմաստութեան
է, այլ է ուրեք զի 'ի մոլորութենէ է :

Ասէ առա. եթէ էին երկու մարդք, եւ միոյն խոստա-
նայր զօղս որ յերկրէ յերկինս ընթանայց՝ չափել զա-
րովք, եւ միւսն զայն ծառս ասէր եւ կամ թէ չգիտել
յանձն առնոյր, զո՞ ծառս առնէաք. զայն որ գիտելն խոս-
տանայր, թէ զմիւսն որ զչգիտելն, ոչ ապաքէն յայտ
է թէ այն որ յանձն առ զչգիտելն, եւ զանդէտն՝ քան
զայն որ գիտելն խոստանայր՝ իմաստնագոյն համարէաք :
Այլ կամ խոստանայր ոք ասել թէ որչափ ոտք են
ջրոյ 'ի ծովու, եւ միւսն զայն չգիտել, ոչ ապաքէն ան-
պիտութիւնն քան զգիտելն իմաստնագոյն զառնէր. ըն-
դէ՞ր. քանզի այն խակ է կարի առաւել անզգութիւն,
զի զանդէտսն համարի գիտել : Որ զանգիտութեան խոս-
տանայ, զանեայ սակաւիկ ինչ գիտէ. զինչ. զայն խակ
եթէ անհնարին է զայն մարդոյ գիտել. եւ չէ խակ այն
սակաւ գիտութիւն : Այլ որ յանձինս ունիցի գիտել, նա
է որ առաւել չգիտէ զոր ինչ խոստանայ գիտել. եւ վասն
այնորիկ է ծառս եւ կատականք :

Այս մեզ, որչափ խորատինք զլսոր քննութիւնն եւ զա-
նօգուտ խնդիրսն նահանջել եւ չխտատեք. այլ զայլոց
վարս քննեմք թէ ընդէր այս անուն չար է եւ այս անուն
աղքատ : Այլ եթէ զայնպիսի բանից սակաւ զհետ եր-
թիցեմք, յայլ եւս անչափ շաղփաղփութիւնս անկանիմք,
իբրեւ զծերս որ 'ի մանուկ անկեալ 'ի շատախօսութիւն հա-
սանիցեն թէ ընդէր այս անուն կին է եւ ոչ ամենեքեան
այրք իցեն, վասն էր էշն էշ եւ արջառն արջառ, հիմ
շունն շուն է եւ քարն քար, փայտն փայտ. եւ այնու հետեւ
յանհնարինն եւ յանբաւ խոխոմն[1] անկանիցի բանն :

1 Միւսն խարխամ :

Այդ վասն [1] ա̃ծ չափ եդ գիտութեան մերոյ և անկեաց 'ի բնութեան մերում զպայմանն իմանալ։ Այլ միտ դիր քանի ինչ է վայրապար քննութիւն. որք զայսչափ բարձրութիւն զերկնից յերկրէ տեսանեմք և չվնասիմք ինչ. յորժամ յաշտարակ ինչ բարձր ելեալ և կամիցիմք 'ի խոնարհ հայել, թէպէտ և սակաւիկ ինչ յառուցումք, ցնորք և խաւար գայ զաչօք և զլխելօք։ Արդ ասա զի՞նչ պատճառք իցեն այնորիկ, այլ գիտեմ զի չասես, ընդէ՞ր որ այնչափ մեծ զօրութիւն ունի ակն՝ 'ի բացական ինչ իրաց յաղթի։ Այնպէս և զլսելեացն է տեսանել. նա և ոչ աղաղակաւ որք կարէ այնպէս լսել զօղս որչափ ինչ ակն բաւիցէ, և ոչ լսել ինչ 'ի բացուստ նոյնչափ։ Ընդէ՞ր չիցեն ամենայն անդամք հաւասարակ. վասն է՞ր զմի պէտս և զմի տեղի չունիցին։ Այս և Պաւղոս զայն քննեաց. մանաւանդ թէ չքննեաց իսկ, քանզի իմաստուն էր, այլ իբրև յայն տեղի եհաս՝ ասէ. "Այլ զիւրաքանչիւր որք 'ի նոցանէ որպէս և կամեցաւ". և 'ի կամս նորա միայն ապաստան արար։

Գոհացուք և մեք 'ի վերայ ամենայնի։ Վասն այնորիկ ասէ. "Գոհացարուք 'ի վերայ ամենայնի"։ Այլ այն իսկ է բարեբարոյի և մտերմի և իմաստնոյ ծառայի, և միւսն չարախօսի և դատարկի և յուլացելոյ և քննողի։ Զտեսանիցես 'ի ծառայսն զի յառիքն որ չիցեն ամեք պիտանիք, 'ի չարախօսութիւն և 'ի շաղակրատութիւն հատանին, և զտերանց իրս 'ի խոյզ և 'ի խնդիր արկանեն զոր նոքա թաքուցանել կամիցին։ Իսկ իմաստունքն և բարեբարոյք միում եթ աշ ունին թէ զիարդ կարիցեն զսպասն նորա վճարել. որ 'ի չարախօսութիւնս հատանիցի, և ոչ ինչ գործէ. զոր օրինակ և որ շատն գործիցէ, չխօսի երբէք վայրապար։ Այնն իրի ասէր իսկ Պաւղոս յորժամ վասն այրեացն գրէր՝ թէ "Ոչ միայն դատարկանձունք ուսանին, այլ և շատախօսք։ Արդ ասա, զի՞նչ ինչ շատ 'ի մէջն կայցէ ընդ մեր կատարեալ հասակս և ընդ մանկութոյ, և ընդ ա̃յ և ընդ մարդկան չափս։ Ո՞չ ապաքէն իբրև զմժիխ մի եմք առ Աստուծոյ. նա և ոչ իբր զմժիխ անգամ։ Այլ արդ զի՞ այդչափ 'ի քննին մտեալ իցես. գոհացող լեր 'ի վերայ ամենայնի։

1 Իմն վասն որոյ։

Եթէ հեթանոս ոք, ասէ, կամիցի հարցանել և ուսանել, զինչ տայցեմ պատասխանի։ Ասիցէ գոյ տէրութիւն թէ չգոյ. միայն թէ նա չխոստանայցէ տէրութեան ումանց։ Ոչ այդպէս իցէ, և դու դարձեալ անդրէն զնոյն բան ընդդէմ հարցանիցես։ Ապա եթէ չխոստանայցէ տէրութիւն ինչ, ասասջիր եթէ զի է տէրութիւն, որով զփայլմունս եդիր՝ յայտ է. զի տանց հաւանելոյ է, որովք չկարես գտանել զբանն՝ յայտնի է։ Եթէ որովք զմարդիկ դարմանեն՝ չգիտեմք բազում անգամ զպայմանն դարմանոյն, և բազում ինչ յայտնեանէ թերեւս և անպատեհ համարիմք, և ՚ի նոսա միայն ապաստան առնեմք զգիտելն, որչափ ևս առաւել զայդ ոչ ասել անպատեհ ինչ և ոչ զմտաւ ածել պարտին հաւատացեալք։ Վասն որոյ յամենայնի գոհացողք լիցուք. ՚ի վերայ ամենայնի փառաւոր արասցուք զնա։

"Հնազանդեցարուք, ասէ, միմեանց յերկիւղն Քրիստոսի,,։ Եթէ իշխանի պարտ իցէ հնազանդ լինել կամ ընչիւք կամ ակնածութեամբ, որչափ ևս առաւել վասն երկիւղին այդ։ Եղիցի ծառայութիւն և հնազանդութիւն, ոչ այսպիսի ինչ ծառայութիւն եթէ մին իբրև զազատ նստիցի, և միւսն իբրև զծառայ ՚ի հարկի կայցէ. այլ և ազատայն և ծառայից միմեանց ծառայել, և այնպէս լաւ իցէ ծառայ լինել քան այլ ազգ ազատ։ Այս յայտ անտի իսկ է. գիտեսջիր եթէ ունիցի ոք հարիւր ծառայ և չառնիցէ ոք ՚ի նոցանէ սպաս տեառնն, այլ անձամբ անձին սպաս ունիցի. և իցեն հարիւր բարեկամք և միմեանց սպաս ունիցին. ո՞վ ոք բարի կեանս կեցցեն և յուրախութեան վայելիցեն. ո՞չ ապաքէն սոքա քան զնոսա։ Ուր ոչ ցասումն ինչ իցէ և ոչ բարկութիւն և սրտմտութիւն և ոչ այլ ինչ նոյնպիսի։ Անդ ահ և երկիւղ և հարկ ՚ի վերայ կայցէ, աստ կամացն եւեթ յօժարութիւն զբնաւ վճարիցէ. անդ բռնութիւնն նեղիցէ, և աստ ցնծութեամբ լի իցեն, զի միմեանց ծառայիցեն։ Այնպէս կամի նա. նմին իրի իսկ լուաց զոտս աշակերտացն։ Մանաւանդ թէ հաւատեաւ իսկ քննիցես, և ՚ի տերանցն փոխարէնք են ծառայութեանն, թէպէտ և հպարտութիւնն չտայցէ երևել փոխարինացն։ Ոչ որժամ զմարմնաւոր սպասաւորութիւնն հարկանիցէ, և դու զմարմինն իսկ նորա կերակրիցես կերակրովք և զար-

մանիցես օգնել և ձորձել, և արդ չիցէ՞ այն ծառայութիւն։ Ոչ եթէ դու զքո սպասաւորութիւն չհարկանիցես, և ոչ նա զիւրն. այլ յազատութիւն ելանիցէ, և չիցեն ինչ օրէնք որ զնա քեզ 'ի ծառայութիւն ածիցեն յորժամ 'ի քէն ոչ կերակրեսցի։ Իսկ եթէ 'ի ծառայսն այնպիսի իրք պաշտին, որ անպատեհութիւն իցէ թէ և յազատսն այնպիսի իրք պաշտեսցին։

"Հնազանդեցարուք միմեանց, ասէ, յերկիւղն Քրիստոսի"։ Նմանայն ինչ շնորհք են յորժամ և վարձս ևս առնուցումք ընդ այնր։ Այլ թերևս չկամիցի հնազանդել քեզ. դու հնազանդեա. մի վայրապար ինչ հպատակիցես, այլ հնազանդ իսկ լինիցիս։ Որ տեարս ունիցիս զամենեսեան, և այնպէս կարիցես առնել զնոսա քեզ ծառայս վաղվաղակի բռնութեամբ ծառայական զօրութեանն։ Յայնժամ առաւել հաճոյ լինիցիս նոցա, յորժամ 'ի նոցանէ ինչ չառեալ՝ զքոյն առաջի ունիցիս. այն իսկ է՝ հնազանդեցարուք միմեանց յերկիւղն Քրիստոսի. զի ամենայն կարեաց յաղթիցեմք և ոչ 'ի ծառայութեան կայցեմք և ընդ միմեանս զսէրն ողջ ապրեցուցանիցեմք. յայնժամ կարեմք ոչ մարդասիրութեանն արժանի լինել շնորհօք և գթութեամբ միածնի նորա, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ

"Կանայք, արանց ձերոց հնազանդ լերուք իբրև տեառն. զի այր է գլուխ կնոջ որպէս և Քրիստոս գլուխ եկեղեցւոյ, և նա ինքն է փրկիչ մարմնոյ։ Այլ որպէս և եկեղեցի հնազանդ լինի Քրիստոսի, նոյնպէս և կանայք իւրեանց արանց հնազանդ լինիցին յամենայնի"։

Ոմն իմաստուն բազում ինչ եդ 'ի կարգի երանութեանց, և մի 'ի բազմացն և զայն եդ յերանութեանս աստիճանին. "Այր կին, ասէ, յորժամ զուգամբ գայցէ".

և դարձեալ այլուր ընդ երանելի կանայս զայս ասէ՝ թէ կին յորժամ միաբանեսցէ ընդ առն իւրում: Այս և 'ի սկզբանէ իսկ երևի թէ բազում զուգութիւն և դարմանս կազմեաց Աստուած ամուսնութեանն, և իբրև զմիոջէ խօսի զերկոցունց. «Արու և էգ, ասէ, արար զնոսա Աստուած». և դարձեալ թէ «Որք արու և էգ»: Այս և չէ իսկ առն ընդ առն այնպիսի խնամ, որպէս կնոջ ընդ առն որ սերտիւ ընդ միմեանս զուգեալ իցեն: Վասն այնորիկ և որումն երանելի առն յայտ արարեալ զաստուելութիւն սիրոյ յորժամ զոմն 'ի բարեկամաց և 'ի համազգեաց սիրելեաց ողբայր, ոչ զհօրէ ձայնէր և ոչ զմօրէ և ոչ զորդւոյ և ոչ զեղբօրէ. այլ զինչ. «Անկաւ, ասէ, 'ի վերայ իմ սէր քո իբրև զսէր կանանց»: Արդարև իսկ, արդարև քան զամենայն բռնութիւնս՝ սիրոյն բռնութիւնն բռնագոյն է:

Այն և այլ ինչ յորդոր սէրք. բայց այն կարի իմն ցանկալի և անյագ է. 'ի ներքս 'ի սիրտն և 'ի բնութեանն անկեալ է գութն, գաղտ իմն խաղայ և բորբոքի յամենայն անդամսն: Վասն այնորիկ 'ի սկզբանէ այրն յերկրէ և յետոյ կինն յառնէ, և դարձեալ 'ի կնոջէ և յառնէ այր և կին: Տես զկապն, տես զպարուանդն և զըղխաւանութիւն, զիարդ չտայ թոյլ եկամուտ ինչ բնութեան 'ի ներքս մտանել: Տես զիարդ ճարտարապետեաց ընդ քեռն ամուսնանալ. մանաւանդ թէ ոչ ընդ քեռ, այլ ընդ դստեր. և ևս իմն աւելի քան ընդ դստեր, զի ընդ իւրում մարմնոյն եւ ամուսնանալ: Զայս ամենայն արար անդուստ 'ի բնէ, իբրև 'ի քարանց ինչ 'ի մի շինուած յօդեաց զերկոսեան: Զատեաց արտաքուստ զկինն, զի մի իբրև ընդ օտարոտի հայեսցի: Այլ դարձեալ ոչ միայն մինչև ցնա հաստատեաց զամուսնութիւնն թէ նոյնպէս ընդ քորս և ընդ դստերս ամուսնասցեն, զի մի ժողովեսցէ և ամփոփեսցէ զսէրն, և յայլոցն քակեսցի: Այլ զոր օրինակ 'ի տունկս այնք տուաւել ազնուականք են որք միաձեւոտիքն իցեն և 'ի բազում ոստս տարածանիցին. որպէս զի որոյ արմատքն յամձուն տարածանիցին, ոչ այնպէս 'ի վեր աճէ ձող տնկոյն: Այնպէս և անդ 'ի միոջէն յԱդամայ ծրար սերիլ ազգի մարդկան, և չքակել և չզատանել 'ի միմեանց: Նաև հարկ մեծ 'ի վերայ եդ, զի անդէն զիւրև գայցէ. և յետոյ արգել կարծեաց չառ-

նուլ զբոյս և զդստերս 'ի կանայս, զի մի՛ 'ի մին և եթ ամփոփիցեմք զսէրն և զգութ, և այլ ազգ բաշխիցիմք 'ի միմեանց։ Վասն այնորիկ ասէր տէրն՝ թէ “Որ արարին 'ի սկզբանէ, արու և էգ արար զնոսա”։ Մեծամեծ չարիք ծնանին անտի և մեծամեծ բարիք և տանց և քաղաքաց։

Չիք ինչ որ այնպէս յարգոյ իցէ կենաց մերոց և միախուռն ունիցի և հաստատուն իբրև զսէր զառն և զկնոջ։ Վասն այնորիկ զէնս բազումս կազմեն, վասն նորին այլք և կոզին եւս 'ի վերայ դնեն։ Եւ ոչ վայրապար ինչ կամ 'ի զուր այնչափ փոյթ արարեալ Պաւղոսի գրիացն ասէր՝ եթէ “Կանայք, արանց ձերոց հնազանդ լերուք իբրև տեառն”։ Ընդէ՞ր արդեօք։ Եթէ նոքա 'ի միաբանութեան իցեն և սիրով ընդ միմեանս, և որդիք բարւոք սնանին, և ծառայքն 'ի կարգի կան, և դրացիքն 'ի հոտ անուշից վայելեն, և բարեկամք և ազգականք 'ի խնդութեան բերկրին։ Իսկ եթէ նոցին հակառակն լինիցի, ամենայն ինչ եղծաւ, բնաւ խախտի։ Եւ զոր օրինակ յորժամ զօրավարն և զօրքն ընդ միմեանս խաղաղութիւն ունիցին՝ ամենայն իրաց աջողութիւն է, և եթէ նոքա ընդ միմեանս ինչ ազմկիցին՝ ամենայն վեր 'ի վայր կործանի, նոյնպէս և անդ։

Եւ արդ զինչ ասիցէ. “Կանայք, արանց ձերոց հնազանդ լերուք իբրև տեառն”։ Նայէ և զիարդ այլուր ասիցէ, “Եթէ չհրաժարեսցեն այր 'ի կնոջէ և կին յառնէ, չկարեն գալ զկնի իմ”։ Եթէ իբրև տեառն պարտ է հնազանդ լինել, զիարդ մարթ իցէ վասն տեառն հրաժարել։ Եւ եթէ յաղագս տեառն հրաժարիցէ, զիարդ կարիցէ իբրև տեառն հնազանդ լինել։ Զիցէ՞ պարտ վասն տեառն 'ի բաց կալ. այլ կարի իսկ պարտ և պատշաճ։ Եւ զիարդ իբրև տեառն հնազանդ լինիցի։ Այլ իբրև՛ն ասէ՝ ոչ ամենայն ուրեք զհաւասարակ ինչ պատիւ յայտ առնէ։ Հրամայէ հնազանդ լինել կանանցն իւրեանց արանցն ոչ ըստ համեմատութեան տեառն պատուոյն. այլ իբրև տեառն ասէ, զի գոնէ այնու պատկառեցուսցէ զնոսա լինել հնազանդ արանց։ Ընդ ասէ. “Թէ ոչ ոք հրաժարեսցէ 'ի կնոջէ, չկարէ գալ զկնի իմ”. ոչ եթէ զամուսնութիւնն ինչ խոտելով հանիցի զայրն 'ի կնոջէն քակել և կամ

զկինն յառնէ. այլ թէ յայն առպատասխան ինչ լիցի՝ զկինն ընտրել կամ զտէր՝ զտէր ընտրեսցէ և ոչ զկինն։ Եւ աստ զիմաստութիւնն մի քայքայիցէ՝ ասէ. «Կանայք, արանց ձերոց հնազանդ լերուք իբրև տեառն»։ Կամ թէ զայն ինչ ասիցէ. գիտասցեն կանայք եթէ առն ծառայել՝ տեառն է ծառայել։ Որպէս և այլուր ասէ եթէ «Ոչ վասն առն, այլ վասն տեառն»։ Յորժամ հնազանդ լինիցիս առն, գիտասջիր թէ տեառն ծառայ ես։ Եթէ արտաքինն իշխանութեանցն որք հակառակ կայցէ՝ ա͞յ հրամանին կայ հակառակ, որչափ ևս առաւել կին որ ոչ հնազանդեսցի առն իւրում։ Որպէս կարգեաց ա͞ծ, զնոյն կամեցաւ 'ի սկզբանէ։ Հաւանեցուք այսուհետև առն և 'ի գլխոյ աստիճանի կայցէ, և կինն 'ի մարմնոյ կարգի։

Նոյն և 'ի միւսս օրինակս բերէ, եթէ «Այր գլուխ է կնոջ որպէս և Քրիստոս, ասէ, գլուխ է եկեղեցւոյ և նա ինքն է փրկիչ մարմնոյ։ Այլ որպէս եկեղեցին հնազանդ լինի Քրիստոսի, նոյնպէս և կանայք իւրեանց արանցն հնազանդ լինիցին յամենայնի»։ Ո՞ր իցէ, ասէ, գլուխ կնոջն որպէս և Քրիստոս գլուխ է եկեղեցւոյ և նա ինքն է փրկիչ մարմնոյ. քանզի և գլխոյն փրկութիւն է մարմնոյն։ Հաւանիկ յառաջագոյն կանխէ տայ առն զպատճառս սիրոյ, և զիւրաքանչիւր անձանցն զարմանս 'ի նա ապաստան առնէ, նմա զաշխարհականն և զխնամակալ, և սմա զհնազանդութեանն։ «Որպէս և եկեղեցի, ասէ, հնազանդ լինի Քրիստոսի»։ Ո՞ ինչ իցէ եկեղեցի. արք և կանայք են։ «Նոյնպէս և կանայքն իւրեանց արանցն իբրև ա͞յ հնազանդ լիցին»։

«Արք, ասէ, սիրեցէք զկանայս որպէս և Քրիստոս սիրեաց զեկեղեցի»։ Նուաբ զառաւել հնազանդութիւնն, զօձեցեր և զարմացար ընդ Պաւղոսի իբրև ընդ զարմանալի ոք և ընդ հոգևոր այր՝ որ միախառնան հաստատուն ունիցի զկեանս մեր։ Նաւրուք է, այլ լուր զինչ 'ի քէնն պահանջէ. զարձեալ զնոյն օրինակ 'ի կիր արկանէ։ «Արք, ասէ, սիրեցէք զկանայս որպէս և Քրիստոս սիրեաց զեկեղեցի»։ Տեսե՞ր զչափ հնազանդութեանն, լուր և զպատար սիրոյն։ Կամիս զի հնազանդ լինիցի քեզ կինն որպէս և Քրիստոսի եկեղեցին, խնամ

փեսիցիս՝ և դու նմա որպէս և Քրիստոս եկեղեցւոյն։ Այլ թէ զանձն հասանիցէ 'ի վերայ դնել և եթէ պատառ պատառ կոտորել և եթէ զինչ չարչարանս և իցէ կրել կրիցես, ոչ ինչ այնպիսի արարեր որպէս և Քրիստոսն։ Դու զի զուգեալ ես ընդ նմա, թէ երկս վասն այնորիկ յանձն առնուս զչարչարանս ինչ. իսկ նա մինչդեռ յատելութեան և 'ի թշնամութեան էր ընդ նմա եկեղեցին՝ չարչարեցաւ վասն նորա։ Զոր օրինակ նա զխոտորեցեալն և զփախուցեալն որ ատեայրն և արհամարհէր և անգոսնէր՝ ած յիւր ոտս քաղցուն դարմաննովքն, ոչ սպառնալեօք և ոչ թշնամանօք, ոչ ահիւ և ոչ այլ ինչ այնպիսի օրինակաւ, նոյնպիսի միտս և դու առ կին ունիցիս. թէպէտ և չզայցէ ինչ զքեզ և անգոսնեսցէ և արհամարհիցէ և տեսանիցես զայն և 'ի միտ առնուցուս, կարես ածել զնա յոտս քո խնամով և սիրով և գթով։ Զիք ինչ քան զայնպիսի կապանս բռնագոյն, մանաւանդ ընդ այր և ընդ կին 'ի միջի։ Ծառայն ահիւ և կապանօք ոք կարէ ածել 'ի կարգ, մանաւանդ թէ և ոչ զնա. թէ կարիցէ զերծանել ելանել ըստ քուռն, հեռակորոյս անհետ լինի։ Իսկ զկենակցն հաղորդակից, զորդւոցն մայր, զամենայն ուրախութեցն պատճառս ոչ ահիւ և սպառնալեօք պարտ է կապել, այլ սիրով և գթով։ Զինչ ամուսնութիւն իցէ, ուր զուգութիւն եթէ կին յառնէ զատուցէ. յորպիսի ցանկութիւն այրն վայելիցէ եթէ իբրև զաղախին ունիցի զկինն 'ի տան և ոչ իբրև զազատ։ Այլ եթէ ընկիցիս ինչ վասն նորա, մի նախատիցես, քանզի և ոչ Քրիստոս արար զայն. «Այլ զանձն իւր մատնեաց վասն նորա»։

«Զի զնա սրբեսցէ»։ Սրբեաց զնա, ասէ. ապա ուրեմն պիղծ էր և արատաւոր և տգեղ և գձուձ և անարգ։ Որպիսի ինչ և առնուցուս կին, ոչ այնպէս ինչ տգեղ հարսն առնուցուս, որպէս և Քրիստոս զեկեղեցի. և ոչ այնչափ 'ի վայր քան զքեզ, որպէս և եկեղեցի քան զՔրիստոս. բայց սակայն չզարշեցաւ և չատեաց, թէպէտ և այնչափ տգեղ էր. և լուր Պաւղոսի իսկ. «Քանզի էիք, ասէ, երբեմն խաւար»։ Տեսեր զսևացեալ թխութիւնն. զինչ ինչ քան զխաւար սևթոյր թխագոյն կայցէ։ Տեսեր զյանդգնութիւնն. «Չարեօք, ասէ, և նախանձու շրջէիք»։ Տեսեր զանառա-

մանուկերն զարմանալիք ։ Ի գեղապանծութենէն հպարտութիւն և անբարտաւանութիւն և ամբարհաւաճութիւն ծնանի, և 'ի չայնպիսւոյն ոչ ինչ նոյնպէս ։ Այլ որպէս սկիզբն եղև սիրոյն, նա քան զնա յորդորէ և նոյնպէս կայ մնայ, քանզի յոգւոյն գեղ հարեալ է և ոչ 'ի մարմնոյն ։ Զինչ լաւ քան զերկինս կայցէ, որ գեղ ազնիւ քան զաստեղս. զորպիսի ինչ և ասիցես մարմին, չէ այնպէս գեղեցիկ. որպէս և ասիցես աչս, չեն ինչ այնպիսի պայծառագոյնք ։ Եւ և մինչև լինէին իսկ նորա, հրեշտակք զարմացան. և մեք այժմ զարմանամք, այլ ոչ այնպիսի իրրև զառաջինն. քանզի այնպէս է սովորութիւնն, չտալ նոյնպէս զարմանալ. որչափ եւս առաւել և առ կնոջն ։ Ուր ցաւք 'ի վերայ հասանեն, վաղվաղակի եղծանի գեղն, մերժի ցանկութիւնն եղանէ 'ի միոց ։

Զգօնութիւն և զխոնարհ խնդրեսցուք 'ի կնոջէ, զցածութիւն և զհանդարտութիւն. այն են գեղոյ նշանք ։ Զմարմնոյ գեղ մի խնդրեսցուք, և մի վասն այնր ինչ մեղադիր լինիցիմք նմա որում չիցէն տիկին. մանաւանդ զի բնաւ իսկ մի լինիցիմք մեղադիր. քանզի յանդգնութեան բարք են այն. մի զչարեսցուք, մի դժկամակ լինիցիմք ։ Ոչ է չիցէ՞ տեսեալ զբազումս որ ընդ գեղեցիկ կանայս կեցին և չուառութեամբ վախճանեցին զկեանս իւրեանց. և այլք ոչ ունէին գեղեցիկ կանայս և բազում ուրախութեամբ վայելեցին մինչև ցբուն իսկ ծերութիւն ։ Զաղտն զարտաքինն լուացուք և զխորշս ներքինս պարզեսցուք, զքիժ և զարատ ոգւոցն 'ի բաց հանցուք ։ Զայնպիսի գեղ խնդրէ ա̃ծ. ա̃յ և մի մեզ զարդարեսցուք զնա ։

Մի՛ ինչ խնդրեսցուք 'ի կանանց և մի զազգ ինչ բարեաց, այլ զբարոյսն զազնուականութիւն ։ Մի ոք անկասցի 'ի կնոջէ մեծանալ. յաղթեան և նախատանաց է այս մեծութիւն ։ Մի ոք ամենևին խնդրեսցէ անտի մեծանալ. զի որք այնպէսն մեծանալ կամին, անկանին 'ի փորձութիւնս և 'ի ցանկութիւնս անմիտս և վնասակարս և յորոգայթ և 'ի սատակումն և 'ի կորուստ ։ Մի խնդրեր 'ի կնոջէ զինչինչ յաճախութիւն, և դիւրաւ գտանիցես զայլն ամենայն ։ Ընդէ՞ր զբունն թողուցուս և զյետինն խնդրես զհետ երթիցես ։ Այլ վայ մեզ զի ամենայն արարք զայն առնեն աշխատանաւք. եթէ որդի լինի-

ցի, չփութամք ուսուցանել առատապէս. այլ թէ զիարդ կարասցուք կեալ մեծատուն ածել նմա 'ի տուն. ոչ զի մնասվաճառ գայցէ, այլ զի ընչաւէտ լինիցի. և եթէ ա-րուեստ ինչ ուսուցանիցեմք, ոչ զի 'ի մեղաց զանձն ազա-տիցէ, այլ զի շահ ինչ մեծ 'ի տուն բերիցէ։ Նոյն ամե-նայն ինչ կարասի եղև, վասն այնորիկ ամենայն ինչ եղ-ծաւ, զի այն ցանկութիւն կապեալ ունի զմեզ։

"Այսպէս, ասէ, պարտին արք սիրել զկանայս իւրեանց իբրև զիւրեանց մարմինս"։ Օ՜ ինչ իցէ այն. իբրև 'ի մեծ իմն օրինակ և հաստատուն պատկեր ածիցէ զիրսն։ Ոչ այնպէս ինչ, այլ զի այն մօտաւոր և յայտնի էր, և այլ իմն իրաւունք. զի այն չէր 'ի բազում ինչ հարկէ, քան-զի նա Քս էր և Ած և անձամբ զանձն մատնեաց, սաստիկ այլ իմն խելս խառնեալ ասէ. "Այսպէս, ասէ, պարտին"։ Ոչ են շնորհք ինչ իւրքն, այլ պարտք։ "Իբրև զիւրեանց մարմինս" ասէ. ընդէ՞ր. "Ո՛չ ոք երբէք ատեաց զանձն, այլ սնուցանէ և դարմանէ"․ այսինքն է դարմանէ բազում խնամով։ Եւ թէ զիարդ իցէ նորա մարմին կինն, "Այս այժմիկ, ասէ, ոսկր յոսկերաց ի-մոց և մարմին 'ի մարմնոյ իմմէ"․ քանզի 'ի մերմէ նիւ-թոյ եղև։ Եւ ոչ այնչափ միայն, այլ "Եղիցին, ասէ, երկոքեանն 'ի մարմին մի"։ "Որպէս և Քրիստոս, ասէ, սիրեաց զեկեղեցի"։ Դարձեալ յառաջին օրինակն եկն։

"Զի անդամք եմք մարմնոյ նորա, 'ի մարմնոյ նորա և 'ի նորին ոսկերաց" որպէս յԱդամայ. զի 'ի մար-մնոյ նորա և յոսկերաց նորին եղև։ Քանզի մարմին և ոսկերք էին 'ի մեզ գլխաւորք և հաստատունք. զի կեան իբրև հիմն ինչ հաստատուն 'ի ներքոյ կայ, և կեան իբ-րև շինուած 'ի վերայ շինեալ։ Այլ այն յայտ իսկ է, և սա զիարդ ինչ իցէ։ Որպէս Ադամ այնչափ մերձա-ւորութիւն է, նոյնպէս և աստ, ասէ։ Օ՜ ինչ իցէ 'ի մարմնոյ նորա. այսինքն սերտիւ 'ի նմանէ։ Եւ զիարդ Քրիստոսի անդամք իցեմք. զի որպէս նայն ծնաւ, այն-պէս ծնաք։ Եւ զիարդ իցեմք 'ի մարմնոյ նորա. գիտէք որք 'ի խորհուրդս վայելէք. "Ոսկր նորա, ասէ, մի բեկ-ցի"․ նովին իսկ վաղվաղակի իմն նորոգիմք։ Եւ թէ զիարդ իցէ, լուր ամին իսկ երանելոյ. "Առանձնեալ, ա-սէ, մանկունքն հաղորդ եղեն մարմնոյ և արեան", համ-գոյն նոցին և ինքն կցորդ Ճաշակեաց։ Այլ աստ նա մեզ

հաղորդեցաւ և ոչ մեք նմա։ Այլ արդ զիարդ իցեմք 'ի մարմնոյ նորա և յոսկերաց։ Ոմանք զարիւնն և զջուրն ասեն, բայց չէ այն. այլ որպէս առանց ամուսնութեան ծնաւ նա 'ի հոգւոյն, զնոյն ծնունդ ծնանիմք և մեք յաւազանէ։ Տես որչափ ինչ օրինակք են, զի հաւատարիմ լինիցի այն ծնունդ։ Ո՞վ անմտութիւն հերձուածողաց։ Ա՛ռ վաղուցն ծնեալ միւսանգամ 'ի ջրոյ ծնանի զճշմարիտ ծնունդն։ Այլ զիարդ իցեմք մարմին 'ի մարմնոյ նորա և ոսկերք յոսկերաց նորա։ Նոյն իսկ է թէ արդարև ողջ և բովանդակ առ 'ի մերմէ ընդունելեա իւր մարմին, և շնորհեաց մեզ հաղորդութիւն յիւրմէ 'ի զօրութենէն։ Ստեղծաւ Ադամ, ծնաւ Քրիստոս և զերկրորդ ծնունդն որպէս և ինքն միայն գիտէ։ Այլ թէ զիարդ առ 'ի կողիցն Ադամայ, զայն ինքն ևեթ գիտէ. եթէ զիարդ առ 'ի մերմէ զանգուածոյ իւր մարմինն ա̃ծն բան, և զայն դարձեալ ինքն ևեթ ճանաչէ։ Այս այնպէս մեք ընդ նմա հաղորդեցաք և նա ընդ մեզ։

«Վասն այսորիկ թողցէ, ասէ, այր զհայր իւր և զմայր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ, և եղիցին երկոքին 'ի մարմին մի»։ Ահաւասիկ և երրորդ իմն իրաւունք. զի և զծնողսն իւր թողու և 'ի կինն երթայ յարի, և այնու հայրն և մայր և մանուկն մի մարմին լինին։ Քանզի յամուսնութէ յերկոցունց կողմանց զանգանի սաղմն և յերկոցունց կողմանց ծնանի, որպէս զի լինիցին երկքեան[1] 'ի մարմին մի։ Այլ դարձեալ մանուկն ամուսնութեամբ լինի ընդ իւրում կնոջն մի մարմին, քանզի յառաջ խաղայ սերելով սերմնն։ Այս առաւել զարմանալի այն է, զի մին լինին նախ քան զմանկանն լինել. ընդէ՞ր. քանզի 'ի սկզբանէ այնպէս եղև։

Այլ մի՛ ասիցես թէ այս ինչ է կամ այն։ Զտեսանիցե՞ս զի և 'ի մարմնի բազում ինչ թերութիւնս ունիմք, ոմն կոյր է, ոմն կաղ է, որումն ձեռքն գօսացեալք և ոչ զչարի և ոչ հատանէ և 'ի բաց ընկենու, այլ բազում անգամ քան զայլոց անդամոցն նմա աւելի դարման տանի. և յիրաւի իսկ, քանզի իւր անդամ է։ Որչափ իւրաքանչիւր ոք ընդ անձին գութ ունիցի, նոյնչափ կամի թէ ընդ կնոջ ոք ունիցի։ Այնպէս և զմիոյ բնութեանն

1 Յօրինակին Էջմիածնի. եղաւ ըստ յաճախին։

զհաւատարմութիւն ուսուցանէ, այլ ասելի իմն խրատաւոր մեծ խնամ ունել կնոջ, զի երկու մարմինք մի մարմին եղեն, մին գլուխ և միւսն անդամք։ Եւ այլուր ասէ եթէ "Գլուխ Քրիստոսի ած է,,: Զնոյն և ես ասեմ թէ որպէս մարմին մի է, նոյնպէս և Քրիստոս և Հայր մի էութիւն, թէպէտ և երկու անձինք. այսպէս ուրեմն և Հայր գլուխ է մեր, վասն զի Քրիստոսին գլուխ է։ Եւ գլուխ Քրիստոսի ասէ զՀայրն՝ ոչ զի զմեծ ինչ և զփոքր յայտ առնիցէ, այլ որպէս գլուխ և մարմին մի բնութիւն են, նոյնպէս և ած և Քրիստոս ըստ ածութեան մի էութիւն, և ըստ մարդկութեանն մեր գլուխ Քրիստոս։

Եւ աստ երկու օրինակս դնէ՝ մի զմարմնոյն Քրիստոսի և միւս զխորհրդոյն։ "Խորհուրդս այս մեծ է. բայց ես ասեմ իսկ թէ և 'ի Քրիստոս և յեկեղեցի,,: Զինչ կոչէ մեծ խորհուրդն։ Այն իսկ է զի մեծ իմն և զարմանալի անճառելեաց երանելին Մովսէս, մանաւանդ թէ ած իսկ Մովսէսիւ։ Բայց այժմ ասէ՝ 'ի Քրիստոս տանիմ զխորհուրդն. քանզի և նա եթող զՀայր և էջ եկն առ հարսնն և եղև 'ի մի ոգի. ըստ այնմ թէ "Որ մերձենայ 'ի տէր, մի հոգի է,,: Եւ որպէս առաջին թէ մեծ է խորհուրդն, որպէս զի ասիցէ՝ այլ ոչ եթէ առաւելն և այլայլութիւն ջնջիցէ ինչ զսէրն։

"Բայց և դուք, ասէ, զիւրաքանչիւր կանայս սիրեցէք իբրև զանձինս ձեր, և կինն երկնչիցի յառնէ իւրմէ,,: Քանզի արդարև, և արդարև իսկ խորհուրդ է. զի զծնողն և զսնուցիչն և զերկնիչն որ աղգի աղգի տառապանօք տառապեցաւ և պէսպէս երախտիս և դարմանս եցոյց, զհամբոյրն և զգութն թողու, և զոր բնաւին տեսեալ չիցէ և ոչ երբէք գութ և համբոյր առնիցի՝ երթայ 'ի նա յարի և քան զամենեսեան զնա մեծարէ հանապազ. արդարև մեծ իսկ խորհուրդ է։ Եւ հայր և մայր չտրտմին ընդ այն. այլ թէ այնպէս չլինիցի, ընդ այնր զչարին. և եթէ ինչք ծախիցին և վարիցին, ընդ այն ուրախ լինին։ Արդարև մեծ իմն խորհուրդ է և ծածուկ իմաստութիւն. և այս անդստին 'ի բնէ մարգարէութեամբ 'ի Քրիստոս և յեկեղեցի նկարէր։ Բայց ոչ վասն նորա միայն ասէ այսպէս, այլ զինչ. "Զի իբրև զիւր մարմինն այնպէս դարմանիցէ զկինն որպէս և Քս զեկեղեցի, և կինն զի երկնչիցի յառնէն,,:

այնորիկ զայնու սակայ զայ, 'ի նոյն իմն անուանել յանձնա-խնէ որ զօրագոյնն է։ Նա թէպէտ և զրկեալ իմն կարգ-ծինցի կինն, զի երկնչել առ հրամանն, այլ զրկէ. քանզի զսերրն և զհաւանն հրամանին ո՛չ այլոյ առ՝ զանրեխ։ Նա եթէ չերկնչիցի, ասէ, կինն զի զարծեցից։ Դու սիրեա և զքոյն վճարեա. եթէ յայլոց մեղ չլինիցի, մերն այ-լոց թող լինիցի. այսպիսի ինչ. "Հնազանդեցարուք մի-մեանց յերկիւղն Քրիստոսի". Եթէ ոմն չհնազանդեսցի-ցի, դու անսալ պարտիս ո՛չ օրինացն։ Նոյնպէս և աստ. զի կինն թէպէտ և չսիրիցի, սակայն պարտի երկիւղած լինել, զի մի 'ի նմանէ ինչ կասէ զայցէ. և այրն թէ-պէտ և չերկնչիցի, կինն սակայն սիրել պարտի, զի մի 'ի նմանէ ինչ երկեանն 'ի մէջ մտանիցէ։ Նա այնպէս խաբանչիւր ոք զիւրն բովանդակ առնուցու։

Ապա ուրեմն հարսանիք են իրքն որ ըստ Քրիստո-սին լինին, հարսանիք հոգևոր և ծնունդ հոգևոր. չէ յարենէ ծնունդն մեր և ոչ յերկանց և ոչ 'ի կանանց մարմնոյ։ Այնպիսի էր և Քրիստոսի ծնունդն, ոչ յա-րենէ և ոչ յերկանց և ոչ 'ի կանանց մարմնոյ։ Զեն կա-րեօք հարսանիքն և ոչ 'ի կանանց մարմնոյ, այլ ամենևին հոգևորք, ոգւոց ընդ ա՛յ հաղորդեալ զանձառ հաղոր-դութիւնն զոր ինքն միայն գիտէ. նմին իրի իսկ ասէ թէ "Որ մերձենայ 'ի տէր, մի հոգի է". Տես զիարդ ջանայ զմարմինն ընդ մարմնոյն խառնել և զոգին ընդ ոգին։ Նա արդ ո՞ւր իցեն հերձուածողքն. եթէ խառան ինչ հարսանիքն էին, ապա ոչ զառ հարսն կոչէր և ոչ զնա փեսայ, և ոչ առ 'ի յօրդորել զայն 'ի մէջ բե-րէր՝ եթէ "Թողցէ այր զհայր իւր և զմայր և երթիցէ զհետ կնոջ իւրոյ". և ոչ զմիւսն թէ "Լուայց ես 'ի Քս և յեկեղեցին ասեմ". Նմանէ ասէ սաղմոսաբանողն՝ թէ "Լուր դուստր և տես, խոնարհեցո զունկն քո, մոռա զժողովուրդ քո և զտուն հօր քո, և ցանկասցի թագաւոր գեղոյ քում". Այլ իրի և Քս ասէր եթէ "Ես 'ի հա-րէ ելի և եկի". Այլ յորժամ ասիցեմ թէ զհայր ե-թող, մի իբրև մարգկան տեղւոյ 'ի տեղւոջ փոփոխումն կարծիցես. զոր օրինակ ելանելն ոչ զի ել իսկ ասէ ելա-նել, այլ զի մարմնացեալ երևեցաւ, նոյնպէս և թողն ըղ-հայրն։ Նոյնքէր և զկնոջէ չասիցէ[1] թէ յարեաց 'ի յայրն։

1 Յօրինակին ասիցէ .. կամ որոց նաւաց. եղանի ըստ յաւելին։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Իսկ արդ բազում հոգաբարձութիւն յանձին կալցուք և զկանանց և զորդւոց և զծառայից. գիտասցուք եթէ 'ի սկզբանն դիւրաւ կարեմք յարդարել զնոսա, և մեզ ոչ այնչափ աշխատութեամբ գտանիցիմք, այլ ասիցեմք՝ թէ "Ահաւասիկ ես և մանկունք իմ զոր ետ ինձ Աստուած": Եթէ իցէ այրն՝ որ գլուխն է՝ զարդարեալ, ապա անդամոցն իսկ մարմնոյն չիցիցէ վնասութիւն. Որպէս իցեն՝ թէ որպէս բարիոք մնօք պարտ իցէ ընդ անձն կեալ հաստատեալ առաջ. զի զերկնչելն ես խրատ իբրև 'ի գլխոյ. և նմա սիրել իբրև կին:

Ի ձեռն զիարդ, ասեն, լինիցի այս: Իսկ զի պարտ էր ասանել զայն, ասաց. բայց եթէ որպէս, զայն ես ասացից: Եթէ զինչս արհամարհիցեմք, և հոգւոյն առաքինութեան զգուշանայցեմք, եթէ զմի երկիւղն առաջի աչաց ունիցիմք: Որ և 'ի ծառայից պատուիրանին ասէր՝ եթէ "Որ գործիցէ իւրաքանչիւր ոք բարի կամ չար, զնոյն և ընդունի 'ի Տեառնէ", նոյնպէս և աստ. մի՛ նարա վասն այնչափ սիրիցես՝ որչափ վասն Քրիստոսի. և զայս իսկ ակնարկեաց ասելով, թէ իբրև Տեառն. և արդ նմին հաւանեալ, վասն նորին առնիցես զամենայն: Եւ այս իսկ բաւական է յորդորել և հաւանեցուցանել և չտալ թոյլ երկեան ինչ երկմտութեան 'ի ներքս մտանել: Մի՛ ոք հաւատացեալ զպարապեսցէ զկին, և աղկանիցէ բանս ընդ նմա և ընդ այրն. այլ մի և այրն վայրապար հաւատասցէ չարախօսութեան ինչ՝ որ զկնոջէն ասիցի. և մի կինն յողդողեալ պահիցէ զէլ և զմուտ առնն վայրապար. բայց և այրն մի տացէ զանձն այնպիսի ինչ պատճառս:

Մի՛ է սա, զամենայն օրն ընդ բարեկամս ծախես, չիցէ՞ այս բաւական. այլ և ո՛չ երեկորին կամիցես հաձել զկինդ կնոջն, և չտալ կարծիս ինչ յանուղթեան զանձն է. և եթէ մեղադիր լինիցի կինն, մի՛ զչարեսցես, զի սիրոյ է այն և ոչ յանդգնութեան. և ջերմեռանդն գթոյ և ոչ չարաբարութեան, երկիւղի և կասկածոյ: Վասնզի կասկածէ՝ թէ գուցէ ոք զողանայցէ զպարկեշտ ամուսնոյն զամուսնութիւն. գուցէ 'ի գլխաւոր խնդրոց բա-

մարդ. այս անուն տառապեալ 'ի տառապելոց էր, աշխատութիւն յանձն էառ, տար աշխարհ եհար, և բազցած ապրաքս արար, և կինն յոսկի հանդերձէ, և 'ի լըկտիս նստի, սպիտակօք ջորեօք ելանէ, ձեռն մի ուր և պիտի. ծառայից գունդք առաջի, ներքինեաց զասակք. և զու 'ի փառաւորութիւն համարեալ՝ և ընդ վայր անցուցանես ըղձկեանս : Մ՛ի ինչ այսպիսի բանս առասցէ կինն, և մի սացին նմանս. քանզի մարմին է՝ ոչ զի հրաման տայցէ գըլխոյն, այլ զի հնազանդ լիցի :

Այլ զիարդ կարիցէ, ասեն, ժուժկալ լինել աղքատութեանն, և ուստի գտանիցէ մխիթարութիւն : Մըտաւ ածցէ զայլ կանայս, որ ևս աղքատագոյն քան զնա իցեն. քանի՞ իցեն ազնուականք յազնուականաց աղջկունք, ոչ միայն չառին ինչ յարանց, այլ և զիւրեանցն ևս 'ի վերայ ծախեցին : Մտաւ ածցէ որպիսի՛ վիշտք յայնչափ մեծութենէ ունին 'ի վերայ հասին. և զանխուլ և զանհոգ կեանս խնդրեսցէ : Եթէ սիրով և խնամով ընդ առնն իցէ, ապա և առէ ինչ ոչ բնաւ այնպիսի ինչ. այլ զայն կամի՝ թէ այրն միայն առ նմա իցէ, և ոչ զի բազում ոսկի շահիցի և բերիցէ նմա, և ինքն հանապազ 'ի դողի և յերկիւղի կայցէ վասն տարաշխարհական ճանապարհացն :

Այլ և մի այրն յորժամ զայն լսիցէ, վասն զի իշխանութիւն ունի, 'ի թշնամանս և 'ի գանս դառնայցէ. այլ խրատ տայցէ, միտս դիցէ իբրև թերոյ 'ի մտաց, համոզեսցէ հաւանեցուսցէ. այլ ձեռս մի երբէք ձգեսցէ, քանզի հեռի է այն յազատ բարուց. մի թշնամանել և նախատել և բամբասել, այլ իբրև զանմիտ 'ի կարգ ածել : Այս ուստի լինիցի այն. եթէ ճշմարիտ գիտութեան ամողեակ լինիցի և վերնոյ իմաստութեանն խելամուտ, չառնիցի երբէք այնպիսի իրաց մեղադրիք. ուսուսցէ թէ չէ չար աղքատութիւնն. ուսուսցէ մի միայն բանիւք, այլ և արդեամբք. ուսուսցէ զփառս արհամարհել. և այնուհետև ոչ ինչ առիցէ այնպէս կինն, և ոչ ցանկանայցէ :

Իբրև զպատկեր ինչ նկարակերպս[1], յերեկորէն՝ յորմէ առնուցու զնա յառագաստն, ուսուսցէ զզգաստութիւն

1 Օրինակ մի նկարակերպ :

ւել քան զամենայն ոսկի և զարծաթ համարեցայ. զի խնամատուն և աղքատաքարոյ կին, երկիւղած և ցած, զաշխարհս արժէ։ Նման այնորիկ քեզ անձն առի, և զքեզ սիրեմ, և քան զիմ ոգիս ես պատուական և մեծարոյ զքեզ համարիմ։ Ոչ են ինչ կեանք աշխարհիս. և ես աղօթս առնեմ և ազգի ազգի հնարս հնարիմ, զի այնպէս վիճեցուք արժանի կեալ յաշխարհիս, զի և անդ ես աշխարհումն առ միմեանս բնակիցեմք։ Զայս ժամանակ սակաւ ինչ է և անցաւոր. եթէ արժանի լիցուք Այ հաճոյ լինել, և այնպէս փոխել յաշխարհէս, համապազ ընդ Քրիստոսի և ընդ միմեանս բնակիցեմք բազում ուրախութեամբ։ Քան զամենայն ինչ զքո սէրդ լաւ համարիմ. և չիք ինչ իմ այնպէս իրք դժուարինք, եթէ վասն իրիք երբէք ընդ քեզ գրգռիցիմ. թէպէտ և զամենայն ինչ կորուսանել հասանիցէ և յանհնարին յաղքատութիւն իջանել, 'ի վիշտս և 'ի լլկանս մտանել, զամենայն ախորժելով յանձն առնում, միայն թէ դու ևեթ ընդ իս հաւան պահիցիս. նա և որդեակքն յայնժամ ցանկալի լինիցին, եթէ մեք ընդ միմեանս զսէր և զխնամ սերտիւ պահիցեմք։

Այս ամենայն մեղմով խրատեսջիք և զառաքելական ինչ բանս, թէ ած զայն կամի յորժամ մեք ընդ միմեանս սիրով իցեմք. և լուր գրոյն իսկ որ ասէ, թէ «Վասն այնորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր, և յարեսցի 'ի կին իւր»։ Ո՞ր ինչ լինիցին պատճառք տրտմութեան 'ի միջի մերում. ողջ մնասցեն ինչք, ողջ մնասցեն գերդաստանացն բազմութիւնք և արտաքին պատիւքն. զի ինձ քան զամենայն ինչ քո սէրդ մեծարոյ է։ Քան զո՞րչափ ոսկի, քան զքանի՞ գանձս լիցեն հեշտական կնոջն յորժամ զայնպիսի բանս լուիցէ, և երկնչիցի այնուհետև և չհպարտանայցէ յորժամ սիրիցի 'ի քէն, այլ սիրոյն ևեթ և հպատակութեան միտ դնիցէ։

Իսկ պատանիկքն որ երբեմն զոսքօք և երբեմն զնոքօք գան, յիրաւի հպարտանան և անգոսնեն զհօմանիսն. բայց աղքատաքարոյն և ազնուական կին ոչ երբէք այնպիսի բանիւք հպարտանայցէ, այլ ևս քան զևս ցածնու։ Մանաւանդ զգութ և զխնամ ցուցանիցիս ընդ նմա, և 'ի տան շատ լինիցիր վասն նորա քան 'ի հրապարակս.

Մարմնոյդ չիշխես, և զիւրոց ձեռակերտն կոչես. մեք այ-
սու հետև երկու մարմինս վասն ամուսնութեան. քանզի
երկերուք մի մարմին. և արարքն ըստ երկուց իցեն և ոչ
մի. Մ՛ի ընչիցն ցանկութիւն և կարասւոյ մերկեան առեն-
չանայցեն. Մ՚ի մարդ, մի կենդանի, մի շունչ եղիք եր-
կուքեան, և տակաւին ասես, սա իմ, սա քո. Նեծք
այնպիսի կծծի բանից, որ 'ի սատանայէն բղխեցեն. զա-
մենայն ինչ մեզ Աճ հասարակաց արար, որ քան զինչսն
ևս կարևորք են, և այն չիցէ՞ հասարակաց. Զիք ասե-
նթէ իմ է լոյսն, իմ է արեգակն, իմ է ջուրն. քան-
զի ամենեցուն հասարակաց է. մեծամեծքն հասարա-
կաց են, և ինչք չիցե՞ն հասարակաց. մանաւանդ թէ
ոչ ինչքն, այլ կամքն՝ որ չգիտեն յինչսն վայելել:

Այս արդ զայն քան զամենայն ինչ մեծարոյ համարին
անմիտ կանայք. բայց դու և այնմ՝ հանդերձ այլովքն
ամենեցուն հանէս, այլ խելօք. քանզի միայն առանձին
առաքինութեանն խրատն՝ կարի ինն տրամադրին թուի.
մանաւանդ յորժամ ընդ մանուկ աղջկանց վասն զգաս-
տութեան ոք խօսեսցի, բազում խելս պարտի իմանալ:
Այս զայն եւեթ ջանասջիր ուսել հանել 'ի մտաց զսա իմ,
սա քոյն. Եթէ ասիցէ այս իմ է, սասասջիր. զո՞ր ասե-
ցես քո, զի ես ոչ գիտեմ՝ որ ինչ իմ ձեռակերտ իցէ.
դու զիա՞րդ ասիցես եթէ այս իմ է. 'ի քո 'ի ձեռս է
ամենայն, և դու իշխես բնաւի և ասես՝ թէ սա իմ,
սա քո: Ի նա իսկ հարկանիցես, թողուցուս զամե-
նայն. Զանեսանիցե՞ս զմանկունս իսկ. յորժամ 'ի ձե-
ռին ինչ ունիցիցք, և կամիցի հանել 'ի ձեռաց, և այլ
ինչ զոր ունիցիցք 'ի ձեռին՝ թող տամք և առնումք՝ թէ
քո է և այս և այն. նոյնպէս և առ կանայսն առնիցեմք,
զի ևս վատթարագոյն միտս քան զմանկտոյն ունին: Յոր-
ժամ ասիցէ՝ թէ այս իմ է, սասասջիր՝ ամենայն քո է
և ես քո եմ: Չեն ինչ այն ստորանաց բանք, այլ բա-
զում իմաստութեան. և այնպէս կարիցես ցածուցանել
զցասումնն և շիջուցանել զնախանձութիւնն. ստորանաց
բանք այն են, յորժամ յառութիւն ինչ գործեալ իցէ,
և առ աղէտին հպատակիցէ. այլ այսպիսի բանք մեծի
զգաստութեան և իմաստութեան են: Ասասջիր՝ թէ և
ես քո եմ, աղջիկ դու. քանզի Պաւղոս խրատեաց զիս,
եթէ այր իւրում մարմնոյն ոչ իշխէ, այլ կինն իւր. և

եթէ մարմնոյ խնամ չիշխիցեմ, որչափ ևս առաւել ընչիցն։ Իսկ ապա առնիցես դիւր մեզ։

Եթէ զայսպիսի բանս խօսեսցիս, չիջուցանես զխաբոյկն, յամօթ առնես զատաւորսդ, և քան զարծաթադինն ևս քաջ ածես յաղախնութիւն այսպիսի բանիւք. և այնու իսկ ուսուցանիցես չառնել երբէք, ոչ իմ, ոչ քո։ Իսկ մի երբէք յանուանէ կոչիցես զնա, այլ մեծարանօք և պատուով և շքով և փաղաքշանօք. դու զնա պատուեա, և չլինիցի կարօտ 'ի դրացեացն պատուոյ. քանզի զամենեսեան զնա քեզ մեծարոյ համարեսջիր. մի ապրում գեղոյ ակն դնիցես, և մի զոյլոց խնամութիւն յարգիցես, և այնպէս կարիցես ածել զնա զքեզ. և ապա զամենեսեան արհամարհիցէ, և քեզ միայն ակն դնիցէ։ Ուսուցանիջիր նմա զերկիւղն Այ, և իբրև յաղբերաց բղխիցեն բարութիւնքն, և լնուցուն զտունն։ Եթէ զանեղծականսն խնդրիցեմք, եղծականքս յորդառատ գայցեն մեզ. "Խնդրեցէք, ասէ, զարքայութիւնն Այ և զարդարութիւն, և այս ամենայն յաւելցի ձեզ"։

Որպիսի՞ ինչ կարգօք կարգել զորդիս այնպիսեացն համարիցիս, որպիսի՞ զծառայսն այնպիսի տերանց, որպիսի՞ զայլ ևս զամ մերձաւորսն. ո՞չ ապաքէն բիւրապատիկ բարութեամբք հասանիցէ և նոցա լնուլ։ Վասնզի բազում այն է, զի ծառայքն ըստ մտաց տերանց զնան, և նոցին բարոյիցն նմանել ցանկանան, և որպէս զիարդ ուսանիցեն՝ զնոյն խօսին, և 'ի նմին կարգս կան։ Եթէ այնպէս զանձինս և զնոսա յարդարիցեմք, և զգրոց ևս միտ դնիցեմք, բազում ինչ և անտի խրատիմք. և ապա կարող լինիցիմք հաճոյ լինել Այ, և զկեանս երկրիս առաքինութեամբ անցուցանել, և խոստացելոց բարեաց սիրելեաց նորա հասանել։ Որոց լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

"Որդիք, հնազանդ լերուք հօր և մօր ձերում 'ի Տէր, քանզի այն իսկ է արժանն։ Պատուեա զհայր քո և զմայր, որ է պատուիրան յառաջին օրինացն. զի քեզ բարի եղիցի և երկայնաւուրց իցես 'ի վերայ երկրի"։

Որպէս յորժամ մարմին ոք նկարիցէ, նախ զգլուխ և զպարանոց և ապա զոտսն գրէ, նոյնպէս և երանելին Պաւղոս խաղաց եկն յառաջ բանիւն։ Նախ զառնէ ասաց և ապա զկնոջէ՝ զերկրորդ սկզբանէն, և արդ գնաց եկն եհաս յերրորդն որ մանկտւոյն ինչ իրաւ իցէ։ Զի կնոջն այրն իշխէ, և մանկանցն կինն և այրն։ Նաւ արդ զինչ ասիցէ նոցա. "Որդիք, ասէ, հնազանդ լերուք հօր և մօր ձերում 'ի Տէր, զի այն իսկ է պատուիրան առաջին օրինացն"։ Զճառէ ինչ աստ զՔրիստոսէ, զի ոչ զբարձրագունեաց ինչ և զմեծամեծաց. քանզի տակաւին առ խակամիտս բարբառի. վասն որոյ և չափով իսկ կարգէ զխրատն, քանզի չէին բաւական զերկայն բանից զհետ երթալ տղայքն։ Վասն այնորիկ ոչ զարքայութենէն ճառէ և ոչ զերկնից, քանզի չէր իսկ տխեղծ հասակին զայնպիսի բանս լսել. այլ զոր ինչ տղայոցն միտք փափագէին զայն ասէ՝ թէ երկայնաւուրց լինիցիս։

Իսկ եթէ ոք քննիցէ թէ ընդէր վասն արքայութենէն չճառեաց, այլ զայն պատուիրան եդ առաջի որ յօրէնսն կայր, ասասցուք թէ տակաւին տղայագոյնք էին, և ինքն ճարտար գիտէր թէ յորժամ այրն և կինն յօրէնսն որ եղան հաստատուն կայցեն, չլինի բազում աշխատութեամբ գալ 'ի հնազանդութիւն որդւոցն։ Յորժամ իրքն սկիզբն և պատճառ առնուցուն, բարւոք և զօրագոյն և սրբեալ և յատակեալ ճանապարհաւ՝ ամենայն ինչ օրինօք յառաջ խաղայցէ բազում դիւրութեամբ. դժուարին զհիմն դնել է և սերտիւ կատարել, և այլն ոչ նոյնպէս դժուարին։ Վասն այնորիկ "որդիք, հնազանդ լերուք հօր և մօր ձերում 'ի Տէր"։ Ի Տէրն՝ ըստ Տեառն կամաց է. ա̄ծ, ասէ, այնպէս հրամայեաց։

Իսկ արդ զիա՞րդ, ասիցեն, եթէ անարժանս ինչ հրամանս տայցեն հարքն, հնազա՞նդ պարտ իցէ լինել: Ո՛չ նաւանդ թէ չտայցէ երբէք հայր անարգ հրամանս. բայց թէ և այնպէս ինչ լինիցի, սակայն և այնմ զգուշութիւն է՝ 'ի տէրն ասելով. այսինքն թէ որովք չհասանիցէ ո՛չ ընդդիմել զաւանդ: Որպէս զի թէ հեթանոս իցէ կամ հերձուածող, չէ արժանահաւան պարտ անսալ, քանզի չեն իրքն ըստ տեառն կամաց:

Իսկ զիա՞րդ ասիցէ առաջին պատուիրան զայն որ չէին առաջին. քանզի առաջին՝ մի սպանաներն և մի շնայն: Ոչ թէ ըստ կարգի ինչ առաջին ասէ զայս պատուիրան, այլ ըստ աւետեաց, զի ընդ այնց պատուիրանաց վարձք ինչ չկան, վասն զի 'ի չարեաց հեռանալոյ տուեալ. իսկ ընդ այսր քանզի վասն բարեաց գործոց և աւետեաց տուաւ, կայ վարձք: Իսկ տես զիարդ զօրաւորագոյն եդ զհիմն մաքրութեան Աստուածպաշտութեան՝ զհօր և զմօր պատիւն և զակնածութիւն: Յորժամ հեռացոյց 'ի չարեաց գործոց և մերձ էր 'ի բարիսն մտել, զայն նախ հրամայեաց զհօր և զմօր պատիւն. և զի յառաջ քան զամենայն ինչ կենացն նոցա յետ ոչ պատճառք եղեն, յիրաւի և նախնագոյն իսկ՝ զի և նոքա 'ի մերում պատուղն վայելիցեն, և ապա այլ ամենայն մարդիկ: Իսկ եթէ զայն ոչ շուրիցի, և ոչ առ արտաքինսն զաանիցի մեծարող: Որպէս խրատեաց որպէս պարտ էր վասն ամենայնի, ջրջի այսուհետև 'ի հարցն խրատ:

"Հարք, ասէ, մի զայրացուցանէք զորդիս ձեր. այլ սնուցանիջիք զնոսա խրատուն և խրատութեան տեառն": Զատոյց եթէ մի երկեցէք զնոսա. զի զայն ակնածայ իսկ բնութիւնն ճանաչէ, և աւելորդ էր այնմ օրէնս դնել: Իսկ զինչ ասիցէ. "Հարք, ասէ, մի զայրացուցանէք զորդիս ձեր". զոր բազումք առնեն տանել՝ անբաւական հանել, տարագիր արձակել և լոկ ծանրութեան 'ի մերայ դնել ոչ իբրև ազատաց, այլ իբրև ստրկաց: Ուստ այսորիկ ասէ՝ մի զայրացուցանէք զորդիս ձեր: Նոյն և զլուխ իսկ առնէ ամենայնի թէ զիարդ հնազանդ լինիցի, և 'ի սկզբանն և 'ի գլուխ հանէ զամենայն պատճառսն: Իսկ զոր օրինակ կենցի հնազանդ լինելոյ զայլն ցուցանէ պատճառս, քանզի և մեր իսկ առ նա խոսէ, զի սիրոյն բնութեամբ պատուիրէ ածիցէ զզինս զզօրեա, նոյնպէս և աստ 'ի նմանէ դնէ զպատճառսն:

րատ. յայն կրթեա զորդին, զայն խրատ տուր. այն մե-ծութիւն յաճախ է, նոյն շահաւոր։ Մի՛ խնդրեր թէ զիարդ կարիցես զնա հմուտ առնել արտաքին ուսմանցն, և փառաւոր և զարմանալի. այլ փոյթ յանձին կալջիր՝ թէ զիարդ կարիցես ուսուցանել զնա արհամարհել ըզ-փառս աշխարհիս, և ապա լինիցի առաւել փառաւոր և զարմանալի։ Եւ զայն աղքատին և մեծատան մարթի առնել, ոչ վարդապետաց և արուեստից, այլ յածեղէն պատգամաց։ Մի՛ խնդրեր՝ թէ զիարդ երկայնակեաց լի-նիցի, այլ թէ զիարդ կարիցէ անբաւին և անվախճա-նին արժանի լինել. զմեծամեծսն շնորհեսջիր նմա, և մի զփոքունս, ունկնդիր լիեալ Պաւղոսի, եթէ “Սնուցա-նիջիք զնոսա խրատու և իմաստութեամբ տեառն”. մի բանիբուն ջանայցես առնել, այլ զգաստասէր խրատե-ջիր. այն թէ չիցէ, չէ ինչ վնաս. և եթէ առանց այնր իցէ, ոչ ինչ օգուտ։

Ովւրագգի հնարք ճարտարութեան պիտոյ են, ոչ բանից՝ այլ արդեանց, և ոչ ճարտարախօսութեանց՝ այլ գործոց. այն է որ արքայութեանն առիթ լինիցի և բա-տոյգ բարութեան պարգևիչ։ Մի՛ զլեզուն սրիցես, այլ զմիտսն սրբեսջիր. ոչ եթէ 'ի խրատելոյ արգելուլ կա-միցիմ զայս առնելով, այլ այնմ միայն պարապելոյ կա-միմ լինել խափանիչ։ Եւ մի համարիցիս եթէ վանա-կանացն միայն իցեն պէտք գրոցն խրատուց. այլ մանա-ւանդ ամենեցունց իսկ որ յաշխարհիս վարս գալոց ի-ցեն։ Զոր օրինակ նաւին կազմած և նաւապետին ա-րուեստ և նաւավարացն համգամանք՝ ոչ այնչափ այնմ պիտոյ են որ 'ի ցամաքին նստիցի, որպէս այնմ որ ցանկ 'ի ծովուն նաւարկեալ շրջիցի, նոյնպէս և աշխարհակա-նին և վանականին. զի մին իբրև 'ի ցամաքի յապահով նստի յալեացն կոծանաց, զանխռով կեանս կեայ յան-քուլթի և յամրի 'ի մրրկաց. և միւսն ծովածուփ ալէ-կոծ 'ի համատարած ծովուն ընդ բազում հողմս և մըր-րիկս կռուի. թէպէտ և ինքն իսկ կարօտ չիցէ, սակայն պատրաստ պարտի լինել, զի զայլոց լեզուս կարճիցէ. որ-պէս զի որչափ և տեղեակ ոք իրաց աշխարհիս իցէ, նոյն-չափ պէտք են նմա և այսմ խրատու։

Եթէ յարքունիս իցէ ումն, անդ իսկ բազում հեթա-նոսք և փիլիսոփայք են, և բազում հպարտացեալք 'ի

թիւնս խոստացաւ Քրիստոս նոցա՝ այնչափ զրկեալք են, ուր զառոյգ պատիւն խոստացեալ է նոցա՝ մեծչափ ևս լինելոցի հանգիստ։

Կամիք զի և զաշխարհականաց օրինակ 'ի մէջ բերցուք։ Ոչ յոյժ չէ ինչ ոք այնպէս յայտնի. բայց թերևս իցեն ոմանք 'ի ծածուկ իսկ ցածունք, այլ չև ևս 'ի զըւ-խոստովր զգաստութիւնն հասեալ են. վասն այսորիկ յա-ռաջնոցն սրբոց բերից օրինակ 'ի մէջ։ Որ անուն էին որ կանայս ունէին և որդիս սնուցանէին, և չէին ինչ ընդ-հատ 'ի նոցանէ զորոց ասացաքն, և ոչ նուազագոյն քան զնոսա առաքինութիւնս ունէին։ Բայց այժմ չէք ոք վասն վաճառի հարկեն որ 'ի վերայ կայ, որպէս և սոյն իսկ երանելի ասէ։ Այլ արդ զորմէ կամիք զի ասասցուք, զԱդա՞մ թէ զԱբրահամ, եթէ զնորին որդի, եթէ զԹոռնն, եթէ զԹոռնին թոռանցն զՅովսէփայ։ Այլ թերևս կամիցիք զի 'ի մարգարէսն եկեսցուք. զՄով-սէ՞ս ասասցից, եթէ զԵսայեայ։ Այլ թէ ախորժէք, յԱբրահամ ձգեսցուք զասնն, զոր միշտ ամենեքեան մեզ յառաջ բերեն. ո՞չ, ասեն, կին ունէր և որդիս։ Այլ ես զնմանէ իսկ ասեմ ձեզ զորմէ դուքն առ մեզ։ Այս կին ունէր. ոչ զի կինն ունէր՝ զարմանալի էր. ինչս բա-զումս, ոչ զի ինչքն շատ էին՝ այնու ինչ հանճարեղ եղև ո՛չ. որդիս ծնաւ, ոչ զի որդւոցն հայր էր՝ երանեցաւ. երեք հարիւր և ութուտասն ընդածինս ունէր 'ի տան, ոչ վասն երեքհարիւր ութուտասն ծառայիցն զարմանալի էր և գովելի, այլ վասն առաքինութեան։ Կամիս ուսանել թէ իւ զարմանալի էր. աստուածսիրութեամբն, զի զինչսն չհամարէր ինչ, զի ցածուն և պարկեշտ էր։ Իւ իւիք փիլիսոփայ լինիցի, այսինքն իմաստասէր զգաստասէր. ո՞չ տարաքէն զինչս և զփառս արհամարհելով, և նախան-ձու և ամենայն կարեաց գեր 'ի վերոյ լինել։

Ոն առեալ ածցուք 'ի մէջ զնահապետն, մերկա-ցուք և ցուցցուք թէ իւ իւիք էր փիլիսոփայ։ Նախ զի չառ անկն իւրում աշխարհին, այլ ա՛յ. «Ել, ասէ, յերկ-րէ քումմէ և յազգէ քումմէ»։ և ել վաղվաղակի։ Ոչ սպրեցաւ ընդ տունն, չքեերեցաւ ընդ առաւրան և ընդ գեր-դաստանս. ել և չպատրեցաւ ընդ սէրս և ընդ ծնունդս և ընդ համբոյրս և ոչ այլ իւիք։ Այլ ոչ[1] այնու միայն

1 Պակասէր յօրինակն ոչ։

չպանդխտեցաւ, այլ և որ ինչ աւելին քան զամենայն ինչ է, զի քան զամենեսեան նա առաւել արհամարհեաց զփառս և զինչս. և պատերազմ եւս եհար, զիւր և զճակատս մղեաց, և աղաչեցաւ առնուլ յաւարէն և չկալաւ յանձին: Այլ նորուն որդին ոչ ընչիւք ինչ զարմանալի էր, այլ օտարասիրութեամբ. ոչ ուստերօք և դստերօք, այլ հնազանդութեամբ. ոչ ամուսնովն, այլ ամլութեամբ ամուսնոյն: Ջհամարէին ինչ զկեանս աշխարհիս. չէին կծկծալ զընչից և ոչ հարեա́լ 'ի կարասի:

Այլ արդ ասէ ասա ո՞ր ինչ 'ի տնկոց ազնուականագոյն է. ո՞չ ապաքէն որ անդստին 'ի բնէ սերտ և զօրագոյն իցէ, որ ոչ յանձրևաց և ոչ 'ի կարկտէ և ոչ 'ի հողմոյ բռնութենէ և ոչ 'ի պղտորեալ և 'ի զմծեալ[1] օդոյ վնասիցի. այլ մերկ լոկ առանց հայթհայթանաց կայցէ 'ի դաշտս կամ 'ի լերինս և զամենայն վնասակարսն արհամարհիցէ, ոչ որմոց և ցանկոց կարօտ իցէ: Նոյնպէս է և փիլիսոփոսն, այնպիսի է և այն մեծութիւն. չունի ինչ և զամենայն ինչ ունի, զամենայն ինչ ունի և չունի ինչ. զի[2] որմն ոչ 'ի ներքուստ է, այլ արտաքուստ. և ցանկն ոչ 'ի բնութենէ է, այլ 'ի բացուստ: Այս և 'ի մարմինս ո՞ր մարմին զօրագոյն իցէ. ո՞չ ապաքէն առողջն. որ ոչ 'ի քաղցոյ և ոչ 'ի լիութենէ և ոչ 'ի ցրտոյ և 'ի տօթո՛յ վնասիցի, եթէ որ յամենայնէն յայնմանէ կասիցէ, և մատակարարաց և ոստայնանկաց և որսորդաց և բժշկաց կարօտ իցէն, և հազիւ թէ այնպիսի հայթհայթանօք առողջ լինիցի: Որ արդարն և փիլիսոփոսն իցէ, նա իցէ առոյգ մեծատուն, որ ոչ իւիք կարօտ իցէ: Վասն այնորիկ և երանելին Պաւղոս ասէր՝ եթէ "Սնուցանիջիք զնոսա խրատու և իմաստութեամբ տեառն":

Այլ արդ մի արտաքին օրինակքն պատէք զնոսա, զմեծութենէն ասեմ և զփառաց: Յորժամ այն փլանիցի, անկանի ծառն և կոխան լինի. ոչ միայն չօգտի ինչ յանցելոց ժամանակացն, այլ և վնասիցի իսկ 'ի ցանկոյն. քանզի արգելուցու 'ի կրթելոյն 'ի ժուժկալ լինելոյ բռնութեան հողմոցն, և վաղվաղակի 'ի կործանումն տայցէ բերել մեզ: Այս ուրեմն 'ի վնաս է մեծութիւնն քան զօգուտ, զի խափան լինի կրթութեան անհարթ

1 Մխեալ 'ի մթեալ:

2 Յօրինակն ոչ:

ձանք իսկ 'ի վերուստ հանել զգործն և մեզ պատճառք յաղթութեան լինել, զի արժանի լիցուք խոստացելոց բարութեանց հասանել շնորհօք և մարդասիրութեամբ միածնի նորա։ Ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ

"Ծառայք հնազանդ լերուք տերանց ձերոց մարմնաւորաց ահիւ և դողութեամբ և միամտութեամբ սրտից ձերոց իբրև Քրիստոսի։ Մի առ աչօք աչառել, մի առ տակաւ պատրաստ լինել իբրև մարդահաճոյք. այլ իբրև ծառայք Քրիստոսի առնել զկամս Աստուծոյ սրտի մտօք. խնամով ծառայեցէք իբրև Տեառն և մի իբրև մարդկան։ Գիտասջիք զի իւրաքանչիւր որ զինչ և գործեսցէ, ընդունի 'ի Տեառնէ եթէ տէր իցէ և եթէ ծառայ"։

Ոչ միայն աստ և կնոջ և որդւոց, այլ և ծառայից առաքինութեան վճարէ ինչ 'ի հաստատութիւն և 'ի շինութիւն տանն։ Աստ այնուհետև երանելին Պաւղոս և ոչ զայն կարգէ արհամարհեաց. այլ զայս և յայն, թէպէտ և յետոյ, սակայն զայս, քանզի աստիճանն իսկ յետին է։ Ընդ գլուխ ինչ և առ նոսա ասէ ոչ իբրև ծառայս, այլ իբրև առ կատարեալս. զի ոչ աստէն խոստանայ նոցա աւետիս, այլ յայնմ աշխարհի. "Գիտասջիք, ասէ, զի իւրաքանչիւր ոք զինչ և գործէ զբարի կամ զչար, զնոյն և ընդունի 'ի Տեառնէ"։ Եւ վարդապետի իսկ 'ի զգաստութիւն ածէ. թէպէտ և պատուով քան զորդիսն նոսա ցածագոյնք իցեն, այլ մտօք առաւելագոյն քան զնոսա։

"Ծառայք, ասէ, հնազանդ լերուք տերանց ձերոց մարմնաւորաց"։ Եթափեցոյց վարդապետի զօրանալ միասին և մխիթարեաց։ Ո՛վ, ասէ, սատահակիցես զի խոնարհագոյն քան զկնոջ և զորդւոց ունիս անուն. մարմնաւոր միայն է, ասէ, ծառայութիւնն, ժամանակեան ևեթ տէրութիւնն. և որ ինչ մարմնաւոր իցէ, ժամանակաւոր և անցաւոր իցէ։

մարդկան. բեր ցոյց վաղվաղակի զքո ուղղութիւն թէ չիցէ 'ի Հարկէ: Որպէս զոր որ յայլմէ ըմպեալ իցէ, Հաւանեցուցանէ և ուսուցանէ յաշորդօքն առնել զուղղութիւն և խրատ կամօքն: Վասնզի որ զապտակն 'ի ծնօտն ածիցէ, ոչ ըստ մտացն այնորիկ որ զապտակն առնուցու՝ գայ յայն, այլ յիւրմէ չարութենէ. յայն սակս ասէ թէ "Ա՛ստ ևնս և զիրուն,,. զի ցուցանիցէ թէ և յառաջնումն ոչ ակնածեալ ինչ Համբեր: Օ՛ր և որ յօժարութեամբ ըմպանաց ինչ Համբերիցէ, և որ ինչ չիցէ իւր՝ զայն իւր առնիցէ, զապտակն 'ի ծնօտն ածելոյ առեալ, ոչ միայն Համբերելոյն՝ զի Համբերեսցէ թերևս վասն երկիւղի ինչ կարծիցի, այլ զի յօժարութեամբ զիրուն մատուցանիցէ, այն է գործ առաքինութեան. և յայտ առնէ թէ և առաջնումն վասն զգաստութեան տարաւ: Նոյնպիսի ինչ միտս և դու ցուցանիցես եթէ կամաւ և ոչ ակնածեալ Հարկանես զծառայութիւնն: Այս ուրեմն մարդահաճոյն և սուտակասպաս չէ ծառայ Քրիստոսի, և ոչ ծառայն Քրիստոսի մարդահաճոյ և սուտակասպաս: Ո՞ր ծառայ ա̄յ կամիցի մարդահաճոյ լինել, և կամ ո՞ որ ծառայ մարդկան կարիցէ ա̄յ Հաճոյ լինել:

"Սրտի միօք, ասէ, և խնամով ծառայեցէք,,: Վասն զի մարթի միամտութեամբ ծառայել և ոչ խարդախութեամբ, բայց ոչ ամենայն զօրութեամբ, այլ զՀարկն ձեր վճարել. վասն այնորիկ ասէ թէ յօժարութեամբ և մի 'ի Հարկէ, կամօք և մի առ բռնութեան: Եթէ այնպէս ծառայիցես, չես ծառայ. եթէ կամաւ և խնամով և սրտի միօք վասն Քրիստոսի ծառայիցես, չես ստրուկ: Նոյնպիսի ծառայութիւն և Պօղոս որ ազատն էր՝ ծառայէր, և զայսոք բարձեալ ասէր եթէ "Ոչ զանձինս ինչ քարոզեմք, այլ զՔրիստոս Յիսուս տէր և զմեզ ծառայս ձեզ վասն Քրիստոսի,,: Տես զիարդ չզարշի 'ի ծառայութենէն: Օ՛ր որինակ յորմէ ինչք յափշտակեսցին, և այլ ևս յաւելուցու տայցէ աւարառուացն, ոչ 'ի զրկելոց Համարի է, այլ յառատաց. ոչ 'ի ըկելոց, այլ 'ի բարերարաց. և առատութեամբն ոչ ինքն ընդ նախատանօք մտանէ, այլ զնոսա 'ի նախատանս արկանէ. նոյնպէս և առ յօժարութեամբն ծառայել առատամիտ երևի. քանզի յայն եՀան՝ թէ մի առ Հարկի, այլ կամօք և վասն Քրիստոսի ծառայեսցեն:

և եր վասն եմուտ 'ի կեանս մարդկեղէնս, քանզի զի-տեմք զի բազումք իսկ հարցանեն զայսպիսի հարցուածս. եթէ ուսանել են կամիցին՝ ես ասեմ։ Ագահութիւն ծնաւ զծառայութիւնս, անյագութիւն և յղփութիւն։ Զի Նոյի չգոյր ծառայ և ոչ առ Աբէլաւ և Սեթաւ։ Այլ թուի ինձ եթէ մեղքն ծնան զնոսա. այլ և 'ի հարց թշնամանաց սերեցաւ ծառայութիւնն։ Լուիցեն զայս որդիք՝ եթէ ծառայք արժանի են լինելոյ յորժամ առ հարս սաստահակ գտանիցին։ Որ զհայրն թշնամանիցէ, անձամբ զանձն մերժէ յայնպիսի ազնուականութենէ. ծր զհայրն անարգիցէ, չէ այնուհետև որդի։ Եթէ որ զհայրն թշնամանիցէ չէ որդի, որ զճշմարիտ հայրն մեր թշնամանիցէ՝ զիարդ կարիցէ լինել որդի. անկանիցի յազնուականութենէն, քանզի թշնամանեաց զբնու-թիւնն. ապա և պատերազմունք և կռիւք վարեցին 'ի գերութեան և արարին ծառայս։ Այն և առ Աբրա-համու ծառայք, այլ ոչ ինչ այնպէս առ ծառայս ունէր։ Տեսանե՞ս զի զամենայն ինչ զգլխոյն կախէ. զի և զկինն սիրեսցէ, և զորդիսն խրատու և խրատութեամբ տեառն սնուցանել, և վասն ծառայիցն պատուիրէ՝ թէ գիտա-ջիք զի ձեր և նոցա տէր գոյ յերկինս. որպէս թէ և դուք, ասէ, ծառայ իցէք, այնպէս մարդասէրք և նե-րողք լինիցիք։

Այլ եթէ կամիք նախ վասն ծառայիցն լսել, լուարուք որպէս վասն որդւոյն։ Ուսուցէք զնոսա լինել աստուա-ծայինս, և ապա ամենայն ինչ այնուհետև զայնր հետ գայցէ։ Իսկ արդ յորժամ 'ի թատերսն ոք ելանիցէ և 'ի բաղանիս երթայցէ, զամենայն ծառայսն ընդ իւր տա-րեալ տանի. և յորժամ յեկեղեցի գայցէ, չտանիցէ ինչ զումեքէ փոյթ գալ և լսել զԱյ պատգամսն։ Ո՞րպէս լսիցէ ծառայն յորժամ դու զայլովք իրօք զբաղեալ ի-ցես։ Գնեցեր զծառայն. հրաման տուր զի նախ զԱյ կրօնիցն հպատակ կացցէ, առ ծառայակիցս հեզ լինել, յառաքինութեանն փոյթ գտանել։ Քաղաք ող-ջոյն է իւրաքանչիւր ուրուք տունն, և իշխան առանձին իւրոյ տանն տնտեսաւորք։ Մեծատանց տունք յայտնի իսկ է թէ քաղաք են, քանզի գիւղս ունին և պաշտօ-նեայս և իշխանս. Նոյն ես և զամենայն տունս քա-ղաքաց համարիմ. քանզի և անդ իշխանութիւնք են. իշ-

թիւն յորդորէ և 'ի վերայ հաստուցանէ եթէ ընդ հը-մնուտ պատերազմաց է մեր կռիւ, և ոչ յախուռն ինչ և ընդվայր պարտ է կռուել, այլ բազում հնարիւք. նախ յարուեստէն և ապա 'ի բնութենէն խելամուտ լինել. և այնու յորդորիցէ զաշակերտսն. և ոչ 'ի վհատութի ածել կամի զզօրականսն, այլ զրգռել և մոլացուցանել, ասաց զմենքենայիցն և կազմեաց արթունս լինել: Այլ եթէ պատմէր միայն էր զզօրութիւնն նոցա և յայնմ ևեթ զբանն հանգուցանէր, ապա զոտցա ջիղս հարկա-նէր. իսկ եթէ նախ քան զայն և յետ այնորիկ յայտ առնէր եթէ մարթի այնպիսւոյն գերիվերոյ լինել, ապա յորդորէ առաւել և ոչ 'ի զանգիտութիւն ինչ ածէ: Զի թշնամեացն զօրութիւն որչափ ստոյգ պատմիցի 'ի մէնջ, ևս քան զևս զմերումն փութապնդոյս գործէ:

"Զի ոչ է, ասէ, մեզ մարտ ընդ արեան և ընդ մարմ-նոյ, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս և ընդ աշ-խարհակալս խաւարիս աշխարհիս այսորիկ և ընդ այսս պղծութեան որ 'ի ներքոյ երկնից այսորիկ": Այս և հան-դերձելոցն հաստուցմամբք յորդորեաց զնոսա: Ո քո՛րդ: Նշաց թէ սաստիկ են թշնամիքն, և յարեաց 'ի նոյն թէ 'ի մեծամեծաց ջանան զրկել զմեզ: Զորո՞ց: Զերկնից բա-րութեանցն յորոց վերայ կռիւն կայ. ոչ վասն ընչից և ոչ վասն փառաց է պատերազմ, այլ վասն մարգարտեաց զի մի 'ի գերութիւն վարեսցին: Վասն որոյ անհաշտ իսկ լինի թշնամութիւնն, և սաստիկ պատերազմն յորժամ վասն մեծամեծացն իցէ և մանաւանդ վասն երկնաւո-րացն: Ոչ զի նոքա այնմ հասանիցեն՝ ջանան յաղթել, այլ զի զմեզ վրիպեցուցանիցեն. որպէս զի յորժամ ա-սիցէ ոք՝ թէ գրաւականն յինչ ուխտ, յանկի թէ յայլ ինչ, և յինչ վասն է և վասն յինչ. Նոյնպէս և յորժամ ասիցէ յերկնաւորս, վասն երկնաւորացն է իմանալ զերկ-նաւորսն: Տես զիարդ զարթուցանէ զմեզ զզօրութիւն թշնամւոյն և արթունս առնէ, գիտելով չափ եթէ վասն մեծամեծացն են ճգնութիւնքն, վասն մեծամեծաց յաղ-թութիւնն. քանզի յերկնից փութայ արկանել զմեզ:

Իշխանութիւնս իմն և պետութիւնս ասէ և աշխար-հակալս խաւարի աշխարհիս այսորիկ: Զո՞րմէ խաւարէ ասիցէ, միթէ զգիշերոյն. և ոչ երբէք, այլ զչարութե-նէն, ըստ այնմ եթէ "Էիք երբեմն խաւար, արդ լոյս

էք 'ի տէր„. զբարեացն ասէ որ յաշխարհիս գործին, եթէ ոչ ես յառաջ խաղայցեն և ոչ յերկինս գնաս-ցեն և ոչ 'ի հանդերձեալ աշխարհին։ Աշխարհաւոր անուանէ զնոսա, ոչ եթէ զաշխարհս ունիցին, այլ զի-տեն զիրս ծնեալքն զբար գործն աշխարհ կոչել. որպէս յորժամ Քրիստոս ասիցէ թէ "Դուք չէք յաշխար-հէս, որպէս և ես չեմ յաշխարհէս„. միթէ չէին յաշ-խարհէ, ոչ մարմին զգեցեալ։ Այլ դարձեալ թէ "Աշ-խարհ զիս ատեայ, բայց զձեզ ոչ կարէ ատել„. դար-ձեալ զբար գործոյն կոչէ. կամ[1] աշխարհ զմարդոց հա-րացանէ, որոց մնացուածք դեռն տիրեացեն. "Ընդ այսս չարութեան, ասէ, երկնիս այսորիկ„։ Կոչեաց երկինս և զօդս կոչել. որպէս յորժամ ասիցէ թռչունս երկնից. և ոչ եթէ թռչունք յերկինս իցեն և կամ թէ երկնից տիրիցեն. և 'ի ցօղոյ երկնից, և ոչ եթէ ցօղն յերկնից տայցէ, այլ յօդոց խառնակելոց։ Իշխանութիւնս և պետութիւնս ասէ, որպէս յերկինս աթոռս և պետու-թիւնս և տէրութիւնս և իշխանութիւնս. այնպիսի ինչ կարգք ոչ գիտէ՝ և 'ի նոցա միջի իցեն։

"Վասն որոյ, ասէ, առէք զսպառազինութիւնն այ, զի կարող լինիջիք 'ի դիմի հարկանել յաւուրն չարի։ Այլ զամենայն ինչ մանր գործեալջիք„։ Որ չար դար-ձեալ զմարս ինչ աշխարհիս կոչէ. և աշխարհ չար՝ 'ի գործոց չարաց որ 'ի նմանէն լինիցին՝ անուանէ. այսինքն թէ համապազ վառեալջիք, կազմ գտանիջիք։ "Այլ զա-մենայն ինչ, ասէ, մանր գործեալջիք„. զկարիսն ասէ և զանդադարտ ցանկութիւնն որ զձեզն մաղուցն ամնիցեն։ Ոչ վայրապար գործել, այլ մանր իսկ գործել մինչև 'ի միջոյ բառնայցեն. այլ զի յետ և 'ի միջոյ բառնալոյն դուք հաստատուն կայցէք. Քանզի բազումք որ զյաղ-թութիւն յաղթեցին՝ դարձեալ 'ի պարտութիւն մատ-նեցան, զամենայն ինչ, ասէ, մանր գործեալջիք. ոչ զմին և զմիւսն ոչ, զի յետ յաղթութեանն և հաստատուն կալջիք պէտք են։ Պարտեցաւ անկաւ, այլ գուցէ դար-ձեալ ոգի բերիցէ և կանգնիցի 'ի գլորմանէն, եթէ չկայ-ցեմք կանգուն. իսկ եթէ զմեզ ես անկեալս տեսանի-ցէ, պատրաստ յառնէ. մինչ կանգուն կայցեմք, չէ-խէ յառնել. մինչ այսր անդր չմնասցեմք, չժտի յառնել։

1 Պակասէր յօրինակին կամ. յաւելաւ 'ի յունէն։

«Օգնեցարուք, ասէ, զպայպատասխանութիւնն մեծ»: Տեսանե՞ս զկարգ փարատէ զերկիւղն: Եթէ հնար իցէ իւրէ մանր գործել և հաստատութեան կալ և պարտել զզօրութիւն թշնամւոյն նենգող ամենայն դիւրաւ մնացանել, ապա ոչ արհաւիրք արկանէ, այլ զվհատութիւն թօթափէ: «Օր կարող լինիջիք, ասէ, 'ի դիմի հարկանել յաւուրն չարի»: Այս 'ի ժամանակէն տայ մխիթարութիւն: Սակաւ իմն ասէ զժամանակն, և պարտ է հաստատուն կալ. մի յետ յաղթելոյն սասանանիցիք: Եթէ պատերազմունք իցեն, և այնպիսի ձախաւո ընդդէմ յարգարեալ, եթէ անմարմնական իշխանութիւնք իցեն, եթէ աշխարհակալք[1] և այսք չարութեանն, զոր զիա՞րդ իցէ զի փախիցանայցեմ, յանհոգս գայունցես, յաղթութեր խաղալոյցես. զիա՞րդ անզէնք մարտեարց գամագիտ լինիցին:

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Զայս իւրաքանչիւր որ ընդ անձին խօսեսցի հանապազ յորժամ 'ի ցասմանէն նեղիցի և 'ի ցանկութենէն լլկիցի, յորժամ զվայրապար կեանս աշխարհիս խնդրիցէ: Լուիցէ երանելոյն Պաւղոսի որ ասէր՝ եթէ «Չէ մեզ մարտ ընդ արեան և ընդ մարմնոյ, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս»: Այն իսկ դժընդակ մարտ է քան զերևելիսս, սաստիկ պատերազմ: Բանզի ժամանակք են յորմէ հեռէ կացուի, և արդ ընդ իս և ս եկեալ մարտնչիցի, ասէ: Զայսպիսի բանս յաւէտ 'ի մտադիւանէն խօսին: Պարտ էր քեզ գոհանալ զմեզ, ով մարդ, զի այնպիսի ախոյանի կարող ես յաղթել եթէ կամիս. և դու զվատի և զյոսայ և զքեծի զօրականի բանս խօսիս: Պետաւսկն ունիմքիր շուրջանակի զքև և անհաւթեամբ պարապեցես. զի ոչ եթէ ընդ սատանայի միայն իցէ մեզ կռիւ, այլ ընդ նորա զօրութիւնն: Զիարդ մարտնչիցիմք ընդ խաւարին. յորժամ լոյս լինիցիմք: Որպէս կարօ իցեմք ընդ չարութեան. եթէ բարիք լինիցիմք: Բանզի բարութիւնն հակառակ է չարութեանն, և լոյսն հալածական առնէ զխաւար: Իսկ եթէ մեք և ս խաւար լինիցիմք, ոչ պարապէին 'ի նոցին

1 Յօրինակին աշխարհակալք. եղաւ ըստ այլ օրինակաց և ըստ յունին:

թեան»։ Այսպէս տեղեակ էր ամենայն կառուցն և չթաքչէր ինչ նորա 'ի նմանէ. «Եւ խորհուրդն, ասէ, անօրէնութեան արդէն իսկ զօրանայ». զի և ընդ մեզ իսկ պատերազմ տայ։ Յար նմին իսկ. «Հաստատեալ եմ, ասէ, եթէ ոչ հրեշտակք և ոչ հրեշտակապետք և ոչ իշխանութիւնք և ոչ պետութիւնք և ոչ զօրութիւնք և ոչ կայքս և ոչ հանդերձեալքն և ոչ այլ ինչ արարած կարեն մեկնել զմեզ 'ի սիրոյն Քրիստոսի»։ Չասաց թէ 'ի Քրիստոսէ, այլ 'ի սիրոյն Քրիստոսի. քանզի բազումք գոգցես եթէ միաբանիցեն ընդ Քրիստոսի, բայց սիրել չախորժիցեն զնա, ոչ միայն ուրանալ զնա չյօժարիցին, այլ և ոչ սակաւ սիրել։ Եթէ վերին զօրութիւնքն չկարիցեն թափել զնա 'ի սիրոյն Քրիստոսի, զի՞նչ այլ ինչ անտի խախտել կարիցէ։ Ոչ եթէ որպէս նոքա ինչ յայն մտաբերիցեն՝ զայն ասէ, այլ 'ի բանից կարգի. քանզի և ասէ իսկ՝ եթէ հաստատեալ գիտեմ։ Ապա ուրեմն ոչ կամէր, բայց սակայն կասկածէր 'ի խորամանկութեանց նորա. և յար նմին իսկ. «Երկնչիմ, ասէ, գուցէ որպէս օձն խաբեաց զԵւա խորամանկութեամբ, այնպէս ապականեսցին ինչ միտք ձեր 'ի միաբանութենէն Քրիստոսի»։ Մի՞թէ զանձնէ ինչ կասկածիցէ։ Այո, ասէ, քանզի զնոյն բան և վասն իւր 'ի կիր արկանէ. «Երկնչիմ, ասէ, գուցէ որ այլոցն քարոզեցի, ես ինքնին խոտան լինիցիմ»։ Եւ զիա՞րդ հաստատեալ իցեն եթէ չիցէ ինչ որ զմեզ մեկնեսցէ։ Տեսանես զի խոնարհութեան բանք են և զանձն 'ի չափու ունելոյ։ Եւ 'ի վաղուց իսկ հետէ յերկիւղս բնակէր, վասն որոյ և ասէր թէ «Չգիտեմ ինչ խիղճ զանձնէ». և դարձեալ թէ «Զընթացս իմ կատարեցի»։ Ապա ուրեմն ոչ նմա ինչ խափան լինէր սատանայ, այլ աշակերտացն։ Ընդէ՞ր։ Վասն զի նոցա ոչ միայն նա տիրէր, այլ և իւրեանց կամքն։ Ընդ իմն կարի տիրէ. մանաւանդ թէ և անդ իսկ չտիրէ, այլ 'ի ծուլութեանցն յորժամ չկայցեն անձանց պատկառ։ Եթէ զիւրն զամենայն չէր վճարեալ կամ առ վատութեան կամ վասն այլ ինչ իրիք, տիրէր[1] նմա. իսկ եթէ ինքն զամենայն առար և նոքա չհաւանէին, ապա ոչ նմա ինչ

1 Պակասէր յօրինակին տիրէր նմա. յաւելաւ 'ի յարմէն։

եթէ զնեղան կարիցեմք, զամենայն ինչ զհամբերութիւն, զքաղցրութիւն, զցանկութիւնն, զհպարտութիւնն, ամենեւին զամենայն կարիս. զի յորժամ անդր երթայցեմք, չգտանիցեմք մատնիչս իշխանութեանն զոր ետ մեզ նա. և այնպէս կարիցեմք համբերձելոց բարութեանցն հասանել: Եթէ յայն յոռութիւն ցուցանեմք, զմեծամեծսն ո՞ հաւատայցէ մեզ: Եթէ զյանցաւորն զանարգն զարհամարհեալ զորոյն կոխան չկարիցեմք կոխել, զիա՞րդ տայցէ մեզ զհայրենիսն հայր: Եթէ խշտրելոցն չլինիցիմք դէպ 'ի վերայ, զո՞ր համարձակութիւն ունիցիմք մտանել 'ի հայրենի տունն:

Ասէ աստ. եթէ որդի ունէիր, և նա թողոյր զհայատակ ծառայսն և 'ի թշնամիս հայրենի տանն հարկանէր և ընդ մշտատակար ծառայսն կցէր, և 'ի լիցս և 'ի յոյզս և 'ի տապեղուլունս դեգերէր և մինչև 'ի վախճան չթափէր անտի, ո՞չ ապաքէն տարագիր անբաժին հանէիր. յայտ իսկ է: Այնպէս և մեք եթէ թողուցումք զհաճոյսն զմեր վերակացուսն զհրեշտակս, և ընդ սատանայի շրջիցիմք, ո՞չ ապաքէն և մեք տարաբաժին ելանիցեմք 'ի ժառանգութենէն: Բայց քաւ և մի լիցի այն լինել, այլ յանձին կալցուք տալ ընդ նմա պատերազմ:

Եթէ թշնամութիւն ինչ ընդ ումեք կայցէ, եթէ 'ի ցասումն ոք գրգռիցէ, եթէ 'ի բարկութիւն ոք դրդիցի, զամենայն ժողովեսցէ և 'ի սատանայի գլուխն թափեսցէ: Ընդ 'ի դէպ է ցասումն, անդ պատշաճ բարկութիւն, անդ գովելի ոխակալութիւնն. որչափ այլուր վնասակար է ոխակալութիւնն, անդ օգտակար: Եթէ ոք հարկանիցէ զքեզ, նմա պահեսջիր և հանջիր զքէնս, և մի քաւմ անողորմին. ընդ նմա կալ թշնամութիւն և մի երբէք ջնջիցես: Այլ եթէ չմեղանչիցէ ինչ քեզ, սակայն և այնպէս ոխակալ լինիցիս ընդ նմա. զի զտէրն քո թշնամանեաց և զայս ընդդէմ գործոյ, և եղբարց քոց դաւդնէ, ցանկ մարտնչի, միշտ կռուի. և դու ցանկ թշնամի լեր, հանապազ պատերազմող, և մի երբէք հաշտիցիս. և այնպէս վատթարիցի և թօշնիցի և ձերբակալ լինիցի: Եթէ մեք գաղանիցեմք ընդ նմա, նա չիշխէ գաղանել, և եթէ մեք թուլամորթք լինիցիմք, նա քաջս գտանէ: Ոչ միայն եղբարցն մերոց և մեր կենաց և փրկու-

ձին հարեալ իցէ թէ կայցէ, զգոյշ լինիցի զուցէ անկա-
նիցի. և դարձեալ թէ կարող լինիցիք զամենայն ինչ
մանր գործել և հաստատուն կալ: Նչա ուրեմն ոչ ըղ-
ձայրապար ինչ կալոյ ասէ, այլ զանշարժն կալոյ. յո-
րում պատերազմողքն ևեթ հմուտ են թէ որպէս պարտ
է հաստատուն կալ: Եթէ մարտակցացն և մրցողաց նախ
զհաստատուն կալոյ պատուիրեն մարզիչքն և կրթիչք,
որչափ ևս առաւել 'ի պատերազմողացն և 'ի զօրակա-
նացն իրս: Հաստատուն կալ գովիցի որ ոչ զեռայցէ և
ոչ այսր անդր խուսափիցէ: Եւ քաջ նախ 'ի հաստա-
տուն կալոյն երևի. որպէս զի որ ոչ կան հաստատուն,
չեն քաջք, այլ լոյծք խեռնեշք և փախստականք. փափկա-
կեացն չկարէ կալ հաստատուն, և ոչ ոսկորայն և շուայ-
տողն և ընչասէրն, այլ խուսէ խուսափէ և այսր անդր
զեռայ: Որ 'ի կալն հաստատուն իցէ, իբրև հիմն ինչ
հաստատուն արկանէ կռուոյն զկալն:

“Զտեղի կալջիք, ասէ, պնդեալ զմէջս ձեր ճշմար-
տութեամբ„: Չասէ զայսմանէ ինչ գօտեաց, այլ զա-
մենայն ինչ իմանալեացն: Եւ տես զիարդ սաստ սաստ յա-
ռաջ մատուցեալ՝ նախ գօտեաւն պնդէ զմէջն զինուո-
րին: Զինչ իցէ: Զի զլուծութիւն և զմեղկութիւն
ցանկութեանցն պնդիցէ, զգետնաքարշ խորհուրդսն 'ի
վեր ամփոփիցէ գօտեաւն, զի մի ինչ խափան լինիցին
նմա հանդերձքն զգլխովքն պատատեալք, այլ զի կազմ
ոտիւք ընթանայցէ: “Զտեղի կալջիք, ասէ, պնդեալ
զմէջս ձեր ճշմարտութեամբ„: Որպէս նաւացն հաս-
տատութիւն հիմն նաւին է, նոյնպէս և մերոց անդա-
մոցն մէջքն հիմն են և 'ի վերայ նոցա շինեալ ամենայն,
որպէս և բժշկաց արուեստագէտքն ասեն: Զհիմն և
զհաստատութիւն մեր պնդէ գօտեաւն, ոչ զմէջն, այլ
զմիտսն: Եւ որպէս վերնոց և ներքնոց անդամոց հիմն
մէջքն են, նոյնպէս և իմանալեացն միտքն: Մշակք յոր-
ժամ վաստակիցին, իբրև 'ի հիմն ինչ զձեռան 'ի մէջսն
յեցուցանեն և ոգի առնուն. և զգօտիսն յայն սակա-
ծեն, զի պնդով ունիցի զհիմն մարմնոյն. և որք ընթա-
նայցեն, զգօտիսն պնդեն, և այնպէս յամենայն իրս մի-
ջոյն իմն կարի զգոյշ կան: Նոյնպէս և զմիտս ճշմար-
տութեան գօտեաւն պնդեսցուք: Որոց թէպէտ և ա-
մենեցուն, սակայն զինուորացն կարի պիտոյ են:

նանեայ առնուլ ևս քան զմարմնանայն, և ըմպելի հոգևոր ոչ ջուր, այլ ածեղէն բղխումն, որ և այն իսկ 'ի վիմէն ելանէ. և բաժակ, և յանապատի բնակեմք: Այլ որ-դարեւ այժմիկ իսկ ածեղէն երկիր[1] անապատ յառա-ջինսն Թեւէ քան զայն անապատ: Ընդէ՞ր, քանզի և այն անապատ սոսկալի էր, զի կարիճք և իժք ունէին' ընդ որ ոչ երթէք, ասէ, անց մարդ. այլ չէ և չէ իսկ չքա-ւոր 'ի պտղոյ անապատն իբրև այժմ զմարդկան բնու-Թիւն: Որչափ կարիճք, քանի՜ իժք ունին զայս անա-պատ, որչափ օձք, քանի՜ իժից ծնունդք, ընդ որոց մէջ այժմ շրջիցիմք: Այլ մի՜ ինչ զանգիտեսցուք. զի այսմ ելից ոչ Մովսէս զօրավար, այլ ինքնին Քրիստոս: Այլ զիա՞րդ: Զանցանիցեմն ընդ մեզ նոյն անցք եԹէ ոչ[2] ըղ-նոյն գործիցեմք, և ոչ զնոյն պատիժս կրեմք: Ընդէ՞ր տապաստ անկան նոքա յանապատին: Քանզի արհա-մարհեցին զերկիրն ցանկալի. զի արհամարհեցին ընդ որ զարմանալիսն' յուլուԹեամբն, զի ոչ կամեցան ձգունս յանձն առնուլ վասն երկրին: Այլ մի՜ մեք արհամարհես-ցուք զերկինս. և այն իսկ է արհամարհուԹիւն, զի և առ մեզ եկն պտուղ յերկնից ոչ ըմպակաւ ողկոյզ բար-ձեալ, այլ հոգւոյն առհաւատչեայ երկնից առաքինու-Թիւնն յոր Պաւղոս յորդորէ[3]: Այլ այլ ևս զարմանա-լի նշանակք: Ոչ Քաղեբ Յեփոնեայ և ոչ Յեսու որ-դի Նաւեայ բերին զայնպիսի պտուղս. այլ Յիսուս կամաւ հօրն գԹուԹեանց, ճշմարիտ ած֊ոյ որդին եբեր զամենայն առաքինուԹիւնս, զամենայն պտուղս անտի այսր իջոյց, զորհնուԹիւնս երկնաւորս. զոր քերոբէք օրհնեն, և մեզ հրամայեաց երգել զսուրբ սուրբ սուրբն ասել, զհրեշտակաց վարս, զշամբուշանաւ և զխմոել ընդ զուգուԹեամբ' զայն և աստ տնկեաց. և զևս լաւագոյնն' զչցանկանալն ընչից և փառաց և այլոց իրաց որ 'ի նոցա միջի պաշտին' և աստ 'ի մեզ տնկեաց: Ընմանք են, և զայն ևս մեզ շնորհեաց. և այսուհետև չէ մահ մահ, այլ քուն. և լուր նմին իսկ. "Ղազար, ասէ, բարեկամ մեր ննջեաց": Տեսէ՞ր զպտուղս վերնոյն Երուսաղէմի:

Այլ որ զարմանալին է, զի պատերազմ չև ևս է մեւալ,

[1] Յօրինակին մերում երկիր:

[2] Գրեկասէր յօրինակին ոչ. յա-ւելաւ 'ի յունէն:

[3] Յոյնն յորդորէ և ամենայն առա-քելոյն գրում պրոմանաւն մայնիւն: Ու-րիշդէ:

այլ նախ քան զաւետիսն այս ամենայն շնորհեցաւ մեզ։ Նորա թէպէտ և մահն յերկիրն աւետեաց, սակայն խանձ էին. իսկ եթէ կամեցեալ էր անսալ նմա, առանց զինուց և պատերազմաց առնուլին զամենայն քաղաքն. քանզի զԱլարիկոսն 'ի պարտս անցանելոյ կերպարանօք և ոչ պատերազմողաց օրինակաւ առին։ Նոյն մեք ոչ պատերազմիւք յետ մեռանելոյ յերկինս պարգևաց, այսինքն է յերկինս. այլ մինչդեռ եմք յանապատս աստէն յաշխարհի, ըստ այնմ թէ «Որ եմուտ 'ի հանգիստն նորա, հանգեաւ 'ի գործոցն իւրոց, որպէս և յիւրոցն Ած»։

## ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

Այլ արդ մի ձանձրասցուք զբարիս գործել, զի 'ի ժամանակի իւրում հնձեսցուք առանց լքանելոյ։ Այլ եւ զիարդ որպէս զնոսայն տարաւ, նոյնպէս և զմեզ անդր տանի։ Զմանանայն ասէր յանապատին եթէ որ լի-շատն էառ՝ չաւելեաւ, և որ զսակաւն՝ ոչ ինչ նուազեաց։ Զնոյն հրաման և մեք առաք չգանձել յերկրի. և եթէ գանձիցեմք՝ ոչ ևս որդն երևելի ապականեսցէ իբրև զմանանայն, այլ որդն անմահական ծախիցէ. և ոչ արևս այս նեխեսցէ իբրև զմանանայն, այլ արդարութեանն արեգակն։ Նոքա ամենեքին հնարեսցուք զի մի որդանն կերակուր պատրաստեսցուք զանձինս։ «Որ բազումն էառ, ասէ, ոչ աւելեաւ»։ Նոյնպէս և առ մեզ ցանկ գործի. քանզի ամենեքեան զմի չափ լնումք զդրվայնի, և աւելորդն հոգոց յաւելուած է։ Զոր և այժմ աւանդելոց էր եթէ «Շատ են աւուրն կարիք իւր»։ զնոյն անդուստ 'ի բնէ խրատեաց, սակայն և այնպէս չկալան։

Այլ մեք մի լիցուք անյագք և մի ագահաւորք, և մի տուեալս գեղեցիկս խնդրեսցուք. քանզի ճանապարհորդք եմք և ոչ բնակաւորք։ Որպէս զի որ գնասցէ թէ աշխարհիս կեանք ճանապարհ են և զինուորութիւն, զոր բանակն և ճամբար կոչեն, չխնդրէ շինուածս գեղեցիկս։ Ասէ տես ո՞ր ոք թէպէտ և կարի մեծատուն իցէ, կամիցի 'ի բանակին տունս գեղեցիկս շինել. ո՛չ ապաքէն ծաղր հայցէ, և թշնամեացն շինիցէ և ոչ անձին։ Արդ ուրեմն թէ արթունք իցեմք, ոչ ինչ 'ի զի-

նուաղութէ և 'ի բանսակէ ընդհատ են աշխարհի կեանք ։ Վասն որոյ աղաչեմ զամենայն հնարս հնարեսցուք, զի մի՛ աստէն ինչ գանձիցեմք. և եթէ գայցէ գողն, վաղվաղակի 'ի վերայ յառնիցեմք. "Արթուն կացէք, ասէ, զի ոչ գիտէք զժամանակն յորում գողն գայցէ" ։ Զմահն գող կոչէ. մինչև եկեալ իցէ, զամենայնն 'ի մեր գաւառն տարաքեսցուք ։ Այլ մեք աստ պանդխտապէս կայցեմք, զի կարասցուք գեր 'ի վերոյ լինել թշնամեացն ։ Այսու լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ

"Զտեղի կալջիք պնդեալ զմէջս ձեր ճշմարտութեամբ, և զգեցարուք զզրահս արդարութեան, և ագուցեալք յոտս զպատրաստութիւն աւետարանին խաղաղութեան ։ Այլ 'ի վերայ ամենայնի առէք զվահանն հաւատոց, որով կարող լինիջիք զամենայն նետս մխոյ չարին շիջուցանել. և դիք զսաղաւարտ փրկութեան և զսուսեր հոգւոյն որ է բանն այ" ։

Պնդեալ, ասէ, զմէջս ձեր ճշմարտութեամբ ։ Զինչ իցէ՝ ասացաք յառաջնումն իսկ որ նախ քան զայս ճառ էր, թէ որպէս պատրաստ իցէ կազմ առ ընթացսն գնանել, զի մի՛ ինչ իցէ որ խափան լինիցի ։ "Այլ զգեցեալք, ասէ, զզրահս արդարութեան" ։ Զինչ իցէ ։ Որպէս զրահք՝ անմուր 'ի խոցելոյ են, նոյնպէս և արդարութիւն ։ Իսկ արդարութիւն աստ զբնաւ առաքինի վարսն կոչէ, զայնպիսին որում ոչն ոք կարէ բիծ դնել. յորս բազումք նետաձգք լինին և հարկանել ոչ ոք կարէ, նա և ոչ ինքն իսկ բանսարկուն ։ Որպէս զի ասիցէ ոք՝ թէ զիրկս տարածեսցուք ընդ առաջ արդարութեան ինչ իրաց. զոյր և Քրիստոս ասէր՝ թէ "Երանի որ քաղ-

ցեալ և ծառայք իցեն արդարութեան, զի նոքա յա-
գեցցեն »։ Նոյնպիսին է հատոր իբրև զբանսն որ ոչն եւ-
բէք բարկանայցէ։

« Այլ ագուցեալք յոտս զպատրաստութիւն աւետա-
րանին խաղաղութեան »։ Տես զկարգ յաջողագոյնս ա-
ռէ։ Բարուքն իմն ձայնէ զզինուցն զարշաւարացն։ Այժմ
զայն ինչ ասիցէ՝ թէ և ոտիւք անգամ պատրաստ լինի-
ցիք կազմել զաւետարանին ճանապարհն. կամ թէ որ
չիցէ, զանձինս իսկ ասիցէ պատրաստ առնել ելից ու-
խարհիս։ Այլ արդ զինչ իցէ պատրաստութիւն աւե-
տարանին, եթէ ոչ վարք պիտանիք. զոր և մարգարէն
ասէր՝ թէ « Պատրաստութեան սրտից նոցա անսայ
ունկն քո ». և զայն իսկ ասէ պատրաստութիւն աւե-
տարանին խաղաղութեան։ Նմանագոյնս իսկ ձայնեաց.
քանզի զպատերազմաց և զմարտից յուշ առնէ, ցուցա-
նէ թէ ընդ դևս պարտ է կռուել։ Քանզի աւետարանն
խաղաղութեան է, և այն պատերազմ զայլ պատերազմ
մղէ որ ընդ այն իցէ։ Եթէ ընդ սատանայի պատերազմ
տայցեմք, ընդ այլ խաղաղութիւն ունիցիմք։ Այլ արդ
մի ինչ զանգիտիցեմ, սիրելի, քանզի աւետիք են, և
յաղթութիւնն արդէն իսկ գործեցաւ։

« Ի վերայ ամենայնի, ասէ, առէք զվահանն հաւա-
տոց »։ Հաւատս աստ ոչ զգիտութիւն կոչէ. եթէ զայն
ինչ ասէր, ոչ եթէ յետոյ կարգէր, այլ առաջ նշանա-
գործիցէին։ Այլ նմանագոյնս իսկ զհաւատոյն վահան ա-
նուանէ. զոր օրինակ վահանն առաջի ամենայն մար-
նոյն կայ իբրև պարիսպ, նոյնպէս և հաւատքն ընդդէմ
ամենայնի կան։ « Որով կարող լինիջիք, ասէ, զնետս
մուխս չարին շիջուցանել »։ Չիք ինչ որ զամագին այնմ
վահանի լինիցի։ Այլ լուր Պետրոսի իսկ որ ասէր ցա-
շակերտսն. « Եթէ ունիցիք հաւատս քան զհատ մա-
նանխոյ, ասասջիք լերինս այսմիկ փոխեաց աստի և փո-
խեսցի »։ Ո՛ քանդ ունիցիմք հաւատս։ Եթէ ամենայ-
նի այնմիկ ուղղութիւնս գործիցեմք։ Եւս զփարձա-
թիւնսն և զանպատեհ ցանկութիւնսն ասէ, և զչա-
ղէնս՝ քանզի այնպէս իմն էին ցանկութիւնքն։ Եթէ
դիւաց հրամանն տան հաւատքն, որչափ ևս առաւել ա-
ռոցն կարեաց։ « Այլ դիք զսաղաւարտն փրկութեան »։
Մենևէին ամփոփուցանէ զնետս։ « Այլ զսուսեր հոգւոյն

որ է բանն Այ„։ Կամ [1] զՀոգին ասէ, և կամ Հոգևոր սրոյն. քանզի նովաւ կոտորին ամենայն մեղանչականք և գլուխ իսկ վիշապին, և մեք նովին կտրեսցուք ընկեցուք զամենայն չարս 'ի բաց։

"Ամենայն աղօթիւք և խնդրուածովք առնիջիք աղօթս յամենայն ժամ Հոգւով. և 'ի նոյն տքնիջիք ամենայն կանխութեամբ և խնդրուածովք 'ի վերայ ամենայն սրբոց և 'ի վերայ իմ. զի ինձ տացի բան 'ի բանալ բերանոյ իմոյ համարձակութեամբ ցուցանել զխորհուրդս աւետարանին, վասն որոյ ես բարեխօսեմ 'ի կապանս, զի 'ի նմին համարձակեցայց որպէս և պարտ իցէ ինձ խօսել„։ Որ օրինակ բանն Այ առ ամենայն զօրաւոր է, նոյնպէս և որ զշնորհս Հոգևորս առնիցի։ "Ասնզի կենդանի է, ասէ, բանն Այ և ազդու և հատու քան զամենայն սուր երկսայրի„։ Եւ արդ տես զիմաստութիւն երանելւոյս։ Սառեաց զնոսա ամենայն զգուշութեամբ, և արդ զի՞նչ պիտոյ իցէ. զթագաւորն իսկ կոչէ և աղաչէ ձեռնտու լինել. "Ամենայն, ասէ, աղօթիւք և խնդրուածովք առնիջիք աղօթս Հոգւով և 'ի նոյն տքնեսջիք„։ Այն իսկ պիտոյ է վառելոյն որ առընթեր կայցէ թագաւորին՝ արթուն և զուարթուն լինել։ "Ամենայն կանխութեամբ և սրբութեամբ և խնդրուածովք 'ի վերայ ամենայն սրբոց և 'ի վերայ իմ. զի ինձ տացի բան 'ի բանալ բերանոյ իմոյ„։ Զի՞նչ խօսիս, ով Պաւղոս երանելի. և արդ աշակերտօքն ի՞նչ կարօտ իցես։ Եւ բարւոք ասաց՝ 'ի բանալ բերանոյ իմոյ. քանզի ոչ եթէ յառաջագոյն ինչ զմտաւ ածէր, այլ որպէս և Քրիստոսն դնէր բանս 'ի բերան, ըստ այնմ թէ "Յորժամ մատնեսցեն զձեզ, մի հոգայցէք զիարդ կամ զինչ խօսիցիք. զի տացի ձեզ 'ի ժամուն յայնմիկ զինչ խօսիցիք„։ Այսպէս զամենայն ինչ հաւատովք գործէր, զընաւ շնորհօք։ "Համարձակութբ ցուցանել, ասէ, զխորհուրդս աւետարանին„։ Որպէս պատգամաւորի արարից, ասէ, թէ զիարդ պատրաստ իցէ կրել զշղթայսս։ Եւ այլովք ինչ կարօտ իցես։ Այո, ասէ. քանզի Պետրոս 'ի շղթայս էր, և անդէն աղօթք լինէին վասն նորա։ "Վասն որոյ բարեխօսեմ, ասէ, 'ի

1 Յօրինակին պակասէր կամ զՀոգին ասէ. յաւելաւ 'ի յունէն։

քանզի ոտքն են յառաջագոյն կենաց նշանակիչ, վասն այնորիկ ասէպ պատուիրէ՝ եթէ զգոյշ եղերուք որպէս ճշմարտիւ գնայցէք: Զվարուցն ճառէ. նմին իրի իսկ ասէ թէ արժանի աւետարանին գործ գործեսցուք և վարս պարկեշտս ցուցանիցեմք: Խաղաղութիւն աւետարանեցաւ, հորդեցէք աւետեացն ճանապարհս. այս թէ դարձեալ 'ի թշնամութեան կայցէք, ոչ ևս այնուհետև պատրաստութիւն խաղաղութեան: Պատրաստք էք, մի հեղգայցէք ինչ ընթանալ 'ի խաղաղութեան. որպէս պատրաստք եղերուք 'ի խաղաղութեանն և 'ի հաւատս, նոյնպէս հաստատուն կայցէք:

Վահան են հաւատք[1]. նախ վահանն առնու զնետ ձիգս թշնամեացն, և զայլ ևս զէնն անվնաս պահէ. իսկ եթէ իբրև հաւատքն ուղիղք իցեն, նա և վարքն ևս պարկեշտք լինիցին, ապա բազում ինչ անվնաս մնայցէ: Յաճախ խօսի զհաւատոցն և զյուսոյ, մանաւանդ յերկայեցուոց թղթին: Հաւատացէք, ասէ, հանդերձելոց բարութեանցն, և չիցէ ինչ որ վնասիցի: Ի նեղութիս և 'ի վտանգս զյոյսն առաջի դնիցիր և զհաւատս, և զայլ ամենայն առանց վնասու պահիցես: "Հաւատալ պարտի, ասէ, որ մերձենայցէ առ ա̄ծ թէ գոյ ա̄ծ. և որ խնդրեսցեն զնա, տայ վարձուցն հատուցումն": Հաւատք վահան են. եթէ ճարտարութիւնք ինչ և խորհուրդք և խնդրոց պահանջութիւնք 'ի ներքս մտանիցեն, չլինիցի այնուհետև վահան, այլ խափանիչ: Այնպիսի ինչ լինիցին հաւատքն զի ծածկիցեն և խաղաղիցեն զամենայն. մի կարճ, մի կճպետ, գուցէ կամ ոտքն մերկանայցեն կամ այլ ինչ անդամն. այլ զի կշիռ ըստ չափու հասակին իցէ վահանն: Բազում երկմտութիւնք զմտօքն դողացուցանեն, ազգի ազգի վարանք, պէսպէս տարակոյսք. այլ զամենայն զայն ճշմարիտ հաւատքն ցածուցանեն: Բազում ինչ արկանէ և սատանայ 'ի միտսն, բորբոքէ զսիրտն և յերկմտութիւն ձգէ. որպէս յորժամ ասիցեն ոմանք թէ գուցէ յարութիւն թէ չգուցէ, իցե՞ն հատուցմունք թէ չիցեն: Հաւատքն, ասէ, շիջուցանեն զհրեղէն նետս թշնամոյն: Սաղաւարտ փրկութիւնն. հան ընդդէմ ախոյեան զհաւատս հանդեր-

[1] Պակասէր յօրինակին Վահան են հաւատք. յաւելաւ 'ի յունէն:

ձեւլոց բարութեանցն, և անհետ լինիցի և անզօրէն զա-
նայցեն ամենայն նեղքն : Այս լուր Պաւղոսի . " Խնդի-
րեմ, ասէ, թէ չեն արժանի չարչարանք ժամանակիս
հանդերձելոց փառացն որ յայտնելոց են ՚ի մեզ ,, : Տե-
սանես քանի նեղս հրեղէնս չքնչացանէին յայնժամ
արդարքն : Եթէ չհամարիցիս նեղս զխորովել ալեաց
նահատակեալին յորժամ զորդին պատարագս մատուցա-
նէր . և այլ արդարքն, որ զամենայն խալ նեղս նորա չք-
նչացանէին : Եթէ խորհուրդք պատերազմիցին, զհա-
ւատոյն ախոյեան ընդդէմ արձակեսջիր . և եթէ անպա-
տեհ ցանկութիւնք, զնոյն ՚ի կիր արկցուք . և եթէ վտա-
ւանգք և աշխատութիւնք, ՚ի նոյն յեցեալ համբերեսցուք :
Ամենայն զինուցն նա է պահպանութիւն . եթէ զնա ըմ-
բռնեսցուք, և այն ևս վաղվաղակի արասցուք :

" Ի վերայ ամենայնի, ասէ, առէք զվահանն հաւա-
տոց ,, : Ոչինչ իցէ ՚ի վերայ ամենայնին : Ի ձշմարտու-
թեանն և յարդարութեանն և պատրաստութեան ա-
ւետարանին . յամենայնի իսկ, ասէ, նա պիտոյ է : Այս
և զաղաղաւարտն փրկութեան զնել ՚ի գլուխ՝ վասն նո-
րին յարեաց ՚ի նոյն, զի ամենեքին զգուշացեալ անխա-
ցեալ զխբրաւ լինիցի զերծանել ՚ի վտանգէ : Որ օրի-
նակ սաղաւարտն յամենայն կողմանց ամրածածուկ պա-
հէ զգլուխն և չտայ մնասակար ինչ իմիք ուստեք ՚ի ներքս
մտանել, այլ ողջ և անարատ պահեսցէ, նոյնպէս և հա-
ւատքն փոխանակ ընդ վահանի և ընդ սաղաւարտի փրկ-
կութեան լինին : Եթէ վաղվաղակի չքնչացանեմք զնետս
նորա, և զապրեցուցիչ խորհուրդսն ունիցիմք՝ որ առող-
ջացուցին և իշխանին մերոյ չտայցեն մնասել յումեքէ : Ե-
թէ մնասակար խորհուրդքն չքնչացանիցին, որ լինիցին
մնասակարք՝ կարող են ապրեցուցանել զմեզ, և իբրև
զսաղաւարտ զգլխոյն պետին և իշխանին մերոյ պահե-
լին, զմտօքն ասեմ : Այս ոչ այսչափ միայն, այլ և ըղ-
սուսեր ևս հոգւոյն ընդունիցիմք . և այնուհետև ոչ
միայն նետից զգուշանայցեմք, այլ և զթշնամոյ ևս խո-
ցոտիցեմք : Ո՛ր օգի որ զանձին ինչ խիղձ չգիտիցէ, ան-
շարժ կայ ընդդէմ պատերազմող թշնամեացն, և պատ-
ռեսցէ զզրահս նորա այնու սուսերաւ՝ որ քակեաց Պաւ-
ղոս զամուրս նորա և գերեաց, ընդ մէջ կտրեաց ըղ-
միջնորմն որ է, ասէ, բանն այ . կամ զհրաման ինչ ասէ,

և կամ թէ յանուն Յիսուսի Քրիստոսի համբերիք զգօրութիւն թշնամեացն: Այլ թէ զհրամանս նորա կատարիցեմք, այնու իսկ ազատանիցեմք զօձն կամակոր:

Այլ զի ասաց թէ կարող լինիցիք զնետսն հրեղէնս սատանայի շիջուցանել, զի մի այն հպարտացուցանէ զնոսա՝ ցուցանէ թէ ամենեւին պարտ է յոյժ աղաչաւոր լինել: "Ամենայն, ասէ, աղօթիւք և խնդրուածովք": Այլ թէ այս լինիցի, ամենայն վճարի: Յորժամ յաղօթս կայցես, ասէ, մի միայն 'ի վերայ անձին աղաչեսցես. քանզի և ասէ իսկ՝ եթէ "Ի վերայ ամենայն սրբոց և 'ի վերայ իմ". և այսպէս ածիցես յաղերս զԱծ: "Յամենայն ժամ, ասէ, առնիջիք աղօթս. աղօթիւք և խնդրուածովք հոգւով": Մի, ասէ, ժամանակս ընտրիցես, և մի, ասէ, զաւուրս. այլ յամենայն ժամ անձանձրոյթ աղօթս մատուցանիցես: Այլ թէ չիցէ լուեալ զայրւոյն զիարդ յամելովն առ, կամ զբարեկամին որ 'ի մէջ գիշերին ժամելովն հաւանեցոյց, կամ զկինն Քանանացին որ ստէպ աղաչանօքն էած 'ի հաւան զտէրն. ամենեքին նոքա յամելովն վճարեցին: "Աղօթս առնիջիք, ասէ, յամենայն ժամ հոգւով". այսինքն եթէ ըստ Այ կամացն խնդրեսցուք. մի ինչ աշխարհական, մի ինչ երկրաւոր:

Այլ ոչ միայն անդադար աղօթիւն պէտք են, այլ և տքնութեան. "Այլ 'ի նոյն տքնեսջիք", ասէ: Այլ թէ ըղհսկմանէ ասիցէ և եթէ զհոգւոցն արթնութենէ, զերկոսեան ընդունիմ: Տեսանե՞ս զիարդ էր արթուն քանանացին. թէպէտ և 'ի բաց մերժեաց և չետ պատասխանի Քրիստոս և շուն կոչէր, սակայն տակաւին ժտէր. "Այո, ասէ, տէր, և շունք ուտեն 'ի փշրանաց որ անկանիցին 'ի սեղանոյ տեառն իւրեանց": Այլ չեկաց 'ի բաց մինչև էառ զոր խնդրեացն: Օրարդ և կինն այրի որ անդուլն առնէր զիշխանն որ ոչ յԱյ երկնչէր, թախանձեաց և էած 'ի հաւան: Այն է արթնութիւն, նոյն սկուեն օգւոց:

Կամիցիս ուսանել արթուն ինչ աղօթս. երթ առ Աննա և լուր իսկ նորին բանիցն. "Ադոնա, ասէ, Էլոյէ, սաբաւովթ": Մանաւանդ զգործսն իսկ յառաջ քան զբանսն լուր: Յարեան, ասէ, ամենեքեան 'ի սեղանոյն, և նա առանձին դիմեաց. ոչ ընդ ակն առ և ոչ հան-

զբրատեան: Այլ թուի ինձ թէ մինչ առ սեղանն նստէր՝ լոկ նստէր, և ոչ ծանրացաւ ինչ կերակրովքն. քանզի ոչ եթէ այնչափ արտասուս հեղոյր՝ թէ չէր լեալ թէ-թև ՚ի կերակրոց: Այլ թէ մեք մինչ նօթիք և անսուաղք իցեմք հազիւ այնպիսի աղօթս մատուցանեմք, մանաւանդ թէ և ոչ երբէք կամք իսկ այնպէս յաղօթս, որչափ ես առաւել և նա յետ ՚ի սեղանոյն յառնելոյ կայր այնպէս յաղօթս՝ եթէ ոչ և առ սեղանն դոյզն և որտառուց նստէր: Ամաչեսցուք, ասէ, ՚ի կնոջէն. պառկառեսցուք որք վասն արքայութեանն աղաչեմք, նա որ վասն որդի լինելոյ այնպիսի աղօթս մատուցանէր և արտասուս հեղոյր: "Ոզաւ, ասէ, եկաց առաջի տեառն". և զինչ ասէր. "Ադոնայի Էլոյէ սաբաովթ". և թարգմանի այսպէս՝ տէր զօրութեանց: Ամենեկին քան զեղուն արտասուքն ածել ՚ի հաւան զանձ: Ուր արտասուք իցեն, անդ և արթնութիւնն է. ուր արտասուք իցեն, հարկ է թէ և նեղութիւն ինչ իցէ. ուր նեղութիւն իցէ, ՚ի դէպ է թէ անդ բազում ինչ զգաստութիւն իցէ: "Եթէ լուեալ լուիցես, ասէ, աղօթից աղախնոյ քում և տացես ինձ որդի, տաց զնա ՚ի նուէր տեառն զամենայն աւուրս կենաց իւրոց": Ոչ ասաց թէ զմի աւուր կամ զերկուս, որպէս և մեք. չասաց՝ թէ տացես ինձ մանուկ՝ տաց քեզ ինչս, այլ զպարգևսն իսկ ողջոյն այդրէն քեզ տաց զանդրանիկ որդին աղօթից իմոց: Քանզի դուստր էր Աբրահամու, նա յորժամ խնդրեաց ՚ի նմանէ՝ ետ զորդին իւր, և սա նախ քան զխնդրել տայ: Այլ տես զմիւս ևս ազնուութիւն. "Բարբառ ինչ, ասէ, չելանէր ՚ի բերանոյն; բայց միայն շրթունքն շարժէին": Քանզի որ կամի վճարել ինչ՝ այնպէս մերձենայ առ ած, ոչ լոյծ և մեղկ և յօրանջելով: Միթէ չկարէ՞ր ած և առանց աղօթիցն տալ: Այլ թէ յառաջ քան զխնդրելն տուեալ էր՝ չերևէր կնոջն յօժարութիւն, և ոչ այնքան յայտնի լինէր առաքինութիւն, և ոչ այնչափ վարձս շահէր: Ապա ուրեմն յերկարելն ոչ նախանձու ինչ էր և չարակնութեան, այլ տնտեսութեան և խնամակալութեան: Յորժամ լսիցես ՚ի գրոց եթէ փակեաց ած զարգանդ նորա, և կամ զայրացուցանէր զնա նախանձորդն իւր; ՚ի միտ առ եթէ զառաքինութիւն կնոջն կամի ցուցանել: Այլ արդ մեք զի-

զպարտն իւրեանց զծառայութիւնս. «Չիցե՞մ ես քեզ լաւ քան զտասն որդիս»։ Նա զայրացուցանէր, ասէ, զնախանձորդն իւր կողի իւր զայրացուցանէրն. այսինքն թէ նախատէր, մեծ ՚ի վերայ երթայր, և ոչ երբէք վրէժ խնդրեաց ՚ի նմանէ բառ զայրացուցանելոյն, և ոչ լուաց կամ անէծ, և չասաց զայրն թէ վրէժ խնդրեա ՚ի նախանձորդէն։ Այլ որդիք եմ, և զնա այրն սիրէր. ընդ որդւոց՝ Ահա այս սէր էր նմա սփոփանք, քանզի և ասէր իսկ. «Չիցե՞մ ես լաւ քեզ քան զտասն որդիս»։ Տեսցուք զարձեալ զՀամեստութիւն կնոջն։ Արբեալ Համարեցաւ զնա Հեղի. և զինչ ասիցէ. «Մի՛ Համարիր զաղախին քո դուստր ժանտից, զի առ բազում վարանաց տառապեալ մինչև ցայժմ»։ Այն իսկ է արդարև սրտի ընկերոյ յորժամ և առ թշնամիս չզայրանայցէ ցասմուցանէ ինչ զսիրտն իւրեանց զնեղութիւն։ Զիք ինչ բարեգոյն քան զսուգ որ վասն այդ եղէ. «Առ բազում վարանս իմ տառապեալ, ասէ, մինչև ցայժմ»։ Այս նման նոցա լինիցին ամենեքեան։ Լուարուք ամուսինք, լուարուք որ միանգամ որդւոց ցանկանայցէք։ Լուարուք այր և կանայք, քանզի և այր բազում անգամ ՚ի նոյն նպաստ լինին. լուարուք զոյն որ ասէ՝ թէ «Աղաչէր Իսահակ զՏէր վասն Ռեբեկայ կնոջ իւրոյ, քանզի ամուլ էր»։ Մեծամեծս կարեն վճարել աղօթք։

«Ամենայն, ասէ, կանխութեամբ և խնդրուածովք ՚ի վերայ ամենայն սրբոց և ՚ի վերայ իմ»։ Ո՛չ քեզ յետոյ դնես։ Այո, ասէ, «Զի ինձ տացի բան ՚ի բանալ բերանոյ իմոյ համարձակութեամբ ցուցանել զխորհուրդս աւետարանին վասն որոյ պատգամաւորեմ ՚ի կապանս»։ Ո խորհուրդ պատգամաւորիցիս։ Յո՞յ, ասէ, առ մարդիկ։ Տեսէ քանի է այս բարերարութիւնն. առաքեաց յերկնից պատգամաւոր վասն իւրոյ խաղաղութեանն. կալան մարդիկ կապեցին, և ոչ ՚ի հաստատեալ օրինացն պատկառեցին, զի զհրեշտակ ոչ ոք երբէք լլկէ։ Նոյն ասկայն, ասէ, «Ես պատգամաւորեմ ՚ի կապանս, զի ՚ի նմին համարձակեցայց՝ որպէս և պարտ իցէ ինձ խօսել»։ Շղթայքս ՚ի վերայ կան, ասէ, և համարձակութիւնս ընկերանէ. այլ ձեր աղօթքդ բանայ զբերան իմ, զի զամենայն ինչ զոր առաքեցայ ասել՝ ասացից։

«Զի գիտասջիք վասն իմ զինչ գործեմ. զամենայն

եղծանեն զկուսութիւն ոգւոյն. և այնպէս հաստատութեամբ ասեմք թէ ոչ միայն մարմինն ապականի, այլ անօրէնութեամբ ոգին եղծանի. զի գործն խառնք են, և անօրէնութիւնն մեղք: Զի թէ այն ինչ ապականութիւն էր, ապա և ամուսնութիւն ապականութիւն է. ապա ոչ ուրեմն խառնքն ապականութիւնք են, այլ մեղքն: Ապականութիւն տան զինչ իցէ, թէ ոչ քակելն: Այլ ամենայն ուրեք ապականութիւն և փոփոխումն յատութիւն ինչ է, զի յիւրմէ անկեալ յայլ ինչ գնասցէ: Այլ լաւ գրոյն՝ եթէ "Ապականեաց ամենայն մարմին զճանապարհս իւր". և դարձեալ "յապաժոյժ ապականութիւնն". և դարձեալ թէ "Մարդք ապականեալ մտօք": Ապականացու մարմինն է և առանց ապականութեան ոգին. բայց մի և զնա ածիցեմք ապականացու մտօք: Անեղծ արար զնա զառաջինն, դարձաւ անձամբ յապականութիւն. նորոգեաց միւսանգամ աւազանաւն, մի յերկրորդումն ածիցեմք զնա ապականացու մտօք և մատնիցեմք անմահական որդանն: Սա և չկարէ իսկ մերձենալ, եթէ ոչ զմահկանացու ոգին գտանէ: Զադամանդեայ գործեա զոգին, և չմերձեսցի որդնն. և եթէ մերձենայցէ, չլինի գամագիտ: Մի եղծաներ զոգիդ. զի որ ինչ եղծանիցի, հատի և ապականի. և լուր մարգարէին. "Նեխեցան, ասէ, և փտեցան վէրք իմ յերեսաց անզգամութեան իմոյ": Այս է, ասէ, ապականութիւն, բայց այն և երբէք ոչ: Զի ուր անապականութիւնն իցէ, ապականութիւն չգործի. և ապականութիւնն իսկ անապականութիւն լինիցի, զի վախճան ոչ առնուցու: Գոյ և մահ անմահ որ հանդերձեալ է լինել մեղաւորաց, թէպէտ և մարմինն անմահ յառնիցէ: Այնպէս ապականութեամբ հանդերձ երթամք անդ, և անդ անեղծ և անվախճան ունելոց եմք զապականութիւն. զի այրելն և չայրել և միշտ որդանցն կեր լինել և չծախել՝ անեղծ ապականութիւն է: Որպէս և երանելոյն Յոբայ էր. եղծանէր և չեղծանէր, տանջէր և ոչ մեռանէր, այլ մաշէր զկոշտս երկրի 'ի թարախն քերելոյ զբազում ժամանակս: Այնպիսի ինչ կրիցեն ոգիքն յորժամ յորդանցն ուտիցին, ոչ միայն զերկուս ամս կամ զերիս և զտասն կամ զքսան կամ զհազարս և ոչ զբիւր, այլ անսպառ և յանվախճան: "Որդն նոցա, ասէ, ոչ վախճանեսցի":

